# Հայոց եկեղեցական իրաւունքը

## Ա. Գիրք

Աղբիւրները եւ Սկզբունքները

Աշխատասիր. Ն. Վ. Մելիք-Թանգեան

Շուշի
1903

Տպարան
եղբարց Բ. [illegible]-Տէրսահակեանց



**Ն Ո Ւ Է Ր**

**Բ Ա Գ Ո Ւ Ա Բ Ն Ա Կ**

Պ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄ ՍԱՐԳՍԵԱՆ

ՄԵԼԻՔԵԱՆՑԻՆ

307 + 276 բ.

ՀԵՂԻՆԱԿԻՑ:

1903



# ՆԵՐԱԾՈՒԹԻՒՆ.

## ՀԱՅՈՑ ԵԿԵՂԵՑԱԿԱՆ-ԻՐԱՒՈՒՆՔԻ ՈՐՈՇՈՒՄԸ.

### 1). ԵԿԵՂԵՑԻ ԵՒ ԻՐԱՒՈՒՆՔ.

*Մատենագր. Լուսաւորչի և Սահակի որոշումն եկեղեցու և վանքերի մասին.— տես Էջմիածնի գրադարանի կանոնագրքերը։* Изъ лекцій по церковному праву ординарнаго профессора Московскаго Университета Н. К. Соколова, Москва 1874: Опытъ курса церковнаго законовѣдѣнія архим. Іоанна т. I. 1851 г.

Նախ քան եկեղեցական իրաւունքի որոշման և պարզաբանութեան անցնելը, առաջ տեսնենք, ի՞նչ է եկեղեցի, ի՞նչ հիմունքներ ունի. ի՞նչ է իրաւունք և ի՞նչ կապ ունի եկեղեցու հետ։

Եկեղեցու Հիմնադիրը՝ Յիսուս Քրիստոս, իւր հանրամարդկային քարոզներով և անձնական օրինակով ցոյց տուեց մարդկանց, թէ ի՞նչպէս պիտի հասնել հաւասարութեան, եղբայրսիրութեան և անձնական կատարելութեան բարձր գաղափարներին։ «Սիրեցէք միմեանց» բազմիմաստ պատուէրով հարուածեց մարդկանց մէջ խոր արմատ ձգած այն հասարակական անհաւասարութիւնը և խորդուբորդութիւնը, որոնք դարերի ընթացքում օրէնք էին դարձել և մարդկանց մեծամասնութիւնը ստրուկ և հլու կամակատար արել ուժեղների ձիրաններում։ Յանուն այդ բարձր սիրոյ դատափետեց այն անհարթութիւնները և անարդար խոչերը,

որոնք դարերի ընթացքում խոր անդունդ էին բաց արել ժողովրդի և ազգերի զանազան խաւերի մէջ, ցոյց տալով՝ որ միայն այդ ընդհանուր սէրը կարող է եղբայրացնել տիրոջ և ծառային, բռնակալին և ստրկին։

Այդպիսի բարձր սիրոյ քարոզը յետ մղեց ազգայնական՝ ցեղական և այլ մանր՝ մարդկանց միմեանցից անջատող նշանները, առաջ կոչեց մեծ ընդհանուր գաղափար—մարդկայնութիւն։ Սիրի՛ր մարդուն՝ ով կուզէ լինի, ի՛նչ ազգութեան կամենայ՝ պատկանի, ի՛նչ դրութեան մէջ լինում է՝ լինի, սիրի՛ր նրան իբրև քո անձը։ Այդ գաղափարով կեանքի հակառակ ծայրերը միացրեց, աշխարհը դարձրեց մի տուն՝ մի ընտանիք։ Համամարդկային բարձր գաղափարներին և մտադրած վեհ նպատակին հասնելու համար, Յիսուս ցոյց է տալիս միակ ճանապարհը՝ այն է ինքնատիրութեան և անձնական կատարելութեան, «եղերուք կատարեալ՝ որպէս Հայրն ձեր երկնաւոր»։ Այդպիսի կատարելութիւն ձեռք բերելու համար, պէտք է մարդ անձնատիրութեամբ, ինքնաքննութեամբ կարողանայ կազմել մի այնպիսի բարոյական ուժեղ բնաւորութիւն, որի առաջ խոնարհուին բոլոր եսական, նեղ կրքերը և հակումները, և մարդու բոլոր գործողութիւնները ենթարկուին նրա անաչառ դատաստանին և վճռին։ Ահա այդպիսի հաւասարակշիռ բնաւորութիւնը ձեռնհաս կլինի հետևիլ ճշտութեամբ աւետարանին և իւրացնել «սիրի՛ր քո ընկերին անձիդ պէս» պատուէրը։

Բայց մարդը կարող է՞ հասնել այդ անհատական կատարելութեան և դառնալ անպայման բարոյական բնաւորութիւն։ Յիսուս սովորեցնում է այդ ճանապարհը և միակ միջոցը, որով կարող ենք հասնել այդպիսի կատարելութեան՝— այն է Հաւատը։ Հաւատա՛ Աստուծուն, հաւատա՛ գաղափարներիդ ճշմարտութեան, հաւատա՛ ուժերիդ՝ և կը հասնես կատարելութեան։ Յիսուս իւր անձնական օրինակով ցոյց տուեց, որ այդպիսի բարձր գաղափարներ կարելի է իրագործել կեանքի մէջ այն ժամանակ, երբ խորին կերպով առանց տատանուելու համոզուած ես գաղափարներիդ արդարութեան

և ճշմարտութեան վրայ։ Ահա այդպիսի հաւատը լռնէր կարող է շարժել, ասում է Յիսուս, և այդպիսի հաւատի վրայ է հաստատում Նա իւր եկեղեցին, որին չեն կարող խորտակել «դրունք դժոխոց»։ «Դու ես վէմ, և ի վերայ այդր վիմի շինեցից զեկեղեցի իմ»։ Ուրեմն եկեղեցու հիմքը կազմում է «վէմը»—Պետրոսի հաւատը, հաւատ, որի վերայ կառուցանում է Յիսուս իւր ամբողջ վարդապետութիւնը, բարոյական գաղափարները—եկեղեցին։

Եկեղեցին հանդիսանում է մի մեծ բարոյական Աստուածահաստատ հիմնարկութիւն, որը տարածում է ընդհանուր բնաւորութիւն ունեցող համաշխարհային մտքեր և գաղափարներ, որը ճգնում է կրթել, դաստիարակել ամբողջ մարդկութիւնը հոգու՝ ներքին աշխարհի վերանորոգմամբ, որը՝ առաջնորդում է իւր անդամներին դէպի կատարելութիւն, ոչ բռնի միջոցով և հրամանով, այլ բարոյական ազատութեամբ, մտքի և սրտի կրթութեամբ, ու խղճի դաստիարակութեամբ. վերջապէս որը՝ միջնորդ է իւր անդամների և Աստուծոյ մէջ, կապում է անդամներին «խորհուրդների» միջոցով իւր հետ, տալով նրանց Աստուածային շնորհքներ։ Պարզ է՝ որ այդպիսի եկեղեցին կարող է լինել «միմիայն, սուրբ, ընդհանրական և առաքելական»։

Եկեղեցու, այսպէս ասած՝ ներքին մասը, անտեսանելի կողմը, այսինքն գաղափարները, բարոյական-կրօնական մըտքերը, եկեղեցու խորհուրդների ներքին ազդեցութիւնը, ժամերգութեան էական մասը, կազմում են մարդու ներքին աշխարհի խնդիր, նրա համոզմունքի և խղճի առարկայ։ Այդ համոզմունքները չի կարելի իրաւական սահմանների մէջ դնել, իրաւաբանական նորմաների ենթարկել, արտաքին կարգերով գծել, որովհետև դրանք հաւատքի վրայ են յենուած, իսկ հաւատքը խղճի գործ է, խիղճը պատասխանատու է իւր և Աստուծոյ առաջ, խիղճը կանոնների մէջ ամփոփել չի կարելի։

Ուրեմն, եկեղեցին այս տեսակէտով իրաւաբանական հասկացողութիւն չէ, այլ զուտ բարոյական-կրօնական, «Թագաւորութիւնն իմ չէ յայսմ աշխարհէ»։

Բայց քրիստոնէական-բարոյական գաղափարները այնպիսի սկզբունքներ են, որոնք միմիայն կարող են գոյութիւն ունենալ և իրագործուել կեանքում, մարդկային հասարակութեան մէջ։ Աչա և հարց է ծագում, եկեղեցու այդ անտեսանելի մասը կարո՞ղ է արդեօք ամբողջացած եկեղեցի կազմել առանձին վերցրած՝ առանց տեսանելի կողմի՝ այսինքն առանց մարդկային հասարակութեան. (անդրանիկաց եկեղեցին է զուտ գաղափարական գոյացութիւն). կամ մարդիկ կարո՞ղ են եկեղեցի կազմել առանց այդ անտեսանելի կողմի, ի հարկէ ո՛չ։ Եկեղեցի կազմելու համար անհրաժեշտ են երկու մասն էլ, տեսանելին և անտեսանելին, այսինքն հաւատը իւր բոլոր գաղափարականով և մարդկային հասարակութիւնը։ Լուսաւորչի և ս. Սահակի «Որոշում Վանացն» սահմանադրութեան մէջ խօսւում և բացատրւում է եկեղեցու նշանակութիւնը. անտեսանելի կողմի համար ասուած է, «Ճշմարիտ հաւատն է եկեղեցի»։ Տեսանելի կողմի համար ասուած է, «Զի ոչ եթէ զխորանն կոչէ եկեղեցի,... այլ զհաւատացեալ ժողովուրդն...»։

Ուրեմն եկեղեցին է Քրիստոսին հաւատացող մարդկանց ժողովը, որը Աստուածային շնորհքների ընդունմամբ եկեղեցու պաշտօնեաների ձեռքով, ձգտում է հասնել Քրիստոսի քարոզած աւետարանական բարձր գաղափարներին։

Եկեղեցու բարձր գաղափարները և միջոցները թէև զուտ բարոյական-կրօնական են, բայց նրանք գործադրուելով մարդկային հասարակութեան մէջ, առաջ են բերում անհատների յարաբերութիւններ, զանազան անձանց շահերի մրցումներ, բազմատեսակ կամքերի շփումներ, և դրանով զուտ գաղափարական-բարոյականից անցնում են գործնականին, որից և ծագում է *իրաւունքի* խնդիրը։

Եկեղեցու անդամները բացի միմեանց հետ ունեցած յարաբերութիւնից, անհրաժեշտ պահանջից մղուած ստիպուած են շփումն ունենալ և այն մարդկանց և խմբակցութիւնների շրջանների հետ, որոնք եկեղեցուց դուրս են, քրիստոնեայ չեն։ Եկեղեցու անդամների յարաբերութիւնը ստանում է

աւելի մեծ ծաւալ, աւելի մեծ ընդարձակութիւն, և դրանով իրաւունքի խնդիրը աւելի մեծ շրջանի մէջ է մտնում։

Եկեղեցին իբրև բարոյական-կրօնական ղեկավարիչ հիմնարկութիւն, կամայականութիւնների առաջն առնելու, անձնական քմահաճոյքները արմատախիլ անելու և իւր անդամներին որոշ ուղղութեամբ առաջնորդելու համար, պարտականութիւն է համարում օրէնքով, կանոններով որոշել ամեն մի անդամի յարաբերութիւնը դէպի եկեղեցին, դէպի միմեանց և դէպի այլ անհատներ ու շրջաններ, որոնք եկեղեցուց դուրս են։ Այս կերպով սահմանւում է ամեն մի անհատի և ամբողջութեան *իրաւունքների* սահմանները և պարտաւորութիւնների կարգը։ Իրաւունքը մի կողմից ապահովեցնում է մարդու ազատութիւնը և բարոյական կամքի զարգացումը, չթոյլ տալով ուրիշներին ոտնակոխ անել այդ սրբազան կարգը, միւս կողմից զսպում է մարդու անհատական քմահաճոյքը ուղղուած ընդհանուրի բարեկեցութեան դէմ և նորմաների տակ ձգում։

Իրաւունքի այս տեսակէտից՝ եկեղեցին մտնում է իրաւաբանական շրջանի մէջ։ Կազմւում է եկեղեցական վարչութիւն, որոշ կարգ ու կանոնով, օրէնքներով, որը ղեկավարւում է ոչ պետական-քաղաքացիական ճնշող միջոցներով, այլ բարոյական և մեղմ։ Զանցառուները ենթարկւում են ոչ քաղաքացիական պատժի, բռնի տուգանքների, բանդի, տաժանակիր աշխատանքի ու աքսորի, այլ հեռացնւում են եկեղեցուց, իբրև անարժան անդամներ։ Եկեղեցական կանոնները կազմուած լինելով որոշ ուղղութեամբ, բոլոր անդամների համաձայնութեամբ, պարտաւորիչ են բոլորի համար։ Ամեն մի անհատը իւր ազատակամ համաձայնութեամբ եկեղեցու անդամ համարուելով, պարտաւոր է կատարել բոլոր կարգ ու կանոնները, հասարակական-կրօնական ծէսերը, արարողութիւնները. անհամաձայնութեան դէպքում ազատ է դուրս գալու այդ եկեղեցու ծոցից, պատասխանատու լինելով միայն իւր խղճի և Աստուծոյ առաջ։

Այսպիսով եկեղեցին իւր առանձին կարգ կանոնով,

իւր բարոյակրթական պատժողական և ուղղիչ միջոցներով կազմում է մի ամբողջական մարմին իրաւաբանական մըտքով, որով և զբաղւում է եկեղեցական իրաւունքը։ Այս իրաւունքը վերաբերում է ո՛չ եկեղեցու էութեան, ինչպէս Աստուածային հաստատութեան, այլ այն արտաքին կազմակերպութեան, որով սահմանի տակ են տրւում նրա բոլոր անդամների բազմազան յարաբերութիւնները։ Այս յարաբերութիւնները երկու շրջանով են բացորոշւում, ներքին և արտաքին. ներքին յարաբերութիւնը տեղի է ունենում եկեղեցու անդամների շրջանում, արտաքին յարաբերութիւնը եկեղեցու և ուրիշ հասարակական կազմակերպութիւնների մէջ։ Այստեղից էլ առաջանում է եկեղեցական-իրաւունքի երկու մտքով ըմբռնելու և բացատրելու ձևը։

Եկեղեցական իրաւունքը ներանձնական մտքով (въ субъективномъ смыслѣ) համախմբումն է այն կանոնների, իրաւունքների և պարտաւորութիւնների, որոնք տրուած են եկեղեցու անդամների համար։

Եկեղեցական իրաւունքը արտանձնական մտքով (въ объективномъ смыслѣ) այն օրէնքների և սահմանների համախմբումն է, որոնցով որոշւում է եկեղեցու յարաբերութիւնը ուրիշ հասարակական մարմինների հետ (պետութեան այլադաւան, այլակրօն ազգերի ևլն ևլն)։

---

## 2) ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ԵՒ ԲԱՐՈՅԱԿԱՆ ՕՐԷՆՔՆԵՐԻ ՏԱՐԲԵՐՈՒԹԻՒՆԸ.

Վերոյգրեալից երևաց, որ եկեղեցու դրած բոլոր պարտաւորութիւնները իրաւական բնաւորութիւն չունին, և չեն ենթարկւում իրաւաբանական որոշումների։

Աղօթելու, ապաշխարելու, գղջալու պարտաւորութիւնները կրօնական բարոյական են և կախուած են անհատի անկեղծութիւնից, մաքուր խղճից և սրբուելու տրամադրութիւնից. իրաւաբանական սահմանով չի կարելի որոշել թէ

հաղորդուելով՝ անպատճառ պիտի մաքրուել, անշուշտ պիտի զղջալ կամ խիղճը մաքրել. դրանք կախուած են անհատի ներքին պատրաստականութիւնից։ Այդպէս են եկեղեցու խորհուրդները իրանց ներքին ներգործութեամբ, էութեամբ, որովհետև այդ խորհուրդների միջոցով իրան փրկել ցանկացող անձնաւորութեան ներքին աշխարհը՝ մեզ՝ կողմնակի անձանցս համար մնում է բոլորովին անծանօթ, ընդունե՞ց նա արդեօք իւր սրտի մաքրութեամբ խորհուրդի ներգործութիւնը թէ ոչ, չենք իմանում. այ՛դ իրաւական չափի տակ դնել չի կարելի։

Բայց այդ խորհուրդների գործադրութիւնը կատարւում է արտաքին երևոյթներով և ծիսակատարութեամբ, որոնք ընկնում են կանոնի—կարգի տակ, որովհետև ունենում են իրանց իրաւական հետևանքները։ Այդ նրանից է առաջանում, որ մարդկային բնաւորութիւնը՝ հոգու վերանորոգութիւնը շօշափելի կերպով հասկանում է այն ժամանակ, երբ աներևոյթը ըմբռնելի ձևերով է պատկերացնում և տեսանելի կերպով կապում եկեղեցու հետ։

Բարոյական կրօնական օրէնքները ամփոփում են իրանց մէջ քրիստոնէական—ընդհանուր գաղափարներ. եկեղեցական օրէնքները շօշափելի կերպով արտայայտում են այդ գաղափարները որոշ արտաքին ձևերով, յարմարացնելով կեանքի պայմաններին։ Բարոյական օրէնքը ներշնչում է ներքին մաքրութիւն դէպի քրիստոնէական պսակը, եկեղեցական օրէնքը որոշում է պսակուելու՝ լուծելու ձևերը և պայմանները։ Բարոյական օրէնքը նայում է մարդու վրայ իբրև ընդհանրապէս քրիստոնեայի. եկեղեցական օրէնքը վերցնում է նրան իբրև տեսանելի անդամ կրօնական համայնքի, որոշում է նրա պարտաւորութիւնները և հասարակական յարաբերութիւնները։ Այդ պատճառով քրիստոնէական բարոյականութեան օրէնքները միշտ և ամենի համար միևնոյն են, այն ինչ եկեղեցական օրէնքները զանազան ժամանակներում և զանազան եկեղեցական հասարակութիւնների մէջ տարբեր են։ Բարոյական օրէնքները ընդհանրապէս վերաբե-

րում են մարդու ներքին աշխարհին, իսկ եկեղեցական օրէնքները ունին այսպէս ասած՝ պաշտօնական, կառավարչական, իրաւաբանական նշանակութիւն։ Առաջինները՝ յանցանքները ենթարկում են խղճի դատաստանին, երկրորդները՝ յանձնում են դրսի, պաշտօնական դատաստանին։*)

Իսկ եկեղեցական ժամերգութեան մասնակցելը, և եկեղեցական կեանքի արտաքին կարգաւորութեան կանոններին հնազանդելը ունին իրաւական բնաւորութիւն (правовый характеръ), որոնց կատարումը և չի հակասում խղճի ազատութեան կրօնական մտքով։**)

---

## 3) ԵԿԵՂԵՑԻՆԵՐԻ ԴԱՒԱՆԱԲԱՆԱԿԱՆ ԲԱԺԱՆՈՒՄԸ.

Եկեղեցու կրօնական-բարոյական մասը անփոփոխ է և ընդհանուր, եկեղեցական կանոնները մասնաւոր են և փոփոխական. առաջինն եկեղեցու դաւանութիւնն է, երկրորդը եկեղեցական-վարչական կազմը։ Այս վարչական ձևի վրայ իրանց կնիքը թողնում են շատ պայմաններ, ազգային բնաւորութիւնը, կեանքի պայմանները, ժողովրդի կացութիւնը, տնտեսական վիճակը. այդ դարերի ընթացքում, պատմական կեանքի շրջանում փոփոխւում է դատական, իրաւական, օրէնսդրական ձևերով, իւրաքանչիւր ժամանակի պահանջների, և կարգերի համաձայն։ Վուլտէն ասում է, անարդար է մի որև է ժամանակի կանոնաչափը անփոփոխ համարել ուրիշ ժամանակի իրաւունքի ճշտութիւնը կամ անճշտութիւնը կշռելու և գնահատելու համար. եկեղեցին չի կարող մատնուել անշարժութեան, որովհետև այդ պայմանում անհնարին կլինի նրան՝ ծառայել իւր կոչման, իրագործել իւր վրայ վերցրած պարտաւորութիւնները ժողովրդի վերաբեր-

---

*) Տես Опытъ ц. зак. архим. Іоанна I т. 1851 և Соколовъ 16 եր.

**) Տես Соколовъ, ц. п. 13 եր.

մամբ, ուստի և չի կարելի կեանքի պայմաններից առաջացած փոփոխութեան կարիքը, անհնարին համարել՝ նախկին ժամանակներում կազմած իրաւական սահմանադրութեան հակառակ համարելով։ Միայն դաւանութիւնը իւր անվթարելիութեամբ և էութեամբ կազմում է իրաւունքի զարգացման և եկեղեցու օրէնսդրութեան սահմանը։*)

Այդ պայմանների շնորհիւ ահա և առաջին 5 դարերի ընթացքում կազմակերպուեցին անկախ, ինքնուրոյն եկեղեցիներ, տարբեր սովորութիւններով և արտաքին կարգ ու կանոնով, Հայոց, Ասորոց, Ղպտաց, Հաբէշների, Յունաց և Հռոմայեցոց։ Անգլիացի յայտնի եկեղեցական պատմագիր Ռօբերթսօնը ասում է «Հայաստանը պատիւ ունեցաւ առաջին երկիրը լինելու, քրիստոնէութիւնը իբրև ազգային կրօն ընդունելու մէջ»։

Բացի վարչական ձևի տարբերութիւնից, փոփոխութիւններ մտան և դաւանաբանական մի քանի կէտերում, որոնք շատ առիթներ տուին բազմաթիւ վէճերի և տարաձայնութիւնների առաջանալուն։ Հռոմէական եկեղեցու որոշման մէջ մտաւ պապի գլխաւորութիւնը իբրև Քրիստոսի փոխանորդի։**) Ուրիշ դաւանաբանական խնդիրներում, Հոգույն սրբոյ բղխման, հաղորդութեան ևլն. ևլն. տարբերութիւններ մտան մեր, յունաց և կաթոլիկ եկեղեցիների մէջ։ Մի քանի ռուս ուսուցչապետների կարծիքով (Գօրչակով, Տրօիցկիյ, Բերդնիկով ևլն), բացի Գեռտէ յայտնի Աստուածաբան քահանայից՝ որը հայերին ուղղափառ է համարում, հայերը միաբնակ են և ուղղափառ եկեղեցուց հեռացած։ Դրանց կարծիքով ուղղափառ եկեղեցուց նոյնպէս հեռացան Ասորիները նեստորականութիւն ընդունելով, Հաբէշները միաբնակութիւն, Ղպտիները Յակոբականութիւն և 9 դարում Հռոմի եկեղեցին։ (Այս մասին կը խօսենք յետոյ իւր տեղում)։

---

*) Տես Соколовъ ц. п. 18 եր.

**) Տես Գորչակով, цер. пр. 22 եր.

## 4) ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ԻՐԱՒՈՒՆՔԸ*) ԶԱՆԱԶԱՆ ԱՆՈՒՆՆԵՐԻ ՏԱԿ·

Եկեղեցական իրաւունքը շատ անգամ կոչւում է կանոնական իրաւունք, եկեղեցական իրաւագիտութիւն։ Հին ժամանակներից սկսած եկեղեցական կարգադրութիւնները անուանւում էին կանոններ։ Կանոն բառը յունական է և նշանակում է ուղիղ փայտ, ձող, և առհասարակ սահմանուած չափ, թէ ֆիզիքական, թէ բարոյական և թէ հոգեկան մրտքով։ Երաժշտութեան մէջ կանոն նշանակում է դաշնակութիւն, քերականութեան մէջ գլխաւոր օրէնքներ, իսկ եկեղեցական գրութիւնների, ս. գրքի և ժողովների կարգադրութիւնների մէջ ընդհանուր հրահանգներ։ Եկեղեցու մէջ կանոնն այն է, ինչ որ օրէնքը պետութեան մէջ։ Կանոնի և օրէնքի տարբերութիւնը պարզ կերպով որոշուեց Յուստինիանոսի ժամանակներից հռոմէական իրաւագիտութեան մէջ և ընդունուեց բոլոր ազգերից։ Յուստինիանոսի իրաւական գրքում կանոն եզրը յատկացնւում էր միմիայն եկեղեցական սահմանադրութիւններին, զուգակշիռ դնելով դրան քաղաքացիական կարգադրութիւնները, որ կոչւում էին օրէնք. դրանց միացումից (օրէնքի և կանոնի) առաջացաւ Նոմօկանոն բառը։ Արևմուտքում կանոնական իրաւունք հասկացողութիւնը չի համապատասխանում յունաց մէջ ընդունուած հասկացողութեան. corpus iuris canonici—բովանդակում է հոգևոր իշխանութեան բոլոր իրաւական որոշումները՝ թէ եկեղեցական թէ քաղաքացիական. իսկ յունաց մէջ կանոնական իրաւունք ասելով հասկացւում է միայն եկեղեցական-վարչական կարգադրութիւնների, հրահանգների համախմբումը, որտեղ չեն մտնում եկեղեցու աշխարհական անդամների

*) Տես Соколовъ, Горчаковъ, Опытъ ц. п. և Суворовъ ц. п.

ղաքացիական յարաբերութիւնները։ Եկեղեցական իրաւունքի մէջ մտնում են բացի կանոնականից և հասարակական, պետական օրէնքներ։ Յունաց մէջ «կանոն» յատկացնում է ընդհանրապէս առաքեալների, ժողովների և ս. հայրերի հրահանգների ժողովածուին մինչև եկեղեցիների բաժանումը։ Ռուսաստանում այժմ գործածական չէ կանոն բառը, պետական և եկեղեցական կառավարչական շրջաններից դուրս եկած հրահանգները կոչւում են կարգադրութիւններ։ Հայոց մէջ կանոն բառը գործ է ածւում եկեղեցական հրահանգների վերաբերմամբ, ընդհանրացած է ասել՝ եկեղեցական կանոն քան եկեղեցական օրէնք, կանոնական ածականը շատ անգամ յատկացնում է այն կաթուղիկոսական կոնդակներին, որոնք զուտ եկեղեցական հրահանգներ են ամփոփում և պարտադիր նշանակութիւն ունեն, ինչպէս է օր. Գէորգ Դ-ի 1868 «Կանոնական Կոնդակը»։—

Աւելի ճիշտ է ասել եկեղեցական իրաւունք, քան կանոնական։ Երբեմն և անուանում են եկեղեցական օրէնսգիտութիւն։

---

## 5) ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ԻՐԱՒՈՒՆՔԻ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆԸ ԱՍՏՈՒԱԾԱԲԱՆՈՒԹԵԱՆ ԵՒ ՈՒՐԻՇ ԻՐԱՒԱԲԱՆԱԿԱՆ ԳԻՏՈՒԹԻՒՆՆԵՐԻ ՀԵՏ.

Մշտական իրաւունքը իւր բովանդակութեամբ, հիմունքներով մեծ կապեր ունի Աստուածաբանութեան և իրաւաբանութեան հետ։ Եկեղեցու անտեսանելի մասը, խորհուրդները, բարոյական գաղափարները պատկանում են դաւանաբանական և բարոյական աստուածաբանութեան, որը պարապում է քրիստոնէական հաւատի և բարոյական ճշմարտութիւնների պարզաբանութեամբ։

Իրաւունքը վերցնում է դաւանաբանութիւնից՝ աստուածաբանութեան մէջ պարզուած, մշակուած, քննութեան տակ չընկնող էական գաղափարները և նրանց շօշափելի է

դարձնում արտաքին գործողութիւնների միջոցով։ Աստուածաբանութիւնը ուսումնասիրում է եկեղեցին իբրև աստուածային հաստատութիւն, եկեղեցական իրաւունքը ուսումնասիրում է նրան իբրև արտաքին կրօնական հասարակութիւն։ Աստուածաբանութիւնը ձգնում է պարզել եկեղեցու գաղափարը և մօտեցնել մարդկային հասկացողութեան ըմբռնման, իրաւունքը ոչխատում է որոշ կանոնների միջոցով եկեղեցին դնել այն աստիճանի վրայ, որ շուտով իրականացնի իւր վրայ վերցրած պարտաւորութիւնները։ Աստուածաբանութիւնը բացատրում է՝ թէ ինչպէս Աստուծոյ շնորհքը իջնում է ձեռնադրութեան ժամանակ ձեռնադրուողի վրայ, մկրտութեան և դրոշմի ժամանակ մկրտուողի վրայ, ինչպէս այդ շնորհքը սրբագործում է պսակուողների ամուսնութիւնը. իսկ իրաւունքը այդ շնորհատուութիւնը ընդունում է իբրև միակ օրինական միջոցը ձեռնադրուողին որոշ իրաւունքների մէջ դնելու, մկրտուողին ընդունելու եկեղեցու անդամների շարքում, պսակուողներին որոշ իրաւաբանական հասարական պարտք ու իրաւունքների մէջ կարգելով*)։ Այսպիսով աստուածաբանութիւնը և իրաւունքը երկու տարբեր միջոցներով միևնոյն նպատակին են ձգտում։ Եկեղեցական իրաւունքը իւր գործադրական միջոցներով աւելի յարակցւում է իրաւաբանական գիտութիւններին քան աստուածաբանութեան։

Իրաւաբանական գիտութիւնների ընդարձակ ծաւալը կարելի է բաժանել երկու մեծ ճիւղի, պետական քաղաքացիական, որոնց ստորադրւում են միւս մասնաւոր բաժանմունքները։ Շատերը եկեղեցական իրաւունքը ստորադրում են պետական իրաւունքին (Государственное право), նայելով եկեղեցու վրայ իբրև հասարակական ընկերակցութեան. որի իրաւունքը կազմում է հանրական իրաւունքի (публичное право) մի մասը։ Պետութիւնը, ասում են, մի միութիւն է գերագոյն բարձրագոյն իշխանութեամբ, նա չի կարող թոյլ տալ, որ իւր մէջ գոյութիւն ունենան այնպիսի կազմակեր-

*) Տես Соколовъ 41 եր.

պուԹիւններ, որոնք անկախ նշանակուԹիւն ունին։ Ոչ մի խմբակցուԹիւն չի կարող գոյուԹիւն ունենալ, եԹէ նա ընդունուած չէ պետուԹեան կողմից և սրա իրաւունքին չի ենԹարկւում։ Կան և ուրիշ հայեացքներ եկեղեցու մասին, նրան տալիս են մասնաւոր իրաւական բնաւորուԹիւն և ստորադրում են քաղաքացիական յարաբերուԹիւններին։ Ուսուցչապետ Սօկօլովի կարծիքով, Թէ առաջինները և Թէ երկրորդները սխալւում են, որովհետև եկեղեցին իւր կազմուԹեամբ, իւր ծագումով և կառավարուԹեամբ այնպիսի մի հաստատուԹիւն է, որ կարող է անկախ, առանց պետուԹեան գոյուԹիւն ունենալ, մինչև իսկ ծաղկել և բարգաւաճել այն ժամանակ, երբ պետուԹիւնը հալածում է, մերժում է և չի ընդունում, ինչպէս օրինակ I, II, III դարերում հռոմէական կայսրուԹեան օրով։ Եկեղեցին, շարունակում է նա, շարժւում է պետուԹիւնից տարբեր շրջանում, ունի իւր առանձին նպատակները, կարող է իրագործել իւր գաղափարները սեպհական միջոցներով, նրանց ճանապարհները տարբեր են։ Գտնուելով պետուԹեան դաշնի մէջ, նա ստորադրւում է պետուԹեան՝ իւր արտաքին վիճակով քաղաքական և քաղաքացիական իրաւունքների սահմաններում, բայց իւր ներքին իրաւունքը, ներքին կազմակերպուԹիւնը մշակում է ինքն իրան, և կարող է իրագործել առանց պետուԹեան կողմից ընդունուելուն, ինչպէս օրինակ նախկին երեք դարերում, ՇօտԹլանդիայում, Միացեալ նահանգներում ևլն. ևլն։

---

## 6) ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ԻՐԱՒՈՒՆՔԻ ԶԲԱՂՄԱՆ ՆԻՒԹԸ.

Թէ եկեղեցական իրաւագիտուԹիւնը ինչո՞վ է զբաղուել և ի՞նչ խնդիրներ ունի մշակելու, այդ իմանալու համար անհրաժեշտ է ուսումնասիրել այդ առարկան, քննելով նրա հիմունքները, պատմական անցեալը, զարգացումը և ժամանակի ընԹացքում կրած փոփոխուԹիւնները։

Որովհետև նրա գլխաւոր նիւթը վերցրած է դրական օրէնքներից, գործնական կեանքից և յարմարացրած եկեղեցու վարդապետութեան հետ, ուստի պիտի ուշի ուշով հետևել թէ եկեղեցական իրաւունքը ժամանակի ընթացքում ի՞նչպէս է կարողացել իւր դերը կատարել, ի՞նչ փոփոխութիւնների է ենթարկուել թէ ազգային և թէ այլ արտաքին պայմանների ազդեցութեան ներքոյ։ Ուրեմն այդ գիտութեան զբաղման նիւթը պիտի լինի պարապել եկեղեցու պատմական կեանքի, օրէնսդրութեան, կազմակերպութեան և ներքին կեանքի՝ աստիճանական զարգացման վերլուծմամբ և մշակմամբ։

---

## 7) ՄՇԱԿՄԱՆ ԵՂԱՆԱԿՆԵՐԸ.

Եկեղեցական իրաւունքը այդ խնդիրները մշակելու համար կարող է գործադրել զանազան միջոցներ, որոնք գործ են ածւում և միւս գիտութիւնների մշակման մէջ։ Առաջի միջոցն է տեսական կամ փիլիսոփայական եղանակը, որը տարածուել է և առաջացել գլխաւորապէս Գերմանիայում բանապաշտ (раціоналистъ) փիլիսոփաների, Կանտի, Հեգելի և ուրիշների շնորհիւ։ Այդ եղանակը, իւր մշակման յենակէտ ընդունում է ոչ եկեղեցու պատմական և ժամանակակից կեանքը, հապա եկեղեցու նպատակի և յատկութիւնների հիմնական գաղափարները։ Այդ եղանակը եթէ կզարգանայ միակողմանի կերպով, եկեղեցու դրական իրաւունքը և գործնական կեանքը մի կողմ թողնելով, կկազմի՝ գաղափարի վրայ յենուած, մտածողութեան օրէնքների վրայ հիմնուած եկեղեցին կառավարելու կանոններ և բարոյական չափեր (норма), որոնց ստորադրել կտայ բոլոր եկեղեցական կեանքը իւր երևոյթներով. այն ժամանակ այդ եղանակը կդառնայ անկայուն, վերացական, կեանքից հեռու և բոլորովին ներանձնական ու անհաստատ։

Երկրորդ՝ համեմատական եղանակն է՝ մի քանի եկեղե-

ցիների զուգընթաց ուսումնասիրութիւնը կամ մի եկեղեցու որոշ խնդիրների միւս եկեղեցիների նոյն խնդիրների զուգակշիռ մշակումը։ Այս եղանակը այն առաւելութիւնն ունի, որ ճիշտ պարզաբանում է խնդիրների էութիւնը, եկեղեցիների մէկի կամ միւսի շեղումն ուղիղ գծից և կանոնաւոր կերպով գնահատում է այդ հաստատութիւնների արժէքը։ Բայց համեմատական եղանակը չի մտնում հաստատութիւնների քննութեան մէջ, վերցնում է նիւթը պատրաստ և յայտնի դրութեամբ։ Այս ձևը գործադրւում է գերմանիայում, ընդհանրապէս կաթոլիկ և բողոքական եկեղեցիների համեմատական պարզաբանութիւնը անելիս։ Երրորդ՝ պատմական եղանակը ցոյց է տալիս, թէ ինչպէս եկեղեցու իրաւունքը սկսուել է, ինչ շրջաններով է անցել, ինչ փոփոխութիւնների ենթարկուել և այսօր ինչ դրութեան մէջ է, պարզելով այժմեայ դրութեան պատմական հիմքը։ Պատմական եղանակը օգտակար կ'լինի գիտութեան տեսակէտից այն ժամանակ, երբ ստիճանական զարգացման հետևելիս, փաստերի դասաւորութիւնը, գործողութիւնների յաջորդական համադրութիւնը կենթարկուի մի ղեկավարող գաղափարի, որը իբրև հիմնական գիծ կանցնի փաստերի սկզբնական ծագումից մինչև վերջնական կէտը, այն ժամանակ միայն այդ եղանակը կունենայ գնահատութեան արժէք։

Չորրորդ՝ գործնական եղանակն է պատկերացնել եկեղեցու կեանքը իւր բոլոր երևոյթներով այնպէս, ինչպէս ներկայումս գոյութիւն ունի, գործող օրէնքները համակարգել գործնական նպատակների հասնելու համար։ Այս եղանակը գիտնական չէ, որովհետև վերցնում է իրաւունքը այն դրութեամբ, ինչ դրութեամբ որ կայ այժմ, կտրելով նրան անցեալից, չտալով մեզ տեղեկութիւն թէ ինչ պատմական շրջան է ունեցել նա։ Այսպիսով դուրս է գալիս, որ իւրաքանչիւր եղանակը առանձին վերցրած չի կարող բազմակողմանի կերպով մշակել խնդիրը, այն ինչ ամեն մէկը իբրև ամբողջի մաս վերցրած, ունի իւր նշանակութիւնը, ուստի այդ բոլոր միջոցների միացումը կլինի ամենալաւ եղանակը։

Ուսուցչապետ Սօկօլովի կարծիքով այդ միացումը յաջողութեամբ կատարել է Վուլտէ՝ կաթոլիկ եկեղեցու իրաւունքի կազմելովը, այդ եղանակը նա անուանում է պատմափիլիսոփայական։ «Մենք վերցնում ենք, ասում է Վուլտէ, իբրև սահմանակէտ՝ պատրաստ իրաւական կանոնադրութիւն, այժմեայ դրութեան մէջ, և փնտռում ենք նրա սաղմը, նրա արմատը։ Մենք կգտնենք այդ արմատը կամ աստուածային օրէնքի մէջ, կամ եկեղեցու բնաւորութեան մէջ, կամ ազգային մի որ և է եկեղեցում ընդունուած և իւրացրած համոզմունքի մէջ։ Գտնելով, մենք պիտի ամուր պահենք նրան, հետևենք նրան պատմական զարգացման բոլոր շրջաններում, միշտ և ճիշտ ընդգծելով այն տեղական, ազգային, քաղաքական ազդեցութիւնները, որոնց ներգործութեամբ նա աստիճանաբար հասել է այժմեայ դրութեան, ընդունելով ժամանակակից կանոնադրութեան ձևը։ Այդ հետևողական գործողութեամբ՝ իրաւունքը կ'պատկերանայ կենդանի կերպով մեր աչքի առաջ իւր կենսական աճման մէջ, իւր սեպհական բնաւորութեամբ։ Դրա հետ պիտի միացնել և ուրիշ եղանակ. եկեղեցու իրական կեանքում պատահող, իրանց բնաւորութեամբ մեզ յայտնի առանձին յարաբերութիւններից քաղում ենք լոկ նրանց փաստական կեղևը, հանում ենք նրանց իրաւաբանական բովանդակութիւնը, վեր լուծելով փնտռում ենք բարձր հասկացողութիւնները, որոնց ստորադրւում են այդ յարաբերութիւնները, այսպիսի ձևով կարգում ենք իրաւական ձևեր և կանոնադրութիւններ։ Այդպիսով հատ ու կտոր, պառակտուած իրաւական դրութիւնները ոչնչանում են և տեղի են տալիս կանոնադրութիւններին, աւելի ընդհանուր հասկացողութիւններին։ Այդ գործողութիւնը կատարելիս անհրաժեշտ է մշտապէս ի նկատի ունենալ իրաւունքի կապը եկեղեցու նպատակի հետ դաւանաբանական հիմունքների նկատմամբ»*)։

---

*) Տես Соколовъ ц. п. 39 եր.

## 8) ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ԻՐԱՒՈՒՆՔԻ ՊԱՏՄԱԿԱՆ ԵՒ ԱՅԺՄԵԱՅ ՀԱՄԱԿԱՐԳՈՒԹԻՒՆԸ.

Նախկին դարերում եկեղեցիները կառավարւում էին առաքելական, սուրբ Հարց և ժողովների կանոններով, որոնք տարածուած էին բոլոր քրիստոնեաների մէջ՝ բերանացի աւանդական և գրաւոր առանձին կանոնների ձևով։ Գրաւոր կերպով և կանոնաւորուած 500 թուականներէն Հռոմայեցի Դիոնեսիոս Կրտսերը կազմեց կանոնների առաջի ժողովածուն՝ թարգմանելով յունարէնից լատիներէն 10 ժողովների կանոններ, 4 տիեզերական և 6 տեղական, սկզբում էլ դրեց 50 առաքելական կանոններ։ 565-ին Յովհան Սխոլաստիկը հրատարակեց նոյն ժողովածուն աւելի կարգաւորած և յաւելուածով։ Բացի եկեղեցական հրատարակութիւններից, սկսեցին դուրս գալ և քաղաքացիական օրէնքներ եկեղեցու կառավարութեան վերաբերեալ։ 438-ին, Կոստանդիանոս մեծից սկսած մինչև Թէոդոս մեծը հրատարակուած բոլոր օրէնքները համախմբուեցին Թէոդոսի օրէնսգրքի մէջ, որ կոչւում է Codex Teodosianus. ապա 534-ին դրանք մուծուեցին Յուստինիանոսի օրէնսգրքի մէջ—Codex Iustinianeus, որ բաժանուած է 12 գրքի։ Թ. դարում դուրս եկաւ Փոտ պատրիարքի ժողովածուն. ԺԱ. դարում Միքայէլ Պսելլի, ապա Արսէնի, Մատթէոսի և 1345-ին Կոնստանդին Արմենօպուլի այբբենական ժողովածուն։ Արևմուտքում Դիոնեսիոսից յետոյ, յայտնի եղաւ Մարտին Բրագացու ժողովածուն Զ. դարում. Իսիդօր Սեվիլացուն Է. դարում։ Աֆրիկայում Փուլգենցիա Ֆերրանդի ժողովածուն Զ. դարում և Կրեսկօնիայի ժողովածուն Է. դարում։ Հայոց մէջ առաջին ժողովածուն կազմուած պիտի լինի Ե. դարում թարգմանիչների ձեռքով, գոնէ երեք տիեզերական ժողովների և առաքելական կա-

նոնների թարգմանութեան համար գրաւոր փաստագիր ունինք. այդպէս են կարծում և Հ. Տաշեան և Հ. Գաթրճեան (տես Վարդապետութիւն Առաքելոց Անվաւերական կանոնաց մատեանը)։ Երկրորդ ժողովածուն կազմեց Յովհան Օձնեցին Ը. դարու առաջի կէսին, որը դժբախտաբար մաքուր բնագրով մեզ չի հասել։ Երրորդ ժողովածուները անյայտ հեղինակների կողմից՝ կազմուած են մինչև 997-թիւը. այդ ժողովածուները, որոնք ս. Էջմիածնի գրադարանում լրիւ և կիսատ 40 հատ են, ըստ իս՝ Յովհան Օձնեցու ժողովածուն են խոշոր փոփոխութիւններով և յաւելումներով. դրանք արտագրած են երեք տեսակ բնագրից և ունին այբբենական կանոնացոյց. դրանց վրայ յետակայ դարերում շինծու կանոններ են աւելացրած յաւելուածներով։

Չորրորդ ժողովածուն պիտի կազմած լինի Ներսէս Լամբրոնացին (ԺԲ-րդ դարում) եկեղեցական կանոններից և քաղաքացիական օրէնքներից քաղուած, որը դժբախտաբար մեզ չէ հասած։ Հինգերորդ ժողովածուն կազմել է Մխիթար Գօշը (ԺԲ—ԺԳ դարերում) քաղուած շատ աղբիւրներից մինչև իսկ մահմեդական, և դասաւորուած է ըստ բովանդակութեան ձեռնարկի համար։ Վեցերորդ ժողովածուն կազմել է Սմբատ գունդստապլ սպարապետ—պատմիչը «Ծաղկաքաղ 'ի դատաստանագրոցն Մխիթարայ Գօշի և Բիւզանդական օրինագրոց, որ արդէն ծանօթ էին յազգին թարգմանութեամբ Լամբրոնացւոյն» (պատմ. հայ. գպ. 774 եր.)։ Ժողովածուների գլխաւոր նպատակն էր տալ պատրաստի կանոններ կառավարելու համար, որի գործը դիւրացնում էին մանաւանդ զանազան անձանց մեկնութիւնները այդ կանոնների վերաբերութեամբ։ Եկեղեցական իրաւունքի կանոնաւոր դասակարգութիւնը և համագրութիւնը սկսուեց միայն ԺԲ. դարում։ Գրացիանի Decrexum դուրս եկաւ 1150 թուերին, որով բաժանում էր բոլոր եկեղեցական իրաւաբանական նիւթերը երեք կարգի. 1) եկեղեցու օրէնքների, 2) եկեղեցու իշխանութեան և դատավարութեան 3) ժամերգութեան գործողութեան։

Ապա իտալական համալսարաններումմատւ եկեղեցական իրաւունքի դասաւանդութիւնը և մշակումը՝ Յուստինիանոսի օրէնսգրքի հետևողութեամբ երեք բաժնով 1) անձինքների մասին (de personis), իրերի մասին (de rebus), դատավարութեան մասին (de actionibus)։ Վերջերումս արդէն կամաց կամաց նոր հեղինակների շնորհիւ մտաւ պատմական մշակման ձևը, եկեղեցական իրաւունքը ստացաւ նոր զարկ, նամանաւանդ գերմանական և կաթոլիկ գրականութեան մէջ։

Եւրոպայում եկեղեցական իրաւաբանական գրականութեամբ պարապող և այդ ճիւղը մշակող յայտնի անձինքներից նշանաւոր են. Րիխտէր՝ Բերլինի համալսարանի ուսուցչապետը, Հինշիուս, Ֆրիդբերգ, Ֆիլիպպս, Բուսս-որի մշակումը հիմնաւոր և գիտնական արժէք ունեցող է, Վալ'տէր, Մաասէն, Մեյէր, Լենինգ, Յօրն, Վուլտէ. վերջինիս վրայ երկար կանգնում է Սօկօլով, համարելով նրա եղանակը ամենալաւ, որովհետև իրաւաբանական նիւթը բաժանել է աստուածաբանականից և պարզաբանել է եկեղեցական իրաւունքը խիստ իրաւաբանական եղանակով։ Վուլ'տէի մշակման ընդհանուր ձևն այսպէս է. առաջ նա ներածութեան մէջ խօսում է եկեղեցական իրաւունքի, նրա խնդրի, ուսումնասիրութեան եղանակի և այլն մասին, ապա 1) մասում խօսում է եկեղեցական իրաւունքի աղբիւրների մասին երեք բաժնով. 2) մասում եկեղեցական իրաւունքի դաւանանքի մասին երկու բաժնով. ա) հանրային իրաւունք և բ) մասնաւոր իրաւունք (Публичное и частное пр.) (տես Соколовъ 57—60 երես)։

Ռուսաց եկեղեցագիտութեան մէջ աչքի ընկնողն է Մոսկուայի համալսարանի նախկին ուսուցչապետ Սօկօլով, որը Վուլ'տէի հետևողութեամբ մշակել է ռուսաց եկեղեցական իրաւունքը, տալով միանգամայն ազատ, ինքնուրոյն և հետևողական գոյն իւր առարկային։ Դժբախտաբար նրա մահով ամբողջ գրուածքը չհրատարակուեց, միայն երկու գըրքոյկը դուրս եկաւ։ Լուրջ է նոյնպէս իւր պատմական և մեկնողական ուղղութեամբ Յովհաննէս վարդապետի գըրուածքը «Опытъ цер. законов. 1851թ.» երկու հատորով,

որը էլի թերի է։ Մնացածներից կարելի է յիշել Վագունա, Սուվօրով, Բերդնիկով, Գօրչակով, Սկվօրցով, Լաշկարիով, Մագիլև և այլն և այլն։—Հայոց մէջ լուրջ ուսումնասիրութիւն սկսեց հանգուցեալ Վահան վարդապետ Բաստամեանը, որը՝ բացի Մխիթար Գօշի ուսումնասիրութիւնից, ուրիշ խոստացած երկերից ոչինչ լոյս չհանեց։ Ինչպէս Հ. Տաշեանը վկայում է հայոց կանոնների համար ունի և աշխատութիւն Հ. Գաթրճեան տակաւին անտիպ։ Գէորգեան ճեմարանում հայոց եկեղեցական իրաւունքի դասաւանդութիւնը սկսուել է միմիայն 1899 թուից։ Իսկ կանոնաւոր աշխատասիրութիւն Հայոց եկեղեցական իրաւունքի մասին մինչև այժմ չունենք. մեզ համար բոլորովին մութ են այն խնդիրները՝ որոնք վաղուց պարզուածեն միւս ազգերի համար։ Ի՞նչ ժողովներ ենք ընդունում, ի՞նչ կանոններ, ո՞րոնք են մեր եկեղեցական իրաւունքի աղբիւրները, ի՞նչով է ղեկավարւում մեր Սինօդը եկեղեցական խնդիրները որոշելիս. ի՞նչով են առաջնորդւում կոնսիստորիաները—պատիժներ նշանակելիս, դատերը ի՞նչպէս պիտի վարել և լն և լն. այդ բոլորը մթութեան և խաւարի քողով պատած է, որի ստուէրի մէջ էր և Կարբեցին, երբ 1841-ին գրում էր Նիկօլա Ա. կայսեր «ընդ սմին Հայաստանեայց եկեղեցին, *ընդունելով* 5, 6 *եւ* 7 *տիեզերական ժողովները*, որոնք, որպէս յայտնի է, ընդունեցին և հաստատեցին Քաղկեդոնական ժողովի վճիռները, դորանով իսկ բնականապէս ընդունած է և յիշեալ ժողովը (իմա Քաղկեդոնի) (տես ամենայն Հայոց Կաթ. Բ. գ. 538 եր.)։ Մխիթար Գօշը իրաւաբանական արժէք շատ քիչ ունի, նրանով ղեկավարուել չի կարելի։ Մեր ձեռագիր կանոնագրքերը մի կատարեալ խաօս են, որտեղ ժողովել գրել են ամեն ինչ՝ թէ լսած, տեսած, ինքնահնար բաներ և թէ միևնոյն ժամանակ կանոնական հրահանգներ և եկեղեցական վաւերական կանոններ։

---

## 9) ՄԵՐ ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ԻՐԱՒՈՒՆՔԻ ՄՇԱԿՄԱՆ ԾՐԱԳԻՐԸ.

*Եթէ յաջողուի, մտադիր եմ այսպէս կազմել, հետևելով ռուս Յովհաննէս վարդապետի և ուսուցչապետ Սօկօլովի ուղղութեան։ Ա. գրքում զետեղել մեր եկեղեցական իրաւունքի բոլոր աղբիւրները, ընդհանուր և մասնաւոր. ընդհանուր աղբիւրները—այսինքն* 3 *տիեզերական և* 6 *տեղական ժողովները, համեմատելով մեր* 40 *կանոնագրքերի և յունա-սլաւոնական բնագրի կանոնները միմեանց հետ և ճիշտը հանելով, ապա հայոց ժողովների, ս. հարց, կաթուղիկոսների կանոնները և կարգադրութիւնները, և ապա* 1836 *թուի պօլօժէնիան և* 1861-*ի Սահմանադրութիւնը, դուրս վանելով այն՝ ինչ որ հաստատուած և ընդունուած չէ ազգային ժողովով կամ ազգի համաձայնութեամբ։*

*Բ. գրքում զետեղել հայոց եկեղեցական իրաւունքի տեսութիւնը* (теорія), *այսինքն արձանագրել այն ընդհանուր սկզբունքները, և օրէնքները որոնք բղխում են մեր եկեղեցական աղբիւրներից՝ ընթացս եկեղեցու ամբողջ կեանքի Լուսաւորչից մինչև այսօր, թէ կառավարչական՝ թէ դատաստանական և թէ օրէնսդրական։*

*Գ. գրքում տալ մեր եկեղեցու գործադրուող օրէնքները* (дѣйствующее право) *համեմատութեամբ միւս քրիստոնեայ եկեղեցիների կանոնների և եկեղեցական իրաւունքի հետ։*

---

# ՀԱՅՈՑ ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ԻՐԱՒՈՒՆՔԻ ԱՂԲԻՒՐՆԵՐԸ.



## ՀԱՅՈՑ ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ԻՐԱՒՈՒՆՔԻ ԱՂԲԻՒՐՆԵՐԸ.

Եկեղեցական իրաւունքի աղբիւրներ ասելով, հասկանում ենք այն հիմունքները, որոնք եկեղեցին ընդունում է իւր գործավարութեան մէջ իբրև ուղեցոյց ոյժ, որպիսի են Քրիստոսի պատուէրները, եկեղեցական աւանդութիւնը, յիշատակարաններ և ժողովածուներ, որոնց մէջ պատկերանում է եկեղեցու իրաւունքը իւր սահմաններով։

Եկեղեցական իրաւունքը յենուած զանազան տեսակէտների վրայ, մի քանի տեսակ բաժանմունք ունի։ Բովանդակութեան և հեղինակութեան կողմից բաժանւում է 1) Աստուածայինի, 2) Առաքելականի և 3) Եկեղեցականի։ Ծաւալի կողմից ընդհանուրի՝ բոլոր եկեղեցիներին պատկանող, և Մասնաւորի՝ ինքնավար եկեղեցիներին յատուկ։ Ռուս Յովհաննէս վարդապետը և ուսուցչապետ Սօկօլովը բաժանում են ըստ նշանակութեան և հեղինակութեան 1) Հիմնականի կամ Կանոնիկականի, ընդհանուր բոլոր եկեղեցիների համար, 2) պատմականի՝ որոնք անցեալի յիշատակարաններ են և պատմական նշանակութիւն ունին և 3) Գործնական աղբիւրների, որոնք պատկերացնում են գործադրուող իրաւունքը։

Մեզ՝ Հայոցս համար յարմար է բաժանել մեր եկեղեցական իրաւունքի աղբիւրները երեքի, այնէ, Ընդհանուրի, Մասնաւորի կամ Ազգայինի և Պետականի։ 1) Ընդհանուր ասելով հասկանում ենք այն աղբիւրները, որոնք ընդունում է

մեր եկեղեցին, նոյնպէս և օտար եկեղեցիները. այսպէս են Ս. Գիրքը, աւանդութիւնը, Առաքելական կանոնները, 3 տիեզերական ժողովները, 6 տեղական ժողովները, Ս. Հարց կանոնները։ 2) Ազգային կամ Մասնաւոր ասելով հասկանում ենք այն աղբիւրները՝ որոնք զուտ ազգային են, հայկական հողի վրայ սահմանուած. այն է՝ Հայոց եկեղեցական ժողովները, Հայոց ս. Հարց կանոնները, Կաթուղիկոսական կարգադրութիւնները և զանազան յիշատակարաններ (ժողովածուներ)։ 3) Պետական աղբիւրները նրանք են, որոնք սահմանուածեն տիրապետող պետութեան միջամտութեամբ և հաստատութեամբ այնէ՝ յունա-հռոմէական, ռուսաց, տաճկաց և պարսից հաստատած սահմանադրութիւնները և օրէնքները։

---

## Ա. ԸՆԴՀԱՆՈՒՐ ԱՂԲԻՒՐՆԵՐ.

### 1) *Ս. ԳԻՐՔ.*

Ս. Գիրքը բոլոր դաւանութիւնների համար կազմում է գլխաւոր և հիմնական աղբիւր։ Ս. Գիրքը տալիս է եկեղեցիներին 'ի հրահանգութիւն ոչ կեանքի մանր երևոյթները սահմանի տակ դնող կանոններ՝ այլ և այլ ժողովածուների նման, հապա բարոյականութեան ընդհանուր գաղափարներ, ընդհանուր դաւանաբանական վարդապետութիւն, որոնք ուղեցոյց և առաջնորդ են հանդիսանում քրիստոնեաներին տանելու այն ճանապարհով, որ միակն է կեանքի մէջ կրօնականբարոյականութեան կատարելութեան և նպատակներին հասցնելու համար։ Ահա այս մտքով աւետարանը տալիս է պատգամներ, պատուէրներ կեանքի ընդհանուր երևոյթների վերաբերմամբ, ազդելով մարդու խղճի վրայ, պահանջելով կատարելով այս ու այն պատուէրը ոչ բռնի ուժով, այլ խղճի ազատ թելադրութեամբ։ Սուրբ գիրքը երկու մասով, Հին

և Նոր, միևնոյն համահաւասար լիազօրութիւնը չունեն, Նոր-ուխտը ընդունում է իբրև դրական ուժ ունեցող հեղինակութիւն, իսկ Հին-ուխտը աւելի պատմական և Քրիստոսի նոր կանոնները տալուց յետոյ՝ իբրև խրատական և ուղղիչ աղբիւր։ Ս. Իրինիոսը ասում է. «Քրիստոս չփոխեց օրէնքի բնական պատուիրանները, բայց հեռացրեց Հին-ուխտի լուծը, որպէսզի մարդը ազատ և որդիական հաւատարմութեամբ Աստուծուն ծառայի»(40 եր)։ Քիչ յետոյ կրկնում է. «Թլփատութիւնը և միւս ծէսերը չէին տալիս կատարեալ արդարութիւն և փոփոխուեցին Քրիստոսի ձեռքով, բայց տասնաբանեայ պատուիրանները մնացին իրանց ուժի մէջ»։ Հին ուխտի ծէսերին չենթարկուելու լուծի վերացումը եղաւ առաքեալների ձեռքով Ս. առաքելական ժողովում, որտեղ առաքեալները միահամուռ վճռեցին Մովսիսական կարգերը պարտաւորական չդարձնել քրիստոնեաների համար, «ամենք իբրև ի մէնջ խռովեցուցին զձեզ՛ բանիւք խախտել զանձինս ձեր՝ ասեն թլփատել և պահել զօրէնսն՝ որոց ոչ հրամայեցաք» (Գործք ժե. 25)։ Յովհաննէս վարդապետը (ОПЫТЪ Ц. 3. Т. I. 26 եր.) ասումէ «Հին եկեղեցական իրաւունքը, որ ամփոփւում է հին ուխտի ծիսակատարութիւնների, կամ նուիրապետական, եկեղեցական-դատական կարգադրութիւնների մէջ, արդէն անցել է ամբողջ հին կտակարանի հետ, և Նորի մէջ պարտաւորական ույժ չունի, ինչպէս այդ հաստատւում է և առաքեալների ժողովում (Գործ. ժե.)։ Կան թէև հին ուխտի օրէնքում մի քանի կարգադրութիւններ, որոնք քրիստոնէական եկեղեցին ընդունում է, ինչպէս օր. ազգակցութեան մասին (Ղև. 18, 6 և լր), բայց դրանք արդէն մեծ ճշտութեամբ պարզուածեն եկեղեցու կանոնների մէջ և հետևապէս պէտք է յենուել այս կանոնների վրայ, քան թէ Հին-ուխտի մեկնութեան»։ Նոյնպիսի կարծիք և տիրապետում է կաթողիկ կանոնականների մէջ։

Ս. Գրքի մէջ պարտաւորական, իրաւական կանոններ, կեանքի զանազան երևոյթների մասին կարգադրութիւններ գտնում ենք հետևեալ տեղերում։ Յիսուս լիազօրութիւն է

տալիս առաքեալներին գործելու և քարոզելու իւր անունով ամեն տեղ. «գնացէք այսուհետև աշակերտեցէք զամենայն հեթանոսս, մկրտեցէք զնոսա յանուն Հօր՝ և Որդւոյ՝ և Հոգւոյն Սրբոյ։ Ուսուցէք նոցա պահել զամենայն, զոր ինչ ասացի ձեզ» (Մատ. իը. 19—20)։ 2) Յիսուս նրանց՝ կապելու և արձակելու իրաւունք է տալիս (Մար. ժը. 18)։ 3) Մկրտութեան խորհրդի սահմանումով պատուիրում է կատարել, «որ հաւատասցէ և մկրտեսցի, կեցցէ, և որ ոչն հաւատասցէ՝ դատապարտեսցի», (Մար. ժզ. 16)։ 4) Հաղորդութեան խորհուրդը սահմանեց «Եւ առեալ հաց գոհացաւ, եբեկ՝ և ետ նոցա և աս է, այս է մարմինն իմ, որ վասն բազմաց տուեալ, զայս արասջիք առ իմոյ յիշատակի...» (Ղուկ. իբ. 19)։ 5) Պսակի լուծման համար պատուիրեց, «որ արձակէ զկին իւր և ո՛չ վասն պոռնկութեան և առնիցէ այլ՝ շնայ, և որ զարձակեալն առնիցէ՝ շնայ» (Մար. ժթ. 3—9)։ 6) Երդման մասին, «ամենևին մի՛ երդնուլ, մի՛ յերկինս՝ զի աթոռ է Աստուծոյ...» (Մատ. ե. 34)։ 7) Դատաստանի համար «Եթէ մեղիցէ քեզ եղբայր քո, երթ յանդիմանեա զնա՝ յորժամ դու և նա միայն իցէք. եթէ լուիցէ քեզ, շահեցար զեղբայր քո...» (Մատ. ժը. 15)։ 8) Գերագոյն իշխանութեան հնազանդելու մասին. «Տուք զկայսերն՝ կայսեր և զԱստուծոյն Աստուծոյ» (Մար. իբ. 21)։ 9) Ձեռնադրութեան մասին «ձեռնադրեցին նոցա ըստ եկեղեցւոյ երիցունս» (Գոր. ժե. 22, Տիտ. ա. 5)։ Եպիսկոպոսների և սարկաւագների մասին (Տիտ. ա. 5)։ 10) Ժողովրդականների տալիք տուրքի մասին (Կորն. ա. թ։ 7—14)։ 11) Երէցներին դատելու դէպքում «Զերիցուէ դշարախօսութիւն մի ընդունիցիս, բայց եթէ երկուք կամ երեք վկայիւք» (ա. Տիմ. ե. 19)։ 12) Հիւանդներին իւղով օծելու մասին «Հիւանդանայցէ ոք ի ձէնջ, կոչեսցէ զերիցունս եկեղեցւոյ և արասցեն ի վերայ նորա աղօթս, օծցեն իւղով յանուն Տեառն» (Յակ. ե. 14)։ 13) Կերակրի մէջ չգործածել հազած միս (Կորն. ա. 10, 25, 28)։ 14) Խառն ամուսնութիւնների մասին (ա. Կորն. ժզ. 7, 10)։ 15) Յանցաւորների դատի մասին (ա. Տիմ. Ե. 20)։

Սուրբ գրքի այս և նման պատուէրները, որոնք այլապէս կոչւումեն Աստուածային իրաւունք, արդեօ՞ք ունին անփոփոխ ուժ, փոփոխութեան կամ աւելացումների ենթարկել կարելի՞ է թէ ոչ։ Սուրբ գրքի մասին խօսելիս ասւեց, որ նա տալիս է ընդհանուր բարոյական հիմքեր և ո՛չ փոփոխական կեանքի զանազան դէպքերի մասին կանոններ, կեանքի զանազան երևոյթները առաջացնում են նոր կարգեր, որոնց հետևում են նոր կանոններ։ Օրինակի համար, երբ Պօղոս առաքեալը տեսնում է որ զանազան դէպքերի համար Յիսուսից մնացած կարգադրութիւն չունի, իսկոյն մի կանոն է սահմանում և աւելացնում, որ այդ իմ կարծիքնէ և ո՛չ տիրոջ հրամանը (ա. կորն. 7—25)։ Եկեղեցու գործնականութեան մէջ միքանի կարգադրութիւններ փոփոխութեան են ենթարկուել. (Տիմ. Գ։ 2) առաքեալի պատուէրը եպիսկոպոսին մի կնոջ այր լինելու համար ասուած, յետոյ բոլորովին փոխուեց և կուսակրօնութիւնը մտաւ։ Առաքեալների ժամանակուայ արած կարգերը տուրքերի ժողովելու, ընծայաբերութեան, հաղորդութեան, գոյքերի վաճառման և հասարակաց դարձնելու վերաբերմամբ բոլորովին փոխուեց, ամուսնալուծութեան սահմանի ընդարձակումը, հիւանդաց օծումը մեր մէջ չգործադրելը—դրանք թէև նախկին կարգից դուրս են, բայց՝ բոլոր կանոնական անձանց, Վալ'տերի, Փիլիպպսի, Վուլտէի, Յովհաննէս վարդապետի և Սօկօլովի կարծիքով այդ չէ նշանակում թէ Ս. գրքի ոյժը թուլացել է, կամ նրա նշանակութիւնը նսեմացել է, ամենևին ո՛չ, հապա բոլորը մեկնում են, որ աստուածային յայտնութիւնը իրաւաբանական օրէնքների ժողովածու չէ՛, Քրիստոսի՝ իբրև երկրաւոր թագաւորի ձեռքով հրատարակած իւր թագաւորութեան համար, հապա՛ նա բովանդակում է ընդհանուր սկզբունքներ, որոնք եկեղեցին ընդունում է և պահպանում է իբրև հիմունքներ, որոնց հետ պիտի համակերպուի եկեղեցու կեանքի արտաքին կարգը և կազմութիւնը պատմական զարգացման ընթացքում, և որոնք նա կոչուած է մարմնացնելու իւր արտաքին հաստատութիւններում։*)

*) Տես Соколовъ 73 եր.

Յովհաննէս վարդապետը ասում է. «Չպէտք է մոռանալ, որ նոր ուխտի մէջ առաքելական եկեղեցու տեսանելի դրութիւնը, որ պատկերացրած է ս. գրքում, շատ կողմերից արդէն չի համապատասխանում ուրիշ ժամանակների հանգամանքներին, որովհետև եկեղեցին իւր մէջ մի է, բայց մարդիկ և ժամանակները փոփոխւում են։ Դրա համար, ոչ այն՝ ինչ որ առաքեալների ժամանակ նշմարւում էր, կարելի է այժմ...» (Опытъ I 27 եր.)։ Փիլիպպսը ասում է «Քրիստոս կարգեց հոգևոր իշխանութիւն իւր եկեղեցու կառավարութեան համար և հիմնաւոր սկզբունքներ սահմանելով տուաւ իւր Թագաւորութեան այնպիսի կազմակերպութիւն, որ հաստատ է և անդրդուելի իւր հիմունքների մէջ» (տես Սօկօլով 73 եր.)։ Սրանց և ուրիշ կանոնիկների բոլոր կարծիքները յանգում են այն կէտում, որ եկեղեցու գործնական կեանքի մէջ զանազան ժամանակներում և այլ և այլ հանգամանքների շնորհիւ մտած նոր եկեղեցական կանոնները սուրբ հայրերի կողմից՝ եթէ փոփոխութեան են ենթարկում հին կարգերը և սահմանադրութիւնները, անփոփոխ և անդրդուելի են պահում եկեղեցու հիմնական սկզբունքը, Քրիստոսի քարոզած վարդապետութիւնը և բարոյական գաղափարները։

Յայտնւում է և այսպիսի կարծիք, որ հաւատոյ դաւանանքը և Աստուածային իրաւունքը եկեղեցուց չեն ծագում, եկեղեցին նրանց համար աղբիւր չէ, այլ դրանք եկեղեցուն գրուած են հէնց սկզբից, նրանք անկախ են իրանց ծագմամբ, ուստի և անփոփոխ պիտի մնան իրանց էութեամբ, եկեղեցին չի կարող կազմել այնպիսի դաւանանք, որը չկայ Յայտնութեան մէջ, չկայ Աստուածային իրաւունքի աղբիւրի մէջ։

Եկեղեցու գործունէութիւնը այդ կարծիքի վերաբերմամբ այսպէս պիտի յարատևի, եկեղեցին ընդունելով Աստուածային իրաւունքը իւր աղբիւրներից, խոստովանելով Աստուածային հեղինակութիւնը, պիտի պարզաբանի և բացատրի նրա նշանակութիւնը և իւր գործունէութեան մէջ մարմնացնի արտաքին հաստատութիւնների մէջ և յարմա-

բացնի կեանքի երևոյթների հետ*)։ Այսպիսով Աստուածային իրաւունքը եկեղեցական իրաւունք է դառնում ոչ իւր ծագմամբ, այլ իւր բովանդակութեան, բացատրման և գործադրման եղանակով, որը կատարւում է ընդհանուր եկեղեցու համաձայնութեամբ։ Ընդհանուր եկեղեցական կեանքը անփոփոխ, պնդացած ձևեր չի ներկայացնում, նա մշտապէս կենդանի, գործունեայ լինելով, պէտք է իւր նոր երևոյթները յարմարեցնի դաւանանքի սկզբունքների հետ։—

Հիմա հարց է առաջանում, ո՞վ պէտք է երկու երևոյթների մէջ հաշտութիւն և համաձայնութիւն կայացնի, արդեօ՞ք ամբողջ եկեղեցին, թէ եկեղեցու մի մասը, կամ եկեղեցու մի անդամը. կամ աւելի պարզ ասած, ո՞վ է եկեղեցու մէջ օրէնսդրական մարմինը և կարգաւորող ոյժը, ազգային ժողո՞վը, հոգևորականութիւնը թէ՞ եկեղեցու պետը։— Այստեղ կանոնիկների կարծիքները տարբերւում են. Հռոմէական եկեղեցին ընդունում է պապի անսխալականութիւնը և նրա միակ հեղինակութիւնը կառավարելու եկեղեցին և կանոններ սահմանելու։ Միւս եկեղեցիները ընդունում էին միայն ընդհանուր եկեղեցական ժողովների հեղինակութիւնը։ Հայերը ընդհանուր եկեղեցական ժողովների հեղինակութիւնը ընդունում էին միմիայն մինչև 450 թիւը, նրանց համար պարտաւորական ոյժ ունէին Նիկիայի, Պօլսի և Եփեսոսի տիեզերական ժողովները։ 450-ից առաջ էլ, յետոյ էլ այդպիսի հեղինակութիւն ունէր հայոց համար միմիայն հայոց ազգային եկեղեցական ժողովը. իսկ ամենայն հայոց կաթուղիկոսների կարգադրութիւնները, իբրև Օրինապահի և Աւանդապահի, ընդունւում էին միմիայն այն դէպքում, երբ յենւում էին հայոց ժողովների և ժողովրդական-աւանդական սովորութիւնների վրայ։ Ռուսաց Սինօդի հաստատումից յետոյ, օրէնսդրական մարմնի հեղինակութիւն ստացաւ այդ նոր կազմակերպութիւնը և նախկին ժողովների դերը յանձն առաւ։ Մեր մէջ մեր Սինօդը այդ նոյն ֆունկցիան չունի,

*) Տես Соколовъ—76 եր.

*որովհետև նրա իրաւասութիւնը տարածւում է միմիայն Ռուսահայոց վրայ։*

*Բողոքական կանոնիկները սկզբունքով ընդունելով Աստուածային իրաւունքը, մերժում են եկեղեցու մէջ անսխալական մարմնի գոյութիւնը եկեղեցական իրաւունքը պարզաբանելու և վերականգնելու խնդրում։ Սոկոլովը՝ զանազան մասնաւոր ծայրայեղ կարծիքները մի կողմ թողնելով, բերում է պահպանողական Րիխտէրի կարծիքը. «Թէ Նոր-ուխտի մէջ Աստուածային կամքը արտայայտուել է որոշ կերպով իրաւունքի նկատմամբ, այդ բանում համաձայն են բողոքական և կաթոլիկ եկեղեցիները։ Բայց այդ տեսակ իրաւական որոշումների ծաւալը երկու եկեղեցին պարզաբանում են տարբեր կերպով։ Կաթոլիկ եկեղեցին ընդունում է ս. Հոգով ներշնչուած մարմնի գոյութիւնը, որը անսխալ կերպով մեկնում է ս. գիրքը։ Այդ հիմամբ նա կարելի համարեց կապել ս. գրքի զանազան տեղերի հետ պատմական կարգով կազմուած շատ հաստատութիւններ, նայելով վերջիններիս վրայ իբրև Աստուածային կամքի ճշմարիտ արտայայտութեան վրայ։ Ուրիշ տեսակ է ընդունում Աւետարանական եկեղեցին։ Նա չի ընդունում այդպիսի միջական մարմնի գոյութիւնը... չի ընդունում մասնաւորապէս, որ ս. գրքի մէջ հաստատուի եկեղեցական կազմակերպութիւն որոշ, հաստատ և անփոփոխ ձևով։ Բայց նա վճռականապէս պնդում է, որ եկեղեցին իրան թողնուած ազատութեամբ՝ եկեղեցական մարմնի կազմակերպութիւնը և զարգացումը պիտի կատարի ս. գրքի ընդհանուր սկզբունքների հիման վրայ»*-(Соколовъ 72—80 *երես*)։

---

## 2) ԱՌԱՔԵԼԱԿԱՆ ԵՒ ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ԱՒԱՆԴՈՒԹԻՒՆ.

Ընդհանուր աղբիւրների երկրորդ մասն է եկեղեցու գործնական կեանքը, Նրա աւանդութիւնները և սովորութիւնները։ Քրիստոսի տուած աւանդի համաձայն առաքեալները ցրուելով աշխարհի չորս կողմերը, բերանացի սովորեցնում էին մարդկանց այն՝ ինչ որ լսել էին Յիսուսից և աչքով տեսել Նրա արածները։ Գ—Դ դարու եկեղեցական պատմիչ Եւսեբիոսը ասում է. «Մեր փրկութեան համար մենք իմացել ենք ոչ ուրիշ մէկից, այլ Նրանցից, որոնց միջոցով հասել է մեզ Աւետարանը, որն այն ժամանակ Նրանք քարոզում էին (բերանացի), ապա Աստուծոյ կամքով տուին մեզ գրով, իբրև մեր հաւատքի ապագայ հիմք և սիւն...։

Այսպէս Մատթէոսը հրատարակեց հրէաների համար նրանց սեպհական լեզուով Աւետարանը այն ժամանակ, երբ Պետրոս և Պօղոս Հռոմում աւետարանում էին և եկեղեցի հիմնում։ Նրանց հեռանալուց յետոյ Մարկոսը, Պետրոսի աշակերտ-մեկնիչը տուաւ մեզ գրաւոր, ինչ որ քարոզուած էր Պետրոսի բերնով։ Եւ Ղուկասը, Պօղոսի ընթացակիցը, գրքով արձանագրեց Նրա քարոզած աւետարանը։ Ապա Յովհաննէս՝ Տիրոջ լանջին ընկած աշակերտը նոյնպէս հրատարակեց աւետարանը իւր՝ Ասիայի Եփեսոսում եղած ժամանակ». 273 երես։

Ուրեմն Առաքելական Աւանդութիւն ասելով պիտի հասկանանք, այն բոլոր քարոզութիւնները, խրատները, հրահանգները և կարգերը, որոնք առաքեալները ասել են և սահմանել, բոլոր տեղերում իրանց յաջորդներին յանձնել՝ կատարելու իբրև աւանդուած կարգ, իբրև եկեղեցական սովորութիւն։ Ահա այս աւանդութիւնն է եկեղեցական իրաւունքի գլխաւոր աղբիւրներից մէկը։ Որպէսզի աւանդութիւնը և սո-

վորութիւնը եկեղեցու գործնականութեան մէջ ունենայ պարտաւորական ոյժ, անհրաժեշտ է որ աւանդութիւնը լինի ս. գրքի ոգուն համաձայն՝ մտած առաքեալներից և նրանց յաջորդող սուրբ հայրերից և եկեղեցուց, և որոշ ժամանակ եկեղեցու գործնականութեան մէջ տեւողութիւն ունեցած։ Մեր եկեղեցու կարգ կանոնի մեծ մասը հիմնուած է առաքեալներից և Լուսաւորչից մնացած աւանդութիւնների վրայ։ Ներսէս Շնորհալու և այլ հայրապետների թղթերի մէջ միշտ երեւում են աւանդութիւններից քաղած վկայութիւններ հայոց եկեղեցու ուղղափառութեան համար։ Թէ որքան ահագին ոյժ է ունեցել աւանդութիւնը նախկին դարերի եկեղեցու գործնականութեան մէջ, այդ երեւում է թէ առաքեալների և թէ ս. հայրերի գրուածներից։ Պօղոս առաքեալը Տիմոթէոսին պատուիրում է պինդ պահել իւր տուած աւանդը. «Հաստատեալ եմ, թէ կարող է զաւանդն պահել յօրն յայն։ Ունիցիս օրինակ ողջմտութեան բանիցն՝ զոր լինէն լուար....։ Զբարւոք աւանդն պահեսջիր», (Բ. Տիմ. ա։ 12—15)։ «Գովեմ զքեզ՝ զի զամենայն ինչ յիշէք, և որպէս աւանդեցի ձեզ՝ զաւանդութիւնսն ունիցի՛ք». (Ա. Կորն. ժա. 2)։ «Այսուհետև եղբարք, հաստատուն կացէ՛ք և պինդ կալարո՛ւք զաւանդութիւնսն, զոր ուսայք՝ թէ բանիւ թէ թղթով մերով». (Բ. Թես. բ։ 14—15)։ Երկրորդ դարու պատմիչ Տերտուղղիանոսը գրում է. «Եթէ մի որեւէ կանոն չի որոշուած գրով, բայց ամեն տեղ պահպանւում է, նշանակում է, նա հաստատուած է սովորութեամբ, հիմնուած աւանդութեան վրայ։ Եթէ մէկը կասի, որ աւանդութեան համար էլ հարկաւոր է մի որեւէ գրաւոր վկայութիւն, այն ժամանակ մենք մեր կողմից ցոյց կտանք շատ կարգեր, որոնք առանց մի որեւէ գրութեան, լոկ աւանդութեան հեղինակութեան շնորհիւ, և սովորութեան ուժով պահպանւում են։ Այսպէս սկսենք մկրտութիւնից, մօտենալով ջրին. մենք առաջ աւագի ձեռքով վկայում ենք, որ հրաժարւում ենք սատանայից և նրա չար զօրութիւնից, յետոյ երեք անգամ ընկղմւում ենք, և աւազանից ելնելով, ճաշակում ենք մեղր և կաթ, ապա ամ-

բողջ եօթնեակը սովորական լուացումներ չենք կատարում։ Հաղորդութեան խորհուրդը ընդունում ենք մինչև արևծագը, և ո՛չ այլապէս քան քահանայի ձեռքից. Հանդուցեալների համար ընծայաբերութիւն ենք անում և ամեն տարի հանդէս կատարում մարտիրոսների յիշատակին, պաս չենք պահում կիւրակի օրը, նոյնպէս և ծունր չենք դնում նոյն օրը, խիստ զգուշանում ենք որ բաժակից կամ հացից մի բան չընկնի գետնի վրայ, բոլոր սովորական գործերի ժամանակ, տուն մտնելիս կամ դուրս գալիս, լուացուելիս, քնից վեր կենալիս և քնելու գնալիս, արևը մայր մտնելիս և ծագելիս, երեսներիս խաչ ենք անում։ Եթէ այդ և ուրիշ շատ այդպիսի սահմանադրութիւնների համար կհարցնես գրաւոր օրէնք, չես գտնիլ։ Այստեղ ունի իւր ոյժը աւանդութիւնը, իբրև հիմք, սովորութիւնը՝ իբրև հաստատութիւն, հաւատքը՝ իբրև պաշտպանութիւն» (տես, Заозерскій, объ источникахъ права православной церкви· 29 երես)։

Աւանդութեան ոյժի մասին Բ. դարու միւս հեղինակ ս. Իրինէոսը Գ. գլխում գրում է. «Նոյնպէս Եփեսոսի եկեղեցին, որը հիմնուած է Պօղոսի ձեռքով և իւր մէջ ունեցած է Յովհաննէսին մինչև Տրայիանոսի ժամանակները (մօտ 98 թ.), առաքելական աւանդութեան ճշմարիտ վկայ է»։ «Ի՞նչ, եթէ առաքեալները թողած չլինէին մեզ գրութիւններ, մի՞թէ չպիտի հետևէինք այն աւանդութեան կարգին, որ տրուել է նրանց՝ որոնց յանձնուել են եկեղեցիները» (278 եր.)։ Երբ երկրորդ դարում շատ աղանդաւորներ առաջացան, զանազան թիւր մտքեր տարածեցին, միամիտներին իրանց կողմը ձգելու համար ասում էին, թէ իրանք առաքեալներից ծածուկ գրաւոր վկայութիւններ ունին յօգուտ իրանց աղանդական մտքերին, ահա դրանց համար գրում է Իրինէոսը (202), 275—277 երեսներում. «Բոլոր ճշմարտութիւն տեսնել ցանկացողները կարող են իւրաքանչիւր եկեղեցում իմանալ առաքեալների աւանդութիւնը, քարոզուած բոլոր աշխարհում, և մենք կարող ենք թուել այն եպիսկոպոսներին, որոնց առաքեալները նշանակել են եկեղեցիներում

իրանց փոխանորդները մինչև մեզ, որոնք ոչինչ չէին սովորեցնում և ոչինչ չգիտէին այն բաներից, ինչ որ զառանցում են դրանք։ Որովհետև եթէ առաքեալները իմանային ծածուկ խորհուրդներ, որոնք յայտնում էին կատարեալներին առանձին և գաղտնի միւսներից, այն ժամանակ աւելի շուտ կհաղորդէին նրանց՝ որոնց իրանց յաջորդ էին թողնում և որոնց տալիս էին իրանց ուսուցչութեան տեղը, որովհետև նրանց կանոնաւոր գործավարութիւնից պիտի մեծ օգուտ առաջանար, իսկ նրանց անկումից մեծ դժբախտութիւն»։ «Հռոմի եկեղեցին գրեց Կորնթացոց շատ տեղեակին թուղթ, յորդորելով նրանց դէպի խաղաղութիւն և վերականգնելով նրանց հաւատը, աւետելով առաքեալներից ստացած ոչ վաղ աւանդութիւնը։ «Այս կարգով և այս յաջորդութեամբ եկեղեցական աւանդութիւնը՝ ճշմարտութեան քարոզը առաքեալներից հասել է մեզ։ Եւ այդ ամենակատարեալ ապացոյցն է, որ միևնոյն կենդանարար հաւատքը պահպանուել է եկեղեցում առաքեալներից մինչև այժմ և տուած է ճշմարիտ կերպով»։

Երբ Բ. և Գ. դարերում, գրաւոր վկայութիւն չունենալով, արևելեան և արևմտեան եկեղեցիները աւանդութեան վրայ հիմնուած, վիճում էին միմեանց հետ զատիկը կատարելու ժամանակի մասին, մի կողմից Պոլիկարպոսը, որը Յովհաննէս առաքեալի կարգած Զմիւռնիայի եպիսկոպոսն էր, և Պոլիկրատը կատարում էին հրէաների հետ Նիսանի 14-ին զատիկը, պնդելով որ այդ կարգը աւանդ են ստացել Փիլիպպոս և Յովհաննէս առաքեալներից և այդ աւանդութեամբ էլ կգնան։ Միւս կողմից Անիկիտ և Վիկտոր Հռոմի պապերը, յենուելով Պօղոս և Պետրոս առաքեալների աւանդութեան վրայ, պնդում էին որ զատիկը չպիտի կատարել հրէաների պէս շաբաթուայ մէջ, այլ հետակայ կիրակի օրը։ Դրա համար եղան փոքրիկ ժողովներ Հռոմում, Գաղղիայում, Պաղեստինում, Փոքր-Ասիայում, Օսրօէնում (Եդեսիայի կողմերում) և դժուարանում էին համաձայնութեան գալ։ Վիկտոր պապը մինչև իսկ կամեցաւ նզովել ասիական եկեղեցի-

երը, գրկել արևմտեաններին հաղորդակցութիւնից, բայց-կչտամբանքների ենթարկուելով իւր կողմնակից եպիսկոպոսներից, որոնց մէջ էր և յայտնի Իրենիոսը, յետ կանգնեց իւր քայլից։ Եւսեբիոսը բերում է Պողիկրատի թուղթը և պատմում, «Մենք տօնում ենք այդ օրը անսխալաբար, ոչինչ աւելացնելով և պակսեցնելով։ Ասիայում թաղուած են մեծ առաջնորդներ, Փիլիպպոսը Իերապոլսում իւր երկու կոյս աղջիկներով, երրորդ կոյս աղջիկը Եփեսոսում. Նոյնպէս Յիսուսի լանջին ընկած Յովհաննէս քահանան թաղուած է Եփեսոսում, նոյն տեղում է և Զմիւռնիայի Պողիկարպոս նահատակը, բոլորը, դրանք տօնում էին զատիկը ըստ աւետարանի 14-րդ օրը (Նիսանի), ոչ մի բանով յետ չմնալով հաւատքից, այլ միայն պահպանելով. այսպէս վարուել է Պողիկարպոսը և ես նուաստս, և նրանք տօնել են զատիկը այն օրը, երբ ժողովուրդը թողել է խմոր հացը»։ Ապա կըցում է, որ բոլոր եպիսկոպոսները համաձայն են իւր հետ։ Իրենիոսը, որը Լիոնի եպիսկոպոսն էր, լսելով Վիկտոր պապի նզովելու մտադրութիւնը, գրեց նրան յորդորական նամակ, որ յետ կանգնի այդպիսի քայլից. «Անհամաձայնութիւն կայ, գրում է Իրենիոսը, ոչ միայն այդ օրուայ (այսինքն զատիկ) համար, հապա և պաս պահելու ձևի վերաբերմամբ, ոմանք կարծում են, որ պէտք է պահել մի օր, միւսները երկու օր, և ուրիշները շատ օր, ոմանք էլ իրանց օրը համարում են 40 գիշերուայ և ցերեկուայ ժամ։ Պաս պահելու այս տարբերութիւնը սկսուել է ոչ մեր ժամանակը, հապա շատ առաջ, մեր նախնիքների ժամանակ, որոնք հաւանականօրէն շատ մեծ ճշտութեամբ չէին պահպանում և այդ մասնաւոր հասարակ սովորութիւնը տալիս էին իրանց սերունդներին։ Բայց և այնպէս, նրանք բոլորը խաղաղութեամբ էին պահում, մենք էլ ապրում ենք խաղաղ միմեանց հետ և պասի վերաբերմամբ եղած անհամաձայնութիւնը հաստատում է հաւատի ներդաշնակութիւնը։ Բայց և այնպէս չնայելով այդ չպահելուն, նրանք հաշտ էին վարւում միւս եկեղեցիներից եկած եղբայրների հետ, որոնց

մէջ ուրիշ սովորութիւն էր տիրում, որոնց համար այդ սովորութիւնը տարօրինակ պիտի թւար։ Այդպիսի սովորութեան հետևելուն համար ոչ ոք և ոչ երբէք չմերժուեց (հաղորդակցութիւնից)։ Երբ երանելի Պօղիկարպոսը Անիկետի ժամանակ եկաւ Հռոմ, նրանք երկուսը ուրիշ առարկաների վերաբերմամբ միքիչ վիճեցին միմիանց հետ, յետոյ իսկոյն համաձայնեցին և դրա մասին վիճել չուզեցին, որովհետև ոչ Անիկիտը կարողացաւ Պօղիկարպոսին համոզել չանել այն, ինչ որ նա միշտ կատարում էր ապրելով Յովհաննէս և միւս առաքեալների հետ, ոչ էլ Պօղիկարպոսը կարողացաւ համոզել Անիկիտին անել իրանցը, որովհետև Անիկիտը ասում էր, որ նա պարտաւոր է պահպանել իրանից նախորդ քահանաների սովորութիւնները։ Չնայելով գործերի այդ դրութեան, բայց և այնպէս նրանք գտնւում էին փոխադարձ յարաբերութեան մէջ»։

Բացի զատկի վէճից, վէճ առաջացաւ և Աֆրիկայի եկեղեցու և Հռոմի մէջ հերետիկոսների կրկնամկրտութեան մասին, եկեղեցուց հեռացուածներին ընդունելու ձևի մէջ։ Այդ վէճերի մէջ առաջնորդւում էին աւանդութիւններով։ Այդ հակաճառութիւնները ցոյց են տալիս, որ եկեղեցիները գտնուելով տարբեր տեղերում, տարբեր պայմանների մէջ, կառավարուելով զանազան հայրերով, մտցնում էին իրանց մէջ առաքելական աւանդութիւններին հետևելով ոչ նման կարգեր և սովորութիւններ, աշխատելով միայն, որ ընդունած աւանդութեան հակառակ չգնան։ Եթէ առաքելական աւանդութիւնները տարբեր էին, այն ժամանակ նրանք կամ համաձայնում էին զիջելով միմիանց, կամ անկախ էին վարւում միայն խաղաղութեամբ և հաշտ կերպով, համարելով որ ձևական տարբերութիւնները չեն վնասում դաւանաբանական սկզբունքներին։ Թէ մինչև Դ. դարը եկեղեցիները կառավարւում էին աւանդութեամբ, չունէին գրաւոր ժողովածու կանոններ, այդ երևում է թէ Եւսեբիոսի (†340) վկայութիւնից և թէ Բարսեղ Կեսարացու (370—378) Իկօնիայի Ամֆիլօխ եպիսկոպոսին գրած թղթերից։ Այս թղթերի

91 և 92 յօդուածները վերաբերում են եկեղեցու ծէսերին, որոնք արմատացել էին եկեղեցու մէջ ո՛չ թէ գրաւոր վկայութեան ուժով, այլ աւանդութեամբ. «Որովհետև, ասում է Բարսեղ մեծը, եթէ սկսենք մերժել անգիր սովորութիւնները, իբրև մեծ ույժ չունեցող, այն ժամանակ աննկատելի կերպով կվնասենք աւետարանը իւր գլխաւոր մասերում...». յետոյ ասում է, խաչակնքելը, արևելք դառնալ աղօթելը, հաղորդութեան ձևը և աղօթքները, մկրտութեան իւղի, ջրի օրհնելը, երեք անգամ ընկղմելը «ո՞ր գրաւոր խօսքն է սովորեցնում, ո՛չ ապաքէն գաղտնի և լռելեայն աւանդութիւն է»: 92 յօդուածում գրում է. «Որովհետև շատ բան է մտել մեր մէջ անգիր, թող շատ բաների հետ էլ այդ ընդունենք,... Եւ այսպէս, եթէ մենք ինչպէս դատաստանի ժամանակ, գրաւոր ապացոյցներ չունենալով ներկայացնում ենք մեր գործի օգտին շատ վկաներ, մի՞թէ այդ ձևով արդարացնող վճիռ չենք ստանալ...» (տե՛ս, книга правилъ 348 երես):

Գրաւոր կանոնների բացակայութիւնը շատ դժուարացնում էր ընդհանուր եկեղեցում միանման կարգ պահել. քրիստոնեայ պետութիւն չկար, կռապաշտ տէրութիւնների հալածանքները արգելք էին լինում ընդհանուր եկեղեցական ժողովներ գումարել. ուստի և եկեղեցիները իրանց միութիւնը պահելու համար դիմում էին փոքրիկ տեղական ժողովների, որոնց վճիռները հաղորդում էին միմիանց շրջիկ այցելուների ձեռքով, կամ սուրբ հայրերի զանազան թղթերը այլ և այլ հարցերի պարզաբանութեան համար գրուած միմիանց էին ուղարկում ի տեղեկութիւն և ի զգուշութիւն: Այդպիսի փոքրիկ ժողովներ եղել են Հռովմում, Պաղեստինում, Փոքր-Ասիայում, Եդեսիայում, Կարթակենում: Սուրբ հայրերի գրուածներից մնացել են Դիոնիսիոս Աղէքսանդրացու և Գրիգոր Նիւսացու թղթերը: Շրջիկ այցելուներից էր Իրենիոսի ժամանակակից Եղիզիպպը, որ պտտում էր և առաքելական աւանդութիւններ ժողովելով գրի էր անցնում, այդ եղանակով 5 գիրք կազմեց. գրքերը դժբախտաբար մեզ

չեն հասել։ Եւսեբիոսը յիշում է և մի ուրիշ ժողովածուի մասին «Առաքելական կարգադրութիւններ» վերնագրով (գիրք 3, գլ. 25, 57—59, գր. 7, գլ. 7), որը անվաւերական համարելով կասկածաւորների շարքն է դասում։

Նշանակում է ընդհանուր եկեղեցին և մեր նախալուսաւորչեան փոքրիկ ազգային եկեղեցին մինչև Գրիգոր Լուսաւորիչ—Դ. դարը կառավարուել են առաքելական և եկեղեցական աւանդութիւններով, չեն ունեցել վաւերական—պարտաւորական կանոններ և կարգադրութիւններ գրաւոր ձևով։

---

### 3) ԱՌԱՔԵԼԱԿԱՆ ԿԱՆՈՆՆԵՐ.

Ընդհանուր աղբիւրների մէջ երրորդ տեղը բռնում են Առաքելական կոչուած կանոնները։ Առաքելական կոչւում են ըստ յունաց և ըստ լատինաց եկեղեցու՝ այն 50 և 85 կանոնները, որոնք մտած են եղել Դիոնիսիոսի և Սխոլաստիկի կանոնների ժողովածուի մէջ, և որոնք եօթերորդ տիեզերական ժողովում 787-ին ընդունուել են իբրև եկեղեցական կանոններ։ Հայոց մէջ առաքելական անունով կան երկու կանոններ, թւով 34 և 85, 85-ը միևնոյն յունաց և լատինաց ընդունածն է, իսկ 34-ը միայն մեր եկեղեցու, գուցէ և ասորոց եկեղեցու ընդունածը. ըստ Հ. Տաշեանի և Հայր Գաթրճեանի այս 34-ը—թարգմանութիւն է ասորերէնից։ Եթէ ճիշտ է սրանց կարծիքը, այն ժամանակ մենք կունենանք երկու տեսակ՝ յունական և ասորական ծագմամբ կանոններ. յունական առաքելական 85 կանոնները ընդունում են միւս եկեղեցիներն էլ, միայն լատինաց մէջ այդ թիւը 50-ի է իջած. իսկ ասորական 34 կանոնը ընդունում է միայն մեր եկեղեցին, միւսները չեն ընդունում, թէև նրանց ժողովածուների մէջ էլ կան դրանց նման կանոններ։ Երկու կանոնն

*էլ առաքելական կոչւում են, բայց վաւերական չեն, այսինքն առաքեալների ձեռքով գրուած չեն, Հապա Հետակայ դարերում են ժողովուած և առաքեալների անունով Հրատարակած։ Այդպէս են ընդունում և միւս եկեղեցիները, եօթերորդ տիեզերական ժողովը երբ ընդունեց 85 կանոնը, արձանագրեց որ «սուրբ առաքեալների անունով» տրուած կանոնները եկեղեցին իբրև Հրահանգներ կունենայ իւր գործնականութեան մէջ։ Թէ առաքելական կանոնները վաւերական չեն, Հապա միայն նախկին երեք դարերի ընթացքում կազմուած և առաքելական անունով Հրատարակուած են, այս ապացուցանելու Համար կարելի է ասել, նախ՝ 1) եթէ առաքեալները գրած լինէին այդ կանոնները, անպատճառ կկազմէին ս. գրքի մի մասը, առաքելոց թղթերի և գործերի շարունակութիւնը և միշտ կկարդացուէին եկեղեցիներում։*

*2) Նախորդ յօդուածում տեսանք, որ զատկի տօնի վէճի պատճառով Վիկտոր պապը ուզում էր արևելեան բոլոր եկեղեցիները նզովքի ենթարկել, այն ինչ Հակառակորդները վկայութիւն էին բերում առաքելական աւանդութիւնները և ո՛չ առաքելական կանոնի 7-րդ յօդուածը, որը վճռականապէս արգելում է Հրէաների Հետ զատիկ կատարել, և վերջապէս այդ կանոնները եթէ լինէին, մի՞թէ վէճ կարող էր առաջանալ։*

*3) II և III դարերում երբ վէճ առաջացաւ կրկնակնունքի և Հաւատուրացներին ընդունելու ձևի մասին, թէ տեղական Ափրիկայի եպիսկոպոսների մէջ և թէ Հռոմի ու դրանց մէջ. Նրանք վկայութիւն էին բերում աւանդութիւնները և ո՛չ առաքելական կանոնների 44, 47, 79, 80, 81 յօդուածները, որոնք որոշակի խնդիրը պարզում են։ Մինչև անգամ երբ Հռոմի եպիսկոպոս Ստեփանը իւր պաշտպանութեան Համար վկայութիւն բերաւ ինչ որ մի առաքելական կանոն, այն ժամանակ Ասիացի եպիսկոպոսները մեղադրեցին նրան ստախօսութեան Համար. Կեսարացի Ֆարմիլիան եպիսկոպոսը գրում է Կիպրիանոսին. «Չկայ մի յիմար, որ Հաւատայ, թէ այդպէս են աւանդել առաքեալները։ Բոլոր այդ*

անպարկեշտ և պժգալի աղանդները ծագել են յետոյ» (տե՛ս, Лашкаревъ ц. п. 22 երես)։

4) III դարում վէճ առաջացաւ Երուսաղէմի և Աղեքսանդրիայի Դիմիտրի եպիսկոպոսների մէջ Որոգինէսի քահանայ ձեռնադրելու խնդրի մասին։ Աղեքսանդրիայի եպիսկոպոսը աւանդութեան հակառակ էր համարում իրան ներքինիացնող մարդուն քահանայութեան աստիճան տալ. այն ինչ Կեսարիայի եպիսկոպոսը ձեռնադրողի հետ միասին պնդում էին, որ Որոգինէսի առաքինի կեանքը, նրա՝ Աստուծուն ծառայելու նպատակով այդպիսի քայլ անելը՝ չեն արգելում նրան քահանայ ձեռնադրել. և նրացից ոչ ոք չի դիմում առաքելական 22 և 20 կանոններին, որոնք խստիւ արգելում են ներքինիացնելը։

5) Նախորդ յօդուածում նախկին 4 դարերի հեղինակների գրուածների քաղուածներից երևաց, որ նախանիկիական եկեղեցին ոչ մի գրաւոր կանոն չունէր առաքելական անունով, բոլորը կառավարւում էին առաքելական աւանդութիւններով։

6) Առաքելական կանոնների մէջ, որ յետոյ կտեսնենք, այնպիսի բարդ եկեղեցական կազմակերպութեան հետքեր են երևում, որոնք առաքեալների ժամանակ ամենևին գոյութիւն չունէին (7, 21, 24, 44, 47, 50, 81, 79, 85 ևն.)։

7) Դ. դարու պատմիչ Եւսեբիոսը, որին բոլորը ընդունում են անխտիր կերպով իբրև պատկառելի և ճշմարտապատում եկեղեցական, իւր պատմութեան մէջ յիշում է այն բոլոր գրքերը, որոնք եկեղեցին վաւերական է ընդունում. «կեղծերի մէջ պիտի ընդունել և Գործք Պօղոսի գիրքը, և այն գիրքը, որ «Հովիւ» վերնագրով է, և Պետրոսի յայտնութիւնը և բացի դրանից Բառնաբասի յայտնի թուղթը և այսպէս ասուած Առաքելոց վարդապետութիւնը, եթէ կամենում ես, Յովհաննու յայտնութիւնը, որը ինչպէս ասացի, ոմանք ընդունում են, միւսները մերժում»։ Ուրեմն Եւսեբիոսի ժամանակ մինչև 340 թիւը Կանոնք առաքելականք անունով վաւերական ժողովածու եկեղեցիներում ընդունուած չի եղել։

8) Եւսեբիոսը 178 երեսում Կղեմ Հռոմայեցու վրայ խօսելով, ասում է, «Մի քանիսը մեր ժամանակ սկսեցին Կղեմին վերագրել և ուրիշ բազմախօս և երկար շարադրութիւններ, որոնք բովանդակում են իրանց մէջ Պետրոսի և ոմն Ապպիի խօսակցութիւնները, բայց դրանց մասին հները ոչինչ չեն յիշատակում և դրանք մաքուր առաքելական ուղղափառութեան նշաններ չունեն։ Այսպէս բոլորի կողմից ընդունելութիւն գտած Կղեմայ թուղթը այժմ յայտնի է, յիշատակուած է դրա մասին Իգնատիոսի և Պողիկարպոսի թղթերի մէջ»։

Այս բոլոր փաստերի հիման վրայ երեք եկեղեցիները ընդունում են, որ Առաքելական կոչուած կանոնները գրուած չեն առաքեալների ձեռքով, որ այդպիսի գրուածներ մինչև 340 թիւը թէև կային, բայց ոչ մի եկեղեցու կողմից վաւերական չէին ընդունուած, բայց և ընդ դմին՝ Առաքելական կանոնները ունեն խոր աւանդական հնութիւն, ժողովուած է առաքելական աւանդութիւններից և նախկին երեք դարերի եկեղեցիների գործնականութիւնից, այս տեսակէտով ընդհանուր եկեղեցին ընդունեց 787-թուին, իսկ մեր եկեղեցին 447-թուին, ուրեմն տիեզերական ժողովից 340 տարի առաջ. և այս փառաւոր փաստ է մեր եկեղեցու ինքնուրոյնութեամբ առաջ գնալու ձգտման. մինչև անգամ Ագաթանգեղոսի 491 երեսում յիշատակութիւն ունինք առաքելական կանոնների մասին. «Նոյնպէս և ամենայն հարքն, որ առաջնորդեցան *յառաքելական կանոնացն*, և յինքեանց անձանց բերին օրինակս վերջնոցս»։

Մեր եկեղեցին առաքելական կանոնները պաշտօնապէս ընդունեց Շահապիվանի մեծ ժողովում 447 թուին. «Եւ զայս ասացեալ քահանայապետիցն, եթէ Առաքելականն և Նիկիականն հաստատեալ կացցէ, որպէս և էն իսկ, և մեք հնազանդ եմք. բայց որ ինչ պիտոյ է ի լրութիւնս ի նոյն կանոնս, և մանաւանդ ի մէջ տանս Թորգոմայ՝ հաստատեսցի» (տես, Էջմիածնի գրադարանի մօտ 40 ձեռագրերը)։ Մխիթար Գօշը յիշում է «զի յառաջ յառաքելոցն եդաւ և ապա ի Նիկիա և

յառաջ քան զնա այլք,...» 66 եր.։ Առաքելական երկու կանոնները յիշում են և Գրիգոր Տաթևացին, իսկ 1806-ին Դանիէլ կաթուղիկոսը Էջմիածնում Սինոդ հաստատելու խնդիրը արծարծելով, համոզում է միաբանութեան կազմել այդ բարձրագոյն Ատեանը և ի վկայութիւն բերում է Առաքելական կանոնների 32 յօդուածը. «Ըստ որոյ որպէս և գրեալն է ի կանոնս Կղեմայ 32...» (տես, դիւան հայոց պատմ. Ա-Բ. 210 եր.), այս կանոնը պատուիրում է, որ գլխաւոր եպիսկոպոսը գործերը պիտի վարի եպիսկոպոսների խորհրդով։

Իրաւաբանական տեսակէտից Առաքելական կանոնները կազմում են հաստատ աղբիւր մեր եկեղեցական իրաւունքի համար, որովհետև ընդունուել են Շահապիվանի ժողովում։ Բայց խնդիրն այս է, ո՞ր առաքելականը, յունակա՞ն թէ ասորական. որովհետև այս մասին, նոյնպէս և կանոնների քանակի մասին ոչ մի տեղեկութիւն չունինք. և որովհետև մեր ձեռագիր 40 կանոնագրքերում երկու տեսակ առաքելական կանոնները միշտ միմեանց կից գրուած են, Օհան Օձնեցու ժողովածուի մէջ մտած են, հետակայ սուրբ հարք առաքելական ասելով երկուսն էլ հասկացել են, ուստի և մենք իրաւունք չունինք ոչ մի վճռական քայլ անելու դրանցից մէկն ու մէկը դուրս ձգելու առանց մի յարգելի փաստի։ Ուստի և կանոնագրքերի հետևողութեամբ կարձանագրենք ասորական 34 և ապա յունական 85 առաքելական կանոնները բացադրութեամբ հանդերձ։ Ասորական առաքելական կանոնները մեր ձեռագրներում անուանում են «Վարդապետութիւնք առաքելոց» կամ ուղղակի «կանոնք առաքելականք»։ Յունական առաքելական կանոնները մեր ձեռագրերում կոչւում են «կանոնք առաքելականք ի ձեռն Կղեմայ» կամ ուղղակի «Երկրորդ առաքելական կանոնք» կամ «Կղեմայ»։ «Երկրորդ» ասելով չպիտի հասկանանք թէ երկրորդական նշանակութիւն ունին, ոչ, հապա երկրորդ տեղումն են գրուած. ինչպէս օրինակ ձեռագրերում պատահում է, «Կանոնք Սահակայ». յետոյ «Բ. կանոնք Սահակայ». «Գ. կանոնք Սահակայ»—բոլորն էլ Ս. Սահակին վերագրած։

Որպէսզի չշփոթենք երկու տեսակ առաքելականները միմեանց հետ. «Վարդապետութիւնք առաքելոց» կամ որ նոյն է ասորական առաքելական 34 կանոնները—կանուանենք Ա—առաքելական կանոններ. իսկ յունական 85-ը՝ Բ—առաքելական կանոններ։Նախ քան այդ կանոնների արձանագրութեան անցնելը, համառօտ տեղեկութիւն տանք՝ Ա—առաքելական, Բ—առաքելական կանոնների և այսպէս կոչուած «Առաքելական կարգադրութիւնների» գրականութեան և նրանց պատճառով յարուցուած վէճերի մասին։

1) Ա—առաքելական կանոնների ծագման և տեղի մասին ունենք հայերէն լեզուով մի լուրջ աշխատասիրութիւն, այն է Հ. Տաշեանի «Վարդապետութիւն առաքելոց անվաւերական կանոնաց մատեան. Վիեննա. 1896.»։ Հետևեալ տեղեկութիւնները քաղում ենք նրանից. խօսելով ասորական 34 կանոնիս վրայ, ասում է՝ «այս գիրքն է թարգմանութիւն ասորի անվաւերական մէկ գրութեան» 2 եր., որ այս գրուածքի ասորական բնագիրը երեք անգամ լոյս է տեսել Եւրոպայում լատիներէն, յունարէն և անգլիերէն. բայց շատ քիչ ծանօթ է Եւրոպացիներին և հետազօտութեան չի ենթարկուած։ Այդ թարգմանութիւնների մէջ ամենաընտիրը Կիւրըտոնեանն է, որին շատ համեմատ է գալիս հայոց ձեռագիրը, նրա կարծիքով այս գործը Ե. դարու վերջերի հաւաքածու է։ Հ. Տաշեան բերում է Հ. Գաթրճեանի ձեռագիր աշխատութիւնից հետևեալը «Վարդ. առաքելոց» կանոնների մասին. 1) հայերէն թարգմանութիւնը արուած է այն անձի ձեռքով, որը թարգմանել է և Լաբուբնան։ 2) Որ այս կանոնները գրուած են Ե. դարի վերջին կէսին հայ կանոնների ժողովածուի մէջ շատ փոփոխութիւններով։ 3) Այս կանոնները ծառայել են Շահապիվանի ժողովի համար իբրև օրինակ։ 4) Շատերը յարաբերութիւն ունին շատ անվաւեր գրուածների հետ, ինչպէս է Լաբուբնա և այլն. 17 եր.։

Ապա Հ. Տաշեանը համեմատում է մեր 34 կանոնը ասորականի հետ և հաստատում է, որ մերը ասորական մի անվա-

ւեր գրուածքի թարգմանութիւն է, և իսկական բնագիրը ասորերէն է և ոչ յունարէն, ինչպէս այս գրուածքը առաջի անգամ յայտ անող Եւրոպացի Լակարդը երթադրում է։ 74 երեսից գրքի հեղինակը սկսում է համեմատել 34 կանոնը Անտիոքի, Նիկիայի, Լաւոդիկիայի և Բ-Առաքելական կանոնների հետ, ճգնելով ապացուցանել, որ ասորականի կանոնները վերցրած են զանազան տեղական և Նիկիայի կանոններից, ուրեմն և գրուած են զանազան ժամանակներում և երկրորդ՝ համեմատելով Շահապիվանի կանոնների հետ և նմանութիւն գտնելով, ցոյց տալ որ Շահապիվանի ժողովը հետևել է 34 կանոններին և ոչ յունական 85-ին, և դրանից հետեւցնել, որ Շահ. ժողովի «Առաքելական կանոն» խօսքը վերաբերում է ասորականին և ոչ յունական 85-ին. այս վերջին կէտից է յանգում և Գաթրճեանի եզրակացութիւնը։

Բայց երկուսն ևս դժբախտաբար փաստօրէն չեն կարողանում ապացուցանել իրանց ենթադրութիւնը. և ըստ իս՝ գոնէ նրանց փաստերը քննելով, ընդհակառակն է դուրս գալիս, որ ա) Հ. Տաշեանի բերած օրինակները ցոյց են տալիս թէ յունական 85-ը կարող են զանազան կանոնների համար աղբիւր համարուել, նոյն իսկ ասորականի համար, բ) որ Շահապիվանի ժողովը աւելի ի նկատի է ունեցել յունական 85-ը, քան ասորական 34 կանոնները։

Ահա նրա փաստերը. (74 եր.)

1) Անտիոքի ժողովի ԻԴ կանոնը ծառայում է իբրև աղբիւր ասորականի ԳԺ—(34) կանոնին և միւս կողմից նման է յունականի ԼԵ—կանոնին։

Երբ այդ համեմատութիւնը անում ես, տեսնում ես որ ասորական ԺԹ—(34)-ը բոլորովին նման է յունական ԼԵ—ԻՆ (ըստ մեր ձեռագրերի ԼԲ, ԼՁ, ԼԷ, ԼԸ.). և ասորականի աղբիւր ծառայած է յունականը և ոչ Անտիոքի ԻԴ—կանոնը. նոյն իսկ Հ. Տաշեանը այդ նմանութիւնից ստիպուած՝ խոստովանում է «Կմնայ ընդունել, որ հայ խմբագիրն աւելցուցած է առնելով նոյն յունական աղբիւրից» 75. եր.։

2) *Համեմատելով ասորականի ԻԳ, Նիկիականի Ե-ի, Անտիոքի—Ձ-ի հետ, ենթադրում է որ Անտիոքի կանոնը պիտի լինի աղբիւր ասորականի և Նիկիականի համար. այն ինչ յունականի Լ. կանոնը խօսելով նոյն նիւթի վրայ, տալիս է աւելի պարզ, հակիրճ խօսքերով կարգադրութիւն և աւելի կարելի է պնդել որ յունականի Լ. եղել է ասորականի աղբիւր քան Անտիոքինը, քանի որ մինչև իսկ Անտիոքի ժողովը մեր վաւերական ժողովների շարքում չկայ էլ։—*

3) *Համեմատում է ասորականի ԺԲ—կանոնը Նիկիականի Բ-ի և յունականի* 80 (74)-*ի հետ, երևի ցանկանալով աղբիւր համարել Նիկիականը. բայց տեսնելով որ Հեֆելէն Նիկիայի կանոնից աւելի հին է համարում յունական* 80 (74)—*կանոնը, ստիպւում ընդունել՝ որ յունական* 80 (74)-*ը «շատ դիւրաւ կրնայ ըլլալ «Վար. առաքելոցի» կանոնիս աղբիւրը»* 77*եր.։*

4) *Համեմատում է ասորականի ԺԸ-ը Նիկէայի ԺԵ* (16)-*ի, Լաւոդիկեայի ժողովի* 4-(5)-*ի հետ և գտնում է որ Նիկիականի աղբիւրը ասորականն է. և ինչու. չեմ հասկանում. հապա համեմատեցէք յունականի* 44 (42)-*ի հետ և կտեսնէք, որ Նիկէականը շատ նման է յունականին, իսկ Նիկէայի ժողովը ի նկատի ունեցել է յունական առաքելական կանոնները և նրանց համապատասխան կարգեր սահմանել. այնպէս որ ոչ մի հիմք չունինք ժխտելու որ ասորականի աղբիւր եղել է յունական* 44 (42) *կանոնը։ Հէնց Նիկիականի յաջորդ* 18 *կանոնը մատնացոյց է անում «Առաքելոց կանոնների» վրայ. իսկ առաքելոց ասելով Նիկիայի ժողովը ի նկատի ունէր միմիայն յունական* 85 *կանոնները։ Ապա Հ. Տաշեան նոյն անփաստ քննութիւնները շարունակելով, Կորիւնի «Ունիմք և զկանոնական յաջորդեալ յառաքելոյն» պարբերութիւնը ընդունում է յօգուտ Ասորականի համար ասուած. ինչու. չեմ հասկանում։ Որովհետև նրա կարծիքով գուցէ այդ ժամանակ յունականը դեռ խմբագրուած չէր, այն ինչ երրորդ փաստի մէջ մի քիչ վերև ընդունեց, որ ասորականի ԺԲ—կանոնի աղբիւրը յունականի* 80 (74)—*է,*

եթէ յունականը խմբագրուած չէր, ինչպէս կարող էր ասորականի համար աղբիւր լինել։ Վերջապէս բոլորովին սխալ ենթադրութիւն է, որ յունականները Ե. դարում դեռ խմբագրուած չէին, սրա մասին միքիչ յետոյ։—

Այս հեղինակը անցնում է Շահապիվանի կանոնների համեմատութեան, ցոյց տալ ջանալով, որ այս ժողովը լրացրել է միմիայն ասորական առաքելական կանոնները, իսկ յունականի մասին տեղեկութիւն էլ չի ունեցել։

Ահա նրա փաստերը. 1) Համեմատում է Շահապիվանի ԺԸ-ը ասորականի ԺԸ-ի և ԻԳ. կանոնների հետ. և զարմանալին այն է, որ շատ նմանութիւն է գտնում այնտեղ, քան Շահապիվանի նոյն ԺԸ-ի և յունականի Լ. և ԺԲ-ի մէջ. զարմանալի է, որովհետև Շահապիվանի ԺԸ.—շատ նման է յունականին՝ քան թէ ասորականին։ Ցանկացողը թող համեմատի կանոնները. ես չեմ բերում բոլոր յօդուածները, որովհետև անտեղի կերպով կ'երկարի։

2) Նա ասում է, որ Շահ.-ի ԺԴ. կանոնի մի մասը ազգակցութեան վերաբերեալ, վերցրած է ասորականի ԼԳ-ից. այս ենթադրութիւնը բոլորովին զարմանալի է, որովհետև նոյն ասորական ԼԳ. կանոնում խօսելով ազգակցութեան մասին, կանոնագիրը մատնացոյց է անում առաքելական կանոնների վրայ. որ նշանակում է թէ ասորական կանոնները իրանց ուղղեցոյց ունեցել են յունական կանոնները. ահա ասորականի խօսքերը ԼԳ. կանոնի մէջ. «Նոյնպէս և սահմանեալ առաքելական կանովնաց...»։

3) Նա մեծ նմանութիւն է գտնում Շահ-.ի ԺԶ-ի և ասորականի ԺԲ-ի մէջ, այն ինչ Շահ-.ի ԺԶ—բոլորովին նման է յունական ԼԲ-ին։ Մնացած փաստերը էլ հաստատուն բան չեն ներկայացնում։

Բերելով Հ. Տաշեանի փաստերը, մարդ գալիս է հակառակ՝ այսպիսի եզրակացութեան, որ՝ Շահապիվանի ժողովի կանոններին նայած, եթէ հետևել են առաքելական կանոններին, գլխաւորապէս յունականն են ի նկատի առել քան ասորականը. ճիշտ է կան գարձուածներ թէ Շահապիվանի

և թէ ասորականի մէջ, որոնք շատ նման են, կամ մինչև անգամ նոյն են, օրինակ «կանոնք և սահմանք» կամ «կարգեցին և եդին», բայց դրանք չեն ապացուցանում դեռ ևս որ Տաճապիվանը միմիայն ի նկատի է ունեցել ասորական կանոնները, դարձուածքների նմանութիւնը կարող է առաջանալ մի անձի թարգմանութիւն և խմբագրութիւն լինելուց։

Յովհան Մանդակունուն վերագրած «Կանոն ապաշխարութեան»-ի առաջի յօդուածը մատնացոյց է անում «Առաքելական կանոնների» վրայ. առաքելական ասելով պիտի հասկանալ յունականը, որովհետև վերոյիշեալ կանոնը խօսում է անառակութեան վրայ, իսկ ասորականի մէջ այդպիսի կանոն չկայ։ Գրիգոր Տաթևացին և Մխիթար Այրիվանեցին հէնց Տաշեանի բերած վկայութեամբ 2 տեսակ առաքելական ընդունելի կանոններ են յիշում։ Մխիթար Գօշը 2 անգամ աւելի շատ քաղուածքներ է անում յունական քան ասորական կանոններից։ Վերջապէս ինչպէս վերևում յիշեցի 1806-ին Դանիէլ կաթողիկոսը յենւում է իւր կարգադրութեան մէջ յունական 32 յօդուածի վրայ։— Վերջապէս, եթէ միքիչ հեռուն գնանք, կարող ենք պնդել, որ ասորական կանոններին մերոնք քիչ նշանակութիւն են տուել, բաւական է ապացոյց բերել այն, որ մեր դաւանաբանական վէճերի ժամանակ, երբ շօշափւում էր պատարագի բաղարջ հացի, անապակ գինու, ծննդեան և մկրտութեան տօնը միասին կատարելու խնդիրները, ոչ ոք մեր սուրբ հայրերից, Ներսէս Բ., Ներսէս շինող կաթողիկոսը, Օձնեցի, Խաչիկը, Տնորհալի և այլն, ամենևին ոչ միայն մատնացոյց չեն արել ասորական կանոնների վրայ այդ կէտերի առթիւ, հապա և յիշատակութիւն էլ չեն արել. այն ինչ այդպիսի կանոնների հեղինակութիւնը մեր հայրերի համար բաւական էր իբրև փաստ ապացուցանելու, որ հայերը այդ ծէսերը կատարում են առաքելական՝ թէկուզ՝ աւանդական կանոնների հիման վրայ. յոյները չէին կարող մերժել անվաւեր համարելով այդ կանոնները, քանի որ իրանք 787-ին ընդունեցին միւս առաքելական նոյն վիճակ կրող կանոնները։—

Վերոյգրեալների հիման վրայ հակառակ Հ. Տաշեանի և Գաթրճեանի պնդելի է, որ Շահապիվանի վճիռը ժողովի նախաբանում և վերջաբանում. «Թէ Առաքելականն և Նիկիականն հաստատեալ կացցէ» պէտք է վերաբերել 2 առաքելական կանոններին, աւելի շատ յունական 85-ին, քան ասորական 34-ին։

2) Բ—Առաքելական այսինքն յունական կանոնների վերաբերութեամբ ռուսաց գրականութեան մէջ կայ մի հետախուզութիւն Եւրոպական հեղինակների ուսումնասիրութեամբ, այն է «Древность и важность апостольскихъ правилъ. Стрателатова. СПБ. 1865 г.». բացի դրանից կարելի է տեղեկութիւններ քաղել և «Опытъ ц. з. Іоанна»; Цер. пр. Соколова ևլն։

Ե. դարու վերջին Հռոմի կրօնաւոր Դիոնիսիոս կրտսերը թարգմանեց յունարէնից լատիներէն Սալոնիկի եպիսկոպոս Ստեփանի համար եկեղեցական կանոններ, որոնց բովանդակութիւնը կազմում էր 4 տիեզերական և 6 տեղական ժողովների կանոնադրութիւնը և սկզբում զետեղուած ունէր 50 հատ առաքելական անուամբ կանոններ։— VI դարում Հռոմի եպիսկոպոս Որմիզդը չնայելով որ անվաւեր հրատարակեց այդ կանոնները, բայց միւս պապերը և Հռոմի եկեղեցին սկսեցին զետեղել իրանց ժողովածուների մէջ և 769 թուի Լատերանի ժողովում Ստեփան II պապի օրով Հռոմի եկեղեցին յայտարարեց «Կղեմայ ձեռքով գրուած առաքեալների կանոններ պիտի ընդունել միայն ոչ աւելի քան 50, որոնք և Հռոմի Ս. եկեղեցին ընդունում է»։

VI դարում Անտիոքի քահանայ, ապա Պօլսոյ պատրիարք Յովհան Սխոլաստիկը կազմեց եկեղեցու կանոնների ժողովածու, որոնց մէջ զետեղուած էր առաքելական կանոններ թուով 85—հին ձեռագրերից քաղած, որը Տրուլլի 787 թուի ժողովը ընդունեց եկեղեցական կանոնների մէջ, չյիշելով թուի մասին։ Այդ որոշումից յետոյ Պօլսոյ Փոտ պատրիարքը իւր կազմած կանոնագրքի յառաջաբանում կասկածաւոր համարեց այդ կանոնները։ 870—թուին Թէյմի արք-

եպիսկոպոս Գինկմար չընդունեց այդ կանոնները իբրև առաքելական ծագումն ունեցող և Գաղղիայի եկեղեցական գրքի մէջ չմուծեց։ Իսկ ԺԶ. դարում, երբ կեղծ—Իսիդորի ժողովածուն քննադատութեան ենթարկուեց, քննութեան տակ ընկան և առաքելոց կանոնները։ Մի քանի եպիսկոպոսներ ընդունում էին իբրև նախանիկիական եկեղեցու հին կանոններ, որ կազմուած են եղել եպիսկոպոսների կամ տեղական փոքրիկ ժողովների միջոցով։ Լուրջ քննութեան ենթարկուեց Դրէյի, Բիկկէլի, Հեֆելէի ձեռքով։

Ռուս Յովհաննէս վարդապետը և մասնաւորապէս Սորատելատովը պաշտպան են կանոնների հնութեան, նրանց հեղինակութիւն ունենալուն. վերջինիս կարծիքով, եթէ բառացի մտքով այդ կանոնները առաքելական ծագումն չունին, գոնէ ընդհանուր առմամբ, էական կէտերում առաքելական են։ Ըստ առաջինի՝ կանոնների ծագման ժամանակը համարելի է III դարը, կամ IV, Սորատելատովի կարծիքով, Դ. դարում միայն սկսւում է առարկութիւններ անուել այդ կանոնների վերաբերմամբ, որոնք գոյութիւն ունէին եկեղեցու գործնականութեան մէջ աւելի անգիր ձևով քան գրաւոր կերպով շատ վաղ ժամանակներից։ Նիկիայի ժողովի կանոններում յիշուած «եկեղեցական կանոն», «կանոն», «առաքելական կանոն» խօսքերը վերաբերում են ուղղակի առաքելական կանոններին. բացի Նիկիայի ժողովից, և միւս տիեզերական ժողովները և մասնաւորապէս Անտիոքի ժողովը մեծ յարգանքով ընդունում էին այդ կանոնների հեղինակութիւնը և նրանցից քաղուածքներ էին անում և նրանց հիման վրայ խնդիրներ վճռում։ Հակառակ կարծիք յայտնողները, Դրէյը, Բիկկէլը ընդունում են նոյնպէս, որ ըստ բովանդակութեան, առաքելական կանոնները շատ խոր հնութիւն ունին և մասամբ մինչև իսկ առաքելական ծագումն ունին, բայց կազմութեան և խմբագրութեան կողմից նոյն հնութիւնը չեն ներկայացնում, յաւելուածներ ունին։ Դրանք նախանիկիական դարում եկեղեցում իբրև գրաւոր կանոններ չէին գործադրւում և Նիկիայի ժողովի ակնար-

կութիւնները «եկեղեցական կանոն», «կանոն» խօսքերը չեն վերաբերում Առաքելական կանոններին, այլ նշանակում են ընդհանրապէս աւանդութիւն, առաքելական կարգադրութիւն, առաքելական թղթեր. այնպէս որ ըստ գրութեան ձևի աւելի Դ. և Ե. դարու խմբագրուածներ են, և մինչև անգամ 341-ի Անտիոքի ժողովի կանոններից վերցրած և մէջը մուծուած է. մի քանի կանոններ էլ 28, 75, 77 Քաղկեդոնի կանոններից է քաղած։ Ահա հակառակորդների կարծիքը։ Դրէյի յայտնած կարծիքը Քաղկեդոնի կանոններից վերցնելուն վերաբերմամբ փաստօրէն չի հաստատւում, միւսները ընդհակառակն են ապացուցանում, որ Քաղկեդոնի 451 թուի, Պօլսի 448 թուի, Եփեսոսի 431 թուի ժողովներում անհնազանդ եպիսկոպոսների դատավարութեան համար երեք անգամ հրաւէր ուղարկելով կանչելը՝ համարում էին եկեղեցական՝ նոյն իսկ աստուածային կանոնի հիմամբ այսինքն առաքելական կանոնների 68 (74) պատուէրի համաձայն, որովհետև ուրիշ տեղ որոշակի կերպով այդ հարցի մասին վճռական ասուած կարգադրութիւն չկար։

Ուսուցչապետ Սօկօլովը համադրելով Անտիոքի ժողովի և Առաքելական կանոնների յօդուածները ուզում է ցոյց տալ Դրէյի սխալը, որ ոչ թէ Առաքելական կանոնները քաղուած են Անտիոքի ժողովի կանոններից, հապա ընդհակառակն, Անտիոքի ժողովը քաղել է Առաքել. կանոններից, իբրև հեղինակաւոր աղբիւրից. նոյնը պնդում է և Զաօզերսկին։ Հեֆելէն այս խնդիրը համարում է անորոշ և վերջական վճռից շատ հեռու։ Սօկօլովը բոլոր դիտողութիւններից յետոյ անում է հետևեալ եզրակացութիւնը. որ կանոնները չեն գրել առաքեալները, որին համաձայն են բոլորը անխտիր, որը և հաստատում է Տրուլլի VII ժողովը։ Որ կանոններից շատերը Բ. և Գ. դարերու եկեղեցում գործածուած կանոններ են առաքելական աւանդութեամբ մնացած և կազմութեան նայած ժողովուած են զանազան ժամանակամիջոցներում։ Եւ որ Նիկիայի ժողովի մօտ ժամանակներում կար ժողովածու մօտ այն ձևին, որը այժմ ունենք։

Սօկօլով Հակառակ Սուրատեանցի այն կարծիքին՝ որ այդ կանոնները իբրև առաքելական ծագումն ունեցող հեղինակաւոր կանոններ Ս. գրքի ոյժ պիտի ունենան և անփոփոխ պիտի մնան, ասում է, թէ եկեղեցու գործնականութիւնը ցոյց է տալիս, որ եկեղեցական ժողովները փոփոխութեան ենթարկեցին Առ. կանոնների 5, 37 (35)-ը Տրուլլի ժողովում, այն ժողովում, որը Առ. կանոնները ընդունեց իբրև եկեղեցական կանոնագրութեան աղբիւր։ 26 (24) կանոնը փոխուեց Անկիւրիայում, 25 (23)-ը Նէոկեսարիայի ժողովում, 85-րդ կանոնը վաւերական է համարում «Առաքելական կարգադրութիւններ» կոչուած 8 գրքով Կղեմի գրած սահմանադրութիւնը, այն ինչ նոյն Տրուլլի ժողովը այդ 8 գիրքը համարելով զանազան կասկածաւոր մարդկանց յաւելումներով ճոխացրած, անվաւեր հրատարակեց։ Բայց որովհետև այդ փոփոխութիւնները անում են եկ. ժողովները հանգամանքների հետ յարմարուելով ի բարօրութիւն իրանց հօտին, չշեղուելով միմիայն Ս. գրքի նախագծած շաւղից, ուստի և այդպիսի փոփոխութիւնները չեն նսեմացնում Առ. կանոնների հեղինակութիւնը, որի այդպիսի ոյժ ունենալը ընդունել է նոյն եկեղեցին։

Առաքելական կանոնների թիւը տարբեր է զանազան ձեռագրերում. յունականներում 76, 81, 84, 85. լատինականում 50, արաբականում 30, եթովպականում 38. իսկ Հայոց ձեռագիր կանոնագրքերում 85։

---

## ԱՌԱՔԵԼԱԿԱՆ ԿԱՐԳԱԴՐՈՒԹԻՒՆՆԵՐ.

Բացի առաքելական կանոններից, հներում կար և մի ուրիշ ժողովածու, որ կոչւում էր առաքելական կարգադրութիւնները 8 գրքից բաղկացած։ Այս կարգադրութիւնները մեր եկեղեցին վաւերականների շարքում չի ընդունում. միւս եկեղեցիները մերժեցին Տրուլլի ժողովում, համարելով արիոսական մտքերով և ձևերով յաւելումներ ունեցող գըրուածք։ Բայց իբրև խրատական գիրք, և նախկին 4 դարերի եկեղեցական կարգ կանոնը պարունակող գիրք, համապատասխան Յուստինի, Երմի, Կղեմայ Աղէքսանդրացու գրուածներին, շատ յարգի էր և հեղինակաւոր։ Որովհետև Առաքելական կարգադրութիւնները մեծ վիճաբանութեան տեղիք են տուել եկեղեցական գրականութեան մէջ, ուստի նախ քան առաքելական կանոններին անցնելը, ծանօթացնենք այդ խնդրի վերաբերմամբ արծարծուած մտքերի հետ։ Ռուսաց գրականութեան մէջ կան միքանի հետախուզութիւններ այս առարկայիս վերաբերեալ. 1) Апостольскія постановленія. І. Н. Казань 1864 г. բնագրի թարգմանութիւն է առանձին գրքոյկով։ 2) Апостольскія постановленія» տպուած «Правос. обоз.» ամսագրի 1862 թ. համրում Բլագորազումով քահանայի գրած։ 3) Историческое обозрѣніе источниковъ права православной церкви. Н. Заозерскаго. Москва. 1891 г.»։

Առաքելական կանոնների 85-րդ յօդուածում կանոնական գրքերի շարքում զետեղուած է և «Կարգադրութիւններ, շարադրուած 8 գրքի մէջ Կղեմայ ձեռքով»։ Այս յիշատակարանը յայտնի եղաւ Գ. դարու սկզբից։ Եւսեբիոսը վկայում է (Գ. գր. 25 գլ. 57—59. Է—7 գլ.) թէ կայ «այսպէս կոչուած» «առաք. կարգ.» որը «կասկածաւոր» է։

Ս. Աթանասը թէև համարում է ոչ կանոնական, բայց նկատում է որ Ս. Հարք խորհուրդ են տալիս կարդալ Երմի գրքի հետ։ Նոյնպիսի վկայութիւն էլ տալիս է Ս. Եպիփանը։ Զ. դարում յիշատակւում են առ. կարգ.-ը. նոյնպէս և Է—դարում յիշում է Մաքսիմ խոստովանողը, Թ. դարում էլ Փոտ պատրիարքը։ Բիկկելի կարծիքով այդ 8 գիրքը պէտք գրուած լինին արևելքում, պաղեստինում կամ ասորիքում ասորոց լեզուով, որը մեծ վարկ ունենալուն պատճառով զանազան մասերով մուծուել է Աղէքսանդրիայի եկեղեցու կանոնագրքի, Սխոլաստիկի ժողովածուի մէջ։ Տրուլլի ժողովից յետոյ ժողովածուներից հանուեց և նորերի մէջ չմտաւ։ Ընդհանուրի կարծիքով եկեղեցու իրաւունքի տեսակէտից սա ունի շատ կարևոր նշանակութիւն իբրև պատկեր հին եկեղեցու կարգ կանոնի։ Ահա այդ 8 գրքի համառօտ բովանդակութիւնը։

Ա. գիրքը տասը գլխից է բաղկացած, խօսում է աշխարհականների, նրանց վարք ու բարքի, մշտապէս աշխատելուն և ս. գրքի ընթերցանութեամբ պարապելու մասին. մարդ ու կնոջ փոխադարձ սիրոյ և կնոջ բարեբարոյ կեանք վարելու մասին։

Բ. Գիրքը 63 գլխից է բաղկացած, խօսում է եպիսկոպոսների, քահանաների, սարկաւագների, սարկաւագուհիների, դրակարդացների, երգիչների, դռնապանների, այրիների, կոյսերի, որբերի մասին. առաւօտեան և երեկոյեան կարդալիք սաղմոսների (62 և 140-րդ սաղմոսների) և ագապի մասին։ Հոգևորականներին տալիք տուրքի համար ասում է «քահանաների մօտ դատարկ ձեռներով մի երևար, հապա միշտ մատուցիր բարեյօժար ընծաներ»։ Աղօթատան համար ասում է, պէտք ունենայ երկայն՝ նաւի ձև, երկու խորաններով, մէջ տեղը եպիսկոպոսի աթոռը, կողքերին քահանաները նստած, սարկաւագները սպիտակագոյն զգեստով կանգնած. աղօթատան երկրորդ մասում նստեն աշխարհականներ և կանայք առանձին։ Մէջ տեղում ամբիոնի վրայ բարձրանայ դրակարդացը և կարդայ Մովսէսի գրքերը, Յեսու,

Նաւիայ, Դատաւորներ, Թագաւորութիւնք, Եզրը, Նէէմին, Յովբ և Սողոմոն և 16 մարգարէութիւններ։ Ընթերցումից յետոյ թող մի ուրիշը երգի Դաւթի երգերը, ժողովուրդը թող ձայնակցի վերջին խօսքերին։ Յետոյ կարդան Գործք առաքելոց, և Պօղոսի թուղթը, ապա քահանան կամ սարկաւագը աւետարանը. աւետարանը կարդալիս բոլորը լուռ կանգնեն և լսեն։ Ապա քահանայք խրատեն, յետոյ եպիսկոպոսը քարոզի։ Դռնապանները—սարկաւագները մարդկանց դռների մօտ, սարկաւագուհիները կանանց դռների մօտ կանգնեն, ամեն մէկին իրա տեղը ցոյց տան, իւր տեղում չկանգնողը յանդիմանւում է սարկաւագներից։ Երիտասարդները առանձին, հասակաւորները առանձին նստեն կամ կանգնեն, փոքրերը բոլորից առաջ սարկաւագների հսկողութեան տակ լինին, որ չծիծաղեն. հասակաւոր մեծ կանայք և կոյսերը բոլորից առաջ կանգնեն։ Բոլորը աղօթքի կանգնեն, սարկաւագներից մէկը հաղորդութիւնը բերի երկիւղածութեամբ ծառայելով, միւս սարկաւագները հսկեն որ խօրին լռութիւն պահուի և ուշադիր լինին. սարկաւագի բարբառելուց յետոյ համբուրուեն ի համբոյր սրբութեան՝ մարդիկ ջոկ, կանայք ջոկ։ Ապա սարկաւագը քարոզ կարդայ եպիսկոպոսի, քահանայի... թագաւորի, հիւանդի, ճանապարհորդի և բոլորի համար բարեմաղթութիւն անի. եպիսկոպոսը օրհնի։ Ապա սկսուի գոհաբերութիւնը, բոլորը լուռ երկիւղածութեամբ կանգնեն, ջոկ-ջոկ բոլորը հաղորդուին. այդ ժամանակ սարկաւագները դուռը կպահեն որ անհաւատ չմտնի։ Բացի այս, խօսում է եկեղեցականների դատի մասին։

Գ. Գիրքը 20 գլխից է բաղկացած, խօսում է այրիների, մկրտութեան կարգի և ձեռնադրութեան մասին. այրիները պիտի լինին 60 տարեկան, մանկահասակները տանը իրանց կրթեն և երբ պատրաստ կզգան, մտնեն այրիների դասակարգը։ Երկրորդ ամուսնութիւնը թոյլ է տալիս, երրորդը համարում է ոչ ողջախոհութիւն։ Մկրտութիւն կատարելիս առաջ եպիսկոպոսը օծում է մկրտուողի գլուխը իւղով և հոգին սուրբ իջնում է. նա կամ քահանան ասում է յանուն

Հօր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ ևլն. և մկրտում է. եթէ տղայ է կնքահայրը սարկաւագն է լինում, եթէ կին, աղջիկ սարկաւագուհին։ Յետոյ արդէն եպիսկոպոսը օծում է միւռոնով. ապա խօսում է մկրտուածին երկիւղածութեամբ պահելու համար։—Եպիսկոպոսին պիտի ձեռնադրեն երկու կամ երեք եպիսկոպոս. քահանային, սարկաւագին ձեռնադրում է մէկ եպիսկոպոս. քահանան ձեռնադրել չի կարող, նա կարող է զոհ անել, մկրտել և օրհնել ժողովուրդը։

Դ. Գիրքը բաղկացած է 14 գլխից, խօսում է որբերի, կոյսերի մասին։ Եպիսկոպոսները պիտի պահեն, խնամեն աղքատներին, որբերին, ժողովուրդը պիտի ընծայաբերութիւն անի և դրանցով պահի աղքատներին։ Եպիսկոպոսը անմաքուր մարդկանցից, գինեվաճառներից, անառակներից, վատ հարկահաններից, կեղեքիչներից, դահիճներից ևլն ևլն չըպիտի զոհաբերութիւն ընդունի։ Ապա խօսում է ծառայի և տիրոջ, երախաների և ծնողների փոխադարձ յարաբերութեան մասին։ Կոյսերին յորդորում է լինել պարկեշտ, աղօթող և օրինակ ուրիշներին։

Ե. Գիրքը բաղկացած է 20 գլխից, խօսում է նահատակների, տօների և պասերի մասին։

Զ. Գիրքը բաղկացած է 30 գլխից, խօսում է աղանդների և հերձուածողների մասին, հոգևորականների պսակի, Մովսէսի օրէնքի մասին, քրիստոնէութեան յարաբերութեան մասին դէպի հրէութիւնը և կռապաշտութիւնը։

Է. Գիրքը բաղկացած է 49 գլխից, այստեղ կրկնում է այն, ինչ որ կար նախկին բոլոր գլուխների մէջ։

Ը. Գիրքը բաղկացած է 47 գլխից, վերջին գլխում զետեղուած են 85 առաքելական կանոնները։ Այս գիրքը նըշանաւոր է նրանով, որ բոլոր հայրերի և մասնագէտների կարծիքով բովանդակում է ամբողջ պատարագի կարգը, ինչպէս գործադրւում էր 4 նախկին դարերի ընթացքում, սա մի պատարագամատոյց է։ Որովհետև ձեռնադրութեան կարգը և պատարագը շատ հետաքրքրական է, ուստի համառօտ փոխադրութեամբ կարձանագրեմ։—

Առաջ խօսում է աստուածային շնորհքների բաշխման մասին, ապա անցնում է եպիսկոպոսի ձեռնադրութեան, պահանջում է որ ընտրելի անձը լինի համեստ, հեզ, անբիծ, և ժողովուրդի ընտրութեամբ. «ով ամեն բանում անբիծ է, ընտրուած բոլոր ժողովրդից, ինչպէս ամենալաւը. երբ նրան կկոչեն և կքաջալերեն, այն ժամանակ ժողովուրդը կիրակի օրը ժողովուելով՝ քահանաների և եղած եպիսկոպոսների ներկայութեամբ թող համաձայնութիւն տայ։ Միւսներից ամենաաւագը թող հարցնի քահանաներին և ժողովրդին, սա է այն անձը, որին խնդրում են ի գլխաւորութիւն», (տես, Апос. постановленія» 254 եր.։ Երեք անգամ այդ հարցը կրկնում են, ապա ձեռքները դնում են ձեռնադրուողի գլխին. յետոյ սարկաւագը քարոզում է «աղօթեցէք երախայք (չմկրտուածներ)»։ Բոլորն էլ աղօթում են «երախաների» համար. ձեռնադրուողը օրհնում է դրանց։

Սարկ.—«Ելէք երեխայք»—այսինքն չըմկրտուածներ (оглашенные)։

Սարկ.—«Աղօթեցէք ապաշխարներ, աղօթենք և մենք». ձեռնադրուողը աղօթում է նրանց համար։

Սարկ.—«Ելէք ապաշխարներ». ելնում են։—

Սարկ.—«Աղօթեցէք լուսաւորեալք» (այսինքն մկրտութեան արժանիներ)։ «և մենք աղօթենք». ձեռնադրուողի աղօթքից և դրանց գնալուց յետոյ։

Սարկ.—«Աղօթեցէք ապաշխարողներ, աղօթենք և մենք». ապա «աղօթեցէք հաւատացեալք»։ Սրանից յետոյ սարկաւագը կարդում է քարոզ վասն եպիսկոպոսաց, քահանայից, սարկաւագաց, դրակարդացաց, երգչի, կոյսից, այրեաց, որբոց, ներքինեաց, ճանապարհորդաց, ընծայաբերից ևլն. ևլն։ Եպիսկոպոսը երկու անգամ աղօթում է. ապա սարկաւագը, «համբուրուեցէք». կղերը եպիսկոպոսին է համբուրում, մարդիկ և կանայք առանձին։ Իսկ մնացած սարկաւագները կարգ են պահում, երախաների վրայ հսկում, դռները պահում, որ անհաւատներ չմտնեն։

Սարկ.—«Մի՛ ոք յերախայից, մի՛ ոք յանհաւատից, մի՛ ոք յունկնդրաց, և մի՛ ոք յայլահաւատից...», ասելուց յետոյ, բերում է զոհարանի շնորհքները և եպիսկոպոսին տալիս, քահանայք կանգնում են երկու կողմում, սարկաւագները քշշոցով, որը լինում է բարակ կաշուց կամ սիրամարգի փետուրներից կամ քաթանից շինած, քշում են փոքրիկ կենդանիներին, որ չընկնեն բաժակի մէջ և աղօթում են։ (Այս ձևով էլ նկարագրում են Ս. Յուստինը և Տատիանը)։ Երկու երկար աղօթքից յետոյ.

Եպիսկ.—«Խաղաղութիւն ամենեցուն»։

Ժողովուրդ—«Եւ ընդ հոգւոյդ քում»։ Սարկաւագը քարոզ է կարդում։

Եպիսկ.—«Ի սրբութիւն սրբոց»։

Ժողովուրդ—«Միայն սուրբ, միայն Տէր, մնայն Յիսուս Քրիստոս, ի փառս Հօր Աստուծոյ...»։

Ապա սկսւում է հաղորդութիւնը. եպիսկոպոսը ասում է «զմարմին Յիսուսի տամ...»։ ընդունողը—ամէն։ Սարկաւագը բաժակը բռնած ասում է. «Արիւն Քրիստոսի, բաժակ կենաց...»։ Խմողը—ամէն։ Մնացած ժողովրդականք 33 սաղմոս են ասում. սաղմոսից և հաղորդութիւնից յետոյ, գրում է «Երբ կհաղորդուին բոլոր մարդիկ և կանայք, սարկաւագները վերցնելով մնացորդները թող բերեն խորանը..»։ «Երթայք խաղաղութեամբ» ասելով արձակում է ժողովուրդը։ Ապա խօսում է ձեռնադրութեան մասին։ Եպիսկոպոսը ձեռնադրում է քահանայ, սարկաւագ ձեռքը դնելով գլխին և աղօթելով։ Սարկաւագուհիներին, գրակարդացին, կիսասարկաւագին աստիճան է տալիս ձեռք դնելով և աղօթելով։ Խոստովանողի, կոյսերի, այրիների, երգմնեցուցիչների վրայ ձեռք չի դնում, դրանք կամաւոր պաշտօն են։ Եպիսկոպոսին պիտի ձեռնադրեն երկու կամ երեք եպիսկոպոս, այլապէս ձեռնադրողը և ձեռնադրւողը զրկւեն եպիսկոպոսութիւնից։ Մկրտութեան ջուրը և իւղը օրհնի եպիսկոպոսը, բացակայութեան ժամանակ քահանան։ Երախայրիքը (նոր

*պտուղները) ստանայ եպէսկոպոսը, քահանան և սարկաւագը, իսկ տասանորդը կղերը, կոյսերը, այրիները, աղքատները։ Հաղորդութեան մնացորդների 4 մասը ստանայ եպիսկոպոսը, 3 մասը քահանան, 2 մասը սարկաւագը, մնացածները մէկ մէկ մաս։*

*Եկեղեցու հաղորդակցութիւնից զրկել անառակին, պոռնըկին, դերասանին, ողիմբիական և այլ խաղերում մասնակցողներին, գուարճութեան տեղերում խաղացողներին, սրինգ ջութակ ածողներին, պարողներին ևլն ևլն, եթէ միմիայն չեն հեռանալ իրանց սովորութիւններից. գինուորին հեռացնել, եթէ բամբասելը, վիրաւորելը, ռոճիկով չբաւականանալը չի թողնիլ։ Կախարդներին, աստղերի, թուերի և ձեռքերի վրայ հմայութիւն անողներին զրկել եկեղեցուց, եթէ չհեռանան իրանց պարապմունքներից։ Քառասնօրեայ պասը և զատկի աւագ շաբաթը պահել։*

*Առաւօտեան 62-րդ և երեկոյեան 140-րդ սաղմոսը ասելուց յետոյ, սարկաւագը «մի՛ ոք յերախայից…» քարոզելուց և 4 տեսակ ապաշխարողներին արձակելուց յետոյ հաւատացեալները կաղօթեն և եկեղեցուց կելնեն։*

*Դրեյը քննելով այս 8 գիրքը իբրև գրականական երկ՝ հետևեալ կարծիքն է յայտնում ըստ ռուսաց հետախոյզների։ Գրքի բաժանումները շատ անգամ անյաջող են, բովանդակութիւնը չի համապատասխանում վերնագրին, շատ անգամ անկապ կտորներն են մէջ սպրդում, որը առիթ է տալիս կարծելու, որ շատ փոփոխութիւններ է կրել զանազան անձանց յաւելումներով։ Գրքի քննութիւնից երևում է որ կազմուած է երեք առանձին հեղինակութիւնից, առաջի 6 գիրքը մի անձի գրուած է, 7-րդ գիրքը երկրորդ անձի, 8-րդ գիրքը երրորդ անձի։*

*Առաջի 6 գիրքը գրութեան ձևի, ոճի, դասաւորութեան կողմից մի ամբողջութի-ն են կազմում, անմասն 7 և 8 գրքերից։ Գրուածքի տեղն Ասիան է, մասնաւորապէս Ասորիքը։*

Առաքելական կարգադրութիւնների 8 գիրքը կազմուել են IV դարու երկրորդ կէսին, որոնց մէջ չի եղել 85 կանոնը, որը յետոյ պիտի մուծուած լինի։ Դրէյի կարծիքը 8-րդ գրքի առանձին հեղինակութիւն լինելու մասին հաստատուեց վերջերումս ասորական, եթովբական և արաբական ժողովածուների հետ համեմատելիս։ Այքի ընկնողն է ասորական խմբագրութիւնը, որը Փարիզի գրադարանի ձեռագրերում է եղել Դիդասկալիա վերնագրով, որ նշանակում է «Մեր փրկչի սուրբ աշակերտների և 12 առաքեալների ուղղափառ վարդապետութիւնը»։ Նա բաժանւում է 26 գլխի, որոնք իրանց քովանդակութեամբ համապատասխանում են առաջի 6 գրքի բովանդակութեան. թէև բնագիրը նոյն չէ, ասորականը աւելի համառօտ է։ Բիկկէլի կարծիքով, ասորականի համառօտ լինելը քան յունական ձեռագրի, և 7-րդ, 8-րդ գրքերի բացակայութիւնը առաջինի մէջ, ցոյց է տալիս, որ յունարէնի վրայ վերջերում աւելացրած են 7 և 8 գրքերը, այսինքն յունարէնի նախկին բնագիրը կազմում են եղել միայն առաջի 6 գիրքը ինչպէս ասորականը. ասորականը վերջանում է այսպէս. «վերջ Դիդասկալիայի այսինքն սուրբ առաքեալների կարգադրութիւնների։ Աղօթեցէք Աստուծուն մեղաւոր մարդուս՝ այս գրողի համար». (տես, Заозерскій, источники... 75 եր.)։

Արաբական ձեռագրի վերնագիրն է «Վարդապետութիւն» կամ «Ուսմունք». ուրիշ ձեռագրում «Ամենաբարձրեալ Աստուծոյ օգնութեամբ մենք գրում ենք Դիդասկալիա տուած հայրերից—12 առաքեալների վարդապետութիւնը և Պօղոս առաքեալի և Յակոբի Տեառնեղբօր, Երուսաղեմի եպիսկոպոսի»։ Եթովբականի վերնագիրն է «Հայրերի վարդապետութիւնը—դիտասկալիա»։

Դիտասկալիայի մասին տես, «Очерки изъ исторіи кодификаціи Восточной церкви» въ «Чтеніе об. люб. дух. просв. 1881—1883 гг. Заозерскаго»։

Բացի գրանցից կայ և մի հին ժողովածու այս վերնագրով «Սուրբ առաքեալների կանոնները և Կղեմայ գրած

կարգադրութիւնները»։ Բիկկելը կարծում էր որ առանձին ինքնուրոյն մի գիրք է դա, անկախ կերպով կազմուած. բայց համեմատութիւնից երևաց, որ սա ոչ այլ ինչ է, եթէ ոչ առաջին 5 գրքի կոպիտ կերպարանափոխութիւնը։ Սրա մասին տես, «А. Лебедевъ. Такъ называемые церковные каноны и ихъ значеніе въ вопросѣ церк. должностяхъ въ древности. «приб. къ творен. св. от. ч. 40. 1887 г.»։

Այս ժողովածուի մասին Սօլօվեօվը ասում է, «թէ Կղեմայ գրած կարգադրութիւնները և առաքեալների եկեղեցական կանոնները, և թէ 7-րդ գիրքը, եթէ ո՛չ ամբողջութեամբ, հապա մի քանի մասերով «վարդապետութեան» վերամշակումն են»։

7—րդ գիրքը բոլորովին տարբեր մարդու գրչի արդիւնք է, ոչ մի հետևողական կապ չի ներկայացնում նախկին գրքերի հետ. այդ գիրքը սկսում է այնպէս՝ ինչպէս Ա. գիրքը, կարգով խօսում է այն նիւթերի մասին, որոնք շարակարգուած են 6 գրքերում, միայն այն տարբերութեամբ որ տալիս է աղօթքների, պատարագի արարողութեան համառօտ կարգը, մկրտութեան կարգը և հին եպիսկոպոսների անունների ցուցակը։ Ունի փոքր նախաբան և վերջաբան, որը ցոյց է տալիս նրա անկախ երկ լինելը։ Թէ 7-րդ գիրքը անկախ հեղինակութիւն է, այդ երևաց և վերջերումս գտնուած նոր յիշատակարանից, որ կազմում է 7-րդ գրքի նախատիպը։ Այս նոր յիշատակարանի մասին կայ Սօլօվեօվ քահանայի հետևեալ հետախուզութիւնը «чт. об. дух. просвѣщенія» լրագրի 1866 թուի համարում այս վերնագրով «Нѣсколько словъ о древности и важности новооткрытаго памятника Христіан. письменности»։ Այդ յօդուածից քաղում ենք հետևեալը, 1875-ին Նիկոմիդիայի միտրապոլիտ Փիլօթէյ Բրիէննիյ՝ Երուսաղէմի գրադարանում գտաւ մի ձեռագիր ժողովածու, գրած ոմն Լէոնտիի ձեռքով 1056-ին, միտրոպոլիտը ձեռագրի մի մասը հրատարակեց, իսկ ամբողջը իւր ծանօթութիւններով 1883-ին այս վերնագրով «12 առաքեալների վարդապետութիւնը»։ Հարնակը

Համեմատելով այս նոր յիշատակարանի 7-րդ գրքի հետ այն եզրակացութեան է գալիս, որ նոր յիշատակարանը կազմում է 7-րդ գրքի նախատիպը։ Հարնակը ենթադրում է, որ մի ասորական կամ Պաղեստինի եպիսկոպոս կիսարիոսականներից, յանդուգն խաբէութեամբ կամենալով յաղթել իւր հակառակորդ կուսակցութեան՝ հին առաքելական փաստագրերի վկայութեամբ վերցրել է Առ. կարգ.—ի վեց գիրքը փոփոխել է, փոփոխելով նոյնպէս Ս. Իգնատիոս Աստուածակրի թուղթը, մտցնելով այնպիսի մտքեր, որոնք համապատասխան են կիսարիոսական կուսակցութեան քարոզներին. ահա այդ միևնոյն անձն է այս 7-րդ գրքի նախատիպի կեղծողը։ Այդ կեղծութիւնները եղան պատճառ, որ Տրուլլի ժողովը չընդունեց Առ. կարգ. կանոնականների շարքում։ Սօլօվեօվի կարծիքով 7-րդ գրքի առաջի 32 գլուխը այդ հին գրութեան վերամշակումն է։

8-րդ գիրքը բոլորովին տարբեր կազմութիւն ունի, թէ բովանդակութեան, թէ ոճի, թէ նիւթի կողմից։ Ըստ Պիտրիի՝ յունական շատ ձեռագրներում կայ այս գրքի բովանդակութիւնը քիչ տարբերութիւններով։ Վիեննայի գրադարանում գտնուեց մի յունական ձեռագիր, որ մօտիկ նմանութիւն ունէր 8-րդ գրքի հետ։ 1856 թ. արևելագէտ Դը Լակարդ ներկայացրեց 2 եգիպտական ձեռագիր, որոնց մէջ կար 8-րդ գիրքը։ Առաջինը Մեմփիսի ձեռագիրն է, որը տպուեց 1848 թուին Լոնդոնում Գիտուէմի ձեռքով, միւսը Թեբէի ձեռագիրը 74 կանոններով։ Մեմփիսինը բաժանւում է 7 գըրքի, 7-րդ գիրքը որ է և 8-րդը, բովանդակում է 85 Առ. կանոնները, ունի նմանութիւն Վիեննայի ձեռագրի հետ։ Սրանց մէջ պատարագի արարողութիւնները, աղօթքները աւելի համառօտ են քան 8-րդ գրքի և Վիեննայի ձեռագրի մէջ։ Ենթադրւում է որ Կղեմայ վերագրած 8 գիրքը (85-րդ կանոնի մէջ յիշածը) է այս եգիպտականը և ոչ նախկին կարծածը։ Գիրք ասելով՝ պիտի հասկանալ ոչ բառի բուն նշանակութեամբ, այլ իբրև բաժին, մասն, գլուխ, կամ խօսք։ Ջաօզերսկու կարծիքով 8-րդ գիրքը բաժանուած է եղել 8

*մասի, որի ութերորդ գլխում զետեղուած են եղել և 85 կանոնները, որոնք և պիտի լինին Կղեմայ յիշած այն 8 գիրքը և 85 կանոնները։*

*Մէջ է բերում և Դր Լակարդի նկատումը, որ մի ձեռագրում «գիրք» բառի փոխարէն գործածուած է եղել »խօսք», «բան» բառը և սրանց փոխարէն «գիրք»։ Բացի այդ, Կղեմայ վերագրած կարգադրութեան մէջ թէ եղել է պատարագի կարգը, այդ մասին վկայում է Պօլսի պատրիարք —Պրոկղը, «Շատ եպիսկոպոսներ և եկեղեցու ուսուցիչներ թողել են գրաւոր պատարագներ։ Ամենահին և ամենանշանաւորը դրանց մէջ են Ս Կղեմայ պատարագը, որը տուել են նրան առաքեալները և ս. Յակոբի պատարագը, Երուսաղէմի առաջին եպիսկոպոսի»։ Այս վկայութիւնը և Դրէյի կարծիքը, որ 8-րդ գիրքը «ամենահին օրինակ է քրիստոնէական պատարագի» ծառայում են յօգուտ այն կարծիքին, որ Կղեմին յատկացրած առաքելական 8 գրքի բաժանած կարգադրութիւնները Կղեմի գրածը չեն, Կղեմի գրածը պիտի համարել 8-րդ գիրքը, որի մէջ է և Կղեմայ պատարագը, 8-մասի (գրքի, գլխի) բաժանած, որի մէջ է և 85 կանոնը։*

*Համառօտ կերպով տեղեկութիւն տալով Ա—առաքելական, Բ—առաքելական կանոնների և Առ. կարգադրութիւնների վրայ, անցնենք առաքելական կանոնների արձանագրութեան իրանց բացադրութիւններով։*

---

## Ա—ԱՌԱՔԵԼԱԿԱՆ 34 ԿԱՆՈՆԸ.

Ս. Էջմիածնի գրադարանում եղած հետևեալ համարներով ձեռագիր կանոնագրքերում*) 52, 53, 90, 91, 86, 87, 88, 89, 245, 446, 447, 448, 449, 267, 450, 451 452, 453, 454, 455, 456, 457, 458, 459, 460, 461, 462, 431, 739, 761, 736, 737, 749, 740, 741, 742, 746 748, 743, 759, 745 և յն, կան եկեղեցական կանոններ, բացի այն ձեռագրերից, որտեղ զետեղուած է Մխիթար Գօշի դատաստանագիրքը։ Այս կանոնագրքերում կան քիչ բացառութեամբ առաքելական երկու կանոնները, որոնք բացակայում են միայն այն կանոնագրքերում, որոնք կիսատ—թերատ են, կամ համառօտած են։ Մեծամասնութիւնը ունի այբբենական յօդուածացոյց։ Բոլորը կարելի է ըստ արտագրութեան բաժանել 3 կարգի, ամեն մի խումբը արտագրութեան համար ունեցել են մի բնագիր։ Մեծամասնութեան մէջ կայ կաթուղիկոսների յաջորդական կարգը Լուսաւորչից սկսած և հասցրած մինչև 997 թիւը, որ նշանակում է թէ բնագիր օրինակները 997-ից առաջ են եղել։ 997-ից յետոյ կան յաւելումներ և փոփոխութիւններ և զանազան յիշատակարաններով, շատ անգամ մի ձեռագրում երկու յիշատակարաններ կան զանազան դարերի վերտառութեամբ. մեծամասնութիւնը 1600-ից յետոյ են յիշատակարան ունեցած։

Ա—առաքելական կանոնները սկսւում են յառաջաբանով և աւարտւում վերջաբանով. աւելի խրատական ձևով գրուած հրահանգներ են, քան կանոններ և բոլորովին համապատասխան Առաք. կարգադրութիւնների բովանդակութեան, որ ասել է թէ դրանք համառօտութիւն են Առ.

*) Այս համարները վերցրած է 1901-ին գոյութիւն ունեցող ցուցակներից։

կարգ.-ի։ Սլաւոնական «Кормчая книга» կանոնագրքում կան այդպիսի բովանդակութեամբ 36 գլխով հրահանգներ, «քաղած Առ. կարգ.-ից (տես, Заозерскій и опытъ Іоанна I т.)։ Արաբական և Եթովբական ձեռագրերում բացի բուն 80—85-ից, կան 30-չափ այսպիսի կանոններ։

Մերոնց յառաջաբանը այսպէս է։ Վերնատանը առաքեալները ժողովուած սպասում էին Հոգոյն Սրբոյ իջման, հրեղէն լեզուներով Աստուծոյ շնորհքները ստանալուց յետոյ, միաձայն որոշում են կարգեր և կանոններ, որոնց պիտի հետևեն առաքեալները իրանց քարոզութեան միջոցին բոլոր երկրներում։ Զետեղում է 34 կանոնը և վերջացնում պատմուածքը այսպէս, որ առաքեալները շրջեցին շատ տեղեր, յաջորդներ նշանակեցին, աթոռներ հաստատեցին Երուսաղէմում (Յակոբ), Եգիպտոսում (Մարկոս), Հնդկաստանում (Թովմաս), Անտիոքում (Սիմոն), Հռոմում (Սիմոն), Եփեսոսում (Յով. աւետ.), Նիկիայում (Անդրէասը), Բիւզանդիայում (Ղուկասը), Ուրհայում (Թադէոսը), Պարսկաստանում (Ադդէ աշակ.),։ Կանոնները բոլորը գրուած են գրաբառ. իսկապէս ես պարտաւոր էի գրաբառ բնագիրը արձանագրել, ապա թարգմանել և բացատրել։ Բայց որովհետև կանոնները չեն գրուած կանոնաւոր լեզուով, հակիրճ և պարզ, այլ աղաւաղուած, յաւելումներով, փոփոխութիւններով և զանազան գրչակների անմիտ ու անճոռնի ներմուծումներով, որոնք փոխանակ պարզելու, խառս են դարձնում գրուածքը, շատ անգամ այնքան երկարացնում են, որ դարձնում են ճառ, ուստի և ստիպուած եղայ բոլոր աղբիւրները թարգմանել աշխարհաբար, դուրս ձգել կրկնութիւնները, ճառերի անթիւ օրինակները և զետեղել կանոնի հակիրճ խօսքերով միտքը, ամենևին չմեղանչելով կանոնի բովանդակութեան դէմ։ Կարճ և պարզ գրուածները ուղղակի թարգմանել եմ, երկարները ամփոփել. այնպէս որ իրաւաբանական տեսակէտից մեղք չեմ գործում և չեմ էլ վնասում իրաւաբանական մտքին. միևնոյն ժամանակ զետեղում եմ գրաբար բնագիրը, մասնագէտների և այլ համեմատողների դիւրութեան համար։

Գալով նրան, թէ 40-ից աւելի կանոնագրքերից ո՞րն եմ ի նկատի ունեցել միշտ և ձեռքի տակի, այդ մասին ասացի, որ 3 ձեռագիրը՝ նախատիպ եմ համարել բոլորի համար. մնացածները երեք խմբի բաժանած նման են այդ երեքին, այդ երեքից էլ մաքուր և պարզ գրուած է 761 համարը, Սինոդի մէջ եղածը, 740-ը՝ թէ և թերի է, և 736-ը։ Համեմատութեան ժամանակ ուշադրութիւն եմ դարձրել գլխաւորապէս մտքերի ճշտութեան վրայ, առանց մանրազննին 'ի նկատի առնելու նրանց ոչ էական տարբերութիւնները։

1. Առաքեալները կարգեցին՝ որ աղօթք անելու և երկրպագութիւն տալու համար պէտք է դէպի արևելք դառնալ։

Այս նոյն կարգադրութիւնը տեսնում ենք և Ա.ռ. կարգադրութիւնների մէջ։ Բարսեղ մեծը խօսելով 91 և 92 կանոններում աւանդութիւնների հեղինակութեան վրայ, ի միջի այլոց ասում է, որտե՞ղ է գրած թէ աղօթելիս պիտի դէպի արևելք դառնալ. և պատասխանում է, ո՛չ մի տեղ, այլ անում ենք աւանդական կարգով։ Այս աւանդական կարգը հիմք ընդունում է Քրիստոսի այն խօսքը, որ ասում է, թէ որդի մարդոյ պիտի գայ այնպէս, ինչպէս արևելքից փայլակը փայլատակելով մինչև արևմուտք է սփռում իւր փայլը։

2. Բոլոր կիւրակի օրերը տօն լինի և պաշտօն կատարուի։ Կիւրակի օրերը կարդացուին մարգարէական և առաքելական սուրբ գրքերը, և վերջումն կարդացուի «գլուխ ամենեցուն» աւետարանը և պատարագ մատուցանուի։

3. Չորեքշաբթի օրը պաս պահուի, իբրև սուգի և մատնութեան օր։—

Առաք. կարգադրութիւնները նոյնպէս պատուիրում են պաս պահել այդ օրը 'ի նշան սգոյ։

4. Ուրբաթ օրը պաս պահուի, իբրև սուգի և չարչարանաց օր։

Նոյնը պատուիրում են և Առ. կարգադրութիւնները։

5. Շաբաթ օրը տօն համարուի, պաշտօն կատարուի ամեն տեղ, մարտիրոսաց յիշատակը տօնուի, պատարագ մատուցանուի, սաղմոս կարդացուի, որովհետև մեծ օրուայ նախընթաց օրն է։

Շաբաթ օրուայ տօնելը ունի երկու պատճառ, առաջինը ինչպէս այս կանոնս է ասում՝ այն է, որ կիւրակի մեծ օրուայ նախընթաց օրն է, ուրեմն շաբաթը տօնւում է ի պատիւ կիւրակի օրուայ. և երկրորդ՝ որ Հրէաները սովոր լինելով խստութեամբ պահել շաբաթ օրը, չէին կարող քրիստոնեայ դառնալուց յետոյ բոլորովին մոռացութեան տալ իրանց աւանդական սուրբ օրը. այդ հիմամբ կիւրակի օրից յետոյ շաբաթուայ օրերի մէջ երկրորդ պատուաւոր տեղը բռնում է շաբաթ օրը։ Ռուսաց մէջ մինչև այսօր էլ շաբաթը կիւրակի անող աղանդաւորներ կան, կոչւում են շաբաթականներ—սուբբոտնիկ, որոնք պաշտօնապէս կոչւում են «Հրէութիւն անող» աղանդաւորներ։

6. Երէցներ և սարկաւագներ կարգուին Մովսէսի և Ահարոնի օրինակով, աէրունական խորհուրդը, պատարագը սրբութեամբ կատարեն։ Կիսասարկաւագները եկեղեցուն սպասաւորեն, այրեաց և վշտացեալներին տեսչութիւն անեն՝ ինչպէս Ղևտացիք։ Կաթուղիկոսն էլ դէտ, գլուխ և օրէնսդիր լինի ժողովրդին, նրա խօսքը վերջնական լինի վիճելի խնդիրներում, ինչպէս Մովսէսինը և Ահարոնինը։

Նոր-ուխտի մէջ եկեղեցական երեք դասակարգ է յիշատակւում՝ եպիսկոպոսական, քահանայական և սարկաւագների։ Քահանայ նշանակում է եկեղեցու աւագագոյն անդամ.

նա 1) իրաւունք ունի կատարելու բոլոր խորհուրդները. 2) ուսուցանել և 3) կապել և արձակել։ Նա իրաւունք չունի 1) միւռոն օրհնել, 2) եկեղեցի օծել և 3) ձեռնադրութիւն կատարել։

Սարկաւագները առաքելական ձեռնադրութեամբ հաստատուեցին (Գործք. զ։ 6, 8)։ Բոլոր ս. Հայրերի կարծիքով նրանք պատկանում են քահանայական դասակարգին. սրանց պաշտօնն էր 1) ընդունել ժողովրդի ընծայաբերութիւնը և անուն անուն յիշել քահանայի առաջ. 2) քարոզ կարդալ և չորս տեսակ ապաշխարողներին աղօթելու և ելնելու ժամանակը ցոյց տալ. 3) աւետարանը կարդալ. 4) սեղանի վրայ գտնուած իրերի, սրբոյ երեկոյի կարգադրութիւնը անել. 5) եկեղեցում կարգ պահել. 6) եպիսկոպոսին և քահանային օգնել տնտեսապէս՝ այրիներին, աղքատներին ապահովելու բոլոր գործերում։ Ներսէս մեծի ժամանակ Խադը գլխաւոր կառավարիչ էր բոլոր կալուածների։—

Կիսասարկաւագները յետոյ առաջացան III, IV դարերում, երբ Հարկ զգացուեց սարկաւագների դժուարութիւնները բաժանել։ Նրանք ուղղակի ծառայողներ են. մասնաւորապէս պատարագի ժամանակ դռան կանգնած, հսկում էին մտնողների, ապաշխարողների վրայ։ Եւսեբիոս գ. 43-ում բերում է Հռովմի եկեղեցականների դասակարգերը III դարում «46 քահանայ, 7 սարկաւագ, 7 կիսասարկաւագ, 42 ջահընկալ և 52 երդմնեցուցիչ, երգիչ և դռնապան»։

Կիսասարկաւագների մասին կար և Առ. կարգադրութիւնների մէջ։ Կիսասարկաւագները պօլօժէնիայով համարւում են սրբազնագործ եկեղեցական և վայելում են բարձր իրաւունքներ։

7. Ծննդեան և Ցայտնութեան տօնը կատարուի յունուարի 6-ին մեծ փառքով և սաղմոսերգութեամբ ու հոգևոր երգերով։

Հայոց ինչպէս և արևելեան աշխարհներում ծննդեան և մկրտութեան տօնը միասին էին կատարում յունուարի 6-ին

առաքեալներից առնելով այդ կարգը։ Արևմտեան եկեղեցում հէնց սկզբից ծնունդը տօնւում էր դեկտեմբերի 25-ին։ Դ-Ե-դարերում արևմուտքի սովորութիւնը մտաւ արևելք, սկսեցին արևելցիք ծնունդը տօնել 25-ին. հայերը հաւատարիմ մնացին նախնաւանդ սովորութեան և նորաձևութիւնը մերժեցին։ Դ. դարու վերջին՝ ծնունդը 25-ին կատարելը դեռ չէր մտել արևելք. «Սուրբ Եփրեմ, որ մեռաւ 373-ին ըստ այժմեան սովորական կարծեաց, դեռ չգիտէր ծննդեան դեկ. 25-ին տօնը» (տե՛ս Տաշեան «Ա. վարդ. մատ. 68 եր.)։ Բար-Սալիբի բերում է Ուռհայի եպիսկոպոս Յակոբ Եդեսացու (651 թ.) խօսքերը թէ «Արդարև ի կողմանս Արևելից և Հիւսիսոյ մինչև ցժամանակս Արկադիայ արքայի և Ս. Յովհաննու ի վեցն Յունուար ամսոյ խմբէին զայս տօն, և կոչէին զայն Տօն Ծննդեան կամ Յայտնութեան, որպէս յորջորջէ Սուրբ աստուածաբան 'ի ճառին ծննդեան։ Բայց ի կողմանս Հռոմոց և յամենայն Իտալիայ 'ի Պաղեստին անդստին ի ժամանակաց առաքելոց մինչև յաւուրս մեր ի 25 դեկտեմբերի կատարի տօն ծննդեան. և զայս կարգ և սովորութիւն ճշտագոյն ընկալան ամենայն Արևելք և Հիւսիս, բայց միայն Հայք՝ թանձրամիտք և ծանրասիրտք՝ որ ոչ հաւանեն ճշմարտութեան և մինչև ցայսօր ըստ հնոյ կարգի ի վեցն Յունուարի կատարեն զերկոսին տօնս» (նոյն տեղը 69 եր.)։ Նոյն բանը Ծննդեան տօնի արևելք փոխադրուելուն համար հաստատում է և Ոսկեբերան «Ճառ ի ծնունդն Յիսուսի Քրիստոսի»-ի մէջ։

Տես Շնորհալու կանոնները։

8. Քառասուն օր պաս պահուի և ապա տօնուի զատիկը —Յարութիւնը։

Հներում, նամանաւանդ առաջին դարերում պասը պահում էին զանազան տեսակ, ամեն մի աշխարհ իւր մէջ մըտած սովորութեամբ։ Ոմանք մէկ օր, ոմանք երկու և աւելի, ուրիշներն էլ 40 ժամ, ինչպէս վկայում է Ս. Իրինէոս։

Նրանք ծոմ էին կենում և միայն երեկոյեանները ուտում. շատերը երկու օրով. աւագ շաբաթը անցնում էր խիստ ծոմապահութեամբ։ Կամաց կամաց շաբաթական պասը, որը զատկից առաջ խստութեամբ պահւում էր, երկարացաւ, դարձաւ մի քանի շաբաթ. ոմանք պահում էին 7 շաբաթ շարունակ, ոմանք 8, ուրիշներն էլ 9 շաբաթ։ Ոմանք շաբաթ և կիւրակի ուտում էին, ոմանք շաբաթն էին ուտում և կիւրակի պահում, ոմանք էլ միայն կիւրակին էին ուտում։ Քառասնորդական պասը ընդունուած էր 40 օր պահել, երևի հետևելով Յիսուսի, Մովսէսի 40 օրեայ ծոմապահութեան, ինչպէս այս կանոնումս էլ յիշւում է, բայց որովհետև ոմանք շաբաթն ու կիւրակին ուտում էին և 40 օրը դառնում էր 28 օր, դրա համար երկու շաբաթ էլ աւելի էին պահում որ 40 օրը լրանայ։ Շատերը աւագ շաբաթը չէին կցում քառասնորդականի հետ, Աֆրիկայի եկեղեցին Աւագ հինգշաբթին պասի շարունակութիւն չէր համարում։ Է-դարում 6 ընդունուած շաբաթի վրայ աւելացրին մի շաբաթ—չարչարանաց շաբաթը և դարձաւ 7 շաբաթ։ Չարչարանաց շաբաթուայ մէջ շատերը Աւագ հինգշաբթի օրն էին թաթախւում, իբրև յիշատակ Քրիստոսի երեկոյին, ոմանք էլ թաթախւում էին ուրբաթ կամ շաբաթ օրը։ (տե՛ս, Христіан. дух. чтеніе, 1875 թ. 186եր. Лебедева)։

9. Բոլոր գրքերի ընթերցումից յետոյ կարդացուի աւետարանը, ժողովուրդը յոտնկայս լսի։

10. Զատկից յետոյ յիսներորդ օրը տօն կատարուի 'ի յիշատակ Յիսուսի դէպի երկինք վերացման—համբարձման։

11. Զատկից 40 օր յետոյ վերացման տօնը կատարուի, վերացման տօնից յետոյ էլի պահեն և յիսներորդ օրը (այսինքն զատկից) էլի տօն կատարուի, իբրև առաջին զատիկ, գառը մորթուի։

Այս երկու կանոնների մէջ անունների շփոթութիւն է երևում։ Հ. Տաշեան կարծում է որ կանոնիս գրուելու ժա-

մանակ երկու տօները դեռ զատուած չէին, այսինքն Հոգեգալուստ և Համբարձումն. 11 կանոնը նա համարում է յետոյ աւելացրած (47 եր)։ Եւրոպացի Կիւրըտոնի կարծիքով կանոն գրողը երկու տօները շփոթել է միմեանց հետ։

Խնդիրն այս է, որ Համբարձման և Հոգեգալստեան տօները որոշուած էին և առանձին առանձին կատարւում էին, բայց թէ ինչու անունները շփոթուած էին, դժուար է որոշ բան ասել։

12. Եկուոր կամ տեղացի մարդ, որը սուրբ եկեղեցու կարգերը, օրէնքները չի իմանում, եկեղեցում առաջնորդ չլինի։ Գունիկ, անառակ մարդկանց երէցութիւն, սարկաւագութիւն կամ ուրիշ սպասաւորութիւն չտրուի. եթէ Մովսէսը խորանի սպասաւորները ջոկում էր, որքան ևս առաւել պիտի ընտրել Նոր ուխտի համար։

13. Ինչպէս Աբրահամ, Մովսէս 8 օրեայ մանկան թլպատում էին Աստուծոյ հետ դրած ուխտը կատարելու համար, այնպէս էլ նորածին 8 օրեայ երախան պիտի մկրտութեամբ սուրբ աւազանի շնորհքը ստանայ և դառնայ Քրիստոսազգեստ։ Չմկրտուած նահատակները իրանց արեամբ են փրկւում։

14. Հաւատքի մէջ երկմտող մարդիկ ձեռնադրութիւն չըպիտի ստանան, որ յետոյ չարութեան խմոր չդառնան։

15. Ով սուտ երդւում է, սուտ վկայում է, կամ գնում է կախարդների, հարցուկների, քաւդեանների և վհուկների մօտ. հաւատում է ծնունդներին և աստեղագիտութեանց անաստուածների նման, այդպիսին իբրև անաստուած խափանուի քահանայութիւնից և եկեղեցում պաշտօն չկատարի, եթէ ժողովրդական է մերժուի եկեղեցուց։—

(Տես Զահապիվանի ժողով)։

16. Ով կսիրի հրէային և հեթանոսին և հաղորդակցութիւն կունենայ նրանց հետ, թող եկեղեցի չմտնի, հաւատացեալների հետ յարաբերութիւն չունենայ, միանգամայն հեռանայ նրանցից, որ դառնութեան արմատ չդառնայ։

17. Եթէ քրիստոնեայ դարձած հրէան և հեթանոսը՝ նորից իրանց նախկին կրօնին դառնալուց յետոյ, էլի յետ դառ-

նան դէպի քրիստոնէութիւնը, այդպիսինները ամենևին չնդունուեն հաւատացեալների կողմից։

18. Ով փոխ կտայ և վաշխ ու տոկոսներով յետ կպահանջի, այդպիսին հաւատացեալներից մերժուի և քահանան զրկուի քահանայագործութիւնից։

Տոկոս համարւում է 100 րուբլու մի տարուայ բերած աւելորդ փողը, որ կոչւում է և շահ. շահ հներում հաշւում էր 4, 5, 6, մինչև 12։ Այժմ օրէնքով թոյլատրւում է մինչև 6 տկոսս, իսկ 6—12 տոկոսը իբրև փոքրագոյն չարիք թոյլատրւում է։ 12-ից վեր առնուած փողը—շահը՝ կոչւում է վաշխ, առնողը վաշխառու։ Այս կանոնս՝ ինչպէս և Առ. կարգ.—պահանջում են, որ ոչ միայն վաշխ չառնուի, հապա և տոկոս չառնուի, այլ միայն փոխ տուածը յետ դարձնուի։ Այստեղ կանոն գրողը իբրև օրինակ բերում է Մովսէսի պատուէրը եօթներորդ տարին մի անգամ՝ թողութեան տօնին՝ փոխերը յետ չստանալ։

19. Քահանայապետը կամ երէցը կամ եկեղեցու որևէ առաջնորդը իրաւունք չունին առանց իրանց պաշտօնակիցների եկեղեցում որ և է գործ կատարել, այլ բոլորի կամքով և միաբանութեամբ անեն՝ ինչ որ կամենում են։

Եկեղեցու բոլոր գործերը միաձայն և ժողովով կառավարելու օրինակը տուին առաքեալները իրանց առաջի ժողովով, որտեղ վճռեցին, որ քրիստոնեաները ազատ են հրէական ծիսական-սովորութիւնները կատարելուց։ Առաքեալները իբրև հասկն առած հրէաներ լաւ գիտէին Մովսիսական կարգերը և ժողովներով հասարակական խնդիրների վճռելու սովորութիւնը։ Հրէայք բացի նրանից որ իւրաքանչիւր քաղաքում և շրջանում գործերը վարում էին, դատում էին ժողովների գումարմամբ կամ աւելի լաւ ասած՝ ընտրուած մարդկանց ժողովով, այլ և ունէին 72 հոգուց բաղկացած

ժողով, որ իբրև բարձրագոյն դատարան վճռում էր ազգային հրէական բոլոր գործերը, այդ դատարանը կոչւում էր Սինեդրիոն։ Հրէա-քրիստոնեաների կարգը մասւ շրջապատող օտարազգի քրիստոնեաների մէջ, սրանք սովորութիւն արին եկեղեցական գործերը որոշել, վճռել ժողովներով։ Մեր եկեղեցին այս սկզբունքը ամենայն սրբութեամբ պահպանել է մինչև այսօր, ոչ միայն ընտրութիւնները, հայպ եկեղեցու օրէնսդրութիւնը, կառավարութիւնը կատարւում են ո՛չ անհատի, հայպ ժողովի ձեռքով։

20. Եթէ ընտրուած անձինքը լինին անարատ, շահասիրութիւնից հեռու, եկեղեցու օրէնքներին և կարգերին հմուտ, եթէ անարգներից իսկ լինին, թող ընտրուին և կարգուին քահանաներ և գլխաւորներ։

Անարգ բառը կարելի է հասկանալ երկու կերպ, ըստ կացութեան և ըստ կեանքի։ Ըստ կացութեան անարգ համարւում էին ստրուկները, որոնք թէև արժանաւոր յատկութիւնների տէր մարդիկ, ըստ կացութեան և դասակարգի անարգ էին, նրանցից հոգևորական դառնալ կարող էին միմիայն իրանց տէրերի թոյլտւութեամբ։ Ըստ կեանքի անարգ համարւում էին նրանք, որոնք անառակ, վատշուէր, շռայլ կեանք էին վարում, որոնք մասնակցում էին կռապաշտական խաղերում, զուարճալի թատրոններում, որոնք պատկանում էին զինուորական դասակարգին։ Կանոնս պատուիրում է, եթէ այդ շրջաններին պատկանող անձն լինի, բայց բոլորովին անմասն այդ գործերին, նա կարող է քահանայ դառնալ։

21. Այն անձինք, որոնք ստացուածքից և մամոնայից հրաժարուած են, շահասիրութիւնից հեռու, անկաշառ և մտքով մաքուր և սուրբ, թող ընտրուին Աստուծոյ պաշտօնեայ. որովհետև եթէ Ղևտացիներին կալուածներից և եղբօր բաժնից հեռանալուց յետոյ էին ընդունում սպասաւորութեան մէջ, որքան ևս առաւել անարատ պիտի լինին եկեղեցու պաշտօնեաները։

22. Ամբարտաւանը, հպարտը, սնափառը, արբեցողը, ուսումնատեացը, քնէածը, կռուողը եւն եւն. չմտնենան քահանայութեան, որովհետև գրուած է «ի բաց կացէք յինէն ամենեքեան որ գործէք զանօրէնութիւն»։

23. Մէկին բանադրելիս, եթէ պատժի արժանի է, թող քահանաները միասին բանադրեն, օրհնանքի արժանին, միասին օրհնութիւն տանայ. բանադրուածը պատժուած կմնայ մինչև առաջնորդին հնազանդուելը։ Զուր տեղից պատժողը դատի և պատժի կենթարկուի, իսկ բանադրուողը կարձակուի։

Այս կարգը սահմանուած է այն նպատակով, որ մեղաւորներին դատելու և պատժելու միջոցին, որև է մէկի քըմահաճոյքից կախուած չլինի արդարադատութիւնը, հապա ժողովով քննեն, արդար ու մեղաւորը ջոկեն։ Մանաւանդ որ թոյլ է տալիս բանադրուածին բողոքելու աւելի մեծին և արդարութիւն պահանջելու, միայն նա պարտաւոր է մինչև գործի վերջանալը՝ պատիժը խոնարհութեամբ կրելու։

24. Ոչ ոք չհամարձակի քահանայական ձեռնադրութիւն չառած, քահանայական գործեր կատարել։ Քահանան պիտի լինի անաչառ և արդար։

25. Ոչ ոք չանարգի, չանգոսնի և չարհամարհի քահանային, մինչև անգամ եթէ անարժան և անարգուածներից մէկն էլ լինի. որովհետև գրուած է «Զիշխան ժողովրդեան քո՝ մի բամբասեսցես»։

26. Դատաւորները պիտի արդարադատութեամբ դատ վարեն և մեղաւորներին ու արդարներին ջոկեն ամենայն անաչառութեամբ և ըստ գործոյ պատիժ նշանակեն, եթէ ո՛չ թող դատաւորութիւնից ընկնեն։

Ո՞ւմ է վերաբերում այս կանոնս, հոգևորական թէ աշխարհական դատաւորներին. երկուսի՛ն էլ. այն դատաւորը, որ սրբութեամբ չի կատարել իւր պաշտօնը, թող արձակուի։

Այս մասին տես Ձահապիվանի ժողովը։

27. Քրիստոսի անուան համար նահատակուողների յիշատակը պիտի կատարել նրանց մահուան օրը և նրա նշխարները պատուելով փառաւորել Քրիստոսին։

28. Հաւատացող թագաւորը կարող է քահանաների հետ բեմում կանգնել, սեղան բարձրանալ ինչպէս Դաւիթ, բայց ուրիշ քահանայագործական պաշտամունք չի կարող անել։—

29. Ժամերգութիւնը կատարելիս պէտք է Դաւթի Սաղմոսներն և օրհնութիւնները (150—ձծ) օր ըստ օրէ ամեն ժամ ասուեն։

Առ. կարգ. պատուիրում են առաւօտը երգել 62-րդ սաղմոսը, երեկոյեան 240-րդ սաղմոսը։—

30. Եկեղեցիներում կարդացուին հին կտակարանները «վասն կենարար չարչարանաց փրկչին մերոյ Քրիստոսի» և աւետարանիչների Գործք և խօսքը «վասն բանին ճշմարտութեան» և «վարդապետութիւն աշակերտաց փրկչին» և աւելի ուրիշ բան չկարդացուի։

Հ. Տաշեանի բերած օրինակում կայ «աւրէնք և մարգարէք և նոր կտակարանք»։

Կանոնս պատուիրում է բացի ընդունուած և վաւերական համարուած հին և նոր կտակարանների գրքերից, ուրիշ բան չկարդացուի եկեղեցում. անվաւեր գրքեր, սաղմոսներ, աւետարան և առաքելոց գործեր զանազան տեղերում կային, բերւում էին եկեղեցի և վաւերականների փոխարէն կարդացւում։—

31. Պատարագի հացը, որ օր թխւում է, նոյն օրը պիտի սեղան հանուի, մի քանի օր յետոյ չի կարելի սեղան բարձրացնել. որովհետև Մովսէսն էլ Աստուծոյ երեսից ջերմ հացը չէր պակսեցնում։—

Այս կանոններիս մէջ 2-րդ կանոնն էլ է պատուիրում ջերմ հաց տանել սեղան, որովհետև 2-րդ կանոնը ուրիշ

բանի վրայ էր խօսում և ասորական բնագրում էլ չկայ, մա նաւանդ որ 31 կանոնս բացառապէս խօսում է ջերմ Հացի-վրայ, ուստի և անվնաս Համարեցի 2-ի մէջ մտածը ջերմ Հացի վերաբերմամբ դուրս Հանել։

Թէ բոլոր արևելքում մինչև 375 Թիւը ծննդեան և մկրտուԹեան տօնը միասին էին կատարում և նոյնպէս մինչև Դ. դարը զատիկը շատ տեղերում կատարում էին Հրէաների Հետ Նիսան ամսի 14-ին, այդ պատմական փաստ է և ճիշտ (տես աւանդուԹեան մասին գրածը)։

Թէ մեր, Թէ ասորական, արաբական, եԹովպական ձեռագրերում միշտ պատուիրում են «ջերմ Հաց» «նոյն օրը եփած Հաց» սեղան Հանել։ Մեր մէջ մինչև այսօր էլ սովորուԹիւն է՝ ուխտ գնալիս, Հիւրի Համար պաշար պատրաստելիս, ձեռաց Թոնիր վառել, բաղարջ Հաց, կամ կաԹնաՀունց պատրաստել առանց ԹԹխմորի։ Իսկ ընդՀանրապէս «Թազա» Հացը միշտ գերադասելի է քան օԹի Հացը։ Բացի այդ, որովՀետև Հրէաները Նիսանի 14-ին մինչև առաւօտեան ժամի 11-ը բոլոր մնացած Հին Հացերը վերջացնում են, այսինքի այնքան պաշար են ունենում, որ մինչև Նիսանի 14-ի առաւօտեայ 11-ը վերջանում է, ուստի և 12-ից յետոյ սկսում են բաղարջի գործածուԹիւնը։ Իսկ Յիսուս այդ օրուայ երեկոյեան ըստ Հրէից սովորուԹեան զատիկը կատարեց, նոյն երեկոյեան էլ մինչև այսօր Հրէաները կատարում են զատիկը։ Արևելցիք և Հայերը Հրէաների Հետ Նիսանի 14-ին կատարելով զատիկը, պիտի Հետևէին Յիսուսի օրինակին և նրա երեկոյի յիշատակը՝ ս. ՀաղորդուԹեան խորՀրդի կատարումը՝ պիտի անէին բաղարջ Հացով, «ջերմ Հացով» «եփած Հացով»։ ԱՀա այս կանոնս ջերմ Հաց ասելով Հասկանում է բաղարջ և ոչ խմորուն Հաց։ Վանսլեբ «histoir de l'eglise d'Alex.» բերում է արաբական չորրորդ ժողովածուի 30-րդ կանոնը, որը պատուիրում է սեղան բերել ոչ Հին Հաց, այլ բոլորովին «Թազա» Հաց և արգելում է դրանից մի բան Թողնել երկրորդ օրուան Համար։ (տես Арабскіе кодексы. Чтеніе дух. прос. 1882. фев. Заозерскій)։ Եւս-

եբիոսը 305 եր. ասում է ի միջի այլոց «Պողիկարպոսը և ես նուաստս և նրանք միշտ տօնել են զատիկը այն օրը, երբ ժողովուրդը թողել է խմոր հացը»։

Նոյն կանոնս կրկնում է Մակար Երուսաղէմի արքեպիսկոպոսը և Թադէի աւանդական կանոնները։ Այս բոլորը ապացուցանում են որ նախ քան Լուսաւորիչ՝ տեղական փոքրաթիւ Հայ քրիստոնեաները ունէին այս աւանդական կարգերը առաքեալներից սկսած և մինչև այսօր նոյն ինքնուրոյնութեամբ պահում են։

Տես Շնորհալու կանոնները։

32. Այն հոգևորականները, որոնք կամենում են կուսան մնալ, իրաւունք ունին վանքեր շինել պատրաստուելու և սրբութեամբ կեանք վարելու համար, միայն կերակրի մէջ չափաւոր լինին, զինուորական զգեստից հեռանան և հրեշտակային կեանք վարեն։—

Վանականութեան մասին տես Ներսէս Մեծի կանոնները։
Վանականների չորս մասին տես Բ. գիրք «Վանականութիւն»։—

33. Որ ամուսնութիւնը կատարուի օրէնքով և քահանայի օրհնութեամբ։ Մովսէսին դրուած պատուէրները պիտի պահենք ամուսնութեան խնդրում. մօտիկ ազգականի, քրոջ, աղջկայ, հօրաքրոջ, մօրաքրոջ, հօրը կնոջ, որդու քրոջ հետ ամուսնանալ կամ յարաբերութիւն ունենալ չի կարելի, չլոողները անիծեալ լինին։ Նոյնպէս և Առաքելական կանոնների սահմանածը՝ դէպի ընտանիքի անդամները թէ չնութեամբ թէ ամուսնութեամբ մինչև չորրորդ զարմը ունեցած յարաբերութիւնը բոլորովին ընդհատուի և արգելուի։

Այս կանոնիս մէջ ուշադրութեան արժանի կէտեր կան. 1) որ ազգակցութեան համար քրիստոնեայ աշխարհը հետևում է Մովսիսականութեան։ 2) Մովսիսականութիւնից ջնջւում է մի քանի չհասութիւն, օր. եղբօր կնոջ առնելը։ 3) Արգելւում է անպայման մինչև երրորդ ծնունդ, չորրորդը թոյլ է տալիս թէ չէ, յայտնի չէ, գոնէ բերած օրինակներից երևում է որ չէ արգելւում։ 4) Մատնացոյց է

անում յունական Առաքելական կանոնների վրայ, որ նշանակում է այս կանոնս գրելիս նրանք առաջնորդուել են այդ կանոններով։ 5) Զարմ ասելով պիտի հասկանալ ծնունդ, և ոչ խնական մաքով։ Երկու եղբայրը երկու ծնունդ են, ուրեմն և երկու աստիճան են ներկայացնում. երկու եղբայրը մի զարմ են այսինքն մի սերունդ կամ առաջի սերունդ։—

Տես Զահապկվանի ժողովը։

34. Այս կանոններս գրուեցին առաքեալների կողմից ոչ թէ միայն իրանց համար, այլ և իրանց հետևորդների և յաջորդների։

Ապա մօտ 10 երեսով պատմում է աշակերտների ցրուելը, քարոզելը, աթոռներ հաստատելը և այլն. և այդ բոլորը մեր կանոնագրքերում գրուած է 34-րդ կանոնի տակ։ Այդքանի թարգմանաբար բերելը ոչ միայն աւելորդ բան էր, հապա ոչ մի նշանակութիւն չունեցող թէ իրաւաբանութեան և թէ մեր եկեղեցու իրաւունքի համար։—

Սրանով վերջանում են Ա—Առաքելական կանոնները. այժմ կսկսենք Բ—Առաքելական կանոնների արձանագրութիւնը։—

## Բ—ԱՌԱՔԵԼԱԿԱՆ ԿԱՆՈՆՆԵՐ.

Թէ այս 85 կանոններիս համար և թէ բոլոր ընդհանուր կոչուած մնացած աղբիւրների համար ունինք երկու տեսակ մատեաններ, առաջին՝ մեր ձեռագիր կանոնագրքերը և երկրորդ՝ յունա—սլաւօնա—ռուսական տպուած գրքերը։ Երկուսի աղբիւրն էլ յունական ձեռագիրներն են, միայն այս տարբերութեամբ որ Ե. դարում Հայ թարգմանիչների ձեռքով գրուած թարգմանութիւնները մինչև մեզ հասնելը ահագին փոփոխութիւններ են կրել, խանգարուել, կանոնները աղաւաղուել մինչև այն աստիճան, որ բոլորովին հեռացել են բնագրից և դարձել նոր կանոն, երկարաբանութիւններով ձգձգուել և իւրաքանչիւր արտագրողի քմահաճոյքին ենթարկուել, այն ինչ յունա—սլաւօնա—ռուսականը կազմուել է երկար ժամանակուայ մշակութեամբ, զանազան ձեռագրերի համեմատութեամբ, իսկական և բուն բնագրի որոշմամբ։ Որովհետև այս երկրորդն է բունը և իսկականը, և այդ ընդունում է Եւրոպական—գիտնական եկեղեցագէտ աշխարհը, ուստի և սրանց կանոնների թուահամարը կընդունենք մեզ ուղղեցոյց, և շարունակաբար կդնենք այն տարբերութիւնը, որ նկատւում է մեր ձեռագրերի—կանոնագրքերի մէջ։ Փակագծի մէջ դրուածները մեր կանոնագրքի թուահամարներն են. իսկ միւսը յունա—սլաւօնականի։ Այս կանոնների բացատրութիւնների համար օգտուել եմ «Правила св. Апостоловъ, св. отецъ и вселенскихъ соборовъ съ толкованіями. Москва», որի մէջ դրած է յունական բնագիրը, մօտը սլաւօնական թարգմանութիւնը և ռուսական մեկնութիւնը. մեկնութիւնները քաղուած են միջնադարեան յոյն յայտնի մեկնիչների՝ Արիստինի, Զօնարայի և Վալսամոնի բացատրութիւններից, և երկրորդ՝ «Опытъ церковнаго законовѣдѣнія, Архим. Іоанна, 1851 г.» լուրջ աշխատութիւնից, որտեղ պատմական կարգով բացատրուած են բոլոր կանոնները։

| Յունա-պատօնական թուահամար: | Մեր ձեռագիր կանո-նագրքերի թուահամար: | |
| --- | --- | --- |
| 1. | (1.) | *Եպիսկոպոսը ձեռնադրուի երկու կամ երեք եպիսկոպոսից:* |

Այս նոյն պատուէրը դրւում է և Առ. կարգադրու-թիւնների մէջ: Առաքեալների ժամանակ եպիսկոպոս կար-գում էին ձեռնադրութեամբ և աղօթքով՝ խնդրելով Աստու-ծուն, որ Հոգին սուրբ իջնի ձեռնադրուողի վրայ: Առաքեալ-ները այս իրաւունքը և շնորքը ստացան Քրիստոսից. «Եւ զայս իբրև ասաց՝ փչեաց ի նոսա և ասէ. առէք զՀոգի սուրբ» Յով. Ի, 22: Առաքեալները այդպէս էլ վարուեցին իրանցից կարգուածների—Պօղոսի և Բառնաբասի հետ. «Յայնժամ պա-հեալ՝ և աղօթս արարեալ՝ եդին զձեռն ի վերայ նոցա և ար-ձակեցին» Գործ. (ԺԳ-3). Բ. Տիմ. Ա-6. Գործ, Զ-6. ԺԳ-22:

Կղեմ Աղէքսանդրացու վկայութեամբ, Տեառնեղբայր Յակոբը եպիսկոպոս ձեռնադրուեց Երուսաղէմում Պետրոս, Յակոբոս և Յովհաննէս առաքեալների ձեռքով:

Այս սրբազնախորհուրդ ձեռնադրութիւնից զանազան-ւում է եկեղեցական կանոններով միւս տեսակը, որը տալիս է միայն իրաւունք եկեղեցում հասարակ պաշտօն կատարելու. այս երկրորդ տեսակը լինում է օրհնութեամբ և աղօթքով, բայց առանց առանձին խորհրդի. այսպէս են կիսասարկաւագ-ների, գրակարդացների, երգիչների (սաղմոսերգու), նշանա-կումը: Կար և երրորդ տեսակ ձեռնադրութիւն, որ կատար-ւում էր ապաշխարողների վերաբերմամբ, ձեռք դնելով նը-րանց գլխին, աղօթքով և օրհնութեամբ մեղքերին թողու-թիւն տալով: Յունաց (խիրոտօնիա) ձեռնադրութիւն բառը ըստ մեկնիչ Զօնարայի գործ էր ածւում և այն դէպքում, երբ ժողովուրդը ձեռամբարձութեամբ, այսինքն ձեռքը վեր բարձրացնելով հաւանութիւն էր տալիս մի որևէ անձի եպիս-կոպոսական աստիճանին արժանի լինելուն և ընտրուելուն.

այս մտքով էլ պիտի հասկանալ Լաւոդիկեայի 4-—կանոնը, որ ասում է, «ձեռնադրութիւնը ունկնդրողների առաջ չըպէտք է անել», որ նշանակում է թէ ունկնդրողները (ապաշխարողները) ձայն տալու իրաւունք չունին եպիսկոպոսի ընտրութեան ժամանակ։ (Տես чтеніе дух. прос. 1875 г.)։

2. (2.) Երէցը, սարկաւագը և մնացած ժառանգաւորները (կղերը) ձեռնադրւում են մէկ եպիսկոպոսից։

Նոյն պատուէրը կրկնւում է և Ա.ռ. կարգադրութիւնների մէջ։ Սարկաւագների ձեռնադրութիւնը եղաւ հաւատացեալների մասնակցութեամբ, իսկ ձեռնադրութիւնը առաքեալների ձեռքով. «Զորս կացուցին առաջի առաքելոցն, և աղօթս արարեալ, եդին ի վերայ նոցա զձեռս» Գործ. Զ-6.։ Նոյնպէս և քահանայի ձեռնադրութիւնը եղաւ առաքեալների ձեռքով. «Մի՛ անփոյթ առներ զշնորհացդ՝ որք ի քեզ են. որք տուան քեզ մարգարէութեամբ ի ձեռնադրութենէ երիցութեան». Ա.-Տիմ. Դ-14։ Գործ. ԺԴ-23։ Պօղոս առաքեալը պատուիրում է Տիտոսին քահանաներ կարգել. «և կացուսցես ըստ քաղաքաց երիցունս՝ որպէս և ես քեզ պատուիրեցի» Տիտ. ա-15.։

Ժառանգաւոր ասելով պիտի հասկանալ կղերական, եկեղեցու ստորին պաշտօնեայ, կիսասարկաւագից մինչև դռնապան և հասարակ պարզ միաբան։ Տես այս մասին և Ա.-Ա.ռ. 6 կ.։

3. (3.) Եթէ մէկը, եպիսկոպոս կամ երէց, բացի պատարագի համար Տիրոջ կարգադրածից, սեղան կհանի ուրիշ բաներ, մեղր, կաթը, կամ գինու փոխարէն ուրիշ ըմպելիք, կամ հաւ (թռչուն), կամ ուրիշ կենդանիներ, թող կարգալոյծ լինի։ Հասպա սեղան տարուի միայն նոր արմտիքից հասկ (ցորեն) և խաղող, ձէթ աշտանակի և խունկ պատարագի համար։

Առաքեալները վերջացնելով ըստ Հին-Ուխտի արիւնոտ մատաղը տաճարում, մտցրին Քրիստոսի հաստատած անա-

րիւն զոհը հացով և գինով, երախայրիքով (թարմ պտուղ)։ Հաւատացեալները հներում հէնց առաքեալների ժամանակ կատարում էին ուրիշ տեսակ. իւրաքանչիւր հաւատացեալ բերում էր գինի և հաց գլխաւորապէս և ապա զանազան ուտելեղէն և խմիչքներ, մեղր, կաթը, թռչուններ, կենդանիներ, բանջարեղէն, հացահատիկ։ Հաղորդութեան խորհուրդը կատարելուց յետոյ, բոլորը՝ հարուստ թէ աղքատ, մեծ թէ փոքր նստում էին միասին և ճաշում ի յիշատակ Քրիստոսի երեկոյին, այդ կոչւում էր ագապ (սէր), «սիրոյ ճաշ». «սիրոյ երեկոյ»։ Իսկ սեղանի համար բերածներից ինչ որ մընար, բաժանում էին եկեղեցականները իրանց մէջ, ինչպէս նկարագրած է Առ. կարգ.-ի մէջ։ Դժբախտաբար այդ ճաշերը իրանց նպատակին չծառայեցին, հարուստները դժկամակութեամբ էին նստում աղքատների հետ և իրանց բերածը զլանում էին աղքատներին բաժանել. շատ անգամ խմում հարբում էին և աղքատներին քաղցած թողնում։ Շատ անգամ վերջանում էին (սիրոյ երեկոները) կռուով, աղմուկով։ Այդ բանը տեսնելով առաքեալները խստիւ արգելեցին. դրանից է վերաբերում Պօղոս առաքեալի կշտամբանքը. «Միթէ տունս ոչ ունիք ուտելոյ կամ ըմպելոյ, եթէ զեկեղեցեաւ Աստուծոյ արհամարհիցէք և յամօթ առնէք զչքաւորսն, յայդմ ոչ գովեմ զձեզ». Ա—Կորն. ԺԱ-17-34։—Այս կանոնս արգելում է սեղան տանել այնպիսի բաներ, որոնք պատարագի ժամանակ և եկեղեցում գործ չեն ածւում. հապա միմիայն հաց, գինի, ջահերի համար ձէթ և բուրվառի վրայ խունկ։ Բայց որովհետև մնացած տուրքերով էին ապրում եկեղեցականները, ուստի և հետևեալ կանոնս կարգադրում է այդ կարևոր խնդիրը։

4. (4.) Մնացած ուրիշ մրգերը (երախայրիք) ուղարկուսն եպիսկոպոսի և քահանաների տները, և ո՛չ սեղանը։ Դրանք սարկաւագներին և մնացած ժառանգաւորներին բաժին կհանեն իհարկէ։

Այս երկու կանոնը 3 և 4 եկեղեցականների տնտեսական դրութիւնը ապահովում են, առաջի օրէնսդրական կանոնները սրանք են, որոնցով պարտաւորւում են ժողովրդականք պահպանել տուրքերով իրանց հոգևորականներին։ Առաքեալների ժամանակ վաճառում էին ամեն ինչ և յանձնում դրամը առաքեալներին, կազմելով ընդհանուր գանձարան, որով և կերակրում և խնամում էին բոլորին անխտիր և աղքատութեան առաջն առնում (Գործ. Ե.)։ Բայց ստացուածքը վաճառելու խնդիրը, քրիստոնեաների շատանալը դժուարութիւններ էին առաջացնում դրանց նիւթականը հոգալու վերաբերմամբ, ուստի և սահմանեցին առաքեալները, որ կիւրակի օրերը իւրաքանչիւր հաւատացեալ իր կարողութեան չափով յետ ձգի մի որոշ գումար և միացնելով ժողովուածները՝ ընտրեալ մարդկանց ձեռքով ուղարկեն Երուսաղէմի եկեղեցուն (Ա. Կորն. ԺԶ. 1-4)։ Եւսեբիոսը պատմում է, որ շատ տեղերում ամիսը մի անգամ էին դրամ և ընծայաբերութիւն ժողովում։ Երախայրիքը տանել օրհնել տալ և բաժին հանել երէցներին շատ վաղուց էր, այդ մասին վկայում են Որոգինէսը, Իրինիոսը, Գրիգոր Աստուածաբանը. իսկ «Առ. կարգադրութիւնների» մէջ մանրամասն գրում է իւրաքանչիւր եկեղեցականի որ մասն ստանալը և օրհնութեան աղօթքը. (եպիսկոպոսը 4 մաս, երէցը 3 մաս, սարկաւագը 2 մաս. մնացածները, նոյնպէս և այրիք, որբեր մէկ մաս)։ —

5. (5.) Եպիսկոպոսը, երէցը կամ սարկաւագը չհեռացնեն իրանց կնոջ երկիւղածութեան պատճառով. եթէ կհեռացնեն, մերժուին եկեղեցուց, իսկ եթէ յամառեն, թող կարգալոյծ լինին։

Եպիսկոպոս բառը մեր բոլոր ձեռագրերում էլ չկայ, բացի № 749 կանոնագրքից, այդ չլինելը ապացուցանում է, որ կանոնները գրուած կամ թարգմանուած են այն ժամա-

նակ, երբ եպիսկոպոսական ամուսնութիւնը բոլորովին վերացած էր Հայոց մէջ, կամ թէ չէ վերջին արտագրողներն են հանել։ Մեր մէջ եպիսկոպոսական ամուսնութիւնը վերջացած պիտի համարել Ս. Սահակի ժամանակներում. գոնէ Շահապիվանի 447 թուի ժողովի կանոններից կարելի է ենթադրել. թէ և բացորոշ արգելական կանոն ինչպէս Տրուլլի ժողովում սահմանուեց, մեր կանոններում չկայ. այդ սովորութիւնը մեր մէջ օրէնքի ոյժ է ստացել ոչ ուշ քան Ե. դարու առաջի կիսում և շատ տարիներ առաջ քան տիեզերական ժողովի վճիռը։

Այն ժամանակները հոգևորականներից շատերը բարեպաշտութեան պատրուակով, առանց կնոջ համաձայնութեան արձակում էին կանանց, հակառակ գնալով Յիսուսի յայտնի պատուէրին «ով առանց բանի պոռնկութեան արձակէ, տայ նմա շնալ»։ Առաքեալի պատուէրը «եպիսկոպոսին անարատ լինել, միոյ կնոջ այր». «սարկաւագունք լինիցին միոյ կնոջ այրք». Ա. Տիմ. Գ.), խախտում էին և շատ անբաւականութիւնների տեղիք տալիս։ Այսպէս վարուեց Տերտուղլիանոսը։ Այս կանոնը չի հակասում այն աւանդական կարգին, որ հէնց առաքեալներից սկսած, ով ցանկանում էր, կարող էր ցմահ կուսակրօն մնալ։

Առաջի պատիժը՝ եկեղեցուց մերժել կամ ըստ ձեռագրաց «ի բաց որոշել», նշանակում է հեռացնել հոգևորականին պաշտօնակատարութիւնից և թոյլ չտալ եկեղեցի մտնել՝ առանց կարգալոյծ անելու. երկրորդ պատիժը—կարգալոյծ անելը, զրկում է քահանայական կարգից և աշխարհականների դասը նշանակում։ Այս մասին տես Բ. Առ. կան. 23։ Բարսեղ 3, 32, 51 կ.։

6. (6.) *Եպիսկոպոս, կամ երէց, կամ սարկաւագ չընդունեն իրանց վրայ աշխարհային հոգսեր, եթէ ոչ կարգալոյծ լինին։*

Թէ հոգևորականը ինչ յատկութիւններ պիտի ունենայ և ինչ անի, երևում է Պօղոս առաքեալի պատուէրից Ա.Տիմ Գ.։

Այս կանոնը արգելում է հոգևորականներին պարապել այնպիսի զբաղմունքներով, որոնք ստորացուցիչ, պախարակելի կարող են համարուել ժողովրդի աչքում և անպատուաբեր հոգևորականի կոչման (օր. գինեվաճառութիւն, վաշխառութիւն, առևտուր անել, խանութ դնել, եւն եւն)։ Պատուաւոր զբաղմունքներով պարապելը պիտի այն չափով լինի, որ չխանգարի նրա հոգևոր պարտաւորութիւնները կատարել։—

7. (7.) *Եթէ եպիսկոպոս, կամ երէց, կամ սարկաւագ զատկի սուրբ օրը կ'կատարեն հրէաների հետ գարնանային գիշերահաւասարից առաջ—կարգալոյծ լինին։ —*

Հրէաները իրանց զատիկը, այսինքն Եգիպտոսից ազատուելու օրուայ յիշատակը (Ելից ԺԳ. 4) տօնում էին Նիսան ամսի 14-ին, որը տարուայ առաջին ամիսն էր և համապատասխան մեր մարտին և մասամբ ապրիլին, որովհետև իբրև լուսնական ամիս փոփոխական էր։ Հրէաները Նիսան ամիսը սկսում էին գարնան գիշերահաւասարի մօտ լուսնի ծնունդով, իսկ զատկի տօնի շրջանը որոշում էին նոյն ամսի լրումով։ Որովհետև զատկի տօնի կատարումը միշտ յետ ու առաջ էր ընկնում լուսնի լրման հետ, ուստի զատիկը միշտ փոփոխւում էր, մինչև իսկ պատահում էր մի տարուայ մէջ երկու զատիկ (լուսնական տարին արեգակնային տարուց 11 օրով պակաս է)։

Արևելքում Յովհաննէս և Փիլիպպոս առաքեալներից աւանդութիւն ստացած լինելով, զատիկը կատարում էին Նիսանի 14-ին, հետևելով հրէաների սովորութեան և օրէնքներին զատկական գառը ուտում էին երեկոյեան, այդ օրը պասը բաց էին անում, այդ երեկոյով յիշատակում էին Քրիստոսի չարչարանաց երեկոն. իսկ Յարութիւնը տօնում էին Նիսանի 14-ից հաշուած երրորդ օրը, ինչ օր էլ լինի, երկուշաբթի, երեքշաբթի... թէ կիւրակի։

Իսկ Արևմուտքում հետևելով Պօղոս և Պետրոս առաքեալներին, ինչպէս Եւսեբիոս ասում է (Ե. 23, 24, 25), կատարում էին զարնան գիշերահաւասարից յետոյ կիւրակի օրը։ Այս մասին արևելեան և արևմտեան եպիսկոպոսների մէջ վէճեր առաջացան Գ. Դ. դարերում, որի մասին վերևում խօսեցինք (աւանդութեան գլխում)։ Կանոնս միանգամ ընդ միշտ վերջացնում է խնդիրը, որոշելով զատիկը կատարել զարնան գիշերահաւասարից յետոյ։—

8, (8.) *Եթէ եպիսկոպոսը, կամ երէցը, կամ սարկաւագը, կամ ժառանգաւորներից մէկը պատարագի ժամանակ չի հաղորդուիլ, թող պատճառն ասի, եթէ ընդունելի է, կներուի, եթէ պատճառը չասի, թող մերժուի եկեղեցուց, որպէսզի ժողովուրդը չգայթակղուի, կարծելով թե չհաղորդուելու պատճառը պատարագիչի անարժան լինելն է։*

Մեր բոլոր ձեռագրերում «եթէ այլ ոք ի քահանայական կարգէն ժողովելոց ոչ հաղորդեսցի» նախադասութիւնը գրուած է այսպէս «որ ժողովոց ոչ հաղորդեսցի». №740-ում «որ ժողովրդոց ոչ հաղորդեսցի», որ բոլորովին անմիտ խօսք է դուրս գալիս։ Միմիայն №749-ի մէջ գրուած է յունա— սլաւոնականի նման, պարզ և հասկանալի։

Սկզբներում շաբաթը 4 անգամ հաղորդւում էին, ինչպէս Բարսեղ մեծը յիշատակում է, չորեքշաբթի, ուրբաթ, շաբաթ և կիւրակի։ Չորեքշաբթի և ուրբաթ օրեր պատարագ չանելը յետոյ է մտել, առաջները անում էին։ Յաճախ հաղորդելու կարգը հետակայ դարերում վերացաւ, հաղորդութիւնը իբրև ներքին խորհուրդ, խղճի գործ համարուելով, թոյլ տրուեց իւրաքանչիւրին հաղորդուել այն ժամանակ, երբ իրան պատրաստ կզգայ այդ ս. խորհուրդը կատարելու և հաղորդութիւն ընդունելու։

9. (9,) Այն բոլոր հաւատացեալները, որոնք եկեղեցի են մտնում, գրքերը լսում, և սուրբ հաղորդութեան չեն սպասում, իբրև անկարգութիւն անողներ եկեղեցուց մերժուեն։

Այս պատիժը կնշանակի եպիսկոպոսը այնքան ժամանակով, որքան ապաշխարանքով մեղքը քաւած կհամարի։ Հիմա այս բանի վրայ ոչ ոք ուշ չի դարձնում, նոյն իսկ հոգևորականները զանցառութեան են տալիս այդ կարգը։

10. (10.) Ով եկեղեցուց մերժուածի հետ կաղօթի, թէկուզ տանը, նա էլ նոյն պատժին կենթարկուի։

Մեր ձեռագրերում գրուած է, ով «անհաղորդ, առանց հաղորդութեան» մարդու հետ կաղօթի, որ միևնոյն միտքն է արտայայտում ինչ որ 9-ումն էր, որովհետև մերժւում էր եկեղեցուց նա, ով հաղորդութեան չի սպասում։

Կարճ ժամանակով եկեղեցուց մերժելու պատիժը երեք տեսակ էր. 1) Մերժուածը զրկւում էր հաղորդութիւնից. 2) կամ հաղորդութիւնից և աղօթքներից, և 3) կամ ամեն բանից, այսինքն՝ եկեղեցի մտնելու իրաւունքից։
Պատիժները նշանակում էր եպիսկոպոսը նայելով մեղքի աստիճանին, կամ նրա հրամանով քահանան։—

Տես Նիկ. Նէո. Բարս.

11. (11.) Եթէ կղերականը՝ կղերականութիւնից զրկուածի հետ աղօթի, ինքն էլ կզրկուի այդ կարգից։

Մեր ձեռագրերում գրած է եթէ քահանան աղօթի կարգալոյծի հետ, ինքն էլ լուծուի կարգից։

Կղերական և ժառանգաւոր հոմանիշ բառեր են, ընդհանուր առմամբ նշանակում է հոգևորական, իսկ մասնաւոր՝ նշանակում է եկեղեցու ստորին պաշտօնեայ։

12. (12.) *Եթէ ժառանգաւորներից մէկը, կամ եկեղեցուց մերժուած աշխարհականը, կամ հոգևոր կոչման անարժան անձը, առանց ընծայական թղթի ուրիշ քաղաքում ընդունուեն, եկեղեցուց մերժուեն ընդունողը և ընդունուողը։*

13. (12.) *Իսկ եթէ ընդունուողը (ժառանգաւորը) եկեղեցուց մերժուածներից լինի, թող այժմ երկարի այդ պատիժը իբրև Աստուծոյ եկեղեցուն ստողի և պատրողի։*

*Հայոց բոլոր ձեռագրերում 12 և 13 կանոնը միացրած է. 12-ը ճիշտ է թարգմանած, իսկ 13-ը բոլորովին անմիտ կերպով. ինձ թւում է որ 13-ի թարգմանողը չի հասկացել բնագիրը և չի կարողացել իբրև առանձին կանոն գրել, միացրել է 12-ի հետ, որ ոգիտութիւնը անորոշ մնայ։ Միմիայն* №749 *ձեռագրում ճիշտ է թարգմանած, նման յունա —ռուսականին։ Ահա այդ կտորը* №749-*ի մէջ այսպէս է. «իսկ եթէ ընդ բանիւ որոշմամբ էր, առաւել ևս դիցի ի վերայ նորա որոշումն». ռուսականը*—«Аще же будетъ отлученный: да продолжится ему отлученіе...»: *Իսկ 40-չափ ձեռագրերում այսպէս է գրած նոյն բանը. «Թէպէտ և էր ընդունելի առաւել ևս երկարեսցի որոշումն» և որից ոչինչ չի հասկացւում։*

*Հներում ոչ քրիստոնեայ, կամ կիսաքրիստոնեայ անձինքներից—ունկնդրողներից, մերժուածներից, չմկրտուածներից, թերահաւատներից շատերը օգուտ քաղելով հաւատացեալների հիւրասիրութիւնից և փախչելով պատժից, գնում էին ուրիշ տեղ և իրանց հաւատացեալ ձևացնելով ապրում էին եկեղեցական տուրքերի հաշուով և ազատւում կրելի պատժից. կամ թէ մի տեղ անարժան համարուած անձը ուրիշ տեղ գնում և թեկնածութիւնը գնում էր եկեղեցական լինելու. բացի այդ զանազան աղանդաւորներ նոյն դիմակով գալիս հաւատացեալ համարւում և ծածուկ սկսում էին իրանց գործնէութիւնը։ Այդ բոլորի առաջն առնելու համար, կանոնս պատուիրում է, որ եթէ հաւատացեալներից մէկը կամենում է գործով ուրիշ տեղ գնալ և ընդունել*

նոր տեղի եկեղեցում, պիտի անշուշտ տեղական եպիսկոպոսից վկայաթուղթ ստանայ. վկայաթուղթը կներկայացնի ուր որ գնալու լինի, այնտեղի եպիսկոպոսին կամ քահանային և ապա իրաւունք կունենայ եկեղեցի մտնելու։ Ով կհակառակի այս կանոնիս թէ ընդունողը և թէ ընդունուողը առանց վկայաթղթի (կամ ընծայական թղթի)—մերժուին եկեղեցուց։ 13-կանոնը ասում է՝ եթէ ժառանգաւորներից մէկը, որը արդէն մերժուած է եկեղեցուց, գնայ օտար տեղ և առանց ընծայական թղթի ընդունուի, այն ժամանակ նրա պատիժը շատ ու շատ երկարի, որովհետև Աստուծուն խաբեց և ստեց։ Ընծայաթուղթ տալը սկսուած էր նոյն իսկ առաքեալների ժամանակուանից. Բ—Կորն. Գ. 1.։—

14, (13.) *Թոյլատրելի չէ, որ եպիսկոպոսը թողնի իւր թեմը և ուրիշ թեմ գնայ. եթէ շատ յարգելի պատճառ ստիպի նրան ուրիշ թեմ գնալ, այդ կարող է լինել միայն այն ժամանակ, երբ շատ եպիսկոպոսների համաձայնութեամբ և վճռով լինի։*

Եպիսկոպոսները շատ անգամ զանազան անձնական, շահասիրական նպատակներով թողնում են իրանց թեմը և անցնում ուրիշինը. այս կանոնս պատուիրում է որ իւրաքանչիւր եպիսկոպոս՝ ըստ իւր քմահաճոյքի՝ առանց եպիսկոպոսական ժողովի՝ իրաւունք չունենայ տեղափոխուել ուրիշ տեղ։ Անտիոքի ժողովը որոշեց 16 կ. որ առանց միտրոպոլիտի հաստատութեան առաջնորդ չնշանակուեն։ Տես Նիկ. 15. Սարդ. 1. Անտ. 21։

Մեր մէջ հէնց Լուսաւորչից սկսած առաջնորդ հաստատողը միմիայն ամենայն հայոց կաթողիկոսներն են եղել ընդրութեամբ ժողովրդի. այնպէս որ այս կանոնս մեր մէջ բառացի ճշտութեամբ չի գործադրուել։

15. (14.) *Եթէ երէցը, սարկաւագը կամ ժառանգաւորը առանց եպիսկոպոսի հրամանի կտեղափոխուեն ուրիշ տեղ, կըզրկուեն պաշտաւորելու իրաւունքից. իսկ եթէ կհամառեն, չեն լսիլ եպիսկոպոսի յորդորը, կընդունուեն իբրև աշխարհական։*

16. (14.) *Իսկ եթէ եպիսկոպոսը ոչինչ համարելով այս կանոնը, նորից կընդունի պատժուածին իւր ծառայակիցների շարքում, ինքն էլ իբրև անկարգութեան վարդապետ մերժուի եկեղեցուց։*

*Մեր ձեռագրերում այս երկու կանոնը միացրած է։*

*Երկու կանոնս որոշում են մի կարգ, որը մինչև այսօր սկզբունքով գործադրւում է, այն է որ ծխական քահանան ծուխը թողնել հեռանալ առանց առաջնորդի կամքի չի կարող. պատժուած քահանային և առհասարակ եկեղեցականին ընդունող եպիսկոպոսը այսինքն պատիժը ներող կամ բանի տեղ չդնողը—զրկւում է եկեղեցի մտնելու իրաւունքից։ Այս վերջին պատիժը մեր մէջ միշտ նշանակել է կաթուղիկոսը, ի հարկէ խորհրդակցութեամբ ուրիշ եպիսկոպոսների հետ։*

17. (15.) *Ով մկրտութիւնից յետոյ երկու անգամ պսակով կապուած լինի, կամ հարճ ունենայ, նա չի կարող եպիսկոպոս, երէց, սարկաւագ և քահանայական կարգի անդամ լինել։*

*Մկրտութիւնը անհաւատի կրկնակի ամուսնութիւնը սրբում է. իսկ մկրտութիւնից յետոյ կրկնակի ամուսնացածը չի կարող եկեղեցական լինել։ Նոյնը ասում է Բարսեղ մեծը 20 կ.։ Յուստինիանոսի 137 նովելլան արգելում է երկակներին հոգևորականութեան մէջ մտնել։*

18. (16.) *Ով կամուսնանայ այրու, արձակուած կնոջ, անառակի տարփուհու, կամ անարգուածի հետ, չի կարող ո՛չ եպիսկոպոս, ո՛չ երէց, ո՛չ սարկաւագ և ո՛չ էլ քահանայական կարգի անդամ լինել։*

Այս երկու կանոններս պահանջում են խստիւ ամուսնական մաքրութիւն. առաքեալի տուած պատուէրի համաձայն ոչ միայն հոգևորականները, այլ և նրանց կանայք պիտի լինին մաքուր և վստահելի անձինք, որպէս զի օրինակ լինին ժողովրդին. Ա—Տեմ. Գ.։

Անարգուած համարւում էին այն կանայք, որոնք մասնակցում էին ժողովրդական զբօսարաններում, զուարճութեան տեղերում և որոնց վրայ ժողովուրդը նայում էր իբրև ոչ բարոյական կանանց վրայ։

Մեր ձեռագրերում «անարգուած և սորկուհի» չկան, այլ «աղախին»։—

19. (17.) Ով ամուսնացած է երկու քրոջ կամ քրոջ որդու հետ, չի կարող ժառանգաւոր (եկեղեցական) լինել։

Այս կանոնս ասուած է կռապաշտների համար, որոնք քրիստոնէութիւնից առաջ այդպիսի ամուսնութեան մէջ լինելով, յետոյ էլ շարունակում էին անկանոն կենակցութիւնը։ Թէոփիլէս Աղէքսանդրացու 5-րդ կանոնը այդպիսիներին թոյլ է տալիս կլերի մէջ մտնել, եթէ միայն մկրտուելուց յետոյ այդ կենակցութիւնից կհրաժարուին, որովհետև կռապաշտութեան մեղքը մկրտութեամբ սրբւում է։ Այս կանոնս առաջինն է որ խօսում է չհասների մասին, թոյլ չտալով երեք աստիճանի ամուսնութիւն։ Ա—առ-33 կանոնը ի նկատի է առել այս որոշումը։—

20. (18.) Եթէ ժառանգաւորը մի որև է անձի փոխարէն երաշխաւոր կլինի, կարգալոյծ լինի։

Այս կանոնս գրուած է այն դէպքերի համար, երբ շահասիրական միտումներով երաշխաւոր դարձող հոգևորականը, ստիպուած է լինում այնպիսի դրութեան մէջ ընկնել,

որ բոլորովին արատաւորում է հոգևորականի կոչումը. փող չտալու դէպքում երաշխաւոր հոգևորականը պիտի հատուցանի, տունը գրաւ դնի, կամ քրէական յանցանքի դէպքում, ենթարկուի բանտարկութեան և այլ խիստ պատիժների, որոնք բոլորովին արատաւորում են հոգևորականի կոչումը և վարկը նսեմացնում։ Իսկ եթէ շահասիրական ոչինչ չկայ, երաշխաւոր պիտի լինի աղքատի, որբերի համար, այն դէպքում թոյլատրւում է, նոյնը հաստատում է և Յուստինիանոսի 123 նովելլան։

21. (19,) Եթէ մէկը ներքինի է կամ բնականից, կամ բռնութեամբ ներքինիացած է, կամ հալածանքի ժամանակ պատահած, և արժանաւոր է, կարող է եպիսկոպոս լինել։

22. (20,) Ինքն իրան ներքինի դարձնողը չի կարող կղերական լինել, որովհետև անձնասպան է և Աստուծոյ ստեղծածին թշնամի։

Մեր ձեռագրերում «կղերականի» փոխարէն «քահանայ» է գրած։

23. (21.) Եթէ ժառանգաւորներից մէկը իրան ներքինացնի, լուծուի կարգից, որովհետև անձնասպան է։

24. (22,) Աշխարհականը եթէ ներքինիացնի իրան, 3 տարի եկեղեցուց որոշուի, որովհետև իւր կեանքի թշնամի է։

Ներքինիացման այս 4 կանոնը առաջացել են նրանից, որ II դարում I դարից սկսած, ինչպէս վկայում են ս. Եպիփանը և Օգոստինոսը. առաջացել էր աղանդաւորների մի խումբ, որը առաքինի վարք ունենալու և գայթակղութեան չենթարկելու համար իրանց ներքինիացնում էին։ Մատթէոս աւետարանիչը վկայում է «Եւ են ներքինիք՝ որք զանձինս լուրեանց արարին ներքինիս վասն արքայութեան

երկնից» ԺԹ. գլ. 12.: Եւսեբիոսը (գ: 8) պատմում է, որ Որոգինէս Աղէքսանդրիայում ուսուցիչ էր կարգուած չըմկրտուածների դպրոցում, որտեղ քարոզում էր մեծ ճարտարութեամբ մարդկանց և թէ կանանց: Նրա թշնամիները զանազան լուրեր տարածեցին նրա բարոյական կողմը շօշափելով, ստիպեցին Որոգինէսին ներքինիացնել իրան գրպարտութիւններից ազատելու համար: Երուսաղէմի եպիսկոպոսը վաղուց նրա մասին լսած լինելով, ուշք չդարձրեց նրա ներքինիացման վրայ, քահանայ ձեռնադրեց: Այս ձեռնադրութիւնը մեծ վէճ բարձրացրեց Երուսաղէմի և Աղէքսանդրիայի եպիսկոպոսների մէջ: Այս կանոնների որոշմամբ կընդհատուին այդպիսի վէճերը:—

25. (23.) Եպիսկոպոսը, կամ երէցը, կամ սարկաւագը եթէ պոռնըկութեան մէջ. կամ երդմնազանցութեան, կամ գողութեան մէջ բռնուին, կարգալոյծ լինին. բայց եկեղեցուց չմերժուին, որովհետև սուրբ գիրքըասում է՝ երկու անգամ վրէժ մի հանիր: Նոյնպէս և բոլոր ժառանգաւորները:

26. (24.) Կուսակրօն հոգևորականութեան մէջ մտածներից ամուսնանալ կարող են միմիայն դպրակարգացները և սաղմոսերգուները:

Ի՞նչու այս կանոնը թոյլ չի տալիս միւս հոգևորականներին ամուսնանալ. նախ՝ որ դրակարգացները և սաղմոսերգուները թէև եպիսկոպոսի օրհնութեամբ էին մտնում եկեղեցականների շարքը, բայց նրանք իբրև ստորին սպասաւորներ համարեա աշխարհականի իրաւունքներ էին վայելում և այսօր էլ մեր եկեղեցում ամեն կարդալ և գրել իմացող առանց իրաւունքի էլ կարող է եկեղեցում երգել և կարդալ. բ՝ որպէս զի հոգևոր կոչումն ստացողը՝ եթէ միանգամ մըտել է կուսակրօնութեան մէջ, մինչև վերջը մնայ այդ դըրութեամբ, թէ ժողովդին բարոյական ողջախոհութեան օրինակ լինելու և թէ այն կանոնով, որ կուսակրօնութեան

մէջ մտնելու քայլ անողը պիտի նախօրօք խորհի, փորձուի և եթէ հնարաւոր է գտնում ժուժկալ կեանք վարելու, մտնի այդ կարգը։

27. (25.) Եթէ եպիսկոպոսը, կամ երէցը, կամ սարկաւագը կծեծեն մեղաւոր հաւատացեալին կամ կվիրաւորեն անհաւատին երկիւղ տալու նպատակով, թող կարգալոյծ լինին, որովհետև մեր տէրը հարուած ստացաւ, և ո՛չ ինքը խփեց, չարչարուեց և սպառնալիք չտուաւ։

Այս կանոնը ամենափառաւոր սկզբունքն է սահմանում աւետարանի ոգու համաձայն, որ եկեղեցականը մարմնաւոր վիրաւորանքներ հասցնելու ո՛չ մի իրաւունք չունի։—

28. (26.) Եթէ եպիսկոպոսը, երէցը, կամ սարկաւագը յայտնի յանցանքների համար կարգալոյծ եղած լինին և երկրորդ անգամ յանդգնին նախկին պաշտամունքը կատարել, թող բոլորովին մերժուին եկեղեցուց։

Անտ. 4, 12, 15.

29. (27.) Եթէ եպիսկոպոսը, երէցը կամ սարկաւագը փողի միջոցով՝ կաշառով ստանայ իւր կարգը և աստիճանը, կարգալոյծ լինին թէ իրանք, թէ ձեռնադրողը և մերժուին բոլորովին եկեղեցուց, ինչպէս Սիմօն մոգը Պետրոսից։

Այս հրաշալի կանոնով կարգալոյծ են անւում և բոլորովին զրկւում եկեղեցի մտնելուց և հաղորդուելուց այն եպիսկոպոսներն, որոնք կաշառքով ձեռնադրութիւն են անում, և այն անձինք որոնք կաշառքով ձեռնադրուել են։ Սիմօն մոգը առաքեալների ժամանակ յայտնի մարդ էր, կախարդութեամբ հրաշքներ էր անում և իրան Աստուած անուանում, շատ հետևողներ ունեցաւ, նոյն իսկ Հռոմում։ Այս Սիմօնը առաքեալներից մկրտուեց և ապա խնդրեց՝ նախօրօք իւր ինչքը յանձնելով նրանց, որ իրան սովորեցնեն

թէ ինչպէս ձեռք գնելով Հոգին սուրբ պիտի իջեցնել։ Պետրոս առաքեալը ասաց. քո արծաթը քեզ լինի ի կորուստ «զի զպարգեւն Աստուծոյ համարեցար ընչիւք ստանալ» Գործ. Ը. 9—25։

30. (28.) *Այն եպիսկոպոսը, որ բռնութեամբ՝ աշխարհական իշխանների միջոցով կստանայ եպիսկոպոսական իշխանութիւն եկեղեցու մէջ, թող կարգալոյծ լինի և եկեղեցուց մերժուի իւր բոլոր կողմնակիցներով։*

Այս կանոնը որոշում է Հոգևոր և մարմնաւոր իշխանութիւնների յարաբերութեան հարցը։ Անարժան մարդիկ, յոյս չունենալու ժողովրդի և հոգևոր իշխանութեան ընտրութեան վրայ, դիմում էին մարմնաւոր իշխանութեան և զանազան միջոցներով իրանց կողմը ձգելով նրանց՝ անկանոն կերպով եպիսկոպոսական աթոռ էին ստանում. այս կանոնս կարգալոյծ է անում այդպիսի անձանց։

31. (29.) *Այն երէցը, որը արհամարհելով իւր եպիսկոպոսին և չկարողանալով մեղադրել նրան դատի միջոցով ոչ մի անարդար և անբարիշտ գործի մէջ, նոր ծուխ կկազմի, կարգալոյծ լինի իբրև իշխանութեան յափշտակող։ Նրան յարուած ժառանգաւորները նոյնպէս կարգալոյծ լինին, իսկ աշխարհական կողմնակիցները մերժուին եկեղեցուց. եթէ երեք անգամ եպիսկոպոսից յորդոր կլսեն և չեն ուղղուիլ։*

32. (30.) *Եթէ երէցը, կամ սարկաւագը բանադրւում են իրանց եպիսկոպոսից, նրանից էլ պիտի արձակումն ստանան, ուրիշ եպիսկոպոսից կարձակուին բանադրանքից միայն այն դէպքում, եթէ բանադրող եպիսկոպոսը մեռած լինի։*

Տես այս մասին Ա—րդ. 23. կ.։

33. (31.) *Օտար եպիսկոպոսներից կամ երէցներից կամ սարկաւագներից ոչ մէկին չընդունել առանց ընծայական թղթի. եթէ թղթաբերը բարեպաշտութեան քարոզիչ կերևայ՝ ընդունուի. եթէ ո՛չ, տրուի նրան պէտքական իրերը, և հեռացուի իրանցից, որովհետև շատերը խաբէութիւն և կեղծութիւն են անում։*

Տես և Բ—րդ. 12, 13. կ.։

34. (32.) *Թեմի եպիսկոպոսը պիտի կառավարի իւր վիճակը և վիճակին պատկանելիք տեղերը. իսկ մնացած բաներում ոչինչ չպիտի անի առանց գլխաւոր եպիսկոպոսի, վերջինս էլ պիտի գործի եպիսկոպոսի խորհրդով։ Որովհետև այս ձևով միայն կարելի է համաձայնութիւն պահպանել և փառաբանել Աստծուն։*

Այս կանոնովս որոշւում են թէև մութ կերպով թեմական առաջնորդների և գլխաւոր եպիսկոպոսի իրաւունքները։ Գըլխաւոր եպիսկոպոսները նստում էին գլխաւոր քաղաքներում և մայրաքաղաքներում։ Առաջին գլխաւոր եպիսկոպոսներ համարւում էին Երուսաղէմում ս. Յակոբը, որը կոչւում էր քահանայապետ ըստ հրէից, և մեծ յարգանք էր վայելում բոլոր հրէաներից անխտիր. Փոքր Ասիայի Եփեսոսում Տիմոթէոսը, Կրետէում՝ Տիտոսը, գլխաւոր եպիսկոպոսներ կային և Կորնթոսում, Թեսաղոնիկէում և այլ տեղերում։ Դանիէլ կաթուղիկոսը երբ 1806-ին կոնդակով հրամայեց Սինոդ հաստատել գործակից կաթուղիկոսին, յենուեց առաքելական այս կանոնիս վրայ, ցոյց տալով որ կաթուղիկոսը առանց եպիսկոպոսական խորհրդի բան չպիտի անի։ —

35. (33.) *Եթէ եպիսկոպոսը կհամարձակի իւր թեմից դուրս՝ իրան չստորադրուած գիւղերում և քաղաքներում ձեռնադրութիւններ անել՝ առանց տեղական եպիսկոպոսի թոյլտուութեան, կարգալոյծ լինին ինքը և իրա ձեռնադրուածները։*

36. (34.) *Եթէ եպիսկոպոսը չընդունի իւր պաշտօնը և չհովուի իւր հօտը, թող մերժուի եկեղեցուց՝ մինչև որ կընդունի, նոյնպէս էլ երէցը և սարկաւագը։ Իսկ եթէ ժողովուրդը չընդունի իւր վրայ ձեռնադրուած եպիսկոպոսին, այն ժամանակ վերջինս կմնայ իւր աստիճանում և կմերժուին քաղաքի ժառանգաւորները նրա համար, որ չեն կարողացել խրատել ժողովուրդը։*

Տես Անտ. 17, 18. անկ. 18. Առ.—58 կ.։

Հներում եպիսկոպոսների ընտրութիւնը լինում էր ժողովրդի մասնակցութեամբ, շատ անգամ կուսակցութիւնների բաժանուելով ընտրում էին մի քանի թեկնածուներ մէկի փոխարէն։ Ձեռնադրուածը գալիս էր և ընդունում իւր կուսակիցներից, իսկ հակառակորդներից մերժւում, կամ եպիսկոպոսը տեսնելով այդպիսի խռովութիւններ, ինքն էր հրաժարւում. այս դէպքերը ի նկատի ունենալով է գրուած այս կանոնը։ Այս առթիւ խօսում են և վերոյիշեալ ժողովների կանոնները։

37. (35) Տարուայ մէջ երկու անգամ եպիսկոպոսների ժողով լինի՝ բարեպաշտական խնդիրների վրայ խորհրդակցելու և եկեղեցական պատահած գժտութիւնները վերջացնելու համար. առաջինը յիսնակի չորրորդ շաբթում, երկրորդը՝ աշնան (հոկտ. 12-ին)։

Ժողովներով եկեղեցական խնդիրները որոշելու կարգը սահմանեցին առաքեալները, որոնք Երուսաղէմում ժողովուելով վճռեցին՝ քրիստոնեաներին թոյլ տալ չկատարել Մովսիսական ծէսերը և սովորութիւնները (թլփատութիւնը ևլն) Գործ. ԺԱ.։ Նոյնպէս և սարկաւագների ընտրութիւնը և ձեռնադրութիւնը եղաւ ժողովի միջոցով, ս. Հարք հետևելով առաքեալներին՝ որոշում են տարին երկու անգամ՝ գարնան և աշնան ժողով անել առկախ խնդիրները քննելու։ Այս կանոնը ժամանակի վերաբերմամբ փոփոխութեան ենթարկուեց Նիկ. 5—կանոնով. գ. և է. տիեզերական ժողովներով և Յուստինիանոսի նովելլայով՝ պատուիրուեց միայն մի անգամ անել ժողով հոկտեմբեր ամսին։ Այս կանոնս ճշտութեամբ մեր մէջ չի գործադրուել, գուցէ նրա համար որ մեր կաթուղիկոսները գոնէ մինչև Ս. Սահակ միշտ շրջում էին, տարէն մէկ անգամ Շահապիվանի և մէկ անգամ էլ Ս. Կարապետի ուխտին ներկայ լինում, ուր ժողովուած էին լինում բոլոր իշխանները, եպիսկոպոսները, որտեղ և ընհանուր խորհրդակցութեամբ խնդիրները վճռում էին։

38. (36.) *Եպիսկոպոսը պիտի հոգ տանի եկեղեցու իրերի վրայ և կարգադրի ինչպէս Աստուծուն հաճելի է. բայց չպիտի գողանայ կամ ազգականներին ընծայի. հապա միայն աղքատներին օգնի և այս բանը պատճառ բռնելով ինքն էլ մէջից մի բան չպոկի։*

Եպիսկոպոսին յանձնելով եկեղեցապատկան գոյքը, արգելում է նրան գողանալ, կամ ազգականներին ընծայել, ինչպէս անում էին անհաւատարիմ եպիսկոպոսները, որոնցից մէկն էր Եդեսիայի եպիսկոպոս Իվին, որի դէմ բողոքեցին տիեզերական ժողովին իբրև կողոպտողի և յափշտակողի։ Նոյն բանը արգելում է և Յուստինիանոսի նովելլան։

39. (37.) *Երէցները և սարկաւագները առանց եպիսկոպոսի կամքի ոչինչ չանեն, որովհետև պատասխանատու եպիսկոպոսն է։*

40. (38.) *Պէտք է պարզ յայտնի լինի՝ ո՞րն է եկեղեցու սեպհականութիւնը և ո՞րն է եպիսկոպոսի անձնական գոյքը, որպէսզի նրա մեռնելուց յետոյ, եթէ կին, որդիք, ազգականներ կամ ծառայ կթողնի, նրանք իրաւունք ունենան ստանալու եպիսկոպոսի սեպհականութիւնը և անձեռնմխելի թողնեն եկեղեցապատկան ինչքը. այսպիսով ոչ եկեղեցին կվնասուի և ոչ ազգականները կտուժեն. որով կազատուէր եպիսկոպոսը վատ անուն թողնելուց։*

Մեր ձեռագրերում ոչ միայն այս յօդուածը, այլ շատ շատերը ճիշտ թարգմանելու ոչ մի հնար չկայ առանց օտար բնագրի։

41. (39.) *Հրամայում ենք եպիսկոպոսին իշխանութիւն ունենալ եկեղեցապատկան իրերի վրայ։ Ինչպէս հոգիները, նոյնպէս և ինչքը նրան է յանձնւում. նա պիտի երէցների և սարկաւագների ձեռքով խնամի աղքատներին, կարօտեալներին և իրանց պէտքերը հոգան, որովհետև ըստ առաքելոյն՝ սեղանի ծառայողը սեղանից պիտի ուտի։*

Այս մի քանի կանոններով մի քանի սկզբունք են որոշւում. 1) Եկեղեցու ինչքը եպիսկոպոսի իրաւասանութեան է ենթարկւում. 2) որ եպիսկոպոսը սեպհականութիւն կարող է ունենալ. 3) որ բոլոր ինչքը պիտի ցուցագրուած լինի. 4) որ տնանկ և աղքատ պիտի կերակրուին այդ ինչքերով. 5) որ առանց քահանայի և սարկաւագների ինչքը իրաւունք չունի կարգադրելու. 6) բոլորի պէտքերը հոգացւում են այդ ինչքերով։

42. (40.) Եպիսկոպոսը, երէցը, կամ սարկաւագը եթէ խաղի, արբեցութեան անձնատուր լինին, կամ հեռանան այդ ախտերից կամ կարգալոյծ լինին։

43. (41.) Եթէ կիսասարկաւագները, կամ գրակարդացները, կամ սաղմոսերգուները նոյնը կանեն, կամ դադարեն կամ մերժուին եկեղեցուց, նոյնպէս և աշխարհականները։

44. (42.) Փոխատուներից վաշխ և տոկոս պահանջող եպիսկոպոսը, երէցը, կամ սարկաւագը կամ դադարեն կամ կարգալոյծ լինին։

Տես Ա—առ. 18. կ.։

45. (43.) Եպիսկոպոսը, երէցը կամ սարկաւագը եթէ հերետիկոսների հետ կաղօթեն, թող մերժուին եկեղեցուց, իսկ թէ կհրամայեն նրանց իբրև եկեղեցու սպասաւորների աղօթք անելու, թող կարգալոյծ լինին։

Բ—Կորն. Զ. 15.

46. (44.) Եպիսկոպոսը կամ երէցը, (կամ սարկաւագը) եթէ կընդունեն հերետիկոսների (թերահաւատների) մկրտութիւնը կամ պատարագը, կարգալոյծ լինին. ինչ կապ կայ Քրիստոսի և Բելիարի, կամ հաւատացեալի և անհաւատի մէջ։

Բ. Կորն. Զ. 15.

«Այս հերետիկոսները առաքեալների ժամանակն էին, որոնք վնասում էին Հօր Աստուծոյ, Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ և որդւոց մարդեղութեան գլխաւոր դաւանանքը։

Մնացած հերետիկոսների մասին որոշումներ արել են Նիկ. 19. Լաւո. 7. Բարս. 47։» (Книга правилъ)։

Մեր ձեռագրերում աւելի է «կամ սարկաւագը» և սխալ է, որովհետև մկրտութիւն չեն անում նրանք։ Մերոնց մէջ գրած է «թերահաւատների» և սխալ է, որովհետև այս կանոնը շարունակութիւն է 45-ի, որտեղ խօսում է հերետիկոսների մասին։

47. (79.) Եթէ եպիսկոպոսը կամ երէցը ճշմարիտ մկրտութիւն ունեցողին նորից կմկրտի, կամ անմաքուրներից անարգուածին՝ չի մկրտիլ, թող կարգալոյծ լինին, իբրև Քրիստոսի խաչի և մահուան վրայ ծիծաղող, և քահանային սուտ քահանայից չ'զանազանող։

Մեր ձեռագրերում բոլորովին սխալ է թարգմանուած այս կտորը «կամ անմաքուրներից անարգուածին չի մկրտել». «Или аще отъ нечестивыхъ оскверненнаго пе окрестить». որ նշանակում է սուտ քահանաներից մկրտուածին (անարգուածին), չի մկրտիլ։ Մերոնք այդ նոյն բանը այսպէս են թարգմանել «կամ զպղծեալն ամբարշտութեամբ մկրտեսցէ»։ №740-ում «կամ զպղծեալն յամբարշտութենէ մկրտեսցէ». №746-ում «զպղծեալն յամբարշտութեանց մկրտեսցէ». բոլորովին հակառակ և անմիտ բան է նշանակում. պիտի գրէին «կամ զպղծեալն յամբարշտաց ոչ մկրտեսցէ»։ Թէ յունա—սլաւոնականն ճիշտ է, այդ երևում է և նրանից, որ պատժի արդարացման մէջ ասում է, թէ քահանան սուտ քահանայից չկարողացաւ զանազանել։

Այս մկրտութեան խնդիրը ծագեց III դարում 256 թուին Աֆրիկայի եկեղեցիներում. կրկնկնունքի վէճը դարձաւ կռուապատճառ մասնաւորապէս Կիպրիանոսի և Հռոմի Ստեփան եպիսկոպոսի մէջ։ Վէճը կտրելու համար, այս կանոնս որոշեց, որ ուղղափառ քահանայի մկրտութիւնը ընդունելի է, իսկ սուտ քահանայի մկրտութիւնը անվաւեր է, ուստի պիտի նորից մկրտել։ Այս պնդում էր Կիպրիանոսը

Աֆրիկայի եպիսկոպոսների հետ միասին։ Հռոմի Ստեփան եպիսկոպոսը պնդում էր, որ չպիտի մկրտել ընկղմամբ, այլ միայն ձեռք դնելով սուտ մկրտուածի վրայ։ Թէև Ստեփանը սխալւում էր, բայց այնքան իրան արդար էր համարում, որ մտադրուեց բանադրել Աֆրիկայի եպիսկոպոսներին. մինչև անգամ Կիպրիանոսի ուղարկած մարդկանց չընդունեց։ Այս կանոնը հաստատում է Կիպրիանի որոշումը և ժխտում է Ստեփանի կարգադրութիւնը։ (տես Творенія св. Кипріана спис. Кар. 1861. Кіевъ)։

48. (45.) *Եթէ աշխարհականը իւր կնոջ արձակի և ուրիշին առնի, կամ արձակուածին, թող մերժուի եկեղեցուց։*

*Հրէից մէջ սովորութիւն էր զանազան պատճառներով արձակել կնոջ, արձակելիս տալիս էին վկայաթուղթ, որ կոչւում էր արձակման։ Հեթանոս ազգերի մէջ արձակելու և ամուսնանալու կանոնները շատ վայրի վերոյ էին, նրանք նայում էին կնոջ վրայ իբրև ստրկի, որին կարելի էր ենթարկել ամեն տեսակ վարմունքների։ Կանոնս սահմանում է որ ոչ ոք իրաւունք չունենայ առանց պատճառի, կամ թեթև պատճառով, ըստ բոպէական տրամադրութեան արձակել կնոջ, այդպիսին եկեղեցուց որոշւում է, մինչև որ էլի յետ կ'կանչի կնոջը։ Մանաւանդ որ այդ բաները ի նկատի առած, Յիսուս պատուիրում է առանց պոռնկութեան դէպքի չարձակել. (Մատ. ժ. 32)։*

*Տես—Բարս 21.*

49. (80.) *Եթէ եպիսկոպոսը կամ երէցը չի մկրտիլ Տիրոջ հաստատած կարգով՝ յանուն Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ, այլ յերիս յանսկիզբս, յերիս որդիս, յերիս մխիթարիչս, կարգալոյծ լինի։*

*Մեր ձեռագրերում «անսկիզբն»-ի փոխարէն «Հայր» է, «Մխիթարիչն»-ի փոխարէն «Հոգի»։*

Կային հերետիկոսներ, որոնք մկրտում էին ոչ ուղղափառ եկեղեցու դաւանութեամբ, այլ բոլորովին տարբեր ձևով, երեք հօր, երեք որդու և երեք հոգու անունով։— Տես Պօլ. 1 կ. Սաբբեղեան հերետիկոսներ։

50. (81.) Եպիսկոպոսը կամ երէցը եթէ չի կատարիլ մկրտութիւնը երեք ընկղմումով, այլ միայն մի ընկղմամբ՝ որ Քրիստոսի մահուան օրինակն է, թող կարգալոյծ լինի. որովհետև Տէրն ասել է «մկրտեցէք յանուն Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ» (Մատ. ԻԸ. 19), և ո՛չ «՚ի մահն իմ մկրտեցէք»։

Կային և հերետիկոսներ (Եւնոմիոսականք), որոնք զանազան վերացական դատողութիւններով մերժում էին երեք ընկուղմումը (տես Տիեզերական ժողովի կանոնները)։

Հայոց բոլոր ձեռագրերում շատ երկարացրած է մկրտութիւնը երեք ընկղմումով անելու բացատրութիւնը։ Այս 81-ին յաջորդող 82 կանոնն էլ շարունակում է նոյնը, ցուցնելով թէ հերետիկոսները մի ընկղմումով են մկրտում, որ նրանք ասում են թէ Հայրը չարչարուել է, կամ Որդին Միածին չէ, կամ ս. Հոգին Հայր են անուանում, բոլորին էլ սխալ են համարում և նզովում լինին։ 81-ի շարունակութիւնը և 82-ը կանոն չեն, հապա բացատրութիւն 50-ի կամ (81-ի) առաջի կէսի բովանդակութեան։ Մեր ձեռագրերում սովորութիւն է մտած, գլխատառով սկսած նախադասութիւնը ջոկ կանոն համարել. կամ պատահմամբ եթէ երկու կանոն միմեանց յաջորդելիս մեծ գլխատառով բաժանուած չեն եղել, նրանք մի կանոն համարուեն և արտագրուել։

Ձեռագրերի 81-ի կէսը և 82-ի երկար բացատրութիւնները չկան յունա—սլաւօնականում։—

51. (46.) *Եթէ եպիսկոպոսը, երէցը, կամ սարկաւագը, կամ քահանայական կարգից որ և է մէկը կհրաժարուի ամուսնութիւնից, մսից, գինուց, ոչ թէ ժուժկալութեան պատճառով, այլ պիղծ համարելով և անարգելով ստեղծագործութիւնը, դրանք կամ ուղղուեն կամ կարգալոյծ լինեն և մերժուեն եկեղեցուց։ Նոյնպէս և աշխարհականը։*

*Այս կանոնը ուղղուած է Գնոստիկեան աղանդաւորների դէմ, որոնք մերժում էին ամուսնութիւնը, միս ու֊գինի գործածելը՝ իբրև անմաքուր և պիղծ բան, նրանք անարգանքով էին վերաբերւում դէպի ամուսնութիւնը և քարոզում էին ամուրի կեանք—իբրև կատարելատիպ մաքրութեան և անարատութեան։*

52. (47.) *Եթէ եպիսկոպոսը, երէցը չի ընդունիլ զղջացող մեղաւորին և կմերժի, թող կարգալոյծ լինի։ (Ղուկ. ԺԵ. 7)։*

53. (48.) *Եթէ եպիսկոպոս, երէց, կամ սարկաւագ տօն օրերին չեն ճաշակել միս, գինի՝ ո՛չ ժուժկալութեան, այլ արհամարհելուն պատճառով, թող կարգալոյծ լինին իբրև ուրիշի գայթակղութեան պատճառ դարձող։*

54. (49.) *Եթէ ժառանգաւորներից մէկը գինետնում (կապելում) բռնուի, թող մերժուի եկեղեցուց. ճանապարհ գնալիս միմիայն կարող են հանգստանալ պանդոկում (հիւրանոցում)։*

55. (50.) *Եթէ ժառանգաւորը թշնամանի եպիսկոպոսին, կարգալոյծ լինի. «Զիշխանս ժողովրդեան քո ոչ հայհոյեսցես» (Գործ. ԻԳ. 5)։*

56. (51.) *Ժառանգաւորը եթէ թշնամանի երէցին կամ սարկաւագին, մերժուի՛ եկեղեցուց։*

57. (52.) *Եթէ ժառանգաւորը կծիծաղի կաղի, կոյրի, խուլի, դէմքը վնասուածի (ոտը վնասուածի) վրայ. մերժուի եկեղեցուց. Նոյնպէս և աշխարհականը։*

58. (53.) *Եպիսկոպոսը, կամ երէցը եթէ անփոյթ է դէպի եկեղեցու դասը և ժողովուրդը, բարեպաշտութիւն չի սովորեցնում, մերժուի՛. իսկ եթէ ծուլութեան և անփութութեան մէջ կմնայ, կարգալոյծ լինի,*

59. (54.) Եթէ եպիսկոպոսը, երէցը կամ ժառանգաւորներից մէկը կարօտեալի պէտքը չի հոգալ, մերժուի եկեղեցուց. եթէ մշտապէս կյամառի այդ բանում, կարգալոյծ լինի իբրև եղբօր սպանող։

60. (55.) Եթէ մէկը սուրբ գրքի փոխարէն ստութեամբ ամբարիշտների գիրքը կբերի եկեղեցի, ժողովրդին և հոգևորականութեան վնասելու, թող կարգալոյծ լինի։

Նախկին դարերում զանազան աղանդաւորներ չէին ընդունում աւետարանը, առաքելոց թղթերը. նրանք ունէին առանձին աւետարան, որ կոչւում էր «Աւետարան երկոտասան առաքելոց», և այլ կեղծ թղթեր, որոնք ընդունուած էին նրանց կողմից իբրև վաւերական գրուածքներ։ Ահա այս գրուածքները բերում էին եկեղեցի և խսկականի փոխարէն կարդում բացատրում։ Կանոնս խստութեամբ արգելում է այդ։

61. (56.) Եթէ հաւատացեալը կմեղադրուի շնութեան կամ պոռնըկութեան կամ մի որևէ յանցանքի մէջ և կհաստատուի, հոգևորականութեան մէջ չի կարող ընդունուիլ։

Մեր ձեռագրերում թէ այս և թէ նախընթացները շատ կցկտուր և անճիշտ են գրուած, որ առաջացել է արտագրիչների աղաւաղումներից։

62. (57.) Եթէ ժառանգաւորը վախենալով հրէայից, յոյնից կամ հերետիկոսից, կհրաժարուի Յիսուսի անունից, թող մերժուի եկեղեցուց։ Իսկ եթէ կհրաժարուի եկեղեցու սպասաւորի կոչումից, թող մերժուի սպասաւորների դասից. եթէ ապաշխարի և զղջայ, կընդունուի իբրև աշխարհական։

Մեր ձեռագրերում շատ անիմաստ է գրուած, մինչև անգամ Հակառակ մտքով. օր. «Եթէ զանուն Յիսուսի ունի

լուծցի և որոշեսցի. իսկ եթէ գանուն ժառանգաւորի լուծ-ցի»—բոլորովին անմիտ բան է։

63. (58.) Եթէ եպիսկոպոսը, երէցը, սարկաւագը, կամ քահանայական կարգից մէկը կուտի արինոտ, գազանաբեկ, կամ մեռոտի միս, թող կարգալոյծ լինի։ Որովհետև օրէնքն է մյդ արգելել (Գործ. ժե. 29)։ Եթէ աշխարհական կանի, թող մերժուի եկեղեցուց։

Այս արգելական կարգադրութիւնը սահմանուած է հեթանոսների սովորութեան դէմ, որ նախատեսուել է հին-ուխտի մէջ (Ծննդոց. Թ. 13. Ղև-ժէ. 11)—նոյնը հաստատեց առաքելական ժողովը որ և կրկնուում է այստեղ։

64. (59.) Եթէ ժառանգաւորը շաբաթ և կիւրակի օրերը պաս կպահի (բացի աւագ շաբաթ օրուանից), կարգալոյծ լինի. եթէ աշխարհական է՝ մերժուի։

Շաբաթ և կիւրակի օրերը ծոմ պահելը լինում էր մինչև պատարագը, յետոյ թոյլատրւում էր պասը լուծել գինով, ձէթով և կերակրով, և չմնալ անօթի մինչև երեկոյ։ (книга правилъ)։

65. (60.) Եթէ ժառանգաւորը կամ աշխարհականը մտնի հրէից կամ կռապաշտական աղօթատունը, թող կարգալոյծ լինի և մերժուի։

Այս կանոնը չի հակասում այն վարմունքին, որին հետևում էին առաքեալները ամեն օր ժամի 9-ին գնալով սինագօգա աղօթելու և քարոզելու։ Առաքեալները մտնում էին քարոզելու և քրիստոնեայ դարձնելու հրէաներին, իսկ այստեղ կանոնադիրը երկիւղ է կրում թերուս քրիստոնեա-

*րից, որոնք ճարպիկ քարոզիչների ձեռքը ընկնելով կարող էին մոլորուել, եթէ նրանց աղօթատները յաճախէին։*

66. (61.) *Եթէ ժառանգաւորը կուում մէկին խփի և մէկ հարուածով սպանի, կարգալոյծ լինի. իսկ աշխարհականը մերժուի։*
(Տես, Բարս. 55. Գր. Նիւս. 5.)

67. (62.) *Ով չնշանուած աղջկան կռնաբարի, մերժուի եկեղեցուց. ուրիշի հետ պսակուել չի կարող նա, այլ միայն այս աղջկայ հետ, թէկուզ աղքատ տնից լինի սա։*

68. (63.) *Եթէ եպիսկոպոսը, երէցը կամ սարկաւագը երկրորդ անգամ ձեռնադրուեն, թող կարգալոյծ լինին թէ ձեռնադրողը և թէ ձեռնադրուողը. իսկ եթէ կապացուցեն, որ ձեռնադրութիւնը թերահաւատից են ստացել, որոնց ձեռնադրութիւնը և մկրտութիւնը անընդունելի են համարուում հաւատացեալների կողմից, այն ժամանակ կազատուեն պատժից։*

69. (64.) *Եթէ եպիսկոպոսը, երէցը, սարկաւագը, կիսասարկաւագը, ընթերցողը, երգողը, քառասնորդական պասը, չորեքշաբթին և ուրբաթը չեն պահիլ, բացի մարմնական անկարողութեան դէպքից, կարգալոյծ լինին. եթէ աշխարհական է՝ մերժուի եկեղեցուց։*
Պասի մասին տես Ա—առ. 8 կ. և 2, 3 կ.։

70, (65.) *Եթէ եպիսկոպոսը, երէցը, կամ ժառանգաւորներից մէկը պաս կպահի հրէաների հետ, նրանց հետ կտօնի, կամ նրանց տօնի ընծաներ կստանայ, օր. բաղարջ, կամ նման ինչ, թող կարգալոյծ լինի. իսկ աշխարհականը մերժուի եկեղեցուց։*

71. (66.) *Եթէ քրիստոնեան ձէթ կտանի կռապաշտական մեհեանը կամ հրէից սինագօգան տօնի օրերին և կվառի, մերժուի եկեղեցուց։*

72. (67.) *Եթէ ժառանգաւորը կամ աշխարհականը սուրբ եկեղեցուց մոմ կամ ձէթ գողանայ, մերժուի եկեղեցուց և 5 անգամ աւելի վճարի վերցրածից։*

73, (67.) *Օրհնած ոսկէ կամ արծաթէ անօթը, կամ վարագոյրը ոչ ոք գործ չածի իւր հարկաւորութեան համար. օրինազանցութիւն է այդ. ով կռնուի, թող մերժուի եկեղեցուց։*
Մեր ձեռագրերում 72 և 73 կանոնները միացրած է։

74. (68.) Եթէ եպիսկոպոսը արժանահաւատ մարդիկներից մեղադրուի, պիտի կանչուի եպիսկոպոսներից քննութեան. եթէ կգայ և կխոստովանի յանցանքը, կյանդիմանուի և պատիժ կնշանակուի նրան։ Եթէ առաջի կանչելուն չգնայ, երկրորդ անգամ երկու եպիսկոպոսի ձեռքով կկանչուի, եթէ այս անգամ չգնայ, երրորդ անգամ կկանչուի էլի երկու եպիսկոպոսի ձեռքով. երրորդ հրաւէրով չգնալուց յետոյ, եպիսկոպոսական ժողովը իւր բարեհայեցողութեամբ վճիռ կկարդայ նրան, ոլպէս զի չկարծի թէ դատից փախչելով իրան օգուտ կարող է բերել։

Այս կանոնիս վերջին կտորը մեր տգէտ ձեռագրողները կտրել են և տարել կցել են յաջորդ (69) յօդուածի սկզբին մեծ տառով և մի անմիտ բան են առաջացրել. երևում է մեծ տառով սկսուած են տեսել, կարծել են նոր կանոն է։ Միմիայն № 740 ձեռագրում ճիշտ է արտագրած։

75. (69.) Եպիսկոպոսի դէմ՝ հերետիկոսին վկայ չընդունել, իսկ հաւատացեալ վկայ ընդունել թուով ոչ մէկ հոգի, այլ երկու կամ երեք։ (Մատ. ԺԸ. 16. Տիմ. Ե. 19)։

76. (70.) Եպիսկոպոսը չպէտք է՝ եղբօրը, կամ որդուն, կամ ուրիշ ազգականին 'ի հաճոյս նրանց եպիսկոպոս ձառնադրի, որին և կամենայ, որովհետև եպիսկոպոսութիւնը և Աստուծոյ եկեղեցին ժառանգաբար յանձնել մէկին իրաւացի չէ։ Ով այդպէս կանի, ձեռնադրութիւնը կլինի անվաւեր, ինքըն էլ կմերժուի եկեղեցուց։

Այս կանոնս ի նկատի ունի այն որկրամոլ և շահասէր անձանց, որոնք եկեղեցու սեպհականութիւնը իրանցը համարելով և այդ ստացուածքը տոհմային ժառանգութիւն անելու դիտմամբ ձեռնադրում էին մօտիկ ազգականներին իրանց փոխանորդ։ Բայց եթէ մօտիկ ազգականների ձեռնադրութիւնը անւում է ի փառս և ի պայծառութիւն եկեղեցւոյ, այն ժամանակ եկեղեցին ոչ մի արգելք չի դնիլ այպիսիների համար. օր. Իպպոնիայի եպիսկոպոս Վալերին

*իւր կենդանութեան ժամանակ յաջորդ կարգեց երանելի Օգոստինոսին։ Մեր լուսաւորիչը իւր որդոց ձեռնադրեց իրան յաջորդ, Ներսէս Շնորհալին եղբօր տեղը ժառանգեց։*

77. (71.) *Աչքով խեղը, անդամներով վնասուածը եթէ արժանի է եպիսկոպոսութեան, թող լինի, որովհետև մարմնական արատը նրան չի պղծում, այլ հոգեկանը,*

78. (72.) *Խուլը և կոյրը եպիսկոպոս չեն կարող լինել, ոչ արատաւորութեան, այլ եկեղեցական պաշտամունքը կատարել չկարողանալուն համար։*

79. (73.) *Այսահարը հոգևորական լինել չի կարող, եթէ առողջանայ իբրև հաւատացեալ ընդունուի (եկեղեցում), եթէ արժանաւոր համարուի, թող լինի եկեղեցական։*

80. (74.) *Կռապաշտութիւնից նոր դարձածին և մկրտուածին, կամ յանցաւոր կեանքը թողածին՝ արդարացի չէ իսկոյն եպիսկոպոս ձեռնադրել։ Որովհետև անարդարացի է անփորձ մարդուն ուսուցիչ լինել, գուցէ թէ միայն աստուածային շնորհքով հնարաւոր լինի այդ։*

**Կանոնս ի նկատի ունի առաքեալի պատուէրը Տիմոթէոսին գրած (Ա-Տիմ. Գ. 6). բացառութիւն թոյլատրւում է՝ երբ ընտրելին Աստուածային շնորհքով լի անձն է ներկայացնում. օր. Մեդիօլանի եպիսկոպոս ընտրուեց ս. Ամբրոսիոսը՝ մինչև իսկ չմկրտուած ժամանակից։**

81. (75.) *Ասացինք որ վայել չէ եպիսկոպոսին կամ քահանային ժողովրդական կառավարութեան գործերում խառնուել, այլ եկեղեցական կարգերը ժրաջանութեամբ կատարել։ Կամ պիտի դադարեն, կամ կարգալոյծ լինին, որովհետև երկուց տէրանց ծառայել չի կարելի։ Մատ. Զ. 24.։*

*Տես Բ—Առ, 6. կ.*

**6 կանոնի ծանօթութեան մէջ նկատումներ արինք հոգևորականների տնտեսական զբաղմունքների վերաբերմամբ.**

այս կանոնս շեշտում է ժողովրդական կառավարչական գործերում չխառնուելու համար. այս իմաստով մեր ազգային կանոններում էլ ունինք պատուէրներ, որոնք իւր տեղում կտեսնենք. կանոնս պահանջում է որ հոգևորականը՝ քահանայ լինելու հետ միասին հարկահան, գիւղապետ, դատաւոր, զինուորական, և այլ պաշտօնակատարութիւններ չանի և մոռացութեան տայ հոգևոր պարտքերը։

Եկեղեցին հրճուանքով է խրախուսում այն հոգևորականներին, որոնք ազգի փրկութեան համար անխոնջ են հանդիսացել հէնց իսկ պատերազմի դաշտում. Ներսէս մեծ, Ներսէս Ե. Տէր-Աւետիք, Գրիգոր եպիսկոպոս և այլն և այլն։—

82. (76.) Չենք թոյլադրում ստրուկներին՝ առանց իրանց տէրերի համաձայնութեան հոգևորական լինել, որ չլինի թէ գըժտութիւններ ծագեն դրանից։ Եթէ ստրուկը արժանի կըլինի հոգևոր աստիճանին, ինչպէս մեր Ոնէսիմոսն էր, և եթէ տէրերը կհամաձայնին և կազատեն ստրկութիւնից, թող լինին հոգևորական։

Այս կանոնս գրուած է այն ժամանակուայ համար, երբ ստրկութիւնը շատ տարածուած էր, երբ ստրուկների արձակումն, կեանքը և մահը կախուած էր տիրոջ կամքից. շատ ստրուկներ՝ ազատուելը ի նկատի ունենալով հոգևորականութեան մէջ մտնելով, ծածուկ փախչում էին և զանազան միջոցներով հոգևորական դառնում և ահագին աղմուկի պատճառ դառնում տէրերի կողմից։ Այդպիսի բան պատահեց Պօղոս առաքեալի հետ, որը Փիլիմոնին գրած թղթով խնդրում է ներել իրանից փախած ստրուկ Ոնէսիմոսին և ընդունել ոչ իբրև ստրուկ, այլ համահաւասար եղբայր և սիրելի, որովհետև թէև ստրուկ, բայց շատ մեծ արժանաւորութիւն ունեցող անձն է. Ա-Փիլիմոն։

83. (77.) Եպիսկոպոսը, երէցը կամ սարկաւագը եթէ զինուորութեամբ պարապելով կամենայ հռոմայական իշխանաւորու-

թեան և միևնոյն ժամանակ քահանայութեան մէջ մնալ, թող կարգալոյծ լինի. որովհետև «տուք զկայսերն կայսեր և զԱստուծոյն Աստուծոյ» Մատ. ԻԹ. 90։

84. (78) Եթէ մէկը կնախատի թագաւորին կամ իշխանին ոչ ճըշմարիտ պատճառով, պատժուի։ Հոգևորականը կարգալոյծ լինի, աշխարհականը մերժուի եկեղեցուց։

(Հռոմ. ԺԳ. 1. Ա—Պետ. Բ. 17. Ա—Տիմ. Բ. 1)։

85.—(85.) Ձեզ բոլորիդ՝ եկեղեցականներիդ և աշխարհականներիդ համար պարտաւորական լինին հետևեալ գրքերը հին և նոր կտակարանից. Մովսէսի հնգամատեանը՝ Ծննդոց, Ելից, Ղևտացւոց, Թուոց, Երկրորդ օրինաց, Յեսու Նաւեայ 1 գիրք. Դատաւորաց 1. Հռութ 1. Թագաւորաց 4. Մնացորդաց 2. Եզրի 2. Եսթեր 1. Մակաբայեցւոց 3. Յովբ 1. Սաղմոս 1. Սողոմոնի 3-առակներ, Իմաստութիւն, Երգ երգոց, Մարգարէք 12։ Մանուկներին խրատելու համար կարգացէք «Սիրաք»։ Նոր-ուխտից 4 աւետարան, Մատթէոս, Մարկոս, Ղուկաս, Յովհաննէս. Թղթերից—Պօղոսի 12, Պետրոսի 2, Յովհաննէսի 3, Յակոբի 1, Յուդայի 1, Կղեմայ 2։ Եւ իմ Կղեմի ձեռքով ձեզ եպիսկոպոսներիդ տուած 8 գրքի մէջի հրահանգները և մեր առաքելական գործքերը (որոնք բոլորի համար հրատարակել հարկաւոր չէ, որովհետև գաղտնախորհուրդ է)։

**Մեր Համարեա բոլոր ձեռագրերում չկայ այս 85-րդ կանոնը գրքերի մասին, միմիայն №740-ում կայ այս կանոնը, այն բացառութեամբ որ № 740-ում չկայ Եսթեր, Մակաբայեցիք, Նոր-ուխտից—ոչինչ չկայ, ոչ էլ վերջի Կղեմայ յիշատակածը։**

**№740-ում եղածը կրկնուած է «Հարանց Հետևողաց» կանոնների 27-ում։—Բայց թէ ինչու մեր ձեռագրերից միմիայն 740-ում կայ այս 85-րդ կանոնը, միւսներում չկայ, պատճառը ճշտութեամբ որոշել չի կարելի, միայն նկատելի է որ գոնէ առաքելական կանոնների համեմատութեան մէջ №740 ձեռագիրը ամենաճիշտն է մնացած բոլոր ձեռագրերի մէջ, և շատ Համապատասխան է յունա—սլաւոնականին։ Ինձ թւում է որ մեր ձեռագրերից դուրս է ձգուած այս կանոնը նրա Համար, որ յիշուած գրքերից մի քանիսը դեռ**

կասկածելի էին համարում 4—5-դարերում։ Օր. Յովհան Ոսկեբերանի, Գրիգոր Աստուածաբանի, Եպիփանի, Աթանասի, Ամփիլոքի, Յովհան Դամասկացու կանոններում չկայ Մակաբայեցւոց գիրքը։ Եւսեբիոսի ժամանակ (+340) «Յովհաննու յայտնութիւնը վէճի մէջ էր, ոմանք ընդունում էին, ոմանք ոչ»։ Ամփիլոքի թղթում կարդում ենք—«ոմանք ասում են որ 7 թուղթ պիտի ընդունել, ոմանք միայն երեքը, Յակոբի 1, Պետրոսի 1 և Յովհաննէսի 1։ Ոմանք էլ ընդունում են 3 Յովհաննէսի, 2 Պետրոսի և Յուդայի 1։ Յայտնութիւնը ոմանք ընդունում են, ոմանք անվաւեր են համարում»։ Արդեօ՞ք այս կասկածներն չէին պատճառ, որ մերոնք չեն զետեղել այս կանոնս։

Մեր ձեռագրերում ուշի ուշով կարդացողը տեսած պիտի լինի, որ երեք կանոն միացրած է նախորդ կանոնի հետ և փոխանակ ստանալու յունա— սլաւոնականի 85 հատ կանոնը, ունենում ենք 3 կանոն պակաս այդ երեք հատ երկերկու կանոնների միացման պատճառով. պակաս է նաև 85-դը, ուրեմն ընդամենը պակաս է 4 կանոն մեր ձեռագրերի մէջ. մենք պիտի ունենայինք 81 կանոն, բայց ունենք առաքելական կանոններ 85 հատ։ Մերոնք բերել են և 4 կանոն միացրել եղածների հետ և դարձրել 85։ 82-դը է շարունակութիւն և բացադրութիւն 81-ի Հօր Աստուծոյ, Որդւոյ և Սուրբ Հոգւոյ վարդապետութեան վրայ, որ ամենևին կանոն չէ կարելի համարել, հապա երկար բացադրութիւն։ 83-դը խօսում է եպիսկոպոսների մասին, որ իրաւունք չունին ուրիշ թեմի եպիսկոպոսի իշխանութիւն խըլել, որ բոլորովին համապատասխան է 35 կանոնին, ուրեմն նոր բան չի ասում, այլ կրկնում է 35-ի բովանդակութիւնը։ 84-դը ասում է որ եպիսկոպոսը իբրև գլուխ և հրամանատար պիտի հսկի գիւղի և ագարակի երէցների վրայ. այս էլ կրկնում է այն՝ ինչ որ մի քանի կանոններով պատուիրւում է։ 85-դը կանոն չէ, հապա «փառք յաւիտեանս»-ով վերջացող մի խրատ է։ 82, 83, 84, 85 յետոյ աւելացրած են, այդ երևում է նրանից, որ նոր բան չեն ասում, երկրորդ՝ որ

չկան յունա—սլաւոնականում, և երրորդ չկան № 740-ում։ Իսկ №740-ը դրանց փոխարէն—81-րդում դնում է այն վերջաւորութիւնը, որը կայ միւս ձեռագրերի 85-ում։ Այդտեղ վերջացնելուց յետոյ և մի ինչ որ վարդապետի յիշատակարանից յետոյ՝ զետեղում է 6 ուրիշ աւելի կանոններ, որոնք նոր բաներ չեն, կրկնութիւններ են. սրանց համար ուրիշ թանաքով այնտեղ գրած է «Այս Զ գլուխս ոչ կա յայլ յաւրինակ», այս վեց գլուխներից 85-ում գրուած է հին և նոր կտակարանների գրքերը։ Պէտք է այս ի նկատի ունենալ, որ բացի յունա—սլաւոնական պաշտօնական վաւերական ընդունուած առաքելական կանոնների ձեռագրից, կան և զանազան յունական ուրիշ ձեռագրեր, որտեղ նոյն կանոնները զետեղուած են լինում այլ և այլ քանակութեամբ, 76, 81, 84, կամ 85. լատինականում 50 հատ են. արաբական ժողովածուներում 82, ասորականում 81, եթովբականում 30 և՛ն և՛ն։ Հինգ-վեցեան Տրուլլի 692-ի ժողովում այս կանոնները ընդունուեց, բացի Կղեմի վերջին յիշատակարանից 8 գրքի մասին գրած։

Հին և նոր կտակարանների գրքերի մասին տես. Աթանասի, Ամփիլօքի կանոնները։

Այստեղ վերջանում է Առաքելական անուամբ եղած կանոնների և թէ կարգադրութիւնների վրայ ասելիքը։ Ա-Առաքելական կանոններ թուով 34, Բ-Առաքելական կանոններ թուով 85, ընդամենը 119 առաքելական կանոններ ունինք, որոնց համառօտութեամբ յիշելիս պիտի նշանակենք Ա-Առ. և Բ-Առ.։

Սրանից յետոյ կզետեղենք այս երկու կանոնների գրաբառ բնագիրը, արտագրած նոյնութեամբ ձեռագրներից, որով դիւրութիւն տուած կլինենք համեմատողներին աւելի մօտից ծանօթանալու խնդրի հետ։

---

# ԱՌԱՔԵԼԱԿԱՆ ԿԱՆՈՆՆԵՐԻ

## ԳՐԱԲԱՌ ԲՆԱԳԻՐԸ.

### 1) Ա-ԱՌԱՔԵԼԱԿԱՆ ԿԱՆՈՆՆԵՐ.

**Կանոնք եւ սահմանք զոր եդին աշակերտքն Քրիստոսի ի սուրբ եկեղեցիս յետ վերանալոյն տեառն ժողովեալք ի վերնատունն:**

**Ա.** *Կարգեցին առաքեալքն և եդին հաստատութեամբ, եթէ յաղաւթս յորժամ գան և երկիր պագանեն աստուածութեանն ընդ արևելս կայցեն ըստ այնմ որ ասաց փրկիչն. թէ որպէս փայլակն զի փայլատակեալ յարևելից և երևի մինչև արևմուտս. Նոյնպէս եղիցի գալուստ որդւոյ մարդոյ զի արեգակն արդարութեան Քրիստոս որդի աստուծոյ. յարևելից ծագեսցէ. և արասցէ փրկութիւն ի մէջ երկրի. և այսու գիտասցուք եթէ յարևելս կոյս արժան է յաղօթս կալ. և երկիր պագանել արքային անմահի յաւիտենից:*

**Բ.** *Կարգեցին առաքեալքն և եդին հաստատութեամբ. եթէ յաւուր միաշաբաթոջ յամենայն կիւրակէի եղիցի տօն և պաշտօն և խորհուրդ տէրունական մարմնոյ և արեանն Տեառն. զոր պատուիրեաց մեզ կենարարն. և հաց պատարագին ի նմին աւուր ջերմ եփեալ ելցէ ի սուրբ սեղան Տեառն, և արժանաւորք հաղորդեսցին. մի արհամարհանօք, այլ մեծաւ երկիւղիւ և դատարկացեալ և փափկացեալ եղիցի միաշաբաթին որպէս պատուիրեաց աստուած Նոյի, Աբրահամու, և Մովսէսի. զի և մեզ հանգիստ լիցի յերկրա-*

ւոր աշխատութենէս. և ևւթն երրորդում դարուն ի գալստեան Տեառն յարքայութիւն յաւիտենից և յամենայն միաշաբաթոջ ընթերցին գիրք սրբութիւնք մարգարէականք և առաքելականք. և աւարտումն. և գլուխ ամենեցուն կարգասցի աւետարանն և մատուսցի պատարագ. վասն զի յաւուր միաշաբաթոջ եղև լինելութիւն արարածոց. և յաւուր միաշաբաթոջ ծագեցաւ աշխարհի. և յաւուր միաշաբաթոջ ի պենտակոստէից երևի ի վախճան աշխարհիս հայրական փառօք երկնաւորական հրեշտակաւք:

**Գ.** Կարգեցին առաքեալքն և եդին հաստատութեամբ. թէ օր չորեքշաբաթու պահս եղիցի զի ի նմա գուշակեաց և յայտնեաց Տէրն կենարար զխորհուրդ չարչարանաց իւրոց և մատնութեան և դատաստանի, և խաչելութեան և մահուան. և յարութեան աշակերտացն իւրոց. և տրտմեցին առաքեալքն, արդ եղիցի ի պահս և ի սուգ, և ի պաշտաւն և յաղաւթս ցնծութեան և ուրախութեան:

**Դ.** Կարգեցին առաքեալքն և եդին հաստատութեամբ. եթէ ուրբաթ եղիցի պահս ի սուգ և ի տրտմութիւն. վասն զի զոր ինչ ասացաւ յաւուր չորեքշաբաթոջ. վասն չարչարանաց Փրկչին մերոյ յուրբաթուն կատարեցաւ. յորժամ շարժեցաւ արարածք ամեն, և խաւարեցան լուսաւորք ի յերկինըս պահեալ լիցի մինչև յինն երրորդ ժամն:

**Ե.** Կարգեցին առաքեալքն և եդին հաստատութեամբ. թէ օր շաբաթուն եղիցի տօն և պաշտօն ընդ ամենայն տիեզերս և եղիցի յիշատակ ամենայն մարտիրոսաց պատարագ մատուսցին ի նմա քահանայքն և ուրախութեամբ սաղմոսեսցեն. վասն զի կարապետն մեծի արքային գալստեանն պարտ է ամենայն սրբոցն ուրախ լինել ընդ առաջ:

**Զ.** Կարգեցին առաքեալքն և եդին հաստատութեամբ. եթէ եղիցին երիցունք և սարկաւագունք որպէս Մովսէս և Ահարոն. և ապա մատիցեն ի պաշտօն սրբութեան, ի պատարագն և ի խորհուրդ տէրունական. և զկէս սարկաւագացըն 'ի սպասաւորութիւն եկեղեցւոյ, և ի տեսչութիւն այրեաց և վշտացելոց. որպէս Ղևտացիքն որ կրէին զսպաս-

ւորութիւն և զինուորական ձևով չիշխէր ոք մերձենալ նոյնպէս եղիցին յեկեղեցւոջ և մի ոք վայրապար ի բեմն սրբրութեան և ի սպաս աւրինացն մերձեսցի և սարկաւագունք սպասաւորք. երիցանցն. կարգասցին և ընտրեալքն երիցունք. կաթուղիկոսն դէտ և գլուխ՝ և օրէսգիր լիցին ժողովրդեանն զի ըստ բերանոց վճարեսցի ամենայն ինչ որպէս Մովսէսին և Ահարոնին էր։

**Է.** Կարգեցին առաքեալքն և եդին հաստայութեամբ. թէ եղիցի տօն ծննդեան և յայտնութնան Տեառն և Փրկչին մերոյ որ է գլուխ և սկիզբն տօնից եկեղեցոյ որ օր. Զ. յունվարի ամսոյ ըստ յունարէն թուոյ. և մեծապէս խմբեսցեն զտօնն զայն ցնծութեամբ և ուրախութեամբ, սաղմոսիւք և օրհնութեամբ և երգովք հոգևորականաւք. և ընթերցցին գիրք և մարգարէականք և առաքելականք։

**Ը.** Կարգեցին առաքեալքն և եդին հաստատութդամբ. եթէ զ. Խ. օր պահս կարգասցեն յամենայն զօրութեամբ ի մեղաց և ի կերակրոց յառաջ քան զօրն չարչարանաց փրկչին մերոյ. և ապա յարգեսցեն զկիշատակ չարչարանաց պասէք Տեառն և տօն յարութեան փրկչին. ընթերցցեն գիրք մարգարէականք և առաքելականք, որ պատմեցին զչարչարանացըն Տեառն և գուշակումն յարութեան փրկչին, քան զի և ինքն իսկ տէրն մեր Քրիստոս որպէս տօնից և տարեկանաց պահեաց զ. Խ. տիւ և զ. Խ. գիշեր՝ նոյնպէս և Մովսէս ի Սինեական լերինն ի ձեռն պահոցն իբրև սրտալի բարեկամ խօսէր ընդ Աստուծոյ, և մեծապէս պատիւ գտեալ յերկնաւոր արքայէն, ահեղ երեսօք արքունական օրէնս և կանոնս բերելով իջանէր առ ժողովուրդն. Նոյնպէս և Նախանձաւորն Հեղիաս 'ի ձեռն քառասնօրեայ պահոցն մեծամեծ նշանս և զօրութիւնս գործելով, ապա կառավարեալ ասպատակեր յերկինս և երեք մանկունքն ի ձեռն սրբութեան պահեսցեն ի մահուանէ թագաւորին ապրեցին, զի հրեշտակ աստուծոյ էջ առ նոսա, զբոցն բորբոքեալ շիջուցին զթագաւորն ի գիտութիւն ճշմարտութեան ածին, և ինքեանք բարի անուամբ կեցեալ արժանի եղեալ արքայութեան Քրիստոսի։

**Թ.** Կարգեցին առաքեալքն և եղին հաստատութեամբ
թէ կատարումն ամենայն գրոց ընթերցցի աւետարան իբրև
զկնիք պատուական ամենայն գրոց. ցանկանալով ամենայն
ժողովուրդն լուիցէ նմա, զի փրկութեան են ամենայն մարդ-
կան բանիւ կենարար։

**Ժ.** Կարգեցին առաքեալքն և եղին հաստատութեամբ.
եթէ զկնի պասեքին, կատարեսցին. Ծ. աւր յետ յարութեան
նորա. և արասցեն տօն յիշատակի վերացման նորա առ
հայր յերկինս փառաւորեալ։

**ԺԱ.** Կարգեցին առաքեալքն և եղին հաստատութեամբ
եթէ ի զատկէն մինչև ի քառասներորդ օր վերացման նո-
րա ուրախութիւն և ցնծութիւն եղիցի զի աւուրք յարու-
թեան են և փեսայն յառագաստի ապա յետ տաւնի վերաց-
մանն պահեսցին, և դարձեալ յիսներորդն տօնս կատարես-
ցին իբրև զառաջին զատկին զաւն զենցի։

**ԺԲ.** Կարգեցին առաքեալքն և եղին հաստատութեամբ
եթէ եկամուտ ոք կամ բնակաւոր որ ոչ գիտէ զհաւատս
ճշմարիտ եկեղեցւոյ սրբոյ և զկարգս և զօրէնս որ կարգեալ
է ի նմա մի լիցի առաջնորդ՝ և հրամանատար յեկեղեցւոջ,
և մի ոք կարդասցէ զայնպիսիսն, զպոռնկեալսն, զշնացեալ-
սըն, և զայլագործսն, յերեցութիւն կամ ի սարկաւագու-
թիւն, և կամ յայլ ինչ սպասաւորութիւն եկեղեցւոյ մի
մերձեցուսցեն, զի մի կարգեալքն ընդ նոքօք թիւրեսցին,
զի եթէ ստուերք հանդերձելոցն Մովսիսի զանարատն ընտ-
րէր ի սպասաւորութիւն խորանին, որչափ ևս առաւել որ
նորոյ ուխտիս է միջնորդ։

**ԺԳ.** Կարգեցին առաքեալքն և եղին հաստատութեամբ
եթէ խօսեցաւ Աստուած ընդ Աբրահամու, և ասէ թլպա-
տեսցի ութօրեա մանուկ ձեր. և այն եղիցի նշանակ ուխ-
տին յաւիտենական ընդ իս և ընդ ձեզ, լինէր նոյն ուխտ և
ընդ Մովսիսի հրաման առեալ արարչէն մշտական զպայիւ-
սրսկեալ ջուր զժողովրդեամբքն որ գուշակէր զմկրտութիւն
հեթանոսաց. օրինակէր Մովսէս և Ահարոն, զի ի հանդեր-
ձեալսն լինելոյ փոփոխումն օրինացն. հնոյն հրամայէր ջրով

լուանալ յարտաքնում սրահին ապա մերձենալ ի սրբութիւն-
սըն աւրինակէր զայս մկըրտութիւն յեսունաւեա անցանելով
ընդ յորդանան. և ապա մտանել յերկիրն պարգևացն. օրի-
նակ էր զայս մկրտութիւն մեծն ի մարգարէս նախանձաւո-
րըն Յեղիաս անցանելով ընդ Յորդանան կենդանոյն վերա-
նալը յերկինս, բերէր զսափորն ի գուշակումն մկրտութեան։

**ԺԴ**. Մեծն ի ծնունդս կանանց կնքահայրն Յովհաննէս
որ արժանի եղև մկրտել զանարատ զտէրն Յիսուս ի Յորդա-
նան գետ օրինակ լինէն նորոյ ուխտիս և մանկանց եկե-
ղեցւոյ, և լուանալով զոտս մեր ի վերնատանս ջրով մկըր-
տութիւն զօրացոյց զմեզ և անմեղացոյց սրբութիւնք աւա-
զանին օրինակ աշխարհի եթող. զի ի ձեռն քահանայու-
թեան կարգի մանուկ ութ օրեա մկրտեսցի և եղիցի քրիս-
տոսազգեաց. և վկայք որք ոչ ունին զմկրտութիւն ջրոյն,
արեամբ իւրոց փրկեսցեն։

**ԺԵ**. Կարգեցին առաքեալքն և եդին հաստատութեամբ
եթէ իցէ ոք երկմիտ ի հաւատս, և չիցէ ճշմարիտ ի պաշ-
տամանն տեառն, այնպիսին մի պաշտեսցէ զպաշտաւն
տեառն մի ձեռնադրեսցի զի մի այլոցն ի հեղգութիւն խը-
մոր չարութեան լիցի որպէս գրեալ է. Թէ անիծեալ որ
գործէ զգործ Տեառն հեղգութիւնք. և զմարդիկ խաբէ և
զԱստուած՝ այն որ հաստատեաց զամենայն. և ոչ գոյ
ստութիւնք առաջի նորա։

**ԺԶ**. Կարգեցին առաքեալքն և եդին հաստատութեամբ
եթէ որ սուտ երդնու. կամ սուտ վկայէ՝ և կամ որ երթայ
առ կախարդս՝ և հարցուկս, և քաւդեայս, և վհուկս, և հա-
ւատայ ծնընդոց և աստեղագիտութեանց իբրև զայնոսիկ որ
անաստուածքն են, խափանեսցի. նա որպէս զանաստուած ի
քահանայութեան, և մի խառնեսցի ի պաշտօն եկեղեցւոյ և
եթէ ժողովրդական ոք իցէ մերժեսցի ի բաց։

**ԺԷ**. Կարգեցին առաքեալքն և եդին հաստատութեամբ.
թէ որ սիրէ զհրէայս և հաղորդի ընդ նոսա. կցորդ եղիցի
Յուդայի սկարիովտացւոյ որ սիրեաց զհրէայսն կամ զհեթա-
նոսն որ երկիր պագանեն արարածոց փոխանակ արարչին մի

մտցէ յեկեղեցի, և մի բնակեսցէ ի մէջ հաւատացելոց, և եթէ իցէ ի միջի նոցա մի թողցեն զնա այլ որոշեսցեն և զատուսցեն ի բաց ինքեանց. և մի կացցէ ի միջի նոցա զի մի արմատ դառնութեան ի վեր երևեալ պղծիցեն նովաւք զամենեսեան։

**ԺԸ.** Կարգեցին առաքեալքն և եդին հաստատութեամբ՝ եթէ ոք հրէայ կամ հեթանոս եկեսցէ և խառնեսցի յեկեղեցի. և դարձեալ թողցէ և երթիցէ յիւր բնակութիւն և դարձեալ կրկնեսցի և եկեսցէ ի նոյն պաշտօնն զոր անարգեացն. մի ընդունիցիք և մի խառնիցէք ի մէջ ձեր այլ որոշեալ զատուսցի ի միջոյ ամենեցունց և կացցէ ի նմին կարգի ուր էր զառաջինն, և մի հաղորդեսցին ընդ նմա որք ճանաչէին զնա։

**ԺԹ.** Կարգեցին առաքեալքն և եդին հաստատութեամբ՝ եթէ որ փոխ տայ՝ և առնու վաշխ և տոկոսիս, և շահի շահս ագահութեամբ՝ այնպիսին մի համարեսցի ընդ հաւատացեալսն և մի կացցէ ի կարգ պաշտման քահանայութեան, ոչ լսիցէ զոր ետ պատուէր Արարիչն Մովսիսի թէ պատուիրեայ որդւոցն Իսրայէլի զի մի պահանջեսցեն զփոխըս ի մերձենալ տօնին թողութեան, և ամեն եօթներրորդի. որչափ ևս առաւել պատժոյ արժանի համարեցիք զայժմուս։

**Ի.** Կարգեցին առաքեալքն և եդին հաստատութեամբ. եթէ չէ իշխանութիւն քահանայապետի կամ երիցու և որ և իցէ առաջնորդ եկեղեցւոյ առանց իւրոց պաշտաւնակցացն առնել զերես ինչ եկեղեցւոջ. բայց կամօք և միաբանութեամբ ամենեցուն արասցեն զոր ինչ կամինն, զի մի լիցի տրտմութիւն և հերձուածք ի մէջ իւրոց, զի միաբանութիւն է ամենեցուն և քարոզութիւն հաւատարիմ լիցի և հաւատն հաստատուն որպէս փրկիչն ասէ. թէ ուր երկու և երեք ժողովեալ են յանուն անդ եմ ես ի մէջ նոցա։

**ԻԱ.** Կարգեցին առաքեալքն և եդին հաստատութեամբ. եթէ ի կարգէ քահանայութեան ընտրեալքն անարատքն, որ սուրբ ի մամոնայնի իցեն, օրինաց և կարգի եկեղեցւոյ

հմուտք. եթէ յանարդաց ոք իցէ ի քահանայապետութիւն և ի գլխաւորութիւն կացուսցեն միջնորդ լինել ընդ մարդկան և ընդ Աստուած, զի երևեսցի գլուխ և առաջնորդ ամենեցուն, զի ի ձեռն նորա խնդրեսցի չարութիւն և բարութիւն, մեղք և արդարութիւն յամենեցունց զի դէտ և հովիւ է իբրև զՍամուէլն զի շրջէր և կարգէր և հրաման տայր ըստ մարգարէութեանն Եզէկիէլի։

**ԻԲ.** Կարգեցին առաքեալքն և եդին հաստատութեամբ. թէ որ լոկ են ի ստացուածոց և սոսկ ի մամոնայէ՝ և չերթալ զկնի արծաթոյ շահին և ձեռք իւրոց սրբեն 'ի կաշառոյ, և միտք իւրեանց սուրբ և յստակ ի չարութենէ, և սիրտք և խորհուրդք իւրեանց կատարեալ են ի սէրն Աստուծոյ, նոքա ընտրեսցին ի պաշտօն սեղանոյն Տեառն, զի եթէ զՂևտացիսն յամենայն իմեքէ 'ի կալուածոյ և ի բաժնէ եղբարցն հեռացուցեալ, ապա մերձեցուցանէր առ ինքն որչափ ևս առաւել որ նորոյ ուխտիս են սպասաւորք, միջնորդք և պաշտօնեայք Քրիստոսի անարատք իցեն և անմեղք։

**ԻԳ.** Կարգեցին առաքեալքն և եդին հաստատութեամբ. եթէ ամբարտաւանք և հպարտք, և սեգք, և սնապարծք, և ատեցողք, և արբեցողք, ուսումնատեացք, և քնէածք. և այլք. և նախանձոտք չարեաց, և ցանկացողք չարեաց, և պատուասէրք, խիստք, և նեղասիրտք, և ցոփասէրք, և յանդգունք, և անզութք, անողորմք, և կռուողք, և ոխակալք, քսմոսք, շոգմոգք, և որ ինչ նմանք սոցին, մի՛ մերձեսցին ի պաշտօն քահանայութեան՝ վասն զի գրեալ է ի բաց կացէք յինէն ամենեքեանք որ գործէք զանաւրէնութիւն։

**ԻԴ.** Կարգեցին առաքեալքն և եդին հաստատութեամբ թէ՝ որպէս Տէրն մեր հրաման եդ և պատուիրեաց մեզ, թէ որ արձակիցէք յերկրի արձակեալ լիցի յերկինս. սոյնպէս և հրաման տուեալ քահանայութեան և երիցանց կարգի զարժանիս աւրհնութեան միաբան աւրհնել և զանարժանսն միաբան կապել և ըմբերանել, և զոր կապենն, կապեալ կացցէ մինչև հնազանդեսցի առաջնորդին, ապա եթէ տարապարտուց և յանարժանս զոք կապեսցին, պատիժ պատու-

*հասի ընկալցեն ըստ արժանի որք զուրն կապեցին, բայց որ կապեցան ընկալցի տխորժելով զկապանսն որպէս թէ իցէ արժանի կապանաց։*

**ԻԵ.** *Կարգեցին առաքեալքն և եղին հաստատութեամբ. թէ մի ոք յանդգնեսցի ի մարդկանէ որոյ չիցէ զօծումն քահանայութեան ընկալեալ, և արասցէ իրս ինչ իշխանութեամբ իբրև զքահանայ, և կամ քահանայ անչառութեամբ և ակնառութեամբ գործեսցէ ինչ առանց աւրինաց և իրաւանաց՝ այլ արդարութեամբ և անաչառութեամբ։*

**ԻԶ.** *Կարգեցին առաքեալքն և եղին հաստատութեամբ. թէ մի ոք յանդգնեսցէ և անկոսնեսցէ և արհամարհանօք կալցի զքահանայն. թէ կարի ոք անարժան և յանարգաց իցէ, գիտեսցէ զի զԱստուած անարգէ՝ զի Աստուծոյ սպասաւորէ ձեզ ի բարիս, և համարս տալոցէ ընդ ոգոց ձերոց. ոչ գրեալ է զիշխան ժողովրդեան քո ոչ բամբասեսցես։*

**ԻԷ.** *Կարգեցին առաքեալքն և եղին հաստատութեամբ. եթէ որք են յաստիճան դատաւորութեամբ. և իշխեն առնել զդատաստան եթէ թիւրեսցի, եթէ աչառեսցէ երեսաց և պարտաւորեսցէ զարդարն. և արդարացուսցէ զպարտաւորն. մի ևս կացցէ ի կարգ դատաւորութեան և զպատուհասեալ կշտամբեսցի, զի ոչ իմացաւ զգրեալսն աստուածային ձեռամբն յօրէնսն Մովսէսի, թէ մի խոտորեցուսցես զիրաւունս ի դատաստանի և կաշառ ի վրայ իրաւանաց մի առնուցուս։*

**ԻԸ.** *Կարգեցին առաքեալքն և եղին հաստատութեամբ. եթէ ոք ելանիցէ յաշխարհէ ճշմարիտ վախճանաւ, և կամ խողխողեալ յանաւրինաց, վկայ հաւատարիմ վասն անուան Փրկչին խոստովանելով զՔրիստոս ի նեղութիւնսն որ վասն անուան նորա լինի՝ արասցեն զյիշատակս նոցա, և զնշխարս ոսկերց նոցա 'ի պատիւ առեալ փառաւորեսցեն զՔրիստոս որ ետ նոցա զայնպիսի համբերութիւն՝ ի յորդորումն և ի թողութիւն մեղաց մերոց։*

**ԻԹ.** *Կարգեցին առաքեալքն և եղին հաստատութեամբ. եթէ թագաւորք որք ունին զհաւատս եկեղեցւոյ սրբոյ և խոստովանեն զՔրիստոս իշխանութիւն լիցի ընդ քահանայս*

ի բեմի կալ իբրև զԴաւիթն. և որ իբրև զնայն էին. ըստ մարգարէութեան եթէ թագաւոր յուսացաւ ի տէր յողորմութեան բարձրելոյն նա մի սասանեսցի՝ բայց յայլ ինչ մի համարձակեսցի գուցէ որպէս զոզիայս պատուհասեալ իջցէ։

Լ. Կարգեցին առաքեալքն և եդին հաստատութեամբ. եթէ ի պաշտաման եկեղեցոյ ասասցեն սաղմոս և զաւրհնութիւնս Դաւթի պաշտել զաւրստաւրէ յամենայն ժամ զմարգարէութիւնն Դաւթի, ձԾ. սաղմսս. որպէս և ասեն իսկ աւրհնեցից զտէր յամենայ ժամ. յամենայն ժամ՛ աւրհնութիւն նորա ի բերան իմում. և յօրէնս Տեառն խորհեցայց ի տուէ և ի գիշերի սաղմոս ասացից և ի միտ առից. և լըսելի արարից զձայն աւրհնութեան նորա և դարձեալ սաղմոս ասացէք աստուծոյ մերում, և թագաւորին մերոյ սաղմոս ասացէք։

ԼԱ. Կարգեցին առաքեալքն և եդին հաստատութեամբ. եթէ յեկեղեցւոջ գիրս ընթերցցեն, հին կտակարանք, օրէնք և մարգարէք. և նոր կտակարանք որ լինիցեն վասն կենաբար չարչարանաց փրկչին մերոյ քրիստոսի և գործք և խօսք աւետարանչացն քարոզութեան վասն բանին ճշմարտութեան և վարդապետութեան աշակերտաց փրկչին. և այլ աւելի քան զայս մի ընթերցի ի բեմի։

ԼԲ. Կարգեցին առաքեալքն և եդին հաստատութեամբ. եթէ հաց պատարագին՝ յորում աւուր եփեսցի, ի նմին աւուր եկցէ ի սեղանն, և մի լիցի իշխանութիւն զկնի աւուրց հանել, զի և Մովսէս ոչ պակասեցուցանէր զհացն ջերմ յերեսաց Տեառն։

ԼԳ. Կարգեցին առաքեալքն և եդին հաստատութրամբ. եթէ ոք ի կարգէ պաշտօնէից և յուխտէ եկեղեցոյ և կամեսցի կուսան լինել բարոյ գործոյ ցանկայ համարձակ լիցի վանս շինելով ի տեղիս տեղիս ժողովեալ աւրինաց ի կարգէ սրբութեան, զգուշասցեն ի կերակրոյ պարկեշտանալ, ի զինուորական զգեստուէ հեռանալ, պճղնաւորեալ նմանեսցի պաշտօնէից հրեշտակաց Աստուծոյ և զուարթնոց երկնից. զի և Յեսու պաշտաւնեայն Մովսէսի և սպասաւոր սրբութեան,

և Եղիայ Նախանձաւորն Աստուծոյ, և Երեմիայ մարգարէ, և մեծ մարգարէն Մկրտիչն Յովհաննէս սոքա ամենեքեան կուսութեամբք և պարկեշտութեամբ կատարեցին զկեանս իւրեանց բնաւորք կալեալ յափշտակեցին զարքայութիւն յերկնից։

**ԼԴ.** Կարգեցին առաքեալքն և եդին հաստատութեամբ, եթէ որպէս ի սկզբանէ զուգեաց ամուսնութիւն զմարդն և օգնական արար միմեանց և աւրհնեաց զնոսա, նոյնպէս սահմանեալ և հաստատեալ հրաման առաքելական սրբութեամբ զուգել յամուսնութիւն և օրինօք ի ձեռն աջոյ քահանայութեան և աւրհնութեամբ զուգեսցին, բայց որպէս Մովսէսի պատուիրեաց արարիչն Աստուած. թէ պատուիրեա որդւոցն Իսրայէլի, ես եմ Տէր Աստուած ձեր՝ պատուիրանաց իմոց զգուշացարուք, և մի գնայցէք ըստ կրօնիցն Եգիպտացւոց ուստի ելէքն, և ըստ գնացից քանանացւոց մի գործիցէք յոր երթալոցն էք, և ասէ՝ մարդ ոք մարդ առ ամենայն ընտանութիւն մարմնոյ իւրոյ՝ մի մերձեսցի յայտնել զառականս մերձաւորի արեան իւրոյ, զառականս դըստեր քո մի յայտնեսցիս՝ զառականս քեռ քո՝ թէ առ ի հօրէ իցէ կամ ի մօրէ, մի յայտնեսցիս, զառականս կնոջ հօր քո մի յայտնեսցիս, զառականս հօրաքեռ քո մի յայտնեսցիս, զառականս քեռ որդւոյ քո մի յայտնեսցիս, պղծելով ընդ նոսա, նոյնպէս և յերկրորդումն կարգեաց օրէնսդիրն Մովսէս յանէծս ասէ՝ անիծեալ լիցի որ ննջեսցի ընդ կնոջ հօր իւրոյ զի յայտնեաց զաներևոյթս հօր իւրոյ, անիծեալ որ ննջիցէ ընդ քեռ իւրում, որ առ ի հօրէ իցէ, կամ առ ի մօրէ և ասասցէ ամենայն ժողովուրդն եղիցի եղիցի. Նոյնպէս և սահմանեալ առաքելական կանոնաց մարդ առ ամենայն ընտանութիւն մարմնոյ իւրոյ մի մերձեսցի կամ շնութեամբ կամ ամուսնութեամբ մինչև ի չորրորդ զարմն, չունի իշխանութիւն առնել։

**ԼԵ.** Եւ արդ՝ զայս ամենայն զոր ինչ կարգեցին և եդին առաքեալքն ոչ եթէ անձանց իւրոց միայն կարգեցին, այլ և այնոցիկ որ զկնի իւրեանց լինելոց իցեն. քանզի կա-

կածէին թէ պատրաստեալ են գայլք զգենուլ զզեստ գառանց և առնել կոտորած ի մէջ հօտիցն քրիստոսի քանզի ոչ եթէ նոցա պէտք ինչ էին կարգաց և օրինաց որ ինքեանք օրէնըս դիրք, զի խրատեալք և վարժեալք էին ի ճշմարիտ վարդապետէն և մխիթարիչ Հոգին սուրբ բնակէր ի նոսա, զի զոր աւրինակ եդ կարգել նոցա Հոգին սուրբ զկարգս և զօրէնս զայսոսիկ առաւել ևս առաջնորդեսցէ նոցա ըստ կամաց իւրոց. զի որք ընկալան ի տեառնէ զզօրութիւն և զիշխանութիւն, զի արդ մարդ էր եթէ յայլմէ իմեքէ դնիցի նոցա օրէնք. նա և Պօղոս և Տիմոթէոս շրջէին ի կողմանս ասորոց ևիզեկացւոց. զսոյն իսկ զայս օրէնս պատուիրէին զառաքելոցն միմեանց և որք էին ընդ ձեռամբ առաքելոցն աշխարհականք ամենայն որ քարոզէին և աւանդէին յամենայն յեկեղեցիս։ Եւ ձեռնադրութիւն քահանայութեան զոր ընկալան նոքա ի Տեառնէ. բազմացուցին և լցին զամենայն աշխարհ. և որպէս ասաց ինքն իսկ Տէրն ցնոսա, թէ տուաւ ինձ ամենայն իշխանութիւն յերկինս և յերկրի. որպէս առաքեաց զիս Հայր՝ և ես առաքեմ զձեզ. գնացէք այսուհետև աշակերտեցէք զամենայն հեթանոսս. մկրտեցէք զնոսա յանուն Հօր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ. ուսուցէք նոցա պահել զամենայն զոր ինչ պատուիրեցի ձեզ. և ահաւասիկ ես ընդ ձեզ եմ յամենայն աւուրս մինչև ի կատարած աշխարհի. և որպէս պատուիրեաց նոցա Տէր ըստ նմին օրինակի թռեաւ վաղվաղակի քարոզութիւն աւետարանին ընդ ամենայն տիեզերս, և յորժամ այց առնէին միմեանց լինէր քննութիւն ինչ բանից՝ գային և հաղորդէին միմեանց ի պաշտօն և ի յաղօթս և ի բանս մխիթարութեան կարգացն կացին քահանայապետք. գլուխ և առաջնորդք, քարոզիչք և աւետարանել և ուսուցանել զամենայն տիեզերըս, որպէս և հրամայեաց նոցա տէր առաջնորդութեամբ հոգւոյն սրբոյ։

---

## Ձ) Բ-ԱՌԱՔԵԼԱԿԱՆ ԿԱՆՈՆՆԵՐ.

**Սահմանք եւ կանոնք Սուրբ առաքելոց ի ձեռն Կղեմայ առաքեալ հեթանոսաց երկրորդ Առաքելականք:**

**Ա.** *Եպիսկոպոս ձեռնադրեսցի յԵպիսկոպոսաց երկուց կամ երից։*

**Բ.** *Երէց, կամ սարկաւագ, կամ այլ ի ժառանգաւորաց ի միջէ եպիսկոպոսէ լինել։*

**Գ.** *Եթէ ոք եպիսկոպոս կամ երէց արտաքոյ քան զհրամայեալսն Տեառն, ի պատարագն կամ ի սեղանն այլ ինչ պատրաստեցէ մեղր կամ կաթ, կամ փոխանակ գինւոյ այլ ինչ պատրաստութիւնս, կամ հաւ, կամ այլ ինչ կենդանի արտաքոյ քան զհրամայեալսն արասցէ՝ լուծցի բայց ի դիպող ժամանակին որ արմտեաց հասք, կամ խաղող, մատուցանել առ սեղանն, և ձէթ ի սուրբ աշտանակն և խունկ ի ժամ պատարագի։*

**Դ.** *Բայց այլ ամենայն միրգ 'ի տունս առաքեսցին իրիցանցն այլ ի սեղանն մի մատիցեն՝ այլ զի եպիսկոպոսն, և երիցունքն բաժանեսցին սարկաւագաց և այլ ժառանգաւորաց։*

**Ե.** *Երէց կամ սարկաւագ զկին իւր մի հանցէ պատճառանաւք երկիւղածութեան։ Ապա թէ հանցէ ի բաց որոշեսցի։ Իսկ ի նմին յամառեալ լուծցի։*

**Զ.** *Եպիսկոպոս, կամ երէց, կամ սարկաւագ, զաշխարհական հոգս յանձն մի առցէ՝ ապա թէ ոչ լուծցի։*

**Է.** *Եպիսկոպոս, կամ երէց, կամ սարկաւագ, զսուրբ չարչարանաց օրն նախ քան զգարնանային զուգաւորութիւն թէ ընդ հրէայս կատարեսցէ լուծցի։*

**Ը.** *Եպիսկոպոս, կամ երէց, կամ սարկաւագ ժողովոց*

*ոչ հաղորդի զպատճառն ասասցէ՝ եթէ իցէ յիրաւացի թողութիւն հասցէ, ապա թէ ոչ ասասցէ, որոշեսցի. որպէս պատճառք վնասու եղեալ ժողովրդոցն և կարծիքս. տուեալ զերիցուէն որ մատոյցն ոչ առողջութիւն մատուցել։*

**Թ.** *Զամենայն մտեալս եկեղեցին զհաւատացեալս և գրոց լուեալս և ոչ մնացեալն աղաւթից սրբոյ և հաղորդութիւն իբրև զկարգաւորութիւնս արարեալ եկեղեցւոյ ի բաց որոշեսցի։*

**Ժ.** *Եթէ ոք ընդ անհաղորդին, թէ ի տան աղաւթակից լիցի որոշեսցի։*

**ԺԱ.** *Եթէ ոք լուծեալ ի քահանայութեան, այլ ոք աղաւթակից լիցի իբրև քահանայի լուծցի։*

**ԺԲ.** *Եթէ ոք ի ժառանգաւորաց որոշեալ երթիցէ այլ քաղաք, և ընկալցին առանց ընծայական գրոց որոշեսցին որք ընկալանն, և որ ընկալեալն եղև թէպէտ և էրն ընդունելի՛ առաւել ևս երկարեսցի որոշումն իբրև ստոյ. և պատրողի զեկեղեցի աստուծոյ։*

**ԺԳ.** *Եպիսկոպոսի ոչ է արժան թողուլ զիւր իշխանութիւն. և այլ վազել, թէպէտ ի բազմաց հարկեսցի, բայց եթէ իցեն պատճառք ինչ իրաւացիք որ զայս բռնաբարեն զնա առնել. որպէս առաւել շահել կարացեալ զնոսա որ քանդեն, երկիւղածութեան բանիւ աւգտեցուցանել, և զայս ոչ ինքենէ՝ այլ աղաչանաւք մեծաւ։*

**ԺԴ.** *Եթէ ոք երէց կամ սարկաւագ, կամ ով իցէ ի ժառանգաւորաց, 'ի բաց ընկեցեալ զիւր պանդխտութիւն այլ երթիցէ և ամենևին փոխեալ շրջիցի յայլում պանդխտութիւն առանց կամաց եպիսկոպոսին իւրոյ, զայնպիսին հրամայեմք ո՛չ ևս քահանայանալ, մանաւանդ թէ բազում անգամ յորդորեալ եպիսկոպոսին իւրոյ. ոչ լուեալ այլ յամառեալ յանկարգութիւն իբրև զաշխարհական անդէն հաղորդեսցի ընդ նոսա. ապա եթէ եպիսկոպոսն առ ամենայն ոչինչ համարեսցի, զի ի վերայ նորա սահման դատապարտութեան և ընկալցի զնա ընդ ժառանգաւորս ի բաց որոշեսցի իբրև զվարդապետ անկարգութեան։*

**ԺԵ.** Որ ընդ երկուս ամուսնութիւնս խառնակեցաւ յետ մկրտութեան կամ հարճ ստացաւ, ոչ կարէ լինել եպիսկոպոս կամ երէց. կամ սարկաւագ, կամ բնաւ իսկ ի քահանահական կարգէ։

**ԺԶ.** Որոյ զայրի առեալ է կին, կամ զհանեալ, կամ զաղախին, կամ զբոզ, ոչ կարէ եպիսկոպոս, կամ երէց, կամ սարկաւագ, կամ բնաւ իսկ ի քահանայական կարգ։

**ԺԷ.** Որոյ Բ. քորս առեալ է, կամ քեռ որդի ոչ կարէ ժառանգաւոր լինել։

**ԺԸ.** Ժառանգաւորի ոք զերաշխաւորս տուեալ լուծցի։

**ԺԹ.** Ներքինի ոք, եթէ բռնութենէ մարդկան եղև կամ ի հալածանս կըտրեցան արականքն, կամ այնպիսի ծընաւ, և է արժանի եպիսկոպոսութիւն եղիցի։

**Ի.** Որ կըճատեաց զինքն, մի եղիցի ժառանգաւոր քանզի սպանող ինքեան է և արարածոցն Աստուծոյ թշնամի։

**ԻԱ.** Եթէ ոք ժառանգաւոր զինքն կըճատեաց լուծցի քանզի սպանող ինքեան է։

**ԻԲ.** Ժողովրդական որ զինքն կըճատեաց որոշեսցի զերիս ամս քանզի դըժող է իւրոց կենացն։

**ԻԳ.** Եպիսկոպոս, կամ երէց, սաքկաւագ, կամ յերդման կամ ի գողութիւն ըմբռնեալ լուծցի, այլ ոչ որոշեսցի, քանզի ասէ գիր, ոչ առցէ տէր վրէժ երկիցս ի միասին Նմանապէս և այլք ի ժառանգաւորաց։

**ԻԳ.** Որք ի ժառանգաւորութիւն անցանեն չև ամուսնացեալք. հրամայեմք թէ կամին ամուսնանալ զգըրակարդացըս և զսաղմոսասացս միայն։

**ԻԵ.** Զեպիսկոպոս և զերէց, և զսարկաւագ հարկանող զհաւատացեալս մեղուցեալսն, կամ զանհաւատսն, զկռուողս, և ի ձեռն այսոցիկ երկեցուցանել կամեցեալս լուծանել հրամայեցաք. քանզի ոչ ուրէք զայս տէր ուսոյց, բայց եթէ ընդդէմ սորին, ինքն հարաւ՝ այլ ոչ զոք եհար թշնամանեցաւ, և ոչ զոք փոխարէն թշնամանեաց չարչարեցաւ և ոչ սպառնացաւ։

**ԻԶ.** Եպիսկոպոս կամ երէց սարկաւագ լուծեալ իրաւա-

բար ի վրայ երևելի յանցանաց, և համարձակեսցի մերձենալ յաւանդեալսն երբեմն նմա պաշտօն, սա ամենևին ի բաց հատեալ անկցի եկեղեցւոյ։

**ԻԷ.** Եթէ ոք եպիսկոպոս ի ձեռն ընչից ժառանգաւորութիւն այսմիկ հասանել կարաց, կամ երէց և սարկաւագ, լուծցի ինքն և որ ձեռնադրեացն, և ի բաց հատցի ամենևին միանգամայն և ի հաղորդութիւն որպէս Սիմոն մոգ յինէն ի Պետրոսէ առաքելոյ։

**ԻԸ.** Եթէ ոք եպիսկոպոս աշխարհական իշխանօք վարեցեալ նոքօք բռւռն ի վեր եկեղեցւոյ եղիցի, լուծցի և որոշեսցի և ամենեքեան որ հաղորդին ընդ նմայ։

**ԻԹ.** Եթէ երէց արհամարեալ զեպիսկոպոս առ իւրով առանձին ժողով արասցէ և սեղան կանգնեսցէ, ոչ ինչ աւգրտեալ զեպիսկոպոսէն բայց ի բարեպաշտութիւն կամ արդարութիւն լուծցի. կամ զսիրող իշխանութիւն, քանզի բռնաւորէ, և այլք ի ժառանգաւորաց որք հաւանեցան նմա, ի ժողովրդականքն որոշեսցին, բայց այսոքիկ յետ մի անգամ, և երկիցս և երիցս, եպիսկոպոսին աղաչանացն եղիցի։

**Լ.** Եթէ ոք երէց կամ ի սարկաւագաց յեպիսկոպոսէ եղև որոշեալ սա ոչ է արժան յայլմէ ընդունել, այլ յայնմանէ որ որոշեացն զնա. բայց թէ դէպ լիցի մեռանել որ որոշեացն եպիսկոպոսն։

**ԼԱ.** Մի զոք աւտարաց եպիսկոպոսաց, կամ երիցանց, կամ սարկաւագաց. առանց ընծայական թղթի ընդունել, և կամ թէ ընդունիցի. սակայն քննել, եթէ իցեն քարոզիչ բարեպաշտութեան ընկալեալ լիցին, ապա թէ ոչ ըզպէտս նոցա տացին իսկ 'ի հաղորդութիւն մի ընկալցին, վասն զի բազում ինչ լինի խաբէութեամբ։

**ԼԲ.** Զեպիսկոպոսն իւրաքանչիւր ոք ազգի գիտել պարտ է զիւրեանց առաջինսն և համարել պարտ է իբրև զգլխաւոր, և մի ինչ աւելորդ առնել առանց նորա կամաց բայց զայն միայն իւրաքանչիւր ումէք որչափ իւրում իշխանութիւն անկէ և որք ընդ նովաւ տեղիքն են, այլ և ոչ նմա առանց նոցա կամաց առնել ինչ. այսպէս միաբանու-

*թիւն իցէ և փառաւորեսցի Աստուած ի ձեռն Յիսուսի և սրբոյ Հոգւոյն։*

**ԼԳ.** *Եպիսկոպոս ոք մի իշխեսցէ արտաքոյ իւրոյ սահմանացն ձեռնադրութիւնս առնել որք ոչ ընդ նորա ձեռամբն են քաղաքք կամ գաւառք. ապա եթէ յանդիմանեսցի զայս արարեալ առանց կամաց այնոցիկ որք ունին ըզքաղաքսն կամ զտեղիսն լուծցի ինքն և որ ձեռնադրեցաւն։*

**ԼԴ.** *Եթէ ոք ձեռնադրեալ եպիսկոպոս ոչ ընկալաւ զպաշտաւնն, և զհոգս ժողովրդեանն ընդձեռնելոց նմա, սա որոշեալ լիցի մինչև ընկալցի, նոյնպէս երէց և սարկաւագ. ապա եթէ երթեալ ոչ եղև ընկալեալ, այս ոչ ի նորա կամաց, այլ ի ժողովրդեանն խստութենէ, ինքն եղիցի եպիսկոպոս, իսկ ժառանգաւորք քաղաքին որոշեսցեն, զի այնպիսի ժողովրդեան խարդիչք ոչ եղեն։*

**ԼԵ.** *Երկիցս ի տարւոջ ժողով լիցի եպիսկոպոսաց և քննեսցին առ միմեանս զհրամանս բարեպաշտութեան, և զպատահեալն եկեղեցական ընդդիմաբանութեան լուծցին. միանգամ ի չորրորդ շաբաթն պինտեկոստէից և երկրորդն յաշնանայինսն։*

**ԼԶ.** *Ամենայն եկեղեցական իրացն եպիսկոպոսն կալցի հոգ, և վարեսցէ զնոսա իբրև յայտնի հայեցեալ. մի լիցի նմա արժան զողանալ ինչ անտի, կամ ազգականաց իւրոց զայն շնորհել. բայց եթէ աղքատք իցեն օգնել այլ ոչ պատճառանաւք սոցա զեկեղեցւոյն աւցտեալ։*

**ԼԷ.** *Երիցունք և սարկաւագունք առանց կամայ եպիսսոպոսի մի ինչ կատարեսցեն, զի նմա հաւատացաւ ժողովուրդն Տեառն. և վասն ոգւոց նոցա պահանջեսցի։*

**ԼԸ.** *Եղիցի յայտնի եպիսկոպոսին իրք եթէ առանձին ինչ ունի և եկեղեցւոյն յայտնի, զի իշխանութիւն կալցի իւրոյն վախճանեալ եպիսկոպոսն որոյ կամի թողուլ. և զի մի պատճառանօք եկեղեցական իրօքն անկանել յիւրմէ եպիսկոպոսն զի թերևս կին և մանկունս ստացեալ ունիցի, կամ ազգականս, կամ ծառայս՝ քան զի իրաւացի է այս Աստուծոյ և մարդկան, զի մի եկեղեցւոյն վնաս ինչ կրել անդի-*

տուլթեամբ եպիսկոպոսին իրաց. և մի զեպիսկոպոսն և զազգականսն իւր պատճառանօք եկեղեցւոյն յամենեսեան զերծանել, և կամ յիրս ինչ անկանել նորա ազգականացն և մահու նորա լինել պատճառք հայհոյութեան

**ԼԹ.** Հրամայեմք եպիսկոպոսի իշխանութիւն ունել եկեղեցական իրաց. քան զի թէ զպատուական ոգիսն մարդկան նմա հաւատալի է. առաւել ևս իրաւացի է զիրս կատարել, որպէս զի ըստ իշխանութիւն նորա խնամ ունել կարաւտելոցն, և ի ձեռն երիցանց և սարկաւագաց լինել խնամակալութիւն երկիւղիւ աստուծոյ, և կամ զգուշութեամբ առնուլ, և ինքեանք, իսկ եթէ կարօտ ինչ իցեն և յաւտարաց եղբարց ի պէտս, զի մի ինչ իրօք նոցա պակասութիւն լինիցի, վասն զի օրէնք Աստուծոյ հրամայեն, որք սեղանոյն պարապին, ի սեղանոյ անտի կերակրել. ըստ որում և զինուորն իւրովք թօշակօք զզէնս պատերազմաց բերէ։

**Խ.** Եպիսկոպոս կամ երէց կամ սարկաւագ քուէից պարապեալ, կամ գինարբուաց, կամ դադարեսցին կամ լուծցին։

**ԽԱ.** Կէս սարկաւագաց, կամ գրակարդացաց, կամ սաղմոսերգաց զնմանս արարեալ կամ դադարեսցին կամ որոշեսցին, նմանապէս, և ժողովրդականքն։

**ԽԲ.** Եպիսկոպոս, կամ երէց, կամ սարկաւագ վաշխ և տոկոսիս պահանջելով ի փոխառուացն, կամ դադարեսցին, կամ լուծցին։

**ԽԳ.** Եպիսկոպոս, կամ երէց կամ սարկաւագ թերահաւատից միայն աղօթակից լեալ որոշեսցին, ապա թէև նոցա հրամայեսցին իբրև քահանայ ի յաղաւթիլ լուծցի։

**ԽԴ.** Եպիսկոպոս, կամ երէց և սարկաւագ զթերհաւատից զմկրտութիւն ընկալեալ կամ զպատարագ՝ լուծանել հրամայեմք, զի զինչ միաբանութիւն է Քրիստոսի ընդ բելիարայ, կամ զինչ մասն հաւատացելոց ընդ անհաւատին։

**ԽԵ.** Եթէ ոք ժողովրդական զկին կին հանեալ այլ առցէ՝ և կամ զարձակեալն յայլմէ ի բաց որոշեսցի։

**ԽԶ.** Եպիսկոպոս կամ երէց, կամ սարկաւագ կամ ըընաւ, իսկ ի քահանայական կարգէ յամուսնութենէ՝ ի մասյ

և ի գինոյ, ոչ վասն ճգնաւորութեան՝ այլ պիղծ վարկանելով, զայնոսիկ ի բաց մեկնի մոռացեալ, թէ յամենայն ինչ յոյժ բարի է, զի արու և էգ արար Աստուած զմարդն. այլ հայհոյելով անգոսնեսցէ զգործաւորութիւն, կամ ուղղեսցէ, կամ լուծցի. և յեկեղեցւոյն ի բաց ընկեսցի, նմանապէս և ժողովրդական ոք։

**ԽԷ.** Եթէ ոք եպիսկոպոս կամ երէց, զդարձեալսնի մեղաց ոչ ընկալցի, այլ ի բաց մերժեսցի լուծցի զի տրտմեցուցանէ զՔրիստոս. որ ասացն ուրախութիւն լինի յերկինս ի վերայ միոյ մեղաւորի որ ապաշխարհէ։

**ԽԸ.** Եթէ ոք եպիսկոպոս, կամ երէց, կամ սարկաւագ յաւուրս տօնից ոչ ճաշակէ ի մսոյ և ի գինւոյ լուծցի որպէս զհարեալ խղճին մտաց իւրոց, և պատճառք գայթակղութեամբ բազմաց եղեալ։

**ԽԹ.** Եթէ ոք ժառանգաւոր 'ի կապելոջ ըմբռնեսցի ուտելով՝ որոշեսցի բայց 'ի պանդոկոջ միայն, և ի ճանապարհի յաղագս հարկի լինելոյ։

**Ծ.** Եթէ ոք ժառանգաւոր թշնամանեսցէ զեպիսկոպոսն անիրաւաբար, լուծցի, քանզի զիշխան ժողովրդեան քո ոչ հայհոյեսցես։

**ԾԱ.** Եթէ ոք ժառանգաւոր թշնամանեսցէ զերէց, կամ զսարկաւագ. որոշեսցի։

**ԾԲ.** Եթէ ոք ժառանգաւոր, զխուլ, կամ զկաղ, կամ զխեղ, կամ զդէմսն վնասեալ, այպանեսցէ՝ որոշեսցի. նմանապէս և ժողովրդականք։

**ԾԳ.** Եպիսկոպոս կամ երէց անփոյթ առնելով զքահանայութիւն, կամ զժողովրդոցն, ոչ խրատելով զնոսա բարեպաշտութիւն որոշեսցի, ապա եթէ յամեսցի չածել յուղղութիւն լուծցի։

**ԾԳ.** Եթէ ոք եպիսկոպոս, կամ երէց ի ժառանգաւորաց որ կարօտ իցէ, և ոչ տացէ նմա զպէտսն, որոշեսցի իբրև սպանող եղբօր իւրոյ։

**ԾԵ.** Եթէ ոք ստութեամբ զվերագրեալսն ամբարշտաց գիրս իբրև զսուրբ գիրս յեկեղեցւոջ մուծեալ առ ի վնաս ժողովրդոց լուծցի։

**ԾԶ.** *Եթէ ամբաստանութիւն ինչ եղիցի զհաւատացելոց պոռնկութիւն կամ այլ ինչ գործոց, ի բաց հրաժարելոյ. և յանդիմանեսցի ի ժառանգաւորութիւն մի մեկնեսցէ։*

**ԾԷ.** *Եթէ ոք ժառանգաւոր վասն մարդկային երկիւղի հրէի կամ հեթանոսի, կամ թերահաւատի, ուրասցի. եթէ զանուն քրիստոսի ունի լուծցի և որոշեսցի, իսկ եթէ զանուն ժառանգաւորի՝ լուծցի։*

**ԾԸ.** *Եթէ ոք եպիսկոպոս, կամ երէց, կամ բնաւ իսկ ի քահանայական կարգէ կերիցէ միս արեամբ շնչոյ, կամ գազանաբեկ. կամ մեռելոտի լուծցի՝ քանզի զայս աւրէնքն, հրաժարեցուցին, ապա թէ ժողովրդական ոք իցէ որոշեսցի։*

**ԾԹ.** *Եթէ ոք ժառանգաւոր գտցի զօր կիւրակէին կամ զշաբաթու պահելով որոշեսցի։*

**Կ.** *Եթէ ոք ժառանգաւոր, կամ ժողովրդական մտցէ ի ժողովարան հրէից, կամ թերհաւատից աղօթել. լուծցի։*

**ԿԱ.** *Եթէ ոք ժառանգաւոր ի կռւի զոք հարցէ, և ի միոջէ հարմանեն մեռցի՝ լուծցի վասն յանդգնութեան իւրոյ իսկ եթէ ժողովրդական ոք իցէ որոշեսցի։*

**ԿԲ.** *Եթէ ոք զկոյս բռնաբարեալ կալցի լուծցի վասն յանդգնութեան իւրոյ, ապա թէ ժողովրդական ոք իցէ որոշեսցի. և մի լիցի նմա արժան այլ առնուլ, այլ զնոյն իսկ ընդ որ հաճեցաւն թէպէտ և տառապելոց իցէ։*

**ԿԳ.** *Եթէ ոք եպիսկոպոս կամ երէց, կամ սարկաւագ երկրորդ ձեռնադրութիւն ընկալցի յումեքէ. լուծցի, նա և որ ձեռնադրեացն. բայց եթէ ցուցցէ 'ի թերահաւատից ունել նմա զձեռնադրութիւն, քանզի յայսպիսեացս զմկրտեալսն կամ զձեռնադրեալսն ոչ հաւատացեալսն և ոչ ժառանգաւորսն լինել հնարէ։*

**ԿԴ.** *Եթէ ոք եպիսկոպոս, կամ սարկաւագ, կամ երէց, կամ գրակարդաց, կամ սաղմոս երգող, զսուրբ քառասնորդսըն ոչ պահեսցէ, և չորեքշաբաթ և զուրբաթ, լուծցի. բայց եթէ վասն հիւանդութեան մարմնոյ ինչ խափան լինիցի։ Իսկ եթէ ժողովրդական ոք է որոշեսցի։*

**ԿԵ.** *Եթէ ոք կամ երէց, կամ այլ ոք ի ժառանգաւո-*

բաց՝ պաշտեսցէ ընդ հրէայսն կամ տաւնեսցէ ընդ նոսա, կամ ընկալցի ի տաւնից նոցա ընծայս, որպէս թէ բաղարջ կամ այլ ինչ յայսպիսեաց լուծցի։

**ԿԶ.** Եթէ ոք 'ի քրիստոնէից ձէթ տարցէ ի մեհեանս հեթանոսաց. կամ ի ժողովարանս հրէից ճրագունս լուծցի և որոշեսցի։

**ԿԷ.** Եթէ ոք ժառանգաւոր կամ ժողովրդական առցէ ի սուրբ եկեղեցւոյ մոմեղէն կամ ձէթ, որոշեսցի և հինգապատիկ տուժեսցի հանդերձ որով առն, անօթով ոսկեղինաւ կամ արծաթեղենաւ սրբեցելով, և մի ոք յիւր պէտս գողացեալ, զի աւրինազանցութիւն է ապա եթէ ոք ըմբռնեսցի պատուհասիւ որոշեսցի։

**ԿԸ.** Որպէս ամբաստանեալ առաջի հաւատարմաց ոմանց կամ հաւատացելոց կարգալ զնա՝ հարկաւոր է եպիսկոպոսաց, եթէ եկեալ խոստովանեսցի յանդիմանեալ զնա սահմանեսցի պատուհասն, ապա եթէ կարդացեալ ոչ լուաւ, կոչեսցի երկրորդ անգամ, առաքելոյ առ նա երկուց եպիսկոպոսաց, ապա եթէ և այսպէս ոչ լուիցէ կոչեսցի երրորդ անգամ, դարձեալ և երկուց եպիսկոպոսաց առաքելոյ առ նա, ապա եթէ և այնպէս արհամարեալ, և ոչ եկեսցէ ի ժողովն վճիռ հատցէ ի վերայ այնպիսոյս որ ինչ արժան թուեսցի։

**ԿԹ.** Որպէս զի մի շահիլ ինչ թուեսցի փախուցելոյն և ի վկայութիւն զեպիսկոպոսէ զթերահաւատ ոք մի ընդունել, այլ և ոչ հաւատացեալ զմի, քանզի ի բերանոյ երկուց և երից վկայից հաստատեսցի ամենայն բան։

**Հ.** Զի ոչ է պարտ եպիսկոպոսին եղբօր կամ որդւոյ, կամ այլում ազգականի շնորհել զպատիւ եպիսկոպոսութեան, որպէս ինքն կամի ձեռնադրել, քանզի ժառանգաւոր եպիսկոպոսութիւն իւրոյ առնել չէ իրաւացի զայն շնորհել մարդկային սիրոյ քանզի և ոչ զեկեղեցին Քրիստոսի ընդ ժառանգութեամբ արժան է զնոսա դնել. ապա եթէ ոք ուրասցի զայս անհաստատ լիցի ձեռնադրութիւն նորա և ինքն որոշեսցի։

**ՀԱ.** Եթէ ոք խեղակամբ է կամ վիրաւորեալ անդամօք և արժանի իցէ յեպիսկոպոսութեան, եղիցի. զի ոչ խեղութիւն մարմնոյ չլինել զնա արժանի հրամայէ, այլ անձին պղծութիւն։ Խուլ և կոյր մի լիցի եպիսկոպոս, ոչ իբրև զպղծեալ, այլ զի մի եկեղեցւոյքն խափանեսցի։

**ՀԲ.** Եթէ ոք դև ունիցի, ժառանգաւոր մի եղիցի. իսկ մաքրեալն ընդունելի եղիցի, եթէ իցէ արժանի եղիցի։

**ՀԳ.** Զառի հեթանոսաց եկեալն և մկրտեալն, և կամ ի խառնակ վարուց, ոչ իրաւացի է վաղվաղակի քննեուիլ յեպիսկոպոսութիւն, քանզի անիրաւ է զոր չէին փորձեցուցեալ, և այլոց լինել վարդապետ, բայց եթէ ուր յաստուածային շնորհացն եղիցի։

**ՀԴ.** Ասացաք եթէ ոչ է պարտ եպիսկոպոսի արկանել զինքն յերկրաւոր հոգս՝ այլ պարապել եկեղեցական պիտոյիցըն, ապա թէ ոչ, ի բաց դիցէ, զի ոչ ոք կարէ երկու տէրանց ծառայել ըստ տէրունական հրամանին։

**ՀԶ.** Ծառայքս ի ժառանգաւորութիւն ընդ ձեռնել առանց տէրանց կամաց ոչ հրամայիմք ի տրտմութիւն ստացողացն, քանզի տանցն կործանումն այս գործէ, ապա եթէ երբէք արժանի երևեսցի ծառայն առ ի ձեռնադրութիւն աստիճանի որպէս ոդեսիմոսն մեր երևեցաւ, և թողացուցանեն տեարք իւր. և ազատեսցին և ի տանէն ի բաց առաքեսցին, եղիցին։

**ՀԷ.** Եպիսկոպոս կամ երէց, կամ սարկաւագ զօրականեաց պարապել և զերկոսեան առնել կամեցեալ ունել ըզզհռոմայեցոց իշխանութիւն և զքահանայութիւն լուծանել պարտ է, քանզի զկայսեր կայսեր և զաստուծոյն աստուծոյ։

**ՀԸ.** Եթէ ոք թշնամանեսցէ զթագաւոր և զիշխան անիրաւաբար պատուհաս կրեսցէ, եթէ ժառանգաւոր իցէ լուծցի. իսկ եթէ ժողովրդական որոշեսցի։

**ՀԹ.** Եպիսկոպոս կամ երեց որ ճշմարտութեամբ ունիցի զմկրտութիւն և վերստին մկրտեսցէ զնա, կամ զպղծեալըն յամբարշտութեանց մկրտեսցէ, անկցի յեպիսկոպոսութե-

նէ, որպէս ծիծաղելով զխաչին և զմահուամբ Տեառն, և ոչ ընտրէ քահանայն սուտ քահանայացեալն։

**Ջ.** Եթէ ոք եպիսկոպոս, կամ երէց ըստ աստուծոյ բարբառոյն ոչ մկրտեսցէ ի հայր և յորդի և ի սուրբ հոգին, այլ յերիս հայրս և յերիս որդիս, և յերիս հոգիս անկցի ի քահանայութենէն։

**ՋԱ.** Եպիսկոպոս կամ երէց ոչ յերիս մկրտութիւնս միոյ սրբութեան կատարեսցէ. այլ ի մի մկրտութիւն որ ի մահն տեառն տուաւ, անկցի ի քահանայութենէն, քանզի ոչ ասաց մեզ տէր ի մահ իմ մկրտեցէք՝ այլ գնացէք աշակերտեցէք զնոսա. մկրտեցէք յանուն Հօր և Որդւոյ և Սրբոյ Հոգւոյն՝ բայց որ մկրտելոցն է ուսցի, եթէ Հայր ոչ խաչեցաւ, և ոչ ծնունդ կրեաց մարդոյ, և ոչ Հոգին սուրբ մարդ եղև, և ոչ չարչարանս կրեաց, քանզի ոչ մարմնացաւ, բայց Փրկիչն փրկեաց զաշխարհս ի վերայ հասեալ բարութիւն միածին որդին, վասն զի մարմնացաւ իւրով մարդասիրութեամբն ի կուսէն մարմին ստեղծեալ, քանզի իմաստութիւն շինեաց իւր տուն. որպէս արարիչ, քանզի խաչի համբերեաց և ապրեցոյց զաշխարհս յակնկալ բարութիւն՝ արդ՝ մկրտեմ յանուն Հօր, ոչ որպէս մարդ եղելոյ, կամ չարչարելոյ, և յանուն Որդւոյ որպէս կրեցելոյ զծնունդ, որպէս համբերելոյ խաչի, որպէս մեռելոց և յարուցելոց. և յանուն Հոգւոյն սրբոյ համագոյակտն Հօր և Որդւոյ։ Իսկ որ ոչ յայս մկրտեն որպէս ոչ գերելով զխորհուրդ բարեպաշտութեան անկցին ի քահանայութենէ։

**ՋԲ.** Որ զհայր ասէ չարչարեալ, անբարիշտ և ծանրագոյն քան զհրէայսն ընդ Քրիստոսի և զհայր բեւեռելով. իսկ որ զորդին ուրանայ զմիածինն վասն մեր մարմնացեալ և խաչի համբերեալ, աստուածամարդ և սրբոյն պատերազմող։ Իսկ որ զհոգին սուրբ հայր անուանէ, կամ որդի, տրգետ է և անմիտ է, քանզի որդին արարչակից հօր և աթոռակից. և օրէնսդրակից. և դատաւոր և յարութեան պատճառք. և Հոգին սուրբ համագոյական աստուածութիւն, վասն զի առ միօք սեմովն կախարդ զգայուեաւ ձգելով ժո-

ղովրդեանն մոլար և անհաստատ, և չար լինքն հոգի, և մի եռանուն գոլ լեզուանեցաւ զաստուած: Իսկ երբեմն զչարչարանսն քրիստոսի, և զծնունդն եհատ. արդ դուք ով տենչալիք ի մի հայր և յորդի. և ի սուրբ Հոգին, մկրտեցէք ըստ Տեառնն կամաց և ըստ մերոյ հոգւոյն հրամանի:

**ԶԴ**. Եպիսկոպոս ոք թէ իցէ գաւառաց բազմաց, և ունիցի իշխանութիւն ընդ ձեռամբ իւրով. մի յիշխեսցէ յայլոց իշխանութեանց առնուլ և զմիոյ եկեղեցին զարդարել, զի աչառութեամբ վարեցաւ. և անձին իւրում դատապարտուի այնպիսին թէ չհաւանեցի դառնալ յիրացն ի բաց լուծցի, և այն զորոյ առ, և շինեաց զայլոց եկեղեցին. մի կոչեսցին զանուն նորա իւրոց վարդապետս:

**ԶԴ**. Եպիսկոպոս դէտ լիցին գլխաւորք և հրամանատարք ի վրայ երիցանց եկեղեցոյն, որք են ի գեօղս և յագարակս զի երևեսցէ գլուխ և առաջնորդ ամենեցուն, զի ի ձեռն նորա խնդրեսցին ամենեքեան, քանզի և Սամուէլ այսպէս շրջէր ի տեղոջէ ի տեղի, և ոչ ինչ առնոյր ի տանէ պաշտօնէից նոցա և յընչից նոցա, և ոչ նոցա տրտմեցուցանէր զնոսա, այլ այց առնէր և կարգէր և հրաման տայր:

**ԶԵ**. Զայնոսիկ յաղագս կանոնաց ձեր հրամայեցաւ ի մէնջ. իբրև զեպիսկոպոսաց, իսկ դուք կացեալք մնացեալք ի նոսա ապրեսջիք, և զխաղաղութիւն կալջիք. իսկ անհաւանեալք ընդ տանջանաւք եղիցին. և պատերազմեալք ընդ միմեանս անվախճան կրեսցէք զպատուհաս, վասն ոչ լսելոյ ըստ արժանոյն վտանգեալք այժմ:

Ինչպէս յիշեցի № 740 ձեռագրի մէջ վերջին կանոնները տարբեր են միւսներից, նոյնպէս և թուահամարը:

740 ձեռագրում Բ. Առաքելական կանոնները վերջանում են Ձ. (80)-ում. ապա վեց տողի չափ տեղում սկսւում է հետակայ մի ինչ որ Մինաս վարդապետի յիշատակարան, որի վերջին տողերն են «Այս Ձ. գլուխս ոչ կայ յայլ աւրինակ»: Այս նկատողութիւնից յետոյ սկսւում է վեց գլխով կանոններ, որոնցից վերջինում յիշւում են յունա—սլաւոնա-

կան 85-րդ կանոնի կէսը գրքերի մասին, իսկ Նոր կտակարանի մասին ոչինչ չկայ։

Ահա այդ վեց կանոնները.

Այս վեց կանոնների թուահամարը շարունակութիւն չէ 85-ի, այլ շարունակութիւն նախկին թուահամարների։

**Ա.** Եպիսկոպոս ոք իցէ գաւառաց բազմաց, և ունիցի իշխանութիւն ընդ ձեռամբ իւրով, մի իշխեսցէ այլոց իշխանութեանց առնուլ և զմիոյ եկեղեցին զարդարել. զի աչառութեամբ վարեցաւ և անձին իւրում. ի դատապարտութիւն այնպիսին թէ չհաւանեսցի դառնալ յիրացն ի բաց լուծցի, և այն զորոց առն և շինեաց զեկեղեցին այլոց մի կոչեսցին զանուն նորա իւրոց վարդապետ։

**Բ.** Եպիսկոպոս ոք եթէ շինեսցէ գլխաւորք և հրամանատարք ի վերայ երիցանց եկեղեցոյն որ են ի գիւղս և յագարակս, զի երևեսցին գլուխ և առաջնորդ ամենեցուն և ի ձեռն նորա խնդրեսցին ամենեքեան քանզի և Սամուէլ այնպէս շրջէր տեղոջէ ի տեղի և ոչինչ առնոյր ի տանէ պաշտօնէից ընչից նոցայ և ոչ տրտմեցուցանէր զնոսա. այլ այց առնէր և կարգէր և հրաման տայր։

**Գ.** Եթէ առաջնորդ ոք իցէ մի իշխեսցէ տանց իւրոց պաշտօնակցացն իրս ինչ առնել եկեղեցւոյ, բայց կամօք և միաբանութեամբ արասցէ զինչ կամին և մի լինիցի տրտմութիւն ի միջի իւրեանց։

**Դ.** Քահանայ որ կապէ զոք տալապարտուց արժանն ընկալցի պատիժ պատուհասի ըստ արժանի. բայց զոր կապեցան ընկալցի զկապեալսն որպէս թէ իրաւի։

**Ե.** Եթէ ամբարտաւանք և հպարտք, ոխք և ոնապարծք, մի մերձին ի պաշտօն քահանայութեան, վասն այն թէ ամենայն ամբարտաւան ի մէջ մարդկան պիղծ է առաջի աստուծոյ և վասն նոցա է ասացեալ եթէ հատուցից զհատուցումն ամբարտաւանից։

Զ. Եղիցին ձեզ ամենեցուն եկեղեցականաց և աշխարհականաց պաշտել գիրք սուրբ հին և նոր կտակարանացն Մովսէսի· գիրք Ծննդոցն, Ելիցն, Ղևտականն, Թիւքն, Երկրորդ օրէնքն, Յեսու Նաւեա, Դատաւորքն, Հռութն, Թագաւորութեանցն, Դ. Մնացորդացն, Գիր, Բ. Եզրի բանքն, Բ. Յոբն, Ա. Սաղմոսաց գիրք, Ա. Սողոմոնի գիրք, Ա. Յեսայի, Երեմիայի, Եզեկիէլի, Դանիէլի, և արտաքուստ, պատգամաւորեսցի առ ի յուսուցանել զձեզ մանկունս յուսման· բազում սիրաքս լի իմաստութեամբ։



## 4) ԵՐԵՔ ՏԻԵԶԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐԸ.

Մեր եկեղեցական իրաւունքի ընդհանուր աղբիւրների չորրորդ բաժինը կազմում են երեք տիեզերական ժողովները։

Մինչև Դ. դարը եկեղեցին կառավարւում էր առաքելական աւանդութեամբ և եկեղեցու մէջ մտած սովորութեամբ։ Եկեղեցիների միութիւնը, կապը, միմեանց հետ ունեցած հաղորդակցութիւնը, պաշտպանութիւնը, կռիւը և դիմադրութիւնը կռապաշտութեան և հալածանքների դէմ լինում էր ուղղակի աւետարանի գծած ճանապարհով, այն է՝ բանադրանքով, եկեղեցուց հեռացնելով և միացած ուժերով դիմադրելով բռնի ուժերին։ Դ. դարում հանգամանքները փոխուեցին, երբ քրիստոնէութիւնը դարձաւ Հռոմէական կայսրութեան մէջ տիրապետող ույժ—կրօն, քաղաքացիութիւն ստացաւ, այն ժամանակ եկեղեցիները մարմնաւոր իշխանութեան աջակցութիւնը և պաշտպանութիւնը ստանալով, կարողացան ազատ կերպով կայսերական հրովարտակներով ընդհանուր ժողովներ կազմել, միութիւնը ամրացնել և ընդհանուր կանոններ սահմանել բոլոր եկեղեցրների համար։ Դ. դարում եկեղեցական կանոնների գործադրման օգնեցին քաղաքական օրէնքները, եկեղեցական կանոնները ստացան քաղաքացիական օրէնքի ույժ։ Կոստանդիանոսի, Թէոդոսի և Յուստինիանոսի ամենամօտիկ աջակցութիւնը և պաշտպանութիւնը՝ եկեղեցուն տուաւ արտաքին քաղաքացիական ույժ։ Որպէս զի ընդհանուր եկեղեցական և տեղական ժողովների, և սուրբ հարց կանոնները միանման և հետեւողական կարգով գործադրուին բոլոր քրիստոնեայ աշխարհներում, ուշադրութիւն դարձրին կազմելու ընդհանուր ժողովածուներ, նոր կանոններ մշակելիս՝ միշտ ի նկատի ունենալ հին՝ և նախկին ժողովների կարգադրութիւնները։

545 թուին Յուստինիանոս կայսրը 131 նովելլայով կարգադրեց որ 4 տիեզերական ժողովների կանոնները ունենան օրէնքների պարտաւորական ոյժ։ Յովհան Սխոլաստիկը 550-ին հրատարակած ժողովածուում, 131 նովելլայի հրատարակումից յետոյ, զետեղեց բացի այդ 4 տիեզ. ժողովները, և վեց մասնաւոր ժողովների կանոնները (Անկիւրիայի, Նէոյկեսարիայի, Սարդիկիայի, Գանգրի, Անտիոքի և Լաւոդիկի)։ Իսկ 692-ին ընդունեցին 6 տիեզերական ժողովները, 8 տեղական և 13 հայրերի կանոնները։ Մեր մէջ մինչև 440 թիւը արդէն թարգմանուած կային երեք տիեզերական ժողովների և առաքելական կանոնները և գործադրութեան մէջ էին։

---

## Ա) ՆԻԿԻԱՅԻ Ա. ՏԻԵԶԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎԻ ԿԱՆՈՆՆԵՐԸ (325 Թ.)։

Չորրորդ դարու սկզբին երևաց մի նոր աղանդ, որը բոլոր նախկին աղանդներից աւելի տարածուեց և խռովեց քրիստոնեայ աշխարհը։ Այդ աղանդի սկզբնաւորութիւնը եղաւ Արիոսի, մի եկեղեցականի միջոցով։

Արիոսը Լիբանանից էր, 300 թուին Մելիտոսի հերձուածողական խմբում մասնակցելուց իբր դադարելով, դիմեց Աղէքսանդրիայի Պետրոս եպիսկոպոսին զղջմամբ, խնդրելով ներել և ընդունել հաւատացեալների կարգում։ Պետրոս եպիսկոպոսի ուշը գրաւեց Արիոսի մտաւոր ընդունակութիւնները և ընդարձակ տեղեկութիւններ ունենալը, ընդունեց նրան և սարկաւագ ձեռնադրեց։ Բայց երբ իմացաւ Պետրոս եպիսկոպոսը, որ Արիոսը էլի ծածուկ յարաբերութիւն ունի Մելիտոսականների հետ, բանադրեց նրան հեռացնելով եկեղեցուց (Սոզոմէն)։ Պետրոս եպիսկոպոսի յաջորդ Աքիլլեց Արիոսը յաջողեցրեց առ երեսս զղջմամբ բանադրանքից ազատուել և մինչև իսկ քահանայ ձեռնադրուել։ Աքիլլի մահից յետոյ կղերը և ժողովուրդը 313-ին փոխանակ Արիոսին ընտրելու, որ շատ էր փափագում, ընտրեց Աղէքսանդր

քահանային եպիսկոպոս։ Դրանից յետոյ սկսւում է Աղէքսանդրի և Արիոսի մէջ անձնական գժտութիւն, որ փոխւում է կամաց կամաց միմեանց մեղադրելուն՝ ժողովրդին աղանդական մտքեր քարոզելուն մէջ։ Արիոսը մեղադրեց Աղէքսանդրին Սաբելլեան աղանդաւորների մտքեր քարոզելուն մէջ և սկսեց կղերի ներկայութեամբ վիճել եպիսկոպոսի հետ ցոյց տալու իբր թէ հակառակորդի սխալ դատողութիւնները։ Լինելով խելօք, լաւ խօսող, նրբամիտ խօսքերով իւր յետին մտքերը առաջ տանող, նա կարողացաւ վէճերի ժամանակ յաղթող երևալ և կուսակիցներ գտնել, իւր քարոզներով կարողացաւ գրաւել 70 կոյսերի, 12 սարկաւագների և 7 քահանայի ու մի քանի եպիսկոպոսի (Եպիփան)։ Նրա քարոզած մտքերը շուտով տարածուեցին Եգիպտոսում, Լիբանանում, Վերին Թիբայէդում (Սոկրատ)։ Աղէքսանդր եպիսկոպոսը տեսնելով ապագայի վտանգը, ժողով գումարեց 100 եպիսկոպոսից բաղկացած և 320-ին քննեց հերետիկոսների քարոզած մտքերը և նզովեց նրանց և արտաքսեց Աղէքսանդրիայից (Սոկրատ, Սոզոմէն)։ Արիոսը դիմեց Նեկոմիդիայի եպիսկոպոս Եւսեբիոսին, ցոյց տալով որ Աղէքսանդրը անարդարացի կերպով իրան հալածում է, խնդրեց նրա հովանաւորութիւնը և տեղափոխուեց Պաղեստին, ուր մեծ յաջողութեամբ սկսեց քարոզել իւր մտքերը։ Աղէքսանդրը շրջաբերականով յայտնեց Արիոսի աղանդի և նրա բանադրուած լինելու մասին, որ հաւատացեալները չդայթակղուեն։ Արիոսը իւր կողմնակից եպիսկոպոսների հետ դիմեցին Աղէքսանդրին, որ ների Արիոսին, ի միջի այլոց Արիոսը արդարանում էր ասելով, որ ինքն նոր ոչինչ չի քարոզում, այլ այն՝ ինչ որ լսել է հէնց Աղէքսանդր եպիսկոպոսից։ Բայց Աղէքսանդրը ուշ չդարձրեց դրանց միջնորդութեան վրայ և նզովքը չվերցրեց։ Արիոսի կողմնակիցները Բիւթանիայում ժողով արին, արդարացրին Արիոսին, բանադրանքը վերցրին և ուղղափառ հրատարակեցին։ Աղէքսանդրը սարսափելի կերպով վշտանալով հայրերի այդ արածի վրայ, շտապեց յայտնել Կոստանդին մեծին, որը Լիկիանոսին յաղթելուց յետոյ

գտնուում էր Նիկոմիդիայում, որ այդ աղանդի առաջն առնի։ Կոստանդին կայսրը շատ վշտացաւ եկեղեցում այդպիսի խռովութիւն սկսուելուն համար Աֆրիկայի—Մելիտոսի աղմուկներից յետոյ, նամակ գրեց Աղէքսանդրին և Արիոսին, որ երկուսն էլ հաշտուեն և գործին վերջ տան։ Կայսրը տեսաւ որ նամակը ոչ մի արդիւնքի չհասցրեց, մի եպիսկոպոս ուղարկեց գործը քննելու և վերջ դնելու վէճին։ Այս եպիսկոպոսի արած ժողովը այդ մասին ոչ մի արդիւնքի չհասցրեց, վէճը աւելի ևս սաստկացրեց։ Այդ ժամանակ զատիկը տօնելու հարցը մէջ ընկաւ, տեղիք տուաւ աւելի ևս վիճաբանութիւնների և կռիւների։ Բացի դրանից, Մելիտոսը, Թեբայիտի եպիսկոպոսը, որը կուռքերին զոհ անելու համար կարգալոյծ էր եղած և ապա բռնի ուժով էլի եպիսկոպոս եղած, Աղէքսանդրիայի եպիսկոպոսին չէր հնազանդւում, անկարգութիւն էր անում, նա իւր կողմնակիցներով անցաւ Արիոսի կողմը։

Այս բոլորը ի նկատի առնելով՝ ուղղափառ եպիսկոպոսները խնդրեցին կայսեր, որ ընդհանուր ժողով անի, կանչի բոլոր եկեղեցիների եպիսկոպոսներին խնդիրը քննելու և կարգ կանոն մտցնելու։ Կայսրը սիրով ընդունեց, հրամայեց հրաւիրագրեր ուղարկել բոլոր յայտնի աշխարհների եպիսկոպոսներին և կանչել Նիկիա, Բիւթանիայի քաղաքը, ամենայարմարը Եւրոպայի, Ասիայի և Աֆրիկայի եպիսկոպոսների ժողովելու դիւրութեան համար, պատուիրելով ճանապարհին բոլոր յարմարութիւնները տրուին ժողովականներին և Նիկիայում բնակարաններ յատկացուին։ 325-ին ժողովուեցին 318 հայրապետ, որոնց մէջ էր և մեր Լուսաւորչի որդին Արիստակէսը։ Ժողովը կայացաւ կայսրի և ապա պատգամաւորի ներկայութեամբ, քննեց Արիոսի աղանդը, որը ասում էր Որդին հաւասար չէ Հօր և ոչ Հօր էութիւնից և բնութիւնից է և ոչ էլ ծնուած Հօրից յաւիտենից առաջ, այլ՝ դաւանում էր նա, օտարէ և արարած և կրտսեր և ժամանակից յետոյ առաջացած։ Ժողովը դատապարտեց Արիոսին, նրա կուսակից 20 ժողովական եպիսկոպոսներին և բո-

լոր կողմնակիցներին, սահմանեց 20 կանոն և կազմեց Հաւատոյ Հանգանակը «Հաւատամք ի մի Աստուած»։

Նիկիայի 20 կանոնները կան և մեր բոլոր ձեռագրերում. ձեռագրերի 20 կանոնները ընդհանուր առմամբ համապատասխան են յունա—սլաւոնական 20 կանոններին հետևեալ տարբերութեամբ։ Ձեռագրերում 2-րդ կանոնը երկարացրած է և երկուսի վերածած և երկրորդ մասը 3-րդ կանոնի փոխարէն դրուած. իսկ իսկական 9-րդ կանոնը հարճ պահելու վերաբերմամբ բոլորովին այլանդակուած է և ուրիշ կանոն դարձած կամ աւելի պարզ ասած դուրս է ձգուած։ 15 և 16 կանոնները մերոնց մէջ՝ արտաքուստ միմեանց նման լինելուն պատճառով համարուած է մի կանոն, և 16-դը վերցուած է։ Թէ թարգմանիչը կամ յետոյ գրողը որքան տգէտ է եղել և անգրագէտ, կարելի է տեսնել կոպիտ սխալներից, կցկտուր նախադասութիւններից ու դարձուածներից, որոնք բոլորովին փոխել են բնագիրը. եթէ չունենայինք օտար բնագիր, անկարելի կլինէր մեր ձեռագրերի գրաբարը հասկանալ և ճշտութեամբ թարգմանել։ Ապացոյց որ գրողները աղաւաղել են, այդ կարելի է փաստօր կերպով տեսնել Բ—Նիկիական կոչուած 114 կանոնների մէջ, որոնք կոչւում են Նիկիականի կրճատուածը և ահա այդ կրճատուածի սկզբի 20 կանոնները ճշտութեամբ բովանդակում են Նիկիական 20 իսկական կանոնները և նըման չեն Հայոց ձեռագրերի մէջ եղած 20-ին։ Զարմանալի է որ Հայոց ձեռագրերի մէջ Նիկիային յատկացրած 20 կանոնները աղաւաղուած են, իսկ նոյն ձեռագրերում նոյն կանոններից յետոյ դրուած Բ—Նիկիական կոչուած կանոնների մէջ ճիշտ են առանց աղաւաղութեան. միակ պատճառը կարող եմ համարել այն, որ կրճատները հեշտութեամբ է թարգմանուել և ուրեմն բնագրի նման է դուրս եկել, իսկ իսկականները երկար են եղել, թարգմանիչը յունարէն լաւ չի իմացել և սխալ ու կցկտուր է թարգմանել. այս բանիս շատ փաստեր կարելի է գտնել մեր կանոնագրքերում։ Օրինակի համար ցինիկ բառը որ շնական պիտի թարգմանել,

բոլոր ձեռագրերում գրուած է շինական, միայն մի ձեռագրի մէջ գրուած է «շ նական», խեղճ գրողը վախեցել է շ-ի և ն-ի մէջ ի-դնել, տեղը թողել է բաց։

Փաստեր շատ կարող եմ բերել, բայց խոյս եմ տալիս անտեղի կերպով երկարաբանութիւն անելուց և շատախօսութիւնից։ Այս բոլորը բերում են այն համոզման, որ ոչ մի միտք չունի մեր կանոնագրքերի բառացի արտատպութիւնը կամ թարգմանութիւնը, մենք կստանանք մի խաօս, որտեղից դուրս գալու հնար չենք ունենալ։ Միակ ճանապարհն է օտար աղբիւրների համեմատութեամբ պարզաբանելը։—

1. *Ով հիւանդութեան ժամանակ բժիշկների միջոցով զրկուել է անդամներից կամ թէ բարբարոսներից է ներքինի դարձել, այդպիսին կարող է մնալ հոգևորականութեան մէջ։ Եթէ, առողջ լինելով, ինքն իրան ներքինի է դարձրել, այդպիսի անձին, թէկուզ լինի կղերի անդամ, պէտք է արձակել և այդպիսիներից ոչ ոքին չընդունել եկեղեցական դասի մէջ։*

Մեր ձեռագրերում այդ նոյն կանոնին կցած է և պատիժ այն անձանց, որոնք կամաւոր կերպով իրանց ներքինիացնում են. 1) որ 7 տարի եկեղեցուց դուրս կանգնեն և միայն պաշտամունքի ձայն լսեն, 2) որ դռան մօտ դրսում ապաշխարողների հետ կանգնեն և ձեռք դնելով թողութիւն ստանան, 3) 3 տարի էլ ներսում ապաշխարեն, բայց պաշտօնէից կարգը չմտնեն. եթէ մեռնելու լինին, հաղորդութիւն տան, եթէ առողջացան, էլի շարունակեն ապաշխարանքը։

Այս կանոնը կրկնում է այն՝ ինչ որ պատուիրում էին Բ. առաքելական 21, 22, 23, 24 կանոնները։ Եւսեբիոս և Սոկրատ վկայում են, որ այդ կանոնները ուղղուած են այն աղանդաւորների դէմ, որոնք առանձին քաջագործութիւն էին համարում 'ի սէր Քրիստոսի գայթակղութիւնից հեռու

մնալու համար իրանց ներքինիացնել։ Այս մասին խօսում է և Յուստինիանոսի 142 նովելլան։

2. Կարիքից կամ մարդկանց թելադրութիւններից ստիպուած շատ բան է կատարւում եկեղեցական կանոնի հակառակ, կռապաշտութիւնից նոր դարձածներին, որոնք կարճ ժամանակ միայն նախապատրաստութեան մէջ են եղած, շուտով հոգևոր աւազանին են մօտեցնում և իսկոյն մկրտութիւնից յետոյ եպիսկոպոս են կարգում կամ երէց. բարի համարուեց այդ բանը արգելել սրանից յետոյ։ Պատրաստողին էլ ժամանակ պիտի տալ՝ որ մկրտութիւնից յետոյ փորձի ենթարկուի։

Շատ պարզ է առաքելական խօսքը, որ ասում է. «Մի մատաղատունկ, զի մի հպարտացեալ՝ ի դատաստան սատանայի անկանիցի» (Տիմ. Ա. Գ. 6)։ Եթէ որոշ ժամանակում մէկը հոգեկան մեղքի մէջ կընկնի և կհաստատուի երկու երեք վկայի խօսքով, այդպիսին կղերից կարձակուի։ Իսկ սրա հակառակ գնացողը, իբրև մեծ ժողովի վճռի դէմ ըմբոստացող, կղերից արձակուելու վտանգին կենթարկուի։

Տես-Բ-առ—80, 74, 75։

3. Մեծ ժողովը առանց բացառութեան սահմանեց, որ ոչ եպիսկոպոսը, ոչ երէցը, ոչ սարկաւագը և ոչ կղերից որ և է մէկը իրաւունք չունենայ կին պահել տանը բացի մօրից, քրոջից, կամ մօրաքրոջից, կամ այն անձինքներից, որոնք հեռու են ամեն մի կասկածանքից։

Ոմանք ասում են, որ կենակցուհի պիտի հասկանալ այն կինը, որ բռնում է իսկական ամուսնու տեղը և անառակաբար ապրում է ուրիշի հետ։ Ուրիշները ասում են, որ կենակցուհին այն կինն է, որ ապրում է մէկի մօտ, բայց բոլորովին հեռու կասկածանքից՝ օտարի պէս. օրինակ են բերում Բարսեղ մեծի թուղթը Գրիգոր քահանային գրած, որ սա արձակէ իւր կենակցուհուն, որի մասին դժուար էր

կասկածել թէ և, մանաւանդ որ քահանան 70 տարեկան էր։ (Правила св. апос. св. от... съ толк. 13)։

Այս ժողովում շատերը առաջարկեցին անարատ կեանք վարելու համար սահմանել կուսակրօնութիւնը, բայց եգիպտացի ս. Պափնուտիոսը, որը շատ մեծ յարգ էր վայելում բոլորից իբրև կուսակրօն անձը և օրինակելի հոգևորական, խիստ կերպով պաշտպանեց ամուսնութիւնը՝ ապացուցանելով Պօղոս առաքեալի խօսքի հիման վրայ, որ ամենայն մարդ իւր կազմուածքով չի կարող այդ կեանքը վարել և համոզեց ժողովին կուսակրօնութիւնը պարտաւորական չանել։ Ժողովը համաձայնեց և ընդունեց նրա առաջարկութիւնը։ Նոյն բանի մասին խօսում է և Յուստինիանոսի 123 նովելլան։

3-րդ կանոնս չկայ հայոց ձեռագրերում, սրա փոխարէն դրուած է 2-րդ-ի կէսը ճռռոմաբանած. ահա այդ աղաւաղուած կանոնը «վասն այնոցիկ որ մատաղաբեայքն իցեն, և մտաւք խակք, ուսմամբ տխմարք, կարգաց տգէտք, յաւրինաց անտեղեակք, խաւսիւք յահուր, գնացիւք սայթաք, և գինէմոլք. վաղվաղակի ոչ մերձեցուցանել զնոսա ի սարկաւագութիւն. կամ եղև սուրբ ժողովոյն, այլ թէ աւտար աշխարհիք ոք իցէ այլոց վիճակէ կամ այլոց գաւառէ. ոչ ընդունուցեալք և ոչ ուսուցեալ, զայնպիսին յաւծումն մի մերձեցուսցես ըստ առաքելոյն որ ասէ. ձեռս վաղվաղակի ուրուք վերայ մի դնիցես և մի կցորդ լինիցիս մեղաց յաւտարաց»։

Ապացոյց որ սա աղաւաղումն է իսկականի, այդ երևում է Երկրորդ Նիկիական կրճատ կանոնների 3-րդ-ից, որ ասում է «Ոչ է պարտ որոց ի վիճակաւորութեան են ի ներքսածական ունել կանայս. բայց ի հանոյ, և ի մաւրէ և ի քեռէ». Նման իսկական 3-րդ կանոնին։—

4. Աւելի վայելուչ է որ աշխարհի բոլոր եպիսկոպոսների համաձայնութեամբ առաջնորդ—եպիսկոպոս նշանակուի։ Եթէ ճանապարհների հեռաւորութեան և այլ պատճառներով բոլոր

եպիսկոպոսները չկարողանան ժողովուել, գոնէ երեք հոգի պիտի հաւաքուեն, իսկ մնացածները իրենց համաձայնութիւնը թղթով պիտի ուղարկեն, և ապա ձեռնադրութիւն կատարեն։ Ամեն մի աշխարհում այդպիսի գործողութեան հաստատութիւնը պատկանում է աշխարհի միտրոպոլիտին (կաթուղիկոսին)։

Այս կանոնը սահմանուեց առհասարակ եպիսկոպոսների ինքնակամութեան առաջն առնելու համար. առիթը տուաւ Թիբայիդի Մելիտոս եպիսկոպոսը, որը եպիսկոպոսներ էր ձեռնադրում առանց խորհրդի և գլխաւոր եպիսկոպոսի համաձայնութեան։ Այս եպիսկոպոսը հալածանքների ժամանակ զոհ արաւ և ըմբոստացաւ Աղէքսանդրիայի եպիսկոպոսի դէմ և ապաշխարանքի ենթարկուեց վերջինիս կողմից ժողովի միջոցով։ Նա չհնազանդեց, կուսակցութիւն կազմեց և իւր կողմնակիցներին եպիսկոպոս ձեռնադրեց։

Այստեղ թէ և չի ասուած եպիսկոպոսի ընտրութեան մէջ ժողովրդի մասնակցութեան մասին որ և է խօսք, բայց ժողովը զանց չի արել յիշելու այդ մասին իւր շրջաբերական թղթում գրուած Եգիպտոսի և Լիվիայի (Լիբանանի) եկեղեցիներին. «Եպիսկոպոսներից որ և է մէկի մահից յետոյ, նրա տեղը կարող է ընտրուել և նորադարձը, եթէ միայն այդ բանին արժանի կլինի և ժողովրդից ընտրուած՝ գլխաւոր եպիսկոպոսի համաձայնութեամբ և հաստատութեամբ», (Սոկրատ)։ Ս. Կղեմը ասում է. «Եպիսկոպոսները կարգուել են առաքեալների ձեռքով և նրանցից յետոյ՝ ուրիշ արժանայիշատակ անձինքներից և ամբողջ եկեղեցու համաձայնութեամբ» (տես Опытъ. ц. з. Іоанна. 291-292 եր)։ Նոյն տեսակ կարգ ժողովրդի ընտրութեան համար սահմանում են և Առ. կարգադրութիւնները։ Ս. Կիպրիանը ասում է «Պէտքէ խստութեամբ պահպանել առաքելական աւանդութիւնը և հրահանգը, որպէս զի եպիսկոպոսի օրինական կարգման համար հաւաքուին այն ժողովրդի մօտ, որի վրայ պիտի եպիսկոպոս նշանակեն, բոլոր մերձակայ եպիսկոպոսները և ընտրութիւնը կատարեն ժողովրդի ներկայութեամբ,

որը լաւ կարող է իմանալ ընտրուածի կեանքը և դիտել իւրաքանչիւրի վարք ու բարքը։ Եւ ամեն տեղ այսպէս է ասում, որպէս զի եպիսկոպոս կարգուին բոլոր հօտի ընդհանուր համաձայնութեամբ և եպիսկոպոսների որոշմամբ, թէ ներկայ և թէ բացակաների, որոնք վկայաթուղթ են ուղարկում։ Որովհետև ժողովրդի ներկայութեամբ կարող են բացուել արատաւոր մարդկանց յանցանքները և բարի մարդկանց ծառայութիւնները, և այդպիսով միայն ընտրութեան միջոցով կարելի է արդարացի վարուել, որը կայանում է ընդհանուր ձայնով և բոլորի դատողութեամբ (տես Опытъ ц. зак. 292 եր.), Յունաց մեկնիչների Զօնարայի, Արիստինի և Վալսամոնի կարծիքով—«հներում եպիսկոպոս ընտրում էր քաղաքացիների ժողովը» և ապա յայտնում էին միտրոպոլիտին։ Նոյնը հաստատում է և Բ-Առ-34 կանոնը։ Այսպէս ժողովրդի միաձայն ցանկութեամբ ընտրուեց Աթանասը Աղեքսանդրիայում, Ամբրոսիոսը Միտիլանում։ Այսպէս կատարւում են մինչև այսօր մեր կաթողիկոսների, պատրիարքների ընտրութիւնները, իսկ Տաճկահայաստանում նաև եպիսկոպոս—առաջնորդների։

5. Նրանք՝ հոգևորական թէ աշխարհական, որոնց եպիսկոպոսը իւր թեմում մերժել է եկեղեցուց, պիտի պահեն այն կանոնն, որը սահմանել է՝ որ բանադրուածները ուրիշ անձինքներից արձակումն չստանան։ Միայն պիտի քննել, թէ փոքրոգութեան, վէճի, կամ մի որ և է այդպիսի անբաւականութեան համար չէ՞ արդեօք եպիսկոպոսը բանադրել։ Եւ այսպէս, որպէս զի դրա նման գործերի համար կատարուի վայելուչ քննութիւն, բարի համարուեց սահմանել, որ ամեն աշխարհում տարին երկու անգամ ժողով լինի, որպէս զի աշխարհի բոլոր եպիսկոպոսները միատեղ ժողովուին, քննեն այդպիսի թիւրիմացութիւնները և այդ միջոցով եպիսկոպոսի դէմ յանցաւոր գտնուածները՝ բոլորի կողմից համարուեն եկեղեցուց հեռացրած այնքան ժամանակ, որքան բաւարար կհամարի ժողովը և կմեղմացնի վճիռը։ Ժողովներից առաջինը լինի քառասնորդականից առաջ, որ ամեն անբաւականութիւնից յետոյ մաքուր ընծայ բերուի Աստուծուն, երկրորդը աշնան ժամանակներում։

Հայոց ձեռագրերում գրուած է «երիս ժողովս տրասցեն». որը սխալ է, որովհետեւ այս կանոնս ի նկատի է ունեցել Բ-առաքելական 37 կանոնը, որը պատուիրում է 2 անգամ ժողով անել: Բանադրանքի համար տես և Բ. առաք. 32 կ. տես և Անտ. 20 կ.:

6. Թող պահպանուին հին սովորութիւնները, որոնք ընդունուած էին Եգիպտոսում և Լիբանանում, և Պենտապոլում, որ Աղէքսանդրիայի եպիսկոպոսը իշխանութիւն ունենայ բոլորի վրայ: Նոյնպիսի սովորութիւն կար և Հռոմի եպիսկոպոսի վերաբերմամբ: Նոյնպէս և Անտիոքում և ուրիշ աշխարհներում թող պահպանուին եկեղեցիների առաւելութիւնները: Թող յայտնի լինի այս, որ եթէ մէկը, առանց միտրոպոլիտի թոյլտուութեան, եպիսկոպոս կարգուի, այդպիսիների համար մեծ ժողովը որոշեց, որ նա եպիսկոպոս չլինի (չհամարուի): Իսկ եթէ ընդհանուր ընտրութիւնը կլինի յաջող և եկեղեցական կանոնների համաձայն, բայց երեքը կամ երկուսը վիճասիրութեան պատճառով կհակաճառեն նրան, այն ժամանակ ընտրողների ձայների մեծամասնութեամբ գործը կվճռուի:

Գլխաւոր եպիսկոպոսի վերաբերմամբ դեռ ևս որոշում կար Բ. Առ. 34 կանոնում, նոյնը հաստատւում է այստեղ անուն անուն յիշատակելով: 1) Աղէքսանդրիա, որի սահմանըն է Եգիպ. Լիբ. և Պենտօպոլիս: 2) Անտիոք, որի մէջ մտնում է Ասորիք, Կելեսիրիա, Միջագետք և երկու Կիլիկիա: 3) Հռոմ, որին ենթարկւում էին Իտալիայի եկեղեցիները: 4) Մեր եկեղեցին առաջի անկախութիւնը ձեռք բերեց Լուսաւորչից սկսած, և բոլորովին բաժանուեց Արշակ Բ-ի օրով: Կային և ուրիշ աշխարհներ, որոնք առանձին անկախ միտրոպոլիտութիւններ էին կազմում: Այս կանոնը Հռոմէական կանոններում տարբեր խմբագրութեամբ է գրուած՝ յօգուտ Հռոմի: Սրանց տարբեր խմբագրութիւնը բացուեց 418-ին Զօսիմա պապի ժամանակ Կարթագենի ժողովի մէջ մի կարգալոյծ քահանայի խնդրի պատճառով, որը Աֆրիկայի եպիսկոպոսների վճռի դէմ բողոքել էր պապին: Հռոմի լեգատ-

ները պնդում էին որ Նիկիայի կանոնիս հիման վրայ Աֆրիկայի վէճերը պէտի քննեն պապերը. երբ բերել տուին Աղէք. Անտիոքի և Պօլսոյ ձեռագիր Նիկիայի կանոնները, այդպիսի բան չգտան. դուրս եկաւ որ Հռոմի կղերականները Սարդիկիայի յօգուտ պապի գրած կանոնները մուծել են Նիկիայի կանոնի մէջ։

7. Թող հաստատուի հին սովորութիւնը և աւանդութիւնը, որ Ելիայի եպիսկոպոսը յարգանք ունենայ, որ այն պատիւը ունենայ, որը կապուած է միտրոպոլիտին յատկացրած արժանաւորութիւնների հետ։

Ելիան Երուսաղէմն է, որ ի պատիւ Ելիա Անդրիան կայսեր նոր անունով վերակոչուեց Հին Երուսաղէմի փոխարէն։ Երուսաղէմի եպիսկոպոսին յատկացնում է միտրոպոլիտ պատիւ, բայց ոչ իշխանութիւն, նա իշխանութեամբ ենթարկւում էր Կեսարիայի միտրոպոլտին (տես Եւսեբիոս Բ. 12, 16. Դ, 12)։

123 Նովելլայում Երուսաղէմի միտրոպոլիտը պատրիարք է համարւում։

8. Մի ժամանակ իրանց մաքուր համարողների մասին, որոնք անջատ էին առաքելական և ընդհանրական եկեղեցուց բարի է համարում սուրբ և մեծ ժողովը, նրանց վրայ ձեռք դնելով, թոյլ տալ մնալ կղերի մէջ։ Ամենից առաջ նրանք պէտի խոստովանեն գրաւոր կերպով, թէ միանում են և խոստանում են հետևել առաքելական և ընդհանրական եկեղեցու որոշումներին, այսինքն եկեղեցական հաղորդակցութեան մէջ կլինեն թէ երկկին մարդկանց և թէ հալածանքների ժամանակ հաւատուրացների հետ, որոնց համար թէ ապաշխարանք և թէ ներման ժամանակ է նշանակած։ Պէտք է որ նրանք ամեն բանում հետևեն առաքելական եկեղեցու որոշումներին։ Եւ այսպէս թէ գիւղերում և թէ քաղաքներում եթէ նրանց ձեռնադրուածներից կպատահեն անձինք, որոնք կմիանան մեր եկեղեցու հետ, նրանք կմնան իրանց կարգի մէջ։ Եթէ դրանց մէջ կլինին մեր

եկեղեցու հետ միացող եպիսկոպոսներ, և նոյն տեղում կգտնուի ուղղափառ եպիսկոպոս, հարկաւ ուղղափառ եպիսկոպոսը կմնայ իւր բոլոր իրաւունքներով և սրանից կախուած կլինի նորադարձ եպիսկոպոսներին ընդունել եպիսկոպոսական պատուով. եթէ ուղղափառ եպիսկոպոսին ցանկալի չէ, կնշանակի նրանց քորեպիսկոպոս կամ քահանայ, երկու եպիսկոպոս մի քաղաքում չպիտի լինին։

Մաքուր իրանց անուանում էին Հռոմի քահանայ Նովատի՝ որին եղբայրատեաց լինելուն համար Հռոմի ժողովը Կորնիլիոս պապի ժամանակ բանադրեց և նզովքի ենթարկեց, հետևողները, որոնք պահանջում էին շատ խիստ մաքրակրօնութիւն, վարքի անարատութիւն. այդ հիմքով երկկանանց բոլորովին կտրում էին եկեղեցու հաղորդակցութիւնից. հալածանքների ժամանակ հաւատուրացներին թոյլ չէին տալիս ապաշխարելու, պահանջելով որ նրանք մարդկային բռնութիւնից չուրանան հաւատը, (Եւսեբիոս)։

9. Եթէ ոմանք առանց փորձի ենթարկուելու երէց դարձան, կամ փորձման ժամանակ մեղքերը խոստովանեցին, բայց խոստովանութիւնից յետոյ էլի հակառակ գնացին կանոններին, այդպիսիներին կանոնը արգելում է քահանայագործութիւն անել. որովհետև ուղղափառ եկեղեցին պահանջում է անշուշտ անարատութիւն։ (Տիմ. Գ. 2)։

Տես Բ. Առ.—25. կ.

10. Եթէ ուրացողներից ոմանք՝ անգիտութեամբ կամ հէնց կարգողների գիտութեամբ հոգևորականութեան մէջ են մտել, նրանք չեն կարող եկեղեցական համարուել կանոնի համաձայն, որովհետև դրանք քննութիւնից յետոյ զրկւում են սրբազան կարգից։

Մեր ձեռագրերում աւելի որոշ է գրուած այս կանոնը. «Եպիսկոպոսի չգիտենալովը կամ կաշառատւութեամբ եթէ անարժան անձինք օծումն կստանան, և յետոյ կքացուի այդ

յանցանքը և կիմացուի ձեռնադրուողի անարժանութիւնը, մեծ ժողովը որոշեց կարգալոյծ անել դրան և պատժի ենթարկել ձեռնադրել տուողներին եպիսկոպոսի կամքի հմաձայն»:

11. Որոնք ուրացել են հաւատը ոչ ստիպմամբ, կամ կալուածքի յափշտակումից վախենալով, կամ վտանգի և այլ պատահարների պատճառով, որ պատահում էր Լիկինիոսի ժամանակ, ժողովը որոշեց դէպի այդպիսիները ողորմած լինել, թէ և արժանի չեն: Որոնք անկեղծօրէն կզղջան, նրանք երեք տարի ունկնդիրների հետ կկանգնեն իբրև հաւատացեալ, 7 տարի եկեղեցում «ընդ ձեռամբ» կապաշխարեն և երկու տարի էլ ժողովրդի հետ կաղօթեն առանց հաղորդուելու:

Լիկինոսը Իտալիայի կառավարիչն էր Կոստանդիանոսի ժամանակ, յետոյ կայսր դարձաւ և խիստ հալածանք սկսեց քրիստոնեաների դէմ (Եւսեբիոս): Ապաշխարողներից ունկնդիրները նրանք էին՝ որոնք միայն ընթերցումները իրաւունք ունէին լսելու՝ առանց հաւատացեալների աղօթքին և հաղորդութեան մասնակցելու: «Ընդ ձեռամբ» նրանք էին որոնք կանգնում էին ամբիոնի ետևի մասում, երեսի վրայ ընկած ներողութիւն էին խնդրում, եպիսկոպոսը կամ քահանան ձեռքերը դնում էին գլխին և թողութիւն տալիս մեղքերին:

12. Նրանք որոնք անկեղծօրէն հաւատքը կդաւանեն, ջերմեռանդութիւն ցոյց կտան և զինուորական գօտին դէն կըձգեն, բայց յետոյ ինչպէս շներ իրանց փսխածին կդառնան, արծաթ և պարգևներ կաշառ տալով կհասնեն զինուորական պատուի, այդպիսիները 10 տարի եկեղեցում կապաշխարեն ընդ ձեռամբ ներողութիւն խնդրելով, և 3 տարի ունկնդիր լինելով դաւթում: Ապաշխարելիս ի նկատի պիտի առնել տրամադրութիւնը և զղջման պատրաստականութիւնը: Որոնք երկիւղով, լացով, համբերութեամբ, բարեգործութեամբ և գործով կզղջան և ոչ արտաքուստ, դրանք որոշեալ ժամանակը լրանա-

լուց յետոյ, կընդունուեն աղօթողների մէջ։ Եպիսկոպոսը իրաւունք ունի դիջողաբար վարուելու։ Իսկ որոնք անտարբերութեամբ կապաշխարեն, նրանք որոշած ժամանակը ապաշխարանքը կըկրեն։

Այս կանոնս գլխաւորապէս գրուած է Լիկիանոսի զօրքերի համար. քրիստոնեայ զօրքերը դուրս էին գալիս Լիկիանոսի զօրքից նրա անգութ հալածանքների մէջ չմասնակցելու համար, բայց յետոյ զղջում էին և աճառգին կաշառներ տալով նորից մտնում էին նրա զօրքի մէջ։

Այս կանոնը և նախընթացը մեր ձեռագրերում թէ և նոյն բովանդակութիւնն ունին, բայց աւելումներ շատ ունին և բաւական փոխում են արտաքին ձևը։

13. Մահամերձների վերաբերմամբ թող պահպանուին հին կանոնը և օրէնքը, որ մեռնողը չզրկուի վերջին ամենակարևոր ուղեկցութիւնից։ Եթէ հաղորդութիւնից յետոյ կառողջանայ, թող մասնակցի միայն աղօթողների հետ եկեղեցու դռան մօտ։ Ընդհանրապէս մեռնողներին, ով կուզի լինի, հաղորդութիւն խնդրողներին, եպիսկոպոսի կողմից փորձի ենթարկելուց յետոյ թող հաղուրդութիւն տրուին։

Մեր ձեռագրերում նոյն բանն է ասւում, միայն մի քիչ երկարացրած և պատիժների տեսակը որոշած.

14. Ձմկրտուածների (երախաների) և ուրացողների համար սուրբ և մեծ ժողովը որոշեց երեք տարի ունկնդիրների հետ լսեն ս. գիրքը և ապա աղօթեն պատրաստուողների (մըկրտութեան) հետ։

Պատրաստուող կոչւում էին այն նորադարձ քրիստոնեաները, որոնք եկեղեցում կամ ուսումնարաններում պատրաստւում էին քրիստոնէական կրօնի վարդապետութեան մէջ և ապա մկրտւում։ Բոլորովին նորերը Առաջի կարգն էին կազ-

մում, իսկ երկու երեք տարի պատրաստուողները Բ-կարգը։ Երկուսն էլ ընդհանուր աղօթքին և հաղորդութեան մասնակցելու իրաւունք չունէին։ Տե՛ս. Նէո-5. կ.։

15. Շատ խռովութիւնների և խառնակութիւնների պատճառով բարի համարուեց արգելել այն սովորութիւնը, որ հակառակ առաքելական կանոնին մի քանի տեղերում գործադրւում է, որ քաղաքից քաղաք չտեղափոխուեն ոչ եպիսկոպոս, ոչ երէց, ոչ սարկաւագ։ Ով հակառակ այս կանոնի կընթանայ և կկարգադրի, նրա կարգադրութիւնը կլինի անվաւեր և տեղափոխուողը յետ կբերուի այն եկեղեցին, որտեղ ձեռնադրուած է։

Տես Բ. Առ. 14, 15: 16։

16. Քահանաներից, սարկաւագներից կամ ժառանգաւորներից նրանք, որոնք չուտափոյթ Աստուծոյ երկիւղը մոռացած և եկեղեցական կանոնը անուշադրութեան տուած, իրանց սեպհական եկեղեցուց կհեռանան, նրանք ուրիշ եկեղեցում չպիտի ընդունուեն, ամեն միջոց պիտի գործ դնել և ստիպել որ նրանք յետ դառնան, եթէ կյամառեն, թող զրկուեն եկեղեցու հաղորդութիւնից։ Իսկ եթէ մէկը կհամարձակի ուրիշի իրաւասութեան պատկանող մէկին յափշտակել և իւր եկեղեցու վրայ ձեռնադրել՝ առանց սեպհական եպիսկոպոսի համաձայնութեան և նրա վրայ ուշ դարձնելուն, այդպիսի ձեռնադրութիւնը կլինի անվաւեր։

15, 16 կանոնների բովանդակութիւնը նման լինելուն պատճառով, մեր ձեռագրերում մի կանոնի մէջ է ամփոփած այն է 16-ի։ Տե՛ս Բ. առ. 14, 15, 16 կանոնները։

Երբ Անտիոքից Կեսարիայի եպիսկոպոս Եւսեբիոսին խնդրեցին, որ իրանց վրայ հովիւ գայ, նա մերժեց այդ կանոնների հիման վրայ։ Անտիոքացիք դիմեցին Կոստանդիանոս մեծին, որ սա յորդորի եպիսկոպոսին գալ իրանց քաղաքը։ Կայսրը երբ լսեց եպիսկոպոսի մերժման պատճառը շատ ուրախացաւ և գովեց նրա կանոնապահութիւնը և օրինակատարութիւնը։

17. Կղերին պատկանողներից շատերը շահասիրական և վաշխառուական ցանկութեամբ, մոռացել են Աստուածային գրութիւնը, որ ասում է, արծաթդ մի տար շահով, և պարտք տալով իրանց փողը, պահանջում են տոկոս (հարիւրերորդականը). մեծ և սուրբ ժողովը դատեց, որ այս որոշումից յետոյ, փող տուողը եթէ ուրիշ գործադրութիւն կտայ այս բանին, կամ կիսով շահ պահանջելով, կամ մի ուրիշ բան մտածելով որ շահասիրութիւնը ծածկի, այդպիսին կարգալոյծ լինի և հեռացուի հոգևոր դասակարգից։—

Մեր ձեռագրերում 16-րդ կանոնն է այս։

Ինչպէս Հին օրէնքը (Երկ. օրին. 23, 19) նոյնպէս և Առաքելական 44 կ. արգելում են շահ վերցնել կարգալոյծ անելու սպառնալիքով։ 100-ին վերցնում էին կամ 12% կամ դրա կէսը 6։ Իսկ նրանք, որոնք զանազան պատրուակներով իրանց շահ վերցնելը ծածկելու համար ուրիշ կերպ կվարուէին, այսինքն խորամանկութիւններ և ոլոր մոլոր ճանապարհներ, բոլորը նրանք զրկւում են կարգից։ (Տես Զօնարա, Արիստին, Кормчая книга)։ Տես Ա.-առ. 18, Բ-առ. 44.

18. Ս. և մեծ ժողովին լուր հասաւ, որ մի քանի տեղերում սարկաւագներին են քահանային հաղորդութիւն տալիս, այն ինչ՝ ոչ սովորութեամբ, ոչ կանոնով չի թոյլատրւում, որ հաղորդելու իշխանութիւն չունեցողը՝ իշխանութիւն ունեցողին հաղորդութիւն տայ։ Յայտնի եղաւ, որ մի քանի սարկաւագներ եպիսկոպոսից առաջ են հաղորդութեան մօտենում։ Այս բոլորը վերջանայ, սարկաւագները իրանց չափը ճանաչեն, իմանան որ նրանք եպիսկոպոսի ծառայողներ են և քահանաներից ցած։ Նրանք հաղորդուեն քահանաներից յետոյ՝ եպիսկոպոսի կամ քահանայի ձեռքով։ Նրանք պիտի նստեն քահանաներից յետոյ, այն ինչ շատ անգամ պատահում է հակառակը։ Չհնազանդողը կզրկուի սարկաւագութիւնից։

Մեր ձեռագրերում 17-րդ կանոնն է։ Եւ որովհետև

15 և 16 կանոնները մերոնց մէջ միացրած է, ուստի և իսկականից մէկ կանոն պակասում է, մերոնք դրա փոխարէն աւելացրել են 18-րդ յօդուած, որ խօսում է արուագիտութեան մասին, որը գոյութիւն չունի և չկայ իսկական Նիկիական կանոնների մէջ։ Թէ մերոնք աւելացրել են, դրան ապացոյց կարելի է բերել Բ-Նիկիականք—կոչուած կանոնների 18-դը. «Ոչ է պարտ սարկաւագի օրէնս տալ և ոչ նըստել ընդ երիցու», որ բոլորովին համապատասխան է յունա—սլաւոնականին և ոչ նման ձեռագրերի Նիկիականին։ Մեր ձեռագրերի 18-րդ կանոնն այս է «Վասն՝այնոցիկ որ արուագէտք են կցորդք են այնոցիկ որ պղծին ընդ անասունս, և ապաշխարութիւն նոցին եղիցի ի վերայ. այլ եթէ քահանայ ոք ըմբռնեսցի յախտէն, ելցէ ի քահանայութենէն. և եթէ յուխտի մանկանց. ի կարգէն ելցէ, և անասնագէտացն ի վերայ եղիցի»։—

19. Պաւղիկեաններից նրանք, որոնք կմտնեն ուղղափառ եկեղեցու ծոցը, որոշւում է նրանց համար նորից մկրտուել։ Եթէ առաջուց հոգևորական դասին են եղել պատկանելիս, և անարատ ու անպարսաւ են, կրկնակնունքից յետոյ, կարող են ուղղափառ եպիսկոպոսից ձեռնադրուել։ Եթէ փորձման ժամանակ անընդունակ երևացին քահանայութեան մէջ, պէտք է կարգազուրկ լինեն։ Այդպէս պէտք է վարուել և սարկաւագուհիների և ընդհանրապէս հոգևորական դասին պատկանողների վերաբերմամբ։ Այն անձինք—կանայք, որոնք ձեռնադրութեամբ սարկաւագուհի չեն հապա միայն շորն են հագնում, կարող են համարուել ուղղակի աշխարհական։*)

Պաւղիկեանների աղանդի հիմնադիրն էր Միջագետքի Սամոսատ քաղաքից Պօղոս անունով մէկը, որ Սամոսատում եպիսկոպոս էր, նրա մայրը մանիքեցի էր Կալլինիկի անունով։

---

*) Սարկաւագուհի ձեռնադրւում էին քառասուն տարեկան հասակում. իսկ դ5 տարեկանից սկսած Կարթագենի 140 կանոնի համաձայն եպիսկոպոսի կարգադրութեամբ առանձին տարազ էին հագնում մինչև ձեռնադրուելը։

Նա քարոզում էր, որ մի Աստուած կայ և անուանւում է Հայր, Որդի և Ս. Հոգի. Որդին Հօր վերաբերմամբ նոյն է ինչ որ խօսքը (բանը) մարդու: Այս Բանը գալով աշխարհ, մարդու մէջ բնակուեց Յիսուս անունով և տուն կառուցանելով վերացաւ երկինք, իսկ այս Յիսուսը է փոքր Յիսուս Քրիստոս, իբրև Մարիամից առաջացած: Պօղոսին կարգալոյծ արին Անտիոքում Գրիգոր Աստուածաբանի մասնակցութեամբ:

20. Կան միքանիսները, որոնք ծունկ են չոքում կիւրակի և յիսնակի օրերը, սուրբ ժողովը որոշում է որ բոլոր թեմերում միակերպ պահպանուի հետևեալը, որ այդ օրերը կանգնած աղօթք մատուցանուի Աստուծուն:

Բացի այս քսան կանոնից կան և ուրիշ կանոններ զատկի, կանոնական գրքերի և այլ կարգերի մասին: Արաբական լեզուով ժողովածուում կայ բացի 20-ից և 85 կանոն Նիկիական կանոններ, Հայոց ձեռագրերում կան 114-115 երկրորդ Նիկիական կանոններ: Այդ աւելի համարուող կանոնները պէտք քաղուած լինին ժողովի ընդհանուր արձանագրութիւնից, որը մեզ չի հասել: Ե. Դարում միայն Գիլասիկ եպիսկոպոսը ժողովեց այդ արձանագրական յիշատակարանները, բայց ոչ իսկականը, այլ զանազան անձինքներից և ձեռքէ ձեռք ընկած ընդօրինակութիւններից: Նիկիայի որոշումը զատկի մասին գտել է կարդինալ Պետրա յունական մի ձեռագրում և տպագրել է. (տես СМИРНОВЪ ц. пр.): Հռոմի Դանիական հիւպատոս (–|–1809) գիտնական Գէորգ Ցեգան գըտել է մի Ղպտական ժողովածու Նիկիոյ ժողովի վերաբերմամբ, որը տպուել է երկրորդ անգամ 1852-ին Լենորմանի ձեռքով: Ապա Ֆրանսիացի եգիպտաբան Թեվիլիւ գտաւ պապիրուսի վրայ գրած 2 ժողովածու Տուրինի մատենադարանում: Երկու մարդկանց ժողովածուները նոյն են և թարգմանուած յունարէնից. այդ ձեռագրերում կան և այն երկրների անունները որոնց եպիսկոպոսները մասնակցել են Նիկիայի ժողովին: Եգիպտոս, Լիբանան, պաղեստին... Կապ-

պատովկիա, երկու Հայաստան, երկու Պոնդոս... (Смирновъ—43 եր.)։

Ասորական ժողովածուն Պետրան թարգմանեց լատիներէն 4 Հատորով 1883-ին, նա գտել էր Բրիտանական Թանգարանում։ Որի ընդհանուր բովանդակութիւնն է 1) Նիկիայի ժողովի ժամանակը, 2) Կոստանդիանոսի Հրաւիրագրերը, 3) Հաւատոյ Հանգանակը, 4) Նզովքը և 5) Ներկայ ժողովականների ստորագրութիւնները. 6) Ծանօթութիւն զատիկը տօնելու ժամանակի վերաբերմամբ. 7) 20 կանոնները և 8) 220 Հօգու անուններ։ Պետրա դնում է անունների ցուցակը մինչև 221 Հօգու ասորերէն և Հայերէն (Смирновъ-75. обозрѣніе источниковъ исторіи I всел. Ник. соб. 1888. Яросл.)։ Մեր ձեռագրերում կայ տպուած մօտ 220 անձանց ցուցակը, որոնք մասնակցել են Նիկիայի ժողովում, թէ երկրների դասաւորութիւնը և թէ անձանց թիւը նոյնը է ինչ որ Տուրինի ձեռագրի միջի եղածը. Հայաստանը բաժանած է Փոքր և Մեծ Հայքի։ Փոքր-Հայքից 2 եպիսկոպոս, Մեծ-Հայքից 5 եպիսկոպոս, որոնց մէջ է Արիստակէսը։ Իսկ եկեղեցական պատմիչների—Սոկրատի, Սոզոմենի և այլոց յիշատակութեան մէջ չկան Հայոց եպիսկոպոսների անուններ (տես Дѣянія всел. соборовъ, 73 եր I)։

Թէ ինչու Զատկի և Մելիտոս եպիսկոպոսի Համար եղած կանոնադրութիւնները չկան 20 կանոնների մէջ, դըժուար է ճիշտ պատճառը իմանալ, թէ և մի քանի ենթադրութիւններ անում են, բայց թէ իրօք այդպիսի վճիռներ եղել են, այդ երևում է ժողովի Աղէքսանդրիայի եկեղեցուն ուղարկած շրջաբերականից, որտեղ ուրախութիւն է յայտնում արևելեան եպիսկոպոսների Համաձայնութեան Համար զատիկը արևմտեանների Հետ կատարելու վերաբերմամբ. (Թէոդորիտ Христіанское чтеніе 1842 г. 120 եր)։—

Գալով մեր ձեռագրերի 115 Երկրորդ Նիկիական կանոններին, պէտք է նկատել, ինչպէս առաջ էլ դէպք է եղել ասելու, որ Նրանցից սկզբի 20 կանոնները նոյնն են, ինչ որ իսկական Նիկիական կանոնները՝ բայց ոչ Հայոց ձե-

ռագրերում եղած Նիկիականը, իսկ մնացած 95 կանոնները են ժողովածու առաքելական, տիեզերական, տեղական ժողովների կանոնների, նոր բան ամենևին չեն ներկայացնում իրանց բովանդակութեամբ, նրանք բոլորն էլ անվաւեր են, որովհետև Նիկիայի վաւերական կանոնները 20 են։

---

## Բ) Բ. ՏԻԵԶԵՐԱԿԱՆ ԿՈՍՏԱՆԴԻՆՈՒՊՕԼՍԻ ԺՈՂՈՎԸ 381-ԹՈՒԻՆ.

Արիոսի մահից յետոյ արիոսականութիւնը չանհետացաւ, նրա կուսակիցները ոչ միայն չքիչացան, այլ օրէցօր աւելանում էին և այնքան հեռու էին գնում իրանց անձնական մեկնաբանութիւնների մէջ, որ մինչև իսկ արիոսականութեան հետ շատ քիչ բանով էին միանում, միմեանցից տարբերւում էին հայեացքով, քարոզութիւններով, մինչև իսկ միմեանց հերետիկոսներ էին անուանում։ Եւ այսպէս բացի արիոսականներից, երևում են կիսարիոսականներ, Եւնոմեանք, Անոմիանք, Եւդոկսեանք, Մարկելեանք, Փոտինեանք, Ապողինարեանք, Մակեդոնեանք և այլն և այլն։ Դրանց մէջ ուժեղ աղանդն էր Մակեդոնեանց կամ Հոգեմարտների։ Ցունաց կայսրները նոյն փոփոխութիւններին էին ենթարկւում։ Արիոսականները օգուտ քաղելով իրանց կուսակից Կոստանդիանոս կայսրի բարեհաճութիւնից, յետ բերեցին աքսորից Նիկոմիդիայի եպիսկոպոս Եւսեբիոսին։ Սրա վաղահաս մահից յետոյ ուղղափառները կամեցան Պօղոսին նորից իրան աթոռը տալ, իսկ արիոսականները ուրիշ ժողով անելով ընտրեցին Մակեդոն անունով արիոսական եպիսկոպոսին Պօլսի առաջնորդ։— Այդ առիթ տուաւ երկու կողմին դիմել բռունցքի և կռուի։ Կայսրը Անտիոքումն էր, լսեց խռովութեան լուրը, հրամայեց Պօղոսին քաղաքից հեռացնել իբրև խռովարարների գլխաւորի։ Բայց ժողովուրդը յարձակուեց կայսեր պաշտօնակատար-

ների վրայ սպանեց նրանց և փողոցներով քարշկռտելով դիակները ցրուեց զանազան կողմերում։ Կայսրը բարկացաւ, հրամայեց Պօղոս եպիսկոպոսին ծածուկ հեռացնել քաղաքից և Մակեդոնին հաստատեց Պօլսի եպիսկոպոս. (Սոզոմեն. տես, Хрис. чтеніе 1846 г. կամ Дѣянія всел. соб.)։ Մակեդոնը իւր վատ և հպարտ բնաւորութեան պատճառով նոյն իսկ ատելի դարձաւ իւր հակառակորդներին, որոնց դրդմամբ կայսրը հեռացրեց Մակեդոնին և Եւդոկսի եպիսկոպոսին նըշանակեց։ Մակեդոնը անցաւ կիսարիոսականների կողմը, քարոզների միջոցով սկսեց իւր մտքերը տարածել։ Որդու մասին եղած վարդապետութիւնը թողեց անփոփոխ և անցաւ Հոգոյն սրբոյ վարդապետութեան փոփոխութեան, որոշ գոյն տուաւ իւր աղանդին, որը իւր անունով կոչուեց Մակեդոնի աղանդ։ Սրանք ասում էին, Հոգին Սուրբ համագոյակից չէ ոչ Հօր և ոչ Որդուն, հապա ստորադրուած և ծառայող ույժ է, իսկ Որդին հաւասար է Հօր։ Թէոդոս մեծը հրամայեց երրորդութիւնը դաւանել այնպէս, ինչպէս ուղղափառ եկեղեցին է ընդունում, փակել տուեց դրանց ժողովարանները և սպառնաց դատի ենթարկելով պատժել բոլոր աղանդաւորներին (Սոկրատ, Սոզոմեն)։ Թէոդոսը այդ վէճերը այդպիսի միջոցով չկարողանալով վերջացնել, հրամայեց ընդհանուր ժողով գումարել և խնդիրը վճռել։ Ժողովը եղաւ Պօլսում 381 թ. 150 եպիսկոպոսների մասնակցութեամբ, որոնց մէջ էին Կիւրեղ Աղէքսանդրացին, Ամփիլօք Իկոնիացին, Գրիգոր Նիւսացին, Բարսեղ Մեծը, Գրիգոր Նազիանզացին և 36 մակեդոնական եպիսկոպոսներ։ Վերջիններս մերժեցին ժողովում ուղղափառների դաւանութիւնը և հեռացան։ Ժողովը որոշեց նզովել Մակեդոնին և կողմնակիցներին։ Կայսրը հրամայեց հակառակորդ եպիսկոպոսներին զրկել իրանց պաշտօններից։ Երբ այդ աւելի ևս զայրացրեց աղանդաւորներին, կայսրը հրամայեց երկրորդ անգամ հանգանակ հաւատոյ կազմեն և յանձնեն իրան ի քննութիւն, նա համեմատեց բոլոր ուղարկուած հանգանակները և մերժեց վերջնականապէս աղանդաւորներինը։ Այս ժողովում Հռոմի եկե-

ղեցու կողմից պատգամաւոր չկար, դրա համար արձանագրութիւնը ուղարկեցին Հռոմ որ պապն էլ ստորագրէ։ Հռոմի եկեղեցին դաւանաբանական մասն ընդունեց, իսկ կարգադրական կանոններն վէճի ենթարկեց և 3-դ կանոնը չընդունեց մինչև Լատերանի ժողովը։ Այս ժողովի գործունէութեան իսկական արձանագրութիւնը ամբողջութեամբ չի հասել մեզ, միայն պահուել է 1) Գրիգոր Նազիանզացու ժողովում արտասանած ճառը. 2) ժողովի կանոնական հրահանգները Թէոդոս կայսրին ուղղած թղթի հետ. 3) Հաւատոյ Դաւանանքը. 4) ժողովի անդամների ստորագրութիւնը. 5) Հռոմի եպիսկոպոսին ուղղած թուղթը։ (Дѣянія всел. соборовъ—93 եր.)։

Թէոդոս կայսրին ուղղած թղթում նշանակուած են 7 կանոն, որոնք մեր ձեռագրերում ամբողջութեամբ չեն յիշատակուած։ Մերոնց մէջ կայ 3 կանոն, երկրորդ կանոնի մէջ միացրած է 2 և 3 կանոնները, այնպէս որ մեր կանոնագրքերում միայն 4 կանոնը կայ, իսկ երեքը 5, 6, 7-չկան. ինչու. դժուար է ասել։ Արդեօ՞ք նրա համար, որ 5-րդում խօսում է «արևմտեանների ծրարի» մասին, դուցէ ոմանք չիմանալով բանի էութիւնը, կասկածանքով վերաբերուելով դուրս են ձգել այդ կանոնը, դուրս ձգելով նաև 6 և 7 կանոնները։ Թէ՞ արդեօք 6 և 7 կանոնների երկար լինելը առիթ է տուել մտածելու որ դրանք կանոնական թղթեր են և չպիտի կանոնների շարքը մուծել։ Պատմական աւանդութեամբ Ներսէս մեծը եղել է այս ժողովում, բայց պատմական փաստական տեղեկութիւնները թեր և դէմ են դրան. ժողովին ներկայ անդամների ցուցակի մէջ Մեծ-Հայքի անուն չկայ և ո՛չ էլ Ներսէսի, այլ միայն Փոքր-Հայքից երկու եպիսկոպոսի անուն «Մելիտինից Ոտերիոսը և Տրաբիսից Ոտերիոսը»—սրանք յոյն էին թէ՞ հայ, յայտնի չէ։

Մէկը այսպիսի հարց եթէ տալու լինի, թէ դու ի՞նչ գործ ունիս յունա-սլաւոնական կամ աւելի ճիշտ ասած պաշտօնական—իսկական Պօլսի ժողովների 7 կանոնի հետ, երբ որ Հայոց կանոնագրքերում 4 կամ 3 կանոն է գրած. սխալ

թէ ճիշտ մեր ընդունածը՝ մեր կանոնագրքերի մէջ գրածն է, կամ հէնց մեր պապերը այս մերն են ընդունել, ուստի և ղու պարտաւոր ես մեր կանոնագրքերի գրածը ընդունելու։

Ես չեմ կարծում որ այսպիսի միամիտ հարցի տեղիք լինի, նրա համար որ 1) Մեր ժողովները ընդունում են տիեզերական ժողովները, այսինքն այն կանոնները, որոնք բոլոր քրիստոնեայ աշխարհը ընդունում է իսկական, հէնց այդ ժողովներում սահմանած և ընդունուած. 2) Մեր կանոնագրքերը ոչ մի ձեռնհաս մարմնի կողմից վաւերական չեն ընդունուած, այսինքն ոչ մի Հայոց ազգային ժողով չի որոշել ընդունել այս կանոնագրքերի միջի գրածները։ 3) Մեզ համար պարտաւորական են իսկականները և ոչ զանազան սխալ արտագրող անձանց յաւելումներով լի ձեռագիրը—կանոնագիրը։ Այս հիմամբ կարձանագրեմ պաշտօնական քրիստոնեայ աշխարհում ընդունած 7 կանոնները, որոնց 4-ը մեր կանոնագրքերում կայ, իսկ 3-ը ոչ։—

Սուրբ հայրերը, որոնք հաւաքուած են Կոստանդինուպօլսում, որոշեցին. Թող չփոխուի այն հանգանակը, որը 318 հայրապետներ Բիւթանիայի Նիկիա քաղաքում ընդունեցին և մնաց անփոփոխ, և նզովքի է ենթարկւում իւրաքանչիւր աղանդ, որ է Եւնոմիան, Անոմեան, Արիոսական կամ Եւդոկեան, Կիսարիոսական կամ Հոգեմարտներ, Սաբելլեան, Մարկելլեան, Փոտինեան և Ապողինարեան։

Կիսարիոսական կոչւում էին այն աղանդաւորները, որոնք ընդունում էին Արիոսի քարոզութիւնների մի մասը։ Կիսարիոսականները տարբերւում էին Հօգւոյն Սրբոյ վարդապետութեան վերաբերմամբ։ Կիսարիոսական կոչւում էին և նրանք, որոնք Որդուն և Հոգուն արարած էին համարում և աւելացնում էին «Մենք մտածում ենք որ նրանք առաջացան ոչ այնպէս, ինչպէս միւս արարածները, հապա ուրիշ կերպ, և այդ ասում ենք, որ չկարծուի թէ ծննդեամբ Հայրը մասնակից էր չարչարանաց»։ Կիսարիոսական էլի հա-

մարւում էին և նրանք, որոնք սովորեցնում էին թէ Բան և Հոգի համագոյակից չեն հապա նմանագոյ են Հօր։

Եւնոմիոսը Գաղատացի էր, Կիզիկի եպիսկոպոս, աւելի հեռու էր գնում Արիոսից, ասում էր որ Որդին փոփոխական էր և ծառայող, և ամեն բանում նման չէ Հօր։ Նրանք նորից էին մկրտում, ընկղմելով գլուխը ներքև, ոտերը վերև դարձնելով՝ և մկրտութիւնը մէկ ընկղմամբ էին կատարում։ Այպագայ դատաստանը և գեհենը սուտ էին համարում երկիւղ ազդելու համար ասուած և հնարուած բան։

Դրանք անուանւում էին և Եւդոկսեաններ, Եւդոկիոսի անունով, որ Պօլսում եպիսկոպոս էր, որին Եւնոմին Կիզիկի եպիսկոպոս կարգեց։ Դրանք անուանւում էին նոյնպէս Անոմէականներ, որովհետև ասում էին՝ որ Որդին և Հոգին Ս. ըստ էութեան Հօր հետ ոչ մի նմանութիւն չունին։ Դրանք նոյնպէս կոչւում էին Աստիականներ, Աստիայի՝— Եւնոմիոսի ուսուցչի անունով։

Սաբեղղեանք իրանց անունը ստացան Սաբեղիոս Լիբանանցուց, որ Պենտապօլու Պտողեմայիդա քաղաքի եպիսկոպոսն էր, քարոզում էր շփոթմամբ միացումն, միացնելով մի դէմքի մէջ երեք անձնաւորութիւնը, ասելով որ միևնոյնը երբեմն երևում է իբրև Հայր, երբեն իբրև Որդի, երբեմն իբրև Ս. Հոգի, այլակերպուելով և զանազան ժամանակ ընդունելով տարբեր տեսք։ Մէկ անձնաւորութեան մէջ երեք անուանումներ էին ընդունում, ինչպէս մարդու մէջ մարմին, հոգի և ոգի, կամ արեգակի մէջ կլորութիւն, լոյս և տաքութիւն։ —

Փոտինեանք—անունը ստացան Փոտինից, որը Սիրմից էր և նոյն տեղում եպիսկոպոս. դատում էր Պօղոս Սամոսատու նման, չէր ընդունում ս. երրորդութիւնը և Աստուած իբրև արարիչ ամենի, անուանում էր միայն հոգի, իսկ Բանը միայն Աստուածային հրաման է՝ բերանից դուրս եկած, որ ծառայում է Աստուծոյ իբրև մեքենայական գործիք։ Քրիստոս հասարակ մարդ էր՝ նրա կարծիքով, ընդունելով Հօր Բանը, ոչ իբրև գոյ, այլ բերանից բղխած, և Մարիամից էլ սկիզբն առած։

Ապողղինարը Ասորոց Լաւոդիկ քաղաքի եպիսկոպոսն էր, ասում էր որ Որդին թէ և Աստուածանից շնչաւոր մարմին առաւ, բայց առանց խելքի, որովհետև Աստուածութիւնը փոխարինում էր խելքը. Տիրոջ Հոգին չունի բնաւորութիւն, կատարեալ մարդ չէր, հապա միայն մի բնութիւն ունի։

Տես Опытъ Ц. З. Іоанна 1851 և Правила св. отец. ...съ толк. յունաց մեկնիչներ—Զօնարա, Վալսամոն—82 եր.:

Մարկելլեանք իրանց անունը ստացան Անկիւրիայի եպիսկոպոս Մարկելլոնից ընդունում էին Որդուն իբրև Բան Հօր, բայց ոչ ինքնագոյ, այլ գործող միայն արարչութեան մէջ և դրա համար մտածում էին, որ տեսանելի աշխարհի վախճանից յետոյ, կվերջանայ և Որդու թագաւորութիւնը և նրա անձնաւորութիւնը կմիանայ Հօր էութեան հետ։ (Տես Опытъ Ц. З. Іоанна.)։

2. Ամեն մի աշխարհի եպիսկոպոս չտարածի իր իրաւասութիւնը իւր աշխարհի սահմաններից դուրս և եկեղեցիները չխառնի, հապա համաձայն կանոնների Աղէքսանդրիայի եպիսկոպոսը կառավարի Ափրիկայի եկեղեցիները, արևելեան եպիսկոպոսները կառավարեն միայն արևելքը՝ պահելով Անտիոքի եպիսկոպոսի առաւելութիւնները՝ ինչպէս Նիկիայի կանոններով ընդունուած է։ Նոյնպէս էլ Ասիայի եպիսկոպոսները կառավարեն միայն Ասիան, Պոնտոսինը միայն Պոնտոսը, Թրակիայինները Թրակիան։

Եպիսկոպոսները՝ չհրաւիրուած չանցնեն իրանց աշխարհի սահմանից թէ ձեռնադրութեան և թէ եկեղեցական որ և է կարգադրութեան համար։ Վերոյգրեալ կանոնները եկեղեցական աշխարհների մասին պահպանելով, իւրաքանչիւր աշխարհի գործերը կկարգադրուին նոյն աշխարհի եպիսկոպոսների ժողովով, ինչպէս որոշուած է Նիկիայում։ Այլազգի ժողովրդների աստուծոյ եկեղեցիները պիտի կառավարուին մինչև հիմա պահպանուած հայրերի սովորութեամբ։

Նոյն բանի համար խօսում են Նիկիայի 6 և 15 կանոնները. միայն այստեղ բաժանումը լինում է Հռոմէական

կայսրութեան նոր բաժանման համաձայն։ Արևելեան կայսրութիւնը բաժանւում էր 4 պրոֆեկտուրիայի, ամեն մինն էլ շրջանների իրանց կուսակալներով։ 4-պրոֆ-ից մէկն էր և արևելեանը, որ բաժանւում էր 5 շրջանի, Եգիպտոսի, Արևելեանի, Ասիականի, Պոնտոսի և Թրակիայի։ Իւրաքանչիւրի մայրաքաղաքը դարձաւ միտրոպոլտի աթոռանիստ։ Աֆրիկան և Եգիպտոսը մտան Աղէքսանդրիայի եպիսկոպոսի իրաւասութեան տակ, արևելեան բաժնում գլխաւոր կենդրոնատեղին Անտիոքն էր, որի մէջ մտնում էր Արաբիայից մինչև Կիլիկիայի միջավայրը։ Ապա Ասիան Եփեսոսով, յետոյ Պոնտոսը և Թրակիան։ Այլազգի եկեղեցիներ ասելով երևի հասկանում է այն եկեղեցիները, որոնք չէին մտնում այդ քաղաքական բաժանման մէջ։ Այս ժողովը ոչ միայն հակառակ չէ ազգայնական եկեղեցիների սկզբունքին, հապա մինչև իսկ հաստատում է։ Մեր եկեղեցին կարող ենք մտցնել այս վերջին շարքը և նրա անկախութիւնը յենակէտել հէնց Տիեզերական ժողովի այս կանոնով, որի ժամանակից 10-15 տարի առաջ արդէն Արշակ Բ-ի օրով բոլորովին անկախ էր հրատարակուել։—

> 3. Կ. Պօլսոյ եպիսկոպոսը թող ունենայ պատուի արտօնութիւն Հռոմի եպիսկոպոսից յետոյ, որովհետև այդ քաղաքը նոր Հռոմ է։

Թէ այս և թէ Նիկիայի ժողովի կանոններով Հռոմի եպիսկոպոսը վայելում է նոյն իրաւունքները, ինչ որ ունէին միւսները, այսինքն Անտիոքի, Աղէքսանդրիայի, Երուսաղէմի ևլն։ Կանոններից պարզ երևում է, որ Հռոմին յատկացրած պատիւը բղխում է ոչ այն գիտակցութիւնից՝ թէ Հռոմի եպիսկոպոսը իբրև առաքեալներից մեծի՝ Պետրոսի՝ իշխանութեան շարունակող պիտի պատիւ ունենայ, ինչպէս պապականները դաւանում են, այլ իբրև մայրաքաղաքի, հզօր երկրի արքայանիստ քաղաքի եպիսկոպոս։ Նոյնպէս էլ և ժողովը դատում է Պօլսի վերաբերմամբ։

Հեֆելէի ասելով՝ ինչպէս Թէոդորիտը յիշում է իր եկեղեցական պատմութեան մէջ, Թէոդոս մեծը հրաւիրագիր չի ուղարկել Դամաս պապին։ Այնպէս որ իբր թէ Բ. Տիեզերական ժողովը եղել է միայն արևելեան եպիսկոպոսների ներկայութեամբ։ Պապերը ընդունեցին այս ժողովի հանգանակը, որ քիչ տարբերութիւն ունի Նիկիականից, բայց բոլորովին մերժեցին 3-դ կանոնը, մինչև ԺԳ-դարը, երբ Լատերանի ժողովում 1215 թուին Պոլիսը լատինաց ձեռքը անցնելուն պատճառով, հանդիսաւոր կերպով ընդունեցին 3-րդ կանոնը։

Մեր բոլոր ձեռագրերում երկրորդ և Երրորդ կանոնը միացրած է երկրորդ կանոնի մէջ։—

4. *Մաքսիմ շնականի և նրա արած անկարգութիւնների մասին Պոլսում. Մաքսիմը եպիսկոպոս չէ և ոչ էլ եղել է, նրա բոլոր՝ որ և է աստիճանի ձեռնադրած հոգևորականները ընդունելի չեն, նրա բոլոր արածները անվաւեր են և մերժման արժանի։*

Մեր ձեռագրերում այս երրորդ կանոնն է կազմում, և բոլորի մէջ Մաքսիմ շնականը—թարգմանուած է Մաքսիմ շինական, շնական բառի միտքը չհասկանալուն համար։—

Մաքսիմ ցինիկը մի շահամոլ և փառասէր մարդ էր Աղէքսանդրացի, գալիս է Պետրոս եպիսկոպոսի մօտ, նրա միջոցով մկրտւում քրիստոնեայ դառնում, իրան լաւ է պահում և յաջողում է եպիսկոպոսից վկայաթուղթ ստանալ Պոլսի Գրիգոր Աստուածաբանի անունով։ Սա սիրով ընդունում է շնականին և հոգևորականների դասը կարգում։ Մաքսիմը ժողովական հայրենակից եպիսկոպոսներին իր կողմն է ձգում և զանազան միջոց գործ դնելով նրանցից եպիսկոպոս է ձեռնադրւում և ինքը սկսում իր մարդկանց եպիսկոպոս ձեռնադրում. երբ այդ պատճառով խռովութիւններ ծագեց, թողեց փախաւ Եգիպտոս։—

*5. Արևմտեանների ծրարի (փաթեթ) վերաբերմամբ, ընդունում ենք և Անտիոքում եղածները, որ խոստովանեցին մի Աստուածութիւն Հօր և որդւոյ և Հոգւոյն Սրբոյ։*

Այս ծրարը Հռոմի եկեղեցու կազմած կանոնագրութիւնըն է Սարդիկիայի ժողովում, ուր Նիկիայի կանոնները կարդալուց յետոյ, նոյնպէս և ընդունելուց ու յաւելումներ անելուց յետոյ 341-ին խմբագրեցին մի կանոնագրութիւն, որը՝ Պօլսի տիեզերական ժողովից առաջ Հռոմում կազմած մասնաւոր ժողովում ընդունուեց, հաւատոյ դաւանանքը ընդհանուր կարգով մեկնաբանուեց և մի օրինակը ուղարկուեց արևելեան եպիսկոպոսներին։ Դամաս պապը իւր կողմից գրեց աղանդների դէմ մի թուղթ և այդ կանոնագրութեան հետ ուղարկեց Անտիոքի Պաւլին եպիսկոպոսին (Սոզոմէն) ։Անտիոքում 378 թուին ժողով եղաւ, կարդացուեց այդ թուղթը և ընդունուեց ու հաստատուեց. (Սոկրատ, Սոզոմեն)։ Ահա 5-րդ կանոնիս մէջ յիշածը և Անտիոքի հաւատոյ խոստովանանքը—այդ է։ Անտիոքի մէջ այդ ժողովի հետ, նաև ժողովներ էին անում ուրիշ աղանդաւորներ երեք անձնաւորութեանց վերաբերեալ. որպէսզի պարզ լինի թէ այս կանոնս Անտիոքի ժողով ասելով ո՞րն է հասկանում, ուղղափառներինը թէ՞ աղանդաւորներինը, աւելացնում է «որ խոստովանիցին մի Աստուածութիւն Հօր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ»․ (տես Опытъ Ц. 3. ар. Іоанна I.)։ Արդեօ՞ք այս զանազան ժողովներն են եղել պատճառ որ մերոնք կանոնների միջից հանել են 5-ը և տեղական ժողովների ցանկից Անտիոքինը, դժուար է պնդել։ Այս մասին տես արտաքին Տեղական ժողովները։—

*6. Ձատերը եկեղեցու բարեկարգութեան մէջ խռովութիւն և գժտութիւն ձգելու և ժողովրդի աչքին հոգևորականութեան պատիւը վայր ձգելու դիտաւորութեամբ զանազան մեղադրանքներ են բարդում հոգևորականների վրայ. դրա առաջըն առնելու համար ս, ժողովը որոշեց՝ առանց քննութեան*

ոչ մի մեղադրանք իրաւացի չհամարել և ոչ էլ իրաւունք տալ մեղադրելու եկեղեցու կառավարիչներին, բայց այս արգելքը վերաբերում է ո՛չ ամենքին։ Եթէ մի որ և է մասնաւոր գանգատի տեղիք կտայ եպիսկոպոսը, կալուածական և նման բաների մէջ, առանց ի նկատի առնելու գանգատուողի կրօնը և ինչ դաւանանքի պատկանելը, պէտք է քննել և արդարը՝ անարդարից ջոկել։ Իսկ եթէ եկեղեցական գործ կլինի, հերետիկոսների կողմից բարձրացած մեղադրանքները չընդունել, և թոյլ չտալ՝ ուղղափառ եպիսկոպոսին եկեղեցական գործերում պարտազանց համարել։ Հերետիկոս համարւում են նրանք, որոնք վաղուց մեր եկեղեցուց դուրս են եկած, նզովքի են ենթարկուած, և նրանք, որոնք արտաքուստ մեր հաւատն են դաւանում, բայց առանձին ժողովներ են կազմում մեր կանոնաւոր կարգած եպիսկոպոսների դէմ։ Բանադրուած և մեղադրուած անձինք չեն կարող եպիսկոպոսի դէմ մեղադրող հանդիսանալ, մինչև որ իրանք չազատուեն այդ մեղադրանքից։ Որոնց վրայ գանգատ կայ, նրանք իրաւունք չունին մեղադրել եպիսկոպոսին, մին՚չև որ չապացուցանեն իրանց անմեղութիւնը։ Եպիսկոպոսի դէմ գանգատ պիտի ներկայացնեն աշխարհի եպիսկոպոսների ժողովին և ապացուցանեն։ Եթէ ժողովը չկարողացաւ կարգադրել խնդիրը, այն ժամանակ գանգատը պիտի ներկայացնել աւելի մեծ ժողովի. միայն գանգատաւորները վաղօրօք պիտի գրաւորապէս խոստանան, որ մեղադրանքները չապացուցանելու դէպքում, իրանք կենթարկուին պատժի իբրև ամբաստանող և զրպարտողներ։ Եթէ մէկը նախապատրաստական քննութիւնից յետոյ, կարհամարհի կայացրած վճիռը և կձանձրացնի թագաւորին, աշխարհի գլխաւոր դատաւորին, կամ տիեզերական ժողովին կանհանգստացնի եպիսկոպոսների պատիւը շօշափելով, այդպիսին իրա գանգատով չի ընդունուիլ իբրև կանոնները զանցառութեան սուտ և եկեղեցական կարգապահութիւնը խանգարող։

Այս կանոնը աւելի ընդարձակ և որոշ կարգեր է սահմանում դատաստանի մասին։ Տե՛ս նաև Բ. Առ. 74, 75, Նիկ. 2, 5, Անտ.-14, 15, (Նոյնի մասին խօսում է և Կարթագենի 5 Հատ կանոնները)։

7. Հերետիկոսներից նրանց, որոնք կմիանան ուղղափառներին, կընդունենք հետևեալ սովորութեամբ և կարգաւորու-

*թեամբ, Արիոսականներին, Մակեդոնականներին, Սաբբադեանց և Նովատեանց, որոնք իրանց մաքուր են համարում և լաւ, աասն և չորսականներին կամ տիտրադիտեանց և Ապողինեանց, երբ գրաւոր թղթով կնզովեն բոլոր աղանդները, կընդունենք դրոշմամբ, կամ ս. միւռոնով օծելով ճակատը, աչքերը, քիթը, բերանը և ականջները՝ ասելով, կնիք Հոգւոյն Սրբոյ։ Մի ընկղմամբ մկրտութիւն անող Եւնոմիաններին, Մոնտանիստներին կամ Փրիգներին և Սաբելեանց և մնացած հերետիկոսներին ընդունել միմեայն իբրև կռապաշտների։ Առաջի օրը դարձնում ենք նրանց քրիստոնեայ, երկրորդ օրը պատրաստուողներ, երրորդ օրը երդմնեցնում ենք երեք անգամ ականջներին և դէմքին փչելով. թողնում ենք լսել եկեղեցում գրեանքը և ապա մկրտում ենք։*

Սաբբատեանները ծագում առել են Սաբբատի քահանայից, սրանք Նովատեանների մի ճիւղն են, որոնք բացի Նովատեանների ընդունած վարդապետութիւնից, ընդունում էին նաև հրէական սովորութիւնները զատիկը տօնելու մէջ և շաբաթ օրը պաս էին պահում ու տօնում։

Մոնտանիստները իրանց անունը կրում են մի ինչ որ Մոնտանից, որը իրան անուանում էր Մխիթարիչ, երկու չար կանանց՝ (Պրիսկիլլա և Մաքսիմիլլա) բերնով սուտ մարգարէութիւններ էր անում։ Սրանք կոչւում էին նաև Փրիգացիք, գուցէ մի որ և է Փրիգացի աղանդապետի անունով կամ թէ աղանդը գուցէ ծագել է Փրիգայում։ Կոչւում էին դրանք նաև Պեպուզիանք—Պեպուզա գիւղից, որը համարւում էր նրանց Երուսաղէմը։ Նրանք լուծում էին պըսակները, խիստ ծոմապահութիւն անում կերակրից հեռու մնալով, զատիկը չէին յարգում, ս. երրորդութիւնը խառնում էին և մի դէմք դարձնում, եղջիւրահար երախայի կողի արիւնով խմոր էին հունցում և այդ հացը ընծայաբերութիւն անում և նրանից ճաշակւում էին։

Տասնչորսականք նրանք էին, որոնք զատիկը կատարում էին հրէաների հետ Նիսանի 14-ին, սրանք կոչւում էին տիտրադիտներ, զատիկը տօնելու պասը չէին լուծում՝ պահում էին ինչպէս մենք չորեքշաբթին։ Զատկից յետոյ

7 օր պաս էին պահում, դառն խոտ ուտելով և բաղարջ գործ ածելով հին օրէնքին հետևելով։—

6 և 7—կանոններն էլ չկան մեր ձեռագիր կանոնագրքերում, կամ համարել են շատ երկար իբրև կանոնական թղթեր և ոչ կանոններ, ու չեն թարգմանել, կամ այս աղանդները համարել են օտար մեր երկրի համար և չեն մուծել մեր կանոնագրքերը, կամ երկար, օտար և խառն ու անհասկանալի համարելով դժուարացել են թարգմանել և թողել. կամ ունեցել են ուրիշ պատճառներ։—

---

## Գ) ԵՓԵՍՈՍԻ Գ. ՏԻԵԶԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎԸ 431 ԹՈՒԻՆ.

Գ. Տիեզերական ժողովը գումարուեց Եփեսոսում Թէոդոս կրտսերի հրամանով Նեստորի և իւր հետևողների աղանդը քննելու և դատապարտելու համար։

Նեստորը առաջ Անտիոքում քահանայ էր և քարոզիչ, խելօք մարդ էր և բոլոր աղանդաւորների ամենաեռանդուն հակառակորդներից մէկն էր։ Նրա ձայնը հասաւ Պօլիս Թէոդոս կրտսերին, որը ընտրեց նրան Պօլսի թափուր աթոռի գահակալ։ Ժողովուրդը շատ սիրով ընդունեց նորընտիր պատրիարքին, նրան համեմատում էր Ոսկեբերանի հետ նրա քարոզութիւնների համար։ Քիչ յետոյ, նա թոյլ տուեց իւր հետ բերած Անաստաս քահանային եկեղեցում քարոզել և յայտնել քարոզի մէջ, որ Մարիամը մարդ էր, չէր կարող Աստուած ծնել, ուստի և պատուիրեց ժողովրդին՝ Մարիամին Աստուածածին չասել, այլ Քրիստոսածին։ Ժողովուրդը տրտունջ յայտնեց այդ նոր մտքերի համար։ Նեստորը ծննդեան օրը քարոզեց և Պօղոսի խօսքերը օրինակ առնելով ասաց որ «Մարիամը Աստուած չի ծնել, մարմնից ծնուողը

մարմին է, արարածը Աստուած ստեղծել չի կարող, այլ մարդ, որ եղաւ Աստուծոյ գործի» (Дѣянія всел. соб. և Хрис. чт. 1864-346 եր.)։ Միւս անգամ քարոզում կրկնեց, որ «Աւետարանում ասուած է Քրիստոսի համար ոչ Աստուած, այլ Քրիստոս, Որդի և Տէր»։ Եկեղեցում Եւսեբիոս փաստաբանը, որ լաւ գիտէր ուղղափառ դաւանութիւնը՝ ի լուր ամենեցուն ասաց «ինքն յաւիտենական Բանն երկրորդ անգամ կնոջից մարմնով ծնեց», ապա հրաւէր գրեց բոլորին և Նեստորին հերետիկոս անուանեց և Պօղոս Սամոսատացուն գաղափարակից։ Նեստորը իւր հետևողները շատացնելու մտքով Հռոմից արտաքսուած Կելեստիային և Պելագիային իւր հովանաւորութեան տակ ընդունեց։ Նեստորը իւր յաճախակի քարոզներով ժողովրդին և կայսրին իւր կողմը ձգեց. փոքրոգի մարդիկ Նեստորի ոյժը տեսնելով, նրա կողմն անցան։ Սկսուեց պայքարը երկու կողմից. լուրը հասաւ Աղէքսանդրիայի Կիւրեղ եպիսկոպոսին, որը շրջաբերական հրատարակեց և Քրիստոսին Աստուած և Մարիամին՝ Աստուածածնի դաւանելով, պատուիրեց Աթանասի և այլ հարց հետևել և նոր մտքեր չընդունել։ Սկսուեցին գրագրութիւններ Կիւրեղի, Նեստորի և Կելեստինա պապի մէջ։ Կիւրեղը ստանալով պապից լիազօրութիւն, գրաւոր յայտարարութեամբ պահանջեց, որ 10 օրուայ ընթացքում Նեստորը հրաժարուի իւր մտքերից, եթէ ոչ կմերժուի եկեղեցուց։ Կայսրը համարելով Նեստորին արդար, Կիւրեղին խռովարար և պապին իւր կողմնակից դարձնող, ժողովի միջոցով ցանկանալով վերահաստատել ուղղափառութիւնը, հրամայեց հրաւիրագրեր ուղարկել ամեն տեղ և 431-ին ժողով նշանակել Եփեսոսում։ Այդ ժամանակ հասաւ Պօլիս Կիւրեղի և իւր ժողովի վճիռը 10 օր ժամանակ տալու վերաբերմամբ։ Նեստորը ժողով արաւ խկոյն և 12 նզովքով անիծեց Կիւրեղին։ Ժողովին եկաւ Կիւրեղ 40 եպիսկոպոսով, Նեստորը 10 եպիսկոպոսով, պահապան զինուորներով և կայսեր կողմից երկու կարգապահով, միւս տեղերից էլ եկան և համախմբուեցին մօտ 200 հոգի։ Անտիոքի Յովհաննէս պատրիարքը իւրայիններով

ուշացաւ։ Ժողովը երեք անգամ հրաւիրեց Նեստորին, սա չեկաւ։ Ժողովում կարդացին բոլոր փաստագրերը, լսեցին, քննեցին և մեղադրեցին Նեստորին կարգալոյծ անելով և բանադրելով։ Ապա եկաւ Յովհաննէս պատրիարքը 43 եպիսկոպոսով, միացաւ Նեստորի հետ, ժողով արաւ և բանադրեցին Կիւրեղին և կողմնակիցներին (ուղղափառներին)։ Կայսրը Նեստորին էր յարուած։ Այդ ժամանակ եկան Հռոմի լեգատները և միացան ուղղափառների հետ և ստորագրեցին Նեստորի կարգալոյծ անելը և բանադրանքը։ Կայսրը երկար ժամանակ մերժում էր ուղղափառների վճիռը և չէր վաւերացնում, մինչև որ խաղաղութիւնը վերականգնելու համար, հրամայեց բոլորին ցրուել և իրանց տեղերը հեռանալ։

Ուղղափառների ժողովը ընդհանուր թղթեր կազմեց և բոլոր տեղերը ուղարկեց, հրաւիրելով բոլորին հնազանդել ժողովի վճռին և մերժել Նեստորին և կողմնակիցներին։ Այդ թղթից աճա կազմուած է վեց կանոն։ 7 և 8 կանոնները մասնաւոր դէպքերի համար գրուած բացատրութիւն է։ Սլաւոնական (Кормчая книга) կանոնագրքերը ընդունում են ժողովի՝ Պամփիլիայի ժողովին գրուած թուղթը 9-րդ կանոնի տեղ։ Խորենացին յիշում է (Գ. Կա) որ մեր թարգմանիչները բերին ժողովի թղթերը և յանձնեցին Սահակին և Մեսրոբին, որոնք Աշտիշատումն էին, թղթերի հետ ներկայացրին և «6 սահմանուած կանոնագլխով կանոնները»։

Մեր կանոնագրքերում գրուած են այդ 6 կանոնները, բայց բոլորը աղաւաղուած և փոփոխուած։ Թէ արտագրողները որքան տգէտ են եղել եկեղեցական պատմութեան մէջ և որքան համարձակ կանոնների ինքնահաճ փոփոխութեան մէջ, այդ կարելի է ապացուցանել այս 6 կանոնի թարգմանութեամբ։ Յայտնի է որ Նեստորը ունէր յայտնի կողմնակից Կելեստիանո անունով մէկը, իսկ Նեստորը ունէր և յայտնի հակառակորդ Հռոմի Կելեստինո ուղղափառ պապը։ Այս 6 կանոններում միշտ նզովում են Նեստորին և նրա կողմնակից Կելեստիային, մերոնք կարծելով որ այս Կելեստիան Հռոմի պապն է, վերցրել են բոլոր տեղերում նզովքը

դարձրել օրհնանք և դուրս է եկել մի բոլորովին հակառակ վճիռ։ Այս փաստը բաւական է ապացուցանելու մերոնց անհոգութիւնը, տգիտութիւնը, վաւերական կանոնները քմահաճ կերպով փոփոխելու ցանկութիւնը և կանոնները հակառակ իմաստով գրելու մէջ, ոչ մի օրինազանցութիւն չընտեսնելը։

1. Որովհետև հարկաւոր էր տեղեկութիւն տալ ժողովիս որոշման մասին նրանց, որոնք հիւանդութեան, կամ եկեղեցական և այլ պատճառներով չկարողացան ներկայ լինել ժողովին, ուստի և յայտնում ենք ձեր սրբութեան և սիրոյ, որ եթէ աշխարհի միտրոպոլիտը հեստելով ս. տիեզերական ժողովիս դէմ, կմիանայ հերձուածողական խմբին, կամ Կելեստիայի քարոզութեան, այդպիսին իւր աշխարհի եպիսկոպոսների դէմ ոչինչ չի կարող անել, որովհետև այժմեանից այս ժողովի կողմից մերժուած և չընդունելի եպիսկոպոս է համարւում։ Պէտք է նաև ուղղափառ եպիսկոպոսների և շրջակայ մետրոպոլիտների հայեցողութեան յանձնել հեստեալի այդ գործը՝ նրան կատարեալպէս եպիսկոպոսական աստիճանից զրկելու համար։

Այս Կելեստիան Նեստորի կողմնակից էր և Պելագիայի աշակերտը։ Իսկ Կելեստինոսը Հռոմի պապը-ջերմ հակառակորդն էր Նեստորի։ Ձեռագրերում գրած է «ընդդէմ Կելեստինոսի խորհեցաւ Հռոմայ եպիսկոպոսապետին»։ Սլաւոնական «Кормчая книга-ում նոյնպէս գրած է Կելեստինոս Հռոմի պապի մասին՝ փոխանակ Կելեստիայի։

2. Այն թեմական եպիսկոպոսները, որոնք ներկայ չեն եղել ս. ժողովում, հերձուածողների հետ են, կամ կամենում են մասնակցել նրանց գործին, կամ Նեստորի գահընկեցութիւնը ստորագրելով, կանցնեն հակառակորդների խումբը, այդպիսիներին ս. ժողովի որոշմամբ բոլորովին մերժել քահանայութիւնից և կարգալոյծ անել։

3. Քաղաքում կամ գիւղում գտնուած ուղղափառ հոգեւորականներին, եթէ Նեստորը և նրա կողմնակիցները արգելել են քահանայագործութիւն անել, այդպիսիններին էլի կարգում ենք իրանց աստիճանում։ Ընդհանրապէս հրամայում ենք ուղղափառ և տիեզերական ժողովիս հետ համաձայն հոգեւորականներին չհնազանդել այլ ևս հերձուածող եպիսկոպոսներին։

4. Հոգեւորականներից նրանք՝ որոնք կհամարձակեն բացէ ի բաց կամ առանձնապէս կողմնակից հանդիսանալ Նեստորին կամ Կելեստիային, այդպիսիններին կարգալոյծ անելը սուրբ ժողովս համարում է արդարացի։

Մեր ձեռագրերում ընդհակառակն է գրած, ով կողմնակից չի լինիլ Կելեստինոսին—կարգալոյծ լինի։ 4-րդ կանոնը խօսում է աղանդաւոր Կելեստիայի մասին, մեր կանոնները խօսում են Կելեստինոսի—Հռոմայ պապի մասին։

5. Նրանք, որոնք անվայել արարմունքների համար դատապարտուած են սուրբ ժողովով, կամ իրանց եպիսկոպոսներով, եթէ Նեստորը, կամ նրա համախոհները՝ հակառակ կանոններին՝ կկամենան նորից նրանց եկեղեցու հետ հաղորդակից անել, կամ քահանայական աստիճանը վերադարձնել, ոչինչ չեն վաստակիլ, որովհետև կարգազուրկները կմնան իրանց պատժի մէջ։

6. Եթէ նրանք, որոնց համար Եփեսոսի սուրբ ժողովս կարգադրութիւններ է արել, կփորձեն խախտել այդ որոշումները, դրանք լինեն եպիսկոպոս թէ ուրիշ հոգեւորականներից, բոլորովին զրկւում են իրանց կարգից, եթէ աշխարհականներ են՝ բանադրւում են։

Սրանից յետոյ ժողովը կարդում է Փիլադելֆիայի Խարիս քաղաքի աղաւաղած Հանգանակը, և Նիկիայի Հանգանակը և որոշում է անփոփոխ և անյեղլի պահել Նիկիայի Հանգանակը և բանադրել այն բոլոր յաւելումներով և փո-

փոխուԹիւններով կազմածները ինչպիսին է այդ քահանայի կազմածը։ Ռուսաց Кормчая книга և Книга правилъ—ընդունում են այս իբրև 7-րդ կանոն։

Ապա ժողովը քննեց Կիպրոսի եպիսկոպոսների բողոքը Անտիոքի միտրոպոլտի դէմ, որը հակառակ հինաւուրց սովորուԹեան ուզում է Կիպրոսը ենԹարկել իւր իրաւասուԹեան, եպիսկոպոս կարգել Նրն։ Ժողովը քննելով այդ խնդիրը, որոշեց հին սովորուԹեան համեմատ Կիպրոսը անկախ եկեղեցական վարչուԹիւն համարել ազատ Անտիոքի միտրոպոլտի գերիշխանուԹիւնից։ Այդ մասին շրջաբերական Թղթով յայտնում է Կիպրոսի և շրջակայ եպիսկոպոսներին։ Այս կարգադրուԹիւնը Ռուսական և Սլաւոնական կանոնագրքերում համարուած է իբրև 8-րդ կանոն։ Ժողովը գրեց Թուղթ և Պամփիլիայի ժողովին, նրանց նախկին Եւստափ միտրոպոլտի մասին, որը մասնաւոր տեղական նշանակուԹիւն ունէր։ Այս սլաւոնական կանոնագիրը ընդունում է իբրև 9-րդ կանոն։

Սրանով վերջանում են երեք տիեզերական ժողովների կանոնների վրայ ասելիքը և նկատումները։ Բացի այս երեք տիեզերական ժողովներից էլի կան 4 տիեզերական ժողովներ, որոնք մենք չենք ընդունում։ Որպէս զի ընԹերցողները ընդհանուր գաղափար կազմեն մնացած մեզ համար անընդունելի 4 տիեզերական ժողովների մասին, համառօտակի կյիշեմ նրանց կազմելու ժամանակը և նիւԹերը։ Դ. տիեզերական ժողովը եղաւ 451 Թուին, որտեղ որոշուեց դաւանել ի Քրիստոս երկու բնուԹիւնը։ Այս ժողովը առաջին անգամ մերժուեց մեր մէջ Բաբգէն կաԹուղիկոսի օրով 507 Թուին. սրա մասին աւելի երկար տես Դուինի Ա. ժողովը 507-ին եղած։

Ե. տիեզերական ժողովը եղաւ Պոլսում 553 Թուին Յուստինիանոս կայսեր ժամանակ Նեստորական եպիսկոպոս Թէոդորոս Մոպսուեստացու, Թէոդորիտ Կիրացու և Իւի Եդեսացու (ու Որոգինէսի) դէմ, որոնք Թէ և Գ. տիեզերական ժողովում կուսակից էին համարւում Նեստորին, բայց պատժի և նզովքի դեռ չէին ենԹարկուել։ Այս ժողովում յիշ-

ւում են 6 եպիսկոպոս Հայաստանից, արդեօք հայ թէ յոյն էին, յայտնի չէ։

Զ. ժողովը եղաւ 680-ին Կոստանդին կայսեր օրով նրանց դէմ, որոնք Քրիստոսի մէջ մի կամք էին դաւանում (МОНОӨЕЛИТЫ)։ Այս ժողովներում եկեղեցական կանոններ չսահմանուեցին։ Այդ մտքով Յուստինիանոս II 692-ին հրամայեց նոյն տեղում ժողով անել և կանոններ սահմանել 'ի լրումն Ե. և Զ. տիեզերական ժողովների. այս տեսակէտով միջնադարեան կանոնիկները անուանում են այս ժողովը Հինգ-Վեցեան, որտեղ սահմանուեց 102 կանոն։ Արևելեան աստուածաբանները 692-ի ժողովը համարելով 680-ի շարունակութիւն, անուանում են 692-ի ժողովը տիեզերական Զ. ժողով։ Այս ժողովում յիշւում են 5 եպիսկոպոս Հայաստանից (Փոքր-Հայքից)։ Այս ժողովի 32, 33, 56 կանոնները խօսում են հայոց եկեղեցու մի քանի սովորութիւնների մասին։

Է. տիեզերական ժողովը եղաւ Նիկիայում Իրինա կայսրուհու հրամանով 787-ին պատկերապաշտութեան վերականգնման համար։ Այստեղ Փոքր-Հայքից եղել են երկու եպիսկոպոս։—(Տես Дѣянія вселенскихъ соборовъ)։

## 5) ՎԵՑ ԱՐՏԱՔԻՆ ՏԵՂԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐԸ.

Հայոց եկեղեցական իրաւունքի ընդհանուր աղբիւրների հինգերորդ կարգին պատկանում են 6 տեղական արտաքին ժողովները, այն է՝ Անկիւրիայի, Նէոյ-Կեսարիայի, Գանգրի, Կեսարիայի, (Անտիոքի), Լաւոդիկիայի և Սարդիկիայի։ Ի՞նչ հիմամբ այս վեց ժողովները ընդունում ենք իբրև աղբիւր մեր եկեղեցական իրաւունքի։

«Թուղթ Գրիգորիսի կաթուղիկոսի հայոց՝ ձայնակցութեամբ ընդհանուր ժողովոյ Հայոց» գրութեան մէջ ժողովն ասում է, մենք բացի տիեզերական 3 ժողովից, ընդունում ենք և այլ և այլ ժողովները և մէկ մէկ թւում է։ «Գտանին և այլ և այլ ժողովոց կանոնագրութիւնք իմէջ մեր, և ընդունելի են, որք զզանազան կարգս եկեղեցեաց հաստատեցին, և զպէս պէս հերձուածս հերքեցին։ Որպէս և Անկիւրիայ ժողովն՝ ի հերքումն Լիկիանոսի ամբարըշտութեան, որ ի զոհս կռոցն՝ բռնադատէր զերիցունսն։ Եւ Կեսարիայն՝ ընդդէմ յուռթից կանանց։ Եւ Նէոյկեսարիայն՝ ընդդէմ անխտիր պոռնկութեան։ Եւ Կանգրայն՝ ընդդէմ Օստացւոց հերձուածոյն։ Եւ Լաւոդիկիայն՝ ընդդէմ չորեքտասանորդացըն։ Եւ Սարդիկիայն՝ 'ի պէտս եկեղեցական կարգաց։ Յայս ուղղափառ ժողովոցս՝ և որք նոցին հանգոյն՝ ուսաք զհաւատոյ դաւանութիւն և ի նոցին կանոնագրութենէ եկեղեցական կարգաց՝ վայելչութիւն»։ Ահա այս 1178 թուի ժողովի վճռի հիման վրայ այս վեց ժողովը համարում ենք հայոց եկեղեցական իրաւունքի աղբիւր։

Յոյները ընդունում են ութ մասնաւոր ժողով, բացի այդ վեցից ընդունում են Կարթագենի և Պօլսոյ ժողովները.

Հռոմի եկեղեցին 7 մասնաւոր ժողով։ Պէտք է ի նկատի ունենալ որ 6 ասելով չի հասկացւում Կեսարիայի ժողովը հետը, հապա Անտիոքինը, Անկիւրիայինը, Նէոկեսարիայինը, Գանգրինը, Լաւոդիկինը և Սարդիկիայինը. օտար եկեղեցիներում Կեսարիայի անունով ժողով չկայ և չի էլ եղել, վաղ ժամանակներում Կեսարիայում եղել է ժողով զատիկը տօնելու համար, բայց այնտեղ կանոններ չեն սահմանուել։ Թէ Յովհան սխոլաստիկի կազմած և թէ Դիոնիսիոս կրտսերի լատիներէն թարգմանած ժողովածուների մէջ կային բացի առաքելական կանոններից 10 ժողովների կանոններ, որոնցից 4-ը տիեզերական և 6 տեղական ժողովներ էին։ Հայերը նոյնն ընդունել են հետևեալ փոփոխութեամբ, 4 տիեզերական ժողովից Քաղկեդոնինը դուրս են ձգել և թողել 3 տիեզերական ժողովները. իսկ մնացած վեցից Անտիոքինը դուրս են ձգել անյայտ պատճառով և նրա փոխարէն աւելացրել են գոյութիւն չունեցող Կեսարիայի ժողովը։ Արդեօք երբ են թարգմանել այս վեց ժողովները, Ե. դարում թարգմանիչների ժամանակ, թէ՞ 692 թուից յետոյ, երբ օտար եկեղեցիները որոշեցին ընդունել 6 տիեզերական ժողովները (7-դը չէր եղել), 8 մասնաւոր ժողովները և 13 հարց կանոնները։ Որ ասել է Յովհան Օձնեցու ժամանակին կհասնենք, արդեօ՞ք Օձնեցին կազմել է կանոնագիրքը թարգմանելով նորից բոլորը, թէ՞ արդէն Ե-դարից կազմածը իրան ձեռքը հասած լինելով, նորից կանոնաւորեց, կարգի բերաւ և հրատարակեց, այս մասին առ այժմ ոչ մի հաստատ տեղեկութիւն տալ չենք կարող։ Մեր բոլոր կանոնագրքերում կան այս ժողովների կանոնները և յայտնի է այդ ձեռագրերից որ 997-թուից առաջ են գրուել, որովհետև կաթուղիկոսների ցուցակը բերւում է դրանց մէջ Լուսաւորչից սկսած և հասցնում է մինչև 997 թիւը։ Դրանց բոլորի մէջ կայ թէ Կեսարիայի չեղած ժողովի կանոնները, որոնք ընդունուած են մեր ԺԲ. դարի ժողովում, և թէ Անտիոքի ժողովի կանոնները, որոնք չեն ընդունուած ԺԲ. ժողովում։ Օտար տեղական երկու ժողովների—Կարթագենի և Պօլսոյ

(394 թ.) կանոնները չկան թէ մեր կանոնագրքերում և թէ ԺԲ. դարի մեր ժողովի որոշման մէջ։ 4 մնացած տիեզերական ժողովները չկան թէ մեր կանոնագրքերում և թէ Հարկաւ ԺԲ. դարի ժողովի վճռի մէջ։ Բայց թէ ինչու չեղած Կեսարիայի ժողովի կանոններն են մտցրել մեր կանոնագրքերը, երևի Հէնց Օձնեցուց սկսած և ինչու ԺԲ. դարի ժողովում այդ Կեսարիայի ժողովը ընդունել են և դուրս ձգել Անտիոքի—Մեր բոլոր կանոնագրքերում արտագրած ժողովը շատ մութ է և անորոշ։ Ասացի որ Պաղեստինում (Կեսարիայում) եղել են արևելեան և արևմտեան եպիսկոպոսների վէճի ժամանակ ժողով զատկի տօնը կանոնաւորելու Համար, այդտեղ կանոններ չեն սաՀմանել։ Զաօզերսկին բերում է «Чтеніе об. люб. дух. прос» լրագրի 1882 Համարում արևելեան ազգերի նախանիկիական կանոնների ժողովածուն (кодификація восточной доникейской церкви)· այդ ձեռագիր կանոնագրքերում, որոնք գրուած են եթովբական, ասորական լեզուներով, յիշատակւում են կանոնների կարգը, ժողովների անունները և դրանց մէջ կեսարիայի անունով ժողով չենք գտնում. ահա նրանց ընդՀանուր կարգը, որ քաղուած է Հռոմի գրադարանի ձեռագրերից Լուդոլֆի ձեռքով, նոյնպէս Բանսլէֆի և այլոց ձեռքով։

Եթովբական ժողովածու. 1) Առաքելոց կանոններ Կղեմայ գրած. 2) Անկիւրիայի, 3) Կեսարիայի, 4) Նիկիայի, 5) Գանգրի, 6) Անտիոքի, 7) Լաւոդիկիայի, 8) Սարդիկիայի։

Նոյնը նկարագրում է Բանսլէֆ և 3) Կեսարիայի փոխարէն դնում է Նէոկեսարիա։

Ասորական ձեռագրերում—1) Առաքելական կանոններ. 2) Առաքելական կարգադրութիւններ. 3) Նիկիայի, 4) Անկիւրիայի, 5) Նէոկեսարիայի, 6) Գանգրի, 7) Անտիոքի, 8) Լաւոդիկիայի, 9) Կոստանդինուպօլսի, 10) Եփեսոսի՝ 11) Կարթագենի։

Ուրիշ Ասորական ձեռագրերում. 1) Առ.-81 կ. 2) Նիկ-20. 3) Անկ-24 կ. 4) Նէոյ-14. 5) Գանգ-20 կ. 6) Անտ-25 կ. 7) Լաւոդ-59 կ. 8) Կոնս.-4 կ. 9) Եփեսոսի, 10) Քաղկեդոնի-27 կ.։

*Արաբական ժողովածուներում.* 1) Ա.ռ. 82. 2) Նիկ-25. 3) правила (4) собора въ Карөагенѣ называемаго также Кесарія или Неокесарія». 4) Գանգ.-20 կ. 5) Անտ.-25. 6) Նիկ.- 7) Լաւ.59 կ. 8) Սարդ.-20.։

*Այս ձեռագրերում երկու տեղ Կեսարիա է գործ ածուած Նէոկեսարիայի փոխարէն, բայց ոչ մի տեղ չկայ և Կեսարիա և Նէոկեսարիա։*

*Մեր ձեռագրերում ժողովների դասաւորութիւնը միանման չէ, փոփոխւում է, բայց մեծամասնութիւնը հետևեալ ձևն ունի։* 1) Ա.ռ. կանոնք 34. 2) Ա.ռ.,կան. Կղեմայ գրած-85 կ. 3) Նիկիայի 20 կ. 4) Թադէոսի- 34 կ. 5) Փիլիպպոսի 9 կ. 6) Հարանց Հետևողաց 24 կ. 7) Անկ-20 կ. 8) Կեսարիայի-10 կ. 8) Նէոկեսարիայի-20 կ. 10) Գանգ. 25 կ. 11) Անտ.-24 կ. 12) Լաւ.- 55 կ. 13) Սարդիկ 21 կ. 14) Գր. Լուսաւորչի-30 կ. 15) Բ-Նիկիականք-114 կ. 16) Պօղոսոյ-3 կ. 17) Եփես.-6 կ. 18) Աթանասի-96 կ. 19) Բարսեղ մեծի 50 կ. 20) Էլի Բարսեղի-271 կ. 21) Շահապիվանի-20 կ 22) Սահակայ 54 կ. 23) Ներսէսի և Ներշ-38 կ. Գուինի և լն և լն, *որոնք բոլորովին ազգային և օտար ս. Հայրերի կանոններ են։*

*Յունաց և լատինաց մէջ Կեսարիայի ժողով անունով վաւերական եկեղեցական իրաւունքի աղբիւր չունին։ Այնպէս որ մեզ համար հանելուկ է մնում Կեսարիայի անունով ժողովի մուծելը մեր կանոնագրքերը, սրա մասին տես էլի «Անկիւրիայի և Կեսարիայի ժողովները»։—*

*Անտիոքի ժողովի մասին տես «Անտիոքի ժողովի կանոնները»։*

## Ա) ԱՆԿԻՒՐԻԱՑԻ ԵՒ ԿԵՍԱՐԻԱՑԻ ԺՈՂՈՎՆԵՐԸ։

Անկիւրիայի ժողովի կանոնները 25 հատ են, իսկ մեր ձեռագրերում 20 հատ, 5-ով պակաս են։ Ասացի որ ընդհանուր եկեղեցական պատմութեան մէջ Կեսարիայի անունով ժողով չկայ, որտեղ կանոններ դրած լինին։ Հապա ո՞րտեղից է մտել կեսարիայի ժողովը մեր կանոնագրքերը։ Այս հանելուկը լուծւում է թեթև կերպով երբ ուշադրութեամբ համեմատում ենք Անկիւրիայի վերջին 6 կանոնը Կեսարիայի ժողովի 10 կանոնի հետ։ Մերոնք վերցրել են Անկիւրիայի ժողովի 25 կանոնից 19 հատ, մէկն էլ աւելացրել և դարձրել 20, իսկ Անկիւրիայի մնացած 6 կանոնը, այսինքն 20, 22, 23, 24, 25 կանոնները դարձրել են Կեսարիայի ժողովի կանոններ, որպէս զի տարբերութիւն գնեն սրանց և Անկիւրիայի վերջին կանոնների մէջ, մտցրել են մէջէ մէջ 4 կանոն ևս և ստացել են 10 հատ Կեսարիայ կանոններ։ Ուրեմն կեսարիայի 10 կանոնները կազմուած են և առնուած Անկիւրիայի 25 կանոնից և 4 էլ նման կանոններ մէջէ ի մէջ ներմուծուած։ Ապացոյց այդ բանին կարող եմ բերել միքանի ձեռագրեր, որտեղ կեսարիային յատկացրած աւելի քիչ կանոն, այն է 7, կամ 8, կամ 6։ № 742 ձեռագրերում 6 կանոն է նշանակած, երկարացրած ու ձգձգած ըստ քմահաճոյքի։ № 743-ում 7 կանոն է յատկացրած կեսարիայի ժողովին։ № 741-ում էլի 7 կանոն, նրանց մէջ չկան 7, 8, և 10-րդ կանոնները։ Ո՞վ է արել այսպէս և ինչու է արել. եթէ արուած է ինչու յոյները չեն ընդունել, և նրանց ձեռագրերում ինչու չկայ, մանաւանդ որ կեսարիայինը ազգային հայոց կանոններ չեն, հապա յունաց։ Մնում է մեզ մի ենթադրութիւն անել. որ Անկիւրիայի ժողովին մասնակցող կեսարիայի եպիսկոպոսը վերադառնալով

իւր քաղաքը և տեսնելով մի քանի անառակ երևոյթներ քաղաքի մէջ, ցանկանալով արմատախիլ անել այդ ախտերը, վերցրել է Անկիւրիայի ժողովի վերջին 6 կանոնները, նորից քննել և քաղաքում ժողովի խնդիր դարձրել և մի քանի փոփոխութիւններով հրատարակել քաղաքում իբրև ժողովի հրաման, որ նշանակութիւն ունենայ քաղաքացոց աչքում. մանաւանդ որ Անկիւրիայի և Կեսարիայի ժողովը մեր ձեռագրերում միշտ յաջորդաբար են զետեղուած և միևնոյն թուականին գրուած 314-315 թուականներին։ Գուցէ ուրիշ աւելի ծանրակշիռ պատճառ ունենայ այդ փոփոխութիւնը, բայց որովհետև այդ մասին ուրիշ յիշատակութիւն չունինք, ուստի կթողնենք անորոշ դրութեան մէջ և կընդունենք փաստօրէն այն՝ որ Անկիւրիայի ժողովի 25 կանոնները աղբիւր են մեր եկեղեցական իրաւունքի համար, իսկ Կեսարիայի անունով ժողով չլինելուն պատճառով, պիտի դուրս ձըգէինք մեր ցուցակից, բայց որովհետև 1178 թուի մեր ժողովում ա՛յդ Կեսարիայի անունով ժողովը ընդունուած է, ուստի իրաւունք չհամարեցինք հակառակ գնալ ժողովի որոշման, թողնելով ա՛յդ ապագայ հայոց ժողովի վերջնական վճռին։

---

## ԱՆԿԻՒՐԻԱՅԻ ԺՈՂՈՎԻ ԿԱՆՈՆՆԵՐԸ 313-315 Թ.

Գաղատիայի Անկիւրիա քաղաքում 313-315 թուականներին Անտիոքի եպիսկոպոսի նախագահութեամբ, 18 եպիսկոպոսի մասնակցութեամբ, որոնց մէջ էր Կեսարիայի եպիսկոպոս Ագրիկօլա, եղաւ այս ժողովը, որը սահմանեց 25 կանոն։

Ժողովի նպատակն էր որոշ կանոններ սահմանել այն հաւատուրացների համար, որոնք չկարողանալով տանել, Մաքսիմիանոս կայսեր անգթութիւնները և հալածանքներըւ ուրացել էին իրանց հաւատը, ապա ապաշխարելով և զղջալով, էլի վերադառնում էին եկեղեցու գիրկը։ Ժողովը կամենալով յարմարացնել կանոնները հաւատուրացների զանազան հանգամանքներում գտնուած դրութեան հետ, բաւական չափով զիջողաբար վարուեց ապաշխարանքներ նշանակելիս։ Նոյն ժամանակ Աղէքսանդրիայի Պետրոս եպիսկոպոսը նոյն տեսակ կանոններ էր սահմանում իւր վիճակի համար։

Յունաց մեկնիչների, սլաւոնական կանոնագրքի և այլոց վկայութեամբ պնդւում է, որ բոլոր ժողովներից առաջ եղել է Անտիոքի ժողովը Պօղոս Սամոսատացու դէմ Աւրելիան կայսեր օրով. իսկ երկրորդ ժողովն է այս Անկիւրիայինը նախ քան Նիկիայի ժողովը։

1. Այն քահանաները, որոնք կուռքերին զոհ են արել, բայց յետոյ քաջութեամբ պաշտպանել են հաւատը ճշմարիտ և ուղիղ սրտով, դրանք չեն զրկւում բարձրոցի վրայ նստելու պատւից, բայց իրաւունք չունին քահանայագործութիւն անել։

2. Նոյնը և սարկաւագների վերաբերմամբ լինի. միայն եթէ հեզ և եռանդոտ կլինին, եպիսկոպոսը կարող է նրանց վիճակը բարեփոխել։

Բ. տռ. 62, Գ-Ադ—20 կ.

3. Նրանք, հոգևորական թէ աշխարհական, որոնք դանադան բռնութիւնների և տանջանքների մէջ ընկած, զօրով և ստիպմամբ ղոհի միս, կամ ուրիշ միջոցով վերցրած և բերանները դրած լինին և միշտ կրկնելիս որ իրանք քրիստոնեայ են, դրանք բոլորը համարուեն եկեղեցու հաւատացեալ և եթէ արժանաւոր են, ընդունեն կանոնաւոր կարգով հոգևորականների շարքը։

4. Որոնք ստիպմամբ զոհ կանեն, բայց անհոգաբար ծիծաղերես յաւ շորերով դրանց խնճոյքներում կմասնակցեն, այդպիսիները մի տարի ունկնդիր թող լինին, 3 տարի ներսի ունկնդիր (ընդ ձեռամբ), 2 տարի ապաշխարողներ և ապա աղօթողների հետ միանան և հաղորդուին։

5. Նրանք, որոնք լացով և տխրութեամբ են կերել և մասնակցել զոհաբերութեան, 3 տարի ներսի ունկնդիր լինելուց յետոյ, կընդունուեն հաւատացեալների կարգը առանց հաղորդութեան։ Որոնք չեն կերել, երկու տարի կմնան (ընկնողների) ներսի ունկնդիրների հետ և ապա կմիանան եկեղեցում հաւատացեալների հետ առանց հաղորդութեան։ Եպիսկոպոսները դրանց փորձի ենթարկելու ժամանակ կարող են փոփոխել նայելով դրանց անկեղծութեամբ զղջալուն ապաշխարանքի ժամանակը։

6. Նրանք, որոնք երկիւղից միայն զոհ են արել, վեց տարի ապաշխարելուց յետոյ, կհաղորդուին, նոյնպէս և մահամերձ լինելիս, թող հաղորդուին, այն պայմանով որ երբ առողջանան էլի շարունակեն իրանց ապաշխարանքը։

7. Որոնք զոհատեղերում կերել են իրանց տարած ուտելիքը, երկու տարի ներսի ունկնդիր լինելուց յետոյ, միանան հաւատացեալների հետ, իսկ հաղորդուիլը կախուած կլինի եպիսկոպոսից։

8. Երկու երեք անգամ ստիպմամբ զոհ անողները 7 տարուայ ապաշխարանքի ենթարկուեն։

9. Որոնք բացի հաւատուրացութիւնից՝ միւսներին էլ ստիպում են ուրանալ իրանց հաւատը, այդպիսիներին ենթարկել տասնամեայ ապաշխարանքի։

Մեր ձեռագրերում համարները նոյն են, միայն երկարաբանած և օրինակների յաւելումներով ճոխացրած են։

10. Եթէ սարկաւագները ձեռնադրութեան ժամանակ կըյայտնեն, որ պսակուելու ցանկութիւն ունեն, կարող են ձեռնադրութիւնից յետոյ պսակուել և ծառայութեան մէջ մնալ, եթէ եպիսկոպոսը կթոյլադրի։ Իսկ եթէ ձեռնադրելիս կլռեն, կխոստանան ամուրի մնալ, բայց յետոյ կամուսնանան, այդպիսիները պիտի դադարեն սարկաւագութիւն անելուց։

Բ. առ-26 կանոնը հրամայում է որ հոգևորականութեան մէջ մտածը իրաւունք չունի պսակուելու բացի գրակարդացից և երգչից. իսկ այս կանոնս հաստատում է նոյնը, միայն մի քիչ մեղմացրած, որ եթէ ձեռնադրուելիս յայտնի որ առանց ամուսնանալու չի կարող ապրել, այդպիսի սարկաւագը կարող է պսակուել։

Մեր կանոնագրքերում 11-րդ կանոնն է այս։

11. Նշանուած աղջիկները եթէ առևանգւում են, պէտք է գնան առաջուայ նշանածին, թէկուզ առևանգողից ըկման ենթարկուած լինեն։

Տես Բարս.-22 կ. Մեր ձեռագրերում 12 կանոնն է։

12. Մկրտութիւնից առաջ զոհ անողները՝ եթէ մկրտւում են, կարող են հոգևորական դառնալ՝ մեղքերից սրբուելուց յետոյ։

Մեր ձեռ-13 կանոնն է։

13. Վայել չէ քորեպիսկոպոսներին քահանաներ և սարկաւագներ ձեռնադրել, նոյնպէս իրաւունք չունին քաղաքներում առանց տեղական եպիսկոպոսի թոյլտուութեան քահանաներ կարգել։

Այս կանոնս խառն է գրուած թէ մեր և թէ օտար կանոնագրքերում, այս կանոնս թարգմանում են և այսպէս

«չի թոյլադրում քաղաքի քահանաներին ոչ մի կարգադրութիւն անել իրանց շրջանում առանց թոյլտուութեան». թէ այս կտորը և թէ 13-կանոնի թարգմանութիւնը վերցրել եմ ռուս Յովհաննէս վարդապետից, որը ամենընդունելի համարեցի. տես (Опытъ ц. зак. Іоанна)։

Քորեպիսկոպոսների մասին տես. Նէո-14, Անտ. 10, Բարս. և Սահակի կանոնները։

Մեր կանոնարքերում 14-րդ կանոնն է այս։

14. Այն քահանաները և սարկաւագները, որոնք միս չեն ուտում, պիտի ճաշակեն և ապա էլի պաս պահեն։ Իսկ եթէ կհրաժարուին ճաշակելուց և չեն ուտիլ մսի հետ դրած բանջարեղէնը և այս կանոնին հնազանդ չեն լինիլ, կարգալոյծ լինեն։

Մեր կանոնագրքերի 15-րդն է։ Տես Բ. Առ-51 կ.։ Բարս. 17, 18, 19։

15, Եթէ քահանաները եկեղեցապատկան իրերից մի բան կվաճառեն եպիսկոպոսի բացակայութեան ժամանակ, եկեղեցին պիտի յետ պահանջի։ Եպիսկոպոսից է կախուած վաճառուածի գինը վերադարձնել և չվերադարձնել։ Շատ է պատահել, որ կալուածի արդիւնքը աւելի շատ է եղել քան վճարած գինը։

Մեր ձեռագրերում 16-րդ կանոնն է։

Եթէ արդիւնք բերող կալուածք է ծախուել առանց եպիսկոպոսի, սա կարող է պահանջել կալուածքը և փոխարէն տալ կամ ստացած գինը, կամ եթէ արդիւնքը շատ է եղել, գինը չի վերադարձնել, այլ ստացած արդիւնքը հաշուել գնի փոխարէն։

Տես և Անտ. 24, 25 կ.

16. Անասնագիտութեամբ պարապողները՝ եթէ դեռ եւ 20 տարեկան չեն, 15 տարի ներսի ունկնդիր լինելուց և 5 տարի աղօթողների հետ ապաշխարելուց յետոյ, թող հաղորդուին։ Եթէ շարունակեն իրանց ախտը, ապաշխարանքն էլ շարունակուի։ Եթէ ամուսնացած են և 20 տարեկանից վեր, 25 տարի

աշխարհէն ներսում և 5 տարի աղօթողների հետ և հաղորդութիւն։ 50 տարեկան եղողները մինչև մահ աշխարհէն և մեռնելիս հաղորդուին։

Մեր Ձեռ—17-րդ կանոնն է։

17. Անասնագէտներին և բորոտներին (պիսակոտ) սուրբ ժողովը հրամայում է աղօթել դիւահարների հետ։

Յունաց մեկնիչները զանազանակերպ են հասկանում դիւահար խօսքը. ոմանք ըմբռնում են իսկական մտքով, այսինքն այնպիսի անձինք որոնք ոգիներով լիքն են, այնպիսի հիւանդութիւն ունին, որ ներս թողնել եկեղեցին չի կարելի. ոմանք հասկանում են իբրև դրսի ունկնդիրներ, որոնք չնայելով անձրևին, քամուն, պիտի կանգնէին և աղօթէին։

Մեր ձեռագրերում (18 կ.) չկայ անասնագէտ, այլ միայն բորոտութիւն կամ ինչպէս մերոնք են գրում պիսակութիւն, կամ բիծ ունեցող ախտ։—

18. Կարգուած եպիսկոպոսը եթէ չի ընդունւում թեմի կողմից, և կամենում է ուրիշ թեմ անցնել, խռովութիւն ձգել և այնտեղ եպիսկոպոս լինել, նա մերժւում է եկեղեցուց։ Իսկ եթէ կկամենան նախկին տեղերում քահանայութիւն անել, կարող են, իսկ եթէ այնտեղ էլ խառնակութիւն ձգեն, կզրկուին և քահանայական պատուից։

Մեր ձեռագրերում 19—կանոնն է։

Տես—Բ. առ. 14, 15, 30, 36. Անտ.—16, 17, 18. Նիկ. 8, Եփ. 9,։

19. Չպսակուելու ուխտ անողը և ուխտը խախտողը կենթարկուի երկապատկների ապաշխարանքին։ Կոյսերին արգելւում է ապրել մարդկանց հետ իբր եղբայրների։

Չպսակուելու ուխտ անողը կամ ըստ մեր ձեռագրաց կուսութիւն պահել խոստացողները ինչպէս պիտի հասկանալ, արդեօ՞ք վանականներ, թէ աշխարհականներ։

Եթէ վանականը ուխտից յետոյ պսակւում է, ենթարկ-

ւում է ոչ թէ երկապսակների ապաշխարանքին, այլ աւելի խիստ պատժի, այն է՝ պսակը համարւում է անվաւեր, ուխտականը խիստ պատժւում է և ուղարկւում է աքսոր այն վանքը, որտեղ ինքը ձեռնադրուել է։ Այստեղ ուխտի խախտումը ինչպէս պիտի հասկանալ, պաճկ թէ անառակութիւն. եթէ անառակութիւն հասկանայլին, ժողովը երկապըսակների ապաշխարանքին չէր ենթարկիլ, այլ անառակների պատժին. (Վալսամոն)։ Երկապսակների ապաշխարանքը Բարսեղ մեծի 4-կանոնով 1 տարի եկեղեցուց մերժուելն է, կամ ըստ միւս հայրերի 2 տարի։ Բայց Բարսեղ մեծը ուխտ անող ընդունում է միայն կուսակրոններին և ոչ աշխարհականներին, ինչպէս Արիստինն է ասում, և եթէ ուխտ անողը խօսքը դրժում է և անառակութիւն է անում, նա ենթարկւում է ըստ Բարսեղի 59 կանոնի հետևեալ ապաշխարանքի, 2 տարի լացող, 2 տարի դրսի ունկնդիր, 2 ներսի ունկնդիր, 1 տարի հաւատացեալների հետ, 8-րդ տարին հաղորդւում է։ Բարսեղ մեծ 18-կանոնով ուխտազանց աղջիկը համարում է շնացող և այդ պատժին ենթարկուող։ Այս ժողովի 10-րդ կանոնը խօսում է ամուսնացող սարկաւագների վրայ, հեռացնելով նրանց սարկաւագութիւնից, այստեղ նոյնպէս խօսում է ամուսնացող հոգևորականների վրայ, որոնց ենթարկում է երկապսակների ապաշխարանքին և դադարացնում (10-րդ կանոն) քահանայագործութիւնից։ Ժողովի կանոնները աւելի մեղմ են քան Բարսեղինը։

Տես Անկ. 10, Բարս.—6, 18, 19, 60, Գր—Նիւս.—4, Լաւ. 1.

Մեր ձեռագրերում 20-դն է այս, այն պատճառով, որ այս կանոնների մէջ սպրդել է մի նոր կանոն, որը չկայ Անկիւրիայի ժողովի կանոնների մէջ։ Մերոնք կանոնը բացադրելու, օրինակներ բերելով պարզաբանելու սովորութիւնը ունին, 9-րդ կանոնը խօսում է ուրիշներին զոհի միս ուտեցնելով և հաւատուրացութեամբ գայթակղեցնելուն համար, ապա սկսում է երկար ու բարակ խօսել զոհած մսի, կամ առհասարակ անխտիր կերակուր գործածելու մասին և

անցնում է՝ խրատական ձևին. ահա այս դարձրել են առանձին կանոն 10-րդ համարի տակ, որը չկայ իսկական կանոնների մէջ, և չի ներկայացնում նոր բան, հապա կրկնութիւն է զանազան կանոնների քաղուածքների։ Այդ տասներորդ կանոնի համառօտ բովանդակութիւն է այս որ անխտիր կերպով հեթանոսաց կերակուր չպիտի ուտել, որովհետև «պղծոցն ամենայն ինչ պիղծ է». երկար խրատելով նոյն ուղղութեամբ, պատուիրում է հակառակ գնացողին մի տարի ապաշխարել և աղքատներին ողորմութիւն տալ։—

—Եւ Կեսարիայի 10 կանոնները.

Հայոց ձեռագիր կանոնագրքերում այստեղ վերջանում է Անկիւրիայի ժողովի կանոնները և սկսւում է Կեսարիայի ժողովի 10 կանոնները։ Բայց որովհետև Անկիւրիայի ժողովի կանոնները 25 հատ են և ոչ 19, ուստի և 6 կանոնը, որը չէ գրած մեր ձեռագրերի Անկիւրիային վերագրած կանոնների մէջ, այլ յատկացրած է Կեսարիային, կշարունակենք գետեղել իւր կարգով, դիմացը դնելով Կեսարիայի կանոնի թուահամարը մեր ձեռագրքերի համեմատ փակագծի մէջ։

20. (1—Կեսարիայի ժողովի կանոնների թուահամարը) Շնութիւն անող մարդ թէ կին ենթարկւում են 7 տարուայ ապաշխարութեան՝ մինչև որ հաղորդութեան կարժանանան նշանակուած աստիճաններով ապաշխարանք կրելուց յետոյ։

Այս կանոնս կրկնուած է Կեսարիայի կանոնների մէջ, այն տարբերութեամբ որ բոլոր կանոններում մարդկանց համար նշանակած կարգերը վերագրած են կանանց և Կեսարիայի 10 կանոնները դարձրած են բացառապէս կանանց համար սահմանած կանոններ. այդ հիմամբ էլ մեր ԺԲ. դարու ժողովը ասում է Կեսարիայի ժողովի համար թէ եղել է «ընդէմ յուռթից կանանց»։ Իսկականի մէջ ասուած է «շընութիւն անող մարդ թէ կին»։ Կեսարիայի կանոնում հանուած է մարդը և մնացել է կինը։ Իսկականի մէջ 7 տարի

պատիժ է նշանակում առանց յիշելու ատրիճանները, Կեսարիայինը յիշում է աստիճանները. ահա համեմատութեան համար կդնեմ գրաբառը։

ա) «Վասն կանանց որ ըստ արամբ են և շնան, թէ թողցեն ի բաց զպղծութիւն. և ապաշխարութիւն եկեսցեն. Ե. ամ առ դրանն ընդ ձեռամբ կացցեն և Բ. ամս մտեալ եկեղեցի ելցէ ընդ ապաշխարողս. քննեալ զվարքն որաւք տնանկաց քաւեալ զմեղս իւր հաղորդելոյ ուրինացն արժանի լիցին»։ Ուրեմն Կեսարիայի ա. կանոնի իմաստը նոյն է ինչ որ Անկիւրիայի 20 կանոններն է, որ շնութիւն անողը 7 տարի պիտի ապաշխարի։

Տես Բարս. 22. 21. կ.։

— Բ. (2) Նոյս աղջիկները եթէ հարսանիքից առաջ շնացան, թող ջերմ արտասուքով և տնանկներին ողորմութիւն տալով ապաշխարեն 2 տարի դրսեը և մի տարի եկեղեցում, ապա հաղորդուին և պսակուին։ Ապաշխարի և մարդը։

Այս կանոնս Անկիւրիայի 20-րդ կանոնի ուղիղ շարունակութիւնն է և պարզաբանութիւնը. Կեսարիայի եպիսկոպոսները այս կանոնովս 20-կանոնի բաց թողած կէտը լրացնում են։ 20-ում խօսում էր շնութիւն անող ամուսնացած կանանց մասին, այստեղ խօսում է շնութիւն անող նշանուած աղջիկների մասին։

Այս կանոնս կրկնութիւն է 11-ի, այնտեղ խօսում է առևանգածի մասին, այստեղ ոչ առևանգածի, այնտեղ չնըշանուածի, այստեղ նշանուածի մասին։

Այս է Կեսարիայի 2-րդ կանոնը, որը բառացի կերպով չկայ Անկիւրիայի կանոններում։

21. (3) Գ. Կանայք՝ որոնք պոռնկութիւն են անում և պտուղը ոչնչացնում և մանկասպան դեղօրայք են պատրաստում, նախկին վճիռներով մահ չպիտի հաղորդուէին, այժմ մարդա-

*սիրութիւնից դրտուած 10 ամեայ ապաշխարանք ենք նըշանակում որոշեալ աստիճաններով։*

**Իսկ Կեսարիայի (3) Գ. կանոնը այս է «կանայք՝ որոնք պոռնկութիւն են անում և մանուկներ սպանում, նախկին վարդապետները ցմահ ապաշխարանք էին նշանակել նրանց, բայց մենք մարդասիրաբար 5 տարի դրսի ունկնդիր և 5 տարի ներսի ունկնդիր լինել հրամայեցինք և աղքատներին ողորմութիւն տալ, և ապա հաղորդուել»։**

*Տես Բարս.—2 կ.։*

22 (4) Դ. *Կամաւոր սպանութիւն գործողները ունկնդիրների հետ ապաշխարեն և մեռնելիս հաղորդուեն։*

**Կեսարիայի (4) Դ. ասում է «Որոնք կամաւոր սպանութիւն են գործում ոչ պոռնկորդիների, այլ արդար զաւակների ունկնդիրների հետ ապաշխարեն և մեռնելիս հաղորդուեն։ Նոյնը մարդկանց համար։»**

*Բարս—56 կ.* (20 *տարի ապաշխարանք*)

23, (5) *Ակամայ սպանութեան մէջ մեղադրուածները առաջ պատժւում էին 7 տարի ապաշխարանքի ենթարկուելով, իսկ այժմ որոշում ենք 5 տարուայ ապաշխարանք։*

**Կեսարիայի (5) Ե. կանոնը ասում է «Ակամայ սպանութեան մէջ մեղադրուածները կամ անգիտութեամբ, կամ կիսաքուն ժամանակ, կամ անզգուշութիւնից պատահած, 7 տարուայ ապաշխարանքի էին ենթարկւում առաջին կանոններով, այժմ 3 տարի դրսի և 2 տարի ներսի ունկնդիր լինին և ողորմութիւն տալով հաղորդուին»։**

*Բարս,—8, 57* (10 *տարի ապաշխարանք*)։

— (6) Զ. Այրիները եթէ պոռնկութիւն կանեն, 3 տարի դրսի, 2 տարի ներսի ունկնդիր լինին և ողորմութիւն տալով հաղորդուին. իսկ եթէ նորից կմեղանչի 7 տարի էլ կանխանայ պատժի վրայ։

Այս կանոնս էլի մասնաւոր դէպք է ա. (20) կանոնի վերաբերմամբ, 20-ում խօսւում է ընդհանրապէս ամուսնացած անձանց անբարոյականութեան մասին, այստեղ միմիայն այրիների։ Այս Զ. (6) կեսարիայի կանոնս չկայ իսկականում։ Մինչև այժմ Կեսարիայի կանոններից Բ. և Զ. ներմուծուած են, իսկ Ա. Գ. Դ. Ե. նոյն են Անկիւրիայի 20, 21, 22, 23-ի հետ։

24. (7) Է. Կախարդները և կռապաշտական սովորութեան հետևողները, և իրանց տունը կախարդներ տանողները ենթարկւում են 5 ամեայ ապաշխարութեան սահմանած աստիճաններով։

Նոյնը կրկնւում է և Կեսարիայի (7) Է. կանոնում։

Տես-Բարս. 83 կ. (6 տարի ապաշխարանք). Զահապիանի կանոններ։

— (8) Ը. Չարադիւթ կախարդներին և ջադուկներին, որոնք մեծամեծ ոճիրներ են գործում, Քրիստոսին ուրանում և Ս. Հոգուն հայհոյում, արդար արիւն հեղում, այդպիսիներին հին օրէնքը մահու է ենթարկում, ժողովս մարդասիրաբար ցմահ ապաշխարանքի է ենթարկում և մեռնելիս թոյլ է տալիս հաղորդուել, եթէ կապաշխարեն։

Կեսարիայի այս 8-րդ կանոնը, որ շարունակութիւն է 24-կանոնի, չկայ Անկիւրիայի կանոններում։

25. (9) Թ. Եթէ նշանած տղան՝ նշանածի քրոջ հետ կմեղանչի և յղութեան պատճառ կդառնայ, ապա կթողնի սրան և նր-

չանածի հետ կամուսնանայ. իսկ անպատուածը կերթայ կխեղդուի. յանցաւորը կենթարկուի 10 ամեայ ապաշխարանքի, նոյնպէս և մեղսակիցները, այսինքն աղջիկանները, որոնք գիտէին և առաջն չէին առնում։

Նոյնը կրկնում է Կեսարիայի (9) Թ. կանոնը տարբերութիւնը միայն տարիների թուի մէջ է. 7 տարի պղծութեան համար, իսկ 17 տարի էլ սպանութեան պատճառ լինելու համար է ապաշխարանքի ենթարկում, նոյնպէս և մեղսակիցներին։

Բարս. 78 (7 տարի ապաշխարանք)

Այստեղ 25-ով վերջանում են Անկիւրիայի ժողովի կանոնները, իսկ հետևեալ Ժ.-րդ կանոնով վերջանում է Կեսարիայինը։ Կեսարիայի 10-րդ կանոնը իսկապէս կանոն չէ, հապա մի երկար խրատ, բացատրութիւն. թէ ինչ բան է գողութիւնը, ինչ վնաս ունի, ինչու պիտի գողութիւնը վերջացնել. ձգձգուած և ճոխացրած զանազան օրինակներով։ Ահա նրա իսկական միտքը։—

(10) Ժ. Գողերին, մարդասպան աւազակներին հին օրէնքը մահու է դատապարտում. իսկ ժողովը ենթարկում է հետևեալ աստիճաններով ապաշխարանքին-ԺԵ. տարի դրսի ունկընդիր, 5 տարի ներսի ունկնդիր լինելուց յետոյ, հաղորդութիւն առանայ նթէ քահանան յարմար կդատի։—

---

## Բ) ՆԷՈՅԿԵՍԱՐԻԱՅԻ ՏԵՂԱԿԱՆ ԺՈՂՈՎԸ (314-315 Թ).

Նէոյկեսարիան (Նորկեսարիա) գտնւում է Պոնտացւոց աշխարհում—Կապպադովկիայում. այստեղ եղաւ 315 (314) թուականներին տեղական ժողով նոյն Անտիոքի եպիսկոպոսի նախագահութեամբ, ուր սահմանեցին 15 կանոն հոգևո-

րականների բարոյական կարգապահութեան և ուրիշ խնդիրների վերաբերմամբ։ Հայոց ձեռագրերում այս ժողովին վերագրած է 20 կանոն փոխանակ 15-ի, աւելորդ կանոնները կցետեղեմ ի գիտութիւն և ի տեղեկութիւն։—

1. Եթէ քահանան կպսակուի, կարգազուրկ լինի։ Եթէ անառակութիւն կամ շնութիւն կանի, բոլորովին կմերժուի եկեղեցուց, և ապաշխարողների կարգը կմանի։

Շնութիւն ասելով հասկացւում է ամուսնացած կնոջ հետ յարաբերութիւն ունենալը, իսկ անառակութիւն ոչ ամուսնացած անձի հետ։ Բարսեղ մեծը 32 կանոնով այս յանցանքի համար սահմանում է նոյն պատիժը—կարգալուծութիւն, բայց չի մերժում եկեղեցուց։

Տես Բ. տն. 25, 26, Բարս.-3, 32,.51, 70. Անկ, 10։

Մեր ձեռագրերում 1 կանոնը խօսում է նոյն նիւթի մասին քիչ տարբերութեամբ. «Եթէ երէցը ամուսնացած է, ընդունելի լինի իւր կարգում, եթէ շնութիւն կամ պոռնկութիւն անի, մերժուի և ապաշխարանքի ենթարկուի»։

2. Այն կինը, որ կպսակուի երկու եղբօր հետ, մինչև մահ կմերժուի եկեղեցուց։ Եթէ մահուան ժամանակ, կխոստանայ առողջանալու դէպքում պսակը լուծել, մարդասիրաբար կարելի է թոյլ տալ ապաշխարելու, իսկ եթէ այդպիսի պսակում կմեռնի, ողջ մնացողին դժուար է ապաշխարանքի թոյլ տալ։

Տես Բարս. 68, 76, 77. 78, 23, 39,

Մերոնց մէջ գրուած է «եթէ կինը երկու եղբարց գնայ, միմեանցից բաժանուին. երկուսն էլ ցմահ ապաշխարեն. եթէ ապաշխարեն և ողորմութիւն տան, մեռնելիս հաղորդուին։ Եթէ զուգութեան մէջ մնան՝ մահուան ժամանակ

էլ հաղորդութիւն չառնեն. յամենայն դէպս վարդապետից է կախուած ապաշխարութեան ժամանակը կարճել»: Շատ երկարացրած է և ձգձգած բացատրութիւններով:

3. Բազմամուսնութեան մէջ ընկնող մարդկանց ապաշխարութեան ժամանակը յայտնի է. բայց և այնպէս նրանց հաւատը և զղջումը կարճացնում են ժամանակը:

Եռապսակների և բազմապսակների ապաշխարանքը ցոյց է տուած Բարսեղի 4 և 80-կանոնների մէջ: Եռապսակի համար 5 տարի մերժւում է պսակողը եկեղեցուց, երկրորդ և երրորդ տարին թոյլ է տրւում ապաշխարելու: Բազմապսակի համար աւելի խիստ է:

Բարս.—4, 6, 80, 50 կ.

Մերոնց մէջ նոյն կանոնը ճշտութեամբ կրկնւում է:

4. Ում մէջ ցանկութիւն է առաջանում մի որ և է կնոջ հետ մեղանչելու և չի յաջողւում, երևում է Աստուծոյ շնորհիւ ազատւում է մեղքից:

Բարսեղ մեծը 70 կանոնով համբոյրով մեղք գործող սարկաւագին պատուիրում է մի առժամանակ պաշտամունք չկատարել: Այս կանոնս պատիժ չի նշանակում մտադրուած ցանկութեան համար, թէև ըստ աւետարանի այսպիսի ցանկութիւնը շնութիւն է, թէև բարոյապէս պէտք պատժի ենթարկուի, բայց եկեղեցական կանոնով—իրաւաբանական տեսակէտից պատժել չի կարելի՝ գործողութեամբ յանցանք չըգործելուն համար:

5. Երախան (չմկրտուածը) եթէ չոքող ապաշխարողներին է պատկանում, և մեղք է գործում, իւր դասից կհանուի և ունկնդիրներին կարգին կյարուի. եթէ այստեղ էլ կմեղանչի, եկեղեցուց բոլորովին կմերժուի:

Մկրտութեան համար պատրաստուողները երկու խմբի էին բաժանւում, նորերը կարդացած գրքերը լսում էին և աւետարանից յետոյ դուրս գնում, իսկ հիները աղօթում էին և ծունկ չոքում և «մի ոք յերախայից...» ասելուց առաջ դուրս գալիս։

6. Յղի կինը մկրտւում է, երբ ցանկանում է, ոչ մի կապ չկայ այս բանում ծնողի և ծնուողի մէջ, Ս. խորհրդով սրբուելու համար անհրաժեշտ է ամեն մի անհատի ջերմեռանդ ցանկութիւնը։

Կային այն ժամանակ անձինք, որոնք ասում էին թէ յղի կինը չպէտք մկրտուի, որովհետև մկրտութիւնը անցնում է և չծնուած երախային, իսկ ոմանք էլ պնդում էին, թէ ծնուածը չպէտք մկրտուի, որովհետև արգանդում եղած ժամանակ մօրը մկրտուելովը ինքն էլ մկրտուել է։ Ժողովը որոշում է որ եկեղեցու անդամ լինողը պէտք խորհուրդները ընդունի ինքը անձամբ և ո՛չ ուրիշի միջոցով։

7. Քահանան երկպսակի (երկրորդ անգամ պսակուողի) խնճոյքի չպէտք մասնակցի։ Երկպսակները պէտք ապաշխարեն, իսկ քահանայի մասնակցութիւնը այդպիսի խնճոյքում թուլացնում է ապաշխարանքի ոյժը։

Ջօնարս և Վալսամոն ասում են որ այս կանոնը մնաց իբրև անգործադրելի կարգ, իրանք պատրիարքները և միտրոպոլիտները երկպսակ թագաւորի հետ խնճոյք էին անում հարսանիքի ժամանակ։ Երկրորդ ամուսնութիւնը համարւում էր մեղք ժուժկալութեան դէմ և մի տարուայ ապաշխարանքի էր ենթարկւում։ Բարս. 4. Նէո։

Մեր ձեռագրերում 7 կանոնի մէջ նոյն բանը կրկնւում է, միայն աւում է՝ երկպսակների խնճոյքին գնացողը չպէտք ապաշխարութեան ժամանակը կարճացնի, հապա 2

**տարի դրսի և 1 տարի ներսի ապաշխարողի պատիժը պիտի կրել տալ երկապսակին։**

8. Աշխարհականը, որի կինը շնութիւն է անում, չի կարող հոգևորական դառնալ։ Եթէ ձեռնադրութիւնից յետոյ կինը կմեղանչի, մարդը պիտի պսակը լուծի կամ հեռանայ քահանայագործութիւնից։

**Այս կանոնը մեր ձեռագրերում ԺԳ-դն է, իսկ մերոնց մէջ 8, 9, 10, 11, 12 կանոնները զանազան տեղերից քաղուած են, որոնց մասին վերջը կխօսեմ։**

Տես Բ-առ. 18, Բարս. 6, 8.

9. Քահանան եթէ ձեռնադրութիւնից առաջ կխոստովանի իւր մեղանչած լինելը, նա իւր քահանայական պատիւը կպահի, բայց կզրկուի քահանայագործութիւն անելուց։ Ինչպէս ասում են ձեռնադրութիւնը սրբում է նրան միւս մեղքերից։ Իսկ եթէ իւր մեղքը չի խոստովանիլ և ոչ մէկի կողմից չի ամբաստանուիլ, նա իւր խղճի տէրն է, կամ քահանայութիւն անի կամ հրաժարուի։

**Այս մեր ձեռագրերի ԺԴ-րդ կանոնն է։**

Տես Բ. առ. 25, 61. Նէո.-1, Նիկ.-2կ. 9, 10 կ, Բարս. 27, 89։

10. Նոյնպէս և սարկաւագը եթէ նոյնպիսի մեղք կգործի, իւր կարգից իջնի և եկեղեցու ստորին սպասաւորների կարգը դասուի։

**Մեր ձեռագրերի ԺԵ-րդ կանոնն է. նոյն բանն է ասում, միայն ձգձգւում է խրատական բացատրութեամբ։**

11. Քահանայ ձեռնադրուի 30 տարեկան մարդը, եթէ արժանաւոր կը լինի, թող սպասի մինչև տարիքի լրիւ լինելը. որովհետև Քրիստոս 30 տարեկան մկրտուեց և քարոզել սկսեց։

**Մեր. ձեռագրերի ԺԶ-րդ կանոնն է։**

12, Եթէ մէկը հիւանդութեան ժամանակ մկրտուի, քահանայ լինել չի կարող, որովհետև նրա հաւատը լուսաւորուել է հարկից սախպուած և ոչ իւր ցանկութեամբ. գուցէ միմիայն նրա առաքինութիւնների և հաւատի և ուրիշ արժանաւոր քահանայացու չգտնուելուն պատճառով կարելի կլինի քահանայ ձեռնադրել նրան։

*Մեր ձեռագրերի ԺԵ-րդ կանոնն է։*

13. Գիւղական քահանայք չեն կարող քաղաքի եկեղեցիներում եպիսկոպոսի և տեղական քահանաների ներկայութեամբ քահանայագործութիւն անել, իսկ եթէ միւսները բացակայ են և ինքն է հրաւիրուած աղօթելու, այն ժամանակ կարող է։

*Մեր ձեռագրերի ԺԸ-րդ կանոնն է։*

Տես, Բ, Ան.—14, 31, 35, Նիկ.—15, 16, Անկ.—13, Անտ.—40, Բարս.—89։

14. Քորեպիսկոպոսները, որոնք ըստ օրինակի և ըստ կարգի Քրիստոսի 72 աշակերտների են, իբրև եպիսկոպոսի ծառայակիցներ քահանայագործութիւն են անում և քաղաքի եկեղեցում, այդ պատիւը տրւում է նրանց և իբրև աղքատների համար հոգացողների։

*Մերոնց մէջ ԺԹ-րդ կանոնն է։*

Քորեպիսկոպոսների համար տես մանրամասն Ս. Սահակի կանոններ, Անկ.-13, Անտ.-10։

15. Նախկին կանոնով սարկաւագները 7 պիտի լինին թւով, եթէ մինչև իսկ քաղաքը մեծ լինի։ Գործք Առաքելոցից այս բանիս համար կարող ես տեղեկանալ։

*Մեր ձեռագրերի Ի-րդ կանոնն է։*

Հին տարեգիրների կարծիքով Ս. Մարկոս 7 սարկաւագ նշանակեց Աղէքսանդրիայի եկեղեցում։ Սոզոմէնը գրում է, որ իւր ժամանակ Հռոմում 7 սարկաւագ կար միայն։ Յուս-

տինխանոսը հրամայեց, որ մեծ քաղաքի եկեղեցում 100 սարկաւագ, 60 քահանայ, 40 սարկաւագուհի լինի։ Հինգ-վեցեան ժողովի 16-րդ կանոնը նկատում է, որ զուր են հարկից չստիպուած աւելի սարկաւագներ կարգում։

Մեր մէջ հէնց հնուց գիւղերում սարկաւագներ պահելու չի եղած, երևի արդիւնքների քիչութեան պատճառով։

Սրանով վերջանում են Նէոկեսարիայի 15 կանոնների արձանագրութիւնը։ Հայոց ձեռագրերում 8, 9, 10, 11, 12 կանոնները նոր են մուծուած և խօսում են միևնոյն նիւթի մասին, կազմում են շարունակութիւն 7-րդ կանոնի։ Ներմուծողը կարդալով 7-րդ կանոնը, որը արգելում է քահանային երկակների ամուսնական խնճոյքին չերթալ, և չը գտնելով եռապսակների ու քառապսակների համար շարունակաբար գրուած կանոններ, քաղելով Բարսեղ մեծի և այլոց կանոներից այդ մասին գրուածները՝ և բերել 7-րդ կանոնի շարունակութիւն է կազմել։ Այս մուծուած կանոնները չկան իսկականի մէջ։ 7-րդը խօսում է երկակներին ապաշխարանքի ենթարկելու մասին։ 8-րդը ասում է «եթէ մէկը կուսան է, միւսը երկակ, Գ. տարի ապաշխարեն»։ Այսինքն եթէ մէկը կոյս է, միւսը երկրորդ անգամ պսակուող, թող ապաշխարեն. այս կանոնը բառացի կերպով կրկնուած է Լուսաւորչի—5 և Ներսէսի—երկու կանոներում։

9-րդը խօսում է եռապսակների մասին, համարելով երրորդ պսակը յարատև պոռնկութիւն. 15 տարուայ ապաշխարանքի է ենթարկում և աղքատներին ողորմութիւն տալով մեռնելիս միայն հաղորդութեան արժանացնում։ 10-րդը խօսում է քառապսակների մասին, նոյնպէս և հինգերորդ պսակի մէջ մտնողների մասին, նրանց համարում է օրէնքից դուրս, եկեղեցին չի ընդունում, «բայց եպիսկոպոսն գիտասցէ»։ Տեա տարօրինակ է այս կանոնս, երրորդը յարատև պոռնկութիւն է համարում, չորրորդը և հինգերորդը թէև օրէնքից դուրս է համարում, բայց վերջում աւելացնում է թէ եպիսկոպոսի կամքին է թողած, այսինքն կարող է և թոյլ տալ այդպիսի պսակը։ Այս կանոնները վերցրած է

Բարսեղ մեծի և Ներսէսի (°) կանոններից և փոփոխած։

11 և 12—կանոնները խօսում են ամուսնալուծութեան վրայ, որ միմիայն մի տարուայ ապաշխարանքի ենթարկելով կարելի է պոռնկութեան և «չարագործութեան» համար արձակել կնոջ. իսկ ուրիշ պատճառներով, օրինակ ուրիշ մարդու վրայ աչք ունենալուն պատճառով չի կարելի, մեղաւորին ենթարկում է պատիժների։ Այս երկու կանոնն քաղած է Շահապիվանի ժողովի կանոններից, պատժի ձևը նոյնութեամբ կրկնութիւն է։ Այս 8, 9, 10, 11, 12 կանոնները անվաւեր են, բովանդակութիւնը գրեցի ի տեղեկութիւն։

---

## Գ) ԳԱՆԳՐԻ ՏԵՂԱԿԱՆ ԱՐՏԱՔԻՆ ԺՈՂՈՎԸ (340—370).

Գանգրի (Փոքր Ասիայի Պաֆլագոնիա մետրոպոլտութեան մէջ) ժողովը եղաւ 340—370 թուականներին Փոքր Հայքի Սեբաստիայի եպիսկոպոս Եւստաթիայի դէմ, որը իւր կուսակիցներով մեծ աղմուկ էր հանել Փոքր Ասիայի քրիստոնեաների մէջ։ Սլաւոնական Կորմչայեա կնիգան (կանոնագիրք) բերում է այս ժողովի շրջաբերականը Հայաստանի եպիսկոպոսներին ուղղած այսպիսի դիմումով. «Ազնուագոյն տեարց, Հայաստանում եղող մեր ծառայակիցներին, Եւսեբիոս, Հեղիան, Եւգինիոս,... Գանգրի ս. ժողովում համախմբուածներից խնդալ ի Տէր»։ Այս խօսում է աղանդաւորների քարոզութիւնների մասին և յայտնում է որ այս 21 սահմանած կանոնների գործադրութեամբ աշխատեցէք աղանդի առաջն առնել։

Աղանդաւորները քարոզում էին, որ ամուսնական կեանքը Աստուծուն հաճելի չէ, պէտք է ողջախոհ մնալ. կանայք ու մարդիկ թողնում էին միմեանց և ընկնում միւս ծայրայեղութեան անառակութեան մէջ. չէին յաճախում եկեղեցի, աղօթք-

ները մասնաւոր տներումն էին անում։ Աշխարհականները շորերը փոխում էին և հագնում վանականի զգեստ. կանայք հագնում էին մարդկանց շորեր, մազերը խուզում էին բարեպաշտութեան պատրւակով. կիրակի օրերը պաս էին պահում։ Ատում էին բոլոր ամուսնացածներին, մասնաւորապէս քահանաներին, որոնց անմաքուր համարելով հաղորդութիւն չէին առնում։ Ինչքերի հաւասարութիւն էին քարոզում. ատում էին բոլոր հարուստներին, որոնք աղքատներին չէին ողորմում. այսպիսի հարուստները, նրանց կարծիքով փրկութիւն չպիտի ստանան։

Ժողովը սրանց դէմ սահմանեց 21 կանոն. որոնցից երկուսը 10 և 21 սլաւոնական кормчая книга-ում բաց է թողած և որը կազմում է շրջաբերական թղթի բովանդակութիւնը։ Այս կանոնները բացատութիւն են կազմում ձևի կողմից նրանով, որ նզովքով են արգելում իրանց պատուէրները, որը մինչև այժմ չի եղել։

1, Ով կպախարակի պսակը, կանգոսնի հաւատարիմ և բարեպաշտ կնոջ ամուսնու հետ պառկելը, կամ կպարսաւի այդպիսի կնոջ՝ իբրև փրկութիւնից հեռու, այդպիսին նզովեալ լինի։

Պսակի սրբութեան դէմ քարոզում էին II և III դարերում Մանիքեցիք, Մարկիոնականները, Էնկրատիտները, Իերոկսիտները. (Եփր. Ժգ. 4. Ա. Տիմ. դ. 1—3)։ Բ. Առ. 51 կանոնը նոյնպէս սուրբ է համարում ամուսնութիւնը։

2. Ով կդատապարտի ջերմեռանդութեամբ և հաւատով միս ուտողներին (բացի արիւնոտից, զոհածից և խեղդամահ եղած մսերից) իբրև փրկութեան յոյս չունեցողներին—նզովեալ լինի։

Տես Բ. Առ.—51, 53, 64, 69, Անկ.—14, Գործք. ԺԵ.—20, 21.

3. Ով սարկին կսովորեցնի բարեպաշտութեան պատրւակով արհամարհել տիրոջը, ծառայութիւնը չկատարել և պատուով չծառայել, այդպիսին նզովեալ լինի։

Տես Ա. Տիմ. զ. 1—3. Տիտ. բ. 9, Բ. առ. 82։

4. *Ով ամուսնացած քահանայից արժան չի համարում պատարագի ժամանակ հաղորդուել, նզովեալ լինի*

Տես Բ. առ. 5, 51։

5. *Ով կսովորեցնի անարգել և արհամարհել Աստուծոյ տունը և նրա մէջ եղած ժողովը, նզովեալ լինի։*

6. *Ով արհամարհելով եկեղեցին ուրիշ ժողով կկազմի իբրև աղօթատուն առանց քահանայի և եպիսկոպոսի հրամանի, նզովեալ լինի։*

(Բարս.—1, Բ. առ.—47, 31, Անտ.—2)։

7. *Ով եկեղեցու ընծայաբերութիւնները կստանայ և կը բաշխի եկեղեցուց դուրս առանց եպիսկոպոսի կամքի, կամ ընծայաբերի կամքի, նզովեալ լինի։*

8. *Ով կբերի կամ կընդունի տուրքերը հակառակ եպիսկոպոսի կամ կարգադրողի կամքի, և բերողը և ընդունողը նզովեալ լինեն։*

9) *Ով կոյս է մնում կամ ժուժկալ է, պսակը մերժում է իբրև գարշելի բան և ոչ կուսութեան սրբութիւնը և առաքինութիւնը ի նկատի առած, նզովեալ լինի։*

10. *Ով Աստուծոյ սիրոյն կոյս մնացողներից իրան գերադաս կհամարի ամուսնացողներից. նզովեալ լինի։*

11. *Ով կարհամարհի սիրոյ երեկոյ (ագապ) կազմողներին և ի սէր Քրիստոսի եղբայրներ հրաւիրողներին և չի կամենայ այդ հրաւէրում մասնակցել սոսր բան համարելով, նզովեալ լինի։*

Տես Յուդ. 10. Ա. Կորն. ժա. 20, Լա. 2։

Հներում Հաւատացեալները սովորութիւն էին կարգել Հաղորդութիւնից յետոյ միասին ճաշել եկեղեցում ի յիշատակ Քրիստոսի երեկոյին Հրաւիրելով ճաշին բոլոր աղքատներին. այս երեկոները կոչւում էին սիրոյ երեկոյ, սիրոյ ճաշ, ագապ. (Ա. Կորն. 11, 20, 21)։ Յետոյ արգելուեց եկեղեցիներում խնճոյքներ կազմելը. այս կանոնից երևում է որ դեռևս Դ. դարում սիրոյ երեկոյ կազմելը չէր վերացել։ Այժմ սիրոյ երեկոն կատարւում է տարին երկու անգամ Ծննդեան և Զատկին, ոչ երեկոյեան ժամանակ, այլ առա-

ւստը. տեառնանական մատաղը բաժանւում է բոլոր տներին անխտիր, իւրաքանչիւր տուն էլ իւր բաժինը տալիս է այդ մատաղի համար։ —

12. Մարդիկներից ով որ խստակրօնութեան պատրուակով գործ կածի քրձեայ վերարկու, իբր թէ դրանով արդարութիւն ձեռք բերելու, և կդատապարտի ջերմեռանդ անձանց, որոնք մետաքսէ կամ հասարակ շոր են հագնում, նզովեալ լինի։

13. Այն կինը, որը խստակրօն երևալու համար կհագնի տղամարդու շոր, նզովեալ լինի։

14. Այն կինը, որ արհամարհելով պսակը՝ կթողնի կհեռանայ մարդուց, նզովեալ լինի։

15. Ով երեխաներին կթողնի, չի կերակրել և բարեպաշտութեամբ չի կրթել՝ ճգնաւորութամբ զբաղուած լինելու պատրուակով, նզովեալ լինի։

16. Այն որդիքը, որոնք բարեպաշտութեան դիմակի տակ, կթողնին իրանց հաւատարիմ ծնողներին, չեն պատուիլ, նրանից, նզովեալ լինին։

17. Այն կինը, որը կարծեցեալ խստակրօնութեան համար մազերը կխուզի, որոնք հնազանդութեան օրինակ են տուած կանանց, այդպիսին նզովեալ լինի իբրև խանգարող հնազանդութեան պատուէրը։

(Ա. Կորն. ժա. 3—8, 13—16)։

18. Ով խստակրօնութեան պատրուակով կիրակի օրը պաս կպահի, նզովեալ լինի։

19. Եթէ պահողներից մէկը առանց մարմնական պէտքի և կարիքի, իբրաւունք կհամարի ուծել եկեղեցու կանոններով պահուող պասերը և ինքը կատարեալ գիտակցութեամբ է անում այդ, նզովեալ լինի։

20. Ով յամառելով դատապարտում է մարտիրոսների յիշատակին և պատուին նշանակած ժամերգութիւնը, նզովեալ լինի։

Մեր ձեռագրերը մինչև այստեղ համաձայն էին Գանգրի կանոններին և թուահամարները նոյն էին, այս ըստ մեր ձեռագրերի ԻԲ. կանոնն է, մի քիչ ճոխացրած։ Ներմուծողը օգուտ քաղելով 19—կանոնի պասի վրայ խօսելուց,

շարունակել է նոյն ուղղութեամբ կանոն սահմանելով և քառասնորդական պասի համար։ Մեր ձեռագրերի 20-րդը ասում է, ով առողջ է և քառասուն օրուայ պասը մինչև վերջը չի տանում, նզովեալ լինի։ 21-րդը ասում է, եթէ մէկը քառասուն օրը կպահի և զատկի հինգշաբթի օրը նախ քան պատարագը մի բան կուտի, պահած պասը զուր կանցնի, ինքն էլ նզովեալ լինի։ Այս երկուսը ներմուծուած է, բայց շատ հին է, այս կանոններից երևում է, որ Դ. Ե. դարերում դեռ ևս կային տեղեր, որտեղ հինգշաբթի օրն էին թաթախում և մեծ պասը քառասուն օր էր և ո՛չ 7 շաբաթը լրիւ։ Այս մասին տե՛ս Ա—առ. 8 կ., Բ—առ. 69 կ.։

Մեր ձեռագրերի 23 կանոնն ասում է, առողջ և կատարեալ մարդիկ պատարագից առաջ եթէ հաց կուտեն, նզովեալ լինեն։ 24-րդ կանոնն ասում է, երէցը կամ սարկաւագը առանց աղիբողոնի (ծածկոցի) եթէ բեմ ելնի, ծխելու, կարդալու, կամ սպասաւորելու, պաշտամունքը ընդունելի չէ. հակառակողը նզովեալ լինի։

Այս չորս կանոնն 20, 21, 23 և 24-ի առաջի կէսը չկան բուն ժողովի կանոնների մէջ, որոնք թուով 21 են։ Մեր ձեռագրերի 24-ի երկրորդ կէսը նոյնն է, ինչ որ իսկականի 21-րդ կանոնն է։

Այս ժողովի 21-րդ կանոնն (մերոնց 24-րդ) ինքնապէս կանոն չէ, հապա խրատ է, որի մէջ դուրս է բերում բոլոր կանոնների բովանդակութիւնը։ Բոլորը շատ երկար է, իբրև կանոն բերելը միտք չունի, կդնենք ընդհանուր բովանդակութիւնը։

21. (24.) Այս գրում ենք, ոչ թէ արգելք դնելով նրանց, որոնք անկեղծ սրտով և հաւատով, և ո՛չ ի ցոյցս մարդկան պաս են պահում, քրձազգեաց են, չեն պսակւում, հարստութիւնից քաշւում են կըն կըն. այլ նրանց դէմ ենք գրում, որոնք խստակրօնութիւնը արիութիւն են համարում կեղծ սրտով, թերի հաւատքով, և գայթակղեցնում են ուրիշներին կըն կըն։

Այսպիսի բովանդակութիւն ունի և ժողովի գրած շրջաբերականը Փոքր-Հայքի եպիսկոպոսներին։

## Դ) ԱՆՏԻՈՔԻ ԱՐՏԱՔԻՆ ՏԵՂԱԿԱՆ ԺՈՂՈՎԸ (341 Թ.)

Ասորիքի Անտիոք քաղաքում եղել է երկու ժողով, առաջինը Ավրելիան կայսեր ժամանակ Պօղոս եպիսկոպոս Սամոսատացու դէմ, որը Քրիստոսին համարում էր հասարակ մարդ, Աստուծոյ որդուն անուանում էր Բան։ Այդ ժողովում էր և Գրիգոր Հրաշագործը։ Ժողովը նզովեց և կարգալոյծ արաւ Պօղոս եպիսկոպոսին։ Բայց նա եպիսկոպոսական աթոռը չթողեց և հակառակեց ժողովի վճռին։ Ժողովը դիմեց կայսրին. սա հրամայեց տեղական Հռոմի եպիսկոպոսներին քննել գործը և ժողովի վճիռը արդար գտնելու դէպքում, արտաքսել Պօղոսին Անտիոքից. այդպէս էլ եղաւ (Եւսեբիոս)։

Անտիոքի երկրորդ ժողովը եղաւ 341 թուին մասնակցութեամբ 100-աչափ եպիսկոպոսների, որոնք եկել էին Անտիոքի մետրոպոլտութեան զանազան թեմերից (Կելէ(Ասորիք), Փիւնիկէ, Պաղեստին, Արաբիա, Միջագետք, Կիլիկիա, Իսաւրիայ) օծելու Կոստանդին մեծի հիմնադրած տաճարը, որը այդ ժամանակն էր աւարտուել։ Օծումից յետոյ ժողովը սկսուեց։ Այս ժողովի դաւանաբանական գործունէութիւնը գիտնական հետազօտութիւնների մէջ թիւրիմացութիւնների տեղիք էր տուել. ենթադրւում էր որ ժողովի դաւանաբանական որոշումների կազմութեան ժամանակ ձգտումն է եղել Նիկիոյ Հանգանակի մէջ կիսարիոսական մտքեր մտցնել, որի ապացոյց բերում էին այն, որ արիոսականների դէմ գլխաւոր մարտնչող ս. Աթանասի դատապարտումը և գահընկեց անելու նախկին կարգադրութիւնը հաստատուել է այս ժողովում. այս թիւրիմացութիւնների մանրամասն հերքումը և քննութիւնը բերուած է Հեֆելէի ժողովոց պատմութեան մէջ (տես Соколовъ, ц. пр. 136 եր.)։

Անտիոքի և Բ.—առաքելական կանոնների նմանութիւնը

ուխտ էր տուել կարծելու, որ առաքելական կանոնները վերցրած էին Անտիոքի կանոններից. (տես Բ. առաքել. կանոններ)։ Ժողովիս կանոնները մտել են բոլոր կանոնական ժողովածուների մէջ և մեծ յարգ էին վայելում մանաւանդ արևմտեան եկեղեցում. (տես СОКОЛОВЪ—136 եր.)։

Մեր բոլոր կանոնագրքերում և միշտ Գանգրի ժողովի կանոններից յետոյ հանում են Անտիոքի ժողովի 25 կանոնները։ Հապա ինչն էր պատճառ որ Հռոմկլայի 1179 թուի ժողովը Գրիգոր կաթուղիկոսի նախագահութեամբ իւր ընդունած 3 տիեզերական և 6 ժողովների ցուցակից հանել է «Անտիոքի» այս ժողովը. արդեօք այն պատճառով՝ որ լսել էին զանազան բաներ այդ ժողովի դաւանաբանական որոշումների վերաբերմամբ, թէ այս ժողովը խառնում էին Անտիոքի նոյնաժամանակ եղած աղանդաւորական ժողովների հետ, թէ գուցէ թիւրիմացութեամբ դուրս են եկել ժողովների ցանկից։ Պօլսոյ ժողովի 5-րդ կանոնը, որ խօսում է Անտիոքի դաւանութեան և «արևմտեանների ծրարի» վրայ, այդ էլ է դուրս ձգուած մեր կանոններից։ Բայց և այնպէս շատ դժուար է հաստատ մի բան ասել այս մասին։ Ս. Էջմիածնի № 58 ձեռագրում կայ Գրիգոր կաթուղիկոսի ժողովի վճռի մի ուրիշ պատճէնը, որը տարբերւում է տպագրուածներից նրանով 1) որ սրա մէջ յիշուած է Անտիոքի ժողովը և 2) նրանով, որ յիշուած են այն օտար ս. հարց անունները, որոնց կանոնները ընդունում է մեր եկեղեցին։ Այդ № 58 ձեռագրում գրուած է այսպէս, հայերս ընդունում ենք 3 տիեզերեկան ժողովները և հետևեալ տեղական ժողովները. Անկիւրիայի, Կեսարեայի, Նէոյկեսարիայի, Գանգրի, Անտիոքի, Լաւոդիկիայի, Սարդիկիայի (149—153 եր.)։

Թէ այս ձեռագրի և թէ տպագրի համեմատութիւնը ցոյց է տալիս, որ երկուսի մէջ բովանդակութեան կողմից համարեա տարբերութիւն չկայ, միայն ձեռագրում ճոխացրած և մի քանի անուններ է յիշատակած, որը տպագրուածի մէջ ընդհանուր բառերով է յիշած. օրինակ տպագրուածում գրում է «հետևում ենք սուրբ հարց աւանդներին». № 58

ձեռագրում յիշում է անուն անուն այն անձինք, որոնց սուրբ Հայրք է համարում։ Այս № 58-ի փաստը և բ) այն որ մեր բոլոր կանոնագրքերում Անտիոքի կանոնները թուով 25 կան, բերում են այն ենթադրութեան, որ Անտիոքը մտած է եղել 1179 թ. ժողովի ցուցակի մէջ և հանուել է կամ արտագրողի կամ արձանագրողի ձեռքով, դիտմամբ թէ սխալմամբ, դժուար է ասել։ Իրաւաբանական տեսակէտից իրաւունք չունէինք Անտիոքի ժողովի կանոնները մեր եկեղեցական իրաւունքի աղբիւրների մէջ ձգելու, բայց ի նկատի ունենալով՝ որ ձեռագիր ուրիշ օրինակներում ժողովի արձանագրութեան մէջ յիշւում է Անտիոքի ժողովը, երկրորդ՝ մեր բոլոր կանոնագրքերում կան այս ժողովի կանոնները, երևի եղել են և Օձնեցու կանոնագրքի մէջ և երրորդ՝ նրա կանոնները շատ նման են Բ—առաքելական կանոններին և բոլորովին համապատասխան են մեր եկեղեցու կանոնական սկզբունքներին, ուստի և ձևական սխալ արած կլինենք եթէ որ մտցնենք Անտիոքի կանոնները մեր ժողովների շարքը. կարելի է և յիշել այն՝ որ բոլոր օտար եկեղեցիները սոյն ժողովի կանոնները վաւերականների շարքումն են ընդունում։

Տես և 1179 թուի հայոց ազգ. ժողովը։

1. Ով կհամարձակի Նիկիայի որոշումը Զատկի վերաբերմամբ չկատարել, եկեղեցուց մերժուի և բանադրուի։ Իսկ հոգևորականները, եթէ կհամարձակուին փոփոխել եկեղեցու կարգերը, հրէաների հետ տօները կատարելու, բոլորովին օտար կհամարուին եկեղեցու համար, զրկուելով քահանայական արտաքին բոլոր պատիւներից։

Բ. — առ. 7-րդ կանոնը նոյն բանն է հրամայում, իսկ Նիկիայի կանոնների մէջ այդպիսի պատուէր չկայ. այդ պատուէրը կայ միմիայն Նիկիայի ժողովի արձանագրութեան մէջ, որը մեզ չի հասել։ Իսկ Զատկի մասին եղած կարգադրութիւնը իմանում ենք Նիկիայի ժողովի գրած շրջաբերական թղթից՝ Աղէքսանդրիայի եկեղեցու անունով ուղարկած։

2) *Ով եկեղեցի կմանի ս. գիրքը կլսի և ապա արհամարհելով դուրս կգայ, հաղորդութիւն առնելու չի սպասիլ, կմերժուի եկեղեցուց մինչև որ չապաշխարհի սրտով։ Ով մերժուածի հետ յարաբերութիւն կունենայ, ինքն էլ կմերժուի։ Մեղաւոր է այն անձը, որը եկեղեցում չաղօթողի հետ աղօթք է անում։ Ներելի չէ ընդունել այն մարդուն, որը ժողովարան է գնում և ոչ եկեղեցին։*

*Տես Բ—առ.* 8, 9, 10. *Լաւ.* 33.

**Յունաց մեկնիչ Վալսամոնը ասում է. շատերը գանգատւում են թէ պատրիարքը կիրակի օրը աւետարանից յետոյ դուրս է գալիս։ Նրա համար այդ՝ մեղադրանք չէ, որովհետև պատարագը աւետարանից յետոյ է սկսւում, պատրիարքը պատարագը չսկսած է դուրս գալիս։**

3) *Եթէ հոգևորականը կտեղափոխուի ուրիշ տեղ, այդ տեղից էլ մի երրորդ տեղ և երկար կմնայ այնտեղ, այդպիսին չպիտի պաշտամունք կատարի մանաւանդ եթէ իւր եպիսկոպոսի կոչին չի հնազանդիլ։ Եթէ անկարգութեան մէջ կյամառի միալ մշտապէս կարգալոյծ կլինի։ Այն եպիսկոպոսը, որը կընդունի կարգալոյծ հոգևորականին, կենթարկուի ժողովի կշտամբանքին, իբրև եկեղեցու կարգ խանգարող։*

*Տես Բ—առ.* 15. *Նիկ.* 16.

**Վալսամոնի կարծիքով առանց օրինաւոր պատճառի իւր պաշտօնը չկատարող հոգևորականը պիտի զրկուի ընդ միշտ պաշտօնակատարութիւնից։**

4) *Եթէ եպիսկոպոսը կարգալոյծ է եղել ժողովով, քահանան և սարկաւագը եպիսկոպոսի ձեռքով, և եթէ կհամարձակեն որևէ պաշտամունք կատարել, նրանք ընդ միշտ զրկւում են ուրիշ ժողովի միջոցով արդարանալու իրաւունքից. և կմերժուին եկեղեցուց բոլոր այն անձինք, որոնք կյարեն այդպիսիններին։*

Այս կանոնը հետևեալ սկզբունքն է որոշում, որ պատժուած հոգևորականը, թէկուզ անմեղ, պիտի պատիժը կրէ և դատը էլի շարունակէ։ Եպիսկոպոսի վճռի դէմ մետրոպոլիտին, իսկ մեր մէջ կաթուղիկոսին գանգատուելով։ Հնեւում կար փոքրիկ աշխարհների եպիսկոպոսների ժողով և միտրոպոլիտի նախագահութեամբ ժողով և ապա տիեզերական ժողով։ Փոքրիկ ժողովների վճռից եթէ անբաւական էին մնում, դիմում էին տիեզերական ժողովին։

Տես Սարդիկիայի 3, 5 կ.։

5) Քահանան կամ սարկաւագը եթէ կարհամարհեն իրանց եպիսկոպոսին, նրանից կհեռանան և առանձին սեղան կհաստատեն—նոր ծուխ կազմելով, չեն լսիլ եպիսկոպոսի երկու երեք անգամ արած հրաւէրին հնազանդութեան գալու, մշտապէս կարգալոյծ կլինին։ Իսկ եթէ կյամառեն, խռովութիւն կձգեն ժողովրդի մէջ, այդպիսիներին պէտք է հնազանդութեան բերել արտաքին իշխանութեան միջոցով։

Նոյն պատուէրը տալիս է և Բ. առ. 31 կանոնը, միայն այստեղ թոյլ է տալիս մարմնաւոր իշխանութեան դիմելու։

6) Եկեղեցուց մերժուածը կարող է ընդունուել միմիայն հեռացնող եպիսկոպոսից, կամ եթէ ժողովը քննելով արդար կհամարի պատժուածին՝ ժողովի կողմից. կանոնս ընդհանուր է թէ աշխարհականների և թէ հոգևորականների համար։

Տես Ա—առ.—23. Բ—առ.—12, 13, 32.

7) Չրջիկ մարդը առանց խաղաղական թղթի չի ընդունուիլ։

Խաղաղական վկայաթուղթը տրւում էր ստորադաս հոգևորականներին թագաւորների մօտ գնալու ժամանակ, կամ եկեղեցականներին տեղափոխուելու դէպքում։ Արձակման

*վկայաթուղթ տրւում էր բանադրանքից, պատժից. ապաշխարանքից ազատուող անձանց։ Արձակման վկայաթուղթ կոչւում էր և աղքատներին տուածը։*

Տես Բ—առ. 15, 16, 12, 33 կ.։

8) *Գիւղական քահանաները չեն տալիս կանոնական թղթեր, միայն դուցէ հարևան եպիսկոպոսին. իսկ անբիծ քորեպիսկոպոսները իրաւունք ունին խաղաղական թղթեր տալու։*

*Վալսամոնի բացատրութեամբ կանոնական կոչւում էին այն թղթերը, որոնք եպիսկոպոսները միմեանց ուղղում էին պաշտօնավարութեան սկզբին. դրանք բովանդակում էին զանազան եկեղեցական կանոնների բացատրութիւններ զանազան դէպքերի յարմարեցրած։*

9. *Առանց մետրոպոլիտի գիտութեան եպիսկոպոսները ոչ մի նշանաւոր գործ չպիտի կատարեն, բացի իրանց թեմի գործերից։ Իւրաքանչիւր եպիսկոպոս իւր թեմում իշխանութիւն ունի և շրջահայեցողութեամբ կառավարում է բոլոր գործերը, քահանայ և սարկաւագ ձեռնադրելով իւր թեմի համար։ Թեմից դուրս ոչ մի բան չի կարող անել առանց մետրոպոլիտի և ոչ էլ սա առանց եպիսկոպոսների համաձայնութեան։*

Տես Բ.—առ.—34, Նիկ.—4, 6։

10. *Փոքր քաղաքներում և գիւղերում կարգուած քորեպիսկոպոսները թէև եպիսկոպոսական ձեռնադրութիւն ունենան, բայց և այնպէս իրաւունք ունին միայն կարգելու երդմնեցուցիչներ, ընթերցողներ, կիսասարկաւագներ. իսկ քահանայ և սարկաւագ ձեռնադրելու առանց քաղաքի եպիսկոպոսի հրամանի իրաւունք չունին. ով հակառակը կանի, կզրկուի իւր պատուից։ Քորեպիսկոպոսին նշանակում է քաղաքի եպիսկոպոսը, որին ենթարկւում է նրա վիճակը։*

Տես Նէո—14, Անկ. 13. Մ. Սահակի կանոններ. Բարսեղ մեծ.

**Մեր ձեռագրերում «երդմնեցուցիչ» չկայ։**

*11. Եպիսկոպոս կամ քահանայ կամ որևէ մէկը հոգևորականներից եթէ կհամարձակվի առանց մետրոպոլիտի թղթի, ինքնակամ թագաւորի մօտ գնալ, կզրկուի ոչ միայն եկեղեցուց, այլ և աստիճանից։ Իսկ եթէ մէկը անհրաժեշտ կարիքից ստիպուած հարկ կզգայ թագաւորի ողորմածութեան դիմել, այդ կարող է անել միմիայն գլխաւոր եպիսկոպոսի և միւսների խորհրդով, համաձայնութեամբ և վկայաթղթով։*

Տես Բ. առ. 12, 13. Անտ. 7. Սարդիկ. 7, 8, 9, 21։

*12. Եպիսկոպոսը կամ հոգևորականներից որևէ մէկը եթէ կարգալոյծ եղած լինի, թող արդարանալու համար դիմի մեծ ժողովին և բաւականանայ նրա դատավճռով. իսկ եթէ կդիմէ թագաւորին՝ նրան ներութիւն պատճառելով, այդպիսին արդարանալու յոյս չպիտի ունենայ։*

Յուստինիանոսի 137 նովելլան ասում է, եթէ ժողովի մէջ եպիսկոպոսները հակաճառութեան մէջ են մի որևէ խնդրի նկատմամբ, թող վճռի նոյն ժողովի մետրոպոլիտը երկու ուրիշ եպիսկոպոսի հետ, եթէ բողոքատուները էլի անբաւական կմնան, թող վճռի մօտիկ պատրիարքը եկեղեցու օրէնքի համաձայն. այս վճռի դէմ ոչ մի կողմը իրաւունք չունի բողոքելու (Վալսամոն)։

*13. Եթէ եպիսկոպոսը առանց հրաւէրի ուրիշ թեմ կ՚տեղափոխուի, և կսկսի ձեռնադրութիւններ կատարել և կարգադրութիւններ անել, բոլորը կլինեն անվաւեր և ինքն էլ կարգալոյծ կլինի։ Հրաւիրել կարող է միտրոպոլիտը իւր եպիսկոպոսների խորհրդով և ուղարկել ուրիշ թեմ։*

Բ. առ. 14, Նիկ. 15, Անկ. 18, Բ. առ. 34, Նիկ. 4, 6։

*14. Եթէ եպիսկոպոսին դատի ենթարկելու ժամանակ, քննող եպիսկոպոսների անհամաձայնութիւն կլինի, թող միտրոպոլիտը հրաւիրի մօտիկ շրջակայ եպիսկոպոսներին և սրանք ժողովով վերջնականապէս վճռեն գործը։*

Տես Բ. առ. 74, Գօլ. 6, Սար.—4, 3, 5, 12։

*15. Եթէ եպիսկոպոսին դատելու ժամանակ աշխարհի բոլոր եպիսկոպոսները միաձայն վճիռ կկայացնեն և միաձայն կը դատապարտեն, այդպիսի վճիռը կլինի հաստատուն և վերջնական, մեղադրուողը նոր ժողովով արդարանալ չի կարող։*

**Սարտիկիայի 4—կանոնով այս կարգը փոփոխութեան է ենթարկւում։**

*16. Թեմ չունեցող եպիսկոպոսը եթէ առանց միտրոպոլիտի նախագահութեամբ կազմած ժողովի համաձայնութեան յափշտակի ուրիշ՝ եպիսկոպոս չունեցող թեմ, թէկուզ թեմի ժողովրդի ընտրութեամբ, այդպիսին կարգալոյծ կլինի։*

Տես Բ. առ.—14, Նիկ.—15, Անկ.—18։

*17. Մի տեղի վրայ հովուելու ձեռնադրուած եպիսկոպոսը, եթէ չգնայ իւր թեմը, զրկւում է եկեղեցու հաղորդակցութիւնից այնքան ժամանակ, մինչև որ կզղջայ և կընդունի իւր պաշտօնը։*

Տես Բ. առ. 36 կ.։

*18. Եթէ ձեռնադրուած եպիսկոպոսը չի ընդունւում այն քաղաքի կողմից, որի վրայ հովուելու պիտի գնայ, կամ ուրիշ մի որևէ իրանից անկախ պատճառով չի կարող ստանձնել իւր պաշտօնը, նա իւր եպիսկոպոսական պատւում և աստիճանում կլինի, միայն եկեղեցական գործերում չի խառնուիլ մինչև ժողովի անօրէնութիւնը։*

*19. Եպիսկոպոսի ձեռնադրութիւնը պիտի լինի ժողովով և միտրոպոլիտի ներկայութեամբ. միտրոպոլիտը թղթով հրաւիրում է եպիսկոպոսներին և ձեռնադրուողի ծառայակիցներին, որոնք չգալու դէպքում ուղարկում են իրանց գրաւոր կարծիքը, և մեծամասնութեան վճռով որոշում են ձեռնադրել եպիսկոպոսացու անձին։ Եթէ հակառակ այս կարգին ձեռնադրութիւն կլինի, ոյժ չի ունենալ և անվաւեր կհամարուի։*

Տես Բ. առ. 1, Նիկ. 4.

*20. Եկեղեցական գործերը կարգի բերելու համար տարին երկու ժողով լինի. մէկը զատկից յետոյ չորրորդ շաբթում, միւսը հոկտեմբերի 15-ին. եպիսկոպոսներին յիշեցնում է միտրոպոլիտը: Այս ժողովներին դիմում են քահանաները և սարկաւագները և բոլոր վիրաւորուած անձինք և դատ են խնդրում ժողովից: Բայց ոչ ոք իրաւունք չունի առանց միտրոպոլիտի ժողովներ հրաւիրել:—*

*Բ. առ. Նիկ.*

*21. Եպիսկոպոսը ոչ մի կերպ իրաւունք չունի իւր նշանակած տեղից հեռանալու և ուրիշ թեմ գնալու, ոչ ինքնակամ, ոչ ժողովրդի բռնութեամբ, ոչ եպիսկոպոսների ստիպմամբ. հապա Աստծուց վիճակուած եկեղեցում պիտի մնայ:*

*Բ. առ.—14, Նիկ.—15, Անկ.—18:*

*22. Եպիսկոպոսը իրաւունք չունի իւր թեմից դուրս ուրիշ որևէ մի տեղ ոչ ձեռնադրութիւն անել, ոչ էլ կարգադրութիւն առանց տեղական եպիսկոպոսի թոյլտուութեան: Այլապէս ձեռնադրութիւնը կլինի անվաւեր և ինքն էլ ժողովի կողմից ապաշխարանքի կենթարկուի:*

*23. Եպիսկոպոսը մեռնելուց առաջ իրաւունք չունի իրան յաջորդ կարգելու, որովհետև այդ՝ ժողովի իրաւունքն է, ով յաջորդ կնշանակի, անվաւեր կհամարուի:*

Այս կանոնը չի հակասում այն կարգադրութիւններին յաջորդութեան համար, որոնք անում են միմիայն եկեղեցու շահերը ի նկատի ունենալով: Այսպէս օրինակ Աղէքսանդրիայում Աղէքսանդր եպիսկոպոսը նշանակեց Աթանասին, իսկ Աթանասը նշանակեց յաջորդ Պետրոսին: Նարկիսոսը Երուսաղէմի եպիսկոպոս կարգեց Աղէքսանդրին: Լուսաւորիչ յաջորդ նշանակեց իւր որդիներին. նոյնպիսի դէպքեր և Շնորհալու ժամանակ կրկնւում էին:

*Բ. առ. 76 կ.:*

*24. Եկեղեցու ինչքը պիտի ամենայն հաւատարմութեամբ և սրբութեամբ պահպանուի և պիտի գտնուի եպիսկոպոսի անմիջական իշխանութեան տակ. սարկաւագները և քահանանե-*

*րը պիտի իմանան ո՞րն է եկեղեցապատկան ստացուածքը, որ եպիսկոպոսի մահից յետոյ չկորչի։ Եպիսկոպոսը իւր սեպհականութիւնը կարող է տալ ում և կամենում է, բայց հաշիւները այնպէս պիտի պահուին, որ նրա մահից յետոյ ոչ եկեղեցին տուժի, ոչ էլ եպիսկոպոսի ժառանգները լիանց ժառանգութիւններից։*

Տես Բ.տռ.—38, 39, 41, 40 Անկ. 15։

25. *Եպիսկոպոսը իբրև եկեղեցական ստացուածքների ընդհանուր կարգադրիչ, գործադրում է անաչառութեամբ Աստծուն հաճելի եղանակով. Նա հոգում է բոլոր միաբանութեան, օտար հիւրերի և իւր անհրաժեշտ պէտքերը և կարիքները։ Եթէ նա զանազան արդիւնքները և դաշտերի պտուղներ փոխանակ քահանաների և սարկաւագների խորհրդով գործադրելու, իւր որդիներին, բարեկամներին կյանձնի և կվատնի, այդպիսի եպիսկոպոսը պարտաւոր է հաշիւ տալ ժողովին. իսկ եթէ նրա վատնելու և վատ տնտեսելու մասին բողոքներ կլինեն, այն ժամանակ եպիսկոպոսաց ժողովը կքննի և արդար վճիռ կկայացնի յանցաւորի վերաբերմամբ։*

Տես Բ. տռ. կանոնները—38, 39, 40, 41. Անկ. 15.

---

## Ե) ԼԱՒՈԴԻԿԻԱՅԻ ՏԵՂԱԿԱՆ ԱՐՏԱՔԻՆ ԺՈՂՈՎԸ 365 Թ.

*Լաւոդիկեան գտնւում է Փրիգայում. Ժողովի ժամանակը ճշտութեամբ յայտնի չէ, ենթադրում են որ եղել է Դ. դարու վերջին, 365 թուականներին։ Այս ժողովում սահմանուել է 60 կանոն զանազան խնդիրների վերաբերմամբ, եկեղեցական կարգերի, հոգևորականների և աշխարհականների վարքի, բարքի, զանազան յանցանքների ևլն ևլն. այդ կողմից նոյն ժամանակուայ քրիստոնեաների կեանքի պատկերն է արտայայտում։*

1, Ազատ և օրինաւոր երկրորդ պսակով միացողները և ոչ ծածուկ կերպով յարաբերութիւն ունեցողները, քիչ ժամանակ ապաշխարանքի ենթարկուելուց յետոյ, ներողամտաբար ընդունւում են եկեղեցում։

Երկրորդ պսակը ընդունւում է իբրև անառակութեան դէմ բժշկութիւն, թէև ապաշխարանքով. (Ա. Կորն. Է. 3, 9. Նիկ. 8, Բարս.—4, 7, 8)։ Կրկնամուսնութիւնը լինում է երեք տեսակ, 1) այրու պսակը ազատ անձի հետ, 2) մի մարդու կենակցութիւնը երկու կնոջ հետ միաժամանակ, 3) օրինաւոր ամուսիններից մէկի պսակուիլը երրորդ մէկի հետ (Բարս. 22)։ Ըստ Սլաւոնական կորմչայա կնիգայի և Հռոմէական օրէնքների երկրորդ պսակ թոյլատրւում էր մարդու մահից մի տարի յետոյ։ Այս մասին երկար կարգադրութիւններ է տալիս Յուստինիանոսի 22 Նովելան։

2. Մեղաւորները եթէ ապաշխարանքով և խոստովանութեամբ ղղջում են իրանց յանցանքները սրտանց, կարող են համարուել հաւատացեալների շարքը մտած և եկեղեցում աղօթող։

3, Նոր մկրտուածներին հոգևորական դասի մէջ չպէտք է ընդունել։

Տես Բ. առ.—80. Նիկ.—2.

4. Հոգևորականները չպիտի շահով փոխանակութիւն անեն, կամ վաշխ առնեն, և կամ կէս շահով տան։

Տես Բ. առ. 64. Նիկ. 17. Ա.—առ.—18։

Մեր կանոնագրքերի 5-րդ կանոնն է։

5. Հոգևորականների ձեռնադրութիւնը ունկնդիրների ներկայութեամբ չպիտի լինի։

Տես Բ. առ.—1։

Ոմանք կարծում են որ այս ձեռնադրութիւն բառը (խիրոտոնիա) նշանակում է ձեռնամբարձութիւն, այսինքն

ձեռք բարձրացնելով Հոգևորականի ընտրութիւն կատարել. իսկ ուրիշները ուղիղ մտքով են հասկանում, այսինքն եկեղեցու միջի ձեռնադրութիւնը։

Մեր կանոնագրքերի 4-րդ կանոնն է։

6. Հերետիկոսներին թոյլ չտալ եկեղեցի մտնելու։

Թէև Բարսեղ մեծը ընդունեց Վաղենտին թագաւորին։

7. Նորադարձ հերետիկոսներին, Նովատեաններին, Փոտինեաններին կամ տասնչորսականներին, թէ թերահաւատ թէ հաւատացեալ ընդունել միայն այն ժամանակ, երբ նզովք կկարդան բոլոր աղանդների վրայ. Նրանցից հաւատացեալները կօծուին միւռոնով և կհաղորդուին՝ երբ կսովորեն մեր հաւատքը։

Տես Պոլիս.—1. Նիկ.—19. Պօլ.—7. Եփ. 1, 2, 3։

8. Նորադարձ Փրեգները, թէկուզ կղերից և աւագագոյններից լինեն, պիտի մկրտուեն նորահաւատների նման եպիսկոպոսից և քահանայից։—

Տես Պօլ. 7։

9. Հերետիկոսների գերեզմանատները կամ նրանց մարտիրոսների տեղերը պիտի չգնալ բժշկութեան կամ աղօթելու համար։ Գնացող հաւատացեալները ժամանակաւորապէս կմերժուին եկեղեցուց։

Տես Բ. առ. 64, 70։

10. Հոգևորականները առանց քննելու չպիտի թոյլ տան իրանց որդւոց հերետիկոսների հետ խնամութիւն անելու։

11. Եկեղեցում չպիտի կարգել աւագուհիներ, կամ իբրև այսպէս անուանուած նախագահուհիներ։

Մեր ձեռագրերում ուրիշ տեսակ է գրած. «Ոչ է մարթ ույք կոչին ծերք և պառաւք առաջի եկեղեցւոյ նստիլ որպէս ի հրապարակի կամ բնաւին կնոջ մարդոյ»։ Աւագուհի ասելով սարկաւագուհիներ չպիտի հասկանալ, այլ աւագ ծեր կանայք, որոնք իրանց տարիքով և վարք ու բարքով պատկառելի

էին բոլորի աչքում և կոչւում էին կին-քահանայք։ Կանոնըս արգելում է դրանց հսկելու իրաւունք տալ եկեղեցում կանանց վրայ. (Վալսամոն, Զոնարա)։

12. Եպիսկոպոս կարգեն շրջակայ եպիսկոպոսների ժողովը միտրոպոլիտի հետ միասին փորձուած և հաւատարիմ անձի։

Տես Առ. 19. Նիկ. 4.

13. Ամբոխին չպիտի թոյլ տալ հոգևորական ընտրել։

Այստեղ չի նշանակում բուն ժողովուրդը իրաւունք չունի ընտրութիւն անել, քանի որ շատ կանոններից և Առ. կարգադրութիւններից երևում է որ եկեղեցականին ընտրողը ժողովուրդն է, այլ խառն ամբոխը և խառնիճաղանճ մարդկանց բազմութիւնը, որոնք ամեն տեսակ անկարգութիւնների պատճառ կարող են դառնալ ընտրութեան մասնակցելիս։

Վալսամոն ասում է. «Այս կանոններից երևում է, որ հին ժամանակը ոչ միայն եպիսկոպոսներն էին ընտրում ժողովրդից, այլ և քահանայք, որը և արգելւում է»։ (Правила св. апос.... съ толкованіями, 223 եր.)։

14. Զատկին հաղորդութիւնը իբրև օրհնութիւն ուրիշ ծուխեր չուղարկել։

Հին ժամանակ ինչպէս հրէաները զատկին միմեանց ընծաներ էին ուղարկում (օր. բաղարջ), այնպէս քրիստոնեայք ս. հաղորդութիւնը իբրև օրհնութիւն էին ուղարկում. այդ սովորութիւնը արգելուեց, իսկ դրա փոխարէն, ինչ որ մընում էր հաղորդութեան համար վերցրած սրբութիւնից (հացից), խաչաձև դրոշմում էին, օրհնում, և ուղարկում իբրև օրհնութիւն նրանց, որոնք չէին հաղորդուել և ներկայ չէին պատարագին. ուղարկուածը կոչւում էր նշխարք—антидоръ.

15. *Բացի ամբիոն բարձրացող և գրքի վրայ երգողներից, ուրիշ ոչ ոք չպիտի երգի եկեղեցում։*

*Վալսամոնի կարծիքով արգելւում է աշխարհականին ամբիոն բարձրանալ և երգը սկսել եկեղեցում։*

16. *Ճաշաթ օրը կարդալ աւետարան միւս գրուածքների հետ միասին*

*Զոնարան ասում է, որ երևում է ընթերցումները դեռ կանոնաւորուած չէին, աղօթք էին ասում և պատարագը անում. որոշում է կանոնս կարդալ աւետարան, որպէս զի ժողովուրդը դատարկութեամբ չանցկացնի օրը, այլ աւետարանի ընթերցումը գրաւէ և եկեղեցի տանի նրանց։*

Տես Ա.—տռ. 5 կ.։

17. *Սաղմոսները եկեղեցում պիտի երգուին ոչ անընդհատ, այլ ընդմիջումներով և ընթերցանութիւններով։*

Տես Ա.—տռ. 19 կ.։

18. *Միևնոյն աղօթքները պիտի կարդալ միշտ, թէ իննեորդ ժամին և թէ երեկոյեան։*

*Վալսամոնի կարծիքով այս կանոնը արգելք է դնում զանազան անձանց ինքնահնար աղօթքներ բերել և եկեղեցում երգել և ասել։—*

19. *Պէտք է եպիսկոպոսները առանձին աղօթքներ սահմանեն թերահաւատների (չմկրտուածների) համար, դրանց դուրս գալուց յետոյ պիտի ասեն ապաշխարողների աղօթքը, երբ սրանք էլ ձեռք դնելով օրհնութիւն կստանան և կգնան այն ժամանակ աղօթք պիտի ասեն հաւատացեալների համար, առջինը անձայն, միւս երկուսը միասին ձայնով։ Ապա պիտի ողջոյն տան և հաղորդուեն, միայն օծեալները սեղանում կհաղորդուին։*

20. *Սարկաւագները առանց քահանայի թոյլտուութեան չը նստեն, նոյնպէս էլ կղերը առանց սարկաւագի:*

Տես Նիկ. 18:

21. *Կիսասարկաւագները ս. անօթներին մերձենալ և սարկաւագի պաշտօնը կատարել իրաւունք չունին:*

22. *Եկեղեցու կրտսեր սպասաւորը իրաւունք չունի ուրար կրելու և դռնից հեռանալու:*

**(Օրար՝ նշանակում է պահպանում եմ և դիտում), ուրար կրելը սարկաւագների իրաւունքն է: Կրտսեր սպասաւորները դռան մօտ պիտի կանգնէին և հեթանոս մարդկանց թոյլ չտային եկեղեցի մտնելու:**

23. *Երգիչները և ընթերցողները ուրար չպիտի կրեն և նրանով երգեն և կարդան:*

24. *Ոչ մի հոգևորականի, մինչև իսկ սարկաւագի, ընթերցողի, երգիչի, երդմնեցուցիչի, դռնապանի կամ վանականի վայել չէ գինետուն մտնել:*

Տես Բ. առ.—54:

25. *Կիսասարկաւագին վայել չէ հաց բաշխել կամ բաժակ օրհնել:*

26. *Եպիսկոպոսից չկարգուածը իրաւունք չունի երդմնեցուցիչ լինելու ոչ եկեղեցում, ոչ տներում:*

Տես Անտ. 10, Նէո.—14, 1:

27. *Սիրոյ երեկոներին (ագապ) հրաւիրուածներից ոչ ոք հոգևորական թէ աշխարհական, իրաւունք չունենայ վերջում դուրս գնալիս հետը մի բան տանել, որովհետև դրանով եկեղեցական կարգը խանգարում է:*

28. *Սիրոյ ճաշերը վայել չէ Աստուծոյ տներում կատարել:*

Տես Բ. առ. 3, 4. Գան.—11:

29. *Պէտք է կիրակին պահել և շաբաթը գործել, և ոչ հրէաբար շաբաթը տօն անել:*

Տես Բ. առ. 70 կ., Ա.—առ. 5:

30. *Ոչ հոգևորականը և ոչ էլ աշխարհականը չպէտք է կանանց բաղնիս գնան, որովհետև այդ կռապաշտական տգեղ սովորութիւն է։*

**Նոյնը արգելում են և Ս.ռ. կարգադրութիւնները։**

31. *Հերետիկոսների հետ խնամութիւն անել այն դէպքում, երբ կխոստանան քրիստոնեայ-հաւատացեալ լինել։*

**Մեր ձեռագրերում Հերետիկոս բառը այլադգի է թարգմանուած։**

32. *Հերետիկոսից օրհնութիւն չպիտի ստանալ։*

33. *Հերետիկոսի կամ հերձուածողի հետ չպիտի աղօթել։*

Տես Բ. առ. 10, 45, 46. Անտ. 2։

34. *Ով քրիստոնեայ մարտիրոսներին կթողնէ և հերետիկոս մարտիրոս համարուածի ետևից գնայ, անիծեալ լինի։*

35. *Ով եկեղեցին կթողնէ և հրեշտակներին կպաշտի կռապաշտների նման, նզովեալ լինի։*

**Այն Հերետիկոսներն էին, որոնք դաւանում էին թէ Հրեշտակները ստեղծել են աշխարհը և կառավարում են․ դրանք կոչւում էին Հրեշտակականներ․ իսկ իրանք իրանց անուանում էին Հրեշտականմաններ։**

36. *Վայել չէ հոգևորականներին լինել կախարդ, դիւթիչ, աստղագէտ –(մոգ) և կամ վհուկ կչկուռներ (կապ) անող, կչկուռ կրողին պիտի եկեղեցուց հեռացնել։*

**Կախարդները կապ ունէին իբր թէ ոգիների հետ, դիւթիչները զանազան թովչութիւններով յօգուտ կամ ի վնաս մարդկանց հմայութիւններ էին անում․ զանազան ձայների**

միջոցով իբր թէ դևերին բերում էին և գազանների-գայլերի բերանները կապում, որ հանդերի տնային կենդանիներին չուտեն. մի քանիսն էլ օձերն էին դիւթում (օվսունում)։ Աստղագէտները աստղների շարժումներով զանազան գուշակութիւններ էին կատարում (բախտաւոր և անբախտ)։ Աստղագիտութիւնը չորս ճիւղն ունէր, թուաբանութիւն, երաժշտութիւն, երկրաչափութիւն, աստղաբաշխութիւն։ Զոնարայի կարծիքով կանոնս արգելում է այս 4 գիտութիւնը կարդալ, բայց պարապել թոյլատրում է։ Վալսամոնի կարծիքով արգելւում է միայն աստղաբաշխութիւնը։ Վասիլիկի 10-րդ գիրքը արգելում է միայն մատեմատիկան, իսկ երկրաչափութիւնը թոյլ է տալիս։ Կշկուռները թղթի կտորներն էին զանազան ծածկագիր տառերով խզբզած, ծալած էին կամ կշկռում շորի ծայրում և իրանց հետ պահում իբրև պաշտպանութիւն զանազան կախարդութիւնների դէմ։ Փարիսեցիք միշտ կրում էին հանդոյցի նման—հոգու կապեր էին կոչւում։

Տես Ա.-առ.-15. Բ.-առ.-24, Անկ.-24, Կես.-8, Ձահ.-կան. Բարս.-65, 72, 83, Գր. Նիւս.-3։

37. Հրէաներից և կռապաշտներից չպէտք է ընդունել տօնական ընծաներ և ոչ էլ միասին տօն կատարել։

Տես Բ. առ. 42, 65, 70, 71, Անկ. 7, Առ. 16։

38. Չպէտք է հրէաներից բաղարջներ ընդունել կամ նրանց անպատուաբեր արարքներին հաղորդակից լինել։

39. Կռապաշտների հետ չպէտք է տօն կատարել կամ նրանց անաստուածութեան հետ միանալ։

**Հայոց ձեռագրերում 38 և 39—միացրած է։**

40. Եպիսկոպոսները բացի հիւանդութեան դէպքից՝ ուրիշ ոչ մի պատճառով չպիտի ուշանան՝ ծուլանան ժողով գնալու։

Տես Բ. առ.—37, Նիկ.—5, Անտ.—20։

**Մեր ձեռագրերում 39—կանոնն է։**

41. Հոգևորականը առանց վկայաթղթի չպիտի ճանապարհորդի։

Տես Բ. առ. 12, Անա. 7, 8, 11։

Մերոնց մէջ 41-րդն չկայ։

42. Հոգևորականը առանց եպիսկոպոսի հրամանի չպիտի ճանապարհորդի։

Մեր ձեռագրերում 40-րդ կանոնն է։

43. Եկեղեցու սպասաւորները գռներից չպիտի հեռանան աղօթքները սովորելու պատրուակով։

Մերոնց մէջ չկայ։

44. Կինը սեղան չպիտի բարձրանայ։

Մեր կանոններում 41-րդ կանոնն է։

45. Քառասնորդական պասի առաջի երկու շաբաթից յետոյ չպէտք է մկրտութիւն ընդունել։

Այս կանոնս վերաբերում է հասակաւորներին, որոնք հին սովորութեան համաձայն աւագ շաբաթ օրն էին մկրտւում։ Ով որ մեծ պասի սկզբին, կամ երկու շաբաթուայ ընթացքում չէր յայտնում իւր ցանկութեան մասին և չէր պատրաստւում մկրտւելու, այդպիսի անձին կանոնը թոյլ չի տալիս այդ քառասնորդական պասին մկրտւելու, այլ կը մնայ մինչև որ ջերմեռանդութեամբ կպատրաստուի աւազանով մկրտւելու (книга правилъ)։

Մեր ձեռագրերում էլի 41-րդ կանոնն է։

46. Մկրտուողները պիտի հաւատոյ դաւանութիւնը սովորեն և շաբաթուայ 5-րդ օրը պատասխան տան եպիսկոպոսին և քահանային։

**Մերոնց 42-դն է. պէտք է նկատեմ, որ բոլոր ձեռագրերում նոյն թուահամարի կարգը չի տիրապետում. յետ ու առաջ գրուածներ շատ կան։**

47. Հիւանդութեան ժամանակ մկրտուածը, առողջանալուց յետոյ պիտի հաւատոյ ուսմունքը սովորի։

**Մերոնց մէջ 43-րդն է։**

48. Մկրտուողներին հարկաւոր է օծուել երկնային օծումով և մասնակից լինել Աստուծոյ արքայութեան։

**Մերոնց մէջ 44-րդն է։**

49. (45.) Մեծ պասին սուրբ հաց մատուցանել կարելի է միմիայն շաբաթ և կիրակի օրերը։ Նշանակում է՝ մեծ պասին պատարագ անել կարելի է շաբաթ և կիրակի օրերը. իսկ միւս օրերը ճաշու ժամ։

50. (46.) Քառասնորդականի աւագ հինգշաբթի օրը չպիտի լուծել, այլ լրիւ մինչև վերջը պիտի պահել։

**Հներում շատերը զատիկը կատարում էին հինգշաբթի երեկոյեան 'ի յիշատակ Քրիստոսի երեկոյեան։**

51. (47.) Քառասնորդական պասին մարտիրոսների ծնունդը հարկաւոր չէ տօնել, այլ միայն նրանց յիշատակը կարելի է կատարել շաբաթ և կիրակի օրերը։

Տես Ա.—առ.—5, 27։

52. (48.) Քառասնորդական պասին պսակ անել կամ ծնունդը տօնել չի կարելի։

53. (49.) Քրիստոնեան պսակ գնալու ժամանակ չպիտի ձիարշաւ դուրս գայ, պարի, այլ գիշերը պիտի հանգիստ անցկացնի։

**Նոյն կարգադրութիւնը անում են և Ա.ռ. կարգադրութիւնները։**

54. (50.) Հոգևորականները պսակների խնճոյքներում չպիտի անվայել ներկայացումներին ներկայ լինին, հապա պիտի շուտ դուրս գան անմիջապէս պսակից յետոյ։

**Այստեղ չի խօսւում իսկական թատրոնական ներկայացումների համար, այլ հարսանիքների և խնճոյքների ժամանակ կատարուած զանազան անպարկեշտ երգ ու պարի և ցնցերի համար։ Իսկ ընդհանրապէս ներկայացումներին գնալ արգելւում էին թէ հռոմէական քաղաքացիական օրէնքները և թէ Զ. տիեզերական ժողովը։**

55. (51.) Հոգևորականին և աշխարհականին վայել չէ հանգանակով (փոռն) կոչունքներ (սարքել) անել։

56. (52.) Քահանան իրաւունք չունի եպիսկոպոսը եկեղեցում գտնուած ժամանակ առաջ մտնել և նստել սեղանում։

57. Փոքր քաղաքներում և գիւղերում պիտի բարեկարգներ (պերիօդևտ) լինեն և ոչ եպիսկոպոս. իսկ առաջուց նշանակած եպիսկոպոսը առանց քաղաքի եպիսկոպոսի ոչինչ չպիտի անի։

**Պերիօդևտ նշանակւում է այցելու, աստիճանով նրանք քահանայ են. համապատասխան են այժմեայ բարեկարգին (գործակալ) (книга правилъ)։**

**Մեր ձեռագրերում չկայ այս կանոնը։**

58. (53.) Քահանայք և եպիսկոպոսներ տներում պատարագ չպիտի մատուցանեն։

**VI տիեզերական (Հինգ-վեցեան) ժողովի 31 կանոնը թոյլ է տալիս եպիսկոպոսի գիտութեամբ պատարագ անել աղօթատներում, որոնք գտնւում են տան մէջ, իսկ 59 յօդ. արգելւում է տներում մկրտութիւն անել։ Նոյնը պատուիրում է Լևոն իմաստասէր կայսրը իւր նովելլայով։**

59. (54,) Եկեղեցում պիտի կարդալ Նոր և Հին կտակարաններից այն գրքերը, որոնք կանոններում նշանակուած են, և վաւերական սաղմոսները։

Բացի Դաւթի 150—սաղմոսից, կային և ուրիշ սաղմոսներ բոլորովին կաւ չունեցող վաւերականների հետ։—

60. Այս գրքերը պիտի կարդալ 1) Ծննդոց, Ելից, Ղևտացւոց, Թուոց, Երկ. Օրինաց, Յեսու Նաւեայ, Դատաւորաց, Հռութ, Եսթեր, 4 Թագաւորութեանց, Մնացորդաց 2, 2 Եզր, 150 Սաղմոս, Սողոմոնի Առակներ, Իմաստութիւն, Երգ երգոց, Յովբ, 12 մարգարէութիւնք։

2) Չորս Աւետարան, Գործք Առաքելոց և 7 թուղթ— 1 Յակովբու, 2 Պետրոսի, 3 Յովհաննու, 1 Յուդայ և 14 Պօղոսի թղթեր։

«Յայտնութիւնը» այստեղ էլ չկայ. չկայ նոյնպէս և Կղեմայ յիշատակարանը 8 գրքի մասին գրած.

Տես Բ.—առ. 58 և Աթանասի 3 կ.։

Հայոց ձեռագրերում 59—60 կանոնները միացրած է։—Բովանդակութեամբ՝ համարեա ձեռագրերի մէջ եղած կանոնները նոյնն են իսկականի հետ, բացի երկու կանոնից, որը չկար մերոնց մէջ. երկու կանոն երկու անգամ միացրած են։ Մերոնց մէջ 54—55 կանոնն է, 2 կանոն միացրած է, ջոկ-ջոկ հաշուելու լինենք կունենանք 57 կանոն, այնպէս որ կարող ենք ասել մեր ձեռագրերում Լաւոդիկեայի ժողովի կանոնները 57—են, թէև գրուած են թուահամարով 55, երբեմն 54։—

---

## Զ) ՍԱՐԴԻԿԻԱՅԻ ՏԵՂԱԿԱՆ ԱՐՏԱՔԻՆ ԺՈՂՈՎԸ 344—347 Թ.

Սարդիկիայի (Իլլիրիայում) ժողովը եղաւ 344 թուին, ըստ Յով. վարդապետի 347-ին, Կոստանդին Մեծի որդու Կոստանցի թագաւորութեան ժամանակ։ Սա արիոսական լինելով, աշխատում է Նիկիայի ժողովի դաւանանքը և կանոնները խախտել։ Նրա եղբայր Կոստանդը այդ բանը իմանալով պապի գեկուցմամբ, նամակով սպառնաց, որ եթէ եկեղեցու մէջ խռովութիւն կըձգի, պատերազմով վախճան կդնի այդ բանին։ Եղբայրը պատասխանեց, որ միայն ցանկանում է ճշմարտութիւնը վերականգնել, ուրիշ ոչինչ։ Երկու եղբայրն էլ համաձայնեցին ընդհանուր ժողով գումարել և հարցը վերջացնել։ Ժողովեցին երկու կայսրութեան սահմանագլուխը—Սարդիկիա։ Արիոսական խմբին պատկանողները մեծ մասամբ արևելեան եպիսկոպոսներն էին։ Սրանք պահանջեցին, որ ս. Աթանասը՝ Արիոսի ջերմ հակառակորդը հեռանայ, իսկ արևմտեանները մերժեցին այդ պահանջը, պաշտպանելով Աթանասին. այն ժամանակ արևելեանները թողեցին ժողովը և հեռացան Փիլիպպոպոլ և այնտեղ ժողով կազմելով նզովեցին պապին և Աթանասին։ Սարդիկիայում մնացին արևմըտեան եպիսկոպոսները և մի քանի արևելեաններ։ Այսպիսով ժողովը չկարողացաւ տիեզերական նշանակութիւն ունենալ, ընդունուեց իբրև տեղական ժողով, թէև արևմտեանները ուզեցին տիեզերականի նշանակութիւն տալ, բայց ապարդիւն եղաւ։ Ժողովը հաստատեց Նիկիոյ հանգանակը, նզովեց չընդունողներին և սահմանեց 20 կանոն։

1. Այն եպիսկոպոսը, որ իւր քաղաքից կհեռանայ ուրիշ քաղաք, փոքրից մեծ, յայտնի կերպով շահասիրական և այլ պախարակելի միտումներ ունենալով, այդպիսի աշխարհականների հետ մինչև իսկ հաւասար աղօթակից չպիտի լինի։

Տես Բ. առ. 14, Նիկ. 15, Անտ. 21, 22։

2. *Ով ուրիշ քաղաք տեղափոխուելուց յետոյ կհամարձակի իրան արդարացնելու համար ասել, որ ինքը հրաւիրուած է ժողովրդից և զանազան միջոցներով իրան կողմնակից կգտնի ժողովրդի մէջ, այդպիսին մեռնելու ժամանակն էլ աշխարհական նման հաղորդութեան արժանի չի լինիլ։*

Արիստինը նկատում է, որ այսպիսի խիստ կանոններ այսպիսի մեղքի համար ոչ մի տեղ չի սահմանուած։

3. *Ոչ մի եպիսկոպոս չպիտի թողնի իւր տեղը և ուրիշ գաւառ անցնի, բացի եղբայրական հրաւէրի դէպքից։ Եպիսկոպոսը կարող է դատուել իւր աշխարհի եպիսկոպոսների ժողովով, իսկ բողոքել ժողովի վճռի դէմ կարող է, բայց ոչ մեծ ժողովի, այլ Հռոմայ պապին, որը եթէ անհրաժեշտ կգտնի, մարդիկ կը նշանակի գործը քննելու և վճիռ կարդալու կամ հին վճիռը անփոփոխ թողնելու։*

Անտիոքի 15 կանոններում և ուրիշ տեղերում իրաւունք է տրւում երկրորդ անգամ ուրիշ աշխարհի եպիսկոպոսների մասնակցութեամբ և երրորդ անգամ միտրոպոլիտի կամ պատրիարքի նախագահութեամբ քննել գործը և վճռել. այստեղ իրաւունքը տրւում է Հռոմի պապին, որը կարող է թողնել նախկին վճիռը անփոփոխ կամ խորհրդականներով վճռել։

4. *Ժողովի միջոցով կարգալոյծ արած եպիսկոպոսի տեղ նորը չպիտի նշանակել, երբ մեղադրուածը կամենում է բողոք ներկայացնել իբրև անարդար դատուած, մինչև հռոմի պապը վերջնականապէս կվճռի գործը։*

Տես Անտ. 15, Բ.-առ.—74:

5. *Եթէ ժողովով դատապարտուած և կարգալոյծ արուած եպիսկոպոսը կամենում է իրան արդարացնել, դիմում է պապին, որը եթէ երկրորդ անգամ դատի պէտք համարի, կհրաւիրի հարևան աշխարհի եպիսկոպոսներին և նրանցով գործը կվերջացնի։*

6. Եթէ ժողովուրդը խնդրում է եպիսկոպոս կարգել, եպիսկոպոսները պիտի միասին ժողովուին. իսկ եթէ բացակաները հրաւէր ստանալուց յետոյ էլ չեն գալիս, ներկաները խորհրդակցութեամբ վճռում են ընտրեալին ձեռնադրել։ Մետրոպոլիտ նշանակելու համար պէտք է հրաւիրել եւ մօտիկ գաւառի եպիսկոպոսներին։ Մեծ քաղաքներում պէտք է եպիսկոպոս կարգել, իսկ փոքրերում քահանայ կարելի է նշանակել

7. Ոչ մի եպիսկոպոս չպիտի տաղտկացնի Թագաւորի ականջը իւր խնդիրներով, բացի այն դէպքից, երբ պաշտպան է հանդիսանում աղքատներին, այրիներին, որբերին։ Թագաւորի բանակ կարող են գնալ այն ժամանակ, երբ արքունիքից կանչւում են։

Տես Անտ. 11։

8. Եթէ եպիսկոպոսը անհրաժեշտ պէտք է զգում վերոյգրեալ դէպքերի համար դիմել Թագաւորին, կարող է յանձնարարութիւնները ուղարկել իւր սարկաւագի ձեռքով։

9. Եպիսկոպոսը խնդիրը Թագաւորին ուղարկելիս, պիտի նախ սարկաւագին և թղթերը ուղարկի Թագաւորանիստ քաղաքի գլխաւոր եպիսկոպոսին ծանօթանալու գործի հետ և պէտք եղած օգնութիւնը հասցնելու։ Հռոմ եկող խնդրատուները, պիտի նախ Յուլիա եպիսկոպոսին դիմեն խորհրդով և ապա Թագաւորին ներկայացնեն խնդիրները։

10. Պէտք է ուշադրութիւն դարձնել, որ հարուստ մարդ կամ գիտնական անձը եպիսկոպոսական աստիճանին հասնելու համար անցնեն ստորին աստիճանները այնքան ժամանակամիջոցում, որ նրանց վարքը, բարքը, հաւատքը, ջերմեռանդութիւնը լաւ յայտնի լինին. առաջ լինին ընթերցող, ապա սարկաւագ և և յետոյ քահանայ և իւրաքանչիւր աստիճանում որոշեալ ժամանակ մնան։ Արդարացի չէ շուտով յաջորդաբար բոլոր աստիճանները տալ այդպիսիներին։

11. Եպիսկոպոսը եթէ անհրաժեշտ դէպքից ստիպուած կամ հրաւէրքով գնում է ուրիշ թեմ, չպիտի ամբարտաւան, հըպարտ երևացնի իրան և տեղական եպիսկոպոսից գերազանց երևալու դիտաւորութեամբ ցուցամոլութիւններ անի։ Ուրիշ թեմում էլ երեք շաբաթից աւելի մնալու իրաւունք չունի. այն էլ եթէ միայն մեծ կարիք լինի. ի նկատի պիտի ունենալ որ մեր հայրերըերեք կիրակի շարունակ եկեղեցի չգնացող աշխարհականին մերժում էին եկեղեցուց, իսկ հոգևորականի վերաբերմամբ աւելի ևս խիստ կվարուէին։

12. Եթէ եպիսկոպոսը իւր թեմից դուրս սեպհական կալուածքները քննելու և պտուղներն ու արդիւնքները ժողովելու գնալ ցանկանայ, աղքատներին ևս օգնութիւն անելու դիտաւորութիւն ունենայ, կարող է գնալ, բայց երեք շաբաթից աւելի չպէտք է ուշանայ և թողնի իւր հօտը անհովիւ և միշտ պիտի գնայ տեղական եկեղեցին աղօթելու, որտեղ սպասաւորում է գիւղի քահանայ։

13. Եթէ եպիսկոպոսը կընդունի ուրիշ եպիսկոպոսից բանադրուած անձին, ինքն էլ պատասխանատուութեան կենթարկուի ժողովի կողմից։

Տես Բ. առ.—12, 13. Ա. առ.—23. Անտ.—6։

14. Եպիսկոպոսից բանադրուածը կարող է դիմել միտրոպոլիտին կամ հարևան թեմի եպիսկոպոսին գանգատուելով իւր եպիսկոպոսի բարկութեան միջոցին արած, կամ անարդար կերպով կարդացած բանադրանքի դէմ. միայն մինչև գործի վերջանալը նա իրաւունք չունի պաշտօնակատարութիւն անելու, այլ ապաշխարանքը պիտի կրի։

15. Եպիսկոպոսը եթէ կընդունի ուրիշ եպիսկոպոսի հոգևորականներից մէկին և նրան զանազան աստիճաններ կտայ առանց իւր եպիսկոպոսի համաձայնութեան, այդ կարգադրութիւնը կլինի անվաւեր։ Զանցառուները պիտի ուղղութեան և ի խրատ հրաւիրուին։

Տես Բ. առ.—35, Անտ.—9, 13։

16. Մնացած հոգևորականները երեք շաբաթից աւելի իրաւունք չունին հեռանալու իրանց տեղից. եպիսկոպոսի վերաբերմամբ ասուածը սրանց համար էլ կանոն լինի ուշանալու դէպքի համար։

17. Եթէ բռնութեամբ, կամ անարդար կերպով եպիսկոպոսը գահընկեց լինի կամ իւր գիտութիւնների, կամ հաւատոյ դաւանանքի կամ ճշմարտութեան պաշտպանութեան համար, կարող է ուրիշ տեղերում մնալ այնքան ժամանակ, մինչև որ կը կարողանայ բոլորովին իրան արդարացնել և պատիւը վերականգնել։

18, Մի եկեղեցում կարգուած հոգևորականը միւս եկեղեցին գնալ և այնտեղ մնալ չի կարող։ Մուսէյ և Եւտիքեանը եպիսկոպոս չհամարուին, իսկ իբրև աշխարհական կարող են աղօթակից լինել հաւատացալների հետ։

Մուսէլ և Նուիքեանը հերձուածող լինելուն համար կարգալոյծ եղան, ուստի նրանք և թէ նրանց ձեռնադրածներն համարւում են իբրև աշխարհականներ, զրկուելով ընդ միշտ հոգևոր կոչումից։

19. Որպէսզի կարգերը և կանոնները ինչ որ ժողովը որոշում է, լինին անխափան կատարելու օրենքներ բոլորի կողմից, որոշում ենք. չկատարող եպիսկոպոսին զրկել եպիսկոպոսական պատուից և արժանաւորութիւններից. ենթարկելով դատաստանական պատասխանատուութեան։

20. Եթէ եպիսկոպոսը իւր քահանային պատահի մի ուրիշ եպիսկոպոսին և վերջինիս իմացնի, որ գնում է թագաւորի արքունիքը նրա հրաւէրքով, թող երկրորդ եպիսկոպոսը օգնի առաջինին թագաւորի բանակը հասնելու. իսկ եթէ տեսնի և իմանայ որ հակառակ եկեղեցական կանոնների է շարժւում և օրինաւոր հիմք չունի թագաւորին դիմելու, ոչ միայն չպիտի օգնի, այլ և չպիտի խորհրդակցի և յարաբերութիւն ունենայ նրա հետ։

Վաղսամոնի կարծիքով ճանապարհորդը պիտի երևայ տեղական միտրոպոլիտի մօտ և նրան ցոյց տայ իւր թղթերը, կամ ասէ նրան իւր գնալու պատճառը և նրանից ստանայ վկայաթղթերը. իսկ եթէ ճանապարհին պատահի եպիսկոպոսի, որին չի ստորադրւում, հարկ չի լինիլ նրան հաշիւ տալու իւր դիտաւորութեան համար։

Մեր ձեռագրերում համարեա նոյն կերպով է թարգմանուած, բայց Աստուած թարգմանութիւն համարի, հասկանալու համար օտար օժանդակ ձեռնարկ էլ է հարկաւոր։

Այստեղ վերջանում է արտաքին տեղական ժողովների կանոնները, դուրս են մնում մեր ցուցակից Կարթագենի և Պօլսոյ 394 թուի տեղական ժողովները, որոնք մեր 1179 թուի ժողովում չեն ընդունուած։

---

## 6) ՕՏԱՐ ՍՈՒՐԲ ՀԱՐՑ ԿԱՆՈՆՆԵՐԸ.

*Մեր եկեղեցական իրաւունքի ընդհանուր աղբիւների մէջ են մտնում և օտար ս. հարց կանոնները։ Օտար եկեղեցիները Հինգ-վեցեան 692-ի ժողովում ընդունեցին 13 սուրբ հարց կանոններ։ Մեր 1179—թուի ժողովում պարզօրէն որոշում չի եղած այդ մասին, այլ ասուած է ընդհանուր խօսքերով թէ «Այլ զի՛ զմերս ծանիցէք կամս, թէ ոչ խորշիմք յԱստուածախօս բանից սուրբ հարցն, որք աւանդեցին սրբոյ եկեղեցւոյ զուղղափառ հաւատոյ դաւանութիւն»։ Իսկ այս ժողովիուրիշ արձանագրութեան մէջ, որ գտնւում է Էջմիածնի № 58 ձեռագրի մէջ, յիշուած է մի առ մի այդ սուրբ հայրերի անունները՝ Աթանաս, Գրիգոր Նիւսացի, Բարսեղ մեծ, Գրիգոր Նազիանզու, Կիւրեղ Աղէքսանդրացի։ Միայն այստեղ շեշտւում է գլխաւորապէս այն բանի վրայ, որ հայերը ընդունում են այդ սուրբ հայրերի դաւանութիւնը, իսկ նրանց սահմանած կանոնների վերաբերմամբ ոչ մի խօսք չի ասւում։ Նոյնպէս էլ Բաբկէն, Ներսէս Բ., Ներսէս Տինող, Յովհան Օձնեցի, Խաչիկ կաթուղիկոս, Շնորհալի, Գրիգոր ևլն ևլն, բոլորը իրանց ճառերի, ժողովով կազմած հաւատոյ ձեռնարկների մէջ յիշատակում են վերոյիշեալ սուրբերի անունները, յենուելով սրանց խօսքերի և վարդապետութեան վրայ։ 648-ի Դուինի ժողովի հաւատոյ ձեռնարկի մէջ յիշատակւում են հետևեալ օտար սուրբ հայրերը իբրև հայոց «մի բնութիւն» դաւանութեան ջատագով, այն է Դիոնեսիոս Աղէքսանդրացի, Աթանաս, Կիւրեղ Աղէքսանդրացի, Բարսեղ Կեսարացի, Գրիգոր Նազիանզու, Գրիգոր Սքանչելագործ, Գրիգոր Նիւսացի և «այլ անթիւ հօվիւք ուղղափառութեան համաբարբառք նոցին որոնց՝ պատմութիւնքն յայտնի են» (տես Սեբէոս)։ Այսպէս միւս ժողովներում. Ներսէս Շնոր-*

հալու կուսանների էին մեծ մասամբ Աթանաս, Կիւրեղ, Ոսկեբերան եւն եւն։ Ս. Սահակ իւր վանական կարգերը և կանոնները վերցրել է Բարսեղ Կեսարացուց. մեր պատարագի սկզբնական ձևը առնուած է Երուսաղէմից Յակոբ Տեառնեղբօրից, ապա Բարսեղի և Ոսկեբերանի յաւելումներով լրացրած է։ Սերմնօրհնէքի, կալի, հնձանի կանոնները Գրիգոր Աստուածաբանինն է, ջուր օրհնելու կանոնը Բարսեղ Մեծինը, մատաղ օրհնէնքի—Յուստոսին եւն եւն։ Մեր կանոնագրքերում բերուած են մօտ 18—19 օտար հարց կանոններ. այն է Աթանասի 88 կանոն, Բարսեղ մեծի 51 և ապա 271 կանոն, Գրիգոր Աստուածաբանի 30, Կիւրեղ Աղէքսանդրացու 5, Եպիփան Կիպրացու 5 և էլի 3, Յովհան Երուսաղէմացու 1, սուրբ Հիպողիտեա 1, Նեկտառի՝ հռոմի եպիսկպոսի և Մելիտոսի 1, Աթանաս մեծի էլի 1, Սիբերիոսի 1, Սոկրատի 1, Դիոնեսիոսի Արիսպակացու 1, Մանուէլի 1, Դիոնիսիոսի Արիս. էլի 1, Եփրեմի 8, Սեանդեայ 14։ Իսկ օտար եկեղեցիների 692-ի ընդունած 13 սուրբ հայրերի ընդունածն են. 1) Դիոնեսիոս Աղէքսանդրացի (—|—264) որ թողել է 4 կանոն. 2) Պետրոս Աղէքսանդրացի (270—304) 4 կանոն, 3) Գրիգոր Նէոկեսարացին (—|—272) 12 կանոն, 4) Աթանասը (326—371) 3 կանոն քաղուածք, 5) Բարսեղ մեծ (370—378) 92 կանոն, 6) Գրիգոր Նիւսացի (354) 8 կանոն, 7) Գրիգոր Աստուածաբան և 8) Անփիլոքս (394), 9) Տիմոթէոս Աղէքսանդրացին (380—385), 10) Թէոփիլոս Աղէքսանդրացի (385—412), 11) Կիւրեղ Աղէքսանդրացի եւն եւն։

Արդեօ՞ք վերոյգրեալների հիման վրայ իրաւունք ունինք այդ բոլոր օտար սուրբ հայրերի կանոնները իբրև աղբիւր ընդունելու մեր եկեղեցական իրաւունքի համար։ 'Ի հարկէ ո՛չ, որովհետև մեր ոչ մի ժողովում անուն անուն չեն յիշատակւում իւրաքանչիւրին յատկացնուելիք կանոնների ընդունման մասին, աւելի պարզ ասած, մեր ոչ մի ժողովը չի որոշել թէ ընդունում ենք այս սուրբերի հետևեալ կանոնները։ Գուցէ առարկուի թէ, եթէ այդ հայրերի դաւանութիւնը մեր բոլոր ժողովները ընդունել են և մենք մինչև

այսօր էլ ընդունում ենք, մանաւանդ որ բոլորը Քաղկեդոնի ժողովից առաջ են եղել, երբ բոլոր եկեղեցիները մի դաւանութեամբ էին առաջնորդւում, այդ բաւական չէ, որ այդ նոյն Հայրերի գրած կանոններն էլ ընդունուած համարուեն բոլորիս կողմից, թէև պաշտօնական ժողովով չեն վաւերացրած։ Իրաւաբանական տեսակէտից մեր եկեղեցական իրաւունքի աղբիւր կհամարուին միայն այն կանոնները, որոնք ընդունուած են ազգային ժողովով, կամ կաթուղիկոսների այնպիսի հրամաններով, որոնք անտրտունջ և սիրով ընդունուած են բոլոր ազգից. և որովհետև 13 սուրբ Հարց կանոնները այդ երկու պայմանի տակ չեն մտնում, ուստի և իրաւունք չունինք դրանց ընդունելու մեր եկեղեցու պաշտօնական-վաւերական աղբիւրների շարքում, մինչև որ նոր ազգային ժողովով պարզ կ'որոշուին այդ անորոշ կէտերը։ Մեր իրաւաբանական այս սկզբունքի դէմ մեղանչում ենք մի բացառութիւն թոյլ տալով Բարսեղ մեծի վերաբերմամբ. Բարսեղ մեծի կանոնները պիտի ընդունենք մեր եկեղեցական իրաւունքի աղբիւրների մէջ հետևեալ հիմունքների համաձայն։

1) Բարսեղ մեծի լրացուցիչ պատարագը ընդունել ենք։

2) Նրա ջուր օրհնելու կանոնն ընդունել ենք։

3) Նրա նախորդներից սկսած մինչև ինքը ձեռնադրել են Հայոց կաթուղիկոսներին և իրանց եկեղեցու կարգ կանոնը մտցրել մեր եկեղեցու մէջ։

4) Նրա կանոնները հիմք են դարձել Ս. Սահակի վանքերի կանոնադրութեան։

5) Նա բոլոր եկեղեցիներում մեծ հեղինակութիւն է ունեցել, մասնաւորապէս արևելեան, նրա կանոնները սրբութեամբ ընդունել են բոլոր եկեղեցիները։

6) Զ. դարում Սխոլաստիկի ժողովածուի մէջ մտան 4 տիեզերական, 6 տեղական, առաքելական և բոլոր սուրբերից միմիայն Բարսեղ մեծի 68 կանոնները, իբրև եկեղեցական ծանրակշիռ կարգադրութիւններ։

7) Թէ մերոնք թէ օտարք կանոններ կազմելիս միշտ յենուել են Բարսեղ Կեսարացու կարգերի վրայ։

Այս հիմամբ բացառապէս ընդունելով Բարսեղ մեծի կանոնները իբրև աղբիւր մեր եկեղեցական իրաւունքի, կ'արձանագրենք յունա-սլաւոնականի բաղդատութեամբ, դուրս ձգելով մեր կանոնագրքերից այն ինչ որ իսկական չի համարւում. իսկ միւս օտար հայրերի կանոնները համառօտակի կ'յիշենք իբրև կողմնակի հնա-պատմական բացադրող աղբիւր, մինչև որ պաշտօնական որոշում կունենանք դրանց մասին։

---

## ԲԱՐՍԵՂ ՄԵԾԻ ԿԱՆՈՆՆԵՐԸ (370—378).

Մեր կանոնագրքերում Բարսեղ Մեծին վերագրած կան 51 կանոն և ապա 271 կանոն, ընդամենը 321, այսպիսի վերտառութեամբ «Գիր կանոնական. առ սուրբն Ակիւղիքոս Լիկոնացւոց եպիսկոպոս բան Ծ.»։ Սլաւոնական «Комчая книга»-ում բացի ընդունուած 92 կանոններից, կան և ուրիշ կանոններ մեղքերի և վանականութեան վերաբերեալ։ Յունա-սլաւոնականի վերնագիրն է «Մեր սուրբ հայր, Կապադովկիայի Կեսարիայի արքեպիսկոպոս Բարսեղի առաջի կանոնական թուղթը Իկոնիայի եպիսկոպոս Ամփիլիքոսին»։ Մեր կանոնագրքերի կանոնների և իսկականի բովանդակութիւնը նոյն է, բայց մերոնց թարգմանութիւնը այնքան վատ է, խառնշփոթ, աղաւաղած, որ անկարելի է հասկանալ առանց օտար ձեռնարկի։ Բացի դրանից մեր կանոնագրքերում ահագին քանակութեամբ կանոններ է, որ այս ու այն ս. հօր են յատկացրած. Բարսեղին տրուած են 321 կանոն, այն ինչ իրանք յոյները և օտար եկեղեցիները 92-ից աւել չեն վերագրած, իսկ Սխոլաստիկը միայն 68 կանոն է յատկացրած։

Մեր Յովհան Մանդակունուն տրուած են 100-ից աւելի ամեն տեսակ խառնուրդ ունեցող կանոններ, որոնք ամենևին գրուած չեն եղել նրա ձեռքով։ Աթանասին վերագրում են յոյները և օտար եկեղեցիք 3 կանոն քաղուած մի քանի կանոնական թղթերից, մեր կանոնագրքերում նրան վերագրած են 88 կանոն։ Այնպէս որ մեր կանոնագրքերը լի են ամեն տեսակ անվաւեր կանոններով, որոնցով առաջնորդուել չի կարելի։ Այս ի նկատի ունենալով Բարսեղ մեծին կվերագրենք մեր կանոնագրքերից այն՝ ինչ որ իսկապէս նրան է յատկացւում, այն է 92 կանոն և կքաղենք այն աղբիւրներից, որոնք համարւում են վաւերական բոլոր եկեղեցիների կողմից (տես Опытъ ц. з. Іоанна 1851, II; Правила св. отецъ...... съ толкованіями, որտեղ յունարէն բնագրի հետ դրուած է և սլաւոներէնը և Творенія Василія великаго»։

1. Հները հերետիկոս համարում էին ուղիղ հաւատից բոլորովին հեռացածներին։ Հերձուածող համարում էին զանազան հարցերում տարբեր կարծիք ունեցողներին. իսկ ինքնագլուխ ժողովարան կազմողներն էին ապստամբ հոգևորականներ և ժողովրդականք, որոնք պառակտում էին մի որևէ եպիսկոպոսի հօտը։ Աղանդաւորների կամ հերետիկոսների մկրտութիւնը չի ընդունւում, իսկ հերձուածողներինը եթէ կղզջան, ընդունւում է, նոյնպէս և ձեռնադրութիւնը։

2. Գիտակցաբար արգանդի պտուղ ոչնչացնողը ենթարկւում է մարդասպանի պատժին։ Իսկ նկարուած է թէ աննկար պտուղը, այդ ճշտութեամբ չի փնտւում։ Մեղաւոր կինը այս դէպքում պատժւում է ոչ միայն պտուղը ոչնչացնելուն համար, այլ և իր կեանքը վտանգի ենթարկելուն համար, շատ է պատահում որ իրանք էլ մեռնում են դրանից։ 10 տարուայ ապաշխարանքը բաւական է դրանց ուղղել տալու համար, որովհետև ժամանակը չէ ուղղողը, այլ սրտանց զղջումը։

Իբրև նմուշ մեր կանոնագրքերի աղաւաղ գրութեան բերում եմ միայն այս նախադասութիւնը իբր օրինակ. «եթէ

ոք պակասեցնէ զէգ յանկարծօրէն», գրուած է «գիտակցաբար արգանդի պտուղ ոչնչացնողը»—նախադասութեան փոխարէն։

3. Մեղանչող սարկաւագը կարգալոյծ է լինում և աշխարհական դառնում, բայց եկեղեցուց չի մերժւում։

Տես Նէո—10, Լաւ—20։

4. Եռապսակների և բազմապսակների համար կանոն սահմանեցինք ինչպէս երկապսակների։ Երկապսակներին հեռացնում են եկեղեցուց մի տարով, ոմանք 2 տարով, եռապսակներին 3 տարով, շատ անգամ 4 տարով։ Եւ այսպիսի ամուսնական կապը համարում են ոչ պսակ, այլ բազմակնութիւն կամ անառակութիւն։ Ինչպէս Քրիստոս Սամարացուն ասաց թէ հինգ մարդ փոխել ես, այժմեանը քո մարդը չէ, որ նշանակում է թէ երկրորդ պսակի սահմանից անցնողը արժանի չէ ամուսին կոչուելու։ Մենք հետևելով ոչ կանոնին, այլ մեր նախորդների օրինակին, եռապսակներին 5 տարուայ ապաշխարանքի ենք ենթարկում։ 3 տարի ունկնդիրների հետ կանգնեն և ապա հաւատացեալների, և յետոյ հաղորդուին զղջալուց յետոյ։

Տես Նէո—7, Լաւ—1։

5. Մահամերձ զղջացող հերետիկոսին պիտի ընդունել։

6. Աստուծուն նուիրուած կոյսերի անառակութիւնը պըսակով չպիտի միաւորել, այլ բոլորովին պէտք է լուծել նրանց ապօրինի կապը. եկեղեցու հաստատութեան համար այդ է օգտաւէտ համարւում։

Բ. առ. 26։

7. Արուագէտները, անասնագէտները, մարդասպանները, շնացողները, թունաւորողները, կռապաշտները միևնոյն պատժին են ենթարկւում։ 30 տարի այդպիսի անմաքրութիւնների համար զղջացողներին առանց տատանուելու պիտի ընդունել։

Տես Անկ. 16, 17։

8. Ակամայ սպանութիւն համարւում է այն, երբ հակառակ կամ առանց իւր կամքի է կատարւում, օր. քար են ձգում ծառին, կամ պտղին, կամ շան ես կամենում խփել և մարդու է

կպչում ու սպանում. նոյնպէս և անձնապաշտպանութեան համար հակառակորդին խփում և սպանում ես։ Բայց երբ կրքով կուրացած պաշտպանողականից յարձակողական դիրք կբռնես և կսպանես մէկին, այդ կլինի կամաւոր սպանութիւն։ Կամաւոր սպանութիւն է, երբ մարդը նախամտածած կերպով, կամ իւր ազատ կամքով կսպանի մէկին. կանայք շատ անգամ առնախանձու դեղով սպանում են իրանց մերձաւորներին և սիրելիներին, սրանք կամաւոր մահապարտների շարքին են պատկանում։

Տես Անկ. 22, 23։

9. Տիրոջ խօսքի համաձայն կարելի է արձակել միայն վասն բանի պոռնկութեան, այդ խօսքը պիտի վերաբերէր թէ մարդուն թէ կնոջ, բայց սովորութեան մէջ այդպէս չէ, երբ մարդը անառակ է, կնոջը պատուիրում է մարդու մօտ մնալ, բայց եթէ կինը անառակ է, մարդուն թոյլատրում է արձակել։

Կարթագենի ժողովը թոյլ է տալիս մարմնաւոր իշխանութեան դիմել կինը արձակելու ժամանակ հակառակութեան կամ դիմադրութեան հանդիպելիս։

Յուստինիանոսի և այլ քրիստոնեայ թագաւորների օրէնքներով կնոջը կարելի է արձակել 5 դէպքում. 1) Եթէ ամուսիններից մէկը սպանութեան փորձ է անում միւսի վրայ. 2) ապացուցուած անհաւատարմութան համար. 3) ամուսնական կենակցութեան անընդունակութեան համար. 4) ամուսիններից մէկի քրէական ծանր յանցանքներում մեղադրուելուն համար, որի հետևանքը լինում է աքսոր, կամ դաժանակիր տաժանք։

10. Ձեռնադրուելու երդումն անողին չպիտի ստիպել, որ երդմնազանց լինի։

Բարսեղի այս կանոնը վերաբերում է մասնաւոր դէպքի, որի համար հարցով դիմել են նրան։

11. Ակամայ սպանութիւն անողի համար 11 ամեայ ապաշխարանքը բաւարար պիտի համարել։

Տես Անկ.—23 կ.։

12. Կանոնները երկապսակներին արգելում են եկեղեցու սպասաւոր լինել։

Տես Բ. առ.—17, 26. Անկ.—10։

13. Պատերազմում եղած սպանութիւնը, ինչպէս մեր հայրերը սահմանեցին, չհամարել սպանութիւն, բայց ձեռքերը սրբելու համար լաւ է 3 տարուայ ապաշխարանքի ենթարկել և այլա թոյլ տալ սպանութիւն կատարողներին հաղորդուելու։

Կանոնումս ակնարկում է Աթանասի Ամմուն վանականին գրուած թուղթը։ Յունաց մէջ, ըստ վկայութեան Վալսամոնի և Զոնարայի, այս կանոնս գործադրութիւն չգտաւ։

14. Անարգար կերպով վաշխ առնողը, եթէ վաշխը կբաշխի աղքատներին և կորուշի շահասիրական գործերով չպարապել, կարող է հոգևորական դառնալ։

15. Որ ս. գրքի մտքի բովանդակութիւնը բառացի չը պէտք է հասկանալ երբեմն այլ աւելի լայն մտքով. սա կանոն չէ, հապա պատասխան իրեն դիմող եպիսկոպոսին մի քանի մասնաւոր խնդիրների վերաբերմամբ։

16. Սա էլ կանոն չէ, հապա խրատ է տալիս իւր բարեկամ եպիսկոպոսին, թէ ուշադիր կարդա ս. գիրքը և կը գտնես հարցերիդ պատասխանը։

17. (Մասնաւոր դէպքերի մասին խորհուրդ է տալիս, կանոն չէ։

18. Կոյսերը, որոնք մի անգամ խոստացել են նուիրել իրանց Քրիստոսին, եթէ մարմնաւորական ախտի մէջ կընկնեն, անարգում են այն ուխտը որ դրել են Աստուծոյ հետ, դրանց մեղանչումը աւելի չար է քան այրունը, ինչպէս Պօղոս առա-

*քեալը Տիմոթէոսին է գրում (Ա.—Տիմ. Ե. 11)։ Այդպիսի կոյսը չնացողի պատժին է ենթարկւում։ Կոյս դարձողը պիտի հասուն խելքով վճռի իւր արածը և փորձով ստուգի թէ կարո՞ղ է տանել այդ ուխտի որոշումը. առնուազը 16 և 17 տարեկանից անց պիտի լինին, որ նրանց հնար լինի ընդունել կոյսերի դասը։*

19. *Ուխտական մարդիկ ասելով հասկանում ենք վանականները, որոնք կուսակրօն կեանք վարել են ցանկանում։ Նրանցից պարզ և որոշ խոստում պիտի առնել միշտ կուսակրօն մնալու, ով կմեղանչի՝ անառակների պատժին կենթարկուի։*

Տես Բ—առ. 25, Նիկ.—9, Նէո.—8։

20. *Հերետիկոս եղած ժամանակ եթէ մէկը խոստացել է կոյս մնալ և ապա մարդու է գնում, դատապարտութեան չի ենթարկւում։*

21. *Ամուսնացած մարդը եթէ ուրիշ կնոջ հետ յարաբերութիւն կունենայ, անառակութիւն արած կհամարուի և երկար ապաշխարանքի կենթարկուի։ Կինը այդպիսի մարդուն չպիտի արձակի, բայց մարդը եթէ անարատ է, մեղանչող կնոջ կարող է արձակել. թէ ինչու երկուսի համար հաւասար չէ օրէնքը, չեմ իմանում, սովորութիւնը այդպէս է։*

22. *Առևանկած կանանց հետ ապրողները, կամ նշանուած աղջիկներ փախցնողները ապաշխարանքի կընդունուին այն ժամանակ միայն, երբ թոյլ կտան, որ իրանց կանայք ազատ ընտրութիւն անեն առաջին նշանուած մարդուն գնալու համար։ Եթէ առևանկած աղջիկը նշանուած չէ, և աղջկան յետ դարձրնելուց յետոյ, ծնողները համաձայնութիւն կտան, կարող է առևանկողը ամուսնանալ աղջկայ հետ։ Առևանկողը և կամ ծածուկ կամ բռնութեամբ լլկողը անառակների պատժին է ենթարկւում, այսինքն 4 տարուայ ապաշխարանքի։ Առաջ լացողների հետ կանգնեն, ապա ունկնդիր լինեն, և ապաշխարելուց յետոյ թոյլտւութիւն ստանան հաղորդուելու։*

Տես Բ. առ.—67, Անկ.—11։

23. *Երկու քրոջ կին վերցնողը կամ երկու եղբօր հետ ամուսնացողը, կամ երկու եղբօր կին առնողը ապաշխարանքի կընդունուին միայն բաժանուելուց յետոյ։*

24. Այրին, որը նպաստ է ստանում եկեղեցուց իբրև այրեաց դասին պատկանող եթէ մարդու գնայ, արհամարհանքի է արժանի (Ա. Տիմ. Ե, 11)։ 60 տարեկան այրին եթէ ցանկանայ էլի մարդու հետ ապրել, թող զրկուի հաղորդութիւն առնելուց մինչև որ կըժշկուի անմաքուր կըքից։ Եթէ 60 տարեկանից առաջ այրեաց դասը մտցնենք այդպիսի կանանց, մեղաւորը մենք ենք և ոչ նրանք։

25. Եթէ մէկը պսակից առաջ յարաբերութիւն կունենայ իւր կնոջ հետ, թո՛ղ ապաշխարանքի ենթարկուի և ապա կենակցի կնոջ հետ։

26. Առանց պսակի, անառակութեամբ ապրողները բաժանուեն, եթէ հնա՛ր է. եթէ ո՛չ, թող անառակի պատժին ենթարկուեն և ապա ամուսնանան։

27. Անգիտութեամբ անկանոն պսակ ունեցող քահանան, թո՛ղ իւր քահանայական պատիւը պահի, բայց քահանայագործութիւն չանի։

Անկանոն պսակ ասելով պիտի հասկանալ անարժան անձի հետ մտած ամուսնութիւն, երբ կինը վատ վարք է ունեցել, անարգներից է և այլն, որպիսի պսակը համարւում է հակառակ քահանայական ընտանիքի մաքրութեան գաղափարին։

28. Այս կանոն չէ, այլ մի մասնաւոր դէպքի մասին խօսակցութիւն, որ առաջացել է մի մարդու խղճի մսից իսպառ հրաժարուելու ուխտ անելուց։

29. Այս ևս կանոն չէ, այլ խրատ է գլխաւորութիւն անող անձանց, որոնք երդուել են անաչառ վարուել իրանց ստորադրեալների հետ և չեն պահում իրանց երդումն։

30. Առևանգողների մասին հին կանոն չունինք, ես իմ կարծիքս եմ միայն յայտնում դրա վերաբերմամբ, թէ նրանք և թէ նրանց օգնողները 3 տարով ապաշխարանքի ենթարկուին դրսում կանգնելով առանց աղօթքին մասնակցելու։ Եթէ առևանգութիւնը կատարուել է առանց բռնութեան, առանց գողութեան և առանց մեղանչման, պատիժ չի որոշւում։

Տես Բ—առ. 67. Անկ. 11։

31. Կինը եթէ անյայտութեան մէջ եղող ամուսնու մահուան մասին առանց հաստատ տեղեկութիւն իմանալու կամուսնանայ, շնութիւն գործած կլինի։

32. Հոգևորականները եթէ մահացու մեղք կգործեն, թող զրկուին իրանց կարգից և իբրև աշխարհական եկեղեցի մտնեն։

33. Ճանապարհին ծնուող երեխային թողնող մայրը—մարդասպանի պատժին է ենթարկւում։

34. Եթէ իրանց խոստովանութեամբ կամ այլ կերպ կը յայտնուի, որ կինը շնութիւն է արել, թող հաղորդուի միայն այն ժամանակ, երբ ապաշխարանք կկրի որոշ ժամանակով։

35. Եթէ կինը առանց պատճառի կթողնի մարդուն, պատժի կենթարկուի։

36. Զինուորների կանայք, եթէ չսպասելով իրանց ամուսինների վերադարձին, մարդու կգնան, նոյն պատժին կենթարկուեն, ինչ որ նշանակուած է 31-րդ կանոնում, այստեղ միայն թեթև զիջողութիւն լինի, որովհետև մահուան առիթներ շատ են պատահում։

37. Ուրիշի կնոջ հետ ապրող ամուսնացած մարդը՝ շնութիւն արած կհամարուի և կմեղադրուի։

38. Եթէ աղջիկը առանց հօր թոյլտուութեան մէկին գնայ, պոռնկութիւն արած կլինի։ Եթէ կհաշտուի հօր հետ, թող երեք տարի ապաշխարի, ապա հաղորդուի։

39. Ընացողի հետ ապրող կինը շնացող է կենակցութեան բոլոր ժամանակը։

40. Եթէ աղախինը հակառակ տիրոջ կամքին մարդու կը գնայ, պոռնկութիւն արած կհամարուի. եթէ տէրը ներէ և յօժարութիւն ցոյց տայ, նրանց կենակցութիւնը կհամարուի օրինաւոր. առաջի դէպքում անառակութիւն է, երկրորդ դէպքում պսակ։

41. Այրին ում կամենայ, կարող է նրան գնալ. ամուսնու մահը իրաւունք է տալիս մարդու գնալ ազատօրէն։

42. Ակամայ պսակը անաւակութիւն է, պսակուողները հօր կամ տիրոջ համաձայնութիւնը պիտի ստանան միշտ, որ պսակը հաստատուած համարուի։

43. Մերձաւորին մահացու հարուած տուողը՝ սպանող է։

44. Սարկաւագուհին եթէ յարաբերութիւն ունեցաւ հեթանոսի հետ, հաղորդութիւն կառնի միայն եօթերորդ տարում՝ եթէ մաքրութեամբ կապրի։

45. Քրիստոնեան եթէ կանարգի Քրիստոսին, նրա հաւատացեալ կոչուելը անօգուտ է։

46. Եթէ անգիտութեամբ մէկը ամուսնացած մարդու կը գնայ, որի կինը հեռանալուց յետոյ էլի կվերադառնայ այդ մարդու մօտ, լաւ կլինէր որ այդ օտար կինը առանց մարդու գնալու մնար, թէև կարող է ամուսնանալ ուրիշի հետ։

47. Էնկրատիտները, Սակօֆօրները և ապոտակտիտները նոյն դատապարտութեան են ենթարկւում, ինչպէս և Նովատեանք. մենք բոլորին էլ կրկին մկրտում ենք. թէև մեր մէջ, ինչպէս և հռոմայեցոց մէջ կրկնակնունքի սովորութիւն չէ ընդունուած։ Նրանց աղանդը Մարկիոնականների նման արհամարհում է ամուսնութիւնը, գինին, այդ պատճառով առանց մկրտելու նրանց չենք կարող ընդունել եկեղեցի, որովհետև նրանք չեն մկրտուած «յանուն Հօր և Որդւոյ և Հոգոյն Սրբոյ» և Աստուծուն չարութեան ստեղծող են համարում։

Տես Նիկ. 19, Պօլ. 1, 7, Եփ. 1, 2, 3, Լաւ. 7, 8։

48. Մարդուց թողնուած կինը, իմ կարծիքով՝ պիտի անամուսին մնայ։

49. Բռնութեամբ ըլկուած կինը մեղադրանքի չի ենթարկւում. նոյնպէս տիրոջից բռնաբարուած ստրկուհին։

50. Եռամուսնութեան համար օրէնք չկայ, եռամուսնութիւնը օրէնքով չի թոյլատրւում։ Այդպիսի գործողութիւնների վրայ նայում ենք ինչպէս անմաքրութեան վրայ եկեղեցու մէջ, բայց հասարակական դատապարտութեան չենք ենթարկում։

51. Եկեղեցու սարքին պաշտօնեաները, լինին աստիճաններ ստացած, կամ չստացած, բոլորի համար անխտիր կանոնը հրամայում է ծառայութիւնից զրկել, երբ կմեղանչեն։

Տես 32 կանոնը։

52. Ժանապարհին նորածին մանկան ձգողը կդատուի իբրև մարդասպան. եթէ այդ արել է ակամայից, հակառակ կամքի, զիջողութեան արժանի է։

53. Այրիացած սարկաւհին կարող է երկրորդ ամուսնութեան մէջ մտնել երկապսակների ապաշխարանքին ենթարկուելով։

54. Կամաւոր սպանութեան մասին գրել եմ, նոր ոչինչ չեմ աւելացնում։

55. Աւազակները մերժւում են ս. հաղորդութիւնից, եթէ դրանք հոգևորականներ են՝ կարգալոյծ են լինում։

56. Կամաւոր սպանութիւն կատարողը և զղջացողը 20 տարի առանց հաղորդութեան մնայ, 4 տարի լացողների, 4 տարի ունկնդիրների, 7 տարի ներսի ունկնդիրների և 4 տարի հաւատացեալների հետ կանգնի և ապա հաղորդուի։

57. Ակամայ սպանութիւն կատարողը 10 տարի հաղորդութիւն չառնի, 2 տարի լայ, 2 տարի դրսի և 4 տարի ներսի ունկնդիր լինի, 1 տարի էլ հաւատացեալների հետ կանգնի և ապա հաղորդուի։

Ապաշխարողներից 1) լացողները դրսում կանգնած լացով, կոծով պիտի ապաշխարէին իրանց մեղքերը և թողութիւն հայցէին, 2) դրսի ունկնդիրները եկեղեցուց դուրս դռան մօտ կանգնած պիտի լսեն երգերը և ընթերցումը և եկող գնացողին խնդրէին իրանց համար աղօթք անել, 3) ներսի ունկնդիրները կամ «ընդ ձեռամբ» եղողները, եկեղեցու ներսում էին կանգնում, աղօթում և լսում բոլոր ընթերցումները և խնդրում քահանաներին ձեռքերը գլխին դնելով մեղքերին թողութիւն տալ. սրանք մինչև աւետարանը կարող էին մնալ, և դուրս գալ եկեղեցուց, 4) հաւա-

*տացեալների հետ կանգնել, միասին աղօթել, աւետարանը լսել իրաւունք ունէին 4-րդ կարգի ապաշխարողները, և դուրս էին գալիս առանց հաղորդութիւն ստանալու «մի ոք յերախայից...»-ից յետոյ։* 5) *թոյլ էր տրւում արդէն հաղորդուել։*

58. *Ճնութիւն անողը* 15 *տարի հաղորդութիւն չառնի հետևեալ աստիճաններով ապաշխարելով.* 4 *տ. լացող,* 5 *տ. դրսի ունկ.,* 4 *տ. ներսի,* 2 *տ. հաւատացեալների հետ կանգնի։*

Տես Անկ. 20, Կես. 2։

59. *Անառակութիւն անողը* 7 *տարի հաղորդութիւն չառնի* (2 *տ.*—2 *տ.*—2 *տ.*—1)։

60. *Կոյս լինելու խոստում անողը եթէ երդմնազանց լինի, շնացողի ապաշխարանքին ենթարկուի. նոյն պատժին ենթարկուին կուսակրօնութեան խոստում տուողները։*

Տես 18 կանոնը,

61. *Մի բան գողացողը եթէ զղջայ՝* 1 *տարի չհաղորդուի, և եթէ բռնուի և հաստատուի այդ բանը՝* 2 *տարի չհաղորդուի։*

62. *Արուագէտի համար նշանակւում է այնքան ժամանակ ապաշխարանք, որքան շնութեան համար էր որոշուած։*

Տես 58 կանոնը։

63. *Անասնագէտը եթէ խոստովանի մեղքը, նոյնքան ժամանակ ապաշխարի։*

64. *Երդմնազանցը* 10 *տարի ապաշխարի։*

65. *Կախարդութեան, թունաւորելու մէջ մեղադրուողը, սպանողի պատիժը կրի։*

Տես Անկ. 24, Կես. 8, Լաւ. 36։

66. *Գերեզման բացող և կողոպտողը* 10 *տարի ապաշխարի։*

67. *Եղբօր և քրոջ մեղանչումը մարդասպանի յանցանքին հաւասարի և նրա պատիժը կրի։*

68. *Զհաս պսակով ամուսնացողները շնացողի պատիժը կրի։*

69. Գրակարդացը եթէ իւր նշանածի հետ պսակից առաջ կմեղանչի, մի տարի պաշտօնից հեռացնելուց յետոյ կընդունուի, բայց բարձր աստիճաններ չի ստանալ։ Եթէ առանց նշանուելու ծածուկ կմեղանչի, սպասաւորութիւնից թող զրկուի. Նոյնպէս և կիսասարկաւագը։

70. Սարկաւագը եթէ համբուրելով միայն կմեղանչի և կը խոստովանի, քահանայագործութիւն չանի, բայց ընկերների հետ հաղորդուի։ Նոյնպէս և քահանան։ Իսկ եթէ դրանից աւելի մեղք կգործեն, ինչ աստիճանում որ լինին, թող կարգալոյծ լինին։

71. Վերոգրեալ մեղքեր գործողը եթէ մեղսակիցներ կունենայ և սրանք չեն խոստովանիլ, այլ ուրիշների միջոցով այդ բանում արած յանցանքները կհաստատուին, այդպիսի մեղսակիցները կենթարկուեն նոյն պատժին, որին ենթարկւում են իսկական գործողները։

72. Կախարդութիւն և նման բաների անձնատուր եղողը սպանողի պատիժը կրի։

73. Քրիստոսին ուրացողը և ս. հաղորդութիւն չառնողը (մերժողը) մինչև մահ լացող լինի և մեռնելիս միայն հաղորդուի։

74. Վերոյիշեալ մեղքեր գործողները սրտով և ջերմեռանդութեամբ եթէ կզղջան, նրանց ապաշխարանքի միջոցը պիտի կարճացնել։

75. Հօրաքրոջ կամ մօրաքրոջ հետ մեղանչողը եկեղեցի չը մտնի, մինչև որ յետ կդառնայ յանցանք կատարելուց. եթէ կը կզղջայ, 10 տարի ապաշխարի, 3 տարի լացողների, 3 տարի դրսի ունկնդիրների, 3 տարի ներսի ունկնդիրների, տասներորդ տարին հաւատացեալների հետ կանգնի և ապա հաղորդուելու իրաւունք ունենայ։

76. Նոյն պատիժը կրի իւր հարսի (տղայի կնոջ) հետ մեղանչողը։

77. Կնոջը թողնողը և ուրիշի հետ ապրողը՝ շնացողի պատժին ենթարկուի

78. Նոյն պատիժը կրի երկու քրոջ հետ ապրողը, թէկուզ տարբեր ժամանակներում։

79. Խորթ մօր հետ մեղանչողը՝ քրոջ հետ մեղանչողի պատիժը ստանայ։

80. Հայրերը լռել են, բազմամուսնութեան մասին ոչինչ չեն ասել իբրև անասնական և մարդկային ցեղին չվերաբերող գործ. այս յանցանքը անառակութիւնից ծանր եմ համարում. դրա համար այդպիսի մարդուն պիտի ապաշխարել տալ այսպէս, մի տարի լացողների, 3 տարի ներսի ունկնդիրների հետ և ապա ընդունել եկեղեցի հաւատացեալների հետ։

81. Բարբարոսների ժամանակ հաւատացեալները եթէ ստիպմամբ են հաւատուրաց եղել, 8 տարի ապաշխարեն, իսկ որոնք առանց որևէ մի ճնշման են դաւաճանել Աստծուն, 11 տարի ապաշխարելուց յետոյ ընդունուեն հաղորդուողների շարքում։

82. Երդմնազանց եթէ եղել են ստիպմամբ, 6 տարի ապաշխարեն, իսկ եթէ առանց ճնշման են երդման դրժել 11 տարի ապաշխարեն։

83. Որոնք կռապաշտական կարգերին են հետևում և իրենց տներում զանազան կախարդական նիւթեր պատրաստելով՝ մարդկանց հրապուրում են և մոլորեցնում, 6 տարուայ ապաշխարանքի թող ենթարկուին։

84. Ով չի լսում մեզ և մեր նշանակած ապաշխարանքներին չի ենթարկւում, նրանց հետ գործ չունենք, նրանց տէրը իրանք են։

85. Մենք այդպիսիների օրինակին չպիտի հետևենք հապա մեր հոգու փրկութեան վրայ պիտի մտածենք։

86. Էնկրատիտների հարցին՝ թէ ի՞նչու մենք ամեն տեսակ միս չենք ուտում, շատ պարզ է, որովհետև գործ ենք ածում այն միսը, որ օգտակար է, մերժում ենք այն կենդանու միսը, որը օգտաւէտ չէ։

87. Կնոջ քրոջ հետ ամուսնանալ չի կարելի (երկար բացատրում է)։

88. Գրիգոր քահանային գրում է Բարսեղ մեծը, կամ արձակել իւր կենակցուհուն կամ կարգազուրկ լինել։ (Երկար խօսում է հոգևորականների կենակցուհի պահելու անկանոնութեան և ապօրինութեան մասին)։

89. Երկար խրատում է որ հոգևորական դարձողը անպատճառ փորձառական աստիճանները անցնի և ապա ձեռնադրուի։

90. Երկար խօսումէ՝ որ ձեռնադրութիւնը լինի անպատճառ առանց կաշառքի

91 ⎰ Երկու յօդուածներում երկար խօսումէ եկեղեցու աւանդութեան մասին, զանազան օրինակներով
92 ⎱ ապացուցանելով, որ եկեղեցու գործնական կեանքի մէջ մեծ նշանակութիւն ունի աւանդական կարգը։

## ԱԹԱՆԱՍԻ ԿԱՆՈՆՆԵՐԸ (326—371 Թ.)

Այժմ համառօտ տեղեկութիւն կտանք այն օտար ս. հարց մասին, որոնց ընդունում են միւս եկեղեցիները և որոնց կանոնները մտած են մեր ձեռագիր կանոնագրքերի մէջ։ Այս կանոնները մեր եկեղեցական իրաւունքի ուղղակի աղբիւրներ չեն, այլ հնապատմական պարզաբանող երկրորդական աղբիւրներ, որոնք զետեղում եմ ի տեղեկութիւն։

Մեր կանոնագրքերում Աթանասին յատկացրած են 88 հարց ու պատասխանով կանոններ. օտար եկեղեցիները ընդունում են նրա կանոնական թղթերից քաղուած 3 կանոն, որը և համառօտակի կյիշենք։

Այս թղթերը նա գրել է Ամմուն վանականին։

1) Փրկութեան երկու ճանապարհ կայ, գրումէ Ամունին, մէկը սովորականը՝ ամուսնութիւնը, երկրորդը հրեշտականը՝ կուսութիւնը, երկուսն էլ մաքուր են և լաւ, բայց երկրորդը գերազանց է։

2) Ռուփինիանին գրում է զղջացող Արիոսականներին ընդունելու համար։

3) Թղթերում յիշատակում է հին և նոր գրքերը, որոնք եկեղեցին վաւերական է ընդունում. կրկնում է այն, ինչ որ Բ. առաքելականի 85-րդ կանոնումն է, իբրև խրատական գիրք մատնացոյց է անում «առաքելոց ուսմունքը և Հովիւը, Սիրաք, Եսթեր, Յուդիթ, որոնք վաւերական չեն համարւում», չկայ նոյնպէս «Յովհաննու յայտնութիւնը» վաւերականների շարքում։

Տես. անվ. 60. Բ. առ. 85։

## ԴԻՈՆԵՍԻՈՍ ԱՂԷՔՍԱՆԴՐԱՑՈՒ ԿԱՆՈՆՆԵՐԸ (264 Թ.)

Սա յայտնի Որոգինէսի աշակերտն է, մասնակցել է Նովատի, Սաբելլեանց, Պօղոս Սամոսատացու հետ եղած վիճաբանութիւններին։ 4 խրատական կանոն ունի։

1) Խօսում է զատիկ օրուայ թաթախումը որ ժամանակ կատարելու մասին։ Նրա կարծեքով պիտի թաթախուել ո՛չ շատ ուշ երեկոյեան, ո՛չ շատ ուշ առաւօտեան. շուտ պաս լուծողներին չի քաջալերում՝ եբրև փոքրոգի և իրանց չզսպող։ Հներում պասը լուծում էին հռոմում կէս գիշերին, Ասիայում երեկոյեան, Արևելքում գիշերուայ մօտ, ոմանք էլ արևածագին, Հայաստանում երեկոյեան։ Զանազանութիւնը առաջանում է առաքեալներից ստացած աւանդութիւնից և աւետարանիչների տարբեր ժամանակ որոշելուց։ Մատթէոսը ասում է «յերեկոյի միաշաբաթին» (իզ. 1). Մարկոսը «իբրև երեկոյ եղև, քանզի ուրբաթ էր՝ որ ի շաբաթն մտանէր» (ժգ. 2) Ղուկասը «օրն էր ուրբաթ և շաբաթ լուսանայր» (իդ. 1). Յովհաննէսը «գայ առաւօտուն ընդ արշալոյսն» (ի. 1)։ 692-ի ժողովը որոշեց կէս գիշերին կատարել։

2,3,4, Կանոնները խօսում են աղօթք անելու և հոգեկան մաքրութեան վրայ։

## ՊԵՏՐՈՍ ԱՂԵՔՍԱՆԴՐԱՑՈՒ ԿԱՆՈՆՆԵՐԸ (270 թ.)

Սա 12 տարի կառավարել է եկեղեցին հալածանքների ժամանակ և նահատակուել է Դիոկղետիանոսից 304-ին։

Սորա 14 կանոնները վերաբերում են հալածանքների պատճառով իրանց հաւատը ուրացող անձանց զանազան ապաշխարանքներ նշանակելուն։ Իսկ 15-րդ կանոնը պատուիրում է չորեքշաբաթ և ուրբաթ օրը պաս պահել, կիւրակի օրը իբրև ուրախութեան օր, չ'չոքել։

## ԳՐԻԳՈՐ ՀՐԱՇԱԳՈՐԾ ՆԵՈԿԵՍԱՐԱՑՈՒ ԿԱՆՈՆՆԵՐԸ (—|—272)

Սա էլ Որոգինէսի աշակերտն էր. գրել է 12 կանոն Գոթացոց արշաւանքի ժամանակ պատահած զանազան յանցանքների վերաբերմամբ։

11 կանոնները յափշտակութիւնների պատճառով պատահած այդպիսի դէպքերում են վերաբերում։

12-րդ կանոնը որոշում է ապաշխարութեան տեսակները։

1) Լացողները, որոնք եկեղեցուց դուրս կանգնում են և լացով խնդրում եկեղեցի մտնողներին աղօթել իրանց համար։

2) Դրսի ունկնդիրներ, որոնք գաւթում կանգնած պիտի աղօթեն և թերահաւատների հետ դուրս գան։

3) Ներսի ունկնդիրները կանգնում են եկեղեցու մէջ ամբիոնի ետևը և դուրս են գալիս թերահաւատների հետ։

4) Հաւատացեալների հետ միասին կանգնողները աղօթք են անում բոլորի հետ և թերահաւատների հետ չեն դուրս գալիս։ Սրանից յետոյ արդէն իրաւունք եմ ստանում հաղորդուել։

## ԳՐԻԳՈՐ ՆԻՒՍԱՑՈՒ ԿԱՆՈՆՆԵՐԸ (372—394).

Գրիգոր Նիւսացու թղթերը ուղղուած են Լիտոյի եպիսկոպոսին. նշանաւոր են նրանով, որ հին փիլիսոփայական ուսումը յարմարացրել են հոգեկան ոյժերի բաժանման հետ զանազան յանցանքների բացատրութեան համար, որոնց համար և նշանակուած են 8 գլխով կանոններ «գիրք կանոնաց»-ի մէջ։

Մեղքերը բաժանում է երեք մասի՝ խելքի, ցանկութեան և գրգռման ուժերի հետ կապ ունեցողի, այսինքն մեղքեր, որ առաջանում են մտաւոր ուժերից, մեղքեր, որ առաջանում են ցանկութիւններից և գրգռումներից։

## ԳՐԻԳՈՐ ԱՍՏՈՒԱԾԱԲԱՆԻ ԵՒ ԱՄՓԻԼԻՔԻ ԹՈՒՂԹԸ (370—390)

Գրիգոր Աստուածաբանը (370—390) և Իկոնիայի Ամփիլոքոսի (394) թուղթը բացատրում են կանոնական գրքերի բաժանումը, որը երեք տեսակ է, 1) պատմական Մովսէսի Հնգամատեանը և պատմողականները, 2) Տաղաչափական —Յոբ, Սաղմոս, Սողոմոնի, և 3) Մարգարէական գրքեր։

Ամփիլոքը ասում է, ոմոնք սրանց վրայ աւելացնում են և Եսթեր. 7 առաքելական թղթերից, ոմանք ընդունում են 3-ը, Յակոբի 1, Պետրոսի 1, Յովհաննու 1, ոմանք էլ Յովհաննու 3, Պետրոսի 2, Յուդայի 1։ Յայտնութիւնը ոմանք սուրբ գրքին են կցում, շատերն էլ անվաւեր են համարում։

Մեր կանոնագրքերում Գր. Աստուածաբանին 30 կանոն է յատկացրած «Յաղագս ուղղափառութեան հաւատոյ և ապաշխարութեան յանցանաց»։

## ԹԷՈՓԻԼՈՍ ԱՂԷՔՍԱՆԴՐԱՑՈՒ ԿԱՆՈՆՆԵՐԸ (385—412 Թ.)

Սրա 12 կանոնների մէջ ուշադրութեան արժանի են քանիսը։

7. Ձեռնադրուողին ընտրում են հոգևորականները և ձեռնադրւում է եպիսկոպոսից ժողովրդի ներկայութեամբ։

8. Պատարագի համար բերուած ընծաներից վերցնւում է հաղորդութեան համար հարկաւոր եղածը, իսկ մնացածները բաժանում են հոգևորականները իրանց մէջ. մնացորդը ուտում են միմիայն հոգևորականները և հաւատացեալները (և ոչ թերահաւատները)։

10. Քահանաների համաձայնութեամբ պիտի նշանակուի տնտես, որ եկեղեցական ինչքը պիտի գործադրի հարկաւոր բաների վրայ։

11. Այրինները, աղքատները ստանան եկեղեցու ունեցածից և ոչ ոք չիւրացնի եկեղեցու ինչքը։

## ԿԻՒՐԵՂ ԱՂԷՔՍԱՆԴՐԱՑՈՒ ԹՂԹԵՐԸ (412—444)

Սորա մէկ թուղթը ուղղուած է Անտիոքի պատրիարքին մի եպիսկոպոսի բողոքի առթիւ. երկրորդը Լիբանանի և Պենտապոլի եպիսկոպոսներին անկանոն ձեռնադրութիւնների համար։ Թղթերը բաժանուած են 5 կանոնի։

Բացի այս կանոններից, մեր կանոնագրքերը լի են զանազան հայրերի կցկտուր, ծոխացրած, հաւաքածու կանոններից որոնց մի առ մի յիշատակելը ոչ մի արդիւնքի չի հասցնիլ մեզ։

*Այստեղ վերջանում են մեր եկեղեցական իրաւունքի ընդհանուր աղբիւրները։*



# ԵՐԵՔ ՏԻԵԶԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐԻ

## ԳՐԱԲԱՌ ԲՆԱԳԻՐԸ

### ԸՍՏ ՄԵՐ ՁԵՌԱԳՐԵՐԻ։

### Ա. ՆԻԿԻՈՅ ԺՈՂՈՎԻ ԿԱՆՈՆՆԵՐԸ.

**Ա.** *Վասն այնոցիկ որք կորեցին կամաւք զերկաւորիս անդամոց իւրեանց զի ի ձեռն այնր կեղծաւորութեան, սուրբ կոչեսցին ի մարդկանէ, զի եթէ ի հիւանդութենէ, կամ ի բժշկաց կամ ի բարբարոսաց դիպումն ինչ եղև ակամայ, և զայնպիսին ի կարգ և աստիճանի, արժանէ կացուցանել, ապա եթէ առողջութեան և իւրով կամօք անձնասպան եղև զգործն զայնպիսին թէև ի կարգին է, հանել արժան է ի բաց արտաքոյ եկեղեցոյ կացցէ, միայն զձայն պաշտման և աղօթից լուիցէ Է. ամ այնպէս ապաշխարեսցէ։ Բայց վարդապետըն զորդորումն մխիթարութեան մի արգելցէ և զսէրն. յետ Է. ամին դատ ընդ ապաշխարողս արտաքոյ դրանն կացցէ ձեռամբ. և տեսցին զջերմ ապաշխարութիւն. եկեղեցին թողցին, խորհրդոյն հաղորդեսցի և, Գ. ամ ընդ աւրինօք ապաշխարեսցէ, բայց ի կարգ պաշտաւնէիցն մի մերձեսցի՝ ապա թէ մինչ յունկնդրութեան էր հիւանդութեան էր. հիւանդութիւն մահու հասցէ՝ տացին զօրէնսն, և եթէ դարձցի նոյն ապաշխարութիւն ի վերայ եղիցի*

**Բ.** *Վասն այնոցիկ որք արտաքնոցն այլ ազանդացն որ կամիցին հաւատալ, և քո առեալ վերստին առաջանաւն և*

վարտապետեսցես զուսումն գործոց սուրբ գրոց, կամ եղև ժողովոյն մեծի առաջնորդութիւն կացուցանել բայց ոչ առնէ անց փորձելոյ և քննելոյ, և ամենևին ի վերայ հասանելոյ մի հաւատասցեն նմա տալ իշխանութիւն եկեղեցոյ և օրինաց մերոց. մինչև արմատ առցէ և հաւաստեաւ սրտիւ իւրով իմասցի զզօրութիւն Աստուծոյ մերո մի մատաղատունք, զի մի հպարտացեալ ի դատաստան սատանայի անկցի:

**Գ.** Վասն այնոցիկ որ մատաղորեայք իցեն, և մրտօք խակ յուսումն, տխմարք, կարգաց, տգէտք, օրինաց անտեղեակք, խօսիւք՝ ահուր, գնացիւք՝ սայթակք, և զինեմոլք վաղվաղակի ոչ մերձեցուցանել զնոսա ի սարկաւագութիւն, կամ եղև սուրբ ժողովոյն այլ թէ օտար աշխարհի ոք իցէ այլ վիճակէ, այլոյ զաւառէ ոչ սնուցեալ և ոչ ուսուցեալ, զայնպիսին յօծումն մի մերձեցուսցէ՝ ըստ առաքելոյ, ձեռն վաղվաղակի ուրուք վրայ մի դնիցես, մի կցորդ լինիցիս մեղաց օտարաց:

**Դ.** Վասն այնոցիկ որ ի կարգէ և աղօթից մերժեալ և թիւրեալ իցեն, կամ ժողովրդական ոք, կամ ի կարգէ քահանայից և ի պաշտօնէից, այսպիսեաց թէ երթեալ ուրէք զինքն ի կարգ արկցէ մի ընկալցին, և զոր այլոյ վարդապետի բանադրեալ իցէ՝ կամ մերժեալ, այլ վարդապետ մի մերձեցուսցէ և ի կարգ արկցէ, բայց թէ հաւաստեաւ քննութիւն արասցեն, զի եթէ ի խստութեան, կամ ի նեղասրտութեան, կամ ի չար նախանձուէ մերժեալ իյէ՝ առ այնպիսին մարդասիրութիւն ցուցանել բանիւ վարդապետութեան բժշկել և անդէն հնազանդել ընդ բուն վարդապետաւն, ապա թէ վասն մեղաց և չար գործոց որոշեալ իցէ եկեղեցոյ՝ դեղօք ապաշխարութեան բժշկեսցին, քանզի կամ եղև մեծ ժողովոյն. թէ ի տարւոջն, Գ. ժողով արասցեն մի աշնան ժամուն, և մի զոր մատուռն կոչին, և մի յառաջ քան զքառասնորդս վասն ամենայն իրիք եկեղեցոյ քննութիւն արասցեն, քանզի հովիւ բանաւոր հաւատից արժան է ընդ թուով զաւազանի անցուցանել զոչխարս եկեղեցոյն՝ զի եղիցին մի հօտ և մի հովիւ:

**Ե.** Զեպիսկոպոս արժան է, որք կամին աշխարհին եպիսկոպոս նստուցանել. ապա թէ վասն փութոյ ինչ և վասն հեռաւորութեան ընկերացն. Գ. եպիսկոպոսք. կամօք այնոցիկ որ հեռին են, թղթովք վկայութիւն բստուգեսցեն, բայց զպատիւն և զշնորհն գլխաւորին արժան է տալ, այսինքն կաթողիկոսին կամելով սուրբ ժողովոյն։

**Զ.** Նախնեաց սովորութիւն կացցէ յԵգւպտոսի զի Աղէքսանդրի եպիսկոպոսն ամենեցուն իշխեսցէ, վասն զի և հռովմայեցւոց եպիսկոպոսին, այս սովորութիւն է, նոյնպէս և անտիոքացոց՝ և այլ իշխանութիւնս պատիւ մեծութեան պահեսցէ յեկեղեցւոջ և ամենապէս այս յայտ լիցի, զի թէ ոք ոչ կամօք կաթուղիկոսին լիցի եպիսկոպոս, զայնպիսին մեծ ժողովն որոշեաց զի մի ևս իցէ եպիսկոպոս, ապա եթէ ի միաբանութենէ ամենեցուն ընտրելով ճշմարտութեամբ ըստ կարգին եկեղեցւոյ արժանի առնիցեն երկու ուրեք կամ երեք ըստ անձին անզգամութեան կամ հակառակութեան ընդդէմ լիցին՝ բազմաց ընտրութիւն հաստատեսցի։

**Է.** Վասն զի զովորութիւն կալաւ և կարգ նախնեաց Երուսաղէմի եպիսկոպոսն պատուեսցի, ընկալցի ըստ կարգին զպատիւն, զի մայրս քաղաքացն ըստ արժանի պահեսցի պատիւն իւր։

**Ը.** Ույք անուանին զինքեանս երբեմն սուրբ մերձենալ առաքելական և կաթուղիկէ եկեղեցի, կամ եղև սուրբ և մեծ ժողովոյն զի ձեռնադրութիւնս ընկալցին և ապա կացցեն ի պաշտաման, նախ քան զամենայն գրով խոստովանութիւն տացեն, զի յանձնին կալցին և զհետ երթիցեն ըստ կարգի կաթուղիկէ եկեղեցւոյ աւրինացն, այսինքն է օրինացն հաւասարիլ։

**Թ.***) Վասն այնոցիկ որ մինչ դեռ ի հալածանս էին անկան ի ճշմարտութենէն վասն նոցին և ամք կարգեալ են. և ժամանակք ընտրեալ են, զի յանձն առցեն զամենայն

---

*) Միւս ձեռագրերում—Թ-ը կազմում է Ը-ի շարունակութիւնը և ոչ թէ առանձին կանոն է, այս պատճառով այս ձեռագրերում Նիկ. կանոնների թիւն է—ԻԱ.—և ոչ—Ի.։

զինչ և Հաճոյ եղև կաթուղիկէ եկեղեցոյ ուր և իցեն ամենեքին թէ ի գեօղս. թէ ի քաղաքս, և նոքին միայն գտանիցեն ձեռնադրեսցին. ուր գտանեն և ի պաշտաման կացցեն ըստ նմին սովորութեան, և ամենայն ոք որ կաթուղիկէ եկեղեցոյ առ եպիսկոպոսք, կամ երէցք մերձենայցեն յայտ է՝ զի եպիսկոպոս եկեղեցոյն, կալցի զպատիւ եպիսկոպոսին այլ որ անուանեալ: Կաթուղիկոսացն եպիսկոպոս. զերիցու պատիւ ընկալցի, բայց թէ կամիցի եպիսկոպոսն զպատիւ անուանն միայն տալ նմա. ապա թէ այս նմա Հաճոյ ոչ իցէ զմտաւ ածցէ, կամ տեղի, կամ գաւառ վերակացութեան, կամ երիցութեան, վասն զի ի պաշտամանն կացցէ, զի մի ի քաղաքին Բ. եպիսկոպոսք երևեսցին:

**Ժ.** Վասն այնոցիկ որ առանց քննելոյ և մերձելոյ մերձեցան յերիցութիւն, և ապա իրքն յայտնեցան, և մարդն պիղծ գտաւ, և դարձեալ ի նոյն մեղս զանկեալ շաղախէր և ընդդէմ կանոնաց գործէր, զայնպիսին ոչ ընդունի եկեղեցի, ոչ զնա և ոչ զառնելիսն, կամ եղև մեծ և սուրբ ժողովոյն, զի այնպիսին լռեսցէ:

**ԺԱ.** Վասն այնոցիկ որ օծան յանարժանից ըստ նագիտութեան եպիսկոպոսին, և կամ թէ գիտէին որք մերձեցուցինն. և ի ձեռն արծաթոյ կաշառացաւ ճշմարտութիւն. եթէ ի վերջոյ յայտ եկեսցեն իրքն և անարժանութիւն առնն, և կաշառակրծութիւն կարգողացն. կամ եղև մեծ և սուրբ ժողովոյն, օծումն բարձցի ի նմանէն, և կարգաւորքն ընդ պատուՀասիւք եղիցին որպէս եպիսկոպոսն կամեսցի:

**ԺԲ.** Ոյք յանցեան և անցին ընդ կարգօք առանց բռնութեան Հանելոյ զստացուածս նոցին, կամ առանց վատթարի ուրուք, կամ այսպիսի ինչ իւիք, որպէս եղև յամբարՀաւաճելն Լիկիանէ. կամ եղև մեծ ժողովոյն. զի եթէ և ոչ արժանի իցեն մարդասիրութեան սակայն քաղցրանալ այնպիսիսն, որ ամենայն մտերմութեամբ կամ փութով ապաշխարէ, Գ. ամ ընդ ունկնդիր Հաւասարեսցին աղօթից ժողովրդեանն:

**ԺԳ.** Վասն այնոցիկ որ կոչեցանն, և յօժարութեամբ կա-

լան զաստիճան. և ապա ի մեղս զառածան և կերան զփսխած իւրեանց, ի շնութիւն. ի պոռնկութիւն, ի գողութիւն, յագահութիւն, յոխակալութիւն, մանաւանդ զանհնարին աղէտսըն որ գործենն և անդէն ի խորհուրդն և ի սուրբ սեղանն մերձենան այսինքն ի պատարագն մատուցանել, և շարժեն զբարկութիւն Աստուծոյ ի վերայ երկրի. կամ եղև մեծ ամենայն ժողովոյն վասն մարդասիրութեան այսինքն. Ծ. ամ ընդ պատժօք լիցին, և Գ. ամ ընդ ունկնդիրսն կացցեն, և ապա քննեալ և փորձեալ զվարսն, և զջերմեռանդն սրտին յօժարութեամբ՝ և ողորմութեամբ աղքատասիրութեամբ զապաշխարութիւն, կամ եղև սուրբ և մեծ ժողովոյն, առ այնպիսիսն մարդասիրութիւն ցուցանել, եպիսկոպոսի որ իցէ վիճակին անդրէն ի խորհուրդն հաւասարել և ի կարգ պաշտաման. ապա եթէ կեղծաւորութեամբ իցէ երթ և եկն նորա յեկեղեցի, և դիտել զնմանիսն իւր, և գայթ ի գայթ զղջումն և ապաշխարութիւն, մարդահաճութեամբ այնպիսումն կանոնք մինչև ցվախճան սահմանեցին։

**ԺԳ.** Վասն այնոցիկ որք հրաժարեցին յաշխարհէս և ի կենդանութեան ուրինաց չեն արժանի ի յետի թոշակէն մի զրկեսցին, այսինքն յօրինաց անտի, կամ եթէ յետ անյոյսն լինելոյ ծանր հիւանդութեան հասանելոյ, և զմարմինըն տէրունական ճաշակելոյ, դարձեալ ի կենդանութիւն հաստատեսցի, կացցէ տարի մի ընդ այնոսիկ որ լոկ աղօթիցըն հաւասար են՝ առ դրանն. և մի ամ մտեալ յեկեղեցի ելցէ ընդ ապաշխարողս. և վարդապետն մարդասիրութեամբ հայելով ի ջերմեռանդն ապաշխարութիւն, և ըստ յընչից մարդոյն դուրս աղքատաց, հրամայեսցէ, և Գ. ամս ապաշխարել կամ եղև սուրբ ժողովոյն հաղորդիլ ի մարմնոյ տեառն։

**ԺԵ.** Վասն երախայից կամ եղև մեծ ամենայն ժողովոյս զ-Գ. ամս ուսցին զկարգն և զօրէնսն և Ա. ևս ամ ընդ ապաշխարողս զգուշասցին աղաւթից, մարդասիրութիւն ցուցցեն առ այսպիսիսն և խոնարհութիւն զի զնմանութիւն բերելով օգուտ քիչ գործեսցի և ապա լուասցի և վերստին

ծնցի աւագանաւն և հաւասարեսցի օրինացն զի զոր արասցէ և ուսուսցէ, նա մեծ կոչեսցի յարքայութեան Աստուծոյ։

**ԺԶ.** Վասն բազում յուզիցն և մեծամեծ ամբոխիցն որ լինին ի կողմանս կողմանս, որք եպիսկոպոսք լինին, և զայլ վիճակ յափշտակել ջանան և որք երիցունք լինին և այլս քաղաքի և ժողովրդեան ցանկան յափշտակել կամ. եղև մեծ ժողովոյն զի զայնպիսիսն դադարեցուսցին յիւրաքանչիւր վիճակի, ապա եթէ ի բռնութենէ կամ կաշառօք զգործն զայն յանդգնեալ գործեաց և ընդ դէմ եկեսցէ առաքելական կանոնիս, կամ եղև սուրբ և մեծ ժողովոյն. զի զայնպիսիսն ընկեսցին ի բաց յաթոռոյ և ի կարգէ քահանայութեան և բնաւ իսկ ի բաց մերժեցան ի պաշտամանէն. և այնուհետև եղիցի քեզ իբրև մի յանզգամաց, զի յորում տուեալն իցէ տացի և աւելցի, և որ ոչն գիտիցէ ունել, և զոր ունիցին բարձցի ի նմանէ։

**ԺԷ.** Վասն այնոցիկ որ ի կարգին են և ի կանոնին. յուխտի եկեղեցւոյ յագահութեան և զօշաքաղութիւն անկանիցին զարծաթ իւր ի վարձու տացէ և տոկոսեօք պահանջիցէ՝ և մոռանայցէ զբարբառ աստուածեղէն գրոց որ ասէ. թէ զարծաթ իւր ի վարձու նա ոչ տացէ. և մանաւանդ դայթի դայթի պաշտամանն թուլասիրտ, յաղաւթս մեղկ և ծոյլ ի հաւատս այնպիսումն ասէ գիր. վայ որոց թողեալ իցէ զուսումն մանկութեան և մոռացեալ զուխտն աստուածեղէն, կամ եղև մեծ ժողովոյն զայնպիսիսն մերժել ի կարգէն, կամ բարեսէր կամօք յուղղութիւն ածել։

**ԺԸ.** Լուր եհաս ի սուրբ և ի մեծ ժողովն Նիկիա եթէ ի տեղիս տեղիս սարկաւագունք օրէնս տան և մկրտութիւնս առնեն, և ընդդէմ թուեցաւ գործն առաքելական կանոնաց և մեծ ամենայն ժողովոյս, բայց աղէ, որք ոչն ունին իշխանութիւն մատուցանել պատարագ նոցա զիարդ համարձակ լինի զմարմինն Քրիստոսի բաշխել, այլ որք մատուցանեն. պատարագ նոքին և բաշխեսցին, և սարաւագին իշխանութիւն լիցի հանել ի սեղանն և իջուցանել և զգուշութեամբ սպասաւորել եպիսկոպոսին. այլ և ընդ երիցունս խառն օրէնս առնուլ, կանոնք ոչ հրամայեն։

**ԺԹ.** Վասն այնոցիկ որ արուագէտքն են, կցորդ են այնոսիկ որ պղծեն ընդ անասունս և ապաշխարութիւն նոցա ի վերայ եղիցի, այլ եթէ քահանայ ոք ըմբռնեսցի ուխտէն ելցէ ի քահանայութենէն և եթէ յուխտի մանկանց ի կարգէն ելցէ, և ապաշխարութիւն անասնագիտին ի վերայ եղիցի։

**Ի.** Որք հերձուածեցան ի հերձուածս Պօղոնայի հերձուածողի, և յետ այնորիկ ապաւինեցաւ ի կաթուղիկէ եկեղեցի, զի այն ոչ լիութեամբ էր. ապա թէ ոք ի նոցանէ յանցեալ ժամանակս ընդ ուխտիւ լինին, զի թէ ամբիծք, կամ անարատք գտանիցին, ձեռնադրեսցին յեպիսկոպոսէն յեկեղեցոյ սրբոյ՝ ապա եթէ ի հարցանելն և ի քննելն անարատք չը գտանիցեն արժան է լռեցուցանել զայնպիսիսն որպէս և վասըն սարկաւագացն և ամենայն ոք որ և իցեն կանոնաւք նոյն կարգ կացցէ։

Ցիշեսցուք և վասն սարկաւագաց կանանց, որք կերպարանաւք ձեռնադրութիւն ունին, զի ամենայն իրօք և զմի յաշխարհականաց կացցեն։

**ԻԱ.** Զի են ոմանք որ ծունր դնեն յաւուր կիւրակէի կամ յաւուրսն մինչև ցպենտակոստ, կամ եղև զի ամենապէս յամենայն իշխանութեան միաբան արժան է պահել զկարգ զոր ինչ եդ սուրբ ժողովն, զի յոտնակալով զաղաւթսն մատուցանեն Տեառն յամենայն երկիր։

---

## Բ. ՏԻԵԶԵՐԱԿԱՆ ԿՈՍՏԱՆԴԻՆՈՒՊՕԼՍԻ ԺՈՂՈՎԻ ԿԱՆՈՆՆԵՐԸ·

### ԵՒ ՍԱՀՄԱՆԵՑԻՆ ԲԱՆՍ ԳԼՈՒԽ Գ.

**Ա.** Ոչ խոտել զհաւատս սուրբ հարցն երեք հարիւր տասն և ութիցն, որք ի Նիկիայ Բութանիայ ժողովեցան. այլ և մնալ նմա հաստատուն, և նզովել զամենայն հերձուածս, և յայտնապէս զԵւնոմիանոսացն այսինքն. աննմանիցն, և զԱրիանոսացն Դոքսիանոսացն և զԿենարաանոսացն և Մարկեղիանոսացն, և զՓոտիանոսացն և զԱպողինարոսացն:

**Բ.** Որք արտաքոյ քան զիւրոց կարգաւորութիւն են եպիսկոպոսք քան զիւրոց սահմանս որ եկեղեցիքն են, ոչ պարտ է ի վերայ երթալ և շփոթել զեկեղեցիսն, այլ ըստ կանոնիցն. այսինքն է աղէքսանդրացոց եպիսկոպոսին որ յեգիպտոս եկեղեցիքն են տնաւրինել իսկ որ յարևելս եպիսկոպոսքն են զարևելսն կարգաւորել. պահելով որ ինչ ի կանոնք կայ ժողովոյն աւագութեան զանտիոքայ եկեղեցին միայն. և որք ընդ Ասիայն են կարգաւորութեամբ եպիսկոպոսունք, որ ինչ յԱսիայ միայն կարգաւորութիւն է տնաւրինել, և որք ի Պոնտոս՝ զպոնտացւոյն միայն, և որք ի Թրակա՝ զԹրակացւոցն միայն: Իսկ անկոչ եպիսկոպոսք որք արտաքոյ կարգաւորութեան են ոչ ի վերայ եդթալ առ ի ձեռնադրել. և կամ այլ ինչ իմիք եկեղեցական տնտեսութեան: Բայց ի պահելոյ կանոնին որ ինչ գրեալն է վասն կարգաւորութեանց. յայտ է թէ իւրաքանչիւր նահանգին ժողովն կարգաւորեսցէ որպէս հրամայեալն է ի Նիկիայ, իսկ որ ի բարբարոսաց ազգսն են եկեղեցիքն Աստուծոյ. տնաւրինել պիտոյ է ըստ սովորութեանս որ կարգեալ է ի հարանցն կոստանդինուպօլսեցւոց եպիսկոպոսին ունել զպա·

տիւ աւագութեան յետ Հռովմայ եպիսկոպոսին, վասն զի և սա Նոր Հռովմ։

**Գ.** Վասն Մաքսիմոսի շինականին և վասն նորա անկարգութեան որ ի Կոստանդնուպօլսի եղև, զի Մաքսիմոս ոչ է եպիսկոպոս եղիցի և ոչ որք ի նմանէ ձեռնադրեցան յոր և իցէ յաստիճան վիճակի. ամենայն որ ինչ ի նմա և որ նովաւ եղեն անհաստատուն եղեալ։

---

## Գ. ՏԻԵԶԵՐԱԿԱՆ—ԵՓԵՍՈՍԻ ԺՈՂՈՎԻ ԿԱՆՈՆՆԵՐԸ.

### ՍԱՀՄԱՆԵԼՈՎ ԿԱՆՈՆ ԳԼՈՒԽ Զ.

**Ա.** Քանզի պիտոյ էր որ ոչ եկին ի ժողովն և մնացին ի գաւառին, ոչ անգիտանալ զկարգաւորեալսն, ծանուցանեմք ձերում սրբութեան, զի թէպէտ և մայրաքաղաքին որ է գաւառիդ ի բաց կացեալ ի տիեզերական և ի սուրբ ժողովոյն և կամ որ յետ այսորիկ ոչ միաւորեսցի, զի կամ կեղեստիանոսի խորհեցաւ Հռովմայ եպիսկոպոսապետին, կամ խորհեսցի, սա ընդ դէմ եպիսկոպոսաց գաւառին գործել ինչ ոչ իւիք կարասցէ ամենայն եկեղեցական հաղորդութիւն ուստի առնուլ, քանզի անդէն իսկ արտաքսեալ է ի ժողովոյս և ոչ ունի զազդողութիւն. այլ և նոցա եպիսկոպոսաց գաւառին և որ լուրջ մայրաքաղաքացիքն են. որք ուղղափառ հաւատոյս խորհին, ընդ նոցա ձեռամբ լիցի ամենևին, և յաստիճաննէն և յեպիսկոպոսութենէն արտաքսեսցի։

**Բ.** Եթէ ոմանց ի գաւառաց եպիսկոպոսունք ոչ գտանի սուրբ ժողովն, և յաւելան ի բացակայսն կամ յաւելուլ կամին, կամ բուռն արկեալք ի քակտումն Նեստորի. դարձեալ անդրէն ընթացան ի բացակայ ժողովն սոցա ամենևին որպէս թուեալ սուրբ ժողովոյն աւտար լինել ի քահանայութեան և յաստիճանէն ի բաց անկանիլ։

**Գ.** Որք յամենայն գաւառի վիճակեալք ի Նեստորէ և որք ընդ Նեստորիս են, արգելան ուղիղ խորհել, և սոցա զիւրեանց աստիճանս առնուլ իրաւացուցաք և զհասարակաց տիեզերական և ուղղափառ ժողով որք զնոյն խորհին, և որոց խորհեալ իցէ, և կամ այժմ և կամ յետ այնորիկ վիճակեալս յորում իցէ ժամանակի, որոց թերահաւատեալ են կամ ի բաց կացեալ են, կամ զանցեալ են եպիսկոպոսունք զսուրբ կանոնաւք և ուղղափառ հաւատովք, համարեցաք մի իւիք ընդ վնասու լինել և ոչ իւիք տարազաւ ժամանակաւ։

**Դ.** Եթէ ոմանս ի բաց կացեալք յուխտաւորաց, և իշխեսցեն կամ առանձին ընդդէմ Կեղեստիանոսի, խորհել և նոքա անկեալք լիցին ի քահանայութենէն ի սուրբ ժողովոյս։

**Ե.** Որք ի չար ինչ գործս դատապարտեցան առաջի սուրբ ժողովոյն, կամ իւրեանց եպիսկոպոսաց և սոցա անկանոնական վասն յամենեսին անխտրութեան Նեստորիոս և կամ որք նորա հաւատոցն են հաւատացնել կամեցան կամ կամեսցին, կամ աւրէնս կամ յաստիճան աւգտակարգ մնասցին, և սոքա եղիցին ոչ ինչ պակաս քան որ անկեալքն են ի քահանայութենէն իրաւացի համարեցաք։

**Զ.** Նոյնպէս և թէ ոմանք կամեսցին որ ինչ գրով ասացաւ և կարգաւորեցաւ ի սուրբ ժողովոյն որ յԵփեսոս, որով տարազու և իցէ շարժել զսուրբ ժողովոյն սահմանեաց եթէ եպիսկոպոսունք իցեն կամ վիճակեալք իւրեանց ամենևին անկցին յաստիճանէն. ապա եթէ աշխարհականք իցեն ամենևին անհաղորդ լիցին։



# ՎԵՑ ԱՐՏԱՔԻՆ ՏԻԵԶԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐԻ ԿԱՆՈՆՆԵՐԻ

## ԳՐԱԲԱՌ ԲՆԱԳԻՐԸ

## ԸՍՏ ՀԱՅՈՑ ՁԵՌԱԳՐԵՐԻ։

### Ա. ԱՆԿԻՒՐԻԱՅԻ ԺՈՂՈՎԻ ԿԱՆՈՆՆԵՐԸ.

**Ա.** *Վասն երիցանց որք ի բռնութենէ հեթանոսաց մինչև տանջանս անեալ ի վերայ, և մահ սպառնալ. և նոքա առ երկիւղի զոհեցին, ապա ջանացան նկրտեցան. և ճշմարտութեամբ դարձան. վասն այսպիսեացս կամ եղև զի զաթոռոյն կորգն կալցին, այլ ի թարգմանութեան նստիլ, կամ պատարագ մատուցանել, կամ աւետարան կարդալ չունին իշխանութիւն։*

**Բ.** *Նոյն կանոն և սարկաւագին կացցէ, եթէ ակամայութեամբ իցէ զոհելն և ոչ կամօք և դարձն ճշմարտութեամբ, կամ եղև ի քահանայութիւն ոչ մերձենալ, այլ ի կարգի պաշտմանն կալ ապա եթէ տանջանքն և ճգունն յանաւրինաց խիստ եկեալ իցէ ի վերայ և դարձն ճշմարտութեամբ իցէ եպիսկոպոսն իշխան լիցի երիցուն և սարկաւագին. եթէ արժան իցէ պաշտել զիւրաքանչիւր աստիճան։*

**Գ.** *Վասն աշխարհականաց և վասն ուխտի մանկանց եկեղեցւոյ եթէ ոք ըմբռնեցաւ յանօրինաց բռնութենէ զոհել տալ՝ և յափշտակեալ ևս զստացուածս իւրեանց և այլ ևս մեծամեծ մահունս անեալ ի վերայ, և նոցա բողոքեալ թէ քրիստոնեայք եմք, բայց յԱստուծոյ զայլ ոք ոչ գիտեմք, և առ բռնութեան ուտիցեն զզոհեալն տրտմութեամբ,*

և սգացեալ սրտիւք արտասուօք և հառաչանօք, և յողորմութենէն Քրիստոսի խնայումն մարմնաւոր կենաց լինիցի այնպիսիքն ի կարգ պաշտամանն մատիցեն ապա եթէ յուխտէ ոք իցէ, արժան է մատուցանել, յաստիճան քահանայութեան՝ և մանաւանդ թէ առ այլ վարքն ուղղութեամբ վարեալ իցէ, կամ եղև մեծ ժողովոյն։

**Դ.** Վասն այնոցիկ որք ի բռնութենէ վարեցան ի զոհելն և ապա հասեալ ի տեղին կամաւք զուարթութեամբ, և ցոփութեամբ, խաղու և ծաղու ուրախ լինէին ի բազինս նոցա, և ապա ի զղջումն եկին, կամ եղև վասն մարդասիրութեան Աստուծոյ, Բ. ամ ընդ ունկնդիրս կացցէ. և Գ. ամ առ դրանն հաւասարեսցէ աղաւթիցն. և Բ. ամ մտեալ յեկեղեցի, ելցէ ընդ ապաշխարողս քննեալ վարքն հաղորդեսցի աւրինացն։

**Ե.** Ոյք չոքան տխուր հանդերձիւք և բազմականաւք և երախանօք կերան, և զօրն ամենայն ի բազմականին արտասուեցին և զղջացան, և յորժամ հեռացեալ անկեալ կատարեցին, մինչև ցերեք ամս առանց օրինացն կալցին, ապա թէ ոչ կերան, Բ. ամս հեռասցեն. յերրորդ ամին հաւասարեսցին առանց աւրինաց, զի զկատարեալն և զգլխաւորն յետ երից ամացն ընկալցին, այսինքն է զօրէնսն, զի եպիսկոպոսքն իշխեսցեն իբրև փորձեսցեն զբարս դառնալոյն մարդասիրութեամբ ինչ հայել կամ բազում և ինչ յաւելուլ զժամանակ ապաշխարութեան, քան զամենայն ինչ որ անցեալ վարքն իցեն, և յորում վարեցին ամենայն իրօք հարց և փորձ լիցի և ըստ Նմին իրի սիրութիւնն չափեսցի։

**Զ.** Վասն այնոցիկ որ լոկ սաստելոյն կամ տանջանօք կամ տնառութեամբ, կամ վասն ի տեղեաց անդարձուցանելոյ, հնազանդեցան և զզոհսն արարին, մինչև յայն ժամանակս ոչ դարձան և ապաշխարեցին, և այժմ և յառաջ քան զժամանակ ժողովոյն, մերձեցեալ հպին ի միտս ապաշխարութեան և դառնալոյ, կամ եղև զի մինչև յօրն զատկի ընդ ունկնդիրս կացցին, և յետ մեծի աւուրն, այսինքն է զատկին ընդ կարգօք լիցին զերիս ամս, և յետ Բ. ամաց հաւա-

*սարեսցին առանց ուրինաց և այսպէս եկեսցեն ի կատարեալն, զի ամենայն իրօք, գ-Զ. ամն կատարեսցեն, ապա եթէ ոք յառաջ զժողովն ընկալաւ յապաշխարութիւն, յայնմ ժամանակի թուեսցին նոցին սկիզբն գ.Զ. ամն կատարելոյ ապա եթէ ինչ վիշտք կամ ակնկալութիւն մահու՝ ի հիւանդութենէ, կամ յայլ ինչ ի պատճառանաց պատահեսցէ՝ զայսպիսիս ընդ սահմանաւ կալցին։*

**Է.** *Վասն այնոցիկ որ երթան ի տունս հեթանոսաց, ուր և տեղի որոշեալ իցէ պղծութեան իւրեանց, մանաւանդ որք զիւրեանց ևս զկերակուրս տարան և անդ ցոփութիւն շռայլեցան, քանզի զայնպիսեացն ասէ գիր թէ խառնակեցան ընդ հեթանոսս և ուսան զգործս նոցա, վասն այսպիսեացս կամ եղև, Գ. ամ ընդ ունկնդիրս կացցէ, և Բ. ամ ընդ ձեռամբ հաւասարել աղաւթից վարդապետին կամաց ի ձեռն ողորմութեան և գթոյ տնանկաց հաղորդեսցի օրինաց։*

**Ը.** *Եթէ ոք երկիցս երիցս չոգան և կերան զյազեալն ի դիցն. և զիւրեանց ևս զկերակուրս տարան և զոհեցին, և ապա ի յորդորմանէ եպիսկոպոսին և յիւրոց կամաց. ի զղջումն և յապաշխարութիւն եկին, կամ եղև. Է. ամ ընդ կարգօք լինել, և Բ. ամս հաւասարել աղաւթիցն ընդ ձեռամբ ապաշխարեալ հետքն և ջերմեռանդն ապաշխարութեամբ և տրտմութեամբ և գթով տնանկաց ստանալ զինքն ըստ եպիսկոպոսին կամաց հաղորդեսցի ուրինաց։*

**Թ.** *Վասն այնոցիկ որք ինքեանք չհեռացան ի զոհելոյ կռոցն, այլ և զեղբարս և զընկերս իւրեանց բռնադատեցին, պատրանօք հաւասարիլ կորստեան իւրեանց, և մղեցին ընկեցին ի գուբ խորխորատն որպէս և գրեալ է. գուբ փորեաց պեղեաց ի նոյն խորխորատ անկցին զոր գործեցին, արդ՝ զայսպիսին առաջին կանոնքն սպանանել հրամայեն, այլ երկրորդս կամ եղև մեծ ամենայն ժողովոյն միաբանութեամբ ընդ դէմ երթալ տէրունական հրամանին եթէ ոք ուրասցի զիս առաջի մարդկան, ուրացայց և ես զնա առաջի Հօր իմոյ որ յերկինս է՝ և զոր արձակէք յերկրի, արձակեալ լիցի յերկինս. արդ՝ կամ եղև մեծ ամենայն ժողովոյն, զի կեցցեն*

*և մի մեռցեն, եթէ ի դարձ փրկութեան եկեսցեն, ի կատարեալ խոստովանութիւն՝ մոլորեցուցիչքն որ մոլորեցուցին զընկերս իւրեանց, բազում զղջմամբ և բազում վաստակօք զյետին թոշակն թէ ընկալցին։ Իսկ զոր մոլորեցուցինն, Ե. ամ ընդ ձեռամբ հաւասարիլ աղաւթիցն, ի ձեռն սորա հաղորդեսցի օրինաց։*

**Ճ.** *Վասն որք ուտեն խառն և անխտիր զկերակուրս հեթանոսաց, կամ եղև սուրբ և մեծ աստուածասէր ժողովոյն ասել թէ սրբոցն ամենայն ինչ սուրբ է, և ապա պղծոցն ամենայն ինչ պիղծ է, զի որ ինչ արժան է ուտել նոցա այս է՝ թէ հնար ինչ իցէ ամենևին մի ճաշակել, ապա թէ ոք յանդգնեսցի յոր կորստութիւն. զպանիր, զմիս, զոր երախայ մարդոյ զինեալ իցէ՝ մի կերիցէ, և զամենայն ինչ կերակուր և զըմպելի, և զմիրգ և զբանջար, անգամ ընդ հաշտ, ամենևին մի մերձենալ, բայց զոր ինչ յուզումն պղծութեան իւրեանց չիցէ անցուցեալ, զհաց, զգինի, զմիրգ, զբանջար, զհանդերձ, զկենդանի անասուն համարձակ լիցի, այլ և դու նոյնպէս մի տայցես զսրբութիւն շանց զկերակուր ուխտի սրբոյ եկեղեցոյ, մարդ որ ոչ ունիցի ըղդրոշմն տէրունական ոչ հրամայեն կանոնք եթէ կամեսցի զառաքելոյ բանն ի կեր արկանել, զոր ինչ ի սպանդանոցի վաճառի կերայք, լուր անդէն նմին զոր ինչ ասէ եթէ գիտիցես թէ զոհեալ է, կամ թէ ոք ասիցէ պղծեալ է մի ուտիցես, ապա թէ ոք յանդգնեալ ընդ դէմ հրամանիս, և զոր կորստութեան իմն առնիցէ ապաշխարութեամբ և գթով տնանկաց արբիսցէ, Ա. ամ ընդ ձեռամբ լինել, այլ ուխտի մանկանց ամենևին ոչ մերձենալ, այլ գրեալ է թէ առ արտաքինսն իմաստութեամբ գնասջիք զի մի անուն Աստուծոյ վասն այսր հայհոյի ի մէջ հեթանոսաց։*

**ՃԱ.** *Վասն սարկաւագաց՝ եթէ յորժամ տանիցեն յաւծումն. և նոքա բողոքեսցին եթէ ոչ կարեմք կուսան լինել թողացուսցին՝ մինչև սրբութեամբք զուգեսցին, զի սուրբ են անկողինք, և անարատ ամուսնութիւնք, և ապա մատիցեն ի քահանայութիւն, և համարձակութեամբ խպառ կաց-*

*ցեն եպիսկոպոսին, ապա եթէ ոմանք յօծանելն լուռ եղեն մինչև ճշտութեամբ յանձին կալան որպէս թէ հասանիցեն, և կացցեն յաստիճանի անդ. և ապա յետոյ անկարգէ որոշեսցին. և ի բաց կացցեն, Ի. ամ ընդ ունկնդիրս կացցեն, Գ. ամ ընդ ձեռամբ տրօք անանկաց քաւէ զմեղս իւր քննեալ և հայեցեալ յապաշխարութիւն եպիսկոպոսին հաղորդեսցի օրինացն, բայց ի կարգ և յաստիճան մի մերձեցուսցէ։*

**ԺԲ.** *Եւ որ միանգամ խաւսեալ աղջկունք և զուգեալ գտանիցին և յետ այնորիկ այլք յափշտակեցին, կամ եղև զի անդրէն տացին ում խաւսեալն էր, և թէ ի բռնութիւն ապաստանի մի թողցին։*

**ԺԳ.** *Ոյք յառաջ քան զմկրտութիւն ընդունել զոհեցին և յետ այնորիկ մկրտեցան, կամ եղև յաստիճան մերձեցուցանել զայնպիսին, վասն զի սրբեցան աւազանաւն։*

**ԺԴ.** *Քոր եպիսկոպոսաց մի լիցի երիցունս կամ սարկաւագունս օծանանել այլ և ոչ երիցունս ի քաղաքի ուրէք առնել կամ աւծանել առանց համարձակելոյ եպիսկոպոսին, կամ թղթով կամ բանիւք. քանզի յայնժամ ի գաւառս լինէին եպիսկոպոսունքն այսինքն ի գեօղս, զայնպիսին կոչէ քոր եպիսկոպոսս, զի քոր եպիսկոպոսդ տեսուչ գաւառի ասի՝ ըստ հոռոմին առ մեծամեծօքն, այսինքն է որ զքաղաքսն ունին, առ սոքօք կոչին սոքա գաւառաց եպիսկոպոսք։*

**ԺԵ.** *Ոյք ուխտի անդ իցեն երիցունք կամ սարկաւագունք, կամ այլ ոք ի պաշտաւնէից և հեռի իցեն ի մսոյ և միտք իւրեանց յօժարիցեն ի ճաշակել համարձակ կերիցեն, և մի գաղտաբար, եթէ կամք իցեն պահիցեն, ընդունին կանոնք զերկոսին, ապա եթէ ոք պիղծ համարիցի, կամ զբանջար և հաց որ իցէ՝ ոչ ընդունեն զնա կարգ եկեղեցոյ։*

**ԺԶ.** *Ընչից որ անուանեալ է եկեղեցոյ զինչ և իցէ. թէ գեօղ, թէ ագարակ, թէ անդաստան, մինչև եպիսկոպոս լեալ էր ի տեղոջն, և երիցունքն զնա վաճառեցին իշխան լիցի անդրէն ի նոյն պահանջել. բայց ապա եպիսկոպոսն կշռեսցէ զիրաւն և զարժանն թէ մարթ է առնուլ զգինն կամ դարձուցանել։*

**ԺԷ.** Վասն այնոցիկ ոյք ընդ անասունս պղծեցան, զի թէ ի կուսութեան ոք գործեաց զպղծութիւն որպէս թէ հնգետասան ամեան իցէ. ԺԵ. ամ ընդ ունկնդիրս կացցէ և և Ե. ամ ընդ ձեռամբ, հայելով և քննելով զապաշխարութիւն, թէ արտասուօք ջերմեռանդն սրտիւ զղջանայ, քաւելով զմեղսն տրօք տնանկաց հաղորդելոյ արժանի լիցի յաւրէնսն, ապա եթէ ի կատարման հասակի իցէ որպէս թէ ի Ի. ամեանս. Ի. ամ ընդ ունկնդիրս կացցէ և Ե. ամ ընդ ձեռամբ և թէ յամեալ իցէ ի մեղսն յաւելցեն յապաշխարութիւն, քննեսցի ըստ ջերմութեան տրօք տնանկաց, հաղորդեսցի աւրինաց, ապա եթէ կին ունիցի. և զգործ պղծութեան գործիցէ՝ մինև ի վախճան անձին իւրոյ ընդ ունկնդիրս կացցէ և հեծեծանաւք և հառաչանաւք, և տրօք տնանկաց. կամ եղև մեծ ժողովոյն վասն մարդասիրութեան Աստուծոյ, յելս անձին իւրոյ զյետին թօշակն տացեն և յանասունն թէ ուտելեաց իցէ, զկաթն և զշաղիղն շունք կերիցեն:

**ԺԸ.** Ոյք բծաւոր էին, և բիծ ինչ ունիցին, այսինքն է պիսակութեան, կամ այլ ինչ ախտ որ փոփոխելով իցէ իբրև նենգութեամբ մերձեցան յայլս զի վնասեսցին ումէք. այնպիսիքն ընդ դիւահարս կացցեն:

**ԺԹ.** Ոյք եպիսկոպոսք եղեն և հաստատեցան և ոչ ընդունելի եղեն յիշխանութենէն յայնմանէ յորում աւանդեցաւն ունել. և յայլոց իշխանութիւն կամեցան մերձենալ և բռնադատել մերժելով զեպիսկոպոսն իշխանութեան այնորիկ, և ամբոխս յարուցանիցէ և խռովութիւնս ի վերայ նորա զայնպիսիսն մերժել արժան է, և կապեալ յեկեղեցոյ, ապա թէ կամիցէ նոցա յերիցութեան կարգէն յորում էին յառաջ նստիլ և զանուն երիցու ունիլ, արժանի լիցին ընդունելութեան ապա եթէ ընդ դէմ կացցեն իւրեանց եպիսկոպոսին և հակառակեսցին ընկեցեալք լիցին ի պատուէ անտի երիցութեան, և ցոյցի լիցին իբրև ընկեցեալ ժողովրդեանն առաջի զի ամենայն ոք գիտակ լինիցի:

**Ի.** Վասն այնոցիկ ոյք ի չափ հասակի հասեալ իցեն և

կուսութիւն խոստանայցեն պահել, և ստեցին խոստմանն, յիշխանութենէ անկան, կոյս այնուհետև ոչ ևս կարէ լինել, այլ եղիցի նա որպէս այն որ երկուս կանայս արարեալ իցէ զսահմանս նոցին կալցի և զապաշխարութիւն նոցա. Բ. ամ ընդ ձեռամբ առ. դրանն, և մի ամ մտեալ յեկեղեցին, ընդ ապաշխարողսն ելցէ զչերմութիւն ապաշխարութեան տեսցին և հաղորդեսցի օրինացն, բայց աւծումն քահանայութեան մի մերձեսցին, այլ վասն կուսանացն որ մերձենալին առ ոմանս իբրև քեռք, զայնպիսիսն խափանեցաք, զի մի ևս լիցին։

---

## Բ. ԿԵՍԱՐԻԱՅԻ ԺՈՂՈՎԻ ԿԱՆՈՆՆԵՐԸ.

**Ա.** Վասն կանանց որ ընդ արամբ են և շնան. եթէ թողցեն ի բաց զպղծութիւն և յապաշխարութիւն եկեսցեն. Ե. ամ առ դրանն ընդ ձեռամբ և Բ. ամ մտեալ յեկեղեցի, ելցէ ընդ ապաշխարողս, քննեալ վարքն տրօք տնանկաց քաւեալ զմեղս իւր հաղորդելոյ աւրինացն արժանի լինիցին։

**Բ.** Վասն կուսանաց որ քան զհարսանիսն յառաջ ընդ ումեք շնացաւ, և ելոյծ զկուսութիւն, կուսան այնուհետև մի կոչեսցի զի խրամատեցաւ ցանկն բայց ապաշխարեսցէ ջերմ սրտիւ և գթով և տնանկաց սրբեսցէ զինքն. Բ. ամ առ դրանն հաւասարեսցէ աղաւթից, և Ա. ամ մտեալ յեկեղեցի, ելցէ ընդ ապաշխարողս, և հաղորդեսցի աւրինաց՝ և վասն յաղթութեան թշնամոյն առցէ զաւրհնութեան պսակ, հարսանեաց ի գլուխ իւր՝ եթէ. այր թէ կին, կարօն այս լիցի։

**Գ.** Վասն կանանց որ պոռնկին և զմանկունսն սպանանեն առաջին վարդապետքն մինչև ի մահ սահմանեցին ընդ պատժովք լինել, բայց երկրորդս վասն մարդասիրու-

թեան Աստուծոյ, կամ եղև մեծ ժողովոյն, Է. ամ լինել ընդ ունկնդիրսն, Ե. ևս ամ ընդ ձեռամբ լինել, տրօք ողորմութեամբ սրբեսցի և հաղորդեսցի աւրինաց։

**Դ.** Վասն որք ոչ զպոռնկորդի, այլ զարդար զաւակ ըսպանանեն կամօք չար արուեստիւք իւրեանց մինչև ցմահ ընդ պատժովք լիցին, ընդ ունկնդիրս կացցեն և ի ձեռն տրոց տնանկաց յելս վախճանին զյետին թոշակն տացեն, եթէ արանց իցէ վնասն եթէ կանանց կանոն նոյն իցէ։

**Ե.** Վասն որոց ոչ կամաւք սպանին և ոչ գիտութեամբ այլ կամ ի քուն ննջեաց ի վերայ, և կամ ոչ զգուշացաւ և ի հուր վնասեցաւ վկայութեամբ ընտանեաց և ընկերաց, առաջին կանոնքն. Է. ամ եդին, բայց երկրորդս վասն մարդասիրութեան Աստուծոյ կամ եղև մեծ ժողովոյն, Գ. ամս առ դրանն հաւասարեալ աղաւթից և Բ. ամս մտեալ յեկեղեցի, ընդ ապաշխարողս ելցէ, տրաւք և ողորմութեամբ հաղորդեսցի օրինաց։

**Զ.** Արք այրիք մնացեալ իցեն յետ ամաց ինչ, և կամ ընաւ առն չիցէ լեալ և ի մեղս անկանիցի ի պոռնկութիւն կամ եղև մեծ ամենայն ժողովոյն, եթէ ամենևին դարձցին ի մեղացն ապաշխարութիւն դնելով ի վերայ նոցա. Գ. ամս առ դրանն ընդ ձեռամբ լինել և, Բ. ամս մտեալ յեկեղեցի ելցէ ընդ ապաշխարողս, և փորձեալ և քննեալ զվարսն ողորմութեամբ և գթով տնանկաց սրբեալ զմեղս իւր հաղորդեսցի աւրինաց, ապա թէ դարձեալ թաթաւեսցի ընդ տիղմն մեղաց իւրոց, զեւթն ամին ապաշխարութիւն ի վերայ դիցես, բայց զյորդորումն և զսէր խոնարհութեան և և զյոյս բարեաց անդադար սփռեսցէ։

**Է.** Վասն գիւթաց որք խոտորին և ըստ սովորութեան հեթանոսաց զհետ երթան, որպէս թէ ի տունս հեթանոսաց մտանել իբրև գիտակ լինել և ուսանել զգիրս կախարդութան, և ապա ի զղջումն եկեսցեն և ի խոստովանութիւն փորձեսջիր և քննեսջիր զդարձն, Ե. ամ ընդ ունկնդիրս կացցէ, և Բ. ամ ընդ ձեռամբ հաւասարեսցէ աղաւթիցն, ողորմութիւն և գթով տնանկաց սրբեալ զինքն հաղորդեսցի աւրինաց ըստ սուրբ ժողովոյն։

**Ը.** Վասն չար դիւականխարդաց ջատկաց որք մեծամեծ ոճիրս գործեն, և դառնացուցանեն զԱստուած ի խորհուրդս իւրեանց, նոքա և յՈրդւոյ ուրանան, նոքա և զՍուրբ Հոգին հայհոյեն, նախ և զարդար արիւն հեղուն, ի զոհել՞ չարչեացըն. զայնպիսիսն առաջին կանոնն և գիրն չապրեցուցանէ՝ և արժանի են մահու թէ ի զղջումն ոչ եկեսցեն՝ բայց շընորհաց հոգիս կեցուցանէ թէ՝ ի զղջումն եկեսցեն յապաղաւանս և խոստովանութիւն ըստ Աստուածեղէն գրոց. թէ ոչ կամիմ զմահ մեղաւորին, այլ զդառնալ նորա և զկեալ, կամ եղև մեծ ժողովոյն վասն մարդասիրութեան Աստուծոյ այնպիսիքն մինչև ի վախճան ընդ ունկնդիրս կացցեն և քննեսցին և փորձեսցին հետք նոցա, բայց վարդապետն ըզմարդասիրութիւն և զյորդորումն և զլոյս ողորմութեան և զխոնարհիլն առ այնպիսիսն մի արգելցէ, զի մի ի հին սովորութիւն մի տեսցեն միտքն ողորմութեամբ, և գթով և տրովք տնանկաց քաւեսցեն և յետին թոշակին արժանի լիցին։

**Թ.** Եթէ խօսեալ իցէ զաղջիկն ուրուք առն և նա թողցէ զխօսեալն նմա և ննջեսցէ ընդ քեռ նորա, կամ ընդ ումն և իցէ, և ապա թողցէ զնա և անդրէն յառաջինն ի խաւսեալ դարձաւ և կին արդար, և ընդ որում ննջեացն նա չոգաւ խեղդ արկ և մեռաւ առ նախանձու այրն, վասն պըղծութեան, Է. ամ ընդ կարգօք լիցի, իսկ վասն մահու աղջկանն՝ պարտական լիցին որք գիտակ էինն և հօգաբարձուք և ոչ փոյթ արարին ուղղել զգործն, Ժ. ամ ընդ ունկնդիրս կացցեն. Ե. ամ ընդ ձեռամբ, ի ձեռն ողորմութեան սրբեալ հաղորդեսցի աւրինաց։

**Ժ.** Վասն գողաց, աւազակաց, մարդասպանաց, և որ դաղտնի մահաբեր դեղովք անողորմ խողխողեն զորդիս մարդկան, և մեծամեծ աւճիրս և բազում հարուածս բազմադիմիս և ազգի ազգի չարեօքածին վնասք որդւոց մարդկան նոքա և զարիւն արդար հեղուն, նոքա և զսրբութիւնս կործանեն, նոքա և զմանկունսն եկեղեցոյ խողխողեն, նոքա և զհայհոյութիւն ի բարձունս ձգեն զայսպիսիս օրէնքն և առաջին կանոնքն սպանանել հրամանետուն, զի և այլքն

խրատեսցին և արժանի են մահու եթէ ի չար գործոյն ոչ դարձցին. ապա թէ քան զըմբռնելն յառաջ և ի չարչարանս արկանել ինքնին ի խոստովանութիւն եկեսցէ. կամ եղև մեծ և Աստուածասէր ժողովոյն զամենայն ինչ ընդ ապաշխարութիւն թէև մերձեալ լինի ի դրունս դժոխոց կորչէ ի բաց որպէս զնզեկիայն։ Ապաշխարութիւն զհնոյն ի ցաւղ դարձուցանէ, պահք և աղաւթք զբերանս առիւծուց սանձին քանզի ջերմ ապաշխարութիւն և արտասուք զմարդիք ընդ հրեշտակս խառնեն, և զհրեշտակս ընդ մարդիկ, որպէս և Տէրն տէրանց թողեալ զքաղում հաւտսն որ յերկինս զմիոյ ոչխարիս զմարդկութեանս զհետ ընթանայր և ասէր ուրախութիւն է հրեշտակաց ի վերայ միոյ մեղաւորի զղջացելոյ և ապաշխարեցելոյ։ Արդ՝ եթէ դարձցին այսպիսի չարագործին զոր պատմեցաք ձեզ սրտի մտաւք և յօժարութեամբ ի խոստովանութիւն և ի դարձ փրկութեան եկեսցեն, և զհին խմորն զայտումն մեղացն ցածուսցեն և ի նոր զանգուած եկեսցեն, ջերմ արտասուաւք և գթով տնանկաց, քանզի և մեծ մարգարէն Դանիէլ բողոքէր թագաւորին զմեղս քո ողորմութեամբ քաւեա, և զանաւրէնութիւնս քո գթով տընանկաց նորափետուր զարդարեսցին. ընդունի զնոսա կանոնս, բայց զապաշխարութիւն նոցա լիցին, քանզի թագաւորն այն, Է. ժամանակ արասցէ ընդ անասունս քանզի ամենայն մեծամեծ մեղս զոր շարժեցաք ի կարգի և ցուցաք ձեզ ապաշխարութիւն միայգոյն է՝ մի աւրինակաւ, թէ դայթի դայթ ինչ իցեն ի վախճանի իւրեանց ընկալցին զյետին թոշակ, ապա թէ ջերմեռանդն սրտիւ, հայեցեալ վարդապետին, քննեալ զգործս նոցա և զխորհուրդս սրտից նոցա ներելով արասցէ, և զյորդորումն և զսէր մի արգելցէ. Ժ. ամ ի դըրունս դրաց, և Ե. ամ հաւասարեսցէ ընդ ձեռամբ աղքատաց՝ ապա հաղորդեսցի աւրինաց աղ թէ կամք իցեն երիցուն։

---

## Գ. ՆԷՈՅԿԵՍԱՐԻԱՅԻ ԿԱՆՈՆՆԵՐԻ ԳՐԱԲԱՌԸ.

**Ա.** Երէց այր եթէ ամուսնով իցէ ընդունելի լիցի ի կարգս, ապա թէ շնասցի կամ պոռնկեսցի մերժել արժան է զայնպիսին առաւելապէս և ջանալ արժան է այնպիսոյն. զի ապաշխարութեան հասցէ։

**Բ.** Կին եթէ լինիցի երկուց եղբարց, մերժեսցեն յիրերաց. կինն մինչև ի մահ ընդ ունկնդիրս կացցէ, նոյնպէս և այրն, ապա ըստ վարուց իբրու թէ ողջացեալ իցեն ի մեղացն ի ձեռն ողորմութեան և պահոց ի վախճանի իւրեանց, հաղորդելոյ արժանի լիցին յետին թօշակին, ապա եթէ մինչ ի զուգութեան են մահ տիրեսցէ, զոր ասեն մահ մեղաւորին չար է՝ գրկեալ եղիցի ի թօշակէն, բայց որ մնայն այնպիսւոյն դժուարագոյն է ապաշխարութիւն, իշխան լիցի վարդապետն ապաշխարութեան դնել խստագոյն որպէս և կամեսցի ի ջերմութիւն ապաշխարութիւն հայեցեալ և յողորմութիւն գթով տնանկաց, և բարեգործութեամբ իշխան լիցի կարճեալ զժամանակն։

**Գ.** Որ ի պէս պէս ամուսնութիւն ինչ ըմբռնին. ժամանակն յայտնապէս է զոր սահմանեցաք, այլ դարձ նոցին և հաւատք թէ փութութեամբ ինչ իցեն կարճել զժամանակն։

**Դ.** Եթէ ոք ի մտի դնիցէ և ցանկանայցէ ընդ կնոջ ուրուք պոռնկել, և խափանի գործն սրտին ահա շնացաւ ըստ աւետարանին բայց գործոյն ի գլուխն չերթալ յայտ է թէ ի շնորհաց անտի պահեցաւ։

**Ե.** Վասն երախայից եթէ յապաշխարութիւն եկեսցեն և հաղորդել եկեղեցւոյ սրբոյ, և յետ այնորիկ ի մեղս անկանիցին, ընդ ունկնդիրս կացցէ՝ հայելով և փորձելով և յորդորելով, ապա թէ մինչդեռ ի դրունս ունկնդրութեան կացցէ և դարձեալ յանցանս գտանիցի ամենևին մերժեալ լիցի իւրեանց։

**Զ.** Վասն չղի կանանց զի արժան է մկրտել յորժամ և կամի զի ոչ յայսպիսի ինչ իրս Հաւասարեալ է ծնաւղն ընդ ծննդեանն, այլ արժան է ամենայն իրաւք կամօք զյօժարութիւն ցուցանել առ ի խոստովանութիւն ընդունելութեան մկրտութեան։

**Է.** Վասն որ երկրորդ կին առնեն, եցեցուն զի պարտ և արժան ի Հարսանիսն երթալ, զի ոչ են Հարսանիք այլ լոկ Հաց ուտունք՝ ապա թէ ընդդիմացեալ ուրուք Հրամանիս երթիցէ մի շնորՀուկս առնելով վասն Հացին թողացուցանէ ինչ յապաշխարութենէն, այլ Բ. ամ առ դրանն Հաւասարել աղաւթից, և Ա. ամ մտեալ յեկեղեցի եւցէ ընդ ապաշխարողս ի ձեռն տրոց ողորմութեան Հաղորդեսցի աւրինաց։

**Ը.** Որ մին կուսան և մին երկեակ, որ այլ վարքն սըրբութեամբ, Գ. ամ ապաշխարեալ Հաղորդեսցի աւրինաց։

**Թ.** Վասն որ երրորդք իցեն, նոցա ոչ ամուսնութիւն՝ այլ յամենայն ժամ պոռնկութիւն է եթէ ժամանակ կենաց իւրեանց յերկարեսցի, և այլ վարքն կատարեալ Հաւատովք իցեն սուրբ սրտին, ԺԵ. ամ ընդ ունկնդիրս և Ե. ամ Հաւասարեալ աղաւթից ի ձեռն մեծամեծ ծախից, գթով, պաՀով ողորմութեամբ ի տարւոջն մի անգամ Հաղորդեսցի, ապա թէ վարքն յետնութեամբ իցեն, աՀա դիցես մեղս ի վերայ մեղաց նոցա բազում աշխատութեամբ ի ձեռն տրոց ողորմութեան յետին թոշակին թէ լիցին արժանի, ապա թէ քակեսցեն ի միմեանց ի ձեռն Հաւատոց կամօք իրերաց, կամ մինչդեռ ի զուգութեան են և մին մեռցի, և որ մնայն սրբութեամբ կացցէ ընդունելի է, վարդապետն Հայեսցէ և ներելով արասցէ։

**Ժ.** Այլ վասն չորրորդին և Ե.-երրորդին որ ունին կանայս աւրէնք չեն դատաւոր, և եկեղեցի ոչ ընդունի բայց եպիսկոպոս գիտասցէ։

**ԺԱ.** Իսկ եթէ արձակեսցէ ոք զկին իւր վասն բանի պոռնկութեան կամ վասն այլ չարագործութեան զոր ոչ միայն այրն այլ և աշխարՀ վկայէ զչար գործոց նորա, ար-

ձակեսցէ՝ ընդունի զնա կանոնս, բայց Ա. ամ ապաշխարեսցէ ի ձեռն ողորմութեան սրբեսցի և հաղորդեսցի աւրինացըն, և եթէ կամեսցի կին արասցէ, և կինն այլում առն չիշխէ լինել, մինչ կենդանի է այր նորա։

**ԺԲ.** Իսկ եթէ ոչ վասն պոռնկութեան և ոչ վասն այլ չարագործոց, եթող զկինն իւր, վասն վատաբանութեան որպէս թէ այլում ակն եդեալ իցէ, զայնպիսին ոչ ընդունի կանոնք, մինչև դառնալ նորա յառաջին կինն, և ընդ յանցանացն, Է. ամ ապաշխարութիւն ընկալցի, Ա. ամ արտաքոյ, և Բ. ի ներքս, ապա թէ ոչ դարձցի առ բուն կին իւր, զկեանս տան իւրոյ բաժանեսցի, զկէսն կնոջ իւրում տացէ՝ և տուգան յեկեղեցին, զի զպսակս աւրհնութեան զոր ընկալեալ էր վասն ամուսնոյ իւրոյ անարգեաց, և ինքն զամենայն աւուրս կենաց իւրոյ պոռնիկ կոչեսցի. մի մտցէ յեկեղեցի Աստուծոյ, այլ ի դուրս հաւասարեսցէ աղաւթից ի ձեռն ողորմութեան և տրօք տնանկաց, և վասն ջերմ արտասուաց զյետին թօշակն ընկալցի, ապա թէ կինն մեռցի, և այլ կին չառնիցէ, ջերմ յապաշխարութիւն եկեսցէ. Է. ամ ի դուրս կացցէ, Գ. ամ ընդ ձեռամբ աղաւթից հաւասարեսցէ ի ձեռն ողորմութեան գթով տնանկաց քաւեալ զմեղսն հաղորդեսցի աւրինաց։

**ԺԳ.** Վասն որ պատրաստեալ են ի քահանայութիւն և կանայս ունիցին, եթէ մինչև ի քահանայութիւն մերձեալ իցէ և կինն շնայցէ, արձակեսցի կինն և առն չիշխէ լինել և այրն ի քահանայութիւն մատիցէ ապա թէ կամք իցեն նմա կալ ընդ կնոջն, քահանայ ոչ ևս կարէ լինել, զի ոչ ևս ընդունի զնա եկեղեցի և կանոն։

**ԺԴ.** Քահանայ եթէ ի պղծութեան գտանիցի և իրքն յայտնեսցին, և խոստովան լինիցին քահանայանալ ոչ կարէ՝ բայց ի կարգին կացցէ ապա թէ խոստովան ոչ լինիցի և յայտնապէս յանդիմանել ոչ ոք կարիցէ. ի կամս նորա թողցեն լինել և չլինել և եպիսկոպոսին։

**ԺԵ.** Նոյն կանոն և սարկաւագին կացցէ քանզի սուրբ եկեղեցի զանարատն ընդունի, զի ի ձեռն անմեղացն մեղա-

ւորքն փրկութիւն գտցեն. քանզի աւրընտօրէ բողոքէ թէ զսիրտ սուրբ և զհոգի խոնարհ Աստուած ոչ արհամարհէ, և եթէ յում բնակեցայց եթէ ոչ ի հեզս և ի խոնարհս և որ դողան ի բանից իմոց։

**ԺԷ.** Կամ եղև մեծ ամենայն ժողովոյն, թէ մինչև ցերեսուն իմ բանս մի ոք աւծցի ի քահանայութիւն, զի փորձեսցի, ընտրեսցի՝ պիղծս ի սրբոցն ի բաց պարզեսցի՝ քանզի և Տէր մեր երեսնամեան էր յորժամ առ զաւծումն մկրտութեան և սկսաւ զնոյն աւրինակ ուսուցանել յամենեցուն, ութ աւրեան մկրտել. իսկ երեսնամեայ աւծանել ի քահանայ։

**ԺԸ.** Վասն որք ի հեղութիւնս անկանիցին և կամ ի խիստ հիւանդութիւն, և ըմբռնեսցի ի բռնաւորաց և վասն հեղութեան մկրտեսցի, և կամ յառաջ էր անուն քրիստոնեայ և գործք վատթարք, և ապա վասն հեղութեան ի հաւատս կացցէ զայնպիսին ընդունի եկեղեցի այլ ոչ կատարելապէս, զի ակամայութեան են հաւատքն զայնպիսւոյն ասէ գիր. միթէ ի հող խոստովան առնիցեմ առ քեզ։

**ԺԹ.** Գաւառաց երիցունք ի քաղաքի եկեղեցւոջ իբրև անդ իցէ եպիսկոպոս կամ երէց քաղաքին, չէ պատշաճ նոցա պատարագս մատուցանել կամ հաց յագապի տալ և ոչ բաժանել յեկեղեցւոջ, ապա թէ նոքա հրամայեցին և կոչեցին յագապի տացէ՝ այլ շահ զինչ և եկեսցէ ի նմին եկեղեցւոջ պահեսցի։

**ԺԹ.** Այլ որ քոր եպիսկոպոսքն են ըստ աւրինակի և ըստ կարգի Եւթանասնիցն և իբրև լծակիցք վասն փութութեան որ յաղքատսն կատարելոց է։

**Ի.** Եւ սարկաւագունս ըստ պիտոյիցն արժան է առնել որչափ տեղիքն և պէտքն խնդրեսցին, և մի աւելիս ինչ զի մի ցոփութիւն լինիցի։

---

## Դ. ԳԱՆԳՐԻԱՅԻ ԺՈՂՈՎԻ ԿԱՆՈՆՆԵՐԻ ԳՐԱԲԱՌԸ.

**Ա.** *Որք զամուսնութիւն մեղադրեն և անգոսնեն կամ որ ոչ ննջէ ընդ առն իւրում, իբրև իցէ հաւատացեալ և երկիւղաց և գարշելի համարեցին և մեղադիր առնիցեն իբրև այն թէ յարքայութիւն ոչ կարեն մտանել. այնպիսիքն նզովեալ լիցին։*

**Բ.** *Ոյք ուտեն միս առանց արեան և զոհելոյ ի մեռելոտւոյ, զի ամենայն երկիւղածութեամբ և հաւատովք լիցի, և դատապարտեսցին զայնպիսիսն վասն ուտելոյն, իբրև այն եթէ յոյս ոչ ունիցին առ Աստուած, նզովեալ լիցին։*

**Գ.** *Որք ծառայ ի պատճառս աստուածպաշտութեան պատրին արհամարհելով զտեարս իւրեանց, և հեռանալ ի ծառայութենէ նոցա, և ոչ ամենայն փութութեամբ պատուել և պաշտել զնոսա իբրև իցեն տեարքն քրիստովնեայք և երկիւղածք, նզովեալ լիցին։*

**Դ.** *Որք երկմտին և խորշին յերիցուէ որ ամուսնացեալ իցէ, որտէս թէ չիցէ արժան ի նոցանէ աւրէնս առնուլ, նզովեալ լիցի։*

**Ե.** *Ոյք ուսանին զտուն Աստուծոյ և որ ի նա ժողովն ժողովեցին արհամարել, նզովեալ լիցի։*

**Զ.** *Ոյք արտաքս քան զեկեղեցին ժողով ժողովեցին և արհամարհեցին զեկեղեցին և կամիցին զեկեղեցւոյ պէտս գործել իբրև ոչ իցէ երէցն ըստ կամաց եպիսկոպոսին լեալ, նզովեալ լիցի։*

**Է.** *Ոյք զպտուղ եկեղեցոյն կամին արտաքս քան զեկեղեցին առնուլ կամ տալ և ոչ կամաւք եպիսկոպոսին որ ձեռնադրեացն զայնպիսիսն յայսպիսի իրս, և կամօք նորա չառնիցէ և չգործիցէ, նզովիալ լիցի։*

**Ը.** Որ տայցէ կամ առցէ զպտուղ արտաքոյ քան զեպիսկոպոսն կամ որ կարգեալն է ի տնտեսութիւն, տուրս տալոյ տալին և առնելին, նզովեալ լիցի։

**Թ.** Ոյք կուսանան և պահեն զանձինս իւրեանց որպէս թէ գարշ իցէ ամուսնութիւն, և հեռանայցեն, և ոչ վասն բարւոյ և սուրբ պարկեշտութեան, նզովեալ լիցի։

**Ժ.** Ոյք կոյսք իցեն վասն Աստուծոյ, և գեր ի վերոյ անամուսնացելոցն և ամբարհաւաճիցին, նզովեալ լիցին։

**ԺԱ.** Ոյք արհամարհեն զայնոսիկ, որք հաւատով ագապս առնեն և վասն պատուի Տեառն կոչին զեղբարս և ոչ կամին հաւասարել ի յանձն առնուլ և արհամարհեցին, նզովեալ լիցին։

**ԺԲ.** Որք յարանց պահս ինչ իցեն համարեցան զարբտումն և զխուր հանդերձ ինչ ագանիլ որպէս թէ այսպիսի ինչ իրաւք արդարասցին, և դատապարտեցին զայնոսիկ ոք ահիւ և երկիւղիւ և ոչ փառասիրութեամբ զսովորութեան հանդերձսն ագանին և գործին այսպիսեօքս, նզովեալ լիցին։

**ԺԳ.** Կին ոք որպէս թէ պահս ինչ համարէ փոխիլ զզեստ կանանց, և զարանց զզեստ ինչ հագաւ կամ զկերպարանս ինչ այնպիսի առացաւ, նզովեալ լիցի։

**ԺԴ.** Կին որ թողու զայր իւր հեռանալ ի նմանէ, որպէս ի հաւատս կացցէ առանց կամաց առնն, և կամ անգոսնեսցէ զայր իւր. եթէ ես գեղովել երեսս ունիմ կամ մեծ ազգի եմ, կամ ընչաւէտ եմ քան զքեզ, և ելանիցէ յառնէ իւրմէ՝ պատուհաս կրեսցէ, և նզովեսցին, և յեկեղեցւոյ ի բաց հանցին։

**ԺԵ.** Ոյք ընդ վայր հարկանին թողուն զորդիս իւրեանց և ոչ սնուցանեն, և որ չափ ձեռն հասիցեն ոչ փոյթ առնիցեն վասն Աստուծոյ կարգին սնդեանն մինչև ի կատարման հասակին, այլ որպէս ի պատճառս պահոց և վանականութեան արհամարհիցէ և անփոյթ առնիցէ, նզովեալ լիցի։

**ԺԶ.** Եթէ ուրուք որդի յորոյ ծնեալն է առաւել հաւատացեալ իցէ, և առաքինի ի կարգս Աստուծոյ հեռանայցէ որպէս

*պատճառս աստուածպաշտութեան, և արհամարհիցէ և ոչ զարժան, և ոչ զիրաւ պատիւ ծնողացն, հատուցանիցէ իբրև ծնողաց՝ քան զամենայն աստուածպաշտութիւն մեծ և ահաւոր թուիցի և հատուցումն բարեաց, այնպիսին նզովեալ լիցի։*

**ԺԷ.** *Եթէ ոք ի կանանց կարծեսցէ իբրև զաստուածպաշտութիւն և զհերս փոքրիցէ՝ զոր ետ յիշատակ հնազանդութեան, իբր թէ ընդ ոտն եհար և արհամարհեաց զհրամանն անդ հնազանդութեան, նզովեալ լիցի։*

**ԺԸ.** *Եթէ ոք իբրև ի կարծիս պահոց արհամարհիցէ զօր կիւրակէի և ի պահոց թիւարկ, կամ ի գործ որպէս զայլ աւուրս՝ ո՛չ գտցէ հանգիստ յարքայութեան Աստուծոյ, և մեծ ժողովն նզովէ և մերժէ.*

**ԺԹ.** *Եթէ ոք ի պահողաց արտաքոյ քան զհարկ ինչ մարմնաւոր, այսինքն է ցաւոց և վշտաց, ամբարհաւաճեաց և ամբարտաւանեաց, և զուտեալ և զկարգեալ պահս հասարակաց որ պահի յեկեղեցւոջ ելոյծ և արհամարհեաց իբրև կրիցի ի նմա կատարեալ միտք և խորհուրդք, նզովեալ լիցի։*

**Ի.** *Եթէ ոք ի մարդկանէ կատարեալ հասակաւ առողջ մարմնով քրիստոնեա անուն ի վերայ գքառասուն օր պահսըն ի գլուխ ոչ տանիցի, այնպիսին նզովեալ լիցի։*

**ԻԱ.** *Եթէ ոք գքառասունսն պահեսցէ սուրբ և զատկի հինգ շաբաթի օրն քան զհաղորդիլ աւրինացն և բաժակին սրբելս, եթէ այլ ինչաւելի համարձակեսցի ուտել, զպահսն զոր պահեաց ընդունայն, և ի մեծ ժողովոյն, նզովեալ լիցի։*

**ԻԲ.** *Եթէ ոք երթիցէ ի ժողովս մարտիրոսաց զգոյշ և պատրաստ լիցի, ի սրբութեան յորդորման պաշտաման, խոնարհութեան աղաւթից, զի մեծ վարձս առցէ՝ ապա թէ ոք երթիցէ ամբարտաւանութեամբ հպարտանաւք ի ցոյցս տեսողաց և դիտել զնմանիս իւր նզովեալ լիցի։*

**ԻԳ.** *Եթէ ոք յառաջ քան զարձակել զժողովեալ ժողովուրդն կատարեալ հասակաւ և առողջ մարմնով յառաջ քան զկատարել տէրունական խորհրդին երթեալ հաց կերիցէ կամ այլ ինչ, այնպիսին նզովեալ լիցի։*

**ԻԴ.** Երէց կամ սարկաւագ առանց աղաբողոնի ի բեմն մի ելցէ, այլ կամ խունկ ծխել, և զրովք սաղմոսել ի բեմի և կամ ի բեմի գիրս կարդալ, և կամ ի սպասու կալ սեղանոյն, ոչ է ընդունելի պաշտաւն նորա, աղէ կաց այնպիսի կերպարանաւք առաջի մահկանացու իշխանի եթէ ընկալցի զքեզ, արդ՝ եթէ ոք անցցէ ընդ կանոնս այսպիսին նզովի։ Զայս գրեմք և ոչ խաբանեմք ոյք յեկեղեցի Աստուծոյ գիրս ստանալ, կամ ճարտարութիւն, կամ զպահսն կամին, այլ որք ընդունին զիրս պահոցն ի պատճառս ամբարտաւանելոյ ի վերայ այնոցիկ որք միամտութեամբ կեան և ոչ նենգութեամբ կամ պատրանաւք՝ այլ որք բարձրամտին արտաքս քան զգիրս և քան զկարգս կանոնաց եկեղեցւոյ, և նոր կարգս կացուցանեն, այլ մեք և ընդ կուսութիւն խոնարհութեամբ զարմանամք, և զպահս պարկեշտութեամբ և հեզութեամբ, և աստուածութեամբ ընդունեմք, և զհեռանալն խոնարհութեամբ յերկրաւորացս ընդունեմք, և զամուսնութեան կարգ, պարկեշտութեամբ պատուեմք. և զմեծութիւն հանդերձ արդարութեամբ ոչ անգոսնեմք. և զմէկին և զլոկ և զարհամարհեալ ազանելիս վասն պիտոյից միայն մարմնոյ, առանց ամենայն խոտելո գովեմք, այլ ըղլոյծ և զջախջախ և զշեղտամեղտ ազանելիս և զգնացս չընդունեմք և զտուն Աստուծոյ պատուեմք, և զժողովս որ ի նոսա ժողովին, որպէս զսուրբս և զաւգտակարս ընդունեմք իբր ոչ փակեմք կամ զրաւեմք զաստուածպաշտութիւնս ի տունս կամ ի տաճարս, այլ քան զամենայն տեղիս որ յանուն Աստուծոյ շինեալ են պատուեմք և որ ի նոսա շինեալ են ի հասարակաց աւգուտ ընդունեմք և զառաւելազոյն զտուրս և զբարեգթութիւնս որ ըստ տըւչութեան եկեղեցեաց և կարգեաց որ յաղքատս լինի երանեմք, և զուղիղ գործ յանձին կալեալ ասեմք որ ինչ տուաւ և կարգեցաւ ի սուրբ գրոց և յառաքելոց, յեկեղեցի լինել մեզ յաղաւթս առնեմք զի կատարեսցի այս կանոնս զոր եդաք և գրեցաք ի Գանգրայ վասն հաստատութեան կարգի աւրինաց, ոչ աւելի ինչ և ոչ աւտարոտի ի մէջ բերեալ, այլ որ սուրբ ժողովն կա-

նոնեցին զնոյն ի լրութիւն բովանդակեցաք, քանզի են ոմանք որ ագիտութեամբ ինչ ինչ գործելով կուտեն անապաշխար բեռինս անձանց ըստ գրեցելոյն, եթէ ի մէջ ագիտաց ճշմարտութիւն պատառի՝ զի եթէ կարի փոքր մեղք իցեն և ընդ ապաշաւանօք ոչ անկանիցի մահու չափ լինին ըստ առաքելոյն. են մեղք որ մահու չափ են։

---

## Ե. ԱՆՏԻՈՔԻ ԺՈՂՈՎԻ ԿԱՆՈՆՆԵՐԻ ԳՐԱԲԱՌԸ.

Ա. Ամենայն ոք ով և համարձակեսցին և լուծցին ըզ սահման սուրբ և մեծ ժողովոյն որ ի Նիկիայ ժողովեցան և զառաքելոցն իբրև էր անդ աստուածապաշտ և աստուածասէր թագաւորն Կոստանդիանոս վասն ամենասուրբ տաւնից փրկութեան կապեալ և մերժեալ յեկեղեցւոյ եթէ կացցեն և հակառակութեամբ ընդ դէմ դառնալ որ ինչ բարեգոյնքն կամեցան և կարգեցին և վասն աշխարհականացս։ Ապա թէ ոք ի գլխաւորաց և յառաջնորդաց եկեղեցւոյ, եպիսկոպոս կամ երեց կամ սարկաւագ յետ սահմանիս այսորիկ համարձակեսցի շրջել և խռովել, և խանգարել և փոփոխել զկարգս եկեղեցւոյ, և առանձին լինել և ընդ հրէայս կատարեսցէ զտաւնս՝ զայսպիսիս և մեծ սուրբ ժողովն աստին և առ ետեղ յայտնապէս ատար համարեցան եկեղեցւոյ՝ զի ոչ միայն մեղաւ՝ այլ զքազումս ապականեաց և թիւրութեան պատճառք եղեն, ոչ միայն զայնպիսիսն հասանել և որոշել և ընկենուլ ի պաշտամանէ եկեղեցւոյ՝ այլ և ովք սոցին հաւասարել համարձակեսցան յետ մերժելոյ զայնպիսիսն և ովք մերժեցան խափանեսցին ևս յարտաքին պատուոյն, որ սուրբ կանոնք և յԱստուծոյ քահանայութիւն ընկալեալ գտանիցի։

**Բ.** Ամենեքին ով և մտանիցեն յեկեղեցի Աստուծոյ և
յետ ունկն դնելոյ սուրբ գրոց և ոչ ևս հաւասարեսցին առ.
ետեղ աղաւթից հասարակ ժողովրդեանն, և զդէմսն գար-
ձուցեալ ի սրբութենէն ընդունելութեան գովութեան ըստ
իրաց ինչ ստահակութեան և յանդգնութեան ընդ ոտն
հարկանիցեն և հեռանայցեն, զայնպիսիսն մերժել և
ընկենուլ արժան է ի սուրբ եկեղեցւոյ մինչև խոս-
տովան լիցին և ցուցին ամենայն աշխատանաւք և տա-
ռապանաւք զապաշխարութիւն իւրեանց, և աղաչեսցին
թերևս այսպէս արժանի լիցին ընդունելութեան իբրև ոչ
իցէ նոցա մարտ հաւասարել այնոցիկ որ ազատեալ են ի
կապանաց եկեղեցւոյ և որ ընդ եկեղեցեաւն իցեն և ոչ ի
տունս ուրէք զատ ընդ այնպիսիսն մարթ իցէ յաղաւթս
կալ որ մերժեալ իցեն յեկեղեցւոյն, և ոչ ի ժողով կամ
յիշխանութիւն այլոյ եկեղեցւոյ արժան է մերձեցուցանել
զայնպիսիսն, ապա թէ երևեսցի ոք կամ գտցի ոք յեպիսկո-
պոսաց կամ յերիցանց կամ ի սարկաւագաց, կամ ո ոք և
իցէ աշտիճանէն, և անհաւասարացն հաւասարեաց զայնպի-
սիսն ընդ նոսին արժան է մերժել և կապել զի պատճառք
եղեն պղտորման և զմիմեանս հարկանելոյ կանոնաց եկեղեցւոյ։

**Գ.** Եթէ երէց ոք կամ սարկաւագ, կամ ընաւ ոք
ի քահանայական կարգէ՝ լքանէ թողու զիւր իշխանութիւն
և զընակութիւն և այլ փոխեսցի, իբրև այն եթէ ամենայն
իրաւք հեռացաւ և բռնկեաց յայլում իշխանութեան կամեսս-
ցի այսպիսին բազում ժամանակս պաշտեսցի իշխեսցէ. թէ
առաւելապէս և ի կոչ եպիսկոպոսին իւրոյ և դառնալ իւր
իշխանութիւն հրտմայիցէ և աղաչիցէ, և ոչ ունկն դնիցէ,
և յամիցէ ևս ի ստահակութեանն, ամենայն իրաւք մերժել
և ընկենուլ արժան է զայնպիսին ի պաշտմանէն, իբրև ոչ
ևս մուտ իցէ ընդունելութեան ի նոյն զնա հաստատել. ա-
պա եթէ յետ մերժելոյն վասն այսպիսի իրաց՝ այլ եպիսկո-
պոս ընդունիցի և նա ի կշտամբութեան արժանի լիցի ի
միաբան ժողովոյն. իբրև այն թէ եղյծ և անգոսնեաց զգի-
րքս և զկարգս եկեղեցւոյ։

**Դ**. Եթէ ոք յեպիսկոպոսաց ի ժողովոց անտի որոշեցաւ. երէց կամ սարկաւագ իւրմէ եպիսկոպոսէն, և համարձակեցաւ գործել գործ ինչ պաշտաման կամ եպիսկոպոս ըստ կանխելոյ և յառաջ սովորութեանցն, կամ երէց կամ սարկաւագ, մի ևս մարթ կամ պատշաճ իցէ նոցին յոյս ունել բնաւին յայլմէ ժողովոյ հաստատել յայս իրս, և ոչ ապաշխարութեան կամ թողութեան հասանիլ, այլ և որք հաւասարեն այնպիսեացն զամենեսին մերժել արժան է յեկեղեցւոյ, առաւելապէս ևս թէ ուսեալ էին զպատուհասն որ յառաջագոյն ասացեալ էին և կշտամբեալ, և համարձակեցան յայսպիսեացս հաւասարել։

**Ե**. Երէց ոք կամ սարկաւագ, արհամարհեաց զիւրոյ եպիսկոպոսին զհրամանս իբրև մերժեալ էր զնոսա յեկեղեցւոյ և առանձին ժողովեցան կամ ժողովեսցին և սեղան հաստատեցին և ի կոչ եպիսկոպոսին ոչ եկին և ընդդէմ եղեն և անարգեցին, և ոչ կամեցան զքանս նորա յանձն առնուլ և լսել, իբրև մի անգամ և երկիցս կոչեաց, զայնպիսիսն բնաւին մերժել արժան է, և ոչ ևս մխիթարութեան ինչ հասուցանել, իբրև ոչ ևս կարող են զնոյն պատիւ ունել ամենևին։ Այլ եթէ յամիցեն ևս ի նմին իրս խռովութիւն առնել և ամբոխս յարուցանել յեկեղեցւոյ վերայ յարտաքին իշխանութենէ և զաւրութենէ ուստէք զայնպիսիսն իբրև զխռովարարս դարձուցանել և սանձաբէկ առնել արժան է։

**Զ**. Եթէ ոք յիւրմէ եպիսկոպոսէն յաղաւթից մերժեալ իցէ չէ արժան ումէք զայնպիսին ընդունել· բայց եթէ նախ յիւրմէ եպիսկոպոսէն ընդունիցի, բայց յորժամ ժողով լինիցի եպիսկոպոսաց և պատահիցէ և ապաշխարիցէ առաջի նոցա և ի հաւան ածցէ զժողովն կամ ընդունելութեան արժանի լիցի ի նոցանէ, կամ պատուհասի՝ նոյն սահման կրեսցի ի վերայ աշխարհականաց իւրեանց սարկաւագաց· և որք իցէ ընդ կանոնաւք։

**Է**. Մի զոք բնաւին առանց թղթոյ և խաղաղութեան յեպիսկոպոսէն յեպիսկոպոս ընդունիցեմք ամենևին։

**Ը**. Երիցունք որ ի գեօղս կամ որ ի քաղաքի իցեն, և

*մի իշխեսցեն ամենևին կանոնաւոր թուխտս տալ, բայց միայն առ եպիսկոպոսս մերձաւորս և ծանաւթս, որպէս ի սէր ապաստան համարձակեցին և տայցեն՝ այլ զոր աւծեալ քոր եպիսկոպոսք են նոքա իշխեսցին տալ։*

**Թ.** *Որ յիւրաքանչիւր իշխանութեան եպիսկոպոսք իցեն իմասցին զի մայրաքաղաքաց եպիսկոպոսն թիկունք է նոցա և հոգեբարձու, և ամենայն ոք զինչպիսի պիտի կամ և առնել առ նա ընթանայ, թէ մուրհակ արքունի. և իշխանաց վասըն իրաց եկեղեցւոյ և կարգաց հասարակաց վասն այսորիկ կամ եղև թէև պատուով յառաջաց իցէ և առանց նորա մի յիշխեսցէ ինչ գործել ըստ նախնեաց սովորութեան հարցն մերոց կարգեալ են կանոնք, բայց միայն զայս իշխեն գործել յիւրում իշխանութեան եթէ գեօղք եթէ գաւառք, եթէ աւծումն սարկաւագութեան և երիցութեան, կամ զինչ վարք իցեն իւրոյ գաւառին և իշխանութեան ամենայն ճշմարտութեամբ և հոգաբարձութեամբ և ընտրութեամբ խնամով գործեսցէ՝ այլ յայլոց ամենևին մի իշխեսցէ գործել և ձեռնամուխ լինիլ արտաքս քան զկամս մայրաքաղաքին եպիսկոպոսին, և ոչ նմին կաթուղիկոսին առանց այլոց եպիսկոպոսաց հաւասարութեան գործել ինչ։*

**Ժ.** *Որք ի գեօղս կամ ի գաւառս իցեն, այսինքն են քորեպիսկոպոսք. զի թէև զձեռնադրութիւն եպիսկոպոսաց ունին, կամ եղև մեծ ժողովոյն զի ծանիցեն զչափ իւրեանց, և դարմանեսցին որ ընդ նոքօք եկեղեցիքն իցեն, վասն նորին շատ և բաւական եղիցի հոգալ և խնամ ունել, այլ կարգեսցին և արասցին դպրակարգաց և կէս սարկաւագաց կշտամբիչս և սմին իրաց շատ լիցին առ ի մերձեցուցանել և յառաջ ածել յայսպիսի աշտիճան. այլ ոչ երէց կամ սարկաւագ աւծանել և համարձակել արտաքս քան զկամս եպիսկոպոսին ընդ որ ձեռամբ է ինքն և գաւառն. ապա եթէ համարձակեսցի ոք անցանել զորոշեալ սահմանաւ, անկցին ի նմին պատուէ յորում յառաջն էր. բայց քորեպիսկոպոս առնել կամ կարգել, որ քաղաքին եպիսկոպոսն է նմա անկէ առնել զոր արժանի համարեսցի։*

**ԺԱ.** Թէ ոք եպիսկոպոս կամ երէց կամ սարկաւագ, կամ ով իցէ ի կարգէն, արտաքս քան զկամս և կամ առանց թղթոյ որ գաւառին եպիսկոպոս իցէ, առաւել ևս որ մայրաքաղաքին իցէ դիմեսցէ առ թագաւոր զայնպիսին ցոյց արասցին և ընկեսցեն և մերժեսցին, ոչ միայն ի հաւասարութենէ, այլ և ի պատուոյն զոր ունէր, զի իբրև ձանձրացուցանել կամեցան զաստուածասէր թագաւորին մերոյ զլսելիս արտաքս քան զկարգս եկեղեցւոյ, ապա թէ հարկ ինչ իցէ և կոչ իրաց առ թագաւոր դիմել գործեսցի խորհրդովք և կամաւք ըստ իշխանութեան որ մօր քաղաքաց եպիսկոպոսն իցէ, և որ ի գաւառին եպիսկոպոսքն իցեն նոցին թղթովք թոշակեսցի որ ճանապարհ դիմեացն։

**ԺԲ.** Եթէ յիւրմէ եպիսկոպոսէն անկաւ երէց կամ սարկաւագ, և զեպիսկոպոսին զդատաստանն ոչ յանձին կալաւ և համարձակեցաւ ձանձրացուցանել զլուր ժողովոց բազմաց, որպէս թէ զինչ իրաւունս ունիցի առաջի բազում եպիսկոպոսաց ասիցէ և ի նոցանէ զարդար դատաստանի վճիռն ակըն ունիցի առնուլ ապա թէ ի նոցանէ սրտնեղեցաւ, և անգոսնեաց և համարձակեցաւ առ թագաւորն դիմել և ձանձրացուցանել, զայսպիսիս մի արժանի առնել թողութեան և կամ ընդունելութեան, և կամ բնաւ յայս ինչ տալ զի առ յապա հաստատեսցի ի նոյն տեղի։

**ԺԳ.** Մի ոք ուրէք եպիսկոպոսաց իշխեսցէ կամ համարձակեսցէ յայլմէ իշխանութենէ այլ մտանիլ և ձեռնադրութիւն առնել յեկեղեցիս և մերձեցուցանել զոք յաստիճան և ոչ բազմութեամբ մտանել յայլ իշխանութիւն, բայց եթէ համարձակելով և թուղթ տալով որ մայրաքաղաքացն է և որ ընդ նմա եպիսկոպոսին են մուտ տայցեն նմա ապա թէ ոչ ուրէք կոչեալ դիմեսցէ ստահակութեամբ ձեռնադրութիւն ումեք առնել և հաստատութիւն իրաց եկեղեցւոյ որ ոչ բնաւ իցէ նմա անկ անհաստատ լիցի որ ի նմանէ արարեալ գտանիցի. նա պարտաւոր լիցի ստահակութեան իւրում, և յանմիտ ձեռնադրութեան զարժան դատաստանն անկցի առ ետեղ. և մերժեսցի ի սուրբ ժողովոյն։

**ԺԴ.** Թէ ոք յեպիսկոպոսաց յիրս ինչ յանցուածոց և մեղադրութեան դատապարտեսցի, և ապա դէպ լիցի վասն նորա ոչ միաբանել ոյք իշխանութեան եպիսկոպոսք և ոմանք ի նոցանէ անպարտ և արդար յայտ առնել կամիցին, և ոմանք ի նոցանէ պարտաւորել զի վախճանեսցի ամենայն իրօք հակառակութիւն կեղծաւորութեանն, կամ եղև սուրբ ժողովոյն որ մայրաքաղաքաց եպիսկոպոսն է. զի մերձաւոր գաւառաց անտի և յիշխանութենէ կոչեսցէ զայլ ոմանս ոյք դատիցեն, և զհակառակութիւն կեղծաւորութեանն ի բաց լուծցեն զի հաստատուն է զոր ինչ կարգեսցին որ յիշխանութենէ անտի են։

**ԺԵ.** Թէ ոք յեպիսկոպոսաց յիրս ինչ մեղադրիցի յանցանս և չարախօսիցի, և դատապարտից յամենեցունց որ յիշխանութեան եպիսկոպոսք են և ամենայն միաբանութեամբ զմի և զնոյն վճիռ հանիցեն ի վերայ նորա և յայտնիցեն այսպիսին մի իշխեսցէ այլում դար խաւսել, կամ իբրաւ ոք իշխեսցէ առնել այնպիսւոյն այլ կացցէ և հաստատեսցէ միաբանութիւն ամենեւին որ եղև յայսմ իշխանութեան զոր եպիսկոպոսքն կարգեցին։

Եթէ ոք յեպիսկոպոսաց պարապորդ իցէ և ի պարապորդ եկեղեցին զանձն իւր ետ, և բռնադատեաց զսահմանն և կալաւ առանց բազմաց բազում ժողովոյ եպիսկոպոսաց զայնպիսին ընկենուլ արժան է. եթէ ուրուք ժողովուրդն զոր բռնադատեաց հաճեցան և ընկալան կատարեալ ևս ժողով լիցի իբրև չիցէ նա ընդ դէմ մաւր քաղաքաց եպիսկոպոսին։

**ԺԶ.** Թէ ոք յեպիսկոպոսաց ձեռնադրութիւն յեպիսկոպոսաց ընկալաւ և հրամանաւ վերակացու լինել ժողովրդեանըն, և ոչ յանձն էառ զպաշտաւնն և ոչ հաւանեցաւ երթալ յեկեղեցին որ ձեռնադրեցաւն, զայնպիսին մերժել արժան է յաղաւթից և մինչև հարկ լինիցի նմա յանձն առնուլ և ընդունիլ, կամ սահմանեսցէ ինչ ի վերայ նորա կատարեալ ժողովն որ իշխանութենէ անտի իցեն եպիսկոպոսքն։

Եթէ ոք եպիսկոպոսաց ձեռնադրեցաւ ի գաւառի ուրէք, և իշխանութիւն իւր չեղև դառնալ և չիցեն պատճառ ի նմանէ չերթալ այլ կամ ժողովուրդն չընկալաւ կամ այլ

պատճառս ծնանի իբրև ոչ ի նմանէ, այսպիսւոյն արժան է ընդունել զպատիւ պաշտամանն և ոչ հեռանալ, բայց մի ինչ նեղեսցէ զոք ուրէք յիրս եկեղեցւոյ և ժողովեսցի, այլ անսալ արժան է այսպիսւոյն մինչ իշխանութեան կատարեալ ժողով ժողովիցի իրաւունս առնել և ի վեր բառնալ զինչ արժանն իցէ, որոշել և սահմանել, կարգել վասն նորա։

**ԺԹ.** Եպիսկոպոս ոչ է արժան ձեռնադրել առանց ժողովոց եպիսկոպոսաց, և առաւել որ մայրաքաղաքաց եպիսկոպոսն իցէ յիշխանութենէ անտի, այլ սմա ամենայն իրօք պարտ պատշաճ իցէ անդ լինել, լաւագոյն ևս իցէ, զի ամենեքին որ նովաւ իցեն իշխանութեան լծակիցք ընդ նմա իցեն, զորս արժան է առ իւր կոչել թղթով որ մայրաքաղաքաց եպիսկոպոսն է, և եթէ եկեսցին ամենեքին. ահա բարի եղև. ապա թէ դժուարագոյն է այլ լինել, մեծ մասն ի նոցանէ գալ արժան է, կամ թխթով միահամար լինել, և այսպէս հանդերձ բազմօք գալով կամ հաւանելով զայնպիսին ի տեղւոջ իւրում որ տեղի աւծաւն. ապա թէ այլ ինչ որ արտաքոյ քան զսահմանեալն առնիցեն. և անյոյժ և անհաստատ լիցի ձեռնադրութիւն, ապա թէ ըստ որոշելոյ և ըստ սահմանելոյ կանոնացս լիցի հաստատութիւն, ընդդիմիցին ոմանք իբրև ի կամաց իւրեանց հակառակին, կացցէ և հաստատեսցի բազմաց ընտրութիւն ամենայն իմաստութեամբ և երկիւղածութեամբ։

**Ի.** Վասն եկեղեցւոյ իրաց թէ հակառակութիւն ինչ իցէ կեղծաւորութեամբ զի լուծցի և ի գլուխ եկեսցէ՝ լաւ համարեցաք զի ժողով լիցի եպիսկոպոսաց յիւրաքանչիւր իշխանութեան, երկիցս անգամ, յամին, Ա. յերկրորդ շաբաթու տօնից զատկին, իբրև կատարեսցի ի չորրորդումն շաբաթու պենդակոստէին. ժողովին առ ի յիշատակ ժողովոյն զիրս իշխանութեան, և զերկրորդ անգամ ժողով լինել յեւս հոկտեմբերի որ է, Ժ. երրորդ ի հոււի ամսոյ, զիրացն յայս ժողովս հպեսցին և մերձեսցին երիցունք եթէ սարկաւագունք. և ամենայն ոք իբրև զըպարտեալ և վնասեալ համարիցին զանձինս իւրեանց և ի ժողովոյ անտի իրաւ՝ և աւգ-

նականութիւն ընկալցին. այլ զի պատշաճ լիցի ոմանց ժողովս ժողովել առանց կամաց և հաւանութեան որ իցէ մաւր քաղաքաց եպիսկոպոսն։

**ԻԱ.** Եպիսկոպոսի յայլմէ իշխանութենէ յայլ փոխել չէ մարթ և կամակարութեամբ դիմել ի տեղիս ուրեք բայց ի պէտս յայսպիսիս, կամ ի բռնութենէ կամ ի հարկէ ժողովրդեանն կամ եպիսկոպոսաց, այլ կալ և դադարել արժան է յոր եկեղեցի ի սկզբանէ յԱստուծոյ ուխտեցաւ և օծաւ, և ոչ ևս փոփոխել կամ կամակարել ուրեք յեկեղեցւոյն իւրմէ որպէս յառաջագոյն իսկ վասն յայսպիսեացս սահման կարգեցաւ։

**ԻԲ.** Եպիսկոպոսի չէ արժան զոք փոխանակ իւր կացուցանել եթէ մերժեալ ևս իցէ ի մահ, ապա թէ այսպիսի ինչ լիցի, անհաստատ լիցի հաստատութիւն այնպիսւոյն, այլ պահել արժան է զդիրս եկեղեցւոյ իբրև ոչ եպիսկոպոս մարթ իցէ առնել. բայց եթէ հանդերձ այլովք եպիսկոպոսօք և նոցին ընտրութեամբ յետ հանգստեան եպիսկոպոսին. որպէս ունիցի իշխանութիւն. ո՛ և արժան իցէ իրացն զայնպիսին մերձեցուցանել։

**ԻԳ.** Զեկեղեցւոյ ինչս եկեղեցւոյ արժան է պահել ամենայն փութութեամբ այց առնելով բարւօք հաւատովք ի յԱստուծոյ որ այցելունէ ամենայնի և վրեժխնդիր և դատաւոր՝ բաշխել արժան է կամօք և իշխանութեամբ եպիսկոպոսին ում և զժողովուրդն յանձն արարեալ է և հաւատացեալ է, և զանձինս ժողովրդեանն յայտ արժան է լինել որ յանկ ինչ իցէ եկեղեցւոյն, հանդերձ կամօք յերիցանց և սարկաւագաց, զի նոքին գիտակից են, և մի անգէտ զինչ ոք ուստէք եկեղեցւոյն ընիկ և սեպհական է զի մի ինչ թագիցէ ի սոցանէ, զի թէ դէպ լիցի եպիսկոպոսին փոխել յաշխարհէ աստի, յայտ իցեն ինչք եկեղեցւոյն, և ոչ սուզանիցեն և կորնչին և անհետ լիցին, զի մի և որ սեպհական և ուրոյն է եպիսկոպոսի այն գխլեսցի ի պատճառս եկեղեցւոյ ընչիցն զի արդար և հաճոյ է Աստուծոյ և մարդկան և որ ինչ իւր իցէ եպիսկոպոսին, իշխան է թողուլ ում

և կամեսցի և մի եպիսկոպոսն ի պատճառն եկեղեցւոյն ի հրապարակս և ի դատաստանս անկանիցի վասն ընչից որ նմա անկ էր, զի մի յետ մահուանն դսրովեսցի և հայհոյեսցի։

**ԻԴ.** Եպիսկոպոսի իշխանութիւն ունել արժան է ի վերայ ընչից եկեղեցւոյն, զի բաշխեսցէ կարաւտելոց ամենայն հեզութեամբ և երկիւղածութեամբ Աստուծոյ, իբրև վայելեսցէ ինքն ըստ արժանի թէ պիտոյ ես իցէ ի կարևոր պէտըս իւր, և որ ընդ նովաւ կարաւտեցին, իշխան լիցի առ ի կարաւտութիւն եղբարց և հանդիստ զի ամենայնիւ մի ինչ կարաւտեալից են ըստ աստուածեղէն առաքելոյն որ ասէ՝ ունիմք կերակուր և հանդերձ, ի նմին բաւական լիցուք. ապա թէ ոչ այս շատ լիցի և փոփոխիցէ զիրս և վատնիցէ ի պէտս իւր և տան իւրոյ և զշնորհս եկեղեցւոյ և զպտուղ գիւղից ոչ կամաւք երիցանց և սարկաւագաց ձեռնամուխ առնէ, զօ և կամի, այլ և ընտանեաց և ազգականաց և եղբարց և որդւոց տացէ զիշխանութիւնս իբրև սոքաւք ինչ հնարիցի ի ծածուկ վատնել այլոց ընտանեաց զեկեղեցւոյն այսպիսին դատ տայցէ և իրաւ ժողովուցն իշխանութեան այնորիկ, ապա թէ այլ ես ինչ չարախաւսեսցի եպիսկոպոսն հանդերձ երիցամբքն որ ընդ նմա են, իբրև այն թէ եկեղեցոյն անկանիցէ, կամ ի գիւղից կամ յայլմէ պատճառանաց եկեղեցեաց յանձինս իւրեանց ժողովիցեն և ագահիցեն, և աղքատք նեղեսցին և չարախօսութիւն և հայհոյութիւն ածցեն ի վերայ բանին դնելոյ, և այսպիսի ինչ վարիցեն կամ վարեսցին. զայսպիսին ուղղել արժան է ըստ իրաւին, զաւրէնն ընտրեսցէ ժողով եպիսկոպոսաց։

**ԻԵ.** Եւսիբիոս, և ամենայնի որ սահմանեցաւ և որոշեցաւ իբրև անդ էի և յանձին կալա։ Ես Թէւոդոս և ամենայնի զինչ և սահմանեցաւ հաճեցայ և յանձին կալայ։

---

## Զ. ԼԱՒՈԴԻԿԻԱՅԻ ԺՈՂՈՎԻ ԿԱՆՈՆՆԵՐԻ ԳՐԱԲԱՌԸ.

**Ա.** Զի ոչ է մարթ ըստ եկեղեցւոյ կանոնաց, ոյք ազատութեամբ և աւրինօք բնակեցան ի միասին, և զերկրորդ հարսանիսն մի գաղտ արասցեն բայց իբրև փոքր ինչ ժամանակ անցեալ իցէ՝ և պատրաստեցին աղաւթից և պահոց, ապա թողացուցանել նոցա և համարձակել սահմանեցաք։

**Բ.** Ոյք մեղան և անցեան ի պէս պէս ինչ յանցանս և համբերեցին աղաւթից, և խոստովանութեամբ և ապաշխարութեամբ ամենայն իրօք դարձան և հեռացան ի չարէն, ըստ չափոյ յանցանաց ժամանակ տացին ապաշխարութեան, և յետ այսորիկ գթութեանց և բարերարութեանց Աստուծոյ խառնեսցին ի հաւասարութիւն աւրինացն։

**Գ.** Չէ մարթ որ առետեղ մկրտեալ է մերձեցուցանել աշտիճան քահանայութեան։

**Դ.** Ոչ է պարտ ձեռնադրութիւնս առաջի ունկնդրողաց։

**Ե.** Ոչ է արժան քահանայի փոխ տալ և վաշխ և տոկոսիս պահանջել, և ոչ բնաւ փոքր ինչ զտոկոսեացն մաս առնուլ։

**Զ.** Չէ արժան այլ ազգւոյն և հերձուածողին ի յամելն իւրում յայսպիսի իրս, ի տաճարն Աստուծոյ մտանել։

**Է.** Վասն այնոցիկ որ ի հերձուածողաց իցեն, այսինքն որ ասեն, Նաւատացիք, կամ չորեքտասան երորդեալք ի դառնալն իւրեանց մի յերախայս, մի ի հաւատացեալս մի ընդունիցիք յառաջ մինչչև նզովեալ և ուրացեալ զամենայն հերձուածաւղս առաւել զոր գիտէինն և ուսեալն էին յետ այսորիկ որք կոչին հաւատացեալք, ուսցին զհաւատոյս մերոյ զխորհուրդ և աւծցին զաւծումն սրբութեան և հաւասարեսցին աւրինացն։

**Ը.** Վասն այնոցիկ որք են ի Հերձուածոյն Փռիւգացւոց ի դառնալն իւրեանց Թէ յուխտէն իւրեանց իցին մեծամեծաց այսպիսիքս ամենայն փութով ուսցեն նախ՝ և ապա մկրտիցեն յեկեղեցւոյ մերոյ յեպիսկոպոսաց և երիցանց։

**Թ.** Թէ չէ մարթ համարձակել երթալ ի հանդիստ և ի դիրս երկաբնակս կամ որ ասեն մատրունք ամենայն այլ ազգեաց առ ի պետս ինչ աղաւթից կամ մխիթարութեան՝ այլ զայսպիսիսն Թէ ի մերոց հաւատոց են մերժել արժան է և կապել յեկեղեցւոյ մինչև ապաշխարել և խոստովանել զյանցանսն և ապա խառնեսցի։

**Ժ.** Չէ մարթ ոյք յեկեղեցւոյ մերոյ են ի պէսպէս և ի ցոփ հարսանիս այլազգեաց մերձեցուցանել զուստրս և զդստերս, կին տալ նոցա կամ կին առնուլ ի նոցանէ։

**ԺԱ.** Ոչ է մարթ ոյք կոչին ծերք և պառաւունք առաջի եկեղեցւոյ նստել որպէս ի հրապարակի, կամ բնաւին կնոջ մարդոյ։

**ԺԲ.** Վասն եպիսկոպոսաց զի կամօք և ընտրութեամբ որ մօր քաղաքին եպիսկոպոսն է՝ և որ շուրջ զնովաւ եպիսկոպոսքն այսպէս հաստատեսցին զոք յաստիճան քահանայութեան իբրև իցեն, որք հաստատեցինն վարժք և փորձք ի գիտութեան բանին ի հաւատս և ի վարս։

**ԺԳ.** Չէ պարտ և պատշաճ համարձակել բազմութեան աշխարհական ընտրութիւնս առնել որ առ ապա մերձեցուցանելոցն են ի քահանայութիւն։

**ԺԴ.** Զի մի ևս մարթ իցէ զսրբութիւն իբրև ի պետս աւրհնութեան ի տաւնն զատկի և այլ իշխանութիւն տալ։

**ԺԵ.** Ոչ է պարտ աւելի զոմանս արտաքս քան զկանոնեալ սաղմոսողսն ի բեմ հանել և ի բեմի գրովք սաղմոս ասել յեկեղեցւոջ։

**ԺԶ.** Զի աւետարան հանդերձ այլովք գրովք արժան է կարդալ շաբաթ աւր։

**ԺԷ.** Չէ մարթ և պատշաճ միահամուռ զմիմեանց զհետ ի ժողովուրդս սաղմոս միայն ասել, այլ զհետ միոյ միոյ սաղմոսի կարդացումն առնել գրոց։

**ԺԸ.** Զի նոյն ինքն է զպաշտաւն աղաւթիցն յամենայն ժամ և յերեկորին արժան է կատարել յեկեղեցիս։

**ԺԹ.** Արժան է ուրոյն յետ թարգմանութեան առնելոյ եպիսկոպոսացն, նախ յերախայից վերա յաղաւթս առնել և յետ սոցա ի ձեռն խոնարհելոյն զաւրհնութիւն ընդունելոյ, և արտաքս գնալոյ և այսպէս ի վերայ հաւատացելոց զաղօթսն առնել երկիցս, զմին լռութեամբ, և զերկրորդն և զերրորդն քարոզութեամբ կատարել ապա այսպէս զողջոյնն տալ, երիցունք եպիսկոպոսաց. ապա աշխարհականք միմեանց, և ապա պատարագն կատարեսցի, իբրև միայն քահանայիցն արժան է, և որ յատեանին ոչ թէ կէս սարկաւագաց, թէ սաղմոսողոգ ի բեմ ելանել և ի սեղանոյ աւրէնս առնուլ։

**Ի.** Զէ մարթ սարկաւագաց առաջի երիցանց նստել առանց հրամանի, այլ հրամանաւ նոյնպէս և սարկաւագի ունել պատիւ այլոց նոր յուխտին են։

**ԻԱ.** Չէ մարթ կէս սարկաւագաց հպել և մերձենալ ի սպաս որ մի անգամ ի սարկաւագանոցի կայ առ սրբել և պատրաստել զկահն՝ որով պատարագն մատչիցի։

**ԻԲ.** Չէ մարթ կէս սարկաւագին կտաւ զուսովք արկանել և ի դուռն պահելոյ հեռանալ ընաւին և ոչ ի պատճառս աղաւթից։

**ԻԳ.** Չէ պարտ գրակարդացի կամ սաղմոս ողոգողի կըտաւ զուսովք արկանել և այնպէս կարդալ կամ սաղմոս ասել։

**ԻԴ.** Չէ արժան ի քահանայից յաշտիճանին են յերիցուէ մինչև ի գրակարդացն, առ ի կրպակս մտանել և շռայլել, կամ ի վաճառի ի խոհակերոց մտանել և ճաշակել։

**ԻԵ.** Չէ արժան կէս սարկաւագի կամ գրակարդացի հաց տալ և բաժակ աւրհնել։

**ԻԶ.** Չէ պարտ կշտամբել կամ երդմնեցուցանել որ ոչ եպիսկոպոսաց համարձակութիւն ունին կամ յաշտիճան ինչ, ոչ յեկեղեցւոջ և ոչ ի տուն չեն իշխան կշտամբել։

**ԻԷ.** Չէ պարտ քահանայից կամ ուխտաւորաց կամ աշխարհականաց յորժամ յագապս երթան ընձեռիս բառնալ և

տանել ի տունս իւրեանց, զի Թշնամանս ածցեն եկեղեցւոյն։

**ԻԸ.** Չէ պարտ յեկեղեցւոջ ագապս առնել և բազմական առնել ի տաճարին Աստուծոյ. ճաշ ուտել և խրախոյս առնել։

**ԻԹ.** Չէ արժան քրիստոնէից զհրէից վարս ունել և բանդագուշել, ի դատարկացուցանել զօր զշաբաթուն, այլ գործել արժան է. բայց զօր կիրակէին պատուել արժան է և հանգչել որպէս քրիստոնեայք՝ ապա թէ գտցի ոք հրէաբար՝ նզովեալ լիցի։

**Լ.** Ոչ է մարթ ուխտաւորաց և վանականաց կամ բնաւին քրիստոնեայք և եթէ աշխարհական ոք, և եթէ այլ ոք ընդ կանայս լուղել, և լուանալ, զի նախ այսիւ մեղադրին զմեզ հեթանոսք։

**ԼԱ.** Չէ արժան առ ամենայն այլազգիս խնամութիւն առնել կամ առ հերձուածօղս, բայց եթէ յանձն առնուցուն հաւատալ ի սուրբ կաթուղիկէ եկեղեցի։

**ԼԲ.** Չէ մարթ յայլ ազգաց աւրհնութիւն առնուլ. զի չէ աւրհնութիւն այլ անմտութիւն և բարկութիւն։

**ԼԳ.** Չէ մարթ ընդ այլ ազգիս կամ ընդ հերձուածողս յաղաւթս կալ.

**ԼԴ.** Չէ մարթ քրիստոնէի թողուլ զմարտիրոսս Քրիստոսի, և երթալ առ սուտ մարտիրոսս այլազգեաց որ ստարացեալ են յԱստուծոյ՝ և որ այնպիսիսն մերձեսցին նզովեալ լիցին։

**ԼԵ.** Չէ արժան քրիստոնէից թողուլ զեկեղեցի Աստուծոյ և երթալ ի տեղիս ուրեք և զհրեշտակս անուանել և ժողովս առնել և գաղտնիս կուռս պաշտել զի գտցի ոք այսպիսի նզովեալ լիցի, զի եթող զՔրիստոս Որդի Աստուծոյ, և յայսպիսի իրս համարձակեցաւ։

**ԼԶ.** Ոչ է պարտ քահանայից և ուխտաւորաց մոգս և թովիչս, և դիւթս, և վհուկս լինել և առնել, կամ հմայեալըս և պահպանակս որ ճշմարտութեամբ չեն պահապանք, այլ կապանք հոգոց նոցին, և որ այսպիսի ինչ գտցեն յանձին ունել յարտաքս քան զեկեղեցի ընկեսցին։

**ԼԷ.** Ոչ է արժան հրէից՝ կամ այլ ազգաց զտաւնական սլատարագս նոցա կամ զնուէրս ընդունել զի մի գտցուք հաւասարորդք տաւնից նոցա և մեղաց։

**ԼԸ.** Չէ արժան ի տունս հեթանոսաց հաւասարել, որ տաւնս Աստուծոյ են։

**ԼԹ.** Չէ արժան եպիսկոպոսաց յորժամ կոչին ի ժողով ուրեք, կամ ի ժողովուրդ, արհամարհել բայց եթէ տկարք իցեն և հիւանդոտք, այլ երթալ և ուսուցանել, կամ ուսանել առ ի հաստատութիւն և ի հաւատս եկեղեցւոյ, ապա եթէ արհամարհեսցին և անձանց մեղ դիցին և կամաց։

**Խ.** Չէ մարթ քահանայի կամ ուխտաւորաց առանց հրամանի եպիսկոպոսի ճանապարհ ուրեք երթալ։

**ԽԱ.** Ոչ է արժան զլոկ կանայս ի բեմ հանել, բայց զնորակնիք, յաւուր տաւնի մերձ առ ի բեմն կացուցանել։

**ԽԲ.** Չէ արժան յետ երկուց շաբաթից աղուհացիցն ի մկրտութիւն զոք ընդունել առանց ուսուցանելոյ։

**ԽԳ.** Արժան է ոյք մկրտին նախ զհաւատն ուսանել և յաւուր հինգշաբթուն օր համար տալ եպիսկոպոսաց կամ քահանայից։

**ԽԴ.** Արժան է ոք ի հիւանդութեան ընկալան զմկրտութիւն (աւծանել, աւծմամբ երկնաւորաւ զի արժանաւորք լիցին երկնից արքայութեանն) յորժամ առնիցեն ուսանել զի գիտասցին թէ յորում շնորհաց և պատուի եղեն արժանի։

**ԽԵ.** Արժան է որ մկրտին յետ մկրտութեան աւծանել, աւծմամբ երկնաւորաւ զի արժանաւորք լիցին երկնից արքայութեանն։

**ԽԶ.** Չէ պատշաճ ի քառասնորդսն հաց մատուցանել բայց եթէ շաբաթու և կիրակէի։

**ԽԷ.** Չէ արժան ի քառասնորդսն յաւուր շաբաթուն հինգշաբթի աւր բերան լուծանել, զի ամենայն պահք քառասնորդացն անարգեսցին, այլ արժան է զամենայն քառասնորդսն պահել և լոկ աշտուճ հացին մխիթարել զանձինս։

**ԽԸ.** Չէ մարթ և պատշաճ ի քառասնորդսն զմարտիրոսացն ծնունդս և տօնս առնել այլ զաւուրբ մարտիրոսացըն զյիշատակ կատարել զշաբաթու և կիրակէի։

**ԽԹ.** Ոչ է արժան հարսանիս, կամ ի ծնունդս ուրուք տաւնս առնել։

**Ծ.** Չէ մարթ քրիստոնէից ի հարսանիս երթալ և կաքաւել, կամ ի պարու գալ. այլ պարկեշտութեամբ ընթրիս ուտել և ճաշակել որպէս և վայել է քրիստոնէից։

**ԾԱ.** Չէ մարթ քահանայից և ուխտաւորաց խաղս ինչ տեսնել կամ երգս ի հարսանիս, կամ յընթրիս, այլ մինչչև մտեալ վարձկաց և կատակաց՝ այլ հաց ուտել և գնալ ի տունս իւրեանց։

**ԾԲ.** Չէ արժան քահանայից և ուխտաւորաց հանգանակաւ կոչունս առնել կամ գինարբուս, այլ և ոչ աշխարհականաց։

**ԾԳ.** Չէ մարթ երիցանց մինչև եպիսկոպոսին մտեալ և նստեալ ի բեմի բայց ընդ եպիսկոպոսին արժան է մտանել, ապա թէ դժուար ոտ իցէ եպիսկոպոսն, համարձակեալ լիցի երիցանցն մտանել նստել։

**ԾԴ.** Չէ արժան ի տունս պատարագ մատուցանել եպիսկոպոսի կամ երիցու։

**ԾԵ.** Իբրև չէ մարթ իմաստութեան ուրուք երգել սաղմոս պաշտել յեկեղեցւոջ բայց եթէ ի գրոց սրբոց իցէ կամ որք կանոնեալքն են յեկեղեցւոյ թէ սաղմոսք թէ աւրհնութիւնք. այնպէս չէ պարտ կարդալ յեկեղեցւոջ, բայց եթէ որ կանոնեալքն են, այսինքն է, զնոր յաւրէնս, և զհին կտակարանս. զինչ արժան է կարդալ, են այսոքիկ զԱրարածըս, զԵլս, զՂևտացիս, զԹիւս, զԵրկրորդ աւրէնս, զՅեսու, զԴատաւորսն, զՀռութս, զԹագաւորութիւնս Դ., զՄնացորդացն Բ., զՅեզր. Բ., զՍաղմոսն—Դաւթի ՃԾ., զՍաղոմովնի Գ. զԱռակսն, զԵղեսի Աստիսն, զԵրգս Երգոցն, զՅովբ, զԺԲ. Մարգարէսն, Ովսէէ, Ամովս, Միքէէ, Յովել, Աբդիու, Յունան, Նաւում, Ամբակում, Սովփոնիայ, Անգեայ, Զաքարիայ, Եսայի, Երեմիա, Եզեկիէլ, Դանիէլ, Մակաբայեցիք, Նորոց Կտակարանաց Դ. Աւետարանք. Մատթէոս, Մարկոս, Ղուկաս, Յովհաննէս, Գործք Առաքելոց, Կաթուղիկէք, Թուղթք Է., Ա., Յակովբա, Բ. Պետրոսի, Գ. Յովհաննու,

Ա. Յուդայի։ Պօղոսի Թուղթք Ա. Հռոմայեցիս Բ. առ Կորընթացիս Ա. առ Գաղատացիս Ա. առ Եփեսացիս Ա. Փիլիպեցիս մի առ Կողոսացիս Բ. առ Տիմոթէոս Ա. առ Տիտոս Ա. առ Փիղիմովն։ Այս սահմանք եղան որք ի միասին ժողովեալ եպիսկոպոսք, ՆԼԷ։

---

## Է. ՍԱՐԴԻԿԻԱՅԻ ԿԱՆՈՆՆԵՐԻ ԳՐԱԲԱՌԸ.

**Ա.** Ոսիոս եպիսկոպոս ասաց, ոչ է այս քան յետին սովորութիւն որ քան վնասակար արդեանցն զանազանութիւն ի յինքեանց ի հիմանց արմատաքի խլել, զի մի ումեք իշխանութիւն եղիցի ի փոքր քաղաքէ յայլ փոխել վասն զի իրացս այսոցիկ պատճառք յայտնի են, վասն էր այսոքիկ ձեռն արկին, քանզի ոչ ուրէք եպիսկոպոսս գտանել կարացի որ ի մեծ քաղաքէ ի նուաստագոյնն փոխեցաւ՝ աստի յայտ է ջերմեռանդն ագահութեան տոչորեալ, այսպիսեացս և մանաւանդ ամբարհաւաճութեան ծառայեալ որպէս զիշխանութիւն մեծագոյն կարծել ստանալ։ Արդ եթէ ամենեցուն այս հաճոյ է որպիսի ունայնութիւն խստութեամբ վրէժխնդիր լինել, քանզի կարծեմ եթէ աշխարհականաց պիտոյ է ուսանիլ այսպիսեաց հաղորդութիւն։ Ամեն եպիսկոպոսքն ասացին եթէ այս հաճոյ է ամենեցուն։

**Բ.** Ոսիոս եպիսկոպոս ասաց, ապա թէ ոք այնպիսի գտցի մոլեգնեալ կամ յանդուգն, որպէս ոմանց այսպիսեաց կարծեալ բերել իմն յաղաչանս հաստատելով զինքն ի բազմութենէն թուղթ ի մէջ բերեալ՝ յայտ է թէ սակաւ զոմանս կարաց վարձու գնովք ապականել. այս եկեղեցւոյ ընդդիմակաց լինել, որպէս աղաչելով իմն զնա ունել եպիսկոպոս։ Արդ ընաւին զայնպիսիսն խորամանկագործութիւնս և արուեստիս տանջելիս կարծեմ լինել որպէս զի մի զոք զայս-

պխսխս և ոչ ի վախճանին գէթ ընդ աշխարհականին արժանի լինել հաղորդութեան։ Արդ եթէ հաճոյ են կամք, պատասխանի տուք, պատասխանի ետուն ասացեալք հաճոյ թուեցան։

**Գ.** Ոսիոս եպիսկոպոս ասաց, եթէ զայս ևս յաւելուլ կարևոր է, զի մի ոք եպիսկոպոս յիւրմէն գաւառէն իշխեսցէ յայլ գաւառ յորում են եպիսկոպոսքն երթալ. բայց եթէ իւր եղբարց կոչեսցի զի մի կարծեսցուք զսիրոյն փակել ըզդըրունս, սոյնպէս և այսմ խնամարկելի է, զի եթէ ոք ուրէք ի գաւառի եպիսկոպոսք յայտնապէս եղբօր եպիսկոպոսակցի իւրում իրս ունիցի, մի ոք ի նոցանէ յայլ գաւառէ եպիսկոպոս յիրս ի մէջ կարծեսցի դատապարտեալ և գիտէ թէ ոչ անիրաւ իրս ունի զի և դարձեալ նորոգեսցի դատաստան, եթէ թուի ձերում սիրոյդ զՊետրոսի առաքելոյն զյիշատակն պատուեսցուք և գրել ի նոցանէ որք դատն արարին Յուղիոս եպիսկոպոսի Հռովմայ՝ զի որք մաւտագոյն ի գաւառին եպիսկոպոսք թէ ընաւ պիտոյ են որպէս դատաւոր ստանալ, ասա յայտ ոչ կարասցէ առնել, վասն այսպիսի էիր նորա զի և դարձեալ դատ պարտի տալ որ մի անգամ դատեցան մի լուծանել, բայց որ էին հաստատուն կացցէ։

**Դ.** Գաւդենտիոս եպիսկոպոսաց. եթէ կարևոր հաճոյ է, յաւելուլ զայս վճիռ զոր անարատ սիրով լի արտաբերեցեր զի թէ ոք յեպիսկոպոսաց ի կարգէ եպիսկոպոսութեան ի բաց անկցի դատավճիռ այնոցիկ եպիսկոպոսաց որ դըրացիք, և ասասցէ միւս անգամ իւրում պատասխանատուութեան իրս պարտ է ի ներքս բերել, մի ոք իշխեսցէ յաթոռ նորա կարգաւորել զայլ ոք, մինչ ոչ Հռովմայ եպիսկոպոսն գիտասցէ վասն այսորիկ վճիռ գրով յառաջ բերցէ։

**Ե.** Ոսիոս եպիսկոպոս ասաց, հաճոյ թուեցաւ զի եթէ ոք եպիսկոպոս ամբաստանեսցի և ժողովեալ եպիսկոպոսունք նոցին գաւառին յիւրմէ աշտիճանէն շարժեսցեն զնա, և որպէս ի բաց կալով նոցա ի դատաստանէն, ապաւինեսցի առ երանելի հռովմայ եպիսկոպոսս, և կամեսցի լսել զնոր դատաստանն, և իրաւացի կարծեսցէ նորոգել զնոր իրաց

Հարց և քննի, գրել արժանի արասցէ առ եպիսկոպոս այնո-
սիկ որ մօտ են յայն գաւառ, զի նոքա զգուշութեամբ և
հեզութեամբ մի ըստ միոջէ քննեսցին, և ըստ ճշմարտու-
թեան հաւատոց զատավճիռ ի վերայ իրացն արտաքս ածցեն,
ապա եթէ ոք դարձեալ աղաչեսցէ և միւս անգամ զիրն իւր
լսելի առնել և իւրոյ խնդրուածին զհաովմայ եպիսկոպոսն
շարժել յիւրմէ կողմանէ զերիցունս առաքեսցէ զիշխանու-
թեան եպիսկոպոսութեան իւրոյ զոր բարւոք գոլ փորձեսցէ
սահմանեսցէ՝ եթէ պարտ է առաքել որ ընդ եպիսկոպոսացն
դատն ասիցէ ունելով զիշխանութիւն նորա վասն որոյ ա-
ռաքեցանն և այս խնդրելի է։ Ապա թէ բովանդակ կարծի-
ցէ առ ի յիրեն գիտութիւն, և սահմանադրութիւն զեպիս-
կոպոսն արասցէ՝ զոր ինչ նորա իմաստնազօր խորհրդոցն
բարւոք թուեսցի։ Պատասխանի ետուն եպիսկոպոսքն ասա-
ցեալքդ հաճոյ թուեցաւ։

**Զ.** Եթէ դէպ լինիցի միում գաւառի յորում բազում
եպիսկոպոսունք են, միում եպիսկոպոսին մնալ, և նա յիմեքէ
ծուլութենէ ոչ կամիցի գնալ և հաւանակիցք լինել կարգա-
ւորութեան եպիսկոպոսացն։ Իսկ եպիսկոպոսունքն ժողո-
վեալ աղաչեսցին լինել կարգաւորութեան զոր նոքա են
խնդրեն եպիսկոպոս որ մնացն յիշումն առնել ի ձեռն թըղ-
թոյ հայրապետին, այսինքն մայրաքաղաքի եպիսկոպոսին,
և աղաչեն բազմութիւնքն հովիւ տալ նոցա, և ինձ այսպէս
թուի թէ բարւոք ասեն և սմա մնալ զի եկեսցէ ապա թէ
ի ձեռն թղթոյ աղաչեցեալ կոչեսցէ՝ և ոչ թղթով պատաս-
խանի արասցէ, պիտոյ է զկամս բազմութեան առնել։
Այլ պարտ է կոչել և որք մօտաւորն են ի գաւառին ե-
պիսկոպոսք առ ի ձեռնադրութիւն մայրաքաղաքի եպիսկո-
պոսին, և ոչ է պարտ վայրապար կարգաւորել եպիսկոպոս
ի գեօղս ուրեք կամի դուզնաքեա քաղաքի ուրումն, որոյ և
մի երէց բաւական է, քան զի ոչ է անդ կարևոր եպիսկոպոսի
կարգել զի մի արհամարհեսցի եպիսկոպոսին անուն և իշ-
խանութիւն, այլ գաւառի եպիսկոպոսք որպէս յառաջագոյն
ասացի յայնպիսի քաղաք պարտ են կարգել եպիսկոպոսքն
ուր և առնէին եպիսկոպոսք։ Ապա թէ գտցի այնպէս բազ-

մուԹեան Թուովք ժողովուրդք և քաղաքք զի արժան է նմա եպիսկոպոս ընդունել առցէ Թէ ամենեցուն հաճոյ Թուի այս։ Պատասխանեցին ամենեքեանք հաճոյ է։

**Է.** Ոսիոս եպիսկոպոսն ասաց, մեր ունայնուԹիւնս և բազմագաւումն և աշխարհական բաջաղանք արարին ունել մեզ այսքան համարձակուԹիւն և շնորհս որքան պարտ եմք ստանալ, քանզի բազում յեպիսկոպոսաց ոչ պակասին ի բանակս երԹալով և մանաւանդ ափրկացիք, որք որպէս տեղեկացաք ի սիրելւոյ եղբօրակցին մերմէ և պաշտաւնակցին եպիսկոպոսակցին Գրատայ, զփրկչական խորհուրդն ոչ ունին, այլ այնպէս արհամարհին որպէս զմի մարդ ի բանակին բազում և պէս պէս և որ ոչ կարին աւգուտ առնել եկեղեցւոյ պաղատանս տանել. և ոչ որպէս պարտ և պատշաճ լինել աղքատաց և աշխարհականաց պատիւս և գործակալուԹիւնս ոմանց հնարել. արդ՝ այս ունայնուԹիւնս զգումարումն ոչ առանց գայԹակղուԹեան ուրուք մեզ և բամբասանաց առիԹ լինի։ Արդ՝ վայելչական համարեցայ եպիսկոպոսի զիւր աւգնականուԹիւն տալ նմա որ ոք յումեքէ բռնաւորեսցի, կամ այրեաց զրադատեսցի, կամ դարձեալ եԹէ ոք որ զրկեսցի իւր կենաց, Թէ բնաւ այս անուանք իրաւացի ունին զաղաչանս։ Արդ սիրելի եղբարք. եԹէ ամենեցուն այս հաճոյ Թուի դատ արարէք, զի ոչ ումէք եպիսկոպոսի պարտ էր ի պաղատանն երԹալ. բաց ի նոցանէ զոր բարեպաշտ Թագաւորն մեր ի ձեռն հրամանաց իւրոց կոչեսցէ։ Եւ քանզի բազում անգամ դէպ լինի ոմանց անպարտ տեղի վանսն ապաւինել յեկեղեցի վասն իրացն յանցանաց, կամ անխտիր դատապարտեալ պահեսցի և կամ այլ ինչ իւիք դատավճռաւ անսալով զայսպիսեացն ոչ ուրանալ, և լինել յաւգնականուԹիւն, այլ առանց ծուլուԹեան առանց երկիւղի պարտ է այսպիսեայ խնդրել ԹողուԹիւն, արդ եԹէ այս հաճոյ Թուի, դատավճռակից լերուք։ Պատասխանի ետուն ամենեքեան սահմանեսցի և այս։

**Ը.** Ոսիոս եպիսկոպոս ասաց, և զայս ձեր իմաստդ դատեսցէ քանզի Թուեցաւ մեզ զի մի ընդ բամբասանաւք անկ-

ցի եպիսկոպոս ոք երթալով ի պաղատն թէ ոք ի նոցանէ այսպիսի ունիցի ի պաղատանս որպիսի վերագոյն յիշեցաք ի ձեռն իւրոյ սարկաւագի առաքեսցին, քանզի սպասաւորին պատկեր ոչ է նախանձելի, և որ լինելոցն է վաղագոյն պատուճել կարասցէ։ Ամենեքին պատասխանի ետուն սահմանեսցի այս։

**Թ**. Ոսիոս եպիսկոպոս ասաց, կարծեմ, թէ այս իրաւացի է զի թէ յոր և իցէ գաւառ եպիսկոպոս առ եղբայր իւր և եպիսկոպոսակից առաքեսցէ պաղատանս և մեծագոյն քաղաքին, այսինքն մայրաքաղաքին, նա և զսարկաւագ իւր և զաղաչանս առաքեսցէ տալով նըմա վկայութեան թուղթս ըստ կարգի առ եղբարս եպիսկոպոսակիցս մեր որ յայնմ ժամանակի ի տեղիսն կամ ի քաղաքսն են որ բարեպաշտ թագաւորն զարքունական իրսն կառավարէ։ Ապա եթէ ոք յեպիսկոպոսաց ունիցի բարեկամս ի գաւթի թագաւորին և կամեսցի վասն ուրուք աղաչել որ է վայելուչ, մի արգելցի ի ձեռն իւրոյ սարկաւագին աղաչեսցէ և պատուիրեսցէ նոցա աւգնականութիւն աղաչելով նմա շնորհել վարկանելով։ Իսկ որք ի Հռովմ երթան որպէս յառաջն ասացի սիրելի եղբօրն մերոյ եպիսկոպոսակցի ուղեա զպաղատանս զոր ունիցին տալ պարտ են. զի նախ նա փորձեսցէ, և եթէ ոչ ոք ի նոցանէ անամօթ իցէ, և այսպէս զիւր հոգաբարձութիւնս տալով առաքեսցէ ի պաղատն։ Ամենեքին եպիսկոպոսքն ասացին թէ հաճոյ թուեցաւ մեզ և վայելուչ է խորհրդակցութիւնս այս։

**Ժ**. Ոսիոս եպիսկոպոս ասաց, և զայս կարևոր գոլ կարծեմ զի ամենայն ճշմարտիւ և խնամով քննեսցի զի եթէ ոք կամ մեծատուն կամ քողոստիկոս ի հրապարակէ աղաչէ լինել եպիսկոպոս՝ որ յառաջ նախ կարգեսցէ եթէ ոչ նախասարկաւագի և գրակարգացի սպասաւորութիւն կատարեսցէ, զի ընդ ամենայն աշտիճան կրթել արժանաւոր կարծեսցի հանել ի կամարն եպիսկոպոսութեան՝ յառաջադիմութեամբ անցանել կարասցէ՝ բայց կալ իւրաքանչիւր կարգի աշտիճան, ոչ դուզնաքեա ժամանակի երկայնութիւն, որով ժամանակաւ

հաւատ նոցա և վարուցն լաւականութիւն և հաստատումն և հեզութիւն ծանօթ լինել կարասցին, և այսպէս արժանի առ աստուածային քահանայութիւն կարծեցեալ և մեծագոյն վայելեսցէ պատիւ, քանզի ոչ պատեհէ ոչ գիտութիւն և ոչ բարւոք վարքն ընդունել թեթևութեամբ եպիսկոպոս կամ երէց կամ սարկաւագ ձեռնադրել. քանզի այս իրաւապէս նորատունկ կարճեսցի՝ վասն զի մանաւանդ և երջանիկըն առաքեալ որ հեթանոսացն եղև առաքեալ երևի արգելելովն վաղագոյն զկարգաւորութիւն, քանզի երկայն ժամանակին փորձ զվարսն և զիւրաքանչիւր գործ, և զկամս դիւրագոյն տպաւորել կարասցէ։ Ամենեքեան ասացին թէ հաճոյ է նոցա, և ընաւին ումեք ոչ շրջել զայսոսիկ։

**ԺԱ.** Ոսիոս եպիսկոպոս ասաց, և զայս սահմանել պարտ եմք, եթէ եպիսկոպոս այլ ի քաղաքէ եկեսցէ ի քաղաք այլ, կամ այլ գաւառէ ի գաւառ այլ գոռոզութեան աղագաւ, իւրոյ զովեստիցն ըսպասաւորելով, կամ թէ աւանդութիւն ինչ հնազանդեցուցանելով և բազում ժամանակս կալ անդ, և եթէ քաղաքին եպիսկոպոս ոչ է հմուտ վարդապետութեան, մի արհամարհեսցէ զնա և յաճախագոյն ի բեմէ խաւսեսցի, և ամաչեցուցանելով և յամաւթ առնելով որ անդ եպիսկոպոսն է՝ քանզի այսպէս պատճառք սովորին խռովութիւնս առնել. և յայսպիսի սովորութենէ զայլոց զաթոռ ինքեանց խօսել և հանել փութա. ոչ թերահաւատելով որ նմա աւեալն թողուլ և յայլ փոխել։ Արդ սահմանելի է ժամանակն որ վասն այսորիկ, քանզի ոչ ընդունել զեպիսկոպոս, ապիրատ և անպիտան կարծելի է բայց յիշել ի յառաջեալ ժամանակին զհայրն մեր որ սահմանեաց. զի եթէ ոք ասէ զուր ի նոսա ի նորին քաղաքի եղիցի յերիս կիրակէս աւուրս, Գ. շաբաթս ոչ հաղորդեսցի բայց շարժեսցին յաւրինաց աստի։ Արդ՝ եթէ ի վերայ աշխարհականաց այսպէս հրամայեալ է ոչ է պարտ և օգտակար եպիսկոպոսի եթէ ոչ մինչ ծանրագոյն ունիցի կարիս կամ իրս դժուարինս առ ի բազում ժամանակս թողուլ. զիւր եկեղեցին և տրտմեցուցանել զհաւատացեալս նմա ժողովուրդսն։ Ամե-

*նայն եպիսկոպոսին ասացին և զայս կարի վայելչական սահմանեմք։*

**ԺԲ.** *Ոսիոս եպիսկոպոս ասաց, քանզի ոչինչ թողլի և այս սահմանեսցի, ոմանք յեղբարց մերոց և եպիսկոպոսակցաց ի քաղաքս յորս եպիսկոպոսունք կարգեն կարծեն ստանալ այժմ սակաւ ստացուածս. բայց յայլ տեղիս մեծապէս ստացուածս, յորոց կարող են խնամ արկանել և տնանկաց այնպէս թուլացուցանել նոցա համարիմ, զի թէ հանդերձեալ են իւրեանց տեղիս գնալ և զպտուղսն ժողովել, Գ. կիւրակէս աւուրն, այսինքն, Գ. շաբաթս յիւրեանց գեօղս կալ նոցա և կամ մերձաւոր եկեղեցիս յորում են երիցունք ժողովեսցին, վասն զի մի կարծեսցէ նա լինել առանց հաղորդութեան գոլ և զպաշտաւնն կատարել, և ոչ յաճախագոյն ի քաղաքն յորում եպիսկոպոսն մտանել, քանզի այսու սարազու և թիւրի բան նորա ոչ դիպելով անդ՝ ոչինչ վնասակար են, և ամբարհաւաճ՝ և հպարտ կարծի յանցանացն։ Ամէն եպիսկոպոսքն ասացին հաճոյ է և այս կարգադրութիւն։*

**ԺԳ.** *Ոսիոս եպիսկսպոսն ասաց, և այս դարձեալ թըւեսցի. զի թէ ոք սարկաւագ կամ երէց կամ ոք ի վիճակելոց անհաղորդ եղիցի և առ այլ եպիսկոպոս որ գիտէցէ զնա ապաւինեսցի ճանաչելով զնա թէ իւրոյ եպիսկոպոսին հանեալ է զնա յաւրինաց, ոչ է պարտ նմա իւր եպիսկոպոսակցին և եղբօրն թշնամանս ածել և օրէնս տալ, ապա եթէ զայդ առնել իշխեսցէ, գիտասցէ թէ ի ժողով եպիսկոպոսացըն պատասխանատուութեան պարտապան լինել նմա։ Եւ ամենեքին եպիսկոպոսքն ասացին, այս դատաստան և զխաղաղութիւն հանապազ պահեսցէ և զամենեցուն զիմաստութիւն։*

**ԺԴ.** *Ոսիոս եպիսկոպոս ասաց, որ հանապազ զիս շարժէ լռել ոչ պարտ եմ. եթէ ոք եպիսկոպոս բարկացաւղ գըտցի, որ ոչ պիտոյ է այսպիսւոյ առն կրաւնաւորել և փաղփաղակի յանդիման երիցու կամ սարկաւագի շարժել հանել եկեղեցւոյն կամիցի, նախախնամելի է ոչ յանկարծակի զայնպիսին դատապարտել և զրկել ի հաղորդութենէ։ Ամենեքին*

*ասացին որ արտաքս էն ունի իշխանութիւն յեպիսկոպոս նորին մայրաքաղաքացւոյն սոյն գաւառին ապաւինել. ապա եթէ մայրաքաղաքի եպիսկոպոսն ոչ իցէ անդ ի մօտագոյն գաւառին եպիսկոպոսն ընթասցի և աղաչեսցէ զի ճշմարտիւ խուզեսցի իր նորա, քանզի ոչ է պարտ չտալ գլսելիս աղաչողացն, և այն եպիսկոպոսն որ կամ իրաւամբք կամ անիրաւ եհան, այնպիսին իրաւաբար բերել զի հարցաքննին իրացն եղիցի, և կամ հաստատեսցի նորա դատավճիռն, կամ ուղղութիւն լիցի, բայց նախ առաջին ըզգուշիւ և հաւաստեաւ ամենայն ինչ քննեսցի, և զոր հանեալն է յօրինաց յառաջ զքննութիւն իւրին անձին վրէժխնդրութիւն ոչ պարտի առնել հաղորդութեան։ Իսկ եթէ ժողովեալ ոմանց ուխտաւորացն տեսցին զամբարտաւանութիւն և զամբարհաւաճութիւն նորա, քանզի ոչ իրաւացի է թշնամանս կամ բամբասանս նանիր կրել դառնագոյն բանիւք պարտին դարձուցանել զայնպիսին, զի որ զվայելուչսն հրամայէ սպասաւորին նմա և հնազանդին զոր աւրինակ եպիսկոպոս ընդ սպասաւորաց պարտի աչալուրջ ունել զկամս և զսէր, նոյնպէս և որք ընդ հնազանդութեամբն են, աննենգ ըսպասաւորութիւն եպիոկպոսաց կատարել պարտին։*

**ԺԵ.** *Ոսիոս եպիսկոպոս ասաց, և զայս ամենայն սահմանեցաք. զի թէ ոք եպիսկոպոս այլ ի նահանգէ կամեսցի զայլոց սպասաւոր առանց կամաց իւրոյ եպիսկոպոսին յաշտիճան ինչ կարգել անզօր և անհաստատուն եղիցի այնպէս կարգաւորութիւն կարծեցեալ ապա եթէ ոմանք զայս անձանց հրամայեցին եղբարց և եպիսկոպոսակցաց մերոց և յիշումն և ուղղութիւն պարտինածել։ Ամենեքին ասացին այս սահման կացցէ անքակելի։*

**ԺԶ.** *Ալետիոս եպիսկոպոս ասաց, ոչ անգիտանայք թէ որպիսի և որքան է թեսաղոնիկեցւոց մայրաքաղաքն արդ, բազում անգամ ի սա յայլ գաւառաց երիցունք և սարկաւագունք գան, և ոչ բովանդակէ նոցա սակաւ ժամանակ լինել անդ, այլ բազում ժամանակս անդ մնան, կամ թէ ճրբ ուրեք յետ բազում ժամանակի իւրեանց տեղիս դառնալ հար-*

կաւոր են, որդ՝ վասն այսպիսեացն սահմանելի է։

**ԺԷ.** Ոսիոս եպիսկոպոս ասաց, ժամանակք և ի վերայ եպիսկոպոսաց սահմանեալ, պահեսցին և ի վերայ սոցա։

**ԺԸ.** Ոսիոս եպիսկոպոս ասաց թելադրելով և եղբօրն մերում Ուղումպիայ, և այս հաճոյ թուեցաւ եթէ եպիսկոպոս կամ ուխտաւոր բռնութեամբ կրեալ անիրաւութեամբ արտաքսեսցի վասն ոգիտութեան, կամ խոստովանութեան ուղղափառ եկեղեցւոյ կամ վասն ճշմարտութեան վրէժխնդրութեան փախչելի վտանգէն անմեղ և ընդ կարգաւ լինել եկեսցէ յայլ ի քաղաք, մի արգելուցու, այնքան կալ մինչև դարձցի և զթշնամանացն որ եղևն ի նա զերծումն գտանել կարասցէ, քանզի խիստ և ծանրագոյն փախուստ կրեալ յանիրաւ՝ ոչ ընդունելի է մէնջ, քանզի բազում լաւականութիւն և սիրականութիւն պարտի շնորհել այնպիսւոյն։ Ամենեքին ասացին հաճոյ թուեցաւ և այս։

**ԺԹ.** Գաւդենտիոս եպիսկոպոս ասաց, գիտես եղբայր Այետիէ եթէ յետ այնորիկ անդրէն կարգաւորեալ եպիսկոպոսին, այսուհետև խաղաղութիւն հաստատեսցի՝ զի մի նըշխարք երկպառակութեան մնասցեն յեկեղեցական կանոնս թուեցաւ և որք ի Մովսիսէ կարգեցան և որք յԵւտիւքիանոսէ, քանզի նոցա և ոչ մի ինչ մեղսն գտան զամենեսին ընդունել։

**Ի.** Ոսիոս եպիսկոպոս ասաց, իմոյ նուաստութեանս է այս դատավճիռ քանզի հեզք և համբերաւղք պարտ եմք լինել և հանապազորդ առ ամենեսեանսն գրովս, որք մի անգամ ի վիճակէ եկեղեցական յառաջ մատեան յոմանց եղբարց մերոց եթէ կամեսցին դառնալ անդրէն յորս և անուանեցան յեկեղեցիս յայսմ հետէ ընդունել. բայց Եւտիքիանոսի որ չև եպիսկոպոսի անուն անձին պարտ է վրէժ խնդրել, այլ և ոչ զՄովսիսէ եպիսկոպոսութեան արժանի գոլ կարծել։ Իսկ եթէ աշխարհական հաղորդութիւն պահանջեսցին, ոչ էր պարտ նոցա ուրանալ։ Ամենեքին ասացին հաճոյ է։

**ԻԱ.** Գաւդենտիոս եպիսկոպոս ասաց. այսոքիկ փրկչապէս և կարգաւք սահմանեալք և վայելչաբար առ ի սաս-

տումն մեզ ի քահանայից, և Աստուծոյ հաճոյ և մարդկան, զոյժ և զօրութիւն նոցա ունել ոչ կարասցէ, եթէ ոչ երկիւղիւ հետևեսցէ արտաքերեալ դատավճռացս, քանզի գիտեմք և բազում անգամ վասն սակաւուց զանամօթութեանց զաստուածային և զպաշտելի անուն քահանայութեան ի բամբասանս գալ, արդ՝ եթէ ոք որ ամենեցուն հաճոյ թուեցաւ իշխեսցէ ամբաստանութեամբ մանաւանդ և կամ ամբարտաւանութեամբ կամաց հաճոյ լինել, այլ ինչ ոչ գործել գիտասցէ զի և յանց պատասխանատուութեան զինքն պարտական առնիցէ, և զպատիւն և զարժանաւորութիւն եպիսկոպոսին ի բաց ընկենուլ։ Ամենեքին պատասխանի արարին, վայել է և հաճոյ են այսպիսի կամք, և այս անտի և եթէ մանաւանդ ճանաչելի եղիցի և կատարեսցի եթէ իւրաքանչիւր ոք ի մէնջ յանցանս և յուահս կարգեալ են տեսանելով եպիսկոպոսին խնդրեսցէ զպատճառս ուղոյն և ուր զուղեգրնացութիւն արասցէ, և եթէ գտցի զնա ի պաղատն անդր երթեալ խնդրեսցէ ի նմանէ զպատճառն որ ի վերայ և առաջի կային։ Ապա թէ կոչեալ է գնայ և երթայ, մի խափանեսցէ զնորա զերթն. իսկ եթէ յաղագս ցուցանելո զանձն որպէս յառաջագոյն ասացաք ձեռում սիրոյ վասն ուրուք աղաչանաց իւիք երթիցէ ի պաղատն, ոչ ձեռն արկել պարտ է ի թուղթսն և ոչ հաղորդել ընդ այնպիսումն։ Ամենեքին ասացին սահմանեսցի և այս։





# ԱԶԳԱՅԻՆ ԱՂԲԻՒՐՆԵՐԸ



## 1) ԱԶԳԱՅԻՆ-ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ.

*Ժողովների միջոցով եկեղեցական հարցեր վճռելը ըսկսուեց առաքեալների ժամանակ. առաջին անգամ ժողովուեցին նրանք և որոշեցին թոյլ չտալ քրիստոնեաներին կատարելու մովսիսական ծէսերը (թլփատութիւն...) (Գործ. ԺԵ.)։*

*Առաքեալների յաջորդները Բ. և Գ. դարերում շարունակեցին նոյն շաւղով գնալ և հարցերը ժողովով վճռել. Նրանք մասնաւոր տեղական ժողովներ արին Պաղեստինում, Փոքր-Ասիայում, Հռոմում, Օսրոենում (Եդեսիա), զատիկը միասին տօնելու վերաբերմամբ և 256-ին Կարթագենում Կիպրիանոսի ժամանակ կրկնակնունքի խնդիրը որոշելու համար։ Այդ կարգը առաքելական տիեզերական և տեղական ժողովների միջոցով և շարունակութեամբ ընդհանրացաւ բոլոր քրիստոնեայ ազգերի մէջ, մինչև անգամ սահմանադրուեց, որ տարին երկու անգամ ժողովներ լինեն ամեն տեղերում և եկեղեցական խնդիրներ քննեն և լուծեն դրանց միջոցով։ Այս սկզբունքները ընդհանուր առմամբ մտան մեր մէջ էլ, բայց ճշտութեամբ չգործադրուեցին. ոչ միայն տարին երկու անգամ, հապա մի քանի տասնեակ տարիներ շարունակ ժո-*

ղովներ չէին լինում Հայաստանում։ Այս ունի իւր պատճառները, որոնք գուցէ Դ. Ե. դարերում բացակայում էին օտար քրիստոնեայ երկրներում։ Նախ՝ Հայոց աշխարհը եղաւ առաջինը, որ քրիստոնէութիւնը դարձրեց քաղաքացիական կրօն, այսինքն բացի եկեղեցական վարչութիւնից ունեցաւ և քաղաքական կառավարութիւն, որը ոչ միայն հովանաւորում էր քրիստոնէութիւնը, այլ և քաղաքացիական օրէնքներով ամեն կերպ դիւրութիւն էր տալիս քրիստոնէութեան տարածման, պաշտպանում էր եկեղեցական դասի և եկեղեցիների տնտեսական դրութիւնը, եկեղեցական կանոնները պարտադիր էր դարձնում բոլոր քրիստոնեայ հպատակների համար իբրև քաղաքացիական օրէնքներ։ Երկրորդ՝ հայերը սովորած լինելով միապետական կառավարութեան, տեսած լինելով կռապաշտութեան օրով քրմապետների ոյժն ու զօրութիւնը՝ որին շատ էր նպաստում թագաւորական ցեղից նրանց ընտրուած լինելը, և ապա քրիստոնէութեան օրով նոյնպէս թագաւորական-նախարարական ցեղից Լուսաւորչի կաթուղիկոս ընտրուելը և թագաւորի համազօրութեամբ գործելը, պիտի վարժուէին թագաւորի և կաթուղիկոսի հլու հնազանդութեամբ կատարելու, մանաւանդ այնպիսի կաթուղիկոսների, որոնք սրբութեան և կարգապահութեան տիպարներ էին։ Երրորդ՝ Լուսաւորչի ժառանգ կաթուղիկոսները մինչև Ս. Սահակ ունէին մի փառաւոր սովորութիւն, այն է ճշտութեամբ և սրբութեամբ կատարել եկեղեցական կանոնները, որոնք պատուիրում էին առանց եպիսկոպոսների խորհրդակցութեան ոչինչ չանել և տարին առնուազը մի անգամ շրջել բոլոր երկիրը և ամեն տեղ նոյն կարգ ու կանոնը մտցնել, վէճերը քննել, խնդիրները վճռել. այսպէս Ներսէս մեծը 12 խորհրդականներով, Սահակ 60 վանականներով շրջում էին բոլոր կողմերը և տեղնուտեղը վէճերը դադարեցնում. նրանք Նաւասարդի տօնին Տահապիվան և Ս. Կարապետի տօնին Մուշ էին ուղևորւում, որ ժողովւում էին բոլոր Հայոց աշխարհը իշխաններով, թագաւորներով և եպիսկոպոսներով, որոնց մասնակցութեամբ և խորհրդակցու-

թեամբ վճռւում էին բոլոր հարցերը։ Ահա գլխաւոր պատճառները թէ ինչու հոգևոր և մարմնաւոր իշխանութիւնները հարկ չէին զգում եկեղեցական ժողովներ գումարելու և պաշտօնական ձևով խնդիրները քննելու։ Այս հիմամբ էլ Դ. դարում միայն մի եկեղեցական ժողով գումարուեց Ներսէս Մեծի օրով բարեգործական զանազան հիմնարկութիւններ հաստատելու, որի համար և ունինք նոյն ժամանակուայ պատմագիրների վկայութիւններ։ Իսկ ուրիշ ժողովներ եկեղեցական կարգեր որոշելու համար մինչև Շահապիվանի 447 թիւը չենք ունեցել, որովհետև ոչ մի յիշատակութիւն չունինք ոչ նոյն ժամանակուայ պատմագրների կողմից, ոչ էլ մեր կանոնագիրք կազմողների կողմից։ Կանոնագրքերում կան Լուսաւորչին, Սահակին յատկացրած կանոններ, բայց ոչ ժողովներին վերագրած։ Պատմագիրների յիշատակած Ներսէս Մեծի ժողովը չկայ ձեռագիր կանոնագրքերում։ Զամչեան և Աբէլ եպիսկոպոս պատմում են պատմիչների խօսքերով, որ Նիկիայի ժողովը ընդունելու համար, Լուսաւորիչ 325-ին ժողով արաւ. նոյնը Պօլսոյ և Եփեսոսի ժողովների կանոնները ընդունելու համար։ Բաց ես անում մատենագիրները, որոնց մատնացոյց են անում վերջին գրողներս, և գտնում ես որ ժողովի ոչ մի յիշատակութիւն չունի։ Ագաթանգեղոսն ես բաց անում, կարդում ես. Արիստակէսը յետ դառնալով Նիկիայից «բերած աւանդութիւնները թագաւորի և սուրբ կաթուղիկոսի առաջն էր դնում։ Որը սուրբ Գրիգորը վերցրեց, նոյն կանոնների վրայ ինքն էլ աւելացրեց, Տրդատ թագաւորի հետ Հայաստան աշխարհը պայծառացնելով լուսաւորում էր...» 508 եր.։ Խորենացին ես բաց անում, կարդում ես, Լուսաւորիչը «մի քանի գլուխներ *իրանից* աւելացնելով ժողովի (Նիկիայի) կանոնների վրայ իւր վիճակի զգուշութեան համար» 90 գլ.։ Բաց անելով՝ Եփեսոսի կանոնների համար Հայաստանում իբր թէ եղած ժողովը Ս. Սահակի ժամանակը՝ Կորիւնի վկայութիւնը, որ առաջ են բերում Զամչեան և Աբէլ եպիսկոպոս, կարդում ես «Յայնմ ժամանակի բերեալ երևեցան Հայաստան աշխարհին գիրք սուտա-

պատումք, ընդունայնախօս աւանդութիւնք առն ուրումն հռոմի, որում Թէոդիոս անուն։ Վասն որոյ Սիւնհոդոսական հայրապետայ եկեղեցեացն սրբոց նշանակեալ ազգաունէին՝ և ճշմարտահաւատ Փառաւորչացն Սահակայ և Մաշտոցի։ Եւ նոցա ճշմարտասէր փութով զայն ի միջոյ բարձեալ աշխարհահալած արտաքոյ իւրեանց մերժեցին, զի մի ի լուսաւոր վարդապետութիւնն՝ ծուխ ինչ սատանայական յարիցէ» 25 եր.։ Մի՞թէ սրանից կարելի է եզրակացնել թէ Ս. Սահակ և Մեսրոպ ժողով արին. կամ թէ Լուսաւորիչ ժողով արաւ և կանոններ աւելացրեց Նիկիականի վերջում։ Հապա որտեղից են Չամչեան և նրա հետևողները (Աբէլ եպ.) ընդունում, որ Վաղարշապատի Ա. ժողովը եղաւ 325-ին Նիկիայի կանոնները ընդունելու համար, որ Վաղարշապատի Բ. ժողովը եղաւ 366-ին կաթուղիկոսական աթոռի անկախութեան համար. որ Վաղարշապատի Դ. ժողովը եղաւ 426-ին եկեղեցու բարեկարգութեան համար, որ Աշտիշատի Բ. ժողովը եղաւ 435-ին (իսկ ըստ Չամչեանի 432 և 445) Եփեսոսի ժողովը ընդունելու համար։ Սրանք այս տեղեկութիւնները քաղում են ոչ թէ նոյն դարու պատմագրներից, որոնք ոչինչ չեն ասում այս ժողովների մասին, այլ 400, 600 տարի յետոյ եկող պատմագիրների վկայութիւններից, որոնք ոչ մի իրաւաբանական արժէք չեն կարող ունենալ։ Ձեռագիրների մէջ պատահում են կցկտուր, փոփոխուած գրութիւններ հայոց ժողովների մասին. Լուսաւորչից սկսած մինչև Յովհան Օձնեցու ժամանակ, հէնց նոյն իսկ Յովհան Օձնեցուն վերագրած, այսպիսի վերնագրով (№ 58 և № 100 ձեռ.) «Սակըս ժողովոյն որ եղեն ի Հայս ի սուրբ Գրիգորէ Լուսաւորչէ սկսեալ...»։ Սրա մէջ յիշուած են հետևեալ ժողովները 1) Լուսաւորչի ժողովը Նիկիայի կանոնները ընդունելու համար. 2) Ներսէսի (Մեծի) ժողովը Պօլսոյ ժողովի կանոնները ընդունելու համար. 3) Սահակի ժողովի—Եփեսոսի համար. 4) Շահապիւանի ժողովը. 5) Բաբգէնի ժողովը 6) Ներսէսի...։ Այս մասին 3 օրինակ կայ, երեքն էլ տարբեր և հակառակ գրուած միմեանց, սրանց մէջ չկայ բարեկարգութեանց հա-

մար արած Ներսէսի ժողովը, որի մասին վկայում են ժամակից պատմագրները։ Այսպիսի և սրանց նման փաստերը ոչ մի իրաւաբանական արժէք ունենալ չեն կարող, ուստի Զամչեանի և այլոց ընդունած չեղած ժողովները միանգամայն կը հանենք մեր աղբիւրների շարքից և կընդունենք միայն այն ժողովները, որոնք ունեն հաստատուն պատմական հիմք։

Բայց այստեղ նոր հարց է ծագում, եթէ Տիեզերական երեք ժողովները իւր ժամանակին չեն ընդունուել ազգային ժողովով, միմեայն ընդունուել են կաթուղիկոսների և թագաւորների որոշմամբ, արդեօ՞ք այդքանը պիտի բաւարար համարուի, թէ անհրաժեշտ է որ ազգային ժողովի սանկցիայով վաւերացնուի այդ ընդունելութիւնը։—Մեր եկեղեցական իրաւունքի հետակայ պատմութիւնը ապացուցանում է, որ առանց ազգային ժողովի համաձայնութեան ոչ մի ժողովի կարգադրութիւն կանոնական և պարտաւորական չէ, մինչև անգամ երբ կաթուղիկոսը, թագաւորը և նախարարների մի մասը ընդունել և հրատարակել են կարգադրութիւններ, ամբողջ ազգը մերժել է և չի ընդունուել (կաթոլիկաց միութեան ժամանակ) դրանց հրամանը, և ընդ հակառակը պատահել է, որ միմիայն կաթողիկոսը ընդունել է մի ժողովի կանոն, կամ ինքը մի կարգադրութիւն է արել, ազգը միաձայն առանց տրտունջի ընդունել է. օր. Լուսաւորչի, Ս. Սահակի, Շնորհալու և այլոց կանոնները։ Ուրեմն խնդիրը յանգում է այն կէտին, թէ որոշ կարգադրութիւն՝ ժողովով լինի թէ կաթուղիկոսների կոնդակներով, յենւում է՞ արդեօք հայոց ազգի աւանդական սրբազնագործուած սովորութիւնների վրայ, բղխո՞ւմ է ժողովրդական դարաւոր հայեացքներից և ներկայ դրութեան անհրաժեշտ կարիքներից թէ ո՛չ։ Եթէ ազգը կաթուղիկոսների կոնդակը համարում է ազգային եկեղեցու սկզբունքների շարունակութիւն, ժողովրդական եկեղեցու ոգու համաձայն կարգադրութիւն, ընդունում է լուռ ու մունջ, և այդ ընդունելութեամբ վաւերացնում է կաթուղիկոսի կարգադրութիւնը իբրև ազգային ժողովի լռելեայն վճիռ։ Այդպէս սրան ընդունելով Լուսաւորչի, Ներսէսի, Սա-

հակի կարգադրութիւնների վերաբերմամբ և միաձայն հաստատելով Շահապիվանի ժողովում 447 թուին։ Այժմեայ պատմաբանները ինչպէս յիշեցի 365-ի ժողով են յիշատակում, ուր իբր թէ որոշուեց կաթուղիկոսների ձեռնադրութիւնը կատարել առանց Կեսարիայի եպիսկոպոսի. բայց այդպիսի ժողով գոյութիւն չի ունեցել։ Խորենացին նոյն իսկ վշտացած ասում է պապի մասին Շահակին կաթուղիկոս նըշանակելու վերաբերմամբ «զոր կացոյց փոխանակ Ներսիսի առանց Մեծի արքեպիսկոպոսին Կեսարու» գլ. III. 39 եր.։

Փաւստոսը ոչ միայն ժողովի անունն չի տալիս, այլ և վշտացած է երևում և թշնամական դիրք է բռնում դէպի պապի կարգադրութիւնը։

Թէև ժողով չի եղել ճիշտ է, բայց Արշակի կարգադըրութիւնը Կեսարիայից անկախ կաթուղիկոսի ձեռնադրութիւն կատարելու համար, իւր ամբողջ ուժով գործադրուեց և ազգը ուրախութեամբ ընդունեց, որովհետև ազգային փառասիրութեան հրճուանք էր պատճառում և ամենևին հակառակ չէր եկեղեցական կանոններին։ Այդ նոյն իսկ երևում է Փաւստոսից, որ պատմում է թէ ինչպէս Արշակ Բ. կատաղած 6 տարի շարունակ ասպատակում էր Յունաց նահանգները, որ համարձակուել են Հայոց աշխարհի կաթուղիկոսին բանտարկել Պոլսում։ Արդեօք Ներսէսն էր Արշակ Բ.-ին ասել, որ պէտք է Հայոց հայրապետը անկախ լինի և ձեռնադրութիւնը Հայաստանում ստանայ իւր եպիսկոպոսներից, այդ յայտնի չէ, փաստն այն է, որ Արշակ Բ.-ի, թագաւորի կարգադրութիւնը ընդունուեց և գործադրուեց. Նշանակում է հոգևորականութիւնը, բացի Փոքր-Հայքի եկեղեցականներից, որոնք Կեսարիայի թեմն էին կազմում վաղուց, և ժողովուրդը միախորհուրդ էին իրանց թագաւորի վճռի վերաբերմամբ։ Նոյնը պատահեց Լուսաւորչի օրօք, որի համաձայնութիւնը Տրդատի հետ Նիկիայի կանոնների ընդունելութեան և նոր կանոնների սահմանելու վերաբերմամբ, անպայման ընդունուեց ժողովրդի կողմից և լուռ ու մունջ գործադրուեց։ Այսպէս, մերժելով Զամչեանի և այլոց զանազան գրուածքնե-

րը եկեղեցական ժողովների մասին, որոնք ամենևին գոյութիւն չեն ունեցել ըստ ժամանակակից տարեգրների, մենք չենք նսեմացնում այդ ժողովներին վերագրած կարգադրութիւնների ոյժը, որոնք արուել են մեր ս. Հայրերի, կաթուղիկոսների կողմից և ընդունել են բոլոր ազգից և վաւերացուել են հետակայ Հայոց եկեղեցական ժողովներով։ Լուսաւորչի, Սահակի կանոնները կարձանագրուին ո՛չ իբրև ժողովի կանոններ, այլ այդ սուրբ անձանց կանոններ, որոնք ընդունուած են եղել և ընդունւում են բոլորի կողմից և բոլոր ժողովներով վաւերացուած են։ Այսպիսով կվերանան զանազան Վաղարշապատու կամ Աշտիշատու ժողովները և կմնան միմիայն պատմական հիմք և փաստագիր ունեցող ժողովները մեր եկեղեցական իրաւունքի մէջ։

---

## Ա) ԱՇՏԻՇԱՏՈՒ ԺՈՂՈՎԻ ԿԱՆՈՆՆԵՐԸ (365 Թ.)

Առաջի պաշտօնական եկեղեցական—ազգային ժողովը, գոնէ ըստ պատմագրաց վկայութեան, է Աշտիշատի այս ժողովը, որ եղաւ Ներսէս Մեծի նախագահութեամբ 365 թուին հոգևորականների և աշխարհականների մասնակցութեամբ։ Խորենացին ասում է գլ. Գ. Ներսէսը «ժողով արարեալ եպիսկոպոսաց, և համօրէն աշխարհականօք, կանոնական սահմանադրութեամբ հաստատեաց...»։

Փաւստոսը ասում է 63—64 եր. «Ժողովեցան ի գեղն Աշտիշատ, ուր զառաջինն զեկեղեցին էր շինեալ, զի մայր եկեղեցեացն, և ի տեղի լեալ նախնեացն ժողովոց Սինհոդոսին»։ «Եւ ամենայն աշխարհին պատուիրէր (Ներսէս մեծ), և գլխովին թագաւորին, առ հասարակ ամենայն մեծամեծացն և ամենեցուն...»։

Այս ժողովը որովհետև պաշտօնական կանոններ սահմանող ժողովների հիմքն է դնում Հայաստանում, ուստի

տեսնենք ինչպէս է սկսուել ժողովը, ով է բացել, ով է նախագահել, ովքեր էին մասնակցում ժողովում։

Երկու պատմիչների խօսքից երևում է, որ ժողովը հրաւիրել է ինքը կաթուղիկոսը, թէ հոգևորականներին և թէ աշխարհականներին, մինչև իսկ «գլխովին թագաւորին»։ Նախագահութիւն անում էր ինքն Ներսէսը, թագաւորը ժողովում ներկայ էր թէ ոչ, յայտնի չէ։

Ժողովին հրաւիրուած էին երկու դասակարգն էլ, հոգևոր և աշխարհական, այս փառաւոր սկզբունքը մնաց երև հիմնական կէտ մեր պատմութեան մէջ հետակայ դարերի բոլոր ժողովներում. մինչև անգամ ոչ թէ կարգադրական հապա դաւանաբանական հարցեր որոշող բոլոր մեր ժողովներում մասնակցել են աշխարհականները. չեշտելի է այս սկզբունքը այն տեսակէտից, որ միւս եկեղեցիները կարող են նախանձով նայել այս բանիս վրայ և ձգտել նոյն դրութեան հասնել, քանի որ եկեղեցի ասելով հասկանում ենք հաւատացեալների ժողով, որը երկու դասակարգի մասնակցութեամբ միայն կարող է վճռել բոլոր եկեղեցական հարցերը և խնդիրները։

Ժողովի կանոնները թէև որոշ գլուխներով բաժանուած չեն եղել, կարգադրութիւնները գրուած են մատենագրների մէջ առանց դասաւորութեան և յօդուածների, բայց հետակայ ժամանակներում 6 գլխի է վերածած և 6 գլխում ամփոփուած բոլոր կարգադրութիւնները, որոնք սրուած են եղել 365-ի այդ ժողովում։ Մինչև անգամ եթէ Փաւստոսի ցիրուցան տեղեկութիւններին նայենք, Ներսէսը բացի այդ 6 կանոններից, սահմանել է և շատ կանոններ զանազան խնդիրների վերաբերմամբ, որոնցից շատերը յիշում է, բայց դրանք դուրս են մնացել կանոններից, երևի թէ Խորենացուն համարելով ճշմարտապատում պատմիչ՝ հետևել են նրա տուած տեղեկութիւններին այս ժողովի վերաբերմամբ քան շատ խօսող Փաւստոսին։

Նկատելի է և այս, որ մեր ձեռագիր կանոնագրքերում այս ժողովի մասին ոչ մի խօսք չկայ, ինչու, դժուար է պա-

տասխանել. այդ պակասութիւնը չպէտք է այս ժողովի արժէքը ձգի, քանի որ այդ կանոնագրքերում կան խառնուշփոթ ամեն տեսակ կանոններ, յայտնի և անյայտ թէ ժողովների և թէ անձանց, որոնք դարերի ընթացքում սպրդել են այդ ժողովածուների մէջ։

1. Ժողովը արգելեց նախարարներին, որ իրանց տոհմական ժառանգութիւնը պահպանելու համար՝ մերձաւոր ազգականների մէջ խնամութիւն չանեն։

Մերձաւոր ազգականների ամուսնութիւնը շատ արմատացած էր ազնուական դասի մէջ, մանաւանդ իրանց կալուածատիրական իրաւունքը ժառանգաբար պահելու համար։ Ժողովս թէև արգելում է մերձաւորների ամուսնութիւնը, բայց որոշ աստիճաններ չի նշանակում այդ մասին։ Սոյն խնդրի վիճակը փնտռելով միւս քրիստոնեայ ազգերի մէջ և համեմատելով միմեանց հետ, կարելի է մօտաւորապէս որոշել թէ Ներսէսի ժողովը մինչև քանի աստիճանն է արգելում. մանաւանդ որ Խորենացու վկայութեամբ Ներսէսը իւր կրթութիւնը ստացել էր Պօլսում, լաւ ծանօթ էր Յունաց եկեղեցական գործերին և նրանց նմանութեամբ էլ մտցնում էր Հայոց մէջ այս բոլոր կարգերը։

Նէոկեսարիայի 2, Բարսեղ Մեծի 23, 78, 87, Տիմոմոթէոսի 11 կանոնները արգելում են ամուսնութիւնը եղբօր և եղբօր աղջկայ (3 աստիճան), հօր ու խորթ աղջկայ, որդու և խորթ մօր (1 աստիճան), հօր ու որդու և երկու քրոջ մէջ (3 աստիճան), մօր ու աղջկայ և երկու եղբօր մէջ (3 աստ.), երկու եղբօր և մի կնոջ (2 աստ.), մի մարդու և երկու քրոջ մէջ (2 աստ.)։ Բարսեղի կանոնով այսպիսի պսակները լուծւում են և ապաշխարանքի են ենթարկում յանցաւորները։ Մեր ժողովի կանոնի մէջ պատիժ չկայ, երևի նախարարներին պատժելը դժուար է համարուել ժողովականների աչքում։ Փաւստոսը պատմում է, որ Ներսէսը ստիպում էր ոչ միայն նախարարներին, հայր և թագաւորին, որ ճշտութեամբ հետևեն այդ կարգերին, բայց թագաւորը բոլորովին հակառակն էր անում։

2. Ժողովը արգելեց լաց ու կոծ անել մեռելների վրայ, անկարգ շարժումներով և ոճրագործութիւններով սուգ կատարել յուղարկաւորութեան հանդէս կատարելիս։

Հեթանոսութեան ժամանակից հայերի մէջ սովորութիւն էր՝ սիրելու մահից յետոյ մազերը փետել, երեսը չանկռտել, մոխիր ածել, լաց ու կոծ անել, կուրծքը և գլուխը ծեծել, եղերամօր սկսելով խմբովին սուգ ու շիվան անել, ծափ տալ, պարել, նուագել զանազան նուագարանների վրայ. (Փաւստ. Ե. գլ.)։ Տատերն էլ ողջ ողջ ձգում էին իրանց դիակի վրայ և այդպէս թաղում. ահա այսպիսի տգեղ երևոյթների համար է սահմանում այս կարգադրութիւնը երկրորդ կանոնս։

3. Վարակիչ հիւանդութիւնների ծաւալման առաջն առնելու համար կառուցանել, բորոտների համար—ուրկանոցներ, տկարների համար—հիւանդանոցներ, կաղերի և կոյրերի համար—անկելանոցներ. այդ հաստատութիւնները խնամելու համար գիւղերից և քաղաքներից հասեր և տուրքեր սահմանել, խնամատար և սպասաւորներ նշանակել և բոլորի ղեկավարութիւնը յանձնել Խադ սարկաւագին։

Մովսէսի ժամանակուանից բորոտները իրաւունք չունէին բնակուած տեղերում ապրել, նրանք թափառում էին և քաղցած ու ծարաւ շրջելով անց կացնում իրանց թշուառ օրերը։ Առաքեալների ժամանակ խնամում էին ոչ միայն դրանց, այլ և բոլոր չքաւորներին և աղքատներին։ Եպիսկոպոսների ամենամեծ պարտականութիւններից մէկն էր եկեղեցական կանոններով որոշուած, խնամել և կերակրել բոլոր աղքատներին, պահել նրանց ընտանիքը։ Սրանցից մինչև այսօր մնացել է յօգուտ այրեաց և որբոց գանձանակը և մեծ վանքերում հիւրանոցներ։ Սրանց համար խօսում է հետևեալ կանոնը։

4. Որբերի և այրիների համար որոշեց կառուցանել որբանոցներ և այրիանոցներ և դրանց պահելու համար առանձին տուրքեր և հասեր։

Բարսեղի 24 կանոնով այն այրին, որ մարդու կերթայ, կզրկուի եկեղեցու բաժնից. եկեղեցուց խնամք ստացող այրիների դասը մեծ մասամբ պառաւներ էին, մինչև իսկ 60 տարեկանից վեր։

Թէ ինչպէս էին ժողովում այդ հասերը և տուրքերը, ինչպէս էին բաժանում գիւղերի և քաղաքների վրայ. պարտաւորական էր թէ կամաւոր, յայտնի չէ, այդ մասին ոչինչ չկայ։

5. Օտարների և հիւրերի համար քաղաքներում և գիւղերում հիւրանոցներ որոշեց շինել, որովհետև դրսևը մընալով չարագործութեամբ կարող էին պարապել։

Բ.—Առաքելական 41 և Անտիոքի 25 կանոնները պատուիրում են եպիսկոպոսին օտարներին եկեղեցու եկամուտներով կերակրել. որպէս զի միայն հաւատացեալները օգտուէին այդ իրաւունքից, նրանք պարտաւոր էին իրանց վըկայաթուղթը ներկայացնել և ապա ընդունուել (Անտ. 7 կ.)։

6. Ժողովը որոշեց երեք տեսակ բնակութեան տեղեր կառուցանել կրօնաւորների համար, որոնք դատարկ շրջում էին ամեն տեղ, օթևանելով աշխարհականների տանը, գիւղերում ապրելով իբրև վանքի մէջ։ Անապատներում—եղբայրանոցներ, առանձնակեացների համար—միայնանոցներ և խրճիթներ՝ որոշ կանոններով։

Վանական կեանքը սկսուել է շատ վաղ և զարգացել է աստիճանաբար։ Պօղոս առաքեալը այդպիսի խստակեաց կեանքի առաջի օրինակն է քրիստոնէութեան շրջանում (Ա. Կորընթ. Թ. 4, 5, 25, 27. Փիլ. Գ. 7—17)։ Բ.—Առ. 51 և 53 կանոնները մատնացոյց են անում այն կեանքը, որը վայել է աշխարհից հեռացած կրօնաւորներին, չափաւորութիւն կերակրի մէջ, ժուժկալութիւն ամուսնութեան մէջ։ Հալածանքների ժամանակ այդպիսի մարդիկ ստիպուած էին քաշուել թաքուն տեղեր, անտառներ, մաղարաներ, լեռներ և ազատ կերպով նուիրել իրանց Աստծուն, մինչև անգամ ցըմահ մնալով այդ միայնակ տեղերում և չվերադառնալով

Հայրենի ծննդավայրեր։ Դրանք հոգևորականութեան հետ կապ չունէին, հոգևորականի ոչ մի աստիճան չունէին և ոչ մի եկեղեցական պաշտօնակատարութիւն չէին անում. հապա իրանց սրբակեաց կեանքով և մաքրութեամբ օրինակ էին դառնում ժողովրդին և փրկութեան ճանապարհ ցոյց տալիս։

Դ. դարուց սկսած եկեղեցին դրանց վանքերը իրա իշխանութեան տակ առաւ, եպիսկոպոսներն էին հսկում վանքերի և վանականութեան վրայ։ Վանականութեան մէջ մըտնողը Բարս. 19 կանոնով պիտի կուսութեան խօսք տար և որոշ ժամանակ փորձի ենթարկուէր։ Վանքի կառավարիչն էր վանահայրը, որ արխիմանդրիտ էր կոչւում, պատասխանատու էր վանքի միաբանութեան համար։ Վանականները առանց վկայաթղթի իրաւունք չունէին վանքից դուրս գալու, ինչք և կալուածք ունենալու, ունեցածը վաճառում էին կամ վանքին յանձնում կամ ժառանգներին թողնում։ Եղբայրանոց վանքերը նրանք էին, որտեղ միասին աղօթում, միասին ապրում էին հանրավարական սկզբունքով, միայնակեաց վանքերում իւրաքանչիւրը փակւում էր խուցում և աղօթքով անցնում իւր սենեակում։ Երրորդ տեսակ կրօնաւորները ճգնաւորներն էին, որոնք քարաժայռերում, անտառներում և սիւների գլխին ճգնում էին և կերակրւում կանաչեղէնով։ Փաւստոս դրանց այսպէս է նկարագրում «աշխահից հեռացած, անապատներում, քարանձաւներում, այրերում, քարածերպերում, միահանդերձք, բոկագնացք, խոտաճարակ, լեշկամաշկով, և այծու մորթով» Ժ2. գլ.։ Վանականութեան հիմքը դրին Եգիպտոսում Պօղոս և Անտօն ճըգնաւորները. եղբայրանոցների հիմնադիրն էր Պաքօմը 292-ին ծնուած. ութ վանք շինեց 3000 վանականներով. (աւելի մանրամասն տես Բ. գրքում)։ Մեր մէջ վանականութիւնը սկսուեց Լուսաւորչով. «Եւ դարձեալ բազում և անհամար գունդս գունդս վանականաց ի շէնս և յանշէնս, դաշտական շինակեացս և լեռնակեացս, անձաւամուտս և արգելականս հաստատէր (Ագաթ. 487)։

Վանականութիւնը մեծ զարկ ստացաւ Բարսեղ Մեծի օրով, մեր մէջ Ներսէսի և Սահակի օրերով։ Կազմեցին կանոնադրութիւններ, պարապման ժամեր որոշուեցին։ Աղօթքից ազատ ժամերում նրանք գրում էին, ձեռագործով, նրկարչութեամբ պարապում, վաճառում էին իրերը և ընդհանուր գանձարանը ձգում։ Հռիփսիմեանք յուլունք էին շինում Վաղարշապատում և դրա վաճառքով ապրում։ Արևմտեան եկեղեցում ուխտեր կարգեր առաջանում են Դ. դարուց սկսած ընդարձակ ծրագրներով և նպատակներով և ըստանում են մեծ ծաւալ և ահագին ոյժ (Բենետիկտեան ևլնևլն)։

---

## Բ) ՇԱՀԱՊԻՎԱՆԻ ԺՈՂՈՎԻ ԿԱՆՈՆՆԵՐԸ 447 Թ.

Շահապիվանի ժողովը հայոց ամենափառաւոր ժողովներից մէկն է։ Շահապիվանը գտնւում է Բագրևանդ գաւառում, Մասիսի ստորոտներում, այժմեայ Հին Բայազիդի շրջակայքում. ուր ամեն Նաւասարդին ժողովւում էին նախարարներ, իշխաններ, հոգևորականներ, բազմաթիւ ժողովուրդ և մեծ փառքով տօնում էին տարեմուտը։ Ահա այսպիսի տեղում, գուցէ հէնց տօնի ժամանակ եղել է այս բառի բուն նշանակութեամբ ազգային-եկեղեցական ժողովը։ Այստեղ գտնւում էր կաթուղիկոսը, «քսան եպիսկոպոս, շատ երէցներ, սարկաւագներ և եկեղեցու համօրէն ուխտը, իշխաններ, գաւառապետներ, գաւառակալներ, պետեր, բռնաւորներ, զօրագլուխներ, հարիւրապետներ, ազատներ, կուսակալներ, բոլոր նախարարները, Վասակ մարզպանը, Վահան հազարապետը, Վարդան Մամիկոնեանը...»։ Բոլորը միաձայն դիմում են ժողովի ղեկավարներին «Սուրբ Գրիգորի, Ներսէսի, Սահակի և Մաշտոցի դրած (կանոնները) կարգերը հաստատեցէք և մենք ախորժելով յանձն ենք առնում, Առաքե-

լական և Նիկիական կանոնները հաստատուն մնան մեզ համար» և ինչ որ ի լրումն այս կանոնների անհրաժեշտ է, միասին սահմանենք,

Ամբողջ տիեզերական քրիստոնեայ ժողովների մէջ այսպիսի փառաւոր ժողով չի եղել, ուր մասնակցէին հոգևորականները իրանց դասերով և իշխանները աշխարհական զանազան դասակարգերով։ Ուստ ուսուցչապետ Պաւլով ամեն միջոց գործ է դնում ապացուցանելու, որ եկեղեցին պատկանում է ոչ լոկ հոգևորականներին, այլ և աշխարհականներին, որ բոլոր եկեղեցական ժողովներում պիտի մասնակցեն աշխարհականներ. դժբախտաբար քրիստոնեայ աշխարհի եկեղեցական պատմութեան մէջ բացի մի քանի աննշան դէպքերից, ծանրակշիռ փաստեր չի կարողանում գտնել. սա եթէ ծանօթ լինէր մեր եկեղեցական ժողովների հետ, կարող էր փառաւոր փաստերով ապացուցանել իւր խնդիրը, քանի որ մեր այսպիսի ժողովները գոյութիւն են ունեցել նախկին դարերում, երբ դեռ ևս դաւանաբանական պառակտում չէր եղել։

Այս կանոնագիր երկրորդ ժողովը վաւերացրեց փաստական կերպով Ա. ժողովի ընդունած սկզբունքները ժողովի հրաւիրելու և ժողովի կառավարութեան արտաքին ձևերի վերաբերմամբ։

ա) Այս ժողովը հրաւիրեց և ժողովում նախագահեց կաթուղիկոսը, որը ըստ Փարպեցու քահանայական աստիճան ունէր։

բ) Այս ժողովում և ինչպէս և նախընթացում մասնակցում էին հոգևորական և աշխարհական տարրը ամեն տեսակ դասակարգերով։

գ) Այս ժողովը հաստատեց իրանից առաջ եղած բոլոր ժողովները և հայրապետական կանոնները, որոնք մինչև այդ օրը ազգի կողմից թէև ընդունուած էին, բայց ժողովական հաստատութեամբ չէին վաւերացրած։ Ասպէս հաստատուեցին Նիկիայի, Պոլսոյ, Եփեսոսի ժողովների և Լուսաւորչի, Ներսէսի, Սահակի և Մեսրոպի և ապա Առաքելական

*կանոնները։ Այս ժողովը իւր այս օրէնսդրական և նախկին ժողովների կանոնների ընդունելութեամբ և հաստատութեամբ փառաւոր սկզբունք է սահմանում, որը դժբախտաբար հետակայ դարերում բոլորովին մոռացութեան է տրւում։*

*դ) Այս ժողովում երևում է բուն ժողովրդական կեանքը, արտաքին կանոնները ընդունւում են և բոլորովին ազգային գոյնի տակ տրւում, այսպէս սաստ հայանում են. եկեղեցական կանոնները ստանում են քաղաքացիական օրէնքի պարտաւորական ոյժը, պատժի և տուգանքի տակ ձգելով օրինազանցներին։*

*ե) Այստեղ սահմանւում են մարմնական պատիժներ ամենախիստ աստիճանի մինչև անգամ, որ բոլորովին համապատասխան չէ աւետարանի ոգուն, և որոնք չեն երևում նոյն ժամանակուայ օտարների կանոններում։*

*Այդ կանոնները պարզ հայելի են Հայաստանի ծանր դրութեան, և հայերի անտանելի կացութեան։ Հայոց թագաւորութիւնը վերացել էր, երկիրը ընկել էր Պարսից ձեռքի տակ, պարսիկ կառավարիչները և ասորի անառակ կաթուղիկոսները տակն ու վրայ էին արել Հայաստանը, խախտել էին բազմերախտ հայրապետների կարգերը, մտցրել էին օտարը, վատը և անկարգը։ Բազմացել էին, ըստ պատմագրաց, կնահանների, պոռնիկների, գողերի, չարագործների, հաւատուրացների, ազգատեացների թիւը, ամենաթեթև ծառայութիւններով ստանում էին ահագին պատիւներ և պարսիկ դառնալով կեղեքում էին ժողովրդին, քանդում և պղծում էին եկեղեցիները և հաւատացեալ հայերին ստիպում էին փոխել կրօնը։ Ահա այս պատճառները ստիպել տուին բոլոր ժողովականները միաձայն նշանակել այնպիսի կարգ ու կանոններ և պատիժներ, որոնք տեսնուած չէին և չեն էլ տեսնուել Հայոց եկեղեցական պատմութեան մէջ։*

*Դժբախտաբար այսպիսի ժողովի մասին ոչ մի յիշատակութիւն չենք գտնում մեր Ե. դարու պատմագրերի գրուածներում, մանաւանդ որ ինչպէս ժողովի նախաբանից երևում է, ժողովում մասնակցում էին Հայոց հոգևորականութեան*

Ե. դարու աստղերը, բոլոր թարգմանիչները և գրական երկեր թողած անձինք։ Արդեօ՞ք Վարդանանց պատերազմը և շարունակուող անտանելի դրութիւնը գրաւել է պատմիչների ուշադրութիւնը և թողել անուշադիր այս ժողովը, թէ՞ ուրիշ մի որևէ պատճառ անյայտութեան է մատնել այս ժողովի արածը, դժուար է որոշել. միայն փաստն այն է որ պատմագրերը ոչինչ չեն յիշում այս մասին։ Սակայն մեր բոլոր կանոնագրքերում գրուած են այս կանոնները փառաւոր յառաջաբանով և վերջաբանով, գրուած են մի առ մի ժողովի մասնակցողների դասակարգերը, գլխաւորների անունները, այնպէս որ ընթերցողի վրայ ոչ մի կասկածի տեղիք չի մընում ենթադրելու, որ այս ժողովս կարող է չեղած լինել և հնարովի։ Յովհան Օձնեցուց սկսած մինչև այսօր բոլորը ընդունել են և ընդունում են որ Շահապիվանի ժողովը եղել է Վարդանանց ժամանակ, նախաբանի մէջ նշանակած բոլոր անձանց ներկայութեամբ և մասնակցութեամբ, մենք էլ ոչ մի կասկածի հիմք չունենալով, կընդունենք իբրև երկրորդ կանոններ սահմանող ժողով և կարձանագրենք նրա կանոնները բացատրութիւններով։

1. Եթէ եպիսկոպոսը պղծութեան, պոռնկութեան կամ մի ուրիշ վատթար գործի մէջ գտնուի, և վկայութեամբ հաստատուի, աթոռից և իշխանութիւնից մերժուի և քահանայութիւն չանի. 1200 դրամ եկեղեցուն տուգանք տայ կարօտեալներին բաշխելու համար։

Այս և հետևեալ կանոնները մեր եկեղեցական միւս կանոններից, (Լուսաւորչի, Սահակի) տարբերւում են նրանով, որ արտայայտուած են կտրուկ ձևով, աւելի իբրև օրէնք քան խրատ, նշանակում են պատիժ և տուգանք և ո՛չ ներողամտաբար խրատում կամ նզովում։

Հետաքրքիր էր իմանալ, արդեօ՞ք յանցաւորների ըմբոստութեան դէպքում մարմնաւոր իշխանութեան էին դիմում, թէ՞ իրանց ձեռքով դատը կտրում. իսկ Կարթագենի ժողովի

հոգևորականների ըմբոստութեան և հոգևոր իշխանութեան պատուէրը չկատարելու դէպքում, պէտք է մարմնաւոր իշխանութեան ձեռքով ստիպէին անհնազանդներին կատար ածելու հրամանը և պատիժը կրելու։ Մեր այս կանոնը համեմատաբար աւելի զիջողութեամբ է վերաբերուել պոռնկութեան համար, քան արտաքին կանոնները, որոնք պատուիրում են այդպիսի հոգևորականներին կարգալոյծ անել։ Տես Բ.—առ. 25, Բարսեղի 3, 32, 51, 70, Նէո.—1։

2. ա) Եթէ քահանան պղծութեան, պոռնկութեան, վատթար գործի մէջ գտնուի և վկայութեամբ հաստատուի, քահանայութիւն չանի. 300 դրամ տուգանք տայ յօգուտ աղքատների և դպիրների շարքում կանգնի։ Եթէ այստեղ էլ անառակութիւնը շարունակի, կարգից էլ՝ դպրութիւնից էլ ելնի, մինչև որ ապաշխարութեամբ կուղղուի. եպիսկոպոսը երբ կտեսնի նրա զղջալը, կարող է մտցնել դպիրների շարքը։

բ) Իսկ եթէ ամուսնացած երէցը նոյն յանցանքներում բռնուի և վկայութեամբ հաստատուի, կարգալոյծ լինի և եկեղեցու բաժնից զրկուի. 300 դրամ տուգանք հատուցանի կարօտեալներին. եկեղեցում գինուորների հետ կանգնի և հարկատուների կարգը մտնի և եկեղեցու պաշտօնեաների հետ չխառնուի։ Նոյն պատիժը ստանայ և ամուսնացած սարկաւագը։

գ) Իսկ եթէ երէցի կամ սարկաւագի կինը շնութեան մէջ բռնուին և հաստատուի, դրանք կամ մեղադրուող կանանց արձակեն ապաշխարանքի ենթարկելով, կամ իրանք թողնեն քահանայական կարգը։

դ) Իսկ եթէ քահանայի դուստրը պոռնկութեան մէջ բռնուի, քահանայական տնից ելնի, ապաշխարանքի տակ ընկնի և զրկուի եկեղեցու բաժնից, նոյն պատժին ենթարկուի և երէցի տղան՝ եթէ նոյնպիսի յանցանքի մէջ կբռնուի։

ե) Եթէ երէցը մեռնի, աէրտէրակինը մարդու չգնայ, ոչ էլ երէցը կնոջ մահից յետոյ կին առնի։

զ) Պոռնիկ աղախին քահանայի տանը չպէտք է լինի։

Այս կանոնը ունի 6 առանձին դէպքեր, որոնք բաժանուած են մի քանի որոշ կարգերի. այն է՝ յանցանքներ, որ

կատարում են կուսակրօն հոգևորականները, յանցանքներ, որ կատարում են ամուսնացած հոգևորականները և յանցանքներ, որ կատարում են քահանայի և սարկաւագի կինը և քահանայի ընտանիքի անդամները և աղախինը։ Կուսակրօն հոգևորականների (եպիսկոպոսի, քահանայի, սարկաւագի) պատիժները նոյն յանցանքների համար աւելի մեղմ է քան ամուսնացած հոգևորականների (քահանայի և սարկաւագի)։ Անառակութեան համար կուսակրօնը զրկւում է պատուից, պաշտօնից, բայց կարգալոյծ չի լինում։ Իսկ ամուսնացած հոգևորականը կարգալոյծ է լինում, եկեղեցու բաժնից զրկւում է, դառնում է հարկատու և եկեղեցում էլ գինուորների շարքում կանգնում, 300 դրամ տուգանք վճարելով աղքատներին բաժանելու. կանոնագիրների կարծիքով՝ երևի նրա համար, որ ամուսնացած հոգևորականները ոչ մի կարիք չունին գայթակղուելու և պոռնկութիւն անելու, դրա համար աւելի խիստ պատիժ է նշանակում, քան կուսակրօններին, թէև Բ. առաքելական և Բարսեղի կանոնները համարեա հաւասար պատիժներ են նշանակում երկուսին էլ։ Այստեղ ի միջի այլոց պիտի նկատել, որ ամուսնացած հոգևորականների շարքում նշանակուած են քահանան և սարկաւագը, եպիսկոպոսը յիշւում է միայն կուսակրօնների վրայ խօսելիս. այս ցոյց է տալիս որ 447-ին ամուսնացած եպիսկոպոսները վերացած էին, որ ասել է թէ հայերի մէջ կուսակրօնութիւնը մտած և հաստատուած էր շատ առաջ քան ընդհանուր քրիստոնեայ եկեղեցիներում, որոնց մէջ եօթերորդ դարու վերջերին է միայն պաշտօնապէս ժողովի վճռով հաստատուել։

Զինուորների դասակարգը համարւում էր թէ մեր և թէ շրջակայ ազգերի մէջ իբրև անգութ և անբարոյական դասակարգ. դրանց մասին «Առաքելական կարգադրութիւնները» խօսում է իբրև անգութ, անարգ դասակարգի մասին, որից մինչև անգամ պտուղ առնել յօգուտ եկեղեցու արգելում է. Նրանք եկեղեցում կանգնում էին ջոկ տեղ և չէին խառնւում միւսների հետ։ Մեր այս կանոնները աւելի մեղմ

են քան արտաքինները. տես Բ. առ. 11, 13, 28, Նէո.—10, Անտ.—4, Սարդ.—14, Բարս.—70, 88։

Նոյն կանոնը պատժում է հոգևորականների անառակ կանանց, որոնց պիտի կամ արձակեն, կամ իրանք ամուսինները կարգալոյծ լինին։ Նոյնը հաստատւում են և արտաքին կանոններով. տես Նէո.—8, Բ. առ.—18, Բարս. 6, 8, 32։

Քահանաների յանցաւոր որդիներին պատժում է ապաշխարանքի ենթարկելով, եկեղեցու բաժնից զրկելով։ Բարսեղի 59 կանոնը անառակին 7 տարուայ ապաշխարանքի է ենթարկում (60 կ.)։ Կանոններս շատ նմանութիւն ունին և Բարսեղ Մեծի կանոնների հետ։ Այս կանոններում գործ է ածւում իբրև տուգանք դրամը, թէ որքան արժէ ճշտութեամբ յայտնի չէ, թէև երկդրամեանը հաշւում են 50 կոպ. դրամը 20—25 կոպէկ, բայց հաստատ որոշել ամենևին չի կարելի, քանի որ այժմեայ կարծուած չափերը բոլորը տարբեր գներ և չափեր ունին զանազան տեղերում։ Մեր մէջ գործ է ածւում թուման, որ արժէ մի տեղում 5 րուբլի, երկրորդ տեղում 3 րուբլի և երրորդ տեղում 10 րուբլի։ Սոմարը մի տեղ կշռում է 3 փութ, մի երկրորդ տեղում 2 փութ. խալուարը մի տեղ 40 փ. մի ուրիշ տեղ 30 և 24։ Այնպէս որ դրամի համար մօտաւորապէս կարելի է որոշել 15—25 կոպէկ, իսկ ճիշտ յայտնի չէ։

3. ա) Եթէ ամուսնացած մարդը չնութիւն անի և ամուսնական կարգը սրբութեամբ չպահի, այդպիսին ենթարկուի խիստ պատժի։ Այդպիսի մարդուն գլխաւոր անձինք կշտամբեն օգտակար խօսքերով և ծեծով, եկեղեցույ հեռացնեն և տուգանք առնեն յօգուտ աղքատների։ Եթէ ազատ է, ծեծի փոխարէն տուգանքը շատ առնել և ապաշխարանքը երկարացնել. 200 դրամ առնել և 2 տարուայ ապաշխարանքի ենթարկել։ Եթէ գեղացի է շատ ծեծ ուտի, 100 դրամ տուգանք տայ և մի տարի ապաշխարի։ Նոյն կանոնը լինի թէ մարդու և թէ կնոջ համար։

բ) Եթէ ամուսնութիւնից առաջ մէկը պոռնկութիւն արաւ կամ իւր նշանածի կամ օտարի հետ, անարգութեան համար տուգանք տայ ինչքան կպահանջեն աղջկայ հայրն ու մայրը։

*Եթէ կամենայ նոյն աղջիկը կնութեան առնել, առաջ թող երկուսով ապաշխարութեամբ սրբուին և ապա ամուսնանան. պըսակը լինի ոչ կոյսի, այլ եկակների—միայն խաչակնքելով։ Եթէ պոռնկութիւնը եղել է աղջկայ կամքով, այն ժամանակ 100 դրամ տղան և 50 դրամ աղջիկը տան եկեղեցուն աղքատներին բաշխելու համար։*

*գ) Իսկ եթէ մէկը կուսան է, միւսը պոռնկութիւն արած, կուսանի պսակը օրհնուի օրինաւոր կերպով, իսկ միւսինը իբրև երկակի այսինքն խաչակնքել ուսը և դնել գլխին իբրև նշան թշնամու յաղթութեան։*

Առաջին մասը վերաբերում է անխտիր մարդուն և կընոջ, որոնք միևնոյն պատժին են ենթարկւում. պատիժն էլ տուգանքն է և խիստ ծեծը «գան յոլով». Երբ համեմատում ես այս պատիժները Բարսեղի և օտար ժողովների սահմանածների հետ միևնոյն յանցանքի համար, տեսնում ես, որ օտարներում նշանակուած են երկար ապաշխարանքներ զանազան աստիճաններով, մերում տեսնում ես կարճ կտրուկ—տուգանք և ծեծ. կարծես թէ Շահապիվանի ժողովում ժողովականները ասած լինեն. «օտարների երկար ու բարակ ապաշխարանքները իրանց մնան, այդպիսի մեղմ և չգործադրուող միջոցներով ոչ մի արդիւնքի չենք հասնիլ, մեր անտաշ և կոպիտ գիւղացիների համար հարկաւոր է ծեծ, ճիպոտ և տուգանք, այն ժամանակ միայն մերոնք կը վախենան և կկատարեն աւետարանի և եկեղեցու սահմանած կարգերը»։ Մարմնական պատիժը բոլորովին դուրս է եկեղեցական իրաւական սահմանից և մտնում է քաղաքացիական օրէնքների շրջանի մէջ. այդ բանը լաւ են հասկացել մեր ժողովական հարք և այդ հիմքով ծեծելը և տուգանք առնելը թողել են գիւղապետների, իշխանների վրայ։ Պէտք է ի միջի այլոց նկատել, որ ծեծը մտած էր և հետակայ դարերում օտար եկեղեցիների մէջ էլ, մանաւանդ Ռուսաց, որի մասին Բ. Գրքում կը խօսենք։

Ծեծից ազատւում էին միմիայն ազատները, այսինքն ոչ շինական տարրը, քաղաքացիք և ազնուականներ։ Բար-

սեղի 22, 38, 59 կանոններով այդ յանցանքները ենթարկւում էին 3, 4, 9 տարուայ ապաշխարանքի։ Գիւղացիները մինչև այսօր էլ նոյն այս կարգերով են առաջնորդւում, անպսակ կին պահողին, երկրորդ կին պահողին, նման յանցանքներ կատարողին եկեղեցուց դուրս են անում, պատարագ չեն թողնում, տանուտէրը ծեծում է և նոյն իսկ գիւղից հեռացնում։ Տանուտէրից մի անգամ հարցնում են, ինչու ես թողնում գիւղումդ անպսակ կին պահեն. պատասխանում է, «թող պահում է պահի, մինչև այսօր օրը երկու անգամ կանչում եմ եկեղեցու դուռը և փառաւոր ծեծ տալիս, երևի մի օր ցաւ կզգայ և կպսակուի»։ Գիւղական հասարակական կարծիքը ամենալաւ կարգապահն է, աւելի լաւ քան ամեն տեսակ ապաշխարութեան կանոնները. դժուար է ենթադրել որ ապաշխարութեան բոլոր կարգերն այն ժամանակ պահւում և գործադրւում լինէր։ Ի հարկ է կոպիտ ույժը աւետարանի թշնամին է, աւետարանը պահանջում է խօսքի, համոզմունքի միջոցով փրկել և վերանորոգել մարդկանց, եկեղեցու ամենամեծ պատիժն է հեռացնել իսպառ եկեղեցուց և մեռնելիս հաղորդութիւն չտալ։

Մեր այս և հետակայ շատ կանոններում շատ մեծ առաւելութիւն է տրւում կոյսերի պսակին և երկրորդական տեղ երկակների պսակին, մինչև անգամ եթէ աղջիկը կոյս է, տղան երկակ, հրամայում է կանոնս մէկի պսակել օրինաւոր կերպով, իսկ միւսի գլխին խաչակնքած ուռ դնել։ Նոյն հայեացքը կոյսի և երկակի ամուսնութեան վրայ մինչև այսօր էլ մեր ժողովուրդը պահպանում է, ազատ տղան միշտ յարգի է քան երկակը։ Կուսանների մասին տես Բարս. 2, 18, 60. Գան.—9, 10, 21։

4. Եթէ մարդը շնաբարոյ է և ուրիշ կնոջ վրայ աչք ունի և կարճակի կնոջը, որը որդիների տէր է, առանց պոռնկութեան կամ մարմնոյ արատի, այն ժամանակ նա պարտաւոր է ամեն բան բաժանել, կէս անել, որդիները, տունը, հողը, ջուրը կնոջ հետ հաւասար. կինը իրաւունք ունի մարդու գնալու, միայն

այս պայմանով որ բաժինը պիտի արքունի գանձարանին տայ։ Իսկ մարդը 7 տարի ապաշխարի և եկեղեցուն տուգանք տայ, թէ ազատ է 300 դրամ, թէ շինական է՝ ծեծուի և 100 դրամ տուգանք վճարի։ Եթէ ուրիշ կին այս կնաթող մարդուն գայ տարին չլրացած և յայտնուի, որ այս կնոջ պատճառով է մարդը առաջին կնոջ արձակել, երկրորդ կնոջ բռնեն և ուրկանոց տանեն մի տարի աղալու, եթէ ազատ է ուրկանոց չի գնալ, 100 դրամ տուգանք տայ եկեղեցուն։

Կանոնս շատ խառնաշփոթ է և իրաւաբանական տեսակէտից բոլորովին անորոշ։ Փորձենք պարզել որոշը և անորոշը քննենք. կանոնս անուղղակի կերպով թոյլ է տալիս կնոջ արձակել երկու պատճառով 1) պոռնկութեան համար և 2) մարմնական արատի (մի քանի ձեռագրերում արատը չկայ)։ Իսկ եթէ ուրիշ դիտաւորութեամբ է արձակում կնոջ, օրինակ՝ ուրիշ կնոջ վրայ պսակուելու համար, մեր կանոնը ընդմիշտ չի արգելում, այլ ընդհակառակը թոյլ է տալիս երկու կողմին էլ պսակուելու, կնոջը իսկոյն և եթ, իսկ մարդուն երևի թէ 7 տարուց յետոյ, որովհետև 7 տարուայ ապաշխարանք է նշանակում նրա համար. արդեօ՞ք ապաշխարանքը կրելուց յետոյ, թէ՞ առաջ էլ կարող է ամուսնանալ, յայտնի չէ։ Կանոնը ասում է, եթէ առաջին տարին ամուսնացաւ մարդը և նոր կինը նախկին կնոջ արձակման պատճառ համարուեց, այն դէպքում այս կնոջը բռնեն, եթէ շինական է բորոտանոց տանեն ալիւր աղալու, եթէ ազատ է, 100 դրամ տուգանքի ենթարկել. շատ լաւ, իսկ եթէ 100 դրամը տուաւ և էլի եկաւ մարդու մօտ, ի՞նչ պիտի անել, յայտնի չէ, կամ կարո՞ղ է գալ, էլի անյայտ է. կամ մի տարի բորոտանոցում աղաց և ապաշխարանքը կրեց, յետոյ կարո՞ղ է նորից գալ մարդու մօտ, էլի անորոշ է։ Բացի այդ բաժինը եթէ կինը ստացել է և իրաւունք ունի մարդու գնալու, ի՞նչու պիտի բաժինը արքունի գանձարանը տայ և ոչ եկեղեցու, կամ բաժանի աղքատներին. կամ հէնց ինչ հիմքով արդար կինը պիտի բաժինը յանձնի տէրութեան, քանի որ անմեղ է։ Անորոշ է նոյնպէս այն կէտը թէ ար-

դեռ՞ք որդիները ինչպէս պիտի բաժանեն, տղայքը հայրը վերցնի, աղջիկները մայրը, թէ վիճակով հաւասար կբաժանեն, իսկ եթէ որդիքը չուզեցին մէկն ու մէկի մօտ մնալ, այն դէպքում ինչպէս պիտի վարուել. այս բոլոր կէտերը անորոշ է և խառն։ Բացի դրանից շատ խիստ է պատիժը, ուղարկել առողջ մարդկանց վարակիչ հիւանդանոցները բանելու համար, այդ տաժանելի չարչարանքից ազատելով ազատների կանանց, որոնք միայն պիտի վճարեն 100 դրամ (մօտ 20 րուբլի) բոլորովին անարդար և խղճի հակառակ պատիժ է, որ վայել է միայն Ն. դարու կոպիտ բարքերին։

Յուստինիանոսի Նովելլայով և ուրիշ քրիստոնեայ թագաւորների օրէնքներով ամուսնալուծութիւն թոյլատրւում է 5 դէպքի համար, տես Բարս. 9 կ.։ Մեր Շահապիվանի թէ այս և թէ յաջորդ կանոնը թէև խճճուած և անորոշ, բայց և այնպէս առաջի կանոնն է ամբողջ քրիստոնեայ եկեղեցիների կանոնների մէջ, որ բացի պոռնկութեան դէպքից թոյլ է տալիս և մարմնական արատի համար ածակել կնոջ։

5. Եթէ մէկը կնոջը արձակի ամլութեան պատճառով, կինը կարող է վերցնել բոլոր կարասին, որ հետը բերել է, նոյնպէս և հանդերձը, արծաթ, ադախին, անասուն. եթէ բացի ամլութիւնից ուրիշ արատ չունենայ կինը, մարդը թող տուգանք վճարի անարգանքի համար, եթէ ազատ է 1200 դրամ, եթէ շինական է 700 դրամ։ Եթէ մի տարի չանցած ուրիշ կին այդ մարդուն գայ և իմացուի որ կնահանութեան պատճառով այդ կինն է, բռնեն այդ կնոջը և ուրկանոց տանեն մի տարի պղալու և աղախնութիւն անելու, 100 դրամ էլ եկեղեցուն տայ, եթէ ազատ է, 100 դրամ ուրկանոցին տայ։ Իսկ եթէ մարդն է արձակման գլխաւոր պատճառը, որ ուրիշին առնի, 100 դրամ տուգանք վճարի եկեղեցուն և 3 տարի ունկնդիրների հետ ապաշխարի, մի տարի էլ ներսում։

Իսկ եթէ մէկը կարձակի որդու տէր կնոջ կամ ամուլ կընոջ, առանց պոռնկութեան պատճառի կամ ուրիշ արատի, նոյն կանոնն լինի և նրա համար։

Կանոնից երևում է, որ եթէ թէ արգելում է ամլու-թեան համար արձակելը, և ո՛չ մի դրական արգելք չի սահ-մանում. թէ կինը կարո՞ղ է մարդու գնալ թէ ո՛չ, այդ մա-սին ոչինչ չի խօսում. սակայն այստեղ յանցանքը աւելի քիչ էր քան 4-րդ կանոնի մէջ, եթէ այնտեղ թոյլատրւում էր մարդու գնալ, այստեղ աւելի շուտ պիտի թոյլատրի այդպէս վարուել։ Այս կանոնս իւր կազմութեամբ և անորոշութեամբ նման է նախորդ կանոնին. պարզ չէ այն հարցը, թէ եթէ ամլութիւնը արգելուեց, ամլութեան պատճառով արձակուած կինը և արձակող մարդը եթէ նորից ամուսնանան, նրանց ամուսնութիւնը անվաւեր է՞ թէ ոչ. վճռական և ոչինչ չկայ այս կանոնումս այդ մասին։

> 6. Եթէ կինը մարդուց հեռանում է, բռնուի և տարուի նորից մարդու մօտ, եթէ անառակ լինի, և բարի խրատի լսող, թող սիրով ապրեն. իսկ եթէ մարդը լինի չնաբարոյ և կամ պոռնիկ, արբեցող, թող նրան լաւ ծեծեն և կարգի բերեն. եթէ ազատ է թող խրատով և սաւպանքներով ճանապարհ բերեն. եթէ մարդը հեշտութեամբ կուղղուի, թող կինը նրան հնազան-դի և ապրեն միասին։

Այս կանոնս նախընթացների նման դրական կողմ չունի. ինչպէս հասկանաս, եթէ կինը անառակ է և փախչում է, զօրով պիտի բերել մարդու մօտ, ենթադրելով որ մարդը ըն-դունում է և սիրով պիտի վարուի կնոջ հետ. իսկ եթէ՞ միւս օրը էլի փախաւ, մի՞թէ ուժով հնար կլինի պահել։ Կանոնը ասում է, եթէ մարդը դիւրութեամբ փոխուի, կինը ապրի հետը, լա՛ւ, իսկ եթէ դիւրութեամբ չփոխուի, այն ժամա-նակ ի՞նչ անեն։ Կանոններս եբրև օրէնք կեանքի մէջ չեն կարող գործադրուել, որովհետև իրաւաբանական որոշ սահ-մաններ և յայտնի չափեր չունին, սրանք ոչ թէ օրէնք, հապա եօլա գնալու, մի կերպ կառավարուելու ձևեր են։ Այսպիսի կարգեր մինչև այսօր էլ գոյութիւն ունեն գիւղե-րում այսպիսի ձևով. մէկը գալիս է գանգատ անում ծերե-

րին թէ «մարդս ծեծում է, կամ մարդս ինձ չի պահում». մարդն էլ գանգատ է անում թէ «կնիկս անզգամ է, նրա հետ ապրել չի կարելի»։ Ծերերը վճռում են «դու էլ ես ղալաթ անում, դու էլ, ամօթ է, գնացէք և հաշտ ապրեցէք». կամ թէ մի երկու կխփեն մարդուն, կբարկանան վրան և երկուսին էլ ճանապարհ կդնեն տուն. այս կերպով էլ խօսում է մեր Նախիջևանի կանոնը։

7. Եթէ բռնութեամբ և անիրաւութեամբ մէկը առևանգութիւն կատարի, խլեն նրանից կնոջը և յանձնեն իւր ծնողներին, եթէ աղա է 1200 դրամ, եթէ շինական է 700 դրամ առնեն նրանից անարգանքի համար։ Առևանգին օգնող անձինք վճարեն 100 դրամ, կէսը եկեղեցուն, կէսը կարօտեալներին։ Եթէ առևանգողը առանց պսակի պոռնկեցաւ աղջկայ հետ, եկեղեցուն տուգանք տայ 100 դրամ և 3 տարի էլ ապաշխարի։ Եթէ այդ խռովութիւնից յետոյ էլի ծնողների և աղջկայ համաձայնութիւնը պսակուելու համար առնուի, այն ժամանակի պսակը օրհնեն իբրև երկակի՝ ուրը խաչակնքեն և գլխին դնեն, իսկ եթէ կոյս են մնացել, օրինաւոր պսակ անեն։ Եթէ առևանգութեան ժամանակ քահանան գաղտնի կերպով պսակի նրանց առանց ծնողների հաճութեան, քահանայագործութիւնից զրկուի, 100 դրամ կարօտեալներին տայ, պսակն էլ ավաւեր լինի։

Կանոնս արգելում է առևանգութիւնը, արգելում է պսակ անել առանց աղջկայ ծնողների հաճութեան. պատժում է թէ առևանգողին և թէ նրան օգնողներին։ Բարսեղի 42 կանոնով հակառակ կամքի պսակը անառակութիւն է։ 38 կանոնով արգելում է առանց ծնողաց կամքի պսակուել, ապաշխարանքի ենթարկուելու սպառնալիքով։ 30 կանոնով առևանգողը և օգնողը երեք տարի ապաշխարանքի են ենթարկւում։ Տես և 22 կանոնը։

Թէ այս թէ նախնթացները կարծես հետևողութիւն են Բարսեղ Կեսարացու կանոնների, այն տարբերութեամբ, որ ծեծ և տուգանք է աւելանում մերի մէջ և զանազան դէպ-

քեր է մէջ բերում խնդիրը իբր թէ բազմակողմանի լուծե-լու համար։ Տես և Բ. առ. 67, Անկ. 11։

*8. Ով որ, մարդ թէ կին, կախարդութիւն անի, ուրանայ հաւատը, կամ չարագործութիւններ կատարի, եթէ զղջայ և ապաշխարի, ըստ գրոց հրամանի քարկոծուի։ Եթէ խոստովանելու գայ, մինչև մահ ապաշխարի, 12 տարի ունկնդիրների հետ եկեղեցուց դուրս կանգնի, 3 տարի ապաշխարողների հետ, կարօտեալներին միշտ օգնի և ողորմութիւն տալով մեղքերը քաւի և մեռնելիս հաղորդուի։*

Այս կանոնը չտեսնուած պատիժ է սահմանում կախարդութեան և հաւատուրացութեան համար, այն է մահուան պատիժ, որը բոլորովին հակառակ է աւետարանի սկզբունքներին և գաղափարներին, ճիշտ է կանոնս յենւում է հին օրէնքի վրայ, բայց հին օրէնքի այդպիսի կարգերը վերացան Քրիստոսի փրկարար քարոզներով և առաքելական ժողովի վճռով։ Այս խիստ պատիժը միմիայն ապացուցանում է թէ ի՛նչ սարսափելի վիճակումն էր Հայաստանը, ի՛նչպիսի հաւատուրացներով և չարագործներով լցուել էր, որոնց դէմ կռուելու միակ զէնքը մնացել էր մահուան պատիժը։ Թէ ապաշխարանքի և թէ կախարդութեան ու հաւատուրացութեան համար տես Պետ. Աղէք. 12 կ. Բարս. 65, 72, 73, 83, Նիկ. 10, 11, Անկ. 1, 2, 4, 5, 6, 7, 8, 9, 12։

*9. Ով դիւթերի հարցուկների մօտ կերթայ, եթէ ազատ է 200 դրամ տուգանք վճարէ կարօտեալներին, թէ շինական է 30 հարուածով (15 կրկին) ծեծ ուտի և 100 դրամ կարօտեալներին բաժանի և 3 տարի էլ ազատ թէ շինական ապաշխարեն և ապա հաղորդուին։*

*Իսկ եթէ եպիսկոպոս կամ երէց գնան հարցուկների մօտ և այդ բանը երկու երեք վկայով հաստատուի, եպիսկոպոսը եպիսկոպոսութիւնից ընկնի, երէցն էլ քահանայութիւնից լուծուի։ 1000 դրամ եպիսկոպոսը, 500 դրամ երէցը կարօտեալներին բաժանեն։*

*Իսկ եթէ եկեղեցու սարքին պաշտօնեաներից և աբեղայական ուխտից գնան հարցուկների մօտ, աշխարհականների պատիժը կրեն։ Այս կանոնը անխտիր՝ լինի թէ տղամարդկանց և թէ կանանց համար։*

Հարցուկները նրանք են, որոնք ձեռքին նայելով, արմունկներով, կամ ջրի միջոցով, զանազան հարցեր տալով գուշակութիւններ են անում։ Դիւթիչները զանազան ձայներով իբր թէ դևեր են բերում, գայլերի, գազանների բերանը կապում, որ հանդերում տնային կենդանիներ չուտեն։ Յովհան Մանդակունին «վասն հմայից դիւթականաց» ճառի մէջ հետևեալ անուններով է թւում հմայութիւնները. «Դիւթութիւն, թովչութիւն, հատահարցութիւն, հաւահմայութիւն, մաղաբախութիւն, քուահարցութիւն, հեղահարութիւն, հմայութիւն, միջագիտութիւն, գրաբարութիւն, յաստեղագիտութիւն, դիւահարցութիւն, օրահմայ, գեղահմայ, սնհիկոն, յուռութ, բախտ, ճակատագիր, գիր պահարանի, շարժմակ բժժանաց, հմայք, դիւթք, «յորս կոչեն զդևսն յաղ, յերկաթ, ի ջուր, ի նարօտ, յիւղս, ի գարի, ի յուլունս, ի մոմ, ի հեր գլխոյ» 194 եր.։

10. *Որոնք միայն դիւթում են, բայց չեն կախարդում, թէ այր թէ կին լինին, 30 հարուածով ծեծ ուտեն, խանձուին, մրուին և ուրկանոց տարուին. 2 տարի աղան և ծառայեն, եթէ ազատ է 500 դրամ ուրկանոցին տայ և երկու տարի ապաշխարելուց յետոյ հաղորդուին։*

Տես Ա.—տռ.—15, Լաւ.—36, Անկ.—24, Կես.—8, Բարս.—65, 72։

Օտարների կանոններում ծեծ և տուգանք չկան, այնտեղ միմիայն ապաշխարանքներ են սահմանուած։

11. *Եթէ հեթանոսների նման լաց ու կոծ անեն մեռելների վրայ, չեն լսել առաքելական կանոնիս և հնազանդել, նրզովեալ լինին, մի տարի եկեղեցի չմտնեն, եթէ ազատ է 100 դրամ, թէ չինական 50 դրամ տան աղքատների։*

Տես Աշտ.—2 կ.։

12. *Եթէ որդին՝ հօրը կնոջն առնի, եկեղեցի չմտնի, բոլոր ժողովներից նզովեալ լինի մինչև որ ապաշխարի 7 տարի ունկնդիրների հետ, 3 տարի ներսի ունկնդիրների հետ, 50 դըրամ աղքատներին, 50 դրամ եկեղեցուն տայ և եթէ փոխուի և վարքը ուղղուի, հաղորդուելու իրաւունք ստանայ։*

*Իսկ եթէ հայրը որդու կինն առնի, կամ եղբայրը եղբօր կինը, նոյն պատիժը և նզովքը վրան թափուի։*

*Ոչ ոք ջերմ հարազատի և ազգականի կինը կնութեան չառնի, կամ շնութիւն չանի նրանց հետ. եթէ կնոջ ցանկութեամբ լինի, նոյն պատիժը և տուգանքը կրի նա և բացի դըրանից 10 տարի ուրկանոցում աղայ, եթէ ազատ է ուրկանոց չգնայ, 300 դրամ ուրկանոցին տուգանք վճարի։*

*Արիւնակցական առաջին և երկրորդ աստիճաններում ամուսնութիւնը բոլոր եկեղեցիների կանոններով խստիւ արգելւում է, բայց աւելի խիստ քան մեր այս կանոնն է պատուիրում, և որը հետակայ և նախընթաց կանոնների համեմատութեամբ շատ մեղմ է։ Բարսեղի կանոնով խորթ մօր կամ քրոջ հետ մեղանչողը սպանողի պատժին է ենթարկւում, այսինքն 20 տարուայ ապաշխարանքի։ Արգելուած ամուսնութիւն մտնելը նա շնութիւն է համարում և 15 տարուայ ապաշխարանքի ենթարկում։ Տես Բարս.* 56, 58, 68, 79։

13. *Ոչ ոք չհամարձակի ամուսնանալ քեռորդու, եղբօրորդու կամ հօրաքրոջ, կամ ազգականի հետ մինչև չորրոր ծընունդը։ Ով հաղորդ կլինի այսպիսի պսակին, պսակը կօրհնի կամ հարսանիքը կերթայ եթէ եպիսկոպոս է կամ երէց, աթոռից և քահանայութիւնից ընկնեն և պաշտօնեաների հետ չըխառնուին։ Իսկ եթէ ամուսնացածները պիղծ ամուսնութիւնից դառնան և միմիանցից բաժանուին, թող իրանց ունեցածի կէսը կարօտեալներին տան, իրանց կեանքը ապաշխարանքով անց կացնեն, մեռնելիս միայն հաղորդուին։ Պսակ օրհնող եպիսկոպոսը* 500 *դրամ, երէցը* 200 *դրամ տուգանք աղքատներին բաժանեն և ապա իրանց պաշտօնի մէջ հաստատուին։ Իսկ եթէ պսակուողները չեն բաժանուիլ, պսակող պաշտօնեայք քա-*

հանդիսութիւն չանեն։ Իսկ եթէ հակառակն և առեն, ինչու Նիկիական կանոններում այդպէս ծանր պատիժ չէ նշանակուած, նրանք սխալւում են այդպէս մտածելով, որովհետև այնտեղ ի նկատի չունէին թէ այսքան չարիք և ոճիրներ մեր աշխարհում պիտի գործուէին։

Այս նախորդ կանոնի մէջ հետևողութիւն չկայ, 12-րդ կանոնով Ա. և Բ. աստիճանի ամուսնութեան համար ամենաշատը տասն տարուայ ապաշխարանք է նշանակում, իսկ այստեղ մինչև չորրորդն՝ եղած ամուսնութեան համար ցմահ։ Բացի այս մահուան պատիժ նշանակող ժողովը կարծես անզօր է գտնւում փակել միմիանցից ամուսնացողների և թոյլ չտալ միասին ապրելու. այդ թողնում է ամուսնացածների կամքին, և սրանց բաժանումից կախումն ունի պսակադիր հոգևորականների պատժուելը կամ չպատժուելը։ Այս խնդիրների վրայ աւելի պարզ և որոշ են Բարսեղի 6, 7, 75, 87, Նէո.—2։

14. Եպիսկոպոս, երէց կամ սարկաւագ, կամ պաշտօնեաներից կամ ուխտականներից որևէ մէկը չհամարձակի սանտիկին պահել, ինչպէս Մծղնէից սովորութիւնն է. եթէ յայտնուի այդ և հաստատուի, կարգալոյծ լինի յանցաւորը։

Այս կանոնս շատ նման է Նիկիական 3-ին, որը մեր ձեռագրներից դուրս է ձգուած. տես և Բարսեղի 88 կ.։ Մծղնեայի մասին տես 20-րդ կանոնը։

15. Ով կամենում է միայնակեաց լինել և կոյս մնալ, արեգայութիւն է յանձն առնում, պէտք է ճշմարիտ և բարեպաշտ ընկերների հետ ապրի և իր ուխտը սրբութեամբ պահի, և պիտի լինի «մարդ կատարեալ և յերկրի հրեշտակ երևելեալ»։

Կանոնս շատ երկար խրատ է տալիս վանական եղողներին, մի առ մի յիշելով բոլոր մեղքերը, որոնցից պիտի հեռու կենան։ Վանականութեան մասին տես Բ. գիրքը։

16. Առանց աշխարհի գլխաւոր եպիսկոպոսին—ոչ ոք եպիսկոպոս—առաջնորդ չլինի. առանց գաւառի եպիսկոպոսի էլ՝ անապատաւոր կամ վանաց երէց չնշանակուին։ Եթէ եպիսկոպոսը, երէցը, ազատ (ազնուական) դատաւորը, և շինականը կամենում են առաջնորդներ կարգել, եկեղեցու հովիւներ պատրաստել, ժողովրդապետներ և օրէնսդիրներ նշանակել, պիտի կաշառք չառնեն, ճշմարտութեամբ ընտրութիւն պիտի անեն և օրէնքի ու սրբութեան նախանձախնդիր մարդկանց պիտի ջոկեն։

Այս կանոնը երկար է, կցկտուր և անկապ, ընդհանուր միտքը որքան կարելի է ամփոփեցի այս մի քանի նախադասութիւնների մէջ։ Կանոնս խօսում է Նիկ. 6 կանոնի համաձայն գլխաւոր եպիսկոպոսի իրաւունքների մասին և հետևողութիւն է արտաքին կանոնների, որովհետև Հայոց կանոններում «գլխաւոր եպիսկոպոսի» փոխարէն գործ է ածւում կաթուղիկոս բառը, որը գործածութեան մէջ էր հէնց Դ. դարից սկսած։ Գուցէ թէ այս կանոնը գրում է այն Հայ եպիսկոպոսների մասին, որոնք ապրելով յունաց Հայաստանում կամ Կեսարիայի սահմաններում, շարունակում էին գնալ, ինչպէս Փաւստոսն է վկայում, Կեսարիայի եպիսկոպոսից ձեռնադրութիւն ստանալու։

Ներսէս Մեծի կարգադրութեամբ վանքերը և անապատները ենթարկւում էին ոչ եպիսկոպոսի, հապա մի քանի կառավարիչների հսկողութեան Խադ սարկաւագի գլխաւորութեամբ։ Այս կանոնովս գաւառի վանքերը, վանաց երէցները և անապատաւորները ենթարկւում են գաւառի եպիսկոպոսի այսինքն առաջնորդի հսկողութեան։—Վանաց երէց—կարող է ունենալ երկու նշանակութիւն, մէկը վանքի քահանայ, միւսը վանքի մեծ—վարդապետ—արխիմանդրիտ։ Որովհետև այն ժամանակները վանականները առանց եկեղեցական աստիճանի կրօնականներ էին, ուստի և իրաւունք չունէինք քահանայագործութիւն անելու. այդ պաշտօնի համար հրաւիրւում էին քահանաներ, կամ վանականներից մէկն ու մէկը ստանում էր ձեռնադրութիւն և քահանայագործութիւն

անում. սրանք կոչւում էին վանքի քահանայ կամ վանաց երէց· գուցէ և սրանց էր յանձնւում վանքի վանահայրութիւնը և տեսչութիւնը։

Այս կանոնի երկրորդ պարբերութիւնը, որ ժողովրդական ընտրութիւնները կատարուեն անաչառութեամբ և ոչ կաշառքով, անորոշ է ասուած. չի հասկացւում ժողովրդապետ և օրէնսդիր բառերի պարզ նշանակութիւնը, արդեօ՞ք ժողորդապետ ասելով պիտի գիւղապետ կամ այժմեայ գործածութեամբ տանուտէր հասկանալ և օրէնսդիր ասելով՝ գիւղի մէջ նշանակուած դատաւորներ, որոնք պիտի դատեըը կտրէին և կառավարէին գիւղերը, թէ հէնց դատաւորը և ժողովրդապետը հոգևորականներ էին, որոնց ընտրում էր ժողովրդի բոլոր դասակարգը· այս խնդիրը անորոշ է։ Հանգուցեալ Հ. Բաստամեանը Գօշի յառաջաբանում թերակի խօսելով այս կանոնների վրայ, ճգնում է հաստատել, որ դատաստանը, նոյն իսկ քրէական յանձանքների դատը գտնւում էր հոգևորականների ձեռքին։ Արդեօ՞ք կանոնովս կարելի է նոյն առարկութիւնը հաստատել, կամ առհասարակ վերոյիշեալ կարծիքը կարելի է հաւատի ընդունել, այս մասին մանրամասն կխօսուի Բ. գրքում. միայն այստեղ նկատելի է, որ «առաջնորդ կարգելու և եկեղեցու հովիւներ պատրաստելու» խօսքերը պարզ է, որ ասւում են եպիսկոպոսի, երէցների, սարկաւագների ընտրութեան մասին. «Ժողովրդապետներ և օրէնսդիր», ասելով պիտի հասկացուի տանուտէր և դատաւոր, որոնք ոչ թէ հոգևորականներից էին, այլ աշխարհականներից· որովհետև ինչպէս և Շահապիվանի միւս կանոններից երևում է գիւղի մէջ մեղաւորներին պատժողը, ծեծողը, մրողը, մինչև իսկ քարկոծ անողը «գլխաւորները» էին, այսինքն այժմեայ գործածութեամբ գիւղի իշխանները, համփաները, աղսախկալները, մանաւանդ որ հէնց մեր եկեղեցական կանոնները խստիւ արգելում էին հոգևորականներին, ոչ միայն ծեծել, հապա խօսքով վիրաւորել աշխարհականին։

17. Եթէ մէկը մարտիրոսի նշխարներ է բերում և մատուռ շինում, այդ պիտի անի եպիսկոպոսի թոյլտուութեամբ։ Իսկ եթէ սուրբ տեղերից մարտիրոսի նշխարներ է բերում, պիտի այդ անի տեղական եպիսկոպոսի թղթերով և վկայութեամբ և ամփոփի իւր գաւառի եպիսկոպոսի թոյլտուութեամբ և սրբոց յիշատակը ամեն տարի տօնախմբութեամբ կատարի։

Ոչ ոք իրաւունք չունի առանց եպիսկոպոսի հրամանի տէրունական խորհրդի սեղան կանգնեցնել։ (Այսինքն այնպիսի աղօթատուն շինել, ուրեղ կարելի լինի պատարագ անել)։

Այս կարգերը որոշւում են և արտաքին կանոններով, շատերը երազ տեսնելով, կամ ուրիշ միջոցներով ձեռք բերելով մարտիրոսների նշխարներ, առանց եպիսկոպոսի թոյլտուութեան շրջեցնում էին և դրամ ժողովում, կամ թէ զանազան տեղերում սեղան էին կանգնեցնում, նշխարը ամփոփում այնտեղ և ուխտատեղի դարձնում և ինքնագլուխ պատարագ մատուցանում։ Այդպիսի դէպքերը արգելւում են այս կանոնով. տես և Բ. առ.—31, Անտ.—5 կ.։

18. Եթէ վարդապետը նզովել կամ բանադրել է որևէ մի քահանայի, աշակերտի կամ աշխարհականի, ուրիշ տեղի վարդապետ, կամ եպիսկոպոս, կամ երէց չհամարձակի նզովուածին օրհնել կամ բանադրուածին բանադրութիւնից արձակել. հապա պիտի բանադրուածին ուղարկել իւր վարդապետի մօտ ներողութիւն խնդրելու և բանադրանքը վերցնելու։

Նոյնը հաստատւում է և արտաքին կանոններով, միմիայն նրանց մէջ անմեղ բանադրուածին թոյլ է տրւում գանգատով դիմելու աւելի բարձր պաշտօնեայի գործքը քննելու և վճիռ կայացնելու։ Տես Բ. առ.—32, Նիկ.—5, Անտ.—6։

19. Եթէ մէկը, երէց, սարկաւագ, կամ արեղայ մծղնէութեան մէջ գտնուի, թող կարգալոյծ լինի, ճակատին աղուէսադրոշմ դրուի, և ճգնաւորի տեղերում ապաշխարի։ Եթէ երկրորդ

անգամ նոյնը գործի, երկու ջիլերը կտրեն և ուրկանոց տանին. նոյն պատուհասին և արեղան ենթարկուի։

Իսկ եթէ մարդիկ կանանցով և որդիներով նոյն աղանդում գտնուին, թէ արանց, թէ կանանց, թէ իրադէտ մանկանց ջիլերը կտրեն, աղուէսադրոշմ ճակատին դնեն և ուրկանոց տանին ապաշխարելու. իսկ անդէտ մանուկներին յանձնեն Աստուծոյ պաշտօնեաների ձեռքը կրթելու և սովորեցնելու։

Թէ ինչ բան է այս աղանդը, որ մծղնէութիւն է կոչւում, յայտնի չէ. այս կանոնովս ամենածանր պատիժն է նշանակւում և այն էլ մարդկանց սեռական անդամների—ջիղերի կտրումը, որ իւրատեսակ և բարբարոսական պատիժ է, ոչ յատուկ աւետարանի և եկեղեցու ոգուն։ Որքան խիստ է պատիժը, նոյնքան զզուելի է յանցանքը։ Եւ որովհետև պատիժը կեդրոնացած է արակաքի վրայ, ուստի ենթադրելի է որ անբարոյականութիւն և վարքերի ապականութիւն տարածող աղանդ է, որի առաջն առնելու համար հրամայւում է ոչ միայն մարդկանց, այլև կանանց և տղայոց ջղերը կտրել. իսկ անդէտ—փոքրիկ մանուկներին քահանաներին տալ կրթելու։

Բացի այդ պատժից յանցաւորի ճակատին դրւում է աղուէսադրոշմ, այդ կատարւում է այսպէս, շիկացած երկաթի ձողով խարում են յանցաւորի ճակատը և այդ դրոշմով նրան ցմահ պատժում։ Ռուսաստանում խարել թոյլ էր տրւում երեք անգամ գողութեան համար. 1845-ի կարգադրութեամբ խարելու պատժին ենթարկւում էին ծանրակիր աշխատանքի դատապարտուած աքսորականները և Սիբիրից փախած բոլոր դատապարտուածները ու թափառաշրջիկները։ 1863-ին բոլորովին վերջացաւ այդ կարգը։—

20. Եթէ երէցը իմանայ, որ ժողովրդի մէջ մծղնեայ կայ և չի յայտնիլ եպիսկոպոսին, և եթէ քննելուց յետոյ ապացուցուի, որ քահանան ամիսներ առաջ գիտէր և չէր բողոքում եպիսկոպոսին (19 կ.), մծղնէից պատիժը կրի և ցմահ քահանայագործութիւնից զրկուի, որ միւսներին խրատ լինի։ Իսկ եթէ

կհաստատուի, որ երէցը յայտնել է եպիսկոպոսին և վկայու-թեամբ ցոյց տուել մծղնեայ եղողներին, և եպիսկոպոսը կաշառ առնելով, կամ աչառութիւն անելով, այդ բանը ծածկել է, ա-թոռից ընկնի և պատուից զրկուի այդպիսի եպիսկոպոսը։ Իսկ եթէ եպիսկոպոսը ուշադրութիւն դարձնելով բողոքին, կամեցաւ յանցաւորին պատժել, բայց չարագործը յայտնելով մարմնաւոր իշխանութեան, գաւառի իշխանին, նախարարին, կամ գիւղի գլխաւորին նրանց օգնութեան դիմելով կամեցաւ պատասխա-նատուութիւնից ազատուել, իսկ նրանք պաշտպան կանգնելով, եթէ կկամենան չնացողներին ծածկել կաշառառութեամբ կամ ակնառութեամբ, թող նզովեալ լինին, եկեղեցի չմտնեն, մինչև որ պղծագործին չտան եպիսկոպոսի ձեռքը։—

Իսկ եթէ նախարարի տունը, կինը, կամ դուստրը, կամ որդին, կամ հէնց ինքը պղծագործութիւն կատարեն, և նախա-րարը չհեռանայ այդ յանցանքը գործելուց, կամ եպիսկոպոսին չտայ ընտանիքը պատժելու, ինքնապաստան լինի, թող տնով, որդիներով նզովեալ լինի, հրապարակ չդուրս գայ, ոչ ոք նրա հետ յարաբերութիւն չունենայ, մինչև որ ուղղութեան չգայ։

Իսկ եթէ ինքը պղծութիւնից հեռու կլինի, թող ընտա-նիքը և ժառանգներին յանձնէ գլխաւոր եպիսկոպոսին կշտամ-բելու։

Իսկ եթէ ոստիկանին (թագաւորազն) տանը լինի պղծու-թիւնը կամ ինքը, կամ ընտանիքը մասնակցեն, ընտանիքը կըշ-տամբուի և այն պատուհասը կրի, որը գրեցինք։ Իսկ իրան (ոս-տիկանին) վերցնեն պղծագործ ընտանիքի հետ միասին և հրա-պարակ բերեն, գլխաւոր եպիսկոպոսի, մեծամեծ իշխանների և աւագ դատաւորների առաջ Աստուծոյ օրէնքի վրէժխնդիրը լի-նեն։ Որպէս զի ուրիշները տեսնելով սրբութեամբ և երկիւղով պաշտեն Արարչին, կատարեալ լինեն աստուածպաշտութեան կարգի, սրբերի և օրէնքների յարգելուն մէջ և ճշմարիտ ծառա-ներ լինին Աստուծոյ՝ խօսքով և գործով։

Երկու կանոններովս երևում է, որ մծղնէից աղանդը կրօ-նական էր, չէր յարգում և սուրբերին և եղած օրէնքները ու եկեղեցու կարգերը։ Թէ ինչ էր քարոզում մծղնէից ա-ղանդը, որոշ և պարզ ոչինչ չի յայտնում այս կանոնս, բայց երևում է պատիժների սահմանումներից, որ աղանդի գլխաւոր և զզուեցնող նշաններից մէկն էր պղծագործութիւնը, իւ-

բառեսակ անբարոյական խառնակութիւնը, որը դժբախտաբար դժուար է լինում պարզել ընդհանուր բառերի և մըտքերի գործածութեամբ։ Թէ ինչքան անբարոյական և զզուելի պղծութիւններ էին կատարում այդ աղանդաւորները, երևում է նրանից, որ բոլոր ժողովականները միահամուռ՝ շենականից սկսած մինչև թագաւորական տները և հասարակ գպրից մինչև եպիսկոպոսը ենթարկւում էին ամենախիստ պատժի։

Մծղնէից աղանդի մասին տես 1895 թ. «Արարատի» յունուարի Կ. Վ.-ի յօդուածը, ուր ասում է. Մծղնեայ «մըծըղլին» անունը, որ Մեսսաղեանի նախնական ձևն է և աղօթողներ է նշանակում։

«Այր և կին միասին խմբով ման էին գալիս նոքա և ողորմութիւն էին հաւաքում. մկրտութիւն, հաղորդութիւն և այլ եկեղեցական կարգեր աւելորդ էին համարում և մըշտական աղօթքներով աշխատում էին արտաքսել, իրենց կարծիքով ամեն մարդու մէջ ի ծնէ բնակուող՝ չար դևին։ Միստիքական պարով նոքա յափշտակութեան մէջ էին ընկնում և այդպէս ձգտում էին այս աշխարհից կտրուած ցընորքների գրկում երջանիկ ժամեր գտնել»։—

Տես և Ե.—Դւ. 32 կանոն Օձնեցու օրով եդած և սահմանուած։

(Տես մեր կանոնագրքերը)։

## ՇԱՀԱՊԻՎԱՆԻ ԺՈՂՈՎԻ ԳՐԱԲԱՌ ԲՆԱԳԻՐԸ.

1. Եթէ եպիսկոպոս ոք գտցի ի պղծութեան կամ ի պոռնկութեան, կամ զինչ և իցէ ի վատթար գործս, և զառաքելական զպատիւն և զսուրբ աթոռն անարգեաց. այնպիսումն ասէ գիր, ընդ գողս ընթանայիր և ընդ շունս դնէիր զբաժին քո. և վկայութեամբ ի յայտ եկեսցէ. յաթոռոյն և իշխանութենէն մերժեսցի, և զքահանայութիւն մի պաշ-

տեսցէ, ՌՄ. դրամ եկեղեցւոյ տուգանեսցի, և անձինն իւրում լիցի մեղադիր, զի մարդ ի պատուի էր և ոչ իմացաւ, և զտուգանսն կարաւտելոց բաշխեսցին զի պարտ էր նմա յամենայն ժամ յաւրէնս Տեառն խորհել ի տուէ և ի գիշերի և զպատուիրանս նորա պահել և մի ըստ արտաքի անկանել, այլ զճանապարհ զարքունի գնալ ոչ աջ խոտորել և ոչ յահեակ զի մի աշակերտեալքն զնոյն վատ ուսումն ուսցին։

2. Եթէ քահանայ ոք ի պղծութեան իցէ, կամ ի պոռնկութեան, կամ այլ ի վատթար գործս ի վկայութեամբ իրքըն յայտ եկեսցեն. զքահանայութիւն մի պաշտեսցէ. Յ. դըրամ տուգան տացէ, յաղքատս բաշխեսցին. և նա ի դպրաց կարգի կացցէ, ապա թէ ի դպրութեանն ի նոյն պղծութեան գտանիցի, ի կարգին ելցէ ի դպրութենէն մինչև ի կարգ ուղղութեան եկեսցէ ապաշխարութեամբ. և տեսեալ եպիսկոպոսին զճանապարհս նորա, ի դպրաց կարգի կացցէ, զի եկեղեցի զսուրբ կամի. մանաւանդ տէրունական սեղանն խորհրդոյ զանարատս ընդունի. զի մի բարկութիւն Աստուծոյ զարթիցէ ի վերայ երկրի ի ձեռն առաջնորդաց։ Եթէ կրաւնաւոր երէց գտցի ի պղծութեանն և ի պոռնկութեան. կամ այլ գործս չարեաց և ստուգեալ վկայիւք քահանայութիւնն լուծցի, և յեկեղեցւոյ բաժնէ հեռացեալ լիցի, Յ. դըրամ տայցէ և ի կարաւտեալս բաշխեսցեն եթէ երէց, և թէ սարկաւագ, կանոն այդ կայցէ. և նոքա ի կարգ զինուորութեան կացցեն և ի հարկս արքունի. և ընդ պաշտօնեայս մի խառնեսցին։ Ապա եթէ կին երիցու կամ սարկաւագին ի շնութեան գտցեն, ընտրոյ նոքա լիցին. կամ զեկեղեցին կամ զքահանայութիւնն ընտրեսցին. կամ զկինն, եթէ զքահանայութիւն առցէ զկինն ի տանէն ի բաց հանցեն. և ապաշխարութիւն խիստ ի վերայ դիցեն։ Ապա եթէ յընտանեաց դուստր քահանային ի պոռնկութիւն գտանիցի, եկեղեցւոյ բաժնի մի իշխեսցէ. և ի քահանայական տանէն ի բաց ելցէ, և խիստ ապաշխարութիւն ի վերայ դիցեն և պատուհաս. և որդւոյ երիցու նոյն պատուհաս լիցի. և եթէ երէցն մեռցի կինն առն չիշխէ լինել, ոչ երէցն կին առնել.

և աղախին պոռնիկ ի տանն քահանայի մի լիցի զի սրբութիւն Տեառն է։

3. Եթէ ոք կին ունիցի և պոռնկեսցի և զկարգ ամուսնութեանն սրբութեամբ ոչ պահիցէ, և զպսակն զոր առ ի ձեռն քահանային ի սուրբ եկեղեցւոջն ի գլուխ իւր ընկալաւ, և զաւգնականն որ նմա վիճակեցաւ ըստ գրեցելումն եթէ աւգնական առն իւրում եստ զկին իւր, և քարոզն աղաղակէ, թէ պատուական է ամուսնութիւն և անարատք անկողինք որ սրբութեամբ զուգեն. բայց զշունս և զպոռնիկս դատի Աստուած։ Եւ դարձեալ այր մարմնոյ իւրում ոչ իշխէ, այլ կինն, նոյնպէս և կինն իւրում մարմնոյ ոչ իշխէ այլ այրն։

Արդ եթէ ուրուք զաւրհնութեան զկեանսն և զհեշտութեամբ զոր առ Աստուծոյ զփառաւորութիւն ի սուրբ եկեղեցւոջ, և ապա առ ոտն եհար և զաւրհնութեամբ ամուսնութիւնն զոր Աստուած ետ նոցա պղծութեան կոխան արար. ի շնութիւն անկաւ և ի պոռնկութիւն և ի հանգանակս արբեցութեանն, զայնպիսին կշտամբեսցին գլխաւորքն գանիւք և բանիւք աւգտակարաւք և յեկեղեցւոյ ի բաց մերժեսցին, և ի տուգան կալցին յեկեղեցի և ընդ կարաւտեալս բաշխեսցին. փոխանակ զի անարգեաց զեկեղեցին և զպսակն աւրհնութեան պղծեաց, եթէ ազատ է և գան չէ մարթ հարկանել. ի տուգանն և ապաշխարութիւնն յաւելցին. Մ. դրամ կարաւտելոց. Բ. տարիս ապաշխարութեան զպղծութիւնս այլ մի ևս գործեսցէ ապա մտցէ յեկեղեցի և ընդ ընկերս խառնեսցի։ Ապա եթէ շինական է՝ գան յոլով արբցէ. Ճ. դրամ տուգան տայցէ յեկեղեցի, և յաղքատս բաշխեսցին. և աարի մի ի պղծութենէն հեռացեալ մտցէ եկեղեցի և ընդ ընկերս խառնեսցի։

Ապա եթէ շինական է թէ այր և թէ կին կանոն այդ կայցէ. ապա եթէ ոք յառաջ քան զամուսնութիւնն ի պոռնկութիւն գտաւ, կամ ընդ աւտարի կամ որ նմա խաւսեալն էր. ընդ անարգանաւքն տուգան տայցէ զի՛նչ և արկցին հայր և մայր կուսին. որպէս և Մովսէս հրամայեաց յաւ-

րէնսն. եթէ կամեսցի զնոյն աղջիկն կին առնուլ յառաջ ի ձեռն ապաշխարութեան սրբեսցին. և եթէ ի պսակն եկեսցեն մի իբրև կուսանաց պսակ աւրհնեսցեն, այլ իբրև երկակին տեառնագրեսցեն լոկ. ապա եթէ աղջկանն կամաւք է պոռնկութիւնն, տուգանին հայր և մայր աղջկանն մի իշխեսցեն այլ Ձ. դրամ այրն և Ծ. դրամ աղջիկն տուգան տայցեն յեկեղեցին և աղքատս բաշխեսցեն։ Ապա եթէ մինն սուրբ կուսան և մինն պոռնկեալ. կուսանին իբրև կուսանի աւրհնեսցի և պոռնկելոյն որպէս երկակի ուռ տեառնագրել վասն յաղթութեան թշնամւոյն ի գլուխ դիցի, և յայսմ հետէ զգուշ կացցէ։

4. Եթէ ոք զկինն թողցէ զորդւոց մայր առանց բանի պոռնկութեան. և կամ թէ արատ ինչ չար ի մարմնի չիցէ. այլ որ եթէ այրն շնաքարոյ իցէ, և այլում ակն եղեալ իցէ դատաստան այս լիցի. զտուն և զկեանսն, և զհողն և զջուրն և զամենայն ինչ բաժանեսցեն հաւասարակաց, զկէս կնոջն տացեն, և թէ կամք են այր ի տուն ածել. յինքն համարձակ ածցէ. զբաժինն կալցեն և զարքունի հարկն ողջ արասցեն. և այրն որ եթողն. Է. ամ ապաշխարեսցէ, և յեկեղեցի տուգան տայցէ. թէ ազատ է Յ. դրամ, թէ շինական գանալի լիցի, և Ձ. դրամ տուգանեսցի. փոխանակ աւրհնութեամբ զամուսնութիւն խոտելոյ. ապա թէ մինչդեռ ի պայքարին և ի տուգանի իցեն, և կին ոք յանդգնեալ կնաթողին կին լինի և ամ մի չիցէ անցեալ. յայտ եղև թէ զառաջին կինն նա ետ թողուլ. կալցեն զկինն և յաւրկանոց տարի մի աղասցէ զոդեացն. եթէ ազատ է յաւրկանոց չերթայ Ձ. դրամ տայցէ ի գոդխն։

5. Եթէ կին ոք արատ և ամուլ պատահեցաւ, և այրն հանցէ զնա վասն ամլութեան, որ ինչ կնոջն կարասի բերեալ է ի տուն թէ աղախին թէ անասուն, եթէ հանդերձ, եթէ արծաթ, առնուլ իշխեսցէ և գնալ. և եթէ քան զամլութիւն այլ արատ չգուցէ ի մարտն. տուգան ևս տացէ կընոջն վասն անարգանացն. թէ ազատ է ՌՄ. դրամ, և թէ շինական Ռ. ապա եթէ մինչդեռ ի դատեն և ի տուգանիցեն.

և ամ մի ի վերայ չէ անցեալ, և ոք ի կանանց յանդգնեսցի և առն կին լինիցի, կալցեն զկինն ի յաւրկանոց տացեն քանզի յայտ եղև եթէ հանելոյ կնոջն նա եղև պատճառ. և տարի մի աղասցէ գողեայն. և աղախնութիւն կացցէ և յեկեղեցին Ճ. դրամ տուգան կալցեն, փոխանակ զի բուն ամուսնութիւնն վասն նորա խոտեցաւ։ Ապա եթէ ազատ է և ի գոտեացն չերթայ. Ճ. դրամ տուգան տացէ գողեացն. ապա եթէ առն յառաջագոյն խորհուրդ լեալ է, եթէ զկինն թողում և զքեզ առնում և կամ պոռնկութեամբ խանձական լեալ իցեն, Ճ. դրամ այրն տուգան տացէ յեկեղեցին, և ապաշխարութիւն առն Գ. ամս ընդ ունկնդիրս և Ա. ամ ընդ ձեռամբ մտցէ եկեղեցի։ Որ զորդւոց մայր թողցէ կամ զամուլ առանց բանի պոռնկութեանն, կամ այլ արատոյ առն և կնոջ պատուհաս տուգան և ապաշխարութիւն կանոն և սահման այդ կացցէ։

6. Եթէ ոք կին յառնէ ելանիցէ կալցեն և անդրէն յայտ իւր տացեն և մանաւանդ զոր վարկանաւք իցէ վարկեալ և ոչ բռզաբար, և թէպէտ և վաճառեսցէ. թէպէտ և յաղախնութիւն կալցի. եթէ կամք իցեն հոգևոր և բարի խրրատով և սիրով կալցին. ապա եթէ այրն չարաբարոյ ինչ է կամ պոռնիկ, կամ հանգանակող և արբեցող, կամ այլ ինչ խեղական, գանիւ և խրատու կշտամբեսցեն զայրն ի կարգ ածցեն, ապա թէ դիւափոխեսցի այրն, կինն պաշտեսցէ զնա։

7. Ոյք առևանկ առնիցեն կալցին զկինն և անդրէն տացեն ցհայր և ցմայր իւր. և տուգան տացեն փոխանակ անարգանացն եթէ ազատ է, ՌՄ. դրամ, եթէ շինական է Ո. դրամ և որ հրոսն երթեալ էին. աւգնականք սուտ փեսային առ այրն. Ճ. դրամ տուգանեսցին և զհրոսին դրամն զկէսն յեկեղեցի տացեն, և զկէսն կարաւտելոց, ապա եթէ սուտ փեսայն ընդ աղջկան պոռնկեցաւ առանց պսակ դրնելոյ եկեղեցի տուգան կալցին Ճ. դրամ, զի զպսակն աւրհնութեան անարգեաց, Գ. ամս ապաշխարութեան կացցէ։ Ապա եթէ երիցու ուրուք գաղտ պսակ եդեալ իցէ. առանց հաւր և մաւր աղջկանն երէցն զքահանայութիւն չիշխէ

պաշտել և Ծ. դրամ տուգան կալցին, և կարաւտելոց տացեն՝ զպսակն զոր եդ անվաւեր լիցի. ապա եթէ յետ այսր խռովութեանն և տուգանացն դարձեալ ի հաստատութիւն գան կամաւք աղջկանն և ծնողացն, և յառաջ պռնկեալ են. պսակ մի աւրհնեսցի. այլ իբրև զերկակին ուռ տեառնագրել դիցի ի գլուխ. ապա եթէ կուսան կացեալք են ըստ աւրհնին պսակ աւրհնեսցեն, եթէ ազատ և եթէ շինական կանոն այդ կացցէ։

8. Եթէ ոք ի կախարդութեան գտցի այր կամ կին և յուրացութեան կամ յայլ չարագործութեան, և ի զղջումն և ապաշխարութիւն ոչ եկեսցեն, ըստ գրոց հրամանի քարկոծ լիցին. ապա եթէ ի խոստովանութիւն եկեսցեն յելս յանձանց իւրեանց ապաշխարութեան կացցեն, ԺԲ. ամ առ դրանն ընդ ունկնդիրսն. և Գ. ամ ընդ ապաշխարողս եկցէ. և յամենայն ժամ քննեալ հետքն ի ձեռն ի ձնուն ողորմութեան և գթոյ տնանկաց բազում ինչս ծախեալ ի կարաւտեալս վասն փրկութեան անձանց ջերմեռանդն արտասուաւք զյետին թոշակն ընկալցին։

9. որք ի հարցուկս երթան կամ ի դիւթել տուգան կալցին. եթէ ազատ է Մ. դրամ. եթէ շինական է գան արբցէ. ԺԵ. կրկին Ծ. դրամ տուգան կալցին և կարաւտելոց տացեն, Գ. ամս ապաշխարեալ հաղորդեսցին։

Ապա եթէ եպիսկոպոս կամ երէց երթեալ իցեն ի հարցուկսն և ստուգեսցին իբրն երկու կամ երիւք վկայիւք, զի գրեալ է դքահանայէ չարախաւսութիւն մի ընդունիցիք բայց երիւք վկայիւք. եպիսկոպոսն յեպիսկոպոսութենէ անկցի, և երէցն երիցութենէն լուծցի. Ռ. դրամ եպիսկոպոսն տուգանեսցի, Շ. դրամ երէցն, և բաշխեսցին կարաւտելոց յեկեղեցի. և անձանց իւրեանց մեղադիր, վասն զի առ ի չգոյէ Աստուծոյ ի մէջ Իսրայէլի առ ճանճիկն ածն Ակկարովնի։ Ապա թէ ի կարգէ պաշտաւնէիցն և յուխտէ աբեղայիցն երթեալ իցեն ի հարցուկս. կամ որդի երիցուն, զպատուհաս զտուկանս զապաշխարութիւն զաշխարհականացն կրեսցեն, և ի կարգէ պաշտաւնէիցն ի բաց կացցեն. եթէ այր և եթէ կին երթեալ իցեն ի հարցուկս կանոն այս լիցի։

10. Որք լոկ դիւթեն և ոչ կախարդեն, եթէ այր և եթէ կին որ դիւթութիւն գտցեն, ԺԵ. կրկին զան արբցին, խանձեսցին, մրեսցին, ոսկր արկցին, և յաւրկանոց տացին Բ. ամ աղասցեն զոգեացն, և զինչ հրամայեսցեն գործել, ապա եթէ ազատ է և ի զոգեաց չերթայ, Շ. դրամ տացէ զոգեացն, և Բ. ամ իւրում յեկեղեցւոջն ապաշխարութեան կացցէ և հաղորդեսցի և այլ մի ևս մեղանչիցէ։

11. Որք կոծ դնեն մեռելոց և անյուսութեամբ լան, թողեալ զյուսով զաւրհնութեամբ զհրաժեշտն զորմէ ասէ քարոզն, եթէ այսու կենաւքս միայն յուսացեալ եմք ի Քրիստոս ողորմելի քան զամենայն մարդիկ. և եթէ տգիտանամք վասն ննջեցելոցն իբրև զանյոյս հեթանոսս։ Արդ եթէ ազատաց կամ ի շինականաց առաքելական կանոնաց ընդդիմանան և կոծ դնեն, նզովեալ լիցին դնելիքն և կոծողքն, տարի մի յեկեղեցի մի մտցեն, և տուգան կալցեն ազատքն Ճ. դրամ, և շինականին Ծ. դրամ և աղքատաց բաշխեսցեն, զի որով բարկացուցինն զԱստուած և զհոգի մեռելոյն խռովեցուցին, ի ձեռն տնանկաց տրոցն Աստուած հաշտեսցի, և վախճանելոցն հանգիստ լիցին. և մանաւանդ թէ որ վախճանէրն կոծ չհրամայեաց դնել, և ընտանիքն եդին. որպէս ասացաքն. կոծադիրքն և կոծողին յաւրհնութենէ հեռի եղիցին և եկեղեցւոյ մեռելոյն ընտանիք պատարագ մի արասցեն, զի ինքեանք ընդ բանիւ են. բայց երիցունքն և պաշտաւնեայքն իւրեանց անձանց յանուն մեռելոյն պատարագ մատուսցեն, որպէս և արժանն խնդրէ մինչև ընտանիքն ի կարգ եկեսցեն, և զանուն յիշեսցեն ի սուրբ խորհուրդն, զի հոգիքն ի հանգստեան եղիցի։ Ապա եթէ մեռեալն ի կենդանութեան իւրում պատուիրեաց թէ կոծ դիջիք. զտուգանն զոր հրամայեն կանոնք, երկպատիկ տացեն և ընտանիքն և կոծողքն զպատուհասն զոր եդաք կրեսցին. բայց մեռելոյն պատարագ ոք մի մատուսցէ, և յիշատակ մի արասցէ և զանուն նորա մի յիշեսցէ փոխանակ անյուսութեան նորա։

12. Որ զկին հաւր որդի ունիցի. զոր Պաւղոս յամենայն

*ժամ կականէր և ողբայր զԿորնթացիս, զի ասէր թէ և այդ ևս եղև մինչև զկին հաւր իւրոյ ունել. և ասէր թէ կորեսջիք ի միջոյ, ի բաց հանջիք և մատնեսջիք ի ձեռս սատանայի. զի ոգին ապրեսցի յաւուրն դատաստանի։ Եւ կամ Ռոբէնի որդին Յակոբայ, զիարդ անիծաւ վասն ընդ հարճի հաւրն ննջելոյ. արդ եթէ ոք զկին հաւր իւրոյ ունիցի ոչ ընդունի զնա կանոնս. և ի սուրբ եկեղեցի նա մի մտցէ, և ամենայն ժողովոյս նզովեալ լիցի. մինչև դարձցի և ապաշխարեսցի, Ի. ամ ընդ ունկնդիրսն, Գ. ամ ընդ ձեռամբ, Ծ. դրամ աղքատաց, Ծ. դրամ եկեղեցւոյ և այլ վարքն քննեալ հաղորդեսցի։ Եթէ հայր զորդւոյ կին ունիցի, կամ զեղբայր զեղբաւր, նոյն պատուհաս և նզովք լիցին. այլ ջերմ հարազատի և զազգականի զկին ոք մի իշխեսցէ ունել ի կնութիւն և կամ շնալ. և կամ թէ կնոջ կամաւք է խոստովանութիւն զպատուհաս և զտուգանս և զնզովս զնոյն կրեսցէ. և յապաշխրութիւն կալցին զկինն և յաւրկանոց տայցեն, Ժ. տարի աղասցեն գողեացն. ապա եթէ ազատ է և ի գողիսն չերթայ, Յ. դրամ տայցէ նոցա։*

13. *Որ զազգականն կին առնէ, այս պղծութիւն և դարշանք յայտնի լիցի, և անուանեսցի մի ի միջի ձերում, զի մի ոք ընդ աղտախանս մարմնոյ իւրում խառնակեսցի ըստ սովորութեան հեթանոսաց և անաստուած ամբարիշտ ազգացն զոր հրաման առեալ մեծ յաւրէնս ուսոյց մարգարէն Մովսէս ի Կենարարէն, թէ պատուիրեա որդւոցն Իսրայէլի, մարդ ոք մարդ մի մերձեսցի առ ամենայն ընտանութիւն մարմնոյ իւրոյ յանձնել զառականս նոցա. և յանձն գրէր Մովսէս, թէ անիծեալ որ ննջիցէ ընդ մերձաւորի արեան իւրոյ։ Արդ մի ոք զաստուածպաշտութիւն և զքրիստոնէութիւն և զգեցեալ զտէրունական մկրտութիւն և ըզկնիք և զդրոշմ զարքունական զքոյր կամ զքեռորդի կամ զեղբաւր որդի, կամ զհաւրաքոյր, կամ զայլ ոք յազգի անդ իւրում մինչև ի չորրորդ ծնունդն կին զոք մի իշխեսցէ առնել. զի մի պատառումն եղիցի սուրբ հաւատոյն. քանզի բարկութիւն յանձին իւրում գանձէ այնպիսին. որդի անաւ-*

րինի Թերակատար եղիցի. և զաւակ անաւրէն յանկողնեաց մի բողբոջեսցի, զի եթէ զկին եղբայր իւրոյ ունելոյ, մեծի մարգարէին և Կարապետին Յովհաննու գլուխն կտրեցաւ, ապա զի՞նչ ևս աղէտս ոչ համարեսցի ոք որ ազգական կին առնիցէ. զոր ոչ հրամայեն աւրէնք քրիստոնէականք և առաքեալք և աշակերտք Քրիստոսի։

Արդ եթէ ոք ընդդիմացեալ աւրինացս և հաստատեալ կանոնիս և անբարշտեալ ի հեթանոսութիւն և ի հրէութիւն կործանեսցի, ընդ նոսին եղիցի և բաժին նորա, և ի սրբոյ եկեղեցւոյ յաւտարացեալ եղիցի, որպէս և գրեալ է. բարձցի անբարիշտն յերկրէ և մի տեսցէ զփառս Աստուծոյ, ընդ անաւրէնս համարեսցի, ըստ գրեցելոյն ի բաց կացէք յինէն ամենեքեան ոյք գործէք զանաւրէնութիւն. մի ոք ընկալցի զպատարագս նորա քանզի պիղծ է. առաւել ևս զոհ նորա, և եկեղեցին կանոնք զապաշխարութիւն նորա ոչ ընդունեն. զի ի խոտորել յինէն անզգամին և ես ինչ ոչ փոյթ առնէի, մինչև Թողցեն և դարձցին անզգամութենէն և ի պիղծ գործոցն, ըստ մարգարէին ձայնի, ընկեցէք զչարիս ասէ Տէր, եթէ այնպիսեացն սպսակ աւրհնեսցէ, կամ ի հասրանիս երԹիցէ. կցորդ եղիցի չարեաց գործոց նոցա, և ի կարգէ պաշտաւնէից հեռացեալ եղիցին և եթէ ոք եպիսկոպոս կամ երէց գտցի ի խորհրդեանն. յաթոռոյն և ի քահանայութենէն անկեալ եղիցին և ի պաշտաւնէիցն մի մերձեսցեն. բայց որ խոտորեցաւն յաւրինաց սրբոց և ի կարգէ եկեղեցւոյ եթէ դարձցին ի պիղծ ամուսնոթենէն և մեկնեսցին ի միմեանց ի ձեռն մեծամեծ տրոց մինչև զկէս կենաց և ընչից իւրեանց հոգւոց իւրեանց բաժին տացեն ի կարաւտեալս և ի վշտանգեալս և ի սուրբ եկեղեցի. զամենայն աւուրս կենաց իւրեանց ապաշխարել և ի վախճանին թէ լիցին հաղորդելոյ արժանի։ Ապա և գլխաւորք եկեղեցւոյն որ ի խորհրդին էին և որ զպսակն աւրհնեաց, Ճ. դրամ եպիսկոպոսն տուգանեսցի յաղքատս, և Մ. դրամ երէցն, Մ. որ զպսակն աւրհնեաց, և ապա մատիցեն յաթոռն և ի քահանայութիւն։ Ապա եթէ նոքա ոչ մեկնեսցեն ի պիղծ ա-

մուսնութենէն, և պսակադիրն և ի քահանայիցն որ ի խոր-հըրդին էին եղեալ, մի մատիցեն յաթոռն և ի քահանայութիւն. թէ ազատ է թէ շինական աւրէնք և կանոնք այդ կացցեն։ Ապա եթէ ոք ընդդէմ եկեալ ասիցէ ի Նիկիական-սըն ընդէ՞ր ոչ այդպէս ծանր եղեալ. վասն զի ոչ ունէր ոք ակն թէ այդպիսի մեծամեծ չարիք և աւճիրք աշխարհի գործիցեն այլ անդէն վաղվաղակի մաւտակտուր խզէին զչար արմատ կորստեանն։

14. Եպիսկոպոս կամ երէց կամ սարկաւագ, կամ ով և իցէ ոք ի պաշտաւնէից կամ ուխտէ, տանտիկին կին զոք մի իշխեսցէ ունել, որպէս և սովորութիւն է մծղնէից, ապա եթէ ոք ունիցի, և վկայութեամբ յայտնեսցեն. ի կարգէն որում և իցէ մերժեսցի ի բաց և համարեալ եղիցի որպէս զամբարիշտն, և որպէս զմաքսաւորն զի սուրբ խորհուրդն տէրունական զանարատսն ընդունի, զի արատաւորքն ի ձեռն անարատից փրկեսցեն։

15. Եթէ ոք ի հաւատս կացցէ, կամ միայնակեաց կամի լինիլ, զկուսութիւն և զսրբութիւն պահել. և կենացն յաւիտենից հասանիլ, ընդ ընկերս կացցէ ընդ ճշմարիտս և ընդ միաբանակեացս, և ի միմեանց շահեսցին սիրովն Քրիստոսի. զի եղբայր եղբաւրէ աւգնեալ իբրև զպարիսպ ամուր, և եթէ Աստուած բնակեցուցանէ զմիակրաւնսն ի տան և ուր երկու և երեք ժողովեալ են անուն իմ, ես ի մէջ նոցա եմ. և դարձեալ եթէ երկուք միաբանութեամբ խնդրեսցեն ի հաւրէ իմմէ տացի նոցա. և եթէ յայսմ ծանիցեն եթէ իմ աշակերտք էք յորժամ միաբանիցէք և զմիմեանս սիրեցէք։ Մի լիցի սովորութիւն միայն լինիլ. ապա զիարդ կարեն գիտել զկարգ և զպայման հաւատոյ և կամ զհայեցուածս իւր ի միտ առնուլ. կամ զհնազանդութիւնս և զսէր առ ընկերս ցուցանել. այնպէս և գազանք են ի լերինս եթէ ոք ոչ մերձենայ խաղաղական։ Այլ հաւատք կատարեալ և ճշմարիտ այս են. հնազանդութիւն առ ընկերս, և սէր առ միմիեանս և առ Քրիստոս. ի մէջ մարդկան լինել աւրինակ բարի, և դէպք նախանկարք, զի շահեալ ի միմեանց և նախանձեալ

ի գործս բարիս. զի տեսցեն և փառաւորեսցեն զԱստուած յերկինս և զանարգ և զգայրոտ զեղբայր ի ձեռն հոգւոր խրատու ի պատուականս հանել բերան Աստուծոյ կոչեցի։ Բայց արդ եկայք որդիք իմ և լուարուք և զերկիւղ Տեառն ուսուցից ձեզ, և զկեանսն յաւիտենից, և ի կենդանութեան տեսանել զաւուրս բարութեան. ծանուցանեմ լուարուք և ուսարուք որ Աստուած հաճոյն է և զկեանսն յաւիտենից Ձեզ առ թէ. լռեցոյ զլեզու քո ի չարութենէ և ի նենգութենէ. լուր լեզու չար հուր հաստատեալ է ի մարմնի. լոյծ զկնիքսն անիրաւութեան, դիր դուռն ամուր շրթանց ի պահապան բերանոյ և մի խոտորեսցիս ի բանս չարութեան, զարծաթ ի վարձու ոչ տալ և տոկոսաւք ոչ պահանջել ըդգրաւ պարտականին վաղվաղակի դարձուցանել. որդիք մարդկան մինչև յերբ էք խստասիրտք, ոչ մըրկեալ նեղասրտեալ, առ նեղել սրտով ունիցի յոյժ. յարենէ ի հեղկուցելոյ ի շընութենէ, ի պոռնկութենէ, ի գողութենէ, ագահութենէ, արծաթսիրութենէ, ի սուտ երդմանէ, ի բանսարկութենէ, յարբեցութենէ, յորկորստութենէ, յանձնակամութենէ, ի կամակարութենէ, ի սիգութենէ, ի վիսութենէ, մի հպարտ, մի չարակամ, մի ամբարտաւան, մի ի խաղս երգոց, մի երգըս լկտեաց, մի ի հպտանս, մի ի վայրաբար ծաղրս, մի յահուր, մի զրկող, մի տրտնջող, մի ատեցող, մի յանդուգն, մի շատախաւս, մի խաւսել զումեքէ, և մի լսել և որ քեզ չար թուի այլում մի առնել, մի ցանկացող, մի քնէած, մի կամակոր յուսմանէ զի մի ի չարիս անկանիցիս, մի հեղգող յաղաւթս, մի ատել զաղքատս, զի յաւուր չարի փրկեսցեն զքեզ ի ձեռս թշնամեաց, մի ատել զպահս և զճգնութիւնս որ զհուր շիջուցանէ զառիւծս սանձէ, և ընդ Աստուծոյ բանս ի կիր արկանէ. այլ որ ինչ ի կարգին բարի գործեն, բոլորովին կատարումն սիրել զՏէր Աստուած յամենայն սրտէ, և զպատուիրանս Նորա կատարել, ընդ ամենայն մարդոյ ըղխաղաղութիւն ունել, հեզ լինել և խոնարհ, և յամենայն ժամ դողալ և երկիւղիւ կալ և լսել զբանից Նորա զոր ասեն, յում բնակեաց եթէ ոչ ի հեզս և ի խոնարհ և որ դողան ի

բանից իմոց, խնդրեա զխաղաղութիւն և երթ զհետ արդարութեան, յուսոյն ակն ունելով, մի վայրապար ի սուգ և ի տրտմութիւն մտանել, այլ զբարիս գործել մի ձանձրանալ, բնակեսցիս յաւիտեանս յաւիտենից յերկինս մարդ կատարեալ և ի յերկրի հրեշտակ երևեալ, միայնակեաց կամի լինել և կուսան և հաբեղայութիւն յանձն առնուլ կանոն զայս կալցի ամենայն ոք որ ի հաւատս կացցէ զի ի ձեռն անարատ մեղաւորքն սրբեսցին։

16. Որ եպիսկոպոս կամի լինել առաջնորդ և հովիւ կամ վանական կամ անապատ շինել, և սաղարութիւն ցանկանայցէ, կամ գաւառի կամ գիւղից, կամ անապատաց, լուիցեն զմ՚նչ ասեն մեծութիւն թէ առ իւ գայցէ մի յաւժարեսցին. տաղանդ առնու ի վարձու պահել պարտի, զուցէ տոկոսիւք պահանջի զգոյշ հովիւ հաւտի պատրաստ. բայց որ զլխաւոր եպիսկոպոսն աշխարհին առանց նորա կամաց եպիսկոպոս ոք մի լիցի. և վանաց երէց. կամ անապատաւոր առանց գաւառին եպիսկոպոսին չիշխէ լինել. եպիսկոպոս ոք կամ երէց, կամ ազատ ոք—դատաւորաց, և կամ շինական վասն առաջնորդս կարգելոյ և հովիւս պատրաստելոյ եկեղեցւոյ, և ժողովրդապետս և աւրէնսգիրս կացուցանելոյ. զի ծանիցեն հեթանոսք թէ մարդիկ են նոքա և վասն այոր իրաց կաշառ առցեն, և կամ ազատանսաւք առնիցեն և ոչ զճշմարտութիւն ընտրեսցեն և զարժանաւորն. եթէ կարի անարգ ոք իցէ և արհամարհելոց, և միայն նախանձաւոր սրբութեանն և աւրինացն է, յառաջ կալցին. լուր զ՚ինչ ասեն, զյիմարս և զանտոհմս աշխարհիս ընտրեաց Աստուած և յարուցէ զաղքատս յաղբևաց, նստուցանել ընդ իշխանս զի յամաւթ արասցէ զամբարտաւանս և զհզաւրս, քանզի մարդ ի դէմս հայի իսկ Աստուած ի սիրտս և նոքա կաշառաւք և աչառութեամբ զանարգեալս մեղաւք և զպղծեալս աւրինացն որպէս ասէ Պաւղոս, եկեղեցւոյ դատաւորս նստուցանելն վասն կորուսիչ արծաթոյն, տալիք կաշառոյն անիծեալ լիցին. որպէս խաչահանունքն ետուն կաշառ պահապանացն, և ընդ Սիմովնի կախարդի որ, արծաթով և ընչիւք կամէր ստանալ առաքե-

լոցն զշնորհս Սրբոյ Հոգւոյն. և առնելիք կաշառցն նզովեալ լիցին ի Տեառնէ. կարասին զոր կաշառ առին ընդ Յուդայի համարեալ լիցի զոր վասն Տեառն մատնութեան առ. և երկպատիկ դարձուսցեն անդրէն, տալիքն չիշխեն առնուլ որպէս խաչահանուանքն, զազարակն գնեցին. այլ ի կարաւտեալս բաշխեսցին. և եպիսկոպոսն և երէցն որ վասն այսր իրաց կաշառս առցեն, և վասն ինչ և իցէ իրաց ըստ գրեցելոյն թէ կաշառ կուրացուցանէ զսիրտս իշխանաց, և դարձեալ կաշառ ի վերայ իրաւանց մի առնուցուն. և ճշմարտութիւն ի ձեռն արծաթոյ քարշի. յամենայն ժողովոյս նզովեալ լիցին. և իշխանութենէն և ի քահանայութենէն մերժեսցի ի բաց, զոր կաշառն առին. ընդ Գեէզի բորոտի գողունսն համարեսցի անէծքն մարգարէին ի վերայ նորա եղիցին քան ի ձեռաց դիտին խնդրելոց է զարիւն զաւրացըն. այլ զարժանաւորսն խնդրեալ գտցեն։ Լուարուք մարգարէին. ձեռք իւրեանց անաւրէնութեանն են և աջ նոցա լի է կաշառաւք. տուր նոցա ըստ գործս նոցա անաւրէնութեան. զի եթէ հիմն և գլուխն հաստատուն, ապա և միջինքն. ոչ ի վերայ աւազոյ կառավար արբեալ կառքն ընդ որպէս ընթանան, նաւավար ի քուն նաւն երագ ծովու ծուփ, խաշնարած յոյշ խաշինքն զվնաս մահու խոտ ճարակեն. զի եթէ առաջնորդք աւրինացն հաստատուն և ճշմարտիւ ապա և կարգեալք են ընդ սոքաւք առաւելապէս ոչ սայթաքեալքըն. և եթէ խարիսխն անշարժ, շինուածն ոչ գետավէժ, եթէ հովիւն քաջ, հաւտն ոչ գազանակուր, եթէ դետն բըգգոյշ և արթուն, ապա զաւրքն ի խաղաղութեան և ոչ խողխողեալ, քանզի դուք վարդապետք դէտք ժողովրդեանն աւրինակ էք աշխարհի. ընդ ձեզ հայեցեալ զուսումն ձեր յառաջ բերեն ապայ զգոյշ։

17. Եթէ ոք նշխարս մարտիրոսի կամի դնել, առանց եպիսկոպոսի աշխարհին մի դիցէ, զկիշատակս մարտիրոսաց և զժողովս առանց եպիսկոպոսին հրամանի մի ոք իշխեսցէ առնել. և եթէ ոք ի սուրբ տեղեացն մարտիրոս բերցէ, առ եպիսկոպոսն բերցէ վկայութեամբք և թղթովք եպիս-

կոպոսացն աստի եբերն. և Կիւրեանց եպիսկոպոսին հրամանաւ դիցէ ուր արժան է դնել։ Եթէ ոք սեղան կամիցի կանգնել տէրունական խորհրդին, առանց եպիսկոպոսին մի ոք իշխեսցէ կանգնել. բայց նշխարացն անուն մեծապէս տաւնախմբեսցին յամենայն տարւոջ յաւր բերելոյն և պատւոյ և սրբութեան զգոյշ. զի մի ի ցասումն մտեալ սուրբ ճգնաւորացն որ վասն Քրիստոսին չարչարեցան. ցասումն աշխարհի հասցէ փոխանակ բարեխաւսութեանն։

18. Եթէ վարդապետի ուրուք զաշակերտ կամ ժողովրդական. կամ զքահանայ նզովեալ իցէ. կամ բանադրեալ, կամ կապեալ բանիւ վարդապետութեան. այլոյ տեղեաց վարդապետ կամ եպիսկոպոս, կամ երէց, մի իշխեսցէ զանիծեալն աւրհնել. և զբանիւ կապեալն լուծանել. բայց եթէ հաւատովք և սէր հոգևոր յուղղութիւն եկեսցէ. ապա խաղաղասէր վարդապետն բարեսէր խրատու բարեխաւսութիւն արասցէ. հնազանդեցուցանել բուն վարդապետաւն. վասն զի մի է տէր ամենեցուն. մի հաւատ. մկրտութիւն. մի պատուիրանք են առ ամենեսեան, և միում յուսոյ ակն ունիմք, պարտ է զնոյն միաբանութիւն պահել յամենայն եկեղեցիս. զարժանաւորս աւրհնութեանն միաբան աւրհնել. և զոչ արժանիսն միաբան ըմբերանել և պատուհասել. զի միաբանութենէ ամենեցուն և քարոզութենէն. հաստատուն լիցի և հաւատարիմ ամենեցուն. ըստ տէրունական բանին թէ յայսմ գիտասցեն զձեզ թէ իմ աշակերտք էք յորժամ միաբանիցէք և զմիմեանս սիրեցէք։

19. Եթէ ոք ի մծղնէութեան գտցի կամ երէց, կամ սարկաւագ, կամ ի հաբեղային քահանայութիւն լուծցի, աղուէսադրոշմ ի ճակատն դիցի և ի տեղիս ճգնաւորաց յապաշխարութիւն տացեն։ Ապա եթէ դարձեալ ի նմին գտցի, զջիլսն երկոսեան կտրեսցեն, և ի գոդենոց տացեն, զի մարդ ի պատուի էր և ոչ իմացաւ, դոյն պատուհաս և աբեղային։ Ապա թէ արք կանամբք և որդովք գտցին յաղանդին, զարանց և զկանանցն և զիրագէտ մանկանցն զջիլսն կտրեսցեն աղուէսադրոշմ ի ճակատն դիցեն, և ի գոդենոց տացեն յա-

պաշխարութիւն, և մանկունքն որ չև իցեն գիտացեալ զպըղծութիւն, կալցեն և տացեն ի ձեռս սուրբ պաշտաւնէից Աստուծոյ, որ սնուսցեն և ուսուսցեն զնոսա ի հաւատս ճշմարիտս և յերկիւղ Տեառն։

20. Եթէ ուրուք ժողովրդի չարագործ գտցի և երիցունքն գիտիցեն և ոչ յայտնեսցին եպիսկոպոսին, և յորժամ քննեն լինին ի վերայ հաասնիցեն և ճշմարիտ իցէ. և գիտէր երէցն աւուրբք և ամսովք ժամանակաւք զգործս նոցա և ոչ բողոքեաց եպիսկոպոսին. և զմծղնէիցն զպատուհասն զոր եդին կանոնք, կրեսցեն. և երիցունքն զերիցութիւն մի իշխեսցեն պաշտել ի կեանս իւրեանց, զի միւս երէցն կամ վանական որ կայ ի տեղիս նոցա ընդ նոսա հայեցեալ ճըշմարիտ հովուեսցեն ժողովրդոցն։ Ապա եթէ երէցն ասիցէ ցեպիսկոպոսն և վկայութեամբ յայտ առնիցէ, և եպիսկոպոսըն կամ կարասի առնուցու և ծածկիցէ կամ ոչ աչառիցէ և վկայութեամբ յայտ եկեսցէ թէ արդար և եհաս յականջս նորա բողոք երիցանցն և նա արհամարհեաց զպատուիրանս Աստուծոյ. և կորուսելոցն խնդիր չարար և չեղև նախանձախնդիր աւրինացն Աստուծոյ, անկեալ կործանեսցի յաթոռոյն, որ ծածկեն զշնացողսն, և երէցն անպարտ եղիցի։ Ապա եթէ եպիսկոպոսն ջանացաւ և վրէժխնդիր եղև, և երիցունքն և այլ մարդիկն վկայեսցեն զաշխատութենէ եպիսկոպոսին և զչարագործն յայտ արար իշխանութեան ուրուք, և իշխանն որ յաշխարհին և գեղջ ուրուք աւագ նախարար, տէր գաւառին կամ ի պղծութեան թիկունք լինել, և զշնացողսն ղաւղել և թագուցանել, կամ վասն կորուսիչ արծաթոյ, կամ վասն ակնառութեան և ծառայութեան, և ընտրեսցէ զՔրիստոս սիրել և զպատուիրանս նորա և վրէժխընդիր աւրինացն Տեառն, և հոգւոց և մարմնոց լինել. եղիցի նզովեալ այնպիսին. և յեկեղեցւոյ սրբոյ ի բաց կացցէ մինչև տացէ զպղծագործսն ի ձեռս եպիսկոպոսին, եթէ ի նախարարի տան գտցին պղծութիւնքն, կամ կին նորա, կամ դուստր, կամ որդի, կամ ինքն իսկ գլխովին և ոչ զընտանիսըն ի ձեռս տացէ եպիսկոպոսացն և ոչ ինքն ի սրբութիւն

դարձցի, բռնապատան կամիցի լինել, ամենայն տամբ իւրով և ծննդովք և կենաւք նզովեալ լիցի. ի հրապարակի մի իշխեսցէ գալ, ընկերք և աշխարհք ամենայն մի հաղորդեսցին ընդ նմա մինչև թէ ինքն իցէ ի պղծութենէն ի սրբութիւն եկեսցէ. ապա եթէ ինքն ոչ իցէ ի պղծութեան, զընտանիսն և զծառայսն ի ձեռս տացէ եպիսկոպոսին զըլխաւորի կշտամբութիւն։ Ապա եթէ յոստիկանի ի տան գըտցի պղծութիւն, կամ ինքն և ընտանիքն որպէս ասացաքն. զընտանիսն կշտամբեսցեն ըստ աւրինի պատուհասի զոր եդաք։ Ապա եթէ ինքն ևս ընդ ընտանիսն ի մծղնէութեան գտցի, կալցեն միաբան պղծագործ ընտանեաւքն հանդերձ և ի հրապարակ ածցեն և առաջի գլխաւոր եպիսկոպոսին և առաջի մեծամեծաց իշխանացն և աւագ դատաւորաց, և միաբան վրէժխնդիր լիցին աւրինացն Աստուծոյ. զի տեսեալ այլոցն սրբութեամբ և երկիւղիւ պաշտեսցեն զԱրարիչն յաւիտենից։ Զի ուղղ և կատարեալ լիցին կարգք Աստուածպաշտութեան. վրէժխնդրութեամբ աւրինաց. և յարգանաւք սրբոցն, զի գտցուք ճշմարիտ ծառայք Աստուծոյ բանիւք և արդեամբք. զի նոյնպէս հատուցմանց բարեաց ի բարերարէն Աստուծոյ ակնկալցուք և ժառանգեսցուք զպարգևս նորա զանվախճան յաւիտեանս յաւիտենից ամէն։

---

## Գ) ԴՈՒԻՆԻ Ա. ԺՈՂՈՎԸ 507—ԹՈՒԻՆ.

Զ. դարը ամուլ է, ոչ մի պատմագիր չունինք այս դարում. իսկ Է. դարի պատմագիր Սեբէոսը այս ժողովի մասին յիշատակութիւն չի անում։ Մովսէս և Աբրահամ կաթուղիկոսները Զ. դարու վերջերում Վրաց բաժանման խնդիրներով զբաղուելիս, յիշեցնել են տալիս Կիւրիոն Վրաց կաթուղիկոսին,՛ որ մեր ու նրանց նախնիք Կաւատ Պարսից թագա-

ւորի և Բաբգէն Հայոց կաթուղիկոսի օրով հեռացան քաղկեդոնականութիւնից մերժելով դրա հետ ուրիշ աղանդներ և հաւատոյ գիր կազմեցին և այդ գիրը մինչև այսօր իրանց մօտ կայ. (տես Ուխտանէս եպիսկոպոս, Պատմութիւն Հայոց)։ Էջմիածնի գրադարանի № 100 ձեռագրի մէջ կայ Աբրահամ կաթուղիկոսի երրորդ նամակը Կիւրիոնին գրած, որի մէջ անուն անուն յիշելով Վրաց եպիսկոպոսներին, որոնք մասնակցել էին Բաբգէնի 507-ի ժողովում, աւելացընում է որ «պայմանի նամակը ապստամբութեան ժամանակ կորել է. այս թուղթն էլ թարգմանել են Ուռհայում հոռոմերէնից, որոնք ստոյգ և սուրբ պահել են...»։ Դուք էլ փնտռեցէք, շարունակում է Աբրահամ կաթուղիկոսը, կգըտնէք նոյն հաւատոյ միաբանութեան թուղթը վրացերէն լեզուով։

Ը. դարում Յովհան Օձնեցին «Սակս ժողովոց որ եղեն ի Հայս» ձեռագիր № 58 և № 530 օրինակներում, գրում է այս ժողովի մասին, «Հինգերորդ ժողովը արաւ Բաբգէնը Վաղաքուղաշտի (Դուինի) մէջ Կաւատ արքայի թագաւորութեան 18-րդ տարին Բարսումայի և Ակակի չար աղանդի պատճառով, որոնք Նեստորի անիծեալ աղանդով վարակուած, աշխատում էին վերջացնել ուղղափառ հաւատքը արևելեան աշխարհներում և Նեստորի աղանդը մտցնել։ Այդ պատճառով Տէր Բաբգէնը գիր կազմելով սահմանեց, որ դրանց խօսքերը հաւատացեալներին չգայթակղեցնեն, որովհետև Հայերը, Հոռոմները, Վրացիք և Աղուանները մի խոստովանութեամբ հաստատուած ենք ճշմարիտ հաւատքի մէջ, որը աւանդեցին մեր սուրբ հայրերը երեք ս. ժողովներում, ուրիշ հայհոյական խօսքեր չենք ընդունում, այլ նզովում ենք և մերժում եկեղեցուց։ Յովհան Օձնեցուն վերագրած այս գըրուածքը ճշտուեց մի նոր փաստագրով, որ գրում է նոյն իսկ Բաբգէն կաթուղիկոսը «ի Պարսս առ ուղղափառս», որտեղ մէկ մէկ յիշելով Հայոց եպիսկոպոսների, իշխանների և նախարարների անունները և նրանց համաձայնութեամբ գրուածքը Նեստորական քարոզիչների դէմ, որոնք տարածում էին մոլար

մտքեր և գայթակղեցնում ուղղափառներին, նոյնպէս և յիշելով մեր ընդունած երեք տիեզերական ժողովները, ասում է Բաբգէնը «որոց մեք միաբանեալ՝ նզովեմք զհակառակորդսըն այն ճշմարիտ հաւատոյ և կատարեալ Աստուածաշնորհ կանոնի։ Եւ զայս խնդիր ճշմարիտ հաւատոյ գրեցաք և կնքեցաք ես Բաբգէն Հայոց կաթուղիկոս ամենայն եպիսկոպոսաւք, իշխանաւք և նախարարաւք Հայաստան աշխարհիս»։ Այս թղթում յիշատակւում է Բաբգէն, որ ժողովը եղաւ Կաւատի*) թագաւորութեան 18-րդ տարին, որ ճիշտ 507 թւականն է և ոչ 491 ինչպէս Չամչեան և նրա հետևող Աբէլ եպիսկոպոսն են համարում, և կայացաւ Դուին քաղաքում, որից երևում է որ «Քաղաքուդաշտ»-ը պիտի համարել ոչ Վաղարշապատ ինչպէս Չամչեանն է գրում, այլ Դուին, «Յոստանն Հայոց աշխարհիս ի Դուին քաղաք»։

Բացի այդ Թ. դարու վերջին Յովհաննէս կաթուղիկոսը յիշում է, որ այս ժողովի մի պատճառն էլ Զենոն կայսեր հենոդիկոնն էր, որը ուղարկուած է վաղուց բոլոր կայսերութեան մերձակայ վայրերը, և Հայաստան, ժողովում կարդացին այդ հրամանագիրը և հաւատոյ վճիռ կայացրին։

Այս հիմունքներով Բաբգէնի 507-ի արած ժողովը պիտի համարել վաւերական և հաստատուն։

Բայց խնդիրն այն է, որ այս ժողովը կանոններ չի տուել հապա որոշել է և հաստատել դաւանաբանական մի սկզբունք, որը մինչև այսօր պինդ պահւում է. և որովհետև դաւանաբանութիւնը եկեղեցական իրաւունքի սահմանից դուրս է, մենք չպէտք է զբաղուենք այս ժողովի որոշումով, հապա թողնէինք դաւանագիտութեան ճիւղին։

Այս ժողովի վրայ կանգ առնելու պատճառն այն է, որ այս ժողովից սկսւում է մի բոլորովին ինքնուրոյն կեանք հայոց ոչ միայն եկեղեցու այլ և պատմութեան համար, մերժւում են դրանից յետոյ եղած 3 տիեզերական և դրանից առաջ եղած մէկ տիեզերական ժողովներ, ամրապնդւում են հին աւանդական կարգերը, որոնք զանազանւում են յունաց,

*) Կաւատը թագաւորեց ըստ Նէօլդէքի 489 թուին։

առըոց և Հռոմի եկեղեցիների կարգերից, որով և դաւանաբանական այդպիսի բաժանմունքը մեծ ազդեցութիւն է թողնում մեր եկեղեցու իրաւաբանական հարցերի մշակման ուղղութեան վրայ. ահա այս ի նկատի ունենալով, մեզ անհրաժեշտ է լաւ ծանօթանալ այս ժողովի գործունէութեան և նիւթի հետ։

Այս ժողովում որոշւում են հետևեալ խնդիրները, ա) Հայերը, յոյները (Զենոն և Անաստաս կայսեր ժամանակ), վրացիք և աղուանք ընդունում են միմիայն երեք տիեզերական ժողովներ, բացի այդ ժողովներից ոչ մի ուրիշ տիեզերական ժողով չեն ընդունում. որ ասել է թէ՝ առանց ասելու թէ՝ «Քաղկեդոնի ժողով» չենք ընդունում, մերժում են այսպիսի առարկութեամբ թէ՝ «մենք բացի երեք տիեզերական ժողովնրից ուրիշ ժողով չենք ընդունում», հետևելով Զենոնի հենոտիկոնին, նրա գրգռում չառաջացնող և խաղաղասիրական տակտիկային։

Ապացոյց այն բանին, որ ոչ միայն հայերը, այլ և շըրջապատող բոլոր ազգերը մերժում են Քաղկեդոնի ժողովը և ընդունում են 3 տիեզերականը և միմիայն Նիկիայի հանգանակը, որ ասել է մերժում են Քաղկեդոնի աւելացումը երկու բնութեան մասին, կբերենք այս. Յունաց Լևոն կայսեր ի պատասխան, ուղարկում են շատ տեղերից իրանց կարծիքը Քաղկեդոնի ժողովի մասին, Հայոց աշխարհին կից երկիրները՝ ա. Հայք, բ. Հայք, ա. Կապադովկիա, բ. Կապադովկիա. Պոնդոս, Հելլեսպոնդոս, ա. Սիրիա, բ. Սիրիա (Ասորիք), Օսրոէնի նահանգը (Եդեսիա), Միջագետք, Պափլագոնիա, իրանց եպիսկոպոսական ժողովներով մասնակցում են ի միջի այլոց այդ հարցին պատասխանելու մէջ. բոլորը միաձայն յայտնում են այն կարծիքը, որ բացի 3 տիեզերական ժողովից ուրիշ ժողով չենք ընդունում, և որոնք էլ ընդունում են Քաղկեդոնի ժողովը, նրանք միշտ կցում են թէ ընդունում ենք Քաղկեդոնինը «որովհետև ոչինչ չեն աւելացրել նրանց (318 հայրապետների) հանգանակի վրայ»։ Սեբաստիոյ մետրոպոլիտը իւր եպիսկոպոսների ժողովով գրում

է «որ մենք բացի ուղղափառ հանգանակից (հաւատամք-ից), 318 հայրապետների տուած, չենք թոյլատրում ոչ աւելացում, ոչ պակասացում այն բանի մէջ, որ վերջնականապէս որոշուած է Հոգւոյն սրբով. մենք ուրիշ հաւատք չենք ճանաչում, որովհետև ուրիշը չկայ այլևս և չենք կարող այդ լսել, թէև մի քանիսը հաստատում են, որ կայ»։ Տես Дѣянія вселенскихъ соборовъ, IV հատոր, 267 եր.։ Այդպէս էլ գրում են բոլոր վերոյիշեալ աշխարհները։ Այս ամենափառաւոր ապացոյցն է, որ ոչ միայն հայերը, այլ և շրջապատող ազգերը, յոյները մինչև Զ. դարու մէջերքը մտածում էին ճիշտ հայերի նման, նրանք Կիւրեղ Աղէքսանդրացու խօսքով էին գնում, որ ժողովում կանչում էր. «եթէ մի թեթև բան կաւելացնէք Նիկիոյ հանգանակի վրայ, ժողովից դուրս կգամ»։ Այս պարզ տանում է մեզ այն եզրակացութեան, որ հայերը 507-ի ժողովում միւս ազգերի նման մերժեցին Քաղկեդոնի դաւանաբանական մասը երկու բնութեան մասին և հիմք դրին հայոց ազգային ինքնուրոյն եկեղեցուն. միւս ազգերը շեղուեցին ուղիղ գծից, հայերը հին որոշած կարգով մինչև այսօր մնացին։

բ) Այս ժողովում մերժւում է Նեստորականութիւնը, ինչպէս և Սահակի ու Մեսրոպի ժամանակ, ի դէմս Բարծումայի և Ակակի։ Սրանք պարսիկներ էին և կրթուել էին Եդեսիայի դպրոցում, որը շինուած էր մասնաւորապէս Պարսից մէջ քրիստոնէութիւն տարածելու համար։ Բարծուման Մծբնայի եպիսկոպոսն էր, խելօք, ճարպիկ, ազդեցիկ նեստորական, Պարսից Պերոզ թագաւորի մօտ երթևեկող անձը, որը իւր հետևողներով մեծ զարկ տուաւ նեստորականութեան տարածման։

գ) Այս ժողովը նշանաւոր է ուրիշ տեսակէտով, որ թէև ժողովը պարապեց զուտ կրօնական խնդրով, բայց և այնպէս կայացաւ աշխարհական դասի, նախարարների, իշխանների մասնակցութեամբ. «ի մեծաց և ի փոքունց, յազատաց և շինականաց»։ Թէև նախկին երկու ժողովներում մասնակցում էին աշխարհականները, բայց այնտեղ դաւանաբանական

խնդիր չէր քննում։ Այս փառաւոր սկզբունքը, որ Հայոց եկեղեցական ազգային ժողովներում, թէ կարգադրական—օրէնսդրական և թէ դաւանաբանական, (պիտի մասնակցեն անշուշտ երկու տարրը, հոգևորական և աշխարհական), մըտաւ Ե.—Զ. դարուց Հայոց մէջ և մնաց մինչև այսօր։ Ահա մեր եկեղեցու բացառիկ, ինքնուրոյն և փառաւոր սկզբունքը, որը Եզրների քմահաճոյքին վէտօ է դնում։

Որպէս զի մեր այս ժողովի նշանակութիւն աւելի պարզած լինինք, կբերեմ համառօտ կերպով Քաղկեդոնի ժողովի պատմութիւնը, որը քաղում ենք Անգլիացի յայտնի եկեղեցական պատմիչ լրջմիտ Ռօբերթսոնի ռուսական թարգմանութիւնից։—

Եւտիքէսը մի մեծ վանքի վանահայր էր, 50 տարի մնացել էր այդ վանքի պատերում, նա մեծ յարգ էր վայելում Կիւրեղ Աղէքսանդրացուց իւր սուրբ վարքի և ջերմեռանդ հակա-նեստորականութեան համար։ Այդ ժամանակ ասորական և եգիպտական դպրոցները միմեանց փոխադարձ մեղադրում էին, առաջինները երկրորդներին ապողինարութեան, իսկ եգիպտականը ասորականին նեստորականութեան մէջ։ Վանականները ջերմ պաշտպան հանդիսանալով հակա-նեստորական վարդապետութեան, իրանք ընկնում էին ծայրայեղութեան մէջ։ 447-ին լուր տարածուեց թէ Եւտիքէսը սխալ մտքեր է քարոզում։ Նրան ժողովի կանչեցին Պօլիս, ուր ձգձգումներից յետոյ երևաց 448—թուին վանականներով և զինուորներով շրջապատուած։ Ժողովում Եւտիքէսը ասաց, որ Նիկիայի որոշումը ընդունում է, նոյնպէս և ընդունում է Քրիստոսի մէջ երկու բնութիւն մինչև մարմնաւորութիւն, իսկ սրանից յետոյ. «Մի մարմնացած բնութիւն բան Աստուծոյ» ըստ Աթանասի և Կիւրեղի։ Ժողովը նախագահութեամբ Պօլսոյ պատրիարք Փլաւեանի սխալ համարելով Եւտիքէսի կարծիքը և ոչ ըստ ուղիղ մտաց Կիւրեղի, վանահայրութիւնից հանեց և կարգալոյծ արաւ։ Վանականների պաշտպանութեան ներքոյ գտնուելով, Եւտիքէսը բողոքեց և խնդրեց, որ տիեզերական ժողովում գործը քննուի

Աղէքսանդրիայի պատրիարք Դիոսկորոսը, որ գուող կռուող մարդ էր և խիստ հակառակ նեստորականութեան, հրամայեց Եւտիքէսին քահանայ և վանահայր լինել նորից իւր վանքում։ 449-ին եղաւ Եփեսոսում ժողով 120 եպիսկոպոսի և բազմաթիւ վանականների ներկայութեամբ։ Դիոսկորոսը բազմաթիւ վարդապետներ էր բերել, Բարծումա ասորին 1000 վարդապետներով էր եկել։ Լևոն պապը հռոմում չգտնուելով, երեք լեգատ ուղարկեց իւր թղթով, որ կոչւում է «տոմս», ըստ մերոնց տումար, որ նշանաւոր դեր խաղաց ժողովի պատմութեան մէջ։ Լևոնի թղթի մէջ այնպէս էր որոշուած երկու բնութեան ամբողջութիւնը և տարբերութիւնը միացած Քրիստոսի մէջ, և ս. գրքի այնպիսի վկայութիւններով և մեկնութեամբ, որ յետոյ կարծել էր տալիս, թէ դրա խմբագրութիւնը պատկանում է Պետրոս առաքեալին։ Դիոսկորոսը՝ կայսեր հրամանով ժողովի նախագահ դարձաւ։ Ժողովը բացուելուց յետոյ Դիոսկորոսը չթողեց Լևոնի թուղթը կարդալ, և երբ սկսեցին Պօլսոյ ժողովի գործողութիւնները կարդալ, որոնց դէմ գանգատ էր ներկայացրել Եւտիքէսը, երբ երկու բնութիւն էր հնչւում, բոլորը գոռում էին «նեստորական է, պատառ—պատառ անել, այրել դրան, ինչպէս նա երկու է բաժանում, նրան էլ երկու մաս պիտի բաժանել»։

Ժողովը ընդունեց Եւտիքէսին ուղղափառ և որոշեց պատժել Փլաւեանին։ Ժողովը ձեռնամբարձութեամբ նզովեց Նեստորին—«քշել, այրել, պատառել, կտրատել, սպանել բոլորին, որոնք կասեն երկու բնութիւն»։ Փլաւեան պատրիարքը բողոքեց իրա դատապարտութեան համար։ Դիոսկորոսը կանչեց զօրականներին և ստիպեց բոլորին ստորագրել Փլաւիանի դատապարտութեան թուղթը։ Ասում են, որ Դիոսկորոսը և Բարծուման ծեծեցին, քաշկռտեցին Փլաւիանին, այնպէս որ սա 4 օր յետոյ աքսորի ճանապարհին մեռաւ։ Հռոմի մի լեգատը երկիւղից համաձայնեց, միւսը փախաւ։ Կայսրը հրամայեց հալածել մեղադրեալներին իբրև նեստորականների և հաստատեց ժողովի վճիռը։ Դրա հակառակ

Լևոն պապը Հռոմում ժողով արաւ և Եփեսոսի ժողովը աւազակների ժողով անուանեց, խնդրեց կայսրին, որ նոր ժողով անի, բայց մերժումստացաւ։ Հակառակ կուսակցութեանը յաջողեցրեց յաջորդ Մարկիանոս կայսրի հրամանով 451-ին Քաղկեդոնում նոր ժողով գումարել տալ մասնակցութեամբ 520 եպիսկոպոսի և նախագահութեամբ պապի լեգատների։ Մեղադրուողը Դիոսկորոսն էր։ Ազմուկներից յետոյ տէրութեան 19 պաշտօնեայի նախագահութեամբ ժողովը բացին, լեգատները մեղադրեցին որ Դիոսկորոսը համարձակել է նզովել Լևոն պապին Եփեսոսի ժողովում, ուստի իրանք էլ պապի և ժողովի անունով նզովում են Դիոսկորոսին, զրկում են աստիճանից և պաշտօնից. ստորագրեցին 300 ժողովական, ստորագրողների մեծամասնութիւնը բարկացել էր Դիոսկորոսի վրայ, որ նա երեք անգամ ժողովի հրաւիրելուն ուշք չգարձրեց, արհամարհեց իրանց. ոմանք էլ ստորագրեցին մասնաւոր հաշիւներ ունենալուն պատճառով։ Իսկ «շատ քչերը նրան մեղադրում էին հաւատի մոլորութեան մէջ». որովհետև Դիոսկորոսը ժողովի սկզբում բարձրաձայն ասաց, եթէ մեղադրում էք ինձ, մեղադրում էք Կիւրեղին, Աթանասին, Գրիգոր Նազիազանցուն, որոնք մի բնութիւն են քարոզել և դաւանել։ Ժողովը վերջացած էր համարւում, երբ չորրորդ նիստին լեգատները պահանջեցին որ Լևոնի թուղթը—տումարը ընդունուի իբրև՝ դաւանանք։ Ժողովականներից շատերը մերժեցին, ասելով որ բացի Նիկիայի և Եփեսոսի դաւանանքից ուրիշ դաւանանք չեն կարող ընդունել։ Լեգատները ուրիշ միջոցի դիմեցին, դրանք սկսեցին ջոկ ջոկ ամեն մէկին հարցնել թէ թուղթը համաձա՞յն է մեր դաւանութեան, նրանք չիմանալով բանի էութիւնը, ասում էին՝ համաձայն է և ստորագրում էին։ 13 Աղէքսանդրիայի եպիսկոպոս չստորագրեցին, ասելով որ պատրիարք չունենք և առհագին վէճ բարձրաձաւ Լևոնի տումարի ընդունելու և չընդունելու վերաբերմամբ։ Լեգատները տարածեցին որ Դիոսկորոսն էլ է ընդունել Քրիստոսին «յերկուս բնութիւնս», և երկար վիճելուց յետոյ գրեցին «մի Քրիստոս յերկուս բնութիւնս անշփոթ»։

Վէճը մնաց վէճ, Աղէքսանդրիացիք չընդունեցին։ Խառնակութիւնը շարունակուեց երկար տարիներ մինչև Զենոն կայսրը։ Որը 482-ին Ակակ պատրիարքի հետ խորհրդակցելով, այդ վէճերին վախճան տալու նպատակով, մի շրջաբերական թուղթ գրեցին, որ Հենոդիկոն է կոչւում, Աղէքսանդրիայի պատրիարքի հասցէին և պատճէները ուղարկեցին բոլոր շըրջակայ ազգերին և Հայաստան։ Կայսրը այդ թղթի մէջ յիշում է այն խռովութիւնները, կռիւները և արիւնհեղութիւնները, որոնք լինում էին այդ կրօնական վէճի պատճառով. յայտնում է որ Նիկիական—Պօլսական հանգանակը միակն է իբրև նշանակ մկրտութեան, նզովում է Նեստորին և Եւտիքէսին և խրախուսում է Կիւրեղի 12 նզովքը և յայտնում է «Քրիստոս համագոյակից էր Հօր իւր Աստուածութեամբ և Նա համագոյակից է մեզ իւր մարդկութեամբ»։ Որ «Հրաշքները և չարչարանքները վերաբերում են միևնոյն դէմքին»։ Նախատում է նրանց, որոնք «բաժանում են, խառնում են կամ ըստ երևոյթին են կարծում», նզովում է ամենքին, «ով մտածել է կամ մտածում է հակառակ որևէ մի բան, կամ այժմ կամ ուրիշ մի որևէ ժամանակ, կամ Քաղկեդոնի ժամանակ, կամ ուրիշ մի որևէ ժողովում» 474 եր.։ Պետրոս եպիսկոպոսին առաջարկում են ստորագրել այդ թղթին և դրա փոխարէն լինել Աղէսանդրիայի պատրիարք, սա համաձայնում է, ստորագրում է, միաբաններին իւր կողմն է քաշում, ժողով անում և ժողովով նզովում է Քաղկեդոնի ժողովը և Լևոնի թուղթը։ Ակակիա պատրիարքը գրում է այդ մասին Պետրոսին և հաշտութիւն առաջարկում, հաշտութիւնն էլ կայանում է, միասին նամակ են գրում Հռոմ, որ սրանք էլ մասնակցութիւն ունենան ընդհանուր հաշտութեան մէջ, բայց այդ չի յաջողւում. վէճը շարունակւում է և ձգձգւում։

Ուշի ուշով կարդացողը կտեսնի, 1) որ Քաղկեդոնի ժողովում նզովելով Եւտիքէսին, ամեն ինչ վերջացած համարուեց. 2) որ ժողովականները ամենևին մտադրութիւն չեն ունեցել Նիկիոյ հանգանակից դուրս ոչինչ ընդունել. 3) որ

երկու բնութեան խնդիրը յարուցին պապի լեգատները ժողովը համարեա վերջանալուց յետոյ՝ չորրորդ նիստում և զանազան միջոցներով ընդունել տուին. 4) որ Դիոսկորոսը և Աղէքսանդրեանք դեռ 449-ի ժողովում հէնց որ Լևոնի «երկու բնութիւն» խօսքը լսեցին, քանի հազար վանականներով գոռացին «այդ նեստորականութիւն է, պատառել բոլորին, որոնք երկու բնութիւն կասեն»։

Ահա այս աղմուկները հասան մեր երկիրը, երբ հայերը իրանց արիւնով ողողում էին քրիստոնէութեան համար մեր դաշտերը։ Մի կողմից Եւտիքեանք պաշտպանուելով և յենուելով Կիւրեղի անուան վրայ պնդում էին մի բնութիւն խոստովանել ի Քրիստոս, միւս կողմից նեստորականները ուժ առնելով և յօգուտ իրանց ընդունելով «երկու բնութիւն ի Քրիստոս» Քաղկեդոնի որոշումը, պնդում էին երկու բնութիւն ընդունելուն վրայ։

Ի՞նչ արին մեր պապերը, որոնք ոչ մի բանում մասնակից չէին եղել և միշտ հետևում էին Լուսաւորչի «Իսկ մեք փառաւորեսցուք» խօսքերին, որ նշանակում է թէ հաւատոյ խնդիրներում երկար վէճերը աւելորդ են։ Բաբգէն կաթուղիկոսը և բոլոր եպիսկոպոսներն ու իշխանները փառաւոր վճիռ կայացրին, այն է՝ որ ընդունում ենք մի հանգանակ— որ է Նիկիոյ, ընդունում ենք եկեղեցու մի դաւանութիւն, որը ընդունւում էր բոլոր եկեղեցիներից մինչև Լևոնի տումարի ներս ընկնիլը։ Որ նշանակում է թէ մերժում ենք Եւտիքէսի և Լևոնի յաւելումը հանգանակի վրայ, որ բառացի և մտացի հակառակ էր Կիւրեղի այն խօսքերին թէ՝ Նիկիոյ հանգանակի վրայ եթէ բան կաւելացնէք, ժողովից դուրս կգամ։

Բաբգէնի այս ժողովի վճիռը տուաւ մեր եկեղեցական ամբողջ կեանքին ինքնուրոյն ոգի, ինքնուրոյն ուղղութիւն, որոնք մեր եկեղեցու իրաւական կողմերի վրայ որոշ ազդեցութիւն թողեցին և իրանց կնիքը դրոշմեցին մեր բոլոր կանոնների ճակատին։

---

## ԴՈՒԻՆԻ Բ. ԺՈՂՈՎԻ ԿԱՆՈՆՆԵՐԸ 555 ԹՈՒԻՆ.

Յովհան Օձնեցու «Սակս ժողովոց որ եղեն ի Հայս» № 530 ձեռագրում՝ գրուածքի մէջ կարդում ենք, Ներսէս կաթուղիկոսը իւր կաթուղիկոսութեան չորրորդ դարում, և Պարսից Խոսրովի թագաւորութեան 24-րդ տարում և Յուստինիանոսի 14-րդ տարում ժողով արաւ Դուինում Քաղկեդոնի ժողովի հակառակ, որոշեց ծննդեան և մկրտութեան տօնը մի օր կատարել. մի բնութիւն ի Քրիստոս սահմանեց և խաչեցարը երեք սրբասացութեամբ ասել կարգադրեց։

№ 58 և № 100 ձեռագրերում Մխիթար Գօշի մի նամակն է տպած Քաղկեդոնի ժողովի մասին, յիշում է այնտեղ այն ժողովները, որոնք մերժել են Քաղկեդոնի ժողովը, վեցերորդ տեղում զետեղում է այս 555-ինը այսպէս «Ի ըսկզբան թվականութիւն Հայոց արարաբեալ ժողով վեցերորդ Տէր Ներսէսի ի Դուին ի Դ. ամի կաթուղիկոսութեան իւրում և ԺԴ. ամի Յուստինիանոսի կայսեր»։

Իսկ «Թղթոց գիրք»-ի մէջ կայ «ուխտ միաբանութեան Հայոց աշխարհիս ի ձեռն Ներսէսի Հայոց կաթուղիկոսի և Ներշապհոյ Մամիկոնէից եպիսկոպոսի, և Պետրոսի Սիւնեաց եպիսկոպոսի, և այլոց աթոռակցաց և տանուտէրանց և ազատաց և համաւրէն ժողովրդականաց»։ Խոսրով արքայի թագաւորութեան 24-րդ տարում եղած այս ժողովում որոշել են նզովել աղանդաւոր Պաւղիկեանց և հաստատ մնալ ճշմարիտ հաւատոյ մէջ։ (Արարատ. 1900, յուլիս.)։

Վերոյիշեալները ցոյց են տալիս որ Ներսես Բ. Աշտարակեցի կաթուղիկոսը 555 թուին, Խոսրովի 24-րդ տարում (Խոսրով թագաւորեց 531-ին, 531-|-24=555) ժողով արաւ Դուինում և որոշեց մերժել Քաղկեդոնը, տօնել ծննդեան և մկրտութեան տօնը յունուարի 6-ին ինչպէս տօնում էին

Հայերը առաքեալներից սկսած, դաւանել ի Քրիստոս մի բը-
նութիւն և Ս. Աստուածը խաչեցարով երգել։

Մեր բոլոր կանոնագրքերում կան այս ժողովի կանոննե-
րը թւով 38, վերագրած Ներսէս կաթուղիկոսի, Ներշապուհ
և Պետրոս եպիսկոպոսներին, բայց ոչ մի յիշատակութիւն չեն
պարունակում այդ կանոնները վերոյիշեալ որոշումների մասին,
այլ խօսում են և սահմանում եկեղեցական կանոններ։ Այն-
պէս որ դժուար է դրական կեպով պնդել, որ այս ժողովը
որոշել է դաւանաբանական հարցեր, եթէ դաւանաբանական
խնդիրների մասին կանոններ են սահմանել, ինչու չեն մտել
մեր կանոնագրքերը նոյն ժողովի սահմանադրութիւնների մէջ.
թէև «Արարատի» 1900 թ. յուլիսի վերոյիշեալ յօդուածագիրը
դաւանաբանական խնդիրների որոշումը հաստատ է համարում
այս ժողովում, բայց փաստօրէն չի ապացուցանում։

Բացի այդ, պէտք է նկատի ունենալ և այն, որ Ներսէս
Բ.-ի յաջորդից յետոյ կաթուղիկոս եղաւ Մովսէս և ապա
Աբրահամ, երկուսին օրով սկսուեց Վրաց բաժանումը։ Երկու
կաթուղիկոսները յիշեցնել են տալիս Կիւրոնին, որ Բաբգէնի
ժամանակ Քաղկեդոնի ժողովը մերժուել է, և ոչ մի խօսք
չեն ասում իրանցից 17 տարի առաջ կաթուղիկոսութիւն
արած Ներսէս Բ.-ի ժողովի մասին։ Իսկ Մովսէս կաթուղիկո-
սի մեռնելուց յետոյ, երբ ժողով է լինում կաթուղիկոս ընտ-
րելու, Սմբատ Վրկան մարզպան «հաւատոյ ձեռնարկ է
խնդրում ժողովից։ Ահա այդ ձեռնարկի մէջ ոչ մի խօսք
չէ յիշւում Ներսէս Բ.-ի մտցրած դաւանաբանական կէտերի
մասին։ Ահա ձեռնարկի խօսքերը № 530 ձեռագրից հանած.
«Սոսկալի նզովիւք մերժեալ ի բաց ընկեցեալ զամենայն հեր-
ձուածողս զԱրիոս և զՄակեդոն, զանյիշելին Նեստոր, և
զԵւտիքէս, և զժողովն Քաղկեդոնի և զպիղծ Տումարն Լևո-
նի, և հեռանամք ի հաղորդութենէ նոցա ճշմարտութեամբ։
Ապա եթէ խաբէութեամբ ինչ են բանքն մեր՝ նզովեալ ե-
ղիցուք յամենասուրբ երրորդութենէն։ Նոյնպէս ևս Սմբատ
Վրկան մարզպան և տէրանց տէր... նզովեմք զնզովեալդ ի
ձենջ, որպէս հարքն մեր երանելիք նզովեցին զնզովեալսն ի
ձերոնց հարանց»։

Ոչ մի խօսք չի ասում «մի բնութիւն» դաւանելու մասին։ Եզրի համար պատմիչները ընդհանրապէս գրում են. «տգիտութեամբ» ընդունեց քաղկեդոնականութիւնը, որ ըստ իս պիտի հասկանալ, թէ Եզրը նախ որ ծանօթ չէր դաւանական խնդիրների հետ, և երկրորդ ձեռքի տակ չունէր «Հաւատոյ ձեռնարկ» որտեղ որոշած լինէր պարզաբար Հայոց եկեղեցու հայեացքը այդ խնդրի վերաբերմամբ. ճարտարալեզու մարդկանց ազդեցութեամբ ընդունել է կայսրի առաջարկը։ Եթէ Ներսէս Բ.-ի օրով սահմանուած կարգեր լինէին այդ խնդիրների մասին, կգրէին, որ Եզրը քանդեց ժողովի կարգադրութիւնը և վճիռը, այլ միաձայն բողոքում են թէ հայրենի ցանկը քակեց և ոչ մի խօսք Ներսէսի մասին չեն արտասանում։

Մեզ համար փաստական է այն, որ այս ժողովում որոշուեց 38 կանոն և մուծուեց բոլոր կանոնագրքերը, որոնց արձանագրութիւնը ևս կանենք, մնացածները (դաւանաբանականը) կհամարենք անորոշ և ենթադրական մինչև դրանց փաստագրերով ապացուցուիլը։

Ենթադրելի է, որ այս ժողովում քննուած և որոշուած լինի և Հայոց տումարը. որի հաստատութիւնը վերագրւում է սովորաբար այս ժամանակներից 20 տարի յետոյ ապրող Մովսէս կաթուղիկոսին։ Ներսէս Բ. կաթուղիկոսութիւն արաւ 548—557, Մովսէսը 574—604։

(Թուականները որոշելիս հետևում եմ «Արարատի» 1889-ի դեկտեմբերում տպուած ցուցակին, որը յունաց և պարսից թագաւորների թագաւորութեան տարիների համեմատութեամբ կազմած է և աւելի ճիշտ քան հին կարծածը)։ Ներսէսի անունով մեր կանոնագրքերում կան և բացի այդ 38-ից, 43 կանոն. Բաստամեան վարդապետը Մխիթար Գօշի յառաջաբանում խօսելով այս կանոններիս վրայ, կարծում է որ 43 կանոնը Ներսէս Բ.-ինն է և ենթադրում է որ դրանց գոյութեան մասին Զամչեան և Աբէլ եպիսկոպոս տեղեկութիւն չեն ունեցել։

Երկրորդ 43 կանոնը վերագրել Ներսէս Բ.-ին ոչ մի փաստ չկայ. երևի թէ Հ. Բաստամեանը տեսնելով մի քանի

ձեռագրերում դրանց միմիանց ետևից յաջորդաբար գրուած լինելը, կարծել է թէ երկու տեսակն էլ Ներսէս Բ.-ին են վերագրած։ Ձեռագրների մեծամասնութեան մէջ 43 կանոնները բոլորովին յետ ընկած են և շատ հեռու Ներսէսի ժողովի 38 կանոններից. իսկ մի քանի ձեռագրերում բոլորովին չկան 43 կանոնները։ Ամենալաւ փաստը որ դրանք անվաւեր են և ներմուծուած են 997—թուից յետոյ այն է, որ 43 կանոնները մեծամասն ձեռագրերի մէջ միշտ գետեղւում են այն կաթուղիկոսական ցանկից յետոյ, որ սկսուած Լուսաւորչից անուն անուն յիշատակելով հասցրած է մինչև 997 թիւը։ 997 թուի այս ցանկից յետոյ մտածները անվաւեր են, այսինքն յաւելուածներ են 10-րդ, 11-րդ և այլն դարերի. այս յաւելուածների մէջ մտած են չեղած ժողովների կանոններ, օր. այստեղ յիշւում է Կարինի անունով ժողով 9 կանոն սահմանող ուղղուած նորաձևութիւն մըտցընողների դէմ, որ ամենևին գոյութիւն չի ունեցել մեր մէջ, բացի Եզրի ժամանակ ենթադրեալ հակա-հայկական ժողովը։ 43 կանոնները շատ ձեռագրերի մէջ հետևում են Կարինի չեղած ժողովին։ Այնպէս որ ոչ մի փաստով չի կարելի ապացուցանել որ 43 կանոնները սահմանել են Ներսէսներից մէկը, իսկ մասնաւորապէս պնդել թէ Ներսէս Բ-ի կանոններն են, շատ մէծ ռիսկ կլինի։ 43 կանոնները մի առանձին բովանդակութիւն էլ չունեն, վայր ի վերոյ, կըցկտուր կարգադրութիւններ և բոլորը կրկնութիւններ նախկին ժողովների, կանոնների մինչև անգամ միևնոյն նիւթի վրայ կանոն է գրում տարբեր սահմաններով. օր. 5—կանոնը «եթէ մէկը կուսան է և միւսը երկակ և ամուսնանան, երեք տարի ապաշխարեն». իսկ 37-ը «եթէ մէկը կուսան է, միւսը երկակ, թող բաժանեն, ապա թէ ոչ մէկը մեռնի, միւսը տասնհինգ տարի ապաշխարի». բոլորովին տարօրինակ հակադիպութիւններ են։ Իսկ Ներսէս Բ.-ի իսկական 38 կանոնների 25-ը էլի խօսում է նոյն նիւթի մասին, և պատիժ չի նշանակում։ Եթէ ըստ Հ. Բաստամեանի 38 և 43 համարենք Ներսէս Բ.-ի կանոններ, կունենանք մի նիւթի մասին

3 միմիանց խառն—շփոթող կանոններ։ Բացի այդ կան և վայր ի վերոյ կանոններ. օր. 32-ը «ով մուկն ընկած գինի կխմի, 40 օր ապաշխարի»։ 33-ը «օձահարները՝ օձը կծած տարին կաթը չխմեն և ոչ էլ 3 տարի միս ուտեն»։ Նոր բան եթէ կայ 22-ն է «5-րդ աստիճանում չհամարձակեն ազգականն առնել, չորրորդում ապաշխարեն, իսկ երրորդում պսակւողները բաժանուեն միմեանցից և ապաշխարեն»։

Որովհետև ոչ մի փաստ չունենք ժողովի կամ մի որևէ կաթուղիկոսի կանոններ համարել 43-ը, ուստի և բոլորովին կհանենք եկեղեցական իրաւունքի աղբիւրների մէջից։

Ներսէս Բ.-ի ժողովի մասին կանոնագրքերում կարդում ենք «կանոնք տեառն սրբոյն Մեծին Ներսէսի Հայոց կաթուղիկոսի, և Ներշապհոյ Մամիկոնէից եպիսկոպոսի», ոմանց մէջ էլ աւելացնում է «և Պետրոսի քերթողի Սիւնեաց եպիսկոպոսի»։

Իսկ անվաւերների համար գրած է կանոնագրքերում «Կանոնք Ներսէսի». ուրիշ ոչինչ. կամ աւելի երկար «Սահմանք և կանոնք կարգի եկեղեցւոյ սրբոյն Ներսէսի Հայոց հայրապետին գլուխք ԽԳ.։—

## ԱՀԱ ԵՒ 37 ԻՍԿԱԿԱՆ ԿԱՆՈՆՆԵՐԸ.

1. Զի ոչ է պարտ բաժանել զժողովուրդ, վասն պտղոյ և մտից սրբոյ եկեղեցւոյ, յորմէ համարձակեցան բաժանել զպատարագս անառակութեամբ ըստ տունս յանդգնել բաժանել լրբաբար. և զհաց սեղանոյ ի տունս իւրեանց ոչ թողացուցեալ զժողովրդականսն տանել յեկեղեցի զի աւրհնեսցեն։

Առաջի կանոնս ասում է. չպէտք է ժողովուրդը զանազան մասերի բաժանել ս. եկեղեցու մուտքի և պտղի պատճառով. որից առաջանում է այն՝ որ քահանաները սեղանի հացը և ընծայաբերութիւնները փոխանակ եկեղեցի ուղարկելու օրհնութեան համար, ուղղակի տանում են իրանց տները։

2. Այլ ի նոյն ինքն ի սուրբ եկեղեցւոջն վասն նորին կը-ռուիւս և խռովմունս ընդ միմեանս զոր մեք իսկ տեսաք զոր պարտ էր ահիւ և դողութեամբ կատարել զխորհուրդ սրբոյ պատարագին. այլ ոչ յորովայնամոլութեամբ և ժլատութենէ թըշնամանել զսրբութիւնսն. խափանեցին քահանայքն և զպատարագն որ բաժանեն դպրաց, զի առցեն ի նոցանէ գինս վասն ս. պատարագին։

Երկրորդս աւելի պարզում է առաջինը, թէ՝ մինչև անգամ այս պատճառով եկեղեցու մէջ կռիւներ և վիրաւորանքներ պատահեցին մեր իսկ ներկայութեամբ, այն ինչ սուրբ պատարագի խորհուրդը ահով և դողով պիտի կատարեն և ոչ որովայնամոլութեամբ և ժլատութեամբ. մինչև իսկ քահանաները խափանում են պաշտամունքը, որպէս զի դպիրներին տալիք բաժնից իրանց բաժինը իբրև պատարագի վարձ վերցնեն։

Այս երկու կանոններից իմանում ենք, որ վեցերորդ դարում դեռ ևս պատարագը շարունակւում էր կատարուել այնպէս ինչպէս I և II դարերում։ Այսինքն իւրաքանչիւր ծխական պատարագին տանում էր եկեղեցի ցորեն կամ ջերմ հաց և անապակ գինի, ու զանազան ընծայաբերութիւն, որպէս զի մի մասը իբրև «մարմին և արիւն» մատուցանուի հաղորդութեան ժամանակ, իսկ մնացած մասը բաժանեն քահանաները, դպիրները իրանց մէջ և բաժին հանեն կարօտեալներին։ Շատ քահանաներ իրանց կողմը քաշելով հարուստ ծխականներին, թոյլ չեն տալիս նրանց պատարագիքը եկեղեցի բերեն, այլ խնդրում և պատուիրում էին որ իրանց տունը տանեն, որպէս զի եկեղեցի բերելով բաժին չհանեն մնացած քահանաներին և չզրկուեն աւելորդ բաժիններից։ Պատահում էլ էր, որ ագահ քահանաները պատարագը չըվերջացած, արարողութիւնը ընդհատում էին և նուէրները բաժանում և դպիրների մասից իրանց բաժինը վերցնում իբրև պատարագն անելու վարձ. վախենալով որ մի գուցէ պատարագից յետոյ դպիրները իրանց բաժինը վերցնեն և

շուտ դուրս գան եկեղեցուց։ Այդպիսի գործողութիւնները երևի շատ կռիւներ և խռովութիւններ առաջ բերին, որոնց հետևանքը եղաւ վերացնել պատարագի ժամանակ հաց, գինի և այլ նուէրներ տանելու սովորութիւնը. և մտաւ այն կարգը, ինչ որ մինչև այսօր գոյութիւն ունի։

Տես Ս. Սահակի կանոնները։

3. Եդին և ոմանք վաշխս վասն դահեկանաց իւրեանց։

Այս նշանակում է թէ՝ քահանաներից ոմանք էլ վաշխ են առնում իրանց դրամների համար։ Սա չի նշանակում, որ քահանաները իրանց դրամները շահով են տալիս, սրա համար առանձին կանոն կայ այս ժողովի որոշումների մէջ. այլ նշանակում է, որ երբ տուրքը ծխականը չի կարողանում հատուցանել, ապառիկ է մնում, այդպիսի դէպքերում, քահանան ասում է, «լաւ, թող քեզ մօտ է տալիքդ, միայն թէ շահը եկ վրան, և շահն ու փողը միասին տուր»։

4. Կէսք վաճառեցին ընկերաց որպէս ծառայս, և այլքն եսուն վարձանս կանանց իւրեանց ամբարշտեալք. ամենևին վստահացեալք ի բռնութիւն անարժանութեամբ անձանց իւրեանց մեղան. և ժողովրդականք այնպիսի պատճառաւ բաժնոց կերեալ առանց աւրհնութեան զհաց պատարագին. և ոչ կամեցան տանել զքահանայս և զպաշտաւնեայս ի տուն, զմատուցողս պատարագին. այլ զերկկանայս և զանդպիրս այսպիսի անարժանիւք հաճոյ թուեցաւ նոցա առնել զտաւն իւրեանց թերակատար յաւրհնութենէ քահանայից. անմիտ ագահութեամբ զրկեալ ըզպաշտաւնեայս սեղանոյն ի հացէ ուխտին. և զրկեցան ինքեանք յաւրհնութենէ Աստուծոյ։ Կարգեցաք և սահմանեցաք յայսմհետէ հրաժարեսցին քահանայք և ժողովրդականք յայսպիսի անառակ մահաբեր սովորութենէ։

Քահանաների կէսն էլ վաճառում են ս. սեղանից ըստացուած նուէրները իրանց ընկերներին, իսկ ուրիշները անըզգամ կանանց են վճարում վարձի փոխարէն. այդ՝ ժողովրդականք տեսնելով, սկսեցին առանց օրհնել տալու պատա-

*րագի Հացը ուտել և չկամեցան ոչ ոքի, թէ քահանաներից, թէ պաշտօնեաներից և թէ պատարագ մատուցողներից իրանց տուն Հրաւիրել. Հապա դրանց փոխարէն իրանց տուն Հրաւիրեցին պատարագի Հաց ուտելու երկկին մարդկանց և ոչ դպիրներին։ Մենք սահմանում ենք, որ թէ ժողովրդականք թէ քահանաներ Հրաժարուեն իրանց անառակ և մահաբեր սովորութիւններից։*

Տես Բ. առ.—3, 4. Գանդ. 7, 8։

5. Եւ երկկանայսն թէ և դրակարդացք իցեն և պաշտաւնեայք ընդ դինուորս կացցեն. վասն ուխտազանցութեանն և ի պտղից և ի մտից սրբոյ եկեղեցւոյ, և ոչ միում մասին արժանի մի լիցին, զի չէ պարտ ապաշխարողաց, առաջնորդութիւն առնել, պտուղս և զուխտս պահանջել ընդ քահանայս. Նոյնպէս և տզէտք մի իշխեսցեն մտից եկեղեցւոյ, զի անիրաւ է. վասն անուսումնութեանն ընդ զինուորս կացցեն և զհայրենի հող և զջուր կալցին. և յարքունիս հարկ տացեն և զորդիս ի դպրոց տացեն զի ուսցին։

*Երկրորդ անգամ ամուսնացածները՝ թէև դրակարդացներ և թէ ուրիշ պաշտօնեաներ լինին, եկեղեցում զինուորների հետ կանգնեն ուխտազանց գտնուելուն Համար և եկեղեցու մուտքից և պտղից էլ մասն ու բաժին չստանան. Նոյնպէս և տգէտները (այսինքն պաշտօնեաները) եկեղեցուց բաժին չըստանան և անուսումն ու տգէտ լինելուն Համար զինուորների հետ կանգնեն, Հայրենի Հողին ու ջրին դառնան, արքունական Հարկը վճարեն և իրանց որդիներին դպրոց ուղարկեն ուսումն առնելու։*

*Բ. առ. 17—կանոնը պատուիրում է որ ոչ ոք երկրորդ ամուսնութեան մէջ մտածներից չի կարող Հոգևորական լինել, այս կանոնս նոյնը արգելում է, մինչև անգամ պատժում է, թոյլ չտալով եկեղեցում Հաւատացեալների Հետ կանգնելու, այլ զինուորների, բացի այդ Հանում է այդպիսի անձանց Հոգևոր կոչումից և մտցնում է Հարկատուների*

շարքը։ Կանոնից երևում է որ գրակարդացները (ընթերցողը), դպիրը, երգմնեցուցիչը, և առհասարակ ստորին պաշտօնեաները հոգևորականների ցանկում էին համարւում և ազատւում էին հարկից. նոյնը հաստատում են և այժմեայ ռուսաց օրէնքները։ Բացի այդ, կանոնս սահմանում է մի փառաւոր սկզբունք, որ ոչ միայն ազէտը իրաւունք չունի հոգևորականութեան մէջ մտնելու, այլև եթէ սխալմամբ լինի էլ, պէտք տուժի նրանով, որ նախ իսկոյն պէտք կոչումից զրկուի և հարկատուների շարքը մտնի, երկրորդ եկեղեցում ի պատիժ զինուորների հետ պէտք կանգնի և երրորդ պէտք նախկին պարապմունքով զբաղուի, եթէ երկրագործ էր, էլի պէտք երկրագործութեան դառնայ. և չորրորդ՝ եթէ շատ է ուզում հոգևորականութեան մէջ մտցնել իւր որդիներին, պէտք նրանց ուսումնարան ուղարկի կարդալու համար։

Տղէտների մասին տես և Ս. Սահակի կանոնները։

6. Քահանայք դշարաթու և զկիւրակէի պատարագ մի իշխեսցեն խափանել որպէս և տեսաք ի բազում տեղիս, այլ մատուսցեն անխափ, սաղմոսիւք և մարգարէիւք և առաքելաւք և աւետարանաւք կարգաւորաբար, և զբաժակ սուրբ հաղորդութեանն մի իշխեսցեն խափանել քահանայքն պատճառանաւք չքաւորութեան որպէս ամբաստանեցին ժողովուրդք ի բազում տեղիս, որ արարեալ բազմացան, խնամով հոգւոյ իւրեանց, այլ մի ևս լիցի. զի մի զուցէ պարտաւորեալք պատուհասեսցին, և տուժեսցին յԱստուծոյ. արդ պատրաստեսցին կատարել զսուրբ խորհուրդն անխափան հարկաւորապէս ամենայն զգուշութեամբ։

7. Եւ ի սրբոյ բաժակէ երկիւղիւ առցեն ժողովրդականացըն. ոչ թերացուցանել նոցա զսրբութիւնն և զանմահոյցն չըխառնել զի մի դատապարտեսցին. և ի պատարագէ կիրակէի և սաւնից մի իշխեսցեն ծուլանալ մնալ ի տունս իւրեանց. այլ և յամենայն պաշտամանց թէ ծուլասցի ոք յանդիմանեսցի, և ի մասնէ մտից աւուրն զրկեսցի և ընկերաց իւրոց որոշեսցի, եթէ քահանայ իցէ եթէ դպիր։

6 և 7 կանոնները խօսում են նոյն նիւթի վրայ, եթէ պարզենք կստանանք այս։ Քահանաները շաբաթ և կիւրակի օրերը անխափան պատարագ պիտի անեն, այն էլ սաղմոսներով, մարգարէական և առաքելական գրքերի և աւետարանի ընթերցմամբ. ով այս պաշտամունքները կատարելուց կխուսափի՝ կզրկուի օրուայ մուտքից, կյանդիմանուի և կմերժուի եկեղեցուց, կանոնս դրուած է թէ քահանայի և թէ դպրի համար։

Զքաւորութեան պատճառով քահանաները չհամարձակեն ս. Հաղորդութեան բաժակը խափանել, կամ սրբութիւնը պակասեցնել և կամ (նոր գինի) խառնել սրբութեան հետ (զանմատոյցն չխառնել)։

«Զանմատոյցն չխառնել» նշանակում է չխառնել բաժակի օրհնած՝ մատուցուած գինու հետ նորը, որ նոյն կարգով չի օրհնուած։

Տես Ա. առ. 2, 5։

8. Եւ զկտակարանս և զմարգարէս, և զառաքեալս, և զաւետարանս բովանդակ ուսասցի սրբոյ եկեղեցւոյ ի պտղոյ և ի մտից, և հանդերձս բովանդակ սրբոյ սեղանոյ և զեկեղեցւոյ յաւաղաստ տանց փեսայից և հարսանց. զոր այլ մի իշխեսցեն առնել. զոր թէ ոք գտցի արարեալ, թէ քահանայ, լուծցի, թէ դպիր, նզովեսցի։

Ս. Սեղանի հանդերձները, վարագոյրը չտան հարսն ու փեսայի առագաստի համար, եթէ քահանան կտայ՝ կարգալոյծ լինի, եթէ դպիրը՝ նզովուի։

Տես Բ. առ. 73 և Ս. Սահակի կանոնները։

9. Լուաք լուր ծանրագոյ հասեալ ի վերայ եթէ քահանայք ի տեղիս տեղիս ինքեանք մկրտութիւն չառնեն, (միայն) բայց ջուր իմն աւրհնեն և տան ցմանկամարդն, հրամայեալ նոցին իսկ ի նոցին տունս մկրտել զմանկունս իւրեանց. վասն որոյ պատուհասեցան աներևոյթ տանջանաւք, և այժմ թէ գտցի ոք արարեալ ի նմին վնասու, ի բաց որոշեալ լիցի յամենայն տամբ իւրով ի քահանայական ժառանգութենէն ամենևին։

Շատ ծանր լուր հասաւ մեզ, իբր թէ մի քանի տեղերում քահանաները մկրտութիւն չեն անում, հապա մի ինչ որ ջուր են օրհնում և տալիս են կանանց, որ իրանց տըներում նոյն ջրով մկրտութիւն անեն, այդ անողները աներևոյթ տանջանքներով պատժուեցին, ով այդ բանում կըբռնուի, մերժուի եկեղեցուց և իւր ամբողջ տնով քահանայական ժառանգներից հեռացնուի։

10. Քահանայք գահասիրութեամբ մի հակառակեսցին ընդ միմեանս. զի զոր շնորհն Աստուծոյ ընտրեաց նախ ի քահանայութիւնն, այն է նախաթոռ յեկեղեցւոջ։

Եկեղեցու մէջ նախաթոռ է այն քահանան, որ առաջ է ձեռնադրուած։

11. Դպիր պաշտաման եկեղեցւոջ առանց քահանայի մի իշխեսցեն կալ։

Առանց քահանայի դպիրը եկեղեցու պաշտամունք չի կարող կատարել։

Դպիր ասելով մենք հասկանում ենք չորս աստիճանաւոր, կամ ջահընկալ, օտարները ստորին պաշտօնեայ ընդունում են օրհնելով, ձեռքը գլխին դնելով, մեր մէջ դըպրութիւն անում են շատ անգամ ոչ մի աստիճան չունեցողները. իսկ երբ ձեռնադրութիւն է կատարւում, այն ժամանակ դռնապանութիւնից սկսած, սաղմոսասացը, երդմնեցուցիչը, ջահնկալը ստանում են աստիճան օրհնութեամբ և ձեռք դնելով։

12. Եւ մի զձև զինուորաց հանդերձի ունել և ի կարգէ պաշտաւնէից կալ. այլ ընդ զինուորս կացցեն, այլ զձև եկեղեցականաց ունել իւրոյ կարգին վայել է ըստ քահանայական աւրինի։

Զինուորների շոր հագնել և հոգևորականների շարքում կանգնել չի կարելի, այլ հոգևորականները քահանայական տարազով պիտի լինին։

Թէ երբ է մտել հոգևորականների տարազը, յայտնի չէ, միայն Ա. Բ. դարերում նոր զգեստ առանձնապէս յատուկ հոգևորականներին չկար, միմիայն պատուիրւում էր հագնուել պարկեշտ, համեստ, սովորական շորեր։ Դ. դարում հագնում էին նոյն շորը միայն երկար և սև գոյնով, մասնաւորապէս եպիսկոպոսները։ Երբ Մանիքեցոց մեղադրում էին սպիտակ նոր ձևի շոր հագնելուն մէջ, նրանք պատասխանում էին, թէ «ինչու ձեր եպիսկոպոսները սև երկար շոր են հագնում, որտե՞ղ է գրուած»։ Մեր այս կանոնից երևում է որ Զ. դարում մեր մէջ կար որոշուած եկեղեցական տարազ, որով տարբերւում էին հոգևորականները աշխարհականներից։ Դ. դարում հէնց, ինչպէս Փաւստոսի վկայութիւնից երևում է, մեր հոգևորականները հագնում էին երկար շոր, մինչև իսկ հակա-եկեղեցական տարրը ծաղրում էին, անուանելով «կանացազգեստ» մարդիկ։ Նոյնպէս յիշւում է որ Լուսաւորչի ժամանակ եկած կուսակրօնները կնկղաւոր էին, երկար շորերով։ Մինչև այսօր Սիւնիքի և Ղարաբաղի յետ ընկած գիւղերում պատահում են քահանաներ որ գնում են մեծ վերև բարձրացող տափարակ վերջաւորութեամբ՝ եպիսկոպոսական թագի ձևով փափախներ, հագնում են բրդէ չուխաներ աշխարհականների չուխայի կտրից միայն երկար մինչև սրունքները, ինչպէս ծեր պատկառելութեան աստիճանի հասած մարդիկ։

13. Եւ ժողովրդականք մի հրապուրեսցին ի նոցանէ ի բաժանումն սրբոյ եկեղեցւոյ, զի պատճառ խռովութեան բերէ. այլ զպտուղս և զմուտս ժողովրդականք ի սուրբ եկեղեցին մատուսցեն յամենայն յաւժարութեամբ անխափան. և մի ըստ գասուց բաժին և երգոց որ եղև մնաս, և քահանայից առեալ սրբոյ եկեղեցւոյ բաժանեսցին կարգաւորաբար որպէս աւրէն է։

Գլխաւոր քահանայիցն. Բ. մասունք և կէս մասին, և այլ քահանայքն մէն. Բ. մասունս, և սարկաւագունքն մի մասն, և կէս մասին, և դպիրքն և այլք կանայքն թէ իցեն պարկեշտք մի մասն առանց հակառակութեան։

Ապա եթէ իցէ ոք որ հակառակիցէ և առնիցէ խռովութիւն, այնպիսին դադարեալ լիցի իւր կարգէն, և ընկերք իւր մի իշխեսցեն ընդ այնպիսումն հաղորդել, և ժողովրդանք առ քահանայս ունել զնա։

Ժողովրդականք չընդունեն քահանաների առաջարկը ծխերը բաժնելու պտղի համար, որովհետև խառնակութիւն է ընկնում, այդ բոլորը բերեն եկեղեցի և քահանաները այնտեղ կարգով բաժանեն այսպէս. գլխաւոր քահանային տան 2½ մասն, մնացած քահանաներին երկու մասն, սարկաւագներին 1 1/2 մասն, և դպիրներին ու այրի կանանց՝ եթէ պարկեշտ են մի մասն առանց հակառակութեան։ Ով կհակառակի այս կարգիս, թող դատապարտուի իւր ընկերներից և յարաբերութիւն չունենայ, կարգ կատարելուց հեռանայ և ժողովրդականներից իբրև քահանայ չընդունուի։

Արտաքուստ կարծես կանոններս հակառակ են ծխաբաժանութեան, բայց ներքուստ ո՛չ, հակառակ են այն ծխաբաժանութեան, որ լինում է որկրամոլ և ագահ քահանաների ցանկութիւններին յագուրդ տալու համար. ծխաբաժանութիւնը վերջացնում է՝ սահմանելով աւելի փառաւոր սկզբունք, այն է ժողովել բոլոր տուրքերը եկեղեցի և այնտեղ ըստ սահմանուած կարգի բաժանել բոլորի մէջ առանց աչառութեան։

14. Պաշտաւն և պատարագիք և սպասք սրբոյ եկեղեցւոյն ի գլխաւոր քահանային տան եղիցի, որպէս յառաջագոյն կարգեալ է, և ինքն գլխաւոր քահանայն զեկեղեցին մի իշխեսցէ թողուլ և գործոց տան պարապել. այլ մշտնջենաւոր ի սուրբ եկեղեցւոջն կացցէ, զի պաշտաւն և աղաւթքն տուընջեան և գիշերոյ ժամուցն և զտեսչութիւն ժողովրդոյն մի խափանեսցէ, իսկ այլ ընկերքն զամառն փոխանակաւ կացցեն ընդ նմա անպղերգաբար, ապա եթէ իցէ ոք սխալիցէ ի պաշտամանէն, պղերգութեամբ կամ երկրական հոգւովք ի մտիցն մի իշխեսցէ մասն առնուլ, քահանայք միակամք չիցեն աւրհնել միաբանութեամբ զժողովրդականսն և զորս որորոշեալ ի սրբոյ եկեղեցւոյ։

Եկեղեցու սպասները և նուիրուած անօթները գլխաւոր քահանայի տանը լինեն, ինչպէս առաջուց կարգուած է. գլխաւոր քահանան էլ չհամարձակի եկեղեցին թողնել և ուրիշ տեղ ապրել իւր գործերով զբաղուել, հապա միշտ եկեղեցում ապրի, որպէս զի ժամերգութիւնը մշտական կատարուի և ժողովուրդը չսառչի. իսկ մնացած քահանաները ամառը հերթով օգնեն նրան. ով կծուլանայ իւր հերթին գալ պտղի բաժնից թող զրկուի։

Եկեղեցու բակում լինում են շէնքեր, որոնց մէջ կանոնըս պատուիրում է աւագ քահանային բնակուիլ և միշտ ժամերգութեան հսկել. այդ շէնքերը ձրի տրւում էր միմիայն աւագներին, որոնց մահից յետոյ շէնքը չէր մնում մեռնողի ժառանգներին, հապա իբրև եկեղեցապատկան շինութիւն յատկացնւում էր յաջորդ աւագ քահանային, ուր և իջնում էին կուսակրօնները, օտարական հիւրերը, որտեղ և պատսպարւում էին այրիները և աղքատները։ Այսպիսի շինութիւններ եկեղեցիներին կից ամեն տեղ չկայ, բայց դրանց կարևորութիւնը շատ զգալի է ամեն տեղ, մանաւանդ մեծ քաղաքներում։ Շատ անգամ յանկարծակի պատահների դէպքում անհրաժեշտ է լինում քահանայի դիմել, ծխական քահանան չգտնելով, իսկոյն յարմար է լինում դիմել եկեղեցի աւագ քահանային, կարծելով որ հերթապահութեան շնորհիւ, կարելի է եթէ ոչ աւագին, մի որևէ ուրիշ քահանայ գտնել։ Կանոնս պատուիրում է ճշտութեամբ հերթակալութիւնը անպակաս անել եկեղեցուց։

15. Մկրտութիւնս ոք ծուլութեամբ մի իշխեսցէ առնել որպէս լսեմք, այլ երկիւղիւ և զգուշութեամբ, բուրւառաւք և ճրագովք և աւագաստեաւ վարագուրաւք, որպէս վայել է լուսաւորութեամբ սրբոյ աւազանին և աւազանն կանգնեսցի յեկեղեցւոջն կամ ի տան պաշտամանն. թէ քարեղէն իցէ թէ զինչ և իցէ երկիւղածութեամբ արժանի և բաւականութեամբ գործոյն լուսաւորութեան, լայնութեամբ և խորութեամբ, զի բաւականաբար ծածկեսցէ ջուրն զհասակ մանկանցն որք մկրտեցինն, և ի տունս շինականացն քահանայք մկրտութիւն մի իշխեսցեն առնել. բայց վասն երկիւղի մահու թէ վտանգ ինչ իցէ։

*Մկրտութիւնը կատարուի բուրվառով, ճրագներով և վարագուրով. ուագանը եկեղեցում լինի կամ պաշտամունքի տանը. գիւղացիների տանը քահանան չհամարձակի մկրտութիւն անել, բացի մահուան վտանգի դէպքից։*

16. *Եւ կանայք առ քահանայս մի իշխեսցեն կալ, բայց սարկաւագունքն սպասաւորեսցեն, և կանայքն իւրեանց տեղին աղաւթեսցեն, և մի եղիցին գործակիցք քահանայիցն որպէս ըսեմք ունելով զտեղիս սարկաւագացն։*

*Մկրտութեան ժամանակ կանայք քահանայի մօտ չը կանգնեն սպասաւորութիւն անելու, կամ սարկաւագի պաշտօն կատարելու, ինչպէս լսել ենք, հապա իրանց տեղում կանգնեն և աղօթեն և սարկաւագը միայն սպասաւորի։*

*Տես Ս. Սահակի կանոնները։*

17, *Զգուշասցին ևս առաւել սարկաւագունք, մի գուցէ մկրտութիւն առնիցեն յանդգնաբար ի կորուստ։*

*Սարկաւագները զգուշանան և յանդգնաբար մկրտութիւն չանեն։*

*Տես Սահակի կանոնները։*

18. *Եւ քահանայք զապաշխարութիւն վաճառականութեամբ մի իշխեսցին տալ, այլ դատաւորակութեամբ հոգասցեն, խրատել իբրև զկարեկիցս զի ապրեսցին, և հաս մի առցեն մաքսաւորաբար ի նոցանէ. այլ ձրի առեալ և ձրի տամք։*

*Քահանայք չհամարձակեն ապաշխարութեան խորհուրդը վաճառականութեամբ (տուրքով) կատարել, հապա ձրի խրատելով և, դատաւորակելով։*

*Այս կանոնս ենթադրել է տալիս, որ եկեղեցու խորհուրդների կատարման համար քահանաները տուրքեր ստացել են, մինչև այսօր էլ խոստովանութիւնը և հաղորդութիւնը ձրի է բաշխւում և կատարւում, իսկ պսակի, մկրտութեան, ձեռնադրութեան և միւս ծէսերի՝ թաղման, տնօրհնէքի, և այլն՝ համար տուրք է տրւում կամաւոր կերպով։*

19. *Եթէ ոք ի քահանայից յայտնեսցէ երբէք զբանս ապաշխարութեան ապաշխարողացն նզովիւք լուծցի. և ամեն իրաւք ջնջեսցի ի քահանայական ժառանգութենէն։*

*Եթէ քահանան համարձակուի խոստովանութիւնը ուրիշին հաղորդել, կարգալոյծ լինի նզովքով և ամեն բանով զրկուի քահանայական ժառանգութիւնից։*

*9-րդ յօդուածում էլ պատժում էր քահանային զրկելով քահանայական ժառանգութիւնից, որ նշանակում է թէ պատժուողը զրկւում է նիւթական օգտից—եկեղեցական եկամուտներից և իրանց տանից քահանայ ձեռնադրել տալու իրաւունքից—արտօնութիւնից։ Թէև քահանայական կարգի ժառանգութիւն գոյութիւն չի կարող ունենալ եկեղեցու կարգադրութիւնների մէջ, որովհետև միայն արժանաւորութեամբ են քահանայ ընտրում և ոչ ժառանգութեամբ, բայց որովհետև քահանաների որդիները փոքրուց քահանայի ձեռքի տակ կրթուելով և իբրև բուրվառակիր նրա հետ շրջելով վարժուած են լինում եկեղեցական արարողութիւնների մէջ, ուստի և ընտրութիւնները միշտ կատարւում էին յօգուտ պատրաստի տիրացուների՝ քահանաների որդոց, այս կարգը մի տեսակ ժառանգական սովորութիւն էր դարձել քահանայութիւնը որդոց որդի անցնելու։*

20. *Գերեզմանս յեկեղեցիս մի իշխեսցեն առնել, այլ թէ գացի ոք արարեալ, յեկեղեցւոյն պատարագ մի ոք իշխեսցէ մատուցանել մինչև մաքրեսցին զոսկերսն։*

Եկեղեցում մեռել չպէտի թաղել, որտեղ գերեզման կայ, այնտեղ պատարագ չպէտի անել այնքան ժամանակ, մինչև որ եկեղեցուց գերեզմանը կհանուի և կտեղափոխուի ուրիշ տեղ։

Տես և Ս. Սահակի կանոնները։

21. Քահանայք դահեկանս վաշխել ամենևին մի իշխեսցեն, լուան ի գրոց սրբոց առել զվաշխողսն, փախիցեն յարբեցու-թենէ յիշելով զսահմանս արբեցողաց։

Քահանայք չհամարձակեն իրանց փողերը վաշխով տալ և հեռու մնան արբեցութիւնից։

Տես Ա. առ. 18, Բ. առ. 44, Նիկ. 17, Լաւ. 4, Բարս. 14։

22. Յագապս մասունս մի բաժցին, ըստ սրբոյ կանոնին, այլ աղքատաց տացեն ի նմին ժամու յանդիման ագապատանն։

Քահանաները ագապը (աղքատներին տրուելիք նուէրը, սիրոյ երեկոյեան ճաշերը) իրանց մէջ չբաժանեն, հապա նուիրատուի ներկայութեամբ աղքատներին բաժանեն։

Ագապը այն ճաշն էր, որ նախկին դարերում լինում էր ամեն պատարագից յետոյ, որին մասնակցում էին անխտիր ամենքը, մասնաւորապէս աղքատները, այդ «սիրոյ երեկոյ» էր կոչւում ի յիշատակ և ի յարգանս Քրիստոսի երեկոյին։ Մինչև այսօր էլ գիւղերում պատարագ ասելով հասկանում են բացի եկեղեցու ժամերգական պատարագից և քելեխը, մեռելի համար տրուած ճաշը. օր. ասում են, «նա հօրը պատարագը չտուաւ», որ նշանակում է հաց չտուաւ, թէև պատարագով թաղուել է հայրը։ Ագապը մնացել է նաև իբրև տէրունական մատաղ ծննդեան և զատկի տօներին, որտեղ մասնակցում են բոլորը անխտիր թէ մատաղ տալուն և թէ ստանալուն մէջ։

Տես Գանգ. 11, 2. Լաւ. 27, 28. Տես և Բ. առ. 3, 4։

23. Եւ՞ ժողովրդականք հրաւիրեալք ի հաց պատարագի, մի իշխեսցեն ճաշակել ի տունս իւրեանց պատճառաւ հիւրոց կամ գործակալաց, որկորսութեամբ. եթէ իցէ ոք որ կերիցէ ի հաց պատարագին մի իշխեսցէ երթալ. և քահանայք և ժողովրդականք ի ներքս մի իշխեսցին թողուլ զայնպիսին, զի անառակութիւն է և խիղճ հոգւոց, ապա եթէ իցէ ոք որ բռնաբար մտցէ քահանայքն գնասցեն արտաքս և զհացն մի իշխեսցեն աւրհնել։

Պատարագի հացին հրաւիրուած անձինք պիտի հաց չուտեն իրանց տներում որկրամոլութեամբ հիւրերի պատճառով. եթէ մէկը կուտի և կգայ հաց ուտելու պատարագատիրոջ տանը, ժողովուրդը և քահանաները այդպիսի մարդուն չընդունեն, եթէ զօրով կմտնեն, քահանան պիտի դուրս գայ և հացը չօրհնի։

Այս կանոնս մինչև այսօր շատ գիւղերում պահպանւում է այսպէս՝ պատարագին գնացողները անօթի են մնում և պատարագից յետոյ մեռելատուն գնում, կամ եթէ տարելից է, կամ այնպիսի մարդ է որ ամեն տարի ի յիշատակ իւր հօր, մօր, պատարագ է անում և հաց տալիս ժողովրդին, այդպիսի պատարագատիրոջ տունն են գնում և հացը ուտում։ Այս կանոնս ճշտութեամբ դժուար է պահւում, որովհետև բոլորովին չի կարելի ստիպել, որ հաց չուտեն և հսկել ուտողների վրայ էլ դժուար է. հներում հեշտ էր այս կանոնըս գործադրել, որովհետև ամեն պատարագի ժամանակ հաղորդւում էին, երևի թէ հաց ուտողները պարտաւոր էին ամբողջ պատարագին ներկայ լինել, հաղորդուել և ապա գնալ քելեխ ուտելու։

24. Տղայոց մի իշխեսցեն պսակ աւրհնել, և մի կարելոցն երկոցունց, առանց զմիմեանս տեսանելոյ. զի այսպիսի անժամ հարսանեաց գնացին վնասք մահաբերք, և ժողովրդականք զայսպիսի հարսանիս մի իշխեսցին առնել զի նոցունց իսկ է կորուստ։

Տղաներին—անչափահասներին ոչ ոք չհամարձակի պըստակել, իսկ հասակաւորներին միայն այն դէպքում ամուսնացնել, երբ միմեանց տեսել են և հաւանել։

Տես Ս. Սահակի կանոնները։

25. Չէ պարտ զկուսանսն այրեաց ամուսնացուցանել, և ոչ զայրիս զկուսանացն զի աննման է։

Չպէտք է կոյս մարդկանց այրի կանանց հետ և ոչ այրիներին կոյս անձանց հետ ամուսնացնել, որովհետև համեմատ չեն միմեանց։

Լուսաւորչի 5-րդ կանոնն և մի քանի անվաւեր համարուած կանոններ խօսում են այս նիւթիս վրայ, ընդհանուրի կարծիքով պէտք է կոյսը կոյսի հետ և երկեակը երկեակի հետ պսակել. մինչև այսօր էլ ժողովրդի մէջ աղջիկը կոյս տղի (ազապ) տալ աւելի գերադասելի է քան ամուրի մարդու, և կոյս աղջիկ առնելը գերադասելի է համարւում քան այրի կին։ Եկեղեցական կանոնները երկրորդ ամուսնութիւնը համարում են ապաշխարանքով թոյլատրելի և պսակում են այդպիսիներին ուռով և խաչակնքելով։

26. Ձեռնադրութիւն ոք արջառոց մի իշխեսցէ առնել։

Կանոնս կարճ է և անորոշ. մի քանի ձեռագրերում գըրած է «զձեռնադրութիւն», իսկ կանոններիս համառօտագիր վերնագրում գրուած է «Զարջառ ոչ ձեռնադրել»։ Որ նշանակում է թէ քահանայք իրաւունք չունեն անասունի, կամ այսպէս ասած մատաղացու կենդանու վրայ ձեռք դնեն և ասեն, «այս պջառս պիտի մատաղ անես». այն նպատակով որ լաւ արջառ եկեղեցուն նուիրելու դէպքում, իրանք՝ քահանայք լաւերը վերցնեն և իրանց սեպհականացնեն։ Այս կանոնս արգելում է, որ քահանան չընտրի մատաղացուն,

այլ անասունի տէրը։ Գիւղացիների մէջ սովորութիւն կայ մատաղացու գառան, արջառի ականջը քիչ կտրում են և նուիրում Աստուծոյ, կամ մատաղ են անում, կամ նուիրում վանքին ողջ ողջ իբրև վանքին պատկանող անասուն։ Եթէ կանոնս պարզ թարգմանենք ընդհանուր մտքով—կստանանք. «Ոչ ոք (քահանաներից) չհամարձակի մատաղացու ընտրել»։

27. Քահանայք ի պտտանց աւրհնել մի իշխեսցեն երթալ զի զաւշաքաղութիւն է, զի սուրբ պատարագն աւրհնութեանց զարջառ և զոչխարս։

Համառօտ վերնագրում գրուած է «զպուտուն ոչ աւրհնել»։

Քահանաները չգան պատարագից յետոյ պատարագատիրոջ պտուկները (ամանները) օրհնելու, աչքածակութիւն է, որովհետև պատարագը արդէն օրհնել է նրա ոչխարները և արջառը։

Երևի աչքածակ քահանաները պատարագից յետոյ սովորութիւն էին արել գնալ երկրորդ անգամ պատարագատիրոջ տունը նրա մսի ամանները օրհնելու և դրա վարձն էլ ստանալու, այդ բանը կանոնս արգելում է։ Մինչև հիմա էլ գիւղերում սովորութիւն է մատաղը մորթելու ժամանակ մի քանի մսացու կենդանիներ մորթել, պտուկները լցնել տապակած մսով ձմեռուայ գործածութեան համար. մատաղի երին ուղարկում են քահանային, բայց միւս մսից չեն ուղարկում, ահա այս երկրորդ մսից են կամեցել օգտուել քահանաները, որը և արգելում է կանոնս։

28. Քահանայք ի տունս իւրեանց կենդանի մի իշխեսցեն առնուլ, զի ագահութիւն է. և թողուլ զտունն անպատարագ, ամբարշտութիւն է. և ժողովրդականք կենդանիս մի իշխեսցեն տալ գնոսա. ինքեանք արասցեն կարգաւորութեամբ ի տունս իւրեանց, զի աւրհնութեան սրբոյ պատարագին արժանի լիցին ծախուն և վաստակովքն։

Քահանաները իրանց տունը զոհի կենդանի չհամարձակեն տանել, ազահութիւն է. ժողովրդականներն էլ անասունները չտան քահանաներին, այլ իրանց տանը մորթեն, պատարագ անեն և բաժանեն աղքատներին, ու դրանով իրանց ծախքն ու վաստակը օրհնեն։

Այս կանոնս շարունակութիւն է նախորդ 26-ի, արգելում է քահանաներին մատաղացուները կենդանի իրանց տունը բերելու և իւրացնելու. ժողովրդականներին էլ պատուիրում է պատարագի հացից չխուսափել և մատաղը առանց մորթելու և առանց պատարագ անելու (կենդանի) ողջ ողջ չտալ քահանային։

29. Ի սուրբ քառասներորդացն պահսն, և կամ առաջաւորս նորին մի ոք իշխեսցէ լուծանել ըստ սրբոյ կանոնին. եթէ լուծցէ ոք ի քահանայից կամ աշխարհականաց զաւուրցն կերակուր, պատճառաւ հիւրոց կամ գործակալաց, յեկեղեցի մի իշխեսցի մտանել մինչև տուժեսցի աղքատաց ապաշխարութեամբ։

Ոչ ոք չհամարձակի քառասնորդական կամ առաջաւորաց պասը լուծել հիւրերի պատճառով, պասը ուտողը եկեղեցուց հեռանայ և աղքատներին ողորմութիւն տալով ապաշխարի։

30. Եւ մեծի շաբաթուն ճրագալուցին թէ մշակք՝ թէ աղայք՝ ծերք ի տըւընջեան աւրինաց մի հաղորդեսցին, ապա եթէ իցէ ոք որ հաղորդեսցի վասն տկարութեան մարմնոյն թան և գինի մի իշխեսցին ճաշակել ցժամն կատարելոյ սրբոյ պատարագին։

Ոչ ոք չհաղորդուի աւագ շաբաթ օրուայ ճրագալուցից առաջ. հիւանդութեան պատճառով հաղորդուողը թան և գինի չխմի մինչև պատարագի վերջանալը։

31. Եւ քահանայական հրամանի ժողովրդականք հրաման մի տացեն, զի նոքա են առաջնորդք ձեր, և նոցին եղբայրքն ընդ նոցին ձեռամբ են, և ոչ մարթի ընդդէմ դառնալ զի անկարգ է, զի իշխան է կապել և արձակել։

Ժողովրդականները պիտի պատուեն քահանաներին և նրանց դէմ հակառակ հրամաններ չարձակեն։

32. Քահանայք մի արբեցողք, և մի հանդանակողք, և մի արծաթագին աղախնայս ստանալ՝ և կամ ի կապենից պոռնկաց ի տունս տանել զզարշելիսն զոր ոչ հրամայեն աւրէնքն և վանականքն որ ի չէնս բնակեալ են, պարսպեալ զանձինս պահովք և աղաւթիւք և անվեհեր հիւրասիրութեամբ որչափ Աստուած պատրաստ է բաւական համարել որպէս Քրիստոսի զինուոր։

Քահանաները չպիտի արբեցող և հանդանակող լինեն, և կամ հակառակ օրէնքի անառակ կանանց պահեն կամ տուն տանեն.

Գիւղերում ապրող վանականները պասով և աղօթքներով պիտի անցնեն իրանց կեանքը և հիւրասէր լինեն։

Տես Ս. Սահակ 8, Նիկ. 3, Բարս. 88, Զահ. 14.

33. Եւ մի ամենևին որպէս լուաք հացարար և կովկիթ կամ խնեցահար ի վանսն տանել կին մարդ. զի թէ ուր չէր նմայ հնար մտանել կործանեաց զմարդն ապայ զկւրսն զինչ իսկ առնէ։

Ոչ ոք չպահի վանքերում կով կթող, հաց թխող և կամ խնոցի հարող կանայք։

Նոյնը արգելում է Ե. տիեզ. ժող. 18, 47 կ.։

34. Եւ որ յանապատս բնակեալ ուխտաւորք յառաջ քան զմտանել արեգական գնասցեն. և յորժամ ծագէ արեգակն երթիցեն գուցէ ի սխալանս անկանիցեն։ Իսկ մոնազունք և

վանաց մանկունք վանս մի ոք իշխեսցեն ուրեք ունել բայց ի վանս ապա եթէ վանք չկան, յաւագ երիցուն տուն երթիցեն զի չէ իշխանութիւն այլ տան աւթել, և մի լիցի լսել թէ մի վանք բազում վանք որ չէ հասարակ ըստ առաքելոցն կարգի։

**Անապատականները արևը մայր մտնելուց առաջ գնան իրանց տեղերը։ Իսկ վանականները երթան իրանց վանքերը. ուշանալուս կարող են միայն օրհնել աւագ երէցի տանը։**

**Մի քանի ձեռագրերում 34-րդ կանոնը երկուսի է բաժանած։**

35. Այլ ձիաբոյծք և վաճառականք և վաշխառուք փոխանակ կրաւնաւորութեան շահաժողովք, յայսմհետէ դադարեսցեն և ապաշխարեսցեն զմեղսն զոր մեղան, ապա եթէ ոչ յանդիման արժանի գործոցն պատիժս կրեսցեն։

**Վանականները չհամարձակուին ձիաբուծութեամբ, վաճառականութեամբ և վաշխառութեամբ պարապել, թողնելով իրանց կրօնաւորական պարտաւորութիւնը. այլապէս պատիժ կստանան։**

36. Եւ մի աղանդաւորաց երբէք վանս տալ, զի ոչ հրամայեն կանոնքն առաքելականք։

**Առաքելական կանոնների համաձայն աղանդաւորներին չպէտք է օթևան տալ տներում։**

37. Արդ՝ զպատուիրեալս ձեզ առ ի մէնջ փութապէս կատարել ահիւն Աստուծոյ յորում կայ մեծաց վարձուց հատուցումն. և պատուիրեցաւ ձեզ յամենայն յամսեան պարապել խնդրուածոց, զաւուրս շաբաթու, միոջ խնդրել յԱստուծոյ զմարմնոյ առողջութիւն և հոգւոյ փրկութիւն։

**Համառօտ վերնագրում գրուած է «Յամենայն ամսեան շաբաթ՛ մի պահել»։**

Պատուիրում ենք ձեզ ամեն մի ամիս մի շաբաթ հոգու փրկութեան վրայ մտածէք, և պատուիրածներս ճշտութեամբ կատարէք։

Այստեղ 37 կանոն է, որովհետև 34-ը երկուսի չէ բաժանած, միւս ձեռագրերում 34-րդ կանոնը երկու է դարձրած, ուստի և սատնում ենք փոխանակ 37-ի 38 կանոն. բովանդակութիւն տարբերութեան չունին։

---

## ԴՈՒԻՆԻ Գ. 609—610 Թ. ԺՈՂՈՎԸ։

Աբրահամ կաթուղիկոսի օրով եղաւ Վրաց բաժանումն հայերից։ Այս բաժանումն առիթ տուաւ բազմաթիւ գրագրութիւնների սկսուելուն հայոց կաթուղիկոսների և Կիւրիոն Վրաց կաթուղիկոսի և նրանց եպիսկոպոսների մէջ, որոնց հետևանքը եղաւ այն, որ Աբրահամ կաթուղիկոսի օրով 609—610 թուին գումարուեց Դուինում ժողով մասնակցութեամբ հոգևորական և աշխարհական անձանց, և դըրանց միջոցով քննուեց Վրաց կաթուղիկոսի քաղկեդոնական լինելու խնդիրը, և ընդհանուր վճռով ընդունուեցին Վրացիք քաղկեդոնականներ՝ հետևող իրանց կաթուղիկոս Կիւրիոնին և բոլորովին բաժանուած համարուեցին դաւանակից հայերից։ Հայոց կաթուղիկոս Աբրահամը ժողովի որոշումից յետոյ մի կոնդակ գրեց բոլոր հայերին, իմացնելով գործի եղելութիւնը, պատուիրելով ամեն տեսակ յարաբերութիւն կտրել վրացիներից, նրանց հետ խնամութիւն չանել, նրանց եկեղեցին չգնալ, երթևեկութիւն չունենալ և լն և լն։

Վրացիք և Աղուանները կապուած լինելով նոյն դաւանութեամբ հայերի հետ, բոլոր դաւանաբանական ժողովներում մասնակցում էին հայոց հետ միասին, նրանց կաթուղիկոսները ձեռնադրութիւն ստանում էին հայոց հայրապետ-

ներից, գոնե ինչքան պատմությունը ցույց է տալիս որևէ ճնշման Հայոց կողմից չէին ենթարկւում, իրանց ներքին խնդիրները վճռում էին անկախ, առանց Հայոց կաթուղիկոսին դիմելու։

Այս ժողովը եկեղեցական կանոններ չի սահմանել, միմիայն մերժել է վրացիներին Հայոց հաղորդակցութիւնից և դրանով երկրորդ անգամ ժողովի միջոցով մերժել է քաղկեդոնականութիւնը և վերահաստատել նախնեաց կրօնական դաւանութիւնը։

Ըստ Չամչեանի ժողովս եղել է 596-ին, վերջին տեղեկութիւնների հիմամբ պիտի համարել 609—610 թուին, որովհետև Աբրահամ կաթուղիկոսութիւն արաւ 607—615 թիւը։

---

## ԴՈՒԻՆԻ Դ. ԺՈՂՈՎԸ 648 ԹՈՒԻՆ.

Դուինում եղել է Ներսէս շինողի նախագահութեամբ՝ ըստ վկայութեան ժամանակակից պատմիչ Սեբէոսի, մի ժողով, և ոչ երկու ըստ յետին մինչև՝ Չամչեան պատմիչների, այն է 648 թուին, Կոստանդին կայսրի գալուց (652-ն) 4 տարի առաջ (տես Սեբէոս)։ Այս ժողովի իսկական պատմիչ Սեբէոսին թողած, յետին տարեգիրները իրանցից զանազան յաւելուածներ են անում և այնպէս խառնաշփոթում պատմութիւնը, որ շատ դժուար է լինում հետևողական կապով շարահիւսել Ներսէսի հետ պատահած դէպքերը. ուստի թողնելով ոչ ժամանակակիցներին, կհետևինք Սեբէոսին և նրա գրածը կընդունենք իբրև միակ ճշգրիտը։

Դուինի այս ժողովը նշանաւոր է նրանով, որ կազմեց դաւանաբանական ձեռնարկ՝ տարբեր իւր մշակութեան ձևով նախկիններից և երկրորդ՝ սահմանեց եկեղեցական կանոններ։

Կիւրիոնի քաղկեդոնական դառնալուց և Եզրի դաւանափոխութիւնից յետոյ առեւտութիւը դէպի քաղկեդոնականութիւնը շատ էր սաստկացել, Հայերը անտարբեր չէին կարողանում նայել Դուինում ժողովուած յունաց զօրքերի վրայ, միշտ ծաղրում և այպանում էին նրանց դաւանութիւթիւնը։ Այդ բանը իմանալով յունաց կայսրը և պատրիարքը, թուղթ են գրում Ներսէս կաթուղիկոսին և Թէոդորոս Ռշտունուն և յորդորում են սիրով լինել յոյների հետ, վերջ տալ թշնամական ցոյցերին։

Ներսէս Գ. որ յունական կրթութիւն ստացած, յունաց մէջ տարածուած վէճերին քաջ ծանօթ անձն էր, խրատուած Եզրի դէպքից, ժողով գումարեց եպիսկոպոսների և նախարարների մասնակցութեամբ, մշակելու նախ՝ այն պատասխանը որ պիտի ուղարկէին Պօլիս կայսրին և պատրիարքին, երկրորդ՝ կազմելու դաւանաբանական ձեռնարկ փաստական պատճառաբանութեամբ, և երրորդ՝ իբրև ուղղեցոյց՝ Հաւատոյ ձեռնարկ սահմանելու բոլոր Հայերի համար, որպէս զի բոլորի համար պարզ լինի Հայոց դաւանութիւնը և նրա տարբերութիւնը յունականից։

Պատմութիւնից չի երևում որ ժողովում կազմած թուղթը ուղարկած լինին կայսրին. միայն յաջողուեց ժողովականներին կազմել ձեռնարկ. այս ձեռնարկը որ Շնորհալու կազմածի նախնական ձևերից մէկն է, գրուած է ընդարձակօրէն Սեբէոսի մէջ, նրա ընդհանուր բովանդակութիւնը Հայոց դաւանութեան ամփոփումն է և մասնաւորապէս շեշտած է Քաղկեդոնի երկու բնութեան և մեր ընդունած «մի բնութիւն»-ի վրայ, ցոյց տալով որ թէ աւետարանում, թէ Բ. Գ. Դ. դարու յայտնի եկեղեցական հայրերի գրուածներում ընդունւում է միայն մի բնութիւն, նոյնը հաստատուել է մեր Լուսաւորչով. վերջումն էլ նզովում են բոլոր հակառակորդներին, հերձուածողներին և քաղկեդոնականներին։ Ստորագրում են բոլոր աշխարհական և հոգևորական ժողովականները և կնքում են իրանց մատանիներով, ու յանձնում կաթուղիկոսին ի պահպանութիւն։ Այսպիսի պատճա-

ռաբանուած դաւանաբանական ձեռնարկ և այն էլ «մի բընութեան» մասին չենք ունեցել. սրա լրացումը եղաւ Ը. դարում Յովհան Օձնեցու օրով։

Երբ 652-ին կայսրը Դուին եկաւ, իջաւ կաթուղիկոսարանում, կիրակի օր իւր ներկայութեամբ պատարագ անել տուաւ և ստիպեց Ներսէս Գ.-ին և մի խումբ եպիսկոպոսներին հաղորդուել իւր հետ։ Թէոդորոս Ռշտունին և նախարարները սաստիկ կառաղեցին Ներսէսի քաղկեդոնականութիւն ընդունելուն վրան, հեռացրին նրան Տայոց աշխարհը, ուր 6 տարի փակուած մնաց մինչև Թէոդորոս Ռշտունին մեռաւ։ Բայց ազգը Ներսէսին Եզրի նման չպատժեց, երևի թէ Ներսէսի արածը երեսանց և հարկից ստիպուած համարելով։

Դուինի ժողովում որոշուեցին և կարգուեցին 12 կանոն եկեղեցականների նիւթական ապահովութեան և բարոյական բարւոքման վերաբերմամբ։ Մեր կանոնագրքերում գրուած է «Կանոնք Դուինի սուրբ ժողովոյն։ Որ յամի չորրորդի Կոստանդինու կայսեր բարեպաշտ թագաւորի հռոմոց։ Այս գիր ի հաստատութիւն գրեցաւ, յուղիղ կարգի և կանոնաց սրբոյ եկեղեցւոյ, և առաջնորդաց և ժառանգաւորաց։ Հրամանաւ երանելոյն կաթուղիկոսի Հայոց Ներսէս շինողի և այլոց եպիսկոպոսաց։ Որոց անուանք դրոշմեալ կան գրով ի կատարման կանոնացդ. գլ. ԺԲ.»։

1. Առաջնորդաց սրբոյ եկեղեցւոյ այսինքն է եպիսկոպոսաց ըստ կանոնի սրբոց հարցն է զնալ արժան սրբութեամբ և արդարութեամբ յամենայն ճանապարս արդարութեան. զի յամենայն նովաւ յաղթեցին և համեմեցին. զույժ անհամեալք ընկեցին արտաքս, և եղիցին կոխան ի մարդկանէ. այլ լինել ակրինակ հաւտին ամենայն բարեձևութեամբ, զի երևել մեծի հովուապետին ընդունեցին զանթառամ փառաց պսակն։

Առաջնորդները իրանց պաշտօնը պէտք կատարեն սրբութեամբ և արդարութեամբ, ու բարի օրինակ լինին իրանց հօտին։ ՚

2. *Եպիսկոպոս այլոյ վիճակին սեղան հաստատել կամ քահանայ ձեռնադրել մի իշխեսցէ ըստ կանոնի սուրբ հարցն. բայց եթէ ոչ գոյ եպիսկոպոս, հրամանաւ եպիսկոպոսապետին արասցեն մերձակայ եպիսկոպոսքն, բայց հասքն նոյն վիճակի եկեղեցւոյն եղիցին որպէս և կանոնեալ է։*

*Եպիսկոպոսը սուրբ Հարց կանոնի համաձայն ուրիշի թեմում սեղան հաստատել (եկեղեցի օրհնել), կամ քահանայ ձեռնադրել չի կարող. եթէ թեմում առաջնորդ չլինի, այդ կարող է անել մերձակայ եպիսկոպոսը միմիայն եպիսկոպոսապետի հրամանով. բայց հասոյթը մնայ այն վիճակի եկեղեցուն, որտեղ ձեռնադրութիւն է կատարւում։*

Տես Բ. առ. 35, Անտ. 3, 13, Սարդ. 1, 2, 11, 15։

3. *Եպիսկոպոս զայլոյ եպիսկոպոսի վիճակ մի յափշտակեսցէ. և զսովորական այս ընթրիսն որ ոչ է նմա անկաւոր մի առցէ, և եթէ պայքար ինչ իցէ ի մէջ եղբարցն հաշիւ դիցեն, այլ բռնութեամբ մի իշխեսցեն առնել կամ յափշտակութեամբ։*

*Առաջնորդը ուրիշ եպիսկոպոսի վիճակ չյափշտակի, և ոչ էլ վերցնի իրան չպատկանող օրական հասոյթները։*

Տես Բ. առ. 14, 35, Եփ. 8, Անկ. 13։

4. *Եպիսկոպոսք իւրաքանչիւր վիճակացն, վանաց և անապատաց, տեսչութիւն և հոգաբարձութիւն արասցեն ի լոյս և ի պաշտաւն և ի դպրոցս հայել, և իւրեանց պաշտաւնէիւքն կերակրել և վայելել ի սրբոցն շնորհէ. այլ բռնութեամբ և զաւշաքաղութեամբ ինչ մի իշխեսցեն առնել. նոյնպէս և ի տկարանոցս հայել և տեսչանորել և զպոռնկեցելոցն և զայլոց յանցաւորաց զտուգանս առնուլ և ի նոսա մատակարարել. այլ զաւշաքաղութեամբ ինչ և բռնութեամբ ի տկարանոցացն մի իշխեսցեն առնուլ, այլ մանաւանդ յանձանձել և մխիթարել զտկարացն չքաւորութիւն. նոյնպէս և վանաց երիցունքն և քահանայքն վարդապետին ի հնազանդութիւն կացցեն։ Ապա եթէ ոք յեպիսկոպոսաց և ի քահանայից անհնազանդեալ արհամարհիցէ զեդեալ կանոնս նախահարցն ընդ կանոնական պատուհասիւք եղիցի։*

Եպիսկոպոսները տեսչութիւն և հոգացողութիւն անեն իրանց վիճակներին, վանքերին, անապատներին և դպրոցներին, կառավարեն կարգին և ոչ բռնութեամբ ու գօշաքաղութեամբ։ Նոյնպէս և այցելեն հիւանդանոցները, պռնկութիւն անող-ներից և յանցաւորներից տուգանք առնել և դրանց յանձնել ի մատակարարութիւն. բայց ոչ մէկից բռնութեամբ ոչինչ չվերցնեն։ Նոյնպէս և վանաց երէցները և քահանաները ի-րանց վարդապետին հնազանդ լինին։ Ով նախահարց դրած կանոնները կարհամարհի, կանոնական պատուհաս կրի։

Կանոնիցս երևում է, որ ա) վիճակի վանքերը, անա-պատները, դպրոցները, հիւանդանոցները գտնւում էին առաջ-նորդի հսկողութեան տակ։ բ) Որ այդ հաստատութիւնները պահպանւում էին կամաւոր տուրքերով և հասոյթքներով։ գ) Որ պոռնիկներից և յանցաւորներից առաջնորդներին ի-րաւունք էր տրւում տուգանք առնելու յօգուտ հիւանդա-նոցների։ Գ-րդ կէտս արդեօ՞ք ինչպէս պիտի հասկանալ, եթէ յանցաւորը և պոռնիկը փող չտային, եպիսկոպոսը զօրով պիտի առնէր, կամ եթէ պոռնիկներից փող էին վերցնում, այդ վերցնելով հօ չէին թողնում որ նա արհեստը շարու-նակի։ Մանրամասնաբար այդ բանի մասին չէ խօսում, միայն համեմատելով նախկին և ժամանակակից ուրիշ կանոնների հետ, կարելի է մօտաւորապէս այս ասել, որ յանցաւորը և պոռնիկը յանցանքը խոստովանելիս, երբ ապաշխարանքի էին ենթարկւում, դրան հետ միասին և տուգանքի էին ենթարկ-ւում յօգուտ աղքատանոցի, այլապէս նրանք թոյլտւութիւն չէին ստանալ աղօթելու հաւատացեալների հետ և հաղոր-դուելու. այնպէս որ եպիսկոպոսի կողմից զօրի դիմելու կամ իշխանի ձեռքով տուգանելու հարկ չկար, այդ տուգանքը դրւում է յօժարակամ իբրև փրկութեան ապաշխարանք։ Մա-նաւանդ կանոնս խստիւ արգելում է աչքածակութեամբ կամ բռնի կերպով տուրք վերցնել, հասերը ժողովել։ դ) Վանաց երէց և քահանայ ասելով ի՞նչ պիտի հասկանալ. երէց իբրև մեծ հասկանալ այստեղ չի կարելի, որովհետև երէցին և քահանային, պատուիրում է մեծին այսինքն վարդապետին

հնազանդ լինել։ Լամբրոնացին ասումէ, գիւղի տէրտէրը երէց է կոչւում, իսկ քաղաքինը քահանայ։ Վանաց երէց ասելով պիտի հասկանանք վանքերում վանականների համար եկեղեցական պաշտամունքներ կատարող քահանայ, որովհետև վանականները առանց քահանայական աստիճանի էին, լոկ կրօնաւորներ էին, իրաւունք չունէին քահանայագործութիւն անելու։ Վարդապետ ասելով պիտի հասկանալ այստեղ թէ վանահայր և թէ քարոզիչ, ուսուցանող։

Տես Բ. առ. 81, Անտ. 9, Սահ. 5։

5. Վասն շնորհի և ժառանգութեան սահմանեցաք թէ ի սկզբանէ որպէս ի հրամանէ սրբոյն Գրիգորի լեալ նոյնպէս եղիցի, որ շատ է ժառանգութիւն զշատն կերակրիցէ, որոյ սակաւ զսակաւն կալցի, և մի ըստ ծխոց բաժանեսցեն զշնորհն, զի ժառանգութիւն սրբոյ եկեղեցւոյ իբրև զաղատութիւն է, զոր երանելոյն սրբոյ Գրիգորի, և թագաւորին Տրդատայ զատուցեալ են, արդ զիւրաքանչիւր հարանց զժառանգութիւն կալցին, և սրբոյ եկեղեցւոյ պաշտամանն հպատակ կացցեն և վարդապետին ի հնազանդութեան, ամենայն յաւժարութեամբ։ Արդ եթէ ոք յուլանայցէ և զլոյս և զպաշտաւն եկեղեցւոյն խափանեսցէ և զմանկունս ուխտին ի դպրոց ոչ տացէ, իշխանութիւն լիցի եպիսկոպոսին խրատել և ածել ի կարգ յուղղութեան։

Քահանայական շնորհի և ժառանգութեան համար այս ենք սահմանում, որ ինչպէս Լուսաւորչից կարգուած է, այնպէս էլ մնաց, ով ինչքան ժառանգութիւն ունի, շատ թէ քիչ, նրանով էլ բաւականանայ. ծխերի թւով չբաժանեն ժողովուրդը և քահանայ կարգեն. որովհետև ս. եկեղեցու ժառանգութիւնը ազատակամ տրուած է Լուսաւորչից և Տրդատից։ Ուստի և իւրաքանչիւր քահանայ ստանայ հայրերի ժառանգութիւնը և սուրբ եկեղեցու պաշտօնակատարութիւնը սրբութեամբ կատարի և հնազանդ լինի վարդապետին։ Եթէ կծուլանան և մանուկներին դպրոց չեն տալ, սրբութեամբ պաշտօնները չեն կատարիլ, եպիսկոպոսը թող խրատելով ուղղութեան բերի։

Կանոնս պարզ ասում է, որ ծխաբաժանութիւն չլինի, և դրա հիմք բերում է այն, որ ինչ հող որ Լուսաւորիչ և Տրդատ յատկացրել են եկեղեցիներին և հետևապէս քահանաներին, դրանով քահանաները պիտի բաւականան շատ լինի, թէ քիչ նրանք չպիտի տրտնջան։ Երևում է որ ծխաբաժանութեան արգելքը հիմնուած է գլխաւորապէս նրա վրայ, որ ինչպէս տեսանք Բ. Դուինի ժողովի կանոններից ահագին աղմուկ և վէճ էր առաջանում ծխականների մէջ և միւս կողմից էլ որկրամոլ քահանաների մէջ, այդ կռիւները երևում է՝ շարունակւում էին մինչև այս ժողովի ժամանակն էլ, կանոնս արգելում է որ քահանաները առանց տրտնջալու իրանց բաժնի քիչութեան վրայ, պիտի իրանց պարտքը սրբութեամբ կատարեն և եղածով բաւականանան։

Այս կանոնից կողմնակի կերպով երևում է, որ իւրաքանչիւր եկեղեցի ունեցել է հող, կալուածք, որոնք դրուել են Տրդատից սկսած քահանաներին և միւս հոգևորականներին տնտեսական ապահովութեան համար. մինչև անգամ երևում է, որ այդ կալուածքնիրը ժառանգաբար անցնում է եղել քահանայական սերունդի բոլոր ժառանգներին որդէց որդի։ Տրդատի և Լուսաւորչի դրած կարգը հողից օգտուելու վերաբերմամբ պարզ է, որ հոգևորականը պիտի ապրի այդ հողի արդիւնքով, և որովհետև քահանաները ամեն ճիգն գործ են դրել իրանց որդիներին փոխանորդ և յաջորդ կարգել տալ իրանց, դրանից էլ հետևել է և այն, որ հողը իբրև հոգևորականի բաժին անցել է որդիներին և թոռներին։ Դուինի ժողովների կանոններում ինչպէս տեսանք երկու տեղ պատիժ է նշանակում քահանաներին և խիստ պատիժ, այն է զրկել քահանայական ամբողջ տունը ժառանգութիւնից այսինքն եկեղեցապատկան կալուածքների արդիւնքները ստանալուց։ 692-ի ժողովը—Հինգ-վեցեան, մատնացոյց է անում այդ սովորութեան վրայ, որ հայերը հրէական սովորութեան հետևելով քահանայութիւնը ժառանգաբար պահում են իրանց օջաղում։

Բ—Դուինի ժողովի 1, 2, կանոնների որոշումը աւելի

արդարացի էր և օգտաւէտ քահանաների ապահովութեան տեսակէտից, քան այս ժողովի, որի որոշումից երևում է որ քիչ ծուխ ունեցող քահանան պիտի լուռ ու մունջ աղքատութեամբ ապրի հարուստ ծուխ ունեցողի մօտ, կամ աւելի ճիշտ ասած շատ կալուածքներ ունեցող եկեղեցին իւր արդիւնքից ոչ մի մաս չպիտի յանձնի դրացի աղքատ եկեղեցուն. այն ինչ Դուինի Բ. ժողովը պատուիրում էր բոլոր արդիւնքները եկեղեցի տանել և այնտեղ կանոնաւոր բաժանել։

6. Ոմանք յուխտէ յեկեղեցւոյ զկարգ և զպաշտաւն թողին և հեծելութիւն առացան արդ եթէ դառնան ի չար ճանապարհէն ասրհնեալք են ի մէնջ. և ընկալեալք ի մէնջ. ապա եթէ ոչ իշխանութիւն լիցի վարդապետին զշնորհս եկեղեցւոյն հանել յայնպիսեացն, և արժանաւոր քահանայից և պաշտաւնէից և մերձաւորաց տալ որք սրբոյ եկեղեցւոյ զգուշութեամբ զկարգն կատարեն. այլ և ժամ դիցեն այնպիսեացն, Գ. ամս եթէ ոչ դառնան ի նանրութենէ ճանապարհէն իշխանութիւն լիցի եպիսկոպոսին զայնպիսին գրով և կնքով իսկ մերժել ի շնորհացն և տալ մերձաւորաց նոցա։

Եկեղեցականներից նրանք, որոնք իրանց պաշտօնը թողած հեծելութեամբ կպարապեն, եթէ այդ չար ճանապարհից չդառնան, և 3 տարի ժամանակ նշանակելուց յետոյ, էլի շարունակեն իրանց վատ ընթացքը, եպիսկոպոսը իրաւունք ունի գրով և կնքով մերժել նրանց շնորքներից և տալ՝ նրանց մերձաւորներին։

Հեծելութիւն ասելով պիտի հասկանալ որսորդութիւն անել, հեծելազօրքի մէջ մտնել, ձիարշաւներ սարքել և լն և լն։ Շնորհքներից մերժել կարելի է հասկանալ թէ կարգալոյծ անել և թէ քահանայագործութիւնից զրկել. երկուսն էլ երևի կատարւում էր եպիսկոպոսի գրով և կնքով և յայտնւում էր վճիռը ժողովրդին։

Շնորհքը այսինքն քահանայութիւնը տալ մերձաւորներին նշանակում է կարգալոյծ եղածի մօտիկ ազգականներից

մէկին քահանայացնել լուծուածի փոխարէն. այս կարգադրութիւնը էլի ցուցնում է, որ քահանայութիւնը անցնում է մէկից ուրիշին ազգականական շրջանում։

7. Այլ վասն մերոյ մեղաց յորժամ աշխարհս գերեցաւ ի թշնամեաց, բազում արք և կանայք ի գերութեան էին և նոցա ամուսինքն առանց վարդապետին հրամանի կանայս առին և արանց եղեն, վասն այնպիսեացն սահմանեցաք այսպէս թէ յառաջ քան Զ—է ամն մինչ զուգակիցն ի գերութեան էր և նոքա յանդգնութեամբ այլ ամուսին. այնպիսեացն ամուսնութիւնն ի պոռնկութենէ և զան և պատուհաս կրեսցեն յընչից և ի ստացուածոց նոցա հրամայեցաք առնուլ վարդապետաց և աղքատս բաշխել. և զնոսա զատուցանել ի միմեանց և ապաշխարել—Է. ամ իսկ եթէ Է. ամին ամուսինքն դարձեալ լինին ի գերութենէն անդրէն հրամայեցաք դառնալ իւրաքանչիւր ամուսինս. ապա եթէ ոչ կալցին զոր առինն, և նոքա որ դարձանն ուրհնութեամբ այլ կանայս առցեն և այլ արանց լինիցին և կրկին ապաշխարութիւն ի վերայ եղիցի. իսկ որ համբերեացն Զ. Է. ամն առցէ ուրհնութեամբ առանց տուգանի և պատուհասի և կրկին ապաշխարութիւն եղիցի։

Շատերը մեր աշխարհից գերի տարուեցան թշնամիներից հեռու տեղեր, նրանց ամուսինները առանց վարդապետի հրամանի ամուսնացան։ Դրանց համար սահմանում ենք, ով մինչև 7 տարի, երբ զուգակիցը գերութեան մէջ է, կը համարձակի ամուսնանալ, նա պոռնկութիւն արած կհամարուի, ծեծ և պատուհաս կկրի. Նրա ինչքից և ստացուածքներից կխլուի վարդապետների ձեռքով և աղքատներին կը բաշխուի. Նրանց պէտք է միմեանցից բաժանել և 7 տարի ապաշխարանքի ենթարկել և եթէ 7 տարին լրանալուց յետոյ գերութիւնից ամուսինները վերադառնան, նորից միանան իրանց նախկին ամուսինների հետ. եթէ չկամենան, թող երկրորդ ամուսնուն գնան։ Իսկ յետ դարձողները օրհնութեամբ ուրիշ կանայք առնեն։

Իսկ ով համբերեց 7 տարի, օրհնութեամբ և առանց տուգանքի ու պատուհասի թող պսակուի, միայն կրկին ապաշխարութիւն կրի։

Նահապետեանի ժողովը թոյլ էր տալիս երկրորդ անգամ ամուսնանալ երկու դէպքի, այն է պոռնկութեան և մարմնական արատ ունենալուն համար. այս կանոնս աւելացնում է նոր դէպք, որ առաջացել է նոյն ժամանակուայ հանգամանքներից, այն է. 7 տարի գերութեան կամ անյայտութեան մէջ եղողը եթէ կորչում է, կամ լուր չի տալիս, կամ չի վերադառնում, երկրորդ ամուսինը իրաւունք ունի ամուսնանալու, միայն ապաշխարանք կրելով։ 7 տարուց առաջ առանց օրինաւոր հոգևոր իշխանութեան գիտութեան պսակուողը, բաժանւում է ամուսնուց, ծեծ ու պատուհաս է կրում, 7 տարի ապաշխարում է և ապա եթէ նախկին մարդուն չկամենայ գնալ, նորից կմիանայ երկրորդ մարդու հետ։ Այս կանոնը կարելի է ընդունել հիմք այն ամուսնալուծութեան դէպքերին, երբ ամուսիններից մէկը զրկւում է կացութեան բոլոր իրաւունքներից և աքսորւում է հեռու տեղեր, ժամանակիր աշխատանքի։

Այս կանոնի մէջ նկատելու կէտն այն է, որ ծեծը, պատուհասը, տուգանք առնելը մեղաւորներից յանձնւում է վարդապետներին. Նահապետեանի ժողովի նման հակառակ եկեղեցական կարգերին մարմնական պատիժ է նշանակում։ Արդե՞օք տուգանք առնելիս, ծեծ տալիս, վարդապետները իրանց անմիջական հրամանի տակ գտնուած մարդկանց միջոցով էին վարում, թէ մարմնաւոր իշխանութեան պաշտօնեաների ձեռքով. այդ անորոշ է. միայն նայելով վերջին 40—50 տարի առաջ հոգևորականներին դատ կտրելու ձևին, կարելի է ենթադրել, որ ուժ զգացող հոգևորականները իրանց ձեռքով էին հէնց դատ կտրում կամ ծառաների օգնութեամբ, օր. Ղարաբաղի մետրոպոլիտների համար պատմում էին, որ դրանք քահանաների մօրուքը քանդում էին, բանդարկում էին, տուգանքներ որքան կամենան, առնում էին. իսկ աշխարհականներից, միայն խեղճերին էին ծե-

**ծում։ Նախորդ կանոններում տեսանք, որ մեղաւորների ծեծը յանձնում էին գիւղի գլխաւորներին. այնպէս որ կարելի է երկու ձեւն էլ ընդունել, որ բիրտ եկեղեցականները հէնց իրանց ձեռքով էին դատ կտրում, ծեծում, փետում, բանտարկում, մեղմ բարք ու վարք ունեցողները գիւղի մեծերի կամ իշխանների օգնութեամբ էին պատիժները կատարել տալիս։**

8. Եթէ ոք այր կամ կին ի սրբոյ եկեղեցւոյ ի ժառանգաւորաց անորդի իցէ, ի կենդանութեան իւրում իշխան լիցի ինքն ունել զամենայնն և անցեալ ըստ ինքն ի մերձաւորացն մի իշխեսցէ հեռացուցանել, զհող և զջուր և զշնորհս եկեղեցւոյն և մերձաւորքն եթէ բազումք են և նա կամիցի զմի ոք առնել իւր որդէգիրս, իշխան է առնել որ նմա ըստ կամս գնայցէ և դիւր լինիցի. բայց հեռաւորի և յաւտարի չիշխէ տալ. բայց ըղշարժուն ոք և զհրխակ ում կամի տալ արժան է. և թէ վաճառել կամի կամ հոգեաց տալ իշխան է, իսկ եթէ որդէգրեալն արժանացի քահանայութեան գեղջն վկայութեամբ կամ որ որդեգրեացն զնա և չէր անկ նմա քահանայութիւն. սակայն զկէս շնորհին կալցի յաղագս ձեռնադրութեան ազատ ի հարկէ և ի բեկարէ. և զկէս շնորհին և զհող և զջուր բովանդակ սրբոյ եկեղեցւոյն թողցէ վախճանեալ քահանայն և կին նորա. ամենայն իսկ շնորհն մերձաւսրաց եղիցի. եթէ ոչ որդիս և թոռունս ունիցին, զի չվայելէ զսրբոյ եկեղեցւոյ զժառանգութիւն յարժանաւոր մերձաւորացն աւտարացուցանել. և տալ հեռաւոր աւտարաց. բայց թէ անկաւորացն կամաւորութեամբ վաճառել. իսկ թողացուսցէ վարդապետն և զայն մի շինականի ումեք այլ յուխտէ եկեղեցւոյն թէ հեռաւոր իցէ, իշխան է վարդապետն և մերձաւորին չմերձեցուցանել. իսկ եթէ զգեղջն երիցուն դիպի ժառանգութիւն մնալ եղիցի ժառանգութիւն սրբոյ աթոռոյն և ում կամեսցի շնորհեսցէ վարդապետն միայն արժանաւորաց և գիտնոց։ Արդ այս սահմանադրութիւն եկեղեցւոյ ի Հերակլէ հոռոմոց թագաւորէ և ի Խոսրովայ Պարսից արքայէ աւուրցն և այսր եղիցի։ Իսկ ինչ որ յառաջ քան զնոցա ժամանակն գործեցեալ է մի շարժեսցի զի չգիտեմք ինչ հաստատուն թէ որպէս կալեալ, բայց յասմ հետէ այսպէս կալցին որպէս սահմանեցաք յանուն տեառն. և մի ոք իշխեսցէ փոփոխել զայս սահմանադրութիւն։

Եթէ սուրբ եկեղեցու ժառանգաւորներից մէկը անորդի է, իրաւունք ունի կենդանութեան ժամանակ օգտուելու եկեղեցուց իրան յանձնուած եկամուտներով, բայց իւր ազգականներից որևէ մէկին «հողից ջրից» բաժին հանել եկեղեցու սեպհականութիւնից կտրելով, չի կարող։ Իսկ եթէ ազգականներից մէկին հաւանի, սիրի, իրան որդեգիր դարձնի, կարող է նրան տալ. բայց օտարին որդեգրել այդ դիտաւորութեամբ չի կարող։ Գալով շարժական կայքին, եկեղեցականը կարող է տալ ում կամենայ և կամ վաճառել՝ կամ կըտակ անել։ Եթէ որդեգիրը ժողովրդի հաւանութեամբ քահանայ կդառնայ և նիւթական կարիք չի ունենալ, այն ժամանակ արտօնութեան կէսը վայելի, այն է՝ ազատ լինի հարկից և բեկարից, իսկ արտօնութեան միւս կէսը՝ այսինքն սուրբ եկեղեցու բոլոր հողն ու ջուրը թողնեն մերձաւորներին ի հարկ է միմիայն այն դէպքում, երբ մեռած քահանան չունենայ որդիք և թոռներ, որովհետև եկեղեցու ժառանգութիւնը պիտի արժանաւոր մերձաւորներին տալ և ոչ հեռաւոր օտարներին։ Արժանաւոր մերձաւորների կամքով և վարդապետի թոյլտւութեամբ կարելի է վաճառել, բայց ոչ գիւղացուն, այլ հոգևորականներին միայն։ Եթէ պատահի որ գիւղի երէցին մնայ ժառանգութիւնը, այն ժամանակ վարդապետը սուրբ աթոռին յատկացնի և տէր լինի տալու ում և կամենայ՝ միայն արժանաւոր և գիտուն մարդկանց յանձնի։

Այս սահմանադրութիւնը հռոմոց Հերակլ թագաւորի և Պարսից Խոսրով արքայի ժամանակից է և մինչև այժմ էլ կայ։ Իսկ թէ նրանց ժամանակից առաջ ինչպէս է եղել, հաստատ չգիտենք, բայց սրանից յետոյ ինչպէս սահմանեցինք, այնպէս էլ լինի, ոչ ոք չհամարձակի փոփոխել այս սահմանադրութիւնը։

Այս իւրատեսակ տարօրինակ կանոնը շատ կզարմացնէր մեզ՝ ընթերցողներիս, եթէ չլինէր վերջին նկատողութիւնը, որից երևում է թէ այս 8-րդ կանոնը սահմանուած է մինչև 648 թիւը, երևի հէնց Ներսէս Գ.-ի օրով 641-ից յետոյ կամ Եզրի օրով 630-ից յետոյ, վերջապէս կանոնս սահմա-

նուել է 630—648 տարեշրջանում. իսկ թէ դրանից առաջ բոլորովին տարբեր կարգ է եղել, այդ վկայում է նոյն իսկ կանոնագիրը, ասելով՝ «առաջ ինչպէս է եղել, հաստատ չը գիտենք»։

Ի՞նչ բանի մէջ է այս կանոնիս իւրատեսակ ու տարօրինակ լինելը. նրանում, որ քահանան ժառանգ է թէ եկեղեցական կալուածքների և թէ քահանայական կարգի, եկեղեցական կալուածքը յաւիտենական կերպով մնում է քահանայի ցեղում, ցեղը եթէ ջնջուի, ժառանգութիւնը կանցնի մօտիկ հոգևորականների ժառանգներին, դրանք էլ որ ջնջուի, վարդապետը այսինքն առաջնորդող անձը կարող է յանձնել արժանաւոր և գիտնական համարուող հոգևորականներից մէկին։ Այս կանոնս հակա-եկեղեցական, հակա-աւետարանական է, Լուսաւորիչ և Տրդատ հողեր յատկացրին եկեղեցուն և ո՛չ քահանաներին ի ժառանգութիւն. քահանաները կօգտուին այնքան ժամանակ, որքան որ քահանայական պաշտօնի մէջ կհամարուին, իսկ մեռնելուց, կամ տեղափոխուելուց կամ քահանայական իրաւունքներից զրկուելուց յետոյ եկեղեցու հողերը կանցնին նրան յաջորդող ծրխատէր քահանային. այսպէս է բոլոր եկեղեցիների կանոններով և պետական օրէնքներով, այսպէս է և այժմ մեր եկեղեցու գործնականութեան մէջ։ Թէ ի՛նչ է պատճառը որ այսպիսի տարօրինակ կանոն սահմանեցին, այդ մասամբ պարզւում է հետևեալ 9-րդ կանոնից։

9. Յորժամ ազատք զերդ ու մարդ բաժանեն, յոլովք չարակնութեամբ առնեն զժառանգաւորս եկեղեցւոյ ջանան ի ծառայութիւն և ի սորկութիւն արկանել մոլեալք և մոլորեալք ի հաւատոյ քրիստոնէից, զի երանելոյն Գրիգորի և սրբոյն Տրդատայ զսուրբ եկեղեցւոյ մանկունս ընդ ազատաց տոհմին են կարգեալ և ազատէին սրբոյ եկեղեցւոյ հող և ջուր։ Նա և ի Պարսից իսկ տէրութեան յայտ արարեալ. և չէ խառնեալ ի շինական իշխանութեամբ զերիցունեաց տունն ի դիւանին եդեալ են, բայց միայն զհասն տալ արքունիս։

Արդ եթէ ոք ազահութեան ակամբ հայեսցի և զազատ

*մանկունս եկեղեցւոյ ի բաժին և ի վիճակ և ի ծառայութիւն արկցեն և այսպիսիքն ի սուրբ Լուսաւորչի աւրհնութենէն և ի մերմէ ժողովոյս հեռ ի եղիցին. և մի եղիցի իշխանութիւն վարդապետի և քահանայից զայնպիսեացն պատարագն աւրհնել այլ և ոմանք ազատաց ըստ իւրաքանչիւր կամաց բաժանեն ըզ շնորհս եկեղեցւոյ և զառաջնորդաց զիշխանութիւն և զգործ յափշտակեն. և վարդապետաց հրամանի և մեր կանոնիս ունկնդիր չլինին. այնպիսի յանդգնեալքն որ գործեն զտարահաճելիս Աստուծոյ հեռի եղիցին ի սրբոց և ի մեր աւրհնութենէն։*

Երբ ազատները (ազնուականները) իրանց ծխերը և մարդիկը բաժին բաժին են անում, նրանցից շատերը հակառակ քրիստոնէական հաւատի՝ եկեղեցականներին աշխատում են ձգել ծառայութեան և ստրկութեան տակ։ Գրիգոր Լուսաւորիչ և Տրդատ հոգևորականներին ազատների տոհմի հետ են ցուցակագրել և սուրբ եկեղեցու հողն ու ջուրը հարկից ազատել. մինչև իսկ Պարսից տէրութիւնը հոգևորականներին գիւղացիների ցուցակից հանած առանձին է պահում և միմիայն արքունական հասն է առնում։ Ով հակառակ կվարուի և հոգևորականութիւնը հարկի տակ կձգի, մեր ժողովի և Լուսաւորչի օրհնութիւնից հեռու լինի. Նրանց պատարագը չօրհնուի։ Ազնուականներից ոմանք էլ ըստ հաճոյից եկեղեցու արտօնութիւնները խլում են, առաջնորդի իշխանութիւնը և իրաւունքը յափշտակում են, վարդապետների և մեր կանոններին հակառակում են, այդպիսիները հեռու լինին Աստուծոյ սուրբ և մեր օրհնութիւնից։

Այս 9-րդ կանոնը մասամբ բացատրում է, թէ ինչու ժողովս խստիւ արգելում է եկեղեցու կալուածների օտար ցեղերին անցնելը, որովհետև շատ ազնուականներ քահանաների հողերը հարկի տակ էին ձգում գիւղացիների հողերի հաւասար կարգով, մոռանալով Տրդատի սահմանած կարգը, որով հոգևորտկանները ազատւում էին հարկերից, նոյնպէս և եկեղեցապատկան հողերը. հողերը քահանական տան ժառանգութիւն համարելով և եկեղեցու սեպհականութիւն, և քահանայութիւնը միևնոյն տան ժառանգութիւն, բոլորովին ապա-

հովեցնել է ցանկանում քահանայի տունը և ընդ միշտ ազատում հողային հարկերից։

Կանոնից երևում է որ Պարսից տէրութիւնը հոգևորականներին ձգած է եղել ազատների կարգը, բայց «արքունական հաս» առնելիս է եղել։ Արդեօք «հաս» ասելով պիտի հասկանալ հողի հարկ, թէ բերքերի տասանորդ, թէ հէնց ընդհանուր տուրք միմիայն հոգևորական դասին պատկանողներից։ Որպէս զի ազնուականները չասեն թէ այս հողը քահանայինն է և ոչ եկեղեցունը և դրա համար էլ քահանայք պիտի հողային հարկ տան, կանոնս եկեղեցու սեպհականութիւնը միացնում է քահանայի սեպհականութեան և ժառանգական քահանայութեան հետ։ Թէ արդեօք քահանայի բաժանուած եղբայրները հարկ տալիս էին թէ ոչ, կամ եթէ կառ ու բեկարից ազատ էին, ազատ էին արդեօք հողի հարկից, շատ անորոշ է։ Քահանայութիւնը ժառանգական անելու երկրորդ պատճառ կարելի է համարել կանոնիս վերջին կտորը, որ ազնուականները առանց հոգևոր իշխանութեան նշանակում են քահանաներ և առաջնորդներ, առանց ի նըկատի առնելու նրանց ապահովութեան խնդիրը։ Կանոնս իրաւունք է տալիս անորդի քահանային որդեգիր ընտրել և ժողովրդի հաւանութեամբ քահանայ ձեռնադրել տալ, որպէս զի դրանով ազնուականների քմահաճոյքից ազատի քահանայ ընտրելը։

10. Ոմանք ազատաց ի վերայ վանաց իշխանութիւն առնեն և վանական զոր և կամին գանեն և հարկանեն. զոր չէ արժան և ուրէն, և ոմանք ընտանեաւք ի վանքն նստին արհամարհեալք, զեկեղեցւոյն Աստուծոյ անպատկառելի անամաւթութեամբ, արդ եթէ լուեալ մերոյ հրամանէ դարձցին և թողցեն յառաջնորդս զտեսչութիւն եկեղեցւոյն կարգել և յաւրինել ըստ հաճոյից Աստուծոյ, այսպիսեացն յառաջագոյն գործելեացըն թողութիւն լիցի և ի մեր միաբան ժողովոյս աւրհնեալ եղիցին և ժողովրդեամբ և պտղաբերութեամբ և ուխտաւորեալ և նուիրեալ ընծայիւք եկեղեցւոյն ի վանսն և աղաւթիւքն որպէս արժան է խրեանց հարանց վաստակս, բայց ժլատութեամբ մի իշխեսցեն զի եղիցին աւրհնեալ յԱստուծոյ և ի մեր ժողովոյս։

Ազնուականներից ոմանք վանքերի վրայ իշխանութիւն են բանեցնում, ում կամենում են վանական են նշանակում և արձակում։ Ոմանք էլ ընտանիքով նստում են վանքերում, արհամարհելով Աստուծոյ եկեղեցին։ Այժմ որոնք կլսեն մեր հրամանը, կդառնան և վանքերի ու եկեղեցիների տեսչութիւնը կյանձնեն առաջնորդներին, նրանց առաջուց գործած մեղքերին թողութիւն լինի, մեր ժողովից միաբերան օրհնեալ լինի։

Արտաքին ժողովների կանոնների աւելի խիստ են վերաբերւում դէպի մարմնաւոր իշխանութեան միջամտութիւնը եկեղեցական գործերում քան մեր այս կանոնները։ Անտ. —19 կանոնը զրկում է քահանայութիւնից նրան որ կձեռնադրուի իշխանների ստիպմամբ։ Նիկ.—6 կանոնով առանց եպիսկոպոսների ժողովի և մետրոպոլիտի թոյլտուութեան նշանակուած եպիսկոպոսը զրկուած է հոգևոր իշխանութիւնից։ Սարդիկիայի կանոներում աւելի խիստ է, մեր կանոնների մեղմ վարմունքից կարելի է եզրակացնել թէ որքան ուժեղ է եղել ազնուականութիւնը և անզօր հոգևորականութիւնը նրա դիմաց։ Տես Բ. առ.—30։

11. Ոմանք ազատաց ի վերայ տկարանոցաց իշխանութիւն առնեն, և որպէս ի կենդանեաց հարկս պահանջեն, և ի կերակուրս և ըմպելիս իւրեանց գործակալս մատուցանեն կռուով և պատուհասիւ նեղին և զողորմելի եղբայրսն չարչարին անխղճաբար որում պարտ և արժան էր հոգալ և խնամել իւրաքանչիւր վաստակոց ի կալոյ և ի հնցանէ և յամենայն արմտեաց տալ մասն և բաժին և մխիթարել զսիրտս նոցա. և բժշկել զվէրս նոցա. զի եղիցին արժանաւորք մեծաց վարձուց և պարգևաց ի փառաւոր գալստեան որդոյն Աստուծոյ։

Ազատներից ոմանք հիւանդանոցների վրայ իշխանութիւն են բանեցնում, վերակացուներ են նշանակում ուտելիքի և խմելիքի վրայ, նեղում են խեղճերին և բռնութեամբ հիւանդներից հարկ և տուրք են պահանջում. փոխանակ օգնելու և բաժին տալու իրանց ունեցածներից։

12. *Ոմանք ազատաց և ռամիկ հեծելոց հասանելով ի գեղս ուրեք, թողեալ զգեղն ի վանսն առնեն զիջևանսն և յարկս սըրբոցն գուսանաւք և վարձակաւք պղծեն զնուիրեալ տեղիսն Աստուծոյ, զոր սոսկալի է քրիստոնէից լսել թող թէ առնել։ Արդ զվերագրեալ կանոն սահմանադրութեան մերոյ խաւսեցին ի լըսելիս լսողաց վարդապետք և երիցունք եկեղեցւոյն և որք մի անգամ ունկնդիրք լիցին և հրամանակատարք աւրհնեցին ի Քըրիստոսէ և ի սրբոց վարդապետաց, և ի մեր միաբան ժողովոյս...։ Ես Ներսէս շնորհիւն Աստուծոյ նուաստ կաթուղիկոս Հայոց վասն վերագրեալ կանոնիս ամենայն աթոռակցաւք մերովք սուրբ եպիսկոպոսք հայոց ձեռնարկեալ կնքեցաք ըստ հրամանի և սահմանի Հոգւոյն Սրբոյ և ընտրելոց նորայ (ստորագրութիւն 17 եպիսկոպոսի)։*

Ազնուականներից ոմանք և ռամիկ հեծեալներից գիւղ հասնելով, փոխանակ այնտեղ իջևանելու, գնում են վանքերում օթևանում, տանում են հետները գուսաններ և վարձու կանայք և պղծում նուիրեալ տեղերը։ Ով չի լսել մեր պատուէրը և կշարունակի իւր ընթացքը, թող զրկուի հոգևոր օրհնութիւնից։

---

## ԴՈՒԻՆԻ Ե. ԺՈՂՈՎԸ 719-ԻՆ.

Դուինի Ե. ժողովը եղաւ 719-ին Յովհան Օձնեցու օրով։ Յովհանը Տաշրաց գաւառից էր, Հայոց ամենայայտնի վարդապետներից մէկն էր հռետորութեամբ և խելացի կանոնադրութեամբ։

Նա տեսնելով հայերի և յոյների կրօնական վէճերի վատ հետևանքները, հայերից մի մասի յարուելը յունական դաւանութեան. միւս կողմից տեսնելով որ հայերը չունին օրինական ժողովով որոշած և կազմած կանոնագիրք, գրաւոր ձևով սահմանած կարգեր ծէսերի, ժամերգութեան վերաբե-

րեալ. որոշեց ժողով անել 719 թուին Դուին մայրաքաղաքում և 32 յօդուածից բաղկացած մի կանոնագրութիւն կազմեց այնպիսի խոհեմութեամբ և մեղմութեամբ, որ ոչ մի տեղիք չտուեց վէճերի յարուցանելուն և խոստովանութիւնների շարունակութեան։ Օձնեցին այդ ժողովի միջոցով որոշեց եկեղեցու ժամերգութեան կարգերը, մի առ մի, կէտ առ կէտ նշանակելով առաւօտեան, երեկոյեան, գիշերուայ պաշտամունքները. ի մի ժողովեց Լուսաւորչի, Սահակի, Յովհան Մանդակունու բոլոր սահմանադրութիւնները և կարգերը, կանոնաւորեց և հրամայեց անխափան, անշեղ կատարել, (տես 21, 22, 23, 24, 25 կան.)։ Օձնեցու ժողովի երկրորդ մեծ օգուտը եղաւ այն, որ աւանդական կարգով իրանց հասած առաքելական և հայրապետական ու ժողովական սահմանադրութիւնները, որոնցից և գրաւոր փաստագրերով մնացած յիշատակարաններ էլ կային, ի մի ժողովելուց յետոյ կազմած կանոնները իբրև հաստատած օրէնքներ հրատարակուեցին և դրանով մայրին հայոց եկեղեցու մէջ ինքնուրոյնութիւն, դաւանաբանական և ծիսական անկախութիւն։ 20 կանոնով որոշուեց «Սուրբ Աստուած»-ի, 26 և 30 կանոններով մկրտութեան և ծննդեան տօների յունուարի 6-ին կատարելու, 8-րդ կանոնով անապակ գինու և անխմոր հացի գործածութեան վերջնական խնդիրները, որոնք մի անգամ ընդ միշտ վերջ դրուեց անվերջ և անօգուտ վէճերին, որոնք երկպառակութիւն էին ձգել հայադաւան և յունադաւան հայերի մէջ։

Օձնեցու այս ժողովը իւր գրաւոր վճռով և ընդհանուր հաստատութեամբ դարձաւ Շնորհալու կազմելիք դաւանաբանական ձեռնարկի հիմնաքարը և գլխաւոր պաշտպանողական խարիսխը։

Այս մեծ գործը Օձնեցին գլուխ բերաւ և կատարեց այնպիսի խելօքութեամբ, քրիստոնէական խոնարհութեամբ և մեղմութեամբ, որ մինչև այսօր էլ անտրամաբանօրէն դատող Չամչեանների աչքին Օձնեցին երևան է գալիս ոչ միայն, ոչ հակա-քաղկեդոնական, այլ գուցէ թէ մինչև իսկ

քաղկեդոնական-երկընակ։ Միամտութեամբ Զամչեանը պնդում է՝ որ Ներսէս շինողի օրով՝ Յովհաննէս Մանազկերտցի անունով վարդապետ-տեղապահի կազմած ժողովը՝ մկրտութեան և ծննդեան, անապակ գինու և բաղարջի մասին ճիշտ է ըստ վկայութեան մի ինչ որ Դաւիթ վանահօր (°) և Յովհան Օձնեցու ժողովը չէ. այդ պնդում է նրա համար, որ ցոյց տայ թէ Օձնեցին այդպիսի կանոններ չի սահմանում։ Այդ պնդելուց յետոյ բերում է Օձնեցու 32 կանոնները, որոնցից 8-ը, 36, 30, 7-ը պատուիրում և սահմանում են այն, ինչ որ Մանազկերտցի վարդապետին վերագրած 5 կանոնները։ Մանազկերտցու կանոնները պատմական հիմք չունին, մեր կանոնագրքերում էլ չկայ։ № 100 և 530 ձեռագրերում յիշւում է Մանազկերտի ժողով Յովհան Օձնեցու օրով 726-ին, որտեղ սահմանուել են այն կանոնները մասնաւորապէս, որ յատկացնւում են Յովհաննէս վարդապետ Մանազկերտցուն, բայց այդ թիւրիմացութիւն և սխալ է, Օձնեցին Մանազկերտում եթէ ժողով արած լինի էլ, ոչ այդ կանոնների համար, որոնք ամբողջովին մտնում են Օձնեցու Դուինում արած ժողովի 32 կանոնների մէջ, գուցէ ուրիշ խնդիրների, նոյն իսկ դաւանաբանական, որի մասին թեթև անորոշ յիշատակութիւն էլ կայ ժողովածու ձեռագրերի մէջ։ Գալով Զամչեանի միւս միամիտ դատողութեան, որ եթէ Օձնեցու կանոնագրքի մէջ Սարդիկիայի ժողովը կայ և այս ժողովում առանձնապէս շեշտւում է պապի գերիշխանութեան վրայ, Օձնեցին ընդունելով այդ ժողովը, ընդունել է և ուրեմն պապի գերիշխանութիւնը, Զամչեանի նման դատելով պիտի պնդենք երևի, որ Ռուսները և Յոյներն էլ պապի գերիշխանութիւնը ընդունում են, որովհետև նրանք էլ են Սարդիկիայի ժողովը ընդունում։ Զամչեանը չի տարբերել տիեզերական և տեղական ժողովների իրաւասութեան սահմանները. Սարդիկիայի ժողովը օտարներիս համար մասնաւոր և տեղական ժողով է և ո՛չ տիեզերական։

Մեր կանոնագրքերում գրած է «Սահմանք Յովհաննու Իմաստասիրի» կամ «Կանոնք Յովհաննիսի Իմաստասիրի Հայոց կաթուղիկոսի» գլ. ԼԲ.։

1. Եպիսկոպոս կամ քահանայ կամ սարկաւագ, կամ ով և իցէ յուխտէ եկեղեցւոյն, արբեցութեան գտեալ մի իշխեսցէ պաշտել զկարգն, մինչև աւուրս ընդ մէջ արարեալ սրբեսցէ զինքըն ապաշխարութեամբ, պահով և աղօթիւք, և ապա համարձակեսցի մատչել ի կարգ իւր և ի հաղորդութիւն. իսկ եթէ յամառեալ ի նմին որկորստութեան յամեսցէ լուծցի։

Եթէ որևէ մէկը հոգևորական դասից կհամարձակի արբեցողութիւն անել, չհամարձակի պատարագ անել՝ մինչև որ չսրբէ իրան պասով և աղօթքներով, իսկ եթէ կյամառի և կշարունակի այդպիսի կեանքը, պէտք կարգալոյծ լինի։

Ըստ Ս. Սահակի և Բարս. 89 կ. այդպիսին արտաքսւում է միմիայն պաշտօնեաների կարգից։ Տես և Լաւ. 24։

2. Աշխարհական ոք զնոյն առնելով մի իշխեսցէ առանց զղջման ապաշխարութեան հաղորդել. ապա եթէ ի նմին զեղխութեան մնացեալ յերկարեսցի, որոշեսցի։

Եթէ աշխարհականը նոյնը կատարի, առանց ապաշխարելու իրաւունք չունենայ հաղորդուելու. եթէ կյամառի, թող մերժուի եկեղեցուց։

Տես Բ. առ.—43։

3. Ոչ է արժան յաւուր շաբաթու և կամ ճրագալուցի զատկին պսակադիրս առնել, զի ս. աւուրք յարութեան առաջի կան. յորս պարտ է աղօթել և հսկել և հոգևորական կարգաւք մխիթարել զանձինս. և ոչ մարմնական զեղխութեամբ զաւուրս աւուրցն խորհուրդ արհամարհեալ և ընդ ոտն հարկանել, իսկ եթէ ոք գտցի զայս արարեալ պսակն անվաւեր լիցի և պսակադիրքն ընդ պատժովք եղիցին մինչև ապաշխարեսցեն. և եպիսկոպոսին տեսեալ որպէս կամի մարդասիրեսցէ ի վերայ նոցա։

Աւագ շաբաթ օրը պսակ անել չի կարելի, եթէ պսակ լինի, անվաւեր կհամարուի և պսակադիրը ապաշխարութեան ենթարկուի ըստ կամաց եպիսկոպոսի։

4. Ոչ է արժան յորժամ առ վաղիւն պսակ է ընդունելոց, յերեկոյին ժողովս առնել և արբենալ և զեղխել, այլ պարկեշտութեամբ և աղաւթիւք արժանի առնել զինքեանս պսակին աւրհնութեան, ապա եթէ ոք գտցի զայս արարեալ, քահանայն զաւրն ի բաց փոխեսցէ, և որպէս ասացաքն յայլում աւուր հրաման տացէ զգուշութեամբ և արժանաւոր կարգաւք պսակել և հաղորդել աւրինաց։

Պսակի նախընթաց օրը արբեցողութեամբ և զեղխութեամբ չպիտի անցկացնել, այլ աղօթքով և պարկեշտութեամբ, որպէս զի պսակի օրհնութեան արժանի լինի. այս կանոնս չկատարողի պսակը թող ուշանայ քահանայի կարգադրութեամբ։

Տես Լաւ. 23։

5. Չէ արժան ի սուրբ քառասներորդս զատկին և մինչև ի սուրբ պենտեկոստէն հարսանիս առնել և զաւուրցն խորհուրդ թշնամանել. զի ամենայն աւր կիրակէի և ի նոսա կատարի Աստուածային խորհուրդն։

Մեծ պասին և Զատկից մինչև պենտեկոստէ հարսանիք չպիտի անել։

6. Արժան է ի սուրբ քառասնորդսն պահոցն յաւուր շաբաթու և կիրակէի պատարագ մատուցանել ահիւ և երկիւղիւ ըստ սահմանելոյ սրբոց հարցն ամենայն ժողովուրդս իւրեանց իսկ եթէ ոք հակառակեալ ընդդիմասցի մերում հրամանիս կամ բանիւ կամ գործով, եթէ ուխտաւոր է լուծցի, եթէ աշխարհական որոշեսցի։

Մեծ պասի շաբաթ և կիրակի օրերը անխափան պատարագ պիտի մատուցանել, ով կհակառակի և չի կատարել այս պատուէրը թող կարգալոյծ լինի, իսկ եթէ աշխահական է, մերժուի եկեղեցուց։

Տես Ա. առ.—2, 5 կ., Բ. Դւ.—6, 7 կ.։

7. Այլ վասն պահելոյ և լուծանելոյ զշաբաթս և զկիրակէս ի սուրբ քառասներորդս պահոցն այս յիւրաքանչիւր կամս թողեալ լիցի. միայն գոհանալով զԱստուծոյ առանց խղճի և հակառակութեան, և առանց բամբասելոյ զընկերն. զոր կամեսցի և արասցէ հանդերձ պարկեշտութեամբ երկոքին ընդունելի են Աստուծոյ և յաւանդութենէ եկեղեցւոյ Քրիստոսի։

Մեծ պասի շաբաթ և կիրակի օրերը պաս պահելը կամ լուծելը թողնւում է ամեն մէկի կամքին, միայն թէ պահողը և լուծողը առանց թշնամութեան և հակառակութեան վարուին միմեանց հետ, երկուսն էլ ընդունելի են Աստուծոյ առաջ։

Մեծ պասի շաբաթ և կիրակի օրերը լուծելը շատ հին սովորութիւն էր, այդ օրերը պաս պահելը յետոյ մտաւ ոչ միայն մեր մէջ, այլ և քրիստոնեայ աշխարհներում. ութերորդ դարու սկզբին, ինչպէս երևում է այս կանոնիցս դեռ ևս համատարած չէր այժմեայ կարգը—պաս պահելը այդ օրերում, կանոնս պատուիրում է այդ օրերին պաս պահել՝ չը պահելը իւրաքանչիւրի կամքին յանձնել, խռովութիւնս օգնում էին յունական ձևով պաս պահողները, որոնք խտրութիւն էին դնում կաթնեղէնի, ձկնեղէնի և ձէթի մէջ։

Տես Բ. Դւ. 29, 38. Ա. առ. 4. Բ. առ. 69։

8. Արժան է զհացն անխմոր և զգինին անապակ հանել ի սուրբ սեղանն ըստ աւանդելոյ մեզ սրբոյն Գրիգորի և չխոնարհել այլ ազգաց քրիստոնէից յաւանդութիւնս զի սուրբ Լուսաւորիչն յաւրինականէն բերեալ զայս առաքելաբար հրաման ետ կատարել իւրոյ վիճակելոցն. որպէս և զաղն աւրհնութեան յագապացըն զէնմունսն խառնել, և ըստ կարգի Ղևտացւոցն ազգաւ սեպհականել զեկեղեցւոյ շնորհ, և մեզ ի նմին պարտ է յարամնալ և չթողուլ ի բաց և չառնել նորաձև ինչ։

Պէտք է պատարագէ հացը անխմոր անել և գինին անապակ ս. Գրիգորի աւանդութեան համաձայն և չհետևել

այլազգի քրիստոնեաների աւանդութեան. Նոյնպէս և ըստ Լուսաւորչի կարգադրութեան պիտի օրհնած աղ տալ մատաղացու կենդանիներին և Ղևտայիների կարգի համեմատ պիտի եկեղեցու շնորհքը այսինքն քահանայութիւնը ժառանգութիւն (տալ) համարել ազգովին. մենք նոյն այս կարգերը պիտի պահենք և նորաձևութիւն չմտցնենք։

Տես Ներսէս Շնորհալի։ Այստեղ ուշադրութեան արժանին այն է, որ քահանայութիւնը համարում է ժառանգական և մի ազգի մէջ սերունդէ սերունդ անցնող մի Ղևտական կարգ, որ բոլորովին հակառակ է աւետարանի և մեր բոլոր եկեղեցական այն կանոններին, որոնք հրամայում են ձեռնադրել և ընտրել միմիայն արժանաւոր անձանց քահանայ։

Տես Բ. Դւ.—19. Դ. Դւ.—5, 9. Ա. Առ. 31։

9. Պարտ և արժան է զսուրբ միւռոնն այսինքն է զիւղն անուշահոտութեան հայրապետէն առնել և իւրաքանչիւրոց եպիսկոպոսացն մի անգամ ի զատկին հինգշաբթի առ որպէս և հրամայեալն է և քահանայից ի նոցանէ ընդունել և ածանել նովաւ զսեղանս և զեկեղեցիս և զխաչ. առ մկրտեալն մատուցանել միայն յորդէգրութեանն ածումն որ յետ մկրտութեանն լինի և այլ ի պէտս ածման մի խառնեսցէ զնա. և մի ինքեամբ յանդգնեսցի առնել քահանան։

Ս. Միւռոնը հայրապետը պիտի օրհնի և տարին մի անգամ զատկի հինգշաբթի օրը բաշխի եպիսկոպոսներին և քահանաներին, սեղան, եկեղեցի, խաչ օրհնելու, մկրտուածին դրոշմելու համար։

Տես Սահ. 8, Մակարի Երուս. կանոնները։

10. Պարտ է և արժան է զմկրտութեան ձէթ քահանային առնել մի ըստ միոջէ ընդ մկրտելն ըստ բաւականի ժամուն պիտոյից և նոյն ժամայն առ մկրտեալն մերձեցուցանելով զաւհնեալն սպառել և մի իշխել զմի անգամ առհնեալն բազում անգամ առհնել, և միայն ածանել նովաւ զերախայսն և զմկրտեալսն ընդ մկրտելն աւազանին, և այլ խորհուրդ ածման մի իշխեսցեն մատուցանել զնա։

Երախայութեան ձէթը պէտք է որ քահանան օրհնի այնքան, որքան հարկաւոր է մի երախայի օծելու համար, ոչ աւելի և ոչ պակաս, այդ ձէթը ուրիշ բանի համար գործ չպիտի ածել։

Երախայութեան ձէթով օծելը լինում էր հին ժամանակներում երեք անգամ ընկղմելուց առաջ, ապա ընկղմում էին և մեռոնով դրոշմում։ Ինչպէս երևում է հայոց մէջ հէնց սկզբից այս սովորութիւնը գոյութիւն չի ունեցել. կանոնադիրը տեսնելով որ յոյները յարձակւում են հայերի վրայ այդ բանը չկատարելուն համար, այս կանոնը սահմանում է, գտնելով որ հայոց եկեղեցու ոգուն հակառակ չէ։ Երևի չի կատարուել և չի կատարւում մեր մէջ նրա համար, որ մեռոնի սրբող զօրութիւնը այնքան մեծ է համարւում, որ իւր մէջ ամփոփում է և երախայութեան ձէթի ներգործութիւնը։

11. Արժան է զհիւանդացն ձէթ քահանային աւրհնել ըստ խորում աղաւթիցն. և ըստ բանականութեան պահանջելոյ ժամուն պիտոյից։

Արժան է որ հիւանդաց ձէթը քահանան օրհնի իւր աղօթքներով և այնքան՝ որքան պէտքը պահանջում է։

Այս սովորութիւնը կար հին եկեղեցում և կատարւում էր Յակոբոս առաքեալի ժամանակից այսպէս. քահանան օրհնում էր իւղը, գնում էր հիւանդի մօտ, աղօթք կարդում գլխին և օրհնած ձէթով օծում։ Մեր մէջ երբ հիւանդատէրը կանչում է, քահանան գնում է նոյն խորհուրդը կատարում՝ միմիայն աղօթքով. ձէթի գործածութիւնը երևի վաղուց չի եղել և չկայ մինչև այսօր մեր մէջ, թէև սկզբունքով մեր եկեղեցին ընդունում է։

Ուշադրութեան արժանին այն է, որ այս երկու կանոնով թէև հրամայւում է երախայութեան և հիւանդաց ձէթը գործածել, բայց ժողովուրդը և եկեղեցին առանց ուշադրու-

թիւն դարձնելու այդ կարգադրութեան վրայ, գնում են իրանց սովորութեան և աւանդութեան համաձայն, որը ստացել են շատ վաղուց նոյն իսկ առաքեալներից յետոյ։ Օձնեցին այս կանոնները մտցրել է, ցոյց տալու յոյներին, որ մեր եկեղեցին սկզբունքով ընդունում է և դէմ չէ այս կարգերին, բայց ժողովուրդը գնում է իւր ճանապարհով։ Ստեփաննոս Օրբելեանը անում է մի ինքնուրոյն դատողութիւն այս մասին, որ բոլորովին համապատասխան է մեր եկեղեցու և ժողովրդի գործնականութեան։ «Դարձեալ թէպէտ առաքելական իմանամք կարգ զձէթ օրհնելն հիւանդաց և մեռուցելոց ի հարցն ոչ ունիմք սովորութիւն աւանդեալ մեզ, կարծեմ և համարձակութիւն յոյժ մատուցանէ ժրագունիցն ի մեղս մեղօք՝ ապականել զոգիսն յուսով ձիթին, և սակաւ դրամիկ մսխել, ձէթ օրհնել և արդարանալ... բայց թէ զանկատար իւղն, որ վասն երախայիցն սահմանէք՝ ընդունելի է» 336 եր.։

12. *Ոչ է արժան զսեղանն որոյ վերայ պատարագն Քրիստոսի մատչի փայտեղէն կանգնել և շարժուն. այլ քարեղէն և անշարժ հիմնացուցանել. իսկ եթէ ոք հակառակեսցի և ոչ արասցէ ըստ հրամանիս մերում. և ըստ աւանդութեան կաթուղիկէ եկեղեցւոյն եպիսկոպոսն լուծեալ եղիցի ի պատւոյն, և սեղանն արհամարհեալ և անգործ մնասցէ։*

Այն սեղանը, որի վրայ պատարագ են մատուցանում, արժան չէ որ լինի փայտեղէն և շարժուն, հապա քարեղէն և անշարժ. հակառակող և այսպէս չվարուող եպիսկոպոսը պատուից զրկուի և սեղանը արհամարհուի և անգործ մնայ։

13. *Ոչ է պարտ զաւազանն յայլ իմեքէ նիւթոյ պատրաստել. և կամ ուրանաւր և կամեսցի, այլ աւազան քարեղէն հաստատել ի նմին իսկ յեկեղեցւոջն, և կամ յանդէն մերձ յեկեղեցին ի մկրտատունսն։*

**Մկրտութեան աւազանը պիտի լինի կամ եկեղեցու մէջ կամ եկեղեցուն կից մկրտատանը և քարից շինած։**

Տես Բ. Դւ. 15։

14. Պարտ և արժան է զերախայիցն ձեռնադրութիւն և զաւծումն և զհրաժարելն և զխոստովանելն առ դուրս մկրտարանին կատարել և ապա տանել ի ներքս ուր աւազանն է և մկրտել։

**Պէտք է երախաների (չմկրտուածների) վրայ ձեռք դընելը, օծելը և հրաժարումը կատարել դրսեր մկրտարանի մօտ, ապա տանել ներս և աւազանում մկրտել։**

15. Պարտ և պատշաճ է զայնոսիկ որք պսակելն հանդերձեալ են քահանային տանել, և ի վերայ նոցա կատարել զկարգ և զկանոն ըստ աւրինաց քրիստոնէից, և անդ ի սրբութեան տեղին պսակել. զի ի միում տեղւոջ վայել է լինել պսակին և որ ընդունի զպսակն. իսկ եթէ ոք ոչ այսպէս արասցէ այլ որպէս և իցէ իւրով կամակորութեամբ և ծուլութեամբ անարգեսցէ զաւրէնս և զկարգ ամուսնութեանն, քահանայն լուծցի յիւրմէ պատույն, և զպսակաւորսն վերստին պարտաւոր է պսակել ըստ աւրինաց քրիստոնէից, և որպէս առաքեալն պատուիրէ թէ ամենայն ձեր ըստ կարգի և պարկեշտութեամբ եղիցի։

**Պսակը պիտի եկեղեցում կատարել, ով հակառակի այս կանոնիս և ուրիշ տեղ անի, պսակադիրը զրկուի քահանայական պատուից և պսակը անվաւեր համարուի մինչև որ նորից տարուի եկեղեցի պսակելու։**

16. Իսկ զերկեակսն նոյնպէս պարտ է ըստ առաջին կարգին միջնորդաւք և խաւսնականաւք հաւանեցուցանել յիւրեաց յաւժարութիւն և յեկեղեցւոյն և ի քահանայիցն աւրհնութենէ ընդունել զնշան զուգաւորութեան իւրեանց։ Իսկ եթէ ոք ոչ այսպէս, այլ խանձեսցին և պղծեսցին առ իրեարս, զայնպիսին

*ի բաց մեկնեսցեն ի միմեանց, և զշնացելոց զկանոն և զսահման ի վերայ դիցեն: Իսկ եթէ ոք ոչ առնուցու յանձն մեկնիլ ի միմիանց, յետ Ժ. ամի ապաշխարութեան ողորմութեամբ և արտասուաւք արժանաւորեսցին խառնել յեկեղեցի Աստուծոյ:*

Երկակների պսակն էլ պիտի եկեղեցում լինի. եթէ պըսակից առաջ յարաբերութիւն կունենան, նրանք բաժանուին և շնացողների համար նշանակուած պատժին ենթարկուին. իսկ եթէ բաժանուել չկամենան, 10 տարի արտասուքով ապաշխարելուց և ողորմութիւն տալուց յետոյ արժանանան եկեղեցի մտնելու իրաւունքին:

Երկակների մասին տես Բ. առ. 17, Ձաճ. 7, Բ. Դւ. 5:

*17. Արժան է շաբաթն աւր երեկուճն մարտիրոսաց պաշտել, և ծունր չկրկնել, և զճրագացն աւրհնութիւն ասել լոյս զուարթ սուրբ:*

Ուրիշ ձեռագրերում «ծունր չկրկնել» է:

Շաբաթ երեկոյեան արժան է «լոյս զուարթ» ասել և մարտիրոսաց պաշտօն կատարել, և ծունր չդնել:

Հին կանոններով արգելւում էր կիրակի օրը և ամբողջ մինչև Հոգեգալստեան ժամանակամիջոցը ծունր դնել ի պատիւ Քրիստոսի յարութեան, բայց այդ կարգը ճշտութեամբ չգործադրուեց:

*18. Արժան է գիշերապաշտաւն առնել յայգ կիրակէ, և հսկմամբ և արտասուաւք և յոտնաւոր ութնութեամբ զանցեալ շաբաթուն աւուրց զյանցանս ջնջել, և արժանաւոր առնել զինքըն մեղսաքաւիչ և կենդանարար խորհրդոյն, և ակն ունել ամենայն զուարթութեամբ և փութով տեառնապալուստ փողոյն և անճառ յաւիտենական արքայութեան:*

Լոյս կիրակի առաւօտ արժան է գիշերը ութնութեամբ անց կացնել, շաբթուայ մեղքերը քաւել և ապա հաղորդութիւն առնել:

*19. Արժան է յերեկորինս և յառաւաւտինս զկնի յամենայն պաշտամանն նըւագել զսուրբ Աստուածն և ապա զհետ բերել յերեկորինս զհանգստեան սաղմոս և առաւաւտինսն զարևագալին սաղմոս, իսկ յորժամ պատարագ մատչի ի սկզբունս անդ պաշտամանն յիշել զսուրբ Աստուածն. և զսոցունս խորհուրդ յառաջաբանի անդ հաւաստեաւ յայտնեցաք։*

**Առաւօտեան և երեկոյեան պէտք է սուրբ Աստուած ասել, ապա Հանգստեան և արևագալի սաղմոսներ։**

*20. Պարտ և արժան է զխաչեցարն երիցս անգամ զհետ բերել, ըստ երիցս անգամ կրկնելոյ սրբասացութեան և մի նուազեցուցանել, և ի նըւազ գտանել ի շնորհաց խաչին Քրիստոսի։*

**Պէտք է խաչեցարը երեք անգամ ասել երեք-սրբասացութեան հետ, և ոչ նուազեցնել և դրանով զրկուել Քրիստոսի խաչի շնորհքից։**

**«Ս. Աստուած» երգի մասին յունաց մեկնիչ Վալսամոն և ռուս Յովհաննէս վար.-ը այս են գրում. «Այս երգը հըրաշալի վերնագոյն յայտնութեամբ հաղորդուեց ուղղափառ եկեղեցուն Ե. դարում այս երգը վերաբերում է ամենասուրբ երրորդութեան, ի դէմս Աստուածային երեք անձանց, և Աստուածային ամենակարող բնութեան միութեան», որը այդ երկուսի խօսքով հաստատուեց Քաղկեդոնի ժողովում։ Այդ ժողովի հակառակորդներից մէկը Պետրոս Փուլլոն, Անտիոքի աթոռի յափշտակիչը (Ե. դարում), մտածեց այդ երգի վրայ աւելացնել «որ խաչեցար վասն մեր» խօսքը, որպէս զի դրանք վերագրուեն միմիայն Աստուածամարդու անձնաւորութեան, դրանով պաշտպան հանդիսանալով Եւտիքէսի աղանդին։ Նոյն կերպով, ասում են դրանք, պնդում են միւս կոպիտ աղանդաւորները, թէոպասկիտներ—կամ պատրիպասիանք, որոնք ենթադրում են, որ խաչի վրայ չարչարուեցին Աստուածութեան երեք անձինքը։ Այս աղանդի գլխաւորը ապ·**

րում էր II դարում, Պրակսէյ անունով, նա ասում էր որ Հայրը մարմնացաւ և Քրիստոսի անունով իջաւ։ Այս սովորեցնում էին նոյնպէս Նէոտեանք, Սաբէլեանք III դարում։ Փուլլոնը Նզովքի ենթարկուեց և եկեղեցուց անջատուեց։ Տես „Опытъ цер. закон. Іоанна—1851 I, II." և „Правила св. апос. св. от. ...съ толкованіями".

Նոյն Յովհաննէս վարդապետը խօսելով Հայոց պատճառաբանութեան վրայ «թէ Ս. Աստուածը մենք ասում ենք ի դէմս Որդւոյ», ընդունում է, ուսուցչապետ Տրօյիցկու նրման յետին մտքերով չէ բացատրում, հաւատում է որ անկեղծ ենք ասում և ճիշտ (Տրօիցկին կարծում է, որ խաբում ենք. այս մասին տես Ն. Շնորհալի), մանաւանդ որ Հոգեգալստեան տօնին ասում ենք. «Որ եկիր և հանգեար յառաքեալսն». բայց նա մեղադրում է հայերին նրանում, որ նրանք Քաղկեդոնի ժողովի որոշման դէմ են գնում և Ս. Աստուածը փոփոխում են և աւելումներ անում։

Թէև այս պատկառելի վարդապետը գիտէ, որ հայերը վաղուց մերժել են Քաղկեդոնը նրա բոլոր դաւանաբանական վճիռներով, բայց և այնպէս մի բան ասելու համար նկատում է, մոռանալով որ տիեզերական ժողովի վճիռը պարտաւորական է միմիայն ընդունողների համար և ոչ մերժողների և մինչև իսկ նզովքի ենթարկուողների համար։

21. Արժան է ի գիշերին յորժամ ժողովին ի պաշտաւնն նախ զյառաջաբանիցն ասել, զչորեսին սաղմոսն միաբանութեամբ ի թիւ խոնարհ ձայնիւ առաջին, զերրորդ սաղմոսն, երկրորդ զութն երրորդն, երրորդ զձ. երկրորդն, չորրորդ, զձխ. երկրորդն, և նոցին զքարոզութիւնն և զաղաւթսն զհետ բերել զոր ի նոյն խորհուրդ արարեալ է երանելոյն Յովհաննու Մանդակունւոյ Հայոց կաթուղիկոսի քարոզութիւն, զարթուցեալքս աղաւթք զքէն գոհանամք և զհանգիստ նորին, նայեմ տէր ողորմութեամբ։

Գիշերային ժամին պիտի ասել բոլոր կարգաւորուած և Յովհան Մանդակունու սաղմոսները և աղօթքները։

22. Արժան է զառաւաւտինսն ամենեցուն նման միմիանց զնոյն և ըստ նմին կարգի կատարել, զի այսպէս վայել է քրիստոսականաց որ ամեն լեզուոյ և ազգի են միաբանութեամբ փառաւորել զԱստուած և յաւրինել զվարս ուղիղս, զի գրեալ է զորոց առաքելոցն թէ էր նոցա սիրտ և անձն մի, եթէ էին ամենեքին միաբան յաղաւթս։ Արդ զկնի հարցինն և ողորմեցուոյն, և տէր յերկնեցուոյն, զփառսն ի բարձունսն պաշտել, ապա իւրաքանչիւր աւուր զկցորդսն զոր առեալ է սաղմոսացն. Բ. շաբաթուոյն լոյս տուր աչաց միրոց, Գ. շաբաթուոյն, ի քէն է տէր աղբիւր կենդանութեան. Դ. ես ասացի տէր ողորմեա. Ե. շաբաթուոյն. ես առ քեզ տէր աղաղակեցի, ուրբաթուոյն, մտցեն աղաւթք իմ առաջի։ Շաբաթ աւր առաքեա։ Ապա զկնի քարոզութենէն և աղաւթիցն զերեքսրբեանն երգել զփառաբանութիւն, հանդերձ սրբոյ Աստուածածնին կցորդիւն. ապա զարեւագալին զսաղմոսն ասել ըստ դասուց վերաձայնութեամբ։

***Նոյնպէս և անթերի կատարել և առաւօտեան ժամերգութիւնը։***

23. Նոյնպէս և զերեկորինսն հանդերձ միմեանց ըստ այսմ կարգի և այսու աւրինակաւ կատարել. յառաջագոյն պաշտել ըղխոնարհեցոյ վերաձայնութեամբ ըստ դասուց զոր երանելոյն Ներսէսի Հայոց կաթուղիկոսի յաւելեալ է. որպէս թէ կամելով սկիզբն ամենայն վերերգակ սաղմոսիցն յաղաւթելոյ առնել. զի և սաղմոս այս աղաւթք Դաւթի են, ըստ վերագրին յայտարարութեան. զկնի նորա զապրեցոյ մի ըստ միոջէ զերեսին սաղմոսն զմիմեանց զհետ ըստ դասուց վերաձայնութեամբ. իսկ ըղկընի մեսեդի և եղիցին (ուղիցին) ասելոյ, քարոզել և աղաւթս մատուցանել. յետ այնորիկ զերեքսրբեանն նըւագել նորին նմանութեամբ և վախճան ամենայն պաշտամանն սաղմոս ասել, ըստ դասուց վերաձայնութեան։

***Նոյնպէս և երեկոյեան ժամերգութիւնը անթերի կատարել։***

24. Իսկ կիրակէին աւուր առաւաւտնեին այս գուն խորհրդով յաւրինեալ բերէ զկարգն իւր, զկնի հարցինն մեծացուցէ ասել վասն զի հարկաւորապէս պարտի այն որ զյարութիւն Քրիստոսի ճառէ. ընդ նմին և զգերեզմանն յիշել և զսուրբ

*կոյսն. զի եթէ ոչ էր ծնեալ,* ոչ էր հնար և ոչ թաղել. և եթէ
ոչ էր թաղեալ ապա և ոչ յառնել։ Արդ գերեզմանն ընթեռնլոյն
զաւետարանն յիշեալ լինի. իսկ զսուրբ կոյսն ի մեծացուցէն
անելոյ յիշեմք, զի որպէս ընկալան ի միմիանց զփրկիչն յարու-
թիւն ի գերեզմանէ, և գերեզմանն յարգանդէ, ըստ նմին և վը-
կայք պարտ են լինիլ միմեանց վասն յարուցելոյն, և այս է ճըշ-
մարիտ մարդեղութեանն և մահուանն Քրիստոսի խոստովանու-
թիւն, այլ սակայն ի ծննդենէն առ յարութիւն զհետ եկեալ
միաւորին, իսկ յարութենէն ի ծնունդն վերադարձիլ անկարելի
զի չև գործեցելոյն ի Քրիստոսէ պատմութիւն առնել անհնար
է, և յաղագս այսորիկ աւետեմք և զծնունդն և զմկրտութիւնն
Քրիստոսի, ի միասին առեալ տաւնախմբին և սոքա ամենքեան
և որ այլն ևս իցեն որ տնաւրինեալք ի Քրիստոսէ ի յարութե-
նէն միաւորեալ բովանդակին, և այս յաղագս մեծացուցէ անե-
լոյն յառաւաւտինսն յաւուր կիրակէի։ Զհետ որոյ դարձեալ
մինչև զաւետարանն ընթերցեալ որպէս թէ տակաւին ևս ի
թաղման վարկանելով զաւէրն արտաքուստ առնայ ի գերեզմանն
աղաղակլիցեմք ասելով թէ արի տէր աւգնեա զմեզ, և թէ լուր
Աստուած աղաւթից իմոց ունկնդիր բանից բերանոյ իմոյ և եթէ
թագաւորեսցէ տէր յաւիտեան. իսկ յետ ընթեռնլոյ զաւետա-
րանն իբրու թէ զնոյն ինքն զյարուցեալն անդէն և անդ ընդ
աւետարանական բանին ի դէմս մեր բերելով հրամայեմք միմեանց
թէ ի գիշերի համբարձէք զձեռս մեր ի սրբութիւն և աւրհնե-
ցէք զՏէր, վասն զի լուեալ աղաւթից մերոց յարեաւ. և աւգ-
նեաց մեզ փրկելով զմեզ ի մահուանէ, և թագաւորելով մշտնջե-
նաւորաբար ամենայն տիեզերաց։ Բայց գիշեր ոչ այնքան զժա-
մանակն որքան թէ զհրէական զանհաւատութիւն անուանելով,
որ զաղջամղջին խաւարի արդար և բերէ զաւրինակ ըստ Եսայեայ
պանծալի բանին թէ ի գիշերաց կանխէ հոգի իմ առաւաւտել
առ քեզ Աստուած այսինքն, թէ ի միջոյ ամպարշտաց համար-
ձակիմք բարեպաշտել առ քեզ Աստուած։ Արդ՝ զայսոսիկ այս-
պէս և այս աւրինակաւ յառաջ վարելով զկարգն, արժան է զկնի
փառք ի բարձանցն, զյարութիւնն ասել, իսկ զսուրբ Աստուածն
հանդերձ սրբոյ Աստուածածնին կցորդիւն ի վերջն անցուցանել,
որպէս և այլ աւուրսն ըստ ասացելում պատճառին։ Եւ զկնի
ամենեցուն զարևագալին նըւագել սաղմոս, զոր եղիցի անուն
տեառն ասել սկսեալէն ի ժամանակացն Եզրի կաթուղիկոսի։*

**Նոյնպէս կիրակէի ժամերգութիւնը կատարել ըստ պատշաճի։**

25. Պարտ է ի գիշերապաշտամանն զկանոնացն զհետ բերել զչորս զայս քարոզութիւնս. վասն ի վերուստ խաղաղութեան. վասն ի գիշերի և ի տուընջեան. վասն ուղղելոյ զգնացըս. վասն գտանելոյ մեզ: Զոր արարեալ է վասն նորին իրի սրբոյն Սահակայ Հայոց կաթուղիկոսի. և ըստ իւրաքանչիւրոցն զաղաւթս զայսոսիկ հանգստիւք իւրեանց: Տէր Աստուած մշտընջենաւոր, հանգիստ շնորհատու բարեաց, ի գիշերի և ի տուընջեան հանգիստ. հովիւ քաջ: Անկեալ եմք առաջի հանգիստ քում ամենազաւր. վերջին: Աւրհնեալ ես տէր Աստուած մեր որ և ըզմեզ մեղաւորս արժանի արարեր փառաւորել զքեզ. ընկալ բարերար և մարդասէր տէր ամենեցուն մեր աղաւթս զխնդրուածըս, զխոստովանութիւնս, և զգոհացողութիւնս, և շնորհեա ամենեցուն մեզ զքո առատ ողորմութիւնդ և զգթութիւնդ. մի թողուր տէր զժողովուրդս քո և մի մատներ իսպառ վասն անուան քո, մի ըստ մեղս մեր առներ մեզ, և մի ըստ անաւրէնութեան մերում հատուցաներ մեզ. այլ արա առ մեզ ողորմութիւն քո ի հազարս և ի բիւրս, զերծոյ զմեզ յամենայն յորոգայթից սատանայի, և փոխեա զմեզ յարքայութիւն միածնիդ քո տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, հանդիստ: Քեզ յանձն առնեմք զանձինս մեր Աստուած ամենակալ Հայր տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, որ ի բարձունս բնակեալս և զխոնարհս տեսանես յերկինս և յերկրի, հայեաց տէր յաղաւթս և ի պաղատանս մեր. մի ցրեր զուխտ քո և մի մերժեր զմեզ ի ժառանգութենէ քումմէ. այլ ըստ առատ քում բարերարութեանդ արժանաւորեա զմեզ ղծառայս քո անճառելի լուսոյդ երկնից արքայութեանդ Քրիստոսիւ Յիսուսիւ տէրամբ մերով ընդ որում քեզ Հաւր և սուրբ Հոգւոյդ վայել է փառք իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից ամէն:

**Նոյնպէս գիշերապաշտամունքը կատարել կանոնների համաձայն:**

26. Պարտ և արժան է յայտնութեանն աւուր կատարել զջրոյն աւրհնութիւն ի վերայ ջուրցն ըստ պատշաճի ի տեղիսն հանդիպեալ ձէթ արկանելով ի նա և աղաւթս մատուցանելով, ի ձեռն այնորիկ յիշատակել զառ ի փրկչէն վասն մեր ի Յորդանան զմկրտութիւնն որպէս և ի գալստեան աւուրն սոսուն բառնալ և ճոճանակս շարժել զնմանութիւն բերելով մանկանց Եբրայեցւոց ծափելոցն և սոսուն մատուցանելոյ. զի և աշխարհիս մերոյ մարդկան և ամենայն քրիստոնէից աւանդութիւն կալեալ է զնոյն:

*Պէտք է և արժան է յայտնութեան օրը ջուրը օրհնել և վրան մեռոն կաթեցնել ի յիշատակ Քրիստոսի Յորդանանում մկրտուելուն, իսկ ծաղկազարդին ոստեր բռնել և ճօճանակ անել։*

Տես Ա. առ. 7. Ն.-Շնորհալի։

27. *Եթէ ոք խաչ արասցէ փայտեայ, և կամ յինչ իցէ նիւթոյ, և ոչ տացէ քահանային աւրհնել և աւծանել զնա միւռոնովն սրբով, ոչ է պարտ զնա ի պատիւ ընդունել կամ երկրպագութիւն մատուցանել զի դատարկ և ունայն է յԱստուածային զաւրութենէն, և արտաքոյ աւանդութեան առաքելական յեկեղեցւոյ։*

*Ով խաչ է շինել տալիս փայտից կամ ուրիշ նիւթից, պէտք է քահանային տանի օրհնելու և օծելու, առանց որոնց չի կարելի պատուել խաչը, որովհետև Աստուծոյ զօրութիւնից մաս չունի դեռ ևս։*

28. *Իսկ զայնոսիկ զորս աւրհնութեամբ և աւծմամբ կատարեալ է որք միանգամ և իցեն Աստուածային խորհրդոցն գործարանք պարտ է զնոսա պատուել և պաշտել երկրպագել և համբուրել զի նոսա բնակէ հոգին սուրբ, և նոքաւք մատակարարէ ի մարդիկ զպահպանութիւնս և զշնորհս բժշկութեան ախտից հոգւոց և մարմնոց, այլ եթէ մեռանել հասցէ ի վերայ այնոցիկ ի ձեռն հեթանոսաց մի հրաժարեսցէ, զի մեծագոյն այնպիսւոյն առաջի կայ յոյս, և ընդ մարտիրոսս համարեալ է։*

*Օրհնած խաչը պէտք է պաշտել, երկրպագել նրան և չհրաժարուել ոչ մի կերպով պատուելուց, մինչև իսկ եթէ մահուան վտանգի լինի, որովհետև խաչի համար մեռնողը մարտիրոս է համարւում։*

29. *Ոչ է պարտ ամենեւին անխտիր լինել եւ հաղորդութիւնս առնել ընդ հերձուածողաց, այլ խորշել ի նոցանէ եւ չը հաւասարել ընդ նոսա ի հոգեկան եւ ի մարմնական սեղանս, զի պատկառեսցին եւ փափաքեսցին միաբանել ընդ ուղղափառութեան աւանդիչս։*

**Զգուշանալ է անխտիր յարաբերութիւն ունենալ հերձուածողների հետ, այլ խորշել նրանցից, որ ամաչեն եւ ցանկանան միանալ ուղղափառների հետ։**

Տես Բ. Առ. 45, Լաւ. 6, 7, 8, 9, 31, 32, 37, 38։

30. *Արժան է յատնութեան յաւուր ի Մատթէոսի գլխոյն զմկրտութեան կարգին ընթեռնուլ զաւետարանն, այլ յամենայն իսկ ութաւրեայսն խառնել պատշաճ վարկանիմ ընդ ծննդեան աւետարանս զմկրտութեան աւետարանսն. զի որպէս տաւնն հասարակաց երկոցունց, հասարակաբար պարտին լինել կարդացմունքն եւ պաշտաւնն։*

**Պէտք է՝ թէ յայտնութեան օրը կարդալ մկրտութեան աւետարանը եւ թէ ութօրէքին խառն կարդալ ծննդեան եւ մկրտութեան աւետարանները, որովհետեւ ինչպէս տօնն է մի օր կատարւում, նոյնպէս եւ երկուսի աւետարանն էլ նոյն օրում պիտի կարդացուի։**

31. *Սովորեցին ոմանք զկիրակին աւուր մինչեւ ցճաշն պատուել, եւ անտի յառաջ լուծանել զաւուրն զխորհուրդ, յաղագս նորին հրամայեցաք մինչեւ ցերեկոյն նովին պատուով զաւրն, արգելուլ զինքեանս ի գործոյ եւ ի ճանապարհորդութենէ եւ իբրեւ ունն ծունր չկրկնել եւ յարութիւն պաշտել։*

**Կիրակին պիտի պահել ոչ թէ մինչեւ ճաշ, այլ մինչեւ երեկոյ։**

Տես Ա. Առ. 2, Լաւ. 29։

32. Ոչ է պարտ չարաղանդ մծղնէիցն տեղի որ կոչին պոլիկեանք աւթել ումեք և կամ յարել և խաւսակից լինել և երթևեկութիւն առնել, այլ ամենևին հեռանալ ի նոցանէ գարշել և ատել զնոսա զի որդիք սատանայի են և լուցկիք յաւիտենական հրոյն, և յաւտարացեալ են ի սիրոյ կամաց արարչին, եթէ ոք իցէ որ յարեսցի ի նոսա և ի սիրելութիւն և ի բարեկամութիւն եկեսցէ, պարտ է զայնպիսին խոշտանգանել և ծանըր պատուհաս ի վերայ դնել մինչև զգաստասցին և առողջասցին ի հաւատս ապա եթէ դարձեալ ի նմին գտցին վերստին, զայնպիսիսն հրամայեմք ամենևին հատանել և արտաքս ընկենուլ իբրև զժանդախտս յանդամոց եկեղեցւոյ Քրիստոսի, զի արմատ դառնութեան ի վեր երևեալ նեղիցէ ի նովաւ բազումք պղծիցին։

Ոչ ոք չպիտի օթևանի այնտեղ, որտեղ բնակւում են մծղնէից չար աղանդաւորները, որոնք և Պաւլիկեան են կոչւում. Նրանց հետ չպէտք է խօսել, երթևեկութիւն ունենալ, բոլորովին պիտի հեռանալ, գարշել, ատել նրանց, որովհետև սատանայի որդիներ են, ով կմօտենայ նրանց, ծանր պատուհաս կկրի մինչև կզգաստանայ, եթէ ոչ բոլորովին պիտի հեռացնել նրանց իբրև ժանդախտ եկեղեցուց։

Տես Շահապիվանի և Անտ.-ի ժողովները։

Պաւլիկեանների աղանդապետն էր Միջագետքի Սամոսատ քաղաքի Պօղոս եպիսկոպոսը III դարում, որի մայրը Մանիքեցի էր և կոչւում էր Կալլինիկի։ Նա քարոզում էր. կայ մի Աստուած, որ անուանւում է Հայր, Որդի և Հոգի։ Որդին Հօր վերաբերմամբ այնպէս է, ինչպէս խօսքը մարդու։ Այդ խօսքը—Բանը գալով աշխարհ բնակուեց մարդու մէջ Յիսուս անունով, հաստատուեց մարդու մէջ։ Յետոյ էլի այդ Բանը վերացաւ երկինք. Իսկ Յիսուսը որ փոքր էր և կըրտսեր, նա Մարիամից է առաջացել։ Անտիոքում Գրիգոր Հըրաշագործը Պօղոսին կարգալոյծ արաւ միւս եպիսկոպոսների հետ և նզովեց։ Սրա աշակերտները տարածուեցին ամեն

տեղ և 7-րդ դարում արդէն հետևողներ ունէին Հայաստանում, որոնցից մէկն էր և Յովհան Մայրագոմեցու աշակերտ Սարգիսը։ Յովհան իմաստասէր «ընդդէմ Պաւղիկեանց» ճառի մէջ ասում է, որ նրանք խաչի, պատկերի պատիւ չէին տալիս. գեերին յարգում էին որ իրանց վնաս չտան, գիշերային պղծութիւններ էին կատարում, տղայի արիւնը ալիւրի հետ խառնում ուտում էին։ Եթէ այս տեղեկութիւնները կցենք Շահ.-ի ժողովում յայտնի եղած մծղնէից աղանդի մասին հաղորդածների հետ, կունենանք քիչ ու շատ գաղափար այդ աղանդի մասին։ Օձնեցին մծղնէից աղանդը Պաւղիկեաններին հետ միացնում է։

Բացի այս ժողովից, Օձնեցու օրով յիշատակւում է և մի ժողով եղած 726 թուին Մանազկերտում Ասորոց պատրիարքի խնդրանօք և «Յակոբիկ տանից» Ասորի վեց եպիսկոպոսի մասնակցութեամբ, ուր նզովեցին Յուլիանոս Աղիկառնացուն իւր հետևողներով, որը դաւանում էր թէ Քրիստոսի մարմինը «առանց մտաց և կրից» է, և միմիայն առաջօք է։ Ասորոց պատրիարքը հայոց վրայ եղած բամբասանքները պաշտօնապէս ջրելու համար դիմեց Օձնեցուն, որ ժողովով նզովի այդ աղանդաւորներին և բամբասանքներին վերջ տայ։

Այս ժողովի մասին գրուած է 530 և 100 համար ձեռագրներում, ուր բացի այդ տեղեկութիւնից կարդում ենք, որ այդ ժողովում նզովեցին Քաղկեդոնի ժողովը և «մի բնութիւն» սահմանեցին։

Այս ժողովի մասին մեր ձեռագրերում, կամ աւելի պարզ ասած մեր կանոնագրքերում ոչ մի տեղեկութիւն չկայ. Օձնեցուն վերագրուած է միայն 32 կանոն, իսկ Մանազկերտի կանոնների մասին չկայ ոչ մի տեղեկութիւն։

---

## ՊԱՏՐԱՒԻ ԺՈՂՈՎԻ ԿԱՆՈՆՆԵՐԸ 771-ԻՆ.

*Մեր կանոնագրքերում գրուած է «կանոնք Սիովնի Հայոց կաթուղիկոսի, ունի գլուխս ԻԴ.»։ Սրանից յետոյ գալիս է նախագրութիւնը, որ սկսւում է Սիոն կաթուղիկոսի խօսքով։ Ես, Սիոն, ողորմութեամբ Աստուծոյ եպիսկոպոսապետ Հայոց, յիշելով Մեծն Պօղոսի խօսքը, թէ տարին մի անգամ պիտի ժողովուել և քննել մեր գործերը, ես էլ մտածեցի ժողով անել, հաստատել սուրբ հայրերի աւանդեալ օրինագրութիւնները, իսկ թերին լրացնել միաբան ժողովով. բայց որովհետև բոլոր եպիսկոպոսները չկարողացան բռնակալ իշխողների խափանման պատճառով գալ մեզ մօտ, ուստի ուղարկեցին իրանց համաձայնութիւնը թղթով. իսկ որոնք կարողացան գալ, սրանք են։ (Յիշում է եպիսկոպոսների և իշխան—նախարարների անունները)։ Դուինում չկարողացանք ժողով անել բարբարոսների պատճառով, գնացինք Պարտաւ Աղուանից մայրաքաղաքը, ուր մասնակից եղան ժողովին Աղուանից կաթուղիկոս Դաւիթը և նրանց իշխանները. ժողովում միաձայնութեամբ կարգեցինք հետևեալ կանոնները առաջնորդների և նրանց ժողովրդի բարեկարգութեան համար։*

*1. Եպիսկոպոս կամ քորեպիսկոպոս, կամ երէց մի ստասցի ի պատճառս փառաց մարմնոյ զփառս շնորհաց հոգւոյ զպատիւ սրբութեան ածմանն որպէս ըստ մարմնական զբաւսման ունել, անփոյթ առնելով զժողովրդոցն հիւանդութեանց և որ ի նոսա են հոգեկան ցաւոց վէրք, իսկ եթէ ծուլասցի լուծցի։*

*Եպիսկոպոսը, քորեպիսկոպոսը, կամ երեցը եթէ անփութութեան կտայ ժողովրդի ցաւերը, նրա հոգեկան պիտոյք-*

ները, իրան նուիրելով անձնական զուարճութեան և փառքի, այնպիսին պիտի կարգալոյծ լինի։

Տես Բ. առ. 58 կ.։

2. Եպիսկոպոսաց մի լիցի համարձակութիւն յայլ եպիսկոպոսի ի վիճակէ քահանայ ձեռնադրել, ապա թէ ոչ լուծցի ինքն և ձեռնադրեալն։

Եթէ եպիսկոպոսը (առաջնորդը) ուրիշի թեմի համար քահանայ ձեռնադրի, կարգալոյծ լինի ինքն էլ, ձեռնադրուածն էլ։

Տես, Բ.-առ. 35, Անտ. 9, 13, Սարդ. 1, 2, 11, 15, Դ.-Դւ. 2, Նիկ. 16։

3. Եպիսկոպոս մի իշխեսցէ առնուլ ինչ յանցաւորաց եկեղեցւոյ, այլ յանցաւորին իւր ձեռաւք հրամայեսցէ տալ ի ձեռս աղքատաց զի խաւսեսցէ զյանցանս իւր։

Եպիսկոպոսը յանցաւորներից չպիտի տուգանք վերցնի և աղքատներին բաժանի, այլ պիտի ստիպի որ յանցաւորը իւր ձեռքով բաշխի չքաւորներին․

Կանոնս պարզ ցոյց է տալիս, որ եպիսկոպոսները նշանակուած տուգանքները փոխանակ աղքատներին բաժանելու, իրանց քսակն էին դնում, կանոնս դրա առաջն առնում է նրանով, որ խստիւ պատուիրում է նուէրները իբրև տուգանք վերցրած բաշխուին հէնց դրամատու յանցաւորի ներկայութեամբ և իրա ձեռքով։

4. Եպիսկոպոսունք մի իշխեսցեն քորեպիսկոպոսաց կամ քահանայից սեղան տալ հաստատել, կամ եկեղեցի աւրհնել։

Եպիսկոպոսները չհամարձակւին թոյլ տալ քորեպիսկոպոսներին կամ քահանաներին սեղան հաստատել, եկեղեցի օծել։

5. Եպիսկոպոսունք մի իշխեսցին միւռոնն աւրհնել, կամ յաւելուած առնել և տալ քահանայից. այլ ամ յամէ ի հայրապետանոցէն ըստ կանոնական հրամանի սրբոց հարցն։

Եպիսկոպոսները չհամարձակւին միւռոն օրհնել, կամ միւռոնի մի բան աւելացնել, այլ ստանան միմիայն հայրապետից սուրբ հայրերի կանոնական հրամանի համաձայն։

Տես Ն.-Դւ. 9, Մակար, Սահակ։

6. Եւ վարդապետ կարգեսցեն անխափան յեկեղեցիսն. զի մի շնորհ աստուածգիտութեանն խափանեսցին, և ճարակող աղանդք հերձուածոյն ի ներքս մացեն։

Եկեղեցիներում վարդապետներ կարգուին քարոզելու և չթողնելու, որ հերձուածողական մտքեր ներս մտնեն։

7. Վանք շինեսցան ի գիւղս, զի անդ հանգիցեն առաջնորդք եկեղեցւոյ և հիւրք և աղքատք, և զհաց նըւիրացն աւրհնութեան ի տաւնսն յերից եղբարցն տանցն և ի քահանայից զոր անդր կարգեալ եղև. և զմատաղենիսն և զհասն ի վերայ առնուն գիւղականքն. և վարձ տան նահապետի և աւերեն զվանսն և զլոյս զպաշտաւնն զխնկարկութիւնս ի վանացն եկեղեցւոյ խափանեն զայնպիսիսն ծանր նզովիւք կապեալ եմք և բանիւն Աստուծոյ, մի ժողովրդականին այնմ շնորհի, թողի վանս երթայ ամենայն հասն ըստ առաջին կարգաւորութեան հարցն և վանական մի իշխեսցէ տանել ինչ անտի ի տուն իւր, իսկ եթէ յանդգնեսցի ի մեղս եղիցի նմայ։

Գիւղերում վանքեր շինուեցին եկեղեցու առաջնորդների, հիւրերի և աղքատների իջևանելու համար, այդ հիմամբ էլ նուէրներ որոշուեցին յօգուտ վանքերի. բայց գիւղացիք մատաղները և հասը չտալուց զատ, իշխանաւորներին կաշառելուց յետոյ աւերում են վանքերը, խափանում են պաշտամունքը, լոյսը, խնկարկութիւնը. այդպիսիներին ծանր նզովներով և

Աստուծոյ խօսքով կապել ենք. բոլոր հասը թող վանքերին գնայ նախկին կարգերի համաձայն, և ոչ մի վանական չը համարձակի իւր տունը մի բան տանել, եթէ ոչ մեղք կը համարուի տանողի վերաբերմամբ։

Տես Ներսէսի (Աշտիշ.), Սահակի կանոնները։

8. Եւ տեսանեմք ի տեղիս տեղիս անարգեալ զուրբ աւազանն մկրտութեան ի չպետս համարեալ ի տգէտ և անմիտ քահանայից, և զջուր աւազանին լուացման հանեն արտաքս հեղուն ի կոխումն և յապականութիւն, յայսմ հետէ մի իշխեսցեն զնոյն անպատուութիւն առնել սուրբ աւազանին. այլ ընդ այլ սրբութիւնսն պատուով կալցին որպէս զսեղանն և զխաչ վերարկուաւք ծածկեսցեն և խնկարկութեամբ պատուեսցեն և զջուրն անդէն ի նմին աւազանին կորուսցեն և քահանայ որ անցանէ ըստ այս հրաման լուծցի։

Այն քահանան, որ մկրտութեան աւազանի ջուրը դուրս կթափի և ոչ աւազանի բացուածքով ցած կթողնի, սեղանը և խաչը պատուով չի պահիլ ծածկոցի տակ, թող կարգալոյծ լինի։

Տես Բ.-Դւ. 15, Ե.-Դւ. 13։

9. Քահանայ որում հասեալ է կարգ տարեկան սպասաւորութեան եկեղեցւոյ սրբութեամբ և արդարութեամբ կալցին զեկեղեցին. և անխափան ի տուէ և ի գիշերի կատարեսցէ զԱստուածային պաշտօն։

Քահանան հերթակալութեան ժամանակ սրբութեամբ պաշտօնակատարութիւն անի և Աստուածային օրէնքները անխափան կատարի։

10. Երկրորդ ամուսնացելոցն մի թողացուսցէ ի կարգէ ապաշխարութեան. ինքն պարկեշտաբար արբցէ, ապա եթէ ի գեղխ արբեցութիւն գացի լուծցի։

Աբէլ եպիսկոպոսը հետեւելով Զամչեանին բոլորովին սըխալ է հասկացել այս կանոնը և փոխել է այսպէս. «Քահանայ եթէ ամուսնասցի, կամ եթէ երկրորդ ամուսնացեալն ձեռնադրեսցի, մի իշխեսցէ քահանայութիւն առնել, այլ յապաշխարութեան կացցէ»։

Այս կանոնը ճշտութեամբ հասկանալու համար, պէտք է ի նկատի ունենալ նոյն խնդրի մասին գրած նախկին ժողովների կանոնները. եթէ ազատ թարգմանենք, կստանանք այսպիսի կանոն. «Քահանան՝ երկրորդ անգամ ամուսնացող անձանց ապաշխարութեան կարգից չհանի՝ չհեռացնի, (այսինքն ապաշխարութիւն կրելուց չազատի, որովհետև հին կանոններով երկակները պսակուելու իրաւունք ունէին միայն մի, կամ երկու տարի ապաշխարանք կրելով), եթէ երկակների հարսանիքին գնայ՝ պարկեշտաբար խմի, եթէ արբենայ կարգալոյծ պիտի լինի». նախկին կանոններով քահանաներին արգելւում էր երկակների հարսանիքին ներկայ լինել, երևի թէ այս կանոնս սահմանած ժամանակ նախկին կանոնը մոռացութեան էր դըրուած և քահանաները ոչ միայն ներկայ էին լինում հարսանիքի խնջոյքին, այլ և հարբում էին. կանոնս ջնջում է, վերացնում է նախկին արգելքը, թոյլ է տալիս երկապսակների հարսանիքին ներկայ լինել միայն չհարբելու պայմանով, այլապէս կարգալոյծ անելու սպառնալիքով արգելում է։

Տես Բ.-Դւ. 5։

11. Քահանայք պատուէր արասցեն արանց և կանանց և դստերաց նոցա զի ոչ արասցեն ընդ հեթանոսի զուգաւորութիւն, զի չէ ամուսնութիւն այլ անաւրէն և զպիղծ խառնակութիւն. զի զի՞նչ բաժին կայ հաւատացելոյն ընդ անհաւատին, զի չար է քան զշնութիւն, և որ զարշագոյնն է քան զշնութիւն բնական յանցանք։

Քահանաները պատուիրեն, որ ոչ ոք չհամարձակի հեթանոսի հետ ամուսնանալ, որովհետև անհաւատի հետ ամուսնանալը շնութիւնից ծանր է։

Տես Ա.-առ. 16, Լաւ. 10, 31, 37, 38, 39։

12. Քահանայք մի իշխեսցեն զնշխար կենաց հային մանկանց կամ զինուորաց տալ և առնել, այլ ինքեանք արասցեն և ի սրբութեան բաժակն բաւական արկցեն զբաժակին, և մի խառնեսցին այլ գինի յետոյ։

Քահանաները չհամարձակեն ս. խորհրդի նշխարքը մանուկներին կամ զինուորներին տալ պատրաստելու, այլ իրանք անեն և բաժակի մէջ նոր գինի չաւելացնեն։

13. Երրորդացն զուգութիւն խառնակութիւն է, պղծագործնութիւն, անքաւելի յանցանք, այնպիսիսն եթէ ապաշխարութեամբ կամին ջնջել զմեղս, նախ որոշեսցին ի միմիանց իսպառ, և ապա եղիցին արժանի ապաշխարութեան, և քահանայ որ զուգութեանց պատճառ լիցի լուծցի և նզովեսցի։

Եռակների ամուսնութիւնը խառնակութիւն և պղծագործ շնութիւն, անքաւելի յանցանք, դրանք եթէ կամենում են մեղքերը քաւել, նախ՝ թող բաժանուեն միմիանցից և ապաշխարեն, իսկ նրանց միացնող քահանան կարգալոյծ լինի և նզովուի։

Երրորդ պսակը եկեղեցին մեղք է համարում իբրև անժուժկալութիւն, Բարսեղ Մեծը անմաքրութիւն է համարում, բայց պոռնկութիւնից թեթև է դասում (8 կանոն). եռականայք ենթարկւում են ապաշխարութեան (4, 80 կ.). ապաշխարանքից յետոյ երրորդ պսակը թոյլ է տրւում։ Այս կանոնովս բոլորովին արգելւում է և պսակադիրը կարգալոյծ է լինում։ Բայց այս կանոնս իւր խստութեամբ չգործադրուեց, յետոյ մտաւ սովորութիւն երրորդ պսակ անել երկակների օրհնութեամբ։

Տես և նէո.—3։

14. Որք չև հասեալ ի ժողովրդականաց յայն որ ի նեղութենէ հարկաց անձինք հասանեն վաճառ, և սակաւ ինչ ի գոյութենէ լինի, և վաճառեսցէ զեկեղեցի կամ սպաս սրբութեան, կամ ի կարասւոյ կամ յանդաստանաց եկեղեցւոյ նզովեսցի յԱստուծոյ և ի մէնջ և զայնպիսին մի ոք կոչեսցէ քրիստոնեայ։

Եթէ ժողովրդականներից հարկի նեղութիւնից ստիպուած վաճառքի կհանեն եկեղեցու սրբութիւնը, կարասին, անդաստանը, նզովեալ լինի մեզնից և քրիստոնեայ այլ ևս չկոչուի։

Տես Բ.-Դւ. կանոնները (4)։

15. Կրաւնաւոր ուր առեալ է զկնաւն սրբութեան, և տեղափոխ լինի ուխտէ յուխտ, արգելեալ լիցի և մի ոք իշխեսցէ զայնպիսին ընդունել, այլ ուր ընծայեցաւն Քրիստոսի ի նմին տեղ կատարեսցէ զառաքինութեան իւրոյ զհանդէս և կատարեսցի, բայց եթէ առաջնորդաց կոչեսցի յառաջնորդութիւն եկեղեցւոյ և կամ վարդապետութիւն ունիցի ի լրումն Աստուածեղէն ուսման առաջնորդին։

Կրօնաւորը իրաւունք չունի մի ուխտից (վանքից) միւսը տեղափոխուել, միմիայն եթէ առաջնորդութեան կամ վարդապետութեան է կանչւում—հրաւիրւում։

Նոյնը հաստատում են IV և VI տիեզերական ժողովները։

16. Յառաջին սուրբ հարքն իւրեանց ժամանակս արգելեն զազատս և զանազատս յարեան մերձաւորութենէ, այժմ առ մենք լուծեալ տեսանեմք մանաւանդ ազատաց զկանոյն հարցն զի անխտիր խառնեն առ իւրեանց մերձաւորսն, անկարգ ամուսնութեամբ։ Յայսմ հետէ ի ցըչորրորդ զարմ մի իշխեսցեն ամուսնութեամբ զուգել, ապա թէ ոչ նզովեսցին ի մէնջ և ինքեանք տացեն պատասխանի Աստուծոյ ի մեծութեան նորա դատաստանին։

Առաջ մեր սուրբ հայրերը իրանց ժամանակ ազատներին և անազատներին արգելեցին արեան մերձաւորութիւնից, այժմ տեսնում ենք որ լուծուել է այդ կարգը, մանաւանդ ազնուականների մէջ, որոնք անխտիր խառնակւում են միմեանց հետ մերձաւոր ամուսնութեամբ։ Սրանից յետոյ մին-

*չև չորրորդ զարմ չհամարձակին ամուսնանալ, ապա թէ ոչ մեզնից կնզովուին։*

*Շահապիվանի ժողովում արգելուեց մինչև չորրորդ զարմը, այս ժողովս արգելում է նոյնպէս մինչև չորրորդը յիշելով Շահապիվանի ժողովի որոշումը, որից կարելի է ենթադրել որ այստեղ մի աստիճան էլ աւելացնում է արգելելով չորրորդ ծնունդի պսակը, այլապէս չէր ասել թէ «Յայսմ հետէ ցչորրորդ զարմ մի իշխեսցեն» ամուսնանալ։ Այս ենթադրական կարծիքը առաջանում է կանոններիս անորոշ գրուածքից, մինչև չորրորդ ասելով արգեօ՞ք հասկանում է չորրորդն էլ հետը թէ ոչ։*

Տես Բարս. 68, Շահ. 12, 13։

17. *Տկարքն քանզի ի տանց յընտանեաց և ի քաղաքաց իւրեանց մերժեալ եղեն, առաջին սուրբ հարքն բարեպաշտ իշխանքն անկելանոցս շինեցին ուր զնոսա ժողովեցին և վիճակս կարգեցին, գաւառաց գաւառաց անդր տալ զտուրս ողորմութեան ի մխիթարութիւն նոցա. այժմ ի տեղիս տեղիս այն աւերեալ է, և ելանեն տկարքն այլ մուրացողացն վիճակաց առնուն զմուրողին, նոքա զրկին ի միմեանց և չքաւորեալ շրջին. յայսմ հետէ հոգ լիցի եպիսկոպոսաց և նոցին ազատաց և այլ գլխաւորացն հաստատել զաւերեալ ու յարկսն շինութեամբ ժողովել զանկեալսն և պատուէր առնել ժողովրդոցն որք վիճակաւն են հաստատեալ նոցա առնել ողորմութիւն և յաւտար վիճակաւորացն չտալ ինչ և մի ոք իշխեսցէ անցանել ընդ այս հրաման։*

*Նախկին ժամանակների շինած անկելանոցները և այդպիսի հաստատութիւնները, որոնց համար գաւառներից տուրքեր էին ժողովւում, մասամբ քայքայուել են։ Սրանից յետոյ եպիսկոպոսները, ազատները և գլխաւորները հոգ տանեն աւերուած շէնքերը նորոգելու և նշանակուած տուրքերը ժողովրդից առնելու և կարօտեալներին խնամելու։*

Տես Աշտիշ. կանոնները։

18. Ի յիշատակ վախճանելոցն ի յընտանեաց նոցա որ ինչ ըստ կարգի աւրինաց քրիստոնէութեան զոր հրամանաւ սուրբ հարցն կատարեն զմխիթարութիւն հոգւոց նոցա, կամ զքառասունս, և զագապս ի հանգիստ նոցա. կամ դայլ տուրս զոր ինչ և հրամայեսցէ վախճանեալն հոգւոյն իւրոյ. մի իշխեսցեն յայլ եկեղեցիս, կամ ի կրաւնաւորս տալ այլ անդէն գեղջ եկեղեցւոյն երիցուն լիցին և վանացն այսպիսեացն հասք և իւրեանց տան երիցուն ուր շնորհաւք սուրբ աւազանաւն վերստին եղև ծնեալ և պսակեալ, և կենացն հացիւ կերակրեալ, ուստի և յուղարկեալ առ Աստուած երթայ, իսկ յորժամ հարկաւորն յիւր եկեղեցին կատարեալ լինի և կամեսցի աւելորդս ինչ առնել այլ եկեղեցիս կամ ի կրաւնաւորս կամ աղքատս ապա լիցի համարձակ առնել ինչ։

Հանգուցեալի յիշատակը յարգող մերձաւորները պարտաւոր են քառասունքը կատարել, ագապ բաշխել աղքատներին և ուրիշ տուրքեր տալ այն եկեղեցուն և քահանային, որը մկրտել և պսակել է։ Եթէ նրանց եկեղեցուն և քահանային կգոհացնեն, այն ժամանակ կարող են ուրիշ եկեղեցու, վանքի, քահանաների և աղքատների էլ բաժին հանել։

19. Ժողովրդական ոք որ յաղագս պէս պէս ինչ սխալանաց բանադրեալ լինի յեպիսկոպոսէն թէ մեռեալ թող չթաղէ նմա քահանայ և ոչ երախայ մկրտել, և դէպ լիցի երախայի հասանել այնպիսւոյն կամ մեռանել քահանայն մկրտեսցէ զերախայն և թաղեսցէ զմեռեալն և զայլ կապանս բանիւն սրբութեամբ անլոյծ պահեսցէ։

Եթէ եպիսկոպոսից բանադրեալը առանց արձակուելու կմեռնի, քահանան իրաւունք չունի նրան թաղելու. իսկ եթէ նրան մահամերձ չմկրտուած երախայ լինի, քահանան թող մկրտի, և մահուան դէպքում թաղի։

Տես Ա.-առ. 23, Բ.-առ. 32, Անտ. 6, Սար. 13, 14, Ջահ. 18, Բ.-առ. 12, 13։

*20. Իսկ եթէ դիպեսցի երախայի հիւանդանալ և քահանայն հեռի իցէ և ընթանան յընտանեացն առ քահանայն ի կոչել: Անդէն ուր դիպու քահանայն սկսցի զկարգ մկրտութեանն անուն երախային, և եթէ դէպ լիցի երախային մեռանել յորժամ եկեսցէ քահանայն և կնքեսցէ սուրբ նշանաւն զգլուխն, և թաղեսցէ ընդ Քրիստոսի ընդ մկրտեալսն այդ կանոն ի վերայ ակամային դիպեսցի։*

Եթէ երախան մահամերձ է և գնում են քահանայի ետևից որ գայ մկրտի, քահանան ճանապարհին եթէ լսի, այնտեղ էլ թող սկսի մկտութեան կարգը կատարել մինչև տուն հասնելը, եթէ տուն կգայ և մեռած կգտնի երախային թող սուրբ նշանով գլուխը կնքի և երախային թաղի։

*21. Քորեպիսկոպոսունք մի իշխեսցեն զդուռն եկեղեցւոյ փակել և խափանել զԱստուածային աղաւթիցն ժամ, վասն աւր ընթրեաց, կամ վասն միոյ ուրուք յանցանաց՝ բայց զպարտաւորս աւր ընթրեացն և զմեղուցելոցն անձինս բանադրեսցին։*

(22). *Գեղջ աւագ որ յաղագս արքունի հարկաց զդուռն եկեղեցւոյն փակել տայ բռնաւորին, և Աստուածային ժամուն աղաւթիցն խափան արասցէ նզովեսցի ի կեանս և ի մահ։*

Քորեպիսկոպոսները չհամարձակեն եկեղեցու դռները փակել և ժամերգութիւնը խափանել օրահական հասի կամ մի որ և է մէկի յանցանքի պատճառով։ Բայց կարող է օրաթոշակ չտուողին և յանցաւորին բանադրել։

Գիւղի տանուտէրը եթէ արքունի հարկերի պատճառով բռնաւորին կդրդի եկեղեցու դռները փակել և ժամերգութիւնը խափանել, մինչև մահ նզովեալ լինի։

Ուրիշ ձեռագրերում «գիւղի տանուտէր»-ից սկսուած նոր կանոն է համարւում՝ այն է 22-րդ, այստեղ միացրած է երկու կանոնը։

22. (23). *Որք գերավար լինին յանաւրինաց, և ակամայ առ քաղցի, կամ ի հարկէ նոցա կերիցեն՝ յանսուրբ և ի պիղծ մսոյ, յորժամ դարձ արասցէ նոցա Աստուած խւրեանց տեղիս, ամ մի ջերմեռանդն սրտիւ ապաշխարեսցէ արտասուաւք պահաւք և աղաւթիւք արտաքոյ եկեղեցւոյ, և եթէ սխալանք այն խսկ իցեն նմա հաղորդեսցի աւրինաց, և զուրբաթ և գչորեքշաբաթ խպառ պահեսցէ։ Նոյն կանոնդ եղիցի և առ կանայս որք ակամայութեամբ պղծին ի հեթանոսաց։*

*Եթէ գերի ընկածներից՝ հարկից, քաղցից ստիպուած կուտեն անսուրբ և պիղծ մսից, դառնալուց յետոյ մի տարի ամենայն ջերմեռանդութեամբ ապաշխարեն և հաղորդուեն։ Նոյն կանոնը լինի և հեթանոսներից ակամայ անպատիւ եղած կանանց համար։*

23. (24). *Աղջիկ խաւսեալ թէ ապարահի իցէ մի իշխեսցեն քահանայքն այնպիսւոյն պսակ դնել կամ զուգել ընդ առն ամուսնութիւն մինչև սրբեսցի յապարահէն և ապա ամուսնասցի։ Եւ եղիցի ամենեցուն ձեզ եկեղեցականաց և աշխարհականաց պաշտել ի գիրքս սուրբք ի հին և նոր կտակարանաց։ Մովսէսի գիրք ծննդոցն, Ելիցն, Ղևտականն։ Թիւք՝ երկրորդ աւրէնք Յեսու Նաւեայ, Դատաւորացն և Հռութոյն, Թագաւորութեանց Դ. Մնացորդացն գրոց աւուրք երկու. Եզրի Բ. բանք, գիրք Յովբայ, Սաղմոսացն, գիրք Ա. Սողոմոնի, Դ. գիրք ԲԺ.-ան մարգարէքն, Եսայի, Երեմեա, Եզեկիէլ, Դանիէլ։ Եւ արտաքուստ պատգամաւորեսցի առ ի ուսուցանել դձեր մանկունս զուսումնաբազումն Սիրաքայ իմաստութիւնն։*

*Քահանաները նշանուած աղջկան չպսակեն մինչև որ ամսական արիւնից չմաքրուի։*

*Այս կանոնս ոչ մի յարաբերութիւն ու նմանութիւն չունի մնացած երկրորդ կէսի հետ այն է գրքերի յիշատակութեան, որից և կարելի է ենթադրել որ յետոյ աւելացրած է։ Գրքերի յիշատակութիւնը թերի է «նոր կտակարանից» ոչ մի գրքի անուն չէ տալիս, թէև վերնագրում գրուած է. թէ այս, թէ Առաքելական կանոնների 85-րդում կամ մեր 740 ձեռագրի մէջ, թէ «հարանց հետևողաց» կանոններում յիշուածները վերցրուած են մի աղբիւրից և գրուած են ոչ լրիւ, այլ թերի և պակասաւոր։*

Տես Բ.-առ. 85, Լաւ. 59, 60, Աթանաս։

## ԵՐՆՋԱԿՈՒ ԺՈՂՈՎԸ 842 ԹՈՒԻՆ

Այս ժողովում եկեղեցական կանոններ չեն մշակուել, ժողովս գումարուել է միմիայն հեռացած Հայոց կաթուղիկոսին նորից ի գահ հրաւիրելու։ Այս ժողովս մի քանի իրաւաբանական կէտեր է շօշափում կաթուղիկոսին ամբաստանութեան տակ ձգելու հարցի նկատմամբ։

834-ին կաթուղիկոս է ընտրւում Յովհաննէս Ե. Օվայեցի. ութ տարուց յետոյ, Յովհաննէս պատմաբանի ասելով, կաթուղիկոսարանի մօտ անձինքներից երեք հոգի գնում են աշխարհ հրամանատար և իշխանաց իշխան Բագրատ Բագրատունու մօտ և ամբաստանում կաթուղիկոսին, մեղադրելով վերջինիս զանազան օրինազանցութիւնների մէջ։ Բագրատը լսելով դրանց ասածներին, հրովարտակներ է գրում աշխարհի բոլոր կողմերը առաջարկելով հեռացնել կաթուղիկոսին աթոռից և նորը ընտրել։ Կաթուղիկոսը լսելով այդ բանը, խոհեմութիւն է համարում լուռ ու մունջ ազատակամ հեռանալ գահից և վանք քաշուել ճգնելու համար։

Սմբատ սպարապետը և Գրիգոր Սիւնեաց իշխանը լսելով այդ, սաստիկ զայրանում են Բագրատունու վրայ, կանչում են բոլոր եպիսկոպոսներին և իշխաններին Երնջակ, ժողով են անում ու քննում ամբաստանութեան կէտերը։ Ժողովը արդարացնում է կաթուղիկոսին և հրաւիրակներ է ուղարկում հայրապետի մօտ նորից վերադառնալու և գահի վրայ բազմելու։

Այս ժողովը մի քանի ուշադրութեան արժանի կէտեր է մտցնում մեր եկեղեցական իրաւունքի սահմանի մէջ կաթուղիկոսի և ժողովի իրաւասութեան խնդիրների նկատմամբ։ Առաջին՝ որ առանց կաթուղիկոսի նախագահութեան և հրաւէրին ժողով անել կարելի է այսպիսի դէպքերում, այսինքն

երբ պիտի քննուի կաթուղիկոսի գործերը։ Երկրորդ՝ ժողովն է ընտրողը կաթուղիկոսին և ժողովն է միակ ամբաստանող, ուրեմն և արդարացնող կամ մեղաւոր համարող։ Երրորդ՝ երկրի իշխանը առանց ժողովի չի կարող կաթուղիկոսին մեղադրել և գահից հեռացնել։ Ճիշտ է՝ եղել են դէպքեր՝ երբ Հայոց գուռող թագաւորները կամ Պարսից արքաները զօրով փոխել են կաթուղիկոսներին և ուրիշներին նշանակել, սակայն այդպիսի դէպքերը իրաւական սահմանների մէջ չեն մտել, նրանք եղել են բռնի ուժով, ապօրինի կարգով։ Եղել են և ընդհակառակն ուխտազանց կաթուղիկոսներ, որոնք թէև դատի չեն ենթարկուել, բայց յետոյ արդէն նզովուել են և անիծուել, օր. Եզր։ Այսպիսի դէպքեր սկզբունքներ մտցնել չեն կարող, որովհետև դրանք օրինաւոր և կանոնաւոր հետևողութեամբ չեն զարգացել և գոյութիւն ունեցել, այլ անհատների և զանազան պատահարների միջոցով են առաջ եկել։

---

## ԱՆԻ ՔԱՂԱՔԻ ԺՈՂՈՎԸ 970 ԹՈՒԻՆ.

Այս ժողովում նոյնպէս կանոններ չսահմանուեցին, այլ միայն զբաղուեցին քաղկեդոնիկ Վահան կաթուղիկոսին գահընկեց անելու խնդրով։

Անանիա կաթուղիկոսին յաջորդեց 968-ին Վահան Սիւնեցին։ Սա առաջուց տրամադիր լինելով դիմել քաղկեդոնական նութեան, ծածուկ յարաբերութիւններ սկսեց նրանց հետ և Մելիտինի մետրոպոլիտի ձեռքով միաբանութեան թուղթ հաստատեց յունաց հետ։ Հայոց եպիսկոպոսները այդ բանը իմանալով, իմացրին Աշոտ թագաւորին խնդրելով ժողով անել այդ գործը քննելու համար։ Աշոտի հրամանով եպիսկոպոսները ժողով գումարեցին Անի մայրաքաղաքում, քըն-

նեցին Վահանի արածները, գտան նրան քաղկեդոնականութեան կողմնակից և նոյն իսկ դաւանութիւնը փոխած։ Ժողովականք պահանջեցին գահընկեց անել Վահանին. բայց երբ լսեցին որ Վահանը փախել է Վասպուրականի Աբուսահլ Արծրունի թագաւորի մօտ, նրա փոխարէն ընտրեցին Ստեփաննոսին՝ Սևանայ վանքի վանահօրը։ Նորընտիր կաթուղիկոսը, 971-ին նզովեց թէ Վահանին և թէ նրա խնամատար Աբուսահլ թագաւորին։

Այս և նախորդ ժողովը զբաղուեցին կաթուղիկոսին դատի կանչելու և նրա գործերը քննելու խնդրով։ Այստեղ էլ հաստատուեցին նոյն հիմունքները, ինչպէս և նախորդ ժողովում. 1) որ ժողովն է կաթուղիկոսին դատի կանչում, և ոչ Աշոտ թագաւորը. 2) որ ժողովը քննում է և փաստերի հիման վրայ դատապարտում կաթուղիկոսին. 3) որ կաթուղիկոսը իբրև ամբաստանեալ դատի չի կանչւում այլ միայն նրան քննում են եղած գրաւոր փաստագրերով և վկաների հարց ու փորձով. 4) ուխտադրուժ կաթուղիկոսը և թագաւորը բանադրանքի են ենթարկւում։

---

## ՀԱՐՔԻ ԺՈՂՈՎԸ 1002 ԹՈՒԻՆ.

Այս ժողովը եկեղեցական կանոններ չի սահմանել, այլ միայն նզովել է և բանադրել Թոնդրակեցի աղանդաւորներին։

Թոնդրակեցոց աղանդը սկսւում է Սմբատ անունով մէկից, որը Ծաղկոտն գաւառի Զարեհաւան գիւղից էր։ Սա Պաւղիկեաններն աղանդի հետ ծանօթանալով՝ յարւում է մի աստղագէտ պարսիկ բժիշկի, որից սովորում է զանազան հնարներ, կախարդութիւններ և բժշկական գիտելիքներ։ Գալիս է Թոնդրակ աւանը և սկսում իւր քարոզութիւնները։ Նա մերժում էր Աստուծոյ նախախնամութիւնը, յա-

րութիւնը Հոգոյն Սրբոյ շնորհքը, ձեռնադրութիւնը, եկեղեցու խորհուրդները, չէր ընդունում մեղք ու պատիժը, արհամարհում էր ծէսերը, սովորութիւնները։ Հետեւողներ շատ գտաւ և Թոնդրակը դարձրեց աղանդաւորների գիւղ։ Շուտով Թուլայլ գիւղից մի քանիսին իրան կուսակից արաւ, Խնուսում էլ հետեւողներ գտաւ և սկսեց տարածել շրջակայ գիւղերի մէջ։ Սմբատի մահից յետոյ աղանդի տարածումը շարունակուեց և աւելի լայն ծաւալ ստացաւ։ Թէ երբ է սկսուել աղանդը երևալ Հայաստանում, դժուար է ասել, միայն պատմական փաստն այն է, որ 447-ին Շահապիվանի ժողովում ամենախիստ միջոցներն էին առնում «մծղնէից» աղանդի դէմ, բայց միջոցները քիչ արդիւնք ունեցան, Ներսէս Բ.-ի, Օձնեցու օրով աղանդը դեռևս շարունակւում էր, Օձնեցին «ընդդէմ պաւղիկեանց» ճառի մէջ խօսելով դրա մասին՝ շարունակութիւն է համարում «մծղնէից» աղանդների և խիստ գոյներով նկարագրում։ Սարգիս կաթուղիկոսի օրով արդէն այդ աղանդները իրանց գոյնը փոխեցին, աւելի ուժեղ կերպարանք ստացան, քարոզութիւնները և մոլար մտքերը աւելի պարզ և բացարձակ սկսուեցին տարածուել և բոլորովին նոր անունով կոչուել։ Թէ որքան կապ կար «մծղնէից», «պաւղիկեանց» և «թոնդրակեցոց» աղանդի մէջ, որքա՜ն մէկը միւսի վրայ ազդել է, առ այժմ դժուար է դրական մի բան ասել, միայն այդ խնդրով պարապողների կարծիքով դրանք միմիանց շարունակութիւն են կազմում և ամբողջացած կերպարանք ստանում Սմբատի ձեռքով Թոնդրակում։

Արդեօ՞ք Հայոց երկրում էր առաջացել, թէ դրսից մտել, յունաց, ասորոց կամ պարսից երկրից, անորոշ է և վիճելի։

Այս աղանդի մասին տեղեկութիւն կարելի է քաղել Ասողիկից, Լաստիվերտցուց, Մագիստրոսի և Շնորհալու թղթերից, Սարգսեանի «ուսումնասիրութւնից Մանիքէա—Պաւղիկեան թոնրակեցների աղանդին» գրքից, Չամչեանից և «Արարատ»-ի 1900 թ. յուլիսի համարից։

Այս աղանդի առաջն առնելու համար 1002-ին Սար-

գէս կաթուղիկոսը ժողով արաւ Հարքում, բանադրեց աղանդաւորներին և նրանց մասնակցողներին, մշտապէս հեռացրեց Հայոց եկեղեցու հաղորդակցութիւնից. բռնեց նրանց գլխաւոր Յակոբոս եպիսկոպոսին, կարգալոյծ արաւ, աղւէսադրոշմ դրեց ճակատին, նզովեց և բանդարկեց։

---

## ԱՆԻ ՔԱՂԱՔԻ ԺՈՂՈՎԸ 1036 ԹՈՒԻՆ.

Այս ժողովում եկեղեցական կանոններ չեն սահմանուել, այլ զբաղուել են կաթուղիկոսական ընտրութեամբ։ Ժողովիս գործունէութեան մէջ և նախընթաց դէպքերի եղելութեան մէջ շատ մութ հարցեր պարզաբանուել են և որոշ խնդիրներ լուծում ստացել, որոնք էական նշանակութիւն ունին եկեղեցական իրաւունքի տեսակէտից։

Պետրոս կաթուղիկոսը մի քանի տարի բացակայ լինելով Անի քաղաքից, երբեմնակի ապրում էր Սեբաստիայի Սենեքերիմ Արծրունի թագաւորի մօտ. սրա մահից յետոյ քաշուեց Վասպուրականի Ձորի վանքը և այնտեղ կենալով հեռու էր պահում իրան կաթուղիկոսական պաշտօն վարելուց։ Թագաւորին և նախարարներին դուր չգալով կաթուղիկոսի այդպիսի վարմունքը, մտածեցին ուրիշին կաթուղիկոս ընտրել. բայց կասկածելով՝ որ Պետրոսը կարող է գահից չհրաժարուել և շարունակել իւր հայրապետական անուանական պաշտօնը և դրանով խռովութիւն առաջացնել ժողովրդի մէջ, որոշեց խաբելով կանչել նրան և բանտարկել, ստիպելով հրաժարական տալ։ Այսպէս էլ արեց, բռնեց կաթուղիկոսին, որը հաւատալով թագաւորի խօսքին եկել էր կաթուղիկոսութիւնը շարունակել, և բանտարկեց Բջնում։ Թագաւորը՝ Յովհաննէս Սմբատ բերել տուաւ Սանահնի վանահօր Դէոսկորոսին և հրամայեց կաթուղիկոս օծել։ Եպիսկոպոսները, ժողովուրդը

տեսնելով թագաւորի, նախարարների արած հակա-եկեղեցական ընտրութիւնը և հաստատութիւնը, մերժեցին նոր կաթուղիկոսին, անունը չը յիշեցին եկեղեցում և չթողեցին եպիսկոպոսական ձեռնադրութիւն կատարի։ Դէոսկորոսը աւելի վատ ընթացք բռնեց, սկսեց անպիտաններին եպիսկոպոս ձեռնադրել, լաւերին հեռացնել և նրանց ստացուածքները յափշտակել։ Եպիսկոպոսները ժողով արեցին և նզովեցին թագաւորին և նախարարներին։ Վերջիններս վախեցան և նորից հրաւիրեցին Պետրոս կաթուղիկոսին, որը բացէ ի բաց մերժեց նրանց առաջարկութիւնը։ Թագաւորը դիմեց Աղուանից կաթուղիկոս Յովսէփին, որ գայ ժողով անի, հայոց կաթուղիկոսին հրաւիրի և նզովքը վերցնի։

Եւ ահա 1036-ին Յովսէփ կաթուղիկոսի նախագահութեամբ Անիում եղաւ մեծ ժողով 4000 հոգևորական և աշխարհական անձանց մասնակցութեամբ, ուր քննեցին Դէոսկորոսի գործերը, մեղադրեցին նրան, պատռեցին հայրապետական քօղը, որ սովորութիւն էր գլխով ձգել, աքսորեցին Սանահին վանքը, բանադրեցին նրանից ձեռնադրուածներին ապաշխարանքի ենթարկելով և Պետրոսին հրաւիրեցին կաթուղիկոսութիւն անելու։

Այս ժողովը ամենափառաւոր ժողովներից մէկն է իւր տեսակի մէջ, այստեղ մասնակցում էր 4000 մարդ, հոգևորական և աշխարհական դասակարգերի համարեա բոլոր ներկայացուցիչները, որոնք հաստատեցին կաթուղիկոսի ընտրութեան և գահընկեց անելու դարաւոր աւանդական կարգը և աւելի ևս ամրապնդեցին հետևեալ սկզբունքները. 1) կաթուղիկոս ընտրել և գահընկեց անել կարող է միմիայն հայոց ազգային ժողովը. 2) Ազգային եկեղեցական ժողով անպայման կերպով պիտի հասկանալ հոգևորական և աշխահական դասակարգը. 3) Թագաւորը և նախարարները առանց ժողովի իրաւունք չունին ոչ կաթուղիկոս հեռացնել և ոչ էլ նոր ընտրութիւն անել, եթէ անեն, այդ կլինի բռնի ուժով և ոչ կանոնական իրաւունքով արած. 4) ժողովը կարող է նզովել եկեղեցական-ժողովրդական կարգերին հակա-

ռակ գնացող թէ Թագաւորին և թէ նախարարներին։ 5) Թագաւորը և նախարարները հնազանդելով ժողովի վճռին դրանով ժողովը համարեցին ամենաբարձր իրաւասութիւն ունեցող մարմին. 6) ժողովը լինում է առանց կաթուղիկոսի նախագահութեան, երբ տեղի է ունենում կամ կաթուղիկոսի ընտրութիւն, կամ կաթուղիկոսական գործերի քննութիւն. 7) Այդպիսի դէպքերում ժողովում նախագահում է աւագագոյն եպիսկոպոսը, այս ժողովում Աղուանից կաթուղիկոսը։ 8) Կաթուղիկոսին առանց քննութեան գահընկեց անել՝ լոկ Թագաւորի խօսքով չի կարելի։ Մեղադրանքը պէտք է ապացուցանել փաստերով և վկաներով։ 10) Կաթուղիկոսը առհասարակ պատասխանելու չի հրաւիրւում ժողով իբրև մեղադրւող, այս ժողովում մասնակցում էր և կաթուղիկոսը։ 11) ժողովը կարող է կաթուղիկոսին գահընկեց անել, պատժել, և աքսորել վանք։ Թէև կաթուղիկոսին կարգալոյծ անելու դէպք չի եղել, բայց ազգային ժողովը երբ յարմար գտնի կարող է այդպիսի պատիժ տալ, ինչպէս և տիեզերական ժողովը կարգալոյծ արաւ պատրիարքին (Նեստորին)։ Ահա մեր պատմութեան փաստերը կաթուղիկոսական ընտրութեան վերաբերմամբ, որոնք իբրև փառաւոր և արդարացի սկզբունքներ պիտի պահէին և հետևորդները եմինչ և այսօր էլ մեզ հասցնէին նոյն յաջորդականութեամբ. բայց շատերը հէնց մեր կաթուղիկոսներից իրանց փառասիրական ձգտումներին յագուրդ տալու համար հակառակ էին գնում այդ հիմունքներին և (Կարբեցին) ոտնատակ տալիս այդ կարգերը։

---

## ՀՌՈՄԿԼԱՅԻ ԺՈՂՈՎԸ 1179 ԹՈՒԻՆ.

Գրիգոր Տղան 1173-ին կաթուղիկոսական գահը բարձրանալով շարունակեց իւր հօրեղբօր Շնորհալու բռնած ընթացքը, այն է սէր և միաբանութիւն ձգել Հայերի և յոյների մէջ, միմիայն ամուր պահպանելով Հայոց առաքելաւանդ ծէսերը և սովորութիւնները և թոյլ չտալով որ Հայոց եկեղեցին ինքնուրոյնութիւնից զրկուի։ Գրիգոր Տղան ցանկանալով իւր նախորդների սկսածը ազգային ժողովով լրացնել և վերջինիս որոշմամբ Յունաց կայսեր վճռական պատասխան տալ, հրաւիրագրեր ուղարկեց ամեն տեղ, պատուիրելով գալ ժողովուել Հռոմկլա և ընդհանուր որոշմամբ վերջ դնել ձգձգուող խնդրին։ Արևելեան Հայաստանի եկեղեցականներ կասկածանքով վերաբերուեցին դէպի այդ հրաւէրը և երբ ստացուեց այդ կասկածանքները փարատող Գրիգորի թուղթը, շատերը, որոնք յարմարութիւն ունէին՝ գընացին, մնացողները ուղարկեցին իրանց հաւանութեան թղթերը։

Հռոմկլայում 1179-ին ժողովուեցին՝ Աղուանից կաթուղիկոսը, 32 եպիսկոպոս, բազմաթիւ վարդապետներ, վանականներ, երէցներ, սարկաւագներ և Հայոց մեծամեծ իշխաններ։ Ժողովս կազմեց Յունաց կայսրին և պատրիարքին ուղարկուելիք պատասխանը Հայոց դաւանութեան վերաբերեալ։ —Դաւանաբանութեան մասին երկար խօսուել է Ներսէս Շնորհալու բաժնում, այստեղ այդ մասին չի խօսուիլ, այլ ուշադրութիւն կդարձնուի մի աւելի կարևոր կէտի վրայ, այն է, որ այս ժողովում մատնացոյց է անւում այն արտաքին տիեզերական և մասնաւոր ժողովների և ս. հարց վրայ, որոնց կանոնները Հայոց եկեղեցին ընդունում է կանոնականների շարքում։

Ահա ժողովի որոշման այդ կտորը թարգմանաբար. ընդունում ենք տիեզերական ժողովներից առաջի երեքը Նիկիայի. Կոստանդնուպօլսոյ և Եփեսոսի. «Մեր մէջ գտնւում են այլ և այլ ժողովների կանոնագրութիւններ, որոնք ընդունելի են մեզ. որոնք եկեղեցու զանազան կարգերը հաստատեցին, պէսպէս հերձուածներ հերքեցին, ինչպէս Անկիւրիայի ժողովը՝ որը հերքեց Լիկիանոսի անբարշտութիւնը՝ քահանաներին զոհած միս ուտեցնելուն համար. Կեսարիայի ժողովը՝ յուդթից կանանց դէմ եղած, և Նէոկեսարիայի ժողովը՝ անխտիր պոռնկութեան դէմ եղած. և Գանգրայ ժողովը՝ Օստացւոց աղանդի դէմ, և Լաւոդիկիայի ժողովը՝ տասնչորսականների դէմ. և Սարդիկիայի ժողովը՝ եկեղեցական կարգերի համար եղած։ Այս ուղղափառ և սրանց նման ժողովներից սովորեցինք մենք հաւատոյ դաւանութիւնը...» (տես «Թուղթ ընդհանրական» 1865. Ս. Էջմիածին. 256 եր.)։

Ուրեմն այս ժողովը որոշեց ընդունել օտար ժողովներից երեք տիեզերականը, և վեց տեղականը։ 3 տիեզերականի մասին շատ յիշատակութիւններ կան արուած մեր մէջ, վեց տեղական ժողովների մասին առաջին անգամ է յիշատակւում և միմիայն այս ժողովում։ Կարծէք թէ ժողովականները վեց տեղական և այլ օտար սուրբ հարց կանոնների հայոց կողմից ընդունելութեան հարցի որոշմամբ, ցանկացել են վերջ տալ անօգուտ վէճերին, որոնք առաջանում էին նրանից, որ իբր թէ հայերը բացի իրանց ազգային ժողովների և կաթուղիկոսների կանոններից օտար կանոններ չեն ընդունում։ Բայց խնդիրն այս է ինչու մեր ժողովը 6 տեղական ժողով է ընդունել և ոչ 8. եթէ մեր ժողովը ասում է թէ կան մեր մէջ այլ և այլ ժողովների կանոններ, դրանով կամենում է ասել, որ վաղուց հայոց մէջ կան տեղական ժողովների թարգմանութիւնը, Յովհան Օձնեցու օրերից և մինչև այն օրը գործածութեան մէջ եթէ չկան էլ, յամենայն դէպս մեր եկեղեցու կողմից չեն մերժւում։ Եթէ Յովհան Օձնեցու կազմածի մէջ միայն տեղական վեց ժողովներն են մտել և ոչ 8, նշանակում է Օձնեցին պէտք օգտուած

լինի այն ժողովածուներից, որոնցից օգտուել են Դիոնէսիոս Կրտսերը և Յովհան Սխոլաստիկը (500 և 556 թուականներին)։ Այս երկուսի ժողովածուների մէջ մտնում էին 4 տիեզեր. ժող. և 6 տեղական և առաքելական կանոններ. երևի թէ Օձնեցին յարմար է գտել հետևել 6 տեղական ժողովներ պարունակող ժողովածուներին, քան ուԹ։ Մեր 1179-ի ժողովն էլ հէնց այս 6 տեղական ժողովն էլ ընդունել է վաւերականների շարքում։ Միայն այստեղ մի թեթև թիւրիմացութիւն է տեղի ունեցել. մեր ժողովի ընդունած 6 տեղական ժողովների շարքից պակասել է մի ժողով՝ այն է՝ Անտիոքինը և աւելացել է մի բոլորովին գոյութիւն չունեցող ժողով՝ այն է՝ Կեսարիայինը։ Թէ Սխոլաստիկի, թէ Կրտսերի ժողովածուների մէջ և թէ մեր բոլոր կանոնագրքերում կան Անտիոքի ժողովը, որը շատ նմանութիւն ունի Նիկիայի ժողովի կանոնների հետ և կարծիք կայ որ միմիանցից փոխառութիւն են արել երկու ժողովները, որ ասել է թէ Անտիոքի ժողովը ոչ մի թէական՝ կասկածական բովանդակութիւն չի ներկայացնում և համապատասխան է ուղղափառ եկեղեցու դաւանանքին, բայց ինչու դուրս է ձգուել 1179-ի ժողովի ցանկից. դժուար է պարզել։ Իսկ ընդհակառակն Կեսարիային վերագրած ժողովը գոյութիւն չի ունեցել, ոչ մի եկեղեցու ժողովների ցանկում չկայ, ոչ վաւերականներ և ոչ անվաւերականների մէջ, որտեղից են գտել մերոնք և ժողովների կարգը դասել, Աստուած գիտէ։ Կայ մի ուրիշ փաստ, որ ցոյց է տալիս թէ 1179-ի ժողովում յիշատակուել է և «Անտիոքի» ժողովը և ապա դուրս է ձգուել։ Փաստն այս է. Ս. Էջմիածնի գրադարանի № 58 ձեռագրում կայ Գրիգոր կաթուղիկոսի այդ թղթի մի ուրիշ պատճէնը կայսրին գրած, այս պատճէնի մէջ յիշուած ժողովների շարքում կայ և Անտիոքի ժողովը, որը բռնում է շարքի մէջ վեցերորդ տեղը. ահա դասաւորութիւնը. 1) Նիկիայի ժողով Ի. կանոն. 2) Անկիւրիայի՝ Ի. կ. 3) Կեսարիայի՝ Ժ. կ. 4) Նէոկեսարիայի՝ Ի. կ. 5) Գանգրայ՝ ԻԳ. կ. 6) Անտիոքի՝ ԻԵ. կ. 7) Լաւոդիկիայի՝ ԾԵ. կ. 8) Սարդիկիայի՝ ԻԱ. կ. 9) Պօլսոյ Դ. կ.

(տինգ.) 10) Եփեսոսի՝ Զ. կ., (149—153 եր.)։ Եթէ սրանցից Կեսարիայինը իբրև չեղած ժողով դուրս ձգենք, մնացածները կլինեն Սխոլաստիկի և Դիոնէսիոս Կրտսրի ժողովածուների ժողովները։ Փաստն այն է, որ Գրիգոր կաթուղիկոսի վերոյիշեալ ժողովը երկու օրինակ ունի, մէկում, որը և տպագրուած օրինակն է, չկայ «Անտիոքի» և «օտար ս. Հարց» կանոնների յիշատակութիւնը, երկրորդ ձեռագիր օրինակներում, որ աւելի ընդարձակ է քան տպածը, կայ թէ Անտիոքի ժողովը և թէ այն օտար ս. Հարց անունները (Աթանաս, Գրիգոր Նիւսեայ, Բարսեղ Մեծ, Գրիգոր Նազիազանցին, Կիւրեղ Աղէքսանդրիացի) որոնց դաւանութիւնը ընդունում ենք։ Թէ ինչ է եղել պատճառը, որ օտար ս. Հարց անունները և Անտիոքի ժողովը ջնջուել են և եղած արձանագրութիւնը կրճատուել, յայտնի չէ, թէև ենթադրական մի քանի բան կարելի է ասել, բայց դրական նշանակութիւն ունենալ չեն կարող դրանք։ Ինչ որ վերաբերում է Կեսարիայի ժողովին, այդ մասին խօսել ենք նոյն ժողովի կանոնների արձանագրութեան մէջ։

Այս ժողովիս գլխաւոր նշանակութիւնը նրանումն է, որ ցոյց է տալիս թէ մեր 12-րդ դարի ս. Հարք ինչ Հայեացք են ունեցել օտար եկեղեցական Հայրերի և արտաքին ժողովների կանոնների վերաբերմամբ. մենք զարմանալով կտեսնէինք որ մեր կանոնագրքերը լի են կանոններով, այն ինչ նրանց վաւերականութեան, կամ մեր կողմից ընդունելութեան մասին ոչ մի խօսք չի ասուած ոչ ազգային ժողովում։ Այդ տարակուսանքը գոնէ փարատում է այս ժողովը, ցոյց տալով թէ ո՛ր արտաքին ժողովները կարող են աղբիւր Համարուել մեր եկեղեցական իրաւունքի Համար։ Եթէ այս ժողովումս որոշուէր մէկ մէկ թէ ո՛ր ազգային ժողովներն ենք ընդունում և ո՛ր Հայրերի կանոնները, կունենայինք փառաւոր Հիմնաքար պարզելու և ջոկելու այն անթիւ՝ անՀամար՝ աւելորդ՝ կցկտուր՝ վայրի-վերոյ կանոններ բովանդակող կանոնագրքերը. որոնք պարզել միմիայն ենթադրութիւններով և կողմնակի միջոցներով շատ դժուար է։

## ՍՍԻ 1204-Ի ՄԱՍՆԱՒՈՐ ԺՈՂՈՎԻ ՄԱՍԻՆ·

Այս ժողովը անվաւեր է և մեր եկեղեցական իրաւունքի աղբիւր կազմել չի կարող, որովհետև ազգի մեծամասնութիւնից մերժուել է երկու անգամ։ Սրա մասին խօսում ենք միմիայն նրա համար որ աւելի ևս պարզաբանուի մեր եկեղեցական իրաւունքի տեսակէտից այն խնդիրը, թէ ո՞վ է օրէնսդիրը Հայոց եկեղեցու, ազգային ընդհանուր ժողո՞վը, թէ՞ թագաւոր և կաթուղիկոս, կամ միայն կաթուղիկոս։ Այս ժողովը իւր հետ ունենալով Լոռու 1205-ի և Անու 1207-ի ժողովները ամենափառաւոր կերպով հաստատեց, վաւերացրեց այն սկզբունքը, որ Հայոց եկեղեցու մէջ միակ բարձրագոյն օրէնսդիր մարմինը կազմում է ազգային ընդհանուր ժողովը։ Այս ժողովի խնդիրը այսպէս բարձրացաւ։

Կիլիկիայի Լևոն թագաւորը և Դաւիթ կաթուղիկոսը ստանալով Վրաց զօրավար հայազգի Զաքարէ Սպասալարի խնդիրը՝ թոյլ տալու շարժական սեղան գործածել պատարագի համար, Վերափոխման և Ս. Խաչի տօնը Վրաց հետ կատարել, մասնաւոր ժողով արին և ցոյց տուին զօրավարին, 1) պատարագի շարժական սեղան ունենալ պատերազմի ժամանակ. 2) պատարագ մատուցանել սարկաւագներով. 3) պատարագ մատուցանել թէ կենդանիների և թէ ննջեցեալների համար. 4) Աստուածածնի և ս. Խաչի տօնը կատարել Վրաց հետ. 5) 2 ճրագալոյցները լուծել ձկնով և ձիթով. 6) Փրկչի և սրբերի պատկերները պատուել. 7) առանց դպրութեան աստիճան տալու սարկաւագութիւն չտալ. 8) կրօնաւորները առանձին ստացուածք չունենան, վանքի միաբան համարուել և միս չուտել։

Զաքարէ Սպասալարը ստանալով Հայոց թագաւորի և Հայոց կաթուղիկոսի և մասնաւոր ժողովի վճիռը, այնքան

Հեռատես գտնուեց, որ փոխանակ գործադրելու, յարմար դատեց Լոռում ժողով անել և այդ վճռուած խնդիրը ընդհանուր համաձայնութեամբ գործադրել արևելեան Հայաստանում։ Եւ ինչ եղաւ՝ թէ այդ ժողովում, 1205-ին և թէ 1207-ին, որոշուեց չընդունել Հայոց կաթուղիկոսի և Հայոց թագաւորի և մասնաւոր ժողովի կանոնները, համարելով դրանք Հայոց եկեղեցու ոգու և կարգերի դէմ։ Եւ այս վերջին երկու վճիռը մնաց անփոփոխ, չնայելով Զաքարէ սպասալարի ամենակարողութեան, ուժին, նրա բռնութիւններին և համանքներին։ Եւ ինչ էր ժողովներիս այդպիսի խիստ վճռի պատճառը, պատմիչների ասելով, այն, որ քահանայք գոչում էին՝ մենք չենք կարող այդ նոր կարգերը ժողովրդի մէջ մտցնել, մեզ քարկոծ կանեն։

Հարցն այն չէ, ժողովը խիստ վերաբերուեց թէ ոչ, կամ փոփոխութեան կէտերի մեծ մասը հակառակ չէին Հայոց եկեղեցու կարգերին, հապա այն, որ ժողովուրդը հաստատ կանգնած իւր պինդ հողի վրայ չի թողլ տալիս որ մասնաւոր անհատներ, կաթուղիկոս, թէ [թ]ագաւոր, թէ մի քանի եպիսկոպոսներ փոխեն կարգերը։ Ահա այս ժողովի հիմնական գաղափարը։

---

## ՍՍԻ 1243—46-Ի ԺՈՂՈՎԸ.

Հայոց եկեղեցական ազգային օրէնսդիր վերջին ժողովը եղաւ 1243—46-ին Սսում, նրանից յետոյ մինչև այսօր չենք ունեցել կանոնադիր ժողով։

Կիրակոս ականատես պատմագրի խօսքով, Կոստանդին Բարձրբերդցու օրով անկարգութիւններ էին մտել Հայոց եկեղեցու վարչութեան և գործերի մէջ, ժողովուրդը անտարբերութեամբ վերաբերւում էր դէպի կրօնական պէտքերը, եկե-

ղեցական պաշտամունքը։ Դրանց առաջն առնելու համար Կոստանդին կաթուղիկոսը 1243-ին Սսում հրաւիրեց՝ թագաւորի համաձայնութիւնը առնելուց յետոյ, եկեղեցականների և աշխարհականների մասնակցութեամբ և Հեթում թագաւորի ու նրա որդու ներկայութեամբ՝ մեծ ժողով, ուր սահմանեցին 25 կանոն։ Կանոններս կանոնական կոնդակով Կոստանդին կաթուղիկոսը հրատարակում է ի սփիւռս աշխարհի, նկարագրելով ժողով անելու կարիքը, հայոց աշխարհի անկեալ և քայքայուած վիճակը թէ նիւթականապէս և թէ բարոյապէս։ Կոնդակս սկսւում է այսպէս «Կոստանդին ծառայ Քրիստոսի և շնորհօք նորին կաթուղիկոս ամենայն Հայոց...։ Գնացաք... առ քրիստոսասէր թագաւորն մեր Հեթում, և մերով հրամանաւ և նորին ձեռնտուութեամբ ժողովեցաք զեպիսկոպոսունս և զվարդապետս և զմիանձունս և վանաց առաջնորդս, և զիշխանս և զիշխողս, արս երևելիս, և արարաք հանդէս մեծ, քննեցաք զպատուէր և զհրամանն Աստուծոյ, և Աստուծոյ մերձակայից առաքելոց և հայրապետաց, և գտաք զմեզ բազում մասամբք մոլորեալք և դատապարտք անպատասխանիք, և որքան կարացաք՝ աւաղեցաք զմեզ և ողբացաք։ Զկնի յոլով քննութեան՝ ամենեցուն կամակցութեամբ և ձեռնագրով, գրեցաք սահման և կանոն չափաւոր և դիւրընթաց...» (Կիրակոս պատմ. 178—180 եր.)։

Կոնդակիցս մի քանի ուշադրութեան արժանի կէտեր կարելի է քաղել, 1) որ ժողովների կանոնները յայտարարւում էր կաթուղիկոսի կանոնական կոնդակով. 2) որ 1243-ին արդէն «կաթուղիկոս ամենայն Հայոց»*) տիտղոսը ընդհանրացած էր, երևի Կիլիկիան կաթուղիկոսութեան ժամանակից, մինչև այդ «կաթուղիկոս Հայոց» կամ «Հայոց մեծաց» տիտղոսն էին կրում։ 3) ժողովը լինում է կաթուղիկոսի հրամանով և թագաւորի ձեռնտուութեամբ և ոչ թագաւորի հրամանով. և 4) թագաւորը և արքայորդիք մասնակցում էին ժողովում և երևում է՝ որ նախագահը կաթուղիկոսն էր։

---

*) Խաչիկ կաթուղիկոսը 972—992 թուերին ստորագրում էր «Կաթուղիկոս ամենայն Հայոց», տես նրա կոնդակը «Արարատ» 1867 թ.։

Նկատելու արժանին այն է, որ մեր ոչ մի կանոնագրքում այս ժողովի մասին ոչ մի յիշատակութիւն չկայ, որդեօք այս բաւական է ապացուցանելու՝ որ Հայոց այժմեայ կանոնագրքերը 1200 թուից առաջ գրուած էին, 1204-ի Սսի ժողովի մասին նոյնպէս ոչինչ չկայ։ Ի նկատի ունենալով որ կանոնագրքերում կաթուղիկոսների ցանկը Լուսաւորչից հասցրած է մինչև մեր 997 թիւը, ենթադրելի է, որ մեր ձեռքի տակ ունեցածներս գրուած են մինչև 1000 թուականը։—

Ահա և կանոնները որ քաղում ենք Կիրակոս պատմագրից·

1. Ամենայն ձեռնադրութիւն յեկեղեցի՝ որ է պարգև Հոգւոյն Սրբոյ, զոր տայ արժանաւորացն, առանց արծաթոյ լիցի՝ ըստ կանոնաց. զի այն ախտ Յուդայի և Սիմոնի կախարդի է, որ խոտեցան, և ոչ միաբանեցաւ ընդ նոսա շնորհն, որ ի տեղիս տեղիս վասն աղքատութեան լուծեալ է և տգիտութեան։ Այսուհետև արժանաւոր են միայն և գիտունքն առցեն զաստիճան եպիսկոպոսութեան մեծաւ քննութեամբ և վկայութեամբ և թեմին կամակցութեամբ առանց կաշառաց, հասակաւ մի պակաս քան զերեսուն ամն։

Ձեռնադրութիւնը, որը միայն արժանաւորների վերաբերմամբ պիտի լինի, առանց փողի (կաշառքի) պիտի կատարուի։ Սրանից յետոյ միայն արժանաւորները առնեն եպիսկոպոսական աստիճան՝ մեծ քննութեամբ և վկայութեամբ և թեմի կամակցութեամբ առանց կաշառի, և եպիսկոպոսացուն էլ պիտի լինի ոչ պակաս քան երեսուն տարեկան։

Տես Նիկ. 4, Անտ. 19, Լաւ. 13, Բ.-առ. 29, Սահակի կանոններ։

2. Իսկ առաջին գործ եպիսկոպոսին, որ զուսուցիչսն և և զուսումնականսն ուսման եկեղեցւոյ ինքն սահմանեսցէ մեծաւ զգուշութեամբ և հոգաբարձութեամբ, անգայթագղ և գիտունք և ուսուցիչք եղիցին տղայոց։

Եպիսկոպոսի առաջի գործն է մեծ զգուշութեամբ և հոգացողութեամբ տղայոց համար աւսումնական ուսուցիչներ նշանակել եկեղեցական ուսմունքները դասաւանդելու նրանց։

3. Ապա եկեալն ի չափ հասակաւ և ուսմամբ և սրբութեամբ ածցէ յաստիճան վկայութեամբ անձանց իւրեանց և սնուցողացն առանց արծաթոյ, տիօք մի պակաս քան զքսան և եօթն ամն երէցն և սարկաւագն։

Ապա այդ ուսում առնողներից (2 կ.) վարքի սրբութեամբ ուսմամբ աչքի ընկնողներին և չափահաս եղողներին առանց փողի եպիսկոպոսը աստիճան տայ սնուցողների և իրանց շրջապատող անձանց վկայութեամբ, թէ սարկաւագի և թէ քահանայական աստիճան ստացողը պիտի լինի ոչ պակաս քան 27 տարեկան։

Նէոյկեսարիայի 17 կանոնով քահանան 30 ամեայ պիտի լինի ըստ օրինակի Յիսուսի. Զ. րդ. տիեզ ժող. 14, 15 կանոններով սարկաւագը 25 ամեայ, քահանան 30 ամեայ պիտի լինին։ Ըստ իս մեր 27 տարեկան թիւը պիտի գրչի սըխալ լինի, տառերով գրած ԻԵ. և ԻԷ. միմիանց հետ շըփոթւում են, երևի և ԻԵ.-ի փոխարէն ԻԷ. է դուրս եկել. այնպէս որ մեր կանոններով 30 տարի նշանակւում է եպիսկոպոսի, 25—27—քահանայն և սարկաւագի համար։

4. Իսկ քահանայքն զպատկն և զկնունքն նօթութեամբ արասցեն յեկեղեցիս և հաղորդեսցեն. բայց թէ մահու երկիւղ իցէ երախային, յորժամ և իցէ՝ արասցէ առանց դրամի։

Քահանաները պսակն ու կնունքը անօթի (չկերած) պիտի կատարեն եկեղեցում և հաղորդուին. բայց եթէ մահուան վտանգի մէջ գտնուի երախան, կարելի է և կերած ժամանակն էլ մկրտել և առանց փողի (դրամի)։

*Պսակի և մկրտութեան կատարման ժամանակ կանոնս պահանջում է որ քահանան լինի անօթի հաց չկերած, որովհետև առաջին՝ որ ս. խորհուրդը կատարուի երկիւղածութեամբ և ծոմով, և երկրորդ՝ որ քահանան պիտի նոյն օրը հաղորդուի, այդ պատճառով կանոնս պահանջում է քահանայից ամենայն զգաստութեամբ և սրբութեամբ կատարել իւր պաշտօնը։ Երևի թէ հներում երկու խորհուրդն էլ առաւօտեան էին կատարում, այժմ էլ գիւղերում մկրտութիւնը համարեա միշտ առաւօտներն են կատարում. իսկ պսակը երեկոյեան ճրագավառով լուցկիներով։ Մահուան վըտանգի դէպքում թոյլ է տալիս հաց կերած մկրտել, միայն առանց փողի, թէ ինչու, անորոշ է. արդեօ՞ք նրա համար որ կերած է մկրտութիւն անում։*

5. Ամենայն քահանայագործութիւն՝ կնունք և պսակ և թաղումն երկիւղիւ եղիցի՝ առանց զրուցի և ծաղու, մեծաւ յուսով և աղօթիւք մերձակայից։

*Ամեն տեսակ քահանայագործութիւն՝ մկրտութիւնը թէ պսակը թէ թաղումը երկիւղով՝ առանց խօսքի ու ծաղրի լինի, յուսով և շրջապատողների աղօթքով։*

6. Աւազանն հաստատուն լիցի և անշարժ, և վարագուրաւ ծածկած. զի մեծ է և խորհուրդն։

*Մկրտութեան աւազանը անշարժ լինի և վարագուրով ծածկած։*

Տես Բ.-Դւ. 15, Ե.-Դւ. 13, Պար. 8։

7. Զպսակն ընտրութեամբ արասցեն՝ վեց ծննդովք հեռացեալ յազգակցութենէ արեան. փեսայն մի պակաս քան դշորեքտասան ամն, և հարսն քան զերկոտասան։

Պսակը վեց աստիճանով հեռացած արիւնակիցների մէջ չի կարող լինել. փեսան տասն և չորս տարեկանից, և հարսնացուն տասներկու տարեկանից պակաս չպիտի լինի։

Այս կանոնս դարձաւ ամենանշանաւորը պսակի խնդրի նկատմամբ արիւնակցական ազգակցութեան մէջ և մինչև այսօր էլ իւր ոյժը ունի. թէև նրանից առաջ Շնորհալին 10 աստիճանի մէջ թոյլ տուաւ ամուսնանալ արիւնակից ազգականներին, և դրան հետևեցին գուցէ Յակոբ Ղրիմեցի և կանոնագիրք արտագրողները, բայց ժողովուրդը բոլորովին հեռու մնաց 10 աստիճանից և մինչև այսօր էլ «օխտը պորտը» համարւում է վերջնական արգելական կէտը և թոյլատրական աստիճանը։ Կանոնս դժբախտաբար ոչինչ չի ասում խնամական և կնքահայրական աստիճանների մասին։

Տես Ձաի. 12, 13, Պար. 16, Բարս. 68, Բ.-առ. 19։

Փեսացուի համար կանոնս նշանակում է 14 տարեկան հասակը, աղջկայ համար 12, մեր միւս կանոններում թուերով որոշում չկայ այս մասին, միայն ասւում է, չափահասներին միայն թոյլ է տրւում պսակուելու և ո՛չ տղայոց. տղայ ասելով մինչև քանի՞ տարեկան է հասկացւում, անորոշ է։ Ռուսաց օրէնքում Կովկասի բնակիչների նկատմամբ ասւում է 15 տարեկան տղան, 13 տարեկան աղջիկը պիտի լինի, որ իրաւունք ունենան պսակուելու։

Տես Բ.-Դւ. 24, Սահ. և Շնորհալու կանոններ։

8. Օտար յաշխարհէ եպիսկոպոս կամ վարդապետ կամ երէց, կամ գիրոյ*) տէր առանց թեմին եպիսկոպոսին մի՛ շրջեսցին, կամ շինեսցեն. այլ նորա հրամանաւ ըստ պատշաճի։

Ուրիշ թեմի մէջ դրսի եպիսկոպոս կամ վարդապետ կամ երէց իրաւունք չունին շրջելու կամ շէնքեր շինելու (եկեղեցական) առանց տեղական առաջնորդի հրամանի։

Տես Բ.-առ. 15, Նիկ. 15, 16։

*) Անորոշ բառ է։

Շրջակայել նշանակում է հանգանակութիւն անել, կամ քարոզութեան դուրս գալ, կամ Ս. մասունքներ շրջեցնել։

9. Գրոց դասասացքն բազմաց վկայութեամբ լիցի, որ գիտունք լինին, և ամենայն գրոց վարք և տեղեակ, և փորձ ամենայնիւ. նմանապէս և գրոց աշակերտ ընտրութեամբ նորին և առաւել փորձիւ և վկայութեամբ կատարելոց։

Ս. Գրքի ուսուցիչները պէտք ընտրուին շատերի վկայութեամբ, լինին գիտուն, վարժ և տեղեակ գրոց և փորձուած անձինք։

10. Եւ հրամայէ եպիսկոպոսն զսուրբ գիրս եկեղեցւոյ գրել արուեստաւորաց և ուղղափառաց և գիտնոց։

Եպիսկոպոսի հրամանով Ս. Գիրքը պէտք արտագրեն հմուտ, ուղղափառ և գիտուն մարդիկ։

Այս կանոնս սահմանում է՝ որ անգրագէտ, կիսագրագէտ, թերի և վատ ձեռք ունեցողները Ս. Գիրքը չարտագրեն սխալներով և աղաւաղումներով։

11. Երկիցս անգամ շրջեսցի եպիսկոպոս ի տարւոջն յիւր թեմն և հանդէս արասցէ իւր հօտին, և սուրբ գիտուն քորեպիսկոպոս դիցէ, որ զեկեղեցոյ դատաստանն ըստ կանոնաց առնել մարդասցէ երկիւղած և անագահ։

Առաջնորդը երկու անգամ պէտք շրջագայութեան ելնի տարին և իւր հօտը աչքի անցնի, գիտուն և սրբակրօն քորեպիսկոպոս էլ պէտք նշանակի, որ եկեղեցու դատաստանը կանոնների համաձայն կարողանայ անել երկիւղածութեամբ և առանց ագահութեան (կաշառքի)։

Քորեպ. մասին տես Անկ. 15, Նէո. 14, Անտ. 10, Պար. 4, 21։

12. Ծէր և գիտուն խոստովանահայրս կարգեսցին, որ յամենայն կիրակէի առանց դրամի ի խոստովանութիւն կոչեսցէ չափաւորութիւն յանցանաց. և քահանայքն խոստովանահարցն հրամանաւ զիւրեանց ժողովուրդն զարժանաւորսն հաղորդեսցեն առանց դրամի։

Ծեր և գիտուն խոստովանահայրեր նշանակեն, որոնք ամեն կիրակի խոստովանութեան կանչեն առանց փողի ժողովրդականներին, և քահանաներն էլ առանց դրամի հաղորդութիւն տան սրանց։

13. Զհաղորդն առանց բուրվառի և մոմեղինի մի՛ տարցին առ հիւանդն, այլ մեծաւ երկիւղիւ. իսկ ժողովուրդքն չեն յիւրեանց հրամանքն, ո՛ւմ կամին ծուխ լինել, այլ որպէս եպիսկոպոսն հրամայեսցէ։

Հաղորդութիւնը հիւանդի մօտ տարուի մեծ երկիւղով, բուրվառով և մոմեղէնով։ Իսկ ժողովուրդը իրանց գլխու, ում կամենան՝ նրան ծուխ դառնալ չեն կարող, այլ եպիսկոպոսի հրամանով պիտի վարուին։

Դուինի ժողովների կանոններում տեսանք, որ ծխաբաժանութիւնը չի ընդունւում, այլ առաջարկւում է բաւականանալ ժառանգաբար ստացած բաժնով և անտրտունջ հովուել ժողովուրդը։ Այստեղ ծխաբաժանութիւնը թոյլատրւում է, միայն ոչ ժողովրդի ցանկութեամբ, այլ եպիսկոպոսի։ Կանոնս սահմանափակում է ժողովրդի իրաւունքը, և ընդարձակում առաջնորդինը. ժողովուրդը մինչև այսօր էլ ընտրողն է քահանայի ծուխը. առաջնորդը չի կարող իւր ցանկութեամբ քահանայ կարգել ժողովրդի վրայ, որովհետև այդ հակառակ կլինի մեր ամբողջ եկեղեցական կազմին և կարգերին։

Տես Բ.-Դւ. 1, 2, Բ.-Դւ. 13, Գ.-Դւ. 5։

14. Առաւել ջան տարցեն եպիսկոպոսք և քորեպիսկոպոսք զպոռնիկսն և զշնացողսն, զհմայս և զամենայն յանցաւորսն գեհենին երկիւղիւ ի դարձ ածել: Իսկ զանդարձսն մարմնաւոր պատուհասիւ և հոգևորաւ խրատել և տուգանել, մանաւանդ զայնպիսիսն, որ այր և կնոջ մէջ մտցեն, կամ բոզ ունիցին կին, կամ զկին թողուն զօրինաւոր և առ բոզս երթան, կամ ատելութեան պատճառաւ թողուն զկանայսն առանց բանի պոռնկութեան. զայսպիսիսս անողորմ տուգանօք խրատեսցեն, և թէ պատուաւոր մարդ է, և ընդդէմ առէ եկեղեցւոյ օրինաց, թագաւորն խրատեսցէ յատնի (յատենի) զմեղքն (զմեղաւորքն). և իշխանք մեղադրանօք, եթէ ոչ առնեն զայս, և նզովք. և եթէ կին լրբի և մարդ խաբէ կանամբի կամ ազապ, խրատ առցէ յերեսն:

Եպիսկոպոսներն և քորեպիսկոպոսներն աւելի ջանք անեն պոռնիկներին և շնացողներին, հմաներին և բոլոր յանցաւորներին ուղղութիւն բերելու գեհենու (դժոխքի) երկիւղով: Որոնց վրայ այս երկիւղը չի ազդիլ, մարմնաւոր և հոգևոր պատիժներով խրատել նրանց և տուգանքի ենթարկել, մանաւանդ այնպիսիներին, որոնք մարդու և կնոջ մէջն են ընկնում և նրանց դժբաղտացնում, կամ մարդիկ, որոնք բոզ կնիկ են բերում, կամ օրինաւոր կնոջը թողնում են և բոզերի մօտ գնում, կամ առանց պոռնկութեան պատճառի ատելութեան համար թողնում են իրանց կանանց. այնպիսիներին անողորմ (խիստ) տուգանքներով պիտի խրատեն, և եթէ պատուաւոր (ազնուական) մարդ է, եկեղեցու օրէնքներին ընդդիմանում է, թագաւորը այդպիսի մարդուն թող խրատի ատենի մէջ—բազմութեան առաջ և իշխաններն էլ մեղադրեն, եթէ չէլի շարունակի իրան յանցանքը, նզովքի ենթարկուի: Իսկ եթէ կինը լրբութիւն կանի և կանամբի կամ ազապ մարդու իրան կմօտեցնի թող յանդիմանուի (ծեծուի, ապտակ ուտի)՛:

Տես Դ.-Դւ. 4, Պար. 3:

15. Ամենայն պահք ըստ կանոնաց առանց ձկան և ձիթոյ և գինւոյ, բաց ի հարկէ հիւանդութեան, առաւել աղ ու հացիցըն, և ուրբաթին և չորեքշաբաթին, որ Քրիստոսի չարչարանաց աւուրքն են, որ զայս լուծանէ, տուգանեսցեն և յաղքատս

*տայցեն, և պահօք վճարեսցին յԱստուծոյ։ Նախ քան զայս յառաջ քան զամէնն զայս եմք հոգացեալ առաջի արքային Հեթմոյ և հօր իւրոյ Կոստանդեայ և ամենայն իշխանացն, և բանադրանօք բանադրեալ յամենոյ վերայ, որոյ օգնական լինին եկեղեցւոյ, և յամենայն տեղիս ի մեծ և ի փոքր յիշոց, աւագ դնեն ի դարպաս, ի քաղաք, ի գիւղս և յագարակս, և զանօրէն յիշոցասացսն, զբարկութիւն Աստուծոյ շարժողսն, և զաններելի անօրէնսն, որ անարգին զհաւատսն, զստեղծող, զկնունք, զհրեշտակ, զքահանայ, զբերան, զերես, զգերեզման, և զայլ այսպիսիս զնոր բուսեալ չարիսդ, զայնպիսեացն զլեզուսն հատցեն, և կամ ծակեսցեն, և լար ի ներս ածցեն, և նախատանօք ի շուրջ ածցեն օր մի, և ըստ գոյնտուգանս առցեն, և յաղքատս տայցեն։*

Բոլոր պասերը, մանաւանդ մեծ պասը, ուրբաթն ու չորեքշաբթին կանոնների համաձայն պիտի պահել առանց ձէթի (իւղի), ձկան և գինու, ով լուծի պասը տուգանքի ենթարկուի և տուգանքը աղքատներին բաժանուի։ Հէնց ամենից առաջ Հեթում թագաւորի և նրան հօր ժամանակ և նրանց ու իշխանների դիմաց բանադրանք դրինք եկեղեցուն չօգնողներին և հայհոյողների վրայ, աւագներ նշանակուեցին ամեն տեղ իբրև հսկողներ, որ եթէ տեսնեն մէկին հայհոյելիս՝ հաւատը, ստեղծողին, կնունքը, հրեշտակը, քահանան, գերեզմանը, սրանց անարգողին և յիշոց տուողին բռնեն լեզուն կտրեն, կամ ծակեն, լար քաշեն միջովը, նախատանքներով մի օր շրջեցնեն, գոյքի համեմատ տուգանք առնեն և աղքատներին բաժանեն։

Տես Բ.-առ. 69։

*16. Թէ քահանայ գտանի ի վերոգրեալ մեղսդ, կրկին պատիժ ընկալցի և տանջեսցի կարգաւն հանդերձ։*

Եթէ քահանան վերոգրեալ մեղքերը կատարի, երկու անգամ աւելի խիստ պատիժ կրի և տանջուի ինչպէս հարկաւորն է։

17. Քահանայ որ զատ յեկեղեցւոյ գործոյ, այլ գործս առնէ՝ նոտարութիւն կամ որսորդութիւն, զժողովուրդսն ի բաց առցեն ի նմանէ. նմանապէս զանուսումն երիցանց, մինչ լաւ ուսցին, և զանարժանիցն ևս առցեն։

Այն քահանան որ բացի եկեղեցու գործերից՝ ուրիշ բաներով է պարապում, նոտարութիւն կամ որսորդութիւն է անում, նրանից խլեն նրան ժողովուրդը և տան ուրիշ քահանայի, նոյնպէս վարուեն և անուսում քահանաների և անարժանների հետ։

Տես Բ.-առ. 6, Բ.-Դւ. 5։

18. Քահանայն ի տարւոջն յեկեղեցին ժողովեսցէ զարսն առանձինն, և զկանայսն առանձինն, և որիշ զկուսան աղջկունսն, և որիշ զտղայսն և զմանրէկսն և ըստ իւրաքանչիւր պատշաճի խրատեսցէ աղաչանօք և սաստիւ. և իմասցի իւրաքանչիւրոցն զվարքն, և զիտեսցէ հանապազ. և թէ ինքն չէ բաւական, ի ձեռն այլ կատարելոյ արասցէ, որպէս ասէ սուրբն Աթանաս յիւր կանոնքն։

Քահանան տարուայ մէջ իւր ժողովրդին՝ կանանց և մարդկանց, մեծին ու փոքրին պիտի կանչի եկեղեցի և խրատի նրանց, նրանց վարքն ու բարքն իմանայ, եթէ ինքը կը դժուարանայ, ուրիշ աւելի պատրաստ անձի ձեռքով անի, ինչպէս որ ս. Աթանասը ասում է իւր կանոններում։

19. Ժողովրդականքն յօժարութեամբ և աղաչանօք տացեն զհասս քահանայիցն յամենայն արմատոց պտուղս, և զկարգեալ բաժին մատաղին, և պսակին ընծայիւք, և թաղմանն հանդերձ, և ժամու դրամ, ոչ գին պատարագին, այլ երիցուն հանդերձի և կերակրոյ, որ աղօթից և պատարագի պարապի յեկեղեցին։

Ժողովուրդը պիտի սիրով և յօժարութեամբ տայ քահանաների հասերը բոլոր պտուղներից և մատաղի նշանակուած

**բաժինը, և պսակի ընծաներից և թաղման շորը և ժամոցը, ոչ թէ իբրև արած պատարագի գին, այլ քահանայի շորի և կերակրի փողի վարձ իւր քաշած նեղութիւնների։**

Նկեղ. տուրքի մասին տես Գան. 7, Բ.-առ. 3, 4, Գան. 8, Բ.-Դւ. 1, 2, 3, 4, 13, 18, Դ.-Դւ. 8, 9, Պարտ. 21։

20. Երիցունք ըստ ժողովրդեանն ծառայեսցեն եպիսկոպոսին, սահմանեալ հասիւն, և ընծայիւք ըստ պատշաճին։

**Քահանաները պիտի իրանց եկամուտի համեմատ էլ բաժին հանեն եպիսկոպոսին իրանց հասերից և նուէրներից։**

21. Եպիսկոպոսին ծառայեսցեն զհայրապետական աթոռն կարգեալ հասիւն և ընծայիւք արժանաւորին ըստ կանոնաց. զի սուրբ Լուսաւորիչն գրեալ է թէ քահանայքն զժողովուրդն տասանորդեսցեն, և եպիսկոպոսք զքահանայս, և հայրապետք զեպիսկոպոսունս, արդ եթէ զայն շառնէք, ապա զչափաւորսն և զպակասն, զոր գրեցաք, խնդութեամբ տուք, իբրև զօրհնութիւն և մի իբրև զագահութիւն. այլ աթոռին հաստատ և անկարիք մնայ, և եկեղեցիքն պայծառ, և Աստուծոյ օրհնութիւնն խառնի յարդիւնս արդարութեան ձերոյ, զի զայն Աստուծոյ կուտայք, և ոչ մարդոյ։

**Եպիսկոպոսներն էլ հայրապետական աթոռին պատկանելիք հասը և ընծաները կանոնների համեմատ տան. որովհետև Լուսաւորիչ գրել է թէ քահանաները ժողովրդից տասանորդ առնեն, եպիսկոպոսները քահանաներից և կաթուղիկոսն էլ եպիսկոպոսներից։ Եթէ այս չէք կատարում, գոնէ չափաւոր կերպով լրացրէք ձեր տուրքը, ուրախութեամբ ուղարկեցէք իբրև օրհնութիւն, այդ Աստուծոյ էք տալիս ոչ մարդկանց։**

22. Զայն երկու աղօթքն, յորոյ վերայ Սուրբ Աստուած ասեմք՝ զփառք ի Հայր և յՈրդի և ի Սուրբ Հոգին, մի ասարտէք. զի մի յԵրրորդութեան վերայ թուեսցի խաչն. զկատարած

լոյր ձայնիցն ասել պիտի, զոր միշտ ի բարձունս առաքեսցուք ամենազօր տէրութեանդ՝ Քրիստոս Աստուած. այժմ և...: Զգոհանամքին վերջքն՝ լիցուք տաճար և բնակարան Աստուածային շնորհացդ, և գոհութեամբ փառաւորեսցուք զքեզ Քրիստոս. աժմ...:

Երկու աօթքները «Գոհանամք զքէնն և Լոյր ձայնից մերոց»-ը, որոնց վերջում երգւում է «Ս. Աստուածը, պետք վերջացնել «Քրիստոս Աստուած մեր»-ով, որպէս զի հասկացուի թէ «խաչեցարն» վերաբերւում է Քրիստոսին և ոչ երրորդութեան:

«Ս. Աստուած»-ի մասին տես Ն.-Դւ. 20:

23. Ի Փռանգաց գրեալ են առ մեզ, թէ զՏեառն եղբօր հրամանն ընդէ՞ր ոչ առնէք, զհիւանդն ի ժամուն մահու օրհնել, ձիթով օծանել, որ թէ մեռանի՝ օծումն լինի թաղմանն, և թէ ապրի՝ լինի ի քաւութիւն մեղացն և պատճառ առողջութեանն. և գիտէք, որ Օձնեցին Յովհան՝ որ զատեալ է զմեզ յազգացդ, գրեալ է՝ որ առնէք. և պարտ է առնելն, և արարէք ստուգութիւն. միայն զգուշասցի քահանայն, և զձէթն սակաւ օրհնեսցէ, որ աւելի չգայ, և նզովք առցէ յԱստուծոյ և ի մէնջ. և լինի պատճառ գայթակղութեան. զայս պատեհ տեսաք, և գրեցաք յետոյ, և հարկաւոր. ողջ լիջիք տէրամբ:

Լատինները մեզ գրել են, թէ Տեառնեղբօր Հրամանը ինչու չէք կատարում, ինչու մահամերձ հիւանդին չէք օրհնում, ձիթով չէք օծում, որը եթէ մեռնի՝ օծումը կհամարուի թաղման համար եղած, եթէ ապրի, օծումը կլինի մեղքերի քաւութիւն և առողջութեան պատճառ. և գիտէք, որ Օձնեցին զատելով մեզ այդ ազգերից, գրել է որ այդ կատարենք և պէտք է կատարել. միայն քահանան զգուշանայ որ աւելի ձէթ չօրհնի, եթէ ոչ Աստուծուց և մեզնից նզովք կստանայ և պատճառ կդառնայ գայթակղութեան: Այս յարմար դատելով գրեցինք. ողջ մնաք:

Սրանով վերջանում են Սսի ժողովի կանոնները:

*Օծման իւղի մասին Ստեփաննոս Օրբելեանը մի բնորոշ դատողութիւն է տալիս. «Դարձեալ թէպէտ առաքելական իմանամք կարգ զձէթ օրհնելն հիւանդաց և մեղուցելոց՝ ի ի հարցն ոչ ունիմք սովորութիւն աւանդեալ մեզ, կարծեմ և համարձակութիւն յոյժ մատուցանէ ժրագունիցն ի մեզս՝ մեղօք ապականել զոգիսն յուսով ձիթին, և սակաւ դրամիկ մսխիլ, ձէթ օրհնել և արդարանալ...։ Բայց չէ զանկատար իւղն, որ վասն երեխայիցն սահմանէք ընդունելի է». 336 եր.։*

Տես Ե.-Դւ. 11։

*Տպագրուած «Կիրակոս Գանձակեցու» մէջ յիշուած այս* 23 *գլուխը համեմատելով Ս. Էջմիածնի գրադարանի ձեռագիր* № 1704, 1705, 1706 *համարների հետ, բոլորովին նոյն է բովանդակութեամբ, միմիայն տարբեր են սրանց մէջ կանոնների քանակը,* 23, 24, 25, *մէկի մէջ մի կանոնը երկու է արած, մի ուրիշ տեղ երկու կանոն միացրած և այլն։*

*Թէ այս ձեռագրերի և թէ տպագրուածի կանոնները տարբեր են Զամչեանի և նրան հետևող Աբէլ եպիսկոպոսի գրած կանոններից։ Ես հետևեցի տպագրուածին և այս ձեռագրերին որոնցից մէկը գրուած է* 1664 *թուին, միւսը* 1720-*ին, երրորդը թիւ չունի։*

---

## ԼԱՑԻՆԱՍԷՐ ԿԱԹՈՒՂԻԿՈՍՆԵՐ ԵՒ ԺՈՂՈՎՆԵՐ 1238—1361.

*Յունաց միաբանութեան հարցը վերջանալուց յետոյ, ԺԳ. դարում սկսուեց Հռոմի եկեղեցու հետ միանալու խնդիրը։ Ըստ Վարդան պատմագրի,* 1251-*ին, Իննովկենդէոս Դ. Պապը առաջարկեց Կոստանդին Հայոց կաթուղիկոսին և Հեթում թագաւորին ընդունել Հռոմի դաւանած վարդապետութիւնը Հոգւոյն Սրբոյ բղխման մասին «ի Հօրէ և յՈրդւոյ»։*

Կաթուղիկոսը և թագաւորը ճնշուած քաղաքական հանգամանքներից Պապի գերազօրութիւնը տեսնելով արևմտեան աշխարհներում, ժողով են գումարում և հարցը քննութեան առաջարկում։ Եւ այսպէս սկսւում են ժողովների միջոցով քննել դաւանաբանական սկզբունքներ, որոնք Գրիգոր Անաւարզեցու ժամանակ (1293—1307) հետևեալ պարզուած կերպարանքն են ստանում ինն կէտերով. Ա.—բաժակը ջուր խառնել, Բ.—խաչեցարը վերցնել, Գ., Դ., Ե., Զ., Է.—տօները, պասերը, մաշտոցը, ձեռնադրութիւնը երեկոյեան և առաւօտեան ժամերգութիւնը փոխել և լատինացը մտցնել. Ը.—երախայութեան իւղը գործադրել, Թ.—հիւանդաց օծումը կատարել։ Այս կէտերը ընդունելու համար մի քանի ժողովներ են անում թագաւորները և կաթուղիկոսները և սըրանց ճնշմամբ ժողովները ընդունում են այդ դաւանաբանական փոփոխութիւնները։ Բայց արևելեան Հայաստանը Սիւնեաց աշխարհի և Լոռու նահանգի եպիսկոպոսների գըլխաւորութեամբ ամենաջերմ պաշտպան են հանդիսանում ժողովրդական եկեղեցու և կատաղի հակառակորդ լատինամոլ կաթուղիկոսների, թագաւորների և ժողովների։ Ամենափառաւոր ժողով արին արևելեան Հայերը Սիւնիքում, ուր մի խիստ պատասխան գրեցին կաթուղիկոս Անաւարզեցուն, յորդորելով պինդ պահել հայրաւանդ կարգերը և սովորութիւնները և վերջում աւելացնելով աւելի լաւ է մեր պապերի հետ դժոխք գնալ՝ քան օտարների հետ արքայութիւն։ «Եւ ընդէր է երկայնել մեզ զբանս, գրում է Սիւնիքի ժողովը Ստեփաննոս Օրբելեանի բերանով, հաւան եմք մեք ընդ հարսն ի դժոխս իջանել և ոչ ընդ Հոռոմոց յերկինս ելանել։ Արդ այդ չափ և այդքանիւք բաւականասցուք բանիւք»։ «Եւ թէ թագաւորական սաստիւ պատժէք զմեզ՝ մեք պատրաստ եմք ի տանջանս յաքսորս և ի բանդ, ի մահ և ի մեռանել ի վերայ սուրբ և առաքելական հարցն աւանդից»։ Չնայելով արևելեան Հայաստանից եկած այդպիսի բողոքներին, Կիլիկիայի թագաւորները և կաթուղիկոսները անընդհատ ժողովներ անելով ընդունում էին Անաւարզեցու 9

ծիսական փոփոխութիւնները. այն ինչ բուն ժողովուրդը և հոգևորականութիւնը ուշք չդարձնելով թագաւորի խիստ բռնի միջոցներին շարունակում էին իրանց լուսաւորչաւանդ կարգով ընթանալ. բանը այնտեղ հասաւ, որ Կարինում Գրիգոր եպիսկոպոսը կատարելով թագաւորի և կաթուղիկոսի հրամանը պատարագի ժամանակ ջուր էր խառնել բաժակի մէջ, ժողովուրդը լսում է, յարձակւում է եպիսկոպոսի վրայ և տեղն ու տեղը սպանում է: Երուսաղէմի Սարգիս եպիսկոպոսը քաջութիւն է ունենում ոտի տակ տալ ազգատեաց կաթուղիկոսի հրամանը: Եգիպտոսի Ամիրայի պաշտպանութեամբ կաթուղիկոսի իրաւասութիւնից դուրս է գալիս և իւր թեմը բոլորովին անջատում Կիլիկիայից անկախ հրատարակելով: Ժողովուրդը ամեն տեղ ցոյց է տալիս իւր տոկունութիւնը և ոյժը, ստիպելով իւր հոգևորականներին չշեղուել նախնաւանդ սովորութիւններից և պինդ պահել այն՝ ինչ որ ազգային ժողովրդական է: Լատինական շրջանն ամենափառաւոր ապացոյցը տուաւ Հայ եկեղեցու ժողովրդական լինելուն, եթէ ժողովրդի երկիւղն ու վախը չլինէր շատ հոգևորականներ գուցէ ընդունէին կաթուղիկոսի և թագաւորի հրամանը: Վերջապէս ժողովուրդը ստիպեց Արտազեցի Մեսրոպ կաթուղիկոսին ժողով անել 1361-ին Սսում և վճռել ընդհանուր համաձայնութեամբ, թողնել ծիսական փոփոխութիւնների խնդիրը, մէջից հանել 9 կէտերի ընդունելութեան հարցը, պինդ պահել հայոց եկեղեցու կարգ ու կանոնը և չշեղուել հարց գծած շաւղից: Սրանով և վերջացաւ լատինասէրների պաշտպանած միութեան հարցը առանց մի շօշափելի արդիւնքի, բացի գժտութիւններից, կռիւներից, վէճերից, որոնք ամեն տեղ սերմանուելով մեծ աղմուկների տեղիք տուին և առաջացրին փոքրիկ խմբերով կաթոլիկ հայ համայնքներ, որոնց գոյութիւնը և զարգացումը շարունակւում է մինչև այսօր:

Կիլիկիայի կաթուղիկոսութիւնը գնալով օրէ օր քայքայւում էր, բարոյապէս ընկնում, վերջը այն դրութեան հասաւ, որ ազգային 1441-ի ժողովը անհրաժեշտ համարեց

կաթուղիկոսական աթոռը տեղափոխել Ս. Էջմիածին։ Այսպիսով 989 տարուց յետոյ Էջմիածինը նորից ընդունեց Լուսաւորչի փոխանորդներին՝ իւր հարազատ գահակալներին իւր գիրկը և դրանով ազատեց մեր եկեղեցին օտարամոլական միտումներից։

---

## ԵՐՈՒՍԱՂԷՄԻ 1651 ԹՈՒԻ ՄԱՍՆԱՒՈՐ ԺՈՂՈՎԸ.

Ժամանակակից պատմագիր Առաքէլ Դաւրիժեցին պատմում է որ Փիլիպպոս կաթուղիկոսը շրջագայութեան դուրս գալով, այցելեց և Երուսաղէմ, 4 ամիս այստեղ կացաւ, ս. Յակոբոսի տաճարի յատակը սալարկեց և վերջերում էլ Սսի կաթուղիկոսի և Երուսաղէմի փոխանորդի հետ մասնաւոր ժողով արաւ և մի քանի կանոններ սահմանեց։ «Յորոյ (այսինքն կաթուղիկոսի) քրիստոսածաւալ քարոզութիւնն և հոգեբուղխ վարդապետութիւնն քաղցրացեալ հանուր ժողովն գումարեալ, եկեղեցականք և աշխարհականք, յորս էին գլխաւորք՝ կաթուղիկոսն Սսոյ տէր Ներսէս, և առաջնորդն Երուսաղէմի Աստուածատուր վարդապետն, միաբանութեամբ խոնարհեցան ի հրամանս հայրապետին Փիլիպպոսի, և հաստատեցին կանոնական բանս երեքտասան գլուխ, զորս համառօտիւ նշանակեցից աստէն»։

1, Որոց առաջինն է սէր և միաբանութիւն երկուց աթոռոց կաթողիկոսացն Էջմիածնի և Սսոյ, և իւրաքանչիւր կաթուղիկոս զիւրոյ վիճակի նուիրեալն ձեռնադրեսցէ և մի զայլոյ. և թէ դէպ լինիցի զի ձեռնադրեսցէ յայլմէ վիճակէ զոք, յիւրում վիճակին տեղաւորեսցէ զնա, և ձեռնադրեալն՝ թէ յայնմ կաթուղիկոսի վիճակէ փոխեսցի յայլ կաթուղիկոսի վիճակ, անընդունելի լիցի։

Էջմիածնի և Սսի աթոռների մէջ սէր և միաբանութիւն լինի. իւրաքանչիւր կաթուղիկոս իւր վիճակի նուիրեալ անձանց ձեռնադրէ միայն և ո՛չ միւսի վիճակի. եթէ պատահի որ միւսի վիճակից մէկին ձեռնադրի, թող ձեռնադրող կաթուղիկոսը իւր վիճակում նրան տեղաւորեցնի, այս դէպքում ձեռնադրուածը այլևս իրաւունք չունի փոխադրուելու նախկին վիճակը։

1441-ի ազգային ժողովը որոշելով կաթուղիկոսական աթոռը փոխադրել Էջմիածին, հրաւիրեց Սսի կաթուղիկոս Մուսաբէկեանին գալ բազմել հայրապետական աթոռը, սակայն նա մերժեց ժողովի հրաւէրը և իբրև հակաթոռ կաթուղիկոս շարունակեց կաթուղիկոսութիւնը։ Նրա յաջորդները համարուեցին հակաթոռներ Էջմիածնի գահին, նրանց իրաւունքի տակ մնացին միայն Սսոյ թեմերը, իսկ մնացածները ճանաչեցին Էջմիածնի հայրապետի գերագահութիւնը։ Էջմիածնի կաթուղիկոսը եփում էր Միւռոն և ձեռնադրում էր եպիսկոպոսներ բոլոր թեմի համար, բացի Սսի և Աղթամարի վիճակներից։

Թէև այս առաջին կանոնս սէր և միաբանութիւն է սահմանում երկու աթոռի համար, բայց մինչև այսօր դժբաղդաբար կռուի խնձոր է դարձել զանազան փառամոլ քաղաքագէտ անձանց ձեռքին։ Սուր կերպարանք ստացաւ այդ հարցը Գէորգ Դ.-ի ժամանակ, որը եպիսկոպոսական երդման մէջ մինչև անգամ մտցրեց «հակաթոռ» «հետեւալ» անականները։

2. Երկրորդ՝ զի ինքն նուիրեալն ևս մի համարձակեսցի առ այլ կաթուղիկոս գնալ՝ թողլով զիւրն՝ այլ առ իւր կաթուղիկոսն։

Ձեռնադրուելի անձը չպիտի ուրիշ կաթուղիկոսի մօտ գնայ, հապա պիտի մնայ իւր կաթուղիկոսի մօտ։

3. Երրորդ՝ զի թարց խնդրանաց ժողովրդեան և վկայական թղթոյ մի ձեռնադրեսցի ոք յեպիսկոպոսութիւն։

Ոչ ոք առանց ժողովրդի խնդիրքի և վկայաթղթի եպիսկոպոս չձեռնադրուի։

Այս փառաւոր սկզբունքը սկզբից հէնց մեր մէջ գոյութիւն է ունեցել և մինչև այսօր տևում է Տաճկահայոց մէջ։ Ռուսահայոց մէջ ժողովուրդը ոչ մի ձայն չունի, ամեն ինչ կախուած է կաթուղիկոսից և Սինոդի նախնական կարծիքից։

Տես Նիկ. 4, Անտ. 19, Լաւ. 13, Սսի 1։

4. Չորրորդ՝ ամենևին զինչ և իցէ պատճառաւ ոք եպիսկոպոս զայլոյ վիճակ մի յափշտակեսցէ։

Եպիսկոպոսը ոչ մի պատճառով չի կարող ուրիշ եպիսկոպոսի վիճակ յափշտակել։

Բ.-առ. 14, Նիկ. 15, Անկ. 18, Անտ. 13, 16, 21, 22, Դ.-Դւ. 3.

5. Հինգերորդ՝ միոյ վիճակի մի լիցին երկու եպիսկոպոսք, և երկու առաջնորդք, բայց թէ կարի մեծ ինչ պատճառ ի մէջ գայցէ։

Մի թեմում երկու եպիսկոպոս, երկու առաջնորդ չլինին, այլ մէկը· բացառութիւն թոյլ է տրւում միայն շատ կարևոր և բացառիկ դէպքերում։

6. Վեցերորդ՝ մի համարձակեսցի եպիսկոպոս՝ յայլմէ վիճակէ զոք ձեռնադրել, ապա թէ համարձակեսցի լուծցի ինքն և իւր ձեռնադրեալն։

Եպիսկոպոս-առաջնորդը ուրիշի վիճակից որևէ մէկին չը պիտի ձեռնադրի, իսկ եթէ ձեռնադրեց, ինքն էլ կարգալոյծ լինի, ձեռնադրուածն էլ։

Տես Բ.-առ. 35, Անտ. 9, 13, Սարդ. 1, 2, 11, 15, Դ.-Դւ. 2, Պար. 2։

7. Եօթնևրորդ՝ զի եպիսկոպոս թէ ոչ հրամանաւ կաթուղիկոսին իւրոյ՝ այլ կաշառօք և այլազգեաց բռնութեամբ համարձակեալ իշխեսցէ այլոյ վիճակի. լուծցի ի կարգէն։

Եթէ եպիսկոպոսը ոչ կաթուղիկոսի հրամանով, այլ կաշառքով և այլազգեաց բռնութեամբ կհամարձակի վիճակի առաջնորդ լինել, կարգալոյծ լինի։

Նոյնը հաստատում է և Բ.-առ. 30, Դ.-Դւ. 10։

8. Ութերորդ՝ մի համարձակեսցի ոք վարդապետ անխտրաբար տալ իշխանութիւն վարդապետութեան ամենայն ումեք. եթէ ոչ իցէ նուիրեալն կատարեալ ուսմամբ՝ և առաքինութեամբ, և հասակաւ, և աստուածային երկիւղիւ՝ և վկայեալ յամենեցունց, զի այսու պատճառաւ բազում անկարգութիւնք և պայթակղութիւնք մտին յեկեղեցի, և ստուգանեալ քամահեցին զայս հրաման, տուող իշխանութեան անկցի ի պատուոյն, և առող իշխանութեան անընդունակ լիցի։

Ոչ մի վարդապետ անխտրաբար վարդապետական իշխանութիւն չտայ ոչ մէկին, եթէ որ նուիրուած անձը թէ ուսմամբ թէ առաքինութեամբ և հասակով կատարեալ չէ բոլոր ժողովրդից և աստուածային երկիւղ չունի սրտում. ով այս հրամանի հակառակ կվարուի, թէ իշխանութիւն տուողը պատուից զրկուի և թէ առնողը համարուի իշխանութիւն չստացած։

Կուսակրօն քահանան կոչւում է մեր մէջ աբեղայ, որը տարբերւում է աշխարհիկ քահանայից վեղարով և ամուրի կեանքով։ Աբեղային տրւում էր քարոզութեան իրաւունք, գաւազան կրելու իրաւունք քարոզութեան ժամանակ, և սա համարւում էր մասնաւոր իշխանութիւն ունեցող աբեղայ, մի բառով վարդապետ։ Վարդապետը եպիսկոպոսից յետոյ առաջին մարդն էր վիճակում, նրա խորհրդին էին դիմում կրօնական, եկեղեցական խնդիրներ որոշելիս, նրա մօտն էին գնում ուսանելու և նրանից վկայական առնելու համար։

Այգպիսիներիցն էին Գօշ Մխիթար, վանական վարդապետը ևլն ևլն։ Այժմ վարդապետ համարւում է իւրաքանչիւր վեղարակիր, և եթէ նորընծայ վեղարակիրը մի քանի ժամանակ աբեղայ է կոչւում և հասարակ կտորից վեղար ծածկում, ձևական նշանակութիւն ունի, առանց որևէ քննութեան քիչ յետոյ կոչւում է վարդապետ, մասնաւորութիւն իշխանութիւն ստանալով։ Թէ այս կանոնից և թէ Գօշ Մխիթարի Գ. գլխից երևում է, որ վարդապետական իշխանութիւնը կարող է տալ վարդապետը, միայն ինչպէս Գօշն է ասում եթէ տեղի եպիսկոպոսի, կաթուղիկոսի և իշխանի իմանալով լինի, լաւ կլինի նրա կարծիքով որ երեք վարդապետ վարդապետութիւն տան նուիրուած անձին։ Այժմ այդ կարգը վերացել է, 1836-ից յետոյ վարդապետութիւն տալու իրաւունքը պատկանում է միմիայն Հայոց հայրապետին, Տաճկահայոց մէջ կենտրոնական վարչութեանը։

9. Իններորդ՝ քահանայ և ժառանգաւոր յիւրմէ եպիսկոպոսէ ընկալցի ձեռնադրութիւն հաւանութեամբ իւրոյ ժողովրդեանն, և թէ ոչ այսպէս, լուծցի ի կարգէն։

Քահանան և մնացած եկեղեցականները իրանց եպիսկոպոսից պիտի ձեռնադրութիւն ստանան իրանց ժողովրդի հաւանութիւնը առնելուց յետոյ. ով հակառակ այս կարգին կվարուի, թող կարգալոյծ լինի։

Տես Ա.-առ. 6, Դ.-Դւ. 9։

10. Տասներորդ՝ դիրաւունս և հասոյթս՝ որ ի ժողովրդենէն կարգեալ է եպիսկոպոսաց և երիցանց, ըստ հրամանի հայրապետական կանոնաց, առցեն եպիսկոպոսք և երիցունք, և մի զմիմեանս զրկեսցեն, որոց վասն սրտունջ և դժգոհութիւնս յոլովս լսեմք հանապազ։

Եպիսկոպոսները և քահանաները ժողովրդից ստացած հասոյթները հայրապետական կանոնների համաձայն առանց

միմեանց զրկելու բաժանեն և դժգոհութիւնների ու տըրտունջների տեղիք չտան։

Տես Գան. 7, 8, Բ.-առ. 3, 4, Բ.-Դւ. 1, 2, 3, 4, 13, 18, Դ.-Դւ. 8, 9, Պար. 21, Սսի—19։

11. Մետասաներորդ՝ երիցունք մի զրկեսցեն զիւրեարս՝ զմիմեանց ծուխն ու հասոյթն յափշտակելով. կամ կեղծաւոր բարեձեւութեամբ և կամ այլազգեաց բռնութեամբ, այլ իւրաք իւրով բաժնաւն բաւականասցի, և թէ ոչ այսպէս, վտահողն լուծցի ի կարգէն։

Քահանաները միմեանց չզրկեն ծուխն ու հասոյթը յափշտակելով, կամ կեղծաւոր բարեձեւութեամբ կամ այլազգեաց բռնութեամբ, այլ իւրաքանչիւրը իւր բաժնովը բաւականանայ. ով հակառակ հրամանիս կվարուի, կարգալոյծ լինի։

Տես Բ.-Դւ. 1, 2, 13, Դ.-Դւ. 5, Սսի 13։

12. Երկոտասաներորդ՝ յորժամ հանդերձեալ իցեն դնել նշան ումեմն աղջկան յաղագս յումեմն երիտասարդի, մի իշխեսցեն առնել զայն կանայք, կամ ժողովրդականք կամ երիցունք առանց բազում քննութեան. և կամ առանց գիտելոյ առաջնորդին. այլ քահանայքն քարոզեսցեն բազում աւուրս ի մէնջ եկեղեցւոյն, և ծանուսցին առհասարակ ամենեցուն, զի գուցէ ոք տեղեակ իցէ ազգացեղութեան նոցա, որոյ ի լսելն՝ եկեալ յառաջագոյն ծանուսցէ, և այսպէս յետ բազում քննութեանց՝ թէ ոչ գտցի ազգացեղութիւն ի մէջ նոցա, ապա յայտ յանդիման ամենայն քահանայից և ժողովրդոց՝ քահանայք օրհնեսցեն զնշանն զայն՝ և հաստատեսցի գործն։

Երբ աղջկայ և տղայի նշան դնելու խնդիր կայ, թէ կանայք, թէ ժողովրդականք և թէ քահանայք առանց երկար ու բարակ քննութեան և առանց առաջնորդի գիտութեան թող նշան չդնեն. հապա քահանայք եկեղեցում երկար ժամանակ յայտարարեն բոլորին, որպէս զի եթէ մէկը

չհասութեան մի բան նկատի, գայ և յայտնի, իսկ եթէ չըհասութեան խնդիր չի լինիլ, բոլորի ներկայութեամբ նշան դնեն քահանայք և հաստատեն իրանց օրհնութեամբ։

Նշանադրութեան այս ձևը գոյութիւն չունի Հայոց մէջ, այս սովորութիւնը աւելի օտարամուտ է. այս մասին խօսում են և Գէորգ Դ.-ի միքանի կանոնները, որոնցով աւելի շեշտւում է այն, որ առանց քննութեան և չհասութեան խնդիրը պարզելու՝ քահանան և գործակալը պիտի նշան դընելու իրաւունք չտան և չօրհնեն նշանը՝ որովհետև ըստ մեր կանոնագիրների նշանադրութիւնը պսակի հետ շատ սերտ կապուած է, քանդելն էլ որոշ հանգամանքների հիման վրայ է թոյլատրւում և ոչ ըստ քմահաճոյից։

*13. Երեքտասաներորդ՝ այրի երիցունք՝ թէ իցեն պարկեշտք և ծերք, և կամ ունիցին մանկունս սնուցանելոյ՝ կացցեն յեկեղեցին, և թէ ոչ այսպէս, գնասցեն ի վանս և յանապատս. և թէ ոչ գնասցեն, ի բաց կացցեն ի ժառանգութենէ և կարգէ։*

Այրի քահանաները որոնք պարկեշտ են և ծեր, և կամ խնամելու երախաներ ունեն, թող եղեղեցում քահանայութիւնը շարունակեն, եթէ այդպէս չեն, թող վանքեր և անապատներ քաշուին, եթէ չգնան՝ հեռացնուին թէ կարգից և թէ քահանայական ժառանգութիւնից (եկամտից, հողից)։

Սրանով վերջացան Երուսաղէմի մասնաւոր ժողովի կանոնները։ Դաւրիժեցին պատմում է, երբ կանոնները սահմանեց, բոլորի առաջ կարդալ տուաւ, հաւանեցին թէ Սսի կաթուղիկոս Ներսէս, Երուսաղէմի առաջնորդ Աստուածատուր վարդապետը, «բոլոր վարդապետները, և եպիսկոպոսները, և իշխանները, ստորագրեցին և կնքեցին, և իրանց հետ տարան պատճէնները ամեն կողմ և տարածեցին Հայոց աշխարհում։ (Տես Դաւրիժեցի 331—334 եր. Էջմիածին, 1896 թ.)։



# ՀԱՅՈՑ

# ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ԻՐԱՒՈՒՆՔԸ

Ա. ԳՐՔԻ ՇԱՐՈՒՆԱԿՈՒԹԻՒՆԸ.

**ՆԵՐԱԾՈՒԹԻՒՆ ԵՒ ԱՂԲԻՒՐՆԵՐ.**

*Աշխատութիւն Ն. վ. Մելիք-Թանգեանի.*

ՇՈՒՇԻ

ԱՐԱԳԱՏԻՊ Բ. ՏԷՐ-ՍԱՀԱԿԵԱՆՑԻ

1903.

## 2) ԼԱՅՈՑ Ս. ՀԱՐՑ ԿԱՆՈՆՆԵՐԸ.

Ազգային աղբիւրներին են պատկանում և սուրբ Հայրերի կանոնները։ Մեր կանոնագրքերում գրուած բազմաթիւ մեր սուրբ Հայրերին վերագրած կանոններից իրաւունք ունինք իրաւաբանական տեսակէտից ընդունելու միմիայն Լուսաւորչի, Սահակի և Ներսէս Շնորհալու կանոնները, մնացածների մասին կտանք համառօտ տեղեկութիւն իբրև հնապատմական նիւթի և պարզաբանող կանոնների մասին։ Վերջիններիս կարգին են պատկանում «Թադէոս առաքելոյ կանոնները», «Փիլիպպոս առաքելոյ կանոնները», «Հարանց հետևողաց» կամ «Հարանց յետ առաքելոց» կանոնները, Յովնան Մանդակունու և Մակար Երուսաղէմի արքեպիսկոպոսի կանոնները։ Սրանցից էլ ճիշտն ասած Թադէոսի և Փիլիպպոսի կանոնները մեր սուրբ Հայրերի կանոնների ցանկից դուրս են և պատկանում են առաքելական կոչուածների շրջանին, բայց որովհետև ոչ մի եկեղեցի այս երկու առաքեալների անունով վաւերական կանոններ չի ընդունում, մեր եկեղեցին էլ չի ընդունում, ուստի միակ յարմար տեղն էր այստեղ, որտեղ կարելի էր տեղեկութիւն տալ դրանց մասին։ Մակար Երուսաղէմի արքեպիսկոպոսի կանոնները աւելի յարմար էր օտար Ս. Հարց կանոնների ցանկը մտցնել քան այստեղ զետեղել, բայց որովհետև օտար ոչ մի եկեղեցում սրա կանոնները յայտնի չեն, և որովհետև Մակարի կանոնները գրուած են բացառապէս Հայոց եկեղեցու համար և Հայոց կաթուղիկոսի խնդրանօք, ուստի յարմար տեղ համարեցի սրանց համար մեր Ս. Հայրերի շրջանը։

Մեր կանոնագրքերում երկու առաքելական կանոննե-րից յետոյ հետեւում են «Թադէոսի» «Փիլիպպոսի» «Հարանց հետեւողաց» կանոնները, կամ յետ են դրուած և ջոկ ջոկ, Յով. Մանդակունու կանոնները մեծ մասամբ վերջերումն են ընկած։ Նախ քան մեր երեք Ս. Հարց կանոնների անցնելը տանք համառօտ տեղեկութիւն այս կանոնների մասին, ոչ իբրև մեր եկեղեցական իրաւունքի ուղղակի աղբիւրի մասին, այլ իբրև հնապատմական նիւթի մասին, որից գուցէ զանա-զան կանոնների պարզաբանութեան համար հարկաւոր տե-ղեկութիւններ կկարողանայինք ստանալ։

## ԹԱԴԷՈՍ ԱՌԱՔԵԼՈՅ ԿԱՆՈՆՆԵՐԻ ՄԱՍԻՆ.

Թադէոս առաքեալի անունով յիշւում են 29 հարց ու պատասխանով կանոններ, (ուրիշ ձեռագրերում 33 կանոն է, մի համաբարբառի մէջ 34 կանոն, բովանդակութիւնը նոյն է, միայն երկարաձգումներ և յաւելումներ ունին), այս կանոնները իբր թէ առել է առաքեալը և նրա աշակերտ Զաքարիան արձանագրել է. «Այս օրինադրութիւնը ես Զա-քարիա աշակերտ Թադէոս առաքեալի գրեցի, ինչպէս նրա-նից լսեցի, բոլոր Քրիստոսի հաւատացեալների համար»։

Մեր եկեղեցու համար շատ թանգ է ի հարկէ ունենալ կանոններ այնպիսի աղբիւրից, ինչպիսին է առաքեալը, որով-հետև նրա դրած կանոնները սրբութեամբ պիտի կատա-րուէին բոլորից։ Բայց որովհետև շատերը կարող են ելնել և առաքեալի անունով խօսել կամ նրա անունով կանոններ գրել, մեր եկեղեցու համար ոչ միայն պարտաւորական չէ այսպիսի կեղծուած կանոնները կատարել, հապա մինչև ան-գամ որոշ պարտք կայ հետաքննին լինելու, ճի՞շտ են ար-դեօք այդ կանոնները թէ ոչ, այսինքն առաքեալն է ասել կամ գրել, թէ ուրիշները գուցէ 4—5 դար յետոյ ժողովել և նրա անունով հրատարակել։ Վաւերակա՞ն է թէ անվաւեր,

առաքեալի գրածն է թէ ուրիշի, այդ հարցերից առաջ, իրաւաբանութեան համար ամենաէական խնդիրն այս է, ընդունե՞լ են արդեօք Թադէոսի կանոնները հայոց ազգային ժողովները, կամ կաթուղիկոսների և այլ ս. հարց կողմից կա՞ն յիշատակութիւններ նրանց ընդունելութեան մասին. եթէ այս կանոններս ընդունուած լինին հայոց եկեղեցու կողմից, իրաւաբանական տեսակէտից ոչ մի իրաւունք չունինք ոչ մի հակառակ խօսք ասելու, պիտի ընդունենք և հայոց վաւերական կանոնների շարքը մուծենք, շատ շատ քննադատաբար կարող ենք վերաբերուել կանոններին միմիայն մատենագրական և պատմական կողմից. պարզենք այդ հարցը։

Ա. Գրիգոր Լուսաւորիչը, Ներսէս մեծը և Ս. Սահակը իրանց կանոններով, քարոզներով և կարգադրութիւններով առաջին սահմանադրութիւնը կարգելով մեր եկեղեցում, ոչ մի տեղ չեն յիշատակում ոչ թէ Թադէոսի կանոնները, հապա մինչև իսկ նրա անունը իբրև կանոնադրի, իբրև կարգ կանոն սահմանողի։

Բ. Շահապիվանի 447-ի մեծ և ընդհանուր ժողովը, որտեղ կային մեր բոլոր թարգմանիչները, որոնք ասորէնից և յունարէնից թարգմանել էին յայտնի ժողովների և ս. հարց կանոնները, անշուշտ պիտի Եդեսիա եղած ժամանակ թարգմանէին մեր եկեղեցու համար ամենաթանգ կանոնները։ Ժողովում հաստատեցին այն բոլոր կանոնները, որոնք մինչև 447 թիւը ընդունել էին հայերը. «Սուրբ Գրիգորի և Ներսէսի և Սահակ ու Մեսրոպի գրուած կարգերը դուք արդէն հաստատեցիք . . . առաքելականն և Նիկիականն էլ հաստատուն մնան, մենք բոլորս համաձայն ենք . . . »։ Այստեղ հաստատում են առաքելական կոչուած կանոնները, Լուսաւորչի կանոնները Նիկիականի հետ, Ներսէսի կանոնները Պօլսի ժողովինի հետ, Սահակի և Մեսրոպինը Եփեսոսի կանոնների հետ, իսկ Թադէոսի կանոնների համար ոչ մի խօսք չի ասւում. այն ինչ եթէ այդպիսի կարևոր կանոններ այն ժամանակ գոյութիւն ունենային, կամ եթէ թարգմանուած կամ գրուած էլ եղած լինէին, անշուշտ կյիշատակէին. մա-

նաւանդ ժողովի արձանագրութիւնը գրողներն երևի նոյն թարգմանիչներն էին. կամ ամենաշատը՝ եթէ այդպիսի գրուածք գոյութիւն ունենար, նրանք համարում էին անվաւեր և նշանակութիւն չունեցող և յիշատակութեան մէջ էլ չմտան։

Գ. Դուինի 648-ի ժողովում, երբ առաջին անգամ գրով ամփոփ կազմւում է մեր եկեղեցու դաւանութիւնը ընդդէմ երկու բնութիւն քարոզողների, յիշւում են մեր բոլոր սուրբ Հայրերը, նոյնպէս օտար սուրբ Հայրերը, որոնք քարոզել են այդ. ի միջի այլոց ասւում է, թէ Լուսաւորիչն է տուել մի բնութիւն, և այդ սովորել է այն Հայրերից, որոնք եղել են առաքեալների յաջորդների աշակերտներ, և ո՛չ մի բառ՝ ոչ թէ առաքեալի կանոնների, այլ Թադէոսից մնացած բերանացի աւանդութեան վրայ. չէ՞ որ սրա վրայ յենուելը ամենամեծ փաստերից մէկը կհամարուէր յօգուտ մեր եկեղեցու կարգերի հնութեան։ Իսկ 986-ին Խաչիկ կաթուղիկոսի օրով, երբ ի պատասխան Հայերին չարչարող Սեբաստիայի յունաց մետրոպոլիտին գրուած թղթերում, մանրամասն ցոյց է տըրւում բոլոր մեր և օտար սուրբ Հայրերը իրանց գրուածքներով ի վկայութիւն Հայոց հնագոյն եկեղեցական կարգերի, ոչ մի խօսք չի ասւում Թադէոսի գրուածքների հնութեան մասին (Ասողիկ. 21 գլ.)։

Դ. Ներսէս Շնորհալին իւր թղթերում միշտ կրկնում է «այսպէս ենք սովորել մեր պապերից և Լուսաւորչից». եթէ Թադէոսի վերագրուած կանոնները նա ճիշտ համարէր, անշուշտ ամենամեծ ուրախութեամբ կյենուէր այդ կանոնների վրայ, ցոյց տալով որ իւր պաշտպանած հարցերը, որոնց մասին Թադէոս առաքեալի կանոնները որոշակի սահման են դնում, աւանդուած են մեծ հեղինակութիւնից գրաւոր փաստով, բայց այդպիսի բան չենք գտնում ոչ յունաց և ոչ լատինաց հետ վարած միաբանութեան խնդրի վէճերում և գրագրութիւններում, ո՛չ միայն Շնորհալու, այլ և նախորդների և յաջորդների օրով։

Ե. Ոչ մի ազգային ժողովում և ոչ մի պաշտօնական

մարմնի ույժ ունեցող Հաստատութեան սահմանադրութիւններում չկայ յիշատակութիւն Թադէոսի կանոնների մասին, նրա ընդունման կամ կանոնականութեան մասին։

Այս փաստերի հիման վրայ մենք զրկւում ենք իրաւաբանական ամենահաստարակ կռուանից ընդունելու Թադէոս առաքեալին վերագրած կարգադրութիւնները կանոնական և մտցնել մեր եկեղեցու դրական աղբիւրների շարքը. թէ և պէտք է նկատել, որ այս կանոնների մէջ չկայ մեր եկեղեցու հակառակ որևէ մի բան, ընդհակառակն պատմական տեսակէտից տալիս է մի քանի թեթև պարզաբանող խրատներ՝ փաստեր, բոլոր կանոններս կրկնւում են մեր բոլոր կանոններում և կարծէք թէ ընդօրինակութիւն են «Առաքելական կարգադրութիւնների»։

Գալով դրանց գրութեան ժամանակին, պէտք է ասել որ այդ 29—33 կանոնները ամենևին չէին կարող գրուել Թադէոսի ժամանակ 33—40 թուականներում, ընդ. եկեղեցու պատմութեան հետ ծանօթ անձը կարող է բոլոր կանոնների աստիճանական զարգացումը և որ դարում արձանագրուած լինելը որոշել։ Պասերի խնդիրը, ժամանակագրութեան տեսակները և կանոնաւորութիւնը, նուիրապետութեան կարգը, ջրի և անխմոր հացի գործածութեան վէճերը, բոլորը սկըսւում են շատ ուշ և կանոնաւորւում են III, IV, V, VI, VII դարերում։

Այս նիւթիս վրայ հայերէն ունենք Հ. Տաշեանի «Վարդապետութիւն առաքելոց անվաւերական կանոնաց մատեանը. 1896. Վիեննա» երկասիրութիւնը, որի 137 երեսում կարդում ենք. «Այս խնդրոյս վրայ այսչափ երկար խօսիլը նախ քան բուն խնդրին անցնելը, այն է ցուցընել որ Ադդէի այս կանոնքն *հետևողութիւն* են մեր «Վարդապետութիւնք առաքելոց կանոնաց»։ Այս կանոններս «ոչ թէ Ադդէի կամ առաջի դարուն կրնան ըլլալ, այլ անոնց մեծ մասն առ առաւելն *հինգերորդ* դարու կրնար գրուած ըլլալ»։ Ապա բերում է Հ. Սարգսեանի հետևեալ խօսքերը. «Իսկ Հայ եկեղեցւոյ *Ժողովոց Հաւաքածոյից* մէջ Թադէոս առաքելոյն

վերագրուած 29 Յօդուածով *Օրէնսդրութիւն* մի ևս կայ, որուն գրողն է Զաքարիա Սիւնեաց առաջին եպիսկոպոսն, *զէթ ըստ վկայութեան յիշատակարանին* . . . .» 138 եր.: Հ. Տաշեան համեմատելով Թ. ԻԹ. ԻԸ. Դ. Բ. կանոնները «Վարդ. առաք.» կամ ըստ մեր գրութեան Ս.—Առաքելական կանոնների Ա. Գ. Դ. Է. Ի. ԼԲ.-ի հետ, գտնում է որ Թադէոսի կանոնները հետևողութիւն են Ս.—Առաքելական կանոնների:

Այս խնդրի մասին կայ «Լաբուբնեայ Դիւանագիր դպրի Եդեսիոյ, թուղթ Աբգարու, յեղեալ յԱսորւոյն, լուսաբանեալ. Վեն. 1868». կամ «Ղերուբնա Եդեսացի, թուղթ Աբգարու թագաւորի Հայոց, և քարոզութիւնք սրբոյն Թադէի առաքելոյն, Երուս. 1868»:

Փարիզի Սէն ժերմէնի գրադարանում մի ասորական կանոններ բովանդակող ձեռագիր էր գտնուած, որը 1855 թուին տպուել է Լէյպցիգում Դր-Լագարդի ձեռքով, այդ ձեռագրի երրորդ յօդուածը է «Քաղուածք ս. Ադդէ առաքեալի վարդապետութեան գրքից, որը քարոզեց Եդեսիայի Միջագետքի բոլոր բնակիչներին Քրիստոսի ծննդեան յարութեան . . . . . մասին». (տես Заозерскій, доникейскіе каноническіе кодексы Вос. церкви. Чт. об. Дух. прос. 1882. Фев.): (Այս մասին տես և Տաշեանի վերոյիշեալ երկը 158 եր.: Տես և Գարագաշեանի քննական հ. պատմութիւնը):

Թէ երբ կարող է մտած լինել մեր մէջ Թադէոսի կանոնները, գոնէ Հ. Տաշեանի խօսքերով Օձնեցու ժողովածուի մէջ չեն մտած (146 եր.). եթէ ճիշտ է Մխիթարեանց մօտ գտնուած Օձնեցու ժողովածուն (Էջմիածնի գրադարանում չկայ Օձնեցու կանոնագիրք զուտ՝ առանց յաւելումների) և եթէ ճիշտ է որ Օձնեցին չի մտցրել 718 թուականներին այս կանոնները իւր կանոնագրքի մէջ, նշանակում է նրանք պիտի մտած լինեն մինչև 997-թիւը, որովհետև մեր (40 հատ) կանոնագրքերում հայրապետաց ցանկը հասնում է 300—997 թիւը և Թադէոսի կանոնները դրուած են ցանկից առաջ, ցանկից յետոյ այսինքն 997-ից յետոյ կան յաւե-

լումներով կանոններ, որոնց ոչ մէկում չկան Թադէոսի կանոնները: Այս խնդիրը յամենայն դէպս շատ վիճելի է:—Այստեղ կդնեմ աշխարհաբար համառօտ բովանդակութիւնը. գրաբար բնագիրը վերջն է դրուած:

1. Առաջի կանոնը խօսում է, եպիսկոպոսի անարատ վարք ու բարք ունենալու մասին, ազէտ քահանայ և սարկաւագ չձեռնադրելու և կաշառք չառնելու մասին:

2. Այս կանոնս կայ 2 առաքելական կանոնների, Սահակի և այլ կանոններում: Եպիսկոպոսի դատ անելու մասին, որ առանց երկու երեք վկայ չդատի, քահանայ ձեռնադրի ժողովրդի վկայութեամբ, գիւղերում երկու—երեք քահանայ և մի սարկաւագ նշանակի, իսկ ագարակներում մի քահանայ և մի սարկաւագ:

3. Քահանայ ձեռնադրել 30-ամեայ հասակում, 50-ից անց անձանց չձեռնադրել:

4. Եպիսկոպոսը վատերին չձեռնադրի:

5. Սեղանը քարից լինի, չորով ծածկուած, խնկարկութեամբ և ճրագով պատիւ տրուի:

6. Պատարագի հացը նոյն օրը թխուի և սեղան տարուի, բաժակի մէջ աղանդաւորների նման ջուր չխառնել:

՝Նախկին դարերում կային աղանդաւորներ, որոնք միայն ջրով էին պատարագում:

7. Սեղան օրհնելը (եկեղեցի օծելը), եպիսկոպոսը քահանաների, սարկաւագների և ժողովրդի մասնակցութեամբ կատարի, սաղմոսերգութեամբ, առաքելոց թղթերի և աւետարանի ընթերցմամբ:

8. Եկեղեցին օծելուց յետոյ մատաղ պիտի մորթել Աստուծոյ առաջ Սողոմոնի նման:

9. Հաւատացեալները Աստուծոյ տունը աղօթքի ժողովելիս, չխօսեն, լուռ աղօթեն:

10. Եթէ ձեռնադրուելուց յետոյ քահանան կամ սարկաւագը խոստովանին արած մեղքերը, կամ ուրիշների վկայութեամբ յայտնուին, 12 տարի ապաշխարեն ապա բեմի տակին սպասաւորելու իրաւունք ստանան:

11. Եթէ ձեռնադրութիւնից յետոյ շնացաւ կամ գողութիւն արաւ, քահանայութիւնից հեռանայ, 15 տարի դրսում ապաշխարի, գինուորների հետ կանգնի, բեմ ելնել, կարդալ, երգել մինչև մահուան օրը չհամարձակի:

(Տես Բարսեղի կանոնները).

12. Եթէ եպիսկոպոսը այդպիսի մարդուն՝ կաշառքով կամ բարեկամական սիրոյ պատճառով նորից ընդունի, վերջին դատաստանի օրը վրէժ հանուի նրանից:

(Ուրիշ ձեռագրերում 11 և 12 կանոնները միացրած է):

13. Ամուսնացած քահանան երեք օր պիտի հրաժարուի կնոջից և ապա պատարագի:

14. Կուսան քահանան աքնութեամբ գիշերը անց կացնի և ապա պատարագի:

15. Երդուող քահանան բոլորովին զրկուի քահանայութիւնից:

16. Քահանան պիտի լաւ յատկութիւնների տէր լինի (յիշում է մէկմէկ):

17. Նոյնպէս ժողովուրդը մեղք չպիտի գործի, աղօթի, պարկեշտ լինի:

18. Շնութիւն անողը երեք տարի ապաշխարի, պաս պահի բացի շաբաթ, կիրակի և տէրունական օրերից, չորրորդ տարում հաղորդուի:

19. 20. 21. Արգանդի պտուղը ոչնչացնելու, արուագիտութեան և պղծութեան մասին:

22. Եթէ առնակինը շնացաւ, 12 տարի ապաշխարի և ապա հաղորդուի:

23. Կախարդը՝ ուրացողի համար նշանակած ապաշխարանքին ենթարկուի:

(Ուրիշ ձեռագրերում այս կանոնը չկայ):

24. Շնութեան ժամանակ մանուկ սպանողը ցմահ ապաշխարի:

25. Ուրբաթը և չորեքշաբաթը պիտի պահել մինչև իններորդ ժամը:

26. Տէրունական տօն կատարելուց առաջ մի շաբաթ պաս պիտի պահել:

27. Քառասունքը պիտի սրբութեամբ պահել, բացի շաբաթ և կիրակի օրուանից:

28. Անասնապիղծը ապաշխարի ցմահ և մեռնելիս հաղորդուի:

(Այս ուրիշ ձեռագրերում չկայ):

29. Քրիստոսին ուրացողը ցմահ ապաշխարի, մեռնելիս հաղորդուի:

30. Կամաւոր սպանութիւն անողը 10 տարի ապաշխարի, մեռնելիս հաղորդուի:

31. Մի կաթով սնածները ամուսնանալ չեն կարող:

32. Ազգականների ամուսնութիւնը պիտի լուծել և ապաշխարանքի ենթարկել:

33. Ընկերի ունեցածը գողացողը ցմահ անիծեալ լինի:

## ՓԻԼԻՊՊՈՍ ԱՌԱՔԵԼՈՑ ԿԱՆՈՆՆԵՐԸ.

Թադէոս առաքեալի կանոնների հետ զուգընթացաբար համարեա ձեռագրերում նշանակուած են Փիլիպպոսի կանոնները թւով 9 այսպիսի վերնագրով «Սահման կանոնի Տեառն Սրբոյն Փիլիպպոսի առաքելոյ: Յաղագս քառասունս ունելոյ . . . »:

Ինչ որ ասացինք Թադէոսի կանոնների իրաւաբանական հիմք չունենալու համար, նոյնը կասենք և սրանց համար, թէ ինչքան կցկտուր, անմիտ կանոններ են այս առաքելոյ վերագրած կանոնները, ընթերցողը թող նայի գրաբառ բնագիրը, որը յետոյ է դրուած և որը արտագրուած է միմիայն ցոյց տալու համար թէ ինչպիսի կանոններ առաքեալի անունի տակ ծածկուած կարողացել են մուտք գործել մեր կանոնագրքերը:

Ա. Նախաբանը խօսում է քառասունք պահելու մասին:

Բ. Գիտակցաբար ամուլ կանանց առնողներին ապաշխարանքի ենթարկելու մասին։

Գ. Արգելում է ոչխարը շան հետ փոխանակել մատաղ անելու համար։

Դ. Թոյլ է տալիս ոչխարը էշի հետ փոխանակել մատաղի համար, որովհետև Քրիստոս էշի վրայ նստելով մաքրեց նրան։

Ե. Թէ մատաղի և թէ ուրիշ անմաքուր մորթած կենդանիների կաշին ծախողը եկեղեցուց պիտի հեռացնուի, որովհետև նրա արածը հեթանոսների սովորութիւն է։

Զ. Որսորդները որսը թող մորթեն և ապա ուտեն։

Է. } Կանանց ամսական արեան մասին։
Ը. }

Թ. Երեկոյ և առաւօտ պարապ ժամանակ եկեղեցի չգնացող և չաղօթողը նզովեալ լինի։

Կանոններս ոչ մի արժէք չունեն, ոչ իրաւաբանական, ոչ պատմական, ոչ մատենագրական տեսակէտից, կարծես թէ եկեղեցական կանոն չեն, և ապա մի ինչ որ հեգնաբանի ծաղր։ Այս ամենայաւ ապացոյցների մէկն է, որ ինչ որ ոգէտ կանոնագիրք արտագրողները գրել են, դեռ փաստ չէ, որ դրանք ընդունուեն և համարուեն կանոնական, կամ եկեղեցական կարգեր։

## «ՍՐԲՈՑ ՀԱՐՑ ՀԵՏԵՒՈՂԱՑ» ԿԱՆՈՆՆԵՐԸ.

Թադէոսի, Փիլիպպոսի կանոնների հետ համարեա զուգընթացաբար տրուում են «Հարց հետևողաց» կոչուած կանոնները։ Բառացի թարգմանելով նշանակում են, այն սուրբ հայրերի կանոնները, որոնք առաքեալներից յետոյ են կարգուել, որովհետև պարզ գրուում է «յետ առաքելոց սրբոց հարցն հետևողաց», այսինքն առաքեալների յաջորդ սուրբ հայրերի կանոններ. որ պարզ ապացուցանում է թէ մէկի գրածը չէ, հապա շատ հայրերի գրածներից ծաղկաքաղ արած։

Կանոններս թւով 27 են և բոլորովին տարբեր են թէ ձևի, թէ ոճի, թէ բովանդակութեան կողմից Փիլիպպոս առաքեալի կանոններից. իրանց խառն բովանդակութեամբ յիշեցնում են թէ առաքելական, թէ Թադէոսի, թէ Սահակի և թէ Բարսեղ մեծի կանոնները, իսկ պատիժ նշանակելու կողմից միմիայն նման են Շահապիվանին և հետևում են մովսիսական օրէնքին։ Մեր կանոնների մէջ այս ծայրայեղութիւնը միշտ նկատւում է, կամ կանոնները դրւում են խրատական ձևով առանց պատժի, կամ ընդհակառակն մարմնական՝ նոյն իսկ մահուան պատիժ, ինչպէս օր. այս կանոններումս, Շահապիվանի ժողովում, Մխիթար Գօշում, որոնք միանգամայն հակառակ են քրիստոնէութեան սկզբունքներին։ Իրաւաբանական տեսակէտից ոչ մի հիմք չունինք այս ծաղկաքաղ կանոնները մեր եկեղեցու իրաւունքի իսկական աղբիւր համարելու, ինչպէս չհամարեցինք Թադէոսի և Փիլիպպոսի կանոնները, միայն համառօտ աշխարհաբար բովանդակութիւնը կդնենք իբրև հնապատմական նիւթի, գրաբառ բնագիրը յետոյ։

1. Ով կամաւոր կերպով կխեղդի երախան իբրև խեղի կամ թէ չնութիւն գործելու ժամանակ, թող մեռնի, որովհետև ապաշխարանքով մեռելը յետ բերել չի կարելի։

Այս կանոնս ոչ միայն հակաեկեղեցական է, հապա և հակաքաղաքացիական է, ոչ մի օրէնք այս ձևի կարգ սահմանած չունի։

2. Անասնապիղծը մահուան պատիժ ստանայ, ինչպէս Մովսէսն է հրամայում։

3. Պոռնիկը հեռու մնայ եկեղեցուց։

4. Գողը և նրա հիւրընկալը մահուան պատժի ենթարկուին։

5. Քահանային պաշտօնազուրկ են անում միայն ժողովը և վարդապետները, իսկ լուրերի հիման վրայ եկեղեցուց հեռացնել չի կարելի։

Մի քանի ձեռագրերում այս 7-րդ կանոնն է։

6. Արուագէտը մահուան պատիժ ստանայ։

Մի քանի ձեռագրերում 8-րդ կանոնն է:

7. Կնոջ արձակել չի կարելի ամլութեան, ծախողութեան, վատութեան պատճառով, այլ միայն բոռոտութեան, պիսակութեան, դիւահարութեան, գիջութեան, կամ մշտական ցանկութեան համար:

Այս ուրիշ ձեռագրերում 5-րդ կանոնն է:

8. Մուկն ընկած բանից ուտողը կամ խմողը 7 օր հաղորդութիւն չառնի:

Ուրիշ ձեռ. 9-րդ կանոնն է:

9. Քահանայի մեղք իմացողը միայն վարդապետին, եպիսկոպոսին կամ քորեպիսկոպոսին յայտնի և փողոցներում մեղաւորին չծաղրի:

Ուրիշ ձեռ. 6-րդ կանոնն է:

10. Եթէ մէկը յարաբերութիւն ունենայ քրոջ կամ աղջկայ կամ քրոջ որդու կամ եղբօր որդու հետ, եկեղեցուց բոլորովին հեռանայ: Իսկ եթէ մեղանչի հօր կնոջ, եղբօր կնոջ կամ հօրեղբօր կնոջ հետ, մահուան պատիժ ստանայ:

11. Ուրուկ կանանց հետ պղծութիւն ունեցողը անասնապիղծ է: (Մահուան պատիժ):

12. Եթէ մէկը (քահանան) սպանողին ապաշխարութեան չի ենթարկում, արիւնը նրա հոգուց պահանջուի:

13. Հերձուածող հոգևորականից հեռու կաց, նրանցից կաշառ առնելով, մասնութիւն մի անիր:

14. Եթէ մէկի կանայք մինչև երրորդը միմեանց ետևից մեռնում են ծննդաբերութեան ժամանակ կամ անարարութեան պատճառով, եկեղեցին ապաշխարանքի թող ենթարկի, իսկ եթէ տնտես ունենայ և որդիք բերի (ծնի), մերժուի իբրև ամենաչար պոռնիկ:

15. Եթէ առևանգութիւնից յետոյ աղջիկը որդիք է ունենում, բայց ծնողները և ինքը չեն կամենում պսակուել, թող յետ դառնայ առևանգողից:

16. Կրօնաւորը եթէ կամաւոր ուխտած է և ոչ հարկից ստիպուած, և եթէ կամենայ ամուսնանալ, նա իւր քահանայական կարգը ուրացող կհամարուի:

17. Դի կողոպտողը, մահով մեռնի:

18. Ինքնապաշտպանութեան համար սպանութիւնը մեղք չէ:

19. Պսակից առաջ նշանածները եթէ յարաբերութիւն ունենան, պոռնիկի ապաշխարանքին ենթարկուեն և ապա պսակուեն:

20. Այդպիսին երէց կամ սարկաւագ լինել չի կարող:

21. Անարժան մարդիկ չհաղորդուին:

22. Երկու եղբօր հետ յարաբերութիւն ունեցող կինը— մեռնի. եթէ կհեռանայ և կամուսնանայ, ցմահ ապաշխարի, նոյնպէս և եղբայրները:

23. Սերմնահոսութեան մասին. (թարգմանելը անյարմար է):

24. Քահանայի կինը իբրև երէցուհի աշխարհականների գլխին խրատ կարդալը իրաւունք չհամարի:

25. Եկեղեցու հիմքը ծրագրելու իրաւունքը պատկանում է եպիսկոպոսին, կամ քորեպիսկոպոսին և կամ եպիսկոպոսի հրամանով պերեատուտին (այցելու հոլիւ—գործակալ), եթէ հակառակ այս կարգին գնան, հիմքը պիտի քանդել և թոյլ չտալ եկեղեցի շինել:

26. Եկեղեցու հաւատքը իմանալի է և ոչ քննելի, իսկ կրօնքը ամբողջովին քննելի:

27. Եկեղեցում լուռ լինել. հին եւ նոր կտակարաններից ձեզ համար սուրբ գիրք համարուին հետեւեալները. Մովսէսի ծննդոց Ելից, Ղև. Թուոց. բ. օրինաց. Յիսուսի, դատաւորաց, հռութի, 4 թագ. մնացորդաց, Եզրի. Յովբ. Սաղմոս. Սողոմ. Դ. 12 մարգ: Մակաբայեցիք և իբրև խրատ Սիրաք կարդալ:

(Նորից՝ ոչինչ չի յիշում. համեմատիր Բ. առ. 85-ի հեր.):

## ՄԱԿԱՐ ԵՐՈՒՍԱՂԷՄԻ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ ԿԱՆՈՆՆԵՐԸ.

Իբրև Հնապատմական երկրորդական աղբիւր կարող են համարուել և այս կանոնները, որոնք, ինչպէս նախաբանից երևում է Երուսաղէմի Մակար արքեպիսկոպոսը ժողովով սահմանել է և ուղարկել է Վրդանէսին Լուսաւորչի որդուն՝ սրա խնդրքին զիջանելով: Իրաւաբանական ոչ մի հիմք չունինք ընդունելու այս 9 կանոնները մեր եկեղեցու կանոնա-

կան աղբիւր, սակայն նկատելու բանն այս է, որ կանոններս ունեն ուշադրութեան արժանի նախաբան Մակարի լեզուից՝ ուղղած մեր Վրթանէս կաթուղիկոսին, որ գրութեան լեզուն և ոճը լուրջ է, կանոնաւոր և խելացի մտածողութեամբ գրած, ոչ նման Թադէոսի—Փիլիպպոսի—Հարանց Հետևողաց-ի թէ կանոններին և թէ լեզուին ու բովանդակութեան. ընթերցողը ոչ մի կասկած յարուցանել իւր սրտի մէջ գրուածիս կեղծութեան մասին համեմատելով միւս կանոնների հետ՝ չի վստահանում։ Նախաբանը գրաբառ ընագրով դըրուած է յետոյ։ Նախաբանից երևում է, որ Լուսաւորչի որդի Վրթանէս Դ. դարու առաջի կէսում քահանաների ձեռքով թուղթ է գրում Երուսաղէմ Մակար արքեպիսկոպոսին, որը Նիկիայի ժողովում եղած յայտնի եպիսկոպոսներից մէկն էր, և խնդրում է զանազան հարցերի լուծումն և կարգադրութիւն այլ և այլ խնդիրների մասին։ Մակարը ուրախութեամբ ժողով է անում, 9 յօդուածներից բաղկացած կարգադրութիւն է ուղարկում և յիշում է որ հերձուածողների դէմ եղած սուրբ ժողովների կանոնադրութիւններն էլ է ուղարկում, քանի որ բոլոր բարեպաշտները պիտի ընդունեն այդ։ Մակարի գրութիւնից և Վրթանէսի դիմումից երկու հարց են ծագում. 1) ինչու Լուսաւորչի որդին, որը սնուել էր միտրոպոլտական Կեսարիայում և լաւ ծանօթ էր քրիստոնէութեան, Կեսարական բոլոր կարգ կանոններին, որը յետոյ հօրը՝ Լուսաւորչի օգնականն էր, նրա կարգերին քաջ ծանօթ և որը վերջապէս բոլոր կեանքը անց էր կացրել կրօնաւորութեան ու եկեղեցականութեան մէջ, թողած բոլոր իւր իմացածը, Լուսաւորչի և Արիստակէսի և Կեսարիայի միտրոպոլիտի սահմանած կարգերը, մարդ է ուղարկում հեռու Երուսաղէմ եկեղեցու կարգեր խնդրելով, և 2) Մակարի ուղարկած զանազան սուրբ ժողովների կանոնադրութիւններ ասելով ի՞նչ պիտի հասկանանք։

Մակարից բերած կարգադրութիւնները չէին արդեօ՞ք առիթ, որ Մովսէս և Աբրահամ կաթուղիկոսները վրաց բաժանման ժամանակ շարունակ իրանց թղթերում կրկնում

էին «մենք Երուսաղէմի հաւատն ունինք». այդ շրջանի բոլոր պատմագիրները, Կաղանկատուացի, Սեբէոս, Ուխտանէս, Ստեփաննոս Օրբէլեան մինչև իսկ նոյն բանը կրկնում էին։ Այս բանը ակամայ զարթեցնում է հետևեալ խնդիրը, արդեօք այդպիսի կանոններ բերել տալու պատճառն այն չէր, որ Հայաստանի արևելեան և հարաւային կողմերում Հայոց եկեղեցական սովորութիւնների և յունաց սահմանների մօտ գտնուած Ա., Բ. Գ. և Դ. Հայքի հայոց եկեղեցիների կարգերի մէջ տարբերութիւններ էր նշմարւում, առաջինների աւանդութեան աղբիւր Ասորիք—Երուսաղէմն ընդունելով, երկրորդների աղբիւր Կեսարիա—Յունաստան։ Մանաւանդ որ փոքր Հայքը միշտ եղել է յունասէր, Կեսարիայի միտրոպոլիտի իրաւասութեան ներքոյ մինչև Բագրատունեաց ժամանակը, յունական և լատինական միութեան ժամանակ միշտ հակուած դէպի օտարը, և ընդհակառակն արևելեան Հայաստանը քաղաքականապէս հակառակ յոյներին, պարսկասէր, միշտ պաշտպան ինքնուրոյն ազգային եկեղեցու, մերժող յունական և լատինական շրջանի բոլոր օտարամոլ կաթուղիկոսների ծիսափոխական մտքերը։ Պատմական փաստ է, որ մինչև Լուսաւորիչ Հայաստանում քրիստոնեայ հայեր շատ կային և իրանց եկեղեցական պաշտամունքը վարում էին առաւելապէս ասորերէն, որ նրանք հետևում էին Երուսաղէմի եկեղեցուն։ Թէ նախալուսաւորչական ընդհանուր քրիստոնեայ եկեղեցու մէջ դաւանաբանական տարբերութիւններ չկային, բայց կային ազգայնական տարբեր սովորութիւններ, արևելեան և արևմտեան ծէսեր, որոնք II և III դարերում գժտութիւնների և զանազան մասնաւոր ժողովների գումարման առիթ տուին, այդպիսի սովորութիւնների տարբերութիւններ եղած պիտի լինին արևելեան և արևմտեան Հայաստանում. ահա այդ տարբերութիւնը վերցնելու և ճիշտն իմանալու համար Վրդանէս կաթուղիկոս պատգամաւոր է ուղարկում Երուսաղէմ և ոչ Կեսարիա, առաջին՝ որ ինքը Կեսարիայի եկեղեցու կարգերը լաւ գիտէր, էլ հարկ չկար նորից դիմելու, և երկրորդ՝ ամենագլխաւորը,

որ Երուսաղէմի աւանդական կարգին հետեւող Հայերի թիւը շատ շատ էր, որոնք երևի թէ չէին հաշտւում Լուսաւորչի բերած յոյն եկեղեցականների սովորութիւնների հետ և Վրթանէս ստիպուած էր զիջել և մեծամասնութեան մէջ արմատացած սովորութիւնները Երուսաղէմի նոր բերած կանոններով աւելի ամրապնդել: Նախալուսաւորչեան քրիստոնեայ Հայերի մասին տես Բ. գրքում:

Գալով երկրորդ հարցին թէ Մակարը ինչ ժողովների կանոնագրութիւններ կարող էր ուղարկել: Եթէ ընդունենք որ Վրթանէս կաթուղիկոսութիւն է արել 333-ից մինչև 341 թիւը և այս ութ տարուայ ժամանակամիջոցումն է ստացուել կանոնագրութիւնները, այն ժամանակ կարելի է մօտաւորապէս որոշել թէ ո՞ր ժողովների կանոններն է ակնարկում: 314—թուականներին եղան Անկիւրիայի և Նէոկեսարիայի ժողովները, 325-ին Նիկիայի, 340—Գանգրի և 341-ից յետոյ Անտիոքի, թուականներին նայելով կարելի է ենթադրել՝ որ Մակարի ուղարկածների մէջ պիտի լինէին Անկիւրիայի, Նէոկեսարիայի և Նիկիայի ժողովների կանոնները. արդեօ՞ք առաքելական կանոններն էլ կային մէջում: Այս եթէ ճիշտ լինի, դուրս է գալիս որ արդէն 350 թուականներին Հայոց կաթուղիկոսների ձեռքի տակ կային զանազան արտաքին կանոններ, որոնցով ղեկավարւում էին եկեղեցու կառավարութեան մէջ:

Պէտք է ի նկատի առնել, որ Մակարի 9 կանոնները դարձան հիմք մեր հետագայ ազգային ժողովների և ս. Հարց կանոնների սահմանման համար: Գրաբար բնագիրը տես յետոյ:

1. Մկրտութիւնը պիտի եպիսկոպոս ու քահանայք անեն և ոչ սարկաւագներ, որոնք սպասաւորներ են. եթէ մի որ և է գաւառում սարկաւագները անգիտութեամբ մկրտութիւն են անում՝ մի պատժէք. իսկ եթէ եկեղեցու կարգերի հետ ծանօթ են և գիտութեամբ են անում, պատժեցէք յանցանքների համաձայն:

2. Եթէ աւազան չկայ և մկրտութիւնը ամանի մէջ են անում, մեղաւոր չեն. եթէ եկեղեցի ունիք, պիտի մկրտատուն ու-

նենալ և աւազան, որի մէջ մկրտուեն երախայք: Մկրտութիւնը կատարել միշտ, երբ պահանջ լինի և երեք ընկղմումով Քրիստոսի թաղման և յարութեան նշանակ. այսպէս ենք սովորել առաքեալներից:

Տես Բ. Պւ. 15. Ե-Պւ. 13. 14, Պալ. 8, Սսի—6. Բ-առ. 49:

3. Եկեղեցականները սրբութեամբ պիտի կատարեն իրանց պաշտօնները:

4. Աւանդաբար առաքեալներից ընդունել ենք, որ մկրտութեան իւղը եպիսկոպոսապետը պիտի օրհնի, հեռաւորութեան և կարևոր պիտոյքի ժամանակ արքեպիսկոպոսը երկու երեք եպիսկոպոսով և սարկաւագներով: Իսկ մեռեալների և հիւանդաց օծման իւղը և մկրտուողների իւղը քահանաները և եպիսկոպոսները օրհնեն. այսպէս սահմանեցին սուրբ հայրերը:

Մկրտութեան իւղը մեռոնն է, որը պիտի կաթուղիկոսը օրհնի: Մկրտութեան կամ երախայութեան իւղը մեռոնով օծելուց առաջ գործածուած իւղն է. թէ երախայութեան թէ հիւանդաց օծման իւղը օրհնում է քահանան կամ եպիսկոպոսը որքան հարկաւոր է:

Տես. Ե.-Պւ. 10, 11, 9, Սսի 23, Պալ. —5. Ե. Պւ. 14:

5. Հաղորդութեան և ս. սեղանին պիտի մօտենալ ուղիղ սրտով:

6. Ս. խորհուրդը պիտի ահիւ կատարել, ուղիղ դաւանել, ոչ Արիոսի հետևողութեամբ:

7. Պիտի սեղանը ջերմ հաց հանուի առաքելոց աւանդութեան համաձայն և անապակ առանց խառնուրդի (գինի), որովհետև ապականացու բանով չենք կարող փրկուել, այլ անապական մարմնով և արեամբ անբիծ և անարատ գառինն, և այս սարկաւագները սեղանում պատրաստեն և ապա քահանաները կատարեն (ս. խորհուրդը):

Տես Ա—Աւ. 31, Ե—Պւ. 8. (Թադէոս—6):

8. Սեղանը պիտի լինի փարագուրով, աւազանը աջ կողմում անով և սպասով, թէ հոգևորականներ, թէ աշխարհականներ կարգին կանգնեն, որ կարգը չխանգարեն:

9. Իններորդը կանոն չէ, այլ վերջաբան, յորդորում է որ արիոսականների հետ չմիանան, նրանցից հեռու մնան:

## ՅՈՎՀԱՆ ՄԱՆԴԱԿՈՒՆՈՒ ԿԱՆՈՆՆԵՐԸ.

Յովհան Մանդակունին Ե. դարու հայոց ամենափառաւոր կաթուղիկոսներից մէկն է, եկեղեցասէր և ազգասէր, եկեղեցում կարգեր սահմանող և պատերազմի դաշտում Վահան Մամիկոնեանին օգնող։

Նա ժամերգութիւնը կանոնաւորել է, զանազան ճառերի միջոցով խրատներ և բարի խորհուրդներ է տուել քահանաներին և ժողովրդականաց. սրա ճառերը Վենետիկում հրատարակուեցին 1836 և 1860 թուականներին. որոնց ընդհանուր բովանդակութիւնը խրատական է և համոզիչ, բայց ոչ կանոնական և կարգադրական. Նա ճառերի մէջ խօսում է 1) խոստովանութեան, 2) ապաշխարութեան, 3) պասերի, 4) վաւերական և անվաւեր աղօթքների, 5) աղքատների ողորմութեան, 6) պտուղների և նուէրների, 7) փոխ տալու և վաշխի, 8) աղքատների մխիթարութեան, 9) քահանաների տեսչութեան, 10) բամբասողների, 11) նախանձի և սիրոյ, 12) բարկացողների, 13) ոխակալների, 14) գողութեան, 15) երդման, 16) արբեցողութեան, 17) թատրոնների, 18) կնաթողների, 19) անասնամոլների, 20) ատելութեան, 21) կարկտի, 22) ս. խորհուրդի, 23) վախճանեալների, 24) ողբերի, 25) աղօթքների, 26) խրատների, 27) ախտերի, 28) հմայից, 29) քառասնորդական պասի, 30) երբորդութեան, 31) սիրոյ և 32) ճգնաւորների մասին։ Բայց այդ կայ և «կանոնք» վերնագրով մի գլուխ դրա տպագրած ճառերի մէջ, որը խօսում է բացառապէս տգէտ քահանաներ չձեռնադրելու և ձեռնադրութիւնը առհասարակ առանց կաշառք անելու մասին։

Մեր ձեռագիր կանոնագրքերում չկան վերոյիշեալ ճառերը, հապա կցկտուր անկապ կանոններ կան գրքերի զանազան անկիւնները ընկած, որոնք երբեմն յիշեցնում են վերոյիշեալ ճառերը, երբեմն բոլորովին օտարոտի կանոններ սահմանում։ Կանոնագրքերում այս վերնագրներով ենք պա-

տահում Մանդակունուն վերագրած կանոններին. «Կանոնք Յովհաննու Մանդակունւոյ՝ Հայոց կաթուղիկոսի». սրանք թւով 10—11 հատ են, խօսում են մեծ պասի շաբաթ և կիրակի օրերը պաս չպահելու, կիրակի օրը պաս չպահելու, կիրակի և զատկից մինչև պենտեկոստէն ծունր չդնելու, չորեքշաբաթ ու ուրբաթ մարտիրոսաց յիշատակ չկատարելու, ծնունդը և յայտնութիւնը միասին տօնելու, դևերի գործերի և դիւահարներին հաղորդութիւն չտալու մասին: Բացի այս, կանոնագրքերում կայ «կոչումն ապաշխարութեան զոր ասացեալ է տեառն Յովհաննու Մանդակունւոյ Հայոց կաթուղիկոսի». այս կոչումը խօսում է խոստովանութեան և ապաշխարութեան մասին և բովանդակութիւնը նման է ճառերի մէջ եղած «խոստովանութեան» և «ապաշխարութեան», միայն այստեղ մասերի է բաժանած, կրճատած և համառօտած: Այս համառօտութիւնը տեղ տեղ բառացի կրկնւում է Լուսաւորչին վերագրած կանոններում. օր. «թէ մինն կոյս է և մինն արամբի». «թէ ի ձիս յերասանեալ յագելապէս» (տես Լուս. 5 և 10 կանոններ): «Թէ ի մեղս զառածեալ է» (Լուս. 1 կ.): «Թէ զաղտ պսակէ» Լուս. 8 կ.: «Թէ զկուսութիւն նուիրեալ Աստուծոյ և դարձեալ ստեաց». Լուս. 13: «Թէ զխոստովանութիւն ուրուք յայտնեաց» (Լուս. 22): «Թէ վայրապար նզովեալ է» Լուս. ԻԹ—29: Մանդակունու այս խոստովանութեան և ապաշխարութեան համառօտած կարգերը խրատ են «վասն պոռնկաց», «վասն արուագիտաց», «անասնագիտաց», «սպանողաց», «առն և կնոջ», «այրեցողաց», «գողոց», և այս գրուածները ոչ թէ բովանդակութեամբ, այլ բառերով և նախադասութեամբ նման են Լուսաւորչին վերագրած կանոններին:

Կանոնագրքերում կայ և տպագրուած ճառերի մէջ յիշուած «կանոնքը»-ը ոգէտ քահանայ ձեռնադրելու դէմ:

Համառօտակի յիշելով վերօգրեալը, կասենք, որ Մանդակունին կանոններ չունի սահմանած ոչ ժողովով ոչ առանձին, նրա գրած ճառերը խրատներ են և համօգիչ եղանակով գրուած քարոզներ, նրա գրուածները իբրև հնապատ-

մական նիւթ կարող են մեկնող և պարզաբանող ույժ ունենալ. եթէ ի հարկէ նրան վերագրած ճառերը իսկապէս Մանդակունուն են պատկանում:

## ԹԱԴԷՈՍ ԱՌԱՔ. ԿԱՆՈՆՆԵՐԻ ԳՐԱԲԱՐ ԲՆԱԳԻՐԸ.

*Սահմանք կանոնաց՝ սուրբ առաքելոյն Թադէոսի ի քաղաքին յՈւռհայ ի լուսաւորելն զնոսա»*

Յորժամ լուսաւորեցաւ քաղաքն մկրտութեամբ ձեռնադրեցին եպիսկոպոսունս. քահանայս և սարկաւագունս և հաստատեցին վարդապետս օրէնս ուսոյցս՝ և եդև հաստատութիւն եկեղեցւոյ և սեղանոյ Աստուծոյ, սկսան հարցանել զնա զամենայն կարգադրութիւն եկեղեցւոյ, և զամենայն կրաւնս քրիստոնէից, և նա պատուիրեաց նոցա կարգաւ ըստ հրամանի փրկչին»

*Հարցումն առաջին թէ որպէս պարտ է կալ եպիսկոպոսին ի տեսչութեանն»*

Ա. Ասէ առաքեալն, եպիսկոպոսն եղիցի անարատ, պարկեշտ, ուսուցող, մի արծաթասէր, մի արբեցող, մի կռող, մի զաւշաքաղ, մի հարկանող, մի կաշառառու, այլ հանդարտ որպէս ասաց եղբայրն մեր և գլխաւորն Պօղոս. եղիցի աւրինակ բարոյ, տքնաւղ պահօղ, առեյօղ զհանգիստ քնոյ, լինել օրինակ հաւտին ամենայն կարգաւ, առնել ձեռնադրութիւն արժանաւորաց, այնոցիկ որ հասու և գիտունք են գրոց և կարգաց և օրինաց աստուծոյ, զոգէտսն խոտեալ ի բաց մի ձեռնադրեսցէ՝ քանզի տգիտութիւն աստուծոյ խոտելի է քան զամենայն չարագործութիւն, յայսմանէ առաւել զգուշասցի քան յամենայն իրաց, քանզի տգէտ քահանայ կամ սարկաւագ, կամ ով ոք է յառաքելական աստիճանի, ի բարկութիւն շարժէ զաստուած՝ զի բերանովն ի միտ առնու և ասէ՝ և սրտիւն ոչ իմանայ զասացեալն և բարկա-

ցուցանէ զատուած. և վնասակար ամենին եպիսկոպոսն լինի, փախիցէ յայսմանէ, զուսումնասէրսն և զգիտունսն յառաջեցուսցին ամենայն պատուով, իսկ զտգէտսն ամենեւին մի կացուցանել առաջնորդս կամ վերակացուս շնորհի եկեղեցւոյ, իսկ եթէ յանդգնեսցի եպիսկոպոսն արասցէ զայն վասն կաշառոյ. կամ վասն մերձաւորութեան, կամ վասն բարեխօսութեան, այնպիսի եպիսկոպոսն նզովեալ եղիցի, և որ ինչ վնաս ծնանիցի տացէ վրէժս յաւուրն դատաստանի յանմահ տանջանսն»

Բ. Դարձեալ ասէ առաքեալն՝ արժան է եպիսկոպոսին, զամենայն հաւատացեալսն միապէս սիրել, և զիւր մերձաւորսն մի առաւել մեծարել քան զայլ հաւատացեալսն, թէպէտ և եղբայր իցէ, կամ քոյր, և կաշառ ամենեւին մի առնուլ, այլ զինքն մեռեալ համարել աշխարհի. մի երբէք քրքրել և զուարճանալ, կամ լկտի ինչ խօսել. կամ հրապարակաւ զօք յանդիմանել. առանց երկրորդ հարցմանց. նախ առանձինն, ապա երկու և Գ. վկայիւք վարդապետօք հեշտական հանդերձիւք մի վարել. և մի ընաւ առանց ընկերակցացն հարցմանց գործել ինչ, զի այն է հաճոյ աստուծոյ, կացուցանել ընդ ձեռամբ իւրով տեսուչ վարդապետս, տեսուչս դաւառաց, քաղաքաց հովուել զհաւատացեալսն, և ժողովրդոցն հնազանդել հովուացն կացուցելոցն յեպիսկոպոսէն, կարգեսցէ ի չէնս երկու կամ երիս քահանայս, և մի սարկաւագ» իսկ յագարակս քահանայ մի և սարկաւագ մի, զհաշմալ զօք մի ձեռնադրեսցի, թէ զարատաւորն պատարագ չտայր մատուցանել մարգարէն, որչափ ևս առաւել որ զայս պատարագ մատուցանէ՝ արժան է անարատ լինել, առանց վկայից և քննութեան մի զօք ձեռնադրել զի մահաբերք վնասք ծնանին»

Գ. Դարձեալ ասէ առաքեալն, արժան է եպիսկոպոսին ձեռնադրել քահանայս երեսնամի, և զ. Լ. ամ կալ ի կարգին, և ապա լռեսցէ» Իսկ յիսնեմիք կամ թէ յաւելի մի ձեռնադրել քահանայ կամ սարկաւագ, և մի յամուսնութիւն հրամայել, զի յայսմ վայրի անձինք աղճատին, և միտք և

*ժամանակք. և զինքն պատրաստել լիւրում ուղևորութեան պայծառացուցանել զիւր զլապտերն, զի մի գույն հոգալով զինքն անփոյթ արասցէ և զրկեսցի յաւիտենից կենացն»*

*Դ. Դարձեալ ասէ առաքեալն, արժան է եպիսկոպոսին առաւել հրաժարել ոգխտաց ձեռնադրութեան 'ի տխմարաց, 'ի յանմտից 'ի ցփասրտից, ի վատասրտից, յափշտակողաց, ի շնացողաց, և յայլ վատթարութենէ, զայնպիսին ամենևին մի ձեռնադրեսցէ, և մի բարկացուցանէ զաստուած»*

*Ե. Դարձեալ ասէ առաքեալն, արժան է եպիսկոպոսին հաստատիլ սեղան ի քարանց աւրինակ խաչին, և զայն ծածկիլ սրբովք կտաւօք և խնկարկութեամբ ընդ առաւօտս և ընդ երեկոյս և ի ժամ պատարագին խափան մի լիցի խնկոց և լուցմանց»*

*Զ. Դարձեալ ասէ առաքեալն զհաց պատարագին յորում աւուր մատուցանիցեն ի նմին աւուր եփեսցին, և խաչասլես դրոշմաւ, նոյնպէս և գին սուրբ բաժակին սուրբ ամանաւք հանցին ի սեղանն, և մի ոք յանդգնեսցի խառնել ջուր ի յայն բաժակն յայն աստուածահաճոյ, այլ անապակն մատչ՝ և որ առնէ ոք, զի այնպիսին չէ քրիստոնեայ, այլ նզովեալ եղիցի մինչև դարձցի յաղանդոյն»*

*Է. Եւ ժողով արասցէ եպիսկոպոսն քահանայն յաթոռակցաց իւրոց. սարկաւագաց ժողովրդոց յորժամ սեղան հաստատէ և մատուցին աղօթս օրհնութեամբ, և արտասուօք, մարգարէիւք և առաքելօք. և սուրբ աւետարանութեամբ աւծեալ սրբով իւղով և ապա մատուսցեն պատարագ»*

*Ը. Դարձեալ ասէ առաքեալն, յորժամ հաստատէ եպիսկոպոսն բզսեղանն, արժան է ի նմին աւուր զենմունս առնել վասն աստուծոյ. զուարակս և նոխազս, և ոչխարս, որպէս և սողոմոնին արար գչինուած տաճարին իւրոյ ի հաստիլ սեղանոյն և հաճոյ եղև աստուծոյ, և հաստատեցաւ տէր ի հոտ անուշից»*

*Թ. Դարձեալ ասէ առաքեալն յորժամ ի մի վայր ժողովեսցին հաւատացեալքն յաղաւթս ի տուն աստուծոյ, զայլ*

ինչ մի խօսեսցին, բայց միայն զաղաւթսն մի քրթմնջեսցին ընդ միմեանս այլ կացցին ընդ յարևելս ձեռս ի վեր ամբարձցին խնդրելով զարդարանալ և արքայութեան արժանի լինել, և բարութեանցն նորա անդ է պատրաստեալ արժանանալ»

Ժ. Դարձեալ ասէ առաքեալն թէ ձեռնադրեսցէ զոք եպիսկոպոս քահանայ կամ սարկաւագաց յանցանք ինչ լինիցին առ նմա, որպէս և է մարդոյ զինչ և է աղտեղութեամբ շնութեամբ, կամ գողութեամբ, կամ ըսպանութեամբ, և ի ժամ ձեռնադրութեան չգիտաց ոք, և ապա յետոյ ինքն զղջասցի. կամ զինչևիցէ պատճառանաւք յայտնիցին, ոչ կարէ նա սպասաւորութիւն առնել սեղանոյն և ոչ պատարագ մատուցանել, այլ արտաքոյ ապաշխարել զանցանս իւր. զ. ԺԲ. ամ ապա որ ինչ արժան է շնորհել ի ներքոյ առաջի բեմին սպասաւորութիւն առնել և կալ ի պատիւ, միայն բեկեալ սրտիւ մինչև օր մահուանն իւրոյ»

ԺԱ. Դարձեալ ասէ առաքեալն իսկ եթէ ձեռնադրեսցէ զոք եպիսկոպոսն և մարդն ուղիղ էր՝ ապա շնացաւ. կամ գողացաւ, կամ այլ ինչ վատթար գործեաց, այնպիսին ամենևին բարձցի ի քահանայական շնորհին. և ձևն և նշանն, քանզի անհնարին է նմա այլ քահանայանալ, այլ արտաքոյ ապաշխարել ԺԵ. ամ, ապա յորժամ եկեղեցւոյ արժանանայ, և հաղորդութեան սուրբ պատարագին ընդ այլ զինուորսն կացցէ յեկեղեցւոջն, և անհնար լիցի նմա այլ ի բեմ ելանել, կամ կարդալ կամ սաղմոսել, մինչև ցաւր մահուան իւրոյ՝ քանզի պղծեաց նա զսուրբ ամուսնութիւն և առ ոտն կոխեաց, մի համարձակեցուսցէ եպիսկոպոսն, քանզի չէ հնար նմա այլ քահանայ լինել»

ԺԲ. Իսկ եթէ յանդգնեալ եպիսկոպոսն վասն կաշառոյ. կամ վասն բարեխաւսութեան, կամ վասն մերձաւորութեան հրաման տացէ, այնպիսոյն քահանայութեան տացէ՝ վրէժ յաւուրն դատաստանին յաններելի տանջանսն»

ԺԳ. Դարձեալ ասէ առաքեալն, ամուսնացեալ քահանայքն, յորժամ զսուրբ պատարագն մատուցանել կամին,

զերխս աւուրս հրաժարեցին ի կանանց իւրեանց մատուցման օրն, զի եթէ զհաց զառաջնորդութեան ոչ ետ քահանայն առանց քննելոյ, և զսրբութիւն ոչ գտանելոյ, որչափ ևս առաւել որ զայս երկնաւոր պատարագս մատուցանեն պարտին սուրբ լինել և պատրաստ որպէս աստուծոյ սպասաւորս ահիւ կալ և դողութեամբ զի արժանի լինիցին անմահ կենացն»

ԺԴ. Եթէ կուսութեամբ քահանայութիւն ընկալեալ է այնպիսին տքնաւղ լիցի, պահաւղ, յորում աւուր զսուրբ պատարագն մատուցանել կամիցի, պատրաստ լիցին զգիշերն ամենայն տքնիլ սուրբ խորհրդով առանց ամենայն կեղծաւորութեան՝ զի ընդ աստուծոյ խորհուրդ մտանէ»

ԺԵ. Քահանայ որ երդնուցու՝ ամենևին մի լիցի նմա ի քահանայութեան, զի զբանն աստուծոյ արհամարհեաց»

ԺԶ. Արժան է քահանային զի աշխատասէր լինել, քաղցբարան, խորհրդական զմեղուցեալսն ուղիղ աշխատութեամբ պահօք և աղօթիւք, և զամենեսեանսն արքայութեան արժանացուսցէ՝ զի լերևին քրիստոսի, ամենեքեան առնուցուն զանխթառամ պսակն զոր անդնէ պատրաստեալ»

ԺԷ. Դարձեալ ասէ առաքեալն որ մի անգամ ի քրիստոս մկրտեալքն, մի երբէք լիցի նոցա անկանիլ ընդ մեղաւք. այլ աստուածահաճոյ վարիլ զկեանս իւրեանց՝ մի շնալ, մի գողանալ, մի արբենալ, մի երդնուլ, մի բամբասել, այլ որպէս աստուծոյ, խիկ ժողովուրդ առանց ամենայն կեղծաւորութեան»

ԺԸ. Դարձեալ ասէ առաքեալն, եթէ ոք այր կամ կին քրիստոնեայ շնացու արտաքոյ եկեղեցոյ ապաշխարեսցեն գ. Գ. ամս տքնիլ պահիլ աղաւթել, և լուծումն շաբաթոյ և կիւրակէի միայն և ի տէրունական տաւնսն, մինչ ի կատարել, Գ. ամացն, ապա չորրորդումն լիցի արժանի հաղորդութեան, և որք գողասցի ոք զնոյն պատուհաս կրեսցէ ապա եթէ ի մեղսն աւելան, կրկին ապաշխարեսցին»

ԺԹ. Դարձեալ ասէ առաքեալն, եթէ ոք ի քրիստոնէից շնացեալ զորդէծնութիւն հեղուցու, և զաստուծոյ երկեւղն

ոչինչ համարի, զի մի մարդկան յայտնեսցի, յայնպիսին ընդ սպանողսն ապաշխարեսցէ բազում յառաջանաւք»

Ի. Դարձեալ ասէ առաքեալն, եթէ որ անժուժկալաբար լըլկէ զինքն և հատումն արասցէ մարմնոյ իւրոյ պիղծ է այնպիսին, ընդ շնացելոցն ապաշխարեսցէ, եթէ յաւելիցէ ի գործն կրկին ապաշխարեսցէ, և այնպիսիքն ձեռնադրութեան մի լիցեն արժանի»

ԻԱ, Դարձեալ ասէ առաքեալն, եթէ որ պղծի ընդ արուի, պիղծ է այնպիսին, զամենայն աւուրս կենաց իւրոց ապաշխարեսցէ արտաքոյ եկեղեցոյն և ի ժամանակի որոշմանն հաղորդեսցի»

ԻԲ. Դարձեալ ասէ առաքեալն. թէ որ առ նա կին իցէ և շնասցէ. ԺԲ. ամ ապաշխարեսցէ արտաքոյ արտասուօք զամենայն սրբապահս և յետ Զ. ամի անցանել շաբթի և կիրակէի, և ի տէրունական տօնսն լուծումն արասցէ, և ի տարւոյն զերրորդ մասն պահեսցէ՝ և ապա մտցէ եկեղեցի և ի հաղորդեսցի»

ԻԳ. Դարձեալ ասէ առաքեալն կախարդի, ուրացողի՝ մի կանոն եղիցի ի վերայ»

ԻԴ. Որ շնայ և զմանուկն սպանանէ՝ մինչև ցօր մահուանն իւրոյ ապաշխարեսցէ, և ի մախճանին հաղորդեսցի»

ԻԵ. Արժան է քրիստոնէից զուրբաթ և զչորեքշաբաթի պահել և աղօթել, զի աւուրք չարչարանաց տեառն մերոյ են. արտմիլ, արտասուել, յիշել զնորա վասն մեր զխոնարհութիւն, և գոհանալ զնմանէ. որ եկն և փրկեաց զմեզ իւրով չարչարանօքն, պահել մինչև ց. Թ. ժամն և ապա ճաշակել»

ԻԶ. Ասէ սուրբ առաքեալն, յորժամ զտէրունական տօնսն կատարեն հաւատացեալքն. նախ յառաջ պահեսցեն շաբաթ մի ի պատիւ և ի սպաս տօնին, և ապա տօնեսցեն»

ԻԷ. Դարձեալ ասէ առաքեալն. զսուրբ քառասունսն պահեսցեն. հաւատացեալք սրբութեամբ ուրոյն զշաբաթ և զկիրակի, և յորժամ օր չարչարանաց տեառն հասանին տըքնեսցեն և անդադար աղօթեսցեն, ժպիտ մի ումեք ելցէ այն

աւուրն, այլ արտասուս ըստ տեառն մերոյ, և ապա զկե-նարար պատէքն արասցեն ցնծալով ընդ յառնելն տեառն մերոյ աղօթիւք, փառաւորել զնա որ փրկեաց զմեզ յարու-թեամբ իւրով, և ետ մեզ երգակից լինել վրենոցն»:

ԻԸ. Որ պղծի ընդ անասնոյ զինչ արասցուք» Պատաս-խանի» Որչափ ամք են մարդոյն ընդ ունկնդիրս կացցէ՝ Է. ամ ընդ ձեռամբ, ապա մտցէ եկեղեցի ընդ ժողովուրդն և ի վախճանին հաղորդեսցի» Հարցումն» Որ ուրանայ զՔրիս-տոս և զղջացեալ դառնայ զինչ արասցուք՝ Պատասխանի. Զ, ամենայն աւուրս կենաց իւրոց ապաշխարեսցէ արտասուօք պահօք և աղաւթիւք և տրօք տնանկաց, և ի վախճանին հաղորդեսցի» Հարցումն»

Լ. Որ կամօք մարդ սպանեալ է՝ որպէս արժան է առ-նել» Պատասխանի ԺԵ, ամ ընդ ունկնդիրս կացցէ, Է. ընդ ձեռամբ, և յելս անձին իւրոյ հաղորդեսցի» Հարցումն»

ԼԱ. Որ մի մօր կաթամբ սնեալ են աւտարք ի մի-մեանց, արժան է ամուսնանալ» Պատասխանի Չէ արժան զի ծնօղն և սնուցաւղն մի համարին»

ԼԲ. Հարց, եթէ ազգականք ամուսնանան զինչ արաս-ցուք» Պատասխանի, Քակել արժան է ի միմեանց. և ծանր ապաշխարութիւն ի վերայ դընել, զի չէ ամուսնութիւն, այլ յարակայ պոռնկութիւն և ընդ անիծիւք արարչին»

ԼԳ. Հարց». Որ զսահմանս ընկերին յափըշտակեաց որ-պիսի ինչ է»: Պատասխանի», Զոր գրեաց Մովսէս հրամա-նաւն Աստուծոյ. իջցէ անէծք ի վերայ նորա և եղիցի նզո-վեալ ի կեանս և ի մահ»:

Իբրև կատարեաց առաքեալն Թադէոս զայս ամենայն ասէ ցժողովուրդն, հայրք և եղբայրք որք տեառն էտուք զանձինս ձեր՝ այս ձեզ յինէն օրէնք լիցի, և այլ որ ձեր լինելոց են արդ հաստատուն կացէք յամենայնի զոր լուա-րուք յինէն մի անցանէք ըստ սահմանս յայսմ, զի ձեզ բա-րի լինիցի, և երկայնակեացք լինիցիք, եղիցի ձեզ յիշատակ բանս այս, և մի մոռանայք յաղօթս ձեր, և զայլ կարգա-ւորութիւն ուսուսցէ ձեզ Ադդէ զոր լուաւ յինէն ըստ կար-

գին զոր եդին եղբայրքն առաքեալքն տեառն. պահեսջիք խաղաղութեամբ ի փորձանաց չարին, խաղաղութիւն ընդ ձեզ՝ զայս աւրինադրութիւն» Ես Զաքարիայ աշակերտ առաքելոյն Թադէոսի գրեցի. որպէս լուա ի նմանէ՝ ամենայն հաւատացելոց ի Քրիստոս Յիսուս նմա փառք յաւիտեանս ամէն»:

## ՄԱԿԱՐԻ ԿԱՆՈՆՆԵՐԻ ԳՐԱԲԱՐ ԲՆԱԳԻՐԸ.

*Երանելւոյն Մակարայ Արքոյ քաղաքին Երուսաղէմի Հայրապետին կանոնական թուղթ ի Հայս՝ վասն կանոնադրութեան կաթողիկէ եկեղեցւոյ կարգաց Զոր չէ արժան ընդ սահմանն եւ ընդ հրամանն անցանել գլուխք Ժ.*

Ահա մասնաւոր եդաք զայս փափագ սիրոյ բարեպաշտութեան ձերոյ փութացայ զարթուցանել. զբարեսէր և զպարզամիտ սիրտս ձեր ի խնդիր ուղիղ բարեպաշտութեան ճշմարիտ կանոնադրութեան կաթուղիկէ եկեղեցւոյ և կարևոր որ կարգաց Աստուծոյ, զոր պարտ է բազում զգուշութեամբ ստանալ և աներկևան հաւատով պահել ամենայն երկիւղածաց Աստուծոյ. յորս և դուք ոչ յապաղեալ զհեղգացուցիչ ինչ դանդաղանաւք ծուլացարուք. այլ փութացեալ շնորհաւք սուրբ հոգւոյն ջերմութեամբ և Աստուածային սիրոյն բաղձանօք, որ ոչ մերձաւորացն յաւժարեցուցանէ ժտել խնդրել զհոգևոր աւգտութիւն, այլ և ի տար աշխարհ փութացուցանէ հասանել մեծաւ փափագանաւք և ըղձալի տենչանաւք՝ յաղագս աստուածահաճոյ խնդրոյ և հոգւոյ փրկութեան զմտաւ ածեալ զասացեալսն թէ մի դանդաղեսցես երթալ հեռի ճանապարհ թէ պիտանացու ինչ ուսանել խոստանայցէ որ և զայն փափագ հոգևոր վաստակոց յանձինս ձեր երևեցուցէ զվասն մեծաշահ աստուածային զանձուցն հոգևորաց առաքեցէք գիր ի հեռաբնակ աշխարհ. ի կողմանց արևելից ի սուրբ քաղաքս Երուսաղէմ,

որ ի ձեռն երկիւղածաց քահանայից մատուցաւ առաջի բազմութեան եպիսկոպոսաց որք մի մի ժողովեալք յիւրաքանչիւր քաղաքաց որոց առաջի անկեալ մաղթանօք խնդրեցին զգրոյն պատասխանիս՝ զոր թէպէտ և ոչ կամէաք ծանրացեալ տկարութեամբ հրամանատարութեանս մեծամեծ կրօնիւք եկեղեցւոյ՝ սակայն հոգևոր ժտութիւն և փոյթ աստուածասէր քահանայիցս հարկաւորեաց զմեզ գրել և տալ ձերում կամայաւժար բարեպաշտութեանդ զգլուխ կարևոր կարգաց եկեղեցւոյ զհաստատութեան հաւատոց, ոչ մի ինչ երկբայութեամբ և զամենայն կանոնադրութիւն սրբոց ժողովոցն որ վասն հերձուածողացն եղեւ՝ զոր կարևոր է ընդունել ամենայն բարեպաշտաց որ եղեւ վասն դրութեան կարգաց եկեղեցւոյ. այլ և տեսեալ զբազմազգուշալի կարգաւորութիւն կենդանարար մկրտութեան սրբոյ քաղաքիս, հիացեալ զարմացան թէ կողմանք յարևելից թերի են զգուշութեամբ յայսպիսիս բազում ինչ իրօք, զի ի տեղիս տեղիս աւազանս կարգաւոր ոչ ունեն, և յորպէս ամանի մկրտեն, և է որ սարկաւագունքն մկրտութիւն առնեն, և եպիսկոպոսք և քահանայք առանձնակ ձէթ աւծման աւրհնեն. և զձէթ կնքոյ որ առաքելոցն և այսր պահի յաւելուածով ոչ ունին, և զբոլոր զգայարան մանկանն ոչ աւծանեն, և է զի զժողովոյն կարգեալսն ոչ ասեն ուրեք ուրեք քահանայքն ի ժամ մկրտութեան, և ձեռնադրութեամբ ժառանգաւորքն միապատիւ համարեն, և ոչ ընդ աւելեօքն հնազանդեն, և բազում և այլ շփոթութիւնք հպարտութեամբ և ծուլութեամբ զոր ի կարգս եկեղեցւոյ մուծեալ են մարմնասէրքն, զոր ծանուցին մեզ եկեալքս. ընդ որ հիացեալ մեծապէս զարմացաք, և վասն երկիւղին աստուծոյ ոչ հեղգացաք գրել փութանակի։ Ես Մակարիոս արքեպիսկոպոս Երուսաղեմի և ամենայն բազմութիւն եպիսկոպոսացս որ ընդ իս են. առաքել ի կողմանս արևելից առ քրիստոսասէր և երկիւղած եպիսկոպոսապետդ Վրդանէս և առ համօրէն եպիսկոպոսս և քահանայս հայոց. բազում զգուշութեամբ և երկիւղիւ կատարել զկարգադրութիւն մեծի խորհրդոյն

աստուծոյ որ կատարի ի կաթուղիկէ եկեղեցւոջ, որով պարգեւի ի շնորհաց հոգւոյն մեղաց թողութիւն և ոգւոց փըրկութիւն մկրտելոցն ի սուրբ աւազանին, և հոգին սուրբ ոչ արհամարհէ զցանկացողս բարեպաշտութեան, այլ խոնարհեալ իջանէ և սրբէ ուղիղ դաւանութեամբն ի ձեռն ջրոյ սրբոյ աւազանին» Եւ յայսմ ամենայնի չէ պարտ ծուլանալ և դանդաղել եպիսկոպոսացն և երիցանցն, ի մկրտելոց զայնս որք կամին մերձենալ ի բարեպաշտութիւն աստուածպաշտութեան՝ զի այս է փոյթ քահանայից, և գործ կարեւոր առաջնորդաց եկեղեցւոյ, զկամաւորն բարեպաշտութեան խրատել և ուսուցանել բանիւ և վարդապետութեամբ մերժել ի սատանայէ և ընծայեցուցանել աստուծոյ, սրբոյ աւազանին լուսաւորութեամբ՝ և մի ումեք լինել պատճառք կորստեան անհնազանդութեամբ և թերակատար ինչ մկըրտութեան կարգօք վասն դանդաղութեան իւրոյ առ ոչ ածել զամենայն կարգաւորութիւն ի վերայ մատուցելոյն ի մկըրտութիւն սուրբ աւազանին, զոր բազում զգուշութեամբ և ընծայից դողութեամբ առանց դանդաղելոյ կատարէ ընդհանրական եկեղեցի աստուծոյ» Եւ արդ՝ եկեալ ի խնդիր ստուգիւ ըստ նախ ասացեալ գլխոցն, արասցուք սկիզբն ի գրոց հատուցեալ զոր պահանջէքն:

Ա. Թէ արժան իցէ սարկաւագաց մկրտութիւն տանել և կատարեալ իցէ խորհուրդն գիտութիւն լիցի քրիստոսասէր եղբայրութեան ձերոյ, զի եպիսկոպոսաց և քահանայից միայն է իշխանութիւնս այս՝ և սարկաւագի զայս տանել չէ արժան, քանզի սպասաւորք են, և խափանեալ է այս առ ի նոցանէ՝ և աւելի է խնդրելն թէ կատարեալ է առ ի նոցանէ մկրտեալն» բայց պարտ է նախ քննել թէ սովորութիւն իցէ գաւառին այնմիկ սարկաւագացն մկրտել, և եթէ գտցի ոք արարեալ ընդ անմեղադրութեամբ է՝ վասն ագիտութեան կարգաց եկեղեցւոյ, զի սովորութեան գաւառին զհետ չոգաւ» Իսկ եթէ գիտէր զկարգս եկեղեցւոյ և անց զնոքօք եղիցին ի վերայ նորա պատիժք ըստ կարգի յանցանացն:

Բ. Եթէ աւազան սրբեալ ոչ ունին և յորպէս ամանի մըկրտեն, զի թէ ոչ էր մերձ եկեղեցի շինեալ ի փառս աստուծոյ և ի մուտս ժողովրդոց առանց մեղադրելոյ արդեօք էր, և եթէ եկեղեցիս ունիմք պարտ է և մկրտութիւնս առնել, և աւազան յորում մկրտէ որ գայցեն յուղիղ հաւատս բարեպաշտութեան, ապա թէ դիպեսցի ոք ուր ոչ իցէ եկեղեցի և կարգաւոր աւազան չէ արժան արգելուլ որ կամիցեն մկրտել, այլ կատարեալ զմկրտութիւն առանց կարգաւոր աւազանի. վասն ի հարկէ պիտոյիցն է՝ զի մի գտցի պարտական փրկութեան խափանելով զմկրտութիւնն, զի հոգին սուրբ ըստ մաղթողին տայ զշնորհն, և ըստ ամանին ոչ լինի արգելեալ, և յամենայն ժամ փափագեալքն բաւական են շնորհ ի հոգւոյն, և ոչ ի գլխաւոր տաւնսն միայն է կատարելութիւն զի առաքեալքն ոչ ըստ ընտրութեան տանից մկրտէին, այլ ըստ բաւականի եկելոցն լուսաւորէին ի ջուրց վերըստին ծնանելով, և երեք կին ընկըմամբն թաղեալ ի ջուրն սուրբ աւազանին զերեք աւուրս թաղումն տեառն նշանակեմք յանձինս մկրտելոցն, զոր և աստուածային առաքեալն յայտնապէս ցուցանէ ասելովն, թէ թաղեալք ընդ նմա մըկրտութեամբն, նմանօղք եղիցուք նմանութեան մահու նորա, զի նորոգութեամբ յարութեան հաղորդ լինիցիմք նմա ի կեանս յաւիտենից, և այսպէս ուղիղ դաւանութեամբ ձեռս ի վերայ դնելով պարգեւեալ լինի հոգին սուրբ ի փրկութիւն մեզ. լուսաւորելով զկոչեցեալսն յորդեգրութիւն, և հաւատովք օծանեմք յիւղ սրբութեան, և այսպէս ըստ իւրաքանչիւր եդեալ մասանց կարգք սրբոյ եկեղեցւոյ յօրինին, ոչ ելանելով ըստ եդեալ սահման, և գլխաւորեալք ըստ երկնաւորացն դասուց որպէս ուսաք ի հարցն հոգեւորաց յաշակերտաց առաքելոցն սրբոց։

Գ. Եւ զի արդ, կարգք եկեղեցւոյ սրբոյ յօրինին վերատեսուչք ըստ կարգեալ Կայենիցն, կալցեն իշխանութիւն ուղղել ի բարին որոյ կոչեցան ի վերակացութիւն, և առեալ ի նոցանէ մի փքացին ամբարհաւաճութեամբ, զանձինս առիմաստունս ունելով, և անկցին յիմարութեամբ և անկցին ի

չարութիւն, զի թէպէտ միապէս տուեալ. շնորհք ի հաւատացելքն, այլ ոչ միապատիւք ամենեքեան. և թէպէտ և փոքր կայոյց զինքն անբաւն, այլ զփառս աստուածութեան ոչ ընդ նմին կորոյս, և առաքելոցն ամենեցուն յետ յարութեան երևեալ կենարարին, այլ զոմանս գեր ի վերոյ կարգէ, և նոյն սկզբնաւորեալ ի մեզ հաստատեցաւ, զոր և Պօղոս ոչ հրամայէ զմիմեամբք ելանել ասելովն, իւրաքանչիւր ոք յոր կոչումն կոչեցաւ ի նմին կացցէ:

Դ. Եւ որպէս հրամայեցի բաւականանալ յիւրաքանչիւր յեղեալն կարգի» Արդ. միաբանութեամբ ժառանգաւորացս և եպիսկոպոսաց և քահանայիցս և սարկաւագացս. Ես Մակարիոս արքեպիսկոպոս սուրբ քաղաքիս Երուսաղեմի, աւանդեմ զկանոնադրութիւնս, զայս ձեզ ունել յառաքելոցն պատմութեանց և աւանդութեամբ հարցն առ մեզ հաստատել հիմնանալ, զի զսուրբ մկրտութեան ձեռնադրութիւն որպէս առաջագոյն ասացաք եպիսկոպոսաց և քահանայից, միայն է կատարել, և զեւղ սրբութեան եպիսկոպոսապետն աւրհնեսցէ՝ և վասն հեռաւորութեան և կարևոր պիտոյից հրամանաւ արքեպիսկոպոսին, երկու և երեք միաբանեալ եպիսկոպոսք, և սարկաւագունք սպասաւոր սրբութեան, և զեւղ աւծման մեռելոցն և հիւանդացն, մկրտելոցն առանձակ աւրհնեսցեն քահանայք և եպիսկոպոսքն, զայս սահմանեցին սուրբ հարքն մեր, և մի ոք իշխեսցէ փոխել զուղիղ եդեալ սահման, զի մի զնոցին կապանս նզովիցն ընկալեալ որոշեսցի աստուծոյ:

Ե. Եւ որպէս մերձեսցուք ի սեղանն սուրբ. և կենարար խորհուրդ» Առ այդ անմահութեան վիճակ, մի ոք երկմտութեամբ և մի թերահաւատութեամբ, և մի գործովք անարժանութեան մերձ լինել յանդգնեսցի, զի մի զկամս աստուծոյ զբարկութիւն յամենայն երկրի շարժեսցէ, և ինքն լուիցէ զասացեալսն. դու ընդէ՞ր բռնաւ պատմես զարդարութիւն իմ, զի դու ատեցեր զխրատ իմ այլ ուղիղ գնացիւք և ճշմարիտ հաւատով մատուցեալ լուսաւորեսցի, և այլոցն ինքեամբ գործեսցէ փրկութիւն:

Զ. Եւ զի արդ է արժան զխորհուրդն կատարել» Զփրրկական խորհուրդ մարմնոյ և արեանն տեառն պարտ է երկիւղիւ և զգուշութեամբ կատարել և ուղիղ դաւանել խոստովանութեամբ ուրոյն 'ի հերձուածողացն փորձիչն խորհրդոց զի մի արիանոսաց մերձ լինելով ըստ առաքելոյն անուանատուծոյ և ճշմարտութիւն հայհոյեսցի։

Է. Եւ որպիսի օրինակաւ նուէրք սրբութեան, յաւրինեսցի» Հանեալ ի սեղանն հաց սուրբ ջերմ ըստ առաքելոյն աւանդութեան և անապակ առանց երեք խառնման, զի ոչ ապականացու իւիք փրկեմք այլ անապական մարմնով անբիծ, և անարատ գառինն. և զայս մինչև ի սեղանն սարկաւագունք յօրինեսցեն, և զկատարելն ի վերոյ քահանայքն կատարեսցեն։

Ը. Եւ զիա՛րդ եկեսցէ ի ձև սեղանն խորհրդոցն, և այլ ևս կարգն» Սեղանն քաւութեան ընդ վարագուրաւ յորում իջանէ հոգին սուրբ, աւագանն, յետոյ առ նմին տամբ, և պատուով հաստատեալ յաջմէ, և ժառանգաւորքն իւրաքանչիւր աշտիճանաւ պաղատեսցեն. և ժողովրդականքն արտաքոյ վարագուրին. և երախայքն առ դուրսն ունկնդրութեամբ զի մի ընդ միմեանս ելանելով եղծցեն կարգքն, այլ իւրաքանչիւր կայանիւ անարատ մնասցէ։

Թ. Զայս աւանդեմ ձեզ պատուիրան հաւատոց և կարգաց եկեղեցոյ ըստ խնդրոյ աղաչանաց ձերոց, և նզովեմք ի վերայ այսոցիկ զայլաձևսն խորհեցեալս, զի ի միմեանց ընկալեալ ձեռնադրութեամբ զշնորհսն. ոչ բերեմք զպակասութիւն, և միապատիւ ոչ իրաւունս վարկանիմք զկարգեալսն ուղղապէս եկեղեցւոյ և զփառամոլ անձինս կրշտամբեմք որք խորհին հակառակ, որպէս պատմեալ եղև մեզ, բզտուր զայբագըր և աւանդեայ և Բասենոյ եպիսկոպոսէ, որք սակաւուք ընդ արիանոս միաւորեալ է և դարձեալ խղճեալ և արդ, այլ ևս յանդգնագոյնս խորհի եպիսկոպոս միայն աթոռաւ, և ընդ արք եպիսկոպոսին ինքեամբ անձին տայ պատիւ, զոր չէ արժան ընդունել, զի և ոչ հարքն աւանդեցին այսպիսի ինչ հակառակութիւնս յեկեղեցի մուծանել, և ան-

վայելուչ է, համարիլ հաւասար մինչև կոչմամբ ի սպասու աթոռոյն ժամանեսցէ և սրդ պարտ է զայնպիսին քաղցրութեամբ 'ի հնազանդութիւն կոչել, և թէ ի նոյնս մնասցէ խորշել իբրև յաւտարէ» Ողջոյն տան ձեզ ամենայն յեկեղեցիս» Ողջոյն լերուք ի տէր հաստատուն և ուղիղ հաւատով:

## Ը) ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՒՈՐՉԻ ԿԱՆՈՆՆԵՐԸ 325 Թ. (301—325).

Արիստակէսը, Լուսաւորչի որդին՝ Նիկիայի 20 կանոնը բերաւ ժողովից և յանձնեց հօրը, որը այդ կանոնների վրայ աւելացրեց մի քանի գլուխներ. «սուղ ինչ գլուխս յինքենէ ի կանոնս ժողովոյն յաւելու, վասն առաւել զգուշութեան իւրոյ վիճակին» Խոր. Բ—ԳԸ. Դ. գլ.:

Շահապիվանի 447-ի մեծ ժողովում կարդացւում է 'ի լուր ամենեցուն հետևեալ կտորը և միաբերան հաստատւում է. «Զեդեալ զկարգն սրբոյն Գրիգորի և զՆերսեսի և զՍահակայ և զՄաշտոցի դուք այդրէն հաստատեցէք, և այլ ևս լաւ, որպէս ձեր կամք են, և մեք ախորժելով յանձին ունիմք» (տես մեր կանոնագրքերը): Այսպիսով 447-ի ժողովի վճիռը և Դ. Ե. դարու պատմագիրների վկայութիւնը (տես ագաթ. 508 եր.) տալիս են իրաւաբանական հիմք ընդունելու Լուսաւորչի դրած կանոնները վաւերական և համարել մեր եկեղեցական իրաւունքի աղբիւր:

Բայց դժբախտաբար յայտնի չեն թէ քանի՞ կանոն է գրել և որո՞նք են այդ կանոնները: Նրա յիշատակը այնքան սուրբ է հայերիս համար, որ առանց տատանուելու պիտի նրա կանոնները մեծ ջերմեռանդութեամբ պահենք, ուստի և այդպիսի սրբութիւնը մաքուր պահելու նպատակով, պիտի թոյլ չտանք, որ օտար ձեռք խառնուի նրա կանոնների մէջ և Լուսաւորչի անունով հրատարակի: Եթէ Լուսաւորչի կանոնները յիշատակելիս նկատումներ լինեն նրանց վաւերականութեան աստիճանը որոշելու համար, այդ ամենևին չի նսեմացնիլ նրա հեղինակութեան ույժը:

Եթէ պատմագիրները ասում են, որ Նիկիայի 20 կանոնների վրայ «սուղ ինչ գլուխս» աւելացրեց, այդ խօսքը ենթադրել է տալիս, որ Լուսաւորչի աւելացրածը՝ 20—կանոնից քիչ էր և ոչ աւելի. իսկ եթէ Խորենացին «սուղ ինչ գլուխս» գրելիս այդպիսի համեմատական չափ ի նկատի չի ունեցել, այն ժամանակ շատ դժուար կլինի պնդել Լուսաւորչի սահմանած կանոնների այժմեայ թուի վրայ (30-աչափ)։

Լուսաւորչի կանոնները կարդացողը իսկոյն նկատում է, որ մի խմբագրութեամբ գրուած չեն, մի հետևողական բովանդակութիւն չունեն, երբեմն գործ է ածւում մեղմ, հայրական խրատական ձև յանդիմանական եղանակով, երբեմն հրամայական—նզովական ձև և բովանդակութիւնը անվայել, անհամապատասխան նախորդ յօդուածին։ Ընդհանուր առմամբ բոլոր կանոնները համարեա ոչ միայն լեզուի, այլ և բովանդակութեան կողմից նման են Յովհան Մանդակունուն վերագրած կանոններին, և Բարսեղ մեծի երրորդ խումբ 74 կանոններին, մինչև իսկ բառացի կրկնութիւններ են։ Արդեօ՞ք ով է ումնից օգտուել, կամ ով է երկուսի փոխարէն գրել, շատ դժուար է դրական պատասխան տալ։ Աբել եպիսկոպոսը զուր Զամչեանի քննողաբար վերաբերուելը դէպի Լուսաւորչի կանոնները՝ դաւանաբանական տարբերութեամբ է բացատրում. և դժբախտաբար միշտ Զամչեանի վրայ այդպէս նայողը՝ կուրօրէն հետևել է նրան «ժողովոց պատմութիւն» գրելիս, ջանալով ձեռագիր կանոնագրքերը աչքի անցնել։ Լուսաւորչին վերագրած 30 կանոնները մերժելու իրաւունք չունենք իրաւաբանական տեսակէտից, ինչպէս վերև յիշեցի, միայն խօսք կարող է լինել նրա քանակի և բովանդակութեան մասին։ 30 կանոնիս նմանութիւնը Մանդակունուն վերագրած կանոնների հետ ամեն մի յօդուածում մատնացոյց կանեմ, և որովհետև երկուսի բնագիրը գրաբար է, թող համեմատողը իմ աշխարհաբառի թարգմանութեամբ չբաւականանայ, հապա նայի գրաբարներին, որ դրւում է վերջում։

1. Մեղքի մէջ (կուրած) ընկած քահանան 10 տարի պիտի ապաշխարի արտասուքով և աղքատներին ողորմութիւն բաշխելով, ապա հաղորդուի:

Յանցանքը թէև անորոշ է, բայց հասկացւում է մեղանչումն:

Ապաշխարողները 4 կարգի էին բաժանւում. 1) լացողների, որոնք դրսում կանգնած լացով պիտի ապաշխարէին: 2) Դրսի ունկնդիրների, որոնք եկեղեցու դռան մօտ կանգնած պիտի աղօթէին: 3) Ներսի ունկնդիրների, որոնք ամբիոնի ետև կանգնած, աւետարանից առաջ պիտի դուրս կային: Եւ 4) հաւատացեալների հետ կանգնողներ, որոնք հաղորդութիւնից առաջ պիտի դուրս գային:

Բարսեղի 6, 28, 76 կանոններով նոյն յանցանք գործողը 15 տարուայ ապաշխարանքի է ենթարկւում. իսկ արտասուքով միայն 7 տարի: (Տես գրաբառում՝ կանոնիս մէջ նշանակուած մեղքի համար ասուածը և Մանդակունու խոստովանելու համար գրած կանոնների հետ համեմատիր):

Տես Բարս. 6, 28, 76. Շահ. 2, (Թադ. 11), Ներ—9:

2. Քահանան եթէ կին առնի, 5 տարի դրսի, 2 տարի ներսի ապաշխարող լինի, 2 տարի էլ անհաղորդ լինի, ապա հաղորդուի:

Այստեղ խօսում է կուսան քահանայի վրայ, որ անպսակ մնալ է ուխտել և հոգևորական դարձել. այդպիսին եթէ կին առնի, 9 տարուայ ապաշխարանքի է ենթարկւում. կարգալոյծ լինելու կամ պսակը քանդելու համար ոչինչ չի ասում: Բ. Առ. 24 կանոնը հրամայում է չամուսնանալ. Նէո. 1, և Բարս. 6, 18 կանոնները պսակը լուծում են. տես և Անկ.—10, 19, (տես գրաբառը և Մանդակունունը):

Այս կանոնս բառացի կրկնւում է Բարսեղ մեծին վերագրած երրորդ տեսակ կանոնների մէջ թւով 74 հատ. տես գրաբառը:

3. Քահանան եթէ իւր փողը շահով տայ, մերժուի եկեղեցուց:

Նոյն բանը հաստատում են Բ—առ. 44, Նիկ. 17, Լաւ.— 4. Ա—առ. 48. Բարս. 4, Բ—Դւ. 3, 21:

Տես Մանդակունու գրաբառը. կանոնս բառացի կրկնւում է Բարսեղին վերագրած 74 կանոնում. տես գրաբառը:

4. Հեթանոսների տուն գնացողը և ուտող խմողը 3 տարի ապաշխարի և ապա հաղորդուի։

Տես Լաւ. 39, Բ—աւ—71. տես Մանդակ. դրաբառը։

5. Եթէ ամուսիններից մէկը երկակ է, միւսը կուսան, երկու տարի դրսում, մի տարի ներսում ապաշխարի։

Երկակ կամ երկեակ ասելով հասկացւում է երկրորդ անգամ պսակուած մարդ, երկրորդ պսակը հին կանոններով չի քաջալերւում, Նէո.—7 կանոնով քահանան իրաւունք չունի այրու պսակի խնճոյքին մնալու՝ իբրև ապաշխարողի հացկերոյթի։ Բարսեղ երկկանանց համար ասում է, թէ ոմանք դրանց ենթարկում են մի տարուայ ապաշխարանքի, ոմանք 2։ Ն—Կւ. 16 կանոնը չի թոյլ տալիս, որ այրին առանց հարկի կոյսի հետ պսակուի։ Մինչև այսօր էլ մեր մէջ աւելի յարգի է պսակուել կոյսի քան այրու հետ։

Տես Ն—Կւ. 16, Շահ.—7, Բ—աւ.—17, Բ—Կւ. 5, Գար. 10։

Այստեղ երկակ բառը կարելի է հասկանալ և այնպէս, որ կին ունեցող մարդը երկրորդ անգամ պսակւում է, այս ենթադրել է տալիս յաջորդ 6-րդ կանոնս, որը ասում է։

6. Եթէ մէկը թողնի երկրորդ կնոջ և էլի առաջին թողնուածին դառնայ, 8 տարի ապաշխարի։

6-րդը եթէ համարենք 5-րդի շարունակութիւն, դուրս կգայ, որ կոյսի վրայ պսակուող երկակը, եթէ սրան կթողնի և կդառնայ էլի նախկին կնոջ, 8 տարի ապաշխարի։

5 և 6 կանոնները թէ ոճի թէ բովանդակութեան կողմից բոլորովին զատւում են նախորդ և յետնորդ կանոններից. յետնորդ 7-րդ կանոնը կազմում է 4-րդի շարունակութիւն, որ ասել է, թէ 5 և 6 կանոնները ներմուծուած են յետոյ։ —Այս կանոնս նոյն բառերով կրկնւում է Ներսէս Բ-ի ժողովում և երկու անգամ «Ներսէսի» կանոններում։ Բարսեղի 46-րդ կանոնը համարեա երկուսի 5 և 6-ի բովանդակութիւնը ունի. այստեղ կարդում ենք, եթէ մէկը, անգիտութեամբ կպսակուի այն մարդու հետ, որի առաջի կինը հեռացած է և ապա առաջի կնոջ վերադառնալովը՝ արտաքսուած կլինի հեռանալ այդ մարդուց, նա շնութիւն արած կհամարուի։ Երկրորդ կնոջ չէ արգելում պսակուել, բայց լաւ է համարում անպսակ մնալ։

Տես դրաբառի համեմատութիւնը Մանդ. և Ներս. և Բարս. հետ։

7. Ով արգելում է ուտել, բայց ինքը գաղտնի ուտում է, կերածի չափ աղքատներին բաշխի:

Այս կանոնը բոլորովին անհասկանալի կթուար, եթէ շարունակութիւն չհամարէինք 4-րդի. որ ասել է թէ 5 և 6 կանոնները ներմուծուած են: 4-րդում արգելում է հեթանոսների տուն գնալ ուտել, այս 7-րդում էլ ասում է, որ շատերը թէ և արգելում են նոյն բանը, բայց ծածուկ իրանք գնում ուտում խմում են, այդպիսիներին պատժում է:

Տես Ա.-ատ. 16, լաւ.—37, 38, 39:

Համեմատութիւնը Մանդակ. հետ—գրաբարում:

8. Գաղտնի սպան անող քահանան կարգալոյծ լինի:

Տես և Բարս. 42:

Այս նոյն կանոնը բառացի կրկնում է Բարսեղի երրորդ խումբ ԻԱ. կ. տես գրաբար:

9. Եթէ մէկը սուտանկելով աղջկան պսակուի հետը, պսակը անվաւեր համարուի և պսակուածը իւր սրտի ուզածին գնայ:

Տես—Անկ. 11, Բ-առ—67, Բարս.—22, 30, Շահ. 7. Լաւ. 9:

10. Որ ի ձեռն յերաստին յաղելպէս, երեք ամ արտաքոյ և մի ամ ընդ օրինօք:

Թարգմանելը անկարելի է. Լուսաւորչի նման անձնաւորութիւնը այսպիսի ձեւով կանոն դնել չէր կարող. գրուածքի ոճը բոլորովին տարբեր է միւսներից: Նոյն բանը կրկնուում է Մանդակ. տես գրաբար:

11. Իգացելոցն երեք ամ արտաքոյ և երկու ամ ընդ օրինօք:

Այս կանոնս էլ ձեւի և բովանդակութեան կողմից 10-ի նման է. նոյնը կայ և Մանդակունու մէջ, սրանք Լուսաւորչինը չեն: Տես Բարս.—7, 62:

12. Թովիչները 5 տարի դրսում և մի տարի ներսում ապաշխարեն:

Տես Անկ. 24, Բարս.—65, 72. Շահ. 9, 10, Կես. 8:

Սրա ոճը նոյն է ինչ որ նախորդ 10, և 11-ինը. գրաբարում աչքի է ընկնում նմանութիւնը և տարբերութիւնը:

13. Ով կուսութիւն խոստացաւ Աստուծուն և պոռնկութիւն արաւ, 7 տարի ապաշխարի:

Տես Բարս. 60 կ. 59 կ. համ. Մանդակ. գլխաւորի հետ:

14. Մանուկը եթէ առանց մկրտութեան մեռնի, եթէ մեղաւորը ծնողներն են, 7 տարի ապաշխարեն. պատժուեն նոյնպէս քահանաները և հոգաբարձուները:

Տես Պար. 20:

15. Կերեզման քանդող—բաց անողը չորս տարի ապաշխարի:

Տես Բարս.—66, հարց—17:

16. Ով կկոծի և մազերը կխուզի, ճակատին կզարկի, ցմահ նզովեալ լինի:

Տես—Աշտ.—2, Շահ.—11. նոյնը կրկնւում է երրորդ Բարս. կանոններում:

17. Դիակներ կողոպտողը 16 տարի ապաշխարի:

Տես Բարս.—66:

18. Մարտիրոսների նշխարք եղած տեղը պէտք չէ պատարագ մատուցանել:

Շատ ձեռագրերում հակառակն է գրած. շատ քչերում և համաբարբառներում դրական է գրած: Նշանակում է, թէ վէմ քարի փոխարէն չի կարելի նշխարներ դնել և պատարագել:

Տես Ա—տր. 27. 5, Լաւ. 51. Շահ. 17:

19. Քրիստոնեաները մանաւանդ կանայք անաստուածների խառնակման եթէ նայեն, նզովեալ լինին:

Բառացի կրկնւում է Բարսեղի երրորդ տեսակ կանոններում:

20. կանոնները ասում են, որ անապատականները չպէտք է ոչ մկրտութիւն անեն, ոչ հաղորդութիւն տան, ոչ էլ պսակ անեն, այդ առաջնորդների իրաւունքն է.

Անապատականները կամ կրօնաւորները չունէին ոչ մի եկեղեցական աստիճան, այս հիման վրայ էլ իրաւունք չունէին քահանայագործութիւն անելու:

Տես Բ—Դւ. 34

21. Ով հանդուցեալի հրամանը (կտակը) քանդի և արհամարհի, նզովեալ լինի:

22. Ծածուկ խոստովանութիւնը մէկին ասող քահանան, աստիճանից ընկնի, պաշտօնեաների շարքից մերժուի և խոստովանողների մեղքը ընկնի նրա վրայ:

Նոյնը կրկնւում է Մանդակ. և Բարսեղի երրորդ կանոններում. տես գրաբարը:

23. Ով պոռնկութեան համար կարձակի կինը, թող արձակուած լինի, միայն մի տարի ապաշխարի:

Տես Բարս. 9, 31, Ճան. 4, 5, Սսի 14, Հարց. 17:

24. Եթէ մարդը թողնի կնոջ աստուածապաշտութեան պատրուակով, նզովեալ լինի:

Տես Բ. առ—5. Գանգ. 14:

Կանոնս 'ի նկատի ունի աղանդաւորներին, որոնք ամուսնութիւնը անմաքրութիւն էին համարում և կնոջ արձակում:

25. Եթէ քահանան կամ սարկաւագը կամ դպիրը հարբեց, չհամարձակի պատարագ անել, մինչև արտասուքով և անանկներին ողորմելով չապաշխարի:

Նոյնը բառացի կրկնւում է Բարսեղի երրորդ կանոններում (ԻԲ.) (տես գրաբարը): Տես Բ—առ—42:

26. Քահանայ կամ աշխարհական եթէ կաշառք առնի, Սիմոն կախարդի անէծքը վրան թափի, Յուդայի կցորդ լինի, նոյնպէս և Գէեզ բորոտին:

Տես Բ—առ—29, Սսի 1:

27. Ձեռնածուները երկու տարի ապաշխարեն:

Մանդակունու կանոնները խստիւ արգելում են թատրոնական տեղեր գնալ. ձեռնածու ասելով կարելի է հասկանալ թէ թատրոններում զանազան մնջկատակութիւններ անող, թէ զանազան փոխումներ և օյինբազութիւններ անող:

28. Պէտք է կիրակէն քրիստոնէաբար պահել և հանգստանալ, ով հրէաբար կպահի, նզովեալ լինի:

Տես Ա—առ—2, Լաւ. 29: Ե—Դւ. 17, 31:

29. Վայրաբար նզովող քահանան նզովեալ լինի:

Նոյնը կրկնւում է Մանդակունու մէջ. տես գրաբարը:

30. Կոյսը, միայնակեացը (մոնազոն, մոնայն) եթէ նուիրում են իրանց Աստուծուն, չհամարձակեն ամուսնանալ, ամուսնացողները հաղորդութիւնից մերժուեն, նրանց ընդունելութիւնը կախուած լինի եպիսկոպոսի մարդասիրութիւնից:

Տես—Բ—առ. 26, Բարսեղ—6:

Ահա այս են Լուսաւորչին վերագրած կանոնները, նախ քան ասելը, թէ որ կանոնները կարելի է վերագրել Լուսաւորչին, որոնք ոչ, այստեղ դնենք Մանդակունու մեղքերի անուան յիշատակութիւնը, որ բոլորովին նման է Լուսաւորչի կանոններին, միայն առանց պատժի որոշման. երկրորդ՝ կդնեմ Բարսեղի անունով 74 կանոններից նրանք, որոնք բառացի նոյն են Լուսաւորչինի հետ, և ապա եզրակացութիւն կարելի կլինի անել:

Յովհան Մանդակունու «կոչումն ապաշխարութեան»ից կբերեմ գրաբառ այն մասերը, որոնք նման են Լուսաւորչի. տակը գծածն է ուշադրութեան արժանին. իսկ Լուսաւորչի որ կանոնի հետ նմանութիւն ունի, այն փակագծի մէջ կդնեմ. կամեցողը համեմատի գրաբառ բնագրի հետ, որ դնում եմ յետոյ:

«Կոչումն ապաշխարութեան զոր ասացեալ է Տեառն Յովհաննու Մանդակունոյ հայոց կաթուղիկոսի». թիւ խոստովանութեան: Թէ կոյս ընդ կուսի. թէ մինն կոյս է և մինն արամբի. (5 կանոնի հետ համեմատիր): Թէ զկուսութիւն նուիրեալ Աստուծոյ և դարձեալ ստեաց, թէ ուխտեալ և ոչ կատարեալ (13 կ.): Թէ 'ի տունս հեթանոսաց անխտիր կերակրեալ է (ւ կանոն): Թէ 'ի ձիս յերասանեալ յագելապէս (10 կ.): Թէ զխոստովանութիւն ուրուք յայտնեալ (22 կ.): Թէ անկնունք մեռաւ ի ծուլութենէ (14 կ.): Թէ ի մեղս զառածեալ է (1 կանոն): Թէ զաղդ պսակէ (8 կ.): Թէ վայրապար նզովեալ է (քահանայ) (29 կանոնի հետ համեմատիր): Թէ ամուսնացաւ (քահանայ) և զպատարագն մատոյց (2 կ.): Մնացած կանոնների բովանդակութիւնը կարելի է գտնել Մանդակունու ճառերի մէջ: Այժմ արտագրենք այն բոլոր կանոնները Բարսեղին վերագրածներից, որոնք ոչ թէ նման, այլ նոյն են: Մեր կանոնագրքերում Բարսեղ մեծին յատկացրած են երեք խումբ կանոններ. առաջի խումբը նման է Բարսեղի իսկական

կանոններին, երկրորդ և երրորդ խումբը հաւաքածու է զանազան կանոնների և նրանց խմբագրութիւնը հասնում է մինչև Զ, Է—դարը։ Երրորդ խումբը 74 կանոնից է բաղկացած. որոնցից հետևեալները առաջ կբերեմ իբրև նոյն Լուսաւորչինի հետ։ «Բ. կանոն. Եթէ ոք ի քահանայից գծածուկ խոստովանութիւն ուրուք յայտնեաց՝ անկցի յաստիճանէն. և ի կարգէ պաշտաւնէից մերժեսցի. և մեղք չխոստովանողացն անկցի ի վերայ նորայ» (համ. Լուս. 22 կանոնի հետ, բառացի նոյն է)։ «Գ. կանոն. Քահանայ որ կին առնէ Ե. ամ արտաքոյ. Բ. 'ի ներքոյ ապաշխարեսցէ. Բ. ամս անհաղորդ կացցէ և ապա հաղորդեսցի» (համ. Լուս. 4 կանոնի հետ, նոյն է)։ «ԺԳ. կանոն. Ոչ է պարտ քրիստոնէից ի շաբաթու կամ ի կիրակէի շաբաթանալ և հրէանալ»—(տես Լուս. 28), «Ի. կանոն. Քահանայ որ զարծաթ իւր 'ի վարձու տայ, մերժեսցի յեկեղեցւոյն». (տես Լուս. 3 կ. բառացի նոյն է)։ «ԻԱ. կանոն. Եթէ ոք գաղտ պսակ դիցէ. պսակադիրն լուծցի» (տես Լուս. 8 կ. բառացի նոյն է)։ «ԻԲ. կ. Եթէ ոք արբեցաւ ի քահանայից կամ ի սարկաւագաց կամ ի դպրաց մի իշխեսցէ պատարագ կամ ի պաշտաւն մերձենալ մինչև բազում արտասուաւք և գթով տնանկաց ապաշխարեսցի. զի արբեցողք ընդ սպանողսն են». (տես Լուս. 25. բառացի նոյն է)։ Բացի այս, «Ներսէսի» 43 կոչուած կանոններում պատահում ենք կանոններ որ բառացի նոյն են Լուսաւորչինի հետ. օր. «Ե. կ. վասն որ մին կուսան է, և մին երկեակ և զուգին։ Գ. ամ ապաշխարեսցեն» (համ. Լուս. 5 կանոնի հետ)։ «Գ. կ. Վասն իգացելոցն . ., Գ ամ ապաշխարեսցեն» (համ. Լուս. 11 կանոնի հետ)։ «ԺԹ. կ. Վասն որ մանուկն մեռանի առանց կնքոյ ի ծուլութենէ. Գ. ամ ապաշխարեսցէ» (համ. Լուս. 14 կ.)։ Սրանից յետոյ դնում եմ Լուսաւորչի կանոնների գրաբառը, համեմատել պէտք է միմիայն գրաբառները։

## ԼՈՒՍԱՒՈՐՉԻ ԿԱՆՈՆՆԵՐԻ ԳՐԱԲԱՌ ԲՆԱԳԻՐԸ.

*Կանոնք սրբոյն Գրիգորի.*

*Ա. Քահանայ որ ի մեղս զաւածեալ է, Ժ. ամ ապաշխարեսցէ ջերմեռանդ սրտիւ արտասուօք, և տրօք տնանկաց, ապա մտեալ հաղորդեսցի։*

*Բ. Քահանայ որ կին առնէ Ե, ամ ապաշխարեսցէ արտաքոյ, Բ. ի ներքս, և Բ. ամս անհաղորդ կացցէ, և ապա հաղորդեսցի։*

*Գ. Քահանայ, որ զարծաթ իւր ի վարձու տայ՝ մերժեսցի յեկեղեցւոյ։*

*Դ. Որք երթան ի տունս հեթանոսաց՝ և ուտեն և ըմպեն անխտիր, Գ. ամ արտաքոյ ապաշխարեսցեն, ապա արժանի լինիցին հաղորդել։*

*Ե. Որ մին կուսան և մին երկեակ, Բ. ամ արտաքոյ, և մի ընդ օրհնօք։*

*Զ. Եթէ ոք թողցէ զերկրորդն՝ և յառաջինն դարձցի ի թողեալն, Է. ամ արտաքոյ, և Ա. ընդ օրհնօք։*

*Է. Թէ ոք կերիցէ ի տեղւոյ արգելցէ և զուտելն, և տացէ աղքատաց նոյնչափ։*

*Ը. Թէ ոք գաղտ պսակ դիցէ պսակադիրն լուծցի։*

*Թ. Թէ ոք առ և անդ արասցէ, պսակն անվաւէր լիցի և պսակեալն ում կամ իցէ լիցի։*

*Ժ. Որ ի ձիսն երասանան յագելապէս, Գ. ամս արտաքոյ և մին ի ներքս։*

*ԺԱ. Իգացելոցն, Գ. ամս արտաքոյ, և մին ի ներքս։*

*ԺԲ. Թովչացն, Ե. ամ արտաքոյ՝ և մին ի ներքս մեծ ողորմութեամբ։*

*ԻԳ. Որ զկուսութիւն իւր Աստուծոյ նուիրեաց, և ապա ապականեցաւ, Է. ամ ապաշխարեսցէ։*

*ԺԴ. Մանուկ՝ որ առանց կնքոյ մեռանի, եթէ ի ծնողացն ծուլութենէ լինի Ե. ամ արտաքոյ, Ա. ընդ օրհնօք, նոյն և հոգաբարձուացն, և որ ծուլացաւ քահանայն։*

ԺԵ. Որ զգերեզմանն բանայ առ անձուկ, Գ. արտաքոյ, և Ա. ի ներքս։

ԺԶ. Որք կոծ դնեն և ներս խզեն. և կամ զճակատ հարկանեն, նզովեալ լիցին 'ի կեանս և ի մահ։

ԺԷ. Որ զգիս կողոպտեն, ԺԵ. ամ արտաքոյ. և Ա. ի ներքս։

ԺԸ. Չէ պարտ ուր նշխարհք մարտիրոսաց՝ ի վերայ պատարագս մատուցանել։

ԺԹ. Չէ մարթ քրիստոնէից նկատել զխառնս անասնոց, առնել կանանց՝ պատուիրեն օրէնք. և որ գտցի ոք նզովեալ լիցի։

Ի. Ոչ կանոնք հրամայեն անապատականաց՝ մկրտութիւն առնել, և օրէնս տալ ժողովրդեանն, կամ պսակ դնել, զի այս գործ առաջնորդաց է։

ԻԱ. Եթէ ոք ելոյծ ըզհրաման մեռելոյ՝ և արհամարհեաց, նըզովեալ լիցի։

ԻԲ. Եթէ ոք ի քահանայից՝ զծածուկ խոստովանութիւն ուրուք յայտնեաց՝ անկցի յաստիճանէն, և ի կարգէ պաշտօնէից մերժեսցի, և մեղք զխոստովանողացն՝ անկցի ի վերայ նորա։

ԻԳ. Որ վասն պոռնկութեան արձակեսցէ զկինն իւր, արձակեսցի, բայց մին ամ սրբեսցի։

ԻԴ. Այր որ զկին իւր թողու ի պատճառս աստուածպաշտութեան, նզովեալ եղիցի ի կեանս և ի մահ։

ԻԵ. Եթէ ոք արբեցաւ 'ի քահանայից, կամ ի սարկաւագաց, կամ ի դպրաց, մի իշխեսցէ ի պատարագ, կամ ի պաշտօն մերձենալ, մինչև բազում արտասուօք և գթով տնանկաց ապաշխարեսցէ, զի արբեցողք ընդ ապանողս են։

ԻԶ. Եթէ ոք՝ ի քահանայից՝ կամ յաշխարհականաց տայցէ կաշառս, եկեսցէ անէծքն Սիմովնի կախարդին՝ ի վերայ նոցա, և կցորդ եղիցին կաշառառուն յուդայի մատնչին, և գէեզի բորոտութեամբն այրեսցին յոդիք կաշառառուացն։

ԻԷ. Ձեռնածուացն, Ա. ամ արտաքոյ, և Ա. ի ներքս՝ հանդերձ արտասուօք և ողորմութեամբ քաւեսցէ։

ԻԸ. Պարտ է քրիստոնէից՝ պատուել զօր կիրակէի, տօղօթել և յանգչել ի նմա, ապա եթէ ոք պահեսցէ հրէաբար՝ նզովեսցի ի քրիստոսէ։

ԻԹ. Քահանայ՝ որ վայրապար նզովէ, նզովեալ լիցի ի քրիստոսէ։

Լ. Կոյս՝ որ նուիրէ զանձն իւր Աստուծոյ, նոյնպէս և մոնազն, մի իշխեսցէ ամուսնանալ, ապա եթէ գտցի ի հազորդութենէն անկեալ հեռասցի, և եպիսկոպոսն տեսցէ զվարսն, և որպէս կամի մարդասիրեսցէ։

Այս համեմատութիւնից դուրս եկաւ, որ Լաւսաւորչի կանոնները ոչ միայն նման, հապա միևնոյն են Մանդակունու, Բարսեղ մեծի երրորդ խումբ կանոնների, ոմն անյայտ «Ներսէս հայրապետի», մինչև իսկ «Հարանց հետևողաց»-ի կանոնների հետ։ Լուսաւորչի կանոնները գրուած են եղել յունարէն և թարգմանուել են հայերէն Ե. դարում, Մանդակունու կանոնները և ճառերը էլի գրուել են Ե. դարում, բայց Լուսաւորչինից յետոյ. Բարսեղ մեծը իւր կանոնները սահմանել է 370-ին և բոլորովին այն կանոնները չեն, ինչ որ մեր կանոնագրքերը լիքն են. կանոնագրքերում երեք խումբ Բարսեղի կանոն կայ. Ա. և Բ. խմբի մէջ կան Բարսեղի իսկական 92 կանոնները ցրուած, աղաւաղուած, սարսափելի վատ թարգմանուած (տես Բարսեղ մեծ). իսկ մնացածները, որոնք միասին 51+272+74=397 կանոն են, հաւաքածու է ամեն դարու, ամեն մի արտագրողի և զանազան ժողովների կանոններից. սրանց մէջ կան կանոններ, որոնք գրուած են ոչ 370 թուին, այլ շատ յետոյ, վրաց բաժանումից յետոյ. օրինակի համար Ծ. կանոնը ասում է. «եթէ ուրուք վախճան հասցէ 'ի տեղւոջ, որ ոչ իցէ հայ երէց մի առցէ հաղորդ ի հոռմէ. կամ ասորոյ, կամ ի վրացոյ, և կամ այլ հերձուածողաց, չունի վնաս թէ անհաղորդ մեռանի»․ այս կանոնը պարզ է որ ոչ թէ 370, այլ 615-ից առաջ գրուել չէր կարող, այսինքն վրաց բաժանումից առաջ։ Բացի այդ կան այդպիսի շատ փաստեր, որ այդ կանոնները

թէ և վերագրած են Բարսեղին, բայց սրա գրածը չեն, հապա զանազան «Հարանց հետևողաց» կանոններ են։ Հիմա խնդիրն այս է, ով է ումնից քաղել, կամ ով է գրել, արդեօք Լուսաւորիչն է գրել և միւսները հետևել և նոյնը կրկնել են, թէ Ե. դարում, Զ.-ում Է-դարում նոյն իսկ գրողներից մէկը վեր է կացել և 30 կանոն այդ ահագին ժողովածուից առանձին արտագրել և գլխին նշանակել Լուսաւորչի կանոններ. 27 կանոն գրել և «Հարանց հետևողաց» անուան տակ դրել, կամ Սիւնեաց մի Զաքարէ եպիսկոպոս 33 կանոն է ժողովել և վրան գրել «Թադէոս առաքելոյ», իսկ տակին «ես Զաքարիա աշակերտ Թադէոսի գրեցի»։ Եթէ մէկը հարցնի, ինչով կապացուցանես որ այս կանոններս այդ վերնագիրը կրող անձանցն է, կմնաս շուարած, ոչ մի փաստով։ Այդ խառնաշփոթութեան ամենափառաւոր ապացոյցը տալիս է Բարսեղ մեծի կանոնները, Աթանասի և այլոց կանոնները, որոնց իսկականը յունարէն կայ, ընդունում են յունա-սլաւոնական բոլոր եկեղեցիները և պաշտօնապէս էլ ճանաչում է լատինականից։ Բոլոր եկեղեցիների կողմից ընդունուած Բարսեղի 92 կանոնը դարձել է մեր կանոնագրքերում 397, և ինչպիսի ձևով, սարսափելի փոփոխուած. եթէ մենք օտար ձեռնարկ չունենայինք համեմատելու, Բարսեղի կանոնները կամ սուտ ու սխալ պիտի հասկանայինք, կամ շատ բան հակասական, շատն էլ անհասկանալի։ Ահա այս վիճակի մէջ են և Աթանասի կանոնները, որոնք իսկապէս 3 հատ են և դարձել են 88 հատ. նոյն վիճակի մէջ են Թադէոսի, հետևողաց Հարանց, Փիլիպպոսի, Լուսաւորչի, 115 երկրորդ Նիկիական ևայլն ևայլն կանոնները. նոյնպէս և մեր Մանդակունու. ով ումնից է քաղել, շատ դժուար է որոշել. ենթադրութիւններով կարելի է ահագին գրքեր լցնել, բայց ինչ օգուտ, զուր թուղթ մրոտել կլինի։ Հիմա էական խնդիրն այս է, ինչպէս լուծենք Լուսաւորչի կանոնների խնդիրը. կարելի է հաստատել որ 30 կանոնը նրան է. ոչ։ Կարելի է ասել որ միայն մի քանիսն են նրան և ոչ բոլորը, կարելի է. կարելի է ժխտել, որ Լուսաւորչին

վերագրած կանոնները մի որև գրչակի գործ է, շատ դժուար է։ Ահա այս վիճակումն է խնդիրը։ Մեզ մնում է մի ելքի դիմել. որովհետև իրաւաբանական տեսակէտից ունենք փաստաւոր հիմք ընդունելու, որ Լուսաւորիչը կանոններ է գրել, և այդ կանոնները ընդունուել է Շահապիվանի 447-ի մեծ ժողովում և որովհետև գոնէ Օձնեցուց սկսած մինչև այսօր Լուսաւորչին վերագրած են այդքան կանոն և կանոնագրքերում զետեղել են, և որովհետև այդ կանոններում ոչ մի մեր եկեղեցու հակառակ կանոն չկայ, ուստի և ոչ մի վնաս չենք անել որ մենք էլ ընդունենք այդ կանոնները Լուսաւորչին պատկանած և մուծենք մեր եկեղեցու աղբիւրների շարքը։ Միայն այն տարբերութիւնը ունի միւս չընդունուած կանոններից Լուսաւորչինը, որ նրանց համար պատմական, իրաւաբանական հիմք և վկայութիւն չկայ, իսկ Լուսաւորչինի համար այդ կայ։ Լուսաւորչին վերագրած միւս կարգերը վանքերի, վանականների, պտղի, քահանայական մնացած տուրքերի մասին միացրած են Սահակի կանոնների հետ, որովհետև թարգմանել են Սահակի ժամանակ, փոփոխութեան ենթարկուել և իբրև կարգադրութիւններ հրատարակուել են Սահակի ձեռքով և անունով։

Լուսաւորչի այս 30 կանոնը ոճի, լեզուի և բովանդակութեան կողմից երկու մասի կարելի է բաժանել, 1) Լուսաւորչին վայել կանոններ, որոնք մասնաւորապէս քահանաներին են պատկանում, խրատական են և շատ պատկառելի ձևով գրած և 2) օտարի ձեռքով մուծուած կանոններ, որոնք ամեն բանով տարբեր են առաջինից։ Լուսաւորչին կարելի է վերագրել 1, 2, 3, 4, 7, 8, 9, 13, 22, 23, 25, 30։ Մնացած 18 կանոնները մուծուած են, գոնէ օտար խմբագրութիւն են։

## 2. Ս. ՍԱՀԱԿԻ ԿԱՆՈՆՆԵՐԸ. (387—439).

Ս. Սահակը հայոց եկեղեցու ս. հայրերի շարքում ամենափառաւոր տեղերից մէկն է բռնում։ Նա կարգել է կանոններ, գրել է կանոնական թղթեր, մեծ Մեսրոպի հետ բարեկարգել է ժամերգութիւնը եռանդով և հայոց եկեղեցին հայացրել է ամբողջ կազմութեամբ։ Սահակն է թարգմանել Լուսաւորչի կարգերը և կանոնները եկեղեցականների տուրքերի, եկեղեցու և վանքի նշանակութեան վերաբերեալ և իրանից էլ յաւելումներ արել, ինչպէս երևում է վերջարան կտորներից, և այնքան փոփոխութեան է ենթարկել և իւր կարծիքներով ու կանոններով ճոխացրել, որ շատ դժուար է որոշել թէ որի կանոնները շատ են այդ սահմանադրութիւնների մէջ. մեր բոլոր կանոնագրքերը եղած կարգերը նշանակել են Ս. Սահակի անունով. մենք էլ կհետևենք այս կէտում նրանց։

Հարց է, իրաւաբանական հիմք ունինք արդեօք Ս. Սահակի կանոնները ընդունելու հայոց եկեղեցու իրաւունքի վաւերական աղբիւրների շարքը թէ ոչ. այո՛ ունինք և այդ է Շահապիվանի մեծ ժողովի վճիռը «Ս. Գրիգորի և Ներսէսի և Սահակի և Մաշտոցի դրած կարգը Դուք այդտեղ հաստատեցէք.... մենք ախորժելով յանձն ենք առնում»։ Ուրեմն այդ կողմից խնդիրը վճռուած է։ Բայց անորոշ մընում է այն հարցը, քանի՞ կանոն է գրել, արդեօ՞ք բոլոր նրան վերագրած 55 կանոնները Սահակինն են թէ ոչ. այս մասին ոչ մի դրական բան ասել չի կարելի, քանի որ հաստատողական ժողովում (Շահապիվանում) չի յիշուած և ուրիշ որ և է մէկ ձեռնհաս մարմնից կամ անձից մնացած փաստագիր չունինք այս մասին, ուստի և առանց ենթադրութիւնների մթին աշխարհը մտնելու, կհետևենք մեր կանոնագրքերին, միմիայն Շահապիվանի վճիռը (թիկունք) կըռուան ունենալով։ Կանոնագրքերում նշանակուած է «կանոնք սրբոյն Սահակայ հայրապետի»։ Գլ. ԾԵ.

*ա) Յաղագս քորեպիսկոպոսաց, թէ որպէ՞ս պարտ է զկանոնական կարգն հաստատուն պահել յեկեղեցիս».*

1. Քորեպիսկոպոսները պիտի լինին ուսումնասէր, պարկեշտ, երկիւղած, զգաստ, անխռով, անարծաթասէր:

Տես քորեպիսկոպոսների մասին Անկ. 13, Նէո. 14, Անտ.—10, Պար. 4, 21, Սրդ. 11, 14:

Թէ օտար և թէ մեր կանոնները չեն տալիս այնքան պարզ հասկացողութիւն քորեպիսկոպոսների իրաւունքների և պարտաւորութիւնների մասին, որքան Սահակի այս կանոնները:

2. Քորեպիսկոպոսները ս. սեղանը պիտի զարդարուն պահեն, անխափան խնկարկեն և լոյս վառեն, սեղանին մօտ լինի մկրտատունը, ինչպէս սովորութիւն է, որի մէջ զետեղուած լինի աւազանը:

Տես Բ—Դւ. 15, Ե—Դւ. 13, Պար.—8, Սրդ –6, Մակ.—2:

3. Կարգուած սաղմոսերգութիւնները գիշեր ցերեկ անխափան կատարուին, նորաձևութիւններ չպիտի մտցնել:

Տես Ա.—Դւ. 29, Լաւ.—17, Ե.—Դւ.—17—25 կանոնները:

4. Քորեպիսկոպոսները պիտի հսկեն բոլոր եկեղեցիների վրայ, օրինազանց եկեղեցականներին կշտամբեն խրատով, ծեծով և տուգանքներով պատուհասեն ատեանի մէջ, որ միւսներն վախենան և խրատուեն:

5. Յարմար է ամեն տարի, երբ կանոնական սահմանադրութեան համաձայն ժողովները վերջանում են, քորեպիսկոպոսներին շրջել իրանց յանձնած վիճակը, քննելու և համար պահանջելու երէցներից և սարկաւագներից, հսկելու ժամերգութեան, աղօթքների կատարման, պատարագ անելու սպասահարկութեան կանոնաւորութեան վրայ, եթէ կգտնեն ծոյլ և անկարգութիւն կատարող անձինք, նրանց թող պատժեն, մինչև իսկ պատուից զրկեն (այսինքն քահանայագործութիւնից), մինչև որ կհաշտուի պատժուածը վարդապետի հետ:

Ուշադրութեան արժանի են այս երկու կանոնները, 5-րդը՝ ժողով ասելով հասկանում է տարեկան երկու անգամ կանոններով սահմանած եկեղեցական ժո-

ղովը, որին մասնակցում են եղել քորեպիսկոպոսները․ և որի նոր կարգադրութիւնները պիտի տանէին և բոլոր իրանց յանձնած եկեղեցիներում քարոզէին և բացատրէին և հրամայէին ճշտութեամբ կատարել։ Կանոնները իրաւունք են տալիս մեղաւոր քահանաներին առ ժամանակ զրկել պաշտօնակատարութիւնից, տուգանքի ենթարկել և ծեծել, այն էլ ատեանում և հրապարակաւ։ Մարմնական պատիժ տալը որոշեց առաջին անգամ Տաճապիվանի ժողովը, ս. Հայրերից Սահակը, թէ և ուրիշ կանոններով խիստ պատժւում են նրանք, որոնք ձեռքով որև է վիրաւորանք կհասցնեն որև է մէկին թէ հոգևորականի թէ աշխարհականի։ Քորեպիսկոպոսները մեր այժմեայ գործակալներն են, գուցէ նրանց վիճակը աւելի մեծ եղած լինէր քան այժմեայ գործակալներինը․ եթէ համեմատենք այժմեայ դրութեան հետ, երկու ծայրայեղութեան կհանդիպենք, հին գործակալները խիստ հսկողութեան իրաւունք ունէին, դատել, քննել, պատժել, ծեծել, իսկ այժմեանները միայն պակի հրամաններ տալ, պտղիները և մատեանների փողերը ժողովել․ ոչ արժէր այնքան մեծ իրաւունքներ տալ և ոչ էլ այսքան անզօրութեան հասցնել։ Ուշադրութեան արժանի կէտն այն է, որ հին քորեպիսկոպոսները պատժում էին միմիայն Ատեանում, այսինքն գործը քննելուց և դատելուց յետոյ․ երևի թէ ատեանի նախագահը քորեպիսկոպոսն էր և անդամները միւս քահանաները, որոնց միտեղ ժողովելովը քննում էր օրինազանց քահանային և պատժում։

6. Ոչ միայն քահանաներն ու սարկաւագներն պիտի արթուն լինեն իրանց պաշտամունքների կատարման մէջ, այլ և բոլոր ստորին պաշտօնեայք (ուխտի մանկունք). եթէ թոյլ գտնուին, նոյն պատիժը կրեն։

Կանոնս ասում է որ եթէ եկեղեցու ստորին պաշտօնեաներից կլինին տգէտներ և կամ զինուոր գնացողներ, դրանք բոլորովին զրկուեն եկեղեցուց արդիւնք

ստանալուց, եթէ կթողնեն զինուորութիւնը և տգիտութիւնը, ուսմամբ կպարապեն, եկեղեցական պաշտամունքները կսովորեն և կսովորեցնեն իրանց որդիներին, այն ժամանակ միայն իրաւունք ունենան բաժին ստանալու: Այսպիսի կարգադրութիւն էլ արաւ Ներսէս Ե. հրամայելով հարկատուների ցուցակը ձգել տալ այն քահանայորդիներին, որոնք պարապում էին անվայել զբաղմունքներով և անբարոյական կեանք էին վարում:

7. Նոյնպէս էլ արբեցողներին և կռուողներին եկեղեցուց հեռացնեն, մինչև որ կապաշխարեն և կուղղուեն և կստանան առաջնորդի անօրէնութիւնը:

Տես Ե—Գւ. 1. Լուս. 25:

8. Պոռնկորդիք և երկրորդ ու երրորդ ամուսնութիւնից ծնուածները կանոնների համաձայն հոգևորականութեան մէջ չմտնեն. եթէ Ղևտացիք այնպէս խիստ էին այդ բանում, ո՛րքան ևս առաւել մենք:

Բ—Աւ.—61 կ.:

9. Այս պատճառով քորեպիսկոպոսը պիտի լաւերին և ուսումնասէրներին կարգի և մեծարի, իսկ անպիտաններին և ուսումնատեացներին պատժի և չընտրի:

10. Դրա համար վանքերում պէտք է ուսումնարաններ բանալ և աշխատել որ ուսումնաւորները հովուեն ժողովուրդը, տգէտ հոգևորականը չարեաց պատճառ է:

11. Իսկ եթէ քորեպիսկոպոսը ագահութեամբ միայն հարկերը պիտի պահանջի և ոսկու արծաթի մթերք դիզի, մոռանալով իւր սրբազան պարտականութիւնը, այն ժամանակ ինքը պատասխանատուութեան կենթարկուի և կպատժուի:

12. Բոլորը պիտի հեռանան չարից և հետևեն բարութեան:

### բ) Կարգ քահանայից առ ժողովրդականս, եւ նոցին ժողովրդականաց հնազանդութիւն եւ կարգ ողջութեան առ քահանայս:

13. Երէցներին և վանականներին. շատ անգամ մեզ գանգատուեցին, որ քահանաները տգէտ են, ուսումնատեաց, որդինե-

րին ուսում չեն տալիս և սուրբ գրքին անտեղեակ են. մենք էլ ստուգելով այդ, չար տեղերում օտար գիտուն մարդիկ կարգեցինք քահանայի ժառանգութիւնը (եկեղեցու կալուածքները) յանձնելով սրանց: Ժողովրդից առած պտղի և մուտքի համար կարգուած օրէնքները կատարեցէք, առանց տրտունջի ժողովեցէք, ժողովրդի հետ լաւ վարուեցէք:

14. Թշնամութիւնը վերացրէք ձեր մէջից, որդիներիդ ուսումնարան ուղարկեցէք, որ ուսումնական դառնան, ինչպէս կուրութիւնը ատելի է աչքերին, նոյնպէս և տգիտութիւնը Աստուծոյ առաջ:

15. Ամուրը գլխաւոր քահանան եկեղեցում մնայ, իսկ ընկերները շաբթէ շաբաթ հերթով գան մնան, որպէս զի պաշտամունքը չխափանուի:

Կանոնս եղաւ գլխաւոր հիմք Բ—Դուինի 555-ի ժողովի համար. որի 14 կանոնը կրկնութիւն է այս 15-ի:—(Տես Բ—Դւ. 14):

16. Մկրտութիւնը երկիւղածութեամբ կատարել, կանայք մկրտութիւն անելիս չհամարձակեն օգնել քահանային, այլ գնան և կանգնեն իրանց աղօթքի տեղում:

Կանայք ասելով հասկացւում է սարկաւագուհիներ, որոնք իրաւունք չունէին մկրտելիս քահանային օգնելու:

17. Սարկաւագը եթէ մկրտութիւն անի, սարկաւագութիւնից զրկուի, որովհետև այդ քահանայի պաշտօնն է:

Տես Մակ. 1, Բ—Դւ. 17 կանոն:

18. Բոլոր ժողովրդի պտուղը և մուտքը տարուի գլխաւոր քահանայի տունը և միւս քահանաները չհամարձակեն իրանց տունը տանել. ով իր տունը կտանի, կպատժուի:

Կանոնս աւելի ընդարձակ է Բ—Դւինի ժողովում, տես այդ ժողովի 13, 14 կանոնները:

19. Եթէ գիւղը մեծ է, գլխաւոր քահանան ամեն օր եկեղեցում լինելուն պատճառով երկու անգամ աւելի վերցնի միւսներից:

Նոյնը կրկնւում է Բ—Դւ. 13 և 34 կանոններում. Բ—Դուինի ժողովի կանոնները բոլորովին նման են Սահակի կանոններին:

20. Ամեն տարի զատկից յետոյ մկրտութեան իւղ որքան հարկաւոր է, քահանաները բերեն մեզ և մեզնից ստանան օրհ-

նած խուղը, և ոչ ադխտաբար խրանք օրհնեն այդ խուղը, քանի որ եպիսկոպոսների իրաւունքն է այդ։

Միւռոնութեան խուղ ասելով հասկանում է միւռոն, որի օրհնելը կաթուղիկոսի իրաւունքն է։ Տես Ն—Կւ. 9, Պար.—5, Մակ.—4։

21. Լսում եմ որ վարդապետը հարսանիքի աւազանի փոխարէն և սկիհն էլ զինուորների ըմպելու անօթ են գործ ածում. այդպէս վարուող քահանաներին պէտք կարգալուծ անել։

Տես Բ—առ.—73, Բ—Կւ. 8։

22. Քահանան եթէ իւր պաշտօնը թողած ազատների տանը գործակալութիւն կամ դայեկութիւն կանի և դրանց միջոցով իրանց ժառանգակիցներին կզրկեն եկեղեցական հասոյթներից, այդպիսիները թէ քահանայ՝ թէ քահանայի անից որ և մէկը՝ կարգից հեռանան, եկեղեցու բաժնից և ժողովրդից զրկուեն և ընկերների յարաբերութիւնից իսպառ կտրուեն և ժողովրդականք էլ այդպիսի քահանայ ունենալ չհամարձակեն։

Տես Բ—առ.—6, Սփ 17։

23. Ժողովուրդը որպէս երէց եղբայրներ չունենայ, երկրորդ ամուսնութեան մէջ մտած երէց եղբայրները զինուորների հետ կանգնեն, հեռանալով բոլորովին հոգևորական դասակարգից և եկեղեցու բաժնից։

Երէց եղբայր ասելով եթէ բառացի հասկանանք՝ այսինքն քահանայի եղբայր, դուրս կգայ՝ որ կանոններս պահանջում են, որ ոչ միայն քահանաները ուսումն առած մարդիկ լինին, այլ և քահանայի եղբայրները, ուրիշ տեղ պահանջում էին կանոնները, որ որդիքն անշուշտ ուսումն առնէին և եկեղեցական գործերով պարապէին, բացի այդ քահանայի եղբայրները իբրև հոգևոր դասին պատկանող անձինք, պէտք է երկրորդ անգամ չպսակուեն, պսակուողներին իբրև պատիժ պատուիրում է կանգնել զինուորների շարքում եկեղեցու մէջ։ Շահապիվանի ժողովը խիստ պատիժ է նշանակում քահանայի ընտանիքի այն անդամներին, որոնք անվայել կեանք կվարեն ի գայթակղութիւն ժողովրդի։

24. Քահանայք և իրանց կանայք չհամարձակեն եկեղեցու բակը գերեզմանատուն անել իրանց համար, նրանց հանգստարանը լինի ժողովրդի հետ միասին:

25. Քահանայք չհամարձակեն տները սրբութիւն տանել հաղորդելու համար բացի հիւանդութեան դէպքից:

26. Քահանաները պիտի սովորեցնեն իրանց ծխականներին հեռու մնալ ամեն տեսակ չարիքներ գործելուց, արբեցողութիւնից, աղքատներին զրկելուց, կռուելուց, պոռնկութիւնից և ամեն տեսակ վատ մարդիկներից, որ չվարակուեն նրանցից:

27. Պատուիրեցէք որ իրանց անչափահաս որդիներին չպսակեն, առանց միմեանց տեսնելու չնշանեն: Դուք էլ, քահանանե՛ր, անչափահասներին մի պսակէք մինչև չհասնեն, միմեանց չհաւանեն, քննեցէ՛ք տեսէք նշանածները միմեանց ընդունո՞ւմ են, եթէ ծնողների բռնադատութեամբ է, մի՛ պսակէք:

Նոյնը կրկնում է Ե—Դւ. 24 կանոնը. տես Շնորհալի, Գէորգ—Դ:

28. Եթէ քահանան անչափահասներին կպսակի կամ դրած կարգով չի վարուիլ, պատժի կենթարկուի, ծնողներն նոյնպէս պատուհասից չեն ազատուիլ:

29. Քահանաները միայն կատարեն ագապների պաշտամունքը և պատարագը, և պատարագին աւետարան կարդան. եթէ կպատահի որ քահանան որկրամոլութիւնից՝ մինչև պատարագը հաց կուտի, նա չհամարձակի պատարագի հացին ներկայ լինել (ճաշկերոյթին) և իւր ընկերներից հեռու կանգնի:

Ագապ նշանակում է սէր. Հներում երբ շաբաթը 4 անգամ և ապա երկու անգամ քրիստոնեաները ժողովւում էին հաղորդուելու, բերում էին իբրև ընծայ՝ պատարագիք՝ հաց, գինի և ուտելիք. Հաղորդութեան խորհուրդը կատարելուց յետոյ, բոլորը հացի էին նստում՝ աղքատ և հարուստ, և միասին ճաշակում էին. այդ ճաշերը կոչւում էին սիրոյ ճաշեր, ագապներ, որտեղ մեծ մասամբ յաճախում էր չքաւոր դասակարգը: Ճաշի մնացորդը բաժանում էին հոգևորականները իրանց մէջ:

30. Նոյնպէս էլ չինականները, երբ ագապի են հրաւիրւում, պատարագից առաջ հաց չուտեն և անօթի հաղորդուեն.

նած իւղը, և ոչ ազնուաբար իրանք օրհնեն այդ իւղը, քանի որ եպիսկոպոսների իրաւունքն է այդ:

Մկրտութեան իւղ ասելով հասկանում է միւռոն, որի օրհնելը կաթուղիկոսի իրաւունքն է: Տես Ե—Դւ. 9, Գաղ.—5, Մակ.—4:

21. Լսում եմ որ վարագոյր հարսանիքի առագաստի փոխարէն և սկիհն էլ զինուորների ըմպելու անօթ են գործ ածում. այդպէս վարուող քահանաներին պիտի կարգալոյծ անել:

Տես Բ—առ.—73, Բ—Դւ. 8:

22. Քահանան եթէ իւր պաշտօնը թողած ազատների տանը գործակալութիւն կամ դայեկութիւն կանի և դրանց միջոցով իրանց ժառանգակիցներին կզրկեն եկեղեցական հասոյթներից, այդպիսիները թէ քահանայ՝ թէ քահանայի անից որ և մէկը՝ կարգից հեռանան, եկեղեցու բաժնից և ժողովրդից զրկուեն և ընկերների յարաբերութիւնից իսպառ կտրուեն և ժողովրդականք էլ այդպիսի քահանայ ունենալ չհամարձակեն:

Տես Բ—առ.—6, Սոփ 17:

23. Ժողովուրդը պէտք երէց եղբայրներ չունենայ, երկրորդ ամուսնութեան մէջ մտած երէց եղբայրները զինուորների հետ կանգնեն, հեռանալով բոլորովին հոգեւորական դասակարգից և եկեղեցու բաժնից:

Երէց եղբայր ասելով եթէ բառացի հասկանանք՝ այսինքն քահանայի եղբայր, դուրս կգայ՝ որ կանոններս պահանջում են, որ ոչ միայն քահանաները ուսումնաւած մարդիկ լինեին, այլ և քահանայի եղբայրները, ուրիշ տեղ պահանջում էին կանոնները, որ որդիքն անշուշտ ուսումն առնէին և եկեղեցական գործերով պարապէին, բացի այդ քահանայի եղբայրները իբրև հոգևոր դասին պատկանող անձինք, պէտք է երկրորդ անգամ չպսակուեն, պսակուողներին իբրև պատիժ պատուիրում է կանգնել զինուորների շարքում եկեղեցու մէջ: Շահապիվանի ժողովը խիստ պատիժ է նշանակում քահանայի ընտանիքի այն անդամներին, որոնք անվայել կեանք կվարեն ի գայթակղութիւն ժողովրդի:

24. Քահանայք և իրանց կանայք չհամարձակեն եկեղեցու բակը գերեզմանատուն անել իրանց համար, նրանց հանդստարանը լինի ժողովրդի հետ միասին:

25. Քահանայք չհամարձակեն տները սրբութիւն տանել հաղորդելու համար բացի հիւանդութեան դէպքից:

26. Քահանաները պիտի սովորեցնեն իրանց ծխականներին հեռու մնալ ամեն տեսակ չարիքներ գործելուց, արբեցողութիւնից, աղքատներին զրկելուց, կռուելուց, պոռնկութիւնից և ամեն տեսակ վատ մարդիկներից, որ չվարակուեն նրանցից:

27. Պատուիրեցէք որ իրանց անչափահաս որդիներին չպսակեն, առանց միմեանց տեսնելու ճնչանեն: Դուք էլ, քահանանե՛ր, անչափահասներին մի պսակէք մինչև չհասնեն, միմեանց չհաւանեն, քննեցէ՛ք տեսէք նշանածները միմեանց ընդունու՞մ են, եթէ ծնողների բռնադատութեամբ է, մի՛ պսակէք:

Նոյնը կրկնում է Ե—Դւ. 24 կանոնը. տես Շնորհալի, Գէորգ—Դ:

28. Եթէ քահանան անչափահասներին կպսակի կամ դրած կարգով չի վարուիլ, պատժի կենթարկուի, ծնողներն նոյնպէս պատուհասից չեն ազատուիլ:

29. Քահանաները միաբան կատարեն ագապների պաշտամունքը և պատարագը, և պատարագին աւետարան կարդան. եթէ կպատահի որ քահանան արկրամոլութիւնից՝ մինչև պատարագը հաց կուտի, նա չհամարձակի պատարագի հացին ներկայ լինել (ճաշկերոյթին) և իւր ընկերներից հեռու կանգնի:

Ագապ նշանակում է սէր. Հներում երբ շաբաթը 4 անգամ և ապա երկու անգամ քրիստոնեաները ժողովւում էին հաղորդուելու, բերում էին իբրև ընծայ՝ պատարագի՝ հաց, գինի և ուտելիք. հաղորդութեան խորհուրդը կատարելուց յետոյ, բոլորը հացի էին նստում՝ աղքատ և հարուստ, և միասին ճաշակում էին. այդ ճաշերը կոչւում էին սիրոյ ճաշեր, ագապներ, որտեղ մեծ մասամբ յաճախում էր չքաւոր դասակարգը: Ճաշի մնացորդը բաժանում էին հոգևորականները իրանց մէջ:

30. Նոյնպէս էլ չինականները, երբ ագապի են հրաւիրւում, պատարագից առաջ հաց չուտեն և անօթի հաղորդուեն.

եթէ առաջուց հայ կուսին, իրաւունք չունենան պատարագի հացին գնալու, եթէ երեսր ընդդայնի և գնայ, քահանաները ներս չթողնեն:

31. Այն ժողովրդականները, որոնք ագխատութեամբ բաժանում են քահանաների հետ պատարագի կոչին և ճրագուն, կամ տանում են իրանց տուն վանքերին տալու պատրուակով, սրանից յետոյ եթէ կանեն այդպիսի բան, քահանան թող պատարագ չմատուցանի նրանց համար:

32. Նախնիքներից կարգուած ուխտերի, պատկի և ագապի ու տօների բոլոր ընծաները, պտուղները, ժողովրդականները թող սիրով հատուցանեն եկեղեցուն: Եթէ մէկը իւր եկեղեցին թողնելով, վանքերին կտայ, այդպիսին թող զրկուի օրհնութիւնից և ընկերների հաղորդակցութիւնից ընտանիքով միասին, մինչև որ կապաշխարի:

*Կանոնից չպէտք է հասկանալ որ արգելում է վանքերին նուէր տալ, ոչ. Հետակայ կանոններում որոշում է թէ որ պտուղները եկեղեցուն պիտի տալ և որը վանքին, շատերը քահանային զրկելու դիտաւորութեամբ պտուղները պահում էին, ասելով թէ այս ինչ վանքին պիտի ուղարկեմ, իսկ յետոյ իրանք էին ուտում:*

33. Գինի խմելիս մեռելների վրայ ողբ և կոծ չանեն, որովհետև դիւական բաներ են դրանք, այդ անողը եկեղեցուց դուրս կանգնի և ապաշխարի:

Տես Շահ. 11, Աշտ.—2, Լուս. 16:

34. Քահանաները յանցաւորներին զգուշացնելիս միախորհուրդ լինեն և այդ եկեղեցուց դուրս անեն, միմեանց չհակառակեն և անկարգութեան տեղիք իրանք չտան:

Տես Ա—տու.—19:

35. Վանականները պիտի լինեն սրբակեաց, արթուն, օտարասէր և եղբայրասէր, իրանց հրեշտականման վարքով պիտի օրինակ լինեն այլոց:

Տես Ա—տու.—32, Աշտ.6, Շահ. 15, Բ—Դւ. 34, Պար.—7:

*Սրանից յետոյ ձեռագրերում գրուած է եկեղեցու և վանքերի միմեանց հետ ունեցած կրօնական—բարոյական կապի համար Սահակից և Լուսաւորչից ա-*

ռուած մեկնութիւնը. գրուածքի վերջաբանից երևում է որ Լուսաւորչի հեղինակութիւնն է թարգմանուած Սահակի հրամանով և ժողովուած նոյն իսկ Սահակից յետոյ, ինչպէս պարզ երևում է այս կտորից. «Ընկալցի զօրհնութիւն ի Տեառնէ, հաղորդելով պարգևացն և անվախճան հանգստեանն երջանիկն Գրիգորի, և հայրն մերոյ Սահակայ և նոցին հետևելոց ճշմարիտ ուղղափառութեան». այս խօսքերը Սահակինը չեն, հապա երրորդ անձի և նրանից յետոյ եկող անձի: Վերջաբանում կայ և այս կտորը. «Սահմանադրութիւն կարգացս գրեցաւ հրամանաւ երանելոյն Սահակայ մեծ հայրապետին Հայաստան աշխարհի, ընկալեալ ի քաջ նահատակէն ի Տեառնէն Գրիգորէ, թարգմանեցաւ միայն ի յունէ ի Հայ». (տես յետոյ գրաբառ բնագիրը): Թէ և այդպէս է գրուած, բայց կանոնների թէ խմբագրութիւնը, թէ դիմելու ձևը և պատուէրների ուղղումը ամբողջապէս պատկանում է Սահակին, այս հանգամանքը ենթադրել է տալիս, որ Լուսաւորչի կարգերը նորից խմբագրել է Սահակ բազմաթիւ յաւելումներով և հրատարակել է իբրև Լուսաւորչի կանոններ, որպէս զի աւելի մեծ վարկ և հեղինակութիւն ունենայ: Մանաւանդ որ վանքերը և նրանց կանոնադրութիւնը ծաղկեցին և զարգացան առաւելապէս Ներսէս մեծի, Բարսեղ Կեսարացու և Սահակի օրերում, Սահակի կանոնների հիմք կազմել են գլխաւորապէս Բարսեղի վանական կարգերը, ուստի և աւելի հաւանական է, որ հետակայ կարգերը սահմանած լինի ուղղակի Սահակ, քան Լուսաւորիչ:

*գ) Նորին Սրբոյն Սահակայ, թէ որպէ՞ս սահմանեցաւ կարգ ուխտի, եւ որոշման վանաց. բան երկրորդ»:*

36. Ոմանք ապխտութեամբ մէկ չինութիւնը եկեղեցի կոչելով և միւս չինութիւնը վանք անուանելով, կամենում են զանազանութիւն գտնել երկուսի մէջ և հաւատքի մէջ ներձուած ա-

ռաջ բերել, մոռանալով Աստուծոյ խօսքը, որ ասում է մի է հաւատ, մի տէր, մի մկրտութիւն: Եկեղեցին քարից և փայտից է շինուած, նա հաւատքի բաժանումն յառաջ բերել չի կարող, մարդկային ազգը հաւատքի վրայ է հաստատուած, այդ հաւատն է եկեղեցին, ինչպէս Քրիստոս Պետրոսին ասաց. «Դու ես վէմ....»: Վէմ ասելով չենք հասկանում եկեղեցու քարերը և շէնքը, հապա այն հաւատը, որ մարդկանց միացնում է, կապում է Աստուծոյ հետ. եկեղեցի ասելով, թէ Նոր թէ Հին Կտակարանը հասկանում են հաւատացեալ ժողովուրդը, Պօղոս առաքեալը ասում է անդրանկաց եկեղեցի, ոչ երկրի, այլ երկնքի վրայ, որոնց անունները գրուած են «ի դպրութեան կենաց»: Ահա եկեղեցու խորհուրդը. սովորեցին ասել կաթուղիկէ առաքելական եկեղեցի, որ նշանակում է ամբողջ տիեզերքի հաւատացեալները առաքելական են, որովհետև Քրիստոս հրամայեց նրանց մի հաւատ ունենալ և այդ հաւատը բոլորին քարոզել: (Մանրամասը տես գրաբառը):

37. Եկեղեցու հիմքը համարելով հաւատք և եկեղեցի, մենք ուժ չունինք արհամարհելու շինուածքը—եկեղեցու շինութիւնը, որ կոչւում է ժողովրդանոց. այնտեղ ժողովւում են քահանաները՝ Աստուծոյ պաշտօնեաները աղօթելու, ուստի և կոչւում են աղօթարաններ և սրբարաններ, որտեղ տէրունական սեղանը կանգուն կայ, որի վրայ պատարագում ենք, այնտեղ կայ մկրտութեան աւազանը, այնտեղ ժողովուելով լսում ենք սրբագրութիւնները, Աստուծոյ պատգամները, այս պատճառով էլ եկեղեցի ենք անուանում *յարանուանաբար*, և ոչ *բնաւորապէս*:

38. Արժէ յիշատակել, թէ ինչ պատճառով վանքեր շինեցին. յոյները, հռոմները, ասորիները և բոլոր հաւատացեալները այդպիսի շէնքեր կառուցին, գլխաւորապէս գիւղերի մօտ, որպէս զի վանականները իրանց սրբակեաց կեանքով օրինակ լինեն գիւղացիներին, այրիներին, հիւանդներին, մխիթարեն սգաւորներին. ամուսնացած քահանայք մշակութեամբ են պարապում և իրանց կանանց հաճելի լինելուն աշխատելով զանց են անում այդպիսի պարտքեր կատարել. իսկ վանքերում ապրողները կուսութեան խօսք տալով, աւելի շատ ժամանակ ունեն այդպիսի բարի գործերով պարապելու. այդ հիմամբ ազատ են հարկերից, ստանում են հանդէր—դաշտեր և եկեղեցականութեան մէջ երիցագոյն պատիւն են ժառանգել:

39. Ուստի և թող ամաչեն նրանք, որոնք եկեղեցու և վան-

քի մէջ տարբերութիւն են դնում, յայտնի եղաւ որ եկեղեցու բոլոր անդամները Քրիստոսին միևնոյն հաւատացեալներն են, որտեղ և ապրելու լինեն, նրանք անբաժան մարմնի անդամներն են: Եկեղեցի, մատուռ, վանք, ժողովրդանոց միևնոյն նպատակի են ծառայում, բոլորի մէջ էլ միևնոյն պաշտամունքներն են կատարւում:

40. Մնում է մեզ սահմանադրութեամբ որոշել, թէ ինչ տուրքեր պիտի ստանայ վանքը և ինչ եկեղեցին:

Յովհաննէս Մկրտչի տօնը, ինչպէս Գրիգոր Լուսաւորիչ սահմանել է կատարուի վանքերում, նոյնպէս և բոլոր ուխտերը, որ վանականները այդ եկամուտներով ապրեն: Մարտիրոսների տօները նոյնպէս կատարուի վանքերում, վարդապետաց մատաղները և ժողովրդականներից ու ամուսնացեալ քահանաներից մի մի քու բոլոր պտուղներից տրուին վանքերին, որ ցորենի ամբարները և հնձանները և իւղի ամանները լցուին այդ բերքերով: Ս. Յարութեան տօնը և նրա քառասնորդական պասը, տեառնընդառաջը և առաջաւորաց պասը կատարուին վանքերում: Զատկի քառասնորդական պասի միջինքը, Ղազարու օրը, զատկի աւագ հինգշաբթին, զատկի երկու շաբաթը, Համբարձումը կատարուի վանքերում: Մեռելոց տօնը, հրամից ամէն վերջին, բոլորը վանքերում կատարուին. որպէս զի պաշտօնեաները և հիւրերը աղլեն, որովհետև աբեղաներին վայել չէ գիւղերում գիշերել: Մեռած անձանց կողոպուտը թախտից և ախթուից սկսած մինչև պնակը և դրդալը և զգեստները մինչև գօտին և կօշիկը, անկողինը՝ վանքերը տրուին որ եկող հիւրերը հանգստանան և օրհնեն դրանց:

41. Ագապի (եկեղեցական մատաղ), որ մաս մաս բաժանում են բոլոր անձերին (մասնակցով), կէս կաշին և ճրագուի երկու մասն վանքին գնայ, իսկ ոչխարի մորթին, գլուխը անդամով և ճրագուն ու խախայոցը քահանային տրուին, որով պիտի կերակրի և պանդուխտներին. իսկ պատարագի հացը պիտի ընդհանրապէս ուտեն բոլոր պաշտօնեաները՝ աղքատները և ժողովրդականք:

42. Այն պատարագները, որոնք վանքերում են կատարւում, նրանց երախայրիքը (նորընծայի պտուղները) տան անապատին՝ եթէ որ գիւղի մօտ գտնուի, եթէ չգտնուի՝ տան ամուսնացեալ քահանաներին, որովհետև տէրունական հարկը մարդ իւր տանը չպիտի պահի:

43. Հետևեալ տօները ամուսնացեալ քահանաներին լինեն, զատկի շաբաթը և ս. զատիկը, երկրորդ զատիկը, երկրորդ զատկից յետ վեր բոլոր կիրակիները. Պենտեկոստէն, ս. Աստուածածնի տօնը, վարդավառը՝ բայց մատաղներից. Նոյնպէս և լուցման մի մասը. բարեկենդանի տօնը և ողոգումեանը (ծաղկազարդը): Առաքելոց և մարգարէից անունով եղած տօները հասարակաց լինի (ընդհանուր):

44. Այս սահմանադրութիւնը գրեց Լուսաւորիչ և թարգմանուեց յունարէնից հայերէն: Ով որ իրաւունք չունի այս կարգից դուրս գալ. ով կկատարի, թող ստանայ օրհնութիւն Աստուածանից, Լուսաւորչից, մեր հայր Սահակից և նրանց հետևողներից:

### *դ) Նորին, թէ որպէս պարտ է եպիսկոպոսաց ունել զընտանիս սրբոյ եկեղեցւոյ»:*

45. Եպիսկոպոսը հասարակաց հայր է և այցելու, նա անաչառութեամբ պիտի կառավարի իւր հօտը, գաւառների և գիւղերի վրայ արժանաւոր տեսուչներ և առաջնորդներ—քորեպիսկոպոսներ կարգի, ժողովրդին խրատելու և կառավարելու համար:

46. Հսկէն, որ քահանաները մեծարեն սուրբ սեղանը և մկրտութեան աւազանը. այս հսկողութիւնը զինուորներին և ազատներին և իրանց մերձաւորներին չպիտի տան, այլ պիտի հետևել Յիսուսին, որ ասում է, ով է եղբայրը, հայրը, եթէ ոչ նա, որ պահում է Աստուծոյ պատուիրանները:

47. Ինչպէս ասացինք եպիսկոպոսը հայր է, նա պիտի եկեղեցու գործերը կանոնական կարգով կառավարի, որով կվերանան անառակութիւնները և հերձուածները: Նա պէտք է բարեպաշտութեան դիմակով չսիրի և չհարստացնի իւր ազգայիններին, մոռանալով եկեղեցին և նրա շահերը:

48. Զգուշութեամբ պահուին այս կանոնները, ոչ ոք Աստուածային ճանապարհից չշեղուի, և դրանով պայծառացնեն եկեղեցիները, որպէս զի ուրախութեամբ համբուրեն գեղջուկն և իշխանն:

49. Եպիսկոպոսները և վարդապետները պիտի օրինակ դառնան միւսներին, պիտի 'ի նկատի չունենան ոչ ազգականութիւն, ոչ կաշառակերութիւն և ոչ ինչքերով մեծարել. Նրանք պիտի լինեն պարկեշտ և պատուիրանապահ: Նոյնք, ընչասիրութեամբ դարչելիներին, ազատներին, զինուորներին հաւատարիմ

էք հանդիսացնում եկեղեցու սպասաւորութեան մէջ և նրանց առաջ էք քաշում, և գործերին նուիրուած անձանց յետ քշում, իսկ ինքեանքդ ձեր ժամանակը գինարբութեամբ էք անցկացնում, ասելով որ վաղը պիտի մեռնիք:

Եպիսկոպոսներից ով այդպիսի պատուիրանազանցութեան մէջ կգտնուի, անամօթ և խայտառակ կերպով իւր պատւից զրկուի և կեղծաւորների շարքը դասուի:

50. Մեր իշխաններից կամ աթոռակիցներից ով աչառութեամբ կվերաբերուի դէպի այսպիսի յանցաւորները, պարտական մնայ Աստուծոյ առաջ:

## ե) Նորին, թէ ո՞րպէս պարտ է եպիսկոպոսաց պահել զգանձս եկեղեցւոյ, կամ որոց որպէս մատակարարել:

51. Աղօթքի տաճարը բոլորիս համար նաւահանգիստ է, որին յարանուանաբար եկեղեցի ենք անուանում, որի ղեկավարն է իբրև նաւապետ, տեսուչ՝ եպիսկոպոսը, որը իրան վրայ դրած պարտաւորութիւնները ճշտութեամբ պիտի կատարի և նաւը ղեկավարի: Ժողովուրդը յուսոյ և փրկութեան տեղ է համարում այդ նաւահանգիստը և սրտի յօժարութեամբ ընծաներ և պատարագներ է մատուցանում Աստուծոյ տաճարին:

52. Իշխանները նուիրում են գիւղեր, դաստակերտներ և ոսկու արծաթի գանձեր, ուրիշները անդաստաններ, կենդանիներ և պատուական հանդերձներ. ոմանք իրանց անձանց փրկութեան համար, կէսը իրանց սիրելիների և ծնողների և վախճանուածների համար, որով գանձ են գանձում երկնքում իրանց հոգիների փրկութեան համար:

53. Ուրեմն այդ գանձերը Աստուծոյ են պատկանում և ոչ մեզ. իսկ եպիսկոպոսը միայն հսկողն է, նա շատ մեծ զգուշութեամբ պիտի վարի իւր պաշտօնը, չպճնուի չզարդարուի զանազան զգեստներով, իւր ազգականներին լիառատ չպէտք է շահի, մեծամեծների բարեկամութիւնը վայելելու համար եկեղեցու եկամուտներից ընծաներ չուղղի նրանց համար. եթէ հակառակ պատուէրիս կվարուի, վատնող կհամարուի և պատժի կենթարկուի:

54. Եպիսկոպոսը պիտի հետևի առաքեալներին և նրանց նման եկեղեցու ունեցածը բաշխի և կանոնաւոր կերպով բաժա-

նի կարօտեալներին. ով ուրիշ բանի վրայ կծախսի, դատուի իբրեւ պատժապարտ, իսկ հանդերձեալ կեանքում պատասխան տայ իւր օրինազանցութեան համար։

55. Երկար խօսում է կանոնս այն մասին, թէ ինչպէս եկեղեցու նուէրը տրւում է ժողովրդի կողմից հոգու փրկութեան համար և ինչպէս էլ եպիսկոպոսը պիտի գործադրի բարենպատակ գործերի վրայ, բաժանելով աղքատներին, կարօտներին, հիւանդներին, որ նուիրատուների իղձերը կատարուած լինին։ Թէ և սեղանին ծառայողը՝ սեղանից պիտի կերակրուի, բայց եպիսկոպոսը առաքեալի պատուէրը չափազանցութեան չպիտի հասցնի, նա պիտի ա՛նքան ծախսի իւր վրայ, որքան պէտք կլինի և ոչ կարիքից աւելի։ (Տես մանրամասն գրաբառը)։

Այս 5 կանոնը թէ պատուիրում է եպիսկոպոսին եկեղեցու ինչքը, եկամուտը կառավարել Աստուածավայել կերպով, այսինքն միմիայն բարեգործական նպատակների համար ծախսի և իւր անձնական պէտքերը հոգայ, բայց դժբախտաբար չի տալիս դրական կարգեր, թէ ինչպէս պիտի կառավարել այդ կալուածները, ինչպէս պիտի հաշիւ պահանջել, մեղաւորին ինչպէս պիտի դատել և պատժել. գոնէ առաջին կանոնները աւելի որոշ օրէնքներ են սահմանում այդ մասին, քան այս կանոնները։

Տես Բ—առ.—38, 39, 40, 41. Անկ.—15, Անտ.—24, 25։

Բացի այս 55 կանոններից, լիակատար կանոնագրքերում պատահում ենք և Սահակի այս «աւանդութեան գիր»-ին. «Յաղագս կարգի պատուոյ սրբոյ եկեղեցւոյ, և պտղոյն ժողովրդականաց ընծայելոց ի տուն Աստուծոյ. Սրբոյն Սահակայ Հայոց կաթուղիկոսի, գիր աւանդութեան»։ (Տես մանրամասը գրաբառը, յաջորդ երեսից սկսած)։

Այս «աւանդութեան գիր»-ում պատմում է, թէ ինչպէս Լուսաւորիչ և Տրդատ քրմերի որդիներին հրապուրելու համար նրանց ասում էին, թէ հարիւրապատիկ աւելի կստանաք քան առաջ, բոլորովին ապահով կապրէք, ոչ մի նեղութիւն չէք քաշիլ։ Բայց քրմերի

որդիքը երբ հիասթափուեցին իրանց արդիւնքների քիչութիւնը տեսնելով, գնացին Լուսաւորչի մօտ և խնդրեցին, որ իրանց կեանքի ապահովութեան աղբիւրներ ցոյց տայ։ Եւ Լուսաւորիչ ընդունելով նրանց, յարգեց խնդիրը և որոշեց հեռւեալ տուրքերը այն կարգով, ինչպէս որ ժողովում էին ղեւտացիք Մովսէսի կանոններով։ «Բոլոր ժողովրդից կստանաք հասեր, մատաղներից կաշին, աջ երի անդամը, ճրագուն, դմակը, սիրտը, լերդաբոյթը, երիկամունքները ճարպով, կողերի մի մասը, լեզուն և աջ ականջը, շրթունքը հոտոտելիքով, աջ ականջը և բոլոր խորհրդական մասերը։ Իսկ կալից և հնձանից և ուրիշ արմտիքներից, տասանորդ տան բոլորը ձեզ, որ աճումը լաւ և առատ լինի։ Նոյնպէս էլ ձեզնից ընծաներ տուին Աստուծոյ սեղանին, որտեղից որ ստացաք անապական և անարատ մարմինը և արիւնը.....» (տես գրաբառը)։ Ապա հրամայում է բաժին տալ քահանաներին ղեւտացոց նման և նոյնպէս գլխաւոր քահանային և եպիսկոպոսին։ Տգէտներին եկեղեցուց հաս չտալ, ստիպել նրանց պարապել ուսմամբ և պատրաստուել քահանայագործութեան և ապա ստանալ եկեղեցուց բաժին։ Արժանաւոր դպիրներին—գրակարդացներին չզրկել իրանց բաժնից, երկկանանց (երկրորդ անգամ ամուսնացած) մաս չտալ եկեղեցուց, իսկ այրի երէցուհիներին, եթէ պարկեշտ կեանք կվարեն, որոշ բաժին տալ եկեղեցու տուրքերից...։ (Մանրամասը տես գրաբառը)։

Աւանդութեան այս գիրը հնութեան կնիք ունի, ենթադրելի է, որ Լուսաւորչից սկսած աւանդութիւնս հասած լինի մինչև Սահակ և սրա ժամանակ կամ յետոյ գրի առնուած լինի։ Սահակի եպիսկոպոսներին ուղղած շրջաբերականը մենք համառօտեցինք, հետաքրքրւողները թող նայեն մանրամասնաբար գրաբառ բնագրում, որը և զետեղում ենք։

---

## Ս. ՍԱՀԱԿԻ ԿԱՆՈՆՆԵՐԻ ԳՐԱԲԱՌԸ.

*Սրբոյն Սահակայ Հայրապետին յաղագս քորեպիսկոպոսաց թէ որպէս պարտ է զկանոնական կարգն հաստատուն պահել ի սուրբ եկեղեցի. գլուխ. ԾԵ:*

Ա. Զի սրբոց բարեպաշտաց և առաքինութեամբ պայծառացելոց պարտ է հաստատել զպատիւ կարգի պաշտամանս այսորիկ. վերագոյն ճառեցաւ ի մէնջ որոց մաքուր են միտք յարծարծ սիրութեան ախտէ. և ձեռք իւրեանց ի կաշառոց ուսումնասէրք և պարկեշտք ուք բաւականիցեն և զայլս ուսուցանել զամենայն յանձնարարեալ նոցա զեկեղեցիս, անյապաղ խնամով պայծառացուցանիցեն աստուածահաճոյ վարուք զերկիւղածս, և զգաստոն, և հլու յամենայն բարի յորդորութիւնս»

Բ. Եւ զտաճարս աղաւթիցն յորս սուրբ և աստուածընկալ սեղանն հաստատեալ է, յորոյ վերայ կատարի մեղսաքաւիչ և կենդանարար խորհուրդ մարմնոյ և արեան արարչին մերոյ և տեառն. ըստ արժանի բաւականութեան զարդարուն պահեսցին անխափան լուցմամբք և խնկարկութեամբք. և պարսպեալ եղիցի քաղաք որմովք և մերձ ի նա մկրտատուն շինեսցին յաւանս որպէս և սովորութիւն իսկ է՝ և այլոն ի նմին կանգնեսցի աւազան մկրտութեան. որոյ ծնընդեամբ հոգին սուրբ վերստին նորոգելով դրոշմէ լինել որդիս լուսոյ, վասնորոյ բազում պատուոյ մեծարանաւք պարտեմք մեծարել»

Գ. Եւ զպաշտաւն սաղմոս երգութեան անխափան կացցէ ի տուընջեան և ի գիշերի. ըստ աւրինակի մայրաքաղաքացի հօրն հովուապետի, զի ամենայն ումեք չէ օրէն և իշխանութիւն յապաղել զայն կարգ պաշտաման, կամ նորաձևութիւնս ինչ առնել, այլ միշտ ի նմին յարամնալ»

Դ. Զնոյն և տեսուչ քոր եպիսկոպոսն պարտի համաւօտել զամենայն եկեղեցիս, և թէ ոք հեղգասցի կամ ստերիւրեալ գտցի յանդիմանեսցեն կշտամբեսցեն, խրատու վար-

դպետութեան և գանիւք և տուգանաւք պատուհասեսցեն, ատենական հրապարակաւ զի և այլք երկիցեն»

Ե. Քանզի պարտ և պատշաճ է յամենայն տարւոջ յորժամ ժողովք կատարիցին ըստ կանոնական սահմանադրութեանցն շրջել քոր եպիսկոպոսացն հաւատացեալ նոցա յեկեղեցիսն և քննութիւն առնել վարուց և կարգի պաշտամանն որպէս ունիցին և համարս պահանջել յերիցանց և սարկաւագաց. ժամուցն քարոզութեանցն. և աղօթիցն մատուցմանն և զկնքատուացն մի ըստ միոջէ. յարմարումն կատարելութեան՝ և պատարագս մատուցողացն սարսափելի խորհրդոյն պատշաճաւ սպասահարկութիւն, զի փոյթ եռանդն յաւժարութեամբ և երկիւղիւ անդրդուելի պահեսցին, վասն որոյ թէ հեղգայցեմք համարս պահանջելոց եմք, եթէ ոք տարտամիւ յետնեալ գտանիցի սքանչելի ճառեցեալս աւանդապահութեանց կրեսցէ պատուհաս սաստիկ ոք և իցէ և ի պատուոյն իւրմէ զրկեալ եղիցի մինչեւ հաշտեսցի ընդ նա վարդապետն»

Զ. Եւ ոչ միայն երիցանց և սարկաւագաց պարտէ մշտնջենաւորել ի պաշտաման այլ և ամենայն ուխտի մանկանց, և եթէ ոք մեղկ և ծուլասցի՝ զնոյն կրեսցէ պատուհաս, այլ զտգետս և զգինուորեալն ամենեւին իսկ պարտէ որոշել ի շնորհէն վայելից որ ինչ ի ժողովրդականաց ի տուն աստուծոյ մտանիցէ, բայց թէ ինքեանք կամ զաւակք իւրեանց հրահանգիցեն լինել արժանի»

Է. Նոյնպէս և զարբեցաւղն որոշեսցեն և զկռուօղս մինչեւ յապաշխարութիւն և յուղղութիւն եկեսցեն ըստ առաջնորդին կամաց»

Ը. Իսկ զպոռնկորդիսն և որ երկրորդացն են. նոյին հաւասար մինչեւ ցերրորդ ծնունդն ըստ առաջին կանոնացն հեռի կայցեն ի կարգէն և ի շնորհացն զոր պարկեշտ և սուրբ աներկեւան եղիցի ուխտ պաշտօնէին աստուծոյ, զարդարուն և ճշմարիտ հաւատովք և գործովք առաքինութեան, ցանկալի ամենեցուն և պատուական որպէս և վայել է պաշտաւնէից աստուծոյ, զի թէ ղեւտական ազգն այնպիսի պա-

տուէր ընկալաւ սոսկալի և զգուշաւոր անարատ սպասաւորութեան, որչափ եւս առաւել այժմ ոյք են արժանաւոր փութոյ ըստ Պօղոսի վկայութեան»

Թ. Արդ՝ զամենայն զայս ահիւ և երկիւղիւ պարտի հրաման տալ և կարգել քոր եպիսկոպոս, զլաւս և զաջողակս պատուեսցէ և մեծարանաց արասցէ արժանի. և զանպիտանսն խոշտանգանաց՝ մանաւանդ զուսումնատեացսն, զի որ կամակորէ յուսմանէ՝ անկանէ ի չարիս ըստ գրեցելումն:

Ժ. Վանորայ անհատ պարտի պահել զյորդորումն ի վանս և յայլ արժանաւոր տեղիս, զի լուսաւորեալք լուսով պատուիրանացն աստուծոյ զամենեսեանսն լուսաւորեսցեն, քանզի յորժամ ուխտն որ գլուխ է եկեղեցւոյ. ընտիրք և պիտանիք լինիցին, եւս առաւել ժողովուրդն, եթէ եղիցի ոք ի ժողովրդենէն ծոյլ, վարուք առաքինութեան՝ դիւրագոյն լինի աճել յուղղութիւն. քան զի չէ փոքր և յաղագս այդորիկ հոգ ի վերայ քոր եպիսկոպոսին, այց առնել և վարուց ժողովրդեանն և ըստ պարապոյ ուխտաւորեալ պահոցն և աղաւթից ուրախացուցանել գրոց սրբոց վարդապետութեամբ, շահել զմեղուցեալսն և տալ տեղեկութիւն կրթութեան և պահպանութիւն ամբիծ հաւատոց և զգուշանալ և փախչել ի հերձուածողացն, և յաղծապիղծ գործոց քան զի զդիտաւորութեան գործ նոցա է հաւատացեալ է եպիսկոպոսին, ըստ աւրինակի բարգաւաճեալ մեծի մարգարէին Մովսիսի որ կացոյց ոստիկանս ի վերայ ժողովրդեանն քննել և դատավճիռ հատանել, և զծանր ինչ բան առ ինքն հասուցանել, եթէ զգուշասցին և զգուշացուսցին ըստ պատգամի մարգարէութեան. թէ ահա սուր գայ յազգ երկրին ապըստամբեալ անփոյթ առնիցին նոքա յանաւրէնութեան իւրեանց մեռցին, և նա ապրեցուսցէ զանձն իւր»

ԺԱ. Ապա եթէ զօշաքաղութեամբ յածիցի զհարկս միայն պահանջել և ագահութեամբ զոսկւոյ և զարծաթոյ մթերս փափագիցի մըթերել և պղերգացեալ ի մոռացանս զկանոնական քննութիւնս դարձուցեալ զոր ամբողջ և անվաթար պարտ էր պահել, և բոլորովին թողեալ լքեալ զիւր

դիտութեան զպահպանութիւն և եկեալ սուրբ կորուսանիցէ զնոսա, ինքն եղիցի պարտական և ի ձեռաց նորա խնդրեցից զարիւն, վասնորոյ պատրաստ կալ հրամայէ ճշմարիտ քարոզն հսկել և արթուն լինել, զգոյշ կացէք անձանց և ամենայն հօտին յորում եդ զձեզ հոգին սուրբ տեսուչս հովուել զժողովուրդ տեառն զոր ապրեցոյց արեամբն իւրով, և զերախտիս հատուցմանցն պարգևի յայտ առնէ, զի յերևիլ հովուապետին ընդունիցին զանթառամ փառաց պսակն»

ԺԲ. Եղիցի մեզ ամենեցուն խոյս տալ և փախչիլ ի չարէն և արդարութեան հետամուտ լինիլ, յամենայն ժամ ի հաճոյսն աստուծոյ, ծախել զկեանս մեր. զի անձանց, և այլոց բազմաց լինիցիմք առիթ փրկութեան և բաւական եղիցուք համարձակութեամբ ասելով թէ ահաւասիկ ես և մանկունք իմ զոր ետ ինձ աստուած՝ շնորհաւք և մարդասիրութեամբ տեառն մերոյ և Փրկչին Յիսուսի Քրիստոսի»։ Նորին կարգ քահանայից առ ժողովրդականս, և նոցին ժողովրդականաց հնազանդութիւն և կարգ ուղղութեան առ քահանայս»

ԺԳ. Եղբարց սիրելեաց երիցանց և վանականաց, որպէս ամբաստանութիւն եղև առ մեզ ի բազում տեղիս ժողովրդականաց ըզքահանայից, որպէս ծուլութեամբ ունին զկարգ եկեղեցւոյ պաշտաման և աղաւթից և զայլ ամենայն կարևոր առաջնորդութեան մանաւանդ ուսումնատեացութեան՝ զի ասացին թէ ինքեանք չեն ուսեալ և զորդիս իւրեանց ի դպրոց ոչ ունին, և վասն տգիտութեան երիցութեան արժանի ոչ լինին, և մեզ գրկանք են և նեղութիւն զի դատարկացեալ եմք, և նոքօք և ի նոցանէ ամենևին անտեղեակ և անմխիթար դրոց սրբոց՝ զնոյն քննեցաք ի նոցանէ դիտացաք և մեք. և սգացաք ի վերայ նոցա յոյժ, վասն զի ի շատ տեղիս ոչ զոք գտաք քահանայութեան արժանի ի տգիտութենէ, և ժողովուրդն խոպանացեալ մնայր, և մեք տարակուսեալք ոչ գտաք որ զնոսին ինքեանս կարգեալ ի քահանայութիւն այլ հրաժարեցուցեալ զնոսա ի բնակութենէն, օտարաց պիտանեաց և գիտնոց տուաք ըզժառանգու-

թիւն նոցա։ Արդ, որպէս յամենայն ժամ պատուէր լքեալ էր ի մեզէ առ ձեզ։ և գրելով և հրաման տալով յանդիման ամենայն կարգի եկեղեցւոյ, և ձեր անձանց կազմութեան էր, թէ խրատեալ էիք, և այդպիսի տրտունջ դձէնջ ի ժողովրդականաց ոչ հասանէր առ մեզ՝ և ոչ զձեզ ի թերութիւն տեսանէաք, և ոչ զեղջ և ապաշաւ լինէր։ և վասն մտից և պտղոց եկեղեցւոյ զոր դուք ի ժողովրդականաց առնուք և մեր ձեզ թողեալ է և եւս զի ամենայն պատիւդ ձեր հայի ի գիտութիւն և արժանաւորութեամբ զկարգ եկեղեցւոյ ունել, և յօրդորել զժողովուրդն ի խրատ բարի և ի պատկառանս ամենայն հոգեւոր երկիւղածութեան։

ԺԴ. Արդ՝ բարձէք այսուհետեւ ի ձեզէ զայդպիսի թշնամանս, զորդիս ի դպրոց կալարուք զի գիտունք լինիցին։ Ծաներուք զի որպէս կուրութիւն աչաց ատելի է մարմնոյն, նոյնպէս և տգիտութիւն ոգւոյ ատելի է աստուծոյ, մանաւանդ քահանայից լուաք ի մարգարէէն, այլ աւրինակ կացուցէք զանձինս ձեր ժողովրդականաց ամենայն պարկեշտութեամբ, աղաւթից և պահոց անձանձրոյթ հոգ տանել։

ԺԵ. Զամուսն գլխաւոր քահանան հանապազորդեալ յեկեղեցւոջն կացցէ՝ և այլ ընկերքն շաբաթուք առ նմա փոխանորդաւ կացցեն, զի պաշտամունքն տուընջեան և գիշերոյ մի խափանեսցին, վասն զի այդ գործ մշակութեան և նոյն պատիւ։

ԺԶ. Մկրտութիւն առնել երկիւղածութեամբ, և կանայքն ի ժամ մկրտութեան մերձ առ քահանայս մի իշխեսցեն կալ, որպէս սովորեցան ոմանք առնել յանդգնաբար և մկրտել ընդ նոսա, այլ ի տեղւոջ իւրեանց աղաւթեսցեն։

ԺԷ՝ Եւ սարկաւագք մկրտութիւն մի իշխեսցեն առնել, ապա թէ արասցեն, լուծեալ լիցին ի սարկաւագութենէն հանդերձ պատուհասիւ՝ զի ոչ է սարկաւագն քահանայ այլ սպասաւոր քահանային։

ԺԸ. Եւ պատարագիք ի գլխաւոր քահանային տուն երթիցէ, յամենայն ժողովրդականաց, և երէց եղբարք և այլ ընկերք նոցա մի իշխեսցեն ի տուն իւրեանց առնուլ պա-

տարագիք, թէպէտ և քահանայք իցեն. թէ իցէ ոք որ առ-
ցէ ի տունս իւր ընդ պատուհասիւ լիցին, և գիտասցեն զի
ի մեզէ հատուցումն ընդունին արժանի ըստ ունկնդրու-
թեան իւրեանց»

ԺԹ. Եւ գլխաւոր քահանան վասն հանապազորդ յեկե-
ղեցւոջ ի գործի կալ, Ե.-րորդ աւելի առցէ քան զիւր ըն-
կերն թէ գեօղ մեծ իցէ»

Ի. Եւ յամենայն տեղեաց մերոց իշխանութեան յամե-
նայնի ամի զկնի սրբոց զատկին զեւղ մկրտութեան հարկա-
ւորութեամբ բերցեն առ մեզ քահանայք, և աստի ի մեզէ
ընկալցին աւրհնութիւն իւղոյն, և անձամբ մի աւրհնեսցեն
ի տունս իւրեանց, որպէս սովորեցին ոմանք ի տգիտութե-
նէ, վասն զի ոչ է իշխանութիւն այդ քահանայի այլ եպիս-
կոպոսաց գործ է»

ԻԱ. Եւ լսեմ թէ զեկեղեցւոյ սպաս՝ մանաւանդ զվա-
րագոյր ի հարսանիս առագաստի փեսայի և հարսին, և զսկիհ
գինի ըմբելս յանօթս տան զինւորաց՝ վասնորոյ արժանէ
զքահանայն զայն խլել ի կարգէ իւրմէ վասն այդպիսի խառ-
նակ և չար գործոց, զոր յայսմ հետէ այլ մի ոք իշխեսցէ
առնել, իսկ եթէ ոք գտցի արարեալ լուծեալ լիցի ի քահա-
նայութենէն, ամենևին անմասն ի թողութենէ»

ԻԲ. Քահանայ այր, և որ քահանայական կարգի են ժո-
ղովրդականք յազատաց տունս, յիշխանի ի տունս. 'ի դայե-
կութիւն, և յայլ գործակալութիւն մի իշխեսցեն առնել, զի
այնու պատճառաւ զրկեալ եղեն զժառանգակիցս իւրեանց,
յորում գտան բազումք պարտաւորեալք՝ ապա թէ իցէ ոք
որ յանդգնեսցի առնել, ի կարգէն իւրմէ դադարեալ լիցի,
և ժողովրդեան և մասին եկեղեցւոյ իշխան մի լիցի, և ընկեր
իւր ընդ նմա հաղորդել մի յիշխեսցէ, և ժողովրդականք
զայսպիսին առ քահանայ մի իշխեսցեն ունիլ»

ԻԳ. Տգէտ երէց եղբարք ժողովուրդ մի իշխեսցեն ու-
նել երկականայք երէց եղբարք ընդ զինուորս կացցին որս-
շեալ ամենևին յեկեղեցականացն ի մասնէ եկեղեցւոյն, վասն
զի եղեն մարմնասէրք»

ԻԴ. Եւ որպէս եղեւ անատակ սովորութիւն քահանայից և նոյին կանոնցն որ զգերեզմանս առ եկեղեցիս առնել ի տեղիսն սրբութեան, ի սուրբ սեղանոյն առաջ մի իշխեսցեն առնել, այլ ի ժողովրդանոցն հանգստարանս իղիցեն և քահանայից հանգստարանք, զի սրբութեան տեղին, պարկեշտութեամբ պատուեսցի»

ԻԵ. Եւ արտաքոյ եկեղեցւոյ քահանայք մի իշխեսցեն օրէնս ի տունս շինականաց տանել և անդ տալ զսրբութիւն բայց հիւանդաց»

ԻԶ. Ուսուցէք և զժողովրդականս յամենայն անառակութենէ ի բաց փախչել, յոր կորստութենէ. յարբեցութենէ 'ի հակառակութենէ, ի զրկելոյ զաղքատս և զնկերս իւրեանց, մի կռուօղս, մի հարկանօղս, մի չարասէրս, առեսցեն զչնացօղս, զգօղս զպոռնիկս, զաւազակս ամենևին մի հաղորդեսցեն, և մի ասպընջական լիցին այնպիսեացն, զի մի եղիցին և ինքեանք ընդ նոսին որդիք կորստեան, զմանկունս իւրեանց սնուսցեն երկիւղիւ խրատու պատուիրանացն աստուծոյ, զի այսպիսի զգուշութեամբ բարի յոյս ոգւոց իւրեանց եղիցի առ աստուած և բարեխօսութիւն մարմնոյ ամենայն առողջութեամբ զարդարեսցի»

ԻԷ. Պատուէր արարէք նոցա զի տղայոց կանայս մի խօսեսցին և կատարելոցն առանց զիրեարս տեսանելոյ միմեանց հաճութեամբ, և դուք քահանայք տղայոց ամենևին իսկ պսակ մի աւրհնէք մինչև ի կատարումն հասակի» իսկ կատարելոցն որոց զմիմեանս չիցէ տեսեալ ի հաճոյս իւրեանց պսակ մի իշխեսցէ դնել առանց քննութեան և զնոսին ինքեանս հարցանելու, գուցէ բռնադատութեամբ ծնօղացն ակամա հանեալ իցեն, և զայնպիսի հարսանիս մի իշխէք յանձն առնուլ, զի մինչեւ ցայսաւր յայդպիսի յանկարգութենէ բազում վնասք գնացին յաշխարհի հոգեւոր և մարմնաւոր»

ԻԸ. Ապա եթէ լսեմ եթէ ոք ի քահանայից յանդգնի և արտաքոյ մերոյ հրամանի այնպիսեացն պսակ աւրհնեսցէ, գիտասցէ զի քահանայն պատուհաս կրեսցէ ըստ աւրինակի վնասակարացն, և ծնօղքն ոչ անպարտ լինել ի պատուհասէ»

ԻԹ. Քահանայք միայն կատարեսցեն զպաշտօնն և զպատարագ ազգային առանց աւետարան կարդալոյ մի իշխեսցին մատուցանել. ապա թէ գտցի ոք ի նոցանէ յորկորըստութեան յառաջ քան զպատարագն, 'ի պատարագին հացն մի իշխեսցէ երթալ և յընկերաց իւրոց որոշեալ կացցէ»

Լ. Նոյնպէս և շինականք որ յագապ հրաւիրեսցեն պաշտամանն և պատարագի հաղորդեսցեն յառաջ քան զպատարագն մի իշխեսցեն ի տունս իւրեանց ուտել և ըմպել, եթէ իցէ ոք որ յառաջագոյն կերիցէ և արբցէ ի տան իւրում ի հաց պատարագին մի իշխեսցէ երթալ, զի մի եղիցի դատապարտութիւն անձին և թշնամանք ի հոգևոր տաւնին, զի խեղաբարոյութիւնն այն ունայն իսկ է, եթէ ոք յանդգնեսցի գալ, քահանայքն և ընկերք իւրեանց մի թողցեն ի ներքս զի ատելի է եկեղեցւոյ այնպիսի անառակութիւն»

ԼԱ. Եւ որք սովորեցին ագահութեամբ մեղանչել ժողովրդականք, որք զպատարագի կաշի և ճրագու բաժանեն ընդ քահանայս և իւրեանց տունս տանեն պատճառաւ վանացն յայսմ հետէ յառաջ մի իշխեսցեն բաժանել, ապա թէ իցէ ոք որ բաժանիցէ, քահանայն զպատարագն մի մատուսցէ, զի մի մեղացն այնպիսւոյն հաղորդեսցի, քանզի ոչ է բաժինն այն բարի արարողաց պատարագին»

ԼԲ. Զպտուղս զնախնեաց կարգեալս և զամենայն ընծայս ուխտին զատկաց ագապաց, և զայլոց տաւնից ժողովրդականք սիրով և լրջմտութեամբ հատուսցեն յեկեղեցիս որպէս օրէն է զոգւոյ և զմարմնոյ պատճառս կենդանութեան մի արգելել փակեսցեն ի կենդանեաց ոգւոց» իսկ եթէ ոք կարկամութեամբ ապստամբեալ յիւրմէ քահանայէն և ի վանաց, արտաքոյ իւրոյ եկեղեցւոյն ի վանս ուրէք կամ յանապատս զպտուղս և զպատարագս մատուցէ. այնպիսին ինքն և ընդունողքն հեռի լիցին աւրհնութենէ և ի հաղորդութենէ ընկերաց հանդերձ ընտանեօք մինչև ապաշխարեսցէ և տուժեսցէ յեկեղեցւոյ, վասն զի եղեւ պատուիրանազանց և աստուածամարտ»

ԼԳ. Գինի ըմպելիս ի լալիս մի արբցին, աշխար ի վե-

րայ մեռելոյ մի ոք արասցէ՝ քանզի դիւական են ամենայն այսպիսի իրք ապա թէ իցէ ոք և անհնազանդեալ արասցէն, պարտական եղիցի ապաշխարութեան առ դուրս սուրբ եկեղեցւոյն»

ԼԴ. Եւ քահանայք զգուշասցուսցեն զյանցասցեալն միաբան առնել արտաքոյ եկեղեցւոյ, և մի ի խրոխտ և ի հակառակութիւն ընդդիմանալ միմեանց անարգել անձամբ զանձինս, այլ խաղաղութիւն եղիցի ձեզ յամենայն ժամ սիրելիք և գործակիցք»

ԼԵ. Յիշեցուցանեմ և ձեզ կրաւնաւորք վանական ամենեցուն վասն զի հրաժարեալ էք ի կենաց երկրաւորաց, և սորբապեալ ասաուծոյ և աստուածայնոցն, զի նմանեսցէ աւանդ խոստովանութեան, և գործքդ եղիցի ձեզ սիրելի, սրբկեշտութիւն, արթնութիւն պաշտաւնասիրութիւն, նմանութիւն բերել յանձինս հրեշտակական վարուց, ատարսիրութիւն և եղբայր սիրութիւն»

*Նորին սրբոյն Սահակայ, թէ որպէս սահմանեցաւ կարգ ուխտի Եւ որոշումն վանաց բան, Երկրորդ»*

ԼԶ. Քանզի բազումք կարծեցին տգիտութեամբ այլ զոմն եկեղեցի ասել, և այլ զոմն վանս, և տխմար բանիւք իւրեանց կամեցան կռիւս և հերձուածս մուծանել ի միաբանութիւն հաւատոյ, և մոռացան զպատուիրանին որ ասէ, մի է տէր մի հաւատք, մի մկրտութիւն. զի որ այլ և այլ կամի ասել յայտնապէս զհաւատոյն ցուցանէ զբաժանումն՝ քանզի եկեղեցի մեզ ոչ ցուցանէ պատուիրանն աստուծոյ՝ որ ի քարանց և ի փայտից է շինեալ, այլ զհաւատով շինեալ զազգ մարդկան ի վերա վեմին հաստատութեան՝ ապա ուրեմն ճշմարիտ հաւատն է եկեղեցի որ գումարէ և լինի զմեզ ի միաբանութիւն գիտութեան որդւոյն աստուծոյ՝ քանզի նոյն ինքն կենարարն ուսուցանէ ասելով ցՊետրոս. վէմ, դու ես վէմ, և ի վերա այդր վիմի շինեցից զեկեղեցի իմ, և դրունք դժոխոց զքեզ մի յաղթահարեսցեն, այդ՝

զինչ իմանայցեմք զասելն ցՊետրոս վէմ. միթէ որպէս զմի ոք ի քարանց, քաւ լիցի, այլ մարդ բանաւոր, գլուխ առաքելական դասուն, և զի անդրդուելի հաւատովք խոստովանեաց զՔրիստոս որդի աստուծոյ երանութիւն ընկալաւ, և վէմ անուանեցաւ, ապա ուրեմն և շինեալք ի վերա նորա ոչ են քարինք անշունչք այլ մարդիկ նորին հաւատոյ հաղորդակիցք, քանզի ոչ դանդաղին գիրք սուրբ անուամբ ձայնել զտէրն մեր և Փրկիչ երբեք, երբեք ըստ պիտոյից յիշատակէ ահա և երանելին Պօղոս զանուն եկեղեցւոյ ասելով. զորս եդն աստուած յեկեղեցւոջ, ասեն. նախ զառաքեալսն երկրորդ զմարգարէս. երրորդ զվարդապետս, և որ ի կարգին է» Տեսանես զյարմարումն և զբարձրութիւն եկեղեցւոյ՝ զսուրբ և զամբիծ հաւատոցն ասեմ, որոյ առաքեալք և մարգարէք, և վարդապետք են նաւավարք, ունելով նաւապետ զմարմնացեալ և զմարդացեալ բանն աստուած, և զնա խնդալէս խոստովանիմք ասել մայր եկեղեցւոյ ի քրիստոս հաւատացելոց՝ քանզի աւրէն է նաւի զամենայն յինքն ամփոփելով ցամաքութիւ յամենայն աշխարհական ծփանաց կարող լինել ապրեցուցանել բայց միայն աներկեւան պահեսցուք զհաւատս որով շինեցաք բանաւոր և մտաւոր եկեղեցի ի վերա հիման առաքելոց և մարգարէից, այսմ եկեղեցւոյ ուսուցանէ Տիմոթէա խնամ տանել երանելի առաքեալն սիւն և հաստատութիւն ճշմարտութեան անուանելով, յայտնի է ասէ ի նմա խորհուրդն աստուածպաշտութեան, և յիրաւի մանաւանդ թէ ճշմարիտ իսկ: զի ոչ են բաւական ձայնաւոր կամ անշունչք տարածք յայտնել զխորհուրդ աստուածպաշտութեան, այլ միայն բանաւոր եկեղեցին» Վասն այսորիկ և սաղմոսն բարձրաձայն կոչէ՝ թէ աւրհնութիւն նմա յեկեղեցիս սրբոց, և ահա Սամուէլ մարգարէ որ հաւատարիմն, զնոյն ուսուցանէ ի պատուիրելն իւրում Սաւուղայ, իբրեւ գնասցես յինեն, և հանդիպեսցես եկեղեցւոյ պար մարգարէից մարգարէացելոց, և Սամուէլ կայր ի վերայ նոցա» Եւ աւրհնեաց Սողոմոն զեկեղեցին, և լու եղեւ բանս այս յականջս եկեղեցւոյն, և եկեղեցիքն հաստատէին ի հա-

ւատս. և լուար զպատգամս զայս ի միջոյ հրոյն աւուրն եկեղեցւոյ, քանզի եկեղեցի սրար գլուխ մարգարէից Մով-սէս զցեղսն խոյակեալ հրամանաւն աստուծոյ եկեղեցւոյ ասէ զժողովուրդն ի դուռն խորանին կոչէ եկեղեցի յորում կայր յարկղն կտակարանաց. և միւս խորանն որ կոչէր սրբութիւն, այլ զհաւատացեալ ժողովուրդն աւետարանէ» Վասն այսորիկ եւս առաւել բարձրագոյն և առաքեալն Պօղոս նորագոյնս իմն և յաւէտ հրաշալիս, քանզի ցուցանէ զեկեղեցի անդրան-կաց գրելոց ոչ յերկրի, այլ յերկինս՝ որոց անուանք գրեալ են ի դպրութեան կենաց» Տեսեր զճշմարիտ հիմն եկեղեց-ւոյ. վասնորոյ Փրկիչն ասաց խնդալ զառաքեալսն, թէ խըն-դացէք զի անունք ձեր գրեալ են ի դպրութեան կենաց և յանապական, որ սկիզբն կալաւ շինելոյ երկրի որ անցանելոց է և աւարտէ յաւգտակալ յերկնից բարձրութեան» Ասէ խորհուրդն եկեղեցւոյ՝ զայս ուսաք ասել կաթուղիկէ առա-քելական եկեղեցի, զի ընդ ամենայն տիեզերս հաւատացեալք ի Քրիստոս առաքելական յորջորջին եկեղեցի, վասն զի տէ-րունական հրաման են որ առ նոսա, թէ գնացէք ընդ ա-մենայն երկիր աշակերտեցէք զամենայն հեթանոսս մկրտե-ցէք զնոսա յանուն հօր և որդւոյ և սուրբ հոգւոյն ուսու-ցէք նոցա պահել զոր պատուիրեցի ձեզ»

ԼԷ. Արդ՝ թէպէտ և փոքր ի շատէ ասացաք յաւրինա-կացն որ բազմապատիկ կան ի գիրս սուրբ վասն եկեղեցւոյ սրբոյ յիշատակաւն եղիցի, քանզի յայտնի եղեւ անքակ միու-թիւն և ոչ երկպառակեալ որպէս կամեցան պատառումն առնել և կռիւս վաղվաղակի տխմարութեամբ իւրեանց, զի ի ճշմարիտ հաւատէն քրիստոսի որ է եկեղեցի աստուծոյ, նա միայն է պատառեալ, և անջատեալ որ ի հերձուածս կործանի, և մեղաց լինի պաշտաւնեա. զի բաժանին և աւ-տարացուցանին յաստուծոյ՝ բայց զայս ասելով մեր զանբաւ միաւորութիւն եկեղեցւոյ այտ արարաք թէ զինչ է եկեղեցի, այլ ոչ եթէ արհամարհել ինչ ուսուցանեմք, զի շինուածովք պատուեալ զտեղիսն որ անուանեալ կոչեն ժողովրդանոցք, քանզի ի նոսա ժողովին քահանայք և մանկունք ուխտի և

պաշտօնեայք աստուծոյ կատարել զաղօթս և զխնդրուածս, վասնորոյ և աղօթարանք կոչին և սրբարանք և հաստատեալ ի նոսա տէրունական սեղանն. յորոյ վերայ զհացն և զգինին պատարագեմք՝ յաւրինակ կենդանարար մարմնոյ և արեանն քրիստոսի որ միշտ անծախապէս բաշխի ի մեզ ի քաւութիւն և ի թողութիւն մեղաց և ի նոսա կայ ուղղեալ աւազան մկրտութեան որովք լուսաւորեալք վերստին ծնընդեամբք հոգւովն սրբով դրոշմիմք ի յոյս կենացն յաւիտենականաց և հանապազ անդր գումարելով լսեմք սաղմոսերգութիւնս և զպատգամս սպասաւորանացն աստուծոյ, և վասնորոյ միշտ անդր ժողովիմք և ապաւէն ապաստանի է ի մեզ զամենայն առ ասացեալսն ի նմա կատարելով, սովորութիւն եղեւ եկեղեցի անուանել յարանուանաբար, այլ ոչ բնաւորապէս և քանզի բազումք այսպէս կան վկայարանք ուրեք ուրեք, յանուն ճանաչեմք եթէ յանուն նոցին են շինեալք, այլ ոչ եթէ ինքեանք իսկ որոյ անուն շինեցան, և մի պատիւ է ամենեցուն զի մի խորհուրդ կատարի՛ քանզի սեղանն ամենայն ուրեք տէրունական ասի և պատարագն, բայց միայն տաւնիւքն զանազանեն, զի իւրաքանչիւր տեղւոջ սովորութիւն է կատարել զկարգ տօնիցն»

ԼԸ. Արդ՝ արժանաւոր է և զառաջին ճառ բանին յիշատակել եթէ որպէս կամ յինչ պատճառ շինեցան վանք. քանզի յայսմ ոչ եթէ հայոց միայն ազգս կալաւ փոյթ յանձին, այլ և յոյնք և հոռոմք և ասորիք, և այլ ամենայն ազգք ի քրիստոս հաւատացելոց՝ զոր և երիցս երանեալն քաջ նահատակն քրիստոսի Գրիգորիոս կատարեաց շնորհելով նմա ի հոգւոյն սրբոյ զաւգուտ մատակարարութեան, քանզի բազմապատիկ օգուտ է առ իմ, և սիւն հաստատութեան ճըշմարտութեան ուխտի մանկանց, զի փայփայէ և թեւակոխէ ի հրահանգս, հոգեւորս և զորս ամենեցուն քահանայից և ժողովրդականաց պարտ է յարգել և մեծարել զվարդապետս և միանգամայն իսկ զամենայն պաշտաւնեայս ուխտի առանց տարակուսանաց անդր մտանեն յընդունելութիւն կամաւորական» Վասն այսորիկ, և դիպողագոյն եղաւ անուն

վանք զի անտրտում որոց պիտոյից է տայցեն և ոչ միայն առ աւտարս է օգուտ նոցա յաճախել այլ առաւել եւս գեղջն յորում շինեցաւ՝ քանզի աւրէնէ նոցա սփոփել զհիւանդս, և մխիթարել զգաւորս՝ և որք ամուսնութեան են պարապեալ քահանայք բազում անգամ պատաղին ի մշակութիւն և կանանց իւրեանց հնարին լինել հաճոյ, որպէս առաքելականն իսկ ճշմարտէ բան։ իսկ ի վանեարն բնակեալք կուսութեամբ են պարկեշտացեալք միշտ մարտնչելով ընդ ախտին զոր բնութիւն վառեալ բորբոքէ, և անյապաղ զպաշտաւնն կատարեն զկարգ՝ զխաղաղութիւն խնդրելով ամենայն աշխարհի, և զգեղջն շինութիւն և զառողջութիւն ի տուէ և ի գիշերի. բազում արթնութեամբ« Վանայարկ ազատ ամենայն հարկապահանջ իշխանաց սահմանս ընկալաւ և անդս եւ զերիցագոյն պատիւ ժառանգեաց ուխտի սրբութեան եկեղեցւոյ»

ԼԹ. Արդ՝ ամաչեսցեն որք յանդգնեցան ախմարութեամբ և անզգամութեամբ իւրեանց, այլ զոմն ասել եկեղեցի և այլ զոմն վանս. քանզի յայտնի եղեւ անբաժանելի միութիւն անդամոց եկեղեցւոյ ի Քրիստոս հաւատացելոց. զի անդամ եմք միմեանց ի շինութիւն հաւատոցն սիրովն Աստուծոյ. նոյնպէս և ժողովրդանոցք և մատրունք զոր սովորութիւն եղեւ ի վաղնջուց հետէ կոչել եկեղեցիս. թէպէտ և բազում է ըստ գիւղից գիւղից և քաղաքաց քաղաքաց՝ սակայն ոչ են բազումք ի բազումս բաժանեալք, այլ միեւնոյն խորհուրդ կատարի յամենեսեանսն. և ըստ խորհրդոյն ոչ ասի ոմն մեծ ի նոսա և ոմն փոքր. այլ ըստ աստիճանին իշխանութեան և այսպէս յարմարեալ ի բազում փութով պարտէ ի նմին մշտնջենաւորել քանզի ոչ եթէ ի մարդկային կարեացէ ճառեցեալս սահմանադրութիւնս, այլ յաստուածաշունչ գրոց երկրորդեցաւ ի մէջ բաց որոշաբար, և որ հակառակն կան ոչ մարդկան, այլ Աստուծոյ հրամանին կան հակառակ, և որ կամինն կալ հակառակ, անձանց դատաստանս ընդունին»

Խ. Արդ՝ պարտէ մեզ զհաստուցումն շնորհից սահմանագրելով հաստատել յայտարարութեամբ թէ որպէս պարտէ հա-

տուցանել ի վանս, և կամ ամուսնացելոց քահանայից։ Տօն սրբոյ Յովհաննու մկրտչի և վկայի զոր Նախակարգեաց առաքեալն և խոստովանողն քրիստոսի և հայր վերստին նորոգմանն բոլոր Հայաստան աշխարհիս Գրիգորիոս ի վանս, զի ուխտադրութեան պահօք հաստատեցաւ՝ և որ ինչ մի անգամ այլ ուխտք են ի վանս կատարեսցին, և շաբաթք և պահք, և ծոմք, զի ուխտիցին կատարմունք, զի ուխտաւորեալ են բնակիչք, շնորհիւ ուխտին կերակրեսցին, և տաւն ամենայն մարտիրոսաց զոր մատուռն կոչեմք։ Վարդավառին մատաղենիքն միայն։ Պտուղ յամենայն արմտեաց, քոռ քոռ՝ ի ժողովրդականաց և յամուսնացելոց քահանայից, յառաջին յարմտեացն, այսինքն յընդլոցն, զի զեղցին կուլք ցորենոյ, և հնձանք գինւոյ և իւղոյ, և մի ի վատթարացն իբրեւ զկայլն գուցէ զնորին լուիցուք զպատուհաս։ Տաւն սրբոյ յայտնութեան և քառասնորդք նորա. և Տեառն ընդ առաջն։ Եւ առաջաւոր պահոցն կատարումն։ Տաւն միջնոյ քառասնորդացն զատկի։ Աւր ղազարու. մեծ. ե. շաբաթի զատկին, յորում կենարարն մեր աւանդեաց աշակերտացն զխորհուրդ նորոյ ուխտիս։ Երկու շաբթի զատկին ընծայիւք և հաճոյակատար աւժտիւք՝ Նոր զատկին։ Տաւն ամբառնալոյ Տեառն յերկինս։ Տաւն փոխճանելոյն յելս հրոտից ամսոյ։ Այսոքիկ տօնք ի վանս յուխտաւորեալ տեղիսն երթիցէ, նախանձն հանապազ, զի կերիցեն պաշտաւնեայք տեղւոյն և հիւրք. զի քահանայից թէպէտ և ամուսնացեալք իցեն, և աբեղէից և ամենայն իսկ ուխտի մանկանց չէ արժան ի շէնս աւթել. այլ ի վանս. բայց եթէ ուր ոչն գուցեն, և զկողոպուտ փոխճանելոյ տանուտերանց ի տախտէ և յաթոռոյ մինչեւ ցպնակ, և ՚ցգրկալ, և որ ինչ անձին զգեստնէ մինչեւ ցկօշիկս և ցգօտի. և անկողինն երթիցէ ի վանս, զի հանգիցեն ի վերա նորա այնր մտեալ հոյրքն և ուրհնեսցեն։

ԽԱ. Ագապն որ մասնաւոր է, կէս կաշւոյն երթիցէ ի վանսն և, բ. մասունք ճրագուին, իսկ քահանայիցն բաւանդակն և ոչխարին մորթն, և դմակն անդամովն, և ճրագուն. և խախացոցն, և պանդուխտ որ ի տունս քահանայիցն են,

և նոցին եղբարց նոյնպէս տայցեն, և զամենայն պատարագս հասարակաց կերիցեն պաշտաւնեայք և աղքատք բազում մեծարանաւք, և եղբարք հաւատացեալք, և զհաց տօնի նորեացն առ հասարակ կերիցեն ամենայն պաշտաւնեայք, նոյնպէս և զհաց ապաշխարողացն զոր յաւուրս քառասնորդացն առնեն հանգիստ շաբաթու կամ կիւրակէի»

ԽԲ. Բայց պատարագն որ ի վանս կատարեն, երախայրիքն եթէ անապատ իցէ գեօղջն, անդր տայցեն, ապա թէ ոչ ամուսնացելոց քահանայիցն տայցեն, քանզի չէ օրէն ումէք զհասն տեառն ի հարկի իւրում թողուլ»

ԽԳ. Իսկ ամուսնացելոց քահանայիցն եղիցի տօնք շաբաթն զատկի, և զատիկն սուրբ. և երկրորդ զատիկն, և յերկրորդ զատկէն ի վեր կիրակէքն ամենայն. և պենտակոստն, և տօն սուրբ աստուածածնին, և վարդավարն, բայց մատաղենեացն որ է կատարումն քառասնորդացն առաքելական տօնիցն հաւատացելոց զատկին, և զպտուղ յամենայն արմտեաց քու քու, և պատարագք որ մասնականաւ են կէս կաշոյն և ճրագուին զկէս մասունս ի վանս թողլով զպաշտամանն և զլուցմանն՝ զմին տարցին զլուցման մասնն և որ ոչխարաւ է, դմակն անդամով, և ճրագուն և խախացոյն, և մորթն և սգեստն միայն» Տանտիկնանցն վախճանելոցն, և տօնք բարեկենդանին, և ողոգոմեան մեծ որ կոչի բարեբանեալ օր, և թէ այլ տօն ոք կատարեսցէ յանուն առաքելոց և մարգարէից հասարակաց եղիցի» զի այնպէս աներկեւան և առանց հակառակութեան պաշտաւնէիցն կացցեն դասք. գիտելով որում շնորհի արժանաւորք եղեն, զի պարկեշտութեամբ և ուսումնասիրութեամբ վարեսցեն և մի եղիցին բանակիւք, այլ սիրունք արթունք և զուարթունք յամենայնի, զի բաւական լիցին խրատել զտահական, և զյուլացեալսըն ածել ի կարգ հաւատոյ, քանզի այդ գործ է վարդապետի և հոգեւոր հովուի»

ԽԴ. Այս սահմանադրութիւն կարգաց գրեցաւ հրամանաւ սրբոյն Սահակայ մեծ հայրապետի Հայաստան աշխարհի, ընկալեալ ի քաջ նահատակէն ի տեառնէն Գրիգորէ Թարգ-

մանեցաւ միայն յունէ ի Հայ» Արդ՝ եթէ ոք անհնազանգեալ կանոնիս նորոգաձեւել կամեսցի զկարգեալ սահմանադրութիւնս մի ընկալցի մասն և վիճակ ժառանգութեան յարքայութեան քրիստոսի աստուծոյ» Եւ որք միաբանեալ կատարեսցէ ընկալցի զաւրհնութիւն ի տեառնէ, հաղորդելով պարգեւացն և անվախճան, հանգստեանն երջանիկն Գրիգորի. և հօր մերոյ Սահակայ, և նոյին հետեւելոց ճշմարիտ ուղղափառութեանց, որ ի մեծ և յերեւելում աւուրն են պատկելոց ամենաբաւական աջոյն, որ թարքմանելի պայծառութեամբք մշտնջենաւորեալք յաւիտեանս յաւիտենից ամէն»

*Նորին թէ որպէս պարտ է եպիսկոպոսաց ունել զխնամս արտոյ եկեղեցւոյ»*

ԽԵ. Այցելու և հասարակաց Հայր է եպիսկոպոսն վասն այսորիկ առանց ակնառութեան պարտի խնամել զհաւատացեալս նմա յաստուծոյ հօտն և անաչառութեամբ յանձանձել զուխտս եկեղեցւոյ. տեսուչս և առաջնորդս գաւառաց և գեաւղից կացուցանելով, որք անուանին քոր եպիսկոպոսք զի սրբոց և նախանձաւորաց աւրինաց և հմուտ եղելոյ վարդապետութեան արժանաւոր է տալ զայնպիսի պատիւ որք զժողովուրդն բաւական լիցին խրատել, շահելով զմեղանչականութեամբ մոլորեալսն պայծառացուցանելով զճշմարիտ ճառագայթաձեւ պատուիրանացն պատմութեամբք»

ԽԶ. Զի և քահանայք առանց տարակուսանաց ուսցին մեծարել զաստուածընկալ սեղանն, յորոյ վերայ կատարի կենարար պատարագն խորհուրդն ապրեցուցչին մերոյ տեառն, և զփրկական աւազանն մկրտութեան որոյ ծննդեամբ վերստին նորոգիմք ի լոյս կոչմանն աստուծոյ, արդ մի ոք զայսպիսի տեսչութիւնս զինուորաց կամ տգիտաց ումեք հաւատասցէ՝ և մի մերձակայից իւրոց շնորհուկս ինչ նոցա առնելով սիրոյ գեղձմամբ՝ յորոյ կանխաւ հրաժարեցոյց Փրկիչն և տէր. ով է իմ ասէ՝ մայր և եղբայր, եթէ ոչ սիրաւղք պատուիրանացն աստուծոյ, զի արդեամբք իսկ կատարեաց

մեզ աւրինագրելով» Յակովբոս և. եւ Յովանէս, և Յուդա եղբայրք յորջորջէին, և Պետրոս և Յովհաննէս և այլ բազմութիւն աշակերտացն յոլով ժամանակս կատարեցին ի սպասաւորութիւնս, վիշտս և նեղութիւնս գուն գործեալ ոգւով չափ, և անաւթ ընտրութեան ասէ ինձ է նա կրել զանուն իմ առաջի հեթանոսաց և թագաւորացն իսրայէլի» Տեառնես զի ոչ է ակնառութիւն առաջի աստուծոյ, եթէ աչաւիցէք մեզս գործէք, արդարեւ որ ոչն վարիցի այսպիսի առաքինութեամբ եպիսկոպոսն, ոչ կարէ աշակերտ լինել տեառն. այլ յոյժ հեռի և աւտարէ իբրեւ զմի ոք իստունկանողաց Փրկչին՝ զպատուիրանացն սիրողս և զկատարաւղս ահմանեաց ասէ իւր եղբարս» Եթէ ոք սիրէ զհայր կամ զմայր զաւստերս և զդստերս առաւել քան զիս չէ ինձ արժանի, և դուք ի բարձրանալ հրամանացն ի վայր կործանեալ ընդ երկիր քարշելով փարիք զտոհմային զազգականաւք, պէս պէս հնարելով հնարս զի զիրգ և փափուկ առնիցէք, և առաւել ատացութեամբքն զեղուցուք զտունն մոռանալով ըզքմնելի պատգամս աւետարանին. ինքն ասաց, թէ ամենայն տունկ զոր ոչ տնկեաց հայր իմ երկնաւոր խլեսցի, տեսանէք զի զոր յոլով ժամանակաւք տաժանիք և ջանայք արմատացուցանել զկես աւուրցն կազմէք որոգայթ սատակման ըստ այնմ թէ որ ամբարէ զմեծութիւն առանց իրաւանց, ի կէս աւուրց իւրոց լքցէ զնա, զայս ոչ եթէ յաղագս յամօթ ինչ առնելոյ զոք. ասեմք ի խորխոցելով յանդիմանութեամբ, այլ զի ամենեւին մի երեւեսցի յեկեղեցւոջ այսպիսի անաւրէն սովորութիւն՝ քանզի արմատ է ընդհանուր չարեաց և պէս պէս պղծապիղծ անառակութեանց, վասն որոյ բարկութիւն աստուծոյ»

ԽԷ. Որպէս վերագոյն ասացաք թէ հայր է եպիսկոպոսն. և ըստ տեսչութեան և աջողութեան պարտի փայփայել և յառաջեցուցանել զընտանիսն, և յանձն առնել զգործ եկեղեցւոյն ի կանոնի կարգաց ուստի ա՛յլանդակ անառակութիւնք և հերձուածք խամրին և վարք աստուածահաճոյ կենաց հանդերձ բարեպաշտութեամբ պտղալից զարդարին,

բայց գիտեմք զի ոմանք ըմբոստացեալ ճռոմաբանեն, մանաւանդ ազգասէր ծնկոտքն. զմարգարէին ի կիր առնուլ զբանն թէ յընտանեաց զաւակի քո զակն մի արկանիցես, և զայն ոչ իմացան թէ յընտանիս զմիաբանութիւն Հաւատոյն կոչէ» Նանորոյ բարձրաբարբառ փողն եկեղեցւոյ ճշտիւ մեկնեալ գոչէ, և զինչ ասիցէ, թէ հնար է ասէ ընդ ամենայն մարդկան զխաղաղութիւն կալցիք, մանաւանդ առ ընտանիսն Հաւատոյ, այս է պատճառ ընտանեաց խնամածութեան բայց եթէ գեռնաքարշ և մամոլ իցէ և պատճառս կեղծաւորիցի բարեպաշտութեան սիրել և հարստացուցանել զազգայինս իւր լուիցի միւս եւս բանին որ մեղմովն խրատէ՝ թէ մի գիտասցէ ձախ քո զինչ գործէ աջ քո, մի ոք իշխեսցէ անամօթ համարձակութեամբ զչարդ զայդ առնել պատճառ բարեգործութեան՝ զի չար է կամակոր լրբութիւն քան զմեղանչելն, քանզի եղբայրասպանն Կայէն, և գեհեզի որ դառն ագահութեամբն էր զբաղեալ. քանզի ընդ մեղացն եւս աւաւել վասն անամօթ լրբութեան, կրեցին պատիժ պատուհասից»

ԽԸ. Արդ՝ զգուշութեամբ պահեսցի ի միջի մերում սահմանս այս կանոնական, և մի ոք խոտորեսցի յաստուածահաճոյ հրամանացս այսոցիկ որովք պայծառանան եկեղեցիք և բերկրին քահանայք զուրախութիւն համբուրեն իշխանք և գեղջունք, և երանութիւն բան դրուատեաց յաւտարաց ընդունիցիմք, քանզի պարտ է մեզ ըստ գրեցելումն վկայութիւն բարի և յարտաքնոցն ունիլ զի մի յանուն աստուծոյ և վարդապետութիւն հայհոյեսցի, որպէս երբեմն բողոքէր մարգարէն պարտաւորելով զխրայելացին թէ անուն աստուծոյ վասն ձեր հայհոյի ի մէջ հեթանոսաց» Իսկ վասն բարի ոք կարգաց և գործոց մերոց փառաւորեսցեն զհայր մեր որ յերկինս է ասելով, թէ ոքա են զաւակք աւրհնեալ ի տեառնէ, և ուրախութեամբ ուրախ լիցին 'ի տէր հրեշտակակրօն վարուք և յաւիտենական կենաց նմանութիւն պարտի բերել յինքեան եպիսկոպոսն և ամենայն վարդապետք, որ ոչ ակնառութիւն է, և ոչ կաշառք և ոչ ընչից

մեծարանք, այլ պարկեշտութիւն և պատուիրանապահութիւն մերձեցուցանին լինել քաղաքակից սրբոց և ընտանիք աստուծոյ, և դուք յընչասիրութիւն ի կաշառս կործանիք զգարշելիսն և զպատուիրանազանցսն, և զգինուորսն, և ըզտգէտս հաւատարիմս համարիք ի գործ սպասաւորութեան եկեղեցւոյ. և ջոլեր եւս յաճախեալ տողէք զկնի ձեր զմերձաւորացն անուանելոց զի հովութեամբ ձերով այսուիկ զմիս ընտրոցտ ուտէք և զոսկերս նոցա փշրիցէք, կերիցուք, արբցուք, ասելով, քանզի վաղիւ մեռանիմք, արդ՝ եթէ ոք գըտցի եպիսկոպոս և յառաջնորդս եկեղեցւոյ յայսպիսի պատուիրանազանցութեան անամաւթ և յանառակութեան ի բաց ընկեսցի ի պատուոյ իւրմէ և բաժին նորա ընդ կեղծաւորս եղիցի, զի և այլք կերիցեն և պաշտօն հարկիս այսորիկ մի եղիցի դատապարտութեամբ, այլ փառաւք»

ԽԹ. Ապա եթէ ոք իշխանաց կամ յաթոռակցաց մերոց աչառիցեն այսպիսեացն դատ տայցեն առաջի աստուծոյ ընդ այնոսիկ որք աչառեցան շնորհուկս առնելով, անայի և կայիափայի քահանայապետիցն աստուածամայր ուրացողացն և պարտականաց տէրունական արեանն. որ տայցեն պատիժս յանսպառ յաւիտեանսն. այլ մեզ եղիցի ամբիծ սահման պատուիրանացս այսոցիկ վարել զկեանս մերոյ պանդխտութեանս. զի բարութեանցն արժանի լիցուք շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ յիսուսի քրիստոսի, ընդ որում հաւր միանգամայն և հոգւոյն սրբոյ. տացուք գոհութիւն և փառս յաւիտեանս յաւիտենից ամէն»

*Նորին թէ որպէս պարտ է եպիսկոպոսաց պահել զգանձս եկեղեցւոյ կամ որոց որպէս մատակարարել»*

Ա. Նաւահանգիստ է ամենեցուն տաճար աղաւթից, և տեղի խնդրուածոց մերոց, զոր յար անուանաբար եկեղեցի սովորեմք կոչել ունելով յինքեան նաւապետ կարապետութեան զտեսուչ եպիսկոպոսն զի խնամուտ և արգինակատար կամօք անշարժ ունիցի զսահմանս իւրոյ կարգին» Վասն

այնորիկ առհասարակ ի քրիստոս հաւատացեալք ապաւէն ապաստանի ունին զսուրբ եկեղեցի՝ զի արդարոյ և մեղաւորաց է նաւահանգիստ և տեղի յուսոյ փրկութեան մերոյ, և իւրաքանչիւր ոք փութա սրտի յաւժարութեամբ զուխտս և զպատարագս և զնծայս իւր մատուցանել»

Բ. Իշխանք զգեստս և զդաստակերտս և զգանձս ոսկւոյ, և արծաթոյ, այլք յանդաստանաց, և ի պատճառաց, և ի հանդերձից պատուականաց ոմանք վասն անձանց փրկութեան կեսք յաղագս սիրելեաց և ծնօղաց և զվախճանելոց հատուցանել հատուցմունս, զարդ և պայծառութիւն կազմելով հոգւոց և մարմնոց, քանզի անսայթաք յորդորութեամբ տէրունական բանն զգուշացուցանէ ծառայից և պատուիրանապահաց իւրոց, թէ գանձեցէք ձեզ գանձս յերկինս, ուր ոչ ցեց և ուտիչ ապականեն, և ոչ գողք ական հատանեն և գողանան, և թէ դադարկաձեռն ամենեւին մի երեւեսցի առաջի իմ, չեն ասէ յերկրիս այդրէն, իւրական տուրքդ ձեր այլ ի կատարս բարձրութեան երկնից յանապառ և յանվրէպ գանձարանին»

ԾԲ. Տեսանես զի աստուածային ինչքն՝ քանզի յիւր համարի զտուրսն մեր և ոչ մարդոյ ումեք, բայց միայն պահապան և վերակացու է տեսուչ եպիսկոպոսն, բազում ապա զգուշութեան պետք են եպիսկոպոսին և երկիւղի, զի թէ զմարդկան աւանդս կամ պարտս հոգա և աշխատութիւն կրեն ըղձանալով թէ երբ վճարիցին, և թէ դէպ լինիցի փոքր ինչ ծախել զիր տանեն և վկայս կացուցանեն և երդումն. զի մի երեւեսցին թիւրք և գողք ի գործս իւրեանց, իսկ աստուած որ քննիչ է խորհրդոց իրաց և չիք ինչ նմա ծածուկ, և ամենայն ինչ մերկապարանոց կա առաջի աչաց նորա, զինչ պատճառս և հնարս հնարեսցի եպիսկոպոսն յորժամ զաւանդն արքունի զգուշութեամբ ոչ պահիցէ, և ծախիցէ այնոցիկ, որոց ոչ իցէ աւրէն, այսպիսի ինչ յորժամ աւելի զգեստուք զինքն պճնիցէ, և փեր և ետ իցէ ի սիգութեան և ի փափկութեան պարապելով, և ազգականացն զեղուցու և տացէ և զհացկատակսն պարարիցէ շնորհուկս

առնելով ճոխայց և մեծատանց տայցէ, այս է չարաչար վատնել զարքունիսն, և պատժոյ լինել արժանի»

ԾԳ. Առաքելական պատուոյ եղիր արժանի պարտիս և վարուց Նոցա Նմանիլ որպէս գիր գործոց առաքելոցն վկայեն, բաշխէին ամենեցուն ըստ զիարդ պիտոյ ինչ լինէր, զի զանձ աստուածային յորում տեսուչ և մատակարար կազմեցեր. Նեղելոց և որբոց և այրեաց տուաւ յապաւինութիւն, և եթէ մի անգամ այն ինչ աշխարհի վտանգ հասանիցէ՝ բայց յայլ իրս ամենեւին չէ իշխանութիւն ծախել, զի յաղագս հոգւոյ փրկութեան տուան զանձքն» Արդ՝ եթէ ոք ինչ ծախիցէ ընդ սեղանակապուտն տացէ դատ յաւուրն դատաստանի. և պատիւն բարձցի ի Նմանէ, զի թէ ժամանակաւոր թագաւորաց գործակալք յանիրաւ իրս ծախելով զարքունիսն պատիժս կրեն և ի պատուոյն ի բաց անկանին, որչափ եւս առաւել որք զաստուածայինսն վատնեսցեն յանուղայս՝ կրեսցին պատիժս և ի հանդերձելումն, և թէ ոք աչառիցէ այնպիսեացն թոյլ տալով, կցորդ եղիցի չարեաց գործոց Նոցա»

ԾԴ. Բայց և դու ով մտացի հաւատացեալդ որ յաղագս մեղաց քոց փրկութեան և ուխտից զտուրս քո տաս զի ի բաց ընկեսցես զծանրութիւն մեղացն քոց, և զայլոց բազմաց նոյնպէս գերիցես ընդէր աճապարես ընկեցեալ տապարկալի բեռինսն այդրէն առնուլ, վասնորոյ մարգարէն զայն իսկ ասաց թէ որպէս բեռն ծանր ծանրացաւ ի վերայ իմ, և երանի թէ զքոյին իսկ զբեռինն առնուիր և ոչ զայլոցն զի որչափ զառնուլն յաճախել քան զտալն զմեղացն քոց սաստկացուցանես զբեռինսն, զի և զայլոց եւս ընկեցեալս ի վերայ քո մթերես յորէնսն և զընկերին զգրաստն անկեալ ընդ բեռամբ չհրամայէ անտես առնել, այլ յարուցանելով յարուցանես ասէ՝ և դու զանձդ գլորես անկանգնելի գլորմամբ, զի թէ զայլ ոք տեսանէիր անկեալ և բեկեալ, թերեւս ողորմէիր, և զքեզ անտես առնես յափշտակես զլանտս զորբոյն, զայրւոյն, զաղքատաց զվարձս կողոպտես, զսեղանս, և գարշել պատճառս ի մեհենայց, արդ քեզեն տուր զի-

բուդ· ոչ ապաքէն մինչ աստ զտուրսն ի տուն աստուծոյ՝
այս է զծանրութիւն մեղացն ընդ նմին հաւատաս ի բաց
ընկենուլ, և յուսաս յաւիտենական պարգևացն արժանի լի-
նել» ապա ուրեմն և առնուլն հակառակող նորին մեղացն
զքեռինս այդրէն ի քեզ կուտե, և մշտնջենաւոր տանջա-
նացն լինի առիթ, զինչ աւգուտ իցէ այնպիսի շահ որ զանձն
տուժէ կորուսանէ, և ոչ գտանէ փրկանս անձին իւրում»
Լուր աստուածային գրոյն և ուսիր բարեմտութեամբ որոց
վայելել հրամայէ այնու ընչիւք սեղանոյն պաշտաւնեայք
առէ ի սեղանոյ անտի վայելեն և զինչ է կերակուրն յայտ
առնէ զմեղս ժողովրդեան իմոյ ասէ կերիցեն. վասն այնորիկ
ազդէ պատրաստել թէ արիք մինչ չեւ էք ննջեցեալք որք
ուտէք զհաց ցաւոց» Տեսանես զզօրութիւն կերակրոյն, քան-
զի և այլ ուր յայտնագոյն զգուշացուցանէ զքեզ զպակնուլն
հրաման տալով թէ հպատակ կացէք նոցա զի նոքա տքնին
վասն ոգւոց ձերոց որպէս զի համարս տալոց են ընդ ձեր»
Արդ, ընդէր այնպիսի ծանրութիւն ձգես ի քեզ և զոյժս
անհնարինս որ զկէս գիշերին թեր եւս արբեցութեան պա-
րապիցես, թողում ասել զայլսն եւս, և յորս այսեալ անկեալ
պարպատիցեն ընտիրք թասելով և թառանչելովն, և ի պըղ-
տորութենէ յորովայնին յորձանաց և սաստիկ գոլորշեացն որ
և զձայն անգամ լսել զպաշտամանն դժուարանաս, թող թէ
հսկել և տքնութեան պարապել, արդ՝ որպէս թերի ես ի
վաստակոցն աշխատութենէ հեռանալ պարտիս և ի վար-
ձուցն յափշտակութենէ և քոյովն չշատանալ, դու աւադիկ
զանց արարեալ զճառեցելովդ որբոց և այրեաց և տնանկաց
և սքոքալ կամիս տալ զկնի քո՝ քանզի յաղագս նոցա ապա-
ւինութենէ զանձն աստուածային որպէս վերագոյն ասացաք,
զի և նոքա մասնաւորք են զորբս և զայրիս ընդունի տէր,
և եթէ աչք նորա ասէ ի տնանկս հային և կարդայցեն առիս
և ես լուայց նոցա» Արդ՝ ընդէր և զնոսա եւս կացուցանես
քեզ ոսոխ, և չամաչես զտուրս զհացիկն թէ ունէր առաջի
քո դարշէիր թերեւս և անարգանս համարէիր զառնուլն և
զինչսն անխղճաբար կորզես և ոչ կասկածիս թէ հաւասար

է այսմ մուրոյ, նոքա կողկողեն, զտառապանս նեղութիւնսն և զվիշտս իւրեանց պատմելով մինչեւ ցամաքի լեզուքն ի բերանս, առ վտանգին զվէրս և զխեղութիւնս մարմնոյ մեր-կացեալ ցուցանեն, երիթացեալք, բրդաքցեալք, դողան, սառ-սռան, զի դէթ այնպէս խուն ինչ գտանել կարասցեն ծած-կոյթ առնել տառականացն իւրոց՝ և դու նանիր և դրուա-տեալ բանիւք զնոցայն լսելով ի մոռացօ կամիս դարձու-ցանել, զի փութաս այրի առնել զկին քո և որբ զորդիսն մուրօղ և թափառական, զի կողկողին առ դուրս վատթա-րայց՝ և ապա յիշեցէք զբանն տեառն յիսուսի թէ երանելի է տալն մանաւանդ քան զառնուլն»

ԾԵ. Վասնորոյ աղաչեմ և վկայութիւն դնեմ առաջի աստուծոյ և յիսուսի քրիստոսի որ դատելոց է զկենդանիսն և զմեռեալսն ի յայտնութեան իւրում և յարքայութեան՝ զի մի ումէք եղիցի թերի գտանել ի մասինս յայսմիկ զոր պատուէր տալով ուսուցաք զաւգուտն և զպայծառութիւն հոգւոց և մարմնոց և զինչ աւգուտ մեծագոյն քան զայս կացցէ կամ զուարճացուցանօղ խնդութիւն յորժամ եպիսկո-պոսն ըստ աստուծոյ հաճոյից խնամ տանի եկեղեցւոյն և դասք պաշտաւնէից գովութեամբ յորդորեալ զսաղմոսն դեղ-գեղելով հնչեցուցանիցեն. և այլքն առ հասարակ գումա-րեալք փառս տայցեն ամենայաղթ տէրութեան որբք և այ-րիք յանձանձեալք, աղքատք, խնամեալք, տնանկք յապահո-վացեալք» Այսպիսի կարգ.ք բաւական լինին բանալ զողոր-մութեան զդրունս, երկինք անբարակ լինելոյ ցօղոյ, և եր-կիր ցորենւոյ գինւոյ և իւղոյ, պաճար անասնոց» Պայարա-զարդութեամբ և բոլորովին իսկ ըղձալի կենաց իշխանաց և թագաւորաց մշտնջենաւոր խաղաղութեամբ, շնորհաւք և մարդասիրութեամբ տեառն մերոյ յիսուսի քրիստոսի ընդ որում հօր միանգամայն և հոգւոյն սրբոյ, փառք իշխանու-թիւն և պատիւ այժմ և հանապազ յաւիտեանս ամէն»

## ՆՈՐԻՆ ՍՐԲՈՑՆ ՍԱՀԱԿԱՅ»

### Վասն կարգի սրբոյ եկեղեցւոյ և պտղոյ ժողովրդեանն»

*Սրբոյն Սահակայ հայոց կաթուղիկոսի, գիր աւանդութեան. Յաղագս կարգի սրբոյ եկեղեցւոյ» Եւ պտղոյն ժողովրդականաց ընծայելս ի տան աստուծոյ»*

Ա. Քանզի սուրբ լուսաւորիչն հայոց մեծն Գրիգորիոս ծնեալն վերստին զհայաստանեայց աշխարհս աւազանին ծննդեամբ, և ընծայեալ յորդեգրութիւն հօրն երկնաւորի զլուսաւորեալսն մկրտութեամբ որ ի հայր և յորդի և ի հոգին սուրբ. և լինէր այնուհետեւ ուրախութիւն և խնդութիւն մեծ աշխարհիս հայոց տանս Թորգոմայ. մանաւանդ թագաւորն բարեպաշտեալ և պայծառացեալ հաւատով տրդատ. ոչ սակաւ տայր աւժիտս մերձակայից իւրոց սպասաւորացն և որդւոցն քրմաց պարգեւէր բազում պարգեւս՝ ասելով թէ արդէն հարիւրապատիկ առնուցուք ինչս և ստացուածս՝ և երախայրիս և պտուղս սուրբս յեկեղեցւոջ աստուծոյ և ի հանդերձելումն զկեանսն յաւիտենականս ժառանգելոց էք զերծեալք ի պաշտամանէ կռամոլ դիւապաշտութեանցն» Իսկ նորանց պատասխանեալ ասեն ցթագաւորն, և ցմեծն Գրիգորիոս եթէ յաստուծոյ բարերարի և մարդասիրի ոչ անտես արարեալ ըզստեղծուածս անարատ ձեռաց իւրոց. արդ գթացեալ ծանոյց մեզ շնորհօք ձերոյ զբարերարութեան իւրոյ զանչափ զաւրութիւն և զանհամեմատ խնամակալութիւն և զողորմութիւն և ոչ ետ մեզ ընդ հարսն մեր կորընչիլ յանուրէնութեան մերում, եղիցի անուն նորա սուրբ փառաւորեալ յամենայնի. այլ սակայն մարմնաւորական կարիք որ չափեմք ի կենցաղումս յայսմիկ ստիպէ զմեզ ըստ պիտոյիցն տալ զդարմանս կերակրոց և զզգեստուց և զայլոց կարեացն չափաւորապէս, և ոչ ունիմք արուեստս գործնականութեան հնարից ինչ առ ի պատրաստել նոքօք զպարէն ռոճկաց մեզ

և որդւոց մերոց՝ զի ցորքան ծառայէաք դիւացն կերակրեալք լինէաք ի զոհիցն և ի պղծոց նոցա, իսկ այժմ ոչ են մեզ յայտ պտուղք ընծայից որով կեցցուք մեք հանդերձ ընտանեօք մերովք և փառաւորեսցուք զկենդանին յաւիտենից զանմահն աստուած» Յայնժամ երանելին Գրիգորիոս ասէ ցնոսա. դուք որդեակք իմ զոր վերստին ծնայ սիրովն քրիստոսի, միայն զգուշութեամբ ծառայեցէք աստուծոյ կենդանւոյ և ճշմարտի և զլոյսն ձեր դիջիք ի նա բոլորով սրտիւ և զվերինն խորհեսջիք ուր քրիստոս նստի ընդ աջմէ հաւր զայն աւթեւան և զընակութիւն և զկեանսն խնդրեսջիք ի տեառնէ աստուծոյ մերմէ ի սուրբ աւետարանի իւրում» Իսկ պտուղք ի սրբութեան տաճարի աստուծոյ նուիրեալք ձեզ եղիցին աւրհնութիւնք ժողովրդոց աստուծոյ. փոխանակ պիղծ զոհիցն այնոցիկ որով հաղորդեալք լինէիք դիւաց. յայնժամ սուրբ պատարագացն երախայրիւք և այլովք ընծայեալ պտղովք հրեշտակացն սրբոց հաղորդք գտանիք շնորհաւքն քրիստոսի, և եղիցին ձեզ երախայրիք և պտուղք կարգեալք ըստ այնմ աւրինակի որպէս և մեծ մարգարէն Մովսէս առեալ հրաման յարարչէն աւանդէր ժողովրդեանն զպատարագացն և զպտղոցն զոր և ղեւտական քահանայութեան միշտ մատուցանէին հարկաւորապէս ընծայս վասն ոչ ինչ խափան լինելս նոցին քահանայից ի սպասաւորութենէ խորանին վկայութեան» Սոյնպէս կարգեալ և սահմանեալ եղիցին ժողովրդեանս ընծայաբերութիւն ի սրբութիւն սրբութեանցն, որ է սեղանն մաքրութեան, զի և բոլոր արմտիք կալոյ և հնձանոյ աւրհնեսցին և տացեն անդք ծառովք պտղաբերովք զշահեկանութիւն պտղոց ըստ մարգարէին բանի որ ասէ՝ ի պատուել քո զտէր յարդար վաստակոց, լցցին ըշտեմարանք քո լիութեամբ ցորենւոյ և գինւով հնձանք քո յաւէտ բղխեսցին, և որպէս ղեւտացիքն տասնորդէին քահանայիցն, թէպէտ և ինքեանք առնուին տասանորդս յամենայն յիսրայէլէ, այլ և նոքին տասանորդս տային քահանայիցն յամենայնէ. և զփրկանս անդրանկացն ամենեցուն հատուցանել հրամայէր ի սրբութիւն Տեառն

նորին աւրինակաւ և դուք առնիջիք յամենայն ժողովրդենէ հասքն ձեր և եղիցին, ի պատարագաց կաշի. և աջու էրի, անդամ և ճրագու՝ դմակ և սիրտ, և լերդաբոյթ, և երիկամունքն ճարպովին. ի կողից և ի խառնացած մասն, լեզուն և աջու ունկն. չրթունքն հոտոտելեօք, աջու ակն և ամենայն խորհրդական մասունքն. իսկ ի կոլոյ և ի հնձանէ և յալլոց արմտեաց տասանորդս հանցեն իւրաքանչիւր ոք ձեզ և յաղագս մաքրելոյ ամենայն արդեանց և աճման ամենայնի պատճառ լինելոյ, այլ և ի ձենջ եղիցին ընծայք ի սեղան աստուծոյ, ուստի արժանի եղէք նախ ընդունել զանարատ և զանապական մարմին և զարիւն որդոյն աստուծոյ փրկչին մերոյ յիշատակ փրկութեան ձերոյ՝ որպէս և ղեւտացւոց քահանայութեան հրամայեցաւ յայնժամ Մովսէսին ի տեառնէ» Եւ հասք ի ձէնջ ի սեղան տեառն եղիցի. դրամ մի յամենայն տանց ձերոց, և նուիրեալքն ի ձէնջ, և ի փըրկութեան պատարագաց երախայրիք երթիցեն ի վանս գլխաւոր քահանայիցն, այսինքն եպիսկոպոսաց որպէս ի ժողովրդոցն հարկեն ձեզ հոգեւոր հարկս, նոյնպէս և դուք պարտիք հարկս հոգեւորս հարկել եպիսկոպոսացն, որ կոչին այցելուք. և նոքա մի իշխեսցեն խաբել. այլ հարկեսցեն յաղքատս ամենայն» Եւ արդ՝ այս այսպէս կարգեցաւ ի սրբոյն Գրիգորէ, և ի մէնջ հաստատեցի նմանապէս յամենայն հաւատացեալս անշարժ և աւանդութիւն որ ի սրբոյն ժողովրդականք ամենայն զպտուղս և զերախայրիս երիցանց մատուցանեն անզեղջաբար մտօք զի եղիցին ընդունելի պատարագքն իւրեանց առաջի աստուծոյ» Սոյնպէս և քահանայքն զամենայն նախակարգեալ հասն մատուցանեն եպիսկոպոսաց աւանց յապաղանաց, և մի անկցին ի հեղգութիւն մանաւանդ յափշտակել հնարելով զաւանդ վիճակելոցն, զի մի դատապարտեսցին ընդ անաւրէն քահանայիցն. յաղագս զաւշաքաղութեան իւրեանց, և ոգէտք սմանք, ըստ սովորութեան մի արժանի եղիցին առնուլ հաս մտից՝ այլ ուսմանց պարապեալք և շնորհի քահանայութեան արժանացեալք, նոքա եղիցին արժանի հասից. և դպիրք դրակարգացք սրբասնեալք

ամենայն պարկեշտութեամբ մի զրկեսցին ի բաժնէ իւրեանց, այլ երկկանայք որ ամենեւին զցանկութիւն մարմնոյ զհետ չոգան. նոքա ոչ ունեն մասնաւորել շնորհի սրբութեանցն» Իսկ կանայք երիցանցն այրիք մնացեալք և սրբութեամբ պարկեշտացեալք՝ արժանի եղիցին մասին իւրեանց ըստ արժանաւորութեան ի հասին, սեղանոյ և նուիրականաց ոմանց. և ամենայն ոք որ մասնաւորեալ իցէ մտից և հասից սրբոյ եկեղեցւոյ, նոքին ոչ ունին իշխանութիւն ինչ անձանց զհաս տեառն զորոյ ինքեանք առեալ, այլ ի գլխաւորսն վճարեսցեն սիրով աւրհնութիւնսն ի նոցանէ, զի կարգք եկեղեցւոյ անշարժ եղիցին, և աստուած փառաւորեալ է միշտ յաւիտեանս յաւիտենից ամէն»

## Գ) ՆԵՐՍԷՍ ՇՆՈՐՀԱԼՈՒ ԿԱՆՈՆՆԵՐԸ (1166—1173).

Ներսէս Շնորհալին հայոց ամենափառաւոր հայրապետներից մէկն է. նա առաջինը հաստատ և որոշ ձև տուաւ հայոց դաւանութեան, հայոց ծիսակատարութիւններին, պատճառաբանութիւններով և խելացի դատողութիւններով: Մինչև Ներսէս Շնորհալին հայոց դաւանաբանութեամբ և ծիսակատարութիւնների խնդիրներով զբաղուել էին շատ կաթուղիկոսներ և ժողովներ, սկսած Բաբկէնից (490—515 թ.), շարունակուած Ներէս—Բ-ի օրով (548—557), ապա Մովսէսի (574—604), Աբրահամի (607—615), Ներսէս շինողի (641—661), Յովհան Օձնեցու (717—728), Խաչիկի (972—992) և վերջացած Ներսէս Շնորհալու օրով:

Շնորհալին նոր ոչինչ չասաց, հապա ժողովեց բոլոր նախկին հայրերի ասածները, դասաւորեց, կարգի դրեց և տուաւ մեզ պատճառաբանուած, տրամաբանական հետեւողութեամբ կազմած դաւանութիւն, որը ընդունում են մինչեւ այսօր բոլոր հայադաւանները և համարում են ամենագլխաւոր աղբիւր մեր եկեղեցու դաւանութեան համար: Ներսէս Ե-ի ժամանակ, երբ Ռուսաց Սինօդը խնդրեց հաւատոյ ձեռնարկ, նա մատնացոյց արաւ Շնորհալու գրուած-

ները, որոնք Խուդաբաշեանի թարգմանութեամբ ներկայացրեց ի տեղեկութիւն Ռուսաց Սինոդի։ Ներսէսի գրուածները երկուսի են բաժանւում, դաւանաբանականի և եկեղեցական կարգադրութիւնների։ Առաջինը չի մտնում մեր ծրագրի մէջ, մեզ համար իրաւաբանական նշանակութիւն ունեն եկեղեցական կանոնները, որոնք գրուած են «Ընդհանրականի» մէջ, բայց որովհետեւ դաւանաբանականի հետ կապուած են շատ էական խնդիրներ, ուստի համառօտ տեղեկութիւն տալով նրա այս մասին շօշափած հարցերի վերաբերեալ կանգնենք կարգադրական սահմանադրութիւններին։

Ներսէս Մագիստրոսի դստեր Ապիրատ որդու զաւակն էր և Գրիգորիս Պահլաւունի կաթուղիկոսի կրտսեր եղբայրը։ Ծնուել է 1102 թուականներին և փոքր հասակից Գրիգոր վկայասէրի խնամքի տակ մեծացել։ 18 տարեկան ժամանակ քահանայ է ձեռնադրուել և ամենայն սրբութեամբ մինչեւ վախճանը վարել է իւր սրբազան պաշտօնը։ Գրիգոր կաթուղիկոսը ծերանալով, տեսաւ որ ոյժերը պակասել են, մեծ ժողով արաւ Հռոմկլայում և բոլորի հաւանութեամբ ընտրեց Ներսէսին, որ եպիսկոպոս էր, հայոց հայրապետ 1165 թւին։ Օծումից յետոյ մի իմաստալից ատենաբանութիւն արաւ և մի ընդհանրական նշանաւոր թղթով իմացրեց բոլոր հայերին իւր ընտրութիւնը՝ բաշխելով իւր հայրապետական օրհնութիւնը։

Ներսէսի ժամանակ հայոց և յունաց միութեան խնդիրը աւելի հաստատուն հիմք ընդունեց։ Մի անգամ յունաց իշխանը, Կիռ Մանուէլ կայսրի փեսան, Կիլիկիայում տեսնուելով Շնորհալու հետ, երկար խօսակցութիւն ունեցան հաւատոյ զանազան խնդիրների մասին։ Իշխանը սիրով լսելուց յետոյ, խնդրեց Ներսէսին գրաւոր կերպով հաղորդել իրան այդ խօսակցութիւնները։ Այդ առիթ եղաւ գրաւոր թղթակցութիւնների սկսուելուն Ներսէսի և յաջորդների ու միւս կողմից յունաց արքունիքի և պատրիարքի հետ։ Ներսէսը գրեց այդ թուղթը «Թուղթ առ մեծի իշխանն Ալեքս» և յանձնեց իշխանին։ Իշխանը 1165-ին ներկայացրեց թուղ-

թը կայսրին: Կայսրը կրօնական խնդիրներով զբաղուելու հակամէտ լինելով, հետաքրքրութեամբ կարդաց Շնորհալու գրուածները և զարմացաւ նրա խորիմաստ դատողութիւնների վրայ. մտածելով որ այդպիսի անձի միջոցով կարելի է քրիստոնէական եկեղեցու միութեան գործը գլուխ բերել, նամակ գրեց Գրիգոր կաթուղիկոսին խնդրելով որ թոյլ տայ Ներսէսին Պօլիս գնալու և անձանց անձին խօսելու կրօնական յարուցուած խնդիրների մասին: Կաթուղիկոսը մեռած էր, Ներսէսը իբրև կաթուղիկոս գրեց երկրորդ թուղթը կայսրին «թուղթ առ կայսրն Մանուէլ», իմացնելով կաթուղիկոսի մահը և իւր ընտրուելը, յայտնելով որ իւր հայրապետական գործերը շատ շատ են, չի կարող Պօլիս գալ և ինքը իբրեւ կրօնապետ շատ ուրախ է միութեան խնդիրը գլուխ բերելուն և ուրախութեամբ կաշխատի այդ նպատակով: Կայսրը ի պատասխան այդ նամակի ուղարկում է թէ թուղթ և թէ Թէորիանէ ճարտար անձի, որ սա բերանացի լրացնի թղթի բովանդակութիւնը և անձամբ իբրեւ իմաստասէր անձն խօսի Շնորհալու հետ միութեան խնդրի մասին: Բայց Թէորիանէն չկարողացաւ միութիւնը առաջ բերել: Յոյները իրեն կէտ առաջարկեցին, որոնցով պիտի միութեան խնդիրը գլուխ կար: Շնորհալին երրորդ, չորրորդ և հինգերորդ պատասխաններով մի առ մի բացատրեց հայոց դաւանութեան տարբերութիւնը, և իրան կողմից միջոցներ առաջարկեց թէ ինչ զիջումներով կարելի է յոյների հետ միանալ. բայց այդ յայտնեց յոյներին որ առանց ազգային ժողովի չի կարող վերջնական պատասխան տալ: Ազգային ժողով չեղած ի տէր հանգեաւ Ներսէս 1172—օգոստոսին և խնդիրը մնաց առ կախ:

Ահա յունաց 9 առաջարկութիւնները:

1. Նզովել Քրիստոսի մէջ մի բնութիւն ասողներին, Եւտիքէսին և Դիոսկորոսին, Սեւերիոսին, Տիմոթէոսին (կուզին) և նրանց բոլոր համախոհներին:

2. Խոստովանել զՏէր մեր Յ. Ք. մի որդի, մի դէմք, մի

անձնաւորութիւն անորիշ, անփոփոխ, անայլայլելի, անշփոթ՝ ոչ այլ զորդին Աստուծոյ ասել, և ո՛չ այլ զորդին ս. Աստուածածնի, այլ և զնոյն՝ որդի Աստուծոյ և որդի մարդոյ՝ զմին խոստովանել Աստուած և մարդ յերկուս բնութիւնս, զնոյն զմի Քրիստոս՝ ունելով երկուս ներգործութիւնս և երկուս կամս Աստուածային և մարդկային ոչ հակառակք միմեանց, այլ ընթանայ մարդկային կամքն զկնի Աստուածային կամաց:

3. Երեք սրբասացութիւնը ասել բացի «որ խաչեցար վասն մեր»-ից և «և»-ից:

4. Տօները տօնել ըստ յունաց. Աւետումը մարտի 25, Ծնունդը դեկ.—25-ին. Թլփատութիւնը ծննդից 8 օր յետոյ յուն. 1-ին, մկրտութիւնը յուն. 6-ին, Տեառնընդառաջը փետ.—2-ին, մնացածներն էլ նոյնպէս:

5. Միւռոնը ձիթով եփել ծառերի պտուղներից:

6. Ս. հաղորդութիւնը խմորուն և ջրախառն անել:

7. Բոլոր քրիստոնեաները, քահանայք և ժողովրդականք եկեղեցու ներսում կանգնեն երբ Աստուածային պատարագը կատարւում է, բացի ապաշխարութեան դէպքերից . . . :

8. Ընդունել չորրորդ, հինգերորդ, վեցերորդ և եօթներորդ տիեզ. ժողովները:

9. Կաթուղիկոսի հաստատութիւնը լինի յունաց կայսրից:

Շնորհալու պատասխանը ամենափառաւոր պատասխանն է, որ կարող է գրել եկեղեցով և աւետարանի բարձր գաղափարներով ոգեւորուած հոգեւորականը, որը շատ նման է հին սուրբ հայրերի պատասխանին, Իրինիոսի, Պողիկարպոսի և այլն:

6-րդ կէտի նկատմամբ, Շնորհալին գրում է, առաջին պատարագի օրհնած հացի մասին, որ մենք և հռոմայեցիք գործ ենք ածում բաղարջ, միւս եկեղեցիները խմորուն: Իւրաքանչիւր կողմը աշխատում է իրան արդարացնել: Բայց ով սիրում է ճշմարտութիւնը, նա չպիտի սորկաբար հետեւի իբրեւ ոգէտ՝ և խարդախ խօսքերով արդարանայ իբրեւ վիճող, այլ պիտի դիմել Աստուածային գրքերին և այնտեղ գտնել ճշմարիտը և արդարը: Քրիստոսի գործողութիւն-

ների խորհուրդները նախագուշակել էին դեռ շատ վաղ մարգարէները զանազան օրինակներով և առակների ձեւով: Առաջին՝ Աբրահամի ճաշին՝ Աստուած ճաշակեց ոչ խմորուն հաց, այլ բաղարջ: Երբ Եգիպտոսից հրէաները դուրս եկան, Մովսէս հրամայեց 7 օր ոչ թէ գործ ածել խմորուն հաց, այլ բաղարջ: Նոյնպէս և մաննան. ըստ Պօղոս առաքեալի (Ա. կորն. 10, 3). հրէաները գործ էին ածում բաղարջ և ոչ խմորուն հաց: Զատկի երեկոյին Քրիստոս կերաւ բաղարջ և ոչ խմորուն հաց, որովհետեւ բաղարջակերաց առաջի օրն էր: Այսպէս էլ անարատ կոյսից ծնուածին աւելի վայելուչ է լինել բաղարջի նման քան խմորուն հացի:

Հակառակ կողմի մարդիկ կարող են էլի ս. գրքից ապացոյցներ բերել յօգուտ խմորուն հացի գործածութեան, օրինակ Յիսուսի գովասանքը խմորուն հացին, որին երկնային արքայութեան պատկեր համարեց. բայց այդ խօսքերը վերաբերում էին ոչ խորհրդին, այլ աւետարանի քարոզներին, որոնք՝ ընդունողներին խմորի նման թթուեցնում էին աւետարանական մտքերով: Բացի այդ աւետարանում թթխմորը ընդունւում է իբրեւ նշան չարութեան (Ա. կորն. 5, 7, 8): Գրիգոր Աստուածաբանը զատկի վրայ խօսելիս ասում էր, որ խմորուն հացը կեանքի հաց լինել չի կարող: Թէեւ Յիսուս բաղարջով յիշատակեց այն երեկոն, բայց առաքեալներից ոչ մի կարգադրութիւն չունինք այդ մասին, ուղղակի պատուիրում է հացով կատարել խորհուրդը: Այս աւանդութիւնը, որի մասին խօսեցինք, իւրաքանչիւր ժողովրդի մանաւոր սովորութիւնն է, որը ամենեւին չի աւելացնում կամ պակսեցնում հաւատքը: Մենք բոլորս հաստատ գիտենք, որ Աստուծուն հաճելի է միմիայն ուղղափառ հաւատք և անբիծ կեանք. ուստի հարկաւոր է խորհուրդը կատարել մաքուր սրտով և ոչ հերետիկոսական մտքերով: Այդ հիմամբ, երբ հաւատքը միանում է և կապւում Քրիստոսի հետ, այն ժամանակ էլ հաւատքի հետ գնացող մասերն էլ—աւանդութիւնները զուգընթաց գնում են նրա հետ ի փառս որդւոյ:

Բացի Շնորհալու այս խօսքերից, կարելի է բերել և վկա-

յութիւն նոյնպէս Ա—Առ.—31, Թադ. 6, Մակ. 7, Ե—Դւ. 8 կանոնները, որոնք պատուիրում են, որ հացը պիտի ջերմ—ժարմ լինի և ոչ օթի: Մեր գիւղերում մինչեւ այսօր էլ հացը թխում են շաբաթը մէկ՝ երկու անգամ. իսկ հներում պատարագ անում էին ամեն օր, յետոյ շաբաթը 4 անգամ և ապա 2, գիւղացիների համար, որոնք ամեն օր պարտաւոր էին հաց և գինի տանել պատարագին, յարմար էր իսկոյն և եթ խմոր անել և բաղարջ թխել և տաքտաք տանել եկեղեցի, մինչեւ այսօր էլ երբ մատաղի փոխարէն հաց են թխում և բաժանում, կամ ուխտ են գնում մի տեղ, միշտ բաղարջ՝ անխմոր հաց են թխում և հետները վերցնում կամ բաժանում: Թազա հացը (ջերմ) միշտ յարգի է աւելի քան օժի հացը: Եթէ Փոտ պատրիարքի ժամանակ մեծ բացուեց յունաց և լատինաց եկեղեցու մէջ այս բանի վերաբերմամբ, յոյները ասում էին, որ Յիսուս բաղարջ չկերաւ զատկի երեկոյեան, այլ խմորուն հաց, երկրորդ՝ մեղադրում էին որ լատինները և հայերը հրէական աւանդաւորների նման հրէական սովորութիւն են կատարում և բաղարջ ուտում, փոխանակ հակառակն անելու: Զարմանալի է որ դրանք մոռանում են որ առաքեալները իբրեւ հրէաներ իրանց սովորութեան համաձայն պիտի գնային, նրանց յաջորդ քրիստոնեայ հայրերն էլ պիտի հետեւէին նրանց սովորութեան:

Տես այս մասին Ա—Առ—31 կանոնի ծանօթութիւնը:

Գալով բաժակի գինուն, գրում է Շնորհալին իւր պատասխանի մէջ, մենք անապակ գինի ենք գործ ածում ճիշտ Լուսաւորչի աւանդութեան հետեւելով, որովհետեւ Քրիստոսի արիւնը մաքուր էր, միւսները ջրախառն են գործ ածում: Մեր սովորութիւնը իւր հաստատութիւնը գտնում է կեանքի մէջ և նրանով, որ գինի ասելով ընդհանրապէս հասկանում ենք մաքուր, ոչ ջրախառն գինի. իսկ ջրախառն գինին մաքուրի անուն չի կրում. նոյնը հաստատւում է և Քրիստոսի խօսքով, որ ասաց զատկի երեկոյին «որթն խաղողոյ», որ ասել է գինի, զուտ, մաքուր. (Մատ. ԻԶ. 29):

Նոյնպէս Յովհան Ոսկեբերանը ասում է ընդդէմ այն

հերետիկոսների, որոնք միայն ջրով էին կատարում հաղորդութիւնը. «որթի պտղից պիտի վերցնել, իսկ որթը, որքան յայտնի է, արտադրում է գինի, և ո՛չ ջուր»: Հակառակորդները պատասխանում են, որ ոսկեբերանը այս ասաց ոչ թէ նրա համար որ ջուր չխառնեն գինու մէջ, այլ այդ ուղղուած է բացառապէս հերետիկոսների դէմ, որոնք գինին բոլորովին մերժում էին: Բացի այդ պատճառաբանում են, թէ Քրիստոսի կողմից ջուր և արիւն դուրս գալու յիշատակի համար պէտք է գինու հետ ջուր խառնել: Բայց չեմ կարծում, ասում է Ծնորհալին, որ կողից ջուր դուրս գալը լինէր անպատճառ յիշատակելու խորհուրդ, առաքեալները և նրանց յաջորդները կհրամայէին կատարել այդ և մենք բոլորս կընդունէինք: Ընդհակառակն, Ոսկեբերանը բացադրում է ուրիշ մտքով, որ այդ ջրով մենք ծնւում ենք աւազանում, արիւնով սնւում ենք—ճաշակելով: Նոյնը և Գր. Նիւսացին է ասում: Եփրեմ ասորին այդ մասին նոյն է ասում համաբեա: Ինչ որ ասացինք հացի համար, նոյնը կասենք գինու համար, գինով ենք կատարում թէ ջրախառնով, այդ միեւնոյն է Աստուծոյ առաջ, նա պահանջում է ուղիղ հաւատ և արդար սիրտ, ինչպէս պատուիրում է Պօղոս առաքեալը (Ա. կորն. 11, 28, 29): Տես այս մասին նաեւ Ե—Դւ. 8, Մակ. 7, Թադ. 6:

Գալով Ծննդեան և մկրտութեան տօնին, կասենք, որ այս աւանդութիւնը հայոց մէջ մտել է շատ հին ժամանակներից կատարել այդ երկու տօնը միասին: Թէ այս տօները կատարում էին հներում ամեն տեղ միասին, յայտնի է ամենքին, մենք պահպանել ենք անփոփոխ Լուսաւորչից, որը հետեւելով Ղուկաս աւետարանչի վկայութեան (Ղուկ. ա. 23, 24), ասում է թէ Զաքարիան վերադառնալով պաշտօնակատարութիւնից տուն, յղացաւ նրա կին Եղիսաբէթը, որոշել է ժամանակամիջոցը թէ ծննդեան և թէ մկրտութեան համար այնպէս, ինչպէս առաքեալներից սկսած որոշուած է եղել: Զաքարիան քաւութեան տօնի օրը թշրինի 10-ին, որ է սեպտեմբերի 27-ը, մտաւ տաճար և ամբողջ

12 օրուայ պաշտամունքները կատարեց, 5-օր քաւութեան տօնի, 7-օր էլ տաղաւարահարաց տօնի, և ապա թշրի 22-ին կամ հոկտեմբերի 9—10-ին գնաց տուն և յղացաւ Եղիսաբէթ նոյն 10 օրը և ո՛չ 12 օր առաջ, ինչպէս դուք էք ընդունում։ Ս. կուսի աւետումը եղաւ 6 ամիս դրանից յետոյ այն է ապրիլի 7-ին և ոչ մարտի 25-ին ըստ ձեր սաութեան. իսկ ծնունդը ինն ամիս յետոյ՝ այն է յունուարի 6-ին։ Յիսուս մկրտուեց 30 տարին լրացած ժամանակ, այդտեղ սխալ չի կարող լինել, որովհետեւ ըստ աւետարանչայ 30 տարին լրացած մկրտուեց և սկսեց քարոզը։ Եթէ ծնունդը 12 օր առաջ էք կատարում, այն ժամանակ չպիտի ասէք 30 տարեկան, այլ մօտ 30 տարեկան էր, որ հակառակ կլինի աւետարանիչներին։ Այս և ուրիշ բերուելիք աւանդական սովորութեանց հիման վրայ մենք ճշտութեամբ պահում ենք այս նախնական ձեւը, մենք չենք բաժանուել հին ընդհանուր կարգից, այլ դուք էք բաժանուել մեզնից, էլի նոյնը կրկնում ենք, ինչ օր էլ որ կատարենք, միմիայն պէտք է ուղիղ սրտով կատարենք, աստուծուն այս է հաճելի։ Ի՞նչ աւելի փառաւոր հանդէս կարող է լինել քան զատկի տօնի հանդէսը, որը ծագեց հնումը, ինչպէս պատմում է Եւսեբէոսը, Ասիայում տօնւում էր հինգշաբթի օրը՝ հին ուխտի զատկին նմանելով, հետեւելով Յովհաննէս առաքեալի աւանդութեան, իսկ հռոմայեցիք կիրակի օրը հետեւելով Պետրոս առաքելոյն. և ի՞նչ դուրս եկաւ. ո՛չինչ. թեթեւ վէճից յետոյ հաշտուեցին։ Ս. Իրենիոսը հաշտարար դուրս գալով ասաց, եթէ ճշմա՛րիտ հաւատքը միևնոյն է, այդպիսի տարբերութիւնները չպիտի խռովութեան տեղիք տան։ Մարմնի գոյնը, օրինակ լինի թուխ կամ սպիտակ, ամենեւին չի վնասիլ մարմնին, եթէ կազմուածքը առողջութեամբ է օժտուած. նոյնպէս առողջ հաւատք ունեցողին մի՛թէ կարող են վնասել տօները կամ ուրիշ աւանդութիւնները։

Տես. Ա. առ.—7, Ե. Դւ. 26, 30։

Մովսէս կաղանկատուացին 253 երեսում այսպէս է գրում. «Նոյնպէս Մարկոս (Մակարիոս) հայրապետն Երուսա-

դէմի, որ մի էր ի Նիկիական հարցն, յիւրում խրատական թղթին գրեաց առ Հայս յաղագս մկրտութեան, եթէ ի միում աւուր տօնեմք զԾնունդն և զմկրտութիւնն, զոր օրինակ մահն և թաղումն անկատար է առանց յարութեանն, և որպէս յարութեան աւետարանն նախ զխաչն և զթաղումն յայտնէ.... զոր դարձեալ ասէ Աստուածաբանն. «բայց այժմ Աստուծոյ յայտնութեան տօն է, քանզի երևեցաւ Աստուած մարդ ծննդեամբ»: Երուսաղէմայ եպիսկոպոսքն մինչև ցԿիւրեղ՝ քառասուն և երկու եպիսկոպոսք, և յետ նոցա այլք զտօն Ծննդեան և յայտնութեանն կատարէին ի յունուարի ամսոյ վեցն մինչև ցՅոբնաղիոս, որ թուին լինել ամք ի յարութենէն ցՅոբնաղիոս չորեք հարիւր (ուրեմն 433): Դարձեալ զոր յընթերցուածին ասէ վասն Դաւթի և Յակոբայ աւուրն, եթէ յայլ քաղաքս առնեն զԾնունդն Քրիստոսի ի դեկտեմբերի քսան և հինգ, յայլ քաղաքս այսպէս ասեն, եթէ ի հեթանոսաց անդի հաւատացեալք էին, ոչ թէ ի թլփատութենէն, և ի հեթանոսութեան սովոր էին զծընունդ արեգականն կատարել յայնմ աւուր, վասն այնորիկ հաւանէին թողուլ զտօնն: Այս հարկաւորեցան առաքեալքն հաւանել նոցա և կարգել նոցա զՔրիստոսի ծնունդն յայնմ յաւուր: Իսկ որք ի թլփատութենէն ամենայն ուրեք ի յունուարի 6-ն կատարեն, որ և մեր նախնեացն աւանդեցաւ և նոյնպէս ունիմք այժմ, որպէս ասէ, «օրէնք ի Սիոնէ ելցեն և բան Աստուծոյ յԵրուսաղէմէ»:

Գալով երեք սրբասացութեան (Ս. Աստուածածին), շարունակում է Շնորհալին, մենք այդ ասում ենք ՝ի դէմս Որդւոյն, զուր մեզ մեղադրում են թէ մենք խաչում ենք երրորդութիւնը, որ շատ սխալ է. այդ շարունակութեամբ Հոգեգալստեանն էլ աւելացնում ենք ի դէմս ս. հոգւոյն: Նոյն կերպով էլ մեզ ամբաստանում են խաչի վերաբերմամբ, թէ պէտք է ամրացնել գամերով, թէ առանց գամի, մեր մէջ այդ բանը դրականապէս որոշուած էլ չէ: Ի՞նչ հիմամբ պիտի մի տեսակը պատուենք, իսկ միւս տեսակը ո՛չ: Ոսկեայ և արծաթեայ խաչերը ամբողջ են, գամեր չենք գործ ա-

ծում, բայց միւս դէպքերում չէ որ փայտը պիտի միացնել որ ամուր մնայ: Այս մասին վիճելը ինձ թւում է, արժան է մանուկներին և ոչ հասուն մարդկանց:

Նոյնպէս էլ Յիսուսի և Նրա սուրբերի պատկերները յարգում ենք և փառաբանում իբրև միջնորդ Աստուծոյ և մեր մէջ: Սրբերին երկրպագելով մենք խոնարհում ենք Աստուծոյ առաջ, նրանց միջոցով Աստուծոյ ենք երկրպագում, որովհետև մենք միմիայն պիտի երկրպագենք Աստուծոյ և ոչ արարածներին:

Առաջաւորաց պասի համար կասեմ, որ այս պասը նշանակեց Լուսաւորիչ, իբրև առաջին պաս ժողովրդին ապաշխարութեան բերելու համար, երբ Վիրապից դուրս եկաւ. և երկրորդ՝ որ այս պասը աւելի առաջ էր քան քառասնորդականը:

Իսկ ինչ վերաբերում է Սարգիս զօրավարի տօնին, որ կատարում ենք պասից յետոյ, պէտք է ասել որ նա նահատակուել է յունուարի 30-ին և միշտ պասի մօտերքին է ընկնում: Սարգիսը կապադովկիացի էր, Կոստանդինի օրով կռուել է հաւատքի համար, Յուլիանոս ուրացողի ժամանակ գնացել է Պարսկաստան և իւր որդու հետ նահատակուել հաւատքի համար: Եւ ոչ այնպէս, ինչպէս ձերոնք պատմում են, իբր թէ մի ինչ որ Սարգիս ճգնաւորի շան պաս է, որը միշտ ճգնաւորի առաջից է գնալիս եղել: Այսպիսի լուրերը միմիայն զզուանք են առաջացնում և Յիսուսի ճշմարտութիւնը խլացնում:

Նախ քան մի բնութեան մասին խօսելու, համառօտ յիշենք թէ Պետերբուրգի համալսարանի եկեղեցական պատմութեան ուսուցչապետ Ի. Տրօիցկիյ, 1875 թ. գրած «Հայոց եկեղեցու դաւանութեան վերլուծումն» գրքումն ինչ հրէշաւոր ենթադրութիւններ է անում Շնորհալու մեկնութիւնների համար: Թէ ինչպէս եղաւ, որ Ռուսաց մասնագէտները հետաքրքրուեցին հայոց եկեղեցով և մի քանի աշխատութիւններ նուիրեցին. մի քանի խօսքով յիշատակենք այդ մասին:

1839 թուին ռուսաց լրագրներում դուրս եկաւ մի յօդուած «Дополненіе къ доказательству о древности трехперстнаго сложенія» խաչի և խաչակնքելու մասին, ուղղուած այն ռուս աղանդաւորների դէմ, որոնք երկու մատով էին խաչ անում և ոչ երեք։ Այդ յօդուածում յարձակւում էր գրողը և Հայոց եկեղեցու վրայ, համարելով աղանդաւոր եկեղեցի, որից պիտի հեռու կենալ, և ի միջի այլոց մատնացոյց անելով որ հայերն էլ հերետիկոսների նման երկու մատով են խաչ անում և ոչ երեք։ Այդ կիսապաշտօնական յօդուածը առիթ տուաւ Կարբեցի կաթուղիկոսին դիմել Նիկալայ Կայսրին բողոքով, խնդրելով թոյլ չտալ հայոց եկեղեցու դէմ այդպիսի սխալ գրուածներ տպելու։ Կայսրը այդ բողոքը ուղարկում է Ռուսաց Սինօդին, մակագրելով գրաքննութեան ենթարկել հայոց եկեղեցու մասին դուրս գալիք — հրատարակուելիք գրքերը։ Կայսեր կարգադրութեամբ Ռ. Սինօդը, գրաքննական պաշտօնը հաստատուն հիմքով կատարելու նպատակով, դիմում է կաթուղիկոսին խնդրելով հայոց դաւանութեան մասին մանրամասն տեղեկագիր տալ։ Պահանջը մնում է անկատար երկար ժամանակ, թէև մի քանի անգամ կրկնւում է։ Ներսէս Ե., ինչպէս պատմում է Տրօիցկին, Ռուսաց Սինօդի պահանջը ընդունելով եկեղեցիների միացման նախադուռն, պատասխանում է 1850-ին երկու տողով, ուղարկելով Խուդաբաշեանի թարգմանած Ն. Շնորհալու ընդհանրականը և դաւանանքը հետևեալ գրքում. «Историческіе памятники вѣроученія Арм. церкви, относящимся къ XII вѣку СПБ. 1847 г.», որը բովանդակում է Ներսէս Ե.-ի խօսքերով «Հայոց եկեղեցու դաւանութեան մանրամասն վերլուծումն»։ 1870 թուականներին յունաց արքեպիսկոպոս Գրիգորը մի յօդուած գրեց հայոց եկեղեցու միութեան մասին յունաց հետ, ցանկութիւն յայտնելով տարբերութիւնների վրայ գիջողաբար նայել և քրիստոնէաբար միանալ։ Այս դէպքերը առիթ տուեցին այն ժամանակուայ Պետեր. հոգ. ճեմ. ուսուցչապետ Տրօիցկուն մի շարք յօդուածներով «Хрис. Чтеніе» ամսագրի

1869, 1870 թուի համարներում խօսել «Հայոց եկեղեցու միութեան խնդրի մասին ուղղափառ եկեղեցու հետ»։ Ապա մօտիկ ծանօթանալով հարցին, պրօֆեսօրը մտածեց ժողովել բոլոր կարևոր աղբիւրները և քննութեան ենթարկել, տեսնելու մրգեօք հեշտ է միացումը թէ ոչ։ Տրօիցկին խնդրի վրայ նայում է քաղաքական տեսակէտից, որը եզրակացնում է Ներսէս Ե-ի կարճ և խուսափողական՝ նոյն իսկ կծու պատասխանից։ Տրօիցկու գիրքը որ կրում է այս վերնագիրը. «Изложенiе вѣры Церкви Армянскiя; историко-догматическое изслѣдованiе И. Троицкаго. СПБ. 1875.» թէ աղբիւրների փնտռման, թէ քննադատութեան ձևի մէջ լուրջ է և փաստացի, բայց հանած եզրակացութիւնները հէնց իւր խոստովանութեամբ ոչ գիտնական, սխալ և թիւր. որը առաջ է գալիս Հայոց եկեղեցու պատմութիւնը չիմանալուց և զանազան Գալաններին հետևելուց։

Ծրագրիցս դուրս է քայլ առ քայլ հետևել նրան և ջրել նրա վայրիվերոյ դատողութիւնները, որոնք հիմնուած են այն մտքի վրայ, որ Հայերը միաբնակ են ըստ Եւտիքէսի, որ ջուր չխառնելը, ծննդեան տօնը միասին կատարելը միութեան գաղափարին մօտենալն է նշանակում. նա 200 երեսում ասում է «մենք յօժարութեամբ կհաւատայինք հեղինակին (Շնորհալուն) և այն բանին, որ այդ երկու տօները (ծննդեան և մկրտութեան) նրանք միացնում են հին աւանդութեան ուժով և ոչ՝ մի որևէ առանձին մտադրութեամբ, բայց, ցաւօք սրտի պիտի ասել որ ուղղափառ գրականութեան վէճի մէջ կայ և ուրիշ կարծիք Հայոց եկեղեցու այդ սովորութեան մասին (200—201)»։

Իսկ գիտէք ինչ է այն կարծիքը և ով է գրել. մի անանուն հեղինակ, որը գրում է թէ Հայերը Աւետման, Ծննդեան և մկրտութեան տօնը միասին են կատարում նրա համար, որ «չեն հաւատում Բան—Աստուծոյ իսկական մարմնառութեան, այլ ներկայացնում են այդ մարմնառութիւնը երևակայական ձևով Մանեսի նման»։ Ընդունել անանուն հեղինակի ասածը, որ երեք տօնը միասին ենք կատարում

և չենք ընդունում Բան—Աստուծոյ իսկական մարմնառութիւնը, և միւս կողմից մերժել հոգեշունչ Շնորհալու բացադրութիւնները համարելով կեղծ և երկերեսանի, նշանակում է կուրանալ և դառնել ծայրայեղ անարդարութեամբ: Խօսելով Տրուլլի 692 թուի ժողովի մասին, ուր երեք կանոն կայ Հայոց սովորութիւններին վերաբերեալ, զարմանում է թէ ինչու այդ ժողովը հայերին հերետիկոս չհրատարակեց:

Ապա բերելով 8—9 կէտերով Շնորհալու գրած մի բնութեան դաւանանքի մասին, գտնում է որ Հայոց դաւանութիւնը չի պարունակում յայտնի հերետիկոսների քարոզած ոչ մի սկզբունք, և հեռու է Ապողլինարութիւնից, Նեստորականութիւնից, ակտիստների, կտիստոլատրեանների, Եւտիքեանց, ավտարտոտօկետների, տէօպասխիտների աղանդական մտքերից: Այդքան պարզ փաստեր բերելուց յետոյ յօգուտ Հայոց ուղղափառութեան, էլի նա թեքւում է դէպի նախամտածած նպատակը, թէ Շնորհալին այդ եզրները դէմք, անձն, գոյութիւն, բնութիւն, խառնում է և շփոթում, որպէս զի ամեն տեսակ կարողանայ բացատրել, այսինքն միաբնակների հետ վիճելիս ըստ միաբնակաց խօսել, երկբնակների հետ վիճելիս հակառակը ապացուցանել:

Աւելի լուրջ է վերաբերւում Յովհաննէս վարդապետը, նա ընդունում է Շնորհալու գրածները, միայն մեղադրում է հայերին որ նրանք չլսեցին Քաղկեդոնի ժողովին, հետեւեցին Կիւրեղին, Աթանասին, որոնք մասնաւոր մարդիկ էին և ոչ տիեզերական ժողովին:

Տրոիցկին 293 երեսում մեղադրում է հայերին, որ նրանք ամեն տեսակ սուրբեր ընդունում են, եթէ մերժել են քաղկեդոնականութիւնը, պիտի հետեւողական լինէին և չընդունէին Քաղկեդոնական եկեղեցիների ոչ մի սուրբ 451—թուից յետոյ: Բացի Գալանի սխալ տեղեկութիւնները լսելուց և արձանագրելուց, գրում է և Կարդինալ Մաի տեղեկութիւնը, որ իբրև թէ Հայոց եպիսկոպոսները ձեռնադրուելուս ի պատասխան կաթուղիկոսի հարցին. «Ընդունո՞ւմ ես Նիկիայի և 7 ժողովները». Նա պատասխանում է. «այո՛,

ընդունում եմ»։ Այսպիսի շինծու փաստերի դէմ խօսելը աւելորդ է։

Համառօտ խօսելով Շնորհալու դաւանաբանական խնդրի մասին, որը մեր ծրագրից և եկեղեցական իրաւունքի սահմանից դուրս էր, այժմ անցնենք բուն խնդրին, այն է Շնորհալու եկեղեցական կարգադրութիւններին։ Շնորհալու արած կարգադրութիւնները գլխաւորապէս ամփոփւում են «ընդհանրականի» մէջ, որից կքաղենք և կանոնների կվերածենք բոլոր սահմանադրութիւնները։ Բայց խնդիրն այս է, ունենք իրաւաբանական հիմք ընդունելու Շնորհալու եկեղեցական կանոնները մեր եկեղեցական իրաւունքի աղբիւր թէ ո՛չ. այս հարցը չծագեց Լուսաւորչի և Սահակի կանոնների վերաբերմամբ, որովհետև սրանց կանոնները ընդունուած և հաստատուած էին Շահապիվանի 447 թուի ժողովում։ Անմիջական, ժողովական հաստատութեամբ վճիռ այդ մասին չունենք, այսինքն աւելի պարզ խօսելով, նրանից յետոյ եղած ժողովներում չի ասւում, թէ Շնորհալու կանոնները պէտք ընդունել իբրև եկեղեցական գործադրելի կանոններ և հնազանդել նրա կանոններին. այդպիսի վճիռը կլինէր միակ սանկցիան Շնորհալու կանոնները եկեղեցական իրաւունքի աղբիւր համարելու։

Այստեղ հարց է ծագում, արդեօ՞ք Հայոց եկեղեցու գործնականութեան մէջ, դարերի ընթացքում օրէնսդիր մարմին միայն եղել է ազգային ժողո՞վը, թէ՞ ուրիշ մարմին էլ գոյութիւն է ունեցել։ Հէնց Լուսաւորչից սկսած մեր եկեղեցու պատմութիւնը ցոյց է տալիս, որ ազգային ժողովների հետ զուգընթաց գոյութիւն է ունեցել և երկրորդ ույժ, որի սահմանած կարգերը իբրև օրէնք գործադրուել են գոնէ առնուազը հրաման արձակողի կենդանութեան ժամանակ։

Այդ երկրորդ մարմինն է, ամենայն Հայոց Հայրապետը։ Լուսաւորիչ, իւր որդիք, Ներսէս մեծ, Սահակ, մինչև 447 թիւը, բոլոր խնդիրները, կարգերը, ժամերգութեան հաստատութիւնը, սուրբ գրոց թարգմանութիւնը, և այլն և այլն

*բոլորը արել են ո՛չ պաշտօնական ժողովի միջոցով, հապա իրանց հրամանով և կարգադրութեամբ. բացի Ներսէսի բարեգործական հաստատութիւններ սահմանող ժողովից։ Միայն այս պիտի ի նկատի ունենալ, որ կաթուղիկոսները այդ կարգերը սահմանել են միշտ խորհրդակցութեամբ, եթէ ոչ մեծ, գոնէ փոքր ժողովով։ Կաթուղիկոսների այդ կարգերը օրինականութիւն և յարատևութիւն են ստանում երկու ձևով, կամ ազգային ժողովի հաստատութեամբ, կամ բոլոր ազգի լուռ համաձայնութեամբ առանց ժողովի։ Այսպէս օրինակ Շահապիվանի* 447 *թ. ժողովում հաստատեցին բոլոր այն կանոնները, որո՛նք սահմանել են Լուսաւորիչ, Ներսէս և Սահակ ու Մեսրոպ, իսկ մինչև այդ ժողովի կողմից հաստատուելը վերոյիշեալ կաթուղիկոսների կարգերը կատարւում էին բոլոր ազգի լուռ համաձայնութեամբ, համարելով բոլորովին համաձայն հայոց եկեղեցու ոգուն և ժողովրդի սովորութեան։ Այդ ժողովից յետոյ Գիւտ, Յովհան Մանդակունի, Պետրոս գետադարձ, Շնորհալի և այլք գրեցին շարականներ, երգեր, աղօթքներ և բոլոր ազգը լուռ ընդունեց և մտաւ եկեղեցական ժամերգութեան մէջ։ Եւ ընդհակառակն Եզր, Ներսէս շինող, Վահան, Գրիգոր Անաւարզեցի ու հայոց թագաւորները և նախարարները բազմաթիւ ժողովներ արին, վճիռներ կայացրին, կարգեր սահմանեցին և ո՛չ մէկը չընդունուեց ազգի կողմից, ժողովուրդը ոչ միայն մերժեց վերջիններիս որոշումները, այլ և անհաւատարիմների շարքը դասեց։ Պատահում է որ անհաւատարիմ կաթուղիկոսների գրածները նոյն իսկ տիրող պետութիւնը մերժում է, իբրև ոչ ընդհանուրի դաւանածը ամփոփող փաստաթղթ. այդպէս էր Կարբեցու գրածը* 1841*-ին յուլիսի* 31*-ին Նիկոլայ Կայսրին, որ «Հայաստանեայց եկեղեցին ընդունելով* 5, 6 *և* 7*-րդ տիեզերական ժողովները, որոնք, որպէս յայտնի է, ընդունեցին և հաստատեցին Քաղկեդոնական ժողովի վճիռները, դորանով իսկ բնականապէս ընդունած է և յիշեալ ժողովը» (տես ամենայն հ. կաթ.* II *հ.* 1895 *թ.* 538 *երես)։*

Այսպիսով՝ բացի ազգային ժողովներից, երկրորդ օրէնսդիր մարմին համարւում է ամենայն հայոց հայրապետութիւնը միմիայն հետևեալ սահմանափակումներով. ա, որ կաթուղիկոսների կարգադրութիւնները ընդունւում են ազգի կողմից, երբ լինում են համաձայն և համապատասխան հայոց եկեղեցական աւանդութեան և հիմնուած հայոց եկեղեցական ժողովների սահմանադրութիւնների վրայ, այս պայմանից դուրս ոչ մի կաթուղիկոսի դրած կարգ չի ընդունուել ազգի կողմից։

Արդեօք Շնորհալու դրած կարգերը այս պայմանին համաձայն են գրուած թէ ոչ։ Շնորհալու գրուածները ոչ միայն ընդունւում են, հապա իբրև սուրբ, պաշտելի հայրապետի գրուած փայփայւում է բոլորի կողմից։ Բոլոր մեր հետակայ հայրապետները, գրողները միշտ մի որև է խնդիր ապացուցանելու համար, դիմում են Շնորհալուն։ Շնորհալին այնքան լաւ է իմացել հայոց եկեղեցու օրէնսդրութեան իրաւունքի ում պատկանելը, որ իւր կարգերի մէջ նոր շատ քիչ բան է աւելացրել. եղած կանոնների համաձայն և նրանց սահմանների շրջագծով կարգադրութիւններ է արել. այդ խոստովանում է և ինքը ընդհանրականի մէջ. «Գրով ձեռին մերոյ խօսիմք.... Ոչ զմեր ինչ բան, այլ զառաքելոցն և զմարգարէիցն և զվարդապետացն եկեղեցւոյ, երկրորդելով զբանից նոցա զօրութիւն ի լսելիս ձեր» 10 եր.։ Ամբողջ ազգի կողմից նրա սուրբ հրատարակուելը, և անտրրտունջ մինչև այսօր Շնորհալու կարգադրութիւնների և զաւանութեան ընդունուելը, Ներսէս—Ե-ի վերոյիշեալ մեծ վկայութիւնը, տալիս են մեզ իրաւունք Շնորհալու կանոնները մտցնելու հայոց եկեղեցու իրաւունքի աղբիւրների մէջ, չմեղանչելով իրաւաբանական հիմունքների դէմ։

Շնորհալու ընդհանրականը պարունակում է իւր մէջ բազմաթիւ կանոններ բոլոր դասակարգերի համար կազմած խրատական և համոզական ձևով գրած։ Մենք կքաղենք դրանցից այն կանոնները, որոնք պատուիրում է Շնորհալին պահպանել և կատարել, թողնելով մեզ համար երկրորդա-

կան տեղ բռնող կտորները, այն է երկար բացատրութիւնները, օրինակները և այլն, յարմարութեան համար թէ աշխարհաբարը թէ գրաբարը համարների տակ դրեցինք, որոնք բնագրում բացակայում էին։

## ա) Առ կրօնաւորս խառազնազգեացս՝ որ 'ի վանորայս

1. Աստուծոյ և մեր հրամանով, այս կանոնական օրէնքով պատուիրում եմ, որ (վանականները) կրօնաւորները, որոնք վանքերում և մենաստաններում են բնակւում, չթողնեն իրանց վանքերը և տեղափոխուեն քաղաքներ և գիւղեր. աշխարհում ապրողները պիտի յետ դառնան վանք և իրանց ուխտի համապատասխան կեանք վարեն և ոչ դրսում ապրելով գարշութեան, վատթարութեան, որովայնամոլութեան, արբեցութեան և անառակութեան մէջ ընկնեն։ Քահանաներին խիստ պատուիրում եմ, այդպիսիներին, եթէ չզղջան, մեռնելիս ոչ հաղորդութեան և ոչ օրինաւոր թաղման արժանի անել։

2. Կրօնաւորներից շատերը այգեգործութիւն են անում գիւղացիների նման, որը հակառակ է սուրբ հայրերի պատուիրաններին։ Որոնք, եթէ աշխարհում ժառանգութիւն, ստացուածք ունէին, թողնում էին և օրինադրում էին թողնել, նրանք հետեւում էին Քրիստոսին, որը մեծատուն մարդուն ասաց. վաճառիր ունեցածդ և եկ ետևիցս։ Իսկ այժմ ինչ ենք տեսնում, աշխարհական ժամանակ աղքատ եղած և ամեն բանի կարօտ անձը կրօնաւորութեան օրով հարստութիւն ձեռք բերած, աշխարհային հեշտասիրութեան ետեւից ընկած, անհոգ և վատ կեանք է վարում։ Նրանք պիտի Քրիստոսի Խաչը բռնած Պօղոս առաքեալի նման ամեն աշխարհային բան թողնեն և աւետարանի պատուէրներին հետեւեն։

Տես Ա—Առ.—32, Աշտ.—6, Շահ. 15, Բ—Պւ. 34, Սահ. 35, 38, Պարտ. 15, 7։

3. Վանքի ստացուածքների արդիւնքից պիտի բաժին հանուի աղքատներին, կարօտեալներին, տառապեալներին, գերեալներին, չմոռանալով այն խօսքը, որ ասում է «ով ողորմում է աղքատին, փոխ է տալիս Աստուծոյ»։

4. Վանականները պիտի կերակրի, հագուստի մէջ չափաւոր և պարկեշտ լինեն. արբեցողները այդ կարգի մէջ չընդու-

նուին, որոնցհւմ Պօղոս առաքեալի ասելով սպանողները, շնացողները, արուագէտները, արբեցողները և այլն, չեն կարող Քրիստոսի և Աստուծոյ արքայութիւնը ժառանգել:

5. Կրօնաւորները որ վանքի միաբան եղան, նոյնտեղում էլ պիտի մնան և իրանց մարմնական պէտքերի համար տեղափոխութիւններ չանեն, որից առաջանում են անկարգութիւններ, գժտութիւններ:

6. Կրօնաւորը չպիտի գողութիւն, կծծութիւն անի, կամ ուրիշի փողը կորի և չտայ. գողութիւնը տասնաբանեայ պատուիրանում սպանութիւնից և շնութիւնից յետոյ է գալիս:

7. Կրօնաւորը չպիտի բամբասի. եթէ ընկերի օգուտն է փնտռում, պիտի գնայ տունը և խրատէ, եթէ չլսի երկու երեք վկայի ներկայութեամբ խրատի, և երրորդ դէպքում եկեղեցում յանդիմանի. եթէ չուղղուի, այն ժամանակ իբրև հեթանոս համարուի և եկեղեցուց հեռացուի, ինչպէս աւետարանն է պատուիրում:

## բ) Առաջնորդս սրբոց ուխտից վանականաց

8. Վանքերի առաջնորդները (վանահայրերը) պիտի լաւ իմանան կրօնական գիտութիւնները, գործերով առաքինասէր լինին, անբիծ, սուրբ, արդար: Նրանք պիտի խնամեն բոլոր կարօտեալներին, առաւել ևս ծերացած անդամներին և ուժասպառ միաբան կրօնաւորներին:

9. Եկեղեցիներին նուիրուած բոլոր եկամուտները վանահայրը իւր վրայ չպիտի ծախսի միայն, այլ եկեղեցու կարիքները պիտի հոգայ: Եթէ վանքը պարտքեր ունենայ նախորդի օրով մնացող, պիտի վճարի:

10. Մեծամեծներին կաշառելով ոչ ոք չհամարձակի վանքի առաջնորդութիւնը ձեռք բերել առանց թեմական եպիսկոպոսի քննութեան և հրամանի: Վանաց առաջնորդին կարելի է փոխել երկու պատճառով, առաջին՝ երբ Աստուծոյ օրինաց դէմ է գնում առաջնորդը և անարժան գործեր է կատարում, որոնք վկաներով հաստատւում են, և երկրորդ՝ երբ եկեղեցու ոչ թէ շինութեան, այլ աւերման պատճառ է դառնում:

## գ) Առաջնորդս եկեղեցւոյ՝ որ են աշխարհի, որ կոչին եպիսկոպոսունք:

11. Պօղոս առաքեալի Տիմոթէոսին տուած պատուէրի համաձայն եպիսկոպոսը պիտի լինի հեզ, ցած, պարկեշտ, բարեսէր, արդար, սուրբ, ժուժկալ, մի արծաթասէր, մի կռւող, մի հարկանող:

Տես Սահ. 47, 49, 45, 46:

12. Շատ եպիսկոպոսներ, փոխանակ եկեղեցու տուրքերը բաժանելու աղքատներին, եղածը դիզում են և աշխարհի բռնակալներին նուիրում: Փոխանակ եկեղեցու կարգերի համեմատ առաջնորդ ընտրելու, դիմում են բռնակալ իշխաններին և նրանց օգնութեամբ եպիսկոպոս դառնում: Եթէ մինչև անգամ կաթուղիկոսի կարգադրութեամբ աթոռից հրաժարեցրած են լինում, այդպիսիները հակառակ եկեղեցու իշխանութեան՝ այլազգիների կաշառուած իշխանի օգնութեամբ աշխատում են բռնութեամբ յափշտակել եպիսկոպոսութիւնը:

Բացի այդ, նոյն իսկ կաթուղիկոսական աթոռը, որի վրայ բազմողը պիտի լինի «համօրէն ազգիս» ընտրութեամբ հրաւիրուած, կամենում են բռնակալների սատարութեամբ ձեռք ձգել: Այսպիսիներին եղբօրս Գրիգորիս կաթուղիկոսի օրով եղած երկու հազար հինգ հարիւր անդամներից բաղկացած ժողովը նզովեց եկեղեցուց հեռացնելով:

Շնորհալին վերջին կէտում ակնարկում է Աղթամարի Դաւիթ կաթուղիկոսին, որը կաշառքով և ինքնագլուխ Աղթամարում կաթուղիկոս ձեռնադրուեց 5 եպիսկոպոսի ձեռքով և ամենայն հայոց հայրապետ հրատարակեց իրան: Գրիգորիս կաթուղիկոսը 1114-ին 2500 անձանց մասնակցութեամբ նզովեց Դաւթին և նրա գործակիցներին:

Տես Բ. առ.—30, Դ—Դւ. 10, Երուս—7:

## դ) Առ դասս քահանայից:

13. Թէ եկեղեցում եղած և թէ պաշտամունքների կատարելու ժամանակ պէտք է քահանաները հոգևորականի տարազով լինին մաքուր հագնուած. ինչպէս լսում եմ աշխարհականի շորով և կեղտոտ սրբիններով սեղան են բարձրանում և սուրբ խոր-

հուրդը կատարում. և դրանով քահանային անվայել դիրք ստեղծում ժողովրդի մէջ և խօսակցութիւնների տեղիք տալիս: Թէ պատարագ անելիս, թէ աւետարան կարդալիս, խաչը բռնելիս, կամ սրբութիւնները ձեռքը վերցնելիս, պէտք է քահանան լինի շուրջառով և պահանջուելիք կարգով հագնուած:

14. Լսեցինք, որ քաղաքի քահանաներից շատերը պատարագից առաջ շրջում են քաղաքի վաճառափողոցներով վաճառականութիւն, տուր և առ անելով և ամեն տեսակ մեղքեր անելուց յետոյ գալիս են եկեղեցի և ուրիշ քահանաների կազմած նշխարով պատարագ մատուցանում առանց օրհնելու և սաղմոս կարդալու: Պատուիրում եմ այդպիսիներին հեռու մնալ այդ չար սովորութիւններից և սրբութեամբ կատարել պաշտամունքները:

15. Ոչ մի քահանայ առանց խոստովանեցնելու և մեղքերին թողութիւն տալու, հաղորդութիւն չտայ ոչ մէկին:

16. Քահանաներից ոչ ոք պատարագ չմատուցանի մինչև որ չհաշտուի նրանց հետ, որոնց դէմ, ոխ, քէն ունի.

17. Եթէ քահանան մէկին բանադրել է և նա հպարտութիւնից չի գալիս ներողութիւն և թողութիւն խնդրելու, քահանան կարող է պատարագ անել: Իսկ եթէ բանադրեալը կգայ ներողութիւն խնդրելու, քահանան որև է պատճառով ոխակալ է լինում և թողութիւն չի տալիս, սա չի կարող պատարագ մատուցանել:

18. Քահանաները միմեանց հետ կռիւ չպիտի անեն, խռովութիւն ձգեն, միմեանցից ծխականներ յափշտակեն ագահութիւնից դրդուած, այլ սիրով և եղբայրութեամբ վարուեն միմեանց հետ:

19. Քահանան չպիտի լինի ագէտ և ծոյլ, նա պիտի իմանայ իւր կարգին վերաբերեալ բոլոր ուսմունքները: Ինչպէս լսել եմ, շատերը սաղմոսները կարդալ չգիտեն, պատարագի աղօթքները անգիր չգիտեն:

20. Մկրտութիւնը կատարել ամենայն զգուշութեամբ և սրբութեամբ, և ո՛չ վայրապար ծիծաղելի և կատակի խօսքեր խառնելով աղօթքների մէջ:

21. Քահանան նախ մկրտութիւն պիտի անի և ապա սուրբ պատարագ մատուցանի և մկրտուածին հաղորդի, ուստի մինչև պատարագը հաց պիտի չուտի և հաց կերած մկրտութիւն չանի:

Տես Սիս—4:

22. Անհաւատ կանանց և մարդկանց ոչ ոք իրաւունք չունի կնքահայր հրաւիրելու, որովհետև անհաւատը չի կարող ի դէմս երախայի հաւատոյ դաւանութիւնը ասել:

23. Մկրտութեան (համար) կամ մեռնողին հաղորդութիւն տալու համար քահանան փող չպահանջի, ով կամենում է, կարող է՝ իբրև եկեղեցու նուէր, մի բան տայ. իսկ աղքատներին բռնադատել, ամենևին չի կարելի:

Տես Սիս—11:

24. Պիտի մկրտել այն անհաւատ մանուկներին միմիայն, որոնք յետոյ իրանց հին կրօնին չպիտի դառնան, այլ մինչև վերջ քրիստոնեայ կմնան:

25. Ոչ ոք գաղտնի պսակ չանի (առանց ծնողների գիտութեան) գաղտնի պսակը անվկայ է, անհաստատ և ոչ օրինաւոր:

Տես Լուս. 8:

26. Կնաթող և այրաթող անձանց առանց կանոնական հրամանի չպիտի պսակել. եթէ ոչ, պսակը կլուծուի և պսակադիրը կարգալոյծ կլինի: Իսկ եթէ կյամառին և չեն բաժանուիլ, նրանք պոռնկութիւն անող կհամարուեն:

27. Առևանգներին չպիտի պսակել, որովհետև շատ անգամ մարմնական հաճոյք ստանալուց յետոյ մեծ ատելութեամբ բաժանւում են միմեանցից և իրանց յանցանքին կցորդ անում պսակադիրին:

Տես Անկ.—11, Բ--առ.--67, Բարս.—12, 30, Շահ.—7, Լաւ—9, Լուս.—9:

28. Անմեղ տղաներին ժառանգութեան և կամ այլ պատճառով չպիտի պսակել, այլ հասակն առածներին, եթէ տղան 15-ը լրացրած և աղջիկը 12-ը լրացրած կամ էլ աւելի հասակում, որպէս զի գիտակցաբար լինի նրանց ամուսնութիւնը և ոչ անգիտութեամբ:

Տես Բ—Դւ. 24, Սահ.—27:

Զափահասական տարիքը զանազան երկրներում զանազան տեսակ են որոշւում. նոյն իսկ մեր մէջ մեր եկեղեցական կանոններով տարբեր են, Ներսէս Ե-ը որոշել էր տղայի համար 16-ը, իսկ աղջկայ համար 13-ը լրացրած. պետական

օրէնքը կովկասցիների համար որոշել է 15 և 13, պետական օրէնքը ոչ կովկասցիների այսինքն Ռուսաստանի համար 18 և 16 ինչպէս և Գերմանիայում։ Ներսէս Ե-ի որոշումը, որ աղջիկը 14 տարեկան լինի աւելի ընդունելի է առողջապահական տեսակէտից քան Շնորհալունը։

29. Ոչ ոք չհամարձակի տղայի և աղջկայ կամքի հակառակ պսակ անել, այդպիսի պսակը անհաստատ է և լուծանելի, և պսակադիրը՝ եթէ բռնութիւնից մինչև անդամ ստիպուած արած լինի պսակը, էլի կպատժուի։

Տես Բարս.— 42։

30. Մերձաւոր ազգակիցների մէջ պսակ լինել չի կարող, մինչև որ երկու կողմից չորս չորս աստիճանը լրացած չլինի։

Կանոնս պահանջում է որ 8-րդ աստիճանը լրացած լինի և պսակուելու իրաւունք ունենան միայն 9 և 10 աստիճանները, կամ 8-րդ 9-ի հետ։ Սրանից առաջ գրուած էր Սսի կանոնը մինչև 7-րդ աստիճանի արգելմամբ։ Սսի ժողովի կանոնը դարձաւ ընդհանուր օրէնք հայերի համար։

Տես Ա—առ.—33, Բ—առ.—19, Բարս.—23, Աշտ.- 1, Բարս. 68, Շահ. 12, 13, Պար.—16, Սսի 7, (Թադ. 32, Հարց.—10)։

31. Քահանան պսակ պիտի անի առաւօտից մինչև ճաշը։ Խմած մարդուն եկեղեցի թողնել չի կարելի, նոյնպէս և անսաւակ կանանց, որ պսակի օրհնութիւնը չաղտեղեն։ Գուսանները նոյն միջոցին (պսակի) չերգեն։ Բուն բարեկենդանից մինչև զատիկ, զատկից էլ մինչև պենտեկոստէն և բոլոր կիրակի օրերը պսակ անել չի կարելի։

Տես Ն. Դւ. 3. 5, Լաւ. 59։

32. Քահանան չհակառակի Աստուծոյ օրէնքներին և եպիսկոպոսին, և միաբանելով այլազգիների հետ չարտաքսեն եպիսկոպոսին և իրանք օտարների օգնութեամբ ժողովրդի հրամանատարներ նշանակուին առաջնորդական իրաւունքներով. այդպիսի քահանաները կարգալոյծ լինին և մեռնելիս հաղորդութիւն չստանան և քահանայական թաղման արժանի չլինին։

Տես Երուս. 11։

33. Քահանան և ժողովուրդը եկեղեցական գործերի համար մարմնաւոր իշխանի մօտ չգնան դանգատուելու և դատաս-

տան խնդրելու, այլապէս առաքելական և կանոնական հրամանի համեմատ կարգալոյծ կլինի:

34. Քահանան չպիտի աշխարհի կառավարութեան մէջ խառնուի, և քաղաքի կամ գիւղի հոգաբարձու, կամ դատաւապետ, կամ հարկերի և սակերի գրող, կամ որև է աշխարհային գործակալութիւն անող լինի: Այդպէս վարուող քահանան կարգալոյծ պիտի լինի, կամ յետ կենայ այդպիսի զբաղմունքներից:

Տես Բ—առ.—6, Սսի 17, Սահ.—22:

35. Լսում ենք, որ կան քահանաներ, որոնք ձիավարժութեամբ, զինավարժութեամբ, ձիարշաւներով, նետաձգութեամբ, որսորդութեամբ և այդպիսի գործերով են զբաղուած. պատուիրում եմ հեռու կենալ այդպիսի պարապմունքներից և մարմնաւոր զէնքերից, և սպառազինուել հոգևոր զէնքերով:

36. Եթէ քահանան մէկին բանադրում է զանազան յանցանքների կամ պատուիրազանցութեան համար, ուրիշ քահանայ ոգիտաբար այդ բանադրեալին չպիտի թոյլ տայ իւր եկեղեցին մտնելու, բոլոր քահանաները պիտի մերժեն նրան, մինչև որ չզղջայ մեղաւորը և թողութիւն խնդրելով բանադրանքը վերցնել տայ:

Տես Բ—առ.—12, 13, Սարդ.—13, 14. Շահ. 18, Պար, 19:

37. Այս կանոնը ճշտութեամբ կատարուի եպիսկոպոսներից, եթէ բանադրողը եպիսկոպոս է:

38. Ամուրի երիտասարդ քահանաներին այս պատուիրանն եմ աւանդում, որ եթէ կամենում են իրանց հոգին ազատել մեղքերից, բամբասանքներից, և արժանաւորապէս ս. խորհուրդը կատարել, պիտի կրօնաւորութեան մէջ մտնեն, որովհետև աշխարհում միշտ խօսալով, յարաբերութիւն ունենալով ըստ պաշտօնի կանանց հետ, նրանց խոստովանեցնելով և այլն և այլն անհնար է սրբութեամբ ծառայել Աստուծոյ. իսկ եթէ չի համաձայնում վանք գնալ, պիտի պատարագ չանի: Իսկ ծերունի քահանաները եթէ վստահ են իրանց անձի տոկունութեան և անարատ վարք ունենալուն վրայ, կարող են մնալ իրանց պաշտօնում՝ որքան կկամենան:

### ե) Առ իշխանս՝ որ ըստ աշխարհի:

Իշխաններին ուղղած խրատները չեն մտնում եկեղեցական կարգերի մէջ, որովհետև նրանց յանցաւորութեան դէպ-

քում չեն ենթարկւում հոգևոր դատաստանին և պատժին, այլ մարմնաւոր իշխանութեան: Համառօտութիւնը այս է.

39. Մարդկանց մի՛ նեղէք, աղքատներին մի՛ զրկէք, չար և անիրաւ գործակալներ և դատաւորներ մի՛ նշանակէք. անիրաւ դատաստան մի՛ անէք, վարձ մի՛ կտրէք. ծառաներին նրանց ստանալիքից մի՛ զրկէք. պասերը մի՛ լուծէք ձկնով և գինով, սուտ երդում մի՛ ուտէք:

## գ) Առ դասս զինուորաց:

Ինչ որ ասացինք «իշխանների» վերաբերմամբ, նոյնը կասենք և այս կանոններիս վերաբերմամբ: Համառօտ բովանդակութիւնն է.

40. Հնազանդ կացէք ձեր տէրերին, գլխաւորներին. պաշտօններդ սրբութեամբ կատարեցէք, գողութիւն, յափշտակութիւն մի՛ անէք, հոգևոր զէնքերով սպառազինուեցէք, որ պատերազմում Աստուած ձեզ օգնական լինի:

## դ) Առ քաղաքականս:

Համառօտութիւնը այս է.

41. Առևտուր անող քաղաքացիքդ ուղղութեամբ արէք վաճառականութիւն և ոչ խաբեբայութեամբ. կշեռքի և չափի մէջ արդար և խղճով վարուեցէք և ոչ ստելով և խաբելով: Փողը շահով մի տաք, փոխ տուածը միայն յետ պահանջեցէք: Ձեր ունեցածից բաժին հանեցէք աղքատներին և կարօտեալներին:

## ե) Առ երկրագործս եւ համօրէն ժողովրդականս:

Համառօտ բովանդակութիւնն է.

42. Գնացէք աւետարանի ետևից, վարեցէք պարկեշտ և առաքինի կեանք. հեռու կացէք ծուլութիւնից, հարբեցողութիւնից, յիշոցներ տալուց. կրթեցէք ձեր որդիներին Աստուծոյ ճանապարհով, հէնց փոքրուց ուսում և կրթութիւն տուեցէք նրանց, որ բարի ժառանգներ լինին: Սիրեցէք աղքատներին, անանկներին, հիւրերին, հիւանդներին:

## բ) Առ կանանց դասս:

Համառօտութիւնը.

43. Կանայք, պարկեշտ եղէք, զանազան գոյներով երեսներդ մի ներկէք. կախարդութեան և գեղատւութեան եռեից մի ընկնէք. հապա կատարեցէք ձեր պարտաւորութիւնները սրբութեամբ և ձեր պարկեշտ վարքով օրինակ եղէք ձեզնից փոքրերին:

## ժ) «Գիր շրջաբերական առաքեալ ի կողմանս արեւելից ի կարս՝ զկնի նորակերտ եպիսկոպոսի ուրումն . . .»

44. Եպիսկոպոս ձեռնադրեցի ձեր ընտրած և ձեր վկայականով ուղարկած քահանային, հաւատալով ձեր վկայութեան յանձնեցի նրան առաքելական ձեռնադրութեամբ տուեալք իրաւունքները:

Տես Սսի 1, Երուս. 9:

45. Կպահի նա տիրոջից հրամայուած կանոնը (պոռնկութեան) մարդու և կնոջ անբաժանելի կենակցման մասին: Բացի պոռնկութեան և ս. հայրերի կանոններում գրած պատճառներից, ուրիշ ոչ մի բանի համար չի կարելի արձակել կինը. լսում ենք, որ արեւելեան եպիսկոպոսներից ոմանք, արհամարհելով Աստուծոյ օրէնքը, անխտրաբար բաժանում են ամուսիններին կուրացուցիչ մամոնայի պատճառով: Ինչպէս արձակողն է ըստ Յիսուսի խօսքին, շնութիւն անելու պատճառ դառնում, նոյնպէս և արձակելու հրաման տուողը շնութեան մեղսակից է լինում:

Տես Բարս—9, 31. Շահ. 4, 5. Սսի—14, Հարց—7, Լուս. 23:

## ՇՆՈՐՀԱԼՈՒ ԿԱՆՈՆՆԵՐԻ ԳՐԱԲԱՐ ԲՆԱԳԻՐԸ.

### Առ կրօնաւորս խարազնազգեացս՝ որ 'ի վանորայս:

1. Եւ արդ՝ առաջին ընդ գերաշխարհիկդ վարուք և քաղաքավարութեամբ խօսեսցուք. առ կրօնաւորսդ՝ որք ի վանորայս և ի մենաստանս բնակիք: Որք սիւնք էք աշխարհի և պարիսպ ընդդէմ թշնամւոյն՝ աղօթիւք ձեր և բարի վարուք, հրեշտակք ի մարմնի, և աստեղք լուսատուք յեր-

կրի, յորոց ի բարի և ի լուսաւոր վարուց փառաւորի միշտ Հայր ձեր՝ որ ի յերկինս է։

Եւ արդ՝ մի ոք ի ձէնջ զվատթարս խօսելով լեզուաւ, կամ իրս ինչ անպատշաճ գործելով անձամբ առաջի արտաքնոցն՝ պատճառ լինիցի բանալոյ զանդուռն բերան նոցա ի հայհոյութիւն սուրբ հաւատոյս և կարգիս. որովք կրկին դատաստանս տալոց են այնպիսիքն առաջի աստուծոյ, առաջին՝ ընդ մեղացն՝ զոր խօսին կամ գործեն. երկրորդ և մեծ՝ ընդ գայթակղութեան լինելոյն պատճառ։

Մի ոք զընկերակից կրօնաւորաց թողլով զկենակցութիւն՝ առանձինն բնակիցէ, ոչ յաղագս ճգնողական վարուց՝ որպէս միայնակեացք, այլ վասն ագահութեան ախտի, զի զանձին իւրոյ աշխատութիւնն ոչ հասարակաց եկեղեցւոյն, այլ իւրայնոյ ամբարիցէ. յորմէ վնասք բազում. հոգւոյ, և ի միաբանութենէն՝ օգտութիւնք յոլովագոյնք, որպէս աստուածախօս վարդապետացն ցուցանին բանք։

Են ոմանք դարձեալ աշխարհասէր և ի մեղկ կրօնաւորաց, զի ոչ միայն սրտիւք ըստ հնոյն խորայէլի դառնան յեգիպտական գործս խաւարինս, այլ և անձամբ իսկ ընդ աշխարհականս բնակին ի գիւղս և ի քաղաքս, և ի բանից բերանոյ գարշութիւնս և ի գործս վատթարութեան, և յորովայնամոլութիւնս անպատկառս, և յարբեցութիւնս անառակս, և յամենայն անկարգութեանց բերմունս՝ առաւելուն քան զնոսա։

Արդ՝ հրամանաւն աստուծոյ և մեր, այս եղիցի կանոնական օրէնք ի վերայ այնպիսեացն, փոխել այսուհետև զբնակութիւնս իւրեանց ի վանս, և զվարս իւրեանց ըստ ձևոյն և ըստ կարգին՝ յապաշխարութիւն և ի պարկեշտութիւն՝ մինչև ի վախճան։ Իսկ եթէ ոք ի նոցանէ ոչ լուիցէ աստուածային օրինացս՝ զոր գրեցաք, և ոչ ելցէ յաշխարհէ, այլ կացցէ յամառեալ մինչև ի մահ իւր՝ 'ի նոյն, անպարտ եմք մեք ի խղճէ կորստեան նորա, ինքն եղիցի արեան իւրոյ պարտական առաջի աստուծոյ։

Այլ՝ քահանայից պատուէր տամք, զի թէ մինչ յաշ-

խարհի իցէ այնպիսին, և վախճան մարմնոյ ընդ հոգւոյն մեռելութեան հասանէ նմա, ոչ հաղորդութեան և ոչ օրինաւոր թաղման արժանի առնել զնա, մանաւանդ զայնոսիկ՝ որ միշտ յանզղջութեան լինիցին մինչև ի մահ։ Իսկ եթէ ոք յայնպիսեացն մերձ եղեալ ի մահ զղջասցի և հայցէ արտասուօք զհաղորդութիւն և զթաղումն, և խոստովանութեան նորա գիտողք վկայեսցեն, եթէ հաստատեալ էր ի միտս ելանել յաշխարհէ, եթէ օրհաս մահուն ոչ էր կանխեալ, այնպիսւոյն վասն ողորմութեանն աստուծոյ տացի թօշակն վերջին, և օրինաւոր թաղումն՝ ոչ որպէս քահանայի, կամ կրօնաւորի, այլ իբրև զմիոյ աշխարհականաց։

Բայց մի ոք անընտրողաբար զամենայն՝ որ յաշխարհի մեռանիցին կրօնաւորք, հաւասար համարեսցի, զի են բազումք՝ որ հիւրութեամբ եկեալք յաշխարհ, պատահէ նոցա վախճան, և այլք՝ որ ծեր և տկար գոլով մարմնով, և վասն ոչ գտանելոյ խնամս ի վանորայս՝ բնակին յաշխարհի, ուղիղ և ոչ բամբասելի վարուք, այսոքիկ և սոյնպիսիքս պատուով թաղեսցին, յորժամ հասանէ վախճան, որպէս զծառայս աստուծոյ։

2. Դարձեալ՝ զգուշացուցանեմք զճշմարտագունիցդ երամս՝ յաղագս նոր եղելոյ սովորութեանդ ի վանորայս ի մերում ժամանակի, այգեգործ իւրաքանչիւր ոք լինելով ի կրօնաւորաց, որպէս ի գեօղս, որ անվայելուչ է կրօնաւորական կարգի, և արտաքոյ առաջին սրբոց հարցն պատուիրանաց։ Զի նոքա և զորս աշխարհի ունէին ժառանգութիւնս և ստացուածս՝ թողին, և թողուլ օրինադրեցին, և զխաչ առաքինութեան բարձին, և զկնի գնացին քրիստոսի, որպէս և ինքըն հրամայեր մեծատանն, թէ՝ երթ վաճառեա զոր ինչ ունիս, և տուր աղքատաց, և դու առ զխաչ քո, և եկ զկնի իմ, և ունիցիս գանձս բազումս յերկինս։ Եւ դարձեալ թէ՝ որ կամիցի զկնի իմ գալ, և ոչ ուրասցի զամենայն՝ զոր ունիցի յաշխարհի, և առցէ զխաչ իւր հանապազ, ոչ կարէ իմ աշակերտ լինել։ Եւ այլ եւս՝ որ այսպիսիք են աւետարանական պատուիրանք աշակերտելոյ անձանց որ էք դուք։

Յորոց բազումք են ի ժամանակիս կրօնաւորաց՝ որ յաշխարհի առանց ժառանգութեան էին, և հարկատուք իշխանաց, և աղքատք ի գոյից, և կարօտք հարկաւորացն, և յորժամ զձև կրօնաւորութեան ընկալան՝ տեարք եղեն ի վանորայս բազում ժառանգութեան, և փարթամացան ստացուածովք, և ոչ միայն հարկաւոր պիտոյիցն եղեն անկարօտ, այլ և աւելորդօքն լցան, և յաշխարհի հոգովք և երկօք տաժանեալք, և աստ անհոգութեամբ և հեշտութեամբ ստուարացեալք: Եւ զի՞րդ կարիցէ այնպիսին յաշակերտութեան լինել կարգի, և ասել ընդ Պետրոսի, տէր՝ ահա մեք թողաք զամենայնն՝ և եկաք զկնի քո, արդ՝ զի՞նչ լինիցի մեզ: Յայտ է՝ զի ոչ եթող ինչ վասն քրիստոսի այլ մանաւանդ՝ զոր ոչ ունէր յաշխարհի, ստացաւ հակառակ քրիստոսի:

3. 'Ի պտղոցն ժամանակի՝ զպտղաբերացն ձերոց մասն տուք աստուծոյ ի ձեռս աղքատաց և կարօտելոց, և մի դատարկ և ունայն զխնդրողսն պտղոյն դարձուցանիցէք, զի մի և զձեզ աստուած 'ի յիւր անկեալ դրախտէն՝ ունայն դարձուսցէ:

Եւ եթէ տայցէք, մի խոժոռ դիմօք և զայրացեալ սրտիւ և դժկամակ բանիւք իբրև զզոհն Կայենի՝ որ ոչ է հաճոյ աստուծոյ, այլ և պատճառ զայրացման, այլ՝ զուարթառատ կամօք, որպէս սիրէ և խնդրէ աստուած:

Եւ ի գինւոյն ժամանակի՝ ի գինւոյ անտի մասնաւորեցէք զբաժինն աստուծոյ: Եւ յորժամ առաւելուցու քան զպէտս ձեր, և հարկ լինի վաճառել. ի գնոց անտի արծաթոյ առաւել պտղաբերեցէք քրիստոսի՝ տալով տառապելոց և գերելոց, և մի ամբարիցէք յերկրի, և յուսայք յետ մահու՝ այլոց ձեռամբ զձերն տալ աստուծոյ վասն ձեր:

Դարձեալ՝ զի թէ և երկիւղած ոք հանդիպեսցի, և զամենայն գոյս մեռելոյն ըստ կամացն աստուծոյ տնօրինէ՝ վասն հոգւոյ նորա թողութեան մեղաց, նուազ է ի բարեաց և ոչ կատարեալ բարի: Եւ զի այս ճշմարիտ է՝ ի բանից իմաստնոյն ուսանիմք: Այն զի ասէ թէ՝ որ ողորմի աղքատին, փոխ տայ աստուծոյ: Եւ գիտէ զայս ամենայն ոք, զի

զվճար փոխոյն ոչ օտարի ուրուք, այլ փոխատուին տալ փոխառուն։

4. Մի ոք գտցի ի միջի ձերում՝ որ զձև կրօնաւորութեան զգեցեալ է, և յառաւելութիւն գինւոյ տուեալ զանձն իւր՝ զբամբասանս արբեցողաց ընկալցի ի կարգն սուրբ։ Զի միոյն անկարգութեամբ՝ ամենայն կարգակիցք նորա անգոսնեսցին յաշխարհականաց և յայլազգեաց։ Եւ թէև այլով ամենայնիւ հնար էր անբամբասելի լինել այնպիսւոյն, արբեցութեամբն արտաքս ելցէ յարքայութենէն՝ ըստ բանին առաքելոյ. քանզի ասէ՝ մի խաբիք, ոչ սպանողք, ոչ շնացողք, ոչ արուագէտք, ոչ արբեցողք, և զայլն՝ որ ըստ կարգի, թուէ, ոչ ժառանգեսցեն զարքայութիւն քրիստոսի և աստուծոյ։

5. Դարձեալ և զայս պատուիրեմք, զի թէ հնար է փոփոխել ձեզ 'ի փոփոխական բարուց՝ վանայ ի վանս շրջելով, զի վասն դոյզն պատճառի թողուլ զառաջնորդն իւր և զկենակից եղբարսն՝ անհաստատութեան է նշանակ։ Վասն զի բաց 'ի հոգւոց վնասուէ որ հրամայեալ է ի գիրս, թողուլ և գնալ յաղագս մարմնաւոր ինչ պատճառի, ոչ թողացուցանեն զփոփոխումն ի տեղւոջէն։ Եւ յայսմ պատճառէ յազգի մերոյ կրօնաւորաց զբազումս տեսանեմք անհրահանգս և անխրատս, և անհնազանդս աւագագունից. և զրեթէ զբովանդակն բաց ի սակաւուց։ Զի յորժամ յանպատշաճն, կամ ի գործս կամ ի խօսս՝ որ անվայելուչ է կրօնաւորաց, տեսանիցեն զոք ելեալ՝ առաջնորդն կամ վարդապետն կամ ոք ի ծերագունիցն, և յանդիմանօղ բանիւ սաստիցէ, վաղվաղակի գիշերագնաց եղեալ իբրև ծառայ փախուցեալ ի տեառնէ, փախչի զայրացեալ սրտիւ յաստուածային խրատուէ անտի։

Մի ոք յեղբարց տրտնջօղ լինիցի զառաջնորդէ իւրմէ յինչ և իցէ պատճառս տրտնջման, թէ և արդար գտանիցի ի տրտնջելն, զի մի զվարձսն՝ որ յաստուծոյ, կորուսանիցէ, և ընդ այգւոյն մշակացն առաջնոց դատեսցի, վասն տրտնջելոյն զտեառնէն անիրաւաբար։

6. Իսկ զգողսն և զկծծիսն և զհատուսն քան զարտաքինսն ի սոյն յանցանս գտեալս առաւելապէս դատի աստուած, որպէս զգիտօղ կամաց տեառն ծառայ, քան զայն՝ որ ոչն գիտէ:

Եւ մի ոք փոքր համարեսցի զսա ի կարգ մեղաց, զի ի քարեղէն տախտակսն ի գրեալ օրէնսն մատամբն աստուծոյ, երրորդն է սա կարգեալ, յետ սպանութեանն և շնութեանն:

Եւ սահման՝ որ ընդ գողութեան անուամբ և բանբասանօք արկանէ զմարդ՝ այս չափ է, ամենայն ոք որ զձեռս իւր ձգէ յառնուլ զինչ և իցէ իրս, և աչօքն այսր և անդր նայեսցի, զի մի տեսցէ կամ տէր գոյին, և ըմբռնեսցէ զնա, կամ օտար ոք՝ և հայհոյեսցէ. գող է այնպիսին, և գողութիւն է զոր առնուն:

7. Մի ոք ի բամբասանս յօժարեսցի, թէև ուղիղ իցէ, թող թէ զրահետ վարեալ: Զի զինչ օգտեցուցանես զեղբայրն՝ բամբասելովն զնա առ այլս, զքեզ վնասեցեր ի բամբասելն, և նա ոչ ինչ օգտեցաւ: Եթէ կամիս օգտեցուցանել զնա և զքեզ տէրունականաւն վարեսջիր խրատով: Յանդիմանեա զնա սիրով, որպէս զհիւանդացեալ անդամ սպեղանեօք նախ առանձնաբար, եթէ ոչ անսայցէ առաջի երկուց և երից վկայից. եթէ և ի նոցանէ ոչ պատկառեսցի դառնալ յուղղութիւն՝ ասասջիր յեկեղեցւոջն, և թէ՝ և յեկեղեցւոյն ի հրապարականախատ լինելոյն ոչ զղջասցի, յայնժամ համարեսցի քեզ, և բամբասեսցի իրաւապէս՝ իբրև զհեթանոս և զմաքսաւոր:

բ) Առ առաջնորդս սրբոց ուխտից վանականաց:

8. Փոքր ինչ և առաջնորդացդ, ի յերկինս ճանապարհորդելոցն տացուք ծառայակցաբար զհոգևորական և զաստուածային բանին կերակուր՝ որք զաչաց ունիք գործ և սպասաւորութիւն մարմնոյ եկեղեցւոյ:

Զի զոր օրինակ աչք առաջնորդին անձին յամենայն շարժումն 'ի լաւագոյնսն կամ 'ի վատթարագոյնս, ըստ այսմ նմանութեան և առաջնորդք՝ առաջնորդելոցն:

Ըստ այսմ օրինակի և առաջնորդք եկեղեցւոյ, որ աք երկոքումբք աչօք լուսաւորեալ իցէ, այսինքն՝ գիտութեամբ աստուածաշունչ գրոց, և առաքինասէր գործովք՝ ամբծութեամբ, և սրբութեամբ և ամենայն արդարութեամբ, զոր պատուիրանք աստուծոյ ուսուցանեն, այնպիսին՝ որպէս անձին իւրոյ, սոյնպէս և համօրէն եղբայրութեան բարւոք առաջնորդէ յաստուածայինսն։ Իսկ՝ որ զմի յաչացն բաց ունիցի, և միւսովն կափուցեալ իցէ այսինքն՝ որ կամ գիտութիւն առանց գործոց առաքինութեան, և կամ առաքինութիւն առանց գիտութեան ունիցի, թերի է ի բարեաց, և ոչ կատարեալ քանզի միականեաց նմանի այնպիսին։

Իսկ այնոքիկ՝ որ զերկոսեան տեսարանս աչաց խաւարեալս ունիցին ի լուսոյ, այսինքն՝ զի են տգէտք աստուածային գիտութեանց, և են սպերդ յամենայն գործս արդարութեան, մանաւանդ թէ՝ և հակառակօքն լցեալք, և յանդգնին տալ զանձինս յառաջնորդութիւն եկեղեցւոյ, որ և զբազումս տեսանեմք յայսպիսեաց 'ի մերումս թշուառացեալ ժամանակի, ձեռնամուխ եղեալ յայսոսիկ, լինիլ այնպիսիքն ըստ տէրունական առակին, կոյր կուրի՛ յորժամ առաջնորդէ՝ ասէ, երկոքին 'ի խորխորատ անկանիցին, որք ոչ յաստուծոյ, այլ ի սատանայէ շարժեալք դիմեն յառաջնորդութիւնն յայն, 'ի կորուստ ինքեանց և առաջնորդելոցն։

Իսկ կերակրոյն բաշխումն ըստ չափոյ՝ աշխատութեանն առ իւրաքանչիւրսն լիցի առաւելութեամբ և նուազութեամբ։ Զծերացեալսն և զվտանգեալսն որք զմանկութեան ժամանակն և զզօրութիւն անյանց ի յաշխատութիւնս եկեղեցւոյն ծախեցին, մի բարձի թողի առնիցէք, որպէս ոչ ժամանակին պիտանացուք զի մի բարկասցի տէր։ Քանզի՛ թէ օտարաց վտանգելոց, նաև թշնամեաց՝ խնամ տանիլ հրամայէ Քրիստոս և ողորմել, և պատուհաս սպառնայ՝ որք ոչն առնեն, քանի՞ ևս եղբայրցն և անդամոց եկեղեցւոյն։ Վասն որոյ՝ զծերս պատուեցէք և ծերատածեցէք՝ ըստ հրամանին առաքելոյ, և զտկարացեալսն խնամարկեցէք տեսչութեամբ և պիտոյից նոցա պատրաստութեամբ՝ ըստ չափոյ զօրութեան ձերոյ։

9. Մի գնուիրեալն յեկեղեցիս՝ կամ կենդանեաց միաբանութեան կամ մեռելոց յիշատակի, անձին միայնոյ սեպհականեսցէ առաջնորդն, այլ ի պէտս եկեղեցւոյն ծախեսցէ։ Զնոյն և հաստուսցէ եկեղեցեաւն զհոգևոր պարտսն, զի մի յարդար դատաստանին աւուր պահանջեսցէ իւրաքանչիւր ոք զտուեալն, և զի՝ ոչ ունիցի յայնժամ հատուցանել, զիւրն առեալ բարեգործութիւն փոխարէն տայցեն։

Եւ թէ առաջնորդն առաջին՝ զոր առ յաւուրս իւր ի ծախս եկեղեցւոյն վասնեայ հաստատուն վկայիւք, և ոչ ժամանեաց յաղագս օրհասին մահու կանխելոյ՝ հատուցանել զպարտսն, երկրորդն՝ որ զկնի նորա ժառանգէ զառաջնորդութիւն եղբայրութեանն, պարտական է վճարելոյ, և եթէ անտես առնէ ունի տոկոսօք վճարել առաջի քրիստոսի։ Իսկ եթէ ոչ վկայիւն նմա ի պէտս եկեղեցւոյն առնել զառեալն, ինքն՝ որ էառն, հատուսցէ ի հանդերձելումն։

10. Մի ոք ինքնակամ ախտիւ շարժեալ՝ կաշառանօք աւագաց յափշտակեսցէ զառաջնորդութիւն վանաց առանց ժամանակին առաջնորդի քննութեան և հրամանի։ Քանզի երկու են պատճառ իրաւացի փոխելոյ զվանաց առաջնորդս, կամ վասն զանարժանս գործելոյ արտաքոյ օրինաց աստուծոյ, և այն ճշմարիտ վկայիւք՝ կամ եկեղեցւոյն ոչ շինութեան, այլ աւերման լինելոյ պատճառ։ Եւ առանց այսոցիկ՝ եթէ յանդգնի ոք հակառակ յառնել՝ մեղանչէ յօրէնս աստուծոյ։

գ) Եւ առաջնորդս եկեղեցւոյ՝ որ են յաշխարհի, որ կոչին Եպիսկոպոսունք:

Խօսեսցուք և առ դասս եպիսկոպոսաց սրբոց՝ որ էք տեսուչք կարգեալք յաստուծոյ հոգւոց հաւատացելոց՝ որ են յաշխարհի։

Որ թէպէտ և ըստ կարգի երկրորդ եդաք յաղագս բարեկարգութեան՝ նախ առ վանականսն սակայն ըստ աստիճանի՝ առաջին էք։

Պարտ է գիտել և զայն, թէ յաղագս որո՞յ պատճառի

եղաւ ի քրիստոսէ և յառաքելոց նորա այս գործ եպիսկոպոսութեան, յայտ է թէ վասն լինելոյ գլուխ և հրամանատար քահանայից և ժողովրդոց, և որպէս զդէտ աննիհր աչօք մտացն նայել ի վերայ ամենեցուն, զթիւրեալսն ուղղել, և զուղիղսն հաստատուն պահել։

Եւ թէ զինչ հրամայեցաւ լինել եպիսկոպոսին և կամ զինչ առնել, զայս Պօղոս յայտ առնէ առ Տիմոթէոս գրելովն, թէ պարտ է եպիսկոպոսին անարատ լինել՝ որպէս աստուծոյ տնտեսի, հեզ, ցած, պարկեշտ, հիւրասէր, բարեսէր, արդար, սուրբ, ժուժկալ, մի արծաթասէր, մի կռուող, մի հարկանող, այլ հանդարտ, և այլ ևս։

12. Թողից ասել զևս դժնդակագոյնսն այսր ժամանակի եպիսկոպոսաց գործ, զի և բազում անարգանաց և տուժից տանին յայլազգեաց, ոչ յաղագս աստուածային օրինացն՝ որպէս առաջին սուրբքն, զի այն երանութեան էր արժանաւոր, այլ վասն սնոտի փառացն յուսոյ և զգերփեալսն 'ի հնազանդելոց պէսպէս հնարիւք և բռնութեամբ՝ զոր յեկեղեցւոյ պայծառութիւն և յաղքատաց պէտս հրամայեցաւ լինիլ, զայնոսիկ ժողովեն որպէս զմաքսաւորս, և բռնակալաց, աշխարհի նուիրեն։ Եւ ոչ թէ ի նոցանէ բռնադատելով զայն առնեն. քանզի ի սոյն իսկ յազգէ մերմէ սկսաւ այս գործ չարութեան, և ծանուցաւ այլազգեաց յաներկիւղից ոմանց և ի փառամոլից՝ որք մի ի միոյ վերայ յառնելով տակաւին աճեցուցանեն զկապեալս ի վերայ եկեղեցւոյ քրիստոսի, որպէս զտունս բաժից կամ զներկոյաց, որոց մեղաց չիք թողութիւն՝ բստ առ ի յաստուած մեղուցելոցն։ Որ ոչ միայն քահանայապետութեան չեն արժանի՝ որ զայս դաժան գործ սկիզբն արարին մուծանել յեկեղեցի, և կամ այնոքիկ որք ի հայրապետաց ընկեցեալք յաթոռոյ վասն հոգևոր պատճառի՝ այլազգեաց բռնաւորութեամբ և յաւելուածով կապալացն՝ դարձեալ փութան յափշտակել զեպիսկոպոսութիւնն, այլ և ոչ քրիստոնէութեան հաւատոյ և կարգի, և ոչ օրհնաւոր քահանայական թաղման և սրբոյ պատարագին յիշատակի։

*Զի՞նչ ասել և զմօրէն այսոցիկ չարեաց, զյայտնապէս հակառակացն ճշմարտութեան և սրբոյ աթոռոյ Լուսաւորչին՝ որք ինքնաշարժ ախտիւք և բռնակալաց աշխարհի հրամանօք զանձինս իւրեանց յայս աստիճան հոգևոր բարձրութեան ձգեն, և ոչ ընտրութեամբ աստուծոյ և աստուածայնոց արանց համօրէն ազգիս՝ որպէս օրէնն պահանջէ, որով բիւր նեխութեան և ապականութեան անդամոց քրիստոսի լինին պատճառ: Զի թէ ի գլուխն ահարօնի իջանէն շնորհք հոգւոյն սրբոյ՝ որ է հայրապետութիւն, և ի գլխոյն ի մօրուսն՝ յեպիսկոպոսութիւնն, և ի մօրուացն ի գրապանակսն՝ որ է քահանայութիւնն, և ի գրապանացն ի զգեստն՝ որք են ժողովրդեանն դասք:*

## *Առ դասս քահանայից:*

13. *Դարձուցուք այսուհետև զկարգ բանիս առ դասս քահանայիցդ՝ որք աստիճանաւ երկրորդ էք եպիսկոպոսաց, և կարգեալ էք քահանայական գործառնութեամբ նուիրել զամենայն զորդիս աստուծոյ, ծնանելով զամենեսեան մկրտութեամբ սուրբ աւազանաւն յորդէգրութիւն հօրն երկնաւորի և ի ժառանգակցութիւն քրիստոսի աստուծոյ, և մեղսաքաւիչ մարմնոյ և արեանն տեառն բաշխմամբ կերակրել զհոգիս նոցա յանմահութիւն:*

*Եւ թէպէտ և ամենայն բարեաց տեսակօք և առաքինութեամբ կատարեալք իցէք, սակայն զեկեղեցւոյ պայծառութենէ և զսրբոյ պատարագին պատուական և մաքուր զգեստուց մի անփոյթ առնէք, որպէս լսեմք զոմանց՝ եթէ հասարակաց զգեստուք և աղտեղեալ արեխօք ելանեն ի բեմն սուրբ, և զսարսափելի խորհուրդն անխորհրդական զգեստուք կատարեն, և զայն ի պարկեշտութիւն անձանց համարեն, հանելով զժողովուրդն արտաքոյ եկեղեցւոյն և զդուռն ընդդէմ ձգելով. և ոչ միայն, այլ և անմտաբար 'ի բամբասանս բերին. ոմանց եկեղեցեաց և ի մերս բարեզարդ կարգաւորութիւն:*

*Ոչ ունիլ քահանայից յաստուծոյ և ի մէնջ հրաման առանց սուրբ ծածկութի պատարագամատուցին զգինւոյ մատուցանել զսուրբ պատարագն, կամ աւետարան կարդալ, կամ խաչ առնուլ ի ձեռս, կամ յայլ ինչ ի սրբութիւնսն մերձենալ, և այսոքիկ՝ զորս գրեցաք սակաւուք և որ նման սոցին, արտաքին մարդոյս զգուշութիւն, որոց հանդերձեալ են սպասաւորել աստուածայնոցն։*

14\. *Եւ մի լիցի որպէս լուաք զոմանց աներկիւղ քահանայից, որ ի քաղաքս բնակին, եթէ յառաւօտէ մինչև ցժամ պատարագին ի վաճառափողոցս քաղաքին շրջին տուր և առութիւն վաճառաց յոր բազում նետք հարկանեն յոգիսն ընդ մուտս զգայարանացն ի տեսանել և ի լսել, 'ի խօսել և ի գործել զանպատշաճսն, և անտի դարձեալք մտանել յանդրգնին յեկեղեցիս, և յայլոց քահանայից կազմեալ նշխարաւ առանց սաղմոսաց և աղօթից մատուցանեն զպատարագն։ Որոց պատուիրեմք՝ յայսմ հետէ ի բաց կալ յայդպիսի աներկիւղ և չար սովորութեանց, և նախ սրբել զմիտսն գիշերոյն և տունջեանն աղօթիւք, որպէս վերագոյնն գրեցաք, և ապա մտանել յեկեղեցի սուրբ, և յանդիման լինել աստուծոյ սրբբով պատարագաւն։*

15\. *Մի ոք ի քահանայից առանց գիտելոյ զխոստովանութիւն մարդոյ զհաւատոյն և զգործոցն՝ կամ իւր ինքեան կամ այլում քահանայի, տացէ նմա զհաղորդութիւն մարմնոյ և արեանն քրիստոսի՝ ի յառողջութեան կամ ի հիւանդութեան, և կամ գիտելով զանարժանութիւն ուրուք տայ յաղագս մարդահաճութեան զաստուածային խորհուրդն, ծածկելով այնու զկարծիս չարութեան՝ որ զնմանէ, զի այնպիսին է՝ որ տայ զսրբութիւն շանց, և առաջի արկանէ զմարգարիտն խոզաց։*

16\. *Մի ոք ի քահանայից պատարագողաց ոխակալութիւն ունելով ի սրտին ընդ ումեք՝ մատիցէ յաստուածային խորհրդոյն կատարումն, և անընդունելի առնիցէ զպատարագն առաջի աստուծոյ, այլ նախ հաշտեսցի ընդ եղբօրն՝ ըստ հրամանին քրիստոսի, և ապա եկեալ մատուցէ զպատարագն։*

17. Իսկ եթէ քահանայն ընդ բանիւ արարեալ զոք ի ժողովրդականացն վասն պատուիրանազանց լինելոյ յօրէնս աստուծոյ, և նա հպարտացեալ ոչ գայ յուղղութիւն, և ոչ խնդրէ թողութիւն ի քահանայէ անտի, քահանայն առանց խղճի մտաց մատուսցէ զսուրբ պատարագն, և ընդ դատապարտութեամբ է այն՝ որ ոչ ուղղեցաւ, և ոչ խնդրեաց զթողութիւն, քանզի քրիստոս ոչ վայրապար հրամայէ առնել թողութիւն տրտմեցուցանողին, այլ եթէ անկեալ առաջի խոստանայ ապաշխարել, յայնժամ asէ, շնորհեսցի առ ի քէն թողութիւն յանցանացն՝ զոր առ քեզն յանցեաւ: Իսկ եթէ մեղուցեալն առաջի անկեալ քահանային և խոստանայ գալ յուղղութիւն, և քահանայն յաղագս մարմնական ինչ պատճառի ոխակալ լինելով ո՛չ առնիցէ թողութիւն, չէ պարտ նախ քան զհաշտելն մատուցանել պատարագ:

18. Նաև առ քահանայս բազում պատճառս յօդէ սատանայ՝ խռովելոյ ընդ միմեանս և վիճաբանելոյ, և յոխակալութեան և ի նախանձու ախտս տանջելով զոգին զամենայն ժամանակս, որ և առ տգետս և վայրենաբարոյս առաւել զօրանայ. է որ վասն յափշտակելոյ 'ի ժողովրդենէ միմեանց ագահութեան ախտիւ, և է որ յաղագս հարստահարելոյ զընկերն փառասիրութեան ադագաւ, և այլ ևս յոլովագոյն ատելութեան պատճառաց լուծանի ի նոցանէ սիրոյն պատուիրան, և քրիստոսի աշակերտութեան նշան, առ որս ասաց թէ՝ յայսմ ծանիցէ աշխարհ զձեզ, եթէ իմ աշակերտք էք, եթէ սիրիցէք զմիմեանս:

Եւ արդ աղաչեմ զամենեսեան. զձեզ՝ դժուարաշարժս լինել ի վիճաբանութիւնս և ի կռիւս, և դիւրաշարժս ի հաշտութիւն և ի խաղաղութիւն: Եւ մի ոք՝ որ զօրաւորն է ի մարմնական յառաջադիմութիւնս, ջանայ զրկել զընկերն և անիրաւել, զի մի զայն՝ որ առնէ իրաւունս զրկելոց զաստուած, դատաւոր և դատախազ իւր կացուցանէ, և զոր ի յանցաւոր կեանս զրկեաց, 'ի յանցանացն վաշխիւ հատուցանէ:

19. Մի ոք ի ձէնջ սիրեսցէ զկուրութիւն տգիտութեան քահանայական ուսմանց յաղագս ծուլութեան կամ

աշխարհական զբաղմանց, այլ թէև ոչ ամենեցուն ամենայն շնորհօք կատարեալ լինել հնար է, զոր և աստուածային օրէնքն պահանջեն ի քահանայից, սակայն ի հարկաւորսն պարտին անթերի լինել, այսինքն զեկեղեցական գիրս ուղիղ ընթեռնուլ, և զմանր ուսմունս ձայնաւորացն պաշտել յեկեղեցիս, և ապա գալ ի ձեռնադրութիւն քահանայութեան։

Բայց լսեմք զոմանց սուտ քահանայից, զի ոչ միայն յայլ ուսմանէ են տգետք յաղագս հեղգութեան, մանաւանդ թէ՛ վասն անհաւատութեան, այլ և զսաղմոսն Դաւթի ո՛չ գիտեն բովանդակ, առանց որոյ զնոսին զհարիւր և յիսուն փոխսն խօսել բերանով ընդ աստուծոյ՝ ոչ մատչի պատարագ ըստ աւանդութեան կանոնի հարցն սրբոց։ Ոմանք և ոչ զբանս աղօթից սրբոյ պատարագին գիտեն ի բերան, և սուտ պատարագաւն խաբել կարծեն զանխաբելին աստուած և զմարդիկ և զհոգիս ննջեցելոյն առ աչս մարդկան կեղծաւորելով, որոց դատաստանն առաւել է քան զամենայն մեղաց առաջի աստուծոյ, որք և ոչ իսկ են արժանի այլ ևս մատուցանելոյ պատարագ, թէև յետ յանդիմանելոյն առնուցուն ի բերան։ Այլ թէ կամիցին զոգիս իւրեանց փրկել ի դատապարտութենէ մեծաւ ապաշխարութեամբ թէ արդեօք քաւեսցին յառ աստուած մեղանացն։

20. Մի ոք ի քահանայից վայրապար և առանց մեծի զգուշութեան կատարեսցէ զսուրբ մկրտութիւն, իբրև զաշխարհական ինչ գործ համարելով, և մի ընդ աստուածային բանիցն բանս ծիծաղականս և կատակերգութիւնս խառնեսցէ, որպէս լսեմք զոմանց տգիտաց և աներկիւղից՝ զի առնեն։

21. Եւ մի ոք ի քահանայից յետ հաց ուտելոյ իշխեսցէ առնել մկրտութիւն առողջից մանկանց, բայց թէ յերկիւղէ մահու, այլ նախ կատարեսցէ զմկրտութեան գործ, և ապա մատուսցէ զպատարագն սուրբ՝ յորմէ և զմկրտեալն հաղորդեցուսցէ։

22. Եւ մի յանհաւատից արանց կամ կանանց՝ որք ոչ են երկրպագուք քրիստոսի, առցէ ոք կնքահայր մանկանց մկրտելոց, զի զոր ինքեանք՝ ոչ ունին այլում զի՞արդ կարեն

տալ զխոստովանութիւնն՝ որ ի սուրբ երրորդութիւնն, յորժամ պահանջէ քահանայն՝ 'ի դէմս մկրտելոյն զդաւանութիւն հաւատոյն։

23. Եւ մի ոք ի ձէնջ ըստ հարկի պահանջեսցէ գինս արծաթոյ անգին շնորհին վասն մկրտութեանն, կամ մահու հաղորդ տալոյ, այլ որ ունին, և տան սիրով որպէս զնուէր եկեղեցւոյ՝ առէք, և որ աղքատ լինին՝ մի բռնադատէք։

24. Ասեմք և յաղագս զծնունդս այլազգեացն մկրտելոյ՝ որ սովորութեամբ բերի ի հին ժամանակաց։ Բայց զայս միայն վասն սորին իրի պատուէր տամք քահանայից, մի վասն ագահութեան ախտի յորդորել զնոսին, և կամ յօժարութեամբ ընդունել, այլ դժուարաւ և ի հարկէ բերել յայնպիսի իրս։ Զի թէ հաստատուն մնալոց էին ի հաւատս՝ բարի էր յորդորումն և յօժարութիւն ձեր, բայց զի ապրեալքն ըստ մարմնոյ՝ անդրէն ընդ ջուրսն են անցանելոյ, և ի լուսակիզն յօդեաց 'ի սևութիւն այծից փոփոխելոց՝ ըստ սրբոյ Լուսաւորչին մերոյ տեսլեան, նորին աղագաւ անօգուտ է ջանն՝ որ վասն նոցին, զի շահն սակաւ է, և վնասըն յոլով։

25. Մի ոք ի ձէնջ գաղտ պսակ դիցէ ումեք. այլ եթէ ծնօղս ունիցի և միաբան իցէ և ոչ բաժանեալ, գիտութեամբ և կամաւ նոցին եղիցի։ Իսկ եթէ ոչ ընդ ծնողօք՝ հասարակաց տեսութեամբ յայտնի դիցի պսակն, զի վկայեսցէ յամենեցունց, թէ ուղիղ է, և ոչ ընդդէմ օրինացն աստուծոյ, որով և երգոցն ձայնք և նուագարանացն զնոյն նշանակեն, իբրև թէ վկայս պսակելոցն զամենեցունց լսելիս և զտեսանելիս կացուցանելով, իսկ գաղտնին՝ անվկայ է և անհաստատ և ոչ ընդ օրինօք, յորմէ պատուէր տամք ի բաց հրաժարիլ և ոչ յանդգնիլ յայսպիսի իրս վասն ագահութեան։

26. Մի և կնաթողաց արանց կամ այրաթողաց կանանց առանց կանոնական հրամանին դիցէ ոք պսակ, զի մի լուծջիք դուք ի քահանայական կարգէ ըստ կանոնաց, և եդեալ պսակն քակտեսցի, և եթէ բռնանան և ոչ բաժանին՝ ընդ պոռնիկս համարեալ լիցին։

27. Մի և այնոցիկ՝ որք առևանգս առնեն, դնիցէ պսակս զի հակառակ օրինաց աստուծոյ է և բիւրք չարեաց պատճառք ի սատանայէ շարժեալք ի մոլեկան ախտսն, և բազումք այն իսկ են՝ որ յետ 'նուա պսակին, յորժամ յագին դիւական տոփմամբն, մեծաւ ատելութեամբ բաժանին ի միմեանց, և պսակադիրքն այսպիսեացս կցորդ չարեաց նոցին լինիցին։

28. Մի և տղայոց անմեղաց՝ յաղագս ագահութեան հայրենի ժառանգութեան, կամ վասն այլ ինչ պատճառի, պսակ դիցէ ոք ի քահանայից, զի բազում վնասք լինին յայնցանէ և պատճառս բաժանման յետոյ ի միմեանց։ Այլ ժամանակ պսակի է ի զարգանալ արութեան հասակին ի հնգետասանին ամաց լրումն՝ առնն, և յերկոտասանին կամ ևս առաւել՝ կնոջն, որպէս զի կարող լինիցին ըստ բանաւորայ՝ հաճութեամբ զուգել ընդ միմեանս առ ի հաստատուն լինելոյ զուգութեան, և մի ըստ անբանից՝ առանց կամաց և յօժարութեան անհաստատ գոլով և առ ժամայն պատահումն։ Եւ այրն աւագագոյն պարտի լինել ըստ ժամանակի՝ քան զկինն, որպէս զադամ նախ ստեղծեալ աստուծոյ և ապա զԵւայ։

29. Մի ոք ի քահանայից ի բռնութենէ բռնաւորաց առանց առնն և կնոջն՝ պսակ դիցէ որպէս լսեմք ի կողմանս Հայաստանեայց լինիլ՝ որ ընդ իշխանութեամբ այլազգեաց են։ Զի պսակն այն՝ անհաստատ է և լուծանելի, և պսակադիրքն ոչ առանց պատժոց, թէև ակամայ է գործն, և կաշառատուքն բռնաւորաց վասն ջատագով լինելոյ նոցին յանիրաւ գործն յայն՝ առաւել դատապարտութեան և անիծից են արժանի, զի զօրէնս աստուծոյ և զդատաստանս եկեղեցւոյ լուծանել փութան բռնութեամբ աւագաց։ Վասնորոյ առանց խղճոյ է լուծումն այնպիսւոյ պսակին. քանզի չէ ըստ հրամանին աստուծոյ այլ ի մարդկային բռնութենէ։

30. Մի ոք համազգեաց՝ որոց արեան մերձաւորութիւն իցէ, պսակ օրհնութեան դիցէ, այլ մինչև ի յերկուց կողմանցն զչորրորդ ազգին գլխաւորութիւն կատարեալ ունիցին։

Եւ թէ զի՞նչ պատճառաւ զչորեաք թիւն կանոնադրեցին Հարքն սուրբք սահման ամուսնութեան՝ ծանուսցուք, զի գիտիցէք։

Քանզի ընութիւն մարմնոյ ի չորից տարերաց գոլով՝ յիրաւի և մարմնական ազգակցութիւն մինչև ի չորրորդ թիւն ժամանէ, որ է այսպէս, 'ի միոյ Հօրէ երկուց եղբարց բաժանեալ՝ Հաւասար ունին յինքեանս զՀօրն գոյացութիւնս, իսկ առ ի նոցանէ ծնունդքն՝ զկէս արեան եղբայրութեանն, և երրորդ ծնունդն՝ որ յեղբարցն որդւոց, զկիսոյն կէս արեանն միայն, իսկ չորրորդ ծնունդն՝ որ ի սոցանէ, զչորեակ մասն արեանն մնացելոյ։ Եւ այս է սահման և կէտ արեան մերձաւորութեան։

31. Եւ արդ՝ որ այսպիսի ընտրութեամբ ըստ օրինացն աստուծոյ լինիցի պսակն, որպէս և գրեցաք, մի յայլում ժամու դիցէ զայն քաՀանայն, բայց յառաւօտէ աւուրն մինչ ցժամ ճաշոյն. և կերեալ և արբեալ զոք մի թողուցուք յեկեղեցին և մի յանատակ կանանց կամ յարանց՝ որ յայլում ժամու չեն արժանի եկեղեցւոյ, զի մի պղծեսցի նոքօք տաճարն աստուծոյ, և աղտեղասցի պսակն օրՀնութեան։ Եւ ի ժամ կատարելոյ զսուրբ պսակն՝ երգ գուսանացն լռեալ դադարեսցին մինչև ելցեն յեկեղեցւոյն, զի մի դիւական երգն խառնեսցի ընդ աստուածային երգոցն։

Եւ ի բուն բարեկենդանի օրէ սկսեալ մինչև ցկատարումն պաՀոց շաբաթուն՝ որ յետ պենտէկոստէին է, մի ոք ի քաՀանայից տգիտութեամբ պսակ դիցէ ումեք, և ոչ յամենայն կիւրակէս տարւոյն՝ որպէս Հաստատեցին կանոնաւսուրբ Հարքն առաջինք։ Քանզի պաՀոց քառասնորդացն աւուրք՝ սգոյ և տրտմութեան է և խորՀուրդ չարչարանաց տեառն և ո՛չ գինարբութեան և ուրախութեան Հարսանեաց. իսկ յինունքն և կիւրակէքն ունին զօրինակ երկնաւոր փեսային քրիստոսի Հարսանեաց և Հարսին եկեղեցւոյ՝ որ լինելոց է 'ի Հանդերձեալ աշխարՀին։

32. Մի ոք ի քաՀանայից զսատանայական յանցանս յինքեան ցուցցէ, այն որ Հակառակ եկաց աստուծոյ և կործա-

նեցաւ, և ընդդիմակաց լինիցի եպիսկոպոսին իւրոյ ի բանս կամ ի գործս, որպէս կորխ և դադան՝ մովսեսի և ահարովնի, զի մի զնոցին կործանումն ընկալցի յաստուծոյ, մանաւանդ այնոքիկ՝ որք յանդգնին հապալս յարուցանել 'ի վերայ եկեղեցւոյ, կամ աճեցուցանել զյառաջագունից եղեալսն. և այսու պատճառաւ արտաքսեն զեպիսկոպոսունս յաթոռոց բռնութեամբ այլազգեաց, և ինքեանք լինին հրամանատարք ժողովրդոց և կապալատուք փոխանակ նոցա, որք անձամբ զանձինս 'ի ներքոյ առնեն աններելի դատաստանացն աստուծոյ և անիծից դատապարտութեան, այնպիսիքն ոչ են արժանի ի կեանս իւրեանց քահանայագործութիւն առնելոյ և ոչ ի մահուն՝ հաղորդի կամ քահանայական թաղման։

33. Դարձեալ՝ մի ոք ի քահանայից կամ ի ժողովրդոց զեկեղեցւոյ դատաստան առ մարմնական իշխանս դատեսցի, կամ առ այլազգիս կամ առ քրիստոնեայս, զի մի դատապարտեսցի յառաքելական և ի կանոնական հրամանացն, որպէս և գրէ Պօղոս՝ առ կորնթացիսն, թէ իշխէ ոք ի ձէնջ՝ եթէ իրք ինչ իցեն ընդ ընկերի իւրում դատել առաջի անիրաւաց և ոչ առաջի սրբոց. և հարքն սուրբք ի կանոնս իւրեանց լուծանել հրամայեն ի քահանայութենէ՝ որ զայս առնէ։

34. Դարձեալ մի ոք ի քահանայից հոգաբարձու քաղաքի կամ գեղջ լինիցի, կամ գաւառապետ՝ աշխարհական իշխանաց, կամ գրող հարկաց կամ սակից, կամ յայլ ինչ գործակալութիւն աշխարհի լինելով։ Քանզի անկարելի է ըստ տէրունական հրամանին՝ երկուց հակառակ տէրանց ծառայել և հաճոյանալ, տան աստուծոյ որ է եկեղեցի աստուծոյ կենդանւոյ, և տան աշխարհակալաց։ Վասնորոյ ընտրեսցէ այնպիսին ի միոյն 'ի բաց կալ, կամ ի յաշխարհական հոգաբարձութենէն կամ ի քահանայական գործոյն. իսկ եթէ ընդ աշխարհական հոգոցն յանդգնի և զքահանայական պատիւն ունել և զտեսութիւն ժողովրդոց, բռնութեամբ է այն և ոչ հրամանաւն աստուծոյ և մեր, որ և դատելոց է այնպիսին ընդ կրկին յանդգնութեանն։

35. Լսեմք զոմանց քահանայից ձիավարժս լինել և զէնս

առնուլ. ըստ զինուորաց, և ի խրախճանութիւնս խաղուց ձիընթացից ընդ նոսին արշաւել երիվարօք և ի յորս երէոց և ի նետաձգութիւնս և յամենայն ինչ յասպիսիս, որ նոցայն գործոյ է անկ և ոչ եկեղեցւոյ սպասաւորաց զի զէն զինուորութեան մերոյ ոչ է մարմնաւոր, որպէս հրամայէ առաքեալն, այլ հոգևոր և աստուածային, որովք պատերազմիմք ոչ ընդ մարմնոյ և ընդ արեան, այլ ընդ իշխանութիւնս և ընդ պետութիւնս ընդ այսս չարութեան՝ որ ի ներքոյ երկնից:

Վասնորոյ՝ աղաչեմք ի բաց լինել յայսմհետէ ի յանկարգ սովորութենէ աստի, և բայց թէ ի ճանապարհի, եթէ ի յետիոտս և թէ երիվարաւ՝ առնուլ զէնս յաղագս երկիւղի ինչ եղելոյ կարծեաց, և այն՝ պարկեշտութեամբ և ոչ ըստ զինուորութեան կարգի կապարճիւք և կամ կազմեալ սուսերաւ: Այլ ոչ ևս է արժան առնուլ զէնս կարգաւորաց, կամ արշաւանս առնել երիվարօք ըստ մանկական բարոյից՝ ի բամբասանաց պատճառս տեսողաց:

36. Քահանայ՝ եթէ զոք ի ժողովրդենէ իւրմէ վասն պատուիրանազանց լինելոյ ընդ բանիւ առնիցէ, և նորա յամառեալ մնայ ի յանցանսն և ոչ դառնայ, այլ ոք ի քահանայից մի իշխեսցէ ընդունել զնա յեկեղեցի իւր, որպէս սովոր են ոմանք ի տգէտ քահանայից յինքեանս ձգել զայնպիսիսն, և որ զայս առնէ, նա տայ նմա ի մեղաց անտի անդարձ լինել, և զանձն իւր կցորդ պատուհասի յանցանաց նորա առնիցէ:

Այլ վասն այսպիսի իրաց եղելոց այս օրէնք հաստատեսցի 'ի միջի ձերում, զի զորոշեալն ի միոյ քահանայէ, և ամենայն քահանայակիցք նորին նմանապէս ի բաց որոշեսցեն յինքեանց, մինչև զղջացեալ յանցաւորն դարձցի 'ի յանուղղայ գնացից իւրոց, և առաջի անկեալ խնդրեսցէ զթողութիւն, և ուխտ դիցէ աստուծոյ՝ ապաշխարել, և այլ ո՛չ ևս ի նոյն սովորութիւն չարեաց անկանիլ:

Եւ յորժամ յիւրոյ քահանայէն այսպիսի օրինակաւ ընկալցի զթողութիւն, յայնժամ և այլ քահանայքն ընկալցեն զնա սիրովն աստուծոյ:

37. Այս օրէնք ուղղութեան և ի մէջ եպիսկոպոսաց

հաստատեսցի, որպէս զի զառ միոյ եպիսկոպոսէն քանադրեալն ի քահանայից կամ յաշխարհականաց, այլ ոք յեպիսկոպոսաց ոչ ունի իշխանութիւն լուծանելոյ, բայց ի քանադրողէ անտի։

38. Աւանդեմք և զայս ևս պատուիրան ամուրեաց քահանայիցդ՝ որ ըստ աշխարհի, զի որում ի մանկական հասակին հասանէ վախճան ամուսնոյն, թէ կամեսցի զոգի իւր ապրեցուցանել ի մեղաց և ի բամբասանաց և սուրբ խորհրդոյն արժանաւորապէս սպասաւորել, հրաժարեալ յաշխարհէ՝ ըստ կանոնական հրամանին ի կարգ կրօնաւորութեան մտցէ, զի ի մէջ աշխարհի սովորական ընտելութեամբ լինելով ի տեսութիւնս և ի խօսակցութիւնս ընդ կանայս, մանաւանդ՝ խոստովանութեան նոցին լինել ընդունող ըստ օրինի քահանայութեան, անհնար է սրբութեամբ ծառայել աստուծոյ, ապա թէ ընդ անձուկ ճանապարհն գնալ դժուարանայ՝ զլայնն և զարձակն սիրելով, լաւ արժան է նմա ի սրբոյ պատարագին սպասաւորութենէ, թէև ի յայտնի վատութիւնս ոչ բամբասի։ Քանզի ոչ կարէ յերիտասարդական հասակին մաքրապէս սպասաւորել սրբութեանցն, մանաւանդ՝ որ ոչ երկիւղածութեամբ և պարկեշտութեամբ և պահօք և աղօթիւք զգուշանայ անձին իւրում, այլ աներկիւղութեամբ վարի ի կերակուրս և յըմպելիս և յամենայն տեսակս ընդարձակ վարուց։

Իսկ որոյ մերձ ի ծերութիւն հասանէ վախճան ամուսնոյն, և վստահ լինի յանձն իւր սրբութեամբ և անարատ վարուք և առանց բամբասանաց սպասաւորել աստուծոյ, որպէս զի գովութիւնս ընկալցի ի տեսողաց և մի բամբասանս, այնպիսին կացցէ յեկեղեցւոջ իւրում որքան ախորժէ։ Եւ արդ՝ քահանայիցդ առ ի խրատ՝ զոր գրեցաք սակաւուք, ոչ իշխանաբար հրաման տալով, այլ ծառայակցապէս աղաչելով, բաւական լիցի առ ի մէնջ, իսկ զպակասեալն ի մերոցս՝ ունիք հմտանալ կատարելապէս ի հարցն առաջնոց կանոնական գրոց՝ որովք օրինադրեցին զմանկունսն եկեղեցւոյ ՚ի փառս աստուծոյ։

ՀԱՅՈՑ ԵԿԵՂ. ԱՂԲԻՒՐՆԵՐ.

# ՆԵՐՍԷՍ Ե.

## ԿԱԹՈՒՂԻԿՈՍԱԿԱՆ ԿԱՐԳԱԴՐՈՒԹԻՒՆՆԵՐ.

# ՆԵՐՍԷՍ Ե.

Այս դարուս առաջնակարգ կաթուղիկոսներից մէկն է Ներսէս Ե. Աշտարակեցի։ Նա կաթուղիկոսութիւն է արել 1843 թուից մինչև 1857-ը, կարգաւորելով եկեղեցական եկամուտները, կանոնաւորելով բոլոր ատեանների գործավարութիւնը, նա խստութեամբ պահանջել է թեմակալ առաջնորդներից մանրամասն հաշիւ թեմական, վանքական կալուածների, եկամուտների և զանազան արդիւնքների, շատ տեղ նշանակելով աշխարհական կառավարիչներ և գործավարներ առաջնորդների և փոխանորդների տեղը։

Կոնսիստորիաներին և զանազան անձանց կոնդակներով և զանազան կարգադրութիւններով արել է շատ բարեփոխութիւններ, մշակել է երէցփոխանների, գործակալների, աւագ քահանաների համար կանոններ, որոնք ուղարկելով պաշտօնական անձանց հրամայել է կատարել։ Ահա այս կանոններից մօտ 96 հատ դնում ենք այստեղ, որքան կարողացանք գտնել նրա թղթերում, թէև վստահանում ենք ասել որ շատ կանոններ մնացին առանց արձանագրելու, որովհետև նրա թղթերը ամբողջութեամբ չկարողացանք գտնել ոչ Սինոդի դիւանատան և ոչ վեհարանում։

## ՆԵՐՍԷՍ Ե-Ի ԿԱՆՈՆՆԵՐԸ. (1843—1857).

*(Աւագ քահանաներին, Տփխիսի Ղազար քահանայ Տէր-Ղազարեանի անունով):*

1. Եկեղեցում ունենալ երկու ձեռք մետրիքական մատեան, և վերահասու լինել, որ իւրաքանչիւր քահանայ ամեն օր առանց զանցառութեան խորհրդակատարութիւններից յետոյ գրի այն

մատեաններում ծնուած, մկրտուած, պսակուած և մեռած անձանց, և մի օրինակը իւրաքանչիւր տարուայ լրման ուղարկել կոնսիստորիան և միւս օրինակը մշտապէս պահել եկեղեցում:

2. Որ մկրտութիւնից, պսակից, ննջեցեալների պատարագից գոյացած յօգուտ եկեղեցու լուսագինները ամբողջութեամբ յանձնուին եկեղեցու երէցփոխանին:

3. Իւրաքանչիւր շաբթուայ լրման վերահասու լինել երէցփոխանի տոմարագրութեան, եթէ անուղղութիւն կամ սխալանք գտնուի՝ ուղղել և հաշուեմատեանում ստորագրել և եթէ երէցփոխանը անգրագէտ լինի, քահանաներից կամ դպիրներից մէկը պարտաւոր լինեն գրելու երէցփոխանի հաշուեմատեանում բոլոր ելքը ու մուտքը:

4. Իւրաքանչիւր վեց ամսուայ լրման վերահասու լինել երէցփոխանի մոմավաճառութեան, թէ երէցփոխանը մոմավաճառութեան աւագ պահարանից ո՞րքան մոմ է գնել, ո՞րքան վաճառել և ո՞րքան է մնացել:

## Տես պօլօժենիա.

5. Ունենալ մատեան եկեղեցական անօթների և զարդերի համար. աւագ քահանան վերահասու լինի եկեղեցական անօթների, զարդերի, արծաթեղէնների, ոսկեղէնների և թանգագին ու արժանագին հանդերձեղէնների ամբողջութեան և մաքրութեան, որովհետև սրբութիւնը Աստուծոյ տան մաքրութիւն է պահանջում:

6. Եկեղեցու սպասները և հանդերձեղէնները կոտրած, պատառուած, կամ աղտեղուած չլինին:

7. Ուշադրութիւն դարձնել, որ քահանաները և միւս պաշտօնեաները լինին զգաստ և եկեղեցուն հաւատարիմ, անհոգների վերաբերմամբ զանցառութիւն չանել, այլ պահանջել որ կատարեն իրանց պարտքը:

8. Անվայել գործերում գտնուող պաշտօնեաներին երեք անգամ խրատով զգուշացնել, յամառութեան դէպքում յայտնել կոնսիստորիային, իսկ սա՝ Սինօդին:

9. Քարոզել և յորդորել ժողովրդին, որ ժամերգութեան ժամանակ երկիւղածութեամբ կանգնեն, չխօսին և չծիծաղեն և Աստուծուն չբարկացնեն:

10. Բոլոր կիւրակէ օրերին, երեկէ տօներին և մեծ պասին քարոզը չպակասեցնել եկեղեցիներում:

Կատարեցէք այս բոլորը ճշտութեամբ, պատասխան պիտի տաք Աստուծուն և հոգևոր կառավարութեան:

## (Տփխսի եկեղեցիները):

11. Քահանայք պիտի զգուշանան, որ եկեղեցիներում անվայելչութիւն և ագեղութիւն ամենևին չլինի:

12. Քահանաները և դպիրները չհամարձակեն առանց մաքուր ոտնապանի (չուլկի) սեղան բարձրանալ, բարձրացողը պիտի լինի մաքուր ոտնապանով և հողաթափով:

13. Վերաբերութիւն անող քահանան ունենայ փորուրար և շուրջառ և ոչ շապիկ և ուրար, անվայել է նրան դպրի զգեստով երևալ:

14. Քահանաների փիլոնը և լօդիկը, նոյնպէս և դպիրներինը լինին առանց կարկատանի, գլուխները սանրած և նրանց ձեռներն ու երեսը լուացած:

15. Բոլոր քահանաները, բացի ծանր հիւանդութեան դէպքից միշտ պիտի եկեղեցում դանուին ժամերգութեան սկզբից մինչև վերջը, չպիտի ել ու դուրս անեն, կամ խորանում նստեն:

16. Մկրտութիւնը, պսակը, թաղումը և մնացած եկեղեցական պաշտամունքները քահանաները չհամարձակեն կատարել առանց խաչի, աւետարանի, բուրվառի, մոմերի, եկեղեցական զգեստների և առանց սարկաւագի կամ դպրի:

17. Քահանայք յորդորեն, որ ժողովրդականները մկրտութիւնը կատարեն մինչև ութերորդ օրը ծնուելուց յետոյ և միշտ եկեղեցում, բացի ծանր հիւանդութեան դէպքից:

18. Քահանաները չհամարձակուին որև է օրինակատարութեան, մկրտութեան, պսակի, կամ թաղման համար նուէր կամ վարձ պահանջել եկեղեցում, այլ դրսում քաղցր և յորդոր խօսքերով առանց բռնադատութեան, ընդունեն կամաւոր նուէրները և շնորհակալութեամբ օրհնեն նուիրատուներին:

19. Թոյլ չտալ թէ եկեղեցականներին թէ ժողովրդականներին դտակը գլխին եկեղեցում կանգնել, խօսել, կռուել կամ անպատկառ կերպով ս. սեղանում նստել:

20. Արթուն լինիք որ ձեր ժողովրդականները գոնէ տարին մի անգամ խոստովանուին և հաղորդուին, առանձին խրատել կանանց որ չպարեալ երեսով չգան եկեղեցի, հաղորդութեան օրը փոխանակ արտասուքով լուանալու երեսը, դեղում են:

21. Քահանաները չհամարձակուեն ս. մասնատուփը իրանց տանը պահել, այլ միշտ եկեղեցում. պատարագիչը ամեն անգամ նորոգի սրբութիւնը հիւանդների համար, և հարկաւորութեան ժամանակ, թէ գիշեր լինի՝ թէ ցերեկ քահանան մտնի եկեղեցին, երկիւղածութեամբ տանի հաղորդութիւնը հիւանդին և էլի յետ բերի և դնի սեղանի վրայ:

22. Քահանաներից ոչ ոք առանց կաթուղիկոսի և առաջնորդի չհամարձակի թասակ, և կերպասեայ, ծաղկաւոր կամ անծաղիկ փիլոն կրել: Բոլոր թասակաւոր քահանաները աւետարանը կարդալուս եկեղեցում կամ դրսում, գլուխները բանան ի պատիւ աւետարանի:

## Տէր Գէորգ Դ-ի եւ Մկրտիչ I-ի կանոնները.

23. Քահանան առանց ծանր հարկի չթափառի վաճառատեղերում, շուկայում, փողոցներում և կամ դատաստանատան դռներում:

24. Քահանաներին արգելուած է առանց վիճակաւորի գիտութեան ննջեցեալի վրայ քարոզ կամ ծանուցումն անել:

25. Քահանաները հիւսեալ մազերով, ցուպը ձեռին, կամ փիլոնով դրսում թէ եկեղեցում եկեղեցական պաշտօն չկատարեն, միմեանց բերանից չխլեն երգելիքները:

26. Քահանաները և դպիրները հնազանդ լինին աւագ քահանային, մկրտութիւն, պսակ, թաղում պատահելիս աւագ քահանային իմացնեն, որը լուսագինը առնելով կյանձնի երէցփոխանին և նուիրողի անունը և նուէրի որքանութիւնը կգրի իւր առանձին տումարում:

27. Բոլոր քահանաները և ժողովուրդը օրհնութիւն տալիս և ստանալիս բաց գլխով լինին, որովհետև օրհնութիւն տալիս է քահանան յանուն Քրիստոսի, ստացողը առնում է Քրիստոսի փոխանորդից. բայց կանանցից, որոնք ծածկած գլխով են:

28. Ուրիշ եկեղեցուց քահանային հրաւիրելիս թաղման և այլ պաշտամունքների համար, նա պիտի փիլոնով և շուրջառով գնայ և իւր տեղը կանգնի և ոչ առանց փիլոնի գայ և ժողովրդի մէջ կանգնի:

29. Ուշադրութիւն դարձնեն, որ երգեցողութիւնը եկեղեցում լինի պարզ, մաքուր, հասկանալի. ժամերգութիւնը յստակ և դիւրալի, և ամենայն երկիւղածութեամբ ու պատկառանքով:

## (Ղարաբաղի կոնսիստորիայի):

30. Պատուիրել բոլոր քահանաներին, որ պատարագի ժամանակ Նարեկի աղօթքը կարդան «ի յարկի սրբութիւն»-ից յետոյ, ինչպէս խորհրդատետրումն է:

31. Նուիրանաց հացը սպիտակ ալիւրից լինի, եփած և ջերմ:

32. Հացը բեկանել միայն «Լրումն հոգւոյն սրբոյ» ասելիս:

33. Վերաբերողից սկիհը առնելիս երկու վարկեան պահել հանդէպ ժողովրդեան:

34. «'Ի սուրբ, 'ի սուրբ» ասելիս չխաչակնքել, որովհետև խօսքի միտքը չեն թելադրում խաչակնքել ժողովրդի վրայ:

35. Պատուէր լինին քահանաներին, որ եղունգները կտրած, ձեռքերը լուացած պատարագ մատուցանեն:

36. Քահանայք բերան իմանան աղօթքները:

37. Պատարագից յետոյ ասեն «որ օրհնես զայնոսիկ» աղօթքը, ապա ցած իջնեն և աւետարանը կարդան:

38. Խստիւ արգելում ենք պատարագից յետոյ տները շըրջել՝ նշխարներ բաժանելու ագահութիւնից դրդուած:

39. Արգելւում է քահանային հինգ նշխարքից աւելի չգործել և ժամատիրոջ միայն մի նշխար տալ:

40. Պատուիրել բոլոր քահանաներին անխափան խաղաղական աղօթքները ասել երեկոյեան ժամերգութեան կից՝ բացի մեծ պասի, յինանց կիրակամտից և կիւրակի օրերից և տէրունական տօներից:

41. Մանատուփը և մեռոնը սեղանի վրայ դնել և յարգել սրբութիւնը:

42. Խստիւ արգելել, որ քահանաները փայտ չգործածեն, այլ բթաւ դրոշմեն:

43. Սեղանի վրայ դնեն մի տէրունական պատկեր, մի աւետարան և մի խաչ:

44. Սովորեցնել քահանաներին որ «յանուն հօր», «և որդւոյ», «հոգւոյն սրբոյ» ասելիս երեք անգամ երախան ընկղմեն ջրի մէջ ինչպէս և մաշտոցումն է գրուած:

45. Քահանայք հացկերոյթներում և խնճոյքներում երկար չնստեն, չհարբին, երեք բաժակ խմելուց յետոյ վեր կենան և պատուով հեռանան, արբեցող քահանան զրկուի քահանայագործութիւնից մինչև որ կքաւի ապաշխարութեամբ մեղքը:

46. Քահանայք շատաշրջիկ չլինին առանց բանաւոր պատճառի:

47. Պատուիրում ենք քահանաներին, որ յորդորեն կանանց եկեղեցում չլալ և չճչալ, որովհետև սուգը հեթանոսաց գործ է. արգելում ենք նոյնպէս եկեղեցում «գանձ» ասել, որ տրամադրում է դէպի լացը:

48. Պատուիրում ենք քաղաքի բարեկարգութեան վերատեսուչներին գիւղական քահանաների քաղաք գալուս անցագիր պահանջել, չունեցած դէպքում կոնսիստորին ներկայացնել:

49. Մոլեբնի օրը բոլոր քահանաները շուրջառով և խաչով ժողովուին եկեղեցի, իրանց տեղերում կարգով կանգնեն և միասին կատարեն մաղթանքը երգելով իրանց պատկանած երգերը, իսկ դպիրները իրանցը:

## *Պարտաւորութիւն հերթակալի:*

50. Պատարագի հերթակալը պարտաւոր է մնալ եկեղեցու խցում, գիշերուայ և երեկոյեան զանգը խփելիս պիտի մտնի եկեղեցին և սաղմոսը սկսի մինչև ժամերգութեան սկսուելը:

51. Պատարագի օրը փողոցները, տները չշրջի պատարագիչը և ոչ էլ խնճոյք գնայ, մնայ խուցում և աղօթի, եթէ մէկը հոգևորական հացկերոյթ ունենայ, ժամարարի համար նաւակատեաց սեղան ուղարկի առանց գինու և մսի:

52. Հերթակալութիւնը այսպէս լինի. պատարագիչը չորեքշաբթի օրը գնայ եկեղեցու խուցը և մնայ այնտեղ մինչև հերթակալութեան աւարտումը և ապա գնայ տուն:

## *Պարտաւորութիւն աւագ քահանայի:*

53. Աւագ կամ ժամօրհնող քահանան եթէ տկար չէ կամ

օրինաւոր արգելք չունի հերթակալից յետոյ պիտի եկեղեցի գնայ և ժամը սկսի:

54. Աւագ կամ ժամօրհնող քահանան հսկի միւս քահանաների վրայ, որ նրանք առանց օրինաւոր պատճառի չուշանան եկեղեցուց:

55. Պարտաւորեցնում ենք աւագ և ժամօրհնող քահանաներին ամեն օր զննել մետրիքական մատեանները. հսկեն որ քահանաները հէնց նոյն օրը հոգևոր պիտոյքը կատարելուց յետոյ գրեն մատեաններում ծնուած և մկրտուածներին, պսակուածներին և ննջեցեալներին, գրութեան կարգը չիմացող քահանայի փոխարէն կարող է գրել ուրիշ քահանայ կամ դպիր:

56. Պարտաւորեցնում ենք աւագ և ժամօրհնող քահանաներին, որ օրինակատարութիւնների օրը գրեն երէցփոխների մատեաններում մկրտութեան, պսակների, ննջեցեալների պատարագների լուսագինները, եկեղեցու գանձանակը, մոմի արդիւնքը և ուրիշ նուիրագրամները, և քահանաների հետ միասին ամսէ ամիս ստուգեն այդ մատեանները մետրիկների հետ, և եթէ թաքնուած փող երևի, մէկին երկու առնեն և գրեն մատեանի մէջ:

57. Վերատեսուչները և աւագ ու ժամօրհնող քահանաները դիտեն և հսկեն ժառանգաւորների վարք ու բարքի վրայ, որ պարկեշտ լինին, եկեղեցի յաճախեն, եթէ միրուք է յանցանքի մէջ կամ ծուլութեան մէջ նկատուին, այնպիսիներին երեք անգամ խրատեն և չորրորդ անգամ յայտնեն կոնսիստորին և սա տեղեկանալով գործին առաջարկի Սինօդին հանելու նրանց հոգևորականների ցուցակից զրկելով բոլոր իրաւունքներից:

58. Կոչունքներում և հացկերոյթներում հոգևորականները չափաւոր ուտեն և խմեն, կռուող, արբեցող, ցոփաբան, խռովարար, չատաշրջիկ չլինին, ցոփաբան և արբեցող քահանան կարգալոյծ լինի:

59. Աւագ և միւս քահանաները ուշադրութիւն դարձնեն, որ լուսարարները մաքուր պահեն եկեղեցին, սեղանը, բեմը, խաչկալը, մոմակալը, և մնացած եկեղեցական անօթները և զգեստները:

60. Քահանայք յորդորեն, որ ժողովուրդը նորոգէ հանդերձեղէնները, որպէսզի ինքեանք կեղտոտ և պատառոտուած շորերով պատարագ չմատուցանեն:

61. Եկեղեցում լուռ ու պարկեշտ կանգնել, չխօսել, չտեղափոխուել, երկիւղածութեամբ ու պատկառանքով աղօթել:

62. Քահանաները իբրև հայր և ծնող ժողովրդեան, ամեն ժամանակ պարտական են հոգևոր խրատներ տալ ժողովրդին թէ եկեղեցում, թէ դրսում և թէ ամեն տեղ:

## Քահանաների պարտաւորութիւնները:

63. Քահանաները հնազանդ լինին աւագ քահանաների բոլոր օրինաւոր առաջարկութեանց:

64. Քահանայք առանց յարգելի պատճառի յետ չմնան եկեղեցուց:

65. Գիշերուայ և երեկոյեան ժամը անխափան կատարել:

66. Հիւանդին հաղորդութիւն տալու կանչուելուս իսկոյն պիտի գնան քահանաները, առանց պատճառ բերելու թէ իրանց ծուխը չէ:

67. Առանց խոստովանեցնելու և հաւատքը իմանալու, հաղորդութիւն չպէտք է տալ, եթէ քահանան հաղորդութիւնը ջրի կամ գինու հետ խառնած կածի հիւանդի բերանը, վերջինիս անզօրութեան պատճառով, կարգից լուծուի և մինչև մահ ապաշխարի, որովհետև անարգեց խորհրդի սրբութիւնը:

68. Քահանան չհամարձակուի առանց առաջնորդի, կոնսիստորի կամ գործակատարի գրաւոր անցաթղթի ուրիշ տեղ գնալ. զանցառուն տուգանքի կենթարկուի:

69. Առանց առաջնորդի կամ կոնսիստորի կամ գործակատարի գրաւոր հրամանի յայտնի կամ գաղտնի պսակ չանել, եթէ մինչև անգամ ծնողների կողմից արգելք չկայ, պսակ չանել նոյնպէս կնաթողներին, այրաթողներին կամ բռնաւոր անձանց բռնութիւնից ստիպուած առանց մարդու և կնոջ համաձայնութեան. ով կյանդգնի, կարգալոյծ լինի:

70. Քահանայք պսակից առաջ հոգևոր իշխանութեան գրաւոր յայտարարութիւն տան յայտնելով չհասութեան և տհասութեան բոլոր դէպքերը և ուրիշ արգելքները, զանցառուն կըպատժուի:

71. Քահանաները տեսնելով աւագ քահանայի ծուլութիւնը, ապօրինի գործերը, կամ զրկանք ստանալը, կարող են գանգատուել հոգևոր իշխանութեան:

72. Քահանաները զօշաքաղութեամբ չնեղեն ժողովուրդը պահանջելով չափից աւելի դրամ օրինակատարութիւնների համար, պէտք է կթել կաթը որ իւղ դառնայ և ոչ ճմլել պտուկները, որոնցից կարող է արիւն վազել. պէտք է առնել նուէրը սիրով և աղքատներին չնեղացնել:

73. Քահանաները չխառնուին աշխարհականների գործերում, քաղաքում կամ գիւղում հոգաբարձութիւն չպիտի անեն, ալքունի հարկերի գրող չպիտի լինին, կամ հեռանան քահանայութիւնից, կամ աշխարհական զբաղմունքներից:

74. Քահանաները աշխատեն կրթել իրանց որդոց Աստուածպաշտութեան, մայրենի լեզուի ուսման և Աստուծոյ օրէնքների մէջ:

75. Անբարեբարոյ և տգէտ քահանայորդիք ոչ միայն չպիտի արժանանան եկեղեցական աստիճանների, ըստ մարուգէի «զի դու զգիտութիւն մերժեցեր, մերժեցից և ես զքեզ զի մի քահանայասցիս ինձ», այլ և պիտի զրկուեն բոլոր իրաւունքներից և համարուեն հարկատուների շարքում:

76. Քահանան եթէ կհամարձակուի խլել ուրիշի ծուխը, որը իրան չէ յանձնուած եպիսկոպոսի կողմից, այդպիսին բնակութիւնից հեռացուի և քաղաք կամ գիւղ փոխադրուի:

77. Եթէ մի քահանայ միորև է յանցանքի համար բանադրում է ժողովրդականին, ուրիշ քահանայ իրաւունք չունի բանադրանքը վերցնելու, վերցնողը ինքը կբանադրուի:

78. Քահանաները իրանց ծխականներին խոստովանեցնեն և ոչ ուրիշ քահանայի, օրինազանցը վանք ուղարկուի ապաշխարելու:

79. Այս բոլորի կատարումը վերադրում եմ առաջնորդներին, հոգևոր կառավարութիւններին և գործակատարներին:

## Ղարաբաղի կոնսիստորիային (1853. մարտ—26):

80. Ցուցակագրել բոլոր եկեղեցիները, գիւղերը, թէ արական թէ իգական, և ամեն մի ութսուն տան, որոնց մէջ կլինին ոչ պակաս քան 320—400 արական և իգական անձինք, նշանակել մի քահանայ և երկու դպիր գիւղական եկեղեցիներում: Իսկ Շուշի քաղաքում տների և արական ու իգական անձանց հաշուեթուով նշանակել քահանաներ, և ուր որ չորս քահանայ լինեն,

այնտեղ նշանակուին չորս դպիր և մի սարկաւագ, իսկ ուր որ երեք քահանայ կլինեն, նշանակել երեք դպիր և մի սարկաւագ, ուր կլինեն երկու քահանայ, նշանակել երկու դպիր և մի սարկաւագ և այսպէս կանոնաւոր բոլոր նահանգների քաղաքներում և գիւղերում:

81. Տումարագրել բոլոր քահանաների որդիներին, կանանց և աղջկանց, տարիքի թուերով և պարապմունքներով:

82. Տումարագրել բոլոր քահանաների այն որդոց, որոնք ծնուել են քահանայութիւնից առաջ և յետոյ, նրանց՝ որոնք եկեղեցական սպասաւորութեան մէջ չեն կամենում մնել և քահանայ դառնալ, վերջիններիս յանձնել քաղաքական իշխանութեան իբրև հարկատուների, որպէս զի դատարկակեցութեամբ իրանց կեանքը չկորցնեն քահանայորդի համարելով իրանց:

83. Իսկ քահանայ լինել ցանկացող քահանայորդիք, 9 տարեկանից սկսած պիտի ուսմանց և գրագիտութեանց աշակերտին, 15 ամեայ լինելուս հոգևոր հանդերձ հագնեն, պաշտօնակատարութիւններին ներկայ լինին և բարի վարքով, հեզութեամբ, համեստութեամբ, Աստուածսիրութեամբ.... հարազատութեամբ ս. եկեղեցուն և ժողովրդին պատրաստուեն քահանայ լինելու:

84. Ցուցակագրել բոլոր վանքերի կալուածները և աշխատել հաստատել տալ և կանոնաւոր կառավարել:

85. Բոլոր կալուածների կառավարիչներին, թէ հոգևորական թէ աշխարհական, որոնք անպէտք են, արձակել, պահանջելով նրանցից համար և հաշիւ, և նշանակել փոխարէնը նոր և հաւատարիմ անձանց:

86. Բոլոր կալուածների փաստագրերը, թղթերը տումարագրել հաշուով համարով և ստորագրութեամբ առաջնորդի և կոնսիստորի, մի օրինակը պահել կոնսիստորի գործերում, միւս օրինակը ուղարկել Սինոդ:

87. Պատուիրում եմ զգուշաւոր հարազատութեամբ բոլորի պատճէնները վերցնելուց, հաստատելուց և պահելուց յետոյ, բուն կալուածագրերը ուղարկել ինձ Սինոդում պահելու:

88. Կալուածների սահմանները խսկութեամբ պահպանել և լաւ հմուտ անձինք նշանակել կառավարիչ:

89. Հաշիւները ամեն տարի քննել, ստանալ և արդիւնաւորապէս չահեցնել:

90. Աղուանից կաթողիկոսների ժամանակներից և թէ վերջերում եղած թղթերը, որոնք կարող են գտնուել Բաղդասար մետրապօլիտի մօտ, թող կոնսիստորիան խնդրի, վերցնի և կարևորները արտագրուի, հաստատուի և ստորագրութեամբ վաւերացրած ուղարկուի ինձ:

91. Պատուիրում եմ՝ առանց ստուգութեան չընդունել բանաւոր կամ գրաւոր վկայութիւններ չատերի կամ քչերի կողմից պսակուածների, քահանայացուների, ծննդականների համար. և յայտնել որ ապօրինի կերպով պսակող քահանաները կարգալոյծ կլինին, իսկ պսակուածների ժառանգները կհամարուեն ապօրինի և կյայտնուին քաղաքական իշխանութեան օրինաւորների ցուցակից հանելու համար:

92. Ներսէս Ե-ի առաջադրութիւնը Սինօդին 1851 թ. «Մենք կնքահայրերի համար օրէնք ենք համարում այս, որ մկրտուածը կնքահօր որդու հետ եղբայր լինի, և սրանց հոգևոր և մարմնաւոր ազգակցութիւնը շարունակուի մինչև երրորդ ծնունդը, իսկ կնքահօրը և սանիկի եղբայրները կամ քոյրերը և կամ հօրեղբայրները և հօրաքոյրերը կամ մօրաքոյրերը միմեանց հետ ոչ մի հոգևոր ազգակցութեամբ չկապուին: Եւ այսպիսի մտածողութեամբ էլ ճիւղահամարութիւններ ենք գծագրել մի քանի կոնսիստորիաների համար, որ կնքահայրութիւն անեն միայն կընքողի որդոց հետ, և օտար համարեն կնքահօր արիւնակից եղբօրը, քրոջը և միւս ազգականներին» (տես Արարատ 1900 հոկ.):

## Շամախու կոնսիստորին 1849 թ. ամլութեան համար.

93. Ապօրինի համարելով կոնսիստորիայիդ կարգադրութիւնը այս խնդրի վերաբերմամբ, սաստիկ կերպով պատուիրում եմ անհնարին համարել անզաւակութեան անտեղի պատճառանքներով բաժանել մարդուն կնոջից:

## Գանձակու հոգ. կառավարութեան 1849 թ. Դ. եւ Ե.-րդ պսակի մասին.

94. Գանձակի հոգ. կառավարութեանը գրում է Տփխիսի կոնսիստորիան. «ամենայն հայոց Վեհափառ կաթողիկոսի Տ. Ներսէսի կոնդակի համաձայն յունուարի 14-ից № 15, թոյլատրւում է չորրորդ և հինգերորդ պսակը ամուսնութեան»: Միմիայն դէպքերը և հանգամանքները լաւ կշռելուց յետոյ, սաու-

գելով ունի՞ որդիք, նեղ դրութեան մէջ է թէ ոչ, և կոնսիստորիան այդ քննելուց յետոյ, կթոյլատրի պսակուողին մտնել չորրորդ կամ հինգերորդ ամուսնութեան մէջ:

## Պահքի օրերը. 1849. յուն. 29.

95. Ներսէս Ե. հրամայում է գործակալին, սա էլ կոնսիստորիային և Սինոդին, որը ի հրահանգութիւն է առնում կաթուղիկոսի կարգադրութիւնը:

Պսակ չանել 1) բուն բարեկենդանից մինչև հոգեգալստեան առաջի յարութեան կիրակին. 2) կիրակի օրերը. 3) տէրունական տօների պահոց օրերը, ութօրէից՝ զկնի ծննդեան և նաւակատեաց. իսկ մնացած օրերը անխտիր կատարել պսակի խորհուրդը:

## Աստրախանի կոնսիստորիային 1854 № 664, յուլիսի 30.

96. «Որք ի հայազգեայ հակառակ եկեղեցական կանոնադրութեանց պահեն առ ինքեանս ապօրինի կենակցութեամբ զանպսակ կանայս, ոմանք զարամբիս և ոմանք զայրիս վասն օրինակի այլոց զրկել ի սուրբ հաղորդութեանց և 'ի նոցուն տնօրհնեաց և ի հանդիպել մահացու հիւանդութեանց թէ ունիցին յայտնել զզջումն, նաև հաղորդել և թաղել ոչ՝ ըստ կարգի արժանաւորացն ննջեցելոց—այլ անշուք իմն յուղարկաւորութեամբ իջուցանել ի գերեզման—'ի զգուշութիւն այլոց»:

Հայազգին ժողովրդականներից նրանք, որոնք հակառակ եկեղեցու կանոնադրութիւններին ապօրինի կեանք կվարեն, կանայք կպահեն թէ արամբի թէ այրի, ուրիշներին խրատելու համար պէտք է զրկել սուրբ հաղորդութիւնից, տնօրհնէքից և միմիայն երբ ծանր հիւանդութիւն պատահի, այն դէպքում եթէ կզղջան, կարելի է հաղորդել, բայց չթաղել կարգին՝ արժանաւոր հանգուցեալների նման, այլ անշուք յուղարկաւորութեամբ իջեցնել ի գերեզման որպէս զի ուրիշները տեսնեն և զգուշանան, և չգնան այդ գայթակղելի և վատ ճանապարհով:

## 1848—ապրիլի 30.

Ներսէս Ե. խիստ էր և առանձին ուշադրութիւն էր դարձնում, որպէս զի կարգալոյծ չլինին կուսակրօնները ի-

րանց անձնական ցանկութեամբ, յորդորում էր Սինոդի միջոցով, որ այդպիսի դէպքերը բոլորովին վերանան իբրև հակառակ մեր եկեղեցու ոգուն։

1848—ապրիլին ոմն Դանիէլ աբեղայ Ներսէսին խնդրում է միզարգելութեան պատճառով թոյլ տալ հեռանալ կուսակրօնութիւնից։ Վեհափառը շատ ձգձգելուց, յորդորելուց յետոյ, զիջանում է Դանիէլ աբեղայի խնդիրքին և գրում է Սինոդին այսպէս. «կոչեալ զնա յատեան Սինոդիս և ընթերցեալ ի լուր նորա զայս վճռահատութիւն նորուն ստորագրութեամբ, այլև՝ ազդ արարեալ նմա համառօտ բանախօսութեամբ զայսպիսի անսովոր յազգի հայոց ուխտադանցութիւն իւր, բառնալ 'ի նմանէ զսքեմն և զկարգ կուսակրօնութեան քահանայութեան այնպէս զի՝ ոչ ևս միւսանգամ կարելի լիցի նմա դառնալ անդրէն յայն կոչումն։ Զկնի այնր հաղորդել նահանգական իշխանութեան Տփխիսայ դասել զնա ի կարգ հարկատու հասարակութեան քաղաքին Երևանայ ըստ իւրումն ազգատոհմութեան համաձայն 432 յօդուածոյ 9—հատորոյ Օրինաց Տէրութեան»։

## ՆԵՐՍԷՍ Ե-Ի ԿԱՆՈՆՆԵՐԻ ԳՐԱԲԱՌ ԲՆԱԳԻՐԸ.

Ներսէս ծառայ Քրիստոսի և անհասանելի կամօքն Աստուծոյ Եպիսկոպոսապետ և կաթուղիկոս ամենայն Հայոց Ծայրագոյն Պատրիարգ համազգական նախամեծար աթոռոյ արարատեան մայր եկեղեցւոյ Սրբոյ Կաթուղիկէ Էջմիածնի։ Շնորհունակ Տէր Ղազար քահանայ Տէր Ղազարեանց միաբան սուրբ Աստուածածնին եկեղեցւոյ հալաբարայ Շամքոռեցւոց վերաձայնելոյ՝ լուեալ մեր ի բազմաց արժանաւոր անձանց զջատագովութիւն յաղագս բարւոք և պարկեշտ ընթացից ձերոց և արիական և հաւատարիմ քահանայավայելուչ պաշտօնատուութեանց յամենայն գործս վերաբերեալն ձերում կոչմանց . . . . . . . . կարգեմք զԱւագ քահանայ եղեալ սուրբ Աստուածածնին եկեղեցւոյ, և պատուիրեմք զամենայն պարտաւորութիւն և զպաշտօն աւագ քահանայի

*անդուլ ջանացողութեամբ կատարել ի մխիթարութիւն ժողովրդոց քահանայավայելուչ ընթացիւք, անքուն ակամբ հոգւոյ, մտաց և մաքուր խղճմտանաց ունել զհոգունակութիւն զբարեկարգութենէ հաւատացեալ ձեզ եկեղեցւոյ և միաբանութեան և եկեղեցական պաշտօնատարաց այն է.*

*1. Ունել յեկեղեցւոջ զերկու ձեռս մէտրիքական մատեանս, և վերահասու լինել զի իւրաքանչիւր քահանայ յամենայն աւուր առանց զանցառութեան զկնի խորհրդակատարութեանցն գրեսցէ յայնոսիկ մատեանս զծնեալս, զմկրտեալս, զպսակեալս և զննջեցեալս. և զմի օրինակն ի լրման իւրաքանչիւր ամի առաքել ի կոնսիստորն և զմիւս օրինակն պահել յեկեղեցւոջ մշտնջենաւորապէս:*

*2. Զի լուսազինք յառաջացեալք յօգուտ եկեղեցւոյ 'ի մկրտութեանց, ի պսակաց, ի պատարագաց ննջեցելոց, ամբողջութեամբ յանձնեսցին երէցփոխանին եկեղեցւոյ:*

*3. Ի լրման ամենայն եօթնեկի վերահասու լինել ստմարագրութեան երէցփոխանին բարւոք աչալրջութեամբ, և եթէ գտանիցի անուղղութիւն կամ սխալանք ինչ ուղղել և ստորագրել ի հաշուեմատենին, և եթէ երէցփոխանն չունիցի զկարողութիւն գրելոյ՝ յայնժամ յանձնել կարող քահանայից կամ դպրաց, զի նոքա պարտաւոր լիցին գրել ի հաշուեմատենին երէցփոխանական զամենայն մուտս և զծախս:*

*4. Վերահասու լինել ի լրման իւրաքանչիւր ամսոյ վերջից՝ մոմավաճառութեան երէցփոխանին. թէ զո՞րքան մոմ ունի գնեալ երէցփոխանն յաւագ պահարանէ մոմավաճառութեան և տեղեկանալ քանի՞ փութ վաճառեալ լինելոյն և ո՞րքան անվաճառ մնալոյն:*

*5. Ունել զմատեան վասն եկեղեցական անօթոց և զարդուց, և աւագ քահանայն վերահասու լինիցի ամբողջութեան և մաքրութեան եկեղեցական անօթոց և զարդուց, արծաթեղինաց, ոսկեղինաց, հանդերձեղինաց թանկագնոց և դիւրագնոց, զի սրբութիւն եկեղեցւոյ պահանջէ համաձայն Աստուածավայելուչ տան զմեծ մաքրութիւն:*

*6. Եկեղեցական սպասք և հանդերձեղէնք չլիցին բեկեալք կամ պատառոտեալք և կամ աղտեղեալք:*

*7. Ունել զհոգացողութիւն զի ամենայն քահանայք և այլ պաշտօնեայք սրբոյ եկեղեցւոյ ըստ իւրաքանչիւր կարգի և կոչ-*

*ման լինիցին զգաստ մինչ և հաւատարիմ սրբոյ եկեղեցւոյ, որպէս պաշտօնեայք սրբութեանց տաճարին Աստուծոյ, և վասն անհոգացելոյն ոչ լինել զանցառու յաղագս պահանջելոյ զարժանաւորն ըստ պաշտօնի իւրաքանչիւրոյ:*

8. *Ունել զանքուն դիտողութիւն ի վերայ կանոնաւոր կառավարութեանց ամենայն հոգևորականաց, և ի լինիլն ուրուք ի հոգևորականաց 'ի գործս անվայելչականս իւրում կոչմանց, նախ՝ զգուշացուցանելով ձերով խրատուք երիցս անգամ, և ի յամառ լինելն յայտնել վիճակային կոնսիստորիին, և նա Սինոդին Էջմիածնի:*

9. *Քարոզել ժողովրդեան զի ի ժամ աղօթից կամ պատարագի ունիցին կալ պատկառանօք որպէս և ընթեռնումք զաղմոսն մտից ի տունս քո, և երկիրպագից ի տաճար սուրբ քո երկիւղիւ քով, ուր խօսիլն և ծիծաղիլն զայրացուցանել ունին զԱստուած:*

10. *Յամենայն աւուրս կիւրակէից և երևելի տօնից և ի ժամանակի մեծի պահոց ոչ պակասեցուցանել ժողովրդեան զքարոզ յաղագս քրիստոնէավայելուչ կենցաղավարութեանց նոցին:*

*Մեք պատուիրեմք յատկապէս զայս ամենայն պարտաւորութիւն հաւատացեալ ձեզ կատարել աչալրջութեամբ, այնպէս որպէս, զի ունիցիք տալ պատասխանի որպէս Աստուծոյ, նոյնպէս և հոգևոր կառավարութեան:*

*յամի ազգական* 1301, *և փրկչական* 1852.
Ի *մարտի* 25. *'ի Թիֆլիզ:*

## *Կարգադրութիւն Տփխիսայ հայոց եկեղեցեաց եւ եկեղեցականաց:*

*Ըստ հրամանի աստուածարեալ քահանայապետութեան Տեառն Ներսէսի Սրբազան Արք եպիսկոպոսի և Ծայրագոյն կառավարչի հոգևորական գործոց հայոց Վրաստանայ և այլոց՝ առաջի առնեմ ձեզ զկանոնս ինչ յընդհանուր կանոնադրութեանց նորաշուրջ դեկեղեցական բարեկարգութեամբ, առ ի վարել ձեզ ըստ այնոցիկ և կառավարել զեկեղեցի ձեր և զամենայն պաշտօնեայս նորա:*

11. *Պարտին մինչ զգուշանալ առ հասարակ քահանայք զի մի երբէք անվայելչութիւն և տգեղութիւն իմն երևեսցի ի մէջ եկեղեցւոյ անարժան իւրումն սրբութեան և վայելչութեան:*

12. Մի իշխեսցեն քահանայք և դպիրք եկեղեցւոյ առանց մաքուր սռնապանի, այն է (չուլքիք) ելանել ի սեղանն սուրբ, այլ ամենայն որ ոլուոմ հարկ իցէ լինել ի սեղանի՝ ունիցի զըսպիտակ սռնապան և զհողաթափ:

13. Վերաբերութեան կատարող քահանայն ունիցի զփորուրար և զշուրջառ, և ոչ զշապիկ և զուրար, զի անպատեհ է քահանային ի բաց եդեալ զքահանայական զգեստ իւր երևիլ 'ի հանդերձս դպրի և սարկաւագի:

14. Փիլոնք և Լօդիկք քահանայից և դպրաց մաքուր եղիցին միշտ և առանց կարկատանի, գլուխք նոցա սանդրեալք և ձեռք և երեսք նոցա լուացեալք:

15. Ամենայն քահանայք բաց ի դիպուածոց ծանր հիւանդութեանց գտցին միշտ յեկեղեցւոջ ի սկզբանէ ժամերգութեան մինչև ցվերջն, և մի կարասցեն փոյթ ընդ փոյթ ել և մուտ առնել յեկեղեցին, և կամ մտեալ 'ի խորան եկեղեցւոյն նստել:

16. Զմկրտութիւն երեխայից, զպսակ, զթաղումն և զայլ ամենայն եկեղեցական պաշտամունս մի իշխեսցեն քահանայք կատարել առանց խաչի, աւետարանի բուրվառի, մոմոց, եկեղեցական զգեստուց և առանց սարկաւագի կամ ուրարակիր դպրի:

17. Քահանայք յորդորեսցեն զժողովուրդսն չյամեցուցանել զմկրտութիւն նորածնելոց, և կատարել ըստ կանոնի հարց սրբոց մինչև ցօրն ութերորդ: Այլ և մի իշխեսցեն քահանայք զխորհուրդ սուրբ մկրտութեան ի տունս ժողովրդոց կատարել արտաքոյ եկեղեցւոյ բաց ի վտանգէ ծանր հիւանդութեան:

18. Մի իշխեսցեն քահանայք վասն ոըպխսի և իցէ օրհնակատարութեան, այն է վասն մկրտութեան, պսակի և կամ թաղման ի մէջ եկեղեցւոյ պահանջել զնուէրս և զվարձս, այլ արտաքոյ եկեղեցւոյ քաղցր և յորդոր բանիւք առանց բռնադատութեան, ընկալցին զկամաւոր նուէրս և շնորհակալութեամբ օրհնեսցեն զտուողս նուիրանայն:

19. Մի տաջիք թոյլ ամենայն եկեղեցականաց և ժողովրդականաց գդակ ի գլխի կալ յեկեղեցւոջ խօսիլ, կռուիլ, կամ անպատկառ ի սուրբ սեղանոյն նստել:

Արգելջիք քահանայից առանց լօդկի (ֆարաճայի) մտանել յեկեղեցի և կամ շրջել արտաքոյ տանց իւրեանց, և կամ փիլոն

ունելով ի վերայ ուսոց իւրեանց գնալ ի տունս ժողովրդականա՛ց և երևիլ ի քաղաքի:

20. Արժունք լինիջիք զի ամենայն ժողովրդականք եկեղեցւոյ ձերոյ այր և կանայք առ հասարակ գոնէ ի տարւոջն միանգամ արժանաւոր խոստովանութեամբ հաղորդեսցին կենարար մարմնոյ և արեան Տեառն: Այլ և պատուիրեսջիք քահանայից ձերոց յատանձին խոստովանութեան խրատել և յորդորել քարոզութեամբ զխոստովանադատելս՝ զի թէ ոչ է հնար արտաքոյ եկեղեցւոյն, գոնէ ի մտանելն յեկեղեցի ուր բազմի ահաւոր ստեղծողն ամենայնի Աստուած, մի մտցեն չպարեալ երեսօք կամ գոնէ որ առաւել սարսափելին է ի ժամ հաղորդութեան մի երևեսցին այնպիսի կերպարանօք առաջի ահեղ խորհրդոյն, ուր արժան է արտասուօք լուանալ զերեսն և ոչ այնպէս դեղել:

21. Մի համարձակեսցին քահանայք սպահել զմասնատուփն սուրբ ի տունս իւրեանց, այլ միշտ գտցի ի վերայ սեղանոյ եկեղեցւոյն անմատոյց ումեք բաց ի քահանայից, և յիւրաքանչիւր պատարագի ժամարարն քննեսցէ զայն, և եթէ հարկ իցէ մաքրեսցէ զհինն, և առցէ զնոր մասն ի պէտս հիւանդաց, և ի ժամ հարկաւորութեան եթէ ի գիշերի իցէ և եթէ ի տունջեան մտեալ քահանայն յեկեղեցի ինքն իւր ձեռամբն առեալ ի սեղանոյն զմասնատուփն զգուշութեամբ և երկիւղածութեամբ և տարեալ հաղորդեսցէ զհիւանդն և վերադարձուսցէ ի տեղի իւր:

22. Մի ոք ի քահանայից առանց գրաւոր հրամանի Սրբազնակատար Կաթուղիկոսի և վիճակաւոր արք եպիսկոպոսի համարձակեսցի կրել զթասակ, և զփիլոն կերպասեայ, ծաղկաւոր կամ անծաղիկ: Ամենայն թասակաւոր քահանայք յընթեռնուլ Աւետարանի յեկեղեցւոյ կամ արտաքոյ՝ բացցեն զգլուխս իւրեանց ի պատիւ աւետարանութեան Տեառն:

23. Մի ոք ի քահանայից առանց ծանր ինչ հարկի թափառական շրջել ունիցի ի վաճառատեղիս, ի շուկայս և ի փողոցս, և կամ դեգերել ի դրունս դատաստանաց:

24. Արգելեալ է ամենայն քահանայից առ հասարակ առանց հրամանի վիճակաւոր արք-եպիսկոպոսի քարոզ կամ ծանուցումն առնել ի վերայ ննջեցելոց:

25. Մի իշխեսցեն ամենայն քահանայք առ հասարակ հիւսեալ հերովք ցուպ ի ձեռին կամ ընդ փիլոնաւ յեկեղեցւոջ կամ արտաքոյ կատարել զեկեղեցական պաշտօն ինչ և կամ խլել ի

բերանոյ միմեանց զերգելիսն, այլ անկեղծաւոր ակնածութեամբ և երկիւղիւ Տեառն, անցուպ և անդտակ և առանց խօսակցութեան ընդ միմեանս, լոկ փիլոնաւ, չուրջառաւ կամ փորուրաւ կատարեսցեն զԱստուածային պաշտամունս:

26. Քահանայք և դպիրք հնազանդք եղիցին աւագ իրիցուն իբրև գլխաւորի իւրեանց, և ի պատահիլն, մկրտութեան, պսակի և թաղման յեկեղեցւոջ իւրեանց, մի կատարեսցեն թարց գիտութեան աւագ քահանային, և զլուսագինն մկրտութեան կամ պսակի աւագ քահանայն առցէ արդիւնաւորութեամբ առանց զրկելոյ զեկեղեցին՝ և յանձնեսցէ երէցփոխանին և նշանակեսցէ զանուն և զորքանութիւն նուիրողին և նուիրանացն յիւրում առանձին տումարի:

27. Ամենայն քահանայք առ հասարակ մի իշխեսցեն գտակ՝ ի գլխի օրհնել զժողովուրդն աջ տալով նոցա, զի խնդրողն օրհնութեան դիմէ առ քահանայն իբրև առ փոխանորդ Քրիստոսի և տուօղն օրհնութեան ևս յանուն Քրիստոսի մատակարարէ զայն, վասնորոյ հարկ է իւրաքանչիւրոցն բացաւ գլխով առնել զայս տուր և առ չնորհայ, բայց ի կանանց որոց չէ՛ օրէն բացագլուխ երևիլ առաջի այր մարդոյ:

28. Ի հրաւիրել քահանայից յայլ եկեղեցիս վասն թաղման ննջեցելոց կամ վասն որպիսի իրաց և իցէ, ամենքեան առ հասարակ փիլոն կամ չուրջառ ունելով ի վերայ ինքեանց՝ կանգնեսցեն ըստ իւրաքանչիւր կարգի ի տեղիս իւրեանց ի դասուն, և ամենքին մի իշխեսցեն առանց փիլոնի կամ չուրջառի կալ ի մէջ ժողովրդեանն նստել և կամ խօսել:

29. Զօր ամենայն հնչեցուսցեն զզանգակն ի լսել զձայն զանգակի վանացս, և եթէ ունիցին զպատարագ, միով ժամաւ յառաջ քան զսովորական ժամանակն: Եւ վասն եղանակի ժամասացութեան ևս փոյթ ունիցին քահանայք վայելուչ կացուցանելոյ այնպէս, զի ամենայն երգեցմունքն թէ թիւ և թէ ձայնաւոր՝ լինիցին ջերմեռանդութեամբ հոգւոյ և համբարձմամբ մտաց առ Աստուած. երկիւղածութեամբ և բարեձևութեամբ, պարզ և յստակ արտաբերութեամբ, զի կարող լինիցին զգալ և ունկնդիրքն՝ թէ որպիսի կերպիւ պարտ իցէ կալ յառնենի եկեղեցւոյ և յանդիման լինել Աստուծոյ և մատուցանել զաղօթս և զերկրպագութիւնս նմա: Այլ և փոյթ կալցեն զի ժամերգութեան լինիցի ունկնդրութեամբ միմեանց և դաշնակցութեամբ ձայնից ընդ միմեանս, նաև լինիցի ոչ ոգեքաղ, բարձրաձայն և ծանրա-

նուագ, և ոչ չաղփաղփ և ցնդի խառնաձայն, անիմանալի և անհասկանալի շուլթափուլթութեամբ, որ փոխանակ շնորհաց և ողորմութեանն Աստուծոյ, առաւել ևս սաստկացուցանէ զվրէժխնդրութիւն նորա՝ այլ պարտի լինիլ քաղցրանուագ, մեղմաձայն, հանդարտ և ախորժ եղանակաւ, որպէս ցուցեալ է բազմիցս:

## Ներսէս Ծառայ Քրիստոսի...... Կոնսիստորիային հայոց Ղարաբաղու............. Կանոն:

30. Պատուիրել բոլոր քահանայից զի զնարեկի աղօթսն պատարագի ընթերցցին ի բեմին զկնի 'ի յարկի սրբութեան աղօթիցն, որպէս եդեալ կայ ի խորհրդատետրի:

31. Այս օրէն լիցի ամենայն քահանայից, զի զհացն նուիրանաց կազմեսցեն յամենայն ժամ 'ի սպիտակ ալերէ, և մատուսցեն զհաց եփեալ և ջերմ:

32. Արգելանի քահանայից չբեկանել երբէք զհացն մինչ ցբանն «լրումն հոգւոյն սրբոյ»:

33. Պատուէր լիցի քահանայից, զի յետ ընդունելոյ ի ձեռաց վերաբերողին զընծայն խորհրդոյ ունիցի ի ձեռին հանդէպ ժողովրդեան զերկու վայրկեան:

34. Պատուէր լիցի քահանայից. մի խաչակնքել յասելն «ի սուրբ ի սուրբ և այլն» վասն զի և ոչ միտք բանին ցուցանեն զխաչակնքելն ի վերայ ժողովրդեան:

35. Պատուէր լիցի քահանայից ունել միշտ զեղնդունս հատեալ, և մաքուր լուացեալ ձեռօք մատուցանել զպատարագն:

36. Պատուիրել քահանայից սերտել ի բերան զայնոսիկ աղօթսն:

37. Պատուիրել քահանայից, զի յետ աւարտման պատարագին բացցեն զսեղանն, և ասասցեն ի ձայն զաղօթսն «որ օրհնես զայնոսիկ» և իջեալ ի սեղանոյն ընթերցցին զաւետարանն և արձակեսցեն զժողովուրդն:

38. Խստիւ արգելումք ամենայն քահանայից զի յետ պատարագին մի համարձակեսցին շրջել ի տունս ժողովրդոց և տալ զնշխարս առ ագահութեան դրամոց:

39. Արգելանի քահանային ո՛չ աւելի քան զհինգ նշխարս պատրաստել և ժամատեարց միայն տալ զմի նշխար և եթ:

40. Պատուիրել ամենայն քահանայից ասել անխափան զխաղաղական աղօթսն կից ընդ երեկոյեան ժամերգութեան. բացի մեծի պահոց յինանց կիրակամուտից և կիւրակէից աւուրս և ի տէրունական տօնս:

41. Զմասնատուփն և զմեռոնն սուրբ դնել ի վերայ սեղանոյ և յարգել զսրբութիւն նորա:

42. Խստիւ արգելուլ քահանայից մի ի գործածել երբէք զփայտ, այլ դրոշմել բթաւ:

43. Ի վերայ սեղանոյն դիցին մի պատկեր տէրունական, մի աւետարան, և մի խաչ:

44. Ուսուցանել քահանայից, զի յասելն զէական բանն. «յանուն հօր» իջուսցեն զերեխայն յաւազանն, և յասելն «և որդւոյ» իջուսցեն կրկին. և յասելն «և հոգւոյն սրբոյ» իջուսցեն երրորդ անգամ, որպէս և գրի ի մաշտոցին:

45. Արգելանի քահանայից, զի ի դէպս հացկերութեանց ի տունս ժողովրդեան մի՛ նստիցեն ընդ երկար, մի յապաղել անդր. ընդ գինարբու աշխարհականացն մանկունս. յորում յոլովս մեղանչին անպատրաստքն, որք տեգերին ի նմա ի տեսանելն, ի լսելն և ի խօսել զանուղղայս, այլ յորժամ զբաւ լինիցի կերակրոյն, և մինչ յերիս միայն արբուն բաժակի, յառնել վաղվաղակի ի սեղանոյ անտի, զի մի ընդ գինեմոլսն յարբեցութեան ըմբռնեալ այպն լինիցի արտաքնոց տեսողաց, ո՛չ միայն ինքն, այլ և՝ ամենայն քահանայք՝ միովն: Եւ ծանրագոյն ապաշխարութեամբ թէ արդեօք քաւեսցէ զարբեցութեան տեղս վերստին արժանի լինի քահանայագործութեան:

46. Պատուիրեմք քահանայից չլինել չատաշրջիկ առանց բանաւոր պատճառի:

47. Պատուիրեմք քահանայից, յորդորել զկանայսն չլալ և չճչել յեկեղեցւոջ. զի սուգն հեթանոսաց է գործ և ոչ քրիստոնէից և յեկեղեցւոջ պարտ է աղօթել վասն փրկութեան հոգւոյ ննջեցելոյն: Արգելումք նոյնպէս զգանձ ասելն յեկեղեցւոջ որ է առիթ լալոյ սգաւորաց յեկեղեցւոջ:

48. Պատուիրել բարեկարգութեան վերատեսչաց քաղաքաց, 'ի գալ գիւղական քահանայից պահանջել զանցագիրս, և զչունօղս այնպիսեաց ներկայացուցանել ի կոնսիստորն:

49. Պատուիրեմք քահանայից, զի յաւուրս մօլէքնից ամե-

նայն որ տարցէ ընդ իւր զշուրջառ և զխաչ յայն եկեղեցի, յորում կատարի մօլէբինն, և առանց բանաւոր պատճառանաց մի մնասցեն յետս. և քահանայք կանգնեսցին յիւրեանց կարգի և երգեսցեն զպատկանեալ ինքեանց երգս, իսկ դպիրքն զիւրեանցն:

## Պարտաւորութիւն հերթակայի.

50. Հերթակայն պատարագի պարտի մնալ ի խցի եկեղեցւոյն, ի հարկանել զիշերային և երեկոյեան զանգակին մտցէ յեկեղեցին և սկսանիցի զաղմօսն, մինչ սկսանիլն ժամերգութեան:

51. Հերթակայն յաւուրս պատարագի մատուցման մի շրջեսցի ի փողոցս կամ ի տունս այլոց և ոչ գնասցէ ի խնճոյս, այլ մնասցէ ի խցի եկեղեցւոյն և աղօթեսցէ, և եթէ որ ունիցի պհոգևորական հացկերոյթ, առաքեսցէ վասն ժամարարին զսեղան նաւակատեաց առանց գինւոյ և մսոյ:

52. Հերթակալութիւնն լիցի այսպէս: Պատարագիչ քահանայն որում անկէ յայնմ շաբաթու պատարագել ի չորեքշաբաթ աւուրն գնասցէ ի խուց եկեղեցւոյն և կացցէ անդ մինչ ցաւարտումն իւրոյ հերթակալութեան, և ապա ընդ նմին օրինակի կացցեն անդ միւս հերթակալքն:

## Պարտաւորութիւն աւագ քահանայի.

53. Աւագ կամ ժամօրհնող քահանայն եթէ չիցէ տկար կամ չունիցի զայլ օրինաւոր արգելս պարտի զկնի հերթակալին գնալ յեկեղեցին և սկսանիլ զժամերգութիւնն:

54. Աւագ կամ ժամօրհնող քահանայն ունիցի զվերանկատումն ի վերայ միւս քահանայից զի մի որ պակասեսցի յեկեղեցւոյ առանց օրինաւոր պատճառանաց, այն է հիւանդութեան կամ կատարման հոգևոր պիտոյից ժողովրդեանն:

55. Պարտաւորեմք զաւագ և զժամօրհնող քահանայս յամենայն աւուր զննել զմէտրիկական մատեանս, զի քահանայք յայնմ իսկ աւուր կատարման հոգևոր պիտոյից գրեսցեն ի նոսա զծնեալս զմկրտեալս, զպսակեալս և զննջեցեալս, և եթէ որ ի քահանայից անսովոր լիցի կարգին գրութեան յանձնեսցէ այլում քահանայի կամ սարկաւագին և կամ դպրին գրել զմետրիկայն:

56. Պարտաւորեմք զաւագ և ժամօրհնող քահանայս զի ի մատեանսն էրէցփոխանաց գրեսցեն յայնմ իսկ աւուր օրինակա-

տարութեանց, լուսադինք ի մկրտութեանց, ի պսակաց և ի պատարագաց ննջեցելոց, դանձանակ եկեղեցւոյն, արդիւնք ի վաճառմանէ մեղրամոմոց, և այլ նուիրանք ժողովրդոց և յամսոյ յամիս ստուգեսցեն հանդերձ միաբան քահանայիւք համեմատելով ընդ մէտրիկան, և եթէ երևեսցին գաղեալք արդիւնք ինչ պահանջել ի գաղօղէն ընդ միոյ զերկուս և յանձնեալ Էրէցփոխանին գրեսցէ ի մատենին զորքանութիւն յանձնեալ դրամոց:

57. Վերատեսուչք բարեկարգութեանց և աւագ և ժամօրհնող քահանայք ունիցին զանքուն դիտողութիւն, ի վերայ վարուց և բարուց եկեղեցական ժառանգաւորաց, զի նոքա պարկեշտութեամբ և համեստութեամբ վարեսցեն զանձինս իւրեանց և յամենայն առաւօտ և երեկոյ մի պակասեսցին յեկեղեցւոյ, և եթէ ոք նկատեալ լիցի ի յանցանս ինչ կամ ի ծուլութեան, զայնպիսին խրատեսցէ երիցս և ի չորրորդումն յայտնեսցէ կոնսիստորիային, և սա վերահասու լեալ այնց ամենից յանցաւորութեանցն յայտնեսցէ Սինոդին վասն հանելոյ խոպառ ի հոգևորականութենէ և համարելոյ ընդ հարկատուս զրկելով յամենայն իրաւանց և արտօնութեանց:

58. Ի կոչումս և ի հացկերոյթս հոգևորականք լինիցին պարկեշտք չափաւորք յուտել և յըմպել, և մի ցոփաբան, մի արբեցող, մի կռուող, մի խռովարար, մի չարաշրջիկ, այլ խրատիչ, քարոզիչ, խաղաղարար, և լինել բարի օրինակ ժողովրդեան զի գրեալ է ամենայն բան տգեղ ի բերանոյ ձերմէ մի ելցէ. և թէ շրթունք քահանային զգուշասցին զխօսութեան զի բերան Տեառն ամենակալի է, և եթէ ոք յանդգնեալ գայթակղութիւն լինիցի ժողովրդեան իւրով ցոփաբանութեամբ, և արբեցութեամբ, այնպիսին լուծցի ի կարգէն:

59. Աւագ և միաբան քահանայք նկատեսցեն զի լուսարարք մաքուր պահպանեսցեն զեկեղեցին, զսեղանն, զբեմն, զխաչկալս, զմոմկալս, և զայլ եկեղեցական անօթս և զգեստս:

60. Քահանայք յորդորեսցեն զժողովուրդս նորոգել զհանդերձեղէնս, և կեղտոտ և պատառոտուն զգեստիւք չմատուցանել զսարսափելի խորհուրդն, այլ մաքուր զգեստուք:

61. Պարտաւորեմք զաւագ և ժամօրհնող քահանայս զգուշացուցանել զքահանայն և զեկեղեցական ժառանգաւորս զի ի ժամ աստուածպաշտութեան մի զրուցատրել ընդ միմեանս, ոչ շրջել ի դասէ ցդաս և ոչ մտանել ի խորանն, այլ ամենայն ոք զիւր կարգն պաշտեսցէ, պատկառելով և երկնչելով ի տեղւոյն

յահարկութենէ ուր բազմեալ կայ Աստուած, ընդ որում են և աղօթք նոցա, և առ նա ուղղել զմիտս իւրեանց, և եթէ ոք յանդգնեսցի զայնպիսին առաքել ի վանս վասն ուղղելոյ զանձս իւր:

62. Քահանայք ըստ անուանն կոչման և զգործն կատարեսցեն, և որպէս հայրք և ծնօղք ժողովրդեան, յամենայն ժամ պարտական են տալ նոցա զհոգևոր խրատս, մինչ ուսուցանելով յեկեղեցւոջ ի հրապարակս և առ տնին, զամենայն ոք, ըստ իւրաքանչիւր հասակի զգուշացուցանելով և յորդորելով յաստուածայինս:

## Պարտաւորութիւն քահանայից.

63. Քահանայք հնազանդք լիցին ամենայն օրինաւոր առաջարկութեանց աւագ քահանային:

64. Քահանայք առանց բանաւոր և յարգելի պատճառանաց մի մնասցեն յետս եկեղեցւոյն:

65. Զժամ գիշերային և երեկոյեան կատարել անխափան:

66. Ի կոչելն ժողովրդեան զքահանայս վասն հաղորդելոյ հիւանդաց, նոյն ժամայն գնասցեն և մի պատճառեսցեն թէ չէ ի ծխոյ իւրեանց:

67. Մի ոք ի քահանայից առանց գիտելոյ զխոստովանութիւն մարդոյ, զհաւատոյն և զգործոյն տացէ նմա զհաղորդութիւն մարմնոյ և արեանն Քրիստոսի. ի յառողջութեան կամ ի հիւանդութեան և կամ գիտելով զանարժանութիւն ուրուք, և կամ ի փոխել հիւանդին, և կամ առանց խոստովանութեան հիւանդին որոյ ուշն վերացեալ է և չզգայ ինչ, տայ յաղագս մարդահաճութեան զաստուածային խորհուրդն, և կամ չունելով զզգացողութիւն զսուրբ խորհուրդն անցուցեալ ընդ ջուր կամ ընդ գինի ի թասն ածեն ի բերանն հիւանդին, որ յանդգնեալ արասցէ զայս լուծցի ի կարգէն և մինչև ցմահ ապաշխարեսցէ զի անարգեաց զսրբութիւն խորհրդոյն:

68. Քահանայք առանց գրաւոր անցաթղթոյ վիճակաւոր արք-եպիսկոպոսին իւրոյ կամ կոնսիստորին և կամ գործակատարին մի իշխեսցէ գնալ այլուր և թողուլ զհօտ իւր, որ յանդըգնեսցի տացէ տուգանս:

69. Առանց գրաւոր հրամանի վիճակաւոր արք-եպիսկոպոսին, կամ կոնսիստորիին և կամ գործակատարին, քահանայքն մի

համարձակեսցին դնել զպսակ ումեք դաղտ կամ յայտնի, թէ և չիցէ ի նոսա արգելք ինչ ի կողմանէ ծնողաց, նաև մի դնել պսակ կնաթողաց, այրաթողաց, կամ ի բռնութենէ բռնաւոր անձանց առանց կամաց առն և կնոջ. որ ոք յանդգնեսցի լուծցի ի կարգէն:

70. Քահանայք յառաջ քան զպսակելն զոք, տացեն գրաւոր յայտարարութիւն հոգևոր իշխանութեանն կամ հոգևոր կառավարչաց իւրեանց, առանց թագուցանելոյ զհանգամանս պսակի նոցա, զչհասութիւնս զտհասութիւնս և կամ զայլ արգելս, որ յանդգնեսցի կրեսցէ զպատիժ համեմատ իւրոց յանցաւորութեանց:

71. Քահանայք ի դէպս կրելոյ յաւագ քահանայից իւրեանց զզրկանս, կամ տեսցեն ի նմա զապօրինաւոր ինչ գործս և զծուլութիւն կարեն բողոքել առ հոգևոր իշխանութիւնն:

72. Քահանայք մի նեղեսցեն զժողովուրդս զօշաքաղութեամբ և գերքան զչափն դրամական պահանջողութեամբ վասն որոց և իցէ օրինակատարութեանց, այլ կթել զկաթն զի եղիցի իւր, և ոչ ճմլել զպտկունսն, զի մի ելցէ արիւն, այլ զոր ինչ տացեն սիրով, առնուցուն, իսկ զաղքատս մի՛ բռնադատել:

73. Քահանայք մի խառնեսցին ի գործս աշխարհականաց, այլ պարտին յորդորել զաշխարհականս ի խաղաղութիւն և մի լիցին հոգաբարձու քաղաքի կամ գեղջ. կամ գլօղ արքունի հարկաց և տալից, զի պարտ է ի միոյն ի բաց կալ կամ աշխարհական հոգաբարձութենէն կամ ի քահանայութենէն:

74. Աշխատ լիցին քահանայք զի զորդիս իւրեանց կրթեսցեն յերկիւղն աստուծոյ յառաքինութիւնս և յուսմունս ազգային լեզուի, և յօրէնս աստուծոյ:

75. Անբարեբարոյ և ագէտ որդիք քահանայից ո՛չ միայն չունին արժանանալ եկեղեցական աստիճանաց, որպէս խօսի մարգարէն, զի դու զգիտութիւն մերժեցեր. մերժեցից և ես զքեզ զի մի քահանայասցես ինձ այլ և ունին զրկել յամենայն իրաւանց և արտօնութեանց իւրեանց և համաթուել ընդ հարկատուս:

76. Քահանայն մի իշխեսցէ յափշտակել զծուխս այլոց քահանայից որք չեն վիճակեալ նմա յեպիսկոպոսէն իւրմէ, եթէ ոք յանդգնեսցի առնել այնպիսին փոխեսցի արտաքոյ ի բնակութենէ իւրմէ յայլ քաղաք կամ գիւղ:

77. Քահանայ՝ եթէ զոք ի ժողովրդոց իւր ընդ բանիւ առնիցէ վասն որոց և իցէ յանցանաց, մի իշխեսցէ այլ ոք ի քա-

հանայից արձակել զնա, զի եթէ ի յայտ գայցէ յայնժամ և արձակող քահանայն ընդ բանիւ լինիցի:

78. Քահանայք մի իշխեսցեն զծուխս այլոց քահանայից խոստովանեցուցանել, այլ ամենայն ոք զիւր ծուխ խոստովանեցուսցէ, զի յայտնի լիցի խոստովանողն և չխոստովանողն, որ յանդգնեսցի ՚ի վանս ապաշխարեսցէ:

79. Եւ ամբողջապէս կատարումն այսոցիկ ամենայնի պարտաւորեմք զառաջնորդս, զհոգևոր իշխանութիւնն և զգործակատարս:



## ԳէՈՐԳ Դ-Ի ԿԱՆՈՆՆԵՐԸ (1866—1882).

Գէորգ—Դ. բազմելով կաթուղիկոսական գահի վրայ առաջին ուշադրութիւնը եկեղեցու խանգարուած վիճակի վրայ դարձրեց։ Նա հետևելով նախնեաց կանոններին և աւետարանական սկզբունքներին, պահանջեց բոլոր կուսակրօններից երդմամբ և ստորագրութեամբ հրաժարուել սեպհականութիւնից և բոլոր ունեցածը համարել վանքի և եկեղեցու սեպհականութիւն։ Այդ կարգադրութիւնը, որը միանգամայն համապատասխան է եկեղեցու ոգուն և մոռացուած էր բոլոր կուսակրօններից, զետեղում ենք այստեղ իբրև փաստ Գէորգ—Դ-ի սկզբունքների, որոնք շարունակութիւն էին Սահակի և Շնորհալու կարգերին։

1. «Պայման և ուխտ միաբանութեան Արարատեան մայր ս. աթոռոյն ս. Էջմիածնի ի ներկայութեան Վեհ. կաթուղիկոսի ամենայն Հայոց Գէորգայ—Դ-ի»։ «Ամենայն անձն որ նուիրէ զինքըն ի վանականութիւն, պարտաւոր է ըստ հրամանի Փրկչին Յիսուսի թողուլ զաշխարհ և զամենայն ինչս իւր և անձնուրացութեամբ հետևիլ նմա կատարելով միանգամայն զպայման սրբազան երդմանն զոր երդնու առաջի ս. սեղանոյ ի ժամ ձեռնադրութեան. և քանզի ամենայն կուսակրօն հոգևորականք սկսեալ յեպիսկոպոսաց անտի ցաստիճան դռնապանութեան ոչ գոլով տեարք գոյից իւրեանց չունին իրաւունս բաժանելոյ զայնս ըստ հաճոյից բարեկամաց իւրեանց և ազգականաց, և նոքին իսկ ազգականք ոչ ունին իրաւունս իբրև ժառանգ ներկայանալ և պահանջել զգոյս հանգուցելոյն, այլ յետ մահուան կուսակրօնից գոյք իւրեանց արժան է մնալ ի սեպհականութիւն Էջմիածնի գանձարանին, և այլոց վանօրէից միաբանիցն՝ վանուց իւրեանց. իսկ վանահայրք որք ըստ տնօրէնութեան հոգևոր ծայրագոյն իշ-

խանութեան կարգին 'ի պաշտօնն, նոյնպէս գոյք նոցա պատկանին ս. Էջմիածնի, և ոչ ոք ազգականաց հեռաւորաց և մերձաւորաց նոցա ունին իրաւունս յարուցանելոյ առ այն գվէճ. իսկ եթէ իցեն հանգուցելոյն աստուածահաճոյ կտակ յօգուտ ս. աթոռոյն, վանօրէից կամ վանական դպրոցաց՝ մնասցեն նոքա անփոփոխ նոյնութեամբ. քաջ գիտելով զայս մեր ի ներքոյ ստորագրելոցս, ըստ ամենայնի համաձայն գտանեմք և ոչ երբէք տամք ի մերս կողմանէ իրաւունս ազգականաց մերոց մերձաւորաց և հեռաւորաց յետ վախճանի մերոյ իբրև ժառանգորդ մեր հանդիսանալ և պահանջել զմնացեալ գոյս մեր կամ մասն ինչ ի գոյից մերոց. մեք ի սուրբ խղճէ չարժեալ խոստովանիմք, զի յետ վախճանի մերոյ ուր երբ և յոր պաշտօնի գտանիցիմք ժառանգ և ժառանգորդ մեր է գանձարան ս. Էջմիածնի, և ոչ այլ ոք ի մերձաւորաց մերոց և ազգականաց և եթէ նոքա կամիցին իբրև ժառանգ ներկայանալ ընդդէմ մերոց կամաց և խղճի, չունիցին բնաւ իրաւունս ոչ ի հոգևորական և ի քաղաքական դատարանս և ոչ յայլուր գանգատիլ և բողոքել, և եթէ յանդգնիցին մի լուիցեն նոցա ամենևին, զի մեք ըստ մեր խղճի մտաց յօժարակամ ստորագրեմք աստանօր»: Ստորագրութիւն բոլոր միաբանների, 1868 թուին: (Տես նրա կոնդակները):

Տես այս մասին Սահ.—35, 38. Շնորհ. 1, 2, 3, 4, 5, 6, 7:

Յարմարութեան համար նրա բոլոր կանոնները համարներով կնշանակենք:

Այս կարգադրութիւնից առաջ դեռ ևս 1867-ին յունիսի 8-ին 223 համար կոնդակով հրամայեց Սինոդին կանչել միաբանութիւնը և հետևեալ կարգերը պարտադիր անել միաբանութեան համար:

2. ա. Վանքում գինեմոլութիւն, զեղխութիւն և վատշուեր կենցաղավարութիւն չլինի. ծխել, արբեցնող ըմպելիքներ գործածել, տարադէպ զբօսանք անել, դատարկաշրջիկ լինել չի կարելի. առանց իւր և նշանակուած վերակացուների հրամանի վանքից դուրս չգնալ Վաղարշապատ. միաբանները պարապեն դիտութեամբ, գրականութեամբ: Զգեստի մէջ լինեն պարկեշտ և համեստ, սիրով և ընկերաբար վարուին միմեանց հետ: բ. Բոլորը միշտ եկեղեցի յաճախեն: գ. Միասին ճաշեն, ոչ ոք առանձին խոհանոց չունենայ: դ. Մանկահասակ տղայ ծառայ չպահեն, այլ հասակաւոր անձինք:

*Կանոնական կոնդակը 1868, հունուար 562։*

**Գէորգ Դ. տեսնելով քահանաների ընտրութեան անկանոն լինելը, դեկ. 21-ին 1868—թուին արձակեց կոնդակ Սինօդի անունով, հրամայելով անխախտ պահել հետևեալ կանոնները. տպել տուեց և ցրուեց ամեն տեղ ի հրահանգութիւն։**

**Ահա կանոնների աշխարհաբար թարգմանութիւնը։**

3. Եպիսկոպոսներից ոչ ոք չհամարձակի քահանայ ձեռնադրել անարժան մարդկանց կաշառքով, մեր նախնեաց հետևելով իսպառ դատապարտում ենք արծաթասէր եկեղեցականներին։

Տես Բ—առ. 29, Սփ 1, Լուս. 26։

4. Ոչ ոք չհամարձակուի քահանայ դառնալ առանց եկեղեցու ընտրութեան այսինքն քահանաների և ժողովրդի, այն էլ ոչ կողմնապահութեամբ կամ աչառութեամբ, հապա հանրագրութեամբ, որը պիտի ներկայացնել վիճակային Ատեանին։

Տես Լաւ. 13, Սար.—6, Շահ.—16, Դ—Դւ. 9, 10, Սիս. 1, 3, Երուս.—3, 9,

5. Վիճակային ատեանը ստանալով հանրագիրը, պէտք է քննի նախ՝ ընծայեալը ունի՞ սուրբ գրքի հմտութիւնը և ուղղափառ հաւատ, երկրորդ՝ ունի՞ իրան աստիճանի համապատասխան բարոյականութիւն ժողովրդին օրինակ լինելու համար։

6. Քաղաքի համար ձեռնադրուող քահանան պիտի լաւ հայերէն իմացող լինի, որ հոգևոր դպրոցներում կարողանան դասաւանդել գրաբառը։ Գիւղերում ոչ ամեն տեղ դեռ ևս դըպրոց չկայ, բայց և այնպէս գիւղի քահանաները պիտի լաւ իմանան եկեղեցու բոլոր պաշտամունքները, քրիստոնէական վարդապետութիւնը և եկեղեցու բոլոր խորհուրդները։

7. Եթէ ամեն տեղ չգտնուին տեղացի արժանաւոր ընծայացուներ, ուրիշ տեղերից թող ընտրեն. բայց տեղացիք պարտաւոր են ընտրելի անձին բոլոր ընտանիքով, կահ-կարասիքով փոխադրել քահանայանալու տեղը, իսկ հոգևոր իշխանութիւնը քննելուց յետոյ, պիտի երդումնագիր պահանջի ձեռնադրուողից ցմահ մնալ նոր տեղում քահանայ։

Նոյնպէս էլ ժողովրդից պիտի պահանջել պայմանագիր պահելու ապահով կերպով քահանային և ընտանիքը։

8. Այն քահանաները, որոնք ուրիշ տեղերի անունով կձեռնադրուին, և ապա կտեղափոխուին կամ իրանց քաղաքը, կամ ուրիշ տեղ, և տեղիք կտան զուր տեղից խռովութիւն առաջանալուն, կարգալոյծ լինին: Առաջնորդները խստիւ արգելեն այդպիսի տեղափոխութիւնը:

Տես Բ—առ.—15, 16, Նիկ.—15, 16, Անտ.—3:

9. Հոգևոր կառավարութիւնը անպարկեշտ և խռովարար քահանաներին պատժելու նպատակով չտեղափոխէ ուրիշ տեղ, հապա նոյն տեղում ապաշխարանք նշանակէ, որ ամաչի և ուղղուի, եթէ ուրիշ քահանայ չլինի նոյն տեղում, մօտ տեղերից նրա պաշտօնը կատարող մէկը բերուի: Պատժուած քահանայի ընտանիքը ստանայ ծխական արդիւնքի մի մասը, իսկ մնացած 3 մասը յանձնուի այրեաց և որբոց կամ Աթոռի արկղին:

10. Վնաս է այն սովորութիւնը, որ մի քանի սակաւաբնակ գիւղեր յանձնւում են մի քահանայի հովուութեան, չմտաբերելով այն առակը, «թէ ցրուեալքն առ բազումս տկարանան առ մին». որանից ծագում է հոգևոր գործերի և աստուածային պաշտամունքների մատակարարութեան դժուարութիւններ, այս հիմամբ թող սահմանուին ամէն մէկի համար մի քահանայ, թէև գիւղը սակաւաթիւ լինի, եթէ եօթանասուն տանից աւելի է՝ երկու քահանայ, իսկ եթէ բազմամարդ է գիւղը, ամէն մի 100 տան՝ մի քահանայ: «Թէև սակաւաթիւ սահմանեսցի նոցա յատուկ սեպհական քահանայ, և եթէ առաւել իցէ քան զեօթանասուն՝ երկուս քահանայս, իսկ եթէ բազմամարդ առ հարիւր տունն մի քահանայ»:

Տես Ներսէս—Ե, Սինօդի կարգադրութիւն:

11. Քահանայի որդիքը, որոնք եկեղեցականների կարգում են գրուած, պիտի լինին օրինակելի վարք ու բարքի տէր մարդիկ, ուսումնասէր և եկեղեցասէր: Եթէ ոչ, անբարոյական կեանք վարողներին պիտի հարկատուների կարգը մոցնել հանելով եկեղեցականների ցուցակից: Նոյն կարգը գործադրուի և դպիրների վերաբերմամբ:

Տես Ներսէս Ե. Սահ.—23:

12. Ծեր քահանաները, որոնք ընչասիրութեան և ագահութեան պատճառով չեն թողնում քահանայագործութիւնը, որը անկատար ձևով են անում զգայարանների թուլութեան պատճառով, հետևելով նախնեաց դրած օրէնքներին, դրանք զրկուին

քահանայագործութիւնից և նրանց փոխարէն նշանակուին նոր քահանաներ, որոնք ստանան ծխական հասոյթների մի մասը, 3 մասը թողնելով ծերացած քահանային:

13. Նորընծայ քահանաները պիտի քառասունքը անխափան պահեն: Մեր եկեղեցական կարգերով 3 քառասունք պիտի պահեն գիշեր ցերեկ եկեղեցում աղօթք անելով և պաս պահելով: Առաջի քառասունքին ծոմապահութիւն պիտի կատարեն՝ օրը մի անգամ պասուսյ կերակուր ուտելով: Երկրորդ քառասունքին միայն կաթնեղէն, ձկնեղէն և ձուեղէն գործ ածել, կարելի է տուն գնալ և ճաշել, ու եկեղեցի գալ յետոյ: Երրորդ քառասունքին միս կարելի է ուտել կիրակի օրերը: Այս է մեր նախնական կարգը և այսպէս էլ պիտի վարուել:

*Քառասունքի մասին այսպիսի խիստ կանոններ մեր եկեղեցական կանոններում չկայ, այս կանոնս վերցրած է Փիլիպպոս առաքեալի կանոններից. տես նրա գրաբառը:*

Տես Փիլ. 1:

14. Նախնեաց սահմանած կարգը ճշտութեամբ պիտի կատարեն ամուսնացեալ քահանայք, որ պատարագից երեք օր առաջ և երեք օր յետոյ պիտի եկեղեցում անց կացնեն սրբութեամբ, աղօթքով, հեռու մնալով ամուսնական յարաբերութիւններից: Որտեղ եկեղեցու մօտ սենեակ չկայ, պիտի անպատճառ կառուցանելու հոգ տանեն առաջնորդները:

Տես Թադէոս—12 կ.

15. Առաջնորդները, նոյնպէս և վարդապետները ամեն կիրակի և տօն օրերը պիտի քարոզեն եկեղեցիներում:

16. Շատ գիւղերում տարին 5 անգամ պատարագ հազիւ են անում քահանաները. պատուիրում ենք առաջնորդներին հրակել, որ քահանաները ամեն կիրակի և շաբաթ օր, նոյնպէս և նշանաւոր տօներին պատարագ մատուցանեն: Եթէ քահանան միայն է, գոնէ կիրակի և տէրունական օրերին կատարի:

Տես Ա—առ.—2, 5. Բ—Դւ. 6, 7, Ե—Դւ. 6:

## ՆՃԱՆԱԳՐՈՒԹԵԱՆ ԿԱՆՈՆՆԵՐ (1869 Թ. ԿՈՆՏԱԿ).

17. Պաշտօն գործակալ քահանայի. գործակալի պաշտօնն է նշանագրութեան եկողներից տեղեկանալ զանձապետի հետ, թէ երկուսն՝ տղան և աղջիկը հմւան են միմեանց, քանի՞ տա-

րեկան են, կամ չափահաս են, մերձաւոր ազգականութեան, խնամութեան կամ կնքահայրութեան կամ ուրիշ արգելք չկայ, ծնողները համաձայն են, երբ են հարսանիք անելու, երաշխաւոր կամ վկայ կայ, ուրիշ օրինական արգելք չկայ և այլն և այլն:

Տես Երուս. 12.

18. Գանձապետի պաշտօնը. Նախ՝ Նշանադրութեան օրը անպատճառ ներկայ գտնուիլ եկեղեցու սենեակում գործակալի մօտ և միասին քննել Նշանադրութեան պարագաները: Երկրորդ՝ աթոռահաս արդիւնքը և ննջեցեալի հոգեբաժինը ամենայն հաւատարմութեամբ գրել ժապաւինեալ տումարում: Երրորդ՝ ամեն ամիս գոյացած գումարը Սինօդ հասցնել:

19. Նշանադրութեան վերաբերմամբ. ա) Նախ՝ քահանաները լսելով Նշան դնելու լուրը, ամէն մէկը պիտ գնայ իւր խոստովանորդու մօտ և ջոկ ջոկ լսի նրանց ցանկութիւնը ամուսնանալու: Ապա քահանաները ազգականներին ժողովելով մի տեղ պիտի քննեն, Նշանադրութեան համար օրինաւոր արգելքներ չկան, և ապա գնան գործակալի և գանձապետի մօտ:

բ.) Նշանը լինում է փեսացուի կողմից մի մատանու նուիրմամբ հարսնացուին:

գ.) Ծխատէր քահանաները կառնեն մատանին և երկու երեք անձինք երկու կողմից սահմանուած օրերը կգնան գործակալի և գանձապետի մօտ Նշան դնելու:

դ.) Նշանադրութեան համար յատուկ օր Նշանակւում է ուրբաթ, երբ գանձապետը և գործակալը պիտի պատրաստ լինեն եկեղեցու սենեակում Նշանադրութեան տումարով անունները գրելու համար:

ե.) Գործակալը գանձապետի հետ քննելով պարագաները, երբ կտեսնեն ոչ մի եկեղեցական արգելք չկայ, գործակալը տղայի քահանայից մատանին կառնի և կտայ հարսնացուի քահանային աղջկան տանելու համար, «ի հաստատութիւն Նշանեալ լինելոյ Նորա», որից յետոյ անունները գրւում են տումարում: Վերջում կտորագրեն քահանաները և վկաները, ապա կՆշանակեն միջոցը մինչև հարսանիքի օրը: Այդ արձանագրութեան համարը պիտի տալ փեսացուի քահանային, որ պահի իւր մօտ և հարսանիքի աթոռահասն հատուցանելիս Ներկայացնի գանձապետին, որ հեշտութեամբ գտնի տումարի մէջ և Նշանակի այսպէս (Ա. պսակեցաւ ընդ Բ-ի . . . ):

*զ*) *Նշանադրութիւնից մինչև հարսանիք նշանակւում է 6 ամսուայ ժամանակամիջոց, օրինաւոր պատճառ եղած դէպքում կարելի է երկարացնել։*

*է*) *Նշանադրութիւնը քանդելու համար պիտի դիմել առաջնորդին և կամ յաջորդին, եթէ օրինաւոր պատճառ կգտնեն, յօգուտ այրեաց և որբոց և ուսումնարանի կամ եկեղեցու, նուէր առնելուց յետոյ, որ պիտի խկոյն տումար մտցնուի, թոյլ տալ և յայտնել գործակալին և գանձապետին, որ ջնջի նշանադրութեան տումարից նրանց անունները։*

*ը*) *Եթէ բացի նշանից, մինչև հարսանիքի օրը ուրիշ իրեր կտան հարսնացուին և յայտնուին, այդ նուէրները յանձնուին այրեաց և որբոց և միմեանցից յետ պահանջելու իրաւունք չունենան։*

*թ*) *Առաջնորդները հոգ տանեն, որ զուր աւելորդ ծախսեր չլինեն երկու կողմից, բայլդ անուանուած պահանջը վերանայ, որովհետև շատ խռովութիւնների տեղիք է տալիս և նշանդրէքի քակտման պատճառ դառնում։*

*ժ*) *Հարսանիքից 4—6 օր առաջ քահանաները պատրաստում են վկայականը և ստորագրում են իրանք և գիւղի երեցփոխանը. ապա տանում են գանձապետի մօտ աթոռահասը վճարելու և անդորրագիր ստանալու։*

(*Ստորագրում են երկու կողմի քահանաները և երեցփոխանը*)։

*ժա*) *Քահանաները եթէ առանց անդորրագիր ստանալու պսակ անեն, պատժի և տուգանքների ենթարկուին։*

*Կանոններիս նպատակն է թէև կանոնաւորել նշանադրութիւնը և աւելի հաստատ հիմքերի վրայ դնել այդ իբրև պսակի նախնական պատրաստութիւն, բայց այնքան բարդացնում են գործողութիւնը, որ շատ մեծ դժուարութեամբ կարելի կլինի կեանքում գործադրել։*

## *Պսակի կանոնները* 1875 *թուին հրատարակած.*

20. *Նշանադրութեան ժամանակ խոստովանահայր քահանան պիտի ուշ դարձնի, թէ յօժարամիտ և ազատ կամքով են ցանկանում ընկերանալ հարսն ու փեսան, թէ այլ և այլ արտաքին պատճառներից և բռնութիւնից ստիպուած։*

Տես Բարս. 42, Շնորհ. 29։

21. Ամուսնացածները պիտի չափահաս լինին։

Տես Բ—Դւ. 24, Սահ.—27, Շնոր.—28։

22. Պէտք է ուշ դարձնեն երկուսի առողջութեան վրայ, որ յետոյ ապագայում տարաբախտութեան պատճառ չդառնայ, որովհետև «անլուծանելի է պսակն մինչև ցմահ միաբան կենակցութեամբ»։

23. Մեր եկեղեցին արգելում է արիւնակիցների և մերձաւորների ամուսնութիւնը «քանզի և ըստ փիզիքական պայմանաց առողջութեան ի վնաս յոյժ համարի որդւոց և սերնդոց նոցա»։

## «Հրահանգ վասն աւագ քահանայից եւ պարտուց պաշտաման նոցա» (Արարատ. 1882 թ.)։

24. Աւագ քահանան կամ աւագերէցը հայոց եկեղեցու վաղեմի կարգերի համաձայն, կարգւում է ամենայն հայոց կաթուղիկոսի հրամանով, ի դիմաց առաջնորդի իբրև հսկող թէ եկեղեցու բարեկարգութեան և թէ պաշտօնեաների և քահանաների վարք ու բարքի վրայ։

Տես Սահ.—15, Բ—Դւ. 14, 13, 19։

25. Աւագ քահանայութիւնը տիտղոս կամ պատիւ չէ, ըստ օտարամուտ կարծեաց, այլ եկեղեցու կառավարչական պաշտօն։

26. Եթէ քաղաքներում և վիճակներում եկեղեցիների շատութեան պատճառով շատ աւագերէցներ կլինեն, այն ժամանակ առանձին կառավարիչներ կարելի է նշանակել գործակալ անունով, տալով նրան մի աշխարհական օգնական գանձապետ անունով։

27. Աւագ քահանայի պարտքն է հսկել, որ եկեղեցում՝ հայոց ծէսերի և աւանդութիւնների հակառակ բան չլինի. սպասները, անօթները և եկեղեցական հանդերձները մաքուր և անթերի լինին բոլոր խորհուրդների կատարման համար, պահանջուելիք եկեղեցական մատեանները լրիւ լինեն, լուսամուտները երկաթեայ վանդակներ ունենան, դռները ամրապինդ փականքներ և գիշերապահ լինի եկեղեցու մօտ։

28. Եթէ եկեղեցին հանդերձեղէնի կամ նորոգութեան պէտք ունենայ, աւագ քահանան ժողովրդին յորդոր կարդալուց յետոյ, երեցփոխանի հետ առաջնորդից ժապաւինեալ մատեան խնդրեն կամաւոր նուէրներ ժողովելու եկեղեցու պէտքերը հոգալու համար։

29. Եկեղեցի շինելու դէպքում, աւագ քահանան պիտի միտ դնի, որ շէնքը լինի հայոց եկեղեցիների ձեւով և վայելուչ, դադարման դէպքում իսկոյն իմացնի առաջնորդին։

30. Աւագ քահանան պիտի ուշ դարձնի և հսկի, որ քահանաները, սարկաւագները և դպիրները միշտ եկեղեցի գնան, դատարկապորտ չլինին, խաղերով չզբաղուին, եթէ անկարգութիւն անող կտեսնի, նրան երկու անգամ խրատի և անուղղայ գտնելուս, առաջնորդին կամ թեմական ատենին հաղորդի։

31. Աւագ քահանան պիտի աշխատի, որ ժողովրդականք տարին երեք անգամ հաղորդուին՝ զատկին, ծննդեան և վերափոխման։

32. Պիտի հսկեն որ հաղորդութիւնից ութ օր առաջ խոստովանուին և հաղորդութեան օրը արձակուին և ոչ նոյն օրը ըստ օտարամուտ սովորութեան թէ խոստովանուին և թէ հաղորդուին։ Մեծ պասին երբ վարագոյրը բաց չէ, հաղորդուել չի կարելի, բացի հիւանդութեան և երկար ճանապարհորդութիւն անելու դէպքերից։

33. Աւագ քահանան միտ պիտի դնի, որ անպակաս կատարուին ժամասացութիւնները, շաբաթ և կիրակի պատարագ լինի անխափան, նոյնպէս և տօնական օրերը։ Ժամերգութիւնը չտապով կամ համառօտելով, կամ եղանակները փոփոխելով չերգուին, այլ հարց աւանդածին նման։

Տես Ե—Դւ.—17—25, Սահ. 3.

34. Եթէ մէկը, աշխարհական թէ հոգեւորական, եկեղեցում անկարգութիւն անի, չփոթ բարձրացնի գործով կամ խօսքով և խափանի ժամերգութիւնը, աւագ քահանան իսկոյն ծանուցանի առաջնորդին։

35. Աւագ քահանան չպիտի թողնի որ խէթ և հակառակութիւն ունեցող քահանաները և սարկաւագները պատարագ անեն, մինչև չհաշտուին, եթէ չլսեն նրան, թող առաջնորդին իմացնի։

36. Աւագ քահանան ուշ դարձնի, որ հաղորդութիւնը պատուով և զգուշութեամբ պահուին արծաթի ոսկեզօծ մասնատփով ընծայարանի մէջ, և չթողնեն շատ հնանայ, այլ շուտ շուտ նորոգեն։

37. Ուշ դարձնի, որ նորածնի մկրտութիւնը կատարուի

ութ օրուայ ընթացքում և եկեղեցում, սարկաւագների և դպիրների մասնակցութեամբ։

Տես Ա—Աւ.—12։

38. Զգոյշ լինի, որ հանգուցեալները ժողովրդական եկեղեցիններում երկու ժամից աւելի չպահուին, և հանգստեան պաշտօն կատարելուց յետոյ տանեն թաղելու. իսկ եթէ գերեզմանատան առանձին մատուռ լինի, այնտեղ կարելի է պահել, միայն առողջապահական կանոնների համաձայն։

39. Զգոյշ լինի որ ոչ ոք հոգևորականներից առանց կօշիկը հանելու և մաքուր հողաթափ հագնելու բեմ դուրս չգայ։

40. Զթողնել որ մեր եկեղեցիններում նոր թափօրներ և հանդէսներ հնարուին կամ խորաններ և մատուռներ շինուին հակառակ հայոց եկեղեցու ձևի։

41. Որ զատկի և ծննդեան տնօրհնէքը կատարեն վայելչապէս առանց անկարգութեանց և արբեցողութեան։

42. Կիրակի և տօն օրերին պիտի խրատներ տան ժողովրդին և խոստովանութեան համար փող չվերցնեն։

Տես Սիս. 11։

43. Աւագ քահանան զգոյշ լինի, որ քահանաները սարկաւագներին և դպիրներին չզրկեն և կամ խփեն, եթէ յանցանք կգործեն, թող քահանաները դիմեն աւագ քահանային, և եթէ չարունակեն, առաջնորդին յայտնեն։

44. Սարկաւագները և դպիրները պիտի մեծարեն քահանաներին և հնազանդին, և խօսքով և գործով չանարգեն. եթէ նեղութիւն կրեն քահանաներից, դիմեն աւագին, եթէ աւագ քահանայից նեղուին՝ առաջնորդին։

45. Աւագ քահանան պիտի զգուշացնի քահանաներին և սարկաւագներին որ աչքածակութիւն չանեն, չնեղեն և չզզուացնեն ժողովրդին տուրքերի կամ արծաթի չափից աւելի պահանջելով և սակարկութիւն չանեն ս. խորհուրդների՝ մկրտութեան, պսակի, պատարագի, թաղման և այլն կատարման համար։

Տես Ներսէս Ե. Սահակ.

46. Քահանաները և սարկաւագները առանց աւագ քահանայի իրաւունքի 25 վերստ հեռաւորութեամբ տեղ չպիտի գնան մինչև իսկ մի օրով, իսկ կարևոր դէպքերում նրա իրաւունքով կարող են հեռու տեղեր էլ գնալ միայն իրանց վիճակում։

47. Քահանայի կամ սարկաւագի մեռնելու դէպքում, աւագը պէտք է իսկոյն իմացնի Թեմական Ատենին, տեղեկութիւն տալով մնացած ընտանիքի մասին և մատուցանելով նրա պաշտօնական Թղթերը և մեռածի ունեցածի ցուցակը:

48. Քահանայի մահից յետոյ, աւագ քահանան պիտի գնայ նրա տունը, ստուգի եկեղեցական ստացուածքը և գրուածները, և յանձնի նորին կամ նշանակուած քահանային երեցփոխանի մօտ: Նոյնը կանի և երեցփոխանի մահուան դէպքում, եթէ պակաս բան գտնի, կորածի գինը և կորցնողի անունը յայտնի առաջնորդին:

49. Նա պիտի հսկի, որ քահանաները, սարկաւագները և դպիրները իրանց աստիճանին վայել զգեստներով լինին և մանաւանդ միատարազ գլխարկ ունենան բարեձև և վայելուչ և աշխարհականներից զանազանուեն իրանց բարեվայելուչ զգեստներով:

Տես Բ—Դւ. 12:

50. Աւագ քահանան իրանից բարձր իշխանութիւնից հրաման ստացած ժամանակ, առանց երկբայական եզրակացութեան և ինքնակամ բացատրութիւնների իսկոյն կատարի, ուրիշ եկեղեցականների տարակուսանքը ինքը փարատի, իսկ ինքը տարակուսելիս Թող դիմի առաջնորդին կամ Թեմ. Ատեանին:

51. Նա պիտի զգոյշ լինի, որ չհաս և ապօրինի պսակ չանեն իւր եկեղեցու քահանաները, ապօրինութիւն նկատած ժամանակ անյապաղ գրութեամբ պիտի յայտնի առաջնորդին և Թեմ. Ատեանին՝ պսակը խափանելով:

52. Նա պիտի զգոյշ լինի՝ որ ուրիշ ծխականին չպսակեն իւր քահանաները, խստիւ արգելւում է նաև այն դէպքերում պսակել, երբ նշանածներից մէկը եկուոր է. սա պէտք է անպատճառ իւր առաջնորդից, որտեղացի էլ լինի, վկայական բերել տայ և օրինաւոր արգելք չեղած դէպքում պսակուելու իրաւունք ստանայ:

53. Նա պիտի ուշ դարձնի, որ արձանագրական (մետրիքական) մատեանները տարուայ սկզբին տրուին քահանային, տարին երկու երեք անգամ վերահայի գրուածքները և իւր ստորագրութեամբ վաւերացնի և պահանջի որ միօրինակ լինին:

54. Նա պիտի միտ դնի, որ եկեղեցու պահարանում անկորուստ պահուին եկեղեցու անօթների, սպասների և եկեղեցական իրերի ցուցակը: Զգուշութեամբ պահուին եկեղեցու հրամա-

նագրերը, արձանագրական և հաշուեմատեանները անցած տարիների և այլն և այլն:

55. Քահանաները միմեանց ծուխ չյափշտակեն պաշտամունք կատարելով միմեանց փոխարէն:

Տես Շնոր. 18:

56. Նա պիտի հսկի, որ երեցփոխանները աչալրջութեամբ գրեն հաշուեմատեաններում ելմուտից հաշիւը. Նշանաւոր ծախքեր չանեն առանց իւրան և ժողովրդի հաւանութեան:

57. Նա պիտի հսկի որ ծխական երկսեռ դպրոցներում կրօնի ուսուցիչները լինին հմուտ և ուղղափառ և աջակցեն հոգաբարձութեան:

58. Նա չթողնի օտարական վարդապետներին և քահանաներին փիլոն առնել իւր եկեղեցում, մինչև որ չունենան Սինոդից յանձնարարական գիր:

Տես Բ—առ. 12, 13, Անա.—7, 11, Լա. 41:

*Ահա եւ Գէորգ—Դ.-ի 1868—ի կոնդակի գրաբար պատճէնը 15 երես փոքրադիր տպած գրքոյկով:*

Գէորգ ծառայ Յիսուսի Քրիստոսի և անհասանելի կամօքն Աստուծոյ Եպիսկոպոսապետ և կաթուղիկոս ամենայն Հայոց ծայրագոյն Պատրիարք համազգական Նախամեծար Աթոռոյ Արարատեան Առաքելական Մայր Եկեղեցւոյ Սրբոյ Կաթուղիկէ Էջմիածնի, Հայրապետական օրհնութեամբ ծանուցանեմք Սինոդի մերոյ, և ամենայն Թեմակալ Ատենից Գերապատիւ Արք եպիսկոպոսաց վարդապետաց և քահանայից և ամենայն ուխտի մանկանց սրբոյ Եկեղեցւոյս Հայաստանեայց:

Ըստ Աստուածային Նախասահման տնօրէնութեան ամբարձեալ Մեր 'ի գահ Հայրապետական ամենայն Հայոց՝ ակընունէաք արդարև տեսանել 'ի Մայր աթոռս սրբոյ Էջմիածնի և յամենայն վիճակս նորա զամենայն կարգս ուղղութեան յանփոփոխ պայմանի, զորս երանաշնորհ Նախնիք յառաքե-

լական աւանդութեանց առեալ և հաստատեալ՝ պատկառ կացին երկիւղած իմն բարեպաշտութեամբ կանոնացն այնոցիկ. սակայն ցաւ է մեզ ասել թէ՝ տեսաք զոմանս տարօրինակ իմն գնացիւք օտարացեալս 'ի գեղեցիկ շաւղաց կառավարութեանց սուրբ Եկեղեցւոյ մերոյ, որ իւրով անարատութեամբ և բարոյական կանոնադրութեամբ 'ի վաղուց հետէ նախանձելի հանդիսանայ առաջի օտարազգաց։ Քանզի 'ի բաց թողեալ զայլ և այլ կարգադրութիւնս զորոց ունիմք յետոյ գրել, առ այժմ յակնարկեալ զբարոյական հանգամանս Հոգևորական դասուց, յորոց առաւել կախին բարոյական կենդանութիւն Ազգին մերոյ և զարգացումն նորա 'ի կրօնական Աստուածպաշտութիւնս, գտաք զբազումս բազմօք շեղեալս յառաջնոցն Հոգևորավայել քաղաքավարութեանց։ Քահանայք՝ որ ըստ աստուածային սուրբ պատգամաց պարտին լինել գիտակք երկնային օրինաց և զարդարեալք կենցաղօգուտ ուսմամբք, տեսաք ածեալ յայն բարձր և երկնաւոր սուրբ կոչումն՝ զոգէտս զանարժանս և զարատաւորս իսկ, որոց խսպառ արգելուն օրէնք Եկեղեցւոյ մատչիլ 'ի սպասաւորութիւն սրբոյ սեղանոյն։ Իսկ եկեղեցական տեսչութիւն, որ օրինադրեալ է 'ի սրբոց Առաքելոց կարգել ըստ բազմութեան հաւատացելոց զկարևոր թիւ երիցանց, 'ի տեղիս տեղիս նշմարեցաք զթիւ նոցին անցեալ զանցեալ քան զսահմանեալ չափն։ Արդ՝ նկատելով զայսպիսի զեղծմունս նախնական կարգաց 'ի Հոգևոր և յԵկեղեցական կառավարութեան մերում, զորս յառաջ եկեալ համարիմք յանհոգութենէ Հովուաց և 'ի շահասիրութենէ Եպիսկոպոսաց ոմանց. վասնորոյ ըստ սեպուհ պարտաւորութեան մերում հարկ անհրաժեշտ մեզ վարկաք առ ժամանակ մի արգելուլ զձեռնադրութիւն քահանայից և այլոց եկեղեցական պաշտօնէից մինչև զվաղնջուց 'ի մեզ հաստատեալ կարգս և կանոնս նորոգելով, գրով աւանդել ձեզ ամենից բարձրաստիճան Եկեղեցականացդ և առ հասարակ լրութեան Ազգիս և ամենայն վիճակային Հոգևոր Ատենից։

Ա). Այլ արդ աղաչեմք զամենեսին զձեզ սիրովն Յիսուսի

Քրիստոսի փրկչին մերոյ՝ որով կարգեցայք հաւատարիմ տընտես Տանն Աստուծոյ առ 'ի մատակարարել 'ի ժամու զարբումն շնորհաց Հոգւոյն սրբոյ։ Մի՛ ոք այսուհետև յեպիսկոպոսաց յօժարեսցի ածել յաստիճան քահանայութեան զարս անարժանս, և զրկեալս 'ի գեղեցիկ իմաստից Հոգւոյն սրբոյ, մանաւանդ զարատաւորս և զանբարոյականս զակատեալս զհետ զօշաքաղութեան։ Քանզի Քահանայութիւնն, որ 'ի Քրիստոսէ հաստատեցաւ յեկեղեցւոջ 'ի հազարապետութիւն խորոց խորհրդոցն Աստուծոյ, պարտ է զայնպիսիս ընտրել յայն սուրբ աստիճան, որք բաւական իցեն զայլս խրատել և զանձինս իւրեանց ապրեցուցանել յանխուսափելի պատասխանատուութենէ Աստուծոյ։ Արդ յայս Աստուածային աւանդից լսեմք խոտորիլ ոմանց Եպիսկոպոսաց մերոց և առաւել ևս վիճակային Հոգևոր Ատենից, որք բազմիցս յընտրութեան անդ որ և իցէ անձանց 'ի հոգևորականութիւն, առաւել միտ եդեալ են օգտի իւրեանց, քան արժանաւորութեան ընտրելոցն։ Եւ թէ քանի խոտելիք են և դատապարտելիք այսպիսի արարք, վկայեն մեզ վճիռք Նախնի սրբոց Հարց, որք ընդ նզովիւք արկեալ են եթէ՝ զնա, որ ձեռնադրէ արծաթով զանարժանս, և եթէ՝ զնա, որ անարժան գոլով յանդգնի արծաթով գնել զշնորհս Հոգւոյն սրբոյ։ Թէև սովորութիւն էր նախնեաց մերոց ընդունել զկամաւոր նուէրս ըստ չափու կարողութեան իւրաքանչիւրոց 'ի բերոյ երկրի նոցին ևայլն, զոր մատուցանէին սիրայօժար կամօք և բարեպաշտութեամբ, զորս և մեզ ոչ 'ի դէպ է խափանել, համարելով զայնս պտուղ բարեպաշտութեան հաւատոց նոցա, բայց վաճառաշահ լինել գնահատութեամբ նախ քան զկատարումն տիրահաստատ խորհրդոցն՝ արգելումք իսպառ Հոգւովն Աստուծոյ, և դատապարտեմք զարծաթասէր եկեղեցականս որպէս և նախնիք մեր դատապարտեալ են իրաւամբ։

Բ). Մի՛ ոք այսուհետև ձեռներեց լինիցի ընծայել զանձն առաջի Աստուծոյ առանց ընտրութեան Եկեղեցւոյ. զի քահանայացուք որք լինելոց են 'ի տիրացուաց սպասաւորողաց եկեղեցւոյն, պարտին ընտրիլ նախ 'ի քահանայից և ի ժո-

ժողովրդոց այնր եկեղեցւոյ համահաճութեամբ և սիրով, և մի աչառութեամբ և կողմնակցութեամբ, և ապա հանրագրութեամբ ամենեցուն ներկայացուցանել վիճակային Հոգևոր իշխանութեան։

Գ). Վիճակային Հոգևոր իշխանութիւնն յետ ընդունելոյ զհանրագրութիւն ժողովրդոց 'ի վերայ այնր ընտրեալ անձին 'ի քահանայութիւն, պարտի առնել զքննութիւն նախ՝ թէ ունի զուղղափառութիւն հաւատոյ և զուսումն Աստուածային գրոց, զի կարող լինիցի ըստ օրինի պաշտել զկարգ Եկեղեցւոյ։ Երկրորդ՝ թէ ունի զբարոյականութիւն կատարեալ, զի կարող լինիցի ըստ կոչման պարտաւորութեանն՝ կառավարել զժողովուրդս օրինակաւ անձին։ Քանզի ո՛չ սակաւ վտանգեսցի եկեղեցին Աստուծոյ յայնմանէ, որ գոլով զուրկ 'ի յիշատակեալ բարոյական հանգամանաց՝ կարգեսցի հովիւ եկեղեցւոյ և կառավարիչ հօտին Քրիստոսի։ Զեղծմունք բարեպաշտութեան և թուլութիւն կրօնից՝ որ 'ի յետին ժամանակս զգալի իմն օրինակաւ տեսանին 'ի կենցաղավարութեան մերոցս, անտի յառաջ եկեալ համարիմք, զի որ ընտրեալք են լոյս լինել աշխարհի և աղ համեմիչ բարոյական կենաց մարդկան սրբութեամբ և աստուածահաճոյ քաղաքավարութեամբ յառաջ վարելով զպաշտօն իւրեանց հոգևորականացն դասք, զեղխ և աշխարհասէր կենօք կենցաղավարելով վատութեան հեղինակ լինին ժողովրդոց մերոց։ Եւ ահա յայս միտս Առաքեալն Պօղոս խստիւ պատուիրէ «Վաղվաղակի ձեռս 'ի վերայ ուրուք մի՛ դնել, զի մի՛ կցորդ լինիցին մեղաց օտարաց»։ Արդ զայս և մեք նկատելով կանխաւ, պատուէր տամք ամենայն Հոգևոր Ատենից և Առաջնորդաց Եկեղեցւոյ՝ զգոյշ լինել յամենայնի, և մի՛ վաղվաղել առաջի կացուցանել Սինոդի զամենայն ընտրեալս 'ի ժողովրդոց առանց կանխաւ հասու լինելոյ ներքին արժանաւորութեան նոցա, եթէ հաւատոյն՝ որ առ Աստուած, և եթէ ջերմեռանդն կրօնասիրութեան և պարկեշտ վարուց նոցին և ուսման։

Դ). Վասն եկեղեցւոյ քաղաքաց ձեռնադրելի անձն 'ի

քահանայութիւն՝ պարտի ունել զուսումն Հայկաբանութեան, այնպէս զի լինիցի վարժ 'ի գրել և 'ի բացատրել զգրաբառ լեզու Հայոց, և ևս Հմուտ առարկայիցն, զորս սովորաբար աւանդեն 'ի Հոգևոր ուսումնարանս. իսկ ձեռնադրեալքն վասն գիւղօրէից եկեղեցեաց, որովհետև դեռ ևս չեն Հաստատեալ յամենայն գիւղօրայս բարեկարգ դպրոցք, և ուսեալքն 'ի նմին անկատար են ըստ մեծի մասին, թէև առ չմնալոյ նոցա առանց քահանայի թոյլատրեմք առ այժմ ձեռնադրել զայնպիսին բայց պարտ է պահանջել և 'ի նոցանէ գոնեա զգիտութիւն շարականաց և առ Հասարակ ամենայն եկեղեցական պաշտամանց և կարգաց ևս և քրիստոնէական վարդապետութեան Հաւատոց և ամենայն խորհրդոց եկեղեցւոյ։

Ե). Եւ քանզի նկատմամբ Հանգամանաց ժամանակիս չէ Հնար ամենայն ուրեք գտանել զարս արժանաւորս այսր սուրբ և աստուածային կոչման, վասն այսորիկ պատուիրեմք։ Եթէ չգտանիցի 'ի տեղւոջ ուրեք արժանաւոր տիրացու, ընտրեսցի յայլ տեղեաց, բայց նախ՝ պարտին տեղացիք զընտրեալ անձն ամենայն ընտանեօք և կահիւք և կարասեօք փոխադրել 'ի տեղին, ուր լինելոց է քահանայ. և Հոգևոր իշխանութիւնն յետ կանոնաւոր քննութեան, զոր 'ի վեր անդր յիշատակեցաք պարտ է պահանջել զերդմնագիր 'ի ձեռնադրելոյն վասն կալոյ և մնալոյ անդ ցվախճան կենաց իւրոց անբաժանելի յեկեղեցւոյ և 'ի ժողովրդոց։ Նոյնպէս և 'ի ժողովրդոց Հարկ է պահանջել զպայմանագիր վասն ապահովապէս պահպանելոյ զքահանայն և զընտանիս նորին։

Զ). Լսեմք, զի տիրացուք քաղաքաց և կամ երևելի գիւղօրէից տեսանելով՝ եթէ ոչ կարեն լինել քահանայ 'ի տեղւոջն, ընտրեն զմի 'ի մասնաւոր գիւղօրէից անտի՝ և խոստանան մնալ անդ մշտնջենաւոր քահանայ, և ապա յետ ձեռնադրութեան գուն գործեն որև իցէ կերպիւ փոխադրել 'ի քաղաքս իւրեանց, կամ այլուր, իսկ Հոգևոր իշխանութիւնն զանազան պատճառանօք առնէ զՀաճոյս նորա, և 'ի տեղի նորա նշանակէ զայլ ոք 'ի քահանայ։ Այլ քանզի այսպիսի

ուխտազանցութիւնք չեն տարբեր 'ի յանցուածոց, և քան զյանցանս առաւել դատապարտելի, ուստի պատուէր տամք Առաջնորդաց և վիճակաւոր Ատենից, եթէ դէպ լինիցի այսուհետև, մի իշխեսցին տեղափոխել. սակայն եթէ գոգուելով զժողովուրդն՝ յարուցէ աղմուկ և խռովութիւն, լուծցի 'ի քահանայական կարգէ, փոխանակ զի ուխտազանց գտանի։

Է). Են ոմանք 'ի քահանայից, որ ընտրեալ գոլով 'ի չարիս և հակառակասէր ունելով բնութիւն ընդ դէմ պարկեշտ վարուց՝ զօշաքաղութեամբ, յիշոցօք և ազգի ազգի անվայել բանիւք և ընթացիւք գայթակղութիւն տալով ժողովրդոց երկպառակեն, որոց առ խաղաղելոյ հոգևոր իշխանութիւնն տեղափոխէ զքահանայն այլուր 'ի քահանայագործութիւն իբրև պատիժ յանցաւորութեան. զայնպիսիս պատուիրեմք առ տեղեաւն, ուր էր՝ ընդ ապաշխարութեամբ արկանել, 'ի նմին իսկ եկեղեցւոջ 'ի ներկայութեան ժողովրդոց իւրոց 'ի խրատ և 'ի զգուշութիւն։ Եւ եթէ միայն իցէ և չունի զայլ ոք պաշտօնակից ենթարկեալն ապաշխարութեան, կարգեսցի ժամանակաւորապէս այլ քահանայ 'ի պաշտօնակատարութիւն, և 'ի ծխական արդեանց մի մասն 'ի չորից սահմանեսցի 'ի սնունդ ընտանեաց արգելեալ Քահանային, և երեք մասն արկցէ 'ի հաշիւ որբոց և այրեաց կամ Աթոռապատկան հասութից։

Ը). Ո՛չ սակաւ եպերելի դատեմք և զայս սովորութիւն, զոր որպէս լսեմք 'ի տեղիս տեղիս առնեն առաջնորդք և վիճակային ատեանք, իբր այն զի սակաւաբնակ գիւղք երկու կամ երեք, յանձնին 'ի հովուութիւն միոյ Քահանայի, չմտաբերելով ըստ հասարակաց առածին թէ, «ցրուեալքն առ բազումս տկարանան առ մին». այլ ըստ որում՝ յայսպիսի տրնօրէնութեանց անտեղութեանց բազմաց յառաջ գալն անուրանալի է նկատմամբ հոգևոր գործոց մատակարարութեան ժողովրդոց և աստուածային պաշտամանց, ըստ այսմ օրինադրել արժան համարիմ այսուհետև՝ իւրաքանչիւր գիւղ որ ունի Եկեղեցի, թէ և սակաւաթիւ, սահմանեսցի նոցա յատուկ և սեպհական Քահանայ, և եթէ առաւել իցէ քան

զեօթանասունն՝ երկուս Քահանայս, իսկ եթէ բազմամարդ՝ առ հարիւր տունն՝ մի Քահանայ։

Թ). Այլ որ՝ քան զամենայն ցաւալին է և ուշադրութեան արժանաւոր, իբրև արմատ ուղղութեան կարգաց և օրինաւորութեան հոգևորականութեանս մերում, որդիքն են Քահանայից, որ յաղագս ծագման ազատ համարեալ 'ի հարկատու կարգաց, սահմանեալ ևս են 'ի պատիւ Քահանայութեան ելանել 'ի ժամանակին և ընդ տեսչութեամբ հոգևորականութեան գրեալ 'ի կարգս եկեղեցականաց։ Վասն սոցա լսեմք բազմիցս՝ թէ փոխանակ ուսման պարապելոյ և 'ի վարժս եկեղեցականութեան, պարապորդութեամբ անցուցանեն զժամանակ կենաց իւրեանց. և բազում այն է, որք անբարոյապէս կեան 'ի գայթակղութիւն ժողովրդոց և յուսան ևս ձեռնտուութեամբ օժանդակելոց յապագային ընդունիլ զաստիճան Քահանայութեան, և եթէ յազգի մերում օր քան զօր աճին թիւք վատշուէր դատարկաշրջիկ և գինեմոլ Քահանայից անտարբեր եղելոց առ ստանձնեալ պաշտօն եկեղեցականութեան իւրեանց, յայսպիսեաց կենցաղավարելոց ընկալեալ են զաճումն։ Ուստի առ 'ի կարճել զապականութեան որոմնս այս, որ խանգարէ զբարեզարդութիւն ուղղափառ եկեղեցւոյ, և անուան հոգևորականութեան նախատինս առ բերէ 'ի մէջ ազգաց օտարաց. զայս կանոն աւանդեմք։ Որդիք Քահանայից, որք չունին զուսումն, կամ անբարոյական են ըստ վկայութեան ժողովրդոց, տնօրինեսցէ իշխանութիւնն արձակել զնոսա 'ի հոգևորական ծագմանէ, և արկցէ 'ի թիւս հարկատուաց։ Այս օրէն լիցի և վասն այնպիսի դպրաց, որք գոլով ծնունդք հարկատուաց, ըստ խնդրոյ ժողովրդեան արձակեալ են 'ի հարկատուութենէ և մտեալ են 'ի կարգս եկեղեցական պաշտօնէից, որք եթէ չունին զուսումն և ծոյլ են 'ի պաշտման եկեղեցւոյ և ուսման՝ և վատաբարոյ, զըրկեսցին յեկեղեցական կարգաց և վերստին ընդ հարկատուս գրեսցին։ Քանզի զինչ օգուտ ունիցի առ յապայն յայնպիսեաց ազգ մեր և եկեղեցի սուրբ, բայց եթէ անկարգութեամբ օրինակ չարեաց հանդիսանալով 'ի պարզամիտ ժո-

ղովրդեան ունին 'ի վերջոյ արատս բերել անուան Հոգեւորականութեան և սուրբ կրօնիս մերոյ։

Ժ). Են Քահանայք՝ որք 'ի խոր ծերութեան հասեալ են և կամ վատնեալ 'ի զգայարանացն զօրութենէ, բայց առագահութեան կամ ընչաքաղցութեան չկամին հրաժարիլ կամաւորապէս 'ի պաշտամանց իւրեանց, և յանդգնին անկատար իմն եղանակաւ կատարել Քահանայագործութեան գծանր պաշտօն, 'ի նախնեաց կանոնադրեալ է զտկարութեամբ զգածեալ ծերոց և զառամելոց լուել 'ի պաշտօնակատարութենէ, վասնորոյ և մեք զնոյն տնօրինեալ պատուիրեմք, եթէ ծերասցի և անկարող եղիցի Քահանայագործել և միայն իցէ յեկեղեցւոջ, 'ի տեղի նորա ձեռնադրեսցի այլ ոք․ և ծխական հասոյթքն, որ 'ի ժողովրդոց, բաժանեսցին 'ի չորս մասն, երեք մասն լիցի ծերացեալ Քահանային, և մի մասն նորոգ ձեռնադրելոյն։

ԺԱ). Յիշեմք և զայս, զի ձեռնադրեալ նորընծայք ի տեղիս՝ տեղիս չպահեն զքառասունքն ամբողջ, զոր եկեղեցի մեր օրինադրեալ է պահել նորընծայից զերիս քառասունս՝ մնալով յեկեղեցւոջ զտիւ և զգիշեր հսկմամբ աղօթից և պահօք։ Յառաջնում քառասունքի ծոմապահութեամբ զպահոց կերակուրս ճաշակելով յօրն մի նուագ․ յերկրորդումն՝ յաւուրս ուտեաց զնաւակատեաց կերակուրս, այս է, զկաթնեղէնս, ձկնեղէնս և ձուեղէնս ճաշակելով, օրինադրելով յայս երկրորդ քառասնորդս գնալ 'ի տունս իւրեանց և ճաշել և անդրէն յեկեղեցին վերադառնալ, և յերրորդումն՝ 'ի կիւրակէս միայն զմսեղէնս ճաշակելով։ Այս է նախնական սովորութիւն մերս եկեղեցւոյ, և ըստ այսմ վարիլ հարկ է։

ԺԲ). Յայտնի է բազմաց մերազնէից զի նախնիք մեր հաստատեալ են բարենպատակ դիտաւորութեամբ յառաջ քան զաւուրս երիս նախ քան զօր պատարագի՝ ամուսնացեալ Քահանայից մեկուսացեալ յընտանեկան կենաց առանձնասցին 'ի սենեակ եկեղեցւոյ՝ աղօթից և ընթերցման սուրբ գրոց պարապել, և յետ պատարագին այլ ևս յաւուրս երիս, և զի նշմարեցաք 'ի բազում տեղիս բարձեալ այս սովորու-

թիւն, պարտաւորութիւն դնեմք ամենայն Առաջնորդաց հաստատել խնամով զնոյն, և եթէ չունին սեննակս եկեղեցիք ոմանք՝ հոգ տարցին կառուցանել յարդեանց եկեղեցեաց, զի մի՛ ուղղութիւն կարգաց, յորում գերագանց օրինակաւ փայլի անարատութիւն և սրբութիւն կրօնիս Քրիստոնէութեան, խանգարումն առցէ։

ԺԳ). Այլ 'ի վերայ այսր ամենայնի հարկ է վիճակաւոր առաջնորդաց, որք կարգեալ են 'ի Հոգւոյն սրբոյ լինել տեսուչ եկեղեցւոյ և Հօտին Քրիստոսի, յամենայն կիւրակէս և 'ի տօնական աւուրս անխափան քարոզել. զնոյն հարկադրել առնել նաև ամենայն վարդապետաց ընդ տեսչութեամբ իւրեանց եղելոց. քանզի ճշմարտութիւն հաւատոյ, որ ըստ առաքելոյն 'ի լսել բանին հաստատեալ է, աճումն առնէ 'ի հաւատացեալս յայնժամ, յորժամ ողջամիտ մտօք բացատրեսցին ամենայն մասունք նորա։

Այս են գլխաւոր պարտիք որոց զաթոռն ունին առաքելական, ըստ որում և Առաքեալն Քրիստոսի Պօղոս յետ առաջի առնելոյ ամենայն հանգամանօք զպարտաւորութիւն իւրաքանչիւրոց պաշտօնէից աւետարանին, որ է լինել հեզ, պարկեշտ, անարատ, հիւրասէր, բարեսէր սուրբ, ժուժկալ և այլն. յարէ ի նոյն թէ, «վերակացու լինիցին բանին վարդապետութեան»։

ԺԴ). Ունել պատուիրեմք և արթնութիւն և հոգս. և վասն այսորիկ զի 'ի գիւղօրայս ոմանս որպէս լսեմք, հազիւ 'ի տարին հինգ անգամ և եթ պատարագ մատուցանեն քահանայք, որով և ժողովուրդքն զուրկ 'ի հոգևոր այնր շնորհաբաշխութենէ, սառնանան 'ի ճշմարիտ յաստուածպաշտութենէ և 'ի կրօնասէր ջերմեռանդութենէ, առ որ հարկադրեմք զամենայն Առաջնորդս տնօրինել, զի քահանայք այնպիսի գիւղօրէից անխափան յամենայն կիւրակէս և 'ի շաբաթ աւուրս նաև յամենայն երևելի տօնախմբութեան մատուսցեն զսրբազան խորհուրդ պատարագի, իսկ եթէ միայն իցէ քահանայն, գոնէ 'ի կիւրակէս և 'ի տօնս տէրունականս. և մի հեղգացեալ յաննահանջելի պալտուց. հեղգութեան լիցին

պատճառ և ժողովրդոց աստուածպաշտութեան և կրօնական պարտաւորութեանց։

Արդ զայս ամենայն 'ի պայծառութիւն սրբոյ եկեղեցւոյ մերոյ կարևոր համարելով հաստատել և հրատարակել, խստիւ պատուէր տամք ամենայն առաջնորդաց կոնսիստորիայից և գաւառական հոգևոր ատենից կառավարութեանց այսուհետև ըստ բառական կանոնադրութեանս վարել զտեսչութիւն եկեղեցւոյ. որոյ օգուտք անտարակուսելի են. իսկ մեք աղօթս առնեմք առ Այն՝ որ գիտէ լնուլ զպէտս Եկեղեցւոյ իւրոյ սրբոյ, սուրբ և անարատ կենօք պահեսցէ զամենեսին զձեզ ընդ հովանեաւ գթութեան իւրոյ յօրինակ բարի հաւատացեալ հօտին Քրիստոսի, և 'ի շինութիւն Հայաստանեայցս ամենամաքուր ուղղափառ Եկեղեցւոյ։ Ամէն։

(Տեղի ստորագրութեան)

Տուաւ ի Մայր Աթոռս Սրբոյ Էջմիածնի ի 5 աւուր դեկտեմբերի 1868 ամի, և ի մերում թուականութեանս ՌՅԺԸ։

## ԳԷՈՐԳ Դ-Ի ԿԱՆՈՆՆԵՐԸ (ԳՐԱԲԱՐ ԲՆԱԳԻՐԸ).

### Վեհափառ Հայրապետի

### Կոնդակ

### Աւագ քահանայից պաշտօնի եւ պարտուց համար.

«Յորէ գահակալութեան մերոյ տեսանելով զինչ ինչ
«զեղծմունս և զնորամուտ սովորութիւնս ներմուծեալս յօ-
«տարաց յեկեղեցին մեր իբր ի միոյ դարէ հետէ՝ ջանացաք
«զնորամուտսն բառնալ իսպառ. իսկ զնախնական և զազգա-
«յին բարեկարգութիւնսն խափանեալս անդրէն վերանորոգել։
«Մին ի բարեկարգութեանց եկեղեցւոյ է պաշտօն և պար-
«տաւորութիւն աւագ քահանայից, զորմէ յառաջ քան իբր
«զվեց ամ ըստ հետևեալ Հրահանգաց կանոնաւորեալ և

«յանձնեալ էաք Գաբրիէլ արքեպիսկոպոսի Այվազեան, յետ
«տալոյ նմա զառաջնորդականն պաշտօն վիճակին Վրաստա-
«նու և Իմէրէթի՝ գործադրել զայնս ի նոյն վիճակին, և որ-
«չափ կարելին էր՝ յիւրումն կենդանութեան ի գործ եդ,
«բայց այժմ պատշաճ դատիմք առաջադրել Սինոդիդ և հրա-
«մայեմք հրամանագրել ոչ միայն Տփխեաց՝ այլ և ամենայն
«վիճակաց, Թեմական Ատենից և Հոգևոր կառավարութեանց
«անշուշտ գործադրել զայսոսիկ Հրահանգս վերաբերեալս
«պաշտամանց և պարտաւորութեանց Աւագ քահանայից, զո-
«րոց պատճէնն առաքեմք Դմին պատուիրելով և տպագրել
«առ ի տալ իւրաքանչիւր Աւագ երիցանց զմի մի օրինակ ի
«ձեռն Թեմական Ատենից, որոց և պատուիրել աչալրջու-
«թեամբ հսկել անշուշտ ի գործադրութիւն վասն պայծա-
«ռութեան և բարեկարգութեան Հայաստանեայց սրբոյ առա-
«քելական եկեղեցւոյ մերոյ և ի փառս:

## ՀՐԱՀԱՆԳ.

*Վասն աւագ քահանայից եւ պարտուց պաշտաման նոցա.*

Ա. Աւագ քահանայ կամ աւագ երէց ըստ վաղեմի կարգաց Հայաստանեայց եկեղեցւոյ՝ կարգի հրամանաւ Վեհափառ կաթուղիկոսի ամենայն Հայոց իբրև ի դիմաց առաջնորդի հսկող ի վերայ բարեկարգութեանց եկեղեցւոյն առ հասարակ, որպէս և ի վերայ գնացից այլոց քահանայից և պաշտօնէից նոյն եկեղեցւոյ, յորում և ինքն վարէ զպաշտօն քահանայութեան:

Բ. Աւագ քահանայութիւն ոչ է իբրև տիտղոս կամ լոկ պատիւ ըստ թիւր կարծեաց ոմանց ուսելոց յօտարամուտ սովորութենէ, այլ և կառավարչական պաշտօն եկեղեցւոյ [1]:

Գ. Աւագ քահանայն իշխէ միմիայն եկեղեցւոյ իւրում, յորում ինքն վարէ զպաշտօն, իսկ ի քաղաքս և ի վիճակս՝

---

[1]) Պաշտօն աւագ քահանայութեան համազօր է պաշտաման Благочинный անուանեալ քահանայից Ռուսաց, զորոց զկոչումն թարգմանեալ են մերազնեայք Ռուսաստանի բառիւ բարեկարգիչ կամ բարեկարգ:

յորս ըստ բազմութեան եկեղեցեաց բազմաթիւ իցեն և աւագ քահանայք կամ աւագերէցք, մարթ է և առանձին կառավարիչս կարգել գործակալ անուամբ՝ տալով նմա զամն աշխարհական գանձապահ անուամբ, որպէս սահմանեալ եմք կանխաւ:

Դ. Աւագ քահանայքն պարտք են միտ դնել՝ զի մի ինչ գտանիցի յեկեղեցւոջ իւրում թերութիւն կամ հակառակ ինչ ծիսից և աւանդութեանց Հայաստանեայց եկեղեցւոյ ըստ ամենայն հանգամանաց, զի սպասք և անօթք և հանդերձ եկեղեցականք իցեն ի մաքրութեան և բարեկարգութեան, զի անթերի գտանիցին յեկեղեցւոջ ամենայն ինչ, որ պիտոյ իցէ ի կատարումն Ս. խորհրդոց, մկրտութեան, դրոշմի և հաղորդութեան, այլ և գրեանն կարգեալ ի կատարումն Աստուածային պաշտամանց, որպիսի են Աւետարան, Ճաշոց, Խորհրդատետր Սրբոյ Պատարագի, Տօնացոյց, Ժամագիրք Ատենի, Սաղմոս, Մայր Մաշտոց, Փոքր Մաշտոց, Շարական, Տաղարան և այլն այսպիսի մատեանք, և զի պատուհանք և լուսամուտք եկեղեցւոյն ունիցին վանդակս երկաթիս և փականք դրանց իցեն ամրապինդք, և առ եկեղեցեաւն գտանիցի միշտ գիշերապահ ոք ի պահպանութիւն:

Ե. Եթէ եկեղեցին պետս ունիցի նորոգութեան, Աւագ քահանայն պարտ է ազդ առնել զայնմանէ երեցփոխանին և յորդորել զժողովուրդն՝ զի փոյթ կալցին նորոգութեան և միանգամայն ծանուցանել զայնմանէ Առաջնորդին: Եթէ ժողովուրդն առ չքաւորութեան անկարող գտանիցի նորոգել զհնացեալ եկեղեցին կամ լնուլ զկարօտութիւն նորին ի զգեստս կամ ի սպասս անօթոց, աւագ քահանայն հանդերձ երեցփոխանաւն և հաշուետեսիւք հայցէ յառաջնորդէն զժապաւինեալ մատեան (տումար) վասն հաւաքելոյ տուրս կամաւորս ի բարեպաշտից, այլ և ի միտ դնէ զի դրամքն հաւաքեալք մտցեն ի հաշուեմատեանս մտից և ծախուց, և ի գործ դիցին յայն դէպս միայն, յոր և կարգեալ են, և յաւարտ հաւաքեալ դրամոյն կամ ժամանակին սահմանելոյ առ այն մատուսցէ զմատեանսն թեմական ատենին հանդերձ տեղեկագրով:

Զ. Յորժամ տացի հրաման կառուցանելոյ ուրեք զեկեղեցի, աւագ քահանայն պարտի միտ դնել՝ զի շինութիւն եկեղեցւոյն լիցի ըստ ձեւոյ Հայաստանեայց եկեղեցւոյ և ըստ վայելչութեան, և ըստ կարի անյապաղ և անընդհատ շինութեամբ, և եթէ յանկարծ դադարիցի շինուածն, ծանուցանել զայնմանէ Առաջնորդին։

Է. Աւագ քահանայն պարտի միտ դնել և ուշի ուշով նկատել և հսկել զի քահանայք և սարկաւագունք և դպիրք եկեղեցւոյ իւրոյ յամենայն աւուրս անխափան գտանիցին ի սուրբ եկեղեցի՝ յառաւօտ և յերեկոյ և կատարեսցեն անթերի զպաշտամունս իւրեանց, և ունիցին վարս պարկեշտս և խաղաղասէրս վայելուչս աստիճանի իւրեանց, և մի՛ երբէք հակառակ սուրբ կոչման իւրեանց պարապեսցին ի խաղս զանազանս, այլ կեցցեն զգաստութեամբ և ամենայն զգուշութեամբ որպէս վայելէ պաշտօնէից սրբոյ սեղանոյն։ Իսկ եթէ տեսանիցէ զոք թերացեալ յայսպիսի պարտուց՝ նախ ինքն խրատեսցէ երկիցս և յանուղղայ գտանելն փութապէս ծանուցանել թեմական ատենին կամ առաջնորդին առ ի զգաստացուցանել և այլն։

Ը. Աւագ քահանայն պարտի փոյթ ունիլ՝ զի ամենայն բարեպաշտ ժողովրդականք կատարեսցեն անթերի զհոգևոր պարտիս իւրեանց հաղորդելով կենարար մարմնոյ և արեան Տեառն յերիս նուագս ի տարւոջ, այսինքն ի սուրբ Զատկին, ի սուրբ Ծննդեան կամ Աստուածյայտնութեան Տեառն և ի Վերափոխման Տօնի Սրբուհւոյ Աստուածածնի։

Թ. Աւագ քահանայն պարտի ուսուցանել ժողովրդեանն՝ զի առ հասարակ արք և կանայք յառաջ քան զերկուս եօթնեակս կամ գէթ զութն օր յառաջագոյն քան զհաղորդութիւնն խոստովանեսցին սեպհական խոստովանահօր իւրեանց և յաւուր հաղորդութեան ընկալցին զարձակումն ի խոստովանահօրէն և ապա հաղորդեսցին սուրբ խորհրդոյն, բոլորովին հեռի կալով յօտարամուտ սովորութենէ, որ մուծեալ է յեկեղեցի մեր ի տեղիս տեղիս (հարիւր ամաւ կամ դոյզն ինչ աւելի ժամանակաւ յառաջ) ի մի և նոյն աւուր խոս-

տովանել և հաղորդել: Եւ ի մէջ մեծի պահոց մինչ ծածկեալ է սուրբ սեղան պատարագի, չէ օրէն հաղորդել զժողովուրդն սուրբ խորհրդոյն, այլ զկնի չորրորդ շաբաթու աղուհացից, եթէ պատահեսցի տօն աւետման. կարելի է, նոյնպէս և ի տօնի մտին ի վիրապն սրբոյն Գրիգորի Լուսաւորչի, յորում լինի բաց պատարագ, հաղորդեսցեն, նոյնպէս ի Ծաղկազարդի և յաւուր Հինգշաբաթու, և ի Ծրագալոյցի երեկոյեան, նոյնպէս և ի Զատկի աւուրն հաղորդեսցեն, իսկ մինչ ծածկեալ է սեղանն Ս. պատարագի հաղորդելն սուրբ խորհրդոյն օտարաց է ներմուծեալ յեկեղեցի մեր, և միայն հիւանդաց և ընդ երկար ճանապարհ գնացողաց է ներելի:

Ժ. Աւագ քահանայն պարտի միտ դնել՝ զի անպակաս կատարեսցին յեկեղեցւոջ ժամասացութիւնք յառաւօտու և յերեկոյին և մատուսցի սուրբ պատարագ յաւուրս շաբաթուց և կիւրակէից անխափան, նոյնպէս և յայլ տօնական աւուրս. որք խաչ նշանաւ նշանակեալ են յօրացուցի մերում, և ամենայն կարգք Աստուածպաշտութեան կատարեսցին ջերմեռանդութեամբ առանց շտապելոյ կամ համառոտելոյ ինչ ի կարգադրելոցն, այլ և չթողուլ փոփոխել զեղանակս երգեցողութեան ի սրբոց հարց, որ ընկալեալ և սահմանեալ են ի մէնջ ըստ արհեստի Հայկական ձայնագրութեան, և մի ինչ աւելի մաղթանս կամ աղօթս կամ երգեցողութիւնս նորանորս յաւելուլ ի ժամասացութիւնս:

ԺԱ. Եթէ ոք ի քահանայից կամ յայլոց պաշտօնէից եկեղեցւոյ կամ յաշխարհականաց իսկ գործիցէ շփոթս ինչ յեկեղեցւոջ կամ անկարգութիւնս՝ բանիւ կամ գործով, մինչև խափանել առ վայր մի կամ բոլորովին զկարգս Աստուածպաշտութեան կամ ժամասացութեան, աւագ քահանային պարտք են ծանուցանել զայն առաջնորդին առանց յապաղանաց:

ԺԲ. Աւագ քահանայն պարտի միտ դնել՝ զի քահանայք և սարկաւագունք, որ ունիցին խէթ և հակառակութիւն ընդ միմեանս, մի՛ երբէք մատուսցեն զպատարագն սուրբ,

մինչև հաշտեսցին ընդ միմեանս. աւագ քահանայն պարտի հաշտեցուցանել ընդ միմեանս և զխռովեալսն, և եթէ չյաջողեսցի յայսմ, ծանուսցէ Առաջնորդին։

ԺԳ. Աւագ քահանային պարտք են միտ դնել՝ զի հաղորդութիւն սուրբ պատուով և զգուշութեամբ պահեսցի յընծայարանին ի մէջ արծաթի ոսկեզօծ մասնատփոյ։ Այլ և պահանջել՝ զի քահանայք պատուով պահեսցեն առ իւրեանս, ի սոխալել հարկին զմասնատուփն սրբոյ հաղորդութեան ի պէտս հիւանդաց և հաղորդն կամ սրբութիւնն, որ ի նմա, մի յոյժ հնասցի, այլ նորոգեսցի ըստ կարի յաճախագոյնս։

ԺԴ. Աւագ քահանային պարտ է ի միտ դնել՝ զի փութով ի միջոցի ութն աւուր անխափան մկրտեսցին մանկունք նորածինք, և մկրտութիւնն անշուշտ կատարեսցի յեկեղեցւոջ, առ ընթեր ունելով իւրեանց ի պաշտամանն զսարկաւագունս և զդպիրս։

ԺԵ. Աւագ քահանայն պարտի զգոյշ լինել՝ զի մի մեռեալք պահեսցին ի ժողովրդական եկեղեցին աւելի քան զերկուս ժամս. և յետ կատարելոյ զհանգստեան պաշտօն ի վերայ մեռելոյն՝ տանել ի գերեզման և թաղել յետ անցանելոյ օրինադրեալն ժամուց, իսկ եթէ գտանիցի ի գերեզմանատան առանձին մատուռն վասն ննջեցելոց, ըստ հնագոյն սովորութեան Հայաստանեայց եկեղեցւոյ, անդ կարեն պահել զմեռեալս, որքան միջոց և կամիցին, բայց զգոյշ լինելով առողջապահական կանոնաց։

ԺԶ. Աւագ քահանայն պարտի զգոյշ լինել՝ զի մի՛ ոք ի քահանայից, ի սարկաւագաց կամ ի դպրաց եկեղեցւոյ իւրոյ աղտեղի կօշկօք կացցէ ի դասի. կամ առանց հանելոյ զկօշիկս և ագանելոյ զհողաթափս մաքուրս ելանիցէ ի բեմն։

ԺԷ. Զգուշութիւն ի յեկեղեցիս մեր հնարեսցին թափօրք և հանդէսք նորանորք կամ շինեսցին խորանք և մատրունք նորք հակառակ ձևոյ Հայաստանեայց եկեղեցւոյ։

ԺԸ. Աւագ քահանայն պարտի միտ դնել՝ զի ի տօնս սրբոյ Զատկի և Աստուածյայտնութեան քահանայք ըստ պատշաճի և վայելչապէս կատարեսցեն զանօրհնէս, նոյնպէս

և զայլ այսպիսի արարողութիւնս, առանց բնաւ տեղի տալոյ անկարգութեանց և աղբեցութեանց։

ԺԹ. Աւագ քահանայն պարտի փոյթ յանձին ունիլ՝ յաւուրս կիւրակէից և տօնից տալ ժողովրդեան խրատս հոգեշահս և առնել ծանուցմունս։ Նաև բառնալ զստարամուտ սովորութիւն քահանայից ի խոստովանութեան պահու ստանալ դրամս ի խոստովանորդւոյ։

Ի. Աւագ քահանայն պարտի զգոյշ լինել՝ զի մի քահանայք զրկեսցեն զսարկաւագունս և զդպիրս, մի բնաւ հարկանել զնոսա, իսկ եթէ յանցաւոր ինչ գտանիցին նոքա՝ պարտին քահանայք ազդ առնել աւագ քահանային և եթէ շարունակեսցեն, յայտնել Առաջնորդին։

ԻԱ. Սարկաւագունք և դպիրք պարտին մեծարել զքահանայս իւրեանց և հնազանդիլ նոցա և ոչ երբէք անարգել զնոսին բանիւ կամ գործով, իսկ եթէ նեղիցին ի նոցանէ, յայտնեսցեն աւագ քահանային, եթէ շարունակեսցեն և կամ յաւագ քահանայէն իսկ նեղեսցին բողոքեսցեն առ Առաջնորդն։

ԻԲ. Աւագ քահանայն պարտի զգուշացուցանել զքահանայս և զսարկաւագունս ի զօշաքաղութենէ, և մի նեղեսցեն և զզուեցուսցեն զժողովուրդն պահանջմամբ առաւել քան զչափն արծաթոյ կամ այլ տրոց, և մի սակարկեսցեն վասն կատարման Ս. խորհրդոց, Մկրտութեան, Պսակի, Ս. Պատարագի և թաղման և այլն։

ԻԳ. Չէ օրէն սարկաւագաց և քահանայից առանց հրամանի աւագ քահանայի գնալ ուրեք հեռագոյն քան զվերստս 25. և ոչ առ մի օր, իսկ ի հարկաւոր դէպս գիտութեամբ և հրամանաւ աւագ քահանային կարեն գնալ և ի հեռաւոր տեղիս, բայց միայն յիւրեանց վիճակին իսկ յայլ վիճակ ոչ բնաւ։

ԻԴ. Ի մեռանիլ քահանայի կամ սարկաւագի ուրուք, աւագ քահանայն պարտի անյապաղ ծանուցանել թեմական Ատենին, տալով տեղեկութիւն զմնացելոյ ընտանեաց նորին և մատուցանելով զթուղթս նորա պաշտօնականս, միանգա-

մայն և յօրինելով զցուցակ ստացուածոց մեռելոյն՝ առաջի առնել Թեմական Ատենին։

ԻԵ. Աւագ քահանայն ի մեռանել ուրուք քահանայի եկեղեցւոյ իւրում անյապաղ գնալով առ ժողովուրդն նորա ստուգեսցէ զեկեղեցական ստացուածս և զգրուածս, որ գտանիցի առ նմա, յանձնէ նորումն քահանայի որ փոխանակիցէ զառաջինն և կամ ցնշանակել նորոյն, այլում ումեք ի քահանայից յանձնէ՝ յանդիման երեցփոխանին, զնոյն առնէ և ի դէպս հրաժարման կամ մահու երեցփոխանի ուրուք, և եթէ պակաս երևեսցի ինչ ի քննութեան, աւագ քահանայն զգին կորուսելոյ իրին և զանուն կորուսանողին ծանուցանէ Առաջնորդին։

ԻԶ. Աւագ քահանայն պարտի հսկել՝ զի քահանայք և սարկաւագունք և դպիրք եկեղեցւոյ իւրոյ իցեն ի հանդերձս վայելուչս աստիճանի իւրեանց և մանաւանդ գլխարկք նոցին միատարազ և բարեձև և զանազանեսցին յաշխարհական անձանց արտաքին եկեղեցական բարեվայելուչ զգեստուք։

ԻԷ. Աւագ քահանայն յընդունել իւրում ի Հոգևոր իշխանութենէ հրամանս և պատուէրս՝ քաջ խելամուտ լիցի իմաստից նոցին և ճշտիւ ի դէպ ժամու կատարումն տացէ նոցին, չյաւելլով յիւրմէ կողմանէ ի հրամանսն զինքնակամ բացատրութիւնս և զերկբայական եզրակացութիւնս, զտարակուսանսն այլոց եկեղեցականաց ինքն լուծցէ, իսկ յորժամ և ինքն երկմտիցէ, խնդրեսցէ զլուծումն ի Թեմական Ատենէն կամ յԱռաջնորդէն։

ԻԸ. Աւագ քահանայն պարտի զգոյշ լինել՝ զի մի չհաս և ապօրինի պսակ դիցեն քահանայք եկեղեցւոյ իւրոյ, ի նկատել զապօրինութիւն ինչ՝ իսկոյն պարտի արգելուլ և անյապաղ գրութեամբ յայտնել Առաջնորդին և Թեմական Ատենին։

ԻԹ. Աւագ քահանայն պարտ է զգոյշ լինել՝ մի ընապսակ դնել եկելոց յայլոց ծխոց, խստիւ արգելեալ է նա և յայնպիսի դէպս, յորս մին յեկելոց յամուսնութիւն իցէ ի տեղական ժողովրդենէ և միւսն՝ յօտար քաղաքէ կամ ի

գիւղէ, պարտի անպատճառ վաւերական վկայականս պահանջել յօտարականէն՝ հաստատեալ յառաջնորդէ վիճակին օտարականի, յոր վիճակաց և իցէ, թէ ի Ռուսաստանէ, թէ ի Տաճկաստանէ, թէ ի Պարսկաստանէ և յայլոց տեղեաց, ուղղակի գրել առ առաջնորդն նոյն վիճակի և տեղեկութիւնս պահանջել ստորագրութեամբ առաջնորդի իւրոյ քահանայի և համաքաղաքացւոց, մի իշխեսցեն պսակ դնել քահանայք, մինչև ստասցեն զյիշեալ վաւերական վկայականս ստորագրութեամբ քահանայի իւրոյ համաքաղաքացւոց և ազգակցաց օտարականին՝ հաստատեալ յառաջնորդէ վիճակին։ Այսպիսի վկայական պահանջի նաև ի պատանեկութենէ անտի պանդըխտեալ յօտարականէն, զի մի գուցէ արդէն ամուսնացեալ լիցի օտարականն և ամուսինն կենդանի լիցի։

Լ. Աւագ քահանայն պարտի փոյթ ունիլ՝ զի արձանագրական (մետրիքական) մատեանք ի դէպ ժամանակի պատրաստեալ տացին քահանայից եկեղեցւոյ իւրոյ անդէն ի սկզբան նորոյ տարւոյն։ Նա ինքն միտ դնէ, զի ուղղութեամբ և ի ժամու և միօրինակ եղիցին յամենայն մատեանս արձանագրութիւնք, երկիցս և երիցս ի տարւոջ ստուգեսցէ զիրսն, իւրով ստորագրութեամբ վաւերացուցանելով զայնս։

ԼԱ. Աւագ քահանայն պարտի միտ դնել՝ զի անկորուստ պահիցին ի պահարանի եկեղեցւոյն ցուցակք անօթոց և սպասուց և ամենայն եկեղեցական իրաց։ Այլ և զգուշութեամբ պահեսցին ամենայն հրամանագիրք պատշաճեալք եկեղեցւոյն, որպէս և արձանագրական մատեանք և հաշուեմատեանք ամացն անցելոց, և այլն։

ԼԲ. Աւագ քահանայն պարտի միտ դնել՝ զի մի քահանայք յափշտակեսցեն զմիմեանց ծուխս՝ կատարելով զպաշտամունս նոցա։

ԼԳ. Աւագ քահանայն պարտի միտ դնել աչալրջութեամբ՝ զի երեցփոխանք անպատճառ և ըստ օրինի գրեսցեն ի հաշուեմատեանս տուեալս նոցա ի թեմական Ատենէն զհաշիւ մտից և ելից. և մի՛ ինչ ծախս երևելիս արա-

ցեն առանց գիտութեան իւրոյ և առանց հաւանութեան ժողովրդականացն։

ԼԴ. Աւագ քահանայն պարտի հսկել, զի ի ծխական երկսեռ դպրոցս անպատճառ աւանդեսցեն գքրիստոնէական վարդապետութիւն Հայաստանեայց եկեղեցւոյ ի ձեռն հմուտ և ուղղափառ ուսուցչաց, և աջակցել հոգաբարձութեան ի բարեկարգութիւն և ի յառաջադիմութիւն դպրոցացն։

ԼԵ. Աւագ քահանայն մի իշխեսցէ թողուլ օտարական վարդապետաց և քահանայից փոխն առնուլ յեկեղեցւոջ իւրում մինչև չունիցին յանձնարարական գիր ի Սինոդէ Սրբոյ Էջմիածնի։



Պատճէն կոնդակի Վեհ. Հայրապետի յանուն Սինօդի ի 4-են Յունիսի 1875 ամի՝ ՌՅԻԴ, ընդ համարաւ 179:

..... Եւ արդ՝ գուն գործելով մեր ըստ սրբազան պարտուց Հայրապետական պաշտաման մերոյ՝ հաւատարիմ աւանդապահ լինել սրբազան կարգաց և կանոնաց Հայաստանեայցս ուղղափառ սուրբ եկեղեցւոյ՝ և ընդ նմին ոչ գտանել անփոյթ ի խնամս մատակարարելոյ ի Տեառնէ հաւատացեալ մեզ Հօտին զհարկաւոր առիթս բարոյական և ֆիզիգական վերակենդանութեան զոյգ ընդ մտաւորականին զարգացման՝ կարևոր յոյժ համարիմք ընդ ձեռն Սինօդիդ դարձուցանել զխորին ուշադրութիւն Գերապատիւ առաջնորդաց և յաջորդաց ի վերայ այսր մեծի և սրբազան խորհրդոյ ամուսնութեան՝ իբրև ի վերայ անլուծանելի շաղկապի խաղաղ և անդորր կենակցութեան առն և կնոջ մինչև ցվախճան կենաց նոցին. և ըստ այնմ ընդ ձեռն նոցին պարտաւորել զամենայն քահանայս և զհոգևոր իշխանութիւնս՝ որ ընդ տեսչութեամբ թեմական և Հոգևոր կառավարութեանց գտանին՝ յանվրէպ կատարումն յետադայ կանոնաց ըստ հետևեալ բանաւոր պատճառաց՝ ի գիտ ամուսնական երջանկութեան և ազգային բարեկեցութեան: Եւ նախ՝ քաջ ի միտ առցեն քահանայք և ժողովուրդք, զի ամուսնութիւնն է առն և կնոջ ընկերակցական անվախճան միաւորութիւն ազատութեամբ և հաւանութեամբ երկոցունց եղեալ, զոր միայն մահն կարէ լուծանել: Ապա ուրեմն ի ժամ նշանադրութեան որ խորհրդաւոր մասն համարի առաջիկայ ամուսնութեան՝ ուշ կալցի խոստովանահայր քահանայն այնմ թէ արդարև յօժարամիտ սիրով և ազատ կամօք ցանկան ընկերակցութեան հարսնացուն և փեսայացուն, եթէ, յո՛չ կամաց կամ յարտաքին ստիպողական ինչ պատճառաց յայն բերեալ իցեն բռնութեամբ:

Երկրորդ՝ առ. քաջ ըմբռնումն բարոյական խորհրդոյ ամուսնութեան՝ ընկերակցական երջանկութեան և առնին խաղաղութեան՝ պարտ է ցանկացողացն ամուսնութեան լինել չափահաս, վասն որոյ քահանայից է գործ՝ խնամ ունել կատարեալ չափահասութեան պսակելեացն, քանզի անչափահասութիւնն խանգարման լինի պատճառ բնութեան կարգի և օրինաց։ Երրորդ՝ վախճան ամուսնութեան գոլով միանգամայն լրումն յաւիտենական կամաց Արարչին որ ասաց. «Աճեցէք և բազմացարուք և լցէք զերկիր». ապա ուրեմն հաւասարապէս պարտք են և՝ քահանայից և ժողովրդոց, այն է ծնողաց հարսին և փեսային՝ անաչառ մտօք ի նկատի ունել զպայման առողջութեան երկոցունց ևս կողմանց առ խափանելոյ զպատճառ սոդտանաց պսակելեացն յապակային և տարաբաղդութեան յամբողջ ընթացս կենաց միոյն կամ միւսոյն ըստ որում անլուծանելի է պսակն մինչև ցմահ միաբան կենակցութեամբ։ Եւ չորրորդ Հայաստանեայց սուրբ եկեղեցի իրաւամբ և արդարութեամբ արգելու զամուսնութիւն օրինակցաց և մերձաւոր ազգականաց, քանզի և ըստ ֆիզիգական պայմանաց առողջութեան ի վնաս յոյժ համարի ապագայ որդւոց և սերնդոց նոցա։............

## Պաշտօն գործակալ քահանայի.

Գործակալ քահանայի պաշտօնն է յեկելոց ի նշանադրութիւն տեղեկանալ ընդ գանձապետի թէ երկոքին՝ այսինքն տղայն և աղջիկն հաւան իցեն միմեանց, թէ քանի ամաց իցէ տղայն և քանի ամաց աղջիկն, կամ չափահասք իցեն թէ չիցեն ի միջի մերձաւոր ազգականութիւն կամ խնամութիւն, կամ կնքահայրութիւն և կամ այլ ինչ արգելք, թէ հաճեալ իցեն ծնողքն նոցա ամուսնութեան և երբ ունին առնել զհարսանիսն, և թէ լինին երաշխաւոր կամ վկայ՝ եթէ չիք այլ ինչ արգելք օրինականք և այլն։

Երկրորդ՝ պաշտօն գործակալի է, յետ ընդունելոյ գանձապետի զհոգեբաժին անուանեալ նուէրս, գրել առ ծխական քահանայս հանգուցելոյ կատարել զեօթն օրեայ կարգն։

## Պաշտօն գանձապետի.

Պաշտօն գանձապետի է նախ՝ յաւուրս նշանադրութեան անպատճառ ներկայ գտանիլ ի սենեկի եկեղեցւոյ ընդ գործակալ քահանայի, և միասին քննել զպարագայս նշանադրութեան։ Երկրորդ՝ ընդունել զաթոռահաս արդիւնս ի հարսանեաց և զհոգեբաժին ի ննջեցելոց՝ և գրել ի ժապաւինեալ տումարս ամենայն հաւատարմութեամբ։ Երրորդ՝ յիւրաքանչիւր ամիս զգոյացեալ գումարն հասուցանել ի Սինոդն յայտարարութեամբ։

## Կանոնք նշանադրութեան.

Ա. Նախ քան զնշանադրութիւնն հարկ է ծնողաց կամ ազգականաց նշանելեաց յայտնել ծխական քահանայից զդիտաւորութիւնս իւրեանց։ Յորոց իւրաքանչիւրն պարտի երթալ առ խոստովանորդիս իւրեանց՝ այսինքն՝ քահանայ աղջըկան առ աղջիկն, և քահանայ տղային առ փեսայացուն, և առանձինն լսելի բերանոյ նոցին զկատարեալ հաւանութիւն իւրեանց ի մտանել յամուսնութիւն։ Եւ ապա ժողովեալ քահանայից ի մի վայր ընդ մերձաւոր ազգականաց նոցա պարտին քննել թէ՝ չիցեն արգելք ինչ օրինաւորք վասն նշանադրութեան, և յետ քննելոյն եթէ արդարև չգտանիցին պատճառք յապաղանաց պատրաստեսցին գնալ ի կեդրոնատեղին առ գործակալն և գանձապետն ի նշանադրութիւն։

Բ. Նշանն պարտի լինել նուիրմամբ միոյ մատանւոյ և եթ ի կողմանէ փեսայացուին առ հարսնացուն։

Գ. Յետ քննելոյ ծխատէր քահանայից և իմանալոյ զհաւանութիւն նոցա յամուսնանալ, առեալ զմատանին և անձինս երկու երկու ի մերձաւոր ազգականաց տղային և աղջըկան՝ ի սահմանեալ աւուրս նշանադրութեան գնայցեն առ գործակալն և գանձապետն դնել զնշանն։

Դ. Ժամանակ նշանադրութեան են ուրբաթ աւուրք, յորս պարտին գործակալն և գանձապետն պատրաստ գտա-

նիլ ի սեննակ եկեղեցւոյն՝ ունելով զտումար նշանադրութեան առ ի նշանակել ի նմին զանուանս նշանելեացն։

Ե. Նշանակեալ գործակալն ընդ գանձապետին ի լսելն ի բերանոյ ներկայից զբան նշանադրութեան, պարտին նախապէս զգուշաւոր եղանակաւ հարց և փորձ առնել ծխական քահանայից և ներկայիցն ըստ նշանակելոյն. և եթէ համաձայն իցեն օրինաց՝ տուեալ վկայութիւնք նոցին, և չիցէ ինչ արգելք եկեղեցական գործակալ քահանայն առեալ զմատանին ի ձեռանէ քահանայի տղային՝ տայ քահանայի հարսնացուին տանել ի տուն աղջկան ի հաստատութիւն նշանեալ լինելոյ նորա, յետ որոյ արձանագրին անուանք նշանելեաց ի յատկացեալ տումարի այսպէս։ «(Անուն) ի հասակի (հա«սակ) նշանեցաւ ընդ (անուն) դստերն (անուն), կոյս ընդ «կուսի (կամ այրի ընդ այրւոյ)»։ Ի վերջոյ պարտին ստորագրել քահանայք և եկեալ վկայք, և նշանակել զմիջոցն հարսանեաց։ Համար արձանագրութեան պարտ է տալ քահանայի փեսայացուին առ ի պահել առ ինքն, զի ի հաստուցանել զաթոռահասն հարսանեաց յիւրումն ժամանակի ներկայացուսցէ զայն գանձապետին ի դիւրութիւն գտանելոյ ի տումարի զտեղին և նշանակել այսպէս թէ «պսակեցաւ ի (20 փետրվարի 1875)»։

Զ. Միջոց հարսանեաց յորէ նշանադրութեան սահմանեալ է մինչև ցվեց ամիս, իսկ եթէ պատահեսցին արգելք ինչ, մարթ է ընդարձակել զմիջոցն յետ քննելոյ զօրինաւորութիւն պատճառաց երկարաձգութեան։

Է. Եթէ նշանեալն ոք համարձակեսցի յետս կոչել զնշանադրութիւնն, պարտի դիմել առ Առաջնորդն և կամ առ Յաջորդն, և եթէ իցեն պատճառք օրինաւորք և անհրաժեշտ իմն տեսանի քակել զնշանադրութիւն, հաճել և զկամս խնդրատուին՝ առնլով ի նմանէ նուէրս յօգուտ որբոց և այրեաց, ուսումնարանի և եկեղեցւոյ այնր տեղւոյ, և արձանագրել ի տումարի, ազդ առնելով միանգամայն առ գործակալ և գանձապետ կեդրոնատեղւոյն առ ի ջնջել զանուանս

նշանելոց ի տումարէ նշանատուութեան՝ յայտնելով զպատճառն յետս լինելոյ նշանադրութեանն։

Ը. Բաց ի յիշեալ նշանէն՝ արգելեալ է ի նշանադրութեանն տալ այլ ևս ինչ յերկոցունց կողմանց մինչև ցօր հարսանեաց, և եթէ հակառակ հրամանի և պատուիրանաց մերոց առնիցեն և ի յայտ գայցեն մեղանքն, նուիրեալ ինչք դարձցին ի նպաստ որբոց և այրեաց, և ևս չունիցին իրաւունք պահանջելոյ զայնս ի միմեանց։

Թ. Թեմակալ Առաջնորդք փոյթ տարցեն խափանելոյ զշռայլ ծախս ի նշանադրութեան և ի հանդէս հարսանեաց, ևս և զբաշխելս անուանեալ պահանջն՝ որ սովորութիւն եղեալ է ի գիւղօրայս։ Քանզի այս ամենայն ոչ միայն ի վնաս են նիւթականապէս աղքատաց, այլ բազում այն է զի զհետ բերեն խռովութիւնս և պատճառեն զքակտումն հաստատեալ նշանին։

Ժ. Ի մերձենալ աւուրցն հարսանեաց՝ վեց կամ չորս աւուրբք յառաջագոյն ծխական քահանայքն պատրաստեն զվկայական հրամանի հարսանեաց և ստորագրեն ի նմին ինքեանք և երեցփոխան գեղջն։ Յետոյ քահանայն ընդ հօր փեսացուին կամ ընդ միոյ մերձաւոր ազգականի նորին առեալ ընդ իւրեանս զհամար արձանագրութեան նշանին գնան առ գանձապետն ի վճարել զԱթոռահաս արդիւնս և ընդունել զանդորրագիր ի նմանէ։

## Օրինակ վկայականի.

Ի ժողովրդենէ Հայոց (անուն) գեղջ (անուն) նշանադրեալ ընդ (անուն) կոյս ընդ կուսի, (և կամ այրի ընդ այրւոյ), կամին ամուսնանալ ընդ միմեանս ըստ համահաճ յօժարութեան իւրեանց. առ այս չլինելով արգելք ինչ յեկեղեցական օրէնս՝ ստորագրեմք։

Քահանայ փեսացուի (անուն)

Քահանայ հարսնացուի (անուն)

Երեցփոխան (անուն)

ԺԱ. Քահանայք եթէ առանց գիտութեան գանձապետի և չընկալեալ տակաւին ի նմանէ զԱնդորրագիրն վերոյիշեալ՝ յանդգնիցեն կատարել զպսակն, ընդ պատժօք և ընդ տուգանօք ենթարկին։

## Օրինակ Անդորրագրի գանձապետի.

(Անուն) որ կամի ամուսնանալ ընդ (անուն) կոյս ընդ կուսի, վճարեաց զաթոռահաս արդիւնս հարսանեաց (այսքան) ռուբլիս։

Գանձապետ (անուն)



# ՄԿՐՏԻՉ Ա.-Ի ԿԱՆՈՆՆԵՐԸ.

*Մկրտիչ Ա. (Հայրիկ) կոնդակով (30 յունիսի 1899 ամի համարաւ 797) թոյլ տուաւ որ Ե-րդ խնամէական աստիճաններում պսակ լինի և այն էլ կոնսիստորիաների հրամանով առանց Սինոդին դիմելու։*

*Իսկ 1899—ի դեկտեմբերի 17-ին համար 1490 կոնդակով թոյլ է տալիս Սինոդին ազգակցական 7 աստիճանում պսակուելու հրաման տալ։*

*Իսկ 1900—ի փետրուարի 24-ին նոյնը կրկնում է շրջաբերական կոնդակով և պատճառաբանուած, որի իսկական պատճէնը բերում ենք.*

*Մկրտիչ Ծառայ Յիսուսի Քրիստոսի և անհասանելի կամօքն աստուծոյ եպիսկոպոսապետ և կաթուղիկոս ամենայն Հայոց Ծայրագոյն պատրիարք համազգական Նախամեծար Աթոռոյ արարատեան առաքելական մայր եկեղեցւոյ սրբոյ կաթուղիկէ Էջմիածնի, գերապատիւ վիճակաւոր առաջնորդաց հարազատից մայր Աթոռոյս հայրապետական օրհնութեամբ յայտ առնեմք։*

*Յօրէ Գահակալութեան Մերոյ ահա անցին ամք եօթ և Մեք ի խնդրագրոց և ի մատուցեալ Մեզ յօրագրաց Սինոդի նկատեցաք, զի բազմաթիւ էին գործք թոյլտուութեանց պսակաց ի զանազան աստիճանս չհասութեանց, թէ ազգակցական և թէ խնամէական և ակն արկեալ ընդ պատճառս յառաջ բերեալս, ներելով թոյլատրեցաք։ Բաց յայնցանէ նկատելով զինչ ինչ հանգամանս, ի դիւրութիւն և ի պատշաճաւորն կենցաղավարութիւն ի քրիստոնէականս կրօնի սիրեցեալ որդւոցս Հայաստան աշխարհի, Կոնդակօք Մերովք Ա.*

յ'30 Յունիսի անցելոյ ամի Թ. 797, Հրամայեցաք Սինոդի Ս. Էջմիածնի թոյլատրել Կոնսիստորիայից արձակել զՀրամանս պսակաց Հինգերորդ աստիճանի խնամէական չհասութեանց, որպէս և Բ. Կոնդակաւ Թ. 1490, յ'17 դեկտեմբերի անցելոյ յանուն նոյն Սինոդի Հրամայեցաք թոյլատրել զպսակս եօթներորդ աստիճանի ազգակցական չհասութեանց՝ որպիսիք երբեմն աններելիք և անթոյլատրելիք համարեալք էին։

Սակայն ցաւ ի սիրտ տեսանեմք, զի Նորասէր ժողովուրդն Մեր չբաւականացեալ այսքանիւ ներողութեամբ և թոյլատրութեամբ, շարունակեն զաններելի յարաբերութիւնս ընդ բարեկամս և ազգականս յուսով միաւորութեան պսակի և այն ի ձիգ ժամանակս անյայտ պահելով՝ յորժամ արգասիքք միաւորութեան ի յայտ գան, յայնժամ միայն դիմեն առ Հոգևոր իշխանութիւն խնդրելով զՀրաման պսակի, պատճառելով զպատճառս մեղաց, թողլով և զիշխանութիւնն յանելանելի դրութեան, որոց և զիջողութիւնն լինի օրինակ չար այլոց։ Այլ զի բարձցին խսպառ այսօրինակ անտեղութիւնք և պատճառք պատուհասից այլոց անմեղաց և ազատեսցի Հոգևոր իշխանութիւն յաւելորդ գրագրութեանց, ի միջնորդութեանց և յանելանելի տարակուսանաց, Մեք Հարկ համարեցաք Սովին Հայրապետական Կոնդակաւ և բարձու Հրամանաւ միանգամ ընդ միշտ սահման դնել և յուշ առնել համայն Գեր. Վիճակաւորաց, վիճակային Ատենից և ստորադրեալ նոցին Հոգևոր Կառավարութեանց և Գործակալաց չընդունել և չառաջարկել յետ այսու ի Սինոդն կամ մեզ զխնդիրս մատուցեալս ի ժողովրդականաց կամ ի քահանայից, ո՛չ Չորրորդ աստիճանի խնամէութեանց և ո՛չ Վեցերորդ աստիճանի ազգակցութեանց և ո՛չ որ պակաս ի սոցունց իցեն, քանզի անթոյլատրելի մնան Հրամանք այնպիսիք և անլսելի խնդիրք այնպիսեաց։

Բաց աստի պարտիք Առաջնորդաց լիցին շրջաբերական Հրամանաւ խստիւ պատուիրել Քահանայից առնել ուշադրութիւն ի ժամ նշանադրութեան, մի՛ օրհնել նշանս անչափա-

հասից և մի՛ գաղտագողի յամուսնացողացն և սլարտիք ծխատեարց լիցին քննել, թէ արդարև յօժարամիտ սիրո՞վ և ազա՛տ կամօք ցանկան ընկերակցութեան հարսնացուն և փեսացուն, եթէ յոչ կամաց կամ յարտաքին ստիպողական ինչ պատճառաց յայն բերեալ իցեն բռնութեամբ, քանզի ամենայն չարիք յամուսնական կեանս ծագին յանհեռատես ընտրութենէ, ի շահասիրութենէ և յանազատ սիրոյ, որոց մեծագոյն մասանց, ցաւելով ասեմք, միջնորդք՝ տանէրէցք լինին զանազան դիտմամբք՝ և հետևանք այսօրինակ ամուսնութեանց բռնի սէր, անհամաձայնութիւն, կագ և կռիւ և ապա ապօրինի բաժանումն և կենակցութիւն ըստ հաճոյս, որոյ ազգավնաս և հակաբարոյական արդիւնս օր ըստ օրէ յաճախեալ, անկումն և քայքայումն սիրեցեալ հօտին Ս. Լուսաւորչին տեսանեմք։

Լիայոյս եմք զի շրջաբերականս այս բազմաց լիցի պատճառ բարութեան։ Վարդապետաց նիւթ քարոզութեան առ հաւատացեալ ինքեանց հօտ, Քահանայից՝ ևս առաւել ի խրա՛տ և ի զգուշութի՛ւն, յորոց պահանջելոց է Աստուած զարիւնն անմեղաց յաւուր դատաստանի։ Ծնողաց՝ ի յորդոր, որոց ցանկալի է երջանկութիւն և բարօրութիւն սիրեցեալ զաւակաց իւրեանց, ամուսնացողաց՝ ի զգաստութիւն, որոց նպատակ է և քաղցր ապագայ կենցաղավարութիւն և մշտընջենական սէր և խաղաղութիւն յընտանեկան կեանս։

Աղօթակից հարց եկեղեցւոյս և աղօթարար Սիրեցեալ ժողովրդեանս։

---

Մկրտիչ Ա․ մայիսի 7-ին համարաւ 522 կոնդակով պատուիրում է որ քահանայք եկեղեցի մտնելուս կամիլաւկաները վերցնեն և ձուլածոյ խաչ չկրեն, այլ փորագրեալ․ «զի յետ այսու ամենեքեան ի բաց բարձցեն զկամիլաւկայս ի գլխոց իւրեանց յորժամ մտանեն յեկեղեցի, զի կամիլաւկայն պատուոյ է գլխարկ և պարտ է գործ ածել արտաքոյ յեկեղեցւոյ։ Նոյնպէս և ունողք զքահանայական խաչս ի բաց բարձցեն 'ի խաչից իւրեանց զձուլածոյ պատկերս Փրկչին և

'ի տեղի ձուլածոյին փորագրել տայցեն զպատկեր Փրկչին պարզ առ ի որոշել ի քահանայից այլ եկեղեցեաց»։

---

1899-ին Հոկ. 15 Թ. 1176 կոնդակով պատուիրում է քահանաներին երգուեցնել հայերէն հայադաւաններին ըստ կոնդակի Մակարայ կաթուղիկոսի. «Անհնարին համարելով ըստ եկեղեցական կանոնաց Հայաստանեայց ս. եկեղեցւոյ փոխել զանօրէնութիւն երջանկայիշատակ կաթուղիկոսի Մակարայ, Մեք պատասխանի արարաք Տ. Նախարարին 'ի 6 այսր ամսոյ Թ. 1139, թողլով զանօրէնութիւն հանդուցելոյ անփոփոխ՝ զորմէ և ծանուցանեմք Սինոդիդ 'ի տեղեկութիւն»։

---

1899 Թ. 10 փետ. կոնդակ համար 194-ով պատուիրում է ոչ ոքին չթաղել եկեղեցու բակում, բացի բարերարներից և այն էլ Վեհափառի թոյլտուութեամբ։

---

*Սինօդական կարգադրութիւններ.*

1889 յուն. 28 համարաւ 291—Սինօդը արգելում է հոգեհանգստին կենդանագիր (պատկեր) դնել սեղանի վրայ, «առ ի զառաջս առնլոյ այս օրինակ նորաձևութեան և հակառակ եկեղեցական կանոնաց մարդապաշտութեան»։

---

1898 ամի մայիսի 28 Թ. 945 պատուիրում է բացի յունադաւաններից միւս քրիստոնեաների պէտքերը կատարել նրանց խնդրի հիման վրայ. «Թէ քահանայք հայոց ըստ խնդրոյ այլոց քրիստոնէից այն է՝ Ասորւոց, Խպտեաց, Հաբէշաց, Գերմանացւոց և այնց ամենից, որք ոչ են 'ի դաւանութենէ յունաց, կարեն կատարել զհոգևոր պէտս նոցա»։

---

## Դ. ՊԵՏԱԿԱՆ ԱՂԲԻՒՐՆԵՐ, ՊՕԼՕԺԷՆԻԱ ԵՒ ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹԻՒՆ.

Ազգային աղբիւրների Դ. բաժինը կազմում են պետական օրէնքները։ Պետական ասելով պիտի հասկանանք այն օրէնքները և կանոնները, որոնք կազմուած են ազգի, կամ հոգևոր իշխանութեան և պետութեան մասնակցութեամբ և վերջինիս հաստատութեամբ, որով ստացել են քաղաքացիական օրէնքի ույժ և նշանակութիւն։

Այդպիսի աղբիւր երկու հատ ունինք, 1836 թուի պօլօժէնիան Ռուսահայոց համար և 1863 թ. սահմանադրութիւնը Տաճկահայոց համար։

### Ա.

1836 *թուի Ռուսահայոց պօլօժէնիան (կարգադրութիւններ)*

Ռուսաց տիրապետութիւնից առաջ, 19-րդ դարու սկզբին Պարսից տէրութեան ճգնաժամին հայոց կաթուղիկոսների Դանիէլի և Դաւթի գահակալութեան խնդրի պատճառով ահագին վէճեր, աղմուկներ բարձրացան ոչ միայն երկուսի մէջ, այլ և բոլոր հայ հոգևորականութեան, հայ ժողովրդի և նոյն իսկ երեք տիրող պետութիւնների մէջ։ Այնքան ցաւալի և ամօթաբեր էին այդ աղմուկները, որ ամեն մի սրտացաւ հոգևորականի մէջ պիտի արդար զայրոյթ առաջացնէին և ստիպէին նրան ամեն միջոց գործ դնել այդ վնասակար կռիւների առաջն առնել։ Ահա այդ սրտացաւներից մէկն էր Դանիէլ կաթուղիկոսը, որը թէև աքսորավայր Մարաղայում նստած էր, բայց վայելում էր հայ հոգևորականութեան և ժողովրդի յարգանքը և պատիւը։ Նա այդ խառնակութիւնների պատճառ համարեց հայոց եկեղեցու կարգ կանոններ չունենալը, գրաւոր օրէնքների բացակայութիւնը և կաթուղիկոսների կամայականութիւնները։ Այս տեսակէտով նա 1806-ին Մարաղայից առաջարկութիւն ուղարկեց էջմիածին համոզական և խորհրդակցական ձևով գրուած, որով առաջարկում էր գլխաւոր եպիսկոպոսներից մի ժողով կազ-

մէլ բոլոր գործերի կառավարութեան համար անընդմիջական գործակից կաթուղիկոսի, առանց որի կաթուղիկոսն իրաւունք չունէր ոչինչ անելու *)։ Էջմիածնում շատ սիրով ընդունեցին կաթուղիկոսի առաջարկը, ժողով գումարեցին, անդամներ ընտրեցին, որոնց հաստատեց ինքը կաթուղիկոսը և սկսեց գործադրել։ Նփրեմ կաթուղիկոսը նոյնպէս երդուեց հաւատարիմ կենալ ժողովով կառավարուելու սկզբունքին, մինչև իսկ ցանկացաւ հաստատել տալ կայսերական հրովարտակով, բայց չյաջողեց, որովհետև Էջմիածինը դեռ Ռուսաց ձեռքի տակ չէր անցել։ 1813 թուին Ներսէս դիմեց Պօլիս, առաջարկելով նրանց մի անդամ ընտրել և ուղարկել Էջմիածին իբրև «բարձրագոյն խորհրդարանի» անդամ բոլոր գործերին մասնակցելու, և երկրորդ Օսմանեան տէրութիւնից ստացած հաստատական հրովարտակի մէջ կաթուղիկոսի հետ զուգընթաց յիշուի և այդ գործակից ժողովի անունը, ինչպէս արել էր պարսից թագաժառանգը։ Պօլսի պատրիարքը և ամիրաները չընդունեցին Ներսէսի առաջարկը, ասելով որ կաթուղիկոսի իրաւունքները սահմանափակել չի կարելի, «խոհական մտաց քննութեամբ գտանի խռովարիթ ոճիր, ծանր ըմբստութիւն եւ խիստ ընդդիմակայութիւն, զի Աստուածընտիր քահանայապետն մեր՝ որ Աստուածատիպ գագաթան օծութեամբ ինքնիշխան գլուխ եկեղեցւոյ եմք յարգեալ, ընդ լծով հպատակութեան արկանէ, թող զայլսն»։ (Տես ամենայն հ. կաթ. Երիցեան. Ա. մ. 71—72 եր.)։

Էջմիածնի Սինօդը կամ բարձրագոյն խորհրդարանը իւր անզօր, թոյլ, անկանոն կառավարութիւնը շարունակեց մինչև Ռուսաց մայր աթոռին տիրելը։ Գլխաւոր ներկայացուցիչ Պասկևիչ տեսնելով հայոց եկեղեցու անկարգ վիճակը, դիմեց կառավարութեան և թոյլտուութիւն ստացաւ ծրագիր մշակել և կանոններ սահմանելու պատրաստութիւններ տեսնել։

*) Ժողովով կառավարելու միտքը յղացաւ առաջին անգամ Պետերբուրգում իշխան Լազարեանների գլխում, որոնք տեսնելով կաթուղիկոսների ամօթալի գործերը, 1805-ին իրանց միտքը գանելով հայ եկեղեցու բարգաւաճման նպաստող, գրեցին հայ եպիսկոպոսներին, որ նրանք Դանիէլ կաթուղիկոսին խնդրեն այդ մասին։

Տէրութեան կարգադրութեամբ Պասկեւիչը կազմեց ծածուկ յանձնաժողով, որը արդէն պատրաստ էր 1829 թուին, և կազմուած էր 4 անձից (գինուորական իշխ. Բեհբութեան, Սերովբէ վարդապետ, Զրպետեան և Օչկին) և հրամայեց ժողովի նիւտերը հայոց եկեղեցու կանոնադրութիւն կազմելու համար բանալ 1830—ի յունուարի 8-ին։ Կովկասում կազմուած կանոնադրութիւնը փոփոխութիւնների ենթարկուեց Պետերբուրգում և ուղարկուեց գլխաւոր կառավարիչ Ռօզէնին ի վերստին քննութիւն։ Ռօզէնը՝ Երևանի կառավարչի և Կարբեցու հետ վերջացրին այդ կանոնադրութեան գործը և 1836-ին պատրաստ ուղարկեցին Պետերբուրգ, որը և հաստատուեց կայսեր հրամանով 1836 թուի մարտի 11-ին։ Նոյն թուականին էլ սկսուեց պօլօժէնիայի գործադրութիւնը։

*«Հայ-Լուսաւորչական դաւանութեան հոգեւոր գործերի կառավարութեան մասին»:*

Այս կարգադրութիւնը մտել է Ռուսաց օրէնսգրքերի ԺԱ. հատորի Ա. մասի մէջ և բռնում է երրորդ գլուխը։

Առաջին բաժանմունք.

Հայոց եկեղեցու ընդհանուր իրաւունքների և արտօնութիւնների մասին։

Յօդ. 1109. Հայոց եկեղեցին Ռուսաց կայսրութեան մէջ ուրիշ օտարազգի դաւանութիւններին հաւասար՝ վայելում է Թագաւոր Կայսեր Ամենողորմ հովանաւորութիւնը։

1110. Ռուսաց բոլոր կայսրութեան մէջ թոյլատրւում է հայոց եկեղեցու ծէսերի համաձայն ազատ դաւանել հաւատքը, միայն թէ այս եկեղեցու անդամները, պետական ընդհանուր օրինադրութիւնների հիման վրայ, չզլանային պահանջուելիք յարգանքը տալ կայսրութեան մէջ ազատ դաւանուող հաւատքներին, մանաւորապէս հեռու մնային հաւատորսութիւնից։

1111. Ժամերգութեան կատարումը և հայոց եկեղեցու

հոգևոր գործերի կառավարութիւնը վարում է Նրանց հոգևորականութիւնը իրանց եկեղեցու կարգերի և օրէնքների համաձայն։

1112. Հայոց հոգևորականութիւնը ամեն բանում, ինչ որ վերաբերում է նրա զուտ հոգևոր պարտաւորութիւններին, ստորադրուած է և կախուած միմիայն իրանց հոգևոր իշխանութիւնից։

1113. Հայոց եկեղեցու աշխարհիկ և կուսակրօն բարձրադաս և ստորադաս հոգևորականութեան հոգևոր գործերը քննւում են և վճռւում նոյն եկեղեցու հոգևոր ատեանների միջոցով, իսկ եթէ վիճելի և կամ քաղաքացիական գործեր կունենան կամ միմեանց հետ, կամ իրանց հոգևորականութեան չպատկանող անձանց հետ, նաև քրէական և ուրիշ (գործեր) վէճեր, նրանք ենթարկւում են ընդհանուր օրէնքների հիման վրայ մարմնաւոր (աշխարհային) դատարանին, և նշանակում են հոգևոր կողմից, օրէնքներով որոշուած դէպքերում, այն տեղերում, որտեղ Աղէքսանդր II կայսեր դատաստանական օրէնքները չեն մուծուած, մի առանձին դէպուտատ (գործը պաշտպանող) վիճելի գործերի քննութեան մէջ մասնակից լինելու համար։

Թէ ո՞ր դէպքերում պիտի դիմել քաղաքացիական և քրէական վէճերի պատճառով մարմնաւոր դատարանին, տես յետոյ։

1114. Հայոց եկեղեցու աշխարհիկ և կուսակրօն հոգևորականութեան իրաւունքները ազատ լինելու մարմնական պատժից և անձնական հարկերից ու կոռ ու բեկարից որոշւում են Կացութեան Օրէնքներում։

Այս մասի վերաբերեալ յօդուածները վերջում կգտնես։

1115. Հայոց աշխարհիկ և կուսակրօն հոգևորականութեան անդամները Նորին Կայսերական մեծութեան բոլոր հպատակների նման իրաւունք ունին Ամենողորմած պար-

գներ ստանալու իրանց ցոյց տուած ջերմեռանդութեան և ծառայութիւնների համար։

1116. Հայոց եկեղեցիները իրաւունք ունին ձեռք բերելու, տիրելու և վաճառելու անշարժ և շարժական կայքեր քիչ յետոյ որոշուած կարգով (VIII բաժ.)։

## Բ. ԲԱԺԱՆՄՈՒՆՔ.

*Էջմիածնի Ծայրագոյն Պատրիարքի մասին.*

1117. Հայոց եկեղեցու գլխաւոր կառավարութիւնը և նրա հոգևորականութեան գլխաւորագոյն հսկողութիւնը և այս դաւանութեան կանոնների և ծէսերի ճիշտ կատարման վերահսկողութիւնը պատկանում է Էջմիածնի Պատրիարքին, իբրև հայ ազգի ծայրագոյն կաթուղիկոսին։ Նրան ամեն բանում գործակցում է Էջմիածնի հայոց Սինօդը։ Բայց Պատրիարքը ոչ մի դէպքում չի կարող տալ ոչ Սինօդին, ոչ մի ատեանի կամ անձի, իւր աստիճանին յատկացրած իշխանութիւնը, իրաւունքները և արտօնութիւնները։

Տես Նիկ. 6, 15, Պօլ. 2, 3, Անտ.—12, Շահ. 16, Դ—Դւ.—12.

1118. Էջմիածնի ծայրագոյն Պատրիարքը ընտրւում է ամբողջ հայոց ազգից—Լուսաւորչականներից հետևեալ սահմանուած կարգով։

1119. Երբ ամենայն հայոց ծայրագոյն Պատրիարք կաթուղիկոսի տեղը թափուր է մնում, հայոց Էջմիածնի Սինօդը ուղարկում է ծանուցագրեր թէ Ռուսաստանի և թէ նրա սահմաններից դուրս գտնուած հայոց թեմերը և նշանակում է մի տարի ժամանակ նոր պատրիարք ընտրելու համար։

1120. Իւրաքանչիւր թեմ Պատրիարքի ընտրութեան համար նշանակում է երկու պատգամաւոր՝ մէկը հոգևորական, միւսը աշխարհական։ Հոգևորական պատգամաւորը պէտք լինի կամ ինքը առաջնորդը, կամ նրա՝ հոգևորականների

միջից նշանակած մի որ և է անձը, աշխարհականը ընտրւում է բոլոր մելիքներից, իւզբաշիներից և Հայոց եկեղեցու մնացած աշխարհական պատուաւոր անձինքներից, որոնք Հայոց եկեղեցու հին սովորութեան համաձայն իրաւունք ունին ընտրելու։

Սրա մասին տես յետոյ Փոխարքայի կանոնները։

1121. Այս ընտրուած պատգամաւորները եթէ անձամբ չկարողանան ներկայ լինել Էջմիածնում պատրիարքի ընտրութեան համար նշանակած ժամանակին, իրաւունք ունին գրաւոր կերպով յայտնելու իրանց կարծիքը՝ ուղարկելով Էջմիածնի Սինօդին։

1122. Բացի պատգամաւորներից Պատրիարքի ընտրութեան մասնակցում են Էջմիածնի Սինօդի բոլոր անդամները և Էջմիածնում գտնուած 7 մեծ եպիսկոպոսներ։ Իսկ եպիսկոպոսների պակասութեան դէպքում, թիւը լրանում է այնտեղի աւագագոյն վարդապետներով։

1123. Ընտրութիւնը կատարւում է Ս. Գրիգոր Լուսաւորչի Էջմիածնի տաճարում, Հայոց եկեղեցու այս մասին գրած ծէսերի ճիշտ կատարմամբ։

1124. Բոլոր ներկայ եղողների ձայները ժողովելուց և Սինօդը հասած 1121 յօդուածի հիման վրայ գրաւոր կարծիքները լսելուց յետոյ, չորս աւելի շատ ձայներ ստացող անձինք համարւում են կանդիդատներ. ձայների հաւասարութեան դէպքում, վիճակը որոշում է թէ ո՞րը պէտք է լինի աւագագոյնը։ Դրանցից ընտրւում են բոլոր ներկայ եղողներից երկու հոգի ծայրագոյն Պատրիարքի պաշտօնի համար։

1125. Այս ընտրութիւնը վերջանալուց յետոյ, ժողովը երեք հոգուց բաղկացած պատգամաւորներ է ուղարկում Կովկասի Կառավարչապետի մօտ, որը երկու ընտրուած կանդիդատներին ներկայացնում է Ներքին Գործոց Նախարարի միջոցով ի բարեհաճ տնօրէնութիւն Նորին Կայսերական Մեծութեան։

1126. Թագաւոր Կայսրը նշանակելով Էջմիածնի ծայրագոյն Պատրիարքին—Հայոց ազգի կաթուղիկոսին, ամենաողորմածաբար շնորհում է նրան իւր աստիճանին վայել բարձրագոյն հրովարտակ մեծ պետական կնքի դրօշմամբ, և հրամայում է ամենայն Ռուսաց գահին հաւատարիմ լինելու երդումից յետոյ, օծումն կատարել Հայոց եկեղեցու վաղեմի ծէսերի և սովորութիւնների համաձայն։

1127. Էջմիածնի Պատրիարքը կրում է այն տիտղոսը, որ ունէին 'ի հնուց Հայոց ծայրագոյն Պատրիարք կաթուղիկոսները։

1128. Հայոց եկեղեցիների մէջ ժամերգութեան ժամանակ Պատրիարք կաթուղիկոսի անունը յիշատակւում է անմիջապէս ամենայն Ռուսաց Կայսեր և Նրա Օգոստափառ տան յիշատակութիւնից յետոյ։

1129. Վաղեմի սովորութիւնների համաձայն, Պատրիարքը դուրս գալով Վեհարանից և Էջմիածնի բակից, իրաւունք ունի ուղեկից վերցնելու պատուաւոր պահնորդախումբ, բաղկացած Էջմիածնին պատկանող հայերից, մի քանի հոգևորականներ և երկու երկու եկեղեցական՝ որոնցից մէկը կրում է հայրապետական գաւազանը, իսկ միւսը խաչվառը։

1130. Հայոց եկեղեցու վաղեմի օրէնքների հիման վրայ, Էջմիածնի Պատրիարքը ինչպէս ծայրագոյն կաթուղիկոս հայոց ազգի, միայն ինքն իրաւունք ունի ս. մեռոնն օրհնելու այս դաւանութեան բոլոր եկեղեցիների համար։

Տես Ե—Դւ. 9, Պար.—5, Մակ.—4, Սահ.—20։

Ծանօթութիւն. Ս. մեռոնի բաշխումը կատարւում է Պատրիարքի և Նրա նուիրակների ձեռքով բոլորովին ձրի։

1131. Էջմիածնի Պատրիարքը իբրև Հայոց ազգի հոգևոր հովուապետ ձեռնադրում է թեմակալ առաջնորդներին և Հայոց եկեղեցու բոլոր մնացած եպիսկոպոսներին, ի նկատի առնելով Հայոց եկեղեցու վաղեմի կանոնները, որոնք

թելադրում են թեմ չունեցող եպիսկոպոսների թիւը չշատացնել առանց յայտնի հարկաւորութեան։

1132. Ղեկավարուելով հայոց եկեղեցու վաղեմի կանոնադրութիւններով և լսելով առաջուց Էջմիածնի Սինոդի կարծիքը, Պատրիարքը վերջնականապէս վճռում է բոլոր զուտ հոգևոր գործերը, որոնք վերաբերում են հաւատոյ վարդապետութեան, եկեղեցու պաշտամունքներին և այլ նոյնանման խնդիրներին։

1133. Էջմիածնի ծայրագոյն Պատրիարքը իրաւունք ունի հայոց եկեղեցում գործադրուող կարգերի համաձայն, հոգևորականութեան առաքինի և օգտակար անդամներին վարձադրել լանջական խաչով, կամիլաւկայով և արախչիններով։

1134. Էջմիածնի Պատրիարքը իբրև հայոց ազգի ընդհանուր հոգևոր հովիւ, ըստ օրինակի Ներսէս Շնորհալու, ուղարկում է ժամանակ առ ժամանակ օրհնութեան կոնդակներ ամեն տեղերի (երկրների) լուսաւորչական՝ բոլոր կացութեան պատկանող հայերին, յորդորելով նրանց խաղաղ և առաքինի կեանք վարել, հնազանդել օրինաւոր իշխանութեան ս. աւետարանի կանոնների համաձայն։

1135. Ամենայն Ռուսաց Կայսրների Նախահարց աթոռը բազմելիս, Էջմիածնի Պատրիարքը ուղարկում է հայոց հոգևորականներից ամենայարգելի անդամներից մէկին, ամենահպատակօրէն շնորհաւորութիւն մատուցանելու Նորին Կայսերական Մեծութեան՝ խնդրելով ամենողորմ բարեհաճութիւն ներկայ լինելու առաջիկայ թագադրութեան հանդէսին, կամ թէ անհնարաւորութեան դէպքում, ուղարկել իւր ներկայացուցիչը։

1136. Հայոց եկեղեցու կանոնների համաձայն Ծայրագոյն Պատրիարք կաթուղիկոսը մշտապէս բնակւում է Էջմիածնի վանքում։ Եթէ նա հարկաւոր է համարում հեռանալ այս վանքից չորս ամսից աւելի ժամանակով, խնդրում է Ներքին Գործոց Նախարարի միջոցով, Նորին Կայսերական Մեծութեան Բարձրագոյն հաճութիւնը։

1137. Էջմիածնի Պատրիարքը իրաւունք ունի արձակուրդ տալու թէ Հայոց Սինօդի անդամներին և թէ թեմական առաջնորդներին և ընդհանրապէս այս դաւանութեան բոլոր եպիսկոպոսներին չորսամսեայ ժամանակով, աւելի երկար արձակուրդ և արտասահման գնալու իրաւունք տալիս է Պատրիարքը Բարձրագոյն թոյլտուութեամբ։ Սինօդի անդամներից միաժամանակ երկուսից աւելի չեն կարող արձակուրդ ստանալ։

1138. Պատրիարք-կաթուղիկոսը իբրև Էջմիածնի վանքի անմիջական պետ, կառավարում է վանքի գործերը իւր սեպհական հաճութեամբ, եկեղեցական կանոնների ճիշտ հիման վրայ։

Այստեղ վերջանում է կաթուղիկոսների իրաւանց կանոնները ըստ 1896-ի հրատարակութեան. հին հրատարակութեան մէջ կայ հետևեալ յօդուածը ծանօթութեամբ, որը դուրս է ձգուած նոր հրատարակութիւնից։

«Պատրիարք կաթուղիկոսի վախճանելուց յետոյ, Էջմիածնի Սինօդը անյապաղ ժողովում է զգուշութեամբ պահելու թէ նրա մօտ եղած թղթերը, որոնք վերաբերում են եկեղեցու և կառավարութեան գործերին և թէ նրա տնօրէնութեան տակ եղած եկեղեցական գոյքին։

Ծանօթութիւն. Պատրիարքը տէր է իւր սեպհական գոյքը տնօրինել իւր հաճութեամբ. եթէ կտակ չի արել, նրա գոյքը անցնում են իրա օրինաւոր ժառանգներին. իսկ եթէ ժառանգներ չունենայ, գոյքը կհաշուի հայոց եկեղեցու սեպհականութիւն»։ Առաջի կտորը մտցրած է յաջորդ բաժանմունքի 2—կէտի ծանօթութեան մէջ։

## Գ. ԲԱԺԱՆՄՈՒՆՔ

*Էջմիածնի Հայ-Լուսաւորչական Սինօդի մասին.*

1139. Էջմիածնի Հայոց Սինօդը՝ նախագահութեամբ Էջմիածնի Ծայրագոյն—Պատրիարք Կաթուղիկոսի, բաղկացած է Էջմիածնում մշտական բնակութիւն ունեցող 4 արքեպիսկոպոսից կամ եպիսկոպոսից և նոյնքան վարդապետներից։

1140. Պատրիարք Կաթուղիկոսը Էջմիածնի Սինօդի անդամութեան համար առաջարկում է երկու հոգի մի տեղի համար Ներքին Գործոց Նախարարի միջոցով Թագաւոր Կայսրին։

1141. Էջմիածնի Սինօդի գործողութեանց շրջանին, ըստ կառավարչական մասին, վերաբերում են հետևեալները։

ա). Այս Սինօդին ստորադրուած բոլոր առեանների և պաշտօնական 'անձանց գործողութիւնների հսկողութիւնը։

բ). Սինօդին ստորադրուած բոլոր վանքերի, եկեղեցիների, սեմինարիաների (թեմական դպրոց) և աստուածահաճոյ հիմնարկութեանց բարեկարգութեան վերատեսչութիւնը։

Ծանօթութիւն. Պատրիարքի մահուան դէպքում, Սինօդը անյապաղ միջոցներ է ձեռք առնում պահպանելու թէ նրա մօտ գտնուած թղթերը, եկեղեցու և կառավարութեան գործերին վերաբերեալ, և թէ նրա ձեռքի տակ գտնուած եկեղեցու գոյքերը։

գ). Հայոց եկեղեցիների գոյքերի կառավարութեան կարգի վրայ հսկողութիւն։

դ). Վանքերի, եկեղեցիների և դպրոցների հիմնարկութեան գործերի նախնական քննութիւնը և Ներքին Գործոց Նախարարի ձեռքով Բարձրագոյն թոյլտուութիւն խնդրելը։ Էջմիածնի Սինօդի կողմից այսպիսի՝ Կովկասին վերաբերեալ գործերի առաջարկը հասնում է բարձր կառավարութեան Կովկասի Կառավարչապետի միջոցով։

ե). Թոյլտուութիւն հայադաւան հայերին վանականութեան մէջ մտնելու և հոգևորական դառնալու։

զ). Թոյլտուութիւն ազատուելու վանականութիւնից և ընդհանրապէս հոգևորականութիւնից։

է). Ամուսնանալու խնդրական գործերի վերջնական քննութիւնը (վերահասութիւն)։

ը). Թոյլտուութիւն թեմերում ազատակամ նուէրներով հանգանակութիւն անելու յօգուտ ուրիշ թեմի վանքերի, եկեղեցիների, դպրանոցների և աստուածահաճոյ հիմնարկութիւնների։

թ). Հսկողութիւն սրբազնագործ և եկեղեցու ստորին պաշտօնեաների որբերի և այրիների խնամելու վրայ։

ժ). Կարծիք յայտնել այն եկեղեցականների մասին, որոնց Պատրիարքը կամենում է եպիսկոպոս ձեռնադրել առանց թեմակալ առաջնորդ կարգելու նրանց։

ժա). Դատողութիւն յայտնել պատրիարքին այն հոգևորականների մասին, որոնց նա կամենում է ուղարկել մեռոն բաշխելու։

ժբ). Կարծիք յայտնել այն հարցերի մասին, որոնք առաջարկում է Պատրիարքը եզրակացութեան համար։

ժգ). Ունենալ ճիշտ ցուցակ Ռուսաց սահմաններում գտնուած հայոց բոլոր եկեղեցիների, վանքերի, դպրոցների և աստուածահաճոյ հաստատութիւնների, ամեն մի թեմին առանձին։

ժդ). Ունենալ նոյնպիսի ցուցակներ Ռուսաստանում գտնուող հայոց աշխարհիկ և կուսակրօն հոգևորականութեան թէ սրբազնագործ և թէ ստորին պաշտօնեաների և այլ անձանց, որոնք գտնւում են Սինօդի տեսչութեան տակ։

ժե). Ունենալ մատեան Ռուսաստանում գտնուող հայոց վանքերի և եկեղեցիների բոլոր գոյքերի։

*ժզ). Թոյլտուութիւն մահմետականներին և հեթանոսներին Հայոց դաւանութեան մէջ մտնելու։ (8—11 յօդ.)։*

*ժա. Հատորի* 8—11 *յօդուածները իրաւունք են տալիս Սինոդին ընդունելու մահմետականներին և հեթանոսներին Հայ եկեղեցու ծոցը, միայն Կովկասի Կառավարչապետի թոյլտուութեամբ և այն պայմանով, երբ վկայութեամբ կհաստատուի թէ նորահաւատները Ռուս դաւանութեան չեն պատկանում։*

10*-րդ յօդուածը թոյլ է տալիս Կառավարչապետից թոյլտուութիւն չստացած մկրտել այն խնդրատուներին, որոնք մահամերձ հիւանդ են։*

6*-րդ յօդուածը իւր ծանօթութեամբ թոյլ է տալիս օտարադաւան քրիստոնեաներին մտնել Հայոց եկեղեցու ծոցը վերոյիշեալ կարգով և ձևով։*

16*-րդ կէտը հին տպագրութեան մէջ չկայ. նրա փոխարէն հետևեալ* 17*-րդն է։*

*ժէ). Ներքին Գործոց Նախարարութեան ներկայացնել ամեն տարի յայտագրեր այն առարկաների մասին, որոնք յիշուած են այս* 1141 *յօդուածի* 13—15 *կէտերում, լիակատար տեղեկութիւններ Ռուսաստանում գտնուած Հայոց թեմերի ծնուածների, մեռածների և պսակուածների մասին, նոյնպէս և տարեկան ընդհանուր հաշիւ։ Վերոյիշեալ յայտագրերը և հաշիւները, որոնք վերաբերում են Կովկասին, ներկայացնում է Ներքին Գործոց Նախարարին Կովկասի Կառավարչապետի միջոցով։*

1142. *Ըստ դատաստանականին՝ Էջմիածնի Սինոդի քննութեան և վճռին պատկանում են.*

*ա. Սինոդի անդամների վրայ եղած գանգատները։*

*բ. Հայոց թեմերի առաջնորդների և կոնսիստորիաների վրայ եղած գանգատները։*

*գ. Սոյն Սինոդի անդամների և թեմակալ առաջնորդների անկանոն գործողութեանց քննութիւնը։*

դ. Հայոց կոնսիստորիաներում քննուած և բողոքով Սինոդ մտած պսակների և մարմնաւոր դատարանին չվերաբերուող այն յանցանքները և վէճերը, որոնք կատարում են եկեղեցու սրբազնագործ և ստորին պաշտօնեաները և վարում միմեանց հետ և այլն։

1143. Էջմիածնի Հայոց Սինոդը գտնուելով ծայրագոյն Պատրիարքի անմիջական վերատեսչութեան տակ, վճռում է վերջնականապէս այն բոլոր գործերը, որոնք վերաբերում են հաւատոյ վարդապետութեան, եկեղեցու պաշտամունքներին, ծէսերին և պսակներին, և եկեղեցականների այն յանցանքներին, որոնք մարմնաւոր դատարանների քննութեան չեն պատկանում։ Այս Սինոդը, Ռուսաստանում գտնուած հայադաւան հայերի գործերի վերաբերեալ խնդիրներում ենթարկւում է կառավարիչ Սենաթին և Ներքին Գործոց Նախարարութեան, հաւասար օտարազգի դաւանութեանց բարձրագոյն հոգևոր ատեաններին։

1144. Թեմական առաջնորդների և հայադաւան Սինոդի անդամների վրայ եղած գանգատների վճիռները, եթէ որ այս հոգևորականները որև է պատժի են դատապարտւում, ուրիշ կերպ չեն կարող գործադրուիլ, բայց միայն Ներքին Գործոց Նախարարի միջոցով յայտնուած Բարձրագոյն հրամանի զօրութեամբ։

1145. Էջմիածնի հայադաւան Սինոդը դիմում է Ներքին Գործոց Նախարարութեան այն բոլոր գործերի և դէպքերի վերաբերմամբ, որոնց համար պէտք է Նորին Կայսերական Մեծութեան թոյլտուութիւնը խնդրել, կամ երբ հարկաւոր են Ներքին Գործոց Նախարարի կարգադրութիւնները, նոյնպէս և այն գործերի համար, որոնք պահանջում են հաղորդակցութիւն ունենալ ուրիշ նախարարութիւնների, պետական կառավարութեան առանձին մասերի գլխաւոր կառավարիչների, գեներալ-նահանգապետների, նահանգապետների և ուրիշ տեղական կառավարութեանց հետ։ Սինոդը դիմում է Ներքին Գործոց Նախարարին այն վէճերի համար,

որոնք կարող են ծագել իւր և օտարազգի դաւանութեանց հոգևոր իշխանութեան մէջ, և վերջապէս պատահելիք կասկածելի դէպքերում, երբ հարկ կլինի որոշել, թէ արդեօ՞ք այս ինչ գործը պատկանում է իւր իրաւասութեան թէ ոչ։ Էջմիածնի Սինօդի վերոյիշեալ՝ Կովկասի սահմանում եղած գործերի վերաբերմամբ առաջարկութիւնները հասնում են բարձր իշխանութեան Կովկասի Կառավարչապետի միջոցով։

1146. Էջմիածնի Հայադաւան Սինօդը վարում է իւր գործերը կօլլեգիայի (հանրաժողով) իրաւունքներով, բայց բոլոր զուտ հոգևոր գործերի մէջ Պատրիարքը ունի վճռական ձայն, իսկ ուրիշ գործերում, եթէ անդամների ձայները հաւասար են, նրա ձայնը՝ իբրև նախագահի ունի գերակշռող ոյժ։

1147. Այն գործերի քննութեան ժամանակ, որոնց համար Էջմիածնի Պատրիարքը տալիս է վերջնական վճիռ, նա Սինօդում ներկայ չի լինում, այլ հասու լինելով Սինօդի եզրակացութիւններին, որոնք օրագիրներով իրան են ներկայացնում, տալիս է նրանց մասին իւր վճիռը։

1148. Երբ Էջմիածնի Պատրիարքը Հայադաւան Սինօդում ներկայ չի լինում, այն ժամանակ նրա փոխարէն Սինօդում նախագահութիւն է անում Սինօդի անդամ արքեպիսկոպոսներից կամ եպիսկոպոսներից աւագագոյնը։ Նա նախագահի բոլոր իրաւունքները վայելում է միայն այն ժամանակ, երբ Պատրիարքը հիւանդութեան կամ Էջմիածնից բացակայ լինելու պատճառով չի կարողանում ներկայ գըտնուել. իսկ զուտ հոգևոր գործերը, որոնց համար Պատրիարքը ունի վճռական ձայն, ոչ մի դէպքում չեն կարող վճըռուել առանց Պատրիարքի՝ Պատրիարքական Աթոռը թափուր եղած ժամանակ։

1149. Էջմիածնի Հայադաւան Սինօդի գործավարութեան կարգը, անդամների և դիւանատան աստիճանաւորների իրաւունքները և պարտաւորութիւնները սահմանւում են այն ընդհանուր գործադրուող կարգադրութիւններով,

որոնք որոշուած են կօլլեգիալնի (համաժողով) ատեաններէ համար։

1150. Էջմիածնի Սինօդը գումարւում է նայելով մտած գործերի քանակութեան երեք կամ առ նուազն երկու անգամ շաբաթը։

1151. Էջմիածնի Հայադաւան Սինօդում լինում է առանձին պրօկուրօր, որը նշանակւում է Բարձրագոյն Հրամանով, Արդարադատութեան Նախարարի առաջարկութեամբ, այս Նախարարի, Ներքին Գործոց Նախարարի և Կովկասի Կառավարչապետի համաձայնութեամբ։

Այս յօդուածը հնի մէջ այլ խմբագրութիւն ունի։

1152. Պրօկուրօրը (յօդ. 1151) հսկում է այս Սինօդում կատարուող դատաստանական և կարգադրական գործերի, նոյնպէս և Սինօդի դիւանատան վրայ, և Էջմիածնի ծայրագոյն Պատրիարքի ընտրութեան ներկայ է լինում։ Ցիշեալ պրօկուրօրը իւր բողոքները, ժամանակին հասցնելիք յայտագրերը և հաշիւները, ըստ դատաստանական մասին ներկայացնում է Արդարադատութեան Նախարարին, իսկ մնացած բոլոր առարկաների վերաբերմամբ Ներքին Գործոց Նախարարին, հաղորդելով միևնոյն ժամանակ Կովկասին վերաբերեալ բողոքների և հաշիւների պատճէնները Կովկասի Կառավարչապետին։

1153. Էջմիածնի Հայոց Սինօդը դրամական գումարների՝ որոնք գտնւում են իւր տեսչութեան տակ, պահպանութեան և վճարելիքները տալու համար ունի իւր գանձապետը, որին նշանակւում է աշխարհական կամ հոգևորական անձինքներից, որոնք հմուտ են հաշուապահութեան մէջ և յայտնի են իբրև ազնիւ և անշահասէր մարդիկ։

Ծանօթութիւն. Էջմիածնի Հայոց Սինօդի կառավարութեան տակ են գտնւում, Սինօդի գանձապետի տեսչութեամբ, թէ Սինօդին և թէ Էջմիածնի վանքին պատկանող գումարները. վանքի ունեցուածքի կառավարութիւնը ընդհանրապէս կատարւում է Սինօդի վերահսկմամբ։

Եթէ Սինոդին պատկանող գումարները կաւելանան թեմական արդիւնքների մնացորդներով կամ ուրիշ որ և է աղբիւրներով այն աստիճան, որ հարկաւորութիւն կզգացուի մի նոր գանձապետ էլ ունենալ, այն ժամանակ Սինոդը պարտաւոր է այդ մասին միջնորդել ըստ կարգին ուր հարկն է։

*Հին խմբագրութիւնը տարբեր է, վանքի և Սինոդի գումարները բաժանած են միմեանցից։ Իսկ այստեղ միացրած է գանձապետի ձեռքում։*

1154. Հայ-Լուսաւորչական Սինոդի գանձապետը ընդունում և պահպանում է Սինոդի կառավարութեան տակ գտնուած բոլոր գումարները և դրանցից հատուցանելիք վճարումները կատարում է սահմանեալ կարգով Սինոդի ձեւական առաջադրութեամբ, հիմնուած նրա օրագիրների վրայ։

*Այս յօդուածը չկայ հին խմբագրութեան մէջ։*

1455. Գանձապետը իրան յանձնուած բոլոր գումարների հաշիւները վարում է յատուկ ելևմտից տումարներով։ Այս գրքերը ընդհանուր կարգի համաձայն պիտի ժապաւինուած և Սինոդի կնքի դրոշմամբ և Սինոդի երկու անդամի և պրօկուրօրի ստորագրութեամբ հաստատուած լինին։

1156. Գանձապետի մօտ գտնուած դրամները և եկեղեցական գոյքերի ապացուցագրերը պիտի պահպանուին Սինոդի առենական սենեակում՝ առանձին արկղի մէջ։ Այս արկղը պիտի ունենայ երեք զանազան կողպէք և Սինոդի կնքով կնքուած։ Այդ կողպէքների բանալիներից մէկը պահւում է գանձապետի մօտ, իսկ երկուսից ամեն մէկը Սինոդի այն երկու անդամի մօտ, որոնց առանձնապէս յանձնարարւում է Սինոդի հաշուարարական գործերի վերահասութիւնը։ Այս անդամները պէտք է ներկայ գտնուին ամեն անգամ արկղի բացման ժամանակ։

1157. Էջմիածնի Հայադաւան Սինոդը ամեն ամիս ստուգութեան է ենթարկում գանձապետի մօտ գտնուած բոլոր

առձեռն գումարները և դրամական փաստագրերը, և ինչ որ գտնում է այնտեղ, գրում է օրագրում։

Այս յօդուածը Հին խմբագրութեան մէջ չկայ։

1158. Գանձապետը ուշք է դարձնում, որ Սինօդի արկղում (1156 յօդ.) չմնային առանց Հարկաւորութեան մեծ դրամական գումարներ, յայտնում է Սինօդին տոկոսով աճեցնել տալ գումարները օրէնքի Հիման վրայ։ Այս դրամագլխի մասնաւոր անձանց ձեռքը տալը լինում է միմիայն այն դէպքում, երբ Սինօդը այդ օգտաւէտ է Համարում, և մասնաւոր անձին Հաւատացած այդ գումարի փոխարէն Հաստատուն գրաւական է վերցրած։

1159. Էջմիածնի Հայադաւան Սինօդի դիւանատունը բաղկացած է մէկ ատենադպրից, առանձին յանձնարարութեանց աստիճանաւորից, Հաշուապահից, երեք գործավարից (дѣлопроизводитель), գործադրից (экзекуторъ և регистраторъ), թարգմանից, գործապահից (архиваріусъ) և Հարկաւոր թուով դիւանական ծառայողներից։ Դիւանատան ատենադպիրը, Սինօդի պրօկուրօրի առաջարկութեամբ, նշանակւում է և արձակւում է Ներքին Գործոց Նախարարի ձեռքով, իսկ մնացած աստիճանաւորները Կովկասի Կառավարչապետի։

Այս յօդուածը բոլորովին տարբեր Հին խմբագրութիւն ունի, նախկին կարգով, սինօդի ծառայողները ընտրում էր Սինօդը և Հաստատում էր Պատրիարքը։

Այս յօդուածիս յաջորդող նախկին յօդուածը աստիճանաւորների դասի (классъ) մասին Նոր խմբագրութեան միջից դուրս է ձգուած։

1160. Էջմիածնի Հայադաւան Սինօդի անդամները, պրօկուրօրը, գանձապետը և դիւանատան աստիճանաւորները իրանց պաշտօնը մտնելիս երդում են տալիս Հաւատարիմ ծառայել Նորին Կայսերական Մեծութեան, և ճիշտ կատարել իրանց պարտաւորութիւնները ընդհանուր Հիմունքների Հիման վրայ։

## Դ. ԲԱԺԱՆՄՈՒՆՔ.

*Հայ լուսաւորչական եկեղեցու թեմական առաջնորդների մասին.*

1161. Հայադաւան Հայոց եկեղեցիները բաժանւում են թեմերի, որոնք կառավարւում են այս դաւանութեան արքեպիսկոպոսներով։

1162. Ռուսաց կայսրութեան մէջ վեց Հայոց թեմ կայ. 1) Նախիջևանի և Բեսարաբիայի, 2) Աստրախանի, 3) Երևանի, 4) Վրաստանի, 5) Ղարաբաղի և 6) Շիրվանի։

1163. Նախիջևանի և Բեսարաբիայի թեմին պատկանում են Պետերբուրգի, Մոսկուայի, Եկատերինոսլաւի, Խերսոնի և Բեսարաբիայի նահանգների, և նոյնպէս Ռոստովի և Տագանրօգի շրջանների, Դօնի զինուորական շրջանի բոլոր եկեղեցիները։ Առաջնորդի և կոնսիստորիայի տեղն է Քիշնև քաղաքը։

1164. Աստրախանի թեմին պատկանում են Ռուսաստանի մնացած բոլոր եկեղեցիները, ի բաց առեալ 1163 և 1165—1168 յօդուածներում յիշուածները։

1165. Երևանի թեմին պատկանում են նախկին՝ Երևանի, Նախիջևանի, և Օրդուպատի գաւառների, նախկին Շուրագեալի գաւառակի և Ղարսի նահանգի եկեղեցիները, Ղարաբաղի վիճակից կտրւում է և այս մասը ընկնում Տաթևի միտրոպոլտութիւնը իւր հօտով։ Այս թեմի առաջնորդը, վաղեմի սահմանադրութեամբ ինքը Պատրիարքն է, որը կառավարում է թեմը իւր յաջորդների ձեռքով, որոնք նստում են Երևանի, Նախիջևանի, Շուրագեալի, Տաթևի և Ղարսի մէջ։

1166. Վրաստանի թեմին պատկանում են Վրաստանի, Գանձակի գաւառի, նախկին Բօրչալուի, Ղազախի, Շամշադինի և մասամբ Բամբակի գաւառակների, Ախալցխայի, Իմե-

րեթիայի և Գուրիայի, Բաթումի շրջանի, Արտուինի և Քութայիս նահանգի Սուխումի եկեղեցիները։ Այս թեմում յաջորդներ նստում են Գանձակում, Ախալցխայում և Իմերեթիայում։

1167. Ղարաբաղի թեմին պատկանում են նախկին Ղարաբաղի գաւառի եկեղեցիները (բացի Տաթևի միտրոպոլտութիւնից իւր հօտով) և Շաքուայ ու Թալիշի եկեղեցիները։ Այս թեմում յաջորդ նշանակւում է Շաքում (Նուխում)։

1168. Շամախու թեմին պատկանում են նախկին Շիրվանի, Ղուբայի, Բագուայ և Դերբէնդի եկեղեցիները։ Այստեղ առանձին յաջորդ չի հարկաւորւում։

Այս 1162—1168 յօդուածները բոլորովին տարբեր են խմբագրուած հնի մէջ։

1169. Թեմական առաջնորդները նշանակւում է Թագաւոր Կայսրը այս դաւանութեան հոգևորական աստիճանաւորներից։ Նրանք նշանակւում են և արձակւում Բարձրագոյն հրամաններով։ Պաշտօն մտնելու ժամանակ, նրանք հաւատարիմ հպատակութեան և ծառայութեան երդում են տալիս։

1170. Հայ-լուսաւորչական արքեպիսկոպոսները Բարձրագոյնս իրանց յանձնուած թեմերում այս դաւանութեան լիակատար առաջնորդներն են և պատասխանատու են նրանց կառավարութեան համար Բարձրագոյն իշխանութեան և իրանց հոգևոր կառավարութեան առաջ։ Գործերի կառավարութեան մէջ նրանց գործակցում են ամեն մի թեմում հաստատուած հայ-լուսաւորչական կոնսիստորիաները։

1171. Հայ-լուսաւորչական եկեղեցու առաջնորդները իրանց վիճակի սահմանում ձեռնադրութիւն են կատարում զանազան հոգևոր աստիճաններ տալով նուիրեալներին հայոց եկեղեցու կարգերի համաձայն և ուշադրութիւն են դարձնում, որ սրբազնագործ և ստորին պաշտօնեաների թիւը չաւելանայ առանց իրական կարիքի։ Վարդապետ

ձեռնադրում են միայն Էջմիածնի Պատրիարք-կաթուղիկոսի հրամանով։

1172. Հայոց եկեղեցու առաջնորդները իրաւունք ունին արձակուրդ տալու իրանց ստորադրեալ հոգեւորականներին չորս ամսից ոչ աւելի ժամանակով, աւելի երկար արձակուրդ խնդրողների համար նրանք դիմում են իրանց հոգեւոր գլխաւոր իշխանութեան, որը արտասահման գնացողների համար առաջարկութիւն է անում ընդհանուր կարգով բարձրագոյն իշխանութեան։

1173. Հայոց առաջնորդները պարտաւոր են իրանց անձնական օրինակով բարեպաշտութեան և քրիստոնէական ու քաղաքացիական բոլոր առաքինութեանց տիպար հանդիսանալ, իրանցից կախուած բոլոր հնարքներով աշխատել իրանց յանձնուած հօտի բարեկարգութեան համար։

1174. Նրանք (յօդ. 1173) արթուն կերպով հսկում են իրանց թեմի հոգեւորականների բոլոր գործողութիւնների վրայ, յորդորելով նրանց առաքինի կեանք վարել, ս. աւետարանի վարդապետութեան համաձայն։

1175. Հայոց եկեղեցու առաջնորդները աշխատելով հայոց բոլոր դասակարգերի մէջ հաստատել ս. աւետարանի կանոնները և տարածել բարոյական կարգերը իրանց յանձնուած թեմի սահմաններում, գործ են ածում այս նպատակի համար մեղմ, քրիստոնէական ճշմարիտ ոգու համաձայն համոզելու և խրատելու եղանակ։ Նրանք պարտաւոր են ըստ կարելոյն խուսափել այն ամեն բանից, որ կունենայ աւելորդ խստութեան նշան։

1176. Հայոց առաջնորդները պարտաւոր են եթէ ոչ տարին մի անգամ, գոնէ երեք տարին մի անգամ այցելել Բարձրագոյնս նրանց յանձնուած թեմերը։ Անկարելիութեան դէպքում, յանձնում են եկեղեցիների այցելելը իրանց իշխանութեան տակ գտնուած մի յուսալի եկեղեցականի, տալով նրան ղեկավարութեան համար հարկաւոր հրահանգները։

1177. Թեմի այցելութեան ժամանակ, նրանք (յօդ. 1176) առանձին ուշադրութիւն են դարձնում հոգեւորականների, վանքերի և եկեղեցիների դրութեան վրայ, վերջացնելով 'ի յայտ բերուած անկարգութիւնները և միջոցներ փնդռելով նրանց նորոգման առաջն առնելու։

1178. Հայոց առաջնորդները նոյնպէս լուրջ ուշադրութիւն են դարձնում վանքերի և եկեղեցիների մօտ գտնուած դպրոցների վրայ ընդհանրապէս, և մասնաւորապէս թեմերը այցելութեան եղած ժամանակ։ Օգնելով իրանցից կախուած բոլոր միջոցներով այդ ուսումնարանների բարելաւութեան և տարածման. նրանք պիտի գլխաւորապէս հոգ տանեն նրանց մէջ կանոնաւոր և յարմար դասաւանդութեան եղանակ մտցնել, և բարի վարք ու բարք պահպանել ուսուցիչների և աշակերտների մէջ։

*Ծանօթութիւն 1.* Հայոց թեմական առաջնորդներին է յանձնւում 1178 յօդ. յիշուած կանոնների հիման վրայ Կովկասի Հայ-լուսաւորչական եկեղեցական դպրոցների կառավարութիւնը, սրան կցուած կանոնների համաձայն։

*Ծանօթութիւն 2.* 1178 յօդուածում յիշատակուած ուսումնարանները բացւում են Թուրքեստանի և Անդրկասպեան շրջաններում միմիայն Թուրքեստանի գեներալ-նահանգապետի և Անդրկասպեան շրջանի կառավարչի հետ համաձայնութիւն կայացնելուց յետոյ ըստ հարկաւորեալ կարգի։ Այս դպրոցներում բոլոր ուսումնական առարկաների՝ բացի կրօնից՝ դասաւանդութիւնը կատարւում է Ռուսաց լեզուով։

Այս երկու ծանօթութիւնը չկայ հին խմբագրութեան մէջ։

1179. Հայոց թեմական առաջնորդների պարտաւորութիւններին է վերաբերում հայոց դաւանութեան պատկանող, եկեղեցական, դաւանաբանական, բեմբասացական և ուրիշ հոգեւոր բովանդակութիւն ունեցող գրքերի նախնական հայեցողութիւնը, (ցենզուրա) գրաքննական օրէնքներում սահմանած կանոնների հիման վրայ։

ծանօթութիւն. Հոգևոր բովանդակութիւն ունեցող հայերէն շարադրութիւնները, որոնք Անդրկովկասում պիտի տպուեն կամ արտասահմանից են բերուած, ուղարկւում են Կովկասի գրաքննական առեանից ամենայն հայոց Պատրիարք կաթուղիկոսին, Պատրիարքի նշանակած հոգևորականների ձեռքով քննելու համար։

1179 յօդ. և այս ծանօթութիւնը չկան հին խմբագրութեան մէջ։

1180. Հայոց եկեղեցու առաջնորդները այցելելով իրանց վիճակները, նոյնպէս դիտում են իրանց կառավարութեան ներքոյ գտնուած վանքերի և եկեղեցիների կալուածքների դրութիւնը։

1181. Հայոց եկեղեցու առաջնորդները իրանց թեմերը շրջելուց յետոյ իրանց գործողութիւնների մանրամասն հաշիւն են ներկայացնում հայ-լուսաւորչական Սինօդին։

1182. Տարին վերջանալուց յետոյ հայոց թեմական առաջնորդները ներկայացնում են իրանց թեմերի գործերի մասին ընդհանուր հաշիւ Էջմիածնի հայոց Սինօդին։

Հին խմբագրութիւնը թեթև տարբերութիւն ունի սրանից, նրա մէջ կայ և մի յօդուած առաջնորդների թողած ժառանգութեան վերաբերմամբ, որը դուրս է ձգուած նոր խմբագրութեան մէջից։

## Ե. ԲԱԺԱՆՄՈՒՆՔ.

### *Հայ լուսաւորչական կոնսիստորիաների եւ հոգեւոր կառավարութիւնների մասին.*

#### ԱՌԱՋԻՆ ԳԼՈՒԽ. ԿՈՆՍԻՍՏՈՐԻԱՆԵՐԻ ՄԱՍԻՆ.

1183. Ամեն մի հայ լուսաւորչական թեմում գտնւում է այս դաւանութեան կոնսիստորիան, որը բաղկացած է 4 անդամից—մի վարդապետից և երեք աւագ քահանայից կամ քահանայից. և որի մէջ նախագահութիւն է անում առաջնորդը։

1184. Կոնսիստորիայի անդամներին նշանակում է թեմակալ առաջնորդը, որը նրանց ընտրութեան մասին Էջմիածնի Սինոդին հաղորդում է ի տեղեկութիւն։

1185. Իւրաքանչիւր կոնսիստորիայի դիւանատունը բաղկացած է մի ատենադպրից, թարգմանչից, գործադրից (էկզէկուտոր), որը միևնոյն ժամանակ վարում է գանձապետի և գործապահի (արխիվարիուս) պաշտօն, և դիւանատան հարկաւոր թուով ծառայողներից։ Այս աստիճանաւորները նշանակւում են կոնսիստորիայի ընտրութեամբ և առաջնորդի հաստատութեամբ։ Այս անձանց պաշտօնների դասը որոշուած են շտատներում։

Այս կանոնը հին խմբագրութիւնից տարբեր է։

1186. Կոնսիստորիաների անդամները և դիւանատան աստիճանաւորները իրանց պաշտօնը մտնելիս, տալիս են ընդհանուր հիմունքներով երդում Նորին Կայսերական Մեծութեան հաւատարիմ ծառայելու և իրանց պարտաւորութիւնները ճիշտ կատարելու։

1187. Հայոց կոնսիստորիաներում գործերի քննութեան և վարելու մէջ պահպանւում է այն կարգը, որը սահմանուած է Էջմիածնի Հայոց Սինոդի համար։

1188. Հայոց կոնսիստորիաների գործողութեան շրջանի մէջ մտնում են հետևեալ կէտերը.

ա). Անմիջական հսկողութիւն իրան ստորադրուած թէ աշխարհիկ և թէ կուսակրօն սրբազնագործ և սպասաւորող հոգևորականութեան վրայ։

բ). Հոգատարութիւն թեմում գտնուած դպրանոցների, վանքերի, եկեղեցիների և աստուածահաճոյ հիմնարկութիւնների բարեկարգութեան վրայ։

գ). Խնամածութիւն սրբազնագործ և սպասաւորող հոգևորականութեան որբերի և այրիների վրայ։

դ). Ստորադրուած բոլոր վանքերի և եկեղեցիների գոյքերի կառավարութեան վրայ։

ե). Ստորադրուած հոգեւորականութեան վրայ եղած գանգատների և հոգեւորականների միմեանց հետ ունեցած վիճելի գործերի քննութիւնը և վճիռը։

զ). Պսակների գործերի քննութիւնը և վճիռը, միայն պսակի բոլոր կասկածաւոր դէպքերի գործերը ներկայացնելով Էջմիածնի հայոց Սինօդի վերահայեցողութեան։

է). Թոյլտւութիւն կամաւոր նուէրների հանգանակութեան յօգուտ իրանց ստորադրուած հայ լուսաւորչական վանքերի, եկեղեցիների, դպրանոցների և աստուածահաճոյ հիմնարկութիւնների, բայց միայն իրանց թեմերի սահմանում։

ը). 1119 յօդուածի հիման վրայ թոյլ տալ կողմնակի անձանց ապրել վանքերում։

թ). Հոգեւոր և վանական կառավարութեանց անդամների ընտրութիւնը։

ժ). Դպիրներ նշանակել հայոց եկեղեցիներում։

ժա). Թոյլտւութիւն խնդրել Էջմիածնի հայոց Սինօդից ընդունելու հոգեւոր կոչման մէջ զանազան անձանց և ազատելու նրանց կոչումից։

ժբ). Թոյլտւութիւն աստուածահաճոյ հիմնարկութիւններ կառուցանելու և Էջմիածնի հայոց Սինօդին առաջարկութիւն անելու նոր վանքեր, եկեղեցիներ և դպրանոցներ շինելու։

ժգ). Ճիշտ ցուցակներ ունենալ վանքերի, եկեղեցիների, դպրանոցների և աստուածահաճոյ հիմնարկութիւնների, կուսակրօն և աշխարհիկ հոգեւորականների, իւրաքանչիւր եկեղեցու ծխականների, և եկեղեցու մօտ գտնուած դպրոցների ուսուցիչների, աշակերտների և խնամարկուածների քանակի և թուի համար։

ժդ). Ամեն տարի հայոց Սինօդին ներկայացնել կոնսիստորիաներին ստորադրուած վանքերի, եկեղեցիների, դպրանոցների և աստուածահաճոյ հիմնարկութիւնների դրութեան

մասին մանրամասն տեղեկութիւններ. եկեղեցական գոյքի վերաբերմամբ մանրամասն հաշիւ և իրանց թեմերի ընդհանրապէս բոլոր սրբազնագործ և սպասաւորող հոգևորականութեան ծառայութեանց ցուցակները։

ժե). Այս հաստատութիւնների (14 կ.) մէջ եղած բոլոր առձեռն դրամների և դրամական փաստաթղթերի ամսական ստուգութիւնը, և գտնուածների օրագրի մէջ ներմուծելը։

Հին խմբագրութեան մէջ «հաստատութիւնների» փոխարէն, «հոգևոր Ատեանների» է գրած։

## Բ. ԳԼՈՒԽ. ՀՈԳԵՒՈՐ ԿԱՌԱՎԱՐՈՒԹԻՒՆՆԵՐԻ ՄԱՍԻՆ.

1189. Մի քանի հայ-լուսաւորչական թեմերում գտնուող հոգևոր կառավարութիւնները բաղկացած են երեք անդամից—մի վարդապետից կամ աւագ քահանայից, ինչպէս նախագահից, և երկու քահանայից։ Իւրաքանչիւր կառավարութեան գրաւոր գործերը վարում է քարտուղարը։

1190. Հոգևոր կառավարութեան անդամները նշանակւում են թեմական իշխանութիւնից։ Քարտուղարները ընտրւում են և կարգւում նոյն կառավարութիւններից։ Պաշտօն մտնելիս նրանք բոլորը երդւում են հաւատարիմ ծառայել։

1191. Հայոց եկեղեցու հոգևոր կառավարութիւնները ստորադրուած են այս դաւանութեան թեմական կոնսիստորիաներին և ոչ մի գործ չեն կարող կատարել առանց կոնսիստորիայի յատուկ յանձնարարութեան։

1192. Հայոց հոգևոր կառավարութիւնները իրանց վիճակի վերաբերեալ բոլոր՝ այս դաւանութեան կոնսիստորիաներին հարկաւոր եղած տեղեկութիւնները ժողովում են, ներկայացնում են մասնաւոր անձանց կողմից կառավարութիւն մտած՝ բայց կոնսիստորիայի քննութեան ենթարկուող խնդիրքները՝ իրանց եզրակացութեամբ և տալիս են ծննդական քաղուածքներ։

Հին խմբագրութեան մէջ տարբեր է այս յօդուածը վերջին կէտում։

1193. Տարին լրանալուց յետոյ Հոգևոր կառավարութիւնները՝ այս դաւանութեան կոնսիստորիաներին՝ որոնց ստորադրուած են, ներկայացնում են իրանց պարապմունքների հաշիւները, կցելով տեղեկագիրներ հոգևորականութեան, եկեղեցիների թուի, ծխականների, ծնուողների, մեռնողների և պսակուողների և նոյնպէս իրանց վիճակի եկեղեցիների գոյքի մասին։

## Ջ. ԲԱԺԱՆՄՈՒՆՔ.

### Հայ-Լուսաւորչական հոգեւորականութեան մասին.

1194. Հայոց հոգևորականութիւնը բաժանւում է երկու մասի՝ կուսակրօնի և աշխարհիկի։ Կուսակրօնին պատկանում են. 1) Հոգևոր իշխանաւորները, Էջմիածնի Պատրիարքը կամ Հայոց ազգի ծայրագոյն կաթուղիկոսը, արքեպիսկոպոսներ, եպիսկոպոսներ, վարդապետներ և վանահայրեր։ 2) Մնացած կուսակրօն միաբանութիւնը։ Աշխարհիկ հոգևորականութեան պատկանում են. ա) սրբազնագործներ, աւագերէց, երէց, աւագ սարկաւագ, սարկաւագ և կիսասարկաւագ։ բ) Դպիրներ կամ սպասաւորողներ։

1194 և 1195—յօդ. հին խմբագրութեան մէջ չկան։

1195. Թէ մէկ թէ միւս տեսակ հոգևորականութեան մէջ մտնելու կարգը, կամ դրանցից մէկին պատկանելու ապացոյցը և անձնական ու գոյքի վերաբերեալ իրաւունքները և այս կոչումը թողնելու կարգը որոշւում են կացութեան օրէնքների մէջ։

1196. Հայոց եկեղեցու բոլոր թէ արական և թէ կուսանաց վանքերը այս եկեղեցու հին կարգերի հիման վրայ ղեկավարւում են ս. Բարսեղ մեծի կանոններով։

1197. Հայոց վանքերը գտնւում են այս դաւանութեան թեմական իշխանութեան անընդմիջական և կատարեալ իշխանութեան տակ և պարտաւոր են իւրաքանչիւր տարուայ լրման տալ մանրամասն հաշիւ իրանց բոլոր գործողութիւնների համար։ Այս վանքերի գլխաւորների վրայ եղած գանգատները տրւում են այս դաւանութեան թեմական արքեպիսկոպոսին։

1198. Ամեն մի մենաստանում պէտք լինին որոշ թւով վանականներ, յամենայն դէպս ոչ պակաս 8 վանականից կամ կոյսից։ Ունկնդրողների՝ թէ տղամարդու թէ կնոջ թիւը չպէտք է վանականների և կոյսերի թւից շատ լինի վանքերում։

1199. Հայոց վանքերում բացի որոշ թւով վանականներից, ունկնդրողներից կամ կոյսերից, կարող են թեմական իշխանութեան թոյլտւութեամբ 1) վանքերում զառամեալ և անօգնական սրբազնագործ և սպասաւորող հոգևորականներ մնունդ և հանգիստ վայելել, և աղքատ սրբազնագործ և սպասաւորող հոգևորականների որդիքը, մասնաւորապէս որբերը, որոնք պէտք կրթուեն եկեղեցու սպասաւորութեան համար։ և 2) Կուսանաց վանքերում անօգնական և շատ պառաւած այրիները, հոգևորական կոչումն ունեցող անձանց աղջիկները և դեռահաս որբ աղջիկներ ուսումն և ձեռագործ սովորելու համար։

1200. Հայոց վանքերը կառավարւում են. արականները վարդապետ—վանահայրերով, կուսանոցները—մայրապետներով։ Թէ մէկը թէ միւսները թեմական իշխանութեան ձեռքով որոշւում են և հաստատւում Էջմիածնի Պատրիարքից։

1201. Վանահայրը կամ մայրապետը վանքի գործերը կառավարում է ոչ այլապէս, բայց եթէ գործակցութեամբ վանական կառավարութեան, որը կազմւում է վանահօր կամ մայրապետի նախագահութեամբ երկու աւագագոյն և ամենայարգելի վանականից կամ կոյսից, որոնք առաջարկւում են

վանահօր կամ մայրապետի կողմից թեմական իշխանութեան ի հաստատութիւն։

1202. Վանքերի վանահայրերը և մայրապետները վանական կառավարութեան հետ հսկում են եկեղեցական կանոնների և վանական կարգադրութիւնների ճիշտ կատարման վրայ իրանց մենաստաններում, պահպանում են վանքի անշարժ և շարժական կայքի ամբողջութիւնը և պատասխանատու են եկամուտների կանոնաւոր գործադրութեան համար և ընդհանրապէս նրանց յանձնուած մենաստանի բարեկարգութեան համար։

1203. Հայոց եկեղեցու աշխարհիկ հոգևորականութիւնը, որին գլխաւորապէս յանձնուած է կատարել ծխական եկեղեցիներում աստուածային պաշտամունքները և ժողովրդականների հոգևոր պէտքերը, այս գլխաւոր պարտաւորութիւնների պահանջուելիք ճշտութեամբ և հոգացողութեամբ կատարելու հետ, յամենայն դէպս, պէտք է աշխատեն հաստատել իրանց ծխականներին քրիստոնէական վարդապետութեան ճշմարտութեան մէջ, խրատելով և յորդորելով նրանց ապրել բարեպաշտութեամբ, հանդարտ և ազնիւ, ոչ միայն խօսքերով, այլ և անձնական օրինակով, և միշտ խուսափելով այն ամեն առիթից, որը կարող է մեղադրել նրանց դատարկապորտութեան, թեթևամտութեան կամ անժուժկալութեան մէջ։

1204. Հայոց եկեղեցու սրբազնագործ հոգևորականները այդ եկեղեցու վաղեմի կանոնադրութիւնների հիման վրայ, պաշտօնի են կարգւում և ձեռնադրւում են այս դաւանութեան թեմական առաջնորդների ձեռքով։ Սպասաւորող պաշտօնեաները պաշտօնի են կարգւում թեմական իշխանութեան կարգադրութեամբ և օրհնութեամբ այն քահանայի, որին եկեղեցուն գրւում են նրանք։

Ծանօթութիւն. Մոսկուա և Պետերբուրգ քաղաքներում սրբազնագործ և սպասաւորող հոգևորականների ընտրութիւնը կատարւում է առանձին կարգադրութեան հիման վրայ (1841. յուն. 31. յօդ. 7)։

1205. Հայոց եկեղեցու սրբազնագործ հոգեւորականները կախուած են անընդմիջապէս այս դաւանութեան թեմական իշխանութիւնից, իսկ եկեղեցու սպասաւորողները նոյն եկեղեցու աւագերէցներից։ Սրբազնագործ և սպասաւորող հոգեւորականների վրայ եղած բոլոր գանգատները տրւում են թեմական իշխանութեան։

1194—1205 յօդուածները ընդհանրապէս բաւական տարբեր են հին խմբագրութիւնից։

## Է. ԲԱԺԱՆՄՈՒՆՔ.

*Հայ-Լուսաւորչական եկեղեցու հոգեւոր դպրոցական հաստատութիւնների մասին.*

1206. Հայ պատանիների աստուածաբանական գիտութիւնների մէջ կրթուելու համար հաստատուած են Էջմիածնի վանքում հոգեւոր ճեմարան և ամեն մի Ռուսահայոց թեմում մի հոգեւոր դպրանոց (սեմինարիա)։

1207. Էջմիածնի հայոց հոգեւոր ճեմարանը գտնւում է ամենայն հայոց Վեհափառ Պատրիարք-կաթուղիկոսի գլխաւոր իշխանութեան տակ, իսկ հոգեւոր դպրանոցները կախուած են իրանց թեմական իշխանութիւններից։

1208. Հայոց հոգեւոր դպրանոցների ուսման ընթացքը և բոլոր ներքին կարգը որոշւում են առանձին կանոններով, որոնք կազմւում են այս դպրոցների հոգեւոր իշխանութիւններում ընդ հսկողութեամբ և նախագահութեամբ արքեպիսկոպոսների (առաջնորդների), քննւում են Էջմիածնի Հայոց Սինօդում և հաստատւում բարձր կառավարութեամբ։

1209. Նոյն թեմի բոլոր եկեղեցիներում և վանքերում, ուր գտնւում են դպրանոցները, սովորական կարգով փող է հանգանակւում յօգուտ դրանց և ժողովուած դրամները երեք ամիսը մի անգամ ուղարկւում են նոյն վիճակի կոնսիստորիային դպրանոցին հասցնելու համար։ Բացի դրանից,

վանքերը նախանձախնդիր լինելով Հայոց եկեղեցուն, ամեն տարի իրանց արդիւնքներից նուիրում են առանձին գումարներ իրանց վիճակի դպրանոցի պահպանութեան համար։

1210. Հայոց կոնսիստորիաների և հոգևոր կառավարութիւնների ատենակալներին և ծառայողներին ռոճիկները տալուս, նոյնպէս և հոգևոր դպրոցական հաստատութիւնների ուսուցիչներին և այլ անձանց, բոլոր թեմերում 2 տոկոս հանւում է 150 րուբլուց աւելի ռոճկից յօգուտ դպրանոցների՝ նրանց արտակարգ պէտքերը հոգալու համար։

1211. Հայոց հոգևոր դպրանոցները պարտաւոր են իւրաքանչիւր տարուց յետոյ մանրամասն հաշիւ ներկայացնել թեմական իշխանութեան իրանց գործունէութեան համար և տեղեկագիրներ իրանց դրամական գումարների մուտքի, ելքի և մնացորդների մասին։

Այս կանոններն էլ են փոփոխութեան ենթարկուած և տարբեր են հին խմբագրութիւնից։

## Ը. ԲԱԺԱՆՄՈՒՆՔ.

### *Ա Գլուխ. Վանքի եւ եկեղեցական զանազան տեսակ կայքերի եւ նրանց ձեռք բերելու եւ օտարացնելու (վաճառելու) մասին.*

1212. Հայ-Լուսաւորչական եկեղեցու կայքը կազմում են. 1) վանական և եկեղեցական շէնքերը և նրանց մէջ գտնուած շարժական ինչքը. 2) բնակուած և անբնակ հողերը. 3) դրամագլուխները (փողերը). 4) յօգուտ վանքերի և եկեղեցիների արուած հանգանակութիւնները և նուէրները։

1213. Ամեն մի շարժական և անշարժ կայք, որը նախանշանակուած է հայ-լուսաւորչական որև է վանքի և եկեղեցու կամ դրանց պատկանող աստուածահաճոյ հիմնարկութիւնների պահպանութեան համար, համարւում է ամբողջ հայ-լուսաւորչական եկեղեցու ընդհանուր սեպհականութիւն։

1214. Նոր անշարժ կալք ձեռք բերել Հայոց եկեղեցիների համար թոյլատրւում է, այս դաւանութեան թեմական կոնսիստորիաների միջոցով մինչև 300 րուբլու, մինչև 1000 րուբլու՝ այլադաւան հոգևոր գործերի դէպարտամենտի միջոցով, մինչև 5000 րուբլու՝ Ներքին Գործոց Նախարարութեան խորհրդի վճռով, իսկ աւելի բարձր արժողութեամբ կալքերի համար Բարձրագոյն հաճութիւն պիտի խնդրել։

1215. Հայ-լուսաւորչական եկեղեցու անշարժ կալքերը չեն կարող վաճառուել (օտարացնուել) առանց Բարձրագոյն թոյլտւութեան, 'ի բաց առեալ անպէտք ինչքը, որը կարող է ծախուել այս դաւանութեան թեմական կոնսիստորիաների թոյլտւութեամբ մինչև 300 րուբլու, այլադաւան հոգևոր գործերի դէպարտամենտի՝ մինչև 1000 րուբլու, Ներքին Գործոց Նախարարի՝ մինչև 5000 րուբլու, իսկ հինգ հազարից աւելի արժէք ունեցող ինչքը կվաճառուի Կառավարիչ Սենատի թոյլտւութեամբ։ Անհարկաւոր շարժական կալքերի վաճառումը թոյլատրւում է կոնսիստորիաների միջոցով մինչև 600 րուբլու, դէպարտամենտի՝ մինչև 2000 ր. Նախարարի՝ մինչև 10,000 ր. իսկ դրանից աւելի բարձրի համար Կառավարիչ Սենատի։ Անհարկաւոր շարժական և անշարժ կալքի վաճառման հաստատութիւնը տրւում է պատշաճաւոր իշխանութիւններին այն չափով, որը նշանակուած է հասարակական աճուրդների հաստատութեան համար, կոնսիստորիան այս դէպքում վայելում է այն իրաւունքները, որոնք յատկացուած են նահանգական ատեաններին։

1216. Յօգուտ վանքերի տրուելիք կամաւոր հանգանակութիւնները անւում են այն թեմում, որտեղ մենաստանն է գտնւում, և ոչ այլապէս, եթէ ոչ ամեն մի դէպքի համար առանձին թոյլտւութիւն խնդրելով թեմական իշխանութիւնից, իսկ կայսրութեան մէջ գտնուած մնացած թեմերում Էջմիածնի Հայոց Սինօդից՝ թեմական իշխանութեան առաջարկութեամբ։ Յամենայն դէպս այս հանգանակութիւնները կատարւում են միմիայն տեղական քաղաքացիական իշխանութեան թոյլտւութիւնից յետոյ։

1217. Ամեն տեսակ հանգանակութիւններ և նուէրներ, որոնք լինում էին մինչև 1836 թուի մարտի 11-ը հին սովորութիւնների հիման վրայ յօգուտ հայ-լուսաւորչական եկեղեցիների, այդպիսիները թոյլատրւում են և նրանից յետոյ այն թեմում, որին այս եկեղեցիները պատկանում են։ Այս տեսակ հանգանակութիւնները ուրիշ թեմերում թոյլատրւում են միայն Սինօդի թոյլտուութեամբ, որը (1216 յօդ.) նախընթաց յօդուածի մէջ որոշուած կարգով է կատարւում։ Այս երկու դէպքումն էլ պէտք է նոյնպէս և տեղական քաղաքացիական իշխանութեան թոյլտուութիւնը խնդրել։

1218. Ամենայն Հայոց Պատրիարք կաթուղիկոսի, Հայոց եկեղեցու թեմական առաջնորդների և փոխանորդների մահից յետոյ, եթէ թողուած չէ հոգևոր կտակ յօգուտ աստուածահաճոյ հաստատութիւնների, նրանց կայքը համարւում է Էջմիածնի վանքի սեպհականութիւն։ Այսպիսի թողնուած կայքի վրայ լինելիք հսկողութիւնը յանձնւում է հոգևոր հաստատութիւններին։

1219. Վանահայրերի, մայրապետների և ընդհանրապէս կուսակրօնների մահից յետոյ մնացած կայքը մնում է յօգուտ այն վանքի, որի միաբանութեանն էին պատկանում, եթէ նրանք չեն արել հոգևոր կտակ յօգուտ աստուածահաճոյ հաստատութիւնների։

## Բ. Գլուխ. Վանական եւ եկեղեցական կայքի դատի ենթարկելու եւ տուրքերի մասին:

1220. Այն արտօնութիւնները, որոնք վայելում են հայոց եկեղեցիները և վանքերը և սրանց մօտ գտնուող և պատկանող շէնքերը և կայքը, և նոյնպէս այս դաւանութեան աստուածահաճոյ հաստատութիւնների շինութիւնները և կայքերը, և սրբազնագործ ու սպասաւորող հոգևորականների տները՝ պետական, զեմստվօյի և քաղաքային տուրքերի և հարկերի վճարման դէպքերում, որոշւում են այդ մասի օրէնքների բաժնում։

Ծանօթութիւն. 1836-ին որոշումն եղաւ. Էջմիածնի վանքին պատկանող հինգ գիւղերը, Վաղարշապատ, Մաստարա, Օշական, (Ուշկայտարու) Մողնի և Եղուարդ, ազատել մինչև ապագայ վերաքննութիւն ամեն տեսակ ալէրունական հարկերից և սովորական հողային տուրքերից, այն պայմանով միայն, որ վանքն էլ իւր կողմից չծանրաբեռնի նոր հարկերով և բաւականանայ այն տուրքերով և ծառայութիւններով, որոնք տալիս էին նրանք մինչև 1836—ի յունիսի 5-ը գանձարանին և Էջմիածնի վանքին։

1221. Հայոց վանքերի և եկեղեցիների դատական գործերը քննւում են ընդհանուր դատարանական տեղերում այն հիման վրայ, ինչ հիմամբ որ վարւում են գանձարանի (պետական) դատական գործերը։ Դատաստանական ատեանները այդպիսի գործեր վճռելու ժամանակ, այն տեղերում, որտեղ չեն մտցրած Աղէքսանդր II Կայսեր դատաստանական օրէնքները, հրաւիրում են ատեան, ընդհանուր հիմունքներով, հոգևոր իշխանութեան կողմից ներկայացուցիչներ (դեպուտատ), դիմելով դրա համար այս դաւանութեան պատշաճաւոր հոգևոր իշխանութեան։

Ծանօթութիւն. 1838-ին բացատրուած է. Էջմիածնի վանքին պատկանող (1220 յօդ.) գիւղերի բնակիչների կալքերի վերաբերեալ վիճելի գործերը և գանգատները ենթարկւում են մարմնաւոր դատարանների իրաւասութեան։

## Գ. գլուխ. Վանական եւ եկեղեցական կալքերի կառավարելու կարգի մասին.

### Ա. բաժին. Ընդհանուր կանոններ.

1222. Հայ լուսաւորչական եկեղեցու կալքերի կառավարելու կարգի վրայ ընդհանուր հսկողութիւն անելը պատկանում է Էջմիածնի հայոց Սինոդին, իսկ իւրաքանչիւր թեմում՝ նրա արքեպիսկոպոսին, ինչպէս այս դաւանութեան կատարեալ հոգևոր իշխանաւորի։

1223. Ամեն մի թեմական առաջնորդ իւր պաշտօնը մտնելուց յետոյ, պարտաւոր է Էջմիածնի Սինոդին ներկա-

յացնել իրան յանձնուած թեմի բոլոր եկեղեցական կալքերի ճիշտ ցուցակը։

1224. Եկեղեցական դրամագլուխները պիտի տոկոսներով շահեցնուին պետական կամ հասարակական վարկային հաստատութիւններում։ Այս դրամագլուխների մասնաւոր անձանց տալը, երբ այս կհամարուի եկեղեցու համար աւելի յարմար և ձեռնտու և այսպիսով յանձնուած գումարը հաստատ գրաւականով կլինի ապահովուած, այսպիսի դէպքում թոյլատրւում է միայն թեմական իշխանութեան կարգադրութեամբ և սրա պատասխանատւութեամբ։

4225. Հայ-լուսաւորչական եկեղեցիների կալքերի մասնաւոր կառավարութիւնը կախուած է անմիջապէս իւրաքանչիւր եկեղեցու երեցփոխից։

1226. Իւրաքանչիւր հայոց եկեղեցում պիտի լինի բոլոր եկեղեցական անշարժ կալքի, եկեղեցական իրերի, ուրիշ առարկաների և դրամների ճիշտ և մանրամասն ցուցակ, նոյնպէս և ցուցակ այն արդիւնքների, որոնք որև է մի իրաւունքով ստանում է եկեղեցին, և պատշաճաւոր ժապաւինեալ մատեան եկեղեցու բոլոր դրամական մուտքն ու ելքը գրելու համար։

1227. Եկեղեցու երեցփոխը ընտրւում է ամենապատուաւոր ծխականներից երեք տարով։ Երեք տարին լրանալուց յետոյ, նա կարող է նորից ընտրուել այս պաշտօնի համար։

1228. Եկեղեցու նոր երեցփոխը, պաշտօն մտնելիս, պարտաւոր է, եկեղեցու կալքի ամբողջութեանը հաւատիանալով, ընդունել իւր նախորդից 1226 յօդուածի հիման վրայ կազմած ցուցակի համաձայն եկեղեցու կալքը։

1229. Եկեղեցական կալքի ամբողջութեան վրայ հսկելը, եկեղեցու եկամուտների կառավարելը, պատշաճաւոր ատենական տեղերում այդ տեսակ գործերի պաշտպանելը, եկեղեցական շէնքերի կառուցանելը և կարկատելը, նրանց վար-

ձով տալը և մնացած այս տեսակ գործերը մտնում են երեցփոխի պարտաւորութեանց շրջանի մէջ։ Նա ընդհանրապէս գործերը վարում է ինչպէս ծխի կողմից ընտրուած հաւատարմատար, իսկ մեծ գործերի համար նա իրաւունք ունի պահանջելու հասարակութիւնից, որքան հնարաւոր է ծխականների բազմամարդ ժողովից՝ առանձին հաւատարմաթուղթ։ Ստանալով այս հաւատարմաթուղթը, նա ժողովում արձանագրած և որոշած գործերի վարելու նկատմամբ ազատւում է արդէն ամեն տեսակ պատասխանատուութիւնից հասարակութեան առաջ։

1230. Երեցփոխին թոյլատրւում է մոմեր շինել և ծախել ոչ միայն իւր ծխականներին, այլ և ընդհանրապէս բոլոր հայերին, որոնք գործ են ածում սատուածային պաշտամունքների, հոգևոր պիտոյքները կատարելու և հայ եկեղեցու միւս ծէսերի ժամանակ։ Այս մոմերի վաճառելը լինում է եկեղեցիներում կամ եկեղեցիների մօտ. այս բանիս համար եկեղեցիների մօտ թոյլատրւում է ունենալ կրպակներ, միայն այն պայմանով, որ այս կրպակները բացուին տեղական գլխաւոր իշխանութեան որոշմամբ և ոչ մօտիկ ուսադաւան (ուղղափառ) եկեղեցիներին։ Որպէս զի ազատ մնացուի այն դժուարութիւններից, որոնք կարող են առաջանալ մոմավաճառութեան ժամանակ, իրաւունք է տրւում ամենայն հայոց Պատրիարք-կաթուղիկոսին, տարբերող նշան որոշել հայերի հոգևոր պէտքերը կատարելու և ժամերգութեան ժամանակ գործածուող մոմերի և ռուսադաւան եկեղեցիներում բանեցնուող մոմերի մէջ։

1231. Անդրկովկասում հայոց եկեղեցիների երեցփոխների տները ազատ են զօրապահման կոռ ու բեկառից։

1232. Իւրաքանչիւր տարի լրանալուց յետոյ եկեղեցու երեցփոխը պարտաւոր է ծխականների ընդհանուր ժողովի առաջ տալ լիակատար հաշիւ եկեղեցու տնտեսական գործերի կառավարութեան վերաբերմամբ իւր արած բոլոր գործողութիւնների մասին և մասնաւորապէս եկեղեցու գան-

ձարանի գրութեան մասին։ Յետոյ նա ներկայացնում է այս հաշիւը իւր թեմի հայոց կոնսիստորիային։

1233. Եկեղեցու երեցփոխը, որը զգալի չափով աւելացրած կլինի իւր եկեղեցու դրամագլուխը, կամ երեք անգամ եռամեայ պաշտօնը կվարի յաջորդաբար կատարեալ գոհունակութիւն պատճառելով իւր իշխանութեան, սրանով իրաւունք ձեռք կբերի պարգեւատրման առաջարկուելու ընդհանուր հիմունքներով։

1234. Վանական եկամուտների կանոնաւոր գործածութեան համար պատասխանատու են վանահայրերը և մայրապետները այս դաւանութեան վանական կառավարութեան հետ (1201 յ.)։

1235. Վանական կառավարութիւնները պահում են բոլոր վանական եկամուտների և ելքի հաշիւները, որոնք վանքի անշարժ և շարժական բոլոր կայքերի ցուցակի հետ ներկայացնում են, տարին լրանալուց յետոյ, թեմական իշխանութեան վերահասութեան։

1236. Վանահօր կամ մայրապետի մահուան կամ տեղափոխութեան դէպքում, վանական կառավարութիւնները մի քանի աւագագոյն յարգելի վանականների կամ կոյսերի աջակցութեամբ կազմում են վանքի կայքերի մանրամասն ցուցակը և ներկայացնում են թեմական իշխանութեան։ Նոր վանահայրը կամ մայրապետը այս ցուցակի երեսով էլ՝ պաշտօնը մտնելիս, ընդունում է մենաստանը։

*Բ. Բաժին. Պետերբուրգի եւ Մոսկուայի հայ-լուսաւորչական եկեղեցիների կայքերի կառավարութեան առանձին կանոնները.*

1237. Պետերբուրգ և Մոսկուա քաղաքներում գտնուած հայ-լուսաւորչական եկեղեցիների կայքերի կառավարութիւնը և սրա վերաբերեալ գործերը յանձնւում է ամեն մի քաղաքում առանձին խորհրդի՝ որ բաղկացած է մի նա-

*խագահից և վեց հոգի՝ հաւասար ձայներով ու ծխականնե-րից ընտրուած անդամներից եռամեայ ժամանակով։*

*Ծանօթութիւն. Երկու եկեղեցական խորհրդի նախագահի կոչումը և մայրաքաղաքի հայոց եկեղեցիների հոգաբարձուի կոչումը անցնում են իշխան Սիմօն Աբամելիք-Լազարեանց ազգատոհմում արական սեռի մէջ նախածնութեան (աւագութեան) իրաւունքով՝ այն անձանց, որոնք հայոց դաւանութիւնն ունին։ Աբամելիք Լազարեան իշխանների ժառանգների անչափահասութեան դէպքում, իրաւունք է տրւում մայրաքաղաքի հայ եկեղեցիների ծխականներին ընտրել իրանց միջից, մինչև իշխան Աբամելիք-Լազարեանների աւագ ներկայացուցչի չափահաս դառնալը, վերոյիշեալ խորհուրդների նախագահներ՝ ամեն անգամ ոչ աւելի քան երեք տարի ժամանակով։ Իսկ երբ իշխան Աբամելիք-Լազարեանների ներկայացուցիչը չափահասութեան հասնի, ժամանակաւոր ընտրուած նախագահները թողնում են իրանց այս կոչումը՝ չսպասելով ընտրողական ժամանակամիջոցի լրանալուն։*

1238. *Բացի խորհրդի անդամներից, եռամեայ ժամանակով ընտրւում են ամեն մի խորհրդի համար երկու փոխանդամ, որոնք անդամների բացակայութեան կամ ժամանակամիջոցից առաջ դուրս գալու դէպքում նրանց տեղն են բռնում։ Նախագահի հիւանդութեան կամ բացակայութեան ժամանակ, նրա տեղը բռնում է ամեն մի խորհրդի մէջ նախագահի ընտրութեամբ խորհրդի անդամներից մէկը։*

1239. *Խորհուրդների ժամանակաւոր նախագահների, անդամների և սրանց փոխանդամների ընտրութիւնը կատարւում է ծխականների ընդհանուր ժողովում ներկայ եղողների ձայների բազմութեամբ և հաստատւում է թեմական առաջնորդից։ Այս ժողովներում ձայնի իրաւունք ունին արական սեռին պատկանող բոլոր անձինք, որոնք 25 տարեկան են, ունին ընդհանուր օրինական իրաւահաստութիւն հասարակական պարտաւորութիւններ կատարելու և ծխական են եղել առնուազն երկու տարի։ Ժամանակաւոր նախագահներ, խորհրդի անդամներ և սրանց փոխանդամներ կարող են ընտրուել միայն այն անձինք, որոնք իրաւունք ունին ծխականների ընդհանուր ժողովներին մասնակցելու։*

Ընտրութիւնների տեղի և ժամանակի մասին հաղորդւում է ծխականներին երեք անգամ կիրակի օրերը եկեղեցում։

1240. Խորհուրդների ընտրուելիք անդամները և փոխանդամները պաշտօնից դուրս են գալիս երեք տարում, առաջինները՝ հերթով, տարին երկուսը, իսկ վերջինները երեք տարին լրանալու միջոցին՝ անդամների ընտրութիւնից յետոյ, թէ նրանք՝ թէ սրանք կարող են վերընտրուիլ։

1241. Խորհուրդների նիստերը կայացած են համարւում, երբ ներկայ են լինում ոչ պակաս քան երեք անդամ։ Որոշումները կայանում են ձայների բազմութեամբ, իսկ ձայների հաւասարութեան դէպքում, նախագահի կամ նրա տեղը ժամանակաւոր բռնողի ձայնը տալիս է առաւելութիւն։

1242. Խորհրդի անդամներից մէկը կամ առանձին նշանակած այս բանի համար մի անձ վարում է խորհրդի նիստերի արձանագրութիւնները։

1243. Խորհրդի պարտաւորութիւնների շրջանը մայրաքաղաքի հայոց եկեղեցիների կայքերի կառավարութեան վերաբերմամբ, նրանց հաշուապահութիւնը և նրանց գործավարութեան մանրամասն կարգաւորութիւնը որոշւում են յիշեալ եկեղեցիների հոգաբարձուի և թեմակալ առաջնորդի համաձայնութեամբ կազմած՝ գործադրուող օրէնքներին յարմարացրած առանձին հրահանգով, որը հաստատւում է առաջնորդից։

1244. Խորհուրդներին ենթարկւում են եկեղեցիների երեցփոխները, որոնք գործակցում են դրանց՝ եկեղեցու տնտեսական գործերում, խորհրդի կազմած հրահանգների հիման վրայ։ Երեցփոխները ընտրւում են մայրաքաղաքի հայոց եկեղեցիների ամեն մէկի համար ծխականներից երեք տարով 1227 և 123 յօդուածներում որոշուած իրաւունքներով և կարգով։

1245. Հարկաւոր դէպքերում յիշեալ եկեղեցիների գործերի վերաբերմամբ հոգաբարձուն, իբրև եկեղեցական խոր-

Հուրդների նախագահ, Հաղորդակցութեան մէջ է մտնում կառավարչական տեղերի և անձանց Հետ։ Ատեանական տեղերը և պաշտօնական անձինք այս Հաղորդակցութեանց մէջ օրինական գործակցութիւն են ցոյց տալիս։

## Թ. ԲԱԺԱՆՄՈՒՆՔ.

*Հայ-Լուսաւորչական—եկեղեցու սրբազնագործ եւ սպասաւորող հոգեւորականութեան եկամուտների եւ նրանց որբերի եւ այրիների խնամատարութեան մասին:*

1246. Հայոց սրբազնագործ և սպասաւորող Հոգևորականներին պաՀպանում է նրանց ծուխը։

1247. Սրբազնագործ և սպասաւորող Հոգևորականների ստացած արդիւնքը կարող է լինել երեք տեսակ. 1) մշտական, որը որոշում է ծուխը պաշտօնը մտնելիս, 2) տուրքեր, որոնք ստանում են Հոգևոր պիտոյքներ կատարելիս. 3) կամաւոր տուրքեր։

1248. Հոգևոր պէտքերը կատարելիս ստացած տուրքերը սրանք են. ծննդաբերի տունը փարատելու Համար տասն կոպէկ, մկրտութեան Համար 20 կ., պսակի Համար 40 կ., մեծի թաղման Համար 40 կ., իսկ փոքրի 20 կ., խոստովանութեան, գղջման և ս. Հաղորդութեան խորՀուրդները կատարւում են ձրի։ Հայոց եկեղեցու Հոգևորականներին խստիւ արգելւում է որև է պատճառանքով պաՀանջել Հոգևոր պէտքերի կատարման Համար այս յօդուածում նշանակուածից աւելի տուրք։

1249. Հայոց եկեղեցու սրբազնագործ և սպասաւորող Հոգևորականները իրաւունք չունին 1248 յօդուածում յիշուած տուրքերի չտալու Համար Հրաժարուել սրբազան պաշտամունքները կատարելուց կամ ուշացնել (յետաձգել). սրանք միայն կարող են խնդրել կոնսիստորիային պաՀանջելու այդ տուրքերը մարմնաւոր իշխանութեան ձեռքով։

1250. *Հոգևոր պէտքերի կատարման համար ստացած տուրքերը բաժանւում են հայոց հոգևորականների (սրբազնագործ և սպասաւորող) մէջ համաձայն այն կարգին, որը գոյութիւն ունէր մինչև 1836 թուի մարտի 11-ը։*

1251. *Հայոց եկեղեցու սրբազնագործ և սպասաւորող պաշտօնեաների որբերի և այրիների խնամատարութեան համար տրւում են առանձին դրամարկղներ թէ Էջմիածնի վանքում և թէ ռուսաց սահմաններում գտնուած բոլոր հայոց թեմերում։*

*Ծանօթութիւն.* Ռուսահայոց թեմերի եկեղեցիներում թոյլատրւում է հաստատել աղքատախնամ հոգաբարձութիւն, միայն այն պայմանով, որ այդ հոգաբարձութիւնների մասին կազմած առանձին կանոնադրութիւնները՝ Աստրախանի հոգաբարձութեան համար 1874 թ. յուլիսի 12-ի կազմած կանոնադրութեան նման՝ կախումն ունենան Ներքին Գործոց Նախարարից։

1252. *Հայոց եկեղեցու սրբազնագործ և սպասաւորող պաշտօնեաների այրիների և որբերի խնամատարական դրամարկղները՝ իբրև աստուածահաճոյ շինուածքներ, գլխաւոր արդիւնք ստանում են բարեգործ մարդիկների կամաւոր նուէրներից։ Բացի դրանից իւրաքանչիւր հայ-լուսաւորչական թեմական իշխանութիւն ամեն տարի, ըստ կարելոյն, բաժին է հանում իւր թեմական արդիւնքներից մի մաս այդ արկղների համար։*

1253. *Յօգուտ այրեաց և որբոց խնամատարական դրամարկղների անելիք հանգանակութիւնը լինում է, առաջին՝ գանձանակներով, որոնք տրւում են այն թեմի բոլոր հայոց եկեղեցիներում, որի համար դրամարկղ է կարգուած. երկրորդ՝ այս բանի համար սահմանած առանձին մատեանում ստորագրելով։*

1254. *Հայոց կոնսիստորիաների դիւանատան ծառայողների և աստիճանաւորների, նոյնպէս և հոգևոր ուսումնարանների ուսուցիչների և այլ անձանց ռոճիկները տալուց բոլոր թեմերի մէջ հանւում է մի տոկոս՝ հարիւր յիսուն*

բուբլի ռոճկադրամից սկսած յօգուտ հոգևորականների այրեաց և որբոց դրամարկղների։

1255. Այրեաց և որբոց այդ դրամարկղների կառավարութիւնը յանձնւում է առանձին հոգաբարձութեան, թեմական առաջնորդի անմիջական հսկողութեան տակ։ Այս հոգաբարձութիւնը կազմւում է թեմի ամենայարգելի աշխարհիկ երեք հոգևորականից թեմակալ արքեպիսկոպոսի ընտրութեամբ։ Ընդունելով իրանց վրայ պարտաւորութիւն գործակցելու այս դրամարկղների բարեգործական նպատակին հասնելուն, նրանք չեն ստանում դրա համար ոչ մի վարձ։

1256. Հոգաբարձութիւնը ստանում է յօգուտ դրամարկղի ժողոված դրամները՝ թէ գանձանակով, թէ մատեաններով և պահում է նրանց ճիշտ հաշիւը։

1257. Հոգաբարձութիւնը նշանակում է եկեղեցու պաշտօնեաների այրիներին և որբերին նպաստ ըստ իւր հայեցողութեան, բայց ոչ այլապէս, եթէ ոչ մեծ ճշտութեամբ հաւաստիանալով ճշմարիտ կարիք ունենալուն, կատարելով այդ՝ առանց անձնական շահի և կողմնապահութեան։

1258. Հոգաբարձութիւնը այդ այրիներին և որբերին խնամելու՝ նպաստ նշանակելու դէպքում պէտք է պահպանի հետևեալ կանոնները. 1) աշխատել որոշել մշտական տարեկան նպաստներ, խուսափել ինչքան կարելի է միաժամանակուայ նպաստներից։ 2) Միաժամանակուայ օժանդակութիւններ տալ միևնոյն անձին ոչ աւելի մէկ անգամից մի տարուայ ընթացքում։ 3) Նպաստներ նշանակել առաւելապէս. ա) այն այրիներին և որբերին, որոնք սեպհական միջոցներ չունենալով ապրելու համար, զրկուած են և ազգականներից, որոնք գուցէ համաձայնէին նրանց պահպանել։ բ) Այն այրիներին, որոնք աղքատ լինելով հանդերձ, դեռ և ծանրաբեռնուած էլ են մեծ ընտանիքով, և գ) այն որբերին, որոնք ոչ ծնող ունեին, ոչ մերձաւոր ազգականներ և ոչ ապրուստի միջոց։ 4) Նպաստ տալ սրբազնագործ և սպա-

սաւորող հոգեւորականների այրիներին մինչեւ նրանց նոր ամուսնութեան մէջ մտնելը, որբուհիներին մինչեւ մարդու գնալը, իսկ տղաներին մինչեւ չափահաս լինելը կամ թեմական դպրանոց մտնելը։

1259. Դրամարկղը իւրաքանչիւր ամիս նայւում է հոգաբարձութեան կողմից, թեմական կոնսիստորիայի մի անդամի կամ նրանից նշանակուած մի անձի ներկայութեամբ։ Չորս ամսից յետոյ հոգաբարձութիւնը ներկայացնում է թեմական կոնսիստորիային մանրամասն տեղեկագիր ելքի, մուտքի և դրամական մնացորդի մասին, իսկ տարին լրանալուց յետոյ իւր կարգադրութիւնների մասին հաշիւ։

1260. Հոգաբարձութեանց գործողութիւնների վրայ եղած գանգատները տրւում են ի քննութիւն և վճռահատութիւն թեմական կոնսիստորիային։

Այստեղ վերջանում է պօլօժէնիան, որը շատ տարբերութիւն ունի 1836-ի խմբագրութիւնից. այժմ կզետեղեմ Ռուսաց օրէնսգրքի մէջ մտած այն բոլոր կանոնները, որոնք վերաբերում են հայոց եկեղեցուն, և որոնք գործադրւում են և խմբագրուած են միմիայն պետութեան մասնակցութեամբ, առանց հայոց հոգևոր իշխանութեան գիտութեան։

## IX ՀԱՏՈՐ. ԿԱՑՈՒԹԵԱՆ ՕՐԷՆՔՆԵՐ. (Зак. о сост.)

### Դ. Գլուխ- Հայ-լուսաւորչական հոգեւորականութեան մասին.

### Ա. Բաժին. Հոգեւորականութեան բաժանմունքի եւ այդ կոչման ապացոյց ունենալու մասին:

467. Հայ-լուսաւորչական հոգևորականութիւնը բաժանւում է երկու մասի, կուսակրօն և աշխարհիկ։

468. Կուսակրօն հոգևորականութեան պատկանում են.
1) Հոգևոր իշխանաւորներ՝ Էջմիածնի Պատրիարքը կամ հայոց ծայրագոյն-կաթուղիկոսը, արքեպիսկոպոսներ, եպիսկո-

պոսներ, փարգապետներ և փանահայրեր. 2) Մնացած կուսակրօն միաբանութիւնը։

469. Աշխարհիկ հոգևորականութեան պատկանում են. 1) աւագերէցները, երէցները, աւագ սարկաւագները, սարկաւագները և կիսասարկաւագները. 2) դպիրներ կամ սպասաւորող պաշտօնեաներ։

470. Հոգևոր կոչման ապացոյցներն են. 1) վկայականը, որը տրւում է Էջմիածնի հայոց Սինոդի կողմից. 2) Այն ցուցակները, որոնք պահում են Սինոդը և տեղական կոնսիստորիաները նշանակելով մէջը այն բոլոր հայոց հոգևորականութեան սրբազնագործ և սպասաւորող՝ թէ կուսակրօն, թէ աշխարհիկ անդամները, որոնք գտնւում են Ռուսաստանում։

*Բ. Բաժին. Կուսակրօն հոգևորականութեան մասին.*

471. Ոչ ոք չի կարող կուսակրօն (վանական) դառնալ առանց Էջմիածնի Սինոդի թոյլտւութեան թեմական իշխանութեան առաջարկութեամբ։ Վանական դառնալուց առաջ ցանկացողը ենթարկւում է ունկնդրողական փորձին, որը կատարւում է հայոց եկեղեցու դրած կանոնադրութիւնների հիման վրայ։

472. Կուսակրօն դառնալ ցանկացողը պիտի լինի առնուազը 30 տարեկան։ Բացառութիւն կարող է լինել ոչ այլապէս, եթէ ոչ առանձնակի, յարգելի պատճառներով՝ հայոց եկեղեցու կանոնների հիման վրայ։ Բայց չի արգելւում վանք մտնել ունկնդրողական փորձի համար և 30 տարի չունեցողներին։

473. Կուսակրօն դառնալու և մինչև իսկ ունկնդիր լինելու համար պահանջւում է նախօրէն այն անձանց և տեղերի (ատեան) համաձայնութիւնը, որոնցից կախուած են ընծայացուները։ Հարկատու դասակարգին պատկանող անձինք կուսակրօն են դառնում ոչ այլապէս, եթէ ոչ նահանգապետի թոյլտւութեամբ։

475. Ամուսնացած անձանց թոյլ է տրւում կուսակրօն դառնալ միայն այն դէպքում, երբ նրանք մանկահաս երախայք չունին և երկու ամուսինը ցանկանում են վանականութիւն ընդունել։

476. Վանական դարձողները հրաժարւում են իրանց անշարժ կալուածքներից, իսկ կոչումն ստանալուց յետոյ չեն կարող ձեռք բերել ոչ մի նոր անշարժ սեպհականութիւն. բայց չի արգելւում նրանց գնել անշարժ կայքեր այն եկեղեցիների և վանքերի օգտին, որոնց նրանք պատկանում են։ Եթէ այս տեսակ կալուածք կընկնի իբրև ժառանգութիւն կուսակրօններին, այն ժամանակ նրանք պարտաւոր են կամ ուրիշին տալ, կամ վաճառել վեց ամսուայ ընթացքում։ Կուսակրօնի շարժական կայքի հետ, եթէ նա կմեռնի առանց կտակի և ժառանգներ չի ունենալ, պէտք է վարուել այլադաւան հոգևոր գործերի օրէնքներում որոշած կանոնների (պօլօժէնիա) համաձայն։

477. Կուսակրօնները ազատ են ամեն տեսակ հարկերի և կոռ ու բեկառի վճարումից։

478. Կուսակրօնները զերծ են մարմնական պատժից։

479. Կուսակրօններին արգելւում է որև է ապրանքներով առևտուր անել, բացի իրանց սեպհական ձեռագործի վաճառումից, և այն էլ ոչ այլապէս, բայց եթէ իրանց իշխանութեան թոյլտուութեամբ։

480. Ռուսաստանում հայոց լուսակրօն հոգևորականութեան հոգևոր գործերը ենթարկւում են իրանց հոգևոր իշխանութեան քննութեան և վճռահատութեան. վիճելի և ուրիշ քաղաքացիական գործերի համար, թէ հայ հոգևորականների մէջ ծագած, թէ հայոց հոգևորական դասին չպատկանող անձանց և սրանց մէջ առաջացած, և նոյնպէս քրէական և ուրիշ մնացած գործերի համար, նրանք ենթարկւում են մարմնաւոր դատարանին ընդհանուր հիմունքների հիման վրայ։

481. Այն կուսակրօնները, որոնց Հայոց եկեղեցու կանոնադրութիւնների հիման վրայ թոյլ է տրւում թողնել այդ կոչումը, քաղաքացիական կացութեան մէջ մտնելիս, նրանք օգտւում են միմիայն ըստ ցեղի և ըստ ծագման նրանց յատկացրած իրաւունքներով, առանց վերադարձնելու նրանց այն արտօնութիւնները, աստիճանները և առաւելութիւնները, որոնք ծառայութեամբ կարող էին ձեռք բերել նրանք մինչև կուսակրօն դառնալը, նոյնպէս և այն կալուածքները, որոնք ստացել են կամ ժառանգութեամբ, կամ ձեռք են բերուած վանականութիւն մտնելուց առաջ։ Վանականութիւնը թողնելու թոյլտւութիւնը տալիս է Էջմիածնի Հայոց Սինօդը։

## Գ. Բաժին. Աշխարհիկ հոգեւորականութեան մասին.

### 1) Աշխարհիկ հոգեւորականութեան մէջ մտնելու եւ այս կոչման իրաւունքներ ստանալու մասին.

481. Հայոց եկեղեցու աշխարհիկ հոգևորականութեան մէջ կարող են մտնել, Էջմիածնի Հայոց Սինօդի թոյլտւութեամբ՝ այս գաւառութեան թեմական իշխանութեան առաջարկութեամբ, ամեն կացութեան անձինքներ՝ նախօրէն համաձայնութիւն խնդրելով այն մարդիկներից և տեաններից, որոնցից կախուած են։ Հարկատու դասին պատկանող անձանց պէտք է ընդունել ոչ այլապէս, եթէ ոչ նահանգապետի թոյլտւութեամբ։

482. Հայոց եկեղեցու սրբազնագործ հոգևորականները՝ եկեղեցու նախկին կանոնադրութիւնների հիման վրայ, պաշտօնի են կարգւում և աստիճաններ ու ձեռնադրութիւն են ստանում այս գաւառութեան թեմակալ առաջնորդների ձեռքով։ Դպիրները կամ սպասաւորող պաշտօնեաները պաշտօնի են կարգւում թեմական իշխանութեան կարգադրութեամբ և օրհնութեամբ այն քահանայի, որի եկեղեցուն են գրուած։

Ծանօթութիւն. Մոսկուայում և Պետերբուրգում սրբազնագործ-

ների և պաշտօնէից բոլոր դասի ընտրութիւնը կատարւում է առանձին կանոնադրութեամբ:

1841 թուի յունուարի 31-ին Բարձրագոյն հաստատուած կանոնների հիման վրայ սրբազնագործ եկեղեցականների և հոգևոր դասի ընտրութեան իրաւունքը տրւում է Աբամելիք-Լազարեաններին, նախօրէն համաձայնութիւն կայացնելով թեմակալ առաջնորդի հետ:

483. Հայոց եկեղեցու աշխարհիկ հոգևորականները օրինաւոր պսակի միջոցով իրանց կացութեան իրաւունքները հաղորդում են իրանց կանանց, որոնք վայելում են նոյն իրաւունքները իրանց ամուսինների մահից յետոյ էլ, եթէ այդ իրաւունքներից չեն զրկւում դատաստանական վճռով և չեն ամուսնանալ այնպիսի անձի հետ, որը ուրիշ կացութեան (դասակարգի) է պատկանում:

Ծանօթութիւն. Հայոց եկեղեցու սրբազնագործ և սպասաւորող հոգևորականների այն այրիները, որոնք չեն պատկանում տոհմական ազնուականութեան, վայելում են նոյն իրաւունքները, որոնք ունին 368 յօդուածում յիշուած ռուսադաւան սրբազնագործ և սպասաւորող հոգևորականների այրիները:

Ահա և 368 յօդուածը նոյն IX հատորում. «Տոհմական ազնուականութեան չպատկանող սրբազնագործ և սպասաւորող հոգևորականների այրիները, եթէ նրանք ըստ ծագման չունին բարձր կացութեան իրաւունքներ, սրբազնագործների այրիները ունենում են անձնական ազնուականութեան իրաւունք, իսկ սպասաւորողների (դպիր, ժամհար, տիրացու) այրիները վայելում են անձնական պատուաւոր քաղաքացիութեան իրաւունքներ:

484. Հայոց աշխարհիկ հոգևորականների որդիների կացութեան իրաւունքները որոշուած են 502 յօդուածի 3-րդ կէտում և 506 յօդուածի 24 կէտում:

Ահա 3-րդ և 4-րդ կէտերը.

«502. 3-րդ կէտ. Բարձր կացութեան իրաւունքներ չունեցող ռուսադաւան և հայադաւան հոգևոր անձանց որդիները»—«պատկանում են ծննդեան իրաւունքով պատուաւոր տոհմական քաղաքացիների դասին»:

«506 յ. 24-րդ կէտ. Բարձր կացութեան իրաւունքներ չունեցող ուսադաւան և հայադաւան սպասաւորող հոգեւորականների (դպիր-ջահընկալ, ժամհար, տիրացու) որդիները, երբ և ինչ կոչման մէջ էլ ծնուած լինին»—«կարող են խնդրել, որ նրանք հաշուեն անձնական պատուաւոր քաղաքացիների դասում, առանց տոհմական շարունակութեան»։

## 2) Աշխարհիկ հոգեւորականութեան իրաւունքների եւ պարտաւորութիւնների մասին ըստ կացութեան.

485. Ռուսահայոց աշխարհիկ հոգևորականութիւնը ազատ է ամեն տեսակ անձնական հարկերից և կոռ ու բեկառից և սրբազնագործները ազատ են նաև զինուորակոչութիւնից։

486. Հայոց սրբազնագործ հոգևորականները, նրանց կանայք և որդիք, նոյնպէս և սպասաւորողները և նրանց որդիք, զերծ են մարմնական պատժից։

487. Հայոց աշխարհիկ հոգևորականութեան թոյլ է տրւում տիրել անշարժ կալքերի մասնաւոր անձանց համար կարգուած կարգերի հիման վրայ. բայց ազնուականների հոգեր ձեռք բերել կարող են միայն նրանք, որոնք պատկանում են տոհմական ազնուական դասակարգին (քաղաքաց. օրէնքներ)։

488. Հայոց աշխարհիկ հոգևորականութեան տները զօրապահութեան կոռ ու բեկառը կրելու վերաբերմամբ, օգտւում են այն արտոնութիւններով, որոնք գրուած են հողային տուրքերի օրէնքներում (Уставъ о земскихъ повинностяхъ):

Ահա վերջի կտորում յիշուած օրէնքները. IV հատոր, II գիրք.

«270. յօդ. 3-րդ կէտ. Այն տեղերում, որոնց վրայ չի տարածւում 255 յօդուածի 1 ծանօթութեան մէջ առաջ բերուած կանոնների ներգործութիւնը, զօրապահական կոռ ու

*բեկառից ազատւում են ռուսադաւան և հայադաւան սըր-
բազնագործ և սպասաւորող հոգևորականների տները, լինին
նրանք իսկական պաշտօնում, թէ հիւանդութեան կամ ծե-
րութեան պատճառով արձակուած, միևնոյն է, և նոյնպէս
սրանց այրիների և որբերի տները, մինչև անգամ եթէ յի-
շեալ տները բնակութեան տեղեր լինին կամ երկրորդական
շինութիւններ լինին և նրանց մի մասը վարձով տրուած
լինի, միմիայն եթէ որ դրանք բոլորը մի բակ են կազմում
և մի համարի տակ են ամփոփուած։ Բայց երբ տները զա-
նազան համարներով են, և յիշեալ անձինք նրա մէջ չեն
ապրում, ենթարկւում են այն ժամանակ բնակարանային
տուրքերի ընդհանուր հիմունքներին»։*

«270 *յօդ. 4-րդ կէտ. Հայ-լուսաւորչական եկեղեցիները
և վանքերը, նրանց մօտ գտնուած և նրանց պատկանող բո-
լոր շէնքերը և կալուածքները, թէկուզ նրանք վարձով
տրուելիս և եկամուտ բերելիս լինին, նոյնպէս և այս դաւա-
նութեան աստուածահաճոյ հաստատութիւններին պատկա-
նող բոլոր շինութիւնները և կալուածքները, թէկուզ նրանք
վարձով տրուելիս և եկամուտ բերելիս լինեն, ամեն տեղ ազատ-
ւում են զօրապահական բեկառներից, հողային հարկից և ընդ-
հանրապէս ամեն տեսակ քաղաքային և պօլիցիական բեկառնե-
րից, միմիայն բացի կամուրջների նորոգման, մաքրութեան
հսկման և լապտերների պահպանութեան տուրքերից»։*

488—ի *ծանօթութիւն. Այն տեղերում, որտեղ մտցրուած չեն*
1870—-ի *քաղաքային կանոնադրութիւնը, հայոց աշխարհիկ հոգևորա-
կանութեան պատկանող տները, որոնց մէջ իրանք բնակւում են, ա-
զատւում են քաղաքային գետնահարկից և ուրիշ քաղաքային բեկառ-
ներից, բացի սալայատակների նորոգումից, փողոցներում և բակերում
պահանջուելիք մաքրութեան և լապտերների պահպանութեան պարտ-
քից միւս բնակիչներին հաւասար։*

489. *Թէ հոգևոր, թէ վիճելի և ուրիշ քաղաքացիական և
քրէական գործերի նկատմամբ, որոնք վերաբերւում են հայոց
սրբազնագործ և սպասաւորող հոգևորականներին, պահպան-
ւում է այն կանոնը, որը նշանակուած է* 479 *յօդուածում։*

490. Հայոց եկեղեցու աշխարհիկ հոգևորականները կարող են, ըստ ցանկութեան, թողնել հոգևոր կոչումը, բայց ոչ այլապէս, եթէ ոչ Էջմիածնի Հայոց Սինօդի թոյլտուութեամբ, թեմական իշխանութեան առաջարկութեամբ, եթէ նրանք, ըստ ծննդեան, չեն վայելում պատուաւոր քաղաքացիութեան իրաւունք, և ըստ ուսման, ձեռք չեն բերել քաղաքացիական ծառայութիւնը մտնելու իրաւունք, կոչումը թողնելուց յետոյ, պարտաւոր են ընտրել քաղաքային կամ գիւղական դասի կեանք։

491. Հայոց հոգևորականների որդիքը ընդունւում են քաղաքացիական ծառայութեան մէջ այն կանոնների հիման վրայ, որոնք գրուած են պետութեան որոշմամբ ծառայութեան մէջ մտնելու օրէնքներում։

492. Հայոց վանքերի և եկեղեցիների կալուածքների տիրելու և նրանց կառավարելու կարգի մասին գրուած են այլադաւան հոգևոր գործերի օրէնքներում (պօլօժէնիա)։

491—յօդուածի բացատրութիւնը գտնում ենք III հատորի մէջ I գիրք.

«Յօդ. 5, 4-րդ կէտ. Ռուսադաւան և հայադաւան եկեղեցիների քահանաների, սարկաւագների և սպասաւորողների (դպիր՝ չորս աստիճանաւոր, ժամհար, տիրացու) որդիքը առանց խտրութեան, ծնուած էլ լինին իրանց հօր հոգևոր կոչման մէջ մտնելուց առաջ թէ յետոյ»—«իրաւունք ունին քաղաքացիական ծառայութեան մէջ մտնելու»։

«29 յօդ. II կէտ. 3) Ռուսադաւան և հայադաւան սրբագնագործ և սպասաւորող այն հոգևորականների, որոնք այս կոչման մէջ մտել են անձնական ազնուականներից կամ սրբագնագործների որդիներից»—«սրանք պատկանում են գիտնական ծառայողների երկրորդ կարգին»։

III կէտ—4) Իսկ հասարակ դասակարգից եղածների որդիքը երրորդ կարգին են պատկանում։

V հատոր, Հարկերի մասին.

4842 յօդուածի 18-ի ծանօթութիւնը. «Հարկատու դասակարգին պատկանող անձինք, որոնք ժողովրդից արձակւում են ռուսադաւան և հայադաւան աշխարհիկ հոգևորականութեան մէջ մտնելու համար, կանոնադրեալ կարգով հոգևոր աստիճան ընդունելուց կամ եկեղեցակոչման մէջ մտնելուց յետոյ, ազատւում են թէ իրանք, թէ իրանց որդիք հարկերից»:

X հատոր. Պսակուողների տարիքի մասին.

«63 յօդ. արգելւում է պսակուել արականներին 18 տարեկանից, իսկ իգականներին 16-ից առաջ, այս կանոնս տարածւում է հռոմայական, աւետարանական և հայ-լուսաւորչական դաւանութեան պատկանող անձանց, 'ի բաց առեալ Կովկասի տեղական բնակիչներին, որոնց թոյլ է տրւում պսակուել՝ փեսային 15, հարսնացուին 13 տարեկան եղած ժամանակ»:

XII հատոր, կառուցանողական օրէնքներ. Բ. Գլուխ.

Ա. Բաժին. Այլադաւան քրիստոնեաների եկեղեցիների կառուցման մասին.

246. Ոչ ոք իրաւունք չունի ինքնակամ այլադաւան քրիստոնէական եկեղեցի շինել:

247. Այն անձինքը կամ հասարակութիւնը, որոնք կամենում են այս դաւանութեանց եկեղեցիներ կանգնել (246 յօդ.), պարտաւոր են խնդրագրերով դիմել այդ մասին նահանգական վարչութեան և կառավարութեան: Այս տեղերը, յարաբերութիւն սկսելով ռուսադաւան և ուրիշ թեմական իշխանութեան հետ, որի իշխանութեան տակ գտնւում է ծուխը, հաւաստիանում են, չկան որ և է արգելքներ շէնքի կառուցման համար, և ապա այս տեղեկութիւնները հաղորդւում են

*իրանց կարծիքներով Ներքին Գործոց Նախարարութեան այլադաւան հոգևոր գործոց դեպարտամենտին։*

250. *Այլադաւան քրիստոնեաների եկեղեցիների նորոգութիւնը, և նոյնպէս նորերի կառուցումը հնացածների կամ որև է աղէտալի դէպքի պատճառով խանգարուածների (քանդուածների) փոխարէն, թոյլատրւում է իրանց հոգևոր իշխանութեան հրամանով ըստ պատկանելոյն։*

251. *Ռուսադաւան եկեղեցիների առանց մակարդակի և ճակատի չշինելու կանոնը տարածւում է և միաքրիստոնեայ եկեղեցիների վրայ։*

252. *Այլադաւան քրիստոնէից եկեղեցիների նախագիծը և ճակատագիծը նահանգական և գաւառական քաղաքներում և գիւղերում յանձնւում է տեղական կառուցանողական բաժանմունքներին ի քննութիւն։*

256 *Յօդուածում թոյլ է տրւում փայտէ եկեղեցիներ կառուցանել, երբ ծխի միջոցները չեն ներում, կամ քար չի ճարւում շէնքի համար։* .

## *XIV հատոր. Յանցանքների առաջն առնելու եւ խափանելու օրէնքներ.*

*Վերևում գրուեցին այն կանոնները, որոնք սահմանուած են կարգալոյծ հոգևորականների համար, այս մասին աւելի ընդարձակ խօսւում է այս ԺԴ. հատորում* 176—182 *յօդուածների մէջ։*

## *XV հատոր. Պատժական օրէնքներ.*

193. *Այլադաւան քրիստոնեաների քահանայագործ հոգևորականները, որոնք գիտութեամբ ռուսադաւանին թոյլ կտան խոստովանուելու, հաղորդուելու և վերջին օծումն ստանալու իրանց ծէսերով, այս բանի համար ենթարկւում են. առաջի անգամ՝ տեղից հեռանալուն վեց ամսից մի տարի ժամանակով, իսկ երկրորդ անգամ՝ աստիճանից զրկուելուն։*

Երբ այս հոգեւոր պէտքերը կկատարեն ռուսադաւանի վերաբերմամբ անգիտութեամբ, նրանք կենթարկուին խիստ յանդիմանութեան, ինչպէս իրանց կոչման բարձրութեան հետ անհամաձայն անզգուշութեան համար։

194. Այլադաւան քրիստոնեաների հոգեւորականները, որոնց համար կհաստատուի, որ նրանք ռուսադաւան մանուկներին քրիստոնէական վարդապետութիւն են սովորեցնում, կամ յունադաւանութեան հակառակ ներշնչումներ են անում, թէեւ չապացուցուի էլ որ դաւանափոխելու դիտաւորութեամբ են անում, այս բանի համար ենթարկւում են. առաջին անգամ իրանց տեղից և պաշտօնից հեռանալուն մէկից մինչև երեք տարի. երկրորդ անգամ աստիճանից զըրկուելուն և բանդարկուելուն ութ ամսից մինչև մի տարի և չորս ամիս։

194¹. Այլադաւանների քահանայագործները եթէ իրանց ծէսերով կդրօշմեն ռուսադաւանին կամ կկատարեն ուրիշ քահանայագործութիւն, որով ընդունողը կհամարուի այս դաւանութեան պատկանող, կամ թոյլ կտան կամ կկատարեն իրանց ծէսերով մկրտութիւն ռուսադաւանների վրայ, այս բանի համար կենթարկուեն պաշտօնից զրկուելու և կարգալոյծ լինելու պատժին։

195. Այլադաւան քրիստոնեաների հոգեւորականները, եթէ կընդունեն ռուսահպատակ այլադաւանին իրանց դաւանութեան մէջ առանց ամեն մի դէպքի համար թոյլտւութիւն խնդրելու, ենթարկւում են առաջին և երկրորդ անգամ խիստ յանդիմանութեան, երրորդ անգամ պաշտօնից հեռանալուն երկու տարով, իսկ չորրորդ անգամ կարգից զրկուելուն և կարգի հետ միացած առանձին իրաւունքներից և արտօնութիւններից։

218- Յօդուածում ասում է, որ եկեղեցու մէջ բարեվայելչութեան դէմ կուսակրօն և աշխարհիկ հոգեւորականների արած անկարգութիւնների համար յանցաւորները դատւում և պատժւում են իրանց հոգեւոր իշխանութիւնից. իսկ

սպասաւորողները եկեղեցում մէկին ծեծելու համար՝ պաշտօնից զրկուելուց զկնի ենթարկւում են այդ յանցանքների համար նշանակած պատժին։

230 յօդուածի մէջ I, II, III կէտերում որոշուած են Հայոց եկեղեցում գործածուող սուրբ, օրհնուած և գործածուող անօթների ցուցակը։

230. I, 2) Հայոց եկեղեցու կանոններով սուրբ համարւում են. սկիհը, մաղզման, մասնատուփ, խաչեր, աւետարան, մեռոնով օծած պատկերներ, մասունքներ, խաչերի, պատկերների և մասունքների շրջանակները, սրբազան անօթների ծածկոցները, աթոռի և սեղանի ծածկաշորերը, և սեղանի մէջի օծուած խաչով վէմ քարը, որի վրայ պատարագ են անում։

Օրհնուած առարկաները են. ջուր օրհնելու ամաններ, կժեր, զգեստներ, բազմաթիւ աշտանակներ և սրանց մէջ տրուած մոմեր, աշտանակներ (մոմկալ) մեծ ու փոքր սեղանի վրայ և սեղանի առաջ և մասունքների դիմաց, աստուածպաշտական գրքեր և եկեղեցու դռներ։

Չօրհնուած իրեր համարւում են. սրսկիչներ և կանթեղներ, մկրտութեան անշարժ աւազանները, քարից կըտրուած, սեղանի մօտ հիւսիսային պատի մէջ շինած։

1575 յօդ. Հռոմէական, հայ-լուսաւորչական և հայ կաթոլիկ քահանաները և բողոքական քարոզիչները օրէնքով անվաւեր համարուած պսակ կատարելուն համար, եթէ այս եղել է գիտենալով, ենթարկւում են կարգալոյծ լինելու պատժին և բանտարկութեան ութ ամսից մինչև մի տարի չորս ամիս։

Եթէ այդ անում են սխալմամբ, զանազան առանձնակի հանգամանքների բերմամբ, այդ դէպքում առաջի անգամ ենթարկւում են խիստ յանդիմանութեան, երկրորդ անգամ պաշտօնից զրկուելուն։ Իսկ եթէ գիտութեամբ պսակ կանեն, շահասիրական կամ ուրիշ անձնական տեսակէտներով,

և այդ պսակը թէև օրէնքով արգելուած, բայց անվաւեր չէ, նրանք զրկւում են կարգից, իսկ եթէ արդարացուցիչ հանգամանքների պատճառով սխալմամբ է եղել, նրանք խիստ յանդիմանութեան են ենթարկւում։

### XV հատոր, հաշտարար դատաւորների պաշտօնական օրէնքները.

5 յօդ. Սրբազնագործները և կուսակրօնները եթէ դատապարտւում են կալանաւորման կամ բանդարկութեան, ուղարկւում են ոչ բանդ, այլ իրանց թեմական իշխանութեան՝ պատիժը կրելու վերջինիս կարգադրութեամբ։

### XVI հատոր քրէական դատավարական օրէնքներ.

1001 յօդուածից մինչև 1029 յօդ. խօսում է այն յանցանքների մասին, որոնք ենթարկւում են հոգևոր և աշխարհական դատարաններին։

Նորին Կ. Բարձրութիւն Կովկասի Փոխարքայի կարգադրութիւնը 4865 թ. դեկտեմբերի 29 համար 81. Տփխիսում. Էջմիածնի ծայրագոյն Պատրիարքի ընտրութեան մասնակցող աշխարհական պատգամաւորների մասին։ Շրջաբերական Անդկովկասի Նահանգապետներին և հայոց թեմական առաջնորդներին։

Հայ-լուսաւորչական դաւանութեան հոգևոր գործերի կառավարութեան համար սահմանուած կարգադրութեամբ (ԺԱ. հատ. մաս. Ա. գլ. 2. յօդ. 917 և 919) որոշուած է, որ ամենայն հայոց Պատրիարք կաթուղիկոսի ընտրութեան մասնակցեն. հայոց լուսաւորչական Էջմիածնի Սինօդի բոլոր անդամները և նոյն ժամանակ Էջմիածնում գտնուող եօթն աւագագոյն եպիսկոպոս, (եպիսկոպոսների քիչութեան դէպքում, այդ թիւը լրանում է այնտեղի աւագագոյն վարդապետներից), թեմական առաջնորդները, կամ նրանք, որոնց նրանք այս բանի համար հոգևորականներից կնշանակեն, և

բացի դրանից աշխարհական պատգամաւորներ, որոնք ընտըրւում են ամեն մի թեմից մի մի հոգի։

Աշխարհական պատգամաւորների ընտրութեան վերաբերմամբ նոյն պօլօժէնիայում (յօդ. 917) որոշուած է, որ նրանք ընտրւում են բոլոր մելիքներից, իւզբաշիներից և Հայոց եկեղեցու մնացած պատուաւոր աշխարհական անդամներից, որոնք Հայոց եկեղեցու նախնական սովորութեան համաձայն այդ իրաւունքը վայելում են։ Ի նկատի առնելով էջմիածնի ծայրագոյն Պատրիարքի առաջիկայ ընտրութիւնը, ցանկանալով անդրկովկասի Հայ հասարակութեան հնարաւորութիւն տալ բոլորովին կանոնաւոր և օրէնքներին համապատասխան ընտրութիւն կատարել աշխարհական պատգամաւորների վերաբերմամբ, որոնք իրաւունք ունին մասնակցելու այսպիսի կարևոր գործում և կամենալով նախազգուշացնել այն անկանոն շեղումներից, որոնք տեղի են ունեցել նախորդ ընտրութիւնների ժամանակ, ես հարկաւոր եմ համարում որոշել հետևեալ կանոնները ի հրահանգութիւն։

1. Անդրկովկասի Հայոց թեմի ամեն մի առաջնորդ, երբ ստանում է էջմիածնի Սինօդի ծանուցումը ամենայն Հայոց Պատրիարքի ընտրութեան համար, յայտնում է այդ մասին իւր թեմի նահանգապետին մէկ աշխարհական պատգամաւոր ընտրելու նկատմամբ անելիք կարգադրութիւնների համար, որը (պատգամաւորը) պիտի մասնակցի ամենայն Հայոց Պատրիարքի ընտրութեանը։

2. Թեմակալ առաջնորդները իրանց սահմաններում հիմնուելով թեմերի բաժանման վրայ, որը սահմանուած է հայլուսաւորչական եկեղեցու կառավարութեան համար նշանակուած պօլօժէնիայում (ժՍ. հ. ա. մ. գլ. Դ. յօդ. 962, 963, 964 և 965) ցոյց է տալիս այն գաւառները և գաւառակները, որոնց մէջ հաստատուած են հոգևոր կառավարութիւններ և գործակալութիւններ և որոնց մէջ Հայոց եկեղեցու անդամները՝ այս եկեղեցու նախնական սովորութեան համաձայն իրաւունք ունին մասնակցել աշխարհական պատ-

գամաւորի ընտրութեան, պարտաւոր են ընտրել իրանց մէջից ներկայացուցիչներ։

3. Թեմակալ առաջնորդից այդպիսի ծանուցում ստանալուց յետոյ, նահանգապետը անում է պատշաճաւոր կարգադրութիւն յայտարարելու գաւառապետների միջոցով հայոց եկեղեցու այն տեղերի անդամներին, որոնք ստորադրուած են հոգևոր կառավարութեան կամ անմիջապէս կոնսիստորիայից կախուած գործակալութիւններին, որպէս զի նրանք որոշ ժամանակին ընտրեն երկու ներկայացուցիչ, որոնք նշանակեալ ժամանակին պարտաւոր են գալ թեմի այն քաղաքը որին պատկանում են նրանք և այն քաղաքի ներկայացուցիչների հետ ընտրեն այն թեմի համար մի պատգամաւոր։

Ծանօթ. Թէև Քութայիսի գործակալութիւնը չի ստորադրւում անմիջապէս թեմ. իշխանութեան, բայց որովհետև հայոց եկեղեցիները՝ որոնք գտնւում են Իմերեթիայում և Գուրիայում Վրաստանի թեմի մի մասն են կազմում, ուստի և Քութայիսի գործակալութիւնը ընտրում է երկու ներկայացուցիչ։

4. Ներկայացուցիչ կարող են ընտրուել թէ տեղական ընտրողներից, թէ թեմական քաղաքի բնակիչներից, որոնք իրաւունք ունին մասնակցել ընտրութիւններին։ Տեղական բնակիչներից ընտրուած ներկայացուցիչները կարող են թեմական քաղաք գնալու անհնարաւորութեան դէպքում իրանց ձայնը ուրիշին տալ հաւատարմաթղթով։

5. Որև է թեմի գլխաւոր քաղաքի ներկայացուցիչներ ընտրելու համար, իւրաքանչիւր թեմական առաջնորդ, նահանգապետների հետ համաձայնութիւն կայացնելուց յետոյ, հրամանագրում է իւր քաղաքի բոլոր եկեղեցիների աւագ քահանաներին, որ նրանք առաջիկայ կիւրակի օրը եկեղեցիներում ծանուցմամբ հրաւիրի այն անձանց, որոնք հայոց եկեղեցու վաղեմի սովորութեան համաձայն իրաւունք ունին մասնակցելու աշխարհական պատգամաւորի ընտրութեանը, իրանց մէջից ընտրել ներկայացուցիչներ պատգամաւոր ընտրելու համար, որը պարտաւոր է մասնակցել ա-

մենայն Հայոց Պատրիարքի ընտրութեանը։ Այդ ներկայացուցիչների ընտրութիւնը լինում է հետևեալ կերպով.

ա). Ամեն մի եկեղեցում այն անձինք, որոնք Հայոց եկեղեցու վաղեմի կանոններով իրաւունք ունին մասնակցելու պատգամաւորի ընտրութեան, ընտրում են իրանց մէջից երեք երեք պատգամաւոր։

բ). Ներկայացուցիչների ընտրութիւնը պիտի կատարուի կամ եկեղեցում ժամերգութիւն չեղած ժամանակ, կամ նրա բակում, ընտրութիւնը պիտի վերջանայ ութերորդ օրը, ծանուցման օրից հաշուելով։

գ). Ներկայացուցիչներ ընտրելուց յետոյ կազմւում է ընտրողական թերթ, որի մէջ նշանակուած են լինում ընտրուած ներկայացուցիչների անունները և ազգանունները և ընտրողների ստորագրութիւնը։

դ). Ներկայացուցիչների ընտրութեան վերջանալուց յետոյ, աւագ քահանաները ներկայացնում են ընտրողական թերթերը իրանց թեմակալ առաջնորդներին, որոնք ըստ կարգի յանձնում են նահանգապետներին, իսկ սրանց չեղած տեղում գաւառապետներին։

6. Նահանգապետի կամ գաւառապետի համաձայնութիւնը առնելուց յետոյ, նշանակւում է ներկայացուցիչների ժողովի տեղն ու ժամանակը թեմի գլխաւոր քաղաքում։

7. Նշանակեալ ժամանակին բոլոր ընտրուած ներկայացուցիչները ժողովւում են նշանակուած տեղը թեմի պատգամաւոր ընտրելու համար։ Ժողովը համարւում է օրինական, եթէ ներկայացուցիչների $^2/_3$ մասը ներկայ կլինի, հաշուելով և այն անձանց, որոնք հաւատարմաթղթով են ներկայանում։

8. Ներկայացուցիչները պատգամաւորի համար թեկնածուներ են առաջարկում քուէարկութեան միջոցով, միմիայն քուէարկուողների համաձայնութիւնը ստանալուց յետոյ։

9. Քուէարկութիւնը վերջանալուց յետոյ ձայների ամենամեծ թիւը ստացողը նշանակւում է այն թեմի պատգամաւոր, որի մէջ ընտրութիւնը կայացել է, նրանից յետոյ շատ ձայն ստացողը նշանակւում է անձնափոխանորդ, որը պատգամաւորի տեղը բռնում է նրա մահուան կամ հիւանդութեան դէպքում։

10. Ներկայացուցիչների ժողովում ընտրութեան ժամանակ ներկայ է լինում կարգապահութեան համար կառավարութիւնից նշանակուած աստիճանաւոր։

11. Բոլոր թեմերի ընտրուած պատգամաւորները պէտք է նշանակուած ժամանակին գնան Էջմիածին մասնակցելու ամենայն Հ. Պատ. կաթուղիկոսի ընտրութեան։

12. Այդ պատգամաւորները պարտաւորւած են ընտրութեան նշանակուած ժամին Էջմիածին գնալու անհնարաւորութեան դէպքում, իրաւունք ունին օրէնքով իրանց գրաւոր կարծիքը ուղարկելու Էջմիածին։ Ստորագրեց Կովկասի փոխարքայ, Գեներալ Ֆելդցէյխմէյստէր Միքայէլ։

## Բ.

### Պետական աղբիւրների մէջ երկրորդ տեղն է բռնում Պոլսոյ Ազգային Սահմանադրութիւնը.

1839—ի Սուլթանական հրովարտակը, որով ապահովութիւն էր շնորհւում բոլոր հպատակներին անխտիր՝ կեանքի, պատուի և ստացուածքի, մեծ զարկ տուաւ Պոլսի հայոց ստորին դասակարգին իրաւունքների և պարտքերի ազատ գործադրման եկեղեցական գործերում։ Այդ դասակարգը, եթէ ոչ համահաւասար, գոնէ մասամբ առանց երկիւղի սկսեց խառնուիլ ուսումնարանական—եկեղեցական գործերում։ Խառնուելու առիթը եղաւ հետևեալ դէպքը։ Բողոքականների Պոլիս մտնելը և տարածուելը, նրանց համեստ և թաքուն գործունէութիւնը հայերի մէջ ուսումն տարա-

ծելու պատրուակով և դրանով բազմաթիւ Հայերի քարոզելը իրանց ճանկը որսալու Համար, առիթ տուաւ ջերմեռանդ Հայ ամիրաներից մի քանիսին ասպարէզ ելնելու նոյն զէնքով կռուելու նրանց դէմ։ Սրանք էլ Հետևելով նրանց արածին, բացին դպրոցներ և Հրաւիրեցին Հայերին փոխանակ բողոքականների դպրոցը ուղարկելու իրանց որդիներին, նորաբաց ուսումնարանները ուղարկել։ Մինչև անգամ Պալեան Կարապետ ամիրան Իւսկիւտարի թաղում 1838 թուի դեկտեմբերին «ճեմարան ս. Երուսաղէմի» անունով մի գիշերօթիկ դպրոց Հիմնեց այն դիտաւորութեամբ, որ իբր բարձրագոյն դպրոց, միջոց տայ միւս ուսումնարաններ աւարտողներին լրացնել իրանց ուսումն։ Յակոբոս Պատրիարքը բռնութեան և Նզովքի միջոցով չկարողանալով արմատախիլ անել և նսեմացնել բողոքականների գործունէութիւնը, սկսեց նոյն զէնքով մըրցել դրանց Հետ ուշադրութիւն դարձնելով Հայոց դպրոցների վրայ և մասնաւորապէս ճեմարանի բարւոքման վրայ։ Ամիրաները քինու նայելով Պալեանի վրայ, ազգային դպրոցի խնդիրը անձնականի Հետ շփոթելով և խառնելով, աշխատում էին խանգարել դպրոցի յարատևութիւնը և Երուսաղէմի տարեկան 12000 տալիք ղրուշը իբրև նպաստ՝ ոչնչացնել։ Պատրիարքը տեսնելով, որ ամիրաների վրայ յոյս դնելով չի կարելի ճեմարան պաՀել, որոշեց դիմել ազգի միւս դասակարգերին՝ նախ՝ 5 ղրուշ Հարկ դնելով Հանած անցաթուղթի վրայ և երկրորդ՝ որոշեց յատուկ տուրք ժողովել ժողովրդից ազգային պէտքերի Համար։—Եւ որպէսզի ազգային ժողոված տուրքի գործադրութեան Համար կասկածներ չյարուցանուին ժողովրդի մէջ, որոշուեց 24 Հոգաբարձու ընտրել ժողովրդից և նրանց միջոցով և կամքով անել թէ ժողովը և թէ ծախսը։ Ամիրաները եթէ ոչ ուրախութեամբ, գոնէ անտարբերութեամբ էին նայում ժողովրդի մասնակցութեան վրայ, առաջին՝ որ իրանց շաՀերը մնում էին անվնաս, և երկրորդ՝ կարծում էին, որ իրանց բարձր դիրքի և նշանակութեան շնորՀիւ կարող էին առանց դրան էլ՝ մեծ

դեր խաղալ այդ գործերում, մինչև իսկ չխառնուելով ռամիկ դասակարգից ընտրուած հոգաբարձական ժողովներին։

Ամիրաները գլխի եկան այն ժամանակ, երբ տեսան, որ ժողովուրդը հոգաբարձուների միջոցով կամենում է ազգային գործերի վարչութիւնը իրան ձեռքը ձգել, այն էլ տէրութեան հաստատութեամբ, իրանք մէջ մտան և յաջողեցրին հաստատութիւնը խանգարել տալ և մինչև իսկ աքսորել և բանդարկել տալ խռովարար անուամբ շատերին։ Ժողովուրդը՝ չնայելով գլխաւորների աքսորին և բանդարկութեան, աղերսագիր մատոյց Բարձրագոյն Դրան և ստիպեց հրովարտակով կատարել ժողովրդի ցանկութիւնը։ Եւ ահա 1841—ին դեկտեմբերի 12-ին Բարձրագոյն հրովարտակով հաստատուեցին 27 հոգուց բաղկացած հոգաբարձուները, որոնք ամիրաներից անկախ պիտի վարէին ազգային գործերը։—Ամիրաները տեսնելով ժողովրդի յաղթութիւնը տէրութեան միջամտութեամբ, սկսեցին յարգանքով նայել մինչև այժմ արհամարհուած դասակարգի վրայ, զարմացած տեսնելով՝ որ իրանց վաղեմի փառքն ու պատիւը և ազգային ամեն գործերում խառնուելու կարիքը, անուշադիր է թողնուած այն ժողովըրդի կողմից, որը առանց իրանց կամքին մի բան չէր կատարում, զիջեցին և պատրաստականութիւն յայտնեցին աջակցել ազգային գործերում ժողովրդի հետ միասին. իսկ 27 անձինք դժուար համարելով ազգային հաստատութիւնների (պատրիարքարանի, դպրոցների, հիւանդանոցների) նիւթականի հոգալը առանց ամիրաների, ցանկանում էին միանալու միջոց գտնել, որը և տեղի ունեցաւ Մատթէոս Պատրիարքի օրով 1844 թուին։ Այդ միացումն եղաւ հետևեալ կերպով. կառավարիչ ժողովը կազմուեց ամիրաներից և ժողովրդից, առաջիններից 16 հոգի, երկրորդից 14 հոգի. այս ժողովը Պատրիարքի նախագահութեամբ սկսեց կառավարել բոլոր ազգային գործերը և հաստատութիւնները։ Եւ որովհետև չկար պաշտօնական անձանց իրաւունքների և պարտաւորութիւնների կանոնաւոր սահմանումներ, ուստի և դժտութիւններ սկսուեցին առաջանալ Պատրիարքի և ամի-

բաների և ժողովրդի մէջ, ամէն մէկը իւր իրաւունքն էր պաշտպանում, առանց պարտքն յիշելու, առաջնորդների ընտրութիւնը ամիրաները նախկին կարգով համարում էին իրանց իրաւունքը, Պատրիարքը այդ իրաւունքը յատկացնում էր ժողովրդին: Այս գժտութիւնները առաջ բերին իրաւունքների և պարտքերի սահմանների որոշելու անհրաժեշտութիւն, գործերը սկսեցին բաժանել ըստ բովանդակութեան՝ եկեղեցականի և քաղաքացիականի, այս բաժանման համեմատ էլ ընտրութիւններ եղան հոգևորականներից և աշխարհականներից: 1847-ին մայիսին Մայր եկեղեցում ընդհանուր ժողով եղաւ Պատրիարքի ներկայութեամբ, և որոշուեց 14 եկեղեցական ընտրել կրօնական գործերի վարելու և 20 աշխարհական հասարակական հարցերը կառավարելու համար: Առաջի ժողովի գործն էր հսկել եկեղեցիների, առաջնորդների վրայ, քննել նրանց վէճերը և կարգաւորել խնդիրները, իսկ երկրորդի իրաւասութեան խնդիրներն էին՝ ուսումնարաններ, հիւանդանոցներ, ազգատների հոգատարութիւն և այլն և այլն: Ժողովների անդամները երկու տարին մի անգամ պիտի փոխուէին և հաստատուէին տէրութեան հրովարտակով. Պատրիարքը առանց այդ ժողովների գիտութեան Բարձրագոյն դրան հետ հաղորդակցութիւն չպիտի ունենայ:

Այսպիսով կրօնական և քաղաքական ժողովների հաստատութեամբ գործերը աւելի որոշ ընթացք ստացան և կանոնաւորուեցին քան ինչ որ առաջ էր: Բայց դժբախտաբար չկային որոշ կարգ կանոններ, պարզ և հաստատ կանոնադրութիւն թէ ընտրութիւնների վերաբերմամբ, թէ իւրաքանչիւր պաշտօնական մարմնի գործունէութեան նկատմամբ. գործերը ընթանում էին դանդաղ, առաջուայ նման այս ու այն ազդեցիկ մարդկանց ձեռքին և կամքին թողած: Այս պակասութիւնները բոլորը զգում էին, նրանց ցանկութիւնն եղաւ նոր կանոնադրութիւն կազմել աւելի լայն սահմաններով, լայն ընտրողական սկզբունքներով: Այս մտքին օգնեց 1856-ին դուրս եկած կայսերական հրովարտակը, որը

սում էր «ամենայն քրիստոնեայ համայնք կպարտաւորի բարձր կառավարութեան թոյլտուութեամբ և վերահսկողութեամբ մի նշանակեալ ժամանակամիջոցում իւր միջից ընտրած խորհրդի միջնորդութեամբ ձեռնարկել վերաքննելու իրեն տուած արտօնութիւնները և առանձնաշնորհումները և նոցա քննութեան համեմատ ներկայացնել Բարձրագոյն Դրան ծրագիր այնպիսի վերանորոգութեանց, որոնք ժամանակի լուսաւորութեան յառաջդիմութիւնը պահանջելիս կըլլան»։ (Տես «Փորձ» 1876 թ.)։

Այս հրովարտակի վրայ յենուած գերագոյն (քաղաքական) ժողովը մի մեծ յանձնաժողով կազմեց և առաջարկեց պատրաստել մի կանոնագրութիւն, որով որոշուէին ժողովների ընտրութեան եղանակը, իրաւունքները և պարտքերը։ 1860-ին մայիսի 24-ին ընդհանուր ժողով գումարուեց և կարդացուեց այդ նոր սահմանադրութեան որոշումները բոլորի ներկայութեամբ։

Ժողովականները կրօնի և եկեղեցական կանոնների դէմ հակառակ բան չգտնելով Սարգիս Պատրիարքի օրով ստորագրեցին։

Կազմուած սահմանադրութիւնը յանձնուեց Բարձրագոյն Դրան ի հաստատութիւն։

1862 թ. փետ. 14-ին Բարձրագոյն դռնից ծանուցումն եղաւ Պատրիարքական փոխանորդին—«բարեկարգութեանց վերաբերեալ կայսերական հրովարտակը կպահանջէ, որ ամեն հասարակութիւն իր վայելած առանձնաշնորհութիւններն ու արտօնութիւններն որոշեալ պայմանաժամի մէջ ի քննին առնելով, ժամանակի բերմանցը և քաղաքակրթութեան արդեանցը և գիտութեանց պահանջած բարեկարգութիւնները խորհրդածութեամբ որոշէ, ու Բարձրագոյն Դրան ներկայացնէ, և հոգևորական գործոց շնորհուած իշխանութիւնն և ձեռնհասութիւնն՝ իւրաքանչիւր հասարակութեան ապահովուած վիճակին և նոր դիրքին հետ համաձայնութեան մէջ դրուի . . .» (տես Սահմանադրութեան 1 եր.)։ Ասպա յիշում է, որ Սարգիս Պատրիարքի ժամանակ եղած ընդհա-

նուր ժողովը 7 հոգուց բաղկացած մի յանձնաժողով կազմի «և վերոյիշեալ ուրուագիծը անգամ մըն ալ անոր ցոյց տրուի»։ 1862-ի փետրուարի 16-ին այդ կազմած խառն ժողովը տէրութեան ներկայացրեց կազմած՝ նայուած Սահմանադրութիւնը։

1863-ի մարտի 7-ին Բարձրագոյն Դռնից ուղարկուեց Պատրիարքի տեղապահին հրամանագիր գործադրելու Սահմանադրութիւնը. «Ուստի յիշեալ Սահմանադրութիւնը ներփակեալ առ Ձեզ ուղարկելով՝ կպատուիրեմք որ պարունակած նիւթերուն այսուհետև անխերի գործադրութեանը հսկելով, ըստ Բարձ. կամաց Օգոստափառ Կայսեր՝ ինչ որ պարտ ու պատշաճ է 'ի գործ դնելու, հոգ տանիք» (տես Սահ. 8 եր.)։

Սահմանադրութիւնը այն առաւելութիւնը ունեցաւ նախկին կազմութիւնից, որ մշակուեցին այստեղ ընդհանուր սկզբունքներ, քաղաքական և կրօնական ժողովների բոլոր գործունէութիւնը Պատրիարքի վերատեսչութեամբ ենթարկուեց ընդհանուր երեսփոխանական ժողովի հսկողութեան և կօնտրօլին։

Սահմանադրութիւնը տուաւ, եկեղեցական—հասարակական գործերի կառավարութեան ոչ ոգի, այլ կմախք առանց արեան և նեարդերի. այդ մեծաքոմբէին բառի տակ չէք գտնիլ դատակազմական, դատավարական որոշ ձևեր և օրէնքներ, զանցառուների պատասխանատուութեան ենթարկելու և պատժելու հրահանգների կարգեր, չկան այնտեղ եկեղեցու վարչական, տնտեսական, քահանայական, ծխական, կալուածական խնդիրների վերաբերմամբ կարգ կանոններ, ամեն ինչ թողած է հին կարգով, միայն տալով ընդհանուրին սահմանադրական կերպարանք։

Ահա և Սահմանադրութիւնը։

*Օրինակ հրամանագրի Բարձրագոյն Դրան.*

*Առ Խոհեմազարդ Տեղապահ Պատրիարքի Հայոց.*

Հայոց Պատրիարքարանի վիճակին և վարչութեան բարեկարգութեանը վրայօք, ասկէ առաջ բարձրագոյն դուռը կազմուած Յանձնաժողովին գրի առած Սահմանադրութիւնը՝ լոկ աշխարհական գործոց վերաբերեալ քանի մը կէտերը սրբագրուելէն ետքը, Վեհափառ արքային մատուցուեցաւ, և Նորին Կայսերական Վեհափառութեան կողմէն ընդունուելով, պարունակած նիւթերուն այսուհետև կանոն բռնուիլը Ձեր սրբազնութեան յանձնելու արքունի հրամանը շնորհուեցաւ:

Ուստի յիշեալ Սահմանադրութիւնը ներփակեալ առ Ձեզ ուղարկելով՝ կպատուիրեմք որ պարունակած նիւթերուն այսուհետև անթերի գործադրութեանը հսկելով, ըստ Բարձրագոյն կամաց Օգոստափառ Կայսեր՝ ինչ որ պարտ ու պատշաճ է 'ի գործ դնելու հոգ տանիք:

17 Մարտի 1863.

*Յառաջաբանութիւն.*

Օսմանեան Տէրութեան իր մահմէտական չեղող հպատակներուն շընորհած արտօնութիւնները՝ հաւասար են ըստ սկզբանց ամենուն համար, բայց անոնց գործադրութեանը եղանակը՝ իւրաքանչիւր ազգի մէջ ըստ պահանջման սեպհական սովորութեանց իւրեանց, մասնաւոր կերպով տնօրինուած է:

Հայոց Պատրիարքը գլուխ է իր ազգին, և մասնաւոր պարագաներու մէջ, տէրութեան հրամանաց գործադրութեան միջնորդ: Սակայն Պատրիարքարանի մէջ կրօնական գործոց համար՝ կրօնական ժողով մը, և քաղաքական գործոց համար քաղաքական ժողով մը կան հաստատուած: Այս երկու ժողովները ի պահանջել հարկին միանալով՝ խառն

ժողով կըկազմեն։ Թէ Պատրիարքը և թէ այս երկու ժողովոց անդամները՝ ազգին պատուաւոր անձանցմէ բաղկացեալ մէկ ընդհանուր ժողովոյ մէջ կընտրուին։

Որովհետև յիշեալ ժողովներուն պաշտօնն ու պարտաւորութիւնքը, և կազմութեան եղանակը բաւական կանոններով սահմանուած չեն. և այս պատճառաւ զանազան անտեղութիւններ, և մասնաւորապէս ընդհանուր ժողով կազմելու մասին տեսակ տեսակ դժուարութիւններ տեսնուած են։

Որովհետև բարեկարգութեանց վերաբերեալ Կայսերական Հրովարտակին համեմատ, իւրաքանչիւր հասարակութիւն իր ունեցած արտօնութիւններն ու առանձնաշնորհութիւնները՝ որոշեալ ժամանակի մէջ քննելով, և ժամանակին բերմանցը և քաղաքակրթութեան արդեանցն ու արդի լուսաւորեալ վիճակին պահանջած բարեկարգութիւնները խորհրդածութեամբ որոշելով, Բարձրագոյն Դրան ներկայացնելու պարտաւորուած է։

Որովհետև ամեն մէկ ազգին կրօնական գլուխներուն շնորհուած իշխանութիւնն ու կարողութիւնը, իւրաքանչիւր հասարակութեան ապահովուած նոր վիճակին ու դրութեան համաձայնեցնել պէտք է։

Ուստի Հայոց ազգէն քանի մը պատուաւոր անձինքէ Յանձնաժողով մը կազմուեցաւ, որ ազգին համար պատրաստեց սա հետևեալ Սահմանադրութիւնը։

## ԱԶԳԱՅԻՆ

## ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹԻՒՆ

## ՀԱՅՈՑ

## ՀԻՄՆԱԿԱՆ ՍԿԶԲՈՒՆՔ

### Ա.

Ազգին ամեն մէկ անհատը առ ազգը պարտաւորութիւններ ունի, ազգն ալ իր կողմէն առ ազգային ամեն մէկ անհատ պարտաւորութիւններ ունի, դարձեալ ամեն մէկ անհատ իրաւունքներ ունի ազգէն և ազգն անհատներէն։

Ուստի ազգն ու ազգայինք փոխադարձ պարտեօք կապուած են իրարու հետ, անանկ որ մէկին պարտաւորութիւնքը միւսին իրաւունքն են։

## Բ.

Ազգայնոց պարտականութիւնն է՝ ազգին պիտոյիցը պահանջած ծախքերուն մասնակից ըլլալ իւրաքանչիւր իր կարողութեան չափովը. ազգին խնդրած ծառայութեանցը յօժարակամ յանձնառու ըլլալ, և անոր ըրած տնօրէնութեանցը սիրով հնազանդել։

Ազգայնոց այս պարտաւորութիւնքը ազգին իրաւունքըն են։

## Գ.

Ազգին պարտականութիւնն է՝ ազգայնոց բարոյական, մտաւորական և նիւթական պիտոյիցը հոգ տանել, Հայաստանեայց եկեղեցւոյ դաւանութիւնն ու աւանդութիւնքը անարատ պահել, մարդկութեան հարկաւոր եղած անհրաժեշտ գիտելեաց ուսումը՝ ամեն աստիճանի թէ մանչ և թէ աղջիկ տղայոց հաւասարապէս ծաւալել, ազգային հաստատութիւնքը պայծառ պահել, հասոյթներն օրինաւոր կերպով աւելցնել, և ծախքերն իմաստութեամբ տնտեսել, ազգին ծառայութեանը մշտնջենապէս նուիրեալ անձանց կացութիւնը բարւոքել և ապագայն անդորրել, կարօտելոց խնամ տանել հայրաբար, ազգայնոց մէջ ծագած վէճերն արդարասիրութեամբ խաղաղել, և վերջապէս ազգային յառաջադիմութեան անձնանուէր աշխատել։

Ազգին այս պարտաւորութիւնքը ազգայնոց իրաւունքըն են։

## Դ.

Զազգը փոխանորդաբար ներկայացնող, և այս փոխադարձ պարտեաց կանոնաւոր կատարմանը տեսուչ և մատա-

կարար կարգեալ իշխանութիւնը՝ ազգային վարչութիւն կը կոչուի, որում յանձնուած է Օսմանեան Տէրութենէն յատուկ արտօնութեամբ և սահմանադրութեան միջոցաւ, Թուրքիոյ Հայոց ներքին գործերու տնօրէնութիւնը։

### Ե.

Վարչութիւնը՝ ազգային ըլլալու համար, պէտք է Երեսփոխանական ըլլայ։

### Զ.

Երեսփոխանական վարչութեան հիմը՝ իրաւանց ու պարտեաց սկզբունքն է, որ արդարութեան սկզբունք է, իր ոյժը ձայնից բազմութեան մէջ կը կայանայ, որ օրինաւորութեան սկզբունք է։

## ԳԼՈՒԽ Ա.

## ԱԶԳԱՅԻՆ ԿԵԴՐՈՆԱԿԱՆ ՎԱՐՉՈՒԹԻՒՆ.

### *Ա. Պատրիարք Կոստանդնուպոլսոյ.*

### *Ընտրութիւն եւ հրաժարում.*

Յօդուած 1. Կոստանդնուպոլսոյ Պատրիարքը բոլոր Ազգային ժողովոց Նախագահն է, և անոնց գործադիր իշխանութիւնը կը վարէ, և մասնաւոր պարագաներու մէջ՝ Տէրութեան հրամանաց գործադրութեան միջնորդն է։

Ուստի պէտք է որ Պատրիարք ընտրելու անձը՝ ընդհանուր ազգին վստահութեան ու յարգանացն արժանի ըլլալու համար, Պատրիարքական Աթոռին վայելուչ ամեն յատկութիւններն ու արժանաւորութիւնն ունենայ, և ի վաղուց անտի Պատրիարքութեան յատկացեալ եպիսկոպոսաց դասէն ըլլայ, միանգամայն Տէրութեան կատարեալ վստահութեանն արժանաւոր, և գոնէ իւր հօրմէն սկսեալ՝ Օս-

մանեան Հպատակ, և երեսուն ու Հինգ տարին լրացուցած ըլլայ։

Յօդ. 2. Երբ՝ Պատրիարքը վախճանելով կամ Հրաժարելով և կամ ուրիշ որ և է պատճառաւ աթոռը պարապ մնայ, կրօնական և քաղաքական ժողովները մէկտեղ գալով Տեղապահ մը կ՚ընտրեն, և անոր Հաստատութիւնը կը խնդրեն Բարձրագոյն Դռնէն։

Ընդհանուր ժողովը կ՚ընտրէ զՊատրիարք, բայց կրօնական և քաղաքական ժողովներն իրաւունք ունին ներկայացման ցուցակով մը ընտրելեաց արժանաւորութեան աստիճանին վրայ կարծիք տալու։

Պատրիարքի ընտրութիւնը Հետևեալ կերպիւ կ՚ըլլայ։

Նախ և առաջ Տեղապահը Օսմանեան Հողին վրայ գտնուող բոլոր եպիսկոպոսաց ցանկը կը շինէ, և իւրաքանչիւրին անուանը առջև՝ ըստ առաջին յօդուածոյ ընտրելութեան Համար պաՀանջուած Հանգամանքը նշանակելով, կրօնական ժողովոյն կը ներկայացընէ զայն։

Այս ժողովն ալ եկեղեցական Համագումար ժողով Հրաւիրելով, ընտրելեաց ցուցակ մը կը պատրաստէ գաղտնի քուէարկութեամբ, այսինքն իւրաքանչիւր անդամ թղթոյ մը վրայ կգրէ այն ամեն եպիսկոպոսաց անունները՝ զորս կրօնական մասին անընդունելի չՀամարեր։ Եօթը՝ քուէ Համարն ըլլալով, այն անունները յատուկ ցուցակի մը մէջ կանուին քուէից շատութեան կարգաւ։

Տեղապահը յիշեալ կերպիւ պատրաստուած ցուցակը Քաղաքական ժողովոյն կը ներկայացընէ։ Ան ալ՝ նշանակուած անձանց ըստ քաղաքականին արժանաւորութիւնը քննելէն ետքը, ամենեն աւելի արժանաւորներէն Հինգ ընտրելի կը զատէ քուէից առաւելութեամբ, և սոնց ցուցակը ընդՀանուր ժողովոյն կներկայացընէ։

Միանգամայն եկեղեցական Համագումար ժողովոյն պատրաստած առաջին ցուցակն ալ ազգային ԸնդՀանուր ժողո-

վոյն սրահին մէջ կախուած կըլլայ։ Ընդհանուր ժողովը այս երկու ցուցակներէն, ընտրելեաց՝ թէ կրօնական և թէ քաղաքական որպիսութեանց վրայ՝ երկու ձեռնհաս ժողովներուն կարծիքն իմանալով, կընտրէ զՊատրիարք գաղտնի քուէարկութեամբ և բացարձակ առաւելութեամբ քուէից։

Ընդհանուր ժողովը կրնայ քաղաքական ժողովոյն ներկայացուցած ցուցակէն դուրս անձի մը վրայ ալ քուէ տալ. բայց պէտք է որ այն անձին անունը նշանակուած ըլլայ եկեղեցական համագումար ժողովոյն պատրաստած ցուցակին մէջ, վասն զի այս եկեղեցական ցուցակէն դուրս մնացած անձի վրայ ընտրութիւն չըկրնար ըլլալ։

Եթէ առաջին անգամ քուէից բացարձակ առաւելութիւն չգոյանայ, երկու առաւելագոյն քուէ ստացողաց անունները տեղապահին կողմէն ընդհանուր ժողովոյ անդամներուն կը ծանուցուի, և երկրորդ քուէարկութիւնը օրինաւորապէս այն երկուքին վրայ կըլլայ։ Այս երկրորդ քուէարկութեան ատեն ազգային երեսփոխաններէն անոնք որ չկրնան ներկայ գտնուիլ, կարող են իրանց քուէները ստորագրել և կնքեալ նամակաւ առ ժողովն ուղարկել, կամ տեղապահին և կամ ընդհանուր ժողովոյ ատենապետին ուղղելով զայն։

Քուէները յատուկ քուէատուփի մը մէջ դրուելէն ետքը՝ քուէհամարը կըլլայ ընդհանուր ժողովոյ դիւանին ձեռօք, և սոյն ժողովոյ մէջէն ընտրուած չորս եկեղեցական և չորս աշխարհական քննիչներու ներկայութեամբ։

Եթէ պատահի որ երկրորդ անգամ քուէարկութեան մէջ երկու անձանց հաւասար քուէ ելնէ, այն ատեն երկուքէն մէկը վիճակաւ կընտրուի։

Յօդ. 3. Ընտրութիւնը կատարուելէն ետքը տեղեկագիր մը կը շինուի՝ զոր բոլոր բազմականք կը ստորագրեն, և տեղապահի միջնորդութեամբ Բարձրագոյն Դրան կը մատուցուի, և Պատրիարքը կը հաստատուի ըստ վաղեմի սովորութեան՝ Կայսերական հրամանին համեմատ։

Յօդ. 4. Ընդհանուր ժողովը հրաւիրանաց գիր կուղարկէ Պատրիարք ընտրուած անձին, քանի մը անձանց ձեռօք՝ եթէ Կ. Պոլսոյ մէջ է, և յատուկ հրաւիրակաւ եթէ Կ. Պոլիսէն դուրս տեղ է։ Նորընտիր Պատրիարքը՝ այս հրաւիրանաց գիրը առնելով, Պատրիարքարան կուգայ և Մայր եկեղեցւոյ մէջ ընդհանուր ժողովոյ առջև հանդիսաւոր ուխտ կընէ սոյն օրինակ. «Առաջի Աստուծոյ և ի ներկայութեան «ազգային ժողովոյս՝ հրապարակաւ ուխտեմ հաւատարիմ մը«նալ Տէրութեան և ազգիս, և ճշմարտապէս հսկել ազգային «Սահմանադրութեան անթերի գործադրութեանը»։ Անմիջապէս տեղապահին պաշտօնը կը դադարի, և նորընտիր Պատրիարքը Բարձրագոյն Դրան հրաւէրին վրայ՝ ուղղակի Օգոստափառ Կայսեր կը ներկայանայ, պաշտօնական կերպիւ իր պաշտօնը կը հաստատուի, և Բարձրագոյն դուռը երթալով կը ծանուցվի։

Յօդ. 5. Եթէ Պատրիարքը Սահմանադրութեան տրամադրութեանցը հակառակ շարժի կամ վարուի, ամբաստանութեան տակ կընկնի։

Յօդ. 6. Պատրիարքին վրայ ամբաստանութիւն ընելու միայն ընդհանուր ժողովը և կրօնական ու քաղաքական ժողովներն իրաւունք ունին։

Ամբաստանող կամ բողոքող ժողովը Բարձրագոյն Դռնէն հրաման առնելով Պատրիարքէն կխնդրէ՝ որ ընդհանուր ժողով գումարէ։

Եթէ Պատրիարքը ասոր դէմ կենայ, եղելութիւնը կըրկին անգամ Բարձրագոյն Դրան իմաց կը տրուի, որ այն ատեն բողոքին համեմատ՝ Կ. Պոլսոյ մէջ գտնուող եպիսկոպոսաց երիցագոյնին նախագահութեամբը ընդհանուր ժողով գումարելու հրաման կուտայ։

Ընդհանուր ժողովը իր միջէն հինգ եկեղեցական և հինգ աշխարհական ընտրելով, տասն հոգիէ բաղկացեալ քննիչ յանձնաժողով մը կը կարգէ, բայց պէտք է որ այս քննիչներուն մէջ, ամբաստանող կամ բողոքող անձանցմէ մարդ

չ'գտնուի։ Քննիչ յանձնաժողովը եղած ամբաստանութիւնները քննելէն ետքը՝ տեղեկագիր կուտայ ընդհանուր ժողովոյն, որ կորոշէ գինդիրը գաղտնի քուէարկութեամբ։ Այս որոշումը պարունակող թուղթը պէտք է ստորագրուած ըլլայ որոշման կողմը քուէ տուող ժողովականներէն, և եթէ անով Պատրիարքին հրաժարուելը վճռուած է, երկու ժողովոց ատենապետները նախագահ եպիսկոպոսին հետ Պատրիարքին երթալով յիշեալ թուղթը անոր կը ներկայացնեն, որ այն ժամանակ ազգին որոշ կամքը իմանալով հրաժարականը տալու պարտաւորեալ է։ Իսկ եթէ չուզէ տալ, Բարձրագոյն դրան իմաց կը տրուի որ պաշտօնէն կը ձգէ զՊատրիարք։

Յօդ. 7. Հրաժարեալ Պատրիարքը վիճակաւոր եպիսկոպոսաց կարգը կանցնի. և անոր վրայ ըստ կանոնի պէտք եղածը կը տնօրինուի խառըն ժողովոյ կողմէն։

## Պաշտօն եւ պարտաւորութիւնք.

Յօդ. 8. Պատրիարքին պարտաւորութիւնքն են Սահմանադրութեան սկզբանց համեմատ վարուիլ, և անոր ամեն կէտերուն ճշտիւ գործադրութիւնը ուշի ուշով հսկել։

Պատրիարքը իրեն եկած գործերը որ ժողովոյ կը վերաբերի նէ այն ժողովոյն կը յանձնէ՝ քննութեան և որոշման համար։ Ժողովոց մէջ որոշուած գործոց վրայ Պատրիարքին թագրիները և կամ ուրիշ պաշտօնական գրութիւնները վաւերական և գործադրելի չեն կրնար ըլլալ եթէ որոշող ժողովոյն կողմէն ալ կնքեալ և ստորագրեալ չըլլայ։ Իսկ երբ ստիպողական գործ մը պատահի, որոյ տնօրէնութեանը համար կարելի չ'ըլլայ մինչև ժողովոյն գումարման օրը սպասել և կամ արտաքոյ կարգի ժողով գումարել, Պատրիարքը կրնայ պէտք եղածը ինքնին տնօրինել, իր վրայ առնելով պատասխանատուութիւնը, բայց պարտաւորեալ է եղելութիւնը արձանագրել տալ կանոնաւոր կերպիւ և որ ժողո-

վոյն կը վերաբերի նէ՝ անոր յաջորդ նիստին ներկայացունել վաւերացման համար։

Յօդ. 9. Պատրիարքը իր բացակայութեանը ատեն ազգային ժողովներու մէջ տրուած որոշումները պարունակող թուղթը դեռ չստորագրած, կարող է անոնց վրայ իր դիտողութիւններն յայտնելով, խնդիրը կրկին քննութեան յանձնել։ Իսկ այս վերաքննութենէն ետքը՝ պարտաւորեալ է նոյն թուղթերը ստորագրել, եթէ տրուած որոշումը Սահմանադրութեան տրամադրութեանցը անհամաձայն չգտնէ։

Յօդ. 10. Պատրիարքը կրնայ՝ Սահմանադրութեան սկզբանցը համեմատ չվարուող եկեղեցական մը, վարժապետ մը, եկեղեցւոյ, վանքի, դպրոցի, կամ հիւանդանոցի գործակալ մը, պաշտօնէն հանելու առաջարկութիւն ընել ձեռնհաս ժողովոյն կամ խորհրդոյն։

Յօդ. 11. Պատրիարքը իրաւունք չունի ինքնին լուծել և փոխել կրօնական և քաղաքական ժողովները և անոնց վերաբերեալ խորհուրդները։ Բայց երբ տեսնէ թէ ասոնցմէ մէկը Սահմանադրութեան սկզբանցը հակառակ ընթացքի մէջ է, առաջին անգամին բացատրութիւն կուզէ այն ժողովոյն կամ խորհրդոյն ատենապետէն, երկրորդին՝ իմաց կուտայ անոր ապօրինաւոր ընթացքը և ի կանոնապահութիւն կը հրաւիրէ զայն. իսկ երրորդին՝ ընդհանուր ժողովոյն կը դիմէ, եթէ ամբաստանելին ազգային ժողովներէն մէկն է, կամ քաղաքական ժողովոյն կը դիմէ, եթէ խորհուրդներէն մէկն է և պատճառները ցուցընելով՝ ամբաստանեալ ժողովոյն կամ խորհրդոյն լուծումը կառաջարկէ։

Յօդ. 12. Պատրիարքը ազգային սնտուկէն իրեն յատկացեալ ամսական ունենալով, ինքը կը տեսնէ պատրիարքարանին ներքին ծախքը։

*Բ. Պատրիարքական Դիւանատուն.*

Յօդ. 13. Պատրիարքարանի մէջ դիւանատուն մը պիտի հաստատուի պէտք եղած ազգային գրութեանց յատկացեալ

Այս դիւանատունը երեք գրասենեակի պիտի բաժանուի.

Ա. Թղթակցութեան գրասենեակ, որ պատրիարքարանէն ուղարկուած և պատրիարքարան եկած գրութիւններով կ'ըզբաղի։

Բ. Արձանագրութեան գրասենեակ, որ ազգային ժողովոց և խորհրդոց վերաբերեալ թուղթերը կարգաւորելու կ'զբաղի։

Գ. Ազգահամարի գրասենեակ, որ ազգային քաղաքական վիճակագրութեանը, այսինքն ծննդեան, ամուսնութեան, և վախճանման վերաբերեալ արձանագրութեանց կ'զբաղի։

Այս վերջին գրասենեակէն կը տրուին ազգային թէ ճանապարհորդութեան համար և թէ ուրիշ անձնական գործառնութեանց համար պէտք եղած վաւերական թուղթերը, նաև ծննդեան, ամուսնութեան և վախճանման վկայագրերը։

Յօդ. 14. Պատրիարքական դիւանատունը պիտի ունենայ դիւանապետ մի, որ պատասխանատու է դիւանատան բոլոր գործառնութեանց։ Քաղաքական ժողովը կընտրէ և Պատրիարքը կանուանէ զայն։ Դիւանապետը կընէ նաև ընդհանուր ժողովոյն դիւանադպրութիւնը։

Դիւանապետը պարտաւորեալ է ամեն տարի՝ թէ Կոստանդնուպօլսոյ մէջ և թէ դուրսերը ծնած, ամուսնացած և վախճանած ազգայնոց տոմարներուն օրինակները բերել տալ, և պատրիարքարանի դիւանատան ընդհանուր ազգահամարին մէջ արձանագրել տալ։ Դիւանապետը Հայերէն լեզուի քաջ հմուտ և Տաճկերէնի ու Գաղիերէնի ալ վարժանձ մը պիտի ըլլայ։

Յօդ. 15. Դիւանատունը բաւական թուով դիւանադպիրներ պիտի ունենայ։ Ասոնք ալ Հայերէն լեզուն քաջ գիտնալու են, և ամեն մէկը իւր պաշտօնին կատարեալ հմտութիւն ունենալու է։ Ամեն մէկ դիւանադպիր ընդ իւր պաշտօնի պատասխանատու է այն ժողովոյն կամ խորհրդոյն՝ որուն կը վերաբերի։ Ամէնը մէկէն պատասխանատու են դիւանապետին։

Յօդ. 16. Ազգահամարի դրասենեակէն տրուած որ և է թուղթ և վկայագիր վաւերացեալ պէտք է ըլլայ Պատրիարքական կնքով և դիւանապետի ստորագրութեամբ։

*Գ. Պատրիարք Սրբոյ Երուսաղէմի:*

Յօդ. 17. Երուսաղէմի Պատրիարքը Ս. Յակոբայ Աթոռոյն ցկեանս գահակալն է, միանգամայն Հայոց ազգին սեպհական Երուսաղէմ գտնուած ուխտատեղիներուն տնօրէնն ու Ս. Յակոբայ վանուց միաբանութեան նախագահն է։

Իր պարտաւորութիւնն է Ս. Երուսաղէմի վանուց կանոնագրին տրամադրութեանց համեմատ վարուիլ, և անոր բարւոք գործադրութեանը հսկել։

Յօդ. 18. Եթէ Ս. Երուսաղէմի Պատրիարքը Ս. Երուսաղէմի վանուց կանոնագրին հակառակ վարուի, ամբաստանութեան տակ կ'ընկնի։

Յօդ. 19. Պատրիարքին վրայ ամբաստանութիւն կրնայ ըլլալ կամ յիշեալ միաբանութեան կողմէն և կամ Կոստանդնուպօլսոյ կրօնական և քաղաքական ժողովոյ կողմէն։

Այսպիսի պարագայի մէջ՝ ազգային ընդհանուր ժողով կը գումարուի։ Եւ եթէ եղած ամբաստանութիւն քննուելով՝ հիմնաւոր ըլլալը ստուգուի, ընդհանուր ժողովը՝ վերոյիշեալ յօդուածին մէջ Կոստանդնուպօլսոյ Պատրիարքին վերաբերեալ տրամադրութեանց համեմատ՝ ըստ պահանջման իրեն, կամ ի կանոնապահութիւն կը հրաւիրէ զՊատրիարքն մասնաւոր բողոքագրով, և կամ կը պարտաւորէ զայն հեռանալ պատրիարքական աթոռէն, և անոր պաշտօնը կը յանձնէ տեղապահի մը՝ զոր ընդհանուր ժողովը գաղտնի քուէարկութեամբ կ'ընտրէ միաբանութեան մէջէն։

Յօդ. 20. Երբ Ս. Երուսաղէմի Պատրիարքը վախճանի, միաբանութիւնը իր մէջէն տեղապահ մը կ'ընտրէ, և ազգային ժողովները կը հաստատեն զայն։

Յօդ. 21. Ս. Երուսաղէմի Պատրիարքը Կոստանդնու-

պոլսոյ ազգային ժողովներուն կողմէն կընտրուի։ Բայց միաբանութիւնը իրաւունք ունի իր կարծիքը յայտնելու ընտրելեաց արժանաւորութեան աստիճանին վրայ՝ ներկայացման ցուցակաւ մը։ Պատրիարքին վախճանելէն անմիջապէս ետքը՝ յիշեալ տեղապահը միաբանից ընդհանուր ժողով կը գումարէ։ Այս ժողովը անուանց ցուցակ մը կը պատրաստէ՝ Կոստանդնուպոլսոյ Պատրիարքի ընտրութեան համար Կոստանդնուպոլսոյ եկեղեցական համագումար ժողովոյն ըրած կերպիւը, բայց պէտք է որ միաբանութեան ներկայացունելիք այս ցուցակը գոնէ եօթն ընտրելեաց անուն պարունակէ։ Այս ցուցակը միաբանութեան կողմէն ստորագրեալ յայտագրով Կոստանդնուպոլսոյ պատրիարքարան կուղարկուի։

Յօդ. 22. Սուրբ Երուսաղէմի Պատրիարք ընտրուելու անձը գոնէ երեսուն և հինգ տարին լրացուցած, և ի ծնէ Օսմանեան Տէրութեան հպատակ, միաբանութեան եպիսկոպոսներէն կամ վարդապետներէն պէտք է ըլլայ, միանգամայն միաբանութենէն զատուած մէկը պէտք չէ ըլլայ։

Միաբանութենէն զատուած չեն համարուիր այն անձինքը՝ որ պատրիարքարանի ժողովոց կողմէն ազգային պաշտօնի մէջ գործածուած են՝ Երուսաղէմի Պատրիարքին հաւանութեամբ։

Յօդ. 23. Կրօնական և քաղաքական ժողովները խառն ժողով կազմելով, վերոյիշեալ ցուցակին մէջ յիշատակուած անձանց արժանիքը կը քննեն, և երեք ընտրելի որոշելով անունները ընդհանուր ժողովոյն կը ներկայացընեն։ Միաբանութեան կողմէն եկած ցուցակն ալ ընդհանուր ժողովոյ որահին մէջ կախուած կըլլայ։

Ընդհանուր ժողովը ընտրելեաց վրայօք թէ միաբանութեան և թէ ազգային երկու ժողովոց կարծիքը իմանալով, անոնց մէջէն կրօնից, ուսման և բարի վարուց նկատմամբ ամենէն աւելի արժանաւորութիւն ունեցող անձը կընտրէ գաղտնի քուէարկութեամբ և քուէից բացարձակ առաւելութեամբ։

Ընդհանուր ժողովոյ մէջ՝ միաբանութեան կողմէն ներկայացուած ցուցակէն դուրս անձի վրայ քուէարկութիւն չ'կրնար ըլլալ։

Դ. Ազգային կրօնական ժողով

Յօդ. 24. Կրօնական ժողովը կը բաղկանայ տասն և չորս բանիբուն եկեղեցականներէ, որոնք գոնէ երեսուն տարին լրացուցած, և գէթ հինգ տարիէ ի վեր ձեռնադրուած պիտի ըլլան։

Յօդ. 25. Եկեղեցական համագումար ժողովը գաղտնի քուէարկութեամբ՝ ազգային կրօնական ժողովոյ անդամոց թուոյն եռապատիկը կ'ընտրէ, և ընտրելեաց անունները ստորագրեալ յայտագրով ազգային ընդհանուր ժողովոյն կը ներկայացնէ։

Ընդհանուր ժողովն ալ անոնց մէջէն գաղտնի քուէարկութեամբ կընտրէ կրօնական ժողովոյ անդամները։ Տեղեկագիրը Պատրիարքին կողմէն Բարձրագոյն Դրան կը ներկայացուի, և կրօնական ժողովոյ այսպէս ընտրուած անդամները Կայսերական հրամանաւ կը հաստատուին։

Յօդ. 26. Կրօնական ժողովը երկու տարին անգամ մը ապրիլի վերջը ամբողջ կը լուծուի, և մայիսի սկիզբը կը նորոգուի։ Այս ժողովոյ անդամները անմիջապէս վերընտրելի չեն, բայց երկու տարի ետքը կրնան նորէն ընտրուիլ։

Յօդ. 27. Երբ կրօնական ժողովոյ անդամներէն հրաժարական տըւող և կամ ուրիշ պատճառաւ պակսողներուն թիւը երեքի հասնի, անոնց տեղ ուրիշներ կընտրուեն ընդհանուր ժողովով։ Բայց մինչև որ այս ընտրութիւնն ըլլայ, կրօնական ժողովոյ մէջ բոլոր անդամոց մեծագոյն մասը կը բնտուի։

Յօդ. 28. Կրօնական ժողովոյ պաշտօնն է ազգային կրօնական գործոց ընդհանուր տեսչութիւնը։ Իր պարտաւորութիւնքն են՝ ազգին մէջ կրօնական զգացումը զարգացնել,

Հայաստանեայց եկեղեցւոյ դաւանութիւնն ու աւանդութիւններն անխախտ պահել, եկեղեցեաց և եկեղեցականաց բարեկարգութեանը հսկել, եկեղեցականաց ներկայ վիճակը լաւցունելու և ապագայն անդորրելու և ապահովցունելու միջոցները ձեռք բերելու հոգ տանիլ։ Ազգային վարժարանաց երբեմն երբեմն այցելութիւն ընելով Քրիստոնէական վարդապետութեան ուսուցման վրայ հսկողութիւն ընել, արժանաւոր և բանիբուն վարդապետներ և քահանաներ հասցունել, և ազգին մէջ ծագած կրօնական վէճերը քննելով եկեղեցւոյ օրինաց համեմատ լուծել։

Յօդ. 29. Կրօնական ժողովը երբ չը կարենայ ինքնին լուծել զուտ կրօնական կարևոր խնդիր մը, եկեղեցական համագումար ժողով կը կազմէ՝ Կոստանդնուպօլիս գտնուող եպիսկոպոսները, եկեղեցեաց քարոզիչ վարդապետները, աւագ երէցներն ու աթոռակալները, և թէ հարկ ըլլայ՝ նաև շրջակայ գաւառաց առաջնորդները հրաւիրելով։ Եթէ եկեղեցական համագումար ժողովն ալ խնդիրը իր ձեռնհասութենէն վեր գտնէ, այն ժամանակ ընդհանրական Կաթուղիկոսին կը դիմէ ստորագրեալ տեղեկագրով։

Յօդ. 30. Կրօնական ժողովոյ ամեն տեսակ տեղեկագիրները՝ միշտ անդամոց մեծագոյն մասին կողմէն ստորագրեալ պիտի ըլլան։

Յօդ. 31. Թէ Կոստանդնուպօլսոյ և թէ գաւառներու մէջ՝ վարդապետի ձեռնադրութեան համար պէտք եղած հրամանը ազգային կրօնական ժողովոյ կողմէն կը տրուի։ Իսկ քահանայի ձեռնադրութեան համար՝ եթէ Պօլսոյ մէջ է՝ նոյն կրօնական ժողովէն, և եթէ գաւառներու մէջ է՝ տեղւոյն կրօնական ժողովէն կը տրուի։

Յօդ. 32. Մինչև որ եկեղեցւոյ մը քահանաներն ու թաղական խորհուրդը նոր քահանայ ձեռնադրել տալու կարևորութիւնը չտեսնեն, և ստորագրեալ տեղեկագրով կրօնական ժողովոյ խնդիր չընեն, ձեռնադրութեան հրաման չտրուիր։

Յօդ. 33. Կրօնական ժողովը կընտրէ Կոստանդնուպօլսոյ եկեղեցեաց քարոզիչ վարդապետներն ու աւագերէցները, և Պատրիարքը կանուանէ զանոնք։

Յօդ. 34. Կրօնական ժողովոյ մէջ ամեն տեսակ ընտրութիւն գաղտնի քուէարկութեամբ կըլլայ։

Յօդ. 35. Կրօնական ժողովը կանոնագիր մը պէտք է շինէ եկեղեցականաց ներկայ վիճակին բարեկարգութեան և ապագային անդորրութեանը համար, որպէս զի իրենց հոգեւորական պաշտօնները կարենան ձրի կատարել։

Ե. Քաղաքական ժողով.

Յօդ. 36. Քաղաքական ժողովը կը բաղկանայ ազգային գործոց և Տէրութեան օրինաց տեղեակ քսան աշխարհականներէ։

Յօդ. 37. Քաղաքական ժողովոյ անդամները գաղտնի քուէարկութեամբ և քուէից բացարձակ առաւելութեամբ ազգային ընդհանուր ժողովոյ մէջ կընտրուին, և տեղեկագիրը Պատրիարքի կողմէն Բարձրագոյն Դրան մատուցանելով՝ Կայսերական հրամանաւ կը հաստատուին։

Յօդ. 38. Քաղաքական ժողովը երկու տարին անգամ մը ապրիլի վերջը ամբողջ կը լուծուի, և մայիսի սկիզբը կը նորոգուի։

Այս ժողովոյ անդամները երկու տարի անցնելէն ետքը նորէն կրնան ընտրուիլ։ Եւ թէպէտ առջի երկու տարին քաղաքական ժողովոյ համար վերընտրելի չեն, բայց ուրիշ որ և է ազգային պաշտօնի մէջ կրնան գործածուիլ։

Յօդ. 39. Եթէ քաղաքական ժողովոյ անդամներէն մէկը, առանց բանաւոր պատճառ իմացունելու գրով, երեք անգամ իրարու վրայ ներկայ չը գտնուի, նոյն ժողովոյ ատենապետի կողմէն անոր նամակ գրուելով՝ չ'գալուն պատճառը կը հարցուի։ Եթէ պատասխան չառնուի, երկրորդ գրութեամբ իմաց կը տրուի իրեն որ՝ եթէ յաջորդ նիստին ալ

ներկայ չգտնուի, իբրև հրաժարեալ պիտի համարուի, և եթէ դարձեալ չներկայանայ, հրաժարականը տուած պիտի սեպուի։

Յօդ. 40. Երբ քաղաքական ժողովոյ հրաժարական տուող կամ ուրիշ պատճառաւ պակսող անդամոց թիւը երեքի հասնի, անոնց տեղ ուրիշ անդամներ կընտրուին ընդհանուր ժողովէ։ Բայց մինչև որ այս ընտրութիւնն ըլլայ, քաղաքական ժողովոյ մէջ բոլոր անդամոց մեծագոյն մասը կը բնտըռուի։

Յօդ. 41. Քաղաքական ժողովոյ պաշտօնն է ազգային քաղաքական գործոց ընդհանուր տեսչութիւնը, իւր պարտաւորութիւնքն են ազգին բարեկարգութեան և յառաջադիմութեան մտադրութիւն և փոյթ ունենալ, իր տեսչութեան տակ գտնուող խորհրդոց կողմէն մատուցուած ազգօգուտ առաջարկութիւնները ուշադրութեամբ քննել, և անոնց կարևորութիւնը յայտնուելէն ետքը՝ հաստատել կամ գործադրութեան արգելքները բառնալու ջանք ընել։

Յօդ. 42. Քաղաքական ժողովը իրեն եկած գործերը որ խորհրդոյ վերաբերեալ ըլլան՝ քննուելու համար այն խորհրդոյն կը յանձնէ, և մինչև որ անոր կարծիքը չառնու՝ չկրնար գործադրութեան ձեռնարկել։ Եւ թէպէտ կըրնայ իրաւացի պատճառներով հերքել մէկ խորհրդոյ ըրած որոշումը, բայց ինքնին ուրիշ տնօրէնութիւն չկրնար ընել նոյն նիւթին վրայ, և կը պարտաւորի դարձեալ նոյն խորհրդոյն յանձնել գործը։ Քաղաքական ժողովը չը կրնար նաև փոխել կամ լուծել ազգային խորհուրդներէն մէկը, քանի որ չտեսնէ զայն Սահմանադրութեան հիմնական սկզբանց հակառակ ընթացքի մէջ։ Բայց երբ տեսնէ անոնց մէկը այսպիսի ընթացքի մէջ առաջին անգամին՝ բացատրութիւն կուզէ նոյն խորհրդոյ ատենապետէն, երկրորդ անգամին՝ անոր գրով ազդարարութիւններ ընելով 'ի կանոնապահութիւն կը հրաւիրէ, իսկ երրորդին՝ անդամները կփոխէ, միայն թէ այս

մասին ունեցած պատճառները պիտի բացատրէ ընդհանուր ժողովոյ ներկայացնելու երկամեայ տեղեկագրին մէջ։

Յօդ. 43. Քաղաքական ժողով, երբ իրեն եկած քաղաքական գործերէն կարեւոր խնդրոյ մը լուծումը իր ձեռնհասութենէն վեր դատէ, ընդհանուր ժողովոյն կը դիմէ։

*Զ. Քաղաքական ժողովոյ կողմէն կազմուած ազգային խորհուրդք եւ հոգաբարձութիւնք.*

Յօդ. 44. Ուսումնական, տնտեսական եւ դատաստանական գործոց եւ վանօրէից տեսչութեան համար չորս խորհուրդ, եւ մատակարարութեան պաշտօնով՝ երեք հոգաբարձութիւն պիտի հաստատուի քաղաքական ժողովոյ կողմէն։ Այս խորհրդոց եւ հոգաբարձութեանց անդամները երկու տարի պաշտօն կը վարեն այն պայմանաւ՝ որ ամեն տարեգլուխ կիսով չափ նորոգուին։

Դատաստանական խորհրդոյ նախագահը Կ. Պոլսոյ Պատրիարքի փոխանորդն է։

*1. Ուսումնական խորհուրդ.*

Յօդ. 45. Ուսումնական խորհուրդը եօթն ուսումնական աշխարհականներէ կը բաղկանայ։

Ուսումնական խորհրդոյն պաշտօնըն է Հայոց ազգին դաստիարակութեան եւ կրթութեան ընդհանուր տեսչութիւնը։ Իր պարտաւորութիւնքն են ազգային վարժարանաց բարեկարգութեանը հսկել, թէ մանչ եւ թէ աղջիկ տղայոց դաստիարակութեանը հոգ տանելու նպատակաւ հաստատուած ընկերութիւններուն խրախոյս տալ եւ ձեռնտու ըլլալ, դպրատանց դաստիարակներուն կայութիւնը լաւցունելու եւ ապագայն անդորրելու խնամ տանել, ազգին մէջ յաջողակ եւ քաջահմուտ դասատուներ հասցունելու, եւ դպրոցական դասագիրքեր պատրաստելու ջանք եւ փոյթ ունենալ։

Ուսումնական խորհուրդը Ազգային վարժարանաց մէջ ուսմունքնին լրացունող աշակերտաց վկայական կուտայ,

ուսմանց դասագիրքերը կորոշէ, և տարեկան քննութիւնները կը կատարէ։

Իսկ կրօնական ուսմանց համար կրօնական ժողովին կը դիմէ, վասն զի այս ժողովը կ'որոշէ կրօնական գիտութեանց դասագրքերը և դասատուները, քննութիւնները կ'ընէ և վկայականը կուտայ։

## 2. Տնտեսական խորհուրդ.

Յօդ. 46. Տնտեսական խորհուրդը կը բաղկանայ եօթն տնտեսագէտ աշխարհականներէ, զորս քաղաքական ժողովը կընտրէ քուէից առաւելութեամբ։

Տնտեսական խորհրդոյն պաշտօնն է՝ Կ. Պօլսոյ մէջ գտնուած ազգային բոլոր հաստատութեանց և անոնց կալուածներուն մատակարարութեան ընդհանուր տեսչութիւնը։ Իր պարտաւորութիւնն է՝ նոյն հաստատութեանց բարեկարգութեանը անխոնջ հսկել և հոգ տանիլ։

Տնտեսական խորհուրդը պէտք է հոգ տանի որ ամեն ազգային կալուած օրինաւոր կալուածագիր ունենայ։ Թէ Կ. Պօլսոյ և թէ գաւառներու մէջ գտնուած ազգային անշարժ ստացուածոց կալուածագրերուն օրինակները՝ տնտեսական խորհրդոյ ձեռօք ժողվուելով պատրիարքարանի դիւանատան մէջ պիտի պահուին։

Ազգային որ և է կալուածոյ գնումն ու վաճառումը չկրնար տեղի ունենալ, առանց տնտեսական խորհրդոյ գիտութեան, քաղաքական ժողովոյ հաճութեան և Պատրիարքի կընքով հաստատութեան։

Այս տրամադրութեանց ուժովը եկեղեցիներու միութէվէլլիութիւն ըսուած բանը վերցուած է Հայոց ազգին համար։

Կ. Պօլսոյ և շրջակայից մէջ՝ ազգային որ և է շինութեանց կամ վերանորոգութեանց չկրնար ձեռնարկուիլ, առանց գիտութեան տնտեսական խորհրդոյ և հաճութեան քաղաքական ժողովոյ։

Տնտեսական խորհուրդը՝ ազգային ելևմտից, կտակաց և

հիւանդանոցի հոգաբարձութիւններուն նաև թաղական խորհուրդներուն մատակարարութեանը վրայ հսկողութիւն պիտի ընէ, և ասոնց ամեն մէկէն որոշեալ ժամանակներ համար պահանջելով, քաղաքական ժողովոյն պիտի հաղորդէ։

Տնտեսական խորհուրդը տարեգլխէն երկու ամիս առաջ՝ յետագայ տարուայ մէջ ըլլալիք հասոյթն ու ծախքը ելեմըտից հոգաբարձութենէն սաուգելով, հաշուեկշիռը պիտի պատրաստէ և քաղաքական ժողովոյն ներկայացունէ։

3. Դատաստանական խորհուրդ.

Յօդ. 47. Դատաստանական խորհուրդը կը բաղկանայ ութ իրաւագէտ, և ամուսնացեալ և քառասուն տարին լրացուցած անձերէ, որոց չորսը աշխարհական և չորսը եկեղեցական պիտի ըլլան։

Դատաստանական խորհրդոյ նախագահը Պատրիարքի փոխանորդն է, և անդամներուն բոլորն ալ խառն ժողովոյ կողմէն կընտրուեն քուէից առաւելութեամբ։

Դատաստանական խորհրդոյ պաշտօնն է՝ ընտանեկան վէճերը լուծել և Բ. Դրան կողմէն պատրիարքարան յանձնուած դատերը յանձնարարութեան համեմատ քննել և որոշել։

Երբ պատահի այնպիսի դատ մը զոր դատաստանական խորհուրդը իր ձեռնհասութենէն վեր դատէ, ըստ պահանջման խնդրոյն կամ կրօնական կամ քաղաքական և կամ խառն ժողովոյն յանձնուելուն հարկաւորութիւնը կը ցուցնէ։

Եթէ դատաստանական խորհրդոյ մէջ որոշուած դատի մը դէմ բողոքէ դատապարտեալը, խնդիրը վերստին կը քըննուի յիշեալ ժողովներէն մեկուն մէջ՝ որուն որ կը վերաբերի։

4. Վանօրէից խորհուրդ.

Յօդ. 48. Վանքերն ազգիս սեպհական ստացուածքն ըլլալով, ազգին կվերաբերի անոնց մատակարարութեան, հա-

սութից և ծախուց ընդհանուր տեսչութեան և քննութեան իրաւունքը։

Ըստ որում հարկաւոր է որ ամեն վանք իրեն համար յատուկ կանոններ ունենայ, կեդրոնական վարչութեան կրօնական և քաղաքական ժողովները խառն ժողով կազմելով, իւրաքանչիւր վանքի միաբանութեան, նաև վանօրէից խորհուրդին կարծիքն առնելէ ետքը, պէտք եղած կանոնադրութիւնը կը պատրաստեն, և ազգային ընդհանուր ժողովոյ հաստատել կուտան։

Սոյն կանոնադրութեանց հիմնական սկզբունքն են.

Ա. Իւրաքանչիւր վանքի մասնաւոր մատակարարութիւնը իր միաբանութեան կը վերաբերի։ Իսկ ամենուն վրայ ընդհանուր տեսչութիւն ընելու իրաւունքը կեդրոնական վարչութեան կը վերաբերի, որ կը գործադրէ վանօրէից խորհըրդին ձեռօք։

Բ. Իւրաքանչիւր վանքի վանահայրը իր միաբանութեան կողմէն կընտրուի և կեդրոնական վարչութեան խառն ժողովոյ հաւանութեամբը Պատրիարքի ձեռօք կը հաստատուի։

Վանահայր ըլլալու անձը պէտք է որ երեսունուհինգ տարին լրացուցած, և Օսմանեան Տէրութեան հպատակ վարդապետներէն ըլլայ։

Գ. Բոլոր վանքերը ազգային բարոյական զարգացմանը ծառայելու պարտաւոր են, ուստի ամեն մէկը իր կարողութեան չափով՝ ունենալու է ընծայարան, թանգարան, տպարան, հիւանդանոց, և ասոնց պէս ուրիշ ազգօգուտ հաստատութիւններ։

Վանօրէից խորհուրդը կը բաղկանայ եօթն անձերէ, զոր քաղաքական ժողովը կընտրէ քուէից առաւելութեամբ։

Վանօրէից խորհուրդին պաշտօնն ու պարտաւորութիւնն է՝ իւրաքանչիւր վանքի կանոնաց գործադրութեանը հսկել և վերատեսչութիւն ընել, եկամուտները ու հասոյթները ստուգել, և ծախքերը քննել ու կանոնաւորել։

Վանօրէից խորհուրդը կընտրէ վանականներուն մէջէն

իւրաքանչիւր վանքի մատակարարութեան պաշտօնին համար պէտք եղած անձինքը։ Այսոնք վանահօր նախագահութեամբ՝ և իրենց վանքին՝ յատկացեալ կանոններուն համաձայն վանքը տնտեսելով, որոշեալ ժամանակներ հաշուեհամար կուտան վանօրէից խորհուրդին։

5. Ելևմտից Հոգաբարձութիւն.

Յօդ. 49. Ելևմտից հոգաբարձութիւնը կը բաղկանայ եօթն հաշուագէտ անձինքէ, զոր քաղաքական ժողովը կընտրէ քուէից առաւելութեամբ։

Ելևմտից հոգաբարձութեան պաշտօնն է ազգային կեդրոնական սընդուկին տնտեսութիւնն ու համարակալութիւնը։

Այս սնդուկին մուտքն են՝ ազգային ընդհանուր տուրք, Կոստանդնուպօլսոյ պատրիարքական դիւանատան հասոյթք, և առանց մասնաւոր տեղ մը որոշելու ազգին անուանը եղած կտակ կամ նուէր։ Ելքն են՝ պատրիարքարանի և դիւանատան սովորական ծախք, կեդրոնական, վարչութեան ձեռքը եղած ազգային հաստատութեանց և կարօտեալ թաղերու տրուելիք նպաստ, և զանազան ուրիշ պատահական ծախք։

Ելևմտից հոգաբարձութիւնը կը հաւաքէ ամեն այս հասոյթները, և իր ձեռօք կըլլան յիշեալ ծախքերը, միշտ տնտեսական խորհուրդին գիտութեամբը և քաղաքական ժողովոյ հաւանութեամբը։

Ելևմտից հոգաբարձութիւնը պարտաւոր է իր տնտեսութեան յանձնուած ազգային սնդուկին հաշիւը տոմարակալութեան կանոնաւ կարգադրել, և որոշեալ ժամանակներ հաշուեցուցակ ներկայացնել տնտեսական խորհուրդին, որ ստուգելով և վաւերացունելով կը հաղորդէ ի քաղաքական ժողովոյն։

### 6. Կտակաց Հոգաբարձութիւն.

Յօդ. 50. Կտակաց Հոգաբարձութիւնը կը բաղկանայ եօթն անձինքէ, որոց երեքը եկեղեցական և չորսը աշխարհական՝ խառն ժողովոյ կընտրուին քուէից առաւելութեամբ։

Կտակաց Հոգաբարձութեան պաշտօնն է՝ ազգային կտակաց տնօրէնութիւնը։ Իր պարտաւորութիւնն է՝ կտակաց օրինաւոր կերպիւ և կտակարարին նպատակին և դիտաւորութեանը համեմատ գործադրութեանը հսկել։

Կտակաց Հոգաբարձութեան համար պետք եղած մասնաւոր կանոնադրութիւնը՝ խառն ժողովը պիտի պատրաստէ կտակաց Հոգաբարձութեան և Տնտեսական խորհուրդին կարծիքն առնելով, և Ընդհանուր ժողովը պիտի հաստատէ։

Կտակաց Հոգաբարձութիւնը որոշեալ ժամանակներ իր պաշտօնին վերաբերեալ հաշիւները պիտի ներկայացունէ Տնտեսական խորհուրդին, որ ստուգելով և վաւերացունելով պիտի հաղորդէ Քաղաքական ժողովոյն։

### 7. Հիւանդանոցի Հոգաբարձութիւն.

Յօդ. 51. Հիւանդանոցի Հոգաբարձութիւնը կը բաղկանայ ինն անձինքէ, զոր Քաղաքական ժողովը կընտրէ քուէից առաւելութեամբ։ Ասոնք երկուքը վկայեալ բժիշկ պիտի ըլլան։

Հիւանդանոցի Հոգաբարձութեան պաշտօնն է՝ ազգային Հիւանդանոցը և անոր սեպհական կալուածներն ու եկամուտները տնտեսել, և անոնց հասոյթովն ու ազգային սընդուկին նպաստիւը մատակարարել զայն։

Այս հաստատութիւնը չորս շրջանակի բաժանուելով, մէկը՝ աղքատիկ հիւանդները դարմանելու, երկրորդը՝ ծեր և անկար աղքատները պատսպարելու, երրորդը՝ խելագարները խնամելու, և չորրորդը՝ որբ և անտերունչ տղաքը դաստիարակելու պիտի յատկանան։

Այս շէնքին կարգադրութիւնն ու տնտեսութիւնը բժըշ-

կական և առողջապահիկ կանոնաց համեմատ պիտի տնօրինուին։

Վիճակազգային Հոգաբարձութիւնը այս հաստատութեան տնտեսութեան մասին՝ Տնտեսական խորհուրդին, և դաստիարակութեան մասին՝ Ուսումնական խորհուրդին պատասխանատու է, և սոյն խորհրդոց որոշեալ ժամանակներ համար պիտի տայ իր գործողութեանց վրայ։

Է. Թաղական խորհուրդք.

Յօդ. 52. Թաղական խորհուրդները կը բաղկանան ըստ տեղւոյն՝ հինգէն մինչև տասներկու անդամներէ։ Թաղական խորհուրդին պաշտօնն է՝ թաղին ժողովրդեան ազգային գործոց մատակարարութիւնը եկեղեցւոյ և դպրատան Հոգաբարձութիւնը, աղքատաց խնամակալութիւնը, և ազգայնոց մէջ պատահած վէճերուն քննութիւնն ու խաղաղարարութիւնը։

Իր պարտաւորութիւնքն են՝ թաղին եկեղեցւոյ պայծառութեանը խնամ տանել, թաղին մէջ թէ աղջիկ և թէ մանչ տղայոց դաստիարակութեան համար՝ դպրատուններ հաստատելու ջանք ընել, և թաղին կարօտեալ ընտանեաց ձեռնտուութիւն ընել։

Յօդ. 53. Ամեն թաղ մէկ մէկ սնտուկ պիտի ունենայ՝ թաղական խորհուրդին տնօրէնութեանը տակ։

Այս սնդուկին մուտքն են՝ թաղին ժողովրդեան կողմէն տրուած թաղական տուրքը, եկեղեցւոյ և Դպրատան կալուածոց եկամուտները, եկեղեցւոյն հասոյթները, կտակաւ կամ ուրիշ կերպիւ եղած նուէրները և այլն։ Ելքն են թաղին եկեղեցւոյն և դպրատանց ծախքն ու աղքատաց տրուելիք օգնութիւնները։

Ամեն թաղական խորհուրդ իր թաղին մէջ եղած ծնընդոց, ամուսնութեանց և վախճանմանց արձանագրութիւնը պիտի ընէ կանոնաւոր կերպով մասնաւոր տումարի մը մէջ։

Յօդ. 54. Թաղական խորհուրդները՝ իրենց պաշտօնին

վերաբերեալ գործոց մէջ տեսուչ խորհուրդներուն հետ ուղղակի յարաբերութիւն ունին, այսինքն՝ դպրատանց համար՝ ուսումնական խորհուրդին հետ, տնտեսական և դրամական գործոց համար՝ տնտեսական խորհուրդին հետ. դատի վերաբերեալ գործոց համար, դատաստանական խորհուրդին հետ։ Եւ ասոնց ամէն մէկին որոշեալ ժամանակներ համար պիտի տան իւրաքանչիւրին վերաբերեալ գործոց վրայ։

Յօդ. 55. Իւրաքանչիւր թաղական խորհուրդ իր թաղի ժողովրդեան կողմէն կ'ընտրուի։

Ամեն ազգային անհատ որ քսան և հինգ տարին լրացուցած է, և ըստ 67-դ յօդուածոյ Սահմանադրութեան՝ ընտրողութեան իրաւունքէն դատաստանապէս զրկուած չէ, իրաւունք ունի մասնակից ըլլալ ընտրութեան թաղական խորհրդոյ անդամոց։

Յօդ. 56. Թաղական խորհրդոց պարտաւորութիւնն ու ընթացքը սահմանելու համար պէտք եղած կանոնադրութիւնը կրօնական և քաղաքական ժողովներուն ձեռօք պիտի շինուի։

Թաղական խորհրդոց անդամներուն պաշտօնը չորս տարի կը տևէ, հինգերորդ տարւոյն սկիզբը կը նորոգուին, և անմիջապէս վերընտրելի են։

## Ը. Ազգային ընդհանուր ժողով.

### Կազմութիւն եւ պարտաւորութիւն.

Յօդ. 57. Ազգային ընդհանուր ժողովը հարիւր քառասուն երեսփոխաններէ կը բաղկանայ, որոնց՝

Ա. Մէկ եօթներորդ մասը, այսինքն քսանը, եկեղեցական երեսփոխանք են, զոր Կոստանդնուպօլսոյ մէջ գտնուող եկեղեցականք կ'ընտրեն։

Բ. Երկու եօթներորդ մասը այսինքն քառասունը գաւառներէն գալիք ազգային երեսփոխանք են։

Գ. Չորս եօթներորդ մասը, այսինքն ութսունը, Կոստանդնուպօլսոյ թաղերէն ընտրուած երեսփոխանք են։

Յօդ. 58. Կրօնական և քաղաքական ժողովոց անդամները ընդհանուր ժողովին ներկայ կը գտնուեն. բայց եթէ երեսփոխան ընտրուած չեն՝ ընդհանուր ժողովին մէջ քուէ չունենն։

Յօդ. 59. Ընդհանուր ժողովը նիստ չկրնար ընել՝ մինչև որ անդամոց մեծագոյն մասը, այսինքն գոնէ եօթանասունումէկ հոգի ներկայ չըլլայ։

Յօդ. 60. Ընդհանուր ժողովին պաշտօնն է՝ Պատրիարքը, Կաթուղիկոսը և ազգին գլխաւոր պաշտօնատարները, և կրօնական ու քաղաքական ժողովոց անդամները ընտրել, ազգային ժողովոց վարչութեանը հսկողութիւն ընել, սոյն ժողովներուն վերաբերեալ, բայց իրենց ձեռնհասութենէն վեր համարուած գործերը որոշել և վճռել. և ազգային Սահմանադրութիւնը անխախտ պահել։

Յօդ. 61. Ընդհանուր ժողովը կը գումարուի.

Ա. Ըստ վաղեմի սովորութեան ամեն երկու տարին անգամ մը, ապրիլ ամսոյ վերջերը՝ ազգային վարչութեան երկամեայ ընթացքին տեղեկագիրը մտիկ ընելու, և ելևմտական պաշտօնակալաց ձեռօք ժողվուած և ծախս եղած գումարներուն ընդհանուր հաշիւը տեսնելու և քննելու, կրօնական և քաղաքական ժողովոց բոլոր անդամները փոխելով՝ ուրիշներ ընտրելու, և յետագայ երկու տարուան մէջ ազգային տուրքը ինչպէս տնօրինուելիքը սահմանելու համար։

Սոյն երկ-տարեկան ժողովը սկսած օրէն մինչև երկու ամիս տևելով իր նիստերը կը վերջացունէ։

Ընդհանուր ժողովոյ այս նիստերուն մէջ՝ միանգամայն ազգային վարչութեան ժողովներուն անդամ գտնուող երեսփոխանները ամեն խնդրոյ վրայ կրնան խօսիլ, բայց տուրքի և ընտրութեան խնդիրերէն զատ՝ ուրիշ խնդիրներու մէջ չեն կրնար քուէ տալ։

Բ. Կաթուղիկոսի ընտրութեան մասնակից ըլլալու համար։

Գ. Կոստանդնուպօլսոյ և Երուսաղէմի Պատրիարքները ընտրելու համար։

Դ. Կրօնական և քաղաքական ժողովոց մէջ, կամ Պատրիարքին ու ժողովոց մէջ պատահած անհամաձայնութիւնը բառնալու համար։ Սոյն պարագայից մէջ՝ անհամաձայնութեան ենթակայ եղող կողմերը ընդհանուր ժողովոյ մէջ խօսք միայն ունին և ոչ քուէ։

Ե. Ազգային Սահմանադրութեան վերաքննութեանը համար։

Եւ վերջապէս այնպիսի խնդիրներու համար որոց վրայ որոշում տալը ընդհանուր ժողովոյն կը վերաբերի։

Սակայն այս տեսակ արտաքոյ կարգի նիստերուն տեղի ունենալէն առաջ՝ ընդհանուր ժողովոյ գումարման պատճառը պատրիարքարանի կողմէն Բարձրագոյն Դրան իմաց տրուելով, անոր հաճութիւնը կառնուի։

Յօդ. 62. Պատրիարքը կը գումարէ ընդհանուր ժողովը, կրօնական և քաղաքական (մէկուն) ժողովոց մէկուն համահաճութեամբը, և կամ նոյն իսկ ընդհանուր ժողովոյ անդամոց մեծագոյն մասին խնդրանօքը։ Միայն թէ այս կերպ արտաքոյ կարգի ժողով գումարելէն առաջ՝ գումարման պատճառը Բարձրագոյն Դրան իմաց տրուելով, անոր հաճութիւնը առնուլ հարկ է։

## Ընտրութիւն եկեղեցական երեսփոխանաց.

Յօդ. 63. Կոստանդնուպօլսոյ մէջ գտնուող բոլոր եկեղեցականք՝ Պատրիարքի հրաւիրանօք ապրիլ ամսոյ վերջը որոշեալ տեղ մը կը գումարուին, և գաղտնի քուէարկութեամբ ու քուէից բացարձակ առաւելութեամբ ազգային ընդհանուր ժողովոյ եկեղեցական անդամները կընտրեն, թէ եպիսկոպոսներէն, թէ վարդապետներէն, և թէ քահանա-

ներքէն, բայց պէտք է որ ընտրելիք՝ դուրսէրը պաշտօն չու-նենան, և հասակաւ երեսուն տարին լրացուցած, և գոնէ հինգ տարի առաջ ձեռնադրուած ըլլան, և որ է դատաս-տանի տակ չըր գտնուին։

Յօ. 64. Եկեղեցական երեսփոխանաց պաշտօնը տասն տարի կը տևէ, և երկու տարին անգամ մը՝ հինգերորդ մա-սը փոխուելով կը նորոգուի։ Այս հինգերորդ մասը առաջին ութ տարիներուն մէջ վիճակաւ պիտի որոշուի և հանուի, և թէ վիճակաւ ելած և թէ տասնամեայ պաշտօնը լրացու-ցած անդամները անմիջապէս վերընտրելի են։

## Ընտրութիւն աշխարհական երեսփոխանաց.

### Ա. Ընտրողութեան եւ ընտրելութեան պայմանք.

Յօդ. 65. Ընտրողական իրաւանց հիմն կը բռնուին ազ-գային տուրքը, և անձնական արժանիքը։

Ազգային տուրքը ընտրողութեան իրաւունք տալու հա-մար, պէտք է որ ընտրողը տարին գոնէ եօթանասուն ու հինգ ղուռուշ ընդհանուր տուրք վճարէ։

Ընտրողութեան անձնական արժանեօք իրաւունք ու-նեցողներն են՝ Արքունի դիւաններուն և Տէրութեան ուրիշ պաշտօններուն մէջ գրտնուողները, վկայեալ բժիշկները, օգ-տակար գրքերու հեղինակները, դպրատանց ուսուցիչները, և ազգին օգտակար ծառայութիւններ մատուցած անձինք։

Յօդ. 66. Ընտրողութեան իրաւունք ունին քսան ու հինգ տարին լրացուցած անձինք, սակայն ընտրողք հարկ է որ Օսմանեան Տէրութեան հպատակ ըլլան։

Յօդ. 67. Ընտրելու իրաւունքէն դատաստանապէս զըր-կեալ են հետևեալ չորս դաս անձինքը։

Ա. Քրէական յանցանօք դատապարտեալները, որոնք ըստ պատժական օրինաց տէրութեան՝ քաղաքականապէս մեռեալ կը համարուին,

Բ. Ազգային գործոց մատակարարութեանը մէջ նենգութեամբ բռնուած, և ազգային ժողովներէն մէկուն կողմէն դատապարտուած անձինք. որոց համար ազգային գործերու մէջ չը գործածուիլը վճռուած ըլլայ դատող ժողովին կողմէն։

Գ. Տէրութեան դատարաններուն կողմէն զգաստացուցիչ պատիժ կրողները, որոց պատժոյն պայմանաժամը դեռ լրացած չէ։

Դ. Խելագարութեան պատճառաւ անքաւական դատեալները, որոց կատարելապէս առողջացեալ ըլլալը օրինաւոր կերպիւ հաստատուած չըլլայ։

Յօդ. 68. Ընտրելի են ազգին այն ամեն անհատները, որոնք երեսուն տարին լրացուցած ըլլալով, Օսմանեան հպատակ, Տէրութեան օրինացը տեղեակ, և ազգային գործոց հմուտ են, և ընտրողութեան իրաւունքէն ըստ 67-դ յօդուածոյ զրկուած չեն։

Բայց Կոստանդնուպօլսոյ թաղերուն կողմէն ընտրուելիք ութսուն երեսփոխանաց գոնէ եօթը՝ ատենաւոր անձինք ըլլալու են։

*Բ. Նշանակ ընտրութեան.*

Յօդ. 69. Կոստանդնուպօլսոյ թաղերէն և գաւառներէն ընտրուելիք երեսփոխանաց բաշխման ցուցակը շինելու համար, ամեն երկու տարի փետրուար ամսոյ սկիզբը՝ ազգային կրօնական և քաղաքական ժողովները, տեսուչ խորհրդոց ատենապետներուն հետ մեկտեղելով համախորհուրդ ժողով կը կազմեն, և պատրիարքական դիւանատան ընդհանուր ազգահամարին նայելով, ամեն մէկ թաղին ու գաւառին կողմէն քանի երեսփոխան ընտրուելիքը կ'որոշեն, Պօլսոյ թաղերուն համար՝ ընտրողաց թիւը, և գաւառներուն համար՝ բնակչաց հիմն բռնելով։ Եւ այս կերպով շինուած ցուցա-

կին համեմատ՝ իւրաքանչիւր թաղի և գաւառի տալու երեսփոխանաց թիւը Պատրիարքի ձեռօք անոնց կը ծանուցանեն։

Երեսփոխանաց պաշտօնը տասն տարի կը տևէ, և երկու տարին անգամ մը՝ թէ Կոստանդնուպօլսոյ թաղերէն և թէ գաւառներէն ընտրուած ազգային երեսփոխաններուն հինգերորդ մասը կը փոխուի և կը նորոգուի։ Այս հինգերորդ մասին ընտրութիւնը պիտի կատարուի ամեն երկու տարին անգամ մը, թէ թաղերուն, և թէ գաւառներուն կողմէն, մէջերնին փոփոխակի կարգ պահելով։

Այս փոփոխակի կարգը առաջին ութ տարիներուն մէջ՝ վիճակաւ պիտի որոշուի, սա պայմանաւ որ եթէ թաղի մը ընտրողները և կամ գաւառի մը բնակչաց թիւը աւելցած կամ պակսած է, այն թաղին կամ գաւառին տալու երեսփոխանաց թիւն ալ համեմատութեամբ պիտի աւելնայ կամ պակսի։

Վախճանեալ կամ հրաժարեալ երեսփոխանաց տեղ ընտրուելիք անձինքն ալ՝ ամեն տարի տարեգլխէն երկու ամիս առաջ պէտք է ընտրուին։

Թաղական երեսփոխանները Կոստանդնուպօլսոյ թաղերուն բնակչաց կողմէն պիտի ընտրուին։ Իսկ գաւառական երեսփոխանները իւրաքանչիւր գաւառի ընդհանուր ժողովոյ կողմէն պիտի ընտրուի։

Յօդ. 70. Թէ Պօլսոյ թաղերէն և թէ գաւառներէն ուղղուած երեսփոխանները՝ հարկ չէ որ ընտրող թաղին կամ գաւառին բնակիչներէն ըլլան. բաւական է որ Կոստանդնուպօլսոյ մէջ բնակին, իրենց ներկայացուցած թաղին կամ գաւառին ազգային գործոցը հմուտ ըլլան, և ազգասիրութեամբ, ուղղութեամբ և արդարախոհութեամբ՝ ընտրողաց յարգն ու համարումը ստացած անձինք ըլլան։

Ազգային երեսփոխանները ոչ թէ գիրենք ընտրող թաղին կամ գաւառին երեսփոխանները կը համարուին ընդհանուր ժողովոյ մէջ, այլ ազգին երեսփոխաններն են՝ համազօր իշխանութեամբ։

Յօդ. 71. Երկու տարին անգամ մը Պօլսոյ թաղերուն կողմէն ընտրուելիք երեսփոխանաց հնգերորդ մասին համար՝ Պատրիարքը փետրուար ամսոյ մէջ ընտրող թաղերուն ամեն մէկուն կը ծանուցանէ քանի երեսփոխան ընտրելիքը՝ ընտրողութեան և ընտրելութեան պայմաններն ալ յիշեցունելով։

Այս ծանուցման վրայ՝ թաղական խորհուրդները երեսփոխանաց ընտրութեանը կը ձեռնարկեն։ Բայց ընտրական գործողութեանց համար թաղին քարոզիչը՝ կամ անոր չըգտնուած ժամանակը՝ աւագ երէցը նախագահութիւն կընէ, և թաղին բնակիչներէն երեքէն մինչև վեց պատուաւոր անձինք թաղական խորհուրդին վրայ կաւելցուին։

Այս կերպով կազմուած ընտրողական ժողովներուն ամեն մէկը՝ իր թաղին մէջ ընտրողութեան իրաւունք ունեցողներն ստուգելով, այբուբենի կարգաւ ընտրողաց ցանկ մը կը պատրաստէ, և ութ օր բաց մնալու պայմանաւ թաղական խորհրդարանի մէջ կախել կուտայ։

Ընտրողական ժողովը ընտրողաց որոշումը դիւրացունելու համար՝ ուզուած երեսփոխաններուն թիւէն եռապատիկ աւելի ընտրելեաց ցուցակ մըն ալ կը պատրաստէ, և այն ալ կախել կուտայ խորհրդարանին մէջ։ Սակայն ընտրողք ամենևին պարտաւորեալ չեն ընտրելեաց ցուցակին հետևելու։

Գաւառներուն մէջ ալ՝ գաւառական ընդհանուր ժողովոց անդամները միևնոյն կերպով կընտրուին։

### Գ. Քուէարկութիւն.

Յօդ. 72. Ընտրողաց ցանկին բացուելէն շաբաթ մը ետքը՝ կիւրակէ առաւօտ, ժամերգութեան աւարտմանէն ետքը. թաղական խորհրդարանի մէջ քուէարկութեան կըսկսուի սապէս։

Թաղական խորհրդոյ նախագահը՝ ընտրողաց ցանկը ձեռքըն առած կարգաւ կը կանչէ ընտրողները, որք ընտրողաց ցանկին մէջ՝ իրենց անուան առջև ստորագրելէն վերջը, քա-

նի երեսփոխան ուղուած է նէ՝ այնքան անձանց անուն թղթի մը վրայ կը գրեն վերէն ի վար կարգաւ, և ամեն մէկ անուան առջև մականուն, բնակութիւն և արուեստ նշանակելով՝ թուղթը կը ծալլեն, և յատկապէս պատրաստուած քուէտուփին մէջ կը ձգեն։ Իսկ եթէ ընտրողք պատճառաւ իւիք չը կրնան գալ խորհրդարան, ստորագրեալ նամակաւ մը քուէնին կուղարկեն։

Յօդ. 73. Քուէարկութիւնը գաղտնի է, ուստի պէտք է որ քուէարկուք առանձին գրեն իրենց քուէթուղթը, որպէս զի ուրիշ մը չը կրնայ տեսնել գրած անունները։

Յօդ. 74. Քուէարկութիւնը սկըսած օրը պէտք է լմննայ։ Ընտրողներէն ով որ իր քուէն նոյն օրը չը ներկայացունէ, ետքը բողոքելու իրաւունք չունի։

Յօդ. 75. Ոչ ոք պիտի կարենայ միանգամայն երկու թաղի մէջ քուէ տալ։

Յօդ. 76. Ընտրութեան մասին միացեալ թաղերը և թեմերը՝ եթէ իրարու մօտ ըլլան, ընտրողները մէկ տեղ ժողովուելով քուէարկութիւն կընեն։ Իսկ եթէ իրարմէ հեռի ըլլան՝ իւրաքանչիւր թաղ կամ թեմ զատ քուէարկութիւն կընէ, և ետքը երկու կողման քուէարկութեանց արդիւնքը կը միացունեն։

Յօդ. 77. Քուէարկութիւնը կատարուելէն ետքը, նոյն օրը մի և նոյն նիստի մէջ՝ թաղական խորհուրդին առջև քուէտուփը կը բացուի, և այս բանիս համար որոշուած Քննիչները քուէներն համրելով, քուէարկուաց թուոյն հետ կը բաղդատեն։

Եթէ տարբերութիւն գտնուի, և թաղական խորհուրդը խարդախութեան կասկած ունենայ, մինչև առաջիկայ կիրակի՝ միւս օր մը նորէն քուէարկութիւն ընել կորոշուի։

Նմանապէս՝ եթէ ուղուած երեսփոխանաց թիւը առաջին անգամին չը լըցուի, մնացածին համար երկրորդ անգամ քուէարկութիւն կըլլայ միւս օր մը։

Յօդ. 78. Եթէ պատահի որ քուէարկուներէն մէկը պէտք եղածէն աւելի թուով անուն գրած ըլլայ իր քուէթուղթին մէջ, նոյն թիւէն վերջը եկած անունները անընդունելի են, նմանապէս անվաւէր կը համարուին այն քուէթուղթերը՝ որոց մէջ գրանուած անունները վերէն ի վար կարգաւ գրուած չեն։

Յօդ. 79. Քուէարկուաց թուոյն կէսէն աւելի քուէ ստացողներուն մէջէն՝ առաւելագոյն քուէ ստացող անձինք՝ երեսփոխան ընտրուած են։ Եւ եթէ երկու անձանց հաւասար քուէ տրուած ըլլայ, երիցագոյնը ընտրեալ է։

Յօդ. 80. Եթէ առաջին անգամ քուէարկութեամբ առաւելութիւն չստացուի, թաղական խորհուրդը, կընծանուցանէ առաւելագոյն քուէ ստացող երկու անձանց անունները, և երկրորդ քուէարկութիւնը օրինաւորապէս այն երկու անուանց վրայ կըլլայ։

Յօդ. 81. Ամեն թաղական խորհուրդ՝ իր թաղէն ընտրուած երեսփոխանաց անունները Պատրիարքին կը ներկայացունէ մասնաւոր տեղեկագրով մը. որուն մէջ պէտք է ճշտիւ նշանակուած ըլլայ ընտրեալներուն անունը, մականունը, բնակութիւնը, արհեստը, և քուէարկութեան բոլոր պարագաները։

Պատրիարքը այս տեղեկագիրը կը ներկայացունէ քաղաքական ժողովին, որ զանոնք քննելով կստուգէ երեսփոխանաց ընտրելութեան պայմանները։

Այսպէս ստուգուելէն ետքը, Պատրիարքը պաշտօնական կերպիւ կը ծանուցանէ երեսփոխանաց ամեն մէկուն ըստ օրինի ընտրութիւնը, և կը հրաւիրէ զանոնք ընդհանուր ժողովոյ ատեան կազմել որոշեալ օր մը։

Յօդ. 82. Ընդհանուր ժողովը իր առաջին նիստին մէջ՝ քաղաքական ժողովին քննած տեղեկագրերը մտիկ ընելով եղած ընտրութիւնները և երեսփոխանաց իշխանութիւնը կը վաւերացունէ, որով ընդհանուր ժողովը ըստ օրինի կազմուած կըլլայ։

Ընդհանուր ժողով կրնայ գումարուիլ, երբ Կոստանդնուպօլսոյ երեսփոխանց մեծագոյն մասը ընտրուած ըլլայ, առանց սպասելու գաւառական երեսփոխանց ընտրութեան վախճանին՝ որոց լուրը մէկ կողմէն Կոստանդնուպօլիս հասնելու վրայ կըլլայ։

Յօդ. 83. Եթէ մէկը քանի մը թաղերու կամ գաւառներու կողմէն ընտրուած ըլլայ, ինք կորոշէ որ թաղին կամ որ գաւառին երեսփոխանութիւն ընդունելը, եթէ ինք չուզէ որոշել, ընդհանուր ժողովը վիճակաւ կորոշէ։

Յօդ. 84. Երեսփոխանց անուան ցուցակը ընդհանուր ժողովոյ սրահին մէջ կախուած պիտի մնայ՝ այբուբենի կարգաւ շինուած, և իւրաքանչիւր անուան առջև պիտի նշանակուի հրաժարում, վախճանում, և այլ ինչ որ պատահի։ Այս ցուցակը երկու տարին անգամ մը պիտի նորոգուի։

## ԳԼՈՒԽ Բ.

### ԸՆԴՀԱՆՈՒՐ ԿԱՆՈՆՔ ԺՈՂՈՎՈՑ ԵՒ ԽՈՐՀՐԴՈՑ.

Յօդ. 85. Ամեն ժողով և խորհուրդ պիտի ունենայ ատենական դիւան մը, որ կը բաղկանայ մէկ ատենապետէ, մէկ ատենադպրէ, և երբեմն նաև ատենապետէ և ատենադպրի փոխանորդներէ։ Ասոնց ամենն ալ հարկաւ ժողովոյ անդամներէն պիտի ըլլան։

Ատենական դիւանը տարին անգամ մը կը նորոգուի, և անդամներն անմիջապէս վերընտրելի են։

Յօդ. 86. Առանց մեծագոյն մասի ներկայութեան ատեան չը կրնար կազմուիլ։

Յօդ. 87. Խնդիր մը լաւ քննուելէն, և անոր վրայ ներկայ ժողովականաց կարծիքը հասկցուելէն վերջը, քուէ կը դրուի, և ձայնից առաւելութեամբ որոշում կը տրուի։ Երբ ձայնից հաւասարութիւն պատահի, եթէ նախագահը

ներկայ է՝ անոր կարծեաց կողմը կը հակի որոշումը. եթէ ոչ՝ ատենապետին կողմը։

Յօդ. 88. Խառն ժողովոյ մէջ քննուած որ և է խնդրոյ որոշում տրրուելու համար, պէտք է որ երկու ժողովները զատ քուէարկութիւն ընեն։ Երբ երկուքին ալ մեծագոյն մասը միևնոյն որոշումը ըրած ըլլայ, խնդիրը լուծուած է, իսկ եթէ որոշումնին տարբեր ըլլայ, կարծեաց անհամաձայնութիւն կը համարուի, և հետևաբար խնդրոյն որոշումը ընդհանուր ժողովին կը ձգուի։

Խառն ժողովը օրինաւորապէս գումարուած համարուելու համար, պէտք է որ ժողովոց երկուքին ալ մեծագոյն մասը ներկայ գտնուին։

Յօդ. 89. Ընդհանուր ժողով գումարուելէն գոնէ վեց օր առաջ պէտք է որ պատրիարքարանի կողմէն հրաւիրանաց գրեր յուղարկուին անդամներուն։

## ԳԼՈՒԽ Գ.

### ԱԶԳԱՅԻՆ ՏՈՒՐՔ.

Յօդ. 90. Ամեն ազգային անհատ, որ չափահաս է և վաստակ ու շահու տէր, պարտական է տուրք մասնակից ըլլալ ազգային ծախուց։

Այս տուրքը տարեկան է, և բաշխման հիմն կը բռնուի իւրաքանչիւր անհատի կարողութիւնը։

Յօդ. 91. Ազգային տուրքը երկու տեսակ է, մէկը ընդհանուր՝ որ ընդհանուր ծախուց յատկացեալ է, և կը հաւաքուի պատրիարքարանի կողմէն, ազգային կեդրոնական սնդուկին համար, և միւսը մասնաւոր՝ որ իւրաքանչիւր թաղի մասնաւոր ծախուց յատկացեալ է, և կը հաւաքուի թաղական խորհրդոց կողմէն, թաղական սնդուկներուն համար։

Յօդ. 92. Կոստանդնուպօլսոյ մէջ ընդհանուր տուրքի

բաշխման և հաւաքման եղանակը՝ քաղաքական ժողովին մէջ կ'որոշուի, և ընդհանուր ժողովով կը հաստատուի։ Իսկ մասնաւոր տուրքը՝ ամեն թաղ իր խորհրդոյ մէջ կ'որոշէ և կը հաստատէ։

Սոյնպէս կը տնօրինուին նաև գաւառներուն մէջ գաւառական ընդհանուր տուրքն ու թաղական մասնաւոր տուրքը։

Յօդ. 93. Գաւառներուն կողմէն ազգային պատրիարքարանի սընդուկին տրուելու մինչև ցարդ սովորութիւն եղած տուրքին բաշխման և հաւաքման եղանակը՝ ընդհանուր ժողովը պիտի որոշէ, և Բարձրագոյն Դրան հաճութեամբը պիտի գործադրուի։

## ԳԼՈՒԽ Դ.

### ԱԶԳԱՅԻՆ ԳԱՒԱՌԱԿԱՆ ՎԱՐՉՈՒԹԻՒՆ.

Յօդ. 94. Առաջնորդը գաւառական ժողովոց նախագահն է, և անոնց գործադիր իշխանութիւնը կը վարէ։

Իր պարտաւորութիւն է գաւառին մէջ ազգային Սահմանադրութեան գործադրութեանը հսկել։

Յօդ. 95. Առաջնորդը չըպիտի կարենայ վանքերուն մէջ բնակութիւն հաստատելով՝ պաշտօնին տեղէն հեռանալ, այլ գաւառին գլխաւոր քաղքին մէջ ազգային առաջնորդարանը պիտի բնակի, ուր կը գումարուին և գաւառական ժողովները։

Երբ առաջնորդ մը միանգամայն և վանահայր ըլլայ, եթէ վանքը միայն մէկ օրուան ճամբայ հեռի է առաջնորդանիստ քաղաքէն՝ կրնայ երկու պաշտօնն ալ մէկտեղ վարել, երբեմն երբեմն վանքին այցելութիւն ընելով։ Բայց եթէ հեռաւորութիւնը օրուան մը ճանապարհէ աւելի ըլլայ, պէտք է որ վանքին մէջ իրեն փոխանորդ կարգելով ինք քաղաք բնակի։ Սակայն հարկ եղած ժամանակը իր վիճակին ամեն կողմը այցելութեան կրնայ երթալ։

Յօդ. 96. Կոստանդնուպօլսոյ մէջ եղածին նման՝ գաւառներուն մէջ ալ ամեն թաղ պիտի ունենայ թաղական խորհուրդ մը, թաղական սնդուկ մը, և թաղական դիւանատուն մը։

Նմանապէս առաջնորդանիստ քաղաքին մէջ պիտի հաստատուին կրօնական և քաղաքական ժողովներ։ Եւ քաղաքական ժողովին տնօրէնութեանը տակ՝ գաւառչական սընդուկ մը։

Նաև առաջնորդարանի մէջ գաւառական դիւանատուն մը հաստատուելով, առաջնորդական վիճակին բոլոր ժողովըդոց թաղական ազգահամարի տումարները հոն պիտի ժողովվին, և գաւառական ընդհանուր ազգահամար պիտի կազմուի։

Յօդ. 97. Առաջնորդի ընտրութիւնը՝ նոյն և նման Պատրիարքի ընտրութեան, գաւառական ընդհանուր ժողովով կըլլայ, և ընտրութեան տեղեկագիրը տեղւոյն խառն ժողովոյն միջոցաւ Պատրիարքին կուղարկուի։ Պատրիարքը կեդրոնական վարչութեան խառն ժողովոյ համահաճութեամբը կանուանէ զառաջնորդը, և Բարձրագոյն Դրան իմաց տալով պաշտօնական հրամանագիրը կընդունի։

Յօդ. 98. Գաւառական ժողովները կեդրոնական վարչութեան ժողովներուն վերաբերեալ տրամադրութեանց համեմատ պիտի կազմուին, և պաշտօններն ու պարտաւորութիւններն նոյն և նման են։

Բայց գաւառական ժողովներուն անդամոց թիւը՝ իւրաքանչիւր վիճակի համար միանգամ պիտի սահմանուի, ամեն մէկ գաւառի բնակչաց թուոյն համեմատութեամբ։

Մինչև որ ազգային տուրքը գաւառներուն մէջ օրինաւոր կերպիւ հաստատուի, Տէրութեան առաջին, և երկրորդ և երրորդ աստիճանի տուրք տուող անձինք միայն պիտի ընտրեն գաւառական ընդհանուր ժողովոյ անդամները։ Եւ այս ժողովներուն կազմութեան կերպը՝ իւրաքանչիւր վիճակի բնակչաց թուոյն նայելով, կեդրոնական

վարչութիւնը պիտի որոշէ, առաջնորդաց հետ խորհրդակցելով։

## ԳԼՈՒԽ Ե.

### ՎԵՐԱՔՆՆՈՒԹԻՒՆ ՍԱՀՄԱՆԱԳՐՈՒԹԵԱՆ.

Յօդ. 99. Ազգային Սահմանադրութեան հիմնական սկզբունքը անփոփոխելի են։ Բայց երբ փորձառութեամբ՝ ինչ ինչ տրամադրութեանց փոփոխութիւնը հարկաւոր գտուի, ընդհանուր ժողովը՝ Սահմանադրութեան հաստատութենէն հինգ տարի ետքը՝ վերաքննութեան յանձնաժողով մը կը կազմէ, կրօնական և քաղաքական ժողովներէն երեքական անդամ, չորս տեսուչ խորհուրդներէն երկերկու անդամ, և աստնցմէ զատ ընդհանուր ժողովոյ մէջէն կամ դըրսէն վեց հոգի, ընդամենը քսան անդամ ընտրելով։ Այս յանձնաժողովը կը սահմանէ հարկաւոր դատուած փոփոխութիւնները, որ ընդհանուր ժողովը վաւերացնելէն ետքը, Բարձրագոյն Դրան կը ներկայացուին, և Կայսերական հրամանին համեմատ կը գործադրուին։



# ԶԱՆԱԶԱՆ ԺՈՂՈՎԱԾՈՒՆԵՐ

## ԶԱՆԱԶԱՆ ԱՂԲԻՒՐՆԵՐ.

Հայոց եկեղեցական իրաւունքի երկրորդական աղբիւրներ են կազմում զանազան ժողովածուներ, որոնք գրուած և հաւաքուած են զանազան ժամանակներում և որոնցից մնացել են միքանի կցկտուր և հատուկտոր տեղեկութիւններ և հասել են մեզ շատ քիչ ամփոփ հատուածներ։ Սրանք ունին միմիայն օգնող, պարզաբանող, մութ կէտերը որոշող նշանակութիւն, իսկ գլխական և ուղղակի աղբիւր չեն ներկայացնում։

1. Առաջին ժողովածու պիտի համարել Ե. դարում թարգմանիչների ձեռքով կազմած և հաւաքած կանոնները, որոնց մէջ մտնում էին երեք տիեզերական ժողովների, Լուսաւորչի, Ներսէսի, Սահակի, առաքելոց կանոնները, գուցէ և երկու օտար տեղական ժողովներինը. այս երևում է Տահապիվանի ժողովի առաջաբանից։

2. Բ—Լիակատար ժողովածուն կազմել է 8-րդ դարու սկզբին Յովհան Օձնեցին, որի իսկականը անխախտ և անփոփոխ դժբախտաբար մեզ չի հասել, Էջմիածնի մատենադարանի ձեռագրերում կան երկու երեք կցկտուր քաղուածքներ նրա կազմածից։

3. Երրորդ ժողովածուն կազմուած է Ժ. դարից ոչ ուշ, քաղուած կամ ընդօրինակած Օձնեցու ժողովածից և զանազան փոփոխութիւնների և յաւելումների ենթարկած. դրանցից մօտ 40 հատ այսօր էլ կան Էջմիածնի ձեռագրատանը։

4. Չորրորդը գրել է Ներսէս Լամբրոնացին ԺԲ. դա-

րում եկեղեցական կանոնների և աշխարհական օրէնքների միացմամբ, որը դժբախտաբար մեզ չի հասել։

5. Սմբատ Գունդստապլ (սպարապետ) պատմիչը ունի համառօտ «Ճաղկաքաղ ի դատաստանագրոցն Մխիթարայ Գօշի և Բիւզանդական օրինագրաց, որ արդէն ծանօթ էին յազգին թարգմանութեամբ Լամբրոնացւոյն». (պատմ. հայերէն գրլրութեանց, 774 եր.)։

6. Գլխաւոր և միակ ժողովածուն, որին կարելի է քիչ ու շատ հնա-պատմական նշանակութիւն տալ էՄխիթար Գօշի «դատաստանագիրքը»։

7. Բացի այս ունինք և յունա-հռոմէական օրէնքների ժողովածու որ կցուած է մասամբ «դատաստանագրքի» հետ, մասամբ ձեռագիր մեծ կանոնագրքերի։ Կայ և վրացերէն և ապա ռուսերէն թարգմանած Վախթանգի ժողովածուն, որի մի գլուխն է «Հայոց կանոնները»՝ քաղուած Մխիթար Գօշից։

Ժողովածուների մէջ առանձին ուշադրութեան արժանի են 6 և 7 կէտերում նշանակուածները։

Մխիթար Գօշ. (տես Կիրակոս պատմագիր).

Մխիթարը (Գօշ կոչւում էր նրա համար, որ մազերը ուշ դուրս եկան, քեօսա էր) ծնուել է Գանձակ քաղաքում, առաջին կրթութիւնը ստացաւ մի կարգացած քահանայից. դրանով չբաւականանալով, նա արդէն վարդապետ դարձած, ելաւ հայրենիքից և թափառելով այս ու այն կողմն՝ այս ու այն ուսումնականներին հանդիպելով հասաւ Կիլիկիա Սև լեռան կողմերը, մտաւ կարմիր վանքը և բաւականաչափ օգուտ քաղեց այնտեղի ուսումն առած վարդապետներից։ Ապա այնտեղից ելնելով Երզրումի վրայով անցնելիս պատահեց Քուրթ անունով բարեպաշտ մարդուն, որից որդիական յարգանք ու սէր վայելելուց յետոյ եկաւ հայրենիք։ Աղուանից Ստեփաննոս կաթուղիկոսը լսելով Մխիթարի վերադարձը, և տեղեկանալով նրա ուսումնառութեան և խոր գիտութեան վրայ, յորդորեց նրան թողնել մահմետականներով լցուած

քաղաքը, և գնալ Վախթանգ իշխանի մօտ։ Քիչ յետոյ անցաւ նա իւր վաղածանօթ Քուրդ իշխանի մօտ, որը վերադարձել էր իւր հայրենիքը Հաղբատի մօտ. յետոյ տեղաւորուեց Գետիկ վանքում Աղստև գետի աջ կողմում։ Այստ իշխանների օգնութեամբ Ս. Աստուածածին անունով եկեղեցի շինեց նոյն տեղերում Նոր-Գետիկ կոչմամբ և դարձրեց այդ սրբավայրը՝ ուսումնավայր, ուր թափւում էին ամեն կողմից ուսումնածարաւ անձինք «գիտնական» վարդապետից ուսում սովորելու։ Այդ ժամանակ սկսուեց Զաքարէ սպասալարի Սսի ժողովից ստացած 8 կանոնների գործադրութեան խնդիրը, որին՝ ըստ երևոյթին, հաւանութիւն էր տալիս Գօշ։

Գօշի գլխաւոր պարապմունքը եղաւ դատաստանագրքի կազմելը, Աղուանից Ստեփաննոս կաթուղիկոսի խնդրանօք, որը սկսուելով 1184 թուից շարունակուեց մինչև նրա մահը 1213 թուականները։ Դատաստանագիրքը բաղկացած է երեք մասից, 1) նախադրութիւն, 2) եկեղեցական կանոններ, 3) աշխարհական օրէնքներ։

Նախադրութեան մէջ յիշւում են այն աղբիւրները, որոնցից նա քաղել է իւր գիրքը. առաջի աղբիւրն է՝ բնաւորական օրէնք, որով ղեկավարւում էին առանց գրի Աբրահամ նահապետը և այլն. 2) Քրիստոնեայ ազգերի մէջ տեսած և լսած դատական սովորութիւնները. 3) մահմետականներից վերցնում է այն՝ որը վերցրած է Մովսէսի գրուածքներից և ոչ այն ՝ ինչ որ Մահմետը քարոզեց։ 5) Մովսէսի հնգամատեանը. 5) կանոնական գրքերից և 6) հին և նոր կտակարանի բոլոր գրքերից։

Կայ և ըստ Հ. Բաստամեանի № 492 ձեռագրում բացի այդ երեք մասից և երկու մաս, քաղուածքներ Մովսիսական օրէնքներից և քաղուածքներ յունական օրէնքներից (տես Մխիթ. Գօշ. Բաստամ 116 եր.)։ Նրա կարծիքով յունական օրէնքների քաղուածքը Մխիթարինը չէ, այլ յետոյ՝ ուրիշների ձեռքով աւելացրած կամ հէնց Ն. Լամբրոնացու օրէնսգիրքն է, որ կցել են յետոյ Մխիթարի գրուածքին

(120 եր.)։ Գօշի դատաստանագիրքը ինչքան իրաւաբանական արժէք ունի, արդեօք կարելի է աղբիւր ընդունել մեր եկեղեցական իրաւունքի համար թէ ոչ։ Դրա պատասխանը պարզ է և մի, երկու լինել չի կարող։ Որովհետև այդ դատաստանագիրքը անհատի գրած է, ո՛չ մի ազգային ժողովի կողմից չէ հաստատուած, ո՛չ մի իրաւահաս մարմնի կողմից չէ ընդունուած, ուստի և չի կարող իբրև դրական աղբիւր ծառայել։ Բացի այդ, Մխիթարի գրուածքը Յովհաննէս Սխոլաստիկի և կամ Դիոնէսիոս Կրտսերի ժողովածուների նման ժողովածու չէ, ո՛չ էլ ինքնորոյն իրաւաբանական հետախուզութիւն է, և ո՛չ զուտ ժամանակակից կեանքի գործադրրուող օրէնքների մշակումն. այլ մի խառնուածք է ս. գրքի, հայոց և արտաքին ժողովների կանոնների. զանազան ազգերի սովորութիւնների և իւր անձնական կարծիքի. ժողովածուն որովհետև օգտւում է և մահմետական սովորութիւններից, ուստի և ստացւում է մի խառնիճաղանճ հաւաքածու, առանց որոշ սկզբունքի և տիրապետող ուղղութեան, որի կանոնները գործադրել ոչ մի կերպով չի կարելի եկեղեցական կեանքում, նամանաւանդ որ պատիժների մէջ մեծ տեղ է բռնում մահուան դատապարտելը, որը միանգամայն հակառակ է աւետարանի սկզբունքին։

Գօշի գիրքը կարող է ծառայել իբրև հնա-պատմական կողմնակի աղբիւր համեմատական արժէքով։

Իբրև նմուշ թէ ո՛րքան տարօրինակ կանոններ կան դրա մէջ, կարելի է բերել հետևեալ կտորները։

Դ. Գլխում ասում է. «եթէ ժողովրդականը արհամարհի քահանային նախատելով, և կամ յանդգնի խփել, իրաւացի դատաստան է ձեռքը կտրել «հատանել զձեռն»։

Ե. Գլխում՝ «եթէ պատահի, որ ամուսնութեամբ կնոջ տիրել չի կարող ամուսինը, կանոնների հրամանի համաձայն թէ չէ կամենում կինը միասին ապրել, թո՛ղ բաժանման դատաստան լինի»։ «Սակայն ամուսնու կամքով և հաւանութեամբ ուրիշ մարդու գնայ, և ամուսինը պսակուի այլի կնոջ հետ»։

Զ. Գլխում.—եթէ այսահար կինը «բժշկուի, իւր մարդու մօտ գնայ, եթէ մարդը կընդունի. իսկ եթէ ո՛չ, իրաւունք ունի արձակել» կնոջ, եթէ այսահար է եղել կինը պսակուելուց առաջ. իսկ եթէ այսահարութիւնը պսակուելուց յետոյ է առաջացել մարդու տանը, եթէ 7 տարուայ ընթացքում չբժշկուի, արձակուի կինը իւր բերած բոլոր ունեցածով, մարդը կնոջ թոյլտւութեամբ պսակուի, և երախաներն էլ մնան մարդու մօտ, բացի այդ, մարդը օգնի նաև արձակած կնոջ։

Ժ. գլխում. Աբրահամի և Սառայի օրինակով թոյլ է տալիս մարդուն բացի ամուլ կնոջից և երկրորդ կին բերել, «բայց ամուլ և ծննդական կնոջ միասին չպահել». իսկ եթէ անծննդութեան պատճառը մարդն է, կինը կարող է երկրորդ մարդ գտնել։

ԺԱ. Գլխում իրաւունք է տալիս կնոջ մարդուց բաժանուել, եթէ ամուսինը արուագիտութիւն կամ այլ վատթար գործ է կատարել։

ԺԲ. Գլխում անսովոր կանոններ է դնում մարդու և կնոջ մասին։

ԼԳ. Գլխում, «ով կխեղդի տղային իբրև խեղի, կամ շնութեան մէջ, կամաւոր կերպով, դրա փոխարէն ինքը մեռնի». խեղդելու համար մահուան պատիժ է նշանակում, «որովհետև հնար չկայ կենդանացնելու»։

ԼԸ. Գլխում—Աստուծոյ անուն, մկրտութիւն և այլն հայհոյողը մահուան պատժի է ենթարկւում։

ԽԳ. Գլխում ասում է, եթէ ամուսինը առաջին գիշերուանից նկատեց, որ կինը անարգուած է, թող արձակման տայ և բաժանուի, կինը կարող է երկրորդ մարդու գնալ. և եթէ նորից արձակուի և երկրորդ մարդու մահից յետոյ առաջի ամուսինը գայ կնութեան առնելու, իրաւունք չունենայ, որովհետև պղծել է... անհեթեթ կարգեր սահմանելով վերջացնում է. (հետևում է Բ. օրինաց)։

Մնացած կանոններն էլ այսպիսի ձևով սահմանուած

են, նրանք չունին կանոնական հիմք, հապա կամայական կարգադրութիւնների և եղած սովորութիւնների արդիւնք են։

Մի՛թե, Գօշի գրուածքը ո՛չ մի իրաւաբանական արժէք չո՞ւնի։ Ունի, նրա գլխաւոր արժէքն այն է, որ նա կազմուած է ոչ ժամանակագրական կարգով, այլ ըստ առարկայի, տուած է գործադրուող օրէնսգրքի ձև. բաց անելով մի որև է երես, կգտնես մի խնդրի մասին գրած կանոն, վճիռ, որով կարող ես գաղափար կազմել եղած նիւթի իրաւաբանական որոշման մասին։

Երկրորդ արժէքն է այն, որ նա տալիս է հնա-պատմական հարուստ նիւթ, թէ 12 և 13-րդ դարերում ինչպիսի հայեացքներ կային շրջապատող ժողովուրդների և ազգերի մէջ զանազան խնդիրների վերաբերմամբ։

Գօշի միքանի ձեռագիր օրինակներին և միքանի ընդարձակ ձեռագիր կանոնագրքերին կցուած կան յունա-հռոմէական օրէնքների ժողովածուն. սրանք թարգմանուած պիտի լինեն Ռուբինեան թագաւորութեան ժամանակ, երբ յարաբերութիւնը աւելի սերտ էր յունաց և եւրոպացոց հետ և հարկ էր զգացւում ունենալ որոշ հիմունքներով օրէնքներ, որոնցով հնար լինէր կառավարել ոչ միայն հայերին, այլ և Կիլիկիայում գտնուող օտար տարրերին։

Յունա-հռոմէական ժողովածուների կանոնները սկիզբն առել են Կոստանդին մեծից, որը առաջինը եկեղեցական կանոնները համարեց քաղաքացիական օրէնքների ույժ ունեցող և հաւասարապէս պարտաւորական բոլորի համար։ 438-ին Թէոդոս մեծը ժողովեց Կոստանդինից սկսած մինչև իւր ժամանակը հրատարակած բոլոր օրէնքները և Թէոդոսի Կոդէքս անուամբ գրի առնուեցին և գործադրութեան տրուեցին։ Դրանից 100 տարի համարեա յետոյ Յուստինիանոս մեծը հրամայեց համախմբել թէ այդ ժողովածուի, թէ դուրսը մնացած և թէ իւր հրատարակած բոլոր օրէնքները միասին և մի ժողովածուով հրատարակել, հրատարակած հաւաքածուն կոչուեց Յուստինիանոսի Կոդէքս 12 գրքի բաժանած (534 թ.)։ Գրքերից առաջինը 13 տիտուլով բովանդակում է

եկեղեցական կառավարութեան վերաբերեալ խնդիրներ. 1) դաւանութեան, 2) եկեղեցու, ս. իրերի և նրանց արտօնութեան, 3) եպիսկոպոսների և միւս հոգևորականների, 4) եպիսկոպոսական դատի, 5) հերետիկոսների, 6) մկրտութիւնը չկրկնելու, 7) ուրացողների, 8) խաչակնքելու, 9) հրէաների, 10) հեթանոսների մօտ քրիստոնեայ ստրուկ չունենալու, 11) հեթանոսների, 12) եկեղեցուն դիմողների, 13) ազատուած ստրուկների մասին. (տես Соколовъ 164 եր.)։ Յուստինիանոսը շարունակեց դրանից յետոյ էլի հրատարակել նոր օրէնքներ նովելլա (novellae constitutiones): 165 նովելլաներից՝ 535 թ. հրատարակած, հետևեալները բովանդակում էին եկեղեցական կանոններ. 5, 6, 32, 46, 56, 58, 67, 83, 84, 123, 131, 133, 136, 139։ Այս օրէնքները լատիներէն էին գրուած, 7-րդ դարուց սկսած այդ լեզուի գործածութիւնը թուլանալով, հարկ զգացուեց յունարէն թարգմանելու և հետզհետէ հրատարակուեցին զանազան ժողովածուներ. որոնցից նշանաւորն է Լևոն Իսաւրացու և Կոստանդին Կոպրոնիմի 739 թ. հրատարակած էկլօգան 28 տիտուլով (գլուխ), որոնցից 2, 8, 9, 24, 28 եկեղեցական կանոններ են։ Ապա 870 թ. Վասիլ Մակեդոնացին հրատարակեց ձեռնարկ—Պրօխիրօն—40 տիտուլի բաժանած, որը բովանդակում էր ամենագործածական օրէնքները և որոնցից 24, 28-ը եկեղեցական կանոններ էին։ Վասիլի օրօք սկսուած ընդարձակ հրատարակութիւնը շարունակուեց և նրա որդու Լևոն իմաստասէր կայսեր ձեռքով 911-ին. իսկ Վասիլի թոռան Կոստանդինի ժամանակ 961 թուին նորից մշակուեցին և հրատարակուեցին Բազիլիկ անունով (թագաւորական գրքեր)։ Այս կօդէքսը բաղկացած է 6 հատորից—60 գլխի բաժանած, որոնցից առաջի 4 գիրքը վերաբերում են եկեղեցական կարգերին։

Ահա այս ժողովածուներից թարգմանուեցին Ռուբինեան տէրութեան ժամանակ և կցուեցին Մխիթար Գօշին և մեր ձեռագիր կանոնագրքերին։ Յայտնի է, որ 565-ից մինչև 578 թուականը Յովհան Սխոլաստիկ Պօլսոյ Պատրիարքը իւր կազ-

ման ժողովածուն լրացնելու մտքով Յուստինիանոսի Նովել-լաները 87 գլխով, որոնք եկեղեցուն էին վերաբերում, կցեց իւր հրատարակածի հետ և դարձրեց մի ամբողջացած կանոնագիրք։ Արդօ՞ք մեր թարգմանութիւնները սխոլաստիկի կազմածից են վերցրած, թէ՞ Իսաւրացու և իմաստասէր կայսրրների ժողովածուից, ինձ համար անորոշ է այդ, որովհետև պիտի բոլորը միմեանց հետ համեմատել։ Հ. Բաստամեանի վկայութեամբ մեր թարգմանութիւնների մէջ կան թէ Յուստինիանոսի, թէ իմաստասէր Լևոնի և թէ այլոց ժողովածուներից կտորներ, եթէ ճիշտ է այս, հնար կլինի ենթադրել, որ դրանք թարգմանուած են ոչ Սխոլաստիկի, այլ 10-րդ դարու լրացրած ժողովածուներից։ Այս խնդիրը այնքան հետաքրքիր չէ մեզ համար, որովհետև յունա-հռոմէական օրէնքները մեր եկեղեցական օրէնսդրութեան վրայ եթէ ո՛չ բոլորովին, գոնէ շատ քիչ ազդեցութիւն են ունեցել։

Վախթանգ թագաւորի ժողովածուն վրացերէն և ապա թարգմանուած ռուսերէն ունի և յօդուածներ «Հայոց օրէնքներ» վերնագրով երկու բաժանմունքով, որոնք գրքի մէջ 32—57 երեսներն են բռնում։

Թէ ո՛րտեղից է ձեռք բերուած այդ օրէնքները, այդ երևում է 66 երեսի Մովսիսական օրէնքների առաջաբանից, ուր յիշւում է մի առ մի աղբիւրները. երրորդ կէտում ասում է. «Հայոց թագաւորների օրէնքները բերել է տուած թարգմանաբար Էջմիածնից, Մեծ Հայքի Հովիւ և Լուսաւորիչ Գրիգորի թաղման տեղից»։ Իսկ 32 երեսում գրում է. «Այս գիրքը Մեծ Հայքի օրէնսգրքի թարգմանութիւնն է և անուանւում է Օրէնսգիրք (уложеніе), եթէ ձեզ հետաքրքրում է թէ ինչ գրուածքներից կամ ինչ տեսակ շարադրրութիւններից է ժողովուած, մենք կբացադրենք։ Հին ուխտից, որ սկզբից Մովսէսին տրուեց Աստուածանից, Նոր-ուխտից, ս. աւետարանից և մնացած հին և նոր սուրբ գրուածքներից, որքան կարողացանք կազմել»։ Ապա խնդրում է բոլոր իմաստասէրներից լրացնել թերին, կատարելագործել, օրէնքներ գրողը շարունակում է, մենք աւելին չկարողա-

ցանք անել, շատերը պահանջող են, որոնք ոչ մի տեղեկութիւն չունին և անգիտութեամբ մեզ մեղադրում են։

Բ. մասը սկսւում է նրանով, թէ Մովսէսը ամեն բան գրաւոր չհաղորդեց, այլ բերանացի հրամայեց՝ կատարել ժամանակի և հանգամանքների համեմատ։ Թագաւորները պիտի վարձադրեն դատաւորներին, «նոյնպէս և եկեղեցական դատաւորները, քորեպիսկոպոսները և եպիսկոպոսները պիտի կաթուղիկոսի ողորմութիւնը և յարգանքը վայելեն, որպէս զի հակառակ չգնան Աստուծոյ արդար դատարանին»։ Եւ ապա սկսւում են եկեղեցական կանոնների յօդուածները, կաթուղիկոսների, եպիսկոպոսների կտակների, ժառանգութեան մասին, կաթուղիկոսի ընտրութեան համար, ի միջի այլոց, գրուած է, մեռած կաթուղիկոսի թաղումից յետոյ, 7 օր սահմանեալ հոգևոր կարգերը կատարելուց յետոյ, «եպիսկոպոսները, վարդապետները, անապատականները և բոլոր հոգևորականները պիտի ժողովուեն ս. առաքելական եկեղեցին, և 12 օր ժողովներ կատարելով, ընտրեն արժանի, գիտուն սրբազան գործերին հմուտ, խաղաղ, մաքուր սրտով, համեստ, բարեբարոյ և ողորմած անձի և կաթուղիկոս ձեռնադրել Աստուծու հրամանով. 12 գլխաւոր եպիսկոպոսների ձեռամբ»։ Բոլոր հայոց օրէնքները, որոնք զետեղուած են Վախթանգի ժողովածուի մէջ 430 յօդուած են կազմում. բաժանուած երկու մասի, Ա. մասում կան 151 յօդուած. Բ. մասում 280 յօդուած, 151—մինչև 431—յօդուածը։

Ի՞նչ բան են վրաց թագաւոր Վախթանգի ժողովածուի «հայոց օրէնքներ» կոչուած 430 յօդուածները։

«Հայոց օրէնքների» նախաբանութիւնը համառօտ բովանդակութիւն է Մխիթարի նախադրութեան Ա. և Ժ. գլխի։ Մխիթարի Ա. մասի ա. գլխի բովանդակութեանը, շատ տեղ բառացի կրկնուած է Վախթանգի 151—գլխում. վերջերում աւելացրած է կաթուղիկոս ընտրելու ձևը և եղանակը։

Վախթանգի 152—գլուխը համառօտութիւն է մինչև իսկ տեղ տեղ բառացի կրկնութեամբ Գօշի Բ. մասի ա. գլխի։

Վախթանգի 153 գլուխը համառօտութիւն է Գօշի Ա.

*մասի բ․ գլխի։ Վախթանգի 154 գլուխը երեք տողում ամփոփում է Գօշի Ա․ մասի գ․ գլխի երկու երեք երեսում վարդապետների մասին գրուածքը։*

*Վախթանգի* 155 *յօդուածը համառօտութիւն է Գօշի Ա․ մասի Դ․ գլխի և հակառակ թարգմանուած․ Գօշը ասում է, որ քահանայութիւնը ժառանգութիւն չպիտի անել, իսկ Վախթանգը ասում է, ծուխը կարող է ժառանգութեամբ անցնել միւս քահանային։*

*Իսկ հետևեալ գլուխները Գօշի և Վախթանգի ժողովածուների մէջ նոյն են։*

| *Վախթանգի յօդ.* | | | *Գօշի գլուխները.* | | |
|---|---|---|---|---|---|
| 156 | *յօդուած* | *հաւասար է* | Ա. *մասի* | Ե. | *գլխին.* |
| 157 | ,, | ,, | ,, | Զ. | ,, |
| 158 | ,, | ,, | ,, | Է. | ,, |
| 159 | ,, | ,, | ,, | Ը. | ,, |
| 160 | ,, | ,, | ,, | Թ. | ,, |
| 161 | ,, | ,, | ,, | Ժ. | ,, |
| 162 | ,, | ,, | ,, | ԺԱ. | ,, |
| 163 | ,, | ,, | ,, | ԺԲ. | ,, |
| 164 | ,, | ,, | ,, | ԺԳ. | ,, |
| 165 | ,, | ,, | ,, | ԺԴ. | ,, |
| 166 | ,, | ,, | ,, | ԺԵ. | ,, |
| 167 | ,, | ,, | ,, | ԺԶ. | ,, |
| 168 | ,, | ,, | ,, | ԺԷ. | ,, |
| 169 | ,, | ,, | ,, | ԺԸ. | ,, |
| 170 | ,, | ,, | Բ. *մասի* | Բ. | *գլխին.* |
| 171 | ,, | ,, | ,, | Գ. | ,, |
| 172 | ,, | ,, | ,, | Դ. | ,, |
| 173 | ,, | ,, | ,, | Ե. | ,, |
| 174 | ,, | ,, | ,, | Զ. | ,, |
| 175 | ,, | ,, | ,, | Է. | ,, |
| 176 | ,, | ,, | ,, | Ը. | ,, |
| 177 | ,, | ,, | ,, | Թ. | ,, |

Վախթանգ. Գօշ.

178 ,, ,, Ա. մասի ԺԹ. գլխին.

179 ,, ,, ,, Ի. ,,

180 ,, ,, ,, ԻԱ. ,,

181 ,, ,, Բ. մասի Ժ. ,,

182 ,, ,, ,, ԺԱ. ,,

183 ,, ,, ,, ԺԲ. ,,

184 ,, ,, ,, ԺԳ. ,,

185 ,, ,, ,, ԺԴ. ,,

186 ,, ,, Ա. մասի ԻԲ. ,,

187 ,, ,, Բ. մասի ԺԵ. ,,

188 ,, ,, ,, ԺԶ. ,,

190 ,, ,, Ա. մասի ԻԳ. ,,

191 ,, ,, ,, ԻԴ.+ԻԵ. գլուխներին

192 ,, ,, ,, ԻԶ. գլխին.

Յօդուածներիս մէջ Գօշի «ժառանգաւոր» բառը սխալ թարգմանուած է ռուսերէն «родственникъ» բառով։

193 ,, ,, Ա. մասի ԻԷ. գլխին

194 ,, ,, ,, ԻԸ. ,,

195 ,, ,, ,, ԻԹ. ,,

196 ,, ,, ,, Լ. ,,

197 ,, ,, ,, ԼԱ. ,,

198 ,, ,, ,, ԼԲ. ,,

199 ,, ,, Բ. մասի ԺԷ. ,,

200 ,, ,, ,, ԺԸ. ,,

201 ,, ,, Ա. մասի ԼԳ. ,,

202 ,, ,, Բ. մասի ԺԹ. ,,

203 ,, ,, Ա. մասի ԼԴ. ,,

204 ,, ,, Բ. մասի Ի. ,,

Այստեղից մինչև 252 յօդուածը համեմատութեամբ շարունակաբար նման է Բ. մասի ԻԱ.—շարունակած մինչև ԿԳ գլուխը։ Հետևեալ բացառութեամբ,

237 ,, ,, Ա. մասի ԼԷ. գլխին

238 ,, ,, ,, ԼԸ. ,,

242 ,, ,, Ա. մասի ԼԹ. գլխին
253 ,, ,, ,,

Վախթանգի օրէնքների Բ. մասը «второе отдѣленіе Армянскихъ законовъ собранныхъ Царемъ Вахтангомъ» 151—431 յօդուածները համարեա թէ, ինչպէս երևաց՝ բառացի թարգմանութիւն է Գօշի, կամ կրճատուած ու աղաւաղուած թարգմանութիւն են Գօշի Բ. մասի։ Իսկ Վախթանգի 1—151՝ Ա. մասի յօդուածները շատ նման են նոյն գրքի Բ. մասին, որոնց մէջ չկան Գօշի Ա. մասի մնացած յօդուածները, նրանք համառօտուած են և կրճատուած, և մէջ են բերւում Կոստանդինի, Թէոդորոսի, Լևոն Իմաստասէրի օրէնքներից համառօտ քաղուածքներ։

Նշանակում է Վախթանգի օրէնքները ինքնուրոյնութեան հետքեր չունին, ուղղակի քաղուած են Գօշից։

Մեզ համար քիչ ու շատ աչքի ընկնող և նշանակութիւն ունեցող ժողովածու մնում է Մխիթար Գօշի դատաստանագիրքը, որը լուրջ ուսումնասիրութեան է ենթարկուել Հ. Բաստամեան հանգուցեալ վարդապետի ձեռքով (տես Մխիթար Գօշի Դատաստանագիրք Հայոց. իրաւաբանական հետազօտութիւնք հանդերձ ծանօթութեամբք. Վահան ծ. վարդապետի Բաստամեանց, միաբանի Ս. Էջմիածնի և վանահօր Ս. Գայիանեաց վանուց)։ Վաղարշապատ. ի տպարանի ս. կաթ. Էջմիածնի. 1880 թ.»։



# ԿԱՆՈՆԱՑՈՅՑ

## Ա.

## Բ.



## Գ.

## Դ.



## Ե.

## Զ.



## Է.



## Ը.



## Թ.

## Ժ.



## Ի.



## Լ.



## Խ.



## Ծ.



## Կ.

## Հ.

## Ձ.



## Մ.

## Յ.



## Ն.



## Շ.



## Ո.

## Չ.



## Պ.

## Ջ.



## Ռ.



## Ս.

## Վ.



## Տ.

## Փ.



## Ք.

# ՎԵՐՆԱԳՐՆԵՐԻ ՑԱՆԿ



## Բ. ԸՆԴՀԱՆՈՒՐ ԱՂԲԻՒՐՆԵՐ.

## Բ. ԱԶԳԱՅԻՆ ԺՈՂՈՎՆԵՐ.

## Դ. ՊԵՏԱԿԱՆ ԱՂԲԻՒՐՆԵՐ.

## ԶԱՆԱԶ"Ն ԺՈՂՈՎԱԾՈՒՆԵՐ.





# ՎՐԻՊԱԿՆԵՐ

| երես. | տող. | սխալ. | ուղիղ. |
|---|---|---|---|
| 4 | 5 ներքևից | ճրմարտութեան | ճշմարտութեան |
| 13 | 10 ,, | Մշտական | Եկեղեցական |
| 29 | 4 ,, | կաթողիկ | կաթոլիկ |
| — | 1 ,, | Յիսուո | Յիսուս |
| 30 | 6 վերևից | (Մար. ԺԸ. 18)։ | (Մատթ. ԺԸ. 18)։ |
| — | 9 ,, | (Մար. ԺԶ. 16)։ | (Մատթ. ԺԶ. 16)։ |
| — | 13 ներքևից | (Մար. ԻԲ. 21)։ | (Մատ. ԻԲ. 21)։ |
| 31 | 10 վերևից | կարգադրութին | կարգադրութիւն |
| 32 | 10 ներքևից | դրուած | տրուած |
| 34 | 2 ,, | 72— | 79— |
| 42 | 1 ,, | կանոնն | կանոններն |
| 48 | 9 ,, | ԳԹ—(34) | ԺԹ.—(34) |
| — | 5 ,, | ԼԵ—ին | ԼԵ-ին |
| 49 | 13 վերևից | ստիպւում ընդու-նել՝ | ստիպւում է ընդու-նել՝ |
| 56 | 10 ներքևից | Համրում | Համարում |
| 60 | 1 վերևից | Աստուծային | Աստուածային |
| 63 | 11 ,, | քովանդակու-թեամբ | բովանդակութեամբ |
| — | 18 ,, | ասորակականը | ասորականը |
| 64 | 6 վերևից | вопросѣ церк. | вопросѣ о церк |
| 94 | 7 ներքևից | ամուսմութիւն | ամուսնութիւն |
| 102 | 2 վերևից | իրաւասանու- | իրաւասութեան է |
| 105 | 9 ներքևից | նզովւում լինին։ | նզոված լինին։ |
| — | 3 ,, | Համարուին և արտագուել | Համարել և արտա-գրել |
| 109 | 1 վերևից | րից | ներից |
| 120 | 9 ,, | լինէն | լինէր |
| — | 13 ներքևից | զԱստուած՝ | ոչ զԱստուած՝ |
| 121 | 10 ,, | պաշտաւանակ- | պաշտաւնակ- |
| 124 | 4 վերևից | զոզիայս | զոզիային |

| | | | | |
|---|---|---|---|---|
| 127 | 4 | ներքևից | կակ | կամ |
| 128 | 3 | վերևից | պտաճառք | պատճառք |
| 129 | 13 | ,, | եպիսկոպոսութիւն | եպիսկոպոսութեան |
| 132 | 7 | ներքևից | աից | տից |
| 133 | 7 | վերևից | զդարձեալնի | զդարձեալն ի |
| 135 | 5 | ներքևից | կոպոսութիւն | կոպոսութեան |
| 151 | 1 | ,, | պատին | պապին |
| 154 | 3 | վերևից | Հմաձայն | Համաձայն |
| 158 | 6 | ներքևից | Պւաղիկեանների | Պաւղիկեանների |
| 159 | 12 | վերևից | քոան | քսան |
| 164 | 16 | ներքևից | Հայքերը | Հայրերը |
| 165 | 15 | ,, | երբեն | երբեմն |
| 166 | 8 | վերևից | Վալսամոն—<br>82 եր.։ | Վալսամոն 81—82<br>եր.։ |
| 169 | 11 | ներքևից | որ խոստովանիցեն | որ խոստովանեցին |
| 171 | 3 | վերևից | ասսնևչորսական-<br>ներին | տասնևչորսականնե-<br>րին |
| 173 | 17 | ,, | Աստուածածնի | Աստուածածին |
| 177 | 5 | ներքևից | Յուտինիանոս | Յուստինիանոս |
| 178 | 9 | վերևից | այո | *այս |
| 186 | 2 | ,, | եռանգոտ | եռանդոտ |
| — | 7 | ,, | ոտիպմամբ | ստիպմամբ |
| 191 | 10 | ,, | —Եւ Կեսարիտյի | —Եւ Կեսարիայի |
| 199 | 6 | ներքևից | Մեր | Մեր |
| 232 | 10 | վերևից | իւր քահանային | իւր ճանապարհին |
| 237 | 9 | ներքևից | է թէ աննկար | է, թէ աննկար է |
| 255 | 3 | ,, | Հաւատից | Հաւտից |
| 256 | 17 | ,, | զովորութիւն | սովորութիւն |
| — | 9 | ,, | յանձնին | յանձին |
| 260 | 2 | վերևից | այնոսիկ | այնոցիկ |
| 261 | 8 | ներքևից | եղթալ | երթալ |
| 266 | 16 | վերևից | գլազեալն | գլաղեալն |
| 269 | 9 | ներքևից | ամբոխս | ամբոխս |
| 270 | 5 | ,, | կարոն | կանոն |

| | | | | |
|---|---|---|---|---|
| 278 | 12 | ,, | ոտէս | որպէս |
| — | 10 | ,, | ուսանին | ուսանեն |
| 283 | 3 | վերևից | դարձուցեալ | դարձուցեալ |
| 386 | 5 | ,, | ա-բասցին | ա-բասցեն |
| — | — | ,, | մերծեսցին | մերձեսցեն |
| — | 1 | ներքևից | առ եռեղ | առեռեղ |
| 287 | 16 | վերևից | ալում | այլում |
| 308 | 16 | ներքևից | կաթուղիկոսի հլու | կաթուղիկոսի հրամանները հլու |
| 311 | 1 | ներքևից | «Այդպէս սրան ընդունելով Լուս. Ներս. Սահակի կարգադրութիւնների վերաբերմամբ և միաձայն հաստատելով Տահապիվանի ժողովում 447 թուին։ | «Այդպէս այս լուելեայն վճիռը ընդունելով Լուսաւորչի, Ներսէսի, Սահակի կարգադրութիւնների վերաբերմամբ, ժողովականները միաձայն հաստատեցին Տահապիվանում։ |
| 335 | 12 | վերևից | փակել | քակել |
| ,, | ,, | ,, | ամուսնացող- | ամուսնացողներին. |
| 337 | 14 | վերևից | թերակի | թեթևակի |
| ,, | 16 | ,, | յանձանքների | յանցանքների |
| 339 | 14 | ,, | արակաքի | արականքի |
| 323 | 13 | ներքևից | շնութնան | շնութեան |
| — | 2 | ,, | 6 առնձին | 6 առանձին |
| 373 | 15 | ,, | անգամ | անգամ |
| 443 | 6 | վերևից | դնրծերի | գործերի |
| 343 | 9 | ,, | քսութեան | քննութեան |
| 447 | 9 | ներքևից | ոչ ազգա.ին | ոչ մի ազգային |
| 448 | 12 | ներքևից | ցոյց տուին | թոյլ տուին |
| 472 | 15 | ,, | առել է | ասել է |
| 483 | 11 | ,, | Ցիսուս | Ցեսու |
| 564 | 8 | վերևից | կողմից | կողից |
| 726 | 15 | ներքևից | 4865 | 1865 |

1905

# ՀԱՅՈՑ

# ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ԻՐԱՒՈՒՆՔԸ.




Բ. ԳԻՐՔ.

ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹԻՒՆ ԵՒ ԿԱՌԱՎԱՐՈՒԹԻՒՆ.

«Հանդէս Ամսօրիայի» մատենախօսի առաջ մի փաստ չկար դաւանական միակողմանիութիւն նկատելու գրքիս մէջ, քանի որ ընդհանուր ազգային եկեղեցու կանոնադրութեան լրումը պահանջում է, որ աղբիւրները ունենան հանրական հիմք և ոչ մասնական, ինչպիսին է օր. կարնոյ ժողովը քաղկեդոնականութիւնը ընդունելու համար եղած, որը և մատնացոյց է անում յիշեալ ամսագրի մատենախօսը։

Ն. Վ. Մ. Թ.

# ԵՐԿՈՒ ԽՕՍՔ

«Հայոց եկեղեցական իրաւունքի» Ա. Գրքի մասին մի երկու ամսագրում մի քանի նկատողութիւններ եղան, որոնք արդէն հենց իմ կողմից ի նկատի առնուած և յիշուած էին գրքիս մի քանի տեղում։

Եթէ գիտութիւնների մէջ պահպանողական գիտութիւն կայ, մէկն էլ իրաւաբանութիւնն է, եթէ սրա ճիւղերի մէջ պահպանողական ճիւղ կայ, մէկն էլ եկեղեցական իրաւունքն է, և այդ շատ հասկանալի պատճառով, որովհետև եկեղեցական իրաւունքի գլխաւոր աղբիւրները կազմում են Աւետարանը և նախկին եկեղեցու աւանդութիւնը, որոնք ունին համարեա 1900 տարուայ վաղեմիութիւն և այնպիսի վճռական և անվիճելի դրոշմական յատկանիշ՝ որպիսին է Աստուածային, որը՝ իւր էութեամբ անթոյլադրելի է համարում եկեղեցու հիմնական խնդիրների քննութիւնը, փոփոխութիւնը և տարբեր կարծիքների արտայայտութիւնը, 'ի բաց առեալ վարչական և կանոնադրական կողմերը, վերոյիշեալ հիմամբ ընդհանուր եկեղեցու զանազան «եկեղեցական իրաւունք»ները համարեա թէ կրկնութիւններ են մէկը միւսի այլ և այլ դասաւորութեամբ, որպիսիներից մէկն էր և իմ Ա. գրքի ոչ հայկական մասը և նոյնպէս Բ. գրքիս նրան համապատասխանող կտորը. իսկ երկուսի մէջ հայկականը եթէ ոչ նոր, գոնէ համախմբուած և դասաւորուած մի գործ է, որը մեր եկեղեցու կեանքի հետ ծանօթացողի համար կարծում եմ չի լինիլ կարևորութիւնից զուրկ մի աշխատութիւն։

Ն Ո Ւ Է Ր

Բ Ա Գ Ո Ւ Ե Ց Ի

Պ. ԼՈՒԴՎԻԿ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆ

ՍԵՐԳԷՅԵԱՆԻՆ

ՀԵՂԻՆԱԿԻՑ

## Ա. ԵԿԵՂԵՑՈՒ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹԻՒՆԸ.

### Ա. ԵԿԵՂԵՑՈՒ ԱՆԴԱՄՆԵՐԻ ՄԱՍԻՆ

*Եկեղեցու որոշման մէջ (տես ա. գիրք. 4 երես) մենք զանազանեցինք երկու մաս, տեսանելի և անտեսանելի, անտեսանելին հաւատն է, որի վրայ Յիսուս հաստատեց անդրդուելի հիմքերով իւր եկեղեցին. տեսանելին՝ այն անհատներն են—ժողովուրդը, որը Քրիստոսի հաւատքով միացած, կազմում է հաւատացեալների հասարակութիւնը։ Այս հասարակութիւնը ինչպէս է կազմւում. ո՞վ իրաւունք ունի դրա անդամ համարուելու, ինչ իրաւունքներ և պարտաւորութիւններ ունի անդամը. փորձենք տեսնել։*

*Ա. գրքի մէջ եղած եկեղեցական կանոնների համաձայն սկզբնական և հիմնաւոր միջոցը, որով կարելի է եկեղեցու անդամ լինելու իրաւունքը և պարտաւորութիւնները ստանալ, է մկրտութիւնը դրոշմով, և պաշտօնապէս միանալը եկեղեցու հետ առանց կրկնամկրտութեան, եթէ միացողը արդէն նախկին իւր եկեղեցու մկրտութիւնը ընդունած է։*

*Իւրաքանչիւր մարդ, որը կընդունի եկեղեցու դաւանութեան և սահմանադրութեան համաձայն մկրտութիւն, կըհամարուի եկեղեցու անդամ և ձեռք կ'բերի եկեղեցական իրաւատիրութիւն։ Այսպէս էր ընդհանուր կանոնը բոլոր եկեղեցիների համար մինչև նրանց ըստ դաւանութեան բաժանումն։ Բայց, նախ քան բաժանումն, երբ առաջացան զանազան աղանդներ, հերձուածներ, որոնցից մեծամասնութիւնը ընդունում էր քրիստոնեայ անունը, իսկ դաւանանքի մէջ տարբեր հայեացք էր մտցնում, երբեմն չընդունելով մկըր-*

*Ըստ բարձու հրամանի Նորին Ս. Օծութեան Վեհափառ Հայրապետի ազգիս, Տ. Տ. Մկրտչի, Դիւանս թոյլատրէ տպագրութիւն հրատարակութեանս:*

*Դիւանապետ՝ Կորիւն վարդապետ*

*ի 8 Յունուարի 1905*
*Տփխիս*
*Թ. 6*

տուլժիւնը, երբեմն մկրտելով ոչ ընդհանուր եկեղեցու սահմանածի համեմատ, այլ երեք որդու, կամ երեք հօր անունով, այդպիսի անձինք եկեղեցու ծոցը մտնելիս, չէին կարող ընդունուել առանց իրանց նախկին մոլորուլժիւններից հրաժարուելու, իսկ եթէ դրանք եկեղեցու սահմանած կարգով չէին մկրտուած, պէտքէ ընդունուէին միմիայն կանոնաւոր մկրտուլժեամբ—դրոշմով, մկրտուլժիւն ստացած լինելու դէպքում, այդպիսիները հրաժարւում էին իրանց բոլոր մոլար վարդապետուլժիւններից ընդհանուրի առաջ և եկեղեցու անդամ համարւում եպիսկոպոսի օրհնուլժեամբ՝ նրա ձեռքը գլխներին ընդունելով (Նիկիայի—8, 7, 11, կ. բարս)։

Այս, վերջին դէպքի նմանէին վարւում եկեղեցիները՝ բաժանումից յետոյ, մէկ դաւանուլժիւնից միւսը անցնելու ժամանակ, նորեկը միայն հրաժարւում էր նախկին դաւանուլժիւնից առանց ենլժարկուելու կրկնամկրտուլժեան։

Հին եկեղեցում մկրտուողը պիտի անշուշտ պատրաստուէր մէկ, երկու, երեք տարի, մինչև որ կատարեալ հաստնուլժեամբ և նախապատրաստուլժեամբ արժանանար մըկրտուլժեան։

Կանոնաւոր մկրտուլժիւնը լինում է երեք անգամ ընկղմամբ (Մատլժ. իը. 19). բ—առ. 49 և 50 կանոններով (տես ա. գիրք 104—105 եր.) ով այսպէս չի մկրտիլ, կ'զրկուի կարգից։ Բայի ընկղմումից հին եկեղեցում գործ էր ածւում և սրսկման ձևը, երբ հիւանդ էր մկրտուողը, կամ ջուրը քիչ էր, այսպիսի ձևով մկրտուածը կղերում չէր ընդունւում, որովհետև այդպիսի դէպքերում մկրտուած անձի կատարեալ հաւատք և հաստնուլժիւն ունենալուն վերաբերմամբ միշտ կասկածներ էին յարուցանւում։

Սրսկմամբ մկրտուլժիւնը գոյուլժիւն ունէր արևմտեան եկեղեցում. Գրիգոր—գ. պապը հրամայեց կատարել ընկղմամբ. լժոյլ էր դրւում նոյնպէս միանգամով և ոչ երեք ընկղմամբ, օր. Իսպանիայում. իսկ Միլանում միայն գլուխ էին ընկղմում ջրի մէջ առանց մարմինը լժրջելու (տես Пр. соб. 1858 г. обз. церк. пост.). Մեր և յունաց եկեղեցին մկը-

տում է երեք ընկղմամբ ըստ Բ.—ԱՌ. կանոնաց։ Նախկին դարերի մեծահասակների մկրտութիւնը տեղի տուաւ փոքրերի, որոնց համար եկեղեցին սահմանեց երաշխաւորներ, այն պայմանով որ երաշխաւորները (կնքահայրները) պարտէին մանուկներին համաձայն եկեղեցու վարդապետութեան և քրիստոնէական կրօնի ոգու և պատասխանատու լինէին նոր մկրտուածների փոխարէն հասարակութեան առաջ։

Այսպիսով մկրտութիւնը թէ մեծերին և թէ փոքրերին՝ երաշխաւորների միջոցով, իրաւունք է տալիս եկեղեցու անդամ լինելու և իրաւատէր համարուելու։

Այստեղից ծագում է մի ուրիշ անմիջապէս կապ ունեցող հարց, արդեօ՞ք եկեղեցու անդամ լինելը կախուած է մարդուս ազատ կամքից և անձնական դրամադրութիւնից թէ ո՛չ։ Եկեղեցու կանոնները ասում են, որ առանց եկեղեցու չկայ փրկութիւն, առանց եկեղեցուն պատկանելու և նրա միջոցով իրականացնելու կեանքի մէջ հոգևոր բարձր նպատակները և գաղափարները՝ չի կարելի, ճշմարիտ քրիստոնեայ լինելու համար, պէտքէ պատկանել եկեղեցուն իբրև միակ փրկող հաստատութեան աշխարհիս մէջ։

Միայն պէտք 'ի նկատի ունենալ, որ այդ անհրաժեշտութիւնը ստիպողական չէ՝, հապա բարոյական (Ա. գիրք 198, 200 եր.), իւրաքանչիւր մի նոր մտնողից պահանջւում է գիտակցական հաւանութիւն և կատարեալ պատասխանատուութիւն իւր արածների վերաբերմամբ։ Ուստի և՝ հիւանդ ուղեղով և կամքով մարդիկ չ'պէտք թոյլտուութիւն ստանան մկրտուելու. Տիմոթէոս Աղէքսանդրացին 2 և 4 կանոններով արգելում է այսահարներին մկրտել մինչև չառողջանան կամ վերջին դէպքում, միայն մեռնելիս։ Կարթագենի 54 կանոնով հիւանդները միայն այն ժամանակ էին թոյլատրւում մկրտութեան, երբ անկարող լինելով անձամբ՝ բերանով դաւանելու քրիստոնէութիւնը, նրանց փոխարէն մի ուրիշն իբրև երաշխաւոր վկայում էր։ Հասակաւոր մկրտուողներին երկար ժամանակամիջոց էին նշանակում դաւանութեան հետ լաւ ծանօթանալու համար, գիտակցութեամբ և

հաստն խելքով ըմբռնելու քրիստոնէութիւնը և ապա մըկրտուելու (տես ա. գիրք. 147, 224, 1,225), այս բանը պարզ երևում է մկրտութեան խորհուրդը կատարելու ժամանակ քահանայի արած աղօթքներից և նրա տուած հարց ու պատասխաններից (տես Մաշտոց կարգ մկրտութեան)։

Այդ տեսակէտով արդէօք երախաների մկրտութիւնը չի հակասում այդ կանոններին։ Այդ մասին կանոնական սահմանադրութիւնները որոշում են այսպէս, որովհետև ծնողները, դաստիարակները և երաշխաւորները (կնքահայրեր) պարտաւորւում են անշուշտ կրթել և դաստիարակել իրանց մանուկ մկրտուածներին այնպէս, ինչպէս պահանջում է եկեղեցական կարգ կանոնը, որ նրանք պատասխանատու են հասարակութեան առաջ իրանց յանձն առած սուրբ պարտականութեան համար, ուստի և եկեղեցին թոյլ է տալիս մեծերի պատասխանատուութեամբ փոքրերին մկրտել, մինչև իսկ մերժելով նրանց, որոնք իրանց որդւոց չէին մկրտում։ Փոքրերի մկրտութիւնը սկսուած է հէնց առաքեալների ժամանակ, երբ Պելագիանները այդ մերժում էին, այն ժամանակ Կարթագենի ժողովը նզովեց դրանց և բացադրեց որ փոքրերի մկրտութիւնը ազատում է նրանց Ադամայ մեղքից։ Յուստինիանոսի օրէնքներով խիստ պատժի սպառնալիքներով հրամայւում էր մկրտել իրանց որդիներին (Սոկոլով —210 եր.)։ Մինչև իսկ եկեղեցին իւր խնամքին է վերցընում և մկրտում բոլոր դէն ձգուած, գերութեան մէջ մընացած, այլ միջոցով գտնուած անտէր երախաներին, կնքահայր նշանակելով սարկաւագներին, և սարկաւագուհիներին եթէ մկրտուողներն աղջկերք են։

Հնուց սովորութիւն էր երաշխաւոր (կնքահայր) նշանակել այնպիսի անձանց, որոնք կարող էին իրանց անմիջական հսկողութեամբ կրօնական դաստիարակութեամբ կրթել մըկրտուածներին, դրա համար սարկաւագները և կանանց համար սարկաւագուհիները համարւում էին ամենայարմարը, որոնք կկարողանային պատասխանատուութիւնը վերցնել իրանց վրայ։ Կանանց համար հէնց առաջին դարուց սկսած

սարկաւագուհիներ նշանակուեցին, ոչ միայն կնքամայր լինելու, այլ և մկրտութեան մէջ մասնակցելու, սրանք կանանց մկրտում էին աւազանում, իսկ եպիսկոպոսը կամ քահանան վարագոյրի արանքով օծում էին մեռոնով. յետոյ արդէն կնքահայրութիւնը դարձաւ հանրական, իւրաքանչիւր մարդ իւր ծանօթին, ազկականին կանչում էր մկրտութեան ժամին և մկրտուածին տալիս նրա գիրկը, առանց նախկին դարերի խիստ պատասխանատուութիւնը սանիկի դաստիարակութեան վերաբերմամբ նրա վրա բարդելու։ Մկրտութիւնը կատարւում էր ըստ հրէական թլպատութեան կարգին, եօթերորդ օրը, երբեմն ուշ՝ եթէ եղանակը վատ էր, երբեմն շուտ, եթէ մահուան վտանգ կար։ Մեր կանոններով մկրտութիւնը կատարւում էր եկեղեցում, վատ եղանակի և հիւանդութեան դէպքում տանը։ Ոչ քրիստոնեայի՝ Հայոց եկեղեցու անդամ լինելու միակ միջոցն է մկրտութիւնը ըստ ծիսի Հայոց եկեղեցու, քրիստոնեայ այլադաւանի Հայոց դաւանութիւն ընդունելու միջոցն է՝ գրաւոր հրաժարուել նախկին դաւանական որոշումներից, և բացարձակ եկեղեցում դաւանել Հայոց եկեղեցու ուղղափառութիւնը և նրա անդամ լինելը։ Ռուսահայոց շրջանում դաւանափոխութիւնը լինում է պետական հաստատութիւնների գիտութեամբ և թոյլտուութեամբ։

## Բ. ԵԿԵՂԵՑՈՒ ԱՆԴԱՄԻ ՊԱՐՏՔ ԵՒ ԻՐԱՒՈՒՆՔԸ

(Սոկոլով—211 եr.)

Եկեղեցու անդամը ձեռք է բերում այն բոլոր պարտք և իրաւունքները իբրև հաւատացեալ, որոնք նպաստում են նրան հասնել իւր հոգեկան ձգտումների և պիտոյքների կատարման։ Նա իբրև՝ եկեղեցու անդամ, առաջին՝ իրաւունք ունի մասնակցելու եկեղեցու Աստուածպաշտական բոլոր կարգերին, հնազանդելով դաւանական և օրէնսդրական կանոններին, երկրորդ՝ մասնակցելու եկեղեցական հասարակական զանազան ընտրութիւններում, օր. եկեղեցու պաշտօնեաների,

կալուածների կառավարիչների, հոգևոր դպրոցների վարիչների, ուսուցիչների, նոյնպէս և եկեղեցու նիւթական ապահովման խնդրում և.։ Երրորդ՝ ընտրուելու և լինելու եկեղեցու պաշտօնեայ, վայելով այն բոլոր արտօնութիւնները, որոնք կապուած են այդ պաշտօնի հետ։ Չորրորդ՝ իրաւունք ունի բոլոր եկեղեցական—հասարակական գործերում մասնակցելով հանդերձ արդարութիւն և դատ պահանջելու այդ շրջանում ոտնակոխ արած իրաւունքների համար։ Վերոյիշեալ իրաւունքների հետ կապուած են և պարտաւորութիւններ. առաջին՝ անհատը ընդունուելով եկեղեցու անդամ, յօժարակամ մտնելով այդ շրջանի մէջ պարտաւոր է ընդունել այն դաւանաբանական և վարդապետական ուսմունքը և կարգերը, որոնք ընդունում է եկեղեցին, Լաւոդիկեայի 46 կանոնը այդ պայմանով է ընդունում մէկին եկեղեցու անդամ (ա. գիրք 224 երես), մինչև իսկ այդ պարտաւորութիւնը գրաւոր գրւում էր մկրտուողից և մտցնւում եկեղեցու գրքերի մէջ։ Երկրորդ՝ Աստուածպաշտական արտաքին արարողութիւնների և կարգերի մէջ, նա պարտաւոր է ենթարկուել այն սահմաններին, որոնք որոշուած են եկեղեցական կանոնով, իրաւունք չունի իւր կարծիքի համեմատ փոփոխութեան ենթարկել և իւր համար նոր ձևերով կարգեր սահմանել։ Բոլոր ինքնակամ ժողովուրդները, փոփոխուած ժամերգութեամբ աղօթատեղիները համարւում են եկեղեցուց դուրս և արգելւում են եկեղեցական կանոններով. (տես ա. գիրք 98, 204, 237)։ Արհամարհական վերաբերմունքը դէպի հաստատուն կարգերը, եկեղեցական կանոնները, ենթարկւում էին խիստ պատիժների (ա. գիրք 204 երես)։ Խորհուրդների կատարումը, խոստովանութիւն, հաղորդութիւն համարւում են ջերմեռանդ քրիստոնեայի պարտք և պատիժների էր ենթարկւում նա, որ առանց պատճառ բերելու հրաժարւում էր հաղորդուելուց (ա. գիրք 90, 210 երես )։ (Սոկոլով—213 եր.)։ Երրորդ՝ իւրաքանչիւր անդամ պարտաւոր է հնազանդել հոգևոր կառավարչական հաստատութիւններին և անձանց, որովհետև եթէ անդամը յօժարակամ մտնում է

այդ շրջանը, որի հասարակական կազմակերպութիւնը, քայքայման չենթարկուելու համար, հաստատուած են հսկող հիմնարկութիւններ և անձինք որոշ իրաւունքներով, ուստի և պարտաւոր է կատարելու որոշուած պահանջները և հընազանդուել արդէն օրինական ոյժ ստացած կարգերին։ Չորրորդ՝ անդամի պարտաւորութիւնն է կատարել բոլոր այն կանոնները, որոնք կսահմանի հասարակական խորհու՛րդը ամբողջ եկեղեցու տնտեսական ներքին և արտաքին կազմը պահպանելու և ապահովեցնելու համար։ Այս ստիպողական ձև ունեցող կանոններից չի կարելի հեռու եզրակացութեան գնալ, թէ, եթէ կրօնը, եկեղեցին բարոյական կանոններով և հոգեկան—քրիստոնէական գաղափարների քարոզներով են կամենում մարդկանց ուղղել, նրանք պէտքէ ստիպողական միջոց գործ չդնեն, պէտքէ մարդու ներքին ազատութիւնը չսահմանափակեն, այլապէս եկեղեցին իւր բարոյական—վարդապետական նշանակութիւն ունեցող դերից քաղաքացիականի կփոխուի։ Եկեղեցին ամենևին ստիպողական միջոցով գործ չի կատարում այն դէպքում, երբ խնդիրը վերաբերում է ներքին աշխարհին, բարոյական—կրօնական կողմին, ու՛ր ո՛չ մի բռնադատական միջոցով չի կարելի անհատի ներքին աշխարհը փոփոխութեան ենթարկել կրօնական մտքով, այն է ստիպել որ հաղորդութեամբ փրկուի մեղքերից, հաւատքով ընդունի խորհուրդների ներգործութիւնը և. այս ձևի խնդիրներում եկեղեցին տալիս է կատարեալ ազատութիւն ամեն մի անդամի, որը պատասխանատու է միայն իւր խղճի առաջ. մինչև իսկ, երբ խնդիրը վերաբերում է եկեղեցական—վարչական, հասարակական գոյն ունեցող կողմերին, այդ դէպքում անդամները եթէ գլանում են իրանց պարտքը կատարել, եկեղեցին դատապարտում է նրանց ոչ մարմնական պատժի սպառնալիքով, այլ ենթարկում է ապաշխարանքի, բանադրանքի և եկեղեցուց մերժման։ Բոլորովին տարբեր հանգամանք է, երբ անդամը սահմանից անցնում է, խանգարում է ընդհանուր կարգը և գայթակղութեան պատճառ դառնում, այսպիսի դէպքում ընդհանուրի շահը պահանջում

է դիմել հասարակութեան միւս անդամներին զսպելու միջոցներ գտնել և սանձահարել կարգ խանգարողներին՝ դիմելով 'ի հարկէ ոյժի, մարմնաւոր իշխանութեան միջոցով։ Այսպէս Անտիոքի 5-րդ կանոնը (ա. գիրք 211 երես) և Շահապիվանի ժողովը որոշում են դիմել ոյժի և բռնի կերպով կարգ սահմանել. մինչև իսկ մեր Շահապիվանի 447-ի ժողովը մահուան պատիժ է նշանակում բոլոր հաւատուրացներին և եկեղեցու կարգերին հակառակողներին. այս խիստ կանոնների չկրկնումն ուրիշ ժողովներում, ապացոյց է որ Հայաստանը գտնւում էր խիստ բացառիկ հանգամանքներում, Վարդանանց պատերազմի երկունքում, երբ դաւաճան հայերը կրօնափոխ լինելով, անխղճաբար աւերում էին եկեղեցիները, այդ հանգամանքը ստիպեց նախարարներին միանալ եկեղեցու խիստ պահանջների հետ մահուան պատիժ նշանակելով հաւատուրացներին։—Բացի այդ բացառիկ դէպքերից, այլևս ուրիշ որև է ժողովի կանոններում չենք պատահում այդպիսի խիստ վճիռների, համարեա ամեն տեղ նոյն համոզեցուցիչ՝ խրատական կարգերն են սահմանւում. իսկ ինչ վերաբերում է անհատի անձնական կապ ունենալու չափին եկեղեցու հետ, այդ բոլորովին անկախ և ազատ վիճակի մէջ է դրած, իւրաքանչիւր անհատ պատասխանատու է իւր խղճի առաջ, եթէ անձնական ազատութեան մի որև ճնշում նըկատեց եկեղեցու կողմից, նա կարող է իսկոյն և եթ խզել իւր կապը այդ եկեղեցու հետ և դուրս գալ այդ հասարակութեան սահմանած կրօնական պարտաւորութիւններից, այլապէս եկեղեցին ծառայած չէր լինել դարաւոր և բարոյական բարձր սկզբունքին՝ որ եկեղեցու անդամ լինել կարելի է հասուն գիտակցութեամբ և յօժար կամքով։

## Գ. ԵԿԵՂԵՑՈՒ ԱՆԴԱՄՈՒԹԻՒՆԻՑ ԶՐԿՈՒԵԼԸ.

*Եկեղեցու անդամութիւնից կարելի է զրկուել երկու ձեւով, կամ կամաւոր կերպով, երբ ինքնակամ հեռանում է անդամը, և ակամայ, երբ զանազան յանցանքների համար դատապարտւում է եղեղեցուց մերժման։ Հին կանոններով ապաշխարութեան ենթարկւում էր եկեղեցին յանցաւոր անդամին 4 ձեւով, կանգնացնելով լացողների, դրսի ապաշխարողների, ներսի ապաշխարողների և հաւատացեալների հետ և ապա թոյլ էր տալիս իբրև հաւատացեալ մասնակցել եկեղեցական ընտրութիւններին և ներկայ լինել պատարագին ցըվերջ։ Նայելով յանցանքին, նրանք ենթարկւում էին համապատասխան ապաշխարանքին մէկ տարուց սկսած մինչև 20 տարի կամ ցմահ, միմիայն մեռնելիս իրաւունք էր դրւում հաղորդուելու. մինչև իսկ Սարդիկեայի ժողովի կանոններով օրինազանց եպիսկոպոսին հրամայւում էր ցմահ ապաշխարել և չհաղորդուած թաղուել**)։ *Բանադրուածներին իրաւունք չկար թաղելու օրինաւոր կարգով, եթէ բանադրանքը չվերցրած մեռնում էին (տես Ա. գիրք. 171, 434, 611)։ Բայց ընդհանրապէս, մեծ յանցաւորները մինչև իսկ մեռնելիս արժանանալով հաղորդութեան՝ մտնում էին իրաւատէր անդամների շարքը։ Մկրտուած անհատը՝ եթէ ենթարկւում է զանազան մեղքերի համար այլ և այլ պատիժների և մինչև իսկ ցմահ անհաղորդութեան, բայց և այնպէս պահում է եկեղեցու անդամութեան այն իրաւունքը, որը տրւում է նրան մկրտութեան խորհուրդով, որպիսին համարւում է անջնջելի, և այս հիմամբ ամենածանր յանցանքների համար դատապարտուած և եկեղեցուց հեռացրած անդամը՝ նորից վերադառնալիս՝ չէր ենթարկւում կրկնամկրտութեան, այսպէս ուրեմն մկրտութեամբ ստացած եկեղեցական իրաւատիրութիւնը մնում է ցմահ։*

*) *Շնորհալին 32 կանոնով (տես Ա. գ. 579 երես) այլազգիների միջոցով բռնի եպիսկոպոսական իրաւունք ձեռք բերողին ենթարկում է կարգալոյծ լինելուն, մեռնելիս հաղորդութիւն չստանալուն և քահանայական թաղումից զրկուելուն։*

## Դ. ԵԿԵՂԵՑՒՈՅ ԱՆԴԱՄՆԵՐԻ ԲԱԺԱՆՄՈՒՆՔԸ

Եկեղեցու անդամները բաժանւում են երկուսի, աշխարհականների և հոգևորականների, հոգևորականներն էլ ըստ իւր կարգի՝ հասարակ պաշտօնեաների, եկեղեցական—վարչական իշխանութիւն ունեցողների և վանականների։

Աշխարհականների պարտք և իրաւունքի մասին արդէն խօսւեց նախորդ գլուխներում իբրև եկեղեցու անդամի։

Հներում հոգևորական ընդհանուր բառի փոխարէն գործ էր ածւում կլիրոս բառը, կղեր, կղերական ըստ մեր կանոնների, յունական այդ բառը նշանակում է վիճակ, բաժին. այդպէս յիշւում է գործք առ. Ա. գլ. 17, 25 (Մադաթիայի ընտրութիւնը Յուդայի փոխարէն)։

Այդ բառը գործ էր ածւում երկու նշանակութեամբ, 1) իբրև հոգևորականների համախմբումն և 2) այն դրութիւնը որը բռնում է հոգևորականութեան մէջ որև է անձը։ (Սոկոլով—221 երես)։ Յունական կլիրոսի փոխարէն հռոմայեցիք գործ էին ածում օրդօ բառը, որ նշանակում է դաս, կարգ, այն մտքով թէ եկեղեցում սպասաւորողների որ դասին է պատկանում հոգևոր անձը։ Ա. դարում, առաքեալների ժամանակ հոգևոր դասակարգը կար երեք աստիճանով, սարկաւագ, քահանայ և եպիսկոպոս. (գործք. ժզ. 18, ի. 17, 28, Ջ. Յ. Փիլիպ. Ա. գլ. 1—3)։ Գ. դարում սկսում են աւելանալ նոր պաշտօններ, սարկաւագի օգնականներ—կիսասարկաւագներ, սաղմոս երգելու համար—սաղմոսասացներ կամ երգիչներ, առաքելական թղթերը կարդացող—ընթերցողներ, ջահ վառողներ—ջահընկալներ, այսահարներին երդմնեցող—երդմնեցուցիչներ։

Հոգևորականութեան մէջ մտնելու համար, եկեղեցում ծառայելու, սպասաւորելու և ժողովրդականների հոգևոր պէտքերը հոգալու համար պէտքէ ընդունել ձեռնադրութեան կարգը, առանց որի ոչ ոք չի կարող վայելել այն իրաւունքները, որոնք յատկացուած են այդ դասակարգին։

## Ե. ՀՈԳԵՒՈՐԱԿԱՆ ԴԱՍԱԿԱՐԳԻ ԱՍՏԻՃԱՆՆԵՐԸ.

(Соколовъ, церковное право. Церковныя постановленія о священствѣ, и о таинствѣ священства (Прав. собесѣдникъ 1859. 1857 г. г.); устройство церк. іерархіи Пр. собесѣд. 1858 г.)

Եկեղեցու վարդապետութեամբ ձեռնադրութեան հետ միասին ձեռնադրուող անձը ստանում է առանձին հոգեկան շնորհքներ այդ աստիճանի համապատասխան գործողութիւններ կատարելու համար։ Ձեռնադրութեան խորհուրդը՝ քահանայութիւնը սահմանեց Քրիստոս, փչելով իւր աշակերտների վրայ տալով նոցա հոգին սուրբ (Յով. ի. 21—23). իսկ աշակերտները այդ շնորհքը և իրաւունքը տուին իրանց յաջորդներին ձեռնադրութեամբ (ձեռք դնելով). գործք—գ. 6. ժդ. 23, Ա. տիմ. դ. 14)։ Ձեռնադրութեամբ շնորհք տալու սովորութիւնը կար և Հին—ուխտումը, Յակովբ Նահապետը ձեռքը դնելով օրհնեց Եփրեմին և Մանասէին, Մովսէս ձեռք դնելով իշխանութիւն տուաւ Յեսուին՝ սրբոյ շնորհքը հայցելով նրա վրայ (Բ. Օրին. լդ. 9)։ Նոյն ձեւով առաքեալները ձեռք դնելով հոգին սուրբ էին աղօթքով իջեցնում ձեռնադրուողի վրայ։ Դիոնիսիոս Արիսպագացին այսպէս է նկարագրում իւր ժամանակի ձեռնադրութիւնը «Ձեռնադրուող եպիսկոպոսը, երկու ծնկով չոքած զոհարանի (սեղանի) առաջ, գլխին բռնած ունենալով Աս՜ծոյ խօսքը և եպիսկոպոսի ձեռքը, օրհնւում է սրա միջոցով ընդունելով սրբազանութեան շնորհք. քահանան նոյնպէս չոքած զոհարանի առաջ՝ կողքից, գլխին բռնած ունենալով եպիսկոպոսի աջը, ընդունում է քահանայագործութեան շնորհքը։ Սարկաւագը կողքից՝ չոքած զոհարանի առաջ մի ծնկով, գլխին բռնած ունենալով եպիսկոպոսի աջը, օրհնում է, ստանալով (ծառայողի) սպասաւորողի աստիճան» (Прав. соб. 1867 г.) Կարթագենի Դ. ժողովի 2-րդ կանոնով, երկու եպիսկոպոս Աւետարանը բռնում են ընծայացուի գլխին, մէկը օրհնում է, իսկ միւսները ձեռքները դնում են գլխին և առաջինի հետ

շարունակում օրհնութիւնը։ Այս մասին խօսում են Առաքել. և Նիկ. կանոնները (տես Ա․ գիրք 83 և 148—149 երես)։ Հոգևորականութեան այդ երեք աստիճանը գոյութիւն ունէր և Հին—ուխտի մէջ. ա. քահանայապետը, բ. քահանաներ, գ. Ղևտացիք։ Առաջինները Ահարոնից սկսած ժառանգաբար ստանում էին քահանայապետութիւնը և օծւում էին իւղով ոչ միայն գլխի սրսկմամբ, այլ և գլխից սկսած մինչև ոտքեր (ղև է. 12, սաղմ. ճլբ. 2)։ Քահանայք Ահարոնի որդիներից էին Եղիազարի ցեղից, 7 օր զոհ անելուց յետոյ ընդրւում էին իրանց պաշտօնում. (ել. 29. գլ. ղև. 8. գլ.)։ Ղևտացիք ծառայում էին քահանաներին. (թուոց գլ. բ.)։ Նոյն ձևը համարեա մնաց քրիստոնէութեան շրջանում, սարկաւագներ համարւում էին քահանայի օգնականներ և ծառայողներ. քահանայք եկեղեցու սեղանում սպասաւորողներ. իսկ եպիսկոպոսները ընդհանուր հսկող, տէր և տեսուչ։ Ձեռնադրութեամբ տրւում է զանազան աստիճաններ, բարձր, որը միացած է քահանայութեան խորհրդի հետ, և ստորին՝ որը քահանայութեան խորհուրդի հետ չի միացած, թէև ձեռնադրութեամբ է տրւում. առաջինը ծառայում է սեղանում, երկրորդը սեղանից դուրս եկեղեցու մէջ. առաջինը կատարում է նուիրապետական պաշտօններ, երկրորդը միայն պատրաստւում է մտնելու նուիրապետութեան մէջ։ Երկրորդը կրթւում է, հետևողաբար զարգանում է այդ աստիճանների մէջ և ապա արժանանում ընդունուելու բարձր կարգի մէջ։ Որովհետև բարձր շրջանը, սրբազնագործ պաշտօնեաները մեծ իրաւունքներ և պարտքեր են յանձն առնում կատարելու, ուստի և եկեղեցական կանոնադրութիւնը ամեն միջոց գործ է դնում սահմանել այնպիսի կանոններ, որոնց օգնութեամբ հնար լինէր հասարակութեան մէջի լաւ ույժերը համախմբելու, կոչելու այդ պատասխանատու դերը յանձն առնելու։ Այդ շրջանի մէջ մտնելու համար չի պահանջւում, դասակարգային, ժառանգական կամ ազնուական դասի առաւելութիւններ, անխտիր ընդունւում են ամեն կարգի պատկանող անձինք, միմիայն արժանաւոր յատկութեամբ։ Բացառութիւն

կազմում են կանայք, որոնք առաքելական սահմանադրութեան համաձայն իրաւունք չունէին սրբագնագործ պաշտօնեայի կարգեր կատարել, այլ իբրև սարկաւագուհի և սոտրին պաշտօնեայ կարող են ծառայել եկեղեցում այն էլ տարիքը հասնելուց յետոյ. Եպիփանոսը ասում է, կանանց թոյլ չտալ պատարագ անել, հապա միայն պաշտօնակատար լինել, թէև հներում յիշւում է քահանայուհիներ, բայց նրանք չէին կատարում քահանայի պաշտօն, այլ այդ անունը կրում էին, որովհետև միւսների համեմատութեամբ աւագ էին (Սօկօլ. 228) (Ս. կորն. ժգ. 34) (Ս. Տիմ. բ. 12)։

Այժմ տեսնենք ինչպիսի պայմաններ են պահանջւում ձեռնադրուողից, ինչ յատկութիւններ են հարկաւոր ընդունուելու և չընդունուելու համար այդ շրջանի մէջ։

1) Հոգևոր այդ ասպարէզը չեն ընդունւում այն պակասութիւն ունեցող անձինք, որոնց պակասութիւնները կարող են խանգարել եկեղեցական պարտականութիւնները կատարել, որ ասել է թէ ոչ թէ մարմնական արատ ունենալն է պատճառ բերւում, այլ գլխաւորապէս պաշտօնը ճշտութեամբ կատարելու արգելքը, որը նկատւում է և Մովսիսական օրէնքի մէջ (ղև. իա. 16) օր. խլութիւնը, կուրութիւնը արգելք են լինում ա—առ. 78 կանոնով (111 եր. Ս. գիրք) մտնելու հոգևորականութեան մէջ, բայց աչքով խեղը և ոտքից վնասուածը (111 երես) որը կարող է շարժուել և անխափան պաշտօն կատարել, եթէ արժանաւոր անձն է, կարող է մինչև իսկ եպիսկոպոսական աստիճանի հասնել, որովհետև ա—առ. 77 կանոնը (111 երես) ասում է՝ պղծողը ոչ թէ մարմնական արատն է, այլ հոգեկան։ Նոյն կերպով և բնական ներքինին, կամ բռնի միջոցով այդ պակասութիւն ստացողը, եթէ արժանաւոր է, կարող է ա—առ. 21-րդ կանոնով (Ս. Գ. 95 երես) հասնել բարձր աստիճանի։ Իսկ ինչ վերաբերում է այն պակասութիւններին, որոնք վայել չեն եկեղեցական կարգեր կատարողին, ժողովրդի յարգանքը, պատկառանքը վայելելու տեսակէտից, օր. շեղ աչք, կաղ ոտք ունենալը, որոնք կարող են ծիծաղ յարուցանել պաշտօն կա-

տարելիս, թէ և արգելական ոչինչ չկայ սրանց վերաբերմամբ, բայց այդ պակասութեան տէր անձանց առհասարակ չեն ընդունում այդ կարգի մէջ վերոյիշեալ անպատեհութիւնն առաջացնելու երկիւղից (Թագ. առ. 2 կանոն. Ա. գ. 491 երես)։ Մարմնական պակասութիւնների մէջ մտնում են այն հիւանդութիւնները, որոնց տէրերը ուղիղ դատողութիւն, հասուն խելք չունին, կամ նրանք, որոնք շատ անգամ ենթարկւում են հոգեկան խանգարմունքների, այսպիսիներին առ. 79 կանոնը (111 Ա. գիրք) անուանում է այսահարներ, որոց հետ կարելի է միացնել և խելագարներին, հոգեկան այլ և այլ խանգարմունք ունեցողներին, այսպիսի հիւանդութիւնները հարկաւ կարող են արգելք հանդիսանալ եկեղեցական պաշտամունքները սրբութեամբ կատարելու։ Որովհետև եկեղեցու պաշտօնեայ ընտրւում են հասուն խելքով, առողջ հոգով, և որոշ կամք ունեցող մարդիկ, ուստի և եկեղեցական կանոնները այդպիսի յատկութիւններ ձեռք բերելու համար որոշում են տարիքը՝ հասակը, ընդունելով որ տարիքը փորձի, դատախարակութեան, կեանքի և շրջանի մէջ շփուելուց յետոյ տալիս է կանոնաւորուած, քիչ ու շատ հաստատուն բնաւորութիւն. այդ հիմունքով զանազան աստիճանի համար նշանակւում են զանազան տարիքներ. այսպէս՝ քահանայի համար Նէոկեսարիայի 11 կանոնը նշանակում է 30 տարեկան հասակը (Ա. գ. 199 եր.). Թագ. ախ. 3 կանոնը 30 տարեկան (Ա. գ. 477 եր.), իսկ Սսի 3 կանոնը 27 տարեկան (Ա. գ. 452). սարկաւագի համար սահմանւում է ըստ Կարթագենի 25 տ. ըստ Թագ. առ. 27, ըստ Սսի 27 տ., կիսասարկաւագների համար 20 տարեկան հասակ, սարկաւագուհիներին 40։ Աւելի ստորին պաշտօնեաների համար որոշ տարիք չկայ նշանակուած, միայն փոքր հասակից ընդունւում են միաբանութեան մէջ ո՛չ իբրև աստիճանաւոր, այլ իբրև պատրաստուող*)։ Հներում ինչպէս երևում է Կարթագենի 20 կանոնից թոյլատրւում էր փոքրերին մասնակցել ընթերցողի, երգչի պաշտօնով ժամերգութեան մէջ, այսպէս էր և մեր

*) Տես Ներսէս Ե—ի 83 կանոնք. Ա. գ. 612 երես։

եկեղեցում հներում և այժմ. թէև Զ. տիեզերական ժողովը պահանջում էր, որ առանց օրհնութեան ոչ ոք ընթերցող և երգիչ չլինի եկեղեցում, բայց մեր եկեղեցին համարում էր այդ պաշտօնները ազատակամ և ո՛չ պարտաւորական և ո՛չ են-թարկւող ձեռնադրութեան կամ օրհնութեան, և այդ տիեզերական ժողովի սահմանածը ո՛չ պարտաւորեցուցիչ իւր համար, քանի որ Զ. տիեզ. ժողովը չի ընդունւում հայոց եկեղեցուց իբրև օրէնսդիր և հանրական։ Եպիսկոպոսների համար ըստ Թադ. առ. կանոնների որոշւում է ո՛չ պակաս 30 և ո՛չ աւելի 50 տարեկանից. մանաւանդ որ Սարդիկեայի ժողովի կանոններով ոչ ոք չի կարող եպիսկոպոսութեան հասնել առանց իւրաքանչիւր աստղադաս աստիճանում որոշ ժամանակամիջոց մնալուց, այնպէս որ ամենափաղ հասակն պիտի համարել 30 տարեկանը։ Հռոմէական կարգերով փոքր աստիճանաւորների համար նշանակւում է 7—13 տարեկանը, կիսասարկաւագներին 21, սարկաւագներին 22, քահանաներին 24, եպիսկոպոսներին 30. Յուստինիանոսի 123 և 127 նովելլայով ոչ պակաս 30 տարեկանից՝ հասակ է որոշւում եպիսկոպոսի համար (Սոկոլով, Գորչակով)։ Մեր մէջ այն կանոնները և տարիքների որոշ լինելը միշտ չէ պահպանւում, ժամանակի, հանգամանքների և այլ կողմնակի պատճառներով օր. ուսման, կրթութեան, միշտ փոփոխութեան է են-թարկւում ընտրեալների նշանակումն և աստիճան ստանալը, Գրիգոր տղան կաթուղիկոս դարձաւ համեմատաբար շատ փոքր հասակում, ո՛չ աւելի քան 30։

2) Ընտրեալի արժանաւորութիւնը կշռելիս մեծ տեղ էր բռնում բարոյական կողմը, նա պիտի լինէր բարոյական, բոլոր յատկութիւններով բարձր ժողովրդից, ծանօթ քրիստոնէական հաւատի, պաշտամունքերի, իւր պարտաւորութիւնների և եկեղեցական կանոնների հետ։ Թէ առաքելական, թէ օտար մասնաւոր և թէ մեր ժողովների, Ս. հարց, մեր կաթուղիկոսների կանոններով և սահմանադրութիւններով ընծայացուն պիտի լինէր ուսումնական, կրթուած, քարոզիչ, պատժւում էր մինչև իսկ նա որ ընդունում էր տգէտին հոգևորակա-

նութեան մէջ. Ս. Սահակի, Շնորհալու, Գէորգ Դ.-ի, Ներսէս-Ե-ի կանոնները. Ա. գիրք 517, 558, 603, 631 երեսներ։ Ընծայացուի դաւանութեան և կրթութեան աստիճանը իմանալու համար քննութեան էր ենթարկւում եպիսկոպոսի ձեռքով, կամ գրաւոր ներկայացնում էր իւր հաւատոյ դաւանանքը, իսկ վարք ու բարքի կողմից վկայում էր ժողովուրդը ընտրութեան ժամանակ, առանց քաշուելու ամեն մի անգամ իրաւունք ունէր թուելու ընծայացուի լաւ և վատ կողմերը, բարոյական արժանիքը և պակասութիւնները. այդ հիմամբ և օտար անձը չէր կարող հովիւ ընտրուել մի որև է ժողովրդի վրայ մինչև որ ժողովուրդը լաւ չճանաչէր, նրա մասին հաւաստի ճշգրիտ տեղեկութիւններ չժողովէր և հաստատ վկայութիւն չտար։ Գէորգ-Դ-ի կանոններում որոշ գրուած է թէ ընտրութեան կարգը և թէ ժողովրդի կողմից կազմելիք համախօսական թղթերի ձևը և հոգևոր իշխանութեան ներկայացնելը. Ա. գ. 633 երես։ Ընտրեալի հասարակական դիրքը ունի որոշ կէտից նշանակութիւն. հներում երբ հասարակական կարգը ուրիշ հիմունքներ ունէր, կար դասակարգ, որի անդամները ծնուելով նոյն շրջանում կապուած էին որոշ պայմաններով ուրիշ անձանց հետ, չէին կարող ազատ իրանց կամքով մտնել հոգևորականութեան մէջ, խանգարելով ուրիշի իրաւունքը։ Այդ դասակարգին պատկանում էին ստրուկները։ Ս—առ. 82 կանոնով (Ա. գ. 112 եր.) ստրուկների հոգևորականութեան մէջ մտնելը պիտի լինէր միայն տիրոջ թոյլտուութիւնից և արձակումից յետոյ. տէրերը իրաւունք ունէին յետ կանչելու ստրուկներին, եթէ նրանք քահանայ կամ եպիսկոպոս չէին, կամ 20 տարի շարունակ չէին վարել եկեղեցական պաշտօն, կային որոնք այդ պատրուակով խուսափում էին ստրուկութիւնից։ Նոյն համեմատութեամբ եթէ զինուորականը և քաղաքացիական ծառայութեան մէջ եղած անձինք չազատուէին իրանց ծառայութիւնից չեն կարող հոգևորական դառնալ։

4) Առաքելական թղթերի հիման վրայ իրաւունք չունէին հոգևորականութեան մէջ մտնելու երկակները, երկրորդ

անգամ պսակուածները, և աստիճանից զրկւում էին նրանք, որոնք երկպասակէին։ Ա. Տիմոթ. Գ. 2, 12 և Տիտոսի Ա. 6. պարբերութիւնները սահմանում են որ եպիսկոպոսը և սարկաւագը լինին «միոյ կնոջ այր»։ Երկպասակ աշխարհականները ապաշխարանքի էին ենթարկւում, իսկ չէին կարող հոգևորական դառնալ Ա—առ. 17 կանոնի համաձայն (Ա. գ. 93 երես)։ Ձեռնադրութիւնից յետոյ պսակուելը արգելում է լուսաւորչի 2 կանոնը (Ա. գ. 505) և պսակուող քահանային ենթարկում է 9 տարուայ ապաշխարանքի։ Բարսեղ մեծը 12 կանոնով (Ա. գ. 240) արգելում է եկեղեցու սպասաւորներին—ընթերցողներին և երգչին երկպասակ լինել, եթէ դրանց կինը կմեռնի պաշտօնում եղած ժամանակ, կարող են երկրորդ անգամ պսակուել ապաշխարանքի ենթարկուելով և այն պայմանով որ ցմահ բարձր աստիճանի չկարողանան հասնել։ Յուստինիանոսի 123 և 137 նովելլայով, եթէ մինչև անգամ պատահմամբ բարձր աստիճանի հասնէին երկպասակները, պէտքէ յետ առնէին աստիճանները և նախկին սպասաւորողի վիճակի մէջ թողնէին։ Երկպասակ կոչւում էին և նրանք, որոնք պսակւում էին այրի կնոջ հետ, կամ անհաւատարմութեան պատճառով արձակուած կնոջ հետ։ Եթէ անհաւատարիմ արձակուած կնոջ հետ ամուսնացած լինելը իմացւում էր ձեռնադրութիւնից առաջ, նա զրկւում էր հոգևորականութեան մէջ մտնելու իրաւունքից։ Եթէ աշխարհականի կինը մեղանչում է, ամուսինը հոգևորական դառնալ չի կարող, իսկ եթէ ձեռնադրութիւնից յետոյ կինը մեղանչում է, նա կամ պիտի կնոջից բաժանուի, կամ զրկուի քահանայագործութիւնից (199 եր. Ա. գ. 8 կանոն), որովհետև եկեղեցու հայեացքով քահանան իւր ընտանեկան անաղարտ կեանքով պիտի օրինակ լինի ժողովրդին։ Աւելի խըստութեամբ է խօսում այս մասին Տահապիվանի ժողովի 2-կանոնը (Ա. գ. 323) ոչ միայն քահանայի և կնոջ մեղանչման դէպքում, այլ և երբ քահանայի դուստրը, տղան կմեղանչեն, պէտքէ մեղանչողները կամ խզպառ հեռանան իրանց տանից, կամ հեռացնուեն քահանայական տանից, ա-

պաշխարանքի ենթարկուելով և զրկուելով եկեղեցու բաժնից. իսկ պոռնիկ աղախինը խկոյն և եթ պիտի հեռացնուի այդ տանից։ Նոյն կանոնով ոչ քահանան իրաւունք ունի երկրորդ անգամ պսակուելու և ոչ երէցկինը։ Նոյն ժողովի 3 կանոնը (Ս. գ. 326) զանազանում է կուսանի պսակը երկակի պըսակից, երկակի կամ պոռնկութիւն արածի պսակը կատարւում է խաչակնքած ուռի ծառի ոստով և ո՛չ խաչ ու աւետարանով։ Լուսաւորչի 5-րդ կանոնը (Ս. գ. 506) կուսանի պսակը երկապսակի հետ համարում է ոչ քաջալերական և ենթարկում է պսակուողներին 3 տարուայ ապաշխարանքի։ Երկակ համարելի է և այն կացութիւնը, երբ մէկը պահում է հարճ, կամ կնոջ հետ միասին պահում է երկրորդ կին. Ս. գ. 93 երես 17 կանոն, այդպիսիները չեն կարող հոգեւորական դառնալ։ Չէին կարող հոգևորական դառնալ և նըրանք, որոնք ազգակցական, խնամէական և կնքահայրական չհաս աստիճաններում պսակուած էին, նոյնպէս և նրանք ամուսնացած էին սորուկուհու, անարգուած և անառակ կանանց հետ (Ս. գ. 93, 94)։ Երկակների այս կանոնները խստութեամբ գործնականութեան մէջ չէին գործադրուել, պատահում էին հանգամանքներին նայելով դէպքեր, երբ եկեղեցու կառավարիչները, զիջողաբար էին վերաբերւում դէպի զանցառուները Անկիւրիայի 10 կանոնը (Ս. գ. 157) թոյլ է տալիս սարկաւագին պսակուել և ծառայութեան մէջ մնալ, եթէ ձեռնադրութիւնից առաջ յայտնել է եպիսկոպոսին այդ մասին և եթէ պսակուելու իրաւունք է տուել եպիսկոպոսը։ Լուսաւորչի 2-կանոնը (505 եր. Ս. գ.) պսակուող քահանային 9 տարուայ ապաշխարանքի է ենթարկում առանց կարգալուծութեան։ Թէոդորիդը ձեռնադրեց մէկ երկակի մինչև իսկ եպիսկոպոս և երբ նրա վրայ յարձակուեցին, նա մատնացոյց արաւ իւր նախորդների վրայ։ Անտիոքի Աղէքսանդր եպիսկոպոսը Ակակիայի հետ ձեռնադրեցին մի երկակի։ Պօլսի Պրոկղ եպիսկոպոսը հաստատեց մի քանի երկակների ձեռնադրութիւնը։ Բինգամի կարծիքով գործնականութիւնը այսպիսի դէպքերում խիստ զանազանւում էր տրուած կանոնների պահանջից (Սօ-

*կոլով—241)։ Սոկոլովը 242—3 երեսներում հետևեալն է ասում այդ մասին. այդպիսի բացառութիւններ լինում էր այն հիմամբ, որ այրու հետ պսակուելը կամ ձեռնադրութիւնից յետոյ պսակուելը հիմնւում էր գլխաւորապէս բարոյական մաքրութեան կատարեալ պահպանման վրայ և ոչ դաւանաբանական վճռահատութեան, շատ անգամ կոյսի վրայ պըսակուելը չէր տալիս անարատ կեանքի բարոյական այն արժէքը, որը ենթադրւում էր ընդհանրապէս։ Հին եկեղեցու «արգելքը ընդունել երկապսակներին չի բղխում այն միստիքական դաւանաբանական սկզբունքից պսակի մասին, որ իբր թէ միանգամով պսակն է՝ Քրիստոսի եկեղեցու հետ միանալու միստիքական ձևակերպութիւնը, հապա նրանից որ երկրորդ ամուսնութիւնը ենթադրել է տալիս բացակայութիւն բարոյական ողջախոհութեան, որը պահանջում է եկեղեցին իւր նուիրապետութեան անդամներից»։ Հռոմէական եկեղեցին այնքան հեռու է գնացել այս խնդրում, որ արգելքները դարձրել է դաւանաբանական որոշումն, օր. չընդունել բոլոր ապօրինի ծնուածներին*, հերետիկոս ծնողների որդիներին մինչև երկրորդ աստիճան հօր կողմից և առաջի աստիճան մօր կողմից, թէկուզ որդիները ուղղափառ լինեն. բոլոր քրէական դատաւորներին, որոնք օրէնքի հիման վրայ մահուան են դատապարտում յանցաւորներին, դատախազներին, երդուեալ դատաւորներին և առհասարակ բոլոր մահուան պատիժ սահմանելում մասնակցողներին, անդամահատներին, որոնք իրանց գործողութեամբ մահ կպատճառեն մարդու, բռնի կերպով անպատուած կոյսի հետ պսակուողին կամ բռնի կերպով անարգուած կնոջ հետ կենակցող ամուսնուն։*

*5) Քրէական յանցանքներում բռնուած անձինք զրկւում են հոգևոր ասպարէզ մտնելու իրաւունքից, սպանութիւն կատարողներ, աւազակութիւն և գողութիւն անողներ, կեղծիք կամ ստոր գործերում բռնուածները չեն կարող հոգևորական դառնալ, նոյնպէս և կամաւոր կերպով իրանց ներքինիացնողները. տես Առաքելական, Սիկիական և Ծահապիվանի*

* *տես (Ս. Սահակի) 8՝ եւ 23 կանոնները. Ա. գ. 520 եւ 522 երես)։*

կանոնները. Ա. գ. 95, 146 երես։ Թեթև յանցանքներ են համարւում ակամայ և բոլորովին իրանց անկախ պատճառով արուած սպանութիւնը, ինքնապաշտպանութեան համար սպանութիւնը, բռնութեամբ եղած ներքինիացումն կամ իրան կամքից դուրս բժշկի միջոցով հիւանդութեան դէպքում եղած ներքինիացումն, այդպիսի դէպքերում եկեղեցին զիջողաբար է վերաբերւում և շատ անգամ ընդունում է իւր դասի մէջ։ Բացի քրէական յանցանքներից, այն անբարոյական գործողութիւնները, որոնք մեղադրական ոչ մի արտաքին երևոյթ չեն ներկայացնում, կամ աւելի պարզ չի կարելի դատի միջոցով հաստատել մեղադրանքները, զրկում են անհատին հոգևորականութեան մէջ մտնելու իրաւունքից, ենթարկելով այդպիսի յանցագործներին իրանց սեպհական խղճի դատաստանին. այսպէս օրինակ ծածուկ մեղանչումը, երկու կողմի համաձայնութեամբ կատարած անառակութիւնը, այդ մտքով խօսում են կեսարիայի 9 և 10 կանոնները Ա. գ. 199 երես։ Եթէ այդպիսի անբարոյական գործերի մասին վկայութիւն է տալիս ինքը ժողովրդը, կամ ամբաստանւում է անհատը մի քանի վկաների կողմից, այդպիսի դէպքում ընտրեալը զրկւում է հոգևորականութեան մէջ մտնելու իրաւունքից, այսպէս պարզ որոշւում է Ա.-առ. 61 կանոնը, Ա. գ. 107 երես։

Թեր և դէմ կարծիքների տեղիք է տալիս այդ յանցանքների վաւերականութեան աստիճանը պարզելու խնդրում, սպանութեան հարցը. պատերազմի մէջ սպանութիւն կատարած զինւորը կարո՞ղ է հոգևորական լինել թէ ո՛չ, կամ ապստամբ մարդկանց և մահուան դատապարտուած անձանց՝ գնդակահար անող զինւորները կամ պաշտօնեաները կարող ե՞ն հոգևորական դառնալ թէ ո՛չ։ Սուրբ հայրերից Աթանասը ոչ միայն թոյլ է տալիս, այլ և գովասանքի և պատուի է արժանացնում պատերազմի հերոսներին. չորրորդ դարուց ըսկսած մեր բոլոր հայրապետները ոչ միայն թոյլ էին տալիս այդպիսիներին հոգևորական դառնալ, այլ և ինքեանք անձամբ սուրի ձեռին պատերազմում էին թշնամիների դէմ պաշտպանելով հայրենիք և եկեղեցի, այդպէս էին Ներսէս

մեծ, Յովհան Մանդակունի, Յովսէփ, Ղևոնդ երէց, մինչև Ներսէս Ե. Վարդանանց պատերազմում նահատակուածները համարուեցին սուրբ։ Բայց այլ կերպ է նայում խնդրի վրայ Բարսեղ մեծը, նա 13 կանոնով (Ա. գ. 240) 3 տարուայ ապաշխարանք է սահմանում պատերազմում սպանութիւն կատարողի համար և ապա թոյլ տալիս հաղորդուելու։ Յունաց մեկնիչները պատմում են, որ երբ Փոկա կայսրը կամեցաւ նահատակների դասը կարգել պատերազմում սպանուածներին, եկեղեցու ներկայացուցիչները օգտուելով Բարսեղ մեծի կանոնով, չհամաձայնեցին կայսեր առաջարկութեան հետ, բայց երբ մի եպիսկոպոս և մի քանի քահանայ ասացին որ իրանք էլ են մասնակցել պատերազմին և կողմնակից դարձան կայսեր առաջարկութեան, այն ժամանակ ժողովը արգելեց վերջիններիս քահանայագործութիւն անել. յետոյ, 'ի հարկէ, մոռացութեան տրուեց Բարսեղ մեծի կանոնը և գործնական կեանքը տարաւ իւր յաղթութիւնը, ըստ յունաց մեկնիչների այդ կանոնը խիստ է և ոչ համապատասխան բիւզանդական պետական կարգերին։

6) Բացի գողութեան, շնութեան, անառակութեան մէջ դատապարտուած անձինքներից, որոնք զրկւում են հոգևոր ասպարէզ մտնելուց վերոյիշեալ հիմունքներով, եթէ մէկը երդմնազանցութեան, կախարդութեան մէջ բռնւում է, հաստատւում է վկայութեամբ և դատաստանով, զրկւում է նոյնպէս հոգևորական դառնալու իրաւունքից. այդպէս սահմանում է Բարսեղ մեծ իւր 64, 82, 8 կանոններով (Ա. գ. 246 եր.) և Շահապիվանի ժողովը իւր 8, 9, 10 կանոներով (Ա. գ. 332, 333)։

7) Հոգևորական դառնալուն արգելք էր հանդիսանում և վաշխ առնելը, խստիւ պահանջւում էր հոգևոր անձերից հեռու մնալ այդ անվայել արարքից, իսկ աշխարհականներից նրանք, որոնք ըստ Բարսեղ մեծի 14 կանոնի (Ա. գ. 240) յետ կտային վաշխը բաշխելով աղքատներին և խոսք կտային շահասիրական գործերով չպարապել, իրանք կարող էին հոգևորական դասը մտնել։ Պետական օրէնքները այժմ էլ ար-

գելում են վաշխառութեամբ պարապել, այդպիսի պարապմունքը համարելով ոչ մարդասիրական և օրինաւոր։

8) Պարզ է, որ հոգևորական շրջանի մէջ մտնել չէին կարող հաւատուրացները, հերետիկոսները, պատահական կերպով մտածները անմիջապէս հեռացնում էին այդ ասպարէզից կարգազուրկ լինելով. Ա. գ. 107 (62 կ.), 332, 153 երես։

Ահա այս են այն ընդհանուր հիմունքները, որոնցով աշխարհական անձինք իրաւունք ունէին եկեղեցու պաշտօնեայ համարուելու. դժբախտաբար հայոց եկեղեցու գործնականութիւնը խստութեամբ չի հետևում այդ կանոններին, մեծ զիջողութիւններով է ընդունում ընծայացուներին, այն խստութիւնը կրթական ցէնզի նկատմամբ, որով ընտրւում են կաթոլիկ և բողոքական եկեղեցիներում ընծայացուները, նոյնը ոչ միայն չի գործադրւում հայոց եկեղեցում, այլ և զանցառութեան է դրւում այդ գլխաւոր կէտը։

## Զ. ՁԵՌՆԱԴՐՈՂ ԱՆՁԻ ԼԻԱԶՕՐԱԿԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐԸ.

Հոգևորականութեան մէջ մտնելու համար, բացի այն խոչընդոտներից, որոնք միաւ մի թուեցինք, հարկաւոր է և իրաւունք ունեցող պաշտօնեայ, լիազօրութիւն ունեցող անձնաւորութիւն, որ կարողանայ նուիրեալ անձին ընդունի հոգևոր կարգի մէջ։ Ո՞վ պէտքէ ընդունի, ո՞վ իրաւունք ունի ձեռնադրութիւն կատարելու։

Ա-առ. 2 կանոնը, Նիկիայի 19, Անտիոքի-9, լաւոդ. 26 կանոնները, Սահակի, Շնորհալու, Ներսէս Ե-ի, Գէորգ Դ-ի կանոնները (Ա. գ. 84, 158, 212, 221, 528, 575, 611, 633 երես) սահմանում են, որ նուիրապետութեան մէջ գտնուած անձինքներից նա կարող է ձեռնադրութիւն կատարել, ով եպիսկոպոսութեան աստիճան ունի։ Եպիսկոպոսական աստիճանի այդ իրաւունքը դրւում է յաջորդաբար հետևորդներին սկիզբ առնելով առաքեալներից։ Բոլոր պաշ-

տօնեաները ստանում են ձեռնադրութիւն, բայց ստորին սպասաւորներից, ընթերցողից, երգչից և այլն. յունական կանոններով (է-րդ տիեզ. ժող. 14 կան.) քահանան ձեռնադրութիւն է տալիս ստորին պաշտօնեաներին իւր եկեղեցում սպասաւորելու, իսկ վանահայրը իւր վանքում. յունաց մեկնիչները ասում են, որ ձեռնադրութեամբ եկեղեցական աստիճան տալով ստորին պաշտօնեաներին իրաւունք է դրւում կղերի մէջ մտնելու. իսկ ռուս Յովհաննէս վարդապետը բացադրում է Բ. Հար. 539 երեսում, թէ ստորին պաշտօնեաների ձեռնադրութիւնը պէտքէ հասկանալ՝ ձեռքը գլխին դնելով և օրհնելով թոյլ տալ եկեղեցում կարդալ և ոչ բուն ձեռնադրութիւն համարել: Կարթագենի կանոններով և մեր ձեռնադրութեան մաշտոցի կարգով ստորին պաշտօնեաներին աստիճան տալը ձեռքը գլխին դնելով սկզբունքով ընդունւում է մեր մէջ, որ պարզ երևում է սարկաւագի ձեռնադրութեան կարգից, որտեղ սարկաւագացուն օրհնութեամբ ստանում է դռնապանի, ընթերցողի, երգմնեցողի, ջահընկալի աստիճաններ առանձին աղօթքով և օրհնութեամբ իբրև սարկաւագի օգնականների, բայց գործնականութեան մէջ երգիչ, ընթերցող դռնապան չեն ստանում ջոկ ջոկ այդ աստիճանը, երգել իմացողը երգում է, կարդալ իմացողը կարդում, իսկ դռնապան և աւելածու միշտ փոփոխակի ընտրւում են առանց աստիճան ստանալու:

Ձեռնադրութիւն կատարող անձը, այսինքն եպիսկոպոսը, հետևեալ լիազօրական յատկանիշները պիտի ունենայ ձեռնադրութեան նկատմամբ:

1) Եպիսկոպոսը պէտքէ անշուշտ իւր աստիճանը ստացած լինի գլխաւոր համարուած եպիսկոպոսից — կաթուղիկոսից, որը իւր ունեցած աստիճանը և իրաւունքը ստացել է յաջորդական կարգով Գրիգոր Լուսաւորչից և նրա միջոցով առաքեալների յաջորդներից և առաքեալներից: Որտեղ որ այդ նուիրապետական յաջորդական օրինաւոր եպիսկոպոսական աստիճան ընդունելու կարգը չի պահպանւում, այնտեղ այդպիսի ձեռնադրութիւնը համար-

ւում է ապօրինի և անվաւեր։ Գրիգոր Լուսաւորչից սկսած բոլոր Հայոց եպիսկոպոսները ձեռնադրւում են ամենայն Հայոց կաթուղիկոսից, թէև Աղթամարի և Սսի կաթուղիկոսները քաղաքական պատճառով բացառութիւն են կազմում իրանց թեմերում ձեռնադրած եպիսկոպոսների նկատմամբ, բայց ըստ կանոնական իրաւունքի, նրանք ևս շարունակութիւն են Լուսաւորչի ձեռնադրութեան իբրև շարունակութիւն երբեմն եղած ամենայն Հայոց Հայրապետութեան Ա.-առ. 1, Սարտիկիայի 6, Ճնորհալու 12, Երուսաղէմի ժողովի 1, 2, 3 կանոններ (Ա. գիրք, 83, 230, 576, 465 երես) սահմանում են և պարզաբանում վերոյիշեալ կարգը որոշ և հաստատուն կերպով։

2) Բացի առաջին պայմանից՝ ձեռնադրութիւնը պիտի լինի բացարձակ արդարութեամբ, առանց ստութեան, խաբէութեան, կեղծիքի և այլ տգեղ հանգամանքների։ Պօլսոյ ժողովի 4 կանոնով (Ա. գ. 168 երես) Մաքսիմ շնական եպիսկոպոսի բոլոր ձեռնադրութիւնները անվաւեր հրատարակուեց, որովհետև ինքը Մաքսիմը ձեռնադրութիւնը ստացել էր խաբէութեամբ Եգիպտական եպիսկոպոսներից. Նոյնպէս և անվաւեր հրատարակուեց Նովարի՝ Հռոմի եպիսկոպոս լինելը, որովհետև խորամանկութեամբ էր ստացել իւր աստիճանը օրինաւոր եպիսկոպոսից (Եւսեբ. Զ. 43)

3) Ձեռնադրողը պիտի ձեռնադրութիւնը կատարի այն ձևով և սահմանադրութեամբ, որը կարգել է եկեղեցին և պահպանում է, այդ սահմանից դուրս իրաւունք չունի ձեռնադրողը որև կարգ մտցնել։ Ձեռնադրական Մաշտոցը տալիս է մեր եկեղեցու համար որոշ և պարզ կանոններ, որոնցով անփոփոխ ղեկավարւում են ցայսօր։

4) Ձեռնադրողը՝ ձեռնադրութիւնը կատարելու րոպէին չպիտի գտնուի այնպիսի դրութեան մէջ, որը ինքն ըստ ինքեան անվաւեր է կացուցանում այդ գործողութիւնը. օրինակ. եթէ եպիսկոպոսը ձեռնադրութեան ժամանակ արդէն կարգալոյծ եղած է, հերետիկոսական կամ աղանդաւորական խմբերի անդամ է, կամ հերձուածների կողմնակից է դարձել։

Կարգալոյծ եղած եպիսկոպոսը համարեա միշտ համար-

ւում է հեռացուած նուիրապետութիւնից և աշխարհականաց դասը կարգուած. եթէ կարգալոյծ եղածը կհամարձակի նորից նախկին պաշտօնը կատարել, Ա.-առ. 28 կանոնով (Ա. գ, 97) բոլորովին զրկւում է եկեղեցու հաղորդակցութիւնից: Այդպիսի եպիսկոպոսի ձեռնադրութիւնը կանոնական տեսակէտից անվաւեր է:

Հերետիկոսական կամ ոչ քրիստոնեայ հասարակութեան անդամ եղող եպիսկոպոսը համարւում է ուղղափառ եկեղեցուց հեռացած: Այդպիսի հոգևորականներին կանոնները բոլորովին զրկում են աստիճանից և զղջման դէպքում ընդունում են իբրև աշխարհական (Ա. գ, 107 երես 62 կանոն): Այդպիսի դէպք պատահեց Կիպրիանոսի ժամանակ, Կարթագենի ժողովը մերժեց հաւատուրաց երկու եպիսկոպոսի ընդունել ապաշխարութեան միջոցով իրանց աստիճանում: Մկրտութիւնը և ձեռնադրութիւնը անկրկնելի են, իսկ եթէ այդ խորհուրդները կատարել են ոչ ուղղափառ հոգևորականներ, այդ դէպքում հերետիկոսի կատարած խորհուրդը համարելով անվաւեր, Ա-առ. 68 կանոնի համաձայն (գ. Ա. 109) պէտքէ այդպիսի անձինք նորից մկրտուեն, կամ ձեռնադրուեն: Այն հերետիկոսները, որոնք աղաւաղում են հաւատի գլխաւոր դաւանութիւնը, օր. պաւղիկեանները երրորդութեան, մարդեղութեան մերժմամբ, (Նիկ. 19 կանոն. Ա. գ. 158 երես), Մանիքեցիք, Վալենդենեանք, Մարկիոնականները—ընդհանրապէս, Գնոստիկեանք, Սաբեղեանք, Եւնոմեանք, Մոնտանեանք (պօլ. 7 կանոն, Ա. գ. 171 երես) և այն հերետիկոսները, որոնք մկրտութեան հետ, չեն ընդունւում իբրև ուղղափառ և նրանց կրօնական գործողութիւններն անվաւեր են համարւում: Դրանց ձեռնադրութիւնը համարւում է անվաւեր: Իսկ ինչ վերաբերում է զանազան հերձուածողներին, որոնք գլխաւոր կէտերում եկեղեցու հետ նոյն են, միայն դաւանաբանական բացադրութիւնների մէջ տարբերւում են, օր. Արիոսականները, Մակեդոնեանք, Ապողինարեանք, սրանց եկեղեցու ծոցը վերադառնալիս, նորից չէին մկրտում, միայն դրոշմում էին զգայարանքները (Ա. գ. 171 երես):

Ձեռնադրուած անձանց Աթանասը պատուիրեց երկու ձեւով ընդունել, եթէ արիոսական գլխաւոր հոգեւորականներից են դարձողները, չընդունել կղերի մէջ, այլ իբրեւ աշխարհական հաւատացեալ թողնել եկեղեցի, իսկ եթէ բռնութեամբ, կարիքից ստիպուած են արիոսական դարձել, ապաշխարանքի ենթարկելուց յետոյ ընդունել նոյն ձեռնադրական աստիճանում: Մակեդոնի աղանդին պատկանող եպիսկոպոսներին ընդունում էին նոյն աստիճանում, միայն Նիկիոյ հանգանակը խոստովանելուց յետոյ. Մելիտէն, Կիւրեղ Երուսաղէմացին արիոսական եպիսկոպոսներ էին, որոնք նոյն աստիճանով ընդունուել են ուղղափառ եկեղեցում: Գործնական կեանքը այսպիսի դէպքերում ի նկատի ունէր անհատների 'ի սրտէ զղջումը և պատրաստակամութիւնը քան լոկ կանոնը:

Հերձուածողները ըստ Բարսեղ մեծի նրանք են, որոնք միմիայն կարծիքների մէջ են տարբերւում ուղղափառ եկեղեցուց, իսկ դաւանաբանական կէտերում նոյն են: Եթէ քահանան կմերժի եպիսկոպոսի նշանակած պատիժը կատարել և իւրայիններով առանձին ծուխ կազմելով անկախ եկեղեցական վարչութիւն կհաստատի —, նա կհամարուի հերձուածող: Բարսեղ մեծը 1 կանոնով թոյլ է տալիս ընդունել հերձուածողներին նոյն աստիճանով, եթէ կզղջան և ապաշխարանք կկրեն: Նիկիայի 8 կանոնով (Ս. գ. 452 երես) որոշուեց ընդունել Նովատիան հերձուածողներից նոյն աստիճանում, ձեռքը գլխին դնելով և միացնելով ուղղափառ կղերի հետ: Նոյն ժողովը նոյն վճիռը գրեց Մելիտեանների համար Եգիպտոսում:

5) Բացի վերոյիշեալ կանոններից, որոնք անհրաժեշտ են ձեռնադրութիւնը վաւերական անելու համար, հարկաւոր են և ձեռնադրողի կողմից ունենալ ուրիշ զուտ իրաւաբանական լիազօրութիւն: Ամեն մի եպիսկոպոս իրաւունք չունի ձեռնադրելու, եթէ այդ իրաւունքը նրան չի յատկացրած աւելի բարձր իշխանութիւնից՝ 1) ձեռնադրող եպիսկոպոսը պիտի լինի թեմի առաջնորդ, եթէ հրաժարւում է առաջնորդութիւնից, նա այլեւս իրաւունք չունի նոյն թեմում

ձեռնադրութիւն կատարելու։ (Ա. գ. 214, 99, 466—468։) 2) Յաջորդութիւն անող եպիսկոպոսը ինչպէս և հին քորեպիսկոպոսներն իրաւունք չունեն ձեռնադրութիւն անելու բացի ստորին պաշտօնեաներ կարգելուց (Ա. գ. 215, 467)։ 3) Առաջնորդը իրաւունք չունի իւր թեմից դուրս որև է մէկին ձեռնադրելու, այլապէս անվաւեր կհամարուի ձեռնադրութիւնը, բացի այն դէպքից՝ երբ ձեռնադրութիւնը լինում է թեմի առաջնորդի թոյլտւութեամբ (Ա. գ. 156, 231, 467)։ 4) Բացի թեմի առաջնորդի արած ձեռնադրութիւնից իւր սեպհական թեմում, բոլոր այն եպիսկոպոսների ձեռնադրութիւնները այլ և այլ թեմերում վաւերական են, եթէ լիազօրական հրաման ստացել են ամենայն Հայոց կաթուղիկոսից, կամ աշխարհի կեդրոնական բարձր հոգևոր իշխանութիւնից։ 5) Լիազօրութիւն ունեցող եպիսկոպոսի արած ձեռնադրութիւնը այն ժամանակ է վաւերական, երբ ընծայացուն ընտրուած է ժողովրդի և կղերի ընդհանուր ցանկութեամբ և որոշմամբ (469, 633 երես)։

## Է. ՁԵՌՆԱԴՐՈՒԹԵԱՆ ՎԱՒԵՐԱԿԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐԸ.

Որպէս զի ձեռնադրուող անձը ամենայն կողմից լինի համապատասխան՝ թէ մտաւորապէս թէ բարոյապէս իւր բարձր պաշտօնին՝ առանց որև է կասկածելի և անորոշ յարաբերութեան դէպի իւր ժողովուրդը, ուստի և ձեռնադրութեան խորհուրդը պիտի անպայման կրի վաւերականութեան աստիճան որը խստութեամբ պահանջում են եկեղեցական կանոնները։

1) Ձեռնադրութիւնը վաւերական լինելու համար, պէտքէ ձեռնադրուողը խորհրդի կատարման միջոցին հաւաքութեան և ձեռնադրողի առաջ խոստովանի, դաւանի այն՝ ինչ որ եկեղեցին ընդունում է, ուպէս զի ճշտութեամբ կատարի ապագայում բոլորը, ինչ որ եկեղեցու կանոնները պահանջում են։ Այս կարգը սահմանեց առաջին անգամ Օգոստինոսը Աֆրիկայի եկեղեցու համար և ընդունուեց միւս եկեղեցիների կողմից։ Այդ կարգը հաստատութիւն գտաւ պետական օրէնք-

ների մէջ, որոնցով պահանջւում էր հիմնուած եկեղեցական կանոնների վրայ թէ՛ արևելեան թէ արևմտեան եկեղեցիներում 'ի լուր ամենեցուն երգմամբ խոստանալ կատարել բոլոր կանոնական պահանջները։

2) Թէոփելէս Աղէքսանդրացու 7 կանոնով ձեռնադրութիւնը պիտի կատարուի բոլոր հասարակութեան առաջ իբրև վկայութիւն տուողի, դրա հակառակ եղած ձեռնադրութիւնը, այն է, եկեղեցուց դուրս, ծածուկ տեղերում, անվաւեր է (ինչպէս չընդունուեցին Մաքսիմ ցինիկի ձեռնադրուածները)։ Լաւոդիկիայի 5 կանոնով (Ա. գ. 217 երես) ձեռնադրութիւնը կատարւում է միայն հաւատացեալների ներկայութեամբ պատարագի այն մասում, երբ բոլոր կարգի ապաշխարողներն դուրս էին գալիս։

3) Սարդիկիայի ժողովի 10 կանոնով (Ա. գ. 230 երես) ձեռնադրութիւնը պիտի կատարուի ոչ բոլոր աստիճանները միանգամից տալով, ինչպէս շատ անգամ պատահում էր հարկից և կարիքից ստիպուած, այլ հետզհետէ, ստորին աստիճաններից մինչև բարձրը հանելը, ամեն մէկում որոշ ժամանակամիջոց մնալով։ Եղել են շատ դէպքեր թէ արտաքին և թէ մեր եկեղեցական կեանքում, երբ սարկաւագութիւնից, քահանայութիւնից, մինչև իսկ աշխարհական կեանքից ուղղակի եպիսկոպոս և կաթուղիկոս են ձեռնադրել։ Ոսկեբերանը իւր երկու սարկաւագներին ուղղակի եպիսկոպոս նշանակեց զանազան քաղաքների վրայ. աշխարհական կարգից եպիսկոպոսի աստիճան ստացան Ամբրոսիոսը, Կիպրիանոսը, Պօլսոյ Նեկտարը, Եւսեբիոս Կեսարացին են։ Մեր մէջ Գրիգոր Լուսաւորիչը, երկու որդիքը, Ներսէս մեծը, Զաքարիա կաթուղիկոսը՝ աշխարհական վիճակից կաթուղիկոս, եպիսկոպոս դարձան, Յովսէփը քահանայութիւնից կաթուղիկոս։ Երբ 858-ին Պօլսի պատրիարք ընդրուեց աշխարհական դասից փոտը՝ 7 օրում յաջորդաբար, Նիկոլայ ա. պապը նկատեց, որ եկեղեցական կանոններին հակառակ է։ Չնայելով այդ բացառութիւններին, այնու ամենայնիւ աստիճանական կարգով բարձրանալու կանոնը իւր ոյժի մէջ մնաց։

4) Ձեռնադրութիւնը պիտի կատարուի որոշ տեղի, եկեղեցու, հօտի վրայ, և ոչ անորոշաբար ձեռնադրուի առանց տեղի և նշանակման։ Հներում ծուխ այժմեայ մտքով չկար, ծխերը առաջացան Ե-դարուց սկսած, այլ կար որոշ շրջանով եկեղեցի, որի հովուութիւնը յանձնւում էր անպայման մի եպիսկոպոսի, որը մշտական պիտի մնար իւր հօտի շրջանում, ուրիշ տեղ չհեռանար, և շրջագայելով քարոզութեամբ պարապէր, այդ հիմունքով մի որև է գաւառում լինում էին շատ եպիսկոպոսներ առանձին իրաւասական շրջանով։ Յետոյ արդէն երբ թեմերը առաջացան, գլխաւոր եպիսկոպոսների պաշտօնը որոշուեց, մեր մէջ կաթուղիկոսութիւնը առաջացաւ, այնուհետև ձեռնադրւում էին եպիսկոպոսներ կաթուղիկոսական դրան համար, խորհրդականնի, աւագ լուսարարի, մեծ դատաւորի պաշտօններով։

5) Ձեռնադրութիւնը եթէ կատարուած է կանոնաւոր կերպով, պիտի չկրկնուի (Ա։ գ. 109), այսինքն, եթէ զանազան յանցանքների, և մեղքերի պատճառով հոգևոր անձը ենթարկւում է կարգազրկութեան, կարգալուծութեան, զրկուելով պատուից և իրաւունքից, ապաշխարանք և պատիժը կրելուց յետոյ, եթէ վերստին կանչուի նախկին աստիճանին, այդ դէպքում նա նորից ձեռնադրութիւն չի ըստանում, նախկին ձեռնադրութիւնը իւր ոյժի մէջ է։

6) Քահանաների և սարկաւագների ձեռնադրութիւնը կատարում է մի եպիսկոպոս, իսկ եպիսկոպոսինը անշուշտ 2 կամ երեք ըստ Ա—առաքելական 1 կանոնի Ա. գ. 83 եր։ Յետոյ սահմանուեց որ եպիսկոպոսի ձեռնադրութիւնը լինի եպիսկոպոսական ժողովով և Միտրոպոլիտի ներկայութեամբ և մասնակցութեամբ։ Իսկ մեր մէջ Լուսաւորչից սկսած մինչև այսօր եպիսկոպոս ձեռնադրում է միմիայն ամենայն հայոց կաթուղիկոսը, իսկ Աղթամարի և Սսի կաթուղիկոսները իրանց թեմերի համար. բացի այս պայմանից մնացած և այլ ձևով ձեռնադրուած եպիսկոպոսները՝ եպիսկոպոս չեն։ Մասնաւոր կաթուղիկոսների եպիսկոպոսներից եթէ կամենան Մայր աթոռի միաբան կոչուել, պիտի չոքեն ամենայն հայոց կաթու-

ղիկոսի առաջ, հանդիսաւոր կերպով իրանց միաբան կոչեն Ս. Էջմիածնի և հնազանդ Վեհափառ Հայրապետի հրամանաց և ապա իջման տեղի առաջ խոստմունքը հաստատելով, լինին նոյն աստիճանով Էջմիածնի միաբան։

Կաթուղիկոսական ձեռնադրութիւնը լինում է 12 եպիսկոպոսի մասնակցութեամբ և միջոցաւ։

7) Ձեռնադրութեան համար պահանջւում է ձեռնադրուողի կողմից յօժարութիւն և կամաւոր ցանկութիւն, հակառակ կամքի ձեռնադրութիւնը վաւերական չէ։ Հներում բացառութիւն եղել է, ոյժով ձեռնադրել է ժողովուրդը և հոգեւորականութիւնը մի քանի եպիսկոպոսներ, որոնք ո՛չ թէ սէր չէին զգում դէպի այդ սուրբ պաշտօնը, այլ իրանց շատ ստոր էին համարում այդ աստիճանից. ակամայ ընդրուած և ձեռնադրուած են. Լուսաւորիչ, մեծն Ներսէս, Կիպրիանոս, Գրիգոր Հրաշագործ, Աթանաս են։

## Ը. ՀՈԳԵՒՈՐ ԴԱՍԱԿԱՐԳԻ ԸՆԴՀԱՆՈՒՐ ՅԱՏԿՈՒԹԻՒՆՆԵՐԸ

(Изложеніе каноническихъ постановленій о клирѣ» «Хрис. чтеніе 1860 г. II ч.». Церковное право, Соколовъ—310 стр.)

Ձեռնադրութեան միջոցով աշխարհականներից ընդհատուելով կազմւում է մի նոր դասակարգ, որ կոչւում է կղեր, հոգեւորականութիւն, եկեղեցականութիւն, եկեղեցու պաշտօնեայ, որոնք չնայելով իրանց զանազան աստիճաններին, բոլորը միասին վերցրած ունին ընդհանուր պարտքեր, նշանակութիւն, ընդհանուր հովուութեան և ժողովրդին ծառայելու միանման պարտաւորութիւններ, այս տեսակէտից, իբրև ամբողջական դասակարգ, առանց աստիճանի խտրութեան ունին որոշ դիրք, պարտքեր, իրաւունքներ և կացութեան որոշակի պայմաններ։

Հոգեւոր դասակարգը կազմուած լինելով այնպիսի անձինքներից, որոնք ընտրուած են ժողովրդի այն անդամներից

որոնք վարք ու բարքով, կրթութեամբ և բարոյականութեամբ բարձր են միւսներից, նրանք պէտքէ իրանց պաշտօնակատարութեամբ, հոգուական պարտքի ճիշտ կատարմամբ օրինակ հանդիսանան ժողովրդին. թէ ինչպէս պէտքէ վարուեն հօտի հետ, ինչպէս հովուեն և կեանք վարեն, այդ մասին թէ ս. գրքում, թէ ժողովների և թէ ս. հարց կանոններում կան բազմաթիւ ցուցումներ, խրատներ։

1) Մեր կանոնները պահանջում են որ ոչ միայն ներքուստ, այլ և արտաքուստ, այն է դրսի նիստ ու կացի, շորի, հագուստի կողմից հոգևորականները բռնեն օրինակելի դիրք, չերևան այնպիսի ձևով և դիրքով, որոնք կարող են ծիծաղ յարուցանել ժողովրդի մէջ. հագնեն այն ձևով և տարազով, որոնք ժողովրդի համար և նրա աչքին պատկառելի է համարւում։*)

*) Ծանօթութիւն. Թէ երբ է սկսել հոգևորականութիւնը տարբեր տարազով երևալ և ժամերգութեան ժամանակ բոլորովին այլ զգեստ հագնել, այդ մասին տանք մի քանի տեղեկութիւններ. ժամերգութեան ժամանակ առանձին հանդերձ գործ ածելը, գոնէ Ասիայում, պէտքէ համարել առաքեալների ժամանակից, քանի որ թէ առաքեալները թէ իրանց հրէայ աշակերտները քարոզում էին սինագօգաներում և հրէաների ձևով աղօթում և հագնւում, քրիստոնէական համայնքներ կազմելուց, սարկաւագի, քահանայի, եպիսկոպոսի դասեր հաստատելուց յետոյ ըստ հրէական—քահանայապետների, քահանայից և ղևտական ծառայողի, պէտքէ մացնէին այն հանդերձները ժամերգութեան ժամանակ, որոնք դարերի ընթացքում սրբագործուած և Մովսէսից ընկած յարգի էին և պարտաւորական համարւում հրէից տաճարներում քահանաների համար։ Բինգամի կարծիքով (տես Սօկօլօվ—323 երես) «կղերը ունէր ժամերգութեան համար առանձին հանդերձներ գոնէ դ. դարու սկզբին, այդ ժխտել չի կարելի, բայց այդ ժամանակ նկատելի լինէր սովորական հագուստների մէջ առանձին տարազ, այդ բանին հակասում են հին շատ ցուցմունքներ»։ Ոսկեբերանի ժամանակ հոգևորականութիւնը ըստ սովորութեան սև շոր էր հագնում, իսկ Նովատեաններն իբրև նորամուծութիւն սպիտակ։ Աֆրիկայի և Գալղիայի կողմերում կղերը տարբեր հագուստ չէր գործածում. Յերոնիմոսը Եզեկիէլի մեկնութեան մէջ ասում է «մենք չպէտքէ ածիլենք մեր գլուխը Օզիսի և Սերապիսի քրմերի նման, ոչ էլ երկարացնել բարբարոսների և զին-

ուորների նորաձեւութեան հետեւելով, հապա քահանաները պէտքէ երեւան գան պատկառելի և վայելուչ արտաքինով, ոչ ածիլելով ճաղատի չափ, ոչ էլ այնպէս խուզելով որ ածիլուած երեւան, հապա թողնեն որ բուսնին և կաշին ծածկեն (Նոյն տեղ 314)։ Մեր աղբիւրներին նայելով դ. դարում հայոց մէջ ոչ միայն եկեղեցում, այլ և դրսում հոգեւորականները առանձին տարազով չոր էին հագնում, որ կոչւում էր «հանդերձ կղերիկոսաց». Փաւստոսը Ներսէս մեծի ընտրութեան համար ասում է, «բերին կղերիկոսաց հանդերձները և հագցրին նրան» (59 երես)։ Ներսէս մեծը թունաւորելուց յետոյ, երբ գնաց վրանը, Փաւստոսը (183 երես) ասում է «երբ մտաւ իւր օթեանը, հանելով իւր պարեգօտը, սիրտն էր ցոյց տալիս». պարեգօտը այժմեայ կապանէ կամ վերարկուն, ըստ ձևի հրէական պարեգօտի։ Իսկ Մանազկերտցի Զաւէն կաթուղիկոսի նորաձեւութեան համար ասում է 223 երեսում, «զի ամենայն քահանայից ուսոյց առնել հանդերձս պճնուորաց :....զի ոչ ըստ կրօնիցն ագանէին քահանայքն զպճղնաւորն, որպէս օրէն էր ի բնէ, այլ սկսան զխոտոր—կտուրսն ի վերայ ծնգայն ունել.....»։ Մի քահանայի ձեռնադրութեան համար ասում է 226 երեսում. «հրամայէր (եպիսկոպոսն) լուծանել զհանգոյցս մեկնոցին, և արկանել նմա ազաբողոն» (փիլոն)։ Յովհան Մամիկոնեանը իննակեան վանքի կրօնաւորների համար ասում է «սևազգեստ», «կնկղաւորք», որ նշանակում է նրանք հագնում էին սև զգեստ երկար, և գլխներին վեղար։

2) Որպէս զի հոգևորականները միշտ լինեն ողջախոհութեան, պարկեշտութեան, համեստ կացութեան օրինակ, կանոնները արգելում են մտնել այնպիսի տեղեր, որտեղ գինարբուութիւն, զեղխութիւն և անկարգ գործողութիւններ են կատարւում. օր. գինետուն, պանտոկներ, զուարճական վայրեր (Ա. գ. 106, 221, 226). այս կանոնները չափաւոր ուրախութիւնը չարգելելով հանդերձ, թոյլ չեն տալիս մասնակցել շռայլ կոչունքներում և խրախճանութիւններում (609 եր. 58 կ. Ներսէս—Ե)։

3) Բարոյական կասկածներից հեռու մնալու համար և ժողովրդի մէջ մոլորութիւն չյարուցանելու նպատակով, ոչ մի հոգևորական չպէտքէ իւր մօտ պահի ո՛չ մի կին, բացի մօտ ազգականներից, որոնք կասկածից հեռու են (Ա. գ. 147, 222, 249, 335)։

4) Հոգևորականները պիտի հեռու մնան այն բոլոր

գուարճական, ըմբշամարտական տեղերը այցելելուց, որտեղ բացի անվայել արարքներից ոչ մի լրջմիտ գործ չի կատարւում. Նոյնպէս հներում թատերավայրերը, ուր կռապաշտական, կախարդական, և այլ վատ հակումներ գրգռող տեսարաններ չեն ներկայացնում. Նոյնպէս թղթախաղի տներ, որտեղ բացի ժամավաճառութիւնից ոչինչ օգուտ չէր կարելի ստանալ։ Լուսաւորչի 27 կանոնը (509 եր.) մինչև իսկ ձեռնածուներին 2 տարուայ ապաշխարանքի է ենթարկում։ Մանդակունու խրատները խստիւ արգելում են թատերախաղեր գնալ, ոչ միայն հոգևորականներին, այլ և աշխարհականներին, համարելով այն խաղերը կռապաշտական։

5) Արգելւում էր հոգևորականներին աշխարհային գործերով զբաղուել, շահագրգռական զբաղմունք ունենալ. օր. կերակրանոց և հիւրատուններ պահել, կամ կառավարիչ լինել այդպիսի տեղերում, անազնիւ ճանապարհով փող դիզել, վաճառականութիւն, առևտուր անել, խանութ դնել։ Պարզ է որ այս կանոնները չեն արգելում եթէ հոգևորականը ազնիւ պարապմունք ունենալով, շատացնում է իւր ընտանիքի, կամ եկեղեցու, վանքի արդիւնքները, օր. վաճառելով հացապտուղների աւելորդը, այգու գինին, փետակների մեղրը ևն։ Աշխարհային պարապմունքով զբաղուելու արգելքը առաջանում էր նրանից, որ շատերը թողնելով իրանց հոգևոր պարտքերի կատարելը, խառնւում էին ժողովրդական գործերի մէջ, դարաւոր լինելով, գիւղապետի կամ հարկահանի պաշտօն յանձն առնելով, շատերը զինւորական ասպարէզ էին մտնում, ուրիշները որսորդութեամբ պարապում (Ա. գ. 102, 226, 580, 611, երես)։

6) Կանոնները խստիւ արգելում են հոգևորականներին փողը շահով տալ, կամ վաշխառութեամբ պարապել։ Յունահռոմէական կանոններով վաճառականներին թոյլ էր տրւում փողը տալ պարտապաններին $8_0/^0$-ով. մնացածներին $6_0/^0$-ով. իսկ բարձրաստիճան մարդիկ պիտի բաւականային $4_0/^0$-ով։ (Սօկօլօվ—317). Այժմ պետական օրէնքով $12_0/^0$-ից աւելին վերցնողը համարւում է վաշխառու, հոգևորականները շատ

շատ իրաւունք ունէին փոխ տալու առանց շահի և տուած փողը յետ ստանալու (Ա. գ. 102, 157, 217, 382)։

7) Արգելւում է հոգևորականներին երաշխաւոր լինել դատարաններում. այդ հիմքով Յուստինիանոսի 123 նովելլայով արգելւում էր դրանց՝ առևտրական, պարտատիրական պայմաններում, դատարաններում պատասխանատու անձանց փոխարէն երաշխաւոր, միջնորդ, հոգաբարձու և կտակակատար լինել զանազան անձանց։ Այդ արգելքները դրուեցին նրա համար, որ առաջին՝ հոգևորականները չշեղուէին իրանց ուղղակի պարտաւորութիւններից, և երկրորդ՝ որ երաշխաւորութեան դէպքում չենթարկուեն քաղաքացիական գործերի պատրուակով, դատի, խիստ պահանջների, անպատուութեան և պատժի։ Իսկ այնպիսի դէպքերում, երբ հարկաւոր է խընամել որբ ու տնանկներին, խնամատարութեան տակ ընդունել տկարներին և աղքատներին, այդպիսի դէպքերում թէ եկեղեցին և թէ տէրութիւնը թոյլ էին տալիս ոչ միայն օգնական հանդիսանալու, այլ և ինքեանք դրանց նպաստում էին այդ բանում (Ա. գիրք. 94,

8) Հոգևորականները իրանց ընտանեկան կեանքով պիտի լինեին մաքուր և օրինակելի բոլոր հօտի համար. ամուսնական կեանքը պիտի որոշ բարոյական սկզբունքներով առաջնորդուի։ Ամուսնական կեանքի պարտաւորութիւնները միևնոյն չէ բոլոր եկեղեցիների համար, գոնէ մինչև Ե. դարը համարեա թէ միևնոյն ամուսնութեան վերաբերեալ կանոններով էին առաջնորդւում բոլոր եկեղեցիները, յետոյ արդէն զանազանութիւն մտաւ այդ եկեղեցիների կանոնների մէջ։ Հռոմէական եկեղեցին բոլորովին արգելեց ամուսնութիւնը բոլոր հոգևորական աստիճաններում, բողոքական եկեղեցին ընդհակառակն ամուսնանալ թոյլատրեց բոլորովին, յունաց և հայոց եկեղեցին ամուրիութիւն սահմանեց եպիսկոպոսական և վարդապետական աստիճանների համար, թոյլ տալով ամուսնանալ քահանայական դասակարգին։ Ամեն մի եկեղեցի իւր արածը ապացուցանելու համար դիմում է հին եկեղեցու կանոններին և գործնականութեան, որտեղ և գտնում է իւր

ցանկացածը, որովհետև հինը չէր արգելում ոչ մէկը և ո՛չ միւսը, ով կամենում էր ամուսնանում էր, ով չէ՛, մնում էր ամուրի։

Տիրտուղիանոսը, որ ապրում էր Բ. դարում, իւր գրուածքներում, ասումէ Ի-գլխում, ինչքան ինձ յայտնի է, երկկին քահանաները զրկւում էին քահանայութիւնից։ Ժա. գլխում յիշում է, որ պատարագը անում էր և ամուսնացած և կուսակրօն քահանան, շրջապատուած ամուսնացած և կուսակրօն սարկաւագներով։ Սոկրատը (Ե. դարում) Ե. գլխում ասում է, որ Թեսաղիայում եթէ կղերականը շարունակում էր կնոջ հետ ապրել որի հետ ամուսնացնել էր ձեռնադրութիւնից առաջ, մերժւում էր կղերից. իսկ արևելքում եթէ եպիսկոպոսները իրանց կանանցից հեռանում էին, այդ անում էին յօժար կամքով, իսկ շատերը կանանց պահում էին և եպիսկոպոսութեան ժամանակ երախաներ էին ունենում։ Եպիփանոս կիպրացին (Ե. դարում) ասում է, ամուսնացած և որդիներ ունեցող անձին եկեղեցին չի տալիս քահանայական աստիճաններ, մանաւանդ որտեղ խիստ են եկեղեցական օրէնքները, իսկ միւս տեղերում եթէ հակառակն է լինում, այդ ո՛չ եկեղեցական կանոնով է, այլ մարդկային թուլութիւնից և կարիքիցստիպուած են ամուսնացեալին ձեռնադրում։ Յերոնիմոսը (Ե. դարում) վկայում է, ո՛ր հոգևորականները իրանց զսպում էին ամուսնական անկողնից։ (Սokolov 325 եր.)։ Վերոյիշեալից երևում է, որ հնումը օրէնքը իւր խստութեամբ չէր գործադրւում, որովհետև այդ հարցը դաւանաբանական նշանակութիւն չունէր, որքան կառավարչական, տեղի, ժամանակի և հանգամանքների հետ կապ ունեցող։ Գրիգոր Լուսաւորիչը 3 տարուց յետոյ բաժանուեց կնոջից, կինը մտաւ կուսանոց, ինքը նուիրեց հոգևոր ասպարէզին։ Նրա կրտսեր որդին վանք մտաւ իբրև կրօնաւոր, իսկ մեծը ամուսնացաւ, եպիսկոպոս ձեռնադրուելուց յետոյ առանձնացաւ ամուսնուց։ Մինչև Ե. դարը Ս. Սահակի ժամանակ կաթուղիկոսները մեծ մասամբ ամուսնացած էին, կաթուղիկոս ընտրուելուց յետոյ կուսակրօն կեանք էին վարում։ Ամուսնութիւնից հեռանալը

անպայման պարտք չէր հոգևորականութեան համար. իսկ առաքեալների ժամանակ ամուսնութիւնը սովորական էր, և պարտք էր սահմանուած որ եպիսկոպոսը, սարկաւագը «միոյ կնոջ» այր լինէին. (Տիմ գ. Տիր. ա.)։ Ա—առ. 51 կանոնը (Ա. գ. 106) ասում է, եթէ եպիսկոպոսը, երէցը, կամ սարկաւագը, կամ քահանայական կարգից որև է մէկը կըհրաժարուի ամուսնութիւնից, մսից, գինուց, ոչ թէ ժուժկալութեան պատճառով, այլ պիղծ համարելով և անարգելով ստեղծագործութիւնը, դրանք կամ ուղղուեն կամ կարգալոյծ լինեն և մերժուեն եկեղեցուց։ Յամենայն դէպս Զ-դարուց սկսած հայոց մէջ կուսակրօնութիւնը մտաւ գործնականութեան մէջ, և այլևս եպիսկոպոս և կաթուղիկոս չենք ունենում ամուսնական կեանքով։ Նիկիայի ժողովում երբ հարց բարձրացաւ կուսակրօնութեան համար պարտաւորական օրէնք սահմանելու, Թեբէի Պափնուտ եպիսկոպոսը, որը կուսակրօն էր, երկար խօսեց ժողովում այդ մասին, ճգնեց ցոյց տալ որ աւելի լաւ է ամուսնանալ, քանթէ վատթար կեանք վարել, քանի որ ամենքը չեն կարող ողջախոհ կեանք վարել, միայն ով անպսակ ձեռնադրութիւն կստանայ, իրաւունք չունենայ յետոյ պսակուելու, իսկ ով պսակուած կլինի հոգևորական, իրաւունք չունենայ կնոջ արձակել։ Եպիսկոպոսի խօսքերը մեծ ազդեցութիւն արաւ և ժողովը համաձայնելով նրա կարծիքի հետ, կուսակրօնութեան համար պարտաւորական կանոն չսահմանեց։ (Սոկրատ. Ա. Սոզոմեն. Ա.)։ Յուստինիանոսի 123 նովելլայով կարգադրուեց, սորբին պաշտօնեաները ազատ են ընտրելու կուսակրօն կամ ամուսնացեալ կեանք, բայց սարկաւագ լինելուց առաջ նրանք կամ պիտի պսակուեն, կամ խօսք տան որ ձեռնադրութիւնից յետոյ պիտի վարեն ազնիւ կեանք և առանց օրինաւոր կնոջ պիտի ապրեն, Ամուսնական կեանքը չի վերջանում քահանայ կամ սարկաւագ ձեռնադրուելով, թէ և ժուժկալութիւնը և մաքրութիւնը աւելի գերադասելի է հոգևոր անձանց համար, բայց նոյնպէս այդ լինելով ազատ վճռի գործ, ստիպողական չէ, ամուսնական յարաբերութիւնների շարունակու-

թիւնը անհամապատասխան չի համարում քահանայական կոչման (Սօկօլով—331),

Տրուլլի ժողովը 691 թուին լսելով, որ Հռոմի պապը ստիպողական կարգադրութիւն է արել երեք բարձր քահանայական դասակարգի համար կուսակրօնութիւն պահպանել անպայման կերպով, դատապարտեց այդ կարգադրութիւնը քահանաների և սարկաւագների վերաբերմամբ և որոշեց 13 կանոնով. 1) Քահանաներին և սարկաւագներին չարգելել ամուսնութեան մէջ մնալ, 2) ոչ ձեռնադրութիւնից առաջ և ոչ յետոյ՝ նրանցից չպահանջել ամուսնական յարաբերութիւն ունենալ իրանց կնոջ հետ, 3) պատժել նրանց, որոնք բարեպաշտութեան պատրուակով կհեռացնեն կնոջ հակառակ նրա կամքի։ Վերոյիշեալները 'ի նկատի առնելով կարելի է հետևեալ կանոններով ամփոփել այդ հարցը։

1) Որ ամուսնացեալ հոգևորականները լինին մի կնոջ այր։ Թէ և Թէոդորիտը երկրորդ ամուսնութեան մէջ մտած անձանց ձեռնադրում էր և արդարանում էր նրանով, որ ուրիշների օրինակին է հետևում (Սօկօլով—334)։

2) Ամուսնութեան մէջ մտնելը պիտի լինի նախ քան ձեռնադրութիւնը, բացի ստորին պաշտօնեաներից, որոնց թոյլ էր տրւում յետոյ էլ ամուսնանալ։ Յուստինիանոսի ժամանակ այնքան շատ էր ձեռնադրութիւնից յետոյ ամուսնացողների թիւը, որ հնար չկար առանց խիստ պատժողական օրէնքների դիմելու առաջն առնելու, մինչև իսկ այդպիսիների ինչքը գրաւում էր յօգուտ եկեղեցու և որդիներին ապօրինի հրատարակելով զրկում էր ժառանգութիւնից։

3) Հոգևորականի կինը մեղանչելիս, կամ պիտի արձակուի, կամ ինքը ամուսինը լուծուի կարգից։

4) Եպիսկոպոս, վարդապետ, վանականներ պիտի լինին կուսակրօն, և իրաւունք չունենան պսակուելու։

Մինչև Ե. դար, ինչպէս վերևում ասացինք, կամաւոր էր եպիսկոպոսի կոյս կամ ամուսնացեալ լինելը։ Սոկրատի վկայութեամբ Թեսաղիայում, Մակեդոնիայում և Յունաստանում արդէն սովորութիւն էր դարձել կուսակրօն հոգևորա-

կանութիւնը, միայն արեւելքում շարունակւում էր ամուսնացեալ հոգեւորականութիւնը, նոյն իսկ որդիներ ունեցող եպիսկոպոսներ հազուագիւտ չէին։ Կամաց կամաց եպիսկոպոսական աթոռի համար սկսեցին նախապատւութիւն տալ այն անձանց, որոնք վանական էին, որոնք ամուրի էին, կամ որոնք կամաւոր յօժարութեամբ հեռացած էին իրանց կանանցից։ Յուստինիանոսը 528 թուին պատուիրեց ընտրել եպիսկոպոս այն անձանց, որոնք ծանրաբեռնուած չէին ընտանիքով, որպէսզի եկեղեցու ինչքը, ստացուածքը մնայ ուղղակի եկեղեցուն և չգնայ եպիսկոպոսի ընտանիքի պահպանութեան համար։ Երեք տարի յետոյ արգելեց ընտրուած և ձեռնադրուած եպիսկոպոսին կենակցել կնոջ հետ։ 535-ին հրամայեց, որ եպիսկոպոսութեան ընտրելիները կամ լինին վանական, կամ առնուազը վեց ամիս կղերում մնացած լինի և բաժանուած կնոջից և չունենայ որդիք և մօտ ազգականներ։ Հակառակ այս օրէնքի գնացողը պատժւելով, զրկւի կարգից, ձեռնադրողն էլ բանադրուի։ Այսպէս շարունակւեց մինչև 691 թիւը, Տրուլլի ժողովը, որի վճիռը արդէն յայտնի է, սրանից յետոյ արդէն վերջանում է ամուսնացեալ եպիսկոպոսութիւնը։ Մեր մէջ ինչպէս ասացինք, վերջին ամուսնացած կաթուղիկոսն էր Ս. Սահակ. նրանից յետոյ գոնէ ոչ մի փաստ չունինք հաստատելու , որ ամուսնութիւնը չէր վերացած. կուսակրօնների եպիսկոպոս և կաթուղիկոս ընտրուելը մեր մէջ աւելի վաղ սկսուեց քան օտար եկեղեցիներում։ Մեր առաջի վանական կաթուղիկոսն էր Արիստակէս «որ ի մենակեաց լեռնակեաց կրօնս մտեալ էր» Ագաթ. 494), «և էր Արիստակէս կուսան՝ սուրբ 'ի մանկութենէ» Բիւզ. 9)։

## Թ. ՆՈՒԻՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ԱՆԴԱՄՆԵՐԸ.

«Православный собесѣдникъ» 1858 г.

Հոգևոր դասակարգ ասելով, ինչպէս նախորդ գլխի մէջ ասացինք, հասկանում ենք երկու տեսակէտից, առաջինը՝ իբրև

հոգևոր պաշտօնեաներ առանց աստիճանի խնդրութեան, որոնք ունին ընդհանուր պարտքեր, ընդհանուր շահեր և ձգտումներ. և երկրորդ՝ աստիճանի զանազանութեան տեսակէտից, թէրև նուիրապետութեան անդամներ, ունին առանձին վերցրած որոշ իրաւունքներ և պարտքեր։ Հին կազմութեան մէջ թէրև առաջին աստիճան, որը ընդունում է և ձեռնադրում հոգևոր անձանց է եպիսկոպոսութիւնը, երկրորդ տեղը բռնում է քահանայական դասակարգը և ապա սարկաւագները։ Նայենք ըստ կարգի։—

## Ա. ԵՊԻՍԿՈՊՈՍՆԵՐ.

Երբ Յիսուսի համբարձումից յետոյ առաքեալները սկսեցին իրանց քարոզչական գործը, ամեն տեղ Երուսաղէմի շրջանում, երբ հետևորդներ էին գտնում, նշանակում էին նրանց վրայ քահանաներ, որոնք միևնոյն ժամանակ իրանց գործակիցներ էին (գործ. ժը. 20, Ա—Պետ.—ե. 1)։ Դրանք խորհուրդներ էին կատարում, ժողովրդին քարոզում, քրիստոնէութիւնը տարածում, նշանակած ժամանակին աղօթքներ կարդում հաւատացեալներին (Ա - Տիմ. ե. 17, 18)։ Քահանաներ նրանք նշանակում էին օրհնելով և ձեռնադրելով (գործ. ժգ. 23), որոնք շատ անգամ կոչւում էին տեսուչներ, եպիսկոպոսներ (գործ. ի. 28. փիլ. Ա. 1), ներկայացուցիչներ (Ա—թես. ե. 12) և գլխաւորներ (Եբր. ժգ. 17). Երուսաղէմի փոքրիկ շրջանում նախկին մի քանի տարիները կային երեք դասակարգ, առաքեալներ, քահանաներ և եղբայրներ (գործ. ժե.-1—4, 22, 23), որը և հաստատում են իրանց թղթերում Ս. Եպիփանը, Թէոդորիտը, Ոսկեբերանը։ Երբ յետոյ կամաց կամաց առաքեալները դուրս եկան Երուսաղէմի շրջանից, անցան միւս երկրները, այն ժամանակ նշանակեցին իւրաքանչիւր մեծ շրջանի համար մի մի տեսուչ, հսկող։ Առաջին ներկայացուցիչը, որը կարգուեց առաքեալ-

կան ձեռնադրութեամբ Երուսաղէմի շրջանի վրայ, էր Յակովբ Տեառն եղբայրը (Եւս. բ. 1, 23. գ. 5)։ Պօղոս առաքեալը անցնելով Ասիայի կողմերը զանազան տեղերում փոքր ժամանակի մէջ յաջողեց հաւատացեալներ գտնել և Եփեսոսի շրջանում ներկայացուցիչ նշանակեց Տիմոթէոսին (Ա—Տիմ. ա. 3. Բ—Տիմ.-ա-6), իսկ Կրետէ կղզու վրայ Տիտոսին (Տիտ. ա. 5)։ Այսպէս բոլոր առաքեալները ամեն տեղ տարածուելով ձեռնադրեցին յաջորդներ և տեսուչներ։ Կղեմէս Աղէքսանդրացին (գ. դարում) պատմում է, որ Յովհաննէս առաքեալը, որ բոլոր առաքեալներից շատ ապրեց, տեսնելով իւր վախճանի մօտենալը և բազմաթիւ աղանդաւորների բազմանալը, ձեռնադրեց շատ եպիսկոպոսներ փոքր—Ասիայի եկեղեցիների վրայ, խրախուսելով ամուր կենալ իրանց հաւատքի մէջ։ Առաքեալների ձեռնադրած՝ շրջանների այդ կառավարիչները այն ժամանակուանից արդէն եպիսկոպոսներ էին անուանում, ստանալով առաքելական լիազօրութիւն եկեղեցին կառավարելու. շատ անգամ եպիսկոպոս բառի փոխարէն գործ էր ածւում քահանայ բառը, նոյն իսկ սարկաւագ, դրանից շատերը ենթադրեցին, այժմ էլ հէնց, որ եպիսկոպոսական աստիճան առանձին չկայ, բոլորի իրաւունքը միևնոյն է, քահանայքն էլ իրաւունք ունին ձեռնադրութիւն կատարելու եպիսկոպոսի օրինակով։ Եւ մասամբ ճշմարիտ է այն, որ նախկին դարում անխտիր եպիսկոպոս և քահանայ կոչումն դրւում էր նոր ձեռնադրուած անձանց (գործ. ի. 17, 28), որովհետև հրէից քահանան ընդհանուր նշանակութիւն ունեցող բառ էր, նշանակում էր աւագագոյն, քահանայք—աւագանի, հէնց իրանք առաքեալները իրանց անուանում էին քահանայ—այդ իմաստով (Բ—Յով. ա- 1). երբ հօտը դեռևս շատ սակաւաթիւ էր, պարտաւորութիւնների բաժանման հարկ չկար, անխտիր թէ քահանայ, թէ եպիսկոպոս նոյն պարտաւորութիւններն էին կատարում հաւատացեալների նկատմամբ և նոյն իրաւունքներն ունէին (Տիտ. Ա.—5). երբ արդէն քրիստոնեաների թիւը շատացաւ, հովուողները բազմացան, կամաց կամաց հարկ զգացուեց վէ-

ճերի, հակաճառութիւնների պարզաբանութեան համար դիմել աւելի աւագագոյնին, առաջուց ընտրուածներին և այսպիսով երկու դասակարգի, առաքեալներից օրհնուածների և սրանց նշանակած քահանաների մէջ սկսուեց պարզօրէն տարբերութիւն դրուել: Յերոնիմոսը պատմում է, որ եպիսկոպոսական պաշտօնի և անուան տարբերութիւնը և պարզ կերպով գործածութիւնը առաջացաւ Կորնթացոց խռովութիւններից յետոյ (60 թուականներին): Տերտուղիանոսը, Իգնատիոս Աստուածակիրը իրանց գրուածքներում արդէն պարզ որոշում են երկու աստիճանների տարբերութիւնը, պարտքը և իրաւունքը: Եպիսկոպոսները համարւում էին առաքեալներից ձեռնադրուած, իսկ քահանաների ձեռնադրութիւնը յանձնուած եպիսկոպոսներին, սրանց յանձնւում էին մեծ շրջաններ, թեմեր բազմաթիւ քահանաներով հովուելու, իսկ վերջիններիս փոքր ծխեր առանձին եկեղեցով՝ ստորադրուած եպիսկոպոսին (Ա.— Տիմ.- Ե. 17, Բ.— Տիմ. Բ, 2): Եպիսկոպոսների առաւելութիւններն էին՝ 1) առաքեալներից յաջորդաբար և անմիջապէս ստացած իշխանութիւնը, 2) լիազօր կառավարութիւն թեմի մէջ գտնուած բոլոր եկեղեցիների, քահանաների (Правос. Собесѣд. 1858 г.): Եպիսկոպոսների առաքելական յաջորդութիւնը մեծ դեր էր խաղում հնում մի որ և է եկեղեցու առաքելական և օրինաւոր համարուելու խնդրում, որի հիման վրայ էլ չէին ընդունում զանազան հերետիկոսների եպիսկոպոսութիւնը և քահանայութիւնը, պահանջելով նրանցից առաքեալներից սկսած մինչև իրանց ընտրեալ եպիսկոպոսը յաջորդական ցուցակ: Եւ այդպէս հին եկեղեցիներում կար առաքեալներից մինչև իրանց ժամանակակից եպիսկոպոսի ցուցակը ցանկը—տաճարում դրած: Եւսեբիոսը յիշում է Դ. Գլ. 22—Հռոմի, Աղէքսանդրիայի, Անտիոքի, Լաւոդիկէի, Կեսարիայի եպիսկոպոսների ցանկը յաջորդական կարգով: Երուսաղէմի առաջին եպիսկոպոսն էր Յակոբ Տեառն եղբայր, ապա նրանց ցեղից Սիմէոն Կղէոպա, Իւստոս. Եփեսոսի եկեղեցում Յովհաննէս առաքեալ և աւետարանիչ, նրա յաջորդ

Պողիկարպոսը, որը զատկի վէճերում մասնակցեց. Հռոմում Պետրոս առաքեալ, ապա Կղիմէս նրա յաջորդներից. Հայոց եկեղեցում Թադէոս և Բարդուղիմէոս առաքեալներ, որոնց յաջորդութիւնը շարունակուեց Արտազում և Մծբինում, ապա Լուսաւորիչ։ Առաքելական յաջորդութեան և եպիսկոպոսական իրաւունքների և աստիճանի առաջին տեղ բռնելը եկեղեցու նուիրապետութեան մէջ վկայում են բոլոր գրողները. Իրինիոսը գրում է, Դ. 26 և Ե. 20, «պէտքէ հնազանդել հովիւներին, որոնք եկեղեցում են և յաջորդաբար նշանակուել են առաքեալներից, որոնցից շնորհատուութեամբ ստացել են Հոգին Սուրբ. Նրանցից պիտի ճշմարտութիւն սովորել, նրանք են հսկում հաւատի վրայ, նրանք են պահում առաքելական աւանդութիւնը, օրէնքները և նրանք են տալիս եկեղեցու աստիճանները։ Նոյն մտքերը և խրատները գտնում ենք Լուսաւորչին և Սահակին վերագրած կանոններում։ Սակայն առաքեալներին յատկացրած իրաւունքները չպէտքէ վերագրել յաջորդներին, առաքեալները ընտրուեցին Յիսուսի ձեռքով և ուղղակի շնորհք ստացան (հոգոյն սրբու) Սուրբ Հոգուց և երրորդ՝ նրանց լիազօրութիւնը տարածուեց բոլոր հաւատացեալների վրայ և ոչ մի շրջանի, որպիսին է եպիսկոպոսներինը։ Առաքեալների ժամանակից ըստ աւանդութեան եպիսկոպոսին ձեռնադրողն է 2, 3 եպիսկոպոս նոյն իսկ նրանց ժողովը, իսկ միւս աստիճանաւորներին օրհնողն է մի եպիսկոպոս. ( Ա. Գ. 84, 83)։ Բացի ձեռնադրութեան իրաւունքից, եպիսկոպոսին է պատկանում եկեղեցու ղեկավարութիւնը և կարգապահութիւնը։ Խորհուրդների կատարման գլխաւոր տնօրէնն է եպիսկոպոսը, որի թոյլտուութեամբ և քահանայքը կատարում են օրէնքները։ Եպիսկոպոսն միայն իրաւունք ունի եկեղեցի օծելու։ Եպիսկոպոսին է պատկանում ուսուցանելու բարձր իրաւունքը, նա պիտի կանոնաւորի ուսուցման կարգը և պատրաստի ուսուցիչներ (Ա.—Տիմ. Ե. 17, Բ—Տիմ.—Բ. 2)։ Եպիսկոպոսը միայն իրաւունք ունի կոչուելու գլխաւոր հովիւ ներկայացուցիչ եկեղեցու, կապելու և արձակելու, դա-

տելու քահանաներին (Ա.—Տիմ. ե. 19) և պաշտաման կարգի վրայ հսկելու, հովուելու իւր թեմի հօտը։ Այդ իրաւունք-ների հետ նա ունի և մեծ պարտքեր. նախ պատասխանա-տու Կաթուղիկոսի, ժողովրդի, եպիսկոպոսական ժողովի առաջ իւր եկեղեցու համար, հաւատի անթերի պահպանման, ե-կեղեցիների բարեկարգութեան, եկեղեցական կանոնների ճշգրիտ և անթերի կատարման համար։—Նա է պատասխա-նատու եկեղեցու գոյքի և ստացուածքի կանոնաւոր պահ-պանման, գործադրման համար, նրանցից բաժին հանելու աղքատներին, տնանկներին, որբ և այրիներին, հիւրասիրե-լու օտարներին, հիւանդներին նոյն հաշուով. պատասխա-նատու նոյն գոյքի վատնման և շռայլաբար կորստի մատնը-ման համար։ Եպիսկոպոսի ընտրութիւնը լինում էր հետև-եալ կերպով։ Առաքեալների ժամանակ իրանք էին ընտրում արժանաւոր մարդ և եպիսկոպոս ձեռնադրում. Կղիմէս Աղէքսանդրացու վկայութեամբ Տեառն եղբայր Յակոբը ե-պիսկոպոս ձեռնադրուեց Երուսաղեմում Պետրոս, Յակոբոս և Յովհաննէս առաքեալների ձեռքով։ Կանոնների հիման վրայ ընտրութիւնը և ձեռնադրութիւնը լինում էր այսպէս, երբ եպիսկոպոսական աթոռը թափուր էր մնում, մեծ ե-պիսկոպոսը, մետրոպոլիտը հրաւէր էր ուղարկում բոլոր աշ-խարհի կամ շրջանի եպիսկոպոսներին հաւաքուել այնտեղ, որտեղի վրայ պիտի եպիսկոպոս ձեռնադրուի։ Գալիս էին բոլորը, ով չէր կարող գալ տեղի հեռաւորութեան, հիւան-դութեան և այլ պատճառով, ուղարկում էր գրաւոր համա-ձայնութիւն, կամ կարծիք, բայց առնուազը պիտի լինէր երկու երեք հոգի (Ա. Գ. 83 երես). Ձայների մեծամաս-նութեամբ կամ միաձայն ընտրւում էր եպիսկոպոսը և ձեռ-նադրւում էր անշուշտ մետրոպոլիտի համաձայնութեամբ, և նրա ձեռքով։ Ընդհանրապէս ընտրւում էին տեղական անձինքներից, կղերից, իսկ երբ լինում էր անթեմ եպիսկո-պոս, որին կարելի էր նշանակել, կամ եթէ պատահում էր, որ խռովութիւն էր ընկած լինում ժողովրդի և կղերի մէջ ընտրեալի վերաբերմամբ, կամ յարմար էր դատւում տեղա-

փոխել մի եպիսկոպոսին միւս թեմ, այսպիսի դէպքերում ընտրում էին ոչ տեղական կղերից, այլ դրսից, այն պայմանով որ ընտրուածը անշուշտ լինի ընդունելի թէ ժողովրդի և թէ կղերի կողմից։ Ընդհանուր եկեղեցում ժողովուրդը մասնակցում էր ընտրութեան այսպէս, նա իւր ներկայութեամբ վկայութիւն էր տալիս ընտրեալի վարքի, բարքի վերաբերմամբ, եթէ վատ էր ճանաչում, չէր ընդունում, իսկ եթէ լաւ էր ճանաչում, ընդունում էր; ժողովրդի այդ կարծիքը թէև անմիջական չէր, թէև ինքն չէր ուղղակի ընտրում, բայց նրա ձայնը մեծ նշանակութիւն ունէր. որովհետև եպիսկոպոսական ժողովը ուշադրութեամբ դիտում էր որ ընտրուածը լինի արժանաւոր և ոչ պակասութիւններ ունեցող։ Աթանասին, Գրիգոր Աստուածաբանին, Օգոստինոսին ընտրեց ժողովուրդը, որոնք ստորադաս հոգևորականների ընտրութեան դէպքում յենւում էին ժողովրդի ցուցման վրայ։ Իսկ եթէ պատահում էր, որ զանազան կուսակցութիւնների պատճառով ժողովուրդը ընտրուածին չէր ընդունում, այն ժամանակ Ա—ոռ. 36 կանոնով (Ա. Գ. 99) պատժի էր ենթարկւում կղերը, որ չէր կարողացել համոզել ժողովուրդը. այստեղից երևում է, որ թէև ժողովրդի մասնակցութիւնը կար, բայց մեծ ձայնը, վերջնական վճիռը պատկանում էր հոգևոր իշխանութեան։ Լաւոդեկեայի 12 և 13 կանոնը (Ա. Գ. 219) թոյլ չի տալիս ամբոխին մասնակցել ընտրութեան, թողնելով այդ բանը եպիսկոպոսական ժողովին. այս կանոնը երևում է բացառիկ և տեղական գոյն ունեցող և հետևանք է կուսակցական կռիւների։ Դ. դարից սկսած, երբ քրիստոնէութիւնը դարձաւ քաղաքացիական կրօն, ընտրութիւններին սկսեցին մասնակցել բարձրաստիճան անձինք, նոյն իսկ կայսրները, յամենայն դէպս այս դէպքերում էլ վճռական ձայնը մնում էր հոգևոր իշխանութեան։ Մինչև իսկ մարմնաւոր իշխանութեան մասնակցելու չափը այդ բանում թուլացնելու դիտաւորութեամբ, խիստ կանոններ հրատարակուեցին (Ա. Գ. 98, 149, 468, 576), մեր Երուսաղէմի ժողովը կարգալոյծ է անում այդպիսի ձևով

ընտրուած եպիսկոպոսին, իսկ Շնորհալին նզովում է և բանադրում բոլոր ժողովականների որոշմամբ։ Ընտրութեան ձևը արևմտեան և արևելեան եկեղեցիներում դարերի ընթացքում փոփոխութեան ենթարկուեց։ Կոստանդիանոսից յետոյ, երբ կայսրները և իշխանները սկսեցին խառնուել եկեղեցական գործերում, շատ անգամ անարժան մարդիկ յոյս չունենալով ժողովրդի վրայ, դիմում էին ուղղակի Կայսրին խնդրելով նշանակել կայսերական հրամանով եպիսկոպոս, այս դրութիւնը ստեղծուեց մանաւորապէս աղանդաւորների յարուցած խռովութիւնների ժամանակ, Նեստորի օրերում իւրաքանչիւր կուսակցութիւն իւր եպիսկոպոսի գործը յաջողեցնելու համար դիմում էր կայսերական կառավարութեան օգնութեան, որով և սահմանադրուեց առանց մարմնաւոր իշխանութեան հաստատութեան կամ վաւերացման առաջնորդներ չ՚նշանակել։ Զ—Դարում Յուստինիանոսի նովելլաների միջոցով որոշուեց, որ կղերը և քաղաքի առաջին մարդիկ ընտրեն երեք հոգի եպիսկոպոսացու, համախօսական կազմեն և երդմամբ ստորագրեն որ ճշմարիտ է կատարուած ընտրութիւնը և ուղարկեն մետրոպոլիտին, որը մէկնու մէկին պիտի ձեռնադրի (123, 137 նովել.)։ Եկեղեցին յունաստանում ընդունեց այդ կարգը. այդ կարգը իբրև օրէնք մտաւ Վասիլ Մակեդոնացու (բազիլիկի) «թագաւորական դրքերի» և Փոտ պատրիարքի նոմօկանոնի մէջ (Թ. դարում). բայց կանոնը մնաց մեռած տառ, մանաւանդ պատկերամարտութեան ժամանակ, երբ կայսրը կամեցած մարդուն եպիսկոպոս էր նշանակում. յունաց եկեղեցին այդ անկանոնութեան առաջն առնելու համար, թէ Է—րդ և թէ 870 թուի ժողովներում արգելեց որ մարմնաւոր իշխանութիւնը չ՚խառնուի եպիսկոպոսների ընտրութեան գործում, այդ ձևով մասնակցող թէ եպիսկոպոսը, թէ իշխանը և թէ զօրավարը ենթարկուեն նզովքի։ 963-թուին Նիկիփոր Փոկա Կայսրը հրամայեց, որ թէ պատրիարքը և թէ եպիսկոպոսները ընտրուին և հաստատուին կայսերական ցուցմամբ և հրամանով։

Հռոմի եկեղեցին սկզբից հակամիտ էր դէպի ժողովրդա-

կան ընտրութիւնը. Յուլիոս եպիսկոպոսը Աթանասին պաշտպանելու համար գրուած թղթում ջատագովում է ժողովրդական ընտրութիւնը և պախարակում այն՝, որ օտար եպիսկոպոս են նշանակում քաղաքի վրայ առանց ժողովրդի ցանկութեան, նրա ցուցման և ընտրութեան։ Ե. դարու սկզբին Իննոկինդիոս ա. պապը դատապարտեց մի մետրոպոլիտի արարք, որը «հակառակ ժողովրդի ցանկութեան և եկեղեցական կարգապահութեան» եպիսկոպոս է նշանակել. բայց 12-րդ դարուց արդէն Հռոմի եկեղեցին ժողովրդական ընտրողական մասնակցութիւնը բոլորովին վերացրեց, բոլոր հոգևորականների ընտրութիւնը և նշանակումն յանձնեց պապին։
(Տես Объ участіи міряпъ въ дѣлахъ церкви, съ точки зрѣнія прав. канонич. права—1866, казань. А. Павлова.):

Հայոց եկեղեցում և Աֆրիկայի եհեղեցիներում աշխարհականների մասնակցութիւնը ընտրութեան գործում մնաց ըստ նախկին աւանդական կարգին. թէ նախալուսաւորչեան դարերում և թէ Լուսաւորչից յետոյ եպիսկոպոս—առաջնորդներ ընտրում էր Հայոց մէջ թեմը, իշխանները և ժողովուրդը, մինչև իսկ բոլորովին երկրորդական նշանակութիւն տալով կղերին։ Ժգ. դարում Ստեփաննոս Օրբէլեանը այսպէս է նկարագրում իւր Սիւնեաց աշխարհի առաջնորդ ընտրուելը. «և ժողովուելով մեր եպիսկոպոսները իմ հօր մօտ (Տարսայիճ Սիւնեաց իշխան) ինձ հրաւիրեցին գնալ թագաւորական աշխարհ Կիլիկիան, երջանիկ կաթուղիկոսի և աստուածապսակ Հայոց թագաւորի մօտ մետրոպոլտութեան ձեռնադրութիւն ստանալու Սիւնեաց աթոռի վրայ» 227 եր. Ս. Օրբելեան։ Ստեփ. Օրբելեան 52 երեսում բերում է առաջնորդական ընտրութեան նաև հետևեալ ձևը «բողոք բարձեալ ամ ազատաց և տանուտեարց և ուխտ քահանայից աշխարհին առ մեծ բարեպաշտուհին Սահակիա՝ խնդրէին իւրեանց առաջնորդ։ Իսկ նորա պատրաստեալ դեսպանս 'ի մեծ և 'ի պատուական արանց և յընտիր քահանայից՝ բազում ընծայիւք և պիտանի պատարագօք ուղևորէ առ կաթուղիկո-

սրն Հայոց Մուշէ (Վահան Մամիկոնեանի ժամանակ), և թախանձէ զնա գալ յաշխարհ իւր և ընտրեալ արժանաւոր այր՝ կացուցանել յաթոռ միտրոպոլտութեան Սիւնեաց»․ կաթուղիկոսը գալիս է Սիւնիք․ «Հրամայէ ժողովոյն ընտրել իւրեանց առաջնորդ, զի ձեռնադրեսցէ։ Ապա ամ բազմութիւն զաղաղակ բարձին 'ի մի բերան և ասեն․ «խնդրեմք մեք տեսուչ հոգւոյ մերոյ զհայր Երիցակ և բաց'ի նմանէ ոչ պիտի մեզ այլ ոք»։ Առաջնորդների ժողովրդական ընտրութեան փառաւոր ապացոյցն է Տաճկահայոց եպիսկոպոսների ընտրութիւնք և նշանակումն։ Սահմանադրութեան 97 յօդուածով (Ս․ գիրք 771 երես) առաջնորդի ընտրութիւնը լինում է պատրիարքի ընտրութեան նման, գաւառական ընդհանուր ժողովով, խառը ժողովի տեղեկագիրը ուղարկւում է պատրիարքարան․ պատրիարքը կենտրոնական վարչութեան խառը ժողովի հաճութեամբ կհաստատի ընտրութիւնը և բարձրագոյն դռան հրամանագիրը ստանալուն հոգը կտանի։ Ռուսահայոց մէջ մինչև պօլօժենիայի հաստատութիւնը 1836—թիւը, նոյն կերպով կընտրուէին և կհաստատուէին կաթուղիկոսից առաջնորդները․ նորանից յետոյ 2 հոգի առաջարկւում է կաթուղիկոսի կողմից կայսեր և մէկն ու մէկը հաստատւում է, կարող է և չըհաստատուել։ Պարսկահայոց մէջ, ընտրում է ժողովուրդը, հաստատում է կաթուղիկոսը և առանձին գրութեամբ իմացնելով Պարսից շահին, խնդրում է նրա վաւերացումն և ընդունելը։ Եպիսկոպոսների ընտրութեամբ նշանակման շատ փայլուն ապացոյցն է ձեռնադրութեան կարգը, որով ժողովրդի բոլոր դասակարգերը մասնակցում են ընտրութեան, հրապարակօրէն յայտնելով իրանց հաւանութիւնը։ Երուսաղէմի ժողովը 1651 թուին 3 կանոնով սահմանում է «առանց ժողովրդի խնդրանաց և վկայական թղթի ո՛չ ոք եպիսկոպոս չձեռնադրուի» Ս․ գ․ 467 երես։ Ուսուցչապետ Պաւլով ջատագով հանդիսանալով ժողովրդի մասնակցութեան եկեղեցական գործերում, ուրախութեամբ է արձանագրում այն հատ ու կտոր փաստերը ընդհանուր եկեղեցական պատմութեան

մէջ, որոնք հաստատում են իւր ցանկացածը, դժբախտաբար ծանօթ չլինելով Հայոց եկեղեցու գործնականութեան մէջ խոր արմատ ձգած ընտրողական սկզբունքի հետ, չի կարողանում ոչ մի փաստ բերել մեր շրջանից, որ լիապէս հաստատէր իւր տեսութիւնը։

## Բ. ՔԱՀԱՆԱՆԵՐ.

Եկեղեցու նուիրապետական երկրորդ աստիճանը կազմում է քահանայութիւնը, իբրև ներկայացուցիչ այդ կարգի է քահանան։ Քահանայ նշանակում է աւագագոյն անդամ եկեղեցու, ընտրուած յարգելի և պատուաւոր անդամներից։ Քահանայի պարտաւորութիւններն են, 1) կատարել խորհուրդները և պաշտամունքները. 2) ուսուցանել և քարոզել. 3) իրաւունք կապելու և արձակելու։ Նա չի կարող կատարել մի քանի գործողութիւններ, որոնք վերապահւում են եպիսկոպոսական աստիճանին. 1) չի կարող մեռոն եփել. 2) եկեղեցի օծել և 3) ձեռնադրութիւն կատարել։ Մեռոն եփելը արգելուած է քահանաներին և վերապահուած եպիսկոպոսին ըստ բոլոր եկեղեցեաց, Կարթագենի 348 թուի ժողովը այդ կարգը համարում է հնաւանդ. Զ. տիեզերական ժողովի 2—րդ կանոնը խստիւ արգելեց քահանաներին եփել, իսկ ըստ մեր եկեղեցու վաղեմի կանոնների, Թադէոսի, Մակարի, Սահակի, Սի ևն. վերապահուած է միմիայն կաթուղիկոսին (Ա. գ. 487, 521, 412, 428)։ Այդ իրաւունքը համարւում է առաքելական յաջորդական, որը ստացւում էր առաքելական ձեռնադրութեան ժամանակ Հոգոյն Սրբոյ շնորհքի իջմամբ. մեռոնը համարւում է այդ ստացած շնորհքի տեսանելի իջնումը, որ կատարւում է մկրտութեան—դրոշմի ժամանակ քահանային ձեռքով եպիսկոպոսի թոյլտուութեամբ։ Բարսեղ մեծը մեռոնի օրհնութիւնը համարում է առաքելական աւանդութիւն։ Դիոնիսիոս Արիսպագացին, Թէ-

ոփիլոս Անտօիքացին, Տերտուղիանոսը, Կիպրիանոսը, նոյնպէս և առաքելական կարգադրութիւնները վկայում են այդ մասին վաղ ժամանակից։ Մանկանց դրոշմելու հարցը վիճաբանութեան տեղիք է տուել արևելեան և արևմտեան եկեղեցիներում։ Մինչև այսօր Հռոմէական կանոնով քահանան իրաւունք չունի դրոշմելու, նա միայն մկրտում է մանկան, իսկ եպիսկոպոսը դրոշմում։ Մեր և Յունաց եկեղեցու կանոններով քահանան է դրոշմում, իսկ մեռոնի եփելը թողնելով բարձր աստիճան ունեցողին։ «Առաքելական կարգադրութիւնների» մէջ թոյլ է տալիս և քահանային դրոշմել. «Դու, եպիսկոպոս կամ քահանայ, առաջ օծիր իւղով, ապա մկրտիր ջրով, և վերջապէս դրոշմիր մեռոնով»։ Երբ Փոտ պատրիարքի ժամանակ վէճ ծագեց այդ մասին Հռոմի հետ, Փոտը գրեց, «սովորեցնում են, որ քահանաները իրաւունք չունեն մեռոնով մկրտելու, որ այդ իրաւունքը օրէնքով պատկանում է եպիսկոպոսին։ Բայց ո՞րտե՞ղ է այդ օրէնքը։ Ո՞վ է գրել։ Առաքեալնե՞րը թէ հայրերը ․ թէ՞ որև է ժողով. որտե՞ղ և ե՞րբ է գրուել և հաստատուել։ Բացի դրանից եթէ քահանաներին չի կարելի մեռոնով օծել—դրոշմել, այն ժամանակ չի կարելի և միւս խորհուրդները կատարել. օր. մկրտել ևն. ևն.».—
(Правос. собесѣд. 1858 г.)։ Փլորենտինի ժողովում այդ խնդրի մասին խօսք եղաւ, բայց դրական փաստեր չգտնուելով, հարցը մնաց առ կախ։ Յարմարութեան տեսակէտից էլ շատ դժուարութիւն կյարուցանի այն սովորութիւնը, երբ եպիսկոպոսը գիւղէ գիւղ շրջելով պէտքէ դրոշմէր բոլոր մկրտուածներին, եթէ դրոշմելու իրաւունքը յատկացնուէր միմիայն եպիսկոպոսին։

Գալով երկրորդ կէտին, որ քահանաները իրաւունք չունին տաճար, սեղան, եկեղեցի օծելու, այդ պարզ և որոշ գրուած են բոլոր եկեղեցական կանոններում։ (Ա. գիրք. 338, 427)։ Քահանաներին չտալ իրաւունք ձեռնադրութեան, այդ արդէն մտած է եկեղեցու գործնականութեան մէջ հէնց առաքեալներից սկսած։

Ուսուցանելու, քարոզելու իրաւունքը տրուած է քահանաներին առաքեալների ժամանակից. Քրիստոսի 72 աշակերտները (Մատթ. իբ. 19, 20, Մարկ. ժզ. 16, ա—Տիմ. ե. 17) իրաւունք էին ստացել քարոզելու։ Առաքելական 58 կանոնը պատուիրում է թէ եպիսկոպոսներին և թէ քահանաներին սովորացնել ժողովրդին բարեպաշտական բոլոր կարգերը. Եգիպտոսի մէջ եկեղեցում երբ Օգոստինոսը առաջին անգամ քահանայական աստիճանում եպիսկոպոսի ներկայութեամբ սկսեց քարոզել, շատերին նորամուծութիւն երևաց, բայց տեսնելով այդ սովորութեան առաւելութիւնները, ընդհանուր կանոնի տակ ընկաւ, միայն եպիսկոպոսի ներկայութեան դէպքում, նախօրօք թոյլտուութիւն պիտի խնդրուէր նրանից քարոզ խօսելու։ Կապելու և արձակելու իրաւունքը պատկանում է թէ եպիսկոպոսին թէ քահանային. ա—առ. 52 կանոնը մինչև իսկ սահմանում է, որ եթէ դրանք զղջացող մեղաւորի մեղքերին թողութիւն չեն տալ, կմերժեն, իրանք զրկուեն կարգից՝ իբրև պատիժ իրանց գլխաւոր պարտաւորութիւններից մէկը ճշտութեամբ չկատարելուն համար։ Հներում ապաշխարութիւնը և խոստովանութիւնը երկու ձևով էր լինում, բացարձակ, բոլոր ժողովրդի առաջ և առանձին, գաղտնի։ Առաջին դէպքում ապաշխարութեան ժամանակը, աստիճանը, դասը որոշում էր եպիսկոպոսը, որը հսկում էր ապաշխարողի ջերմեռանդութեան կամ անուշադիր լինելուն վրայ, և երբ բոլորովին զղջացած էր գտնում նրան, ինքն թողութիւն էր տալիս նրան և արձակում։ Իսկ գաղտնի խոստովանութեան դէպքերում դիմում էին քահանային, որը և արձակում էր մեղքերը։ Բացի այդ, քահանան որոշ մասով մասնակցում էր և եկեղեցական տնտեսական կառավարութեան մէջ եպիսկոպոսի նախագահութեամբ և ձեռնադրութեամբ. իսկ իւրաքանչիւր քահանայ իւր եկեղեցու կարգապահն է և հսկողը, թէ ստորին պաշտօնեաների, թէ կարգ կանոնի պահպանման վրայ և մանրամասն հաշիւ պիտի տար եպիսկոպոսին այդ մասին։ Քահանայք իրաւունք չունէին առանց եպիսկոպոսի աստիճան ընդունելու և ա-

ռանց ժողովրդի համախոսականի ընտրուելու և ծխական քահանայ նշանակուելու։ 2) իրաւունք չունէին առանձին սեղան հաստատել, ծուխ կազմել և ըմբոստաբար առանց եպիսկոպոսի թոյլտուութեան, հակառակ նրա կամքի անկախ եկեղեցական կազմութիւն և վարչութիւն հաստատել (Ա—առ. 31 կանոն)։ 3) Կասկածաւոր և թիւրիմացութիւններ առաջացնող զանազան կանոնների և կարգերի կատարման ժամանակ, առանց եպիսկոպոսի որոշման ոչինչ չպիտի ինքնագլուխ անէին։ 4) Ամեն մի զանցառութեան, անկանոնութեան դէպքում նրանք կարգի էին հրաւիրւում եպիսկոպոսի կողմից և յանցագործութեան դէպքում, ապաշխարանքի և պատժի ենթարկւում։

## ՔԱՀԱՆԱՅԻ ԸՆՏՐՈՒԹԻՒՆԸ ԵՒ ՁԵՌՆԱԴՐՈՒԹԻՒՆԸ.

Ա--Առաքել. 2 կանոնով (Ա. գ. 84) քահանայի և սարկաւագի ձեռնադրութիւնը կատարում է եպիսկոպոսը։ Քահանայի ընտրութիւնը կատարւում էր երկուստէք՝ թէ հոգևոր իշխանութեան կողմից թէ ժողովրդի։ Բարսեղ մեծի 89 կանոնով (Ա. գ։ 249) պէտքէ ձեռնադրուողը անցնի բոլոր փորձառական աստիճաններով, որպէս զի լաւ սովորի եկեղեցու կարգ կանոնը և վարք ու բարքի կողմից ընդունելի լինի ժողովրդից և իշխանութիւնից առանց երկմտութեան. հին կարգով, ասում է նա, եկեղեցու պաշտօնեայքը պիտի ընդունուէին փորձութիւնից յետոյ, որպէս զի նրանք միշտ ծառայութեան և հսկողութեան տակ լինելով, զսպէին իրանց վատ հակումները և ուղղութեան գային. իսկ քահանաները և քորեպիսկոպոսները մշտական տեղեկութիւններ էին հաղորդում նրա վարքի մասին եպիսկոպոսին։ «սրանից յետոյ, հրահանգում է Բարսեղ մեծը քորեպիսկոպոսներին, ընտրեցէք և ընդունեցէք արժանաւորին, բայց մի՛ նշանակէք Դուք կղերի անդամ, հապա ա՛յդ թողէք ինձ. իմացէք, որ առանց

իմ իրաւունքի ընդունուածը կհամարուի աշխարհական». ըստ Բարսեղի ժողովուրդը քիչ մասնակցութիւն ունէր եկեղեցու պաշտօնեայի ընտրութեան գործում։ Եւ ընդհակառակը՝ միւս կողմից ունենք Կիպրիանոսի խօսքերը, որոնք ապացուցանում են թէ որքան մեծ նշանակութիւն է տալիս Աֆրիկայի եկեղեցիներում հոգևորականի ընտրութեան գործում ժողովրդի մասնակցութեան, նա ասում է «Աստուած հրամայում է Թուոց գրքում (20, 25, 26) Մովսէսին, որ բոլոր ժողովրդի առաջ ընտրի քահանայ, այսինքն սովորեցնում և ցոյց է տալիս, որ քահանայ կարգելը ո՛չ այլապէս է լինում, բայց եթէ ժողովրդի գիտութեամբ, որպէս զի ներկայ եղողները վկայեն ընտրեալի մասին, բացէ ի բաց ասելով նրա արժանաւորութիւնը և պակասութիւնները. այդ ժամանակ միայն կլինի արդար, ճշմարիտ և օրինաւոր ընտրութիւն, որովհետև ընդհանուրի դատավճռով է ընտրւում հոգևորականը» (Правос. Собесед. 1867г):
Որիգինէսը ասում է «քահանայ կարգելիս անհրաժեշտ է ժողովրդի ներկայութիւնը, որ բոլորը իմանան, որ ընտրւում է ժողովրդի ամենալաւ, ամենաուսումնական, ամենասուրբ և ամենաբարեգործ անձը, որը ներկայ է լինում նրա համար, որ ապագայում գժտութիւնների տեղիք չտայ». Объ участіи мірянъ въ дѣлахъ церкви . . А.Павловъ): Նիկիայի ժողովի կանոններում թէև ոչ ժողովրդական ընտրութեան մասին ոչինչ չկայ, բայց նրա ուղղած շրջաբերականում Աֆրիկայի եկեղեցիներին, ասում է, «ընտրուածները լինեն արժանաւոր և ընտրուեն ժողովրդի կողմից, միայն Աղէքսանդրեայի եպիսկոպոսի համաձայնութեամբ» (Սոկր. Ա. 9)։
Հայոց եկեկեցու մէջ անխափան սկզբից մինչև այժմ պահպանւում է Նախնեաց սահմանադրութիւնը և Աֆրիկայի եկեղեցու նման ընտրողական սկզբունքը անխախտ մնում է իւր ոյժի մէջ։ Հայոց եկեղեցու կանոնները պարզ և որոշ հրամայում են ընտրել քահանային ժողովրդի վկայութեամբ. իսկ Գէորգ Դ. որոշում է, որ քահանան պիտի ընտրուի ժողովրդի համախօսականով, այն է գիւղական հասարակութեան

ժողովով տանուտէրի կնքմամբ և ուղարկում համախօսականը վիճակային Առենին, որը և ընդունում է ժողովրդի որոշումն և ձեռնադրութեան իրաւունք ձեռք բերում Սինօդից։ Այդպէս է սկզբից, Տաճապիվանի ժողովից սկսած, Թադէոս առաքեալին վերագրած կանոններից սկսած բոլորը հաստատում են ժողովրդական ընտրութեանը սկզբունքը. (Ա. Գիրք, 338, 451, 469, 477, 522, 633 երես) Տաճկահայոց և Պարսկահայոց մէջ նոյն ընտրողական կարգը պահպանւում է ամենայն սրբութեամբ մինչև այսօր։

## Գ. ՍԱՐԿԱՒԱԳՆԵՐ

Երրորդ կարգն է նուիրապետութեան՝ սարկաւագների դասակարգը։ Սրանք առաջին անգամ ընտրուեցին ծառայելու հաւատացեալներին (Գործք—Զ. գլ.). հոգալու և կանոնաւորելու նրանց պէտքերը, դարմանելու աղքատների կարիքները։ Դրանք այդ աստիճանը ընդունեցին առաքելական ձեռնադրութեամբ. (գործ. Զ. 6,8,5,), թոյլտուութիւն ստանալով ծառայել քահանաներին և լինել քահանայ (Ա—Տիմ. Գ. 8—13)։ Բոլոր հայրերը՝ Իգնատիոս, Յուստինոս, Կիպրիանոս, Տերտուղիանոս, «Առաքելական կարգադրութիւնները» համարում են սարկաւագներին քահանայական դասակարգի անդամ, իբրև օգնական քահանայի և եպիսկոպոսի։ Սարկաւագների պարտաւորութիւնները, 1) Սրանք պատարագի ժամանակ ընդունում էին ժողովրդից ստացուած նուէրները, հաց, գինի, պտուղներ, և անուն անուն յիշում էին, որ քահանան պատարագին յիշատակի. 2) Եկեղեցում քարոզ կարդաց էին, իմացնելով ժողովրդին աղօթելու, չոքելու, ապաշխարելու ժամանակ, իսկ ապաշխարողներին կանգնեցնում էին իրանց տեղերում և ժամանակին եկեղեցուց դուրս հանում. 3) Աւետարանը կարդում էին եկեղեցում. 4) Հաղորդելու էին բերում եկեղեցում գտնուողներին և տանում էին երբեմն բացակաների տները և հաղորդութիւն տալիս, բռնած ունենալով սկիհը, կամ թաշկինակը. 5) Սեղանի

վրայ գտնուած Սրբազան իրերը և անօթները նրան էին յանձնում պահպանելու և հսկում (սիրոյ երեկոյի) ճաշի վրայ. 6) Հսկում էին եկեղեցում կարգապահութեան, լռութիւն պահելու վրայ։

Բացի այդ, մինչև ստորին կարգերի սահմանումն, նրանք կատարում էին բոլոր կարգերը, այն է աղքատներին և այրիներին կերակրում, գրաւոր հաշիւները պատրաստում, չմկրտուածներին քրիստոնէական կրօնքը ուսուցանում են, իսկ երբ ստորաբաժանումներ եղան, այն է կիսասարկաւագներ, ընթերցողներ և այլք, այն ժամանակ այդ պարտաւորութիւնները դրին ստորին աստիճանաւորների վրայ։ Նրանք մասնակցում էին տիեզերական և տարեկան եկեղեցական ժողովներում, միայն կանգնած լսում էին առանց ձայնի իրաւունքի. միայն Աթանասը իբրև սարկաւագ Արիոսի դէմ յարուցած մեծ խռովութեան ժամանակ տիեզերական ժողովում իրաւունք խնդրելուց յետոյ վէճի բռնուեց Արիոսի հետ և ճարտար լեզուով պաշտպանեց ուղղափառ եկեղեցին։ Եփեսոսի ժողովի ստորագրութիւնների մէջ կան և սարկաւագների։

Ընդհանուր օրէնքով սարկաւագները իրաւունք չունեն ո՛չ մկրտութիւն անելու և ո՛չ քարոզելու. բայց հներում բացառութիւններ միշտ լինում էին, Ոսկեբերանը, Եփրեմ Ասորին սարկաւագ ժամանակ եկեղեցում քարոզում էին։

## ՍԱՐԿԱՒԱԳՈՒՀԻՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Սարկաւագուհիները կային Պօղոս առաքեալի ժամանակից (Հռոմ. ժզ. 1) Պոլսոյ եկեղեցում Յուստինիանոսի և Հերակլի ժամանակ 40 հոգի կար։ «Առաքել. կարգադրութիւնները» պատուիրում են որ դրանք լինեն կոյսեր, կամ բարեպաշտ այրիներ, և 40 տարեկան։ Նիկիայի 19 կանոնով (Ա. Գ. 158 երես) նրանք ստանում էին առանձին ձեռնադրութիւն։ Նրանց պարտաւորութիւններն էին, 1) կանանց պատրաստել մկրտութեան համար. 2) Մկրտութիւնը՝ եթէ

մեծ կանայք էին մկրտում, կատարում էին նրանք, իսկ դրոշմը՝ վարագոյրի ետևից՝ անում էին եպիսկոպոսը կամ քահանան. 3) կնքամայր էին լինում հներում բոլոր աղջիկ մկրտուածներին. 4) կանանց վերաբերեալ բոլոր հոգացողութիւնները եպիսկոպոսի պատուէրով կատարում էին սրանք, 5) այն դռների մօտ էին կանգնում եկեղեցում, որտեղից կանայք էին մտնում և նրանց մէջ կարգապահութեան վրայ հսկում։

## ԿԻՍԱՍԱՐԿԱՒԱԳՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Կիսասարկաւագները կոչւում էին ուղղակի ծառայողներ (Նիկ. 2, Լաւոդ. 22,43), նրանց պարտաւորութիւնն էր պատարագի ժամանակ կանգնել դռան մօտ և կարգ պահպանել, հսկել ապաշխարողների վրայ, նրանք ձգում էին ոչ ամբողջ ուրար, այլ բազկուրար ձախ բազկին, հագցնել պատարագչի զգեստը, խնկարկել քարոզ կարդալ ևայլն։ Սրանք եկեղեցուց դուրս կատարում էին եպիսկոպոսի զանազան յանձնարարութիւնները։

Ռուսաց պետական օրէնքով հայոց եկեղեցու կիսասարկաւագը իբրև սրբազնագործ ազատ է զինուորական ծառայութիւնից։

## ՍՏՈՐԻՆ ՊԱՇՏՕՆԵԱՅՔ

Ստորին պաշտօնեաները զանազան եկեղեցիներում զանազան թւով են, մի տեղ 3, մի տեղ 4, երրորդ տեղում 6։ Ա—Առաք. 69 կանոնը (Ա. գիրք, 109 երես) յիշում է 3 աստիճան, 1) կիսասարկաւագ, 2) ընթերցող, 3) երգող։ «Առաքելական կարգադրութիւնները» 4 են յիշում. 1) կիսասարկաւագ, 2) ընթերցող, 3) երգող, 4, դռնապան։ Լաւոդիկիայի 26 կանոնով (Ա. գ. 221 երես) յիշւում է և երդմնեցուցիչ, 24 կանոնում յիշւում է. 1) ընթերցող, 2) երգիչ, 3) երդմնեցուցիչ, 4) դռնապան։ Եպիփանոսը յիշում է

նաև գրագրներ. Յերոնիմոսը նաև գերեզմանափորեր (Прав. собесѣд 185 г.)։ Եւսեբիոսը Զ. 43 երեսում ասում է, Կիպրիանոսի և Հռոմի Կորնելիոս եպիսկոպոսների թղթերից երևում է որ Հռոմի եկեղեցին այն ժամանակ ունէր «46 քահանայ, 7 սարկաւագ, 7 կիսասարկաւագ, 42 ջահընկալ (акалуѳъ), և 52 երդմնեցուցիչ՝ երգիչ և դռնապան. ուրեմն ըստ Հռոմի եկեղեցուն պիտի աստիճանները հաշուել այսպէս. 1) կիսասարկաւագ, 2) ջահընկալ, 3) երդմնեցուցիչ, 4) երգիչ, 5) դռնապան։ Լամբրոնացին յիշում է, 1) կիսասարկաւագ, 2) ընթերցող, 3) երգիչ։ Ստեփաննոս Օրբելեանը՝ 1) կիսաս. 2) գրակարդաց, 3) սաղմոսերգու կամ երգիչ։ Յովհաննէս կաթողիկոսը 1) կիսասար. 2) վերծանող (ընթերցող) և 3) ողմոսերգու (երգիչ). Եղիշէն (Ե. դարում) Եգլ. յիշում է՝ սաղմոսասացք և գրակարդացք։ Ագաթանգեղոսը՝ միայն անագանոսք է յիշում, որ է ընթերցող, միւսների համար անորոշաբար «և որ այլ ևս ի պաշտօն տեառն կային»։ Մեր հայրերի դասաւորութիւնն է այնպէս՝ ինչպէս Ա.-Ա.ռ. 69 կանոնում յիշատակածը. իսկ այսօրուայ մեր ձեռնադրութեան մաշտոցը, որը անվիճելի կերպով ընդունւում է եկեղեցու կողմից իբրև ձեռնադրական օրէնք--ձեռնարկ, բաժանում է ստորին աստիճանաւորներին այսպէս, կղերիկոսների աստիճանաւորների և դպիրների կարգերի. աստիճանք կղերիկոսաց երկու են, սաղմոսերգու կամ երգիչ և աւելածու. դպիրների կարգերն են, 1) դռնապան, 2) ընթերցող, 3) երդմնեցուցիչ, 4) ջահընկալ, 5) կիսասարկաւագ։ Մաշտոցի կանոնով մինչև 4 աստիճանը, ջահընկալութիւնը կարելի է պսակուել, իսկ կիսասարկաւագութիւնից սկսած չի կարելի պսակուիլ։ Այս բոլոր ձևականութիւնները կատարւում են այն ժամանակ, երբ ձեռնադրւում է դպիր, քահանայ և սարկաւագ, իսկ մասնաւորապէս սովորութիւն չէ մեր եկեղեցում առանձին աստիճան տալ դռնապանին, կամ երդմնեցուցիչին. մեր մէջ սովորաբար գործ է ածւում երեք ձեռնադրութիւն, այն է 1) դպրի, որին դրւում է 4 աստիճան, ջահընկալութիւն,

որև կոչւում է ըստ ժողովրդականաց չորս աստիճանաւոր, կամ տիրացու, որը կարող է և պսակուել. 2) սարկաւագի, որը ուղղակի ձեռնադրւում է սարկաւագ և 3) քահանայի։ Մաշտոցը ունի որոշ պարբերութիւն «ձեռնադրութիւն դպրաց, սարկաւագաց և քահանայից»։ Սեբէոսի մէջ կարդում ենք, 85 եր. «Շնորհիւն Ա՜յ յեպիսկոպոսապետ և յամենայն ուղղափառ եպիսկոպոսաց» և յերիցանց, 'ի սարկաւագաց «և 'ի դպրացս....»։ Լինին ստորին պաշտօնեայքն 5, թէ 7, թէ 1, միևնոյն է եկեղեցու համար, որովհետև դրանք բոլորը համարւում են սարկաւագի օգնականներ և դրանց պաշտօնները եկեղեցու գործնականութեան մէջ ստեղծուել է միմիայն սարկաւագի պաշտօնը թեթևացնելու համար։ Հին եկեղեցում 3 աստիճան կար, ինչպէս և յիշեցինք, եպիսկոպոսի, քահանայի և սարկաւագի ըստ հին Ուխտի։ Եկեղեցիների մէջ երբ վէճ բարձրացաւ 7 աստիճանի, 9 աստիճանի խնդրի վերաբերմամբ, սկսեցին երկնային 9 դասուց հրեշտակապետաց կարգին նայելով այդ փոքր աստիճանաւորներին՝ որոնք սարկաւագի օգնական էին, դասակարգ համարել։ Մաշտոցը քահանայական եօթն աստիճան է համարում դռնապանից սկսած մինչև քահանայութիւն, ութերորդը՝ եպիսկոպոսութիւն և իններորդը կաթուղիկոսութիւն որով 9 դասք եկեղեցւոյ լրանում է։ Որովհետև Օրբելեանի 9 դասակարգութիւնը քաղաքական նպատակով էր ստեղծած և ոչ բուն եկեղեցական, պարզ է որ դասակարգութեան մէջ պիտի հետևենք Մաշտոցին։ Մեր եկեղեցու գործնականութիւնը այսպէս է, ով լաւ կարդալ, երգել գիտէ, կարող է եկեղեցում երգել, կարդալ. դռնապան՝ որ է աւելածու՝ որէ ժամհար ընտրւում է ծերունի մարդկանցից վարձով, որ եկեղեցին մաքուր պահի, աւլի, զանկերը խփի և մեծ մասամբ լինում է անգրագէտ, որոնք ծառայում են առանց որևէ աստիճան ստանալու։ Սրանցից միմիայն դըպիրը՝ որէ ջահընկալ՝ որէ տիրացու՝ չորս աստիճան ըստանում է ձեռնադրութեամբ եպիսկոպոսից և կոչւում է չորս աստիճանաւոր և համարւում է հոգևորական դասի

մէջ մտած անձնաւորութիւն: Մինչև իսկ Զ տիեզերական ժողովի կանոնների մէջ մտաւ Հայոց եկեղեցու այդ սովորութիւնը, որ ընթերցողը և երգիչը առանց ձեռնադրութեան իրաւունք ունեն կարդալու և երգելու եկեղեցու մէջ և այդ համարւում էր ժողովի կողմից ոչ կանոնական: Իսկ երրորդ կարգը, որէ երդմնեցուցիչների, որոնց պարտքն էր հին եկեղեցում՝ հոգով սրբով հալածելու դևերին մարդկանց հոգուց և մարմնից երդման միջոցով հրաժարեցնելով նրանց, այժմ ամենևին գոյութիւն չունի, և իբրև ձևականութիւն դրւում է հոգևոր ձեռնադրութիւն ստացող անձին միմիայն անուանական կերպով ձեռնադրութեան միջոցին:

## Ժ. ՎԱՆԱԿԱՆ ԴԱՍԱԿԱՐԳ

Վանական դասակարգը իւր հոգևոր նշանակութեամբ բռնում է բարձր տեղ եկեղեցու մէջ և իւր բացարձակապէս Աստուծոյ նուիրուելովը կազմում է նրա յենարանը, բացի այդ մասնակցելով եկեղեցու կեանքի մէջ՝ նրա բոլոր վարչական և ուսուցանողական գործողութիւններին, ընդհանրապէս համարւում է նուիրապետութեան մի մաս.

Վանական կեանքը սկսուել է շատ վաղ և զարգացել է աստիճանաբար. Պօղոս առաքեալը այդպիսի խստակեաց կեանքի առաջի օրինակն է. (Ա—կորն, Թ. 4—27): Ա.—Առ. 51, 53 կանոնները (Ա. Գ. 106) մատնացոյց են անում այն կեանքը, որը վայել է աշխարհից հեռացած հոգևորականին, այն է չափաւորութիւն կերակրի մէջ և ժուժկալութիւն ամուսնութեան մէջ: Մարդիկ և կանայք նուիրում էին իրանց խիստ կեանքի, կուսութեան, բարի գործերով պարապելուն, աղօթքի և պասերի: Դրանք առանձին դասակարգ չէին կազմում, ապրում էին իրանց տներում, ժողովրդի մէջ և վարում էին իրանց սովորական գործերը:

Կիպրիանոսը վկայում է, որ աշխարհից քաշուած կոյսերը շարունակում էին ապրել իրանց ծնողների տանը: Որիգենէսը պատկանում էր այդպիսի խստակեացներին և

միևնոյն ժամանակ ապրում էր ժողովրդի մէջ, Աղէքսանդրիայի դպրոցում ուսուցչութիւն էր անում և ամենաեռանդոտ դաստիարակն էր և քարոզիչը (Եւս. Զ. 3)։ Աթանասը պատմում է որ շատ եպիսկոպոսներ իրանց նուիրելով խստակրօնութեան, նոյն ժամանակ և կառավարում էին իրանց եկեղեցիները։ Այդպիսի անձինք կոչւում էին ասկետներ, խստակրօններ։ Երբ հալածանքները մեծ ծաւալ ստացան, պետութիւնը սկսեց իւր ոյժերը գործ դնել չարչարանքի և տանջանքի մատնելով քրիստոնեաներին, մանաւանդ Գ. դարում, այդպիսի մարդիկ, աւելի անվրդով և ապահով կեանք վարելու համար հեռանում էին զաղտնի վայրեր, որտեղ հալածողները չէին կարող մուտք գործել, այն է անտառներ, լեռներ, մաղարաներ, քարայրեր. որտեղ երկար մնալը մեծ մասամբ կախուած էր հալածանքների տևողութիւնից, այնտեղ առանձնանալով իրանց մխիթարութիւնը գտնում էին աղօթքի և ինքնազսպութեան մէջ, շատերը սովորում էին ցմահ մնալ այրերում։ Ահա այսպէս է սկսւում վանական կեանքի հիմնաւորութիւնը։ (Прав. Собес. 1858 г.)։ Վանականութիւնը սկսուեց և զարկ ստացաւ Եգիպտոսում, առաջինները եղան Պօղոս և Անտօն։ Առաջին ճգնաւորն եղել է Պօղոս, որ անցրել է իւր կեանքը 23 տարեկանից սկսած մինչև 120 տարեկան հասակը ճգնութեան մէջ. Նրա կեանքից հեռացած տարին, 251 թուին ծնուեց միւս յայտնի ճգնաւոր Անտօնը. որը վաճառեց բոլոր ունեցածը, նուիրեց աղքատներին և գնաց ճգնութեան. Նա Թեբէի շրջակայքի Կօմ գիւղից էր։ Նա աշխատում էր և աշխատանքի մեծ մասը տալիս էր ուրիշներին, ամենահարկաւորը պահում էր իրան ուտելու համար։ Նա այցելում էր յայտնի բոլոր ճգնաւորներին, ծանօթանում էր բոլորի նիստ ու կացի հետ և իւր համար կարգեր սահմանում։ Տասն տարի դադաղում մնաց, աւելի ջերմեռանդութիւն ցոյց տալու նպատակով, տասն տարուց յետոյ, վեր կացաւ և սկսեց խիստ ճգնութիւն. Նա ցանում էր ցորեն, բանջարեղէն, եկողներին—հիւրերին կերակրում։ Նրա հռչակը շատ բարձրացաւ,

մեծ համարում ստացաւ, այնպէս որ Արիոսական կռուի ժամանակ, ինքն և իւր ճգնաւորները մեծ պաշտպանութիւն ցոյց տուին ուղղափառութեան. նա մեռաւ 105 տարեկան հասակում։ Եղբայրանոցների հիմնադիրն էր Պաքմոսը, Թեբէից, ծնուած 292 թուին. նա հիմնեց Նեղոսի կղզիների վրայ փոքրիկ ընկերութիւն. փոքր ժամանակից յետոյ եղբայրութիւնը այնքան շատացաւ, որ ստիպուած եղան 8 առանձին կացարաններ—վանքեր շինել, 3000 բնակիչներով. իսկ յաջորդ դարու սկզբին արդէն վանականների թիւը հասնում էր 50,000-ի։ Վանականները երեք՝ երեք ապրում էին խուցերում, նրանք անպայման հնազանդում էին խուցերում աբբային (հայր—սաորական)։ Նրա ձեռքի տակ ամեն մի վանք ունէր առանձին վանահայր. բոլոր վանականները տարին երկու անգամ ժողովւում էին զատկին և օգոստոսին գլխաւոր վանքը։ Բոլորը բաժանւում էին 24 դասի, ամենահասարակները համարւում էին Ա. դաս, մնացածները ըստ գիտութեան և վարքի կազմում էին յաջորդ դասակարգերը։ Նրանք ապրում էին հանրական կեանքով, ամեն բան հասարակաց էր, արգելուած էր ասել, իմը, քոնը, ամեն ինչ պատկանում էր հասարակութեան. Նրանք պարապում էին երկրագործութեամբ և արհեստով, կողով և պարան հիւսելով, և այլ զբաղմունքներով. եղած ձեռագործները վաճառում էին և բարեգործական նպատակների գործ դնում. Նրանք օրը երկու անգամ աղօթում էին, չորրորդ և վեցերորդ օրերը շաբաթուայ պաս էին պահում և շաբաթ ու կիրակի հաղորդւում. հացը ուտում էին միասին սաղմոսերգութեամբ, լուռ և երեսները քողով ծածկած, որ չըտեսնեն միմեանց. ուտելը պիտի համապատասխանէր աշխատանքին, այսինքն քիչ աշխատողը քիչ պիտի ուտէր. հիւանդներին խնամում էին շատ կարեկցութեամբ. Նրանք հագնում էին Եղիա մարգարէի նման այծի մորթուց զգեստներ. երբէք չէին հանւում, միայն հաղորդուելուս գօտիկը արձակում էին։ Քնում էին շորերով և այնպիսի ձևով շինուած անկողիններում, որ կանգնած դրութեամբ էր պա-

հում նրանց։ Պաքմոսի քոյրը մի անգամ եկաւ տեսութեան, նա դռնապանի միջոցով ասաց, որ կխօսի նրա հետ այն ժամանակ, երբ քոյրը կանանց համար վանք կշինի։ Վանականները կանանց համար վանք շինեցին, և Պաքմոսի քոյրը բացաւ այդ վանքը կոյսերի և այրիների համար, որոնք կոչւում էին Նօննա, դրանց կանոնադրութիւնը կազմեց եղբայրը։ Պաքմոսը մեռաւ 348 թուին։ Պաքմոսի օրինակին հետևեցին շատերը, մանաւորապէս Մակար և Ամմոն ճգնաւոր ները. Դ. դարու վերջին դրանց թիւը հասաւ 5000 հոգու։ Անտօնի աշակերտ Իլարիոնը Պաղեստինում հիմնեց վանականութիւնը. Սեբաստիայի եպիսկոպոս Եւստաթիոսը հիմք դրաւ Հայաստանում, Պոնդոսում, իսկ Աթանասը Հռոմում, ուր փախել էր իւր թշնամիներից ազատուելու համար։ Դրանք միանման չէին ապրում, մի մասն իբրև միայնակեացներ ապրում էին մաղարաներում, այրերում, քերծերում, ջոկ ջոկ, կամ խուցերում. իսկ մնացածները խմբերով ապրում էին շէնքերում, որ կոչւում էին վանքեր։ Իւրաքանչիւր մենաստան իւր կանոնադրութիւնը ունէր, բայց նրանք ընդունում էին միակերպ վանական պարտաւորեցուցիչ օրէնքը, այն է՝ կուսութիւն, անշահասիրութիւն եւ հնազանդութիւն։ Առաջի պայմանը դրուած էր նրա համար, որպէս զի վանականը ժուժկալութեամբ և կրքերի սանձահարելով ներքին կատարելագործութեան կարողանայ հասնել. երկրորդը՝ հրաժարեցնելով բոլոր շոյող և շռայլութեան տանող աղբիւրներից, սովորեցնում էր քիչով բաւականանալու սկզբունքը, որպէս զի մարմինը կարողանայ կրթել աւելի բարձր ձգտումների հասնելու համար. երրորդը՝ իբրև եղբայրական սիրով կապուած մարդ, պիտի ոչ մի առիթ չտար վէճերի, անհնազանդութեան և այլն. դրանց մէջ մեծը, փորձուածը նշանակւում էր կառավարիչ և ղեկավար, որ կոչւում էր հայր, կամ վանահայր, կամ վարդապետ։ Վանահայրն էր միակ հսկողն և պատասխանատուն վանքի համար, նրանք խստութեամբ պահանջում էին բոլորից հլու հնազանդութեամբ կատարել բոլոր կանոնները. վանական եղողը պիտի 3 տարուայ

փորձութեան ենթարկուէր, տանէր մեծերի վիրաւորանքը, արհամարհանքը, կոպիտ վարմունքը և կրէր պատիժները. դրանց հնատքը փորձւում էր դժուար և խիստ պարապմունքների ենթարկմամբ։ Օրինակի համար մէկին իբրև փորձութիւն հրամայուած էր, 3 տարի շարունակ 3 վերստ հեռաւորութիւնից շարունակ ջուր կրել՝ չոր մի ինչ որ փայտ ջրելու համար։ Մեծ խստակեցութիւն էին ցոյց տալ և ճգնաւորները, ամբողջ տարիներով սիւնի գլխի աղօթք էին անում Աստուծուն և ծնրադրութեամբ օրներն անցկացնում. օր. Սիմէօն սիւնակեացը 37 տարու չափ կացաւ սիւների գլխին, միանգամից անընդհատ շարունակաբար 1244 ծունր էր կրկնում. ապրեց մօտ 70 տարի։ (Թօլերթսօն, ընդհ. եկեղ. պատմ. 312—314)։ Արևելքում, Փոքր-Հայքում, Պոնտոսում և Կապադովկիայում վանականութեան մեծ զարկ տուաւ Բարսեղ մեծը, Հայաստանում Գրիգոր Լուսաւորիչ և ապա Մեծն Ներսէս, անթիւ անհամար վանականները մեծ մասամբ պարապում էին արհեստներով, գործելով, հիւսելով, հողաթափներ պատրաստելով։ Ե. դարու սկզբից սկսւում է վանականութիւնը տարածուել Արևմուտքում, գլխաւոր հիմնադիրն էր Բենեդիկտ—480 թուականներին, թէև Աթանասը վաղուց թողել էր Հռոմում իւր հետևորդները, բայց կազմակերպուած ոյժ չէին ներկայացնում։ Բենեդիկտի ճգնաւորական կեանքի հռչակը ամեն տեղ տարածուեց, և նրան ընտրեցին վանքի աբբա. սա փոքր ժամանակում կառուցեց 12 վանք և բնակեցրեց վանականներով, նրանք ընդունում էին և մանուկներ. մեծերը պիտի իրանց կանանց թողնէին, վաճառէին ամեն ինչ և աղքատներին տային. պիտի հնազանդէին վանահօր իբրև Քրիստոսի փոխանորդի։ Նրանք ապրում էին հանրավարական սկզբունքներով, ամեն ինչ ընդհանուր էր, ինչ որ մասնաւոր բան գտնէին միաբանի մօտ, կվաճառէին և գանձարանը կձգէին փողը։ Բարեկամներից ընծաներ ստանալ չէր կարելի։ Օրը աշխատում էին 7 ժամ արհեստներով, մնացած ժամանակը կարդում էին և աղօթում. սեղանի ժամանակ բոլորը լուռ նստած ուտում էին և լսում ընթերցողի ձայնը, որ կար-

դում էր Ս. Գրքից։ Գինի և միս արգելուած էր, միայն հիւանդներին էր թոյլ տրւում և հիւրերին ու օտարներին։ Շորերը կոպիտ կտորից էր, և միշտ հագներին, գիշեր՝ ցերեկ, քնելուս չէին հանւում, մի սենեակում 10—12 մարդ էին պառկում մահճակալների վրայ։ Թեթև յանցանքների համար առանց ճաշի էին թողնում, զրկում էին ժամերգութիւնից, բանդարկում էին և մարմնական պատիժ տալիս։ Բենեդիկտը վանքեր շինեց Գալլիայում, Իսպանիայում, Սիկիլիայում. մեռաւ 543 թւին (տես Թօքերթսօն. եկ. պատմ.)։ Նախ քան Լուսաւորիչ Հայաստանում շատ քրիստոնեաներ կային, Լուսաւորիչը մնացած հայերին քրիստոնեայ դարձնելուց յետոյ, մտցրեց վանականութիւնը, հետը բերելով Կապադովկիայից բազմաթիւ վանականներ։ Ագաթանգեղոս 486 երեսում այսպէս է նկարագրում. «Եւ դարձեալ բազում և անհամար գունդս վանականաց 'ի շէնս և յանշէնս, դաշտական շինակեացս և լեռնակեացս, անձաւամուտս և արգելանս հաստատէր»։ Բիւզանդից հետևեալ տեղեկութիւններն ենք քաղում, կրօնաւորները մեծ մասամբ օտարներ էին, Դանիէլ յայտնի քորեպիսկոպոսը, նրա աշակերտները, Շաղիտա և Եպիփան օգնականներ էին կառավարութեան մէջ. այս անապատականներիս համար ասում է. «Լնոյր զերկիրն Ծոփաց վանիւք և դնէր վարժեար ընդ ամենայն երկիրն Ծոփաց... անցանէր և յերկիրն Աղձնեաց, լուսաւորէր և զնոսա, և լնոյր զերկիրն Աղձնեաց վանիւք և շինէր վկայանոց մի յաւանին . . . առնոյր նա (Եպիփանը) զաշակերտս իւր արս միանձունս լեռնականս անապատականս, արս 500, երթայր գնայր յերկիրն յունաց»—187 երես։ «Եւ ամեն շէն և անապատ տեղերում միայնանոցներ էին շինում. (Եղիշէ. Գ. գլ.)։ Ըստ Եղիշէի վանքերում գտնւում էին վկայարաններ, որտեղ և երէցները պատարագ էին անում. Նրանց կեանքը այսպէս է նկարագրում. «Որոնք, առանց կանանց հետ միաբանութիւն կազմելու, զանազան ազգերից մի տեղ ժողովուելով, բնակւում են երկ-երկու, երեք-երեք, կամ աւելի շատերը միասին, ինչպէս իրանց հայրական գաւառներում։ Շինում են

միմիանցից բաժանուած մանր խուցեր փոքր և բաւականաչափ հաստ պատերով՝ ցրտից և արեգակից պահպանելու համար. բաւականանում էին խոտեղէն անկողիններով. ամառուայ վերարկուներ և ձմեռուայ երկայնաթև ծածկոցներ էին գործ ածում, հագնում էին նմանապէս երկայն փիլոններ. Նրանք անդադար պաշտամունքի մէջ շրջան կապած՝ կարգով կանգնում են և զուարթ ոգով հոգևոր երգեր են ասում ամենքի հօր Աստուծուն: Նրանք կանգնում են միմեանց հանդէպ աչքերը ներքև խոնարհեցրած նայում են իրանց ոտի մատներին, կարծես թէ ամենքը դէպի մի կէտ ուղղելով իրանց հայեացքը, աջ ձեռքը ծնօթի վրայ դրած, իսկ ձախը կուրծքի վրայ, ես կարծում եմ որ այս բանը Նրանք սովորել են բնական հայրերից». Եղիշէ 248 եր. «Նրանց կերակուրը ցամաք հաց է և վայրենի բանջար, . . . և խմածը խստակ ջուր, որ անձրևի կաթիլներից են ժողովւում փոսերի մէջ . . . ամբողջ ցերեկը միաբան ծոմ պահելով սպասում են մինչև արեգակի մայր մտնելը,... ամբողջ օրը աղօթում են, երգում են մինչև երեկոյեան ժամը. . .»: Կուսանոցների համար ասում է Բիւզանդ—192 երեսում, «Շինեց (Ներսէս Մեծը) բոլոր գաւառներում այս կուսատանները, որ կուսան և հաւատացեալ եղողները միանգամայն այնտեղ ժողովուին պաս պահելու և աղօթելու և կերակրուելու . . . . այս բաները հրամայում էր Պապ թագաւորը աւերել, և . . . կուսաններին պիղծ խառնակութեան մէջ ձգել». «Այս Գինդը Տարօն գաւառից էր, մեծն Դանիէլի աշակերտ էր եղել, իսկ Նրանից յետոյ գլուխ աբեղայից, և վարդապետ միանձանց, և առաջնորդ մենակեցաց, և վերակացու վանորէից, և ուսուցիչ ամենայն անապատաւորաց և տեսուչ ամենեցուն . . . . միահանդերձք, բոկագնացք, զգաստացեալ խոտաճարակք, ընտաբուտք արմատակերք, զօրէն գազանաց 'ի լերինս շրջէին, լեշկամաշկօք և մորթօք այծենեօք, նեղեալք, տառապեալք և տարակուսեալք, յանապատի մոլորեալք, 'ի ցուրտ և 'ի տօթ, 'ի քաղց և 'ի ծարաւ վասն սիրոյն. Աստուծոյ». 230 երես: Ըստ Եղիշէի

250 երես, «գինի կամ այլ այդպիսի բաներ բոլորովին չեն գտնւում նրանց սուրբ միայնանոցների մէջ. ամբողջ օրը կարդում են, շատերը վարդապետում են, բարի խրատներ են տալիս ժողովրդին Ս. Գրքերի վկայութիւններով»։ Թէ այս խիստ կանոններով չկառավարուողներ էլ կային, ապացոյց է Փարպեցու թղթից հետևեալը. «Կերակուրներ եփել սորված չէի, որ ձկան աղիքներով և հաւի փորոտիքներով այդ ուտողների համար լաւ լաւ կերակուրներ պատրաստէի, և թերևս այդպիսի բաներով կարողանայի մարդու հաճելի լինել»։

Լուսաւորչի առաջին վկայարանն էր Ս. Հռիփսիմեանց, Գայիանեանց, ձեռնադրութիւնից յետոյ Մշոյ Ս. Կարապետի վկայարանը. թէև Ստեփաննոս Օրբելեանը համարում է Թանահատի վանքի սկզբնաւորութիւնը 112 թուականից։ Ըստ խորենացու Ներսէս Մեծի հրամանով Խադը շինեց բոլոր գիւղերում վանքեր, «զի լինիցի օտարանոցք և տեղի սննդեան սբբոց և ծերոց և անուղևորաց տածումն» (Բ. գլ.)։ Զ. դարուց սկսած արդէն յիշւում են վանքեր, որոնց հետ կից կար և բարեգործական հիմնարկութիւններ. Սիւնիքում Զ. դարում Գիւտայ վանք ուրկանոցով. նոյն դարում Անաստաս Կաթուղիկոս շինեց Ակոռու մօտ հիւրանոց և աղքատանոց. Ժ. դարում Հոռոմոսի վանքը կոչւում էր «Ասպնջականոց». Սանահնի վանքը, Նարեկայ վանքը, Դերջանի Խլաձորի վանքը, Անձևացեաց Հոգեաց վանքը ունէին օտարանոցներ, հիւրանոցներ և վերջինս կուսանոց։ 9-րդ դարից սկսած մինչև 13-րդ դարը հռչակուեցին իրանց վանականներով, կրօնաւորներով, Սիւնեաց Տաթևու վանքը, Թանահատի վանքը, Գեղարքունեաց Մաքենոցաց վանքը, Սևանայ, Աղթամարայ, խոտակերից վանքերը, Արշարունիքի Կամրջաձորի վանքը, Շիրակի կարմիր վանքը, Հառիճոյ վանք Շիրակում, Սանահին և Հաղբատայ վանքերը, Մարաշու վանքը Փոքր-Հայքում, Սև լեառն Մարաշում, Գետկայ վանք, Դրազարկի վանք Կիլիկիայում, Գանձասարի վանք Արցախում,. Բջնոյ և Արտազու վանքերը (Տես Հայկական Հին—Դպրութիւն)։

Հայոց վանքերը մտցրին իրանց մէջ այն կարգ կանոնը, որը սահմանել էր Լուսաւորիչ, Մեծն Ներսէս և Սահակ, այդ կանոնները արդէն մտած էին Փոքր Հայքի վանքերում Բարսեղ մեծից սկսած։ Ընդհանուր վանականութիւնը ունենալով բոլորովին առանձնացած կեանք և առանձին կանոններ, կապ չունէր հոգևորականութեան հետ, չէր ենթարկւում եկեղեցականութեան վերաբերեալ կանոններին, նրանք մինչև իսկ ենթարկւում էին աշխարհականների պատիժներին, որովհետև չունէին ոչ մի եկեղեցական աստիճան։ Նրանք մինչև իսկ եկեղեցի չունէին, վանքից գնում էին մօտիկ եղող եկեղեցիները և մասնակցում ժամերգութեան և հաղորդութիւն առնում։ Իւրաքանչիւր վանք, կամ մի քանի վանքեր միասին պահում էին առանձին քահանայ, շինում էին վանականները վանքի մօտ եկեղեցի, ուր մշտական վանքի երէցը կամ վանաց երէցը ժամերգութիւն էր կատարում և խորհուրդները հաղորդում նրանց։ Սոզոմենի վկայութեամբ (Բ. գլ. 24) վանքերը հեռու գտնուելով քաղաքներից և եկեղեցիներից, քաղաքային վարչութիւնները թոյլ տուեցին իրանց համար եկեղեցիներ շինել առանձին քահանայով, կղերով։ Կամաց կամաց հոգևոր իշխանութիւնն գտնելով դրանց վարքն ու բարքը խիստ կրօնական, ընդունելով նրանց յենարան եկեղեցու, թոյլ տուաւ վանականներից ընտրել քահանայացու և տալ նրան եկեղեցական ձեռնադրութիւն. մեծ մասամբ վանահայրը լինում էր քահանայ։ Վանական կեանքը լինելով օրինակելի դպրոց քրիստոնէական կրօնի, շատ անգամ երբ հոգևորական անձանց պակասութիւն էին զգում, վանականներից հրաւիրում էին կղերի մէջ մտնելու համար։ Մինչև իսկ եպիսկոպոսական աստիճանի համար յարմար պատրաստ անձինք չունենալու դէպքում ընտրում էին վանականներից. իսկ յետոյ արդէն գերակշռութիւն էին տալիս վանականին եպիսկոպոսական աստիճանի համար քան քահանաներին։ Յուստինիանոսի նովելլաները բացարձակ առաւելութիւն էին տալիս ընտրութեան գործում վանականներին, որոնք թէրև ոչ ընտանիքատէր մարդիկ — յարմարա-

ւոր էին համարում իրանց ամբողջ կեանքը նուիրել եկեղեցուն։ Վանականներին նշանակում էին զանազան բարեգործական, հոգևոր, կրթական հաստատութիւններում ուսուցիչ, վերակացու, կառավարիչ։ Վանահայրերը մասնակցում էին տեղական և տիեզերական ժողովներում, ուր ուղարկում էին իրանց պատգամաւորներին, որոնք հաւասար ձայնով ժողովականների հետ մասնակցում էին օրէնսդրական և դատավարական գործերին։ Վանքերը կամաց կամաց այդպիսի մասնակցութեան շնորհիւ դարձան համարեա եկեղեցական հաստատութիւններ, վանքը դարձաւ եկեղեցի օծմամբ և վանականութիւնը ենթարկուեց առաջնորդի հսկողութեան։ Մեծն Ներսէսի ժամանակ սարկաւագապետ Խադն էր գլխաւոր հսկողը կաթուղիկոսի կողմից ոչ միայն բոլոր վանքերի, այլ և բարեգործական հաստատութիւնների։ Թէ ինչ կանոններով և կարգերով էին կառավարում վանքերը և վանականները այդ կտեսնենք յաջորդ մասում, վանական կառավարութեան վրայ խօսելիս։ Վանքերը մեր մէջ մեծ զարկ ստացան 10, 11, 12-րդ դարերում, ուր խմբուած էին բազմաթիւ վանականներ ունենալով, 200, 300—500 անդամներ, որոնք պարապում էին գրականութեամբ, արհեստներով, երաժշտութեամբ, ուսուցչութեամբ։ Թէ ինչպիսի կացութիւն ունէին այդ դարերի հայոց վանքերը, այդ լաւ երեւում է 13-րդ դարու պատմագիր Ստեփաննոս Օրբելեանի նկարագրութիւնից. «Եւ էր վանքն (Երիցու վանաց) այն տեղի գեղեցիկ . . . . և 'ի ներքին պարսպին խցկունք և միանձունք թուով քառասուն՝ մշտնջենաւորք, խարազնազգեստք, լուռք, որք իբր զկանթեղունս մշտավառս և անշէջս յիւրաքանչիւր խղի հանապազ դքնութեամբ վառեալք լինէին բոցով շնորհաց հոգւոյն...»։ Իսկ Թանահատի վանքի վերաբերմամբ ասում է. «Եւ էին սահմանաւորք, մշտապաշտօնք, հեռացեալք յամենայն փափուկ կերակրոյ,... հացիւ և լոկ ջրով վճարէին զպէտս իւրեանց՝ և զայն յաւուրց միանգամ ընդ երեկս, լռիկք, հեզաշարժք,. . . բանջարօք և ընտովք շատանային, վասն որոյ Թանահատք կոչեցան...»։

Վանքերը կամաց կամաց իրանց նախկին ույժը կորցրին առաջուայ դրութիւնը և կացութիւնը փոխեցին, արդէն 19-րդ դարում մնում էին միայն նախնեաց բեկորները. քիչ ու շատ հին վանքերի նմանութիւնը պահել էր Սևանայ վանքը, Վանայ ծովի վանքերը, Ս. Կարապետինը, Երուսաղէմի վանքը ևայլն:

Սուրբ Էջմիածինը վերջին դարումս դարձաւ դատական և վարչական կեդրոն, ուր միաբանութիւնը արդէն չունի այն նախկին վանական գոյնը: Գէորգ—Դ.-ի օրով բացուեց ճեմարանը, բոլոր հայերի համար դարձաւ կրթական—կրօնական կեդրոն, և որից սփռւում են կրթուած հոգևորականներ՝ աշխարհիկ թէ կուսակրօն՝ թեմերը և գաւառները: Տաճկահայաստանում այդպիսի կրթական կեդրոններ կազմում են Արմաշու վանքը, մանաւանդ Օրմանեանի օրով (այժմ Պոլսոյ պատրիարք) և Ս. Երուսաղէմը, որոնք տալիս են Տաճկահայ թեմերին կրթուած հոգևորականներ: Նախկին վանական կազմի միաբանութիւններ ունենք այժմ Ռուսահայաստանում Սևանայ վանքը, Տաճկահայաստանում Վանայ ծովի և Մշու ու Երուսաղէմի վանքը:

Այդ վանքերի այժմեայ դրութեան և կառավարութեան, տնտեսականի մասին կխօսենք Գ. գրքում:

Կուսանաց վանքերը բոլորովին քիչացել են, Ռուսահայոց մէջ մնացել է Շուշու կուսանաց անապատը 5—7 կոյսերով և Տփխիսինը, որոնք նախկին վանքերի նմանութիւնը չունեն. թէ Տաճկահայոց մի քանի կուսանոցները թէ Ռուսահայոցը և թէ երկուսի վանականութիւնը ժամանակի ոգու համապատասխան նշանակութիւնը չունենալով, բոլորովին կորցրել են բարոյական—կրօնական ազդեցութիւնը և ենթարկուել են ոչնչանալուն. ժամանակը պահանջում է որ վանքերը և կուսանոցները կամ լինեն Վենետիկի և Վիեննայի մենաստանների նման ուսման և գրականութեան կեդրոն, կամ Էջմիածնի նման ուսումնարանական—վարչական կեդրոն, այլապէս վանքեր՝ լի պորտաբոյծ և ծոյլ վանականներով տեղի պիտի տան կամ չքացման, կամ կրօնական—բարոյականութեան հակառակ ազդեցութեան:

## Բ. ԵԿԵՂԵՑՒՈՅ ԸՆԴՀԱՆՈՒՐ ԿԱՌԱՎԱՐՈՒԹԻՒՆԸ.

Եկեղեցու ընդհանուր կառավարութեան վրայ մանրամասն հայեացք ձգելու համար, յարմար է բաժանել մի քանի մասերի, որոնց վրայ և առանձնակի կխօսուի. ա. վարչական կառավարութիւն. բ. տնտեսական կառավարութիւն. գ. օրէնսդրութիւն. դ. դատաւարութիւն. ե. պսակման խնդիր։

## Գ. ԵԿԵՂԵՑՒՈՅ ՎԱՐՉԱԿԱՆ ԿԱՌԱՎԱՐՈՒԹԻՒՆԸ.

### 1) *Ընդհանուր եկեղեցական կառավարութիւն.*

Ընդհանուր եկեղեցու միանման և անդորր կառավարութիւնը տևեց մինչև այն ժամանակ, երբ բոլոր եկեղեցիները կառավարւում էին մի ոգով, երբ դաւանաբանական, ծիսական վէճեր չէին մտել մէջտեղ, այն է մինչև Ե. դար. 451-ին, երբ Հայոց եկեղեցին բաժանուեց, նոյնպէս և ասիական եկեղեցիները, 9—10-րդ դարերում Հռոմի եկեղեցին բաժանուեց և ստացուեցին զանազան, անկախ, միմիանց հետ կապ չունեցող եկեղեցիներ։ Տեսնենք ընդհանուր եկեղեցին մինչև բաժանուիլը ինչպէս էր կառավարւում։ («Правос. собесѣдн. 1858. управленіе вселенской хрис. церкви»)։

Նախկին եկեղեցու կառավարութեան մէջ երևում էր ընդհանուր մի պատկեր, այն է՝ եղբայրական միութիւն, քրիստոնէական ոգու համաձայն սերտ կապ, առանց միմեանց ստորադրելու ձգտումով, առանց ճնշելու ցանկութեամբ. բազմաթիւ, բազմատարր, տարբեր լեզուներով ազգերի եկեղեցիները այնքան սերտ և այնքան միմեանցից անկախ կառավարւում էին, որ այժմեայ դրութեան ժամանակ մինչև իսկ երևակայելի չէ։ Լուսաւորչի բերած եպիսկոպոսներ, վարդապետներ, վանականներ, բոլորն էլ համարեա օտարներ էին. կրօնական հայեացքների միութիւնը թոյլ չէր տալիս բաժանումն առաջանալ այլատարր ցեղերի մէջ, ոչ մի եկեղեցի առանձնութիւններ չէր անում միւսին իրան ենթարկելու համար, բոլոր թեմերը, եպիսկոպոսները միմեանց հաւասար

էին իրանց համարում։ Հռոմէական խիստ միապետական կազմը երբ առաջացաւ, այն ժամանակ բոլորովին ուրիշ ուղղութիւն ստացաւ եկեղեցական վարչական ձեւը. ամեն բան ստորադրուեց պապին, միահեծան իշխանաւորին, որը ձգտում է կլանել բոլոր եկեղեցիները, զրկելով նրանց անկախութիւնից։ Բողոքական եկեղեցին ընկաւ ուրիշ ծայրայեղութեան մէջ, եկեղեցու վերաբերմամբ ինքնուրոյն իրաւունք չի ընդունում, նա կամ միանում է քաղաքացիական կառավարութեան հետ և ստորադրւում նրան, կամ եկեղեցուն է յատկացնում ուսումն և քահանայագործութիւնը, չընդունելով եկեղեցու մէջ նուիրապետական տարբեր աստիճանական սկզբունքը, ուստի և չի ընդունում եկեղեցական վարչական կառավարութիւն բառի բուն նշանակութեամբ։ Մեր մէջ մնաց նախկին եկեղեցու ոգին իւր ժողովրդական —ընտրական սկզբունքներով. նոյնպէս և յունաց եկեղեցին, որը պապի անսխալականութեան ձգտումներով չէ առաջնորդւում, որքան ժողովական--ընտրական սկզբունքներով։

Հին եկեղեցու ընդհանուր միութեան հիմք կազմում էր Աւետարանի ոգին, առաքեալների սահմանած ժողովական սկզբունքով կառավարութիւնը. Քրիստոս տուաւ իւր աշակերտներին հաւասար իրաւունքներ կառավարելու բոլոր աշխարհի եկեղեցիները մի սկզբունքով, այդ երեւում է աւետարանիչների վկայութիւններից (Մատթ. ԺԸ. 17--20, 28)։ Առաքեալները անմիջապէս կառավարութեան ձեւ որոշեցին, այն է խորհրդով և ժողովով. բոլոր խնդիրները վճռում էին այդ սկզբունքով (Գործ. Ա. 15)։ Առաքեալների յաջորդները վարուեցին այնպէս, ինչպէս որ պատահել էր նրանց տեսնել առաքեալների ժամանակ, այն է խորհրդակցութեամբ և ընդհանուր համաձայնութեամբ, գլխաւոր սկզբունք ընտրելով հաւատք և սէր, Քրիստոսին մի գլուխ ճանաչելու մէջ լինին մէկ, համաձայն և սիրով, իսկ մանրամասնութիւնների մէջ՝ նայելով տեղական պայմաններին՝ համակերպուել հանգամանքների հետ՝ չկորցնելով ընդհանրութեան հետ միութեան կապը։ Հին ձեւը ունէր համաշխարհային բնաւորու-

թիւն, ունէր ընդհանուր մարդկային գոյն և ոչ տեղական ազգայնական, այդ եկեղեցու համար կար մի անդամ, այն էր հաւատացեալ մարդ, ինչ ազգութեան և ինչ դասակարգի պատկանելիս էլ լինէր։ Իրինոսը (+202) վկայում է. «Եկեղեցու ներկայացուցիչները, գիտելով բոլոր տիեզերքը, հաստատ պահում են առաքելական աւանդութիւնը և ցոյց են տալիս մեզ, որ բոլորը ունին միևնոյն հաւատը, բոլորը դաւանում են միևնոյն Հօրը, և ընդունում են Որդու մարդեղութեան միևնոյն նպատակը և միևնոյն հոգեկան շնորհքները. ղեկավարւում են միևնոյն կանոններով և միևնոյն օրէնքներով, թէ եկեղեցու կառավարութեան և թէ աստիճանակարգութեան մէջ»։ Կիպրիանոսը ասում է. «Բոլոր առաքեալները շնորհուած են հաւասար պատուով և իշխանութեամբ, բոլորն էլ Քրիստոսի հօտը հովուող հովիւներն են։ Այդ միութիւնը մենք պիտի հաստատ պահենք և պաշտպանենք, մանաւանդ եպիսկոպոսները, եկեղեցում գլխաւորութիւն անողները, որովհետև եպիսկոպոսութիւնն էլ մի է, որի մէջ ամէն մէկս իւր մասն ունի . . . Քրիստոս հիմնեց մի եկեղեցի, թէև բաժանուեց իւր մասերով բոլոր աշխարհի չորս կողմերում, մի եպիսկոպոսութեամբ, կազմուած միանման մտածող բազմաթիւ եպիսկոպոսներից... ընդհանրական եկեղեցին մի է, անբաժան է և անքակտելի և դրա համար պիտի միացած լինի բոլոր նուիրապետների փոխադարձ կապով». (Նոյն Пр. Соб. 1858 г.)։ Նոյնպիսի վկայութիւն տալիս է Իգնատիոս Աստուածակիրը, «Մեր Տէր Յիսուս Քրիստոսի մարմինը մին է, դրա համար մի պիտի լինի և աշխարհի մէջ սեղանը (եկեղեցին) և ամեն տեղ մի եպիսկոպոս»։ Այդ միութիւնը, ճշմարիտ որ, կար հին եկեղեցում և ամենագլխաւոր օրինակը և առաջնորդը եղան իրանք առաքեալները, որոնք թէև լիազօր կառավարիչներ էին, բայց առանց խորհրդակցութեան և ընդհանուր վճռի ոչինչ չէին անում (Գործ. Առաք.), ոչ միայն դաւանաբանական, ծիսական, այլ և եպիսկոպոս ընտրելու խնդրում։ Միութեան երկրորդ կապը պահպանւում էր իւրաքանչիւր եպիսկոպոսի

գրած հաւատոյ դաւանանքը հարևան եպիսկոպոսների՝ իրանց ընտրութեան ժամանակ, ցոյց տալու համար, որ իրանք՝ նորընտրեալները դաւանում են այն, ինչ որ ընդհանուր եկեղեցին է դաւանում. այդպիսի վկայութիւն է տալիս Երուսաղէմի պատրիարք Սոփրոնը, որը իւր ձեռնադրութիւնից յետոյ գրեց Պօղոսյ Սերգէյ եպիսկոպոսին. «Կայ սուրբ եկեղեցու մէջ հին առաքելական աւանդութիւն, որի հիման քահանայապետութեան աստիճան ստացողները պարտաւորւում են աւագ եպիսկոպոսներին անկեղծօրէն հաղորդել, ինչպէս են նրանք դաւանում և ինչպէս են պահում հաւատը: Այդ աւանդութիւնը իւր սկիզբը վերցրել է Պօղոսից . . . », որը գնում էր ամեն տեղ, քարոզում, ամրապնդում հաւատքի մէջ, «հետևելով այդպիսի սովորութեան և հների օրինակին հետևելը համարելով ամենայաւ օրէնք, ես համարձակեցի գրաւոր հաղորդել, թէ ինչպէս եմ հաւատս պահում և ուղարկել Ձեզ. . . Ձեր բարեհայեցողութեան»: Երրորդ կապը միութեան՝ պահւում էր, մանաւանդ աղանդաւորների դէմ կռուելու միջոցներին, գիւղեր, քաղաքներ շրջելով և անձնական օրինակով, քարոզով ամրապնդելով քրիստոնէական կրօնի մէջ: Աթանասը Արիոսի դէմ կռուելու ժամանակ շրջում էր ամեն տեղ, եպիսկոպոսներ բազմացնում, վիճում աղանդաւորների հետ և ուղղափառութիւնը պաշտպանելով՝ միութիւնը ամրապնդում. նոյնպէս և Սամոսատի Եւսեբիոսը, ձեռնադրութիւններ կատարելով՝ շրջում էր Ասորիքը, Փիւնիկէն, Պաղեստինը, Կիլիկիան, քարոզում, խօսում, գրում և ուղիղ հաւատը բացատրում: Միութեան չորրորդ յենակէտներից մէկն էր այն, որ մէկ եկեղեցու կանոնը և գրածը ընդունւում էր միւս եկեղեցուց առանց հակառակութեան, այդ դրդում էր եղբայրսիրութիւնը և փոխադարձ վստահութիւնը: Օրինակ, մէկ եկեկեցու մկրտուածը ընդունւում էր միւսում իբրև հաւատացեալ, հաղորդւում էր բոլորի հետ ամեն տեղ, հիւրասիրւում էր և ապաստարան գտնում. և ընդհակառակը՝ մէկ եկեղեցուց բանադրուածը չէր ընդունւում և միւսներից (Ա.-Առ. 12, 13,

16, 32, Նիկ. 5. Ա. գիրք—92, 93, 150)։ Հինգերորդ՝ եթէ պատահում էր որ մէկն ու մէկն առաքելական աւանդութիւններից շեղւում էր, իսկոյն միւսները կանչում էին, խօսքով, համոզելով, կամ փոքր ժողովներով ճանապարհ էին բերում և միութիւնը հաստատուն պահում. օրինակ, պասերի, տօների, քանի՞ օր և ո՛ր օրերը կատարելու վերաբերութեամբ, ծնկաչոք աղօթելու և այլն, և այլն. (Ա.-Առ. 64, Նիկ. 20. Ա. գիրք—108, 159)։ Միութեան վեցերորդ կէտը համարւում էին ժողովները, ուր հաւաքւում էին զանազան երկրներից և գաւառներից մարդիկ զանազան սովորութիւններով և տարբեր հայեացքներով, շփւում էին միմեանց հետ իրանց կարծիքների, մտքերի, զգացումների հաղորդելով և միասին վճռելով որոշում էին ընդհանուր կանոններ, որոնց պիտի հնազանդէին և գործադրէին իւրաքանչիւրը իւր թեմում (Ա.-Առ. 20, 37, Նիկ. 5, Պօլս. 2, Լաւոդ. 40, Ա. գիրք—100, 150, 166, 223 երեսներ)։

Ժողովները երկու տեսակ էին՝ տիեզերական և տեղական։ Առաջին տեսակ ժողովներն էին այնպիսիները, որտեղ մասնակցում էին բոլոր քրիստոնեայ ազգերը, տեղական եկեղեցիները, որոնք վճռում էին ընդհանուր հարցեր, խնդիրներ, և որոնց վճիռները պարտաւորական էր ժողովում մասնակցողների համար։ Տեղական կոչւում էին այն ժողովները, որտեղ մասնակցում էին որոշ գաւառի, որոշ աշխարհի եպիսկոպոսներ տեղական բնաւորութիւն ունեցող հարցեր վճռելու համար։ Այդ երկու տեսակ ժողովների նշանակութիւնը չէր նսեմանում, եթէ ժողովականների թիւը չէր համապատասխանում ժողովի բնաւորութեան, օրինակ եթէ տեղական ժողովում աւելի շատ անդամ եղած լինէր քան տիեզերականում, ինչպէս օրինակ Բ. տիեզերական ժողովում 150 անդամ էր, իսկ Կարթագենի ժողովում 300, որովհետև տիեզերական այդ ժողովում թէև քիչ անդամ էր մասնակցում քան Կարթագենում, բայց այնտեղ մասնակցում էին բոլոր քրիստոնեայ աշխարհի ներկայացուցիչները, որոնց վճիռը պարտաւորական եղաւ բոլոր

ժողովականների և նրանց հետ բոլոր քրիստոնեայ երկրների համար, իսկ Կարթագենի այդ ժողովի, ինչպէս և տեղական ժողովներինը պարտաւորական էր միայն Կարթագենի թեմի և միւս տեղական թեմերի համար։ Տիեզերական ժողովները վճռում էին. 1) եկեղեցու դաւանաբանական խնդիրները հանգանակի կամ կանոնների անունով. որպիսի իրաւունքը Եփեսոսի 7-կանոնով (Ա. գիրք. 176—177) յատկացնում է միմիայն տիեզերական ժողովին։ 2) Քննել, ստուգել և հաստատել եկեղեցու աւանդութիւնը. 3) Հին ժողովների սահմանադրութիւնը նայել և հաստատել կամ փոփոխել։ 4) Վերջնականապէս քննել նոր ուսումն եկեղեցու մէջ (Պօլ. 1, Եփես. 1. Ա. գիրք—164, 175)։ 5) Որոշել եկեղեցու կառավարութեան ձևը և մասնաւոր եկեղեցիների կառավարութիւնը, և սահմանափակել կամ լրացնել նրանց իրաւունքները. (Նիկ. 6, 7. Պօլ. 2, 3. Եփես. 8. Ա. գ.—151, 175, 177, 168)։ 6) Եկեղեցու նուիրապետութեան և իրաւունքները և կարգը՝ զանազան աստիճաններով հաստատել (Նիկ. 4, 6. (151)։ 8) Ընդհանուր կարգեր և կանոններ սահմանել բոլոր եկեղեցիներին վերաբերեալ։ Տեղական—ազգային ժողովները համարեա նոյն իրաւունքներն էին վայելում, ինչ որ տիեզերականը, միայն իրանց աշխարհի համար, մինչև իսկ դաւանաբանական հարցերի վճռման մէջ. առաջի օրինակը տուին հայերը 507 թուին Բաբգէն կաթուղիկոսի օրով, վճռելով մերժել քաղկեդոնականութիւնը և Նիկիոյ հանգանակից չշեղուել. (Ա. գիրք—356 երես)։

Ժողովներ կազմելու մէջ նախաձեռնութիւնը պատկանում էր իրան եկեղեցուն քաղաքացիական իշխանութեան օժանդակութեամբ։ Եկեղեցին գործում է իւր իրաւունքով ժողովի ներքին մասի վերաբերմամբ, անդամների կարծիքներով, որոշումներով, վճիռներով։ Քաղաքացիական իշխանութիւնը մասնակցում էր՝ ժողովի արտաքին կարգերի վրայ հսկելով, ժողովի հրաւիրաթղթերը հեռու տեղեր ուղարկելով, կարգը պահելով, վճիռները 'ի կատար ածելով։ Ժողով կազմելու, անկախ կերպով վճիռներ կայացնելու և

եկեղեցական կանոններով սահմանադրութիւն յօրինելու, անփոփոխ և անմիջական իրաւունքը պատկանում է Հոգևոր կազմին—Հոգևոր իշխանութեան. (Մատթ. ժը. Գործ. ժե. Եփես. 1 կանոն)։

Տիեզերական ժողովներ կազմելու նախնական պատրաստութիւններն այսպէս էին լինում. եկեղեցիների հովիւները՝ փոխադարձ գրագրութեան մէջ էին մտնում միմեանց հետ զանազան խնդիրների վերաբերմամբ, և երբ Պօլսի, Աղէքսանդրիայի, Անտիոքի, Երուսաղէմի Հռոմի եպիսկոպոսները ձայնացում էին միմեանց, որոշում էին կայացնում ժողով անելու և իրանց ձայնը հասցնում էին Յունաց քրիստոնեայ կայսրներին, խնդրելով օգնել իրանց։ Առաջին ժողովը եղաւ Կոստանդիանոս կայսեր օգնութեամբ, երկրորդը՝ Թէոդոսի, իսկ երրորդը՝ Թէոդոս բ.-ի ժամանակ։ Տեղական կամ ազգային ժողովները լինում էին աւագ եպիսկոպոսների, կաթուղիկոսի, եպիսկոպոսաց և իշխանաց հրաւիրմամբ՝ մասնաւորապէս Հայոց մէջ. (Անտ. 9, Ա. գիրք—212, 215 երես)։

Ժողովներին մասնակցելու իրաւունք ունէին, եպիսկոպոսներ իբրև եկեղեցու ներկայացուցիչներ, վանահայրեր, վանքի կողմից, քահանաներից և երբեմն սարկաւագներից, բայց գլխաւոր ձայնը և իրաւունքը պատկանում էր եպիսկոպոսներին. ժողովի արձանագրութիւններից երևում է, որ յիշւում են եպիսկոպոսների անուններ, քահանայից և աշխարհականներինը հազուագիւտ. Նիկիայի ժողովում յիշւում է 318 հայրապետ, Պօլսում 150. օտար տեղական ժողովներում նոյնպէս իրաւունքը եպիսկոպոսներինն էր, բացառութիւն կազմում էին Հայոց ժողովները, որտեղ եպիսկոպոսների հետ միաձայն և համախորհուրդ նստած էին Հայոց իշխանները և բոլոր վճիռներում՝ թէ դաւանաբանական և թէ կարգադրական երևում են իշխանների ստորագրութիւններ. այս մասին տես հետևեալ գլուխը։ Տիեզերական ժողովներում բացի եպիսկոպոսներից, միւս հոգևորական դասակարգերը ունկնդիր էին, կամ կարծիքներ էին յայտնում առանց ձայնի իրաւունքի (Աթանաս—Արիոս). լինում էին երբեմն

գիտուններ, իրաւագէտներ—խնդիրը պարզաբանելու համար։ Երբեմն ներկայ էին լինում կայսրները, ոչ իբրև նախագահ, այլ հսկող և ունկնդիր, դրա համար և շատ անգամ չէին ստորագրում, իսկ եթէ ստորագրում էին, միմիայն հաստատողական ոյժ տալու համար։ Կոստանդիանոսը ասում էր, «Աստուած ձեզ նշանակել է հովիւ եկեղեցուն, ուստի ամեն բան ինչ որ վերաբերում է Քրիստոսի հաւատին, հարկաւոր է ձեզ կարգադրել»։ Յուստինիանոսը 135 նովելլայով հրամայեց քաղաքացիական օրէնքի ոյժ տալով մինչև իւր ժամանակը եղած տիեզերական ժողովների կանոններին, այգ ժողովների դաւանանքը ընդունել իբրև Աստուծոյ խօսք (Прав. Собес. 1858 г.):

## 2) ԱԶԳԱՅԻ՛Ն (ՏԵՂԱԿԱ՛Ն) ԵԿԵՂԵՑՈՒ ԿԱՌԱՎԱՐՈՒԹԻՒՆԸ:

Արդեօ՞ք ազգային—տեղական եկեղեցիները իրաւունք ունին գոյութիւն ունենալու անկախ տիեզերականից թէ ո՛չ։

Տեղական եկեղեցիների հիմքը դրին իրանք առաքեալները, որոնք ցրուելով ամեն կողմ, ամեն տեղ հաստատեցին առանձին կազմով եկեղեցիներ. երկրորդ՝ Քրիստոսի խօսքը, թէ որտեղ իմ անունով ժողովուած են մարդիկ, ես այնտեղ եմ (Մատթ. ժը—19—20). և այս բղխում է այն հիմունքից որ բոլոր հաւատացեալները մի են 'ի Քրիստոս, որտեղ կամենան լինեն, ի՞նչ ազգից և ցեղից էլ լինեն։

Հէնց առաքեալների ժամանակ տեղական եկեղեցիները անկախ կառավարութիւն ունէին առանձին կառավարիչներով, որոնք գործում և քարոզում էին անկախ՝ 'ի հարկէ ընդհանուր եկեղեցու ոգով.(Յով. ժե. Գաղ. Բ.). Պետրոսը քարոզում և կառավարում էր հրէա քրիստոնեաներին, Պօղոսը հեթանոս քրիստոնեաներին, Յովհաննէս Փոքր—Ասիայի ժողովրդոց, որոնք և Տիմոթէոսին և Տիտոսին լիազօրներ նշանակեցին։ Նիկիայի և Պօլսոյ տիեզերական ժողովները իրանց հեղինակութեամբ՝ կանոններով հաստատեցին տեղա-

կան եկեղեցիների գոյութեան իրաւունքը և մինչև իսկ ցոյց տուին որոնց պէտք է ըստ աւագութեան առաւելութիւն տալ (Ա. գիրք 151, 166)։ Տեղական եկեղեցիների անկախութիւնը նրա մէջ էր, որ առաջին՝ եպիսկոպոսական ձեռնադրութիւնը լինում էր այդ շրջանում, տեղական եկեղեցու միջոցով. երկրորդ՝ անկախ նուիրապետական աստիճան և կարգ ունէին (Ա. գ. 177 երես)։ Երրորդ՝ տեղական ծէսեր և սովորութիւններ էին մտցրած եկեղեցու մէջ, որոնք միւսի մէջ չկային, կամ տարբեր էին, օրինակ, զատկի կատարման օրուայ մասին, մկրտութեան և կրկնամկրտութեան, շաբաթ օրուայ պասի նկատմամբ վէճեր ծագեցին և փոխադարձ գիջմամբ վերջացան. (Իրինոսի, Եւսեբէոսի և Կիպրիանոսի, Ամբրոսիոսի և Օգոստինոսի ժամանակներում)։ Չորրորդ՝ նուիրապետական առաւելութիւնները և արտօնութիւնները, հիմնուած հնութեան վրայ (Նիկ. 7)։ Նոյն առաւելութիւնները հիմնուած քաղաքական, եկեղեցական նշանակութեան վրայ (Երուսաղէմ, Հռոմ, Պօլիս)։ Հինգերորդ՝ օրէնսդրական և դատավարական անկախ իրաւունքներ իրանց շրջաններում (Պօլ. 2. Ա. գ.—166)։

Առաջի անկախ եկեղեցին հիմնուեց Երուսաղէմում, ուր իբրև կեդրոն ժողովւում էին առաքեալները խորհրդակցելու և հրահանգներ տալու, իսկ դրսի շրջակայ եկեղեցիները օգնում էին նիւթականապէս կեդրոնին հոգալով նրանց պէտքերը (Գործք—ժա. ժե.)։ Միւս եկեղեցիները՝ Երուսաղէմից դուրս կազմում էին տեղական կառավարութիւններ առաքեալների ձեռքով և նրանց հովանաւորութեան տակ, Կորնթացոց, Եփեսացոց, Գաղատացոց, Մակեդոնացոց և այլն, հռոմէական իշխանութեան քաղաքացիական ստորաբաժանման հիմամբ։ Մեծ շրջանը կազմում էին Ասիական եկեղեցիները (Կորն. 16, 19.). գաւառի գլխաւոր քաղաքում նստում էր եպիսկոպոսը, որի անունով, կամ քաղաքի անունով կրում էին առաքելական թղթերը, Եփեսոս, Զմիւռնիա, Լաւոդիկեա, Թեսաղոնիկիա, Կորնթոս։ Շրջանների կառավարութիւնը յանձնւում էր առաքեալներից նշանակուածներին, Ասիայում Տիմոթէո-

սին, Կրետէում Տիտոսին։ Տերտուղիանոսը ասում է. «շրջենք առաքելական եկեղեցիները, որտեղ մինչև այսօր դեռ ևս առաքելական ամբիոնները կան իրանց տեղերում և որտեղ կարդացւում են նրանց իսկական թղթերը։ Եթէ, օրինակ, Աքիայի մօտ ես ապրում, գնա Կորնթոս, եթէ Մակեդոնեայի մօտ ես, կըգտնես Փիլիպպում, Թեսաղոնիկէում. եթէ Ասիա-յում կը լինես, մտիր Եփեսոս, եթէ Իտալիայում ես, Հռոմ» —(Прав, Собесѣд. 1858)։ Գլխաւոր եպիսկոպոսներ նըս-տում էին երկրի կենտրոնական քաղաքում, Աֆրիկայինը նըս-տում էր Կարթագենում, Եգիպտոսինը Աղէքսանդրիայում, Իտալիայինը Հռոմում, Գաղիայինը Լիօնում։ Եկեղեցու կազ-մակերպութիւնը աւելի որոշ ձևակերպութիւն ստացաւ Կոս-տանդին կայսեր ժամանակ, եկեղեցու բաժանումները զու-գընթաց գնում էին քաղաքական բաժանման հետ։ Կոս-տանդինը բաժանեց 4 պրեֆեկտուրայի, արևելեան, Իլլիրեան, Իտալիա և Գաղղիա։ Արևելեանը բաժանւում էր հինգ շըր-ջանի 1) Արևելեան, 2) Եգիպտական, 3) Ասիական, 4) Պոն-տոսի և 5) Թրակիայի։ Արևելեանը բաժանւում էր 15 թեմի, գլխաւոր քաղաքն էր Անտիոք. Եգիպտոսը 6 թեմի, գլխաւոր քաղաքն էր Աղէքսանդրիա, Ասիան 10 թեմի, գլ. քաղ. Եփեսոս. Պոնտոսը 11 թեմի, Կ. Պօլիս քաղաքով։ Եպիսկո-պոսական գլխաւոր աթոռներն էլ բաժանուեցին նոյն կարգով, նոյն քաղաքներում նստեցին գլխաւոր եպիսկոպոսներ։

## ՏԵՂԱԿԱՆ-ԱԶԳԱՅԻՆ ԵԿԵՂԵՑԻՆԵՐԻ ԿԱՐԳԻՆ Է ՊԱՏԿԱՆՈՒՄ ԵՒ ՀԱՅՈՑ ԵԿԵՂԵՑԻՆ։

Նախկին Հայոց եկեղեցին՝ նախ քան ազգային՝ անկախ եկեղեցի դառնալը բառի բուն նշանակութեամբ, երկու շըր-ջան է ունեցել, Նախա-Լուսաւորչեան և Նախա-Սահակեան։

## Ա) ՆԱԽԱԼՈՒՍԱՒՈՐՉԵԱՆ ԵԿԵՂԵՑԻ

(Ագաթանգեղոս, Բիւզանդ, Խորենացի, Ստ. Օրբելեան, Մովսէս կաղանկատուացի, Գարագաշեան, Գաթըրճեան).

Քրիստոնէութիւնը քաղաքացիական կրօն դարձաւ Հայաստանում Լուսաւորչի և Տրդատ թագաւորի ձեռքով 303—թուին, ամենաառաջին ազգը, որ ամբողջութեամբ ընդունեց այդ կրօնը, է՛ Հայոց և առաջին պատիւն է վայելում բոլոր աշխարհում այդ տեսակէտից (Րօբերթսօն — անգլիացի, եկեղ. պատմ.)։

Մինչև 300 թիւը, մինչև լուսաւորչի յայտնութիւնը, կային բազմաթիւ քրիստոնեայ հայեր Փոքր Հայքում, Կեսարիայի, Սեբաստիայի կողմերում, Ասորոց, Միջագետքի կից սահմաններում, Արարատում, Սիւնիքում, Գողթնեաց աշխարհում, Արտազի սահմաններում, Աղուանից երկրում։ Թէ ո՞րքան կլինէին քրիստոնեայ հայերը, շատ դժուարէ որոշել, նա մանաւանդ ժամանակակից պատմիչները այդ մասին ոչինչ չեն յիշում, նոյն իսկ Ագաթանգեղոս, որ մանրամասն նկարագրում է Լուսաւորչի գործունէութիւնը, նրա երկար քարոզը, որտեղ մէկ մէկ յիշում է 12 առաքեալների և 72 աշակերտների 'ի սփիւռս աշխարհի ցրուիլը, և ո՛չ մի խօսք չի արտասանում Թադէոսի և Բարդուղիմէոսի մասին, առաջինի Եդեսիա գալը և նրա արած գործերը, որոնք մանրամասնօրէն նկարագրել է Եւսեբիոսը, քարոզում յիշում է որ Յիսուսի աշակերտները ցրուեցին «ոմանք 'ի Մարս, ոմանք 'ի Պարթևս, ոմանք 'ի Խուժաստան, ոմանք 'ի Մեջագետս, ոմն 'ի կողմանս Գամրաց, ոմն 'ի Պոնտոս, ոմն յԱսիա, ոմն 'ի Փռիւգիա, ոմն 'ի Պամփիւլիա, ոմն յԵգիպտոս, ոմն յաշխարհն Հնդկաց, ոմն 'ի կողմն Լիբէացւոց, ոմն Կիւրենացւոց, ոմն Դաղմատացւոց, ոմն Սպանիացւոց, ոմն Ազովտայ, ոմն Որակայ, ոմն Ղակոնիա, ոմն Կապադովկիա, Բիւթանիա ...» և այսքան մանր՝ աննշան երկրների անունների մէջ ոչ մի խօսք չի յիշատակւում Հայաստանի մէջ, այն ինչ Դ—Ե. դարերում արդէն աւանդաբար խօսւում էր Թադէոսի և Բարդուղիմէոսի հայաստան գալու մասին։ Հէնց Բիւզանդի առաջի գլուխը սկսւում է Թադէոս առաքեալով, «'ի քարոզութենէն Թադէոսի առաքելոյ և նորուն յելից և 'ի մարտիրոսութենէն մինչև 'ի կատարումն վարդապետութեանն

Գրիգորի և իւրոյ Հանգստեան, և յառաքելասպան Սանադրկոյ արքային մինչև յակամայ Հնազանդելն Հաւատոյն . . . այն ամենայն 'ի ձեռն այլոցն գրեցան (Իմա Ղերուբնա, Ագաթանգեղոս և այլն). Ս. Գր.»։ Բիւզանդի սովորութիւնն է կրկնել «նստուցին զնա (Յուսիկ) յաթոռն առաքելոյն Թադէոսի և յաթոռ իւրոյ Հաւուն մեծին Գրիգորի» (26 երես)։ Նոյն ձևով էլ խօսում է Խորենացին, 91 երես. «Գտաք նստեալ յաթոռ սրբոյ առաքելոյն Թադէոսի զնախահայրն մեր Գրիգորիոս և ըստ աւետարանին ծնող»։ Բացի այդ մինչև իսկ աւանդութիւն էր պտտում այդ ժամանակ, որ Լուսաւորչի յղանալը 'ի մօրէ եղել է Թադէոս առաքեալի գերեզմանի շրջակայքում, երբ զօրքերը վրայ հասնելով բռնած բերում են Անակին, «Որոց (զօրաց) պատահեալ Անակայ, ածին զնա հրամանաւ թագաւորին 'ի գաւառն, որ անուանեալ կոչի Արտազ, ի տեղի դաշտավայրս, ուր յայտնեցաւ նշխարք սրբոյ և մեծի առաքելոյն Թադէի» Խոր. Բ. Հգ. «Եւ աստ ասեմ զրոյց զսքանչելի ծերոյն՝ որ ասէր, թէ ի նախնեաց ունիմ սովորութիւն, որդի 'ի հօրէ առնլով զյիշատակ զրուցացս այսոցիկ . . . Արդ ի բնակելն Անակայ 'ի դաշտին Արտազու, պատահէ սորա տեղի օթարանին մօր առ դիրս սրբոյ առաքելոյն, որպէս թէ 'ի ներքսագոյն սրբսկապանի խորանին և անդ ասեն զյղութիւն մօր սրբոյն մեծի Լուսաւորչին»։ Նոյնպիսի աւանդութիւն կար նոյն ժամանակներում և Բարդուղիմէոսի մասին, որ պատմում է Խորենացին, «Զոր (Տիրամօր պատկերը) առեալ Բարդուղիմէոսի զուարճացաւ, և իբրև ընդ կենդանւոյ համարեալ նայէր։ Ապա մեծաւ փութով եւ 'ի Հայս հրամանաւ սուրբ Հոգւոյն, զի զԹադէոս առաքեալ սպանեալ էր Սանատրուկ արքայ յԱրտազ գաւառի Հայոց»։ Ապա պատմում է որ Բարդուղիմէոսը եկաւ Անահտայ կուռքը փշրեց, տեղը խաչ տնկեց, որը յետոյ Գրիգոր Լուսաւորիչը վերցրեց և շրջելով խաչակնքում էր բոլորին և ամեն տեղ, որ ամենից վերջն էլ տնկեց Տրդատի գերեզմանի վրայ. ապա Ս. Աստուածածին եկեղեցին շինեց, կոյսեր և քահանայ կարգեց, և ան-

ուանեց «Հոգեաց վանս յանուն Տիրամօրն և Սուրբ կուսին»։ Եթէ քննական պատմութիւնը մյս՝ աւանդութիւն համարի, յամենայն դէպս այդ իսկ աւանդութիւնը ապացուցանում է ըստ ասորական աղբիւրի, որ Թադէոսը եկել է Արտազ և նահատակուել է Սանատրուկ հայոց թագաւորից. թէ Սանատրուկ կամ ըստ արտաքնոց Միհրդատ եղել է Հայոց թագաւոր 35—65 կամ ըստ արտաքնոց 35—37 և 41—45 թուականներին, այդ հաստատ է (տես Գարագ. քնն. պատմ.)։ Բարդուղիմէոսի Սիւնիք գալու մասին նոյն իսկ աւանդութիւն է մնացել մինչև Ստեփաննոս Օրբելեանը (ժգ. դար), որ ասում է «ի գալնալն Բարթողումեայ ի պարսից անցեալ ընդ գետն Երասխ՝ մտանէ 'ի սահմանս Սիսականու, և սկիզբն արարեալ քարոզութեան յՈրոտվատ գիւղ և յԱրեւիք գաւառ և 'ի տանն Բաղաց և 'ի Գողթն, որք ընկալեալ զքարոզութիւն աւետարանին՝ լուսաւորեցան մկրտութեամբ աւազանին, ի ձեռն սրբոյ առաքելոյն Բարթողումէոսի։ Իսկ ս. առաքեալն շինէ եկեղեցի 'ի Գողթն յարևմտից եզերն ի վերայ վիմի միոյ յիւրեանց հանգստեան տեղւոջն, ուր վանքն էին կալեալ, և անուն կոչեցին Տեառնընդ առաջ»․ ապա պատմում է, որ Կումսի անունով մէկին եպիսկոպոս է ձեռնադրում և ինքն գնում է դէպի Վանանդ, թաղում է Լուսիկ աշակերտին, մատուռ շինում, ապա Ս. Թովմայի անունով եկեղեցին կառուցանելուց յետոյ, անցնում է դէպի Դուին մայրաքաղաքը։ Ստեփաննոս Օրբելեանը ասում է որ Թանահատի վանքի արձանագրութիւնից երևում է, որ այդ եկեղեցին շինուած է հայ թուականից 400 տարի առաջ, որ ասել է թէ երկրորդ դարու կէսին (151 թ.). Նոյնպէս այն աւանդութիւնը որ Տաթևի վանքը շինուել է Եւստաթէ աշակերտի անունով, որ ըստ աղուանից Աւանդութեան Եղիշէ առաքեալը Աղուանից երկրումն է քարոզել ևլն. ևլն.։ Այս բոլոր աւանդութիւններն հաստատում են, որ Լուսաւորչից առաջ բազմաթիւ քրիստոնեայ հայեր են եղել Հայաստանում, որ առաքեալների մասին բազմաթիւ զրոյցներ են պատմելիս եղել, և այդ բոլորը դժուար թէ Ագաթանգեղոս

լսած չլինէր. բայց ինչու այն աննշան երկրների մասին խօսելիս, ո՛չ մի խօսք չի ասում Հայաստանի մասին և ո՛չ էլ Թադէոս և Բարդուղիմէոսի մասին մի խօսք, արդեօ՞ք որ չնսեմացնէր Լուսաւորչի գործունէութիւնը։

Աւանդութիւնը ասում է, որ Ոսկեանք, որոնք ճգնում էին Ծաղկէոյ լեռներում, Թադէոսի աշակերտներն էին, նրանք Արտաշէս թագաւորի ապարանքի մարդկանց քրիստոնեայ դարձրին և Սաթենիկի ազգականներին Սուքիասեանց մկրտեցին և երկու խումբն էլ նահատակուեցին։ Հռիփսիմեանց ահագին խումբը ինչպէս կհամարձակէր մայրաքաղաքի հնձաններում պատսպարուել, եթէ քաղաքի քրիստոնեաների ծածուկ խնամակալութիւնը չլինէր։ Թէ ո՞րքան շատ էին քրիստոնեայ հայերի թիւը Տրդատի օրով, այդ երևում է թագաւորի հրովարտակներից, ուղղուած ոչ թէ ընդհանուր քրիստոնեաների դէմ, այլ միմիայն այն քրիստոնեաների, որոնք բացէ 'ի բաց ծաղրում էին կռապաշտներին և անարգում կուռքերին, մի՞թէ փոքրաթիւ մարդիկ կհամարձակէին այդպիսի քայլ անել. ահա հրովարտակի խօսքերը. Ագ. ժբ. «Արդ՝ եթէ յանկարծօք թէ գտցի՝ որ զդիսն անպատուեսցէ, և գտցեն զայնպիսին, կապեալ ոտիւք և կապեալ ձեռօք և կապեալ պարանոցաւ ի դուռն արքունի ածցեն, և տուն և կեանք և արարք և ստացուածք և գանձք, այն ամենայն այնոցիկ լիցի, որ զայնպիսին ի մէջ ածցէ»։ Նոյնը հաստատում է երկրորդ հրովարտակը. «զի նոքա անհնարին լինին խափան դիցն պաշտաման, զայնպիսին թէ գտցեն՝ վաղվաղակի 'ի մէջ ածցեն, յարքունիս պարգևք և պատիւս նոցա լինեն շնորհեալ՝ որ զնոսին յայտնեսցեն։ Ապա թէ ոք չյայտնեսցէ զայնպիսին, կամ թագուսցէ և գտցի, այսպիսին ընդ մահապարտս համարեալ լիցի, և ի հրապարակ արքունի եկեալ մեռցի և տուն նորա յարքունիս երթիցէ». Քրիստոնէութիւնը այնքան ուժեղ էր, որ մինչև անգամ վախենում էին մատնել քրիստոնեային տէրութեան ձեռքը, և մահուան է դատապարտում այն կռապաշտ հային, որ գիտենալով կուռքերին անպատուող քրիս-

տօնեային ով լինելը, չէր յայտնել տէրութեան։ Այսպիսի բռնութիւնների ժամանակ պարզ է որ անձնական կրքերի և անսանձ հաճոյքների մեծ դուռն էր բացւում անպիտան և չարահոգի մարդկանց առաջ, որոնք մատնութիւններով գումարներ էին դիզում և կեղծ մուրհակներ առնելով բաց թողնում կամ բանտարկել տալիս. արդեօ՞ք այդ մաքով չհասկանալ Լուսաւորչի արածը «եւ բազում բանտականաց և կալանաւորաց ի տագնապելոյ ի բռնաւորաց փրկութիւն արար, կորզելով զնոսա աճաւորութիւն զօրութեամբ փառացն Քրիստոսի, և զբազում մուրհակս անիրաւագիրս անիրաւութեան պատառեաց» Ագ. ժժգ.։ Վերջապէս այն զըլխաւոր փաստը, որ Տրդատ և Լուսաւորիչ շատ փոքր ժամանակում ամբողջ մի ազգ, այն էլ Հայի նման ծանրամտաց, դարձրին քրիստոնեայ, մի՞թէ հնարաւոր էր, եթէ Հայերից շատերը քրիստոնեայ չլինէին և քրիստոնէութիւնը չլինէր իբրև հանրածանօթ կրօն տարածուած երկրի բոլոր մասերում։ Գարագաշեան, (ո՛րի կռապաշտական Հայոց պատմութեան շրջանը լուրջ աշխատութիւն է), աշխատում է քրիստոնէութեան տարածումն և Տրդատի եռանդոտ միջամտութիւնը այդ գործում վերագրել ուրիշ պատճառի, այն է Կոստանդիանոս կայսեր ազդեցութեան Տրդատի վրայ հարսանիքի ժամանակ 307—թուին, այն ինչ Հայերը քրիստոնեայ դարձան 303-ին, իսկ ըստ Գարագաշեանի 305—306 -ին, այսինքն վերոյիշեալ կայսերական ազդեցութիւնից առաջ. այդ սխալ կարծիքը հետևում է նրանից, որ նա քրիստոնէական շրջանի հրաշքները և տեսիլքները ծաղրի և հեգնութեան տալով ըստ Րընանի, զուտ պատմական մասն էլ կորցնում է նրանց խառնուրդի մէջ և աշխատում է մեր պատմութիւնը պարզաբանել օտարով և ո՛չ ազգայինով, շատ անգամ առանց փաստի մերժելով ազգայինը և յենուելով միմիայն օտարինի վրայ։

Թէ ո՛րքան արագութեամբ կատարուեց քրիստոնէութեան տարածումն Հայաստանում և ի՞նչ ծաւալով, այդ երևում է Ագաթանգեղոսից. 20 օրում մկրտուեց «զինն և

տասն բիւր մարդիկ» (190,000 մարդ), «ի ծագաց մինչև ի ծագս», Սադաղացւոց աշխարհից մինչև «ի սահմանս Կասփից, ի Փայտակարան (Պարտաւ) արքայութեան Հայոց քաղաք». նա ձեռնադրել է 400 եպիսկոպոս «աւելի քան զչորեք հարիւր եպիսկոպոս», իսկ անթիւ անհամար քահանաներ և սարկաւագներ այդ ցոյց է տալիս. ա) որ քրիստոնեաները շատ էին և ամեն տեղ մեծ հրճուանքով ընդունում էին Լուսաւորչին. բ) որ ոչ քրիստոնեայ տարրը վաղուց ընտելացել էր քրիստոնէութեան. գ) որ Լուսաւորչի արագ և բազմաթիւ անձանց մկրտութիւնից երևում է որ մկրտուածների մեծ մասն երախայ էին, այսինքն չմկրտուած քրիստոնեաներ: Նոյն ժամանակուայ գործադրուող ընդհանուր եկեղեցու օրէնքով, քրիստոնեան երեք, երկու, մէկ տարի պիտի պատրաստուէր քրիստոնէական կրօնի մէջ, լաւ ծանօթանար աւետարանի հետ և ապա թոյլատրուէր մկրտուելու եպիսկոպոսից քննութեան ենթարկուելուց յետոյ. Լուսաւորիչ «զօրագունդ բանակի» համար 30 օր նշանակեց, իսկ միւսներին որտեղ հասնում էր, մկրտում էր և եկեղեցիներ շինում: Լուսաւորիչ Կեսարեայից գալիս՝ հետը բերաւ Սեբաստիայից բազմաթիւ քահանայացուներ և հոգևորականներ, որոնք մեծ մասամբ հայ պիտի լինէին, քանի որ օտարներին դժուար էր կտրուել հայրենիքից և գնալ հովուեթեան մարդկանց և ժողովրդի վրայ. «եւ գտանէր բազմութիւն եղբարց՝ զորս հաւանեցուցանէր ընդ իւրգալ»: Թէ Փոքր Հայքում կային բազմաթիւ քրիստոնեայ հայեր և պատկանում էին Կեսարիայի թեմին և ունէին առանձին եպիսկոպոսներ, որոնք կոչւում էին Հայոց եպիսկոպոսներ, որոնք անկախ «Հայոց մեծաց» աշխարհի գլխաւոր եպիսկոպոսից կաթուղիկոսից մասնակցում էին տիեզերական ժողովներին, այդ երևում է տիեզերական ժողովի մասնակցողների ցուցակից. Նիկիայի ժողովում յիշւում է 2 հայոց եպիսկոպոս Փոքր Հայքից, Պօլսոյ ժողովում նոյնպէս երկու եպիսկոպոս, 2 հոգի էլ Եփեսոսի ժողովում, մինչև անգամ վեցերորդ տիեզերական ժողովում, որ չէ ընդունում մեր եկե-

ղեցու կողմից, յիշւում են երկու Հայոց եպիսկոպոս Փոքր Հայքից։ Կեսարիայի թեմը միշտ յարաբերութեան մէջ է եղել յունաց եկեղեցու հետ, մինչև իսկ Գանգրի տեղական ժողովը (Տես Ա. գիրք 203 երես) եղաւ միմիայն Սեբաստիայի հայերի մէջ տարածուած աղանդի համար և ժողովի շրջաբերականը ուղղուած է «Հայաստանում եղող մեր ծառայակիցներին» այն է հայաստանի եպիսկոպոսներին. իսկ այս մասին հայոց եկեղեցու պատմութեան մէջ մի յիշատակութիւն չկայ։ Փոքր-Հայքը քաղաքականապէս համարեա միշտ յունաց ձեռքի տակ էր, միմիայն Տիգրան Բ-ի ժամանակ 190 թուականներին միացաւ «Մեծ Հայքի» հետ, քիչ յետոյ արդէն էլի նոյն վիճակին ենթարկուեց. եկեղեցական բաժանմունքն էլ միշտ զուգընթաց էր գնում քաղաքականին. Սեբէոս (Է. Դար) ասում է, որ հայոց կաթուղիկոսութիւնը Մօրիկ կայսեր ժամանակ երկուսի բաժանուեց, յունաց և պարսից, Մովսէս և Յովհան կաթուղիկոսներով. «Եւ Յովհան ընդ նոսա (յոյնս) հաղորդեալ միաւորեցաւ, բայց Մովսէս ամենևին ոչ լինէր 'ի նոսա հուպ. . . » 53 երես։ Կաթուղիկոսները կոչւում էին «Հայոց մեծաց», մինչև որ չմիացաւ Փոքր Հայքը հայոց նուիրապետութեան հետ, կաթուղիկոսների կոչման մէջ չաւելացաւ «ամենայն հայոց» մակդիրը. արդէն 10-րդ դարում տեսնում ենք Խաչիկ կաթուղիկոսին ստորագրած «կաթուղիկոս ամենայն հայոց»։ Սրանք բոլորը ապացուցանում են որ Փոքր Հայքում, Սեբաստիա, Երզնկա Եփրատ գետի աջ ափով բնակուած հաերը մինչև Լուսաւորիչ քրիստոնեայ էին և իրանց թեմակալ եպիսկոպոսին՝—Կեսարիայի արքեպիսկոպոսին երկար ժամանակ ճանաչում էին մինչև իսկ հակառակ հայոց եկեղեցու կարգադրութեան հոգևոր պետ և վեցերորդ տիեզերական ժողովին մասնակցելու երկու եպիսկոպոս ուղարկեցին։

Բացի ներքին տեղեկութիւններից, ունինք արտաքին աղբիւրներ Լուսաւորչից առաջ քրիստոնեայ հայերի մասին. այդ վկայութիւնները տալիս են Տերտուղիանոս, Եւսեբիոս, Փիրմիլիանոս. առաջինը Գ. դարու գրող է, (+240 թ.) ա-

սում է, որ այն ժամանակներում բազմաթիւ հաւատացեալներ կային Հայաստանում (Գաթըրճեան)։ Եւսեբիոս 267—338 թ.) խօսելով Մաքսիմիանոս (306—313 թ.) կայսեր հալածանքների մասին ասում է, որ այդ կայսրը հալածանք սկսեց Հայոց դէմ և Հայերը ջարդեցին կայսեր զօրքը. «պատերազմ սկսեց բռնաւորը Հայոց դէմ, որոնք սկզբից հռոմայեցոց հետ բարեկամ և նիզակակից էին։ Որովհետև նրանք էլ քրիստոնեայ էին և շատ ջերմեռանդ բարեպաշտ էին, աստուածուրացը բռնացաւ և աշխատեց բռնութեամբ՝ դեւերի և կուռքերի պաշտամունքին . . .» բերել Հայերին... (Գլ. Թ. Ը)։ Փիրմիլիանոս Կեսարեայի եպիսկոպոսը նոյն վկայութիւնը է տալիս, որ Հայաստանում բազմաթիւ քրիստոնեաներ կային. նա Գ. դարու մարդ էր։ Մաքսիմիանոսի զօրքերի ջարդը քրիստոնեայ Հայերի կողմից յանուն կրօնի ընդդէմ կռապաշտութեան Հայերի նոր քրիստոնեայ դարձած ժամանակ Տրդատի օրով ապացոյց է որ քրիստոնէութիւնը վաղուց խոր արմատ էր ձգած Հայերի մէջ, այլապէս նորադարձները յանուն կրօնի այդպիսի եռանդուն միջոցներ չէին գործադնիլ։ Ուրեմն կարօտ չէ ապացուցութեան որ նախալուսաւորչեան եկեղեցի ունեցել են Հայերը և այն էլ Հայաստանի բոլոր անկիւններում, որտեղ տիրապետում էր երկու մեծ հոսանք, յունական և ասորական. Հայերը գիր չունէին, ուստի և սուրբ գիրքը և ժամերգութիւնը լինում էր Փոքր Հայքում, Սեբաստիայում և յունական մասում—յունարէն, իսկ Միջագետքում, Եդեսիայում, Ասորիքում—ասորերէն, գուցէ և Ատրպատականում պարսկերէն. մանաւանդ որ պարսկաստանում գտնուած քրիստոնեաների առաջնորդը անուանւում էր պարսից եպիսկոպոս, իսկ Եդեսիայի դպրոցը մասնաւորապէս պարսկաստանի համար քարոզիչներ էր պատրաստում։

Թէ ինչպէս էր կառավարւում նախալուսաւորչեան Հայոց-եկեղեցին, ինչ կանոններով, այդ մասին թէև տեղեկութիւն չունինք, բայց ի նկատի ունենալով ընդհանուր եկեղեցու նոյն ժամանակուայ կացութիւնը, կարող ենք հա-

մեմատական կարգով եզրակացնել, որ Հայոց եկեղեցին իբ-րև մաս և շարունակութիւն ընդհանուր եկեղեցու, կառա-վարուող մեծ մասամբ օտարազգի եպիսկոպոսներով քահա-նաներով՝ քանի որ Հայոց գիրը դեռ չէր գտնուած, հովւում էր այն օրէնքներով և կանոններով, որոնցով կառավարւում էր ընդհանուր եկեղեցին։ Թէ արդեօ՞ք Նախալուսաւորչեան եկեղեցին տեղական—ազգային առանձնակի սովորութիւն-ներ ունէր տարբեր ընդհանուր եկեղեցու կարգերից, որպի-սի առանձնայատկութիւններ նոյն ժամանակուայ եկեղեցու զանազան մասերում երևում էին, պաս պահելու, զատիկը կատարելու, ճրագալոյցի օրուայ վերաբերութեամբ, օր. Ա-սիայում, Եգիպտոսում, Հռոմում, Գաղղիայում։ Ինչպէս Իրենիոսը (+202 թ) պատմում է, զանազան եկեղեցինե-րում տարբեր մանր սովորութիւններ կային, ոմանք պասը պահում էին մի օր, ոմանք երեք, ոմանք 40, մի քանի տեղ տուրքերը ժողովում էին շաբաթը մի անգամ, ոմանք ա-միսը մի անգամ, ոմանք թաթախւում էին աւագ հինգշաբ-թի օրը, ոմանք լոյս կիրակի և այլն և այլն։ Այս հարցերը ակամայ յարուցանում ենք այն պատճառով, որ Ե. դարում հէնց, մեր և յունաց եկեղեցու ծիսական մասերի մէջ փո-փոխութիւններ և տարբերութիւններ ենք տեսնում. եթէ ընդունենք որ Նախալուսաւորչեան եկեղեցի հայերը չունէին, այն ժամանակ շատ դժուար կլինէր բացատրել թէ այդ տարբերութիւնները որտեղից առաջացան, քանի որ Լուսա-ւորիչը Դ. դարում մտցնելով քրիստոնէութիւնը Հայաստա-նում, նա տարածեց և հաստատեց այն կարգերը, որոնք տեսել էր Կեսարիայում, յունաց եկեղեցում, նոր բան մըտ-ցնել չէր կարող, այն ինչ հէնց Լուսաւորչի որդի Վրդանէսը տարբերութիւններ տեսնելով Նախալուսաւորչեան Ասորա—Հայոց եկեղեցու և յունահայոց եկեղեցու մէջ, պատգա-մաւորութիւն է ուղարկում Երուսաղէմ Մակար եպիսկոպոսի մօտ խնդրելով հրահանգ, որից և ստանում է 9 գլխով կար-գեր։ Վանը և Արտազը մօտիկ լինելով Ասորեստանին մըտ-ցրել էին այն կարգերը, որ սովորել էին ասորիներից. Եդե-

սեայի դպրոցից, Երուսաղէմից, իսկ վերջինիս առաջին եպիսկոպոսը՝ Յակոբ Տեառնեղբայրը՝ ամենամեծ յարգանքն էր վայելում ոչ միայն հրէաների, այլ և դրացի ասիական ազգերի կողմից և ժամերգութիւն և համառօտ պատարագի արարողութիւնը համարւում էր Տեառնեղբօր սահմանումն։

Երուսաղէմի—ասորա—հայկական սովորութիւններով նախալուսաւորչեան եկեղեցին գործ էր ածում բաղարջ հաց, յունուարի 6-ին ծննդեան կատարումն, պասերի կատարման որոշ օրեր և այլն և այլն. Կեսարիայի կողմի յունա—հայոց եկեղեցին թէև նոյն նախալուսաւորչեան—ասորական եկեղեցին էր, բայց տեղական տարբերութիւն ունէր վերոյիշեալ կէտերում։ Լուսաւորչի պատկառելի հեղինակութիւնը այդ տարբերութիւնները նսեմացնում էր, մինչև իսկ անուշադիր թողնում այդ մանր առանձնայատկութիւնները «իսկ մեք փառաւորեսցուք» հրաշալի սկզբունքով, բայց հայոց ազգայնական եկեղեցին իւր գործը շարունակում էր և Վրդանէսի ժամանակ հարկ զգացուեց Երուսաղէմ մարդ ուղարկել և հրահանգներ խնդրել։ Թէ Երուսաղէմի եկեղեցին՝ գլխաւորութեամբ Տեառնեղբօր որքան ժողովրդական էր հայոց մէջ, այդ երևում է մի քանի պատմագրներից։ Ուխտանէսը պատմում է վրաց բաժանման մասին 597 թուին և մէջ է բերում զանազան թղթակցութիւններ հայոց կաթուղիկոսի, վրաց եպիսկոպոսների և Սմբատ Մարզպանի մէջ տեղի ունեցած, որոնց մէջ միշտ կրկնւում են հետևեալ խօսքերը. «Հարքն մեր և ձեր զԵրուսաղէմի հաւատն ունէին, և Սուրբն Գրիգոր զայն ետ նոցա, և մեք զնոյն ունիմք» 109 երես։ Նոյն հեղինակը խօսելով վրաց ազգի նեղանալուն վրայ այն մասին՝ որ հայոց կաթուղիկոսը Ազուանից եպիսկոպոսին՝ արքեպիսկոպոս է համարում և վրաց եպիսկոպոսին՝ միտրոպոլիտ, արդարացնում է հայոց կաթուղիկոսի արածն նրանով, որ Ազուանից եպիսկոպոսը անդրանիկ է քան վրացը և յաջորդութիւնը ստանում է Յակոբ Տեառնեղբօրից—«Այլ թէպէտ և նոքա զայլ ոմն ասէին կանխաւ եկեալ յաշխարհն Ազուանից Եղիշէ անուն, զոր վերագոյնդ յիշեցաք, յաշակերտաց փրկ-

չին ձեռնադրեալ ի սրբոյ Յակոբայ եղբօրէն Տեառն, և քարոզեալ անդ, և եկեղեցի շինեալ նախ քան զլուսաւորութիւնն Հայոց, որ է մայր եկեղեցեացն Գեսու եկեղեցին այն առ ստորոտով Ամարասու ի գաւառին որ կոչի Գորոզու, մերձ ի դաշտն Պարտաւ քաղաքի, որ կոչի Փայտակարան...»: 112 երես: Նոյնը կրկնում է և Մովսէս Կաղանկատուացին, որից և քաղել է Ուխտանէսը: Ստեփաննոս Օրբելեանը ծննդեան և մկրտութեան օրը յունուարի 6-ին համարում է Յակոբ Տեառնեղբօր սահմանադրութիւն. «այլ զճշմարիտն զկարգեալն 'ի սրբոյն Յակոբայ 'ի վեցըն յունուարի զծնունդն, և 'ի վեցն ապրիլի՝ զԱւետիսն» 335 երես: Այս բոլորը խօսում են 'ի նպաստ նախալուսաւորչեան եկեղեցուն, որ ունէր տեղական ամրացած հաստատուն ծէսեր և սովորութիւններ, որոնք վաւերական դարձան Լուսաւորչով և քաղաքացիութիւն ստացան Տրդատով, և որոնք համարում էին աւանդ առաքեալներից, Երուսաղէմից: Պատմութեան ամբողջ ընթացքում երևում է որ Հայոց ազգային-բուն եկեղեցուն միշտ աւելի ջերմեռանդ պաշտպաններ էին արևելեան Հայերը, այսինքն նախկին նախալուսաւորչեան ասորա—հայկական եկեղեցու սերունդները, քան արևմտեան, այսինքն յունահայկական եկեղեցու, վերջինը միշտ եղել է յունասէր և լատինասէր: Մինչև իսկ Ռուբինեանց ժամանակ միքանի ժողովներ եղան թագաւորի, կաթուղիկոսի, եպիսկոպոսների, իշխանների մասնակցութեամբ օտարամոլական գոյն ունեցող, բոլորը մերժուեցին արևելեան Հայաստանից, որոնցից և ակնածում էին Կիլիկեայի տէրերը. տես Ս. գիրք—Հայոց եկեղ. ժողովները: Նոյնը երևում է Ե. Զ. դարերից սկսած, Ղազար Փարպեցու թղթից երևում է, որ յունաստանի դէմ, յունաստանում կրթութիւն ստացած անձանց դէմ առհասարակ խիստ հալածանք կար, նրանց կրթութեան վայր յունաստանը համարւում էր աղանդների կեդրոն, պոռնկութեան վայր, երրորդ—չորրորդ պսակների ջատագով և այլն և այլն. (Սեբէոս). Ներսէս Մեծի ժամանակ, Արշակը, Պապը, իշխանները հակառակ յունական ուղղութեան էին. Սահակէ

ժամանակ աւելի սիրով ընդունում էին ասորի կաթուղիկոս՝ քան յոյն, կամ յունաստանում կրթուած անձի։ Սրանք բոլորը, կարծում եմ, ցուցնում են թէ որքան ուժեղ և համատարած նշանակութիւն ունէր ասորա-հայկական նախալուսաւորչեան եկեղեցին. Փարպեցին ուրախանալով գրերի գիւտի համար, ասում է փառք Աստուծոյ ազատուեցինք ասորական դժուար լեզուից, որ ենթադրել է տալիս թէ Արարատում, հենց Էջմիածնում ասորերէն էին ժամ ասում նախ քան գրերի գիւտը։

## Բ) ՆԱԽԱՍԱՀԱԿԵԱՆ ԵԿԵՂԵՑԻ

Հայոց եկեղեցու երկրորդ շրջանը կազմում է Լուսաւորչից սկսած մինչև Սահակ, կամ աւելի ճիշտ Մեսրոպ և թարգմանիչներ, այսինքն մինչև այն ժամանակ երբ հայոց գիրը գտնուեց, սուրբ գիրքը թարգմանուեց հայերէն և հայոց եկեղեցու մէջ հնչեց հայերէն ժամերգութիւնը --300 թուից մինչև 440 թուականները։ Այս նախասահակեան շըրջանը բոլորովին տարբերւում է յաջորդող շրջանից, նա կառավարւում էր ընդհանուր եկեղեցու կանոններով, եկեղեցիներում ժամերգութիւնը կատարւում էր անհասկանալի լեզուներով, յունարէն, ասորերէն, նոյն իսկ պարսկերէն, աւետարանը կարդացւում, թարգմանւում և բացադրւում էր շատ անգամ երկու երեք թարգմանիչների ձեռքով, հայոց եկեղեցիների վարիչներն էին մեծ մասամբ յոյներ, ասորիներ, կաթուղիկոսները և եպիսկոպոսները ժառանգաբար նստում էին իրանց հայրենական աթոռների վրայ, կաթուղիկոսների ձեռնադրութիւնը մեծ մասամբ լինում էր Կեսարիայի եպիսկոպոսից, այս ամենը միանգամից վերացաւ Սահակից յետոյ, ամեն բան դարձաւ ազգային. լեզու, մարդիկ, գրքեր, եկեղեցի, կարգ կանոն, կառավարիչներ, վանականներ։ Ի հարկէ սրանով չենք նսեմացնում Լուսաւորչի և Տըրդատի ահագին օգուտը, որ տուին հայոց՝ քրիստոնէութիւնը քաղաքացիական կրօն դարձնելով հայաստանում, նրանք

դրանով միացրին հեռու ընկած նահանգները միմիանց հետ, կապ հաստատեցին Քրիստոսի միութեամբ բոլոր հայոց ցրուած մասերի հետ, յունական կուռքերը արեւմուտքից, սարական կուռքերը հարաւից, կռապաշտական խառնուրդ մեհեանները հիւսիսից ջնջելով, վերացնելով՝ խաչ տնկեցին և Հայութեան մտածողութիւնն ուղղեցին դէպի մի միացման կէտի, այն է քրիստոնէութեան կեդրոնի՝ Էջմիածնին, դրա հետեւանքը այն եղաւ որ նոյն իսկ Վրդանէս՝ Լուսաւորչի որդին՝ եկեղեցի և ազգութիւն, քրիստոնէութիւն և հայոց աշխարհ միացրեց և Պարսիկների դէմ մղած պատերազմում մեռածներին հրամայեց նահատակ համարել և տօնել եկեղեցում նրանց յիշատակը. «Վասն զի որք մեռանն՝ մեռան յաղագս աշխարհի եւ եկեղեցեաց և սաստուածագործ օրինաց տուչութեան...» . . . «որք այսմ ամենայնի փոխանակ զանձինս իւրեանց ոչ խնայեցին՝ ընդ վկայս Քրիստոսի է նոցա համար պատուոյ» Բիւզ. 24 երես, բայց և այնպէս նախասահակեան շրջանը մի քանի առանձնայատկութիւններով տարբերւում է բուն ազգային շրջանից, որ սկսուեց Սահակից, Մեսրոպից յետոյ։

1) Այդ շրջանի առաջին աչքի ընկնող երեւոյթն այն էր, որ ամեն տեղ տիրապետողն օտարն էր, յոյնը և ասորին, եկեղեցում, վանքերում, եպիսկոպոսների աթոռների վրայ։ Լուսաւորիչ «գունդս գունդս» առնելով յոյներից բերաւ մեր աշխարհ. Լուսաւորիչ, իւր երկու որդիքը հայոց թագաւորների ցեղակից էին—պահլաւ ցեղից, Մծբնայ հայրապետը որ այնքան մեծ հռչակ ունէր հայաստանում, «ազգաւն պարսիկ կոչէր» (Բիւզ. 19). Լուսաւորչի նշանակած յայտնի Դանիէլ քորեպիսկոպոսը—կառավարիչ և գլուխ ամենայն եկեղեցեաց «էր ազգաւ ասորի» Բիւզ. 31)։ Սրա աշակերտները Վաղտա, Եպիփան, Եփրեմ, Գինդ յոյներ էին և գլուխ բոլոր վանականներին, օտարանոցների, բարեգործական հիմնարկութիւնների (Խոր. Բ. գլ. Ի.). Լուսաւորչի ութ նշանակած եպիսկոպոսներն յոյն էին, Եւգաղիոս, Բասոս, Մովսէս, Եւսեբիոս, Յովհաննէս, Ագապէս, Արտիթէս,

Արսուկէս, Անտիոքէս, Տիրիկէս, Կիւրակոս, (Ագաթ. ԾԻԱ), որոնք անունով մինչև իսկ խիստ տարբեր են ազգային շըրջանի գործիչներից—Յովսէփ, Ղևոնդ, Եզնիկ, Յովհան, Կորիւն, Եղիշէ, Դաւիթ, Տիրայր և այլն և այլն։

Եւ այլապէս էլ չէր կարելի, ինչու. որովհետև եկեղեցու լեզուն օտար էր, հայերը յունարէն, ասորերէն չգիտէին, պէտքէ հոգևորականները կարդային օտար լեզուներով և ահա առաջ է գալիս այդ շրջանի միւս գլխաւոր առանձնայատկութիւնը—լեզուն։ 2) Լուսաւորիչ հրամայեց դպրոցներ բանալ և սովորեցնել յունարէն և ասորերէն, «Եւ զնոսա յերկուս բաժանեալ, զոմանս յասորի դպրութիւն կարգեալ, և զոմանս Հելլէն.» Ագաթ. 484 երես. այն ինչ արքունիքը իւր գործերը վարում էր պարսից լեզուով, Միհրուժանի ժամանակ հրամայուեց ամեն տեղ գործ ածել պարսկերէն։ Թէ ինչ սարսափելի գործ էր կարդալ օտար լեզուով եկեղեցում գիրք և հասկացնել ժողովրդին, այդ երևում է Մեսրոպի կրած տառապանքներից և Ե. դարու պատմիչների նկարագրութիւններից, մէկը կարդում էր յունարէն կամ ասորերէն աւետարանը, երկրորդը թարգմանում էր, երրորդը մեկնում։ Փարպեցին դառնութեամբ է յիշում այն օրերը, երբ հարկից սոխլուած հայ պատանիները չւում էին դէպի Եդեսիա դժուարամատչելի ասորական լեզուն սովորելու։ Լեզուն պատճառ էր որ օտար հոգևորականութիւնը տիրապետում էր հայոց եկեղեցուն այդ շրջանում։

3) Երրորդ կէտն է, որ այդ շրջանում կաթուղիկոսները մինչև Արշակ և Պապ ստանում էին ձեռնադրութիւն Կեսարիայում և այսպէս սաստ կանոնական տեսակէտով կապուած էին Կեսարիայի արքեպիսկոպոսի հետ. թէև Լուսաւորիչը՝ ինքը առաջինը քանդեց այդ սահմանը ձեռնադրելով իւր որդւոց կաթուղիկոս իւր փոխարէն հայոց վրայ, բայց Յուսիկին ուղարկեցին Կեսարիա, թէև Արշակ և Պապ վերացրին խպառ կաթուղիկոսների Կեսարիա գնալը, բայց էլի արևմտեան հայոց եպիսկոպոսացուները գնում էին Կեսարիա ձեռնադրուելու ըստ Բիւզանդի. Ագաթանգեղոս և Բիւզանդ

կեսարական էին և հակառակ Արշակի և Պապի կարգադրութիւններին (տես Բիւզանդ)։ Ազգային շրջանում խսպառ վերացաւ այդ։

4) Չորրորդ առանձնայատկութիւնը նախասահակեան շրջանի այն էր, որ կաթուղիկոսու և մասնաւորապէս առաջնորդութիւնը ժառանգական էր։ Լուսաւորիչ, Արիստակէս, Վրթանէս, Յուսիկ, Ներսէս մեծ, Սահակ, բոլորը պարթևական ցեղից, Լուսաւորչի շառաւիղներից էին, երկրորդ ցեղն էր Աղբիանոս քրմինը, որը մեծ տուն էր և յայտնի քրմական տոհմ, քրիստոնէութեան ժամանակ եպիսկոպոս ձեռնադրուած Եփրատի կողմերում նախկին քրմական շրջանում, Լուսաւորչի սիրելին և աղդեցիկ անձն, ահա դրա տոհմն էր առաջ բերւում կաթուղիկոսական ընտրութեան ժամանակ, երբ լուսաւորչի ցեղից արժանաւորն չէր երևում. Աղբիանոսի տոհմից եղան Շահակ, Զաւէն, Ասպուրակէս (Բիւզանդ. 31. 223-224 երես), Մեյիտէ և Մովսէս (փարպեցի), կոչւում էին նոյնպէս Մանազկերտացոց ցեղ, կամ ըստ Բիւզանդի «Մանազկերտեայց»։ Ժառանգական կաթուղիկոսութիւնը հետևանք էր հին քրմապետութեան, որի համար ընտրւում էին Վահէվահեան ցեղից կամ թագաւորական տանից։ Երբ նախարարները համոզում էին Սուրմակին հակառակ խօսել Սահակի դէմ, խոստանալով եպիսկոպոսութիւնը «ազգաւ» տալ նրան, նոյնպէս և երդւում էին վերջը Սահակին «ազգաւ» տալ նրան կաթուղիկոսութիւնը, որ նշանակում է ժառանգաբար տալ, յանձնել նրանց այդ պաշտօնները։ Այս բանը վերջացաւ ազգային շրջանում, Սահակից յետոյ թեթև բացառութիւններով (Շնորհալու տոհմ)։

5) Ինչպէս էր այդ շրջանի հայոց եկեղեցու կառավարութիւնը։ Ասացի որ թէև կային տեղական սովորութիւններ մտած հայոց եկեղեցու մէջ, բայց որովհետև ամբողջ կազմը գտնւում էր օտարների ձեռքը լեզուի և գրերի պատճառով, ուստի և ամեն կառավարչական կարգ ընդ օրինակութիւն էր օտարի, յոյնի. Լուսաւորչի կարգերը, վանական կանոնները բոլոր յունաստանում տեսած և սովորած էին, Մեծն

Ներսէսի բարեգործական հիմնարկութիւնները, նրանց ձևը, կառավարութիւնը, կառավարիչները յունական էին և յոյներ. «ի Բիւզանդիոյ դարձեալ 'ի Կեսարիա և եկեալ 'ի Հայս, զամենայն կարգս ուղղութեանց հարցն իւրոց նորոգեաց, այլ ևս առաւել ևս, քանզի զբարեկարգութիւնն, զոր ետես 'ի յունաց աշխարհի, մանաւանդ 'ի թագաւորեալ քաղաքին, ի նմա նկարագրէ . . .» Խորեն. բ. գլ. ի.: Ահա խորենացու վկայութիւնը, որ նա ինչ որ տեսել էր Պօլսում, մտցրեց հայոց երկրում. նոյնը ասում է Բիւզանդ 58 երեսում: Ներսէսի 12 եպիսկոպոսներով շրջապատուելը իբրև խորհրդակիցներ, դրան եպիսկոպոս և մակդիրներով, արխիդիակոնի կառավարչական-վերահսկողութիւն նշանակելը, վանքերի շատացնումը և վարչական ձևը յունաց երկրի օրինակներն էին որոնք բուն երկրում համակրութիւն չգտնելով լուռ տրտունջ էին առաջացնում և հակաեկեղեցական կուսակցութիւն առաջացնում: Սահակի 60 լուսկեաց աշակերտներով շրջելով քարոզելը յունականի օրինակն էր: Այս բոլորը վերացաւ ազգային շրջանում, երբ գիրը գտնուեց:

## Դ) ԱԶԳԱՅԻՆ ՇՐՋԱՆ

Սահակ և Մեսրոպ գտան հայոց գիրը և հայոց աշխարհը փոխուեց միանգամից, տասն տարուայ ընթացքում, ամեն բան դարձաւ ազգային, լեզու, եկեղեցի, աւետարան, սուրբեր, վանքեր, նոյ իսկ Աստուած. հայը եկեղեցում Աստուծոյ անունը յունարէն և ասորէն լսելով, չէր պատկերացնում այն, ինչ որ հայերէն բառով և գրով էր ըմբռնում: Տառերի գիւտը անկախ դարձրեց հայոց եկեղեցին և Վարդանանց պատերազմի նահատակների արիւնով դրոշմեց անկախութեան կնիքը նրա ճակատին: Հայոց եկեղեցու անկախ բնաւորութիւնը որոշւում է հետևեալ գլխաւոր կէտերով:

ա) Հայոց եկեղեցու գլխաւոր իրաւասական մարմինն է միմիայն ընդհանուր ազգային եկեղեցական ժողովը-աշխարհականներից և հոգևորականներից բաղկացած (Տես Ա. գիրք

437, 438, 441, 444)։ Այդ ազգային ժողովն է կաթուղիկոս ընտրող և հեռացնող, եկեղեցու օրէնսդիր մարմին և գլխաւոր դարաւոր, կազմակերպող ոչ միայն վարչական կարգեր և կանոններ, այլ և եկեղեցու դաւանաբանական մասի միակ սահմանող (տես Ա. գիրք 356, 389, 390, 406, 558 երես)։ Թէ դաւանաբանական հարցերում միշտ աշխարհականները մասնակցում էին, ոչ միայն Ե. դարից սկսած բոլոր վէճերի ժամանակ, այլ և 13-րդ դարում, երբ Կիլիկիոյ հայոց թագաւորը, հայոց կաթուղիկոսը իրանց իշխաններով և եպիսկոպոսներով համաձայն էին դէպի օտարամոլութիւնը, այդ դէպքում արևելեան հայոց ժողովում, ուր մասնակցում էին եպիսկոպոսներ, վարդապետներ, քահանաներ, դրանց հետ միացած էին իշխաններ, վարժապետը իւր աշակերտներով. ահա դրանց ստորագրութիւնը. «ես Եսայի, կրտսեր քանասիրաց, և յետին վարժապետ իմով աշակերտօքս համախոհ եմ և միաբան ...». «Մեք անպիտան ծառայքս Քրիստոսի Ելիկումս և Լիպարիտս՝ որդիք փառաւոր իշխանացն Տարսայիճին և Իվանէի, եղբարբք մերովք և որդւովք և ամենայն ազատօք հաւանիմք և հնազանդի մահու չափ այսմ աստուածատուր և հայրենաւանդ կտակիս, և որ հակառակին, որոշեալ լիցին 'ի սուրբ հարցն մասնակցութենէ» (Ստ. Օրբ. 210 երես), և այսպիսի նզովք շպրտում են օտարամոլ թագաւորին և կաթուղիկոսին։

բ) Հայոց եկեղեցին իւր ազգային ժողովով, ազատ է ընդունելու և չընդունելու տիեզերական ժողովների վճիռները, կազմելու առանձին ժամերգական կարգ կանոն, որոշումներ կայացնելու զանազան բարեպաշտական և այլ խնդիրների վերաբերմամբ։

գ) Հաստատուն պահելու նախկին ժողովների կանոնները, կամ ըստ տեղի և հանգամանաց փոփոխութեան ենթարկելու և նոր կանոններ սահմանելու (Տես Ա. Գ. Հայոց ժողովների կանոնները)։

դ) Հաստատել եկեղեցու նուիրապետութեան կարգը, իրաւունքները, և զանազան աստիճանները, կարգի հրաւիրել

*բոլոր զանցառուներին, դատի կանչել, պատժել և այլն։*

*ե*) *Ազգային ժողովի ներկայացուցիչ և լիազօր հսկող բոլոր եկեղեցական կարգերի վրայ, դատող, պատժող, աւանդապահ է ամենայն հայոց հայրապետը։*

*զ*) *Եպիսկոպոսական ձեռնադրութիւնը, միւռոն եփելը բոլոր եկեղեցիների համար վերապահուած է հայոց կաթուղիկոսին։ Թէ քանի թեմ կար Հայաստանում սկզբնական շրջանում շատ դժուար է որոշել, քանի որ թեմերի այժմեայ բաժանումն վերջերում կանոնաւորուեց, միայն, ինչպէս Ագաթանգեղոս է գրում, Լուսաւորիչ ձեռնադրեց* 400 *եպիսկոպոս, նշանակում է իւրաքանչիւրին յատկացնելով մի մի քաղաք և փոքր թեմեր, պէտք է այն ժամանակ լինէր Հայաստանում մի քանի անգամ շատ թեմական առաջնորդներ քան այժմ, և բազմաթիւ ցրուած եպիսկոպոսներ վանահայրերի և քորեպիսկոպոսների պաշտօններով։*

## 3) ԳԼԽԱՒՈՐ-ԵՊԻՍԿՈՊՈՍ

*Եկեղեցական կանոնով բոլոր եպիսկոպոսները հաւասար իրաւունքի տէր են, բայց երկրի մէջ բազմաթիւ եպիսկոպոսների մէջ կարգ պահելու համար անհրաժեշտ էր մէկը, իբրև գլխաւոր եպիսկոպոս, որ վերահսկէր ընդհանուր եկեղեցու կեանքի վրայ. այդպիսի անձն համարւում էր այն եպիսկոպոսը, որ ձեռնադրուած էր առաջ, այդ աւագութիւնը փոփոխակի անցնում էր քաղաքէ քաղաք, ուր նստած էին զանազան ժամանակներում ձեռնադրուած եպիսկոպոսներ. բացառութիւն կազմում էր Ափրիկայի Կարթագենը, որի եպիսկոպոսը* 97 *թուի ժողովով պիտի համարուէր գլխաւոր եպիսկոպոս և ձեռնադրութեան կարգով նստէր նախորդի աթոռը։ Ա.-Առ.* 34 *կանոնը* (Ա. Գ. 99 *երես*) *որոշում է որ թեմի եպիսկոպոսը առանց աշխարհի գլխաւոր եպիսկոպոսի և վերջինս էլ առանց եպիսկոպոսական խորհրդի՝ երկրի եկեղեցու գործերը չվարեն առանձնակի։ Երբեմն մի երկրում լինում էին երկու, երեք գլխաւոր եպիսկոպոսներ՝ առաջացած*

քաղաքի նշանակութեան և գլխաւորութեան հասկացումից, Պաղեստինում երկուսն էին, Կեսարիայինը և Երուսաղէմինը. Աֆրիկայում բացի Կարթագենի գլխաւոր եպիսկոպոսից, կային և Մավրիտանիայում, Նումիդիայում, Սիտիփում։ Մայրաքաղաքի եպիսկոպոսները կամաց կամաց իբրև թագաւորանիստ քաղաքի հոգևոր պետեր սկսեցին աւելի մեծ նշանակութիւն ունենալ և կոչուեցին միտրոպոլիտներ։

## 4) ՄԻՏՐՈՊՈԼԻՏՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Առաջի պաշտօնական հաստատութիւնը միտրոպոլիտների մասին տալիս է Նիկիայի 4 կանոնը (Ա. Գ. 148 երես), 6-կանոնում յիշում է անուն անուն այդ աթոռները, որոնք լրանում են Պօլսոյ և Եփեսոսի ժողովների կանոններով (Տես Ա. Գիրք). այդ կանոնները միտրոպոլիտների մասին մտան և տեղական արտաքին ժողովների սահմանադրութիւնների մէջ, Անտիոքի, Սարդեկիայի, Լաւոդիկեայի, (Ա. Գիրք, 219, 230, 212, 213, 214), որոնք Յուստինիանոսի հրամանով քաղաքացիութիւն ստացան և առանձին հրամանագրով Կարթագենի եպիսկոպոսը Աֆրիկայի միտրոպոլիտ ճանաչուեց։ Միտրոպոլիտների իրաւունքներն էին, 1) ընդհանուր կառավարութիւն երկրի մէջ գտնուած եկեղեցիաց. 2) եպիսկոպոս նշանակել և ձեռնադրել. 3) եկեղեցական ժողով հրաւիրել և նախագահել. 4) գանգատներ ընդունել եպիսկոպոսների վրայ և դատաստան նշանակել. 5) անուան յիշատակութիւնը բոլոր շրջանի եկեղեցիներում. 6) առանց նրա թղթի ոչ ոք չէր կարող թագաւորի մօտ գնալ կարևոր խնդիրքներով. 7) ամեն բան կարգադրել եպիսկոպոսական ժողովի խորհրդակցութեամբ։ Միտրոպոլիտը քիչ քիչ դարձաւ աւագութեան տիտղոս, որ տալիս էին և աւագ եպիսկոպոսներին, կամ մեծ քաղաքների առաջնորդներին. Մարկիանոսի կարգադրութեամբ Նիկիան միտրոպոլտութիւն կոչուեց, ինչպէս և Մակեդոնեան ըստ Յուստինիանոսի։ Միտրոպոլիտական տիտղոսը հայոց մէջ սովորական չէր, Լուսաւորիչ դառ-

նալով ընդհանուր հայրապետ ձեռնադրում էր առաջնորդ-եպիսկոպոսներ բոլոր թեմերի համար հաւասար իրաւունքներով։ 9-10-րդ դարերում երբ վէճեր ծագեցան յոյն և հրոմ եկեղեցիների մէջ, 'ի մէջի այլոց խօսք ընկաւ աթոռների իրաւասութեան վրայ, նրանք իրանց նախերէցութիւնը ցուցնելու համար յենւում են նաև նուիրապետական 9 աստիճանի ամբողջութեամբ իրանց աթոռների իշխանութեան տակ սւնենալներուն վրայ, թէ որ աթոռը շատ արքեպիսկոպոսներ, միտրոպոլիտներ, եպիսկոպոսներ ունի, հայոց եկեղեցու անկախութեան և մեծութեան նախանձախնդիրը, Յովհաննէս պատմաբան-կաթուղիկոս թ-ժ. դարում և Ստեփաննոս Օրբելեան ժգ. դարում նրանց հետ մրցելու նպատակաւ ստեղծեցին միտրոպոլտական աթոռներ հայաստանում, հիմքը բռնելով Ներսէս մեծի և մինչև իսկ Լուսաւորչի կարգադրութիւնը, այն նպատակով իբր, որ 9 դասը հայոց անկախ հայրապետութեան մէջ լրանայ. ըստ Յովհաննու պատմաբանի, 1) հայոց Հայրապետ որ է պատրիարք, 2) արքեպիսկոպոսական աթոռներ Վրաց և Աղուանից. 3) միտրոպոլտական աթոռներ-Սեբաստիայում, Մելիտինէում և Մարտիրոսաց քաղաքում (Յով. պատ. 32-33), 4) առաջնորդներ և այլն ըստ կարգի։ Ստեփաննոս Օրբելեանը բերելով Սարգիս կաթուղիկոսի կոնդակը 1006 թուին գրած և ուղղած Սիւնեաց աշխարհին, Թագաւորին և իշխաններին, որ նախկին կաթուղիկոսներ Թէոդորոսից և Անանիայից սկսած Սիւնեաց աթոռը բաժանուել էր հայրապետութիւնից, բայց այժմ ընծայացու Տ. Յովհաննէսին ձեռնադրեցինք, ասում է կոնդակը, «ըստ առաջին աթոռակալացն միտրոպոլիտ Սիւնեաց«, որ տալիս եմ 12 գաւառն այս առաջնորդին և «աւանդեցաք նմա զնախնական պատիւն իւրեանց՝ զխաչն և ըզբազմականն», և այս ոչ ինձնից եմ անում, այլ ինձ բերուած բազմաթիւ նամակներից և պայմանի վճիռներից Ս. Լուսաւորչից, որդիներից, թոռներից, մինչև Ս. Սահակ յունաբէն գրուած և մատանիներով կնքուած, մինչև Անանիա, և Անանիայից մինչև մեզ հայերէն, բոլորը 55 շրջագայական

նամակ էր . . .  Այդ նզովքներին նայելով յանձնում եմ 12 գաւառները՝ մի առ մի յիշելով՝ Սիւնեաց միտրոպոլիտից (52 երես-Փարիզի տպ.)։ 9 դասք եկեղեցու յիշելիս, կարգաւորում է այսպէս, 1) կաթուղիկոս որ է Պատրիարք. 2) արքեպիսկոպոսական աթոռ-Աղուանից. 3) միտրոպոլտական աթոռ-Տաթև, 4) առաջնորդ-եպիսկոպոսներ և ըստ կարգի։ Միտրոպոլիտները ըստ ընդհանուր եկեղեցական կանոնի ձեռնադրում էին իրանց շրջանում եպիսկոպոսներ, Օրբէլեանը վկայում է որ այդ իրաւունքը չդրուեց Սիւնեաց միտրոպոլիտներին, հապա «միայն բազմականաւն և խաչիւն մեծարեցին և նախաթոռ կոչեցին պատրեարքին», և եկեղեցիներում կաթուղիկոսի անունը չյիշել, այլ «զիւրն անուն» 148 երես։ Մինչև Օրբէլեանի ժամանակ միտրոպոլտութիւն՞դըժուար թէ եղած լինէր Սիւնիքում, եթէ Սիւնիքի հեռաւորութեան պատճառով Մայր-աթոռից, որ աստանդական էր, երբեմնակի Սիւնեաց եպիսկոպոսացուները գնացել են Աղուանից կաթուղիկոսներից-(Ամարաս կամ Գանձասար), ձեռնադրութիւն ստանալու, այդ դէպքերը եթէ առիթ տուած լինին Հայոց հայրապետներին՝ Սիւնեաց եպիսկոպոսներին իրանց կողմը գրաւելու նպատակաւ մեծարական տիտղոս տալ նրանց, կարող է եղած լինել, բայց թէ Սիւնիքի եկեղեցիներում կաթուղիկոսի անունը չյիշուելու պայմանով կամ կաթուղիկոսի հետ մի «թախթի» վրայ նստելու արտօնութիւնով, այդ դժուար թէ եղած լինի, քանի որ բացի Օրբէլեանից այդ մասին ոչ ոք ոչինչ չէ յիշում, (Տես ուխտանէս, Յովհաննէս կաթ. և Ստ. Օրբէլեան) բայց հաւաստի կարելի է ասել, որ Օրբէլեանին Կիլիկիայում թէ Հայոց թագաւորը և թէ կաթուղիկոսը շատ սիրով ընդունեցին իբրև Սիւնեաց մեծ իշխանի որդու և նրան ձեռնադրեցին եպիսկոպոս և շնորհեցին «պռաւտաւֆրաւնդէս) տիտղոսը և«կրկին թագիւ կարգեալ յաստիճան մետրապօլտութեան», այդ պէտք է ճիշտ համարել, քանի որ յետոյ էլ Օրբէլեանը բոլոր իւր թողած յիշատակարանների վրայ է լարձանագրած թողել է այդ տիտղոսը։ Ըստ Օրբէլեանի մետրապօլտական իրաւունքը կայ-

անում էր երկու բանում, 1) «բարձակից և սեղանակից կաթուղիկոսի աթոռով և բարձու 'ի միասին բազմել» և 2) զխաչանել նշանն զառաջեաւ կրել Հանապազ», բացի այս նա աւելացնում է և կաթուղիկոսի անուան յիշատակութիւնը եկեղեցում, կարծում եմ չափազանցութիւն է. (Ստ. Օրբ. իզ. գլ.)։ Յետագայ դարերում Սիւնեաց առաջնորդներն կոչւում էին ուղղակի եպիսկոպոս և եթէ մէկ մէկ Սիւնեաց միտրոպոլտական աթոռ էին յիշատակւում, այդ հիմնուած էր միայն Օրբելեանի գրութեան վրայ։ Իսկ ինչ վերաբերւում է Յովհաննէս պատմաբանի յիշած 3 միտրոպոլտական աթոռներին, այն ձևական է և յիշատակուած միմիայն 9 դասակարգը լրացնելու դիտմամբ, քանի որ Սեբաստիա, Մելիտինէ, Մարտիրոսաց քաղաքները բոլորովին Հայաստանից դուրս էին, համեմատաբար քիչ հայեր ունէին բնակիչ, և երրորդ հայոց պատմութեան ընթացքում ոչ մի նշանակութիւն չեն ունեցել թէ քաղաքական թէ եկեղեցական տեսակէտից, ուստի և հարկ չկար աննշան թեմերին միտրոպոլտական պատիւ յատկացնել։ Ճշմարիտ է, միտրոպոլտութիւն Մելիտինէի, Սեբաստիայի յիշւում է, բայց ոչ Հայոց կաթուղիկոսի ձեռքի տակ, այլ յունաց պատրիարքի, և նրանք համարւում էին յունական եկեղեցի, յունական մետրոպոլտութիւն, ինչպէս էր և Կեսարիայինը (տես Дѣянія всел. соборовъ IV ե. 265-268)։ Աղուանից կաթուղիկոսութիւնը երբ Ներսէս աշտարակեցու ջանքերով Ռուսաց պետութիւնը վերջացրեց 19-րդ դարու սկզբին և փոխադրեց Շուշի՝ ղարաբաղի թեմ կազմելով, կաթուղիկոսների յաջորդները անուանւում էին մետրոպոլիտներ 'ի պատիւ չքացեալ կաթուղիկոսութեան, օր. Բաղդասար մետրոպոլիտը կրում էր այդ տիտղոսը ցմահ, առանց որ և է արտաքոյ կարգի իրաւունքների, այլ անուանականապէս. յետոյ արդէն նշանակուած եպիսկոպոսները սոսկ առաջնորդ կոչուեցին։ Մեր պատմութեան մէջ միտրոպոլտութեան մասին այլ ևս չունենք առանձին գրաւոր փաստեր, միայն Ռուբենեան ժամանակ, երբ դժուար էր Հայոց եպիսկոպոսներին և իշխաններին գնալ

կիլիկիա կաթուղիկոսի ընտրութեան մասնակցելու, որոշուեց, առանց չորս աթոռի, այն է Տաթևի, Արտազի, Բջնոյ և Հաղպատի, կաթուղիկոսական ընտրութիւն չանել. չորս աթոռներին յատկացրած այդ իրաւունքը գործնական հետևանք չունեցաւ, և ապօրինաբար էր, քանի որ ընտրութիւնը համազգային էր և ամեն մի թեմ իրաւունք ունէր մասնակցելու այդ ընդհանուր գործին։

## 5) ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍ ԵՒ ԷԿԶԱՐԽ

Միտրոպոլիտներին շատ անգամ մեծարում էին արքեպիսկոպոս տիտղոսով, որ նշանակում է աւագ, մեծ եպիսկոպոս։ Աթանասը իւր նախորդին անուանում էր Աղէքսանդրիայի արքեպիսկոպոս, Եպիփանը նոյնպէս «սովորութեամբ հաստատուած է, որ Աղէքսանդրիայի արքեպիսկոպոսը իւր իշխանութեան տակ ունենայ ամբողջ Եգիպտոսը»։ Եփեսոսի ժողովում Կիւրեղ Աղէքսանդրացին և Կեղեստինոս պապը անուանւում էին արքեպիսկոպոս։ (Прав. собес. 1858 г.)։ Յուստինիանոսի 131 նովելլայով արքեպիսկոպոսութիւնը բարձր է համարւում միտրոպոլտութիւնից, «որ ա՛յն (Յուստինիան եպիսկոպոսի աթոռի մասին) լինի ոչ միայն միտրոպոլտութիւն, այլ և արքեպիսկոպոսութիւն»։ Արքեպիսկոպոսութիւն իբրև պատուաւոր տիտղոս կրում էին Պօլսոյ, Աղէքսանդրիայի, Անտիոքի պատրիարքները, շատ թեմակալ՛ ծեր և պատկառելի առաջնորդներ։ Արքեպիսկոպոս բառը հէնց առաջին պատմագրներից սկսած հայոց մէջ գործածութեան մէջ էր. ագաթանգեղոս ճիդ. գլխում գրում է «իսկ մեծ արքեպիսկոպոսն Գրիգորիոս՝ սուրբ ոգւովն իւրով Որստակեաւն և երևելի օգնականօքն ... շրջէր»։ Խորենացին-Գ. գլ. ծէ-պատմելով Սահակի յունաց մասի Հայաստան մտնելիս իրան վայել յարգանք չստանալուն պատճառով կայսեր և պատրիարքին արած գանգատը, գրում է, կայսրը հրամայեց ստորագրեալներին՝ պատուել Սահակին «հանգոյն արքեպիսկոպոսին Կեսարու»։ Զ-Է-րդ դարերում եկեղեցու

ինն դասի վէճի ժամանակ, Յովհաննէս պատմաբանը 9 դասը լրացնելու համար ասում է, երկրորդ դասն էին՝ արքեպիսկոպոսներ, որոնց աթոռներն էին Վրացը և Աղուանիցը. Օրբելեանը՝ երկրորդ դասը ընդունում է արքեպիսկոպոսներ, որոնք նստում էին Աղուանից աթոռի վրայ։ Էկզարխ տիտղոսը առաջացաւ այն ժամանակ երբ մի շրջանում զանազան պատճառներով միտրոպոլտական պատուով աթոռներ առաջացան, մեծ քաղաքի այսինքն մայրաքաղաքի միտրոպոլիտը միւսներից զատուելու համար կոչուեց էկզարխ։ Էկզարխներ համարուեցին մինչև պատրիարքութեան հաստատութիւնը, Պօլսինը, Եփեսոսինը, Անտիոքինը, Աղէքսանդրիայինը, և Նէոկեսարիայինը. վերջինիս համար ասուած է կառավարում էր կապադովկիան և «Գալաթիա, Պոնտոսը, Փոքր Հայքը, և մասամբ մեծ Հայաստանը, որի վրայ ձեռնադրեց գլխաւոր եպիսկոպոս» (Прав. Собес. 1858 г.)։ Նոյն տեղում գրուած է և հետևեալը «էկզարխների այդ անուան համապատասխան էր կաթուղիկոս տիտղոսը մի քանի աշխարհներում, ինչպէս Հայաստանում, Վրաստանում, Բուլղարիայում, Եթովպիայում, Բաբելոնում . . . Այդ կաթուղիկոսներից ոմանք անկախ էին իրանց եկեղեցիներում, ոմանք ստորադրւում էին պատրիարքներին, օր. Բաբելոնի կաթուղիկոսը Անտիոքի, Եթովպիայինը — Աղէքսանդրեայի»։ Brochardus monachus de Armenis ef Feorqianis. (Прав. Собес. 1858)։ Էկզարխները աւելի բարձր էին համարւում քան միտրոպոլիտները, Երուսաղէմի միտրոպոլիտը ենթարկւում էր և դատւում Կեսարիայի էկզարխից, Պօլսի միտրոպոլիտները ձեռնադրւում էին Իրակլեայի էկզարխից; այս տիտղոսը վերացաւ պատրիարքութեան հաստատութեամբ։ Հայոց մէջ էկզարխ տիտղոս չի եղել, այլ սկզբից՝ հէնց կաթուղիկոս բառը մտել է մեր մէջ և ցայսօր մնացել է նոյն գործածութեամբ, նոյն բովանդակութեամբ։

### 6) ՊԱՏՐԻԱՐՔՈՒԹԻՒՆՆԵՐ

Քաղաքական և եկեղեցական կեանքի բարդութեանց և

փոփոխութեանց հետեւանքը եղաւ էկզարխների իրաւունքի և նշանակութեան բարձրացումն, եկեղեցիների վէճերը առաջացրին և նրանց կառավարչական իրաւունքների և պարտքերի անկախութիւն, միտրոպոլիտների նշանակութիւնը նըսեմացաւ և հաստատուեցին ու առանձին դիրք ստացան նոր առաջ եկող նուիրապետական աստիճաններ, պատրիարքութիւններ, էկզարխութեանց փոխարէն։ Պատրիարք նշանակում է նահապետ, ցեղապետ, ժողովրդապետ։ Հրէաների նախահայրերը կոչւում էին պատրիարքներ։ Հրէաները ունէին երկու պատրիարք Երուսաղէմի կործանումից յետոյ Դաւիթից սկսած յաջորդաբար միմեանց աւանդելով այդ պատրիարքական իրաւունքը, նրանք նստում էին մէկը Բաբելոնում, միւսը Տիբերիադում, վերջինը և հսկում էր հռոմէական կայսրութեան մէջ ցրուած հրէաների վրայ; սրանք շարունակուեցին մինչև Ե. դարու կէսը և ապա բոլորովին կորցնելով իրանց նշանակութիւնը, ոչնչացան։ (Прав. Собес. 1858 г.)։ Յերոնիմոսը ասում է, որ Դ. դարու վերջին՝ մոնտանիստները ունէին պատրիարք տիտղոսով գլխաւոր եպիսկոպոսներ, որոնք հովւում էին իրանց թեմերի հօտը, եկեղեցիները։ Նախկին եկեղեցում գործածութեան մէջ թէ և պատահում էր պատրիարք բառը, բայց ոչ նուիրապետական աստիճանի նշանակութիւն, այլ բուն մտքով, իբրև մեծ, աւագ, պատկառելի անձնաւորութիւն։ Գրիգոր Աստուածաբանը իւր հօրը՝ Գրիգոր Նազիանզացուն անուանում է պատրիարք, նա նոյպէս և պատրիարք էր անուանում Պօլսի տիեզերական ժողովի եպիսկոպոսներին, որոնք արիութեամբ կռւում էին հերետիկոսների դէմ։ Թէոդոսի փոքրը 449 թ. Հռոմի Լևոն եպիսկոպոսին մի գրութեան մէջ պատրիարք է անուանում։ Առաջին անգամ Սոկրատ Ե. գլ. յիշում է պատրիարքների մասին իբրև բարձր և նոր իրաւունքներ վայելող նուիրապետների, հաստատութիւն գտած իբր թէ Պօլսոյ բ. տիեզ. ժողովի կողմից, թէև այդպիսի մեծ իրաւունքներ նոյն ժողովում չէին տուած. ոմանք էլ հաստատում են որ այդ տիտղոսը և իրաւունքները Նիկիայի ժողո-

վում են որոշել, բայց այնտեղ էլ այդքան մեծ իրաւունք-ներ չեն յատկացրել: Հներում այդպիսի մեծ իրաւունքներ ունէր Աղէքսանդրիայի արքեպիսկոպոսը, որը շատ միտրոպո-լիտներ ունէր ձեռքի տակ, ձեռնադրութիւններ էր կատա-րում, դատի ենթարկում եւայլն եւայլն. բայց պատրիարք չէր կոչւում: Առաջին անգամ պաշտօնապէս որոշում եղաւ պատրիարքների իրաւունքների մասին Քաղկեդոնի ժողով-ում, զանազան վէճերի, խռովութիւնների առաջն առնելու նպատակաւ նրանց դրուեցաւ լայն իրաւունքներ. պատրի-արք բառը արքեպիսկոպոս տիտղոսի հետ մտաւ ժողովի արձանագրութիւնների մէջ, թէեւ կանոնների մէջ այդ ա-նունը չի յիշւում: Յուստինիանոսի 123 նովելլայով հաստա-տուեց եւ քաղաքացիական իրաւունքի սահմանի մէջ մտաւ պատրիարքի լիազօրական գլխաւորութիւնը եկեղեցու վար-չական շրջանում: «Եթէ միտրոպոլիտի վրայ բողոք լինի կամ եպիսկոպոսից, կամ կղերից, կամ ուրիշ մէկից, այն ժամա-նակ պիտի դատի նրաց մօտիկ պատրիարքը». «ով կհակա-ռակի միտրոպոլիտին, եպիսկոպոսին, այն ժամանակ դատը վարելը ընկնում է արքեպիսկոպոսին կամ շրջանի պատրի-արքին, եւ նա կանոնով եւ օրէնքով վերջնականապէս կվճ-ռի գործը»: Զ. տիեզերական ժողովը 36 կանոնով որոշեց պատրիարքութիւնների տեղերը եւ կարգը. առաջին համար-ուեց Պօլսոյ պատրիարքը, երկրորդը՝ Աղէքսանդրիայինը, երրորդը՝ Անտիոքինը, չորրորդը՝ Երուսաղէմինը. Հռոմի ե-պիսկոպոսը վաղուց յատկացրել էր իրան պապ տիտղոսը եւ այդպէս էլ պահեց միշտ, իրան համարելով առաջին պատրի-արք աշխարհում: Պօլսոյ պատրիարքը ստացաւ Թրակիա, Պոնդոս եւ Ասիա, այնպէս որ 9-րդ դարում ունէր 80 միտ-րոպոլտութիւն, 39 արքեպիսկոպոսութիւն: Աղէքսանդրեայի պատրիարքը ունէր 10 թեմ, 100 քաղաքի եպիսկոպոսներով: Անտիոքինը 12 միտրոպոլտութիւն ունէր, Իսաւրեայից եւ Կիլիկեայից մինչեւ Արաբիա, բացի Պաղեստինից: Երուսաղէմի պատրիարքը ունէր 3 թեմ, 58 քաղաքի եպիսկոպոսներով:

Պատրիարքները ունէին այն բոլոր իրաւունքները, ինչ

որ ունէին նախկին միտրոպոլիտները և էկզարխները, և բացի դրանից նրանց իրաւունքների սահմանը շատ լայնացաւ. 1) Նոքա էին ընդհանուր ժողով հրաւիրում և արձակում. 2) Նոքա էին միտրոպոլիտներ ձեռնադրում, նշանակում, դատում և պատժում. 3) Նրանց վճիռը վերջնական էր և բողոքման չէր ենթարկւում: 4) Խաչ հաստատելով որ և է թեմի եկեղեցում, այն եկեղեցին և վանքը ձգել իւր անմիջական հսկողութեան տակ, անկախ թեմի կառավարչից. 5) Կանոններ հրատարակել եկեղեցու համար, բացատրել զանազան անորոշ կարգեր և մեկնութիւններ տալ զանազան դէպքերի և հանգամանքների համեմատ եկեղեցական սահմանադրութիւնների վերաբերմամբ: 6) Եկեղեցում անուան յիշատակութիւն: Այդ իրաւունքների հետ դրւում էր նրանց և պարտաւորութիւններ: 1) Եկեղեցու վերաբերմամբ նոր բան մտցնել չէին կարող տիեզերական ժողովի. 2) Իւր շրջանում բոլոր կարգադրութիւնները պիտի անէր եպիսկոպոսական ժողովով. 3) միտրոպոլիտի նշանակումը և արձակումը լինի եպիսկոպոսների խորհրդով:

Պատրիարքների մէջ առաջին տեղերից մէկը բռնում էր Հռոմայ պապը, ոչ իբրև ընդհանուր գլուխ, այլ մէկը պատրիարքներից որը պատւում էր իբրև մայրաքաղաքի եպիսկոպոս ըստ աւանդական կարգի: Դ. և Զ. ժողովներում Պօլսի պատրիարքը ստացաւ նոյն իրաւունքները, ինչ որ Հռոմինը, միայն առաջին տեղը վերապահուեց պապին: Վեցերորդ դարում առաջին անգամ 512 թուին, Պօլսոյ ժողովում Յովհան ը. պատրիարքին յատկացրին «տիեզերական» տիտղոսը: Յուստինիանոսը նոյնպէս շարունակեց անուանել պատրիարքին այդ տիտղոսով: Հռոմի պապ Գրիգորը հակառակ այդ տիտղոսին, սկսեց անուանել «Ծառայ Ծառայից Աստծոյ». տիտղոսները ի հարկէ գործնական կեանքում ոչ մի նշանակութիւն չունեցան, պապը իբրև միահեծան պետ սկսեց բոլորին ենթարկել իրան, իսկ պօլսոյ իրաւասական սահմանը մնաց իւր շրջանում չանցնելով միւս պատրիարքների վրայ:—(Прав. Собес. 1858 г.):

## Դ) ՀԱՅՈՑ ՀԱՅՐԱՊԵՏՈՒԹԻՒՆԸ

*Ինչ իրաւունքներ որ ունէին Ե. Զ. դարերից սկսած պատրիարքները, նոյն իրաւունքները արդէն յատկացրել էին Դ դարու սկզբից Հայոց կաթուղիկոսներին Լուսաւորչից ըսկսած: Հայոց եկեղեցու վարչական ձևը շատ նման էր Եգիպտոսի եկեղեցու կառավարութեան, դեռ շատ առաջ պատրիարքութեան հաստատութիւնից, Աղէքսանդրիայի արքեպիսկոպոսը ունէր պատրիարքական իրաւունք, նա միակ ձեռնադրում էր առանց եպիսկոպոսների մասնակցութեան թէ միտրոպոլիտ թէ եպիսկոպոս, այն ինչ նոյն ժամանակում միտրոպոլիտ ձեռնադրում էին մի քանի եպիսկոպոսներ, նրանք ինքեանք դատում և մինչև իսկ ձեռնադրում էին եպիսկոպոսներ և պատժում (260-ին Դիոնեսիոսը և 304-ին Պետրոսը). Համարեա նոյն ձևով եկեղեցու Կառավարութիւն մտաւ 300 թուից և Հայոց մէջ: Հէնց սկզբից Հայոց կաթուղիկոսը ոչ միայն ձեռնադրում էր եպիսկոպոսներ առաջնորդութեան համար, այլ և վրաց և Աղուանից կաթուղիկոսներին, նոյն իսկ Լուսաւորիչ իւր ժառանգին Հայոց կաթուղիկոս ձեռնադրեց: Թէ ինչպէս էր լինում կաթուղիկոսի ընտրութիւն և ձեռնադրութիւնը փորձենք տեսնել:*

## ԸՆՏՐՈՒԹԻՒՆ ԵՒ ՁԵՌՆԱԴՐՈՒԹԻՒՆ

*Առաջին կաթուղիկոսի՝ այն է Գրիգոր Լուսաւորչի թէ ընտրութեան և թէ ձեռնադրութեան համար ունենք լիուլի տեղեկութիւն՝ ագաթանգեղոսի պատմութեան մէջ յիշուած: Լուսաւորչին հոգևոր պետ ընտրելու համար Տրդատ հրամայեց բոլոր դասակարգի անձանց կանչել ժողովի. «իսկ թագաւորն Տրդատիոս հանդերձ միաբանութեամբ կնաւ իւրով Աշխէն տիկնաւ, և քերբ Խոսրովի դխտով, հրաման ետ ի ժողով կոչել միաբանութեամբ ամենայն զօրաց իւրոց: Եւ վաղվաղակի հասանէին ի ժամադիրն ի կողմանց ըստ հրամանին՝ յԱյրարատ գաւառ ՚ի Վաղարշապատ քաղաքն:*

Քանզի և թագաւորն չու արարեալ անդր հասանէր։ Եւ կուտեցան զօրքն ամենայն և մեծամեծք և կուսակալք, գաւառակալք, պատուաւորք, պատուականք, զօրավարք, պետք և իշխանք, նախարարք և ազատք, դատաւորք և զօրագլուխք, հասեալ կային առաջի թագաւորին . . . . . Եկայք, ասէ (թագաւորն), ճեպեցուք՝ զայս զառաջնորդ կենաց մերոց տուեալ մեզ յԱստուծոյ զԳրիգոր՝ հովիւ կացուցանել» Ագաթ. Ճժա։ Թէ ինչո՞ւ Գրիգորին ուղարկեցին Կեսարիա և ո՛չ ուրիշ տեղ, օրինակ Եդեսեա, թէև Արտազում էլ ըստ աւանդութեան եպիսկոպոս կար, բայց իսկապէս կա՞ր թէ ոչ, յայտնի չէ, բայց Եդիսեան յայտնի աթոռ էր, մեծ դպրոց ունէր, հայ պատանիներ շատ էին ուղարկւում այնտեղ սովորելու, մինչև իսկ Փարպեցին այդ մասին յիշում է, պատճառն այն էր, առաջին որ Գրիգորը ընտանիքով ապրում էր Կեսարիայում, 2) կրթութիւնը ստացել էր այնտեղ, և 3) գուցէ թէ իբրև Կեսարիայի ծխական-ժառանգաւոր իրաւունք չունենար ուրիշ թեմակալից ձեռնադրութիւն ստանալ, մանաւանդ որ Կեսարիայի թեմը՝ որ կոչւում էր նոյնպէս Պոնտոսի թեմ, Նէոկեսարիայի արքեպիսկոպոսութիւն, իբրև յունական աթոռ մեծ անուն ունենար քան Եդիսիայինը։ Գրիգոր գնում է հասնում Կեսարիա և ձեռնադրւում է եպիսկոպոս-կաթուղիկոս Հայոց. այն ժամանակ օծման կարգը դեռ ևս մտած չէր երևում, ինչպէս երևում է պատմագրի խօսքից. «Եւ եղեալ ժողով բազում եպիսկոպոսաց 'ի քաղաքն Կեսարացւոց՝ զի ձեռնադրեսցեն զսուրբն Գրիգորիոս . . . սրբով աւետարանաւն եդին 'ի վերայ գձեռս ժողովք եպիսկոպոսացն սրբոց և գըլխաւորն Ղևոնդիոս, զի նա առցէ իշխանութիւն յերկինս և յերկրի, առեալ զփականս արքայութեան երկնից»։ Ձեռնադրութեան գլխի մէջ էլ ասուեցաւ, որ եպիսկոպոսի, քահանայի նախնական ձեռնադրութիւնը լինում էր մի այլ աւետարանով, աղօթքով և ձեռքը գլխին դնելով։ Նշանաւոր է Ղևոնդիոսի տուած թուղթը, որի մէջ Գրիգորի եպիսկոպոսութիւնը համարում է «նորոգեալ քահանայապետութիւն

ձերոյդ նահանգիդ» այս ձեւով «Եւ հաստատեալ կացցէ վկայութիւն ի մէջ երկուց կողմանցս, զի պարգեւաբաշխութիւն նորոգեալ քահանայապետութեանդ ձերոյդ նահանգիդ, առ 'ի մէնջ կացցէ անշարժ՝ յեկեղեցւոյ Կեսարու» . . . որ նշանակում է, թէ արդէն Թադէոսով և Բարդուղիմէոսով Հայաստանը քահանայապետութիւն է ստացել, իսկ այժմ Կեսարիայի ձեռնադրութեամբ նորոգւում է այդ քահանայապետութիւնը (տես «Նախալուսաւորչեան եկեղեցի» գլուխը)։ Տրդատի հաստատած ձեւը, համազգային կաթուղիկոսական ընտրութիւնը շարունակուեց նրանից յետոյ է. Բիւզանդ պատմելով Տիրանի ժամանակ Յուսիկի ընտրութեան մասին, ասում է «Յայնժամ խորհուրդ արարեալ թագաւորին և իշխանացն, և համօրէն իսկ աշխարհին, թէ զո՞ արժանի այնմ իմիք գտանիցեն». Զահակի ընտրութեան ժամանակ. «Ապա յայնմ ժամանակի միաբան խորհեցան աշխարհօրէն խորհուրդ եթէ ում պարտ իցէ զհայրապետութեանն զկաթուղիկոսութիւնն ունել»։ Ներսէս մեծի ընտրութիւնը այսպէս է նկարագրում Բիւզանդ-57 երես. «Ապա ի մի ժողով կուտեցան առ արքայն Արշակ մեծամեծք նահապետք ազգաց ազգաց, տոհմաց տոհմաց, գնդից և դրօշուց տեարք, ամենայն սատրապք, նախարարք և ազատք, պետք և իշխանք, զօրավարք և սահմանապահք, 'ի մի հաւանութիւն միաբանական խորհուրդք, զի եկեսցեն տեսցեն թէ ո՞ւմ արժան իցէ նստել յաթոռ հայրապետութեան»։ Եւ ընդհակառակն Արշակ երբ բարկացած հրամայեց բոլոր եպիսկոպոսներին ժողով կազմել Չոնակին կաթուղիկոս ձեռնադրելու, ոչ ոք չեկաւ, բացի երկու սորուկ եպիսկոպոսից։ Ե. դարում ընտրութիւնը լինում էր նոյն կարգաւ. Սեբէոս ասում է Աբրահամ Ռշտունեաց եպիսկոպոսի ընտրութեան և ձեռնադրութեան մասին. Սմբատ մարզպան «փութացաւ խնդրել յարքայէն հրաման և հասեալ հրաման յերկիր իւր, առնէ խնդիր վասն աթոռոյն մեծի, զի կարգեսցին ի վերայ նորա տեսուչ խնամող եկեղեցւոյն և առաջնորդ փրկութեան իւրոյ, և նստուցին զԱբրահամ զՌշտունեաց եպիսկոպոսն

յաթոռ հայրապետութեան»․ Ուխտանէս 60 երեսում ընտրութեան համար այսպէս է գրում․ «Գրէ Սմբատ վրկան մարզպան հրովարտակ հանդերձ իշխանօք աշխարհին և նախարարօք Հայոց՝ գալ ժողովել . . . ՚ի Դուին․ իսկ իբրև եկին ժողովեցան առհասարակ ամենեքեան՝ եպիսկոպոսք և վանաց երիցունք և գեղջ քահանայք և իշխանք և շինականք . . . . . »։ Վարազտիրոց մարզպանը «իբրև եկն ՚ի Հայս . . . . . խորհուրդ առնէր ընդ ամենեցուն տեսանել զոմն արժանաւոր։ Յայնժամ առաջադրութեամբ Թէոդորոսի Ռշտունեաց տեառն, ընտրեցին զորն անապատական՝ որում անունն էր Քրիստափոր»—(Սեբէոս-64, 65 երես)։ 9-րդ դարում ընտրութեան ձևի համար գրում է Յովհաննէս պատմաբանը-Մաշտոցի կաթուղիկոսութեան վերաբերմամբ այսպէս․ «ընդ որ հաճեալ հաւանեալ թագաւորն և գահամեծար իշխանքն և պատուական արք ազարտք ընդ գեղեցկայարմար խորհրդական գնացս նորա՝ կացուցին զնա յաթոռ Ս․ լուսաւորչին Գրիգորի» (Յով․ 100 երես)։

Ստեփաննոս Օրբելեան պատմելով Վահան Սիւնեաց եպիսկոպոսի կաթուղիկոսական ձեռնադրութիւնը տասերորդ դարու վերջին (968 թ․) ասում է «Ապա ամենայն ժողովն ընտրեալ զՎահան վասն առաւել սրբութեանն և իմաստութեանն՝ դնեն ձեռն ի վերայ բազմութիւն եպիսկոպոսաց և օծանին զնա կաթուղիկոս հայոց». (211 երես)։

Կաթուղիկոսական ընտրութեան այդ ձևը յարատևեց մինչև այժմ և մտաւ Ռուսաց և Տաճկաց պետական օրէնքների մէջ 1836-ի և 1861-ի սահմանադրութեանց մէջ, տես Ա․ Գիրք, 677, 726—730, 761 երես)։

Արդեօ՞ք կաթուղիկոսական առանձին ձեռնադրութիւն բացի եպիսկոպոսականից կա՞ր առաջուց՝ հէնց Լուսաւորչից սկսած, թէ յետոյ մտաւ այդ սովորութիւնը, նոյնպէս և օծումն սկզբից կա՞ր, թէ՞ յետոյ սկսուեց գործածութեան մէջ մտնել։

Լուսաւորչի ժամանակ եպիսկոպոսական ձեռնադրութիւն էր միմիայն, ձեռնադրուած եպիսկոպոսը կաթուղիկոս-

եպիսկոպոսապետ ընտրուելիս չէր ձեռնադրւում երրորդ անգամ, այլ ստանում էր այն բոլոր իրաւունքները և արտօնութիւնները, որոնք յատկացնում էին այդ բարձր աստիճանին։ Ագաթանգեղոս ճիդ. գլխում ասում է, որ Տրդատ իշխաններով խնդրեցին Լուսաւորչից ձեռնադրել որդուն իւր փոխարէն կաթուղիկոս «զԱրստակէս, զոր ձեռնադրեաց յեպիսկոպոսութիւն փոխանակ իւր . . . . . և յետ նորա կալաւ զտեղի հայրենեացն, անդէն նստաւ յաթոռ կաթուղիկոսութեանն Հայոց»։ Մինչև եօթերորդ դարու սկիզբը այդ դրութիւնը թէ շարունակուել է թէ չէ, տեղեկութիւն չունենք, միայն Սեբէոս, որ Է-դարու պատմիչ է, Ոշտունեաց Աբրահամ եպիսկոպոսի ընտրութեան մասին ասում է, 607-615 թուականներում, որ Ոշտունեաց Աբրահամ եպիսկոպոսին ընտրեցին կաթուղիկոս, բայց ձեռնադրեցի՞ն կաթուղիկոսական ձեռնադրութեամբ թէ ոչ, անորոշ է. Սմբատ մարզպան «փութացաւ խնդրել յարքայէն հրաման և հասեալ հրաման յերկիր իւր, առնէ խնդիր վասն աթոռոյն մեծի, զի կարգեսցեն ի վերայ նորա տեսուչ խնամակալ եկեղեցւոյն և առաջնորդ փրկութեան իւրոյ; . . . . Եւ նստուցին զԱբրահամ. զՌշտունեաց եպիսկոպոս յաթոռ հայրապետութեան». 102 երես։ Նոյն Սեբէոս՝ Ներսէս շինողի ընտրութեան համար ասում է. «մինչև եհաս յեպիսկոպոսութիւն աշխարհին, և անտի կոչեցաւ յաթոռ կաթուղիկոսութեան»։ Իսկ Ուխտանէս, որ Ժ-դարու պատմիչ է, պատմում է Աբրահամի ընտրութիւնը և պարզ ասում է որ եպիսկոպոսներին ձեռնադրեցին Ռշտունեաց Աբրահամ եպիսկոպոսին Հայոց կաթուղիկոս. «և ձեռնադրեցին զկնի սրբոյ Զատկին յաւուր կիւրակէի՝ յելս ամսոյն նաւասարդի . . . . Եւ Մանասէ եպիսկոպոս, և Քրիստափոր եպիսկոպոս, այլ եպիսկոպոսօք հանդերձ ձեռնադրեցին զԱբրահամ մեծաւ թախանձանօք և բազում աղաչանօք . . . » (60 երես)։

Մովսէս կաղականդուացին, Է-րդ դարու պատմիչը, նոյնպէս վկայում է որ Աբրահամ եպիսկոպոսը ձեռնադրուեց կաթուղիկոս-«եբարձ նզովիւք զժողովն Քաղկեդոնի և

ապա ձեռնադրեցաւ»․ 213 երես։ Որովհետև Աբրահամ եպիսկոպոսը կաթուղիկոսութիւն արաւ 607-615 թուականներին, ուստի և մենք ուշադրութիւն պիտի ընծայենք նոյն դարու պատմիչներ Սեբէոսին և Մովսէսին քան յետնորդ դարերի պատմիչներին։ Ժամանակակից պատմիչներից Սեբէոսը անորոշ է խօսում ձեռնադրութեան մասին, իսկ Մովսէսը որոշ ասում է որ եպիսկոպոսին ձեռնադրեցին կաթուղիկոս․ իսկ Ուխտանէսը պատմում է մինչև անգամ որ շատ եպիսկոպոսներ ձեռնադրեցին միասին Աբրահամին կաթուղիղիկոս։ Այժմ ինչ եզրակացութեան գանք, ընդունենք որ եօթերորդ դարու սկզբին արդէն Հայոց մէջ մտած էր և երրորդ ձեռնադրութիւն, այն է կաթուղիկոսական թէ ոչ․ այս հարցը աւելի կանոնական գուցէ համարուի քան իրաւաբանական և այդ հիմամբ ոչ շատ ուշադրութեան արժանի, քանի որ եպիսկոպոսը կաթուղիկոս դառնալուց յետոյ, լինէր նորից ձեռնադրուած, կամ չձեռնադրուած ինչպէս Լուսաւորչից սկսած շատերը, միևնոյն իրաւունքներն էին վայելում իբրև կաթուղիկոս երկրի մէջ, բայց որովհետև Ե․ Զ․ դարերում սկսուեց վէճ պատրիարքական իրաւունքների և 9 դասակարգութեան վերաբերմամբ, մեծ իրաւունքներ յատկացնելով աւագ աթոռներին և ստորադրուած դրութիւն ստեղծելով միւս աթոռների համար, ինչպէս և Հայոց, Հայոց նուիրապետները անկախ եկեղեցի հրատարակելով Հայոցը, սկիզբը համարելով ոչ Լուսաւորիչ միայն, այլ և Թադէոս և Բարդուղիմէոս, և 9 դասակարգը մտցնելով Հայոց եկեղեցու մէջ, կաթուղիկոսին համարելով համապատիւ «տիեզերական» Պօլսոյ պատրիարքին, երկրորդ դասը համարելով վրաց և Աղուանից կաթուղիկոսներին իբրև արքեպիսկոպոսներ և այլն և այլն․ մնացած դասերն էլ լրացնելով, կամեցան մրցել ընդհանուր եկեղեցու մէջ առաջացած նոր նուիրապետական աստիճանի հետ-այն է պատրիարքութեան, և մտցրին այդ նպատակաւ ըստ Հին Ուխտի քահանայապետական ձեռնադրութեան՝ նոր կաթուղիկոսական ձեռնադրութիւն լիակատար իրաւունքներով։ Եւ Աբրհամի ձեռ-

նագրութիւնը ժամանակակից է այդ վէճերին, ուստի և դժուար չէ պնդել, որ Մովսէսի վկայութիւնը, նոյնպէս և Ուխտանէսինը հաւաստի է և կաթուղիկոսական ձեռնադրութիւնը մտած պիտի լինի եթէ ոչ 600 թուից առաջ, գոնէ այդ ժամանակներում։

Արդեօք ձեռնադրութեան հետ կաթուղիկոսական օծումն կա՞ր, թէ այդ օծումն յետոյ մտաւ սովորութեան մէջ։

Օծման սովորութիւնը կար ոչ միայն հրէաների, այլ և կռապաշտ ազգերի մէջ։ Եգիպտոսի փարաւոնների գլխին թագ դնելիս քրմապետները իւղ (елей) էին ածում գլխին։ Պարսից թագաւորներն կարդում էին տաճարում և սուրբ ջրով լուացւում։ Հրէից մէջ յայտնի է Դաւթի օծումն (Սամուէլ)։ Քրիստոնէութիւնը մտնելուց յետոյ Լևոն մեծը 457-ին պսակուեց թագով. Անաստասը 491-ին պսակուեց թագաւոր պատրիարքի ձեռքով։ Օծման կարգի սկիզբը անյայտ է և անորոշ. ենթադրւում է որ Թէոդորոս մեծը օծուեց 518-ին. Յովհաննէս պատրիարքը գրում է Որմիզդ պապին, որ նա իջեցրեց շնորհաց եղջիւրը Յուստինիանոսի գլխին, որ Աստծոյ ողորմութիւնը իջնի նրայ վրայ. ժ. դարում այդ մասին վկայութիւններ կային։ («Странникъ» 1883 г. 184 երես)։ Արդեօ՞ք կայսերական օծման հետ միասին մտաւ ձեռնադրութեան մէջ օծման կարգը, կամ թէ առաջ, կամ յետոյ կա՞ր արդեօք այդ սովորութիւնը։ Այդ խնդիրը անորոշ է, մենք ունենք հատուկտոր տեղեկութիւններ այդ մասին։ Ստեփաննոս Օրբէլեանը պատմում է Վահան կաթուղիկոսի ձեռնադրութիւնը և յիշում է որ օծեցին նրան կաթուղիկոս (968 թուից 969 թիւը). «Եւ թագաւորն Աշոտ՝ որդի Սմբատայ՝ առնէ ժողով եպիսկոպոսաց և հարց սրբոց 'ի թագաւորանիստ գՇիրակավան, կոչէ և գՎահան 'ի Սիւնեաց և հրամայէ ընտրել զմի ոք յեպիսկոպոսացն և կացուցանել յաթոռ հայրապետութեան Հայոց։ Ապա ամենայն ժողովոյն ընտրեալ գՎահան վասն առաւելսրբութեանն և իմաստութեանն՝ դնեն ձեռն 'ի վերայ բազմութիւն եպիսկոպոսացն և օծանեն զնա կաթուղիկոս Հայոց». 211 երես։ Յովհան-

նէս պատմաբանը (899 – 931) պատմում է Բագրատունեաց առաջին թագաւորի օծումն Գէորգ կաթուղիկոսի ձեռամբ 858 թուականներին. «կոչեցաւ ապա և անդ մեծ հայրապետն Գէորգ և պճնազարդ և պճոգեւոր օրհնութեանցն գովութիւնս աստուածային ի վերայ կատարեալ փոխանակ օծման սրուակի իւղոյն՝ պսակեն զնա թագաւոր 'ի վերայ Ասքանազեան ազին»։

Ալիշան՝ շնորհալու վրայ խօսելով ասում է, որ ձեռնադրութեան ժամանակ օծումն մտցնելու կարգը արաւ Շնորհալին կամ իւր եղբայրը. «շնորհալւոյ ինքներին կամ իր եղբօր հաւանութեամբ ըրած գլխաւոր նորութիւնն էր ձեռնադրութեանց մէջ միւռոնիւ օծումն ալ մտցնել . . . և թուի թէ դեռ չէր տարածուած նոր սովորութիւնն, կամ չէր լսուած ի լատինաց». 452 երես։ Նոյն գրքի 184 երեսում ասում է, որ Մխիթար կաթուղիկոսը 1343-ին պապի անունով գրած նամակում յիշում է, որ իրանից 200 տարի առաջ, «Հայք ընդունեցան 'ի լատինաց Ձեռնադրութեան նոր կարգը, և ուրիշ մալ աւելի որոշակի, թէ եպիսկոպոսի և քահանայի օծումը, զոր Հայք չունէին՝ Յունաց պէս, ընդունեցան 'ի լատինաց Ներսէսի կլայեցւոց ատեն»։

Ըստ Ալիշանի ձեռնադրութեամբ օծումն սկսուել է Հայոց մէջ Շնորհալու ժամանակից՝ այն է 1166-1173 թուականներին, կամ ըստ նոյն անձի վկայութեան ինչպէս երեւում է իբր թէ Մխիթար կաթուղիկոսի նամակից՝ 1143— թուին. եթէ հաւատանք Օրբելեանին, Վահան կաթուղիկոսը օծուեց 968 թուին, որ ասել է թէ օծման կարգը արդէն կար Ալիշանի ենթադրածից 200 տարի առաջ Հայոց եկեղեցու մէջ. իսկ եթէ մի քիչ ազատ ենթադրութիւն անենք, պիտի ասենք որ Հայոց կաթուղիկոսների օծումն սկսուել է Բագրատունեաց թագաւորների օծման հետ միասին, քանի որ թագաւոր և կաթուղիկոս համարւում էին համապատիւ և օծման արարողութիւնը հետեւումն Հին ուխտի քահանայապետի և Դաւթի օծումներին. առաջի թագաւորական օծումն եղաւ Հայոց մէջ 885 թուին ըստ օրինակի յունաց կայսերաց, որին և հետեւեց Հայոց կաթուղիկոսների օծումն։

## ԿԱԹՈՒՂԻԿՈՍԱԿԱՆ ՊԱՐՏՔ ԵՒ ԻՐԱՒՈՒՆՔ

Լուսաւորչից սկսած կաթուղիկոսական գահը մեծ պատուի և յարգանքի մէջ էր մինչև Ս. Սահակ, յետոյ թէև իւր դիրքը պահում էր և մեծ նշանակութիւն ունէր, բայց չէր կարող ուժի, ազդեցութեան և եկեղեցական նշանակութեան կողմից հաւասարուել նախկին շրջանին։ Առաջին՝ նրա համար, որ կաթուղիկոսական իշխանութիւնը շարունակութիւն էր քրմապետութեան, որը մեծ նշանակութիւն ունէր կռապաշտական շրջանում. քրմապետները ընտրւում էին թագաւորական ցեղից, Վահեվահեան տոհմից և թագաւորի հետ համապատիւ էին։ Երկրորդ՝ լուսաւորչի տոհմը իբրև պարթևական ցեղ, ազգակից էին հայոց թագաւորական տան և մինչև իսկ խնամութիւն էին անում թագաւորական տան հետ. «եւ արքայորդին Տիրան զդուստր իւր կնութիւն Յուսկանն որդւոյ Վրթանիսի». Բիւզ. 10 երես։ Այս երկու պայմանները Սահակից յետոյ չկային, Հայաստանի բնիկ թագաւորութիւնը վերջացաւ և աստանդական կաթուղիկոսական գահը իւր մեծ ոյժը գործադրելու միջոցներ չունէր։ Նախկին շրջանում Տրդատի օրերից սկսած կաթուղիկոսացու անձանց ուղարկում էին Կեսարիա ամենամեծ փառքով, ուղեկցութեամբ բոլոր մեծ իշխանների, արքունական ոսկիապատ կառքում նստած. «Եւ հանէին զԳրիգոր յոսկիապատ կառսն արքունեկան՝ սպիտակաձիգ ջորոյն» Ագաթ. ճժգ. «զի նըստուսցեն զերանելին Յուսիկ յարքունական կառսն» Բիւզ 26։ Կաթուղիկոսները յետ դառնալիս կեսարիայից, թագաւորները բոլոր նախարարների հետ գնում էին ընդ առաջ. «ապա իբրև լուաւ ինքն արքայն, ընդ առաջ ելանէր նմա 'ի դաշտն յայն կոյս գետոյն Տափերն կամրջի, ամենայն բանակօքն բազմութեամբք . . .» Բիւզ. 26։ Այս շրջանի համարեա բոլոր կաթուղիկոսները բառի բուն նշանակութեամբ Քրիստոսի փոխանորդներ էին, անվախ և աներկիւղ քարոզիչ, պաշտպան ընտանեկան սրբութեան, խիստ յանդիմանիչ թագաւորի և նախարարաց անառակ կեանքի, լկտի վարմանց և մինչև իսկ անառակ թագաւորին արգելող եկեղեցի մտնելու։

«Զի թէպէտ աւուրբք մանուկ էր (Յուսիկ), այլ զաւագութիւն ծերութեան խրատուն յինքեան ցուցանէր, զհայրենի գործ խրատուականն զաւաւելութիւն քաջութեան կատարէր« - իսկ երբ խիստ յանդիմանութիւններ ստանալուց յետոյ՝ Տիրան թագաւորը շարունակեց անառակ կեանքը, Յուսիկ կաթուղիկոսն եկեղեցու դուռը կտրեց և չթողեց թագաւորին ներս մտնել «Չես արժանի, հե՛մ գաս, մի՛ գար ՚ի ներքըս» Բիւզ. 28։

Կաթուղիկոսները սկզբից հէնց ձեռք բերին հետևեալ իրաւունքները, ա. Աշխարհի մէջ երկրորդ անձն համարուել թագաւորից յետոյ, իսկ եկեղեցու մէջ և եկեղեցական նուիրապետութեան մէջ առաջին անձնաւորութիւն։ Նա միայն իրաւունք ունէր ըստ Բիւզանդի թագաւորի հայը օրհնել «զի որ լիցին հայրապետք հայոց, նա դրանն արքունի իշխեսցէ զհացն օրհնել» 19. երես։ Նրանք էին արքունիքում թէ թագաւորին, թէ թագուհուն ճանապարհի բերում և նախատում անառակ կեանք վարելում. Վրթանէսը թագուհուն նախատեց պոռնկութեան համար, «վասն զի յանդիմանէր զնա (զթագուհին) սուրբն (վրթանէս) վասն գաղտնի շնութեան և կծծութեան բարոյից պոռնկութեան». (Բիւզ. 7)։ Ներսէս մեծը միշտ կշտամբում էր Արշակին և թոյլ չէր տալիս եկեղեցի մտնել. «Այլ սուրբն Ներսէս եպիսկոպոսապետն Հայոց հանապազօր ընդդիմացեալ թագաւորին պապայ, կշտամբէր և յանդիմանէր մեծաւ վկայութեամբ յանդիմանութեամբ, և վասն չարեաց նորա բազմաց ոչ համարձակէր նմա զսեամս եկեղեցւոյն կոխել, և ո՛չ մտանել նմա ՚ի ներքս» (Բիւզ. 180)։ Իսկ երբ Արշակ ծաղրում և ծիծաղում էր Ներսէսի խրատների և յանդիմանութիւնների համար, վերջինս անիծեց թագաւորին, նզովեց նրա արած գործերը և դուրս եկաւ ապարանքից. «աւերեսցին գործք ձեռաց քոց և մի՛ շինեսցեն» 95 Բիւզ.։ Թէ որքան մեծ էր կաթուղիկոսների յանդիմանական վերաբերմունքը դէպի վատ թագաւորի արարքը, մինչև իսկ երբ կաթուղիկոսը տեսնում էր հակաքրիստոնէական վարմունքը թագաւորի կողմից և չէր

խօսում, համարում էին սուրբերի սուրբ այդպիսի կաթուղիկոսին. «այլ փոխանակ Ներսէսի կացուցին զՉունակոմն անուն . . . և էր սուրբ 'ի սրբոց սրբութիւն». Բիւզ. 105։ Կաթուղիկոսները այդքան խիստ լինելով հանդերձ, ընդունում էին որ թագաւորն է առաջին անձն պետութեան մէջ, որ նա ամեն բան կարող է անել, ուստի և պէտք է ամեն լաւ բանի օրինակ լինի ժողովրդին. Ներսէս թագաւորին ասում է. «Այլ քեզ, ով թագաւոր, արժան էր իբրև զայր թագաւոր, յայտնի հրաման տալ և սպանանել, զի ով էր որ արգելոյր զքեզ, կամ ով էր որ պահէր զձեռն քո ի գործոյն, զոր ինչ կամէիր գործել». Բիւզ. 183։

բ. Կաթուղիկոսները իբրև գլուխ եկեղեցու իրաւունք ունեն տօներ սահմանելու, սրբերի յիշատակը տարեկան որոշ օր կատարելու հրաման տալու, մարտիրոսների և նահատակների յիշատակը տօնախմբելու կարգադրութիւն անելու, 'ի հարկէ խորհրդակցութեամբ և հանրական համաձայնութեամբ։

Լուսաւորիչ սահմանում է Յովհաննու Մկրտչի տօնը. «Եւ հրամայեաց կատարել անդ ամյամէ 'ի տեղւոյն. ժողովել ամենեցուն 'ի յիշատակ սրբոցն, որ օր եւթն էր սահմի ամսոյ, զի խնդութեամբ ժողովեալ, զօր տօնին խմբեսցեն». Ագ. ճզե։ «Եւ զյիշատակ վկայիցն բերելոց ժամադրեաց տօն մեծ հռչակել . . . . .Նաւասարդ աւուր։ Զի ժողովեալ ի յիշատակ մեծի երանելւոյն Յովհաննու, և սուրբ վկային Աստծոյ Աթանագինի, յայնմ աւուր խմբեսցի և 'ի նմին յաւանի»—Ագ. ճժթ։ Վրթանէս կաթուղիկոսը առաջինն եղաւ որ պատերազմի դաշտում ազգի համար մեռածներին եկեղեցական նահատակներ համարելով տօն սահմանեց, «Եւ ետ օրէնս ընդ աշխարհ մեծ քահանայապետն Վրթանէս, զնոցա առնել զյիշատակն ամյամէ, և որք փոխանակ աշխարհին փրկութեան մեռանիցին 'ի նմանութիւն նոցա, եդ կանոն՝ յիշել զնոսա առ սուրբ սեղանն Աստծոյ 'ի ժամ պատարագին . . . . . զի սոքա, 'ի նմանութիւն Յուդայի և Մարաթ-

եալ Մակաբէի անկան 'ի ճակատ պատերազմի» Բիւզ. 23։

գ. Հայոց թագաւորներին օծելու իրաւունքն պատկանում էր միմիայն Հայոց կաթուղիկոսներին. Բագրատունեաց առաջին թագաւորին օծելու համար հրաւիրուեց Գէորգ կաթուղիկոս, որը օծեց նաև նրա ժառանգ Սմբատին. «կոչեցաւ ապա և անդ մեծ հայրապետն Գէորգ և գհոգևոր օրհնութեանցն գովութիւնս ասաուածայինս ի վերայ կատարեալ փոխանակ օծման սրուակի իւղոյն՝ պսակեն զնա թագաւոր ի վերայ Ասքանազեան ազին». Յով. կաթ. 78 երես։ Երկրորդական՝ այսպէս ասած նահանգական թագաւորներին օծումն էր տեղական առաջնորդը եպիսկոպոսներով միասին. Սիւնեաց թագաւոր Վասակին օծեց Սիւնեաց առաջնորդ Գրիգոր եպիսկոպոսը. «Եւ պայազատէ զտէրութիւն նորա մանուկ որդին իւր Վասակ, որ և սա մեծահանդէս ժողովով և ազատակոյտ բազմութեամբ օծանի թագաւոր Սիւնեաց և Բաղաց ձեռամբ Տեառն Գրիգորի՝ Սիւնեաց եպիսկոպոսի։ Օրբ. ժե. Գլ.։

դ. Կաթուղիկոսին է յատկացրած Լուսաւորչից սկսած եպիսկոպոս ձեռնադրելու մեռոն եփելու իրաւունքը հայոց եկեղեցիների գործածութեան համար։ Տես Ա. գիրք 465, 690-694, 412, 428, 487, 521, 522, 679 երես)։

ե. Ազգային եկեղեցական ժողովներ հրաւիրել և ցրուելու իրաւունքը պատկանում է կաթուղիկոսին, այդ ժողովներում նախագահութիւն է անում կաթուղիկոսը՝ մինչև իսկ եթէ թագաւորը ներկայ էլ գտնուելու լինի ժողովում։ Մարմնաւոր իշխանութիւնը օգնում է և կարգը պահպանում։ Առանց կաթուղիկոսի ժողով կարող է լինել միմեայն երկու դէպքում, առաջին՝ երբ կաթուղիկոսը մեռած է՝ նոր ընտրութիւն է լինում, երկրորդ՝ երբ կաթուղիկոսին ազգային ժողովը դատի է ենթարկում հակաեկեղեցական գործողութիւնների պատճառով, այս երկու դէպքումն էլ նախագահութիւն է անում աւագագոյն եպիսկոպոսն, նախորդ դարերում Աղուանից կաթուղիկոսը, հրաւիրում էր

եպիսկոպոսական և իշխանական խառն ժողովները։ Տես Ա. գիրք 313, 319, 356, 366, 389, 390, 406, 426, 437, 438, 439, 441, 444, 449, 462, 465, երես)։

գ. Կաթուղիկոսի նախագահութեամբ և հրաւէրով եղած ազգային ժողովը վաւերական է այն դէպքում, երբ մասնակցում են ժողովին բոլոր հայոց նահանգների հոգևորական և աշխարհական պատգամաւորները, հակառակ դէպքում, երբ ժողովին մասնակցում են միմիայն հայոց թեմերի մի մասն, այդպիսի ժողովը անվաւեր է, հայոց եկեղեցին մերժում է այդպիսի ժողովը, եթէ գտնում է ժողովի վճիռները հակառակ հայոց դաւանութեան, եկեղեցու կարգերին և ժողովրդի կամքին։ Տես Ա. գիրք. 448, 462 երես։

է. Կաթուղիկոսն է հայոց եկեղեցու գերագոյն դատաւորը, վերջնական վճիռ կայացնողը՝ առանց բողոքման ենթարկուելու, նզովելու եպիսկոպոսներ, իշխաններ, նոյն իսկ հայոց թագաւորներին, երբ վճիռները եղել են ազգային ժողովով, կամ մասնաւոր դատերը՝ եպիսկոպոսների քննութեամբ և համաձայնութեամբ։ Տես Ա. գիրք. 437, 438, 439, 441, 444, 448, 449, 462 սրես)։

ը. Կաթուղիկոսն է օրէնսդրական մարմնի միակ գլուխը, որը կարող է կանոններ հրատարակել մարմնի հետ եկեղեցու բոլոր վարչական կազմի վերաբերեալ, բացատրել մութ կէտեր. դաւանաբանական ոչ մի փոփոխութիւն անել չի կարող առանց ազգային ժողովի. հրատարակուած կանոններն պիտի լինեն ընդհանուր ազգի կամքին և սովորութիւններին ոչ հակառակ։ Տես Ա. գիրք 448, 462 երես)։

թ. Կաթուղիկոսի անունը միակն է, որ ընդհանուր եկեղեցում յիշատակութեան իրաւունքն է վայելում։ Բացի կաթուղիկոսի անունից յիշւում է և տեղական առաջնորդի անունը, տեղական եկեղեցիներում։

ժ. Կաթուղիկոսն ենթարկւում է ամեն բանում, ամեն խնդրում միմիայն օրինաւոր ազգային-եկեղեցական ժողովի

իրաւասութեան, վճռին և կարգադրութեան։ Տես Ա. գիրք. 438, 441 երես։

ժա. Կաթուղիկոսական պաշտօնը յարատև է՝ ցմահ, և ոչ մի քմահաճոյքի պատճառով հեռացնել, կամ հեռանալ ինքը զահակալը չէ կարող, բացի մարմնական և մտաւոր անզօրութեան և ճգնութեան դէպքում, այն էլ միշտ ընդհանուր ազգի ցանկութեամբ։ Պատմութեան մէջ ունենք երկու դէպք՝ Եփրեմ կաթուղիկոսի հրաժարականը յոյժ զառամելութեան, տեսութեան պակասութեան պատճառով (տես ամենայն Հայոց կաթ. Երիցեանի, 602-610) և Լուսաւորչի ճգնութիւնը։ Լուսաւորչի կաթուղիկոսութիւնը եղաւ 301-325 թ. և Եփրեմին 1809- 831 թուականներին։ Ներսէս Ե. Եփրեմի հրաժարման հակառակ էր, գտնելով այդ հակառակ հայոց եկեղեցու ոգուն. «Գտանի պատրիարգացեալ ըստ կանոնաց Հայոց օծութեամբ և ոչ սոսկ կոչմամբ, և չունի զիրաւունս առանձնականս ոչ բնաւ զկանոնս ազգայինս վասն հրաժարեցուց անելոյ զանձն իւր առաջ քան զվախճան կենաց իւրոց առանց երևի վնասուց պատրիարգական աթոռոյս և մեծազօն գայթակղութանց և շփոթութեանց ամենայն ազգին Հայոց»․ «Ամենայն Հայոց կաթ. երեց.» 218 երես։

ժբ. Հայոց կաթուղիկոսին է յատկացրած «ամենայն Հայոց» տիտղոսը, Աղթամարի և Սսի կաթուղիկոսները իբրև թեմակալ առաջնորդների շրջան ունեցողներ՝ կոչւում են «տանն Կիլիկիոյ, և Աղթամարայ» կաթուղիկոսներ։ «Ամենայն Հայոց» տիտղոսը առաջին անգամ պատահում ենք Խաչիկ կաթուղիկոսի կոնդակում տասներորդ դարու վերջերում. (տես «Արարատ» 1867 թ.) որ առաջացած պիտի լինի կաթուղիկոսական աթոռի բաժանման ժամանակից-967-ից յետոյ։

ժգ. Կաթուղիկոսը վայելում է այն բոլոր արտօնութիւնները և արտաքին շուքն ու պատիւը, որը վայել է իւր բարձր կոչման. շաթիրներ, գաւազանակիր, պահնորդ խումբ ունենալ, արքայական կառքով շրջել «յոսկեապատ կառսն ար-

քունական» ևայլն ևայլն։

ժդ. Ամենայն Հայոց կաթուղիկոսին է պատկանում շնորհման և ներման իրաւունքը «ոչ յօրինակ այլոց» (дис-пензація) Հայոց եկեղեցու մէջ. պսակի ատիճաններում բացառիկ դէպքերում, ցմահ կարգալոյծ եղած քահանաների ներման խնդիրներում, և առ հասարակ վարչական-դատական դէպքերում պատիժը թեթևացնելու գործերում։

Թէ ինչ նշանակութիւն և իրաւունքներ ունի ամենայն Հայոց կաթուղիկոսը, և ինչ կարծիք ունէր Գէորգ-Դ. այդ կարևոր խնդրի մասին, երևում է նրա ներքին գործոց նախարարին պաշտօնական գրած թղթից 1870 թուի յունիսի 20-ին համարաւ 5 Ամսաթերթամի եկեղեցական գոյքի էջմիածնին պատկանելու հարցի նկատմամբ։

Խօսելով քրիստոնէութեան և կաթուղիկոսութեան սկզբնաւորութեան մասին, պատմելով Տրդատի ջանքերը Հայոց եկեղեցիները և վանքերը ապահովեցնելու նկատմամբ դրամով և կալուածներով, ասում է, «ճանաչէ զկալուածական և զեկեղեցական կառավարչական իրաւունս նորին, ճանաչէ ներկայացուցիչ կատարող և պաշտպան իրաւանցս այսոցիկ զկաթուղիկոսն իբրև զբարձր հոգևոր իշխանութիւն. աներկբայելի իմն է զի այս ամենայն յայժ օրինաւոր է հաստատեալ թագաւորական հրովարտակօք և հրամանագրովք»։ Բոլոր աշխարհի ծայրերում գտնուած վանքերը, եկեղեցիները կաթուղիկոսի ձեռքի տակին, կաթուղիկոսները-«զամենայն եկեղեցական գործս կառավարէին, ժողովս կազմէին, եկեղեցական կանոնս հաստատէին, եթէ պատժողականս և եթէ կառավարչականս որոշէին զիրաւասական յարաբերութիւնս եկեղեցւոյն առ քաղաքական և գլխապարտական օրինադրութիւնս, օծմամբ իւրեանց հաստատէին զընտրութիւն թագաւորաց, նոցա և եթէ յատկացեալ էր և է զիրաւունս ձեռնադրելոյ զբարձրաստիճան հոգևորականս և զեպիսկոպոսունս, և օրհնելոյ զսրբալոյս միւռօն, որք են ծայրագոյն իշխանութիւն՝ի Հայաստանեայց եկեղեցւոյ։ Ռուսաստան, Պարս-

կաստան, Տաճկաստան և այլն ամենայն տէրութիւնք, ըյոս այժմ բնակեալ են Հայք, ճանաչեն գլխակատար իրաւունս աթոռոյն Էջմիածնի և կաթուղիկոսաց, սակսկառավարելոյ զկարևոր գործս բովանդակ ազգին Հայոց նշանակելոյ զվիճակաւոր առաջնորդս, տալոյ զվճիռ շինութեան նորոյ եկեղեցեաց և վանօրէից, յորս զգալի է կարևորութիւն նոցին, և դարձեալ խափանելոյ զեկեղեցիս և վանօրայս, յորս ոչ գոյ ծուխ կամ միաբանութիւն, վաճառել զշինուածս եկեղեցեացն այնոցիկ և վանօրէից, նոյնպէս և զանշարժ կալուածս նոցին կամ նշանակել խնամակալս ի վերայ նորա»։

«Ի վերոյ գրելոյ անուն յայտնապէս երևի զի, ա, միէ օրինաւոր գլուխ առաքելական և Քրիստոսահիմն եկեղեցւոյ Հայաստանեայց, և կոչի կաթուղիկոս և է միանգամայն յաջորդ առաքելոցն սրբազանից Թադէոսի և Բարդուղիմէոսի և Գրիգորի Լուսաւորչի» իսկ աթոռը հաստատուած է Էջմիածնում Գ-րդ դարից սկսեալ։

«բ. ի տեսչութիւն Հայաստանեայց եկեղեցւոյ բովանդակին գլխաւորապէս քառակերպ կառավարութիւնք, այս է պատրիարքական կամ միտրոպոլտական, Արքեպիսկոպոսական, Եպիսկոպոսական և Տերունի»։

«Պատրիարքական թեմն ըստ ամենայնի հնազանդ է կաթուղիկոսական կարգադրութեանց», կաթուղիկոսն է առաջնորդներ նշանակում, «իսկ ընտրութիւնք նոցին յորպիսի իշխանութիւնս, որպէս և այլ ամենայն արքեպիսկոպոսաց և թեմակալաց պատկանին երբեմն կամաց և հաճութեանց ժողովրդեանն ենթարկելոյ ընդ իշխանութեամբ նոցին, իսկ հաստատութիւն ենթարկեալ է իրաւասութեան Ս. կաթուղիկոսին Էջմիածնի»։ Պատրիարքը «իբրև լիազօր փոխանորդ կաթուղիկոսի ս. Էջմիածնի և ներկայացուցիչ համայն Հայոց Տաճկաստանի ի Պօլիս առ բարձրագոյն դրան Օսմանեան կառավարութեան, ունի ստացեալ իրաւունս հաստատուել զառաջնորդս քաղաքաց որ ի Տաճկաստան»։

2) Արքեպիսկոպոսականն է՝ երեք գաւառների կառավարութեան շրջանը։

3) Եպիսկոպոսականն է՝ քաղաքի կառավարութիւնն իւր գաւառներով։

4) Տերունի՝ այն վիճակներն ու քաղաքներն են, որոնք պատկանում են կաթուղիկոսի անընդմիջական կառավարութեան, որոնք են՝ Ռուսաստանում՝ Երևան, Աստրախան Ղզլար և այլն. Տաճկաստանում-Եւդոկիա, Զմիւռնիա, և այլն. Պարսկաստանում՝ Դաւրէժ, Իսպահան, Հնդկաստանում՝ Մադրաս. Հոլանդիայում՝ Ամստերդամ, որանք կառավարում են կաթուղիկոսների փոխանորդների ձեռքով։

## Ե.) ՀԱՅՈՑ ՊԱՏՐԻԱՐՔՈՒԹԻՒՆՆԵՐԸ ԵՒ ԿԱԹՈՂԻԿՈՍՆԵՐԸ.

Ամենայն Հայոց կաթուղիկոսութեան սկզբնաւորութեան հետ համարեա թէ սկսուել է Երուսաղէմի պատրիարքութիւնը իւր նախնական առաջնորդական-վանահայրական բնաւորութեամբ մինչև իսկ ըստ աւանդութեան հէնց առաջին դարից։

Ըստ մեր աւանդական պատմութեան Աբգար թագաւորի կինը՝ Հեղինէն առաջինն դրսի թագուհիներից, գնացել է Երուսաղէմ, շինութիւններ կառուցել և այնտեղ բարեգործութեամբ և ճգնութեամբ անցրել իւր օրերը։ Այնպէս որ Երուսաղէմում օտարազգիներից առաջինն եղել են հայերը, որ Հեղինէ թագուհու նախաձեռնութեամբ հիմք են դրել Երուսաղէմում Հայոց վանքի շինութեան և միաբանութեան կազմութեան։ Ապա Տրդատի ժամանակ վանք շինուեց ս. Յակոբայ անունով և իւր կալուածներով իբրև ազգային սեպհականութիւն յանձնուեց Հայոց հոգևորականութեան կառավարելու։ Սկզբից Յակոբ տեառն եղբօրից սկսած նըստում էին Երուսաղէմում եպիսկոպոսներ իբրև կառավարիչներ ընդհանուր եկեղեցու առանց ազգի խտրութեան։ Քաղկեդոնի ժողովից յետոյ, երբ դաւանաբանական բաժանումն եղաւ, հայերը իրանց սովորութեան համաձայն շարունակեցին ազգային ծիսակատարութիւններով իրանց եկեղեցին վարել նաւ բամուծութիւններ չմտցնելով ծննդեան և զատկի տօների

պատճառով, այն ժամանակ սկսուեցին վէճեր Հայերի և յոյնաց Երուսաղէմի եպիսկոպոսի-պատրիարքի մէջ։ Այդ ժամանակ Զ. դարում, Հայոց նախարարները եօթը կենդինար (500) դրամ ուղարկեցին յունաց կայսեր, որ հրովարտակով պատուէր արձակի Երուսաղէմի պատրիարքի և յոյների վրայ, որ Հայերին և Ասորիններին այդ պատճառներով նեղութիւն չտան և սիրով վարուեն։ 637-ին, Արաբացոց ժամանակ Հայոց նախարարները դիմեցին Արաբացի իշխաններին և հրաման առացան առանձին եպիսկոպոս-պատրիարք ունենալ յունաց պատրիարքից անջատ և անկախ։ Հաբէշները, Ղպտիները, Ասորիք առանձնացան յունաց պատրիարքի իրաւասութիւնից և մտան Հայոց պատրիարքի հովանաւորութեան տակ այդ ժամանակից հէնց։ Կիլիկիայի թագաւորութեան ժամանակ, երբ խաչակիրների օգնութեամբ 1090-թուին լատինական պատրիարքութիւն հաստատուեց Երուսաղէմում, Հայոց թագաւորները իբրև խաչակիրներին օգնողներ մօտիկ յարաբերութիւն սկսեցին Երուսաղէմի Հայոց միաբանութեան հետ, Երուսաղէմի Հայոց պատրիարքները արդէն ղեկավարուել սկսեցին կաթողիկոսական կոնդակներով և հրահանգներով, քանի աթոռը գտնւում էր նոյն ժամանակ Կիլիկիայում և հեռաւորութիւնը չէր կարող պատճառ դառնալ կաթուղիկոսի հեղինակութեան անուանական լինելուն Երուսաղէմի Հայ եկեղեցու վարչական կառավարութեան վերաբերմամբ։ Օշինի ժամանակ Կոստանդին կաթուղիկոսը երբ պահանջեց որ քաղկեդոնականութիւնը մտնի Հայոց եկեղեցու մէջ, Երուսաղէմի Հայոց պատրիարքը արհամարհեց կաթուղիկոսի հակաեկեղեցական ընթացքը, քաջութիւն ունեցաւ ամիրապետից հրաման առանալ անկախ պատրիարք հրատարակելու իրան Կոստանդինի հակազգային առաջարկութիւնները չրկատարելու համար։ Երուսաղէմի այդ անկախ պատրիարքութիւնը եղաւ 1311-թուին, որից և առիթ համարելով Երուսաղէմի պատրիարքութեան սկիզբը շատերը ընդունեցին այդ թիւը։ (Տես Մովսէս Կաղանկատուացի 227 երես)։

Հներում վանքը ունէր իւր ձեռաց տակ 72 վանք, ահագին միաբանութիւն, վերջերումս մնացել է միայն 6 վանք, 100 տուն ծուխ բուն կեդրոնում, 200 միաբան. ունի 5 թեմ, Երուսաղէմ, Զամ, Եաֆա, Պէյրութ և Կիպրոս։ Երուսաղէմի պատրիարքը եղել է միշտ ամենայն հայոց կաթուղիկոսի իրաւասութեան ներքոյ, բայց իւր ներքին գործերում համարեա անկախ. Պօլսոյ 1861-ի սահմանադրութեամբ որոշ կարգ կանոնի տակ մտաւ թէ պատրիարքի ընտրութեան և արձակման եղանակն և թէ ամբաստանութեան դէպքում դատուելու ձևն. նա ենթարկւում է Պօլսոյ պատրիարքարանի իրաւասութեան և դրանով հայոց կաթուղիկոսի գերիշխանութեան (տես Ա. Գիրք 746 - 748 երես)։ Երուսաղէմի պատրիարքը պիտի լինի Էջմիածնում ձեռնադրուած եպիսկոպոս։ Երուսաղէմը իբրև Էջմիածնի թեմ ստանում է մեռոն Մայր—Աթոռից։

## Գ). ՊՈԼՍՈՅ ՀԱՅՈՑ ՊԱՏՐԻԱՐՔՈՒԹԻՒՆԸ.

Պօլսի պատրիարքութիւնը համեմատաբար աւելի նոր է, առաջացաւ Տաճկաց՝ Պօլիսը գրաւելուց յետոյ այն է 1461 թուին, երբ Սուլթան Մուհամէդ—բ. յունաց կայսրութիւնը կործանելուց յետոյ, քրիստոնեայ ազգերի հոգևոր իշխանութիւնը Պօլսում կենդրոնացնելու նպատակաւ կարգեց հոգևոր—ազգապետներ, և 'ի միջի այլոց հայոց եպիսկոպոսներից մէկին, որի հետ առաջուց ծանօթ էր, նշանակեց Պօլսոյ պատրիարք, իբրև ընդհանուր՝ Տաճկաստանում գտնուած հայերի հոգևոր գլուխ և պատասխանատու անձն սուլթանի առաջ։ Այսպիսով ժԵ. դարու կէսից մտնում է հայոց եկեղեցու նուիրապետական կազմի մէջ նոր աստիճանաւոր առանձին իրաւունքներով և պարտքերով՝ համարեա կիսանկախ կաթուղիկոսից։ Մինչև 1860 թիւը Պօլսոյ պատրիարքները ընտրւում և հեռացնւում էին Պօլսի հայ իշխանների ձեռքով կայսերական հաստատութեամբ, նրանք կառավարում էին բոլոր տաճկահայ թեմերը՝ նշանակելով և արձակելով թէ առաջնորդներ և թէ վանահայրեր ըն-

տրութեամբ թեմի ժողովրդի և վանքերի, նրանց կապը Էջմիածնի կաթուղիկոսների հետ երևում էր եպիսկոպոսական ձեռնադրութեան, մեռոնի բաշխման և նուիրակների ընդունման ու գանձանակադրամների ժողովման մէջ յօգուտ Էջմիածնի. իսկ առաջնորդական թեմերը ըստ նախնի կանոնաց համարեա կիսանկախ կառավարում էին առաջնորդ—եպիսկոպոսների ձեռքով: 1861-ից յետոյ Պօլսոյ պատրիարքների ընտրութիւնը, հրաժարումը, ամբողջ Տաճկահայոց թեմերի ընդհանուր վարչական կազմակերպութիւնը կանոնաւորուեց, կարգի տակ մտաւ ընդհանուր՝ Պօլսի ազգային ժողովի իրաւասութեան և հսկողութեան ներքոյ. տես Ա. Գիրք —սահմանադրութիւն — 730 — 772:

Պօլսոյ պատրիարքը ենթարկւում է ամենայն հայոց կաթուղիկոսի իրաւասութեան և համարւում է կաթուղիկոսական փոխանորդ Տաճկահայաստանում. նա և նրա ձեռքի տակ եղած առաջնորդները պիտի ձեռնադրուած լինեն Էջմիածնում, բոլոր թեմերի մեռոնը պիտի բերուի Էջմիածնից, պսակալուծութեան և այլ կարևոր, ծիսական, պատժական, դատական խնդիրներում պատրիարքը միշտ դիմում է կաթուղիկոսի վերջնական վճռին և որոշման. դաւանափոխ, ուխտադրուժ և կարգալուծութեան ենթարկուելի եպիսկոպոսներին վերջնականապէս կարգից զրկելու վճիռը վերապահւում է կաթուղիկոսին. որոշում է կայացնում այդ խնդիրների մասին պատրիարքը խառն ժողովի (տես Ա. Գ. 748, 750) հետ միասին կամ կրօնական ժողովի հետ միայն, վճիռը կաթուղիկոսին է ուղարկւում 'ի հաստատութիւն՝ եթէ վճիռը միաձայն է, իսկ եթէ տարաձայնութիւն կայ խառն ժողովի կամ կրօնական ժողովի վճռի մէջ, կաթուղիկոսը նոր հարցեր է տալիս պատրիարքին և պարզաբանելուց յետոյ՝ վերջնական վճիռ է դնում հարցերին, այդպիսի վճիռները չեն ենթորկւում բողոքման, համարւում են վերջնական: Պօլսոյ պատրիարքութիւնը ունի 40-աչափ թեմական առաջնորդութիւններ՝ բացի Երուսաղէմից, որոնք անմիջական կապ չունեն կաթուղիկոսի հետ, կարևոր դէպ-

քերում դիմում են Պոլսի պատրիարքի միջոցով կամ երբեմն ուղղակի։

## Ե). ՍՍԻ ԵՒ ԱՂԹԱՄԱՐԻ ԿԱԹՈՂԻԿՈՍՈՒԹԻՒՆՆԵՐԸ.

Աղթամարում նստեցին 10-րդ դարում քաղաքական դժբախտ պատահարների պատճառով 4-5 կաթուղիկոսներ, որոնք Բագրատունեաց ուժեղանալուց յետոյ տեղափոխուեցին Անի և Անու մօտ՝ Արգինա։ Աղթամար գնացող առաջին կաթուղիկոսն էր Յովհաննէս պատմաբան (899—931), որը տեսնելով Արարատեան աշխարհի՝ Դուինի կործանումն և աւերումն, անցաւ Արծրունեաց թագաւորների մօտ և Աղթամարում նստեց մի առժամանակ. ապա Ստեփաննոս, Թէոդորոս, Եղիշէ, Անանիա. սրա յաջորդ Վահան Սիւնին տեղափոխուեց Արգինա (Անի). դրանից յետոյ Աղթամարում այլ ևս հայոց կաթուղիկոս չնստեց։ Աղթամարի միաբանութիւնը չկամենալով անհետացնել կաթուղիկոսական աթոռի յիշատակը իրանց վանքում, շարունակեցին ընտրած առաջնորդվանահօր կաթուղիկոս ձեռնադրել և համարել նրան իրանց թեմի գլուխ՝ անկախ ամենայն հայոց կաթուղիկոսից։ Աղթամարի կաթուղիկոսութիւնը շարունակւում է մինչև այժմ, և ենթարկւում է Պոլսոյ պատրիարքի և ազգային ժողովի իրաւասութեան. ոչ մի քաղաքացիական և կրօնական առանձնակի նշանակութիւն չունի. նա ձեռնադրում է իւր թեմի համար եպիսկոպոս և եփում մեռոն նոյն նեղ շրջանի համար. նա ունի երկու թեմ, Աղթամար և Խիզան։

## ԱՒԵԼԻ ՄԵԾ ԴԻՐՔ ԵՒ ՆՇԱՆԱԿՈՒԹԻՒՆ ՈՒՆԻ ՍՍԻ ԿԱԹՈՂԻԿՈՍՈՒԹԻՒՆԸ։

Բագրատունեաց թագաւորութեան վերջանալուց յետոյ, երբ հաստատւում է Կիլիկիայում Ռուբենեան հարստութիւնը 11-րդ դարու վերջերում, կաթուղիկոսական գահը ապահով վիճակում պահելու դիտաւորութեամբ փոխադրւում է Կիլիկիա 1105 թուին, թէ և 1065-թուից սկսած արդէն Գագիկ թագաւորի միջոցով տեղափոխուած էր Ծամն-

դաւ գղեակը որ փոքր-Հայքումն էր։ Ծամնդաւում, Սև-լեռում, Հռոմկլայում և Սիսում մնաց կաթուղիկոսական աթոռը մինչև 1441 թիւը, երբ արդէն ջնջուած էր Ռուբինեան թագաւորութիւնը և չկար այն հեռու երկրում պաշտպան և ոյժ ու նեցուկ տուող այդ գահին, որը բուն երկրից հեռու լինելով՝ չէր կարողանում ունենալ այն նշանակութիւնը և ազդեցութիւնը Հայաստանի մասերի վրայ, որոնք զանազան գիշատիչների ձեռք ընկած գերփւում էին։ 1441-ին Էջմիածնի համազգային ժողովը որոշեց տեղափոխել գահը Էջմիածին և հրաւիրել Սսի վերջին կաթուղիկոս Մուսաբէկեանին գալ Կիլիկիայից Արարատեան աշխարհը։ Սսի կաթուղիկոսը մերժեց գալ և ազգային ժողովը կաթուղիկոս ընտրեց Կիրակոսին, որը 1441-ին օծուելով ամենայն հայոց կաթուղիկոս, նստեց Էջմիածնում։ Այսպիսով Կիլիկիայի կաթուղիկոսութիւնը վերջացաւ 1441-թուին։ Այդ թուականից սկսած Սսի միաբանութիւնը չկամենալով կաթուղիկոսական գահի նշանակութիւնը կորցնել, շարունակեց յաջորդաբար մինչև այսօր ընտրուած առաջնորդին կաթուղիկոս օծել Սսի թեմի վրայ։ Սսի կաթուղիկոսը ձեռնադրում է եպիսկոպոս իւր թեմի համար և եփում մեռոն նոյն շրջանի համար, ինչպէս և Աղթամարինը։ Այս առթիւ Էջմիածնի և Սսի կաթուղիկոսների մէջ համաձայնութիւն եղաւ Երուսաղէմի ժողովում 1651 թուին, տես Ա. Գիրք 465—471 երես։ Այս երկու կաթուղիկոսների յարաբերութեան և նշանակութեան մասին Պոլսոյ ազգային ժողովների նիստերում երկար վիճաբանութիւններ եղաւ, մանաւանդ Գէորգ-Դ. կաթուղիկոսի օրով, որը Սսոյ կաթուղիկոսին համարում էր հակաթոռ և ազգային նուիրապետութեան գաղափարին վնասակար և վերցնելու արժանի. ազգային ժողովը տարբեր կարծիք ունէր և քաղաքական հեռատեսութիւն էր համարում Սսոյ կաթուղիկոսութեան պահպանումն. ահա այդ կարծիքներից երկուսը. «Էջմիածնայ կաթուղիկոսն հեղինակութիւն չունի Հայաստանեայց եկեղեցւոյն վերայ, վասն զի Հայաստանեայց եկե-

ղեցւոյն հեղինակութիւնն աշխարհական և եկեղեցական ժողով է եղած և կլինի, այդպէս կուսուցանէ պատմութիւնը։ Վեհափառ կաթուղիկոսը միմեայն ծայրագոյն գործադիր իշխանութիւն ունի և առանց աշխարհական և եկեղեցական ժողովոց կարող չէ գործել»։ Մի ուրիշ երեսփոխան ասում է ժողովում. «չէ, մեր մէջ չկայ այնպիսի քաղաքականութիւն մը՝ որ Սիսը բարձրացնէ և Էջմիածինը նուաստացնէ. բայց այս խնդրոյն մէջ ազգային քաղաքականութիւն մը կայ՝ չը բարձրացնել Սսոյ աթոռը, այլ և չը վերցնել, հապա պահել. պահել ժամանակ մը և օր մ'ալ վերցնել . . . ». տես «Փորձ» 1877 թիւ։

Գէորգ կաթուղիկոսը որոշում արաւ՝ «միմեայն անկէ ընդհանուր ժողովոյ, ըստ եկեղեցական օրինի գումարելոյ ընդ Նախագահութեամբ կաթուղիկոսի ամենայն հայոց» և Սսոյ խնդիրը վճռելու։

Սսոյ կաթուղիկոսութիւնը և ընտրութիւնը լինում է պատրիարքարանի գիտութեամբ, մասնակցութեամբ և հովանաւորութեամբ. թէ 1871-ին, 1895 և 1900-ի ընտրութիւնների ժամանակ ընտրութիւնը կատարուեց պատրիարքարանի կողմից ուղարկուած պատգամաւոր եպիսկոպոսի նախագահութեամբ, որը նախօրէն հրաւիրելով Սսոյ 13 թեմերի (Հաջըն, Զէյթուն, Մարաշ, Կիւրին, Դիվրիկ, Մալաթիա, Եօզղատ, Հալէպ, Այնթապ, Անտիոք, Պարէնդէ, Սիս և Ադանա) հոգևորական և աշխարհական ընտրուած պատգամաւորներին և Սսոյ վանքի կողմից նշանակուած «յարմար դատած թուով» միաբան պատգամաւորներին Ադանա, նրանց պատգամաւորական թղթերը ստուգելուց յետոյ, նախագահ եպիսկոպոսը կհրաւիրէ նրանց Ադանայի ս. Աստուածածին մայր եկեղեցին, կկարդայ պատրիարքի այդ առթիւ գրած պաշտօնական գիրն ու հրահանգները, կընտրէ ատենադպիր և քուէտուփի վրայ հսկող երկու պատգամաւոր, ապա բարեմաղթութիւններ կանի Սուլթանի, Վեհափառ կաթուղիկոսի արևշատութեան համար, հոգեհանգիստ նախորդ Սսոյ կաթուղիկոսի համար, շարականներ երգել կը-

տալ, և կսկսի քուէարկութիւնը. 6 առաւելագոյն քուէ ստացող անձանց ցուցակը կուղարկի պատրիարքարան, ուր «յարմար դատած ձևովը սրբագրութիւն» անելուց յետոյ կդարձնուի Նախագահ եպիսկոպոսին, որը ժողովին յանձնելով սրբագրուած ցանկը քուէարկելու, նրանից մեծագոյն թուով անունը՝ կհռչակի կաթուղիկոս Սսոյ և հեռագրով իմացում տալով պատրիարքարան, կխնդրուի կայսերական իրադէ։ («Նոր—Դար») 1900 թ. 11 մարտի №47, քաղած «Արևելքից»)։

## Ը). ԹԵՄԵՐԻ ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ԿԱՌԱՎԱՐՈՒԹԻՒՆԸ.

(О должностяхъ и учрежденіяхъ по церковному управленію въ древ. вост. церкви. профес. Павла-1857 г. СПБ.». Обозрѣніе древнихъ формъ помѣстнаго церковнаго управленія, 1858 г. Прав. Собес.)

Հին եկեղեցու հասարակական՝ թեմական կառավարութեան ձևը կարելի է բաժանել երեք շրջանի. առաջին շրջանում եպիսկոպոսները չունէին որոշ անձնաւորութիւններ իրանց մօտ՝ նշանակուած առանձին պաշտօնների համար, այլ միայն քահանան էր և սարկաւագը՝ որոնք եպիսկոպոսի հետ ընտանեկան կերպով կառավարում էին իրանց փոքրիկ հօտը; հներում թեմերը շատ փոքր էին, ոչ միայն մեծ, այլ և փոքր քաղաքները, աւանները կազմում էին առանձին թեմեր իրանց եպիսկոպոսներով։ Գրիգոր սքանչելագործը նշանակուեց եպիսկոպոս Սասիմի վրայ, այնպիսի մի տեղի, ուր ոչ միայն շատ քիչ մարդ կար, այլ և կենսական անհրաժեշտ պիտոյքներ չէր ճարւում ապրելու համար, բայց և այնպէս այդպէսի տեղերը համարւում էին թեմեր։ Թէ միտրոպոլիտները և յժէ գլխաւոր եպիսկոպոսները իրաւունք ունէին իրանց շրջանը բաժանելու այնքան թեմի, որքան իրանք կկամենային։ Սոզոմենի ասելով (Ը. 19) փոքր Ասիայում երկու թեմի տարածութեան վրայ գտնւում էին 400 եպիսկոպոս; Կիպրիանոսի ժամանակ Կարթագենի շրջանը ունէր 300 եպիսկոպոս։ Բարսեղ մեծը, երբ տեսաւ

որ իւր թեմի մի մասը անցաւ ուրիշ միտրոպոլտի, ինքն էլ մնացած մասում շատացրեց թեմերի թիւը՝ եպիսկոպոսներ ձեռնադրելով փոքրիկ տեղերում։ Փոքրիկ թեմերի թիւը բազմացնելու պատճառներից մէկն էր աղանդաւորների շատանալը, որոնց դէմ մաքառելու համար աւելի յարմար էր համարւում եպիսկոպոսներ շատացնել, որ փոքրիկ հօտերը մոլութիւններից զերծ պահելուն նպաստէին։ Բացի այդ՝ քանի որ տարէ ցտարի շատանում էր քրիստոնեաների թիւը, հարկ էր զգացւում նոր եպիսկոպոս-հովիւներ նըշանակել. և մանաւանդ եթէ եպիսկոպոսանիստ թեմական քաղաքը հեռու էր գտնւում, դժուար էր լինում հեռու անկիւններում առաջացած գժտութիւնները խաղաղացնել, այն ինչ այդպիսի անկիւններում նշանակուած եպիսկոպոսները հեշտութեամբ էին անդորրացնում իրանց հօտը։ Այդ պատճառով էլ թեմերի սահմանները խիստ և որոշ կերպով չէին բաժանուած միմեանցից, մի եպիսկոպոս, մի քանի մօտիկ գիւղերի քահանաներով և սարկաւագներով կազմում էին մի ծուխ, մի թեմ. (Ա. Գիրք, 93, 99)։ Այնպէս որ եթէ համեմատելու լինենք այժմեայ թեմերի հետ, միքանի տասնեակ նախկին թեմեր իրանց առաջնորդներով պիտի մտնէին այժմեանի շրջանը։ Սահմանների անորոշութիւնը և եպիսկոպոսների շատութիւնը միշտ վէճերի տեղիք էր տալիս, չորրորդ դարու վերջին թեմական կառավարութիւնները որոշ կանոններով և կարգերով բաժանուեցին միմեանցից և առանձին սահմաններով ջոկուեցին։ Թեմի կառավարութիւնը կեդրոնանում էր եպիսկոպոսի անձնաւորութեան մէջ, որը ըստ իւր կարգի վարում էր իւր շրջանի եկեղեցիների հսկողութիւնը և գործերը միքանի օժանդակ խորհուրդների միջոցով. այն է՝ 1) եպիսկոպոսական խորհրդի՝ որին մասնակցում էին քահանաներ, սարկաւագներ և տեղական ծերունիներ. 2) քահանայական խորհրդի և 3) սարկաւագների։ Թէ ինչպէս էին այդ խորհուրդները մասնակցում եկեղեցու կառավարութեան գործին, որ չափով, ինչ ձայնով, անորոշ է, միայն Կիպրիանոսը և Տեր-

տուղիանոսը վկայում են, որ դրանք միասին հոգում էին եկեղեցու կարիքները և խնամում այրիներին, որբերին։ Անտիոքի 24, 25 կանոնները (Ա. Գիրք, 215, 216) իրաւունք են տալիս քահանաներին և սարկաւագներին իմանալ թէ ինչպէս է կառավարում եպիսկոպոսը եկեղեցական կալուածները։ Կառավարութեան մէջ գլխաւոր դերը խաղում էր եպիսկոպոսը, նա ժողովի էր կանչում խորհուրդի անդամներին, խնդիրներ և հարցեր էր առաջարկում, և ձայների մեծամասնութեամբ վճիռ կայացնում, թէև ուժեղ եպիսկոպոսը միշտ իւր ասածն էր անել տալիս, քանի որ միակ պատասխանատուն ինքն էր համարւում։ Եպիսկոպոսական խորհուրդը ըստ վկայութեան Տերտուղիանոսի նախօրօք քննում էր այն ընծայացուի վարք ու բարքը և ձեռնադրելու արժանիքը, որը ժողովրդի վկայութեամբ առաջարկւում էր քահանայութեան։ Աֆրիկայի եկեղեցում և ինչպէս Հայաստանում խորհուրդի մասնակցութիւնը եկեղեցու գործերում աւելի ուժեղ էր և ընդհանրացած՝ քան միւս եկեղեցիներում։ Կիպրիանոսը ասում է որ առանց քահանայական խորհրդի ոչ մի պաշտօնեայ չընդրուի. Նոյնը պահանջում էր և Բարսեղ մեծը. քահանայական խորհուրդը շատ անգամ խառնւում էր թեմական գործերում. Հռոմի Կոռնէլ եպիսկոպոսը Մաքսիմ շնականի և նրա կողմնակիցների գործի քննութիւնը յանձնեց քահանայական խորհրդին։ Արիոսի դէմ վճիռ կայացնելիս Աղէքսանդրիայի եպիսկոպոսը (Աղէքսանդր) օգտուեց քահանաների խորհրդից և նրանց ձեռքով արած քննութիւնից։ Կարթագենի ժողովը (42 կանոն) որոշեց չթոյլ տալ եպիսկոպոսներին «ծախել եկեղեցական հողերը առանց ժողովի կամ իւր քահանաների գիտութեան»։ Եպիսկոպոսի բացակայութեան ժամանակ՝ եկեղեցու իրերը և գոյքը կառավարում էր քահանայական խորհուրդը, առանց վաճառելու իրաւունքի (Անկ. 15. Ա. Գիրք-188)։ Առաջի տարում քահանաները սարկաւագների նման բաժանում էին աղքատներին և կալօտեալներին հանդերձեղէն և ուտեստ։ Հսկում էին քրիս-

*տոնեաների վարքի՝ բարքի վրայ և ամեն միջոց գործ էին դնում ուղղութեան բերել նրանց։*

*Սարկաւագները պարտաւորութիւնները եկեղեցու կառավարութեան մէջ էին, 1) հսկել ներքին կարգապահութեան, կանոնաւորութեան, և լռութիւն պահպանելուն վրայ եկեղեցում. 2) Նրանք հսկում էին կղերի վրայ, նրանց արածների մասին տեղեկութիւն հաղորդում եպիսկոպոսին և քահանայ ընարելուց վկայութիւն տալիս նրանց վարքի ու բարքի մասին. 3) Եպիսկոպոսի կարգադրութեամբ բաժանում էին որբերին, այրիներին, աղքատներին, կոյսերին ուտեստ և հանդերձեղէն։ 4) Նրանք միջնորդ էին եպիսկոպոսի և ժողովրդի մէջ, զանազան պատուէրներ տալով և գործեր կատարելով։ Այնպէս որ եկեղեցու կառավարութեան մէջ մեծ դեր էին կատարում նրանք, եպիսկոպոսի գլխաւոր օգնականներն էին և գործակիցները. մանաւանդ աւագ սարկաւագ կոչումով եղածները, նշանակւում էին ընդհանուր կառավարիչներ և սարկաւագների վրայ հսկողներ։ Սարկաւագապետի պաշտօնը փոխադրեց հայոց մէջ Ներսէս մեծը, որը եկեղեցիների ընդհանուր կառավարութիւնը յանձնեց Խադին։*

*Եկեղեցու կառավարութեան Բ. և Գ. շրջանները սկսուեցին պատրիարքութիւնները հաստատուելուց և գլխաւոր եպիսկոպոսների աթոռների իրաւունքները բարձրացնելուց յետոյ, երբ պաշտօնները բաժանուեցին, իւրաքանչիւր պաշտօնակատարի յանձնուեցին առանձին գործեր, առաջացաւ բարեգործական, ուսումնական զանազան հիմնարկութիւններ տարբեր կազմութեամբ և կառավարութեամբ։ Քանի՞ թեմ կար Հայաստանում նախալուսաւորչեան շրջանում, անորոշ է, յայտնի չէ, աւանդութիւնը միայն ասում է որ եպիսկոպոսական գլխաւոր աթոռն Եդեսիայումն էր, երկրորդ աթոռը Արտազում, երրորդ աթոռ Գողթնեաց աշխարհում Սիւնիքում, ըստ Օրբելեանի 150 թուին Սիւնիքում շինուեց Ստեփաննոս նախավկայի անուամբ Թանահատի վանքը, ըստ Մովսէս կաղանկատուացու՝ Եղիշէ առա-*

քեալից սկսած Աղուանից եպիսկոպոսական աթոռը կար. Լուսաւորիչ ձեռնադրեց ըստ Ագաթանգեղոսի, 400-ից աւելի եպիսկոպոսներ քաղաքների, գաւառների վրայ, յիշում է մեծ նահանգների՝ նախարարութիւնների առաջնորդական եպիսկոպոսների անունները, Եղիշէն էլ յիշում է պարսից պատասխանը գրող գլխաւոր առաջնորդների անունները, որոնցից երևում է, որ ամեն մի գլխաւոր նախարարութիւն ունեցել է և մի թեմակալ առաջնորդ, իբրև համապատիւ նախարարին կամ նահանգի իշխանին. բացի գլխաւոր առաջնորդից նրա թեմում եղել են վանքերում, երկրորդական քաղաքներում, մեծ աւաններում եպիսկոպոսներ, որոնք երբեմն իբրև գործակատարներ՝ կոչւում էին քորեպիսկոպոսներ: Եղիշէն յիշում է հետևեալ առաջնորդներին, 1) Տարոնի եպիսկոպոս, 2) Մանազկերտի եպիսկոպոս, 3) Բագրևանդի, 4) Բզնունեաց, 5) Տայոց, 6) Բասենոյ, 7) Տուրուբերանի, 8) Մարգաստանի, 9) Մարդաղւոյ, 10) Սիւնեաց, 11) Արծրունեաց, 12) Մոկաց, 13) Ռշտունեաց, 14) Վանանդայ, 15) Ամատունեաց, 16) Անձևացեաց, 17) Ապահունեաց. 18) Արարատայ եպիսկոպոս-առաջնորդ, որ նոյն ինքն կաթուղիկոսն էր և Եղիշէի ժամանակ Յովսէփ քահանան էր՝ ընտրուած կաթուղիկոս, ժողով հրաւիրողը: Այս յիշատակութիւնը այն գլխաւոր նշանակութիւնն ունի, որ Եղիշէն պատմելով պատմական մեծ եղելութիւնը, պարսից թագաւորին գրելիք պատասխանի մասին, հաղորդում է որ կաթուղիկոսը կանչեց բոլոր մեծ իշխաններին և գլխաւոր եպիսկոպոսներին ժողովի, որպէսզի նրանք ցրուելուց յետոյ իրանց գաւառները՝ իբրև աշխարհական և հոգևոր մեծեր կարգադրութիւններ անեն քրիստոնէութիւնը ամուր պահելու և պարսիկներին դիմադրելու համար: Այստեղ չեն յիշուած Վրաց և Աղուանից կաթուղիկոսները, որոնք բացակայէին այն պատճառով որ իրանք էլ նոյն ժամանակ իրանց երկրի հոգսն էին քաշում: Այս մեծ առաջնորդութիւնները անշուշտ ունէին իրանց ձեռքի տակ բազմաթիւ եպիսկոպոսներ, որոնք երկրորդական նշանակութիւն ունէին

եկեղեցու կառավարչութեան մէջ։ Օրբէլեանը պատմելով կաթուղիկոսի կոնդակի մասին, որով յանձնում է Սիւնեաց առաջնորդին Սիւնիքի 12 գաւառները, նզովք է դնում այն եպիսկոպոսների վրայ, որոնք գաւառներում աթոռներ հաստատելով կհակառակին առաջնորդին. դրանցից մէկը նստում էր Մաքենոցաց վանքում գեղարքունիքում, երկրորդը Վայոց ձորում, երրորդը՝ Երնջակում, չորրորդը՝ Գողթնիքում եւայլն եւայլն. «հաստատեցաք զՎայոց ձոր, զԳեղարքունի, զՓորակն, զ Համբանդ, զՁուղայ, զԵրնջակ» և ապա նզովք է դնում, որ ոչ մի եպիսկոպոս չյափշտակի այդ աթոռները առաջնորդի ձեռքից։ Ուրեմն միմեայն Սիւնեաց առաջնորդութեան մէջ 6 երկրորդական եպիսկոպոսական աթոռ է եղել 13-րդ դարում, նոյն համեմատութեամբ էլ եղել են միւս նահանգներում։ Ուխտանէսը յիշում է 30 առաջնորդական աթոռների անունններ, յիշում է և նաև 370 այլ աթոռակալներ լուսաւորչից հաստատուած և ձեռնադրուած, ընդ ամենայն 400 եպիսկոպոսներ (100 երես)։ Այժմ 5 թեմ գտնւում է Ռուսահայաստանում, մօտ 60 թեմ Տաճկահայաստանում, 2 թեմ Պարսկա-Հնդկաստանում, 2 թեմ Եւրոպա և Ամերիկայում։ Ռուսահայաստանի թեմերն են. Երևանի (Արարատեան կաթուղիկոսական) Տփխիսի, Բեսարաբիայի, Աստրախանի, Շամախու և Շուշու։ Տաճկահայաստանի թեմերն են. Պօլսոյ (պատրիարքական քաղաք), Ադրիանապօլսոյ, Թեքիրտաղի, Նիկոմիդիայի, Պրուսայի, Պալըքէսիր,—Պանտրմայի, Պիլէճիկի, Քեօթահեայի, Զմիւռնիայի, Էնկիւրիի, Կեսարիայի, Սեբաստիայի, Թոգաթի, Ամասիայի, Շապին—Գարահիսարի, Ճանիկի, Տրապիզոնի, Կարինի, Երզնկայի, Բաբերդի, Քղիի, Քիմախի, Պայազիտի, Վանի, Լիմ-Կտուցի, Բաղէշի, Մուշի, Սղերտի, Տիարպէքիրի, Բալու—Արղնիի, Խարբերդի, Ակնի, Արաբկիրի, Զարսանճագի, (Չըմշկածագ), Ուրֆա (Եդեսիա), Պաղտատի, Եգիպտոսի, Պուլկարիայի, Ռումանիայի։ Մասնաւոր թեմեր—Արմաշի, Գասդեմունիք, Պիլէկէսի, Կինճի, Ալըակի, Սելանիկի, Կրետէի։ Երուսաղէմ 5 թեմով, Շամի, Եաֆայի, Պէյրութի, Կիպ-

քսի։ Կիլիկիա—13 թեմով. Սսի, Ադանայի, Հաճընի, Հալէպի, Այնթափի, Անթաքիայի, Մարաշի, Զէյթունի, Մալաթիայի, Եոզկաթի, Կիւրինի, Տիվրիկի, Տարենտէ։ Աղթամար և Խիզանի թեմ։ Եւրոպայի թեմ (Փարիզ, Մարսէյլ, Մանչեստր, Սուչավա). Ամերիկայի թեմ (Ուսթր Նիւ—եորք, Պոսթոն, Լօրէնս, Չիկագօ, Ֆրեզի)։ Պարսկա—Հնդկաստանի թեմ (Ասպահան, Թեհրան, Համադան, Մադրաս, Պոմբէյ, Պատաւիա). Ատրպատականի թեմ (Դավրէժ, Սալմաստ)։

Թէ ինչպէս էին կառավարւում թեմերը, կեդրոնացումըն ուժեղ էր արդեօք, թէ ապակեդրոնացումն էր աւելի տարածուած։ Մինչև Բագրատունեաց անկումն, այն է տասնևմէկերորդ դարու կէսերը, երբ կաթուղիկոսական գահը ընդհանրապէս Հայաստանի կեդրոնումն էր, գուցէ թէ հընար լինի ասելու, որ կեդրոնացումն աւելի էր, այսինքն թեմերի կառավարութեան մէջ առաջնորդները զանազան հարցերի վերաբերմամբ դիմում կլինէին կաթուղիկոսին, բայց յետոյ, հէնց տասներորդ դարից սկսած, այլազգիների հրոսակների աւերումները, զանազան նահանգական թագաւորութիւնների առաջանալը, Սիւնեաց, Աղուանից, Կիւրիկէի, Կարսի, Արծրունեաց, պատճառ դարձան մի կողմից կաթուղիկոսական գահը աստանդական դարձնելու, միւս կողմից առաջնորդական աթոռների իրաւունքները բարձրացնելու. պարզ է, որ Սիւնեաց կամ Արծրունեաց առաջնորդը յենուած իրանց թագաւորի վրայ պիտի անսահման տէր լինէր իւր եկեղեցիներին և առանց կաթուղիկոսին դիմելու ամեն կարգադրութիւն անէր իւր թեմում։ Կաթուղիկոսական գահը Կիլիկիայ փոխադրուելուց յետոյ այդ-կապը առաջնորդների հետ դարձաւ անուանական, որքան մեծ սիրով էին ընդունում Կիլիկիայում թէ թագաւորը և թէ կաթուղիկոսը արևելեան աշխարհից եկած ընտրեալ առաջնորդացուներին, որոնք գալիս էին եպիսկոպոսական ձեռնադրութիւն ստանալու և մեռոն տանելու։ Ստեփաննոս Օրբէլեանը հիացմունքով է պատմում իւր Կիլիկիա գնալը այդ նըպատակով։ Պարզ է այսպիսի հանգամանքներում առաջ-

նորդները լիակատար տէրեր պիտի լինէին իրանց թեմե-
րում։ Շնորհալին «գիր շրջաբերականի» մէջ ասում է, հա-
ւատալով ձեր վկայութեան, ձեռնադրեցի ձեզ առաջնորդ
ընտրած քահանային (Ա. Գիրք 582 երես)։ Եւ ուրիշ ինչ
կարող էր անել կաթուղիկոսը այնքան հեռու տեղից՝ ճա-
նապարհների հողորդակցութեան ամենավատ ժամանակ,
երբ Հայաստանը քարուքանդ էր լինում արիւնարբուներից.
նա մինչև իսկ եթէ, չհաւատար էլ ընտրեալ անձի ձեռքին
գտնուած համախօսական թերթին, պիտի ակամայ ձեռնա-
դրէր եպիսկոպոս նրան և յետ ուղարկէր, ուրիշ ինչ միջո-
ցով կարող էր ստուգել ընծայեալի ընտրական թերթի հա-
ւաստիութիւնը։ Թեմերի անկախ կառավարութիւնը արմա-
տացաւ Հայոց մէջ, և մինչև անգամ երբ 1441-ին գահը
փոխադրուեց Էջմիածին, էլի թեմերը շարունակեցին իրանց
կիսանկախութիւնը։ Առաջնորդները անկախ ձեռնադրում
էին քահանաներ իրանց թեմի եկեղեցիների համար, և շատ
անգամ առանց որ և է սկզբունքի հետևելով, 'ի շնորհս
իշխանի, մեծի, մամոնայի լցնելով գիւղերը և քաղաքները
(տես ամ Հայոց կաթուղ. Երիցեանի). մինչև Ռուսահայոց
1836-ի պալաժէնիան բոլոր քահանաների ձեռնադրութիւ-
նը առաջնորդին էր պատկանում առանց կաթուղիկոսի միջ-
նորդութեան և տեղեկութեան։ 2) հաս, չհաս, չափահաս,
անչափահաս պսակների տէրն ու հրամանատուն առաջնոր-
դն էր, ոչ միայն առաջնորդը, այլ մինչև իսկ գիւղի քահա-
նան գիւղի իշխանի հետ միասին առանց առաջնորդի կամքն
հարցնելու (տես նոյն Երիցեանի գիրքը). իսկ թէ այդ դէպ-
քերում որքան մեծ դեր էր խաղում կամայականութիւնը
և իշխանական ոյժը, այդ պարզ երևում է հէնց Բագրատ-
ունեաց ժամանակից, երբ թագաւորը մոռանալով ամեն ինչ
պսակուեց քրոջ աղջկայ հետ և մնաց անպատիժ և աննը-
զովք կաթուղիկոսի կողմից։ 3) Ամուսնանալու ծխական
դէպքերի թոյլատրողն էր առաջնորդը, առանց դիմելու կա-
թուղիկոսին. Շնորհալին ասում է, արևելեան եպիսկոպոս-
ներից ոմանք մամոնայից կուրացած անխտրաբար ամուսին-

ներին բաժանում են, և պատուիրում է, բաժանել միմիայն պոռնկութեան եւ հայրերից թողլատրուած պատճառների հիման վրայ (Ս. Գիրք 582 երես)։ Իսկ թէ իշխանները, մելիքները ինչպիսի ապօրինութիւններ էին անում ամուսնալուծութեան վերաբերմամբ առանց մինչև իսկ առաջնորդին դիմելու, այդ մասին անթիւ զրոյցներ են պատում մինչև այժմ Սիւնիքում, Ղարաբաղում։ 1836-ից մինչև այժմ ահագին տարեշրջան է անցկացել, բայց և այնպէս Սիւնեցի գիւղացին միշտ այսպիսի դէպքերում կդիմի ոչ թէ առաջնորդին, այլ փոխանորդին վերջնական լուծում խնդրելու, պահանջելով պսակը իսկոյն լուծել, իսկոյն կնոջ դուրս անել բանտարկել չհասական հրաման տալ. և այլն և այլն։ 4) Թեմի բոլոր եկեղեցական գոյքերի կառավարիչն ու կարգադրողն եղել է առաջնորդը. Նա է ժողովել բոլոր կալուածների արդիւնքը, պտուղները, հասոյթները անկախ կաթուղիկոսից։ Մայր աթոռին այսինքն կաթուղիկոսին հասնում էին միւռոնի գնալու, եպիսկոպոսական ձեռնադրութիւն ստանալու, և այլ դիպուածով գնալու ժամանակ աջահամբոյրներ, ընծաներ; միւռոն եփելու ժամանակ միշտ բոլոր գիւղերը յանուն Մայր-Աթոռի ժողովում էին մատաղներ, դրամներ և պատգամաւորներով հասցնում Էջմիածին. բացի այդ Էջմիածնի նուիրակները շրջելիս, ընդունում էին ամենայն առատութեամբ թէ դրամ, թէ նիւթեղէն և թէ անասուններ։ Առաջնորդները լիակատար տէր լինելով գոյքերին, կառավարելով ըստ իրանց կամքի, չէին կարող կամայականութիւնից և քմահաճոյքից հեռու մնալ, և զանցառութեան տալ իշխաններին, մեծերին, որոնք ամեն կերպ կարող էին վնասել առաջնորդին, հանելով, ուրիշը նշանակել տալով նրա փոխարէն, կամ պահանջելով արդիւնքի մի մասը յօգուտ իրանց, գործը՝ այսինքն եպիսկոպոսի արած շահասիրական քայլերը մոռացութեան տալու համար։ Մանաւանդ խաների ժամանակ, ամեն մի խան՝ վանք մտնելիս, առաջնորդին այցելելիս, պիտի անպայման մեծ պարգևներ ստանար, ձիեր, խաս կտորներ և այլն

ևայլն, այնպէս առաջնորդը կենթարկուէր պատուհասի. մնում էր առաջնորդներին արդիւնքները դիզել և չգործածել իրանց բուն նպատակի համար, այլ կողմնակի անձանց բաշխել: Թեմերի կառավարութեան այս ձևը վերացաւ Ռուսահայոց մէջ 1836-ից յետոյ, Տաճկահայոց մէջ 1860-ից յետոյ:

## Թ). ԳԻՒՂԱԿԱՆ ԵԿԵՂԵՑԻՆԵՐԻ ԿԱՌԱՎԱՐՈՒԹԻՒՆԸ

## (ՔՈՐԵՊԻՍԿՈՊՈՍ).

Գիւղական եկեղեցիների կառավարութիւնը յանձնուած էր եպիսկոպոսների օգականներին, որոնք կոչւում էին փոխանորդներ կամ օգնականներ! Գ-դարում Երուսաղէմի եպիսկոպոս Նարցիսոսը ծեր լինելով, օգնական ընդունեց իրան՝ իւր թեմում Աղէքսանդր եպիսկոպոսին (Եւս. Է). Գրիգոր Աստուածաբանը Սասիմի վրայ եպիսկոպոս ձեռնադրուելիս արդէն հօրը օգնականն էր Նազիանզում (Սոկ. Դ.): Օգոստինոսը Իպպօնում եպիսկոպոս ձեռնադրուեց Վալէր եպիսկոպոսի օգնականի պաշտօնով: Բացի այդ օգնականներից, որոնք ընդհանուր թեմի վրայ հսկողներ էին, նշանակւում էին և փոքրիկ շրջանների կառավարիչներ, քորեպիսկոպոս անուամբ, որ նշանակում է գիւղական քահանայ, սրանք լինում էին գաւառի և համայնքի վերակացուներ, վերջինները ենթարկւում էին առաջիններին (Զօնարա): Ոմանք դրանց համարում էին եպիսկոպոսական աստիճան ունեցող, ոմանք քահանայական միայն. ոմանք էլ կարծում էին որ երկու աստիճանով էլ լինում էին: Վալսամոնը ասում է, որ քորեպիսկոպոսները Յիսուսի 72 աշակերտի փոխանորդներ են համարւում, որոնք իրաւունք չունէին ձեռնադրութիւն անելու և խորհուրդներ կատարելու, այլ միայն հոգալու աղքատների պիտոյքները: Անկիւրիայի 13 կանոնը (Ա. Գիրք 187) արգելում է քորեպիսկոպոսներին քահանաներ և սարկաւագներ ձեռնադրել, իսկ քաղաքներում առանց եպիսկոպոսի թոյլտուութեան քա-

հանաներ կարգել։ Անտիոքի 10 կանոնը (Ա. Գ. 212) ասում է, քորեպիսկոպոսները եթէ եպիսկոպոսական ձեռնադրութիւն էլ ունենան, իրաւունք չունին քահանայ ձեռնադրելու առանց եպիսկոպոսի հրամանի, հապա միայն նշանակեն կիսասարկաւագներ, ընթերցողներ, երգմնեցուցիչներ։ Նէոկեսարեայի 14 կանոնը (Ա. Գ. 200) ասում է, քորեպիսկոպոսները ըստ օրինակի Քրիստոսի 72 աշակերտների քահանայագործութիւն են անում և քաղաքի եկեղեցում։ Պատահում էր, որ երբ թեմական եպիսկոպոսը թեմի ժողովրդից չէր ընդունւում, կամ որև է պատճառով հօտից զրկւում էր, նա դառնում է քորեպիսկոպոս (Սոկր. Ը.)։ Հերձուածողների եպիսկոպոսները երբ միանում էին նախկին եկեղեցու հետ, դառնում էին քորեպիսկոպոսներ (Մելիտեանք, Նովատեանք)։ Քորեպիսկոպոսները ընդհանուր հսկող էին գաւառաշրջանի եկեղեցիների վրայ, Վալսամոնի ասելով ԺԲ. դարում բոլորովին վերջացան, նրանց պաշտօնը մնաց, նրանց փոխարինեցին աւագերէցները, կամ ինչպէս Լաւոդիկեայի 57 կանոնն է սահմանում պերիոդևտները (այցելու, բարեկարգիչ) Ա. Գ. 226։

Հայոց եկեղեցու կառավարութեան մէջ հէնց սկզբից կար քորեպիսկոպոսների պաշտօնը, Բիւզանդ Դանիէլի համար ասում է, «էր սորա ընկալեալ զքորեպիսկոպոսութեան ձեռնադրութեան ատիճան» . . - «սա վերակացու էր և գլխաւոր եկեղեցեաց նահանգին Տարօնոյ». «հրամանատար տեսուչ և հոգաբարձու ամենայն եկեղեցեացն Հայոց մեծաց ընդ ամենայն տեղիս» Բիւզ. 31։ Դանիէլ Քորեպիսկոպոսը գաւառների վրայ վարդապետներ էր նշանակում, «Զաղիտա, որ 'ի նմանէ իսկ աշխարհին Կորդուաց վարդապետ տուեալ էր և երկրորդին անուն Եպիփան, որ գաւառին Աղձնեաց և մեծաց ծոփաց 'ի նմանէ իսկ վարդապետեալ էր»։ Եղիշէն յիշում է 43 երեսում, որ Արտաշատի ժողովում ժողովուած էին «շատ քորեպիսկոպոսներ»։ Սահակի կանոններում կան 12 յօդուածներ, որոնք տալիս են շատ մեծ իրաւունքներ քորեպիսկոպոսներին, հսկողութիւն

բոլոր շրջանի եկեղեցիների վրայ, քահանաների, սարկաւագների բարելաւութեան և կարգապահութեան վրայ, ժամերգութեան, պաշտամունքների կատարման վրայ, մինչև անգամ ծեծելու իրաւունքով. 4-կանոնը ասում է, «օրինազանց եկեղեցականներին կշտամբեն խրատով, ծեծով և տուգանքներով պատուհասեն ատեանի մէջ, որ միւսներն վախենան և խրատուեն» Ա. Գ. 518 երես։ Բացի այդպիսի խիստ իրաւունքներից, որոնք հակաեկեղեցական են մինչև իսկ, իրաւունք էտրւում նոյն կանոններում հեռացնել եկեղեցուց բոլորկարգ խանգարողներին, կռուողներին, արբեցողներին, հարկերը ժողովի, բայց ոչ ագահութեամբ դիզի և պարտականութիւնները մոռանալ . (Ա. Գ. 518—520)։ իւր սուրբ Ծոյլ և անկարգութիւն անող քահանաներին, իրաւունք է տալիս 5-րդ կանոնը, զրկել մինչև անգամ պատուից՝ քահանայագործութիւնից, մինչև որ կհաշտուեն՝ զղջալով։ Քորեպիսկոպոս յիշւում էմեր մէջ Ժ. դարում, մինչև անգամ զօրապետի պաշտօնով և իբրև տէր-իշխող Գուգարաց աշխարհի մի մասին. երբ արքայորդին Աշոտ գնաց Ուտիացւոց Մովսէս իշխանին իրան հպատակեցնելու, ճանապարհին «մեծ քորեպիսկոպոսն, որ պայազատէրն իսկ զմասն Գուգարաց մերձ 'ի դրունս Ալանաց, գայր հասանէր զօրու բազմաւ 'ի թիկունս օգնականութեան թագաւորին». (Յովհաննէս կաթ. 163 երես). իսկ երբ Մովսէս իշխանը յաղթւում փախչում է Սիւնիք, մտածումէ գնալ մեծ քորեպիսկոպոսի մօտ իւր կողմըն ձգելու դիտաւորութեամբ և հաստատելու կրկին իւր իշխանութեան տակ (նոյն տեղը. 163 երես)։ Երևի երկրի բիրտ կեանքը ստեղծել էր քորեպիսկոպոս—իշխան և զօրապետ։ Ստեփաննոս Օրբէլեանը կտակների տակ ձեռք քաշող վկաների թւում յիշւումէ և «Ծղկայ քորեպիսկոպոս» (Լթ. գլ.); Ծղուկը Սիւնեաց 12 գաւառներից մէկն էր, որ այժմ կոչւում է Սիսիան, որ ենթադրել է տալիս թէ ամեն մի գաւառ ունէր մի քորեպիսկոպոս։ Քորեպիսների պաշտօնը մինչև այժմ էլ մնում է «գործակալ», «բարեկարգիչ» անուամբ,

նրանք չունէին այն իրաւունքները, ինչ որ քորեպիսկոպոսներն նախկին դարերում։

Գիւղական եկեղեցիները առանձին վերցրած կառավարւում էին ծխատէր քահանաների ձեռքով, դրամական մասը գտնւում էր երեցփոխանի կամ գանձապետի ձեռքին, որը և գնում էր եկեղեցու գործածութեան համար կանթեղները վառելու ձէթ, մոմ, բաժակի գինի (հաղորդութեան) և այլն և այլն։ Եթէ գիւղի, կամ քաղաքի մի եկեղեցում լինում էին մի քանի քահանաներ, կարգապահութեան վրայ հսկում էր աւագերէցը, նա որ առաջինն էր ձեռնադրուած, եկեղեցին օրհնում էր նա և եկամուտների-արդիւնքների վրայ հսկում էր և բաժանում ըստ սովորութեան։ Քահանան իրաւունք ունի կատարելու 7 եկեղեցու խորհուրդներից միայն 6-ը, այն է, մկրտութիւն, դրոշմ, ապաշխարութիւն, հաղորդութիւն, պսակ, և օծումն հիւանդաց. իսկ ձեռնադրութեան խորհուրդը վերապահւում է եպիսկոպոսին։ Քահանան պարտաւոր է ամենայն ճշտութեամբ կատարել բոլոր խորհուրդները այն կարգով և կանոնով, որով սահմանուած են եկեղեցու հայրերից, նա զանցառութիւնների դէպքում ենթարկւում է պատժի։ Ժամերգութեան և եկեղեցու այլ պաշտամունքները պարտաւոր է կատարել ճաշոցի, տօնացոյցի, ժամագրքի, խորհրդատետրի, Մաշտոցի, շարականի, Աւետարանի, Հին կտակարանի վրայ որոշուած սահմանումներով առանց որև է փոփոխութեան և թուլութեան։ Պատարագը, որ է գինու և հացի ձևով Քրիստոսի մարմնի առաջարկութիւնը, պէտի կատարուի տաճարում, սեղանի վրայ, օրուայ երրորդ ժամին, այն է ճաշից առաջ և ձէգից յետոյ՝ բացի Ծննդեան և աւագ շաբաթ օրուայ պատարագներից, որոնք լինում են երեկոյեան։ Մկրտութեան և դրոշմի սահմանումների մասին խօսուել է առաջին գըլուխներում։ Պսակատարութեան բոլոր պայմանների մասին կխօսուի յետոյ։ Հիւանդների օծման մասին պէտք է ասել, որ քահանան այդ խորհուրդը կատարում է միմեայն աղօթքով՝ հիւանդատիրոջ հրաւիրմամբ. հէնց սկզբից հայոց

մէջ չէ մտած իւղով օծելու սովորութիւնը (տես Ա. գիրք 413, 461)։ Հաղորդութեան՝ պատարագի (*) մասին կտանք հետեւեալ տեղեկութիւնները՝ իբրեւ ծանօթութիւն, որը չէ մտնում իրաւական սահմանների մէջ, քանի որ այդ խորհուրդը կապ ունի միայն խղճի հետ։ Քահանաների իրաւունքն էր քարոզել և ուսուցանել, դաստիարակել փոքրերին քրիստոնէական հաւատի մէջ. կապել և արձակել, թողութիւն տալով մեղքերին։ Քահանաների տնտեսական գործերում խառնուելը, եկեղեցու գոյքի և դրամների հաշիւների վարելը շատ սահմանափակ էր, այդ մասը ամբողջապէս գտնւում էր ժողովրդի ձեռքին։ Թէ որքան անզօր էին քահանաները գիւղի հարուստների, կամ իշխան կոչուած դասակարգի առաջ, և ինչպէս ստրկաբար, հլու հնազանդութեամբ կատարում էին դրանց քմահաճոյքները, շատ անգամ մեղանչելով եկեղեցական կարգերի դէմ, այդ երեւում է և հէնց այսօր, տես նաև Երիցեանի «ամենայն հայոց կաթողիկոսութիւն» 343 երես, ուտեղ մի որև է նայիբ պահանջում է հարսնիքատան 20 ոսկի փեսայից որ թոյլ տայ քահանային պսակը կատարել։ Գիւղական եկեղեցիների տնտեսական կառավարութեան մասին տես յետագայ գլուխները. պատժական և դատական խնդիրների մասին նոյնպէս յետագաները։—Ծխաբաժանութեան և քանակի մասին տես տնտեսական կառավարութիւնը։

ԾԱՆՕԹ. (*). Պատարագի հիմնադրութիւնը առաքեալների ժամանակից է, ժողովւում էին հաւատացեալները ամեն օր, բերելով հետները հաց, գինի, պտուղներ, գինին և հացը օրհնւում էր և ապա նստում էին ըստ պատուի աստիճանի, եպիսկոպոս, քահանայ, սարկաւագ, մեծերը, փոքրերը կարգով, վայելում էին սիրոյ երեկոն, սիրոյ ճաշը, ագապը, նախօրէն աղօթելով և ձեռքերը լուանալով։ (Вечери любви удревнихъ Христіанъ. 1870, Прав. Обозр.) Նրանք կարդում էին սաղմոս, առաքելական թղթեր, նահատակների պատմութիւնը, յետոյ ժողովարարութիւն էին անում աղքատների համար, արգելելով կամ եթէ ներս էին մտած՝ դուրս անելով յայտնի մեղաւոր անձանց, սկըսում էին ագապը, հաց ուտելը և ապա հաղորդութեան յիշատակը կատարել ըստ Յիսուսի օրինակի։ Այս ձևը տարածուած էր ամեն տեղ,

## Ժ. ՎԱՆԱԿԱՆ ԿԱՌԱՎԱՐՈՒԹԻՒՆ.

Դ. և Ե. դարերում ինչպէս տեսանք, բազմաթիւ վանքեր էին կառուցել լի վանականներով Միջագետքում, Կապպադովկիայում, Պաղեստինում, Հայաստանում և ընդհանրապէս արևելքում, մասնաւորապէս Եգիպտոսում, սրա համար Ոսկեբերանը ասում է, «երկինքը այնպէս զարդարուած չէ իւր բազմագոյն աստղերով, ինչպէս Եգիպտոսը զարդարւում է և փայլում կոյսերի և վանականների անթիւ բնակարաններով»։ Ոսկեբերանի և թէ այլոց վկայութեամբ կուսանոցները զուգընթաց գնում էին վանքերի հետ թէ Եգիպտոսում, թէ Թրակիայում. Թէոդոսի քոյր Պուլխերիան շինեց բազմա-

Հռոմում կայսրները երբ արգելեցին ծածուկ ժողովներ կատարելը, նրանք սկսեցին Հռոմից դուրս, մասնաւորապէս Երուսաղէմում մեծ բազմութեամբ կատարել։ Որովհետև հացկերոյթից յետոյ հաղորդութեան կարգը շատ անգամ աղմուկներ էր յարուցանում, այն էլ եկեղեցիներում, ուստի և հէնց առաջին դարում, ըստ Օգոստինոսի Պօղոս առաքեալը փոխեց այդ կարգը, պատուիրելով ուտել տանը և ոչ եկեղեցում, և երկրորդ՝ առաջ կատարել հաղորդութիւնը և ապա սկսել սիրոյ երեկոն (Պօղ. Կորնթ. ժա)։ Կիպրիանոսի, Տերտուղիանոսի Բարսեղ մեծի վկայութեամբ, այդ փոփոխութիւնը այսինքն հաղորդութիւնը հացից առաջ անելու կարգը, եղաւ 65 թուից սկսած. իսկ Աֆրիկայի եկեղեցիները մի առ ժամանակ էլի չարունակեցին հաղորդութիւնը տալ հացից յետոյ ըստ Յիսուսի օրինակի. իսկ հաղորդութեան, ագապի ժամանակն տարբեր էր ամեն տեղ, սովորաբար կատարում էին երեկոները և գիշերը, յետոյ արդէն առաւօտները և ճաշի ժամանակ (Տերտուղիանոս). ճաշերը լինում էին կամ եկեղեցում կամ այն տանը որտեղ պատարագ էր լինում։ Բ-դարուց յայտնի է և նահատակների յիշատակին դրուած ճաշեր-պատարագներ, տարին մի անգամ։ Այդ երեկոների համար զանազան աննպաստ լուրեր էին տարածում հեթանոսները՝ իբրև անբարոյականութեան վայրեր, իսկ պետութիւնը արգելում էր իբրև վնասակար սովորութիւն, որը կամաց կամաց վերացաւ և առաջացաւ պատարագի այն ձևը, ինչ որ այժմ ունինք. այս մասին քաղում ենք հետևեալ գրքերից (Апостольскія литургій Восточной церкви. Литургій апос. Іакова, Θаддея, Марія и св. Марка. Ал. Петровскій. СПБ. 1897 г. Собраніе древнихъ литургій восточныхъ и западныхъ — I и II выпус. СПБ. 1874. редакц. Христ.—Чтенія).

թիւ կուսանաց վանքեր։ Օգոստինոսի վկայութեամբ կուսանաց վանքերը ոչ միայն անմերձենալի էին երիտասարդների, այլ և ծերերի համար, որոնց թոյլ էր տրւում միայն կանգնել դարպասների մօտ և նուէրներ տալ ու հեռանալ։ Վանքերը ունէին կալուածքներ՝ շնորհուած կայսրներից, իշխաններից, որոնք և անձեռնմխելի էին համարւում մասնաւոր անձանց նկատմամբ։ Վանքերը գտնւում էին՝ առաջնորդների հսկողութեան ներքոյ, որոնք և հսկում էին վանականների վարք ու բարքի, նիստ ու կացի վրայ։

Թեմերում գտնւում էին վանքեր, որոնք անմիջապէս ենթարկւում էին միտրոպոլիտին և ապա պատրիարքին, կոչ-

«Առաքելական կարգադրութիւններ» ի 8-րդ գրքի հեղինակը (տես Ա. գիրք 56 երես) ասում է որ Յակոբ Տեառն եղբայրը հիմնեց երեկոյեան, առաւօտեան և ցերեկուայ ժամերգութիւնները, պատարագի երկրորդ մասը վերագրելով Յովհաննէս Զեբեդիայի եղբօրը։ Յակոբի պատարագի մասին յիշում է Եպիփանը(† 403) Ե. դարուց, համարելով նրա պատարագը հին կազմածներից մէկը։ Ապա Պօլսի պատրիարք Պրօկղը († 447), Ոսկեբերանի աշակերտը, վկայում է որ «Յակոբը վիճակով ստացել էր Երուսաղէմի եկեղեցին և էր առաջին եպիսկոպոս», հին պատարագ կազմողներից մէկն է, սրա պատարագը եղաւ հիմք Բարսեղի և Ոսկեբերանի պատարագներին։ Այս .մասին վկայում են Աղէքսանդրիայի պատրիարք Մարկոսը, Եփեսոսի եպիսկոպոս Մարկոսը, Վիսարիոն՝ Նէոկեսարիայի եպիսկոպոսը։ Հայոց պատմագրների մէջ, Մովսէս կաղականտուացին, Ուխտանէս, Ստեփաննոս Օրբելեան մեծ պատկառանքով են վերաբերւում դէպի Յակոբ, իբրև հայոց հաւատի սկզբնական հիմնադիր, որ ասել է թէ նրա ժամերգական և պատարագի արարողութիւնը ընդունում են սկզբից հայոց մէջ մտած (տես նախորդ գլուխներից-Նախալուսաւորչեան եկեղեցին)։ Միաբնակները-ղպտիները, եաղուբիները, մարօնիտները ընդունում են, որ իրանց պատարագը Յակոբինն է։ Ասսեմանի կարծիքով Երուսաղէմի պատարագը ոչ միայն Երուսաղէմի թեմում, այլ և համարեա բոլոր արևելեան երկրներում գործադրւում էր. այս պատարագը գործադրւելիս է եղել և արևմուտքում; սրա կարծիքով Յակոբի պատարագը գրել է ասորերէն, ուրիշներն (ընտոդոս) ժխտում են այդ, ընդունելով թէ պատարագը գրուած է եղել յունարէն և թարգմանուած ասորերէն։ Բարսեղ մեծը († 379) կազմեց պատարագ հների վրայ հիմնուած, որը ամբող-

*ւում էին Տերունի (ստաւրոպիգ)։ Վանքերի մերձակայ հըսկողութիւնը յանձնւում էր վանահայրերին, որոնք կոչւում էին հայրեր, աբբա, վարդապետ. կուսանաց վանքերինը մայրապետ, նրանք ունէին օգնականներ, տնտեսներ, հանդերձապահներ, դատավարներ և այլն և այլն։ Վանահայրերի ընտրութիւնը պատկանում էր եպիսկոպոսին, պատրիարքին՝ ի հարկէ եղբայրութեան կամ միաբանութեան համաձայնութեամբ, առանց որի ընտրութիւն չէր կարող լինել։ Իսկ մասնաւոր անձինք իրաւունք ունէին վանահայր նշանակել իրանց շինած վանքերում։ Վանահայրերի պարտաւորութիւններն էին, 1) ընդունել վանականութեան մէջ անխտիր ամեն դասակարգի մարդկանց՝ ընտրելով արժանա-*

ջութեամբ մեզ չի հասել, այլ փոփոխութեամբ և կտորներով. մինչև Բարսեղ գրաւոր պատարագ չի եղել, այլ բերանացի։ Սրա պատարագը թարգմանուելով ասորական, ղպտական, հաբէշական լեզուներով, գործադրւում էր Ասորիքում, Աֆրիկայում։ Բացի Բարսեղի պատարագից կար և Ոսկեբերանի († 407) պատարագը, որի իսկականը մեզ չի հասել. վերջինս շատ նման է Բարսեղի կազմածին և կրճատած դրութեամբ, որ արդիւնք էր ժողովրդի տրտնջանաց, որ պատարագի երկարութեան պատճառով չէր յաճախում եկեղեցի։ Այդ գրքում յիշւում է և Գրիգոր Լուսաւորչի պատարագ, որ գործ էր ածւում Հայաստանում, և հայ կաթոլիկների պատարագ-Մխիթարեանց գործածածը։ Լուսաւորչի պատարագը երեք շրջանի է բաժանում, 1) 300-ից մինչև 491 թիւը, երբ ըստ Զամչեանի Բաբգէնի ժամանակ մերժուեց քաղկեդոնականութիւնը (տես Ա. գիրք, Դուինի 507 թուի ժողովը, 356 երես). 2) 491-ից մինչև Շնորհալի (1166-1173) և 3) շրջան, Շնորհալուց մինչև այսօր (Explicalion de la messe—Лебріона 1716)։ Վերոյիշեալ պատարագները համարում է հեղինակը Երուսաղէմ- Անտիոքեան խումբ, հիմնուած Յակոբ Տեառն եղբօր պատարագի վրայ։ Նախալուսաւորչեան շրջանում ինչպէս և ասացինք, երկու լեզուով էր ժամերգութիւնը կատարւում հայոց եկեղեցում, ասորոց՝ արևելեան կողմերում և հարաւային, և յունաց՝ արևմտեան կողմերում։ Լուսաւորիչ բերաւ այն պատարագը որը գոյութիւն ունէր արևելքում, այն է Յակոբ Տեառն եղբօր՝ յունական փոփոխութեամբ, այն ինչ մինչև այդ՝ արևելեան և Հայաստանի հարաւային մասում գործ էր ածւում Յակոբի պատարագի ասորական ձևակերպութեամբ. թէ ինչպէս հաշտեցրեց Լուսաւորիչ

ւորը և յարմարաւորը. 2) տալ վանականներին աստիճան, նշանակել երգիչներ, ընթերցողներ և այլն։ 3) Միակ կարգադրել վանքի բոլոր գործերը, հսկել բոլոր պաշտօնեաների գործավարութեան վրայ և պատասխանատու լինել ամբողջ վանքի կողմից։ 4) Կառավարել խորհրդով և ընդհանուր վճռով բոլորկալուածքները, գոյքերը, ժողովել նուէրները, դրամները, նիւթեղէնները։ 5) Հսկել վանական կանոնների անթերի կատարման վրայ, աղօթքների պաշտամունքների լրիւ գործադրութեան վրայ։

Հայոց մէջ վանքերը սկսուեցին շինուել Լուսաւորչի օրով, լցուեցին վանականներով, որոնք մեծ մասամբ օտարական-

այդ երկուսի թեթև տարբերութիւնները, յայտնի չէ, միայն գիտենք որ «Հաւատամք»—ի վերջում աւելացրեց «իսկ մեք փառաւորեսցուք»—ը, այն ինչ արեւելքում «Հաւատամքը» պատարագի մէջ մտաւ Անտիոքի Պետրոս Փուլոն (438 թ) եպիսկոպոսի ձեռքով, իսկ Պօլսում 510 թուին։ Վրթանէսը այդ երկու տարբերութիւնների համար հրահանգ խնդրեց Երուսաղէմի Մակարից և վարուեց վերջինիս տուած սահմանադրութեամբ (տես Ա. Գ. 483 երես)։ Յամենայն դէպս հայոց պատարագի, հէնց ժամերգութեան շրջանի բաժանումն սխալ չէ 300—ից մինչև Սահակ, Յովհան Մանդակունի, բռնում է 406—490 թուերը, երբ թարգմանիչները ամբողջապէս հայացրին ամեն ինչ, լրացրին Գիւտ և Յովհան Մանդակունին և տուին այն ժամերգութեան ձևը, ինչ որ այժմ ունինք. Օձնեցու 719-ին արած ժողովի կանոնները հաստատում են այդ. (տես Ա. Գ. 406-425 երեսները)։ Շնորհալին լրացրեց թերութիւնները։

Պատարագի բ. խումբն է «Աղէքսանդրիան» (Աֆրիկայի).

Աղէքսանդրիայում յարգի էր Կիւրեղի պատարագը, որ հիմնուած էր Մարկոս աւետարանչի պատարագի վրայ. հաբէշներինը «Առաքելական կարգադրութիւնների» մէջ յիշուած պատարագն է, յետոյ արդէն Նրանք էլ ընդունեցին Կիւրեղինը (444 թ.), նոյնպէս և ղպտիները։—

Գ. խումբն է Միջագետքի պատարագները—Թադէոսի և Մարի-ի. Նեստորականները կամ Քաղդէացիք գործ են ածում «առաքելոց» կոչուած պատարագը, որ է Թադէոսի և նրա ուղեկից Մարիի, որը եղաւ Սելևկիայի եպիսկոպոս Թադէոսից և Ադդէից յետոյ. այս պատարագը շատ հին է և Նեստորական ոչինչ չունի, շատ պարզ է և նախական ձևով, սրա մէջ չկայ ընծայաբերումն, վերաբերումն և

ներ էին, ահագին զարկ ստացաւ վանականութիւնը Ներսէս մեծի օրով, շինուեցին կուսանաց վանքեր, յանձնուեցին վանքերին հողեր, կալուածքներ, նուէրներ, մինչև իսկ որոշակի տուրքեր և հարկեր նշանակուեցին. վանահայրերը մեծ մասամբ օտար էին և մեծ իրաւունքներով, կոչւում էին վարդապետ, առաջնորդ, վերակացու. Գինդի համար Բիւզանդ ասում է 230 երեսում. «Այս Գինդը Տարօն գաւառից էր, մեծ Դանիէլի աշակերտ էր եղել, իսկ նրանից յետոյ գլուխ աբեղայից, և վարդապետ միանձանց, և առաջնորդ մենակեցաց, և վերակացու վանորէից, և ուսուցիչ ամենայն անապատաւորաց, և տեսուչ ամենեցուն». Վանականութիւնը այնքան ուժեղացաւ բարոյապէս որ սկսեցին եպիսկոպոս, պատրիարք, կաթուղիկոս ընտրել այդ շրջանից. եկեղեցու ամրութեան հիմք համարւում էր վանականութիւնը, մանաւանդ երբ տիեզերական ժողովների պայքարներում նրանք դուրս էին գալիս պաշտպան և ջատագով ուղղափառ եկեղեցուն, նրանք խմբերով շրջում և քարո-

հաւատամքը. Նիլը ասում է «այս նշան է յամենայն դէպս խորին հնութեան, նա պարզ է, պատկառելի, բոլորովին ազատ է վերջին դըրողների փքուն յաւելումներից և իւր կազմութեամբ չի կարող յառաջ եկած լինել Կեսարիայի կամ Երուսաղէմի պատարագի տարածումից կամ փոփոխութիւնից», հնութեան կողմից հաւասարեցնում է Յակոբի և Մարկոսի պատարագների հետ և բնագրի համար աւելացնում, որ յունականի թարգմանութեան հետքեր չունի: Բայցի այս պատարագից Նեստորականները ունին Նեստորի պատարագը, տարուայ մէջ 5 անգամ (Դիոդորի, Թէոդորի, և Նեստորի տօներին). բայցի այդ նրանք գործ են ածում և Թէոդոր Մոպսուեստացու պատարագը, որ շատ նըման է «Առաքելոց»-ին: Արդեօ՞ք Նախալուսաւորչեան Ասորական մասի Հայաստանում այս Թադէոսի և Մարիի պատարագը չէին գործածում. պատարագների համեմատութիւնից միայն հնար կլինի որոշ բան ասել: Դ—խումբն է Արևմտեան պատարագները. բացի յունականի նման պատարագներից այնտեղ կար Պօղոսի ուղեկից Բառնաբասի պատարագը, Մեդիօլանի եպիսկոպոս Ամբրոսիոսի († 397) պատարագն է, որ է Հռոմինը. կար և Պետրոսի ժամանակներից կազմուած պատարագ, որ գործ էր ածւում Իտալիայում: Կային և Գելասի պապի (Ե. դար) և Գրիգոր մեծի պատարագները:

գում էին քրիստոնէութիւնը. Սահակ իւր 60 լուսկեաց վանականներով շրջում էր Հայաստանի բոլոր անկիւններում և կարգաւորում ամեն ինչ։ Վանականութեան վարկը բարձրացաւ պատկերամարտութեան ժամանակ, այնքան շատ էին վանականներից եպիսկոպոս ընտրուած անձինք, որ հարց բարձրացաւ, թէ վանականութեան ուխտ անողը, հնազանդութեան, ամուրիութեան, անշահասիրութեան երդումն ընդունողը կարող է ժողովրդի մէջ ապրել, ռոճիկ կամ նուէրներ ստանալ, լինել տներում, կանանց շրջանում, որոնք հակասական էին վանական ուխտի հետ. կարծիքները տարբեր էին, բայց կեանքը գնում էր իւր հոսանքով և նոյն ձևով ընտրութեան ժամանակ առաւելութիւն ստանում էին վանականները։ Պօլսոյ 117 եպիսկոպոսներից 57-ը հոգևորականներից էր ընտրուած, 58-ը վանականներից, 2-ը անորոշ (Твор. отц. 1862 г. о санѣ епископскомъ въ отношеніи къ монашеству)։ Հայոց մէջ հէնց ամուսնութիւնը վերանալուց յետոյ, մեծ մասամբ կաթուղիկոսները և եպիսկոպոսները ընտրւում էին կուսակրօններից-վանականներից, բացառիկ դէպքերում քահանաներից և աշխարհականներից։— Ե. դարու ժողովի կանոններից երևում է արդէն որ եպիսկոպոսական աթոռների վրայ նստած անձինք կուսակրօն էին, որ ենթադրել է տալիս, թէ՛ կամ ամուսնացած հոգևորականները ընտրութեան դէպքում հեռացնում էին կանանց կուսանոցները և իրանք կառավարում թեմերը, կամ ուղղակի ընտրւում էին կուսակրօն հոգևորականներից։ Ս. Սահակի կանոնները խստութեամբ արգելում են վանքի և եկեղեցու ինչքը և ստացուածքը յանձնել կամ պարգևել ըստ քմահաճոյից իրանց բարեկամներին և մերձաւորներին, որ ասել է թէ եկեղեցին միշտ ձգտում էր ունենալ անզաւակ. անամուսին առաջնորդներ, որոնք խիկութեամբ չ'կարողացին կատարել իրանց սրբազան պաշտօնը յօգուտ ժողովրդի և եկեղեցու ու վանքի։

## Բ. ԵԿԵՂԵՑՈՒ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԿԱՌԱՎԱՐՈՒԹԻՒՆԸ.

### ա) եկեղեցիների և վանքերի տնտեսավարութիւնը։

( Изложеніе кононическихъ постановленій . . . “ „Христ. Чтеніе 1865 г )

Թէ ինչպէս պիտի ապրէին հոգևորականները, եկեղեցու սպասաւորները, այդ ցոյց տուաւ Յիսուս իւր կեանքով և օրինակով, ուր գնում էր, մտնում էր մէկի տունը, հաց ուտում և դուրս գալիս, կամ սպասում էր ունկնդիրներից մէկնու մէկի հրաւէրին, կամ ընդունում էր յօժարակամ նուէրներ, որոնցով հոգալ էր տալիս իւր և իւրայինների պէտքերը, և մինչև իսկ աղքատների. նոյն ձևով էլ պատուէրներ տուաւ իւր աշակերտներին ապրել ժողովրդի մէջ, քարոզելով և շրջելով, առանց մտածելու հացի վրայ. (Ղուկ. է, ժ գլ. Մատթ. ժ գլ.)։ Նոյն ձևով վարուեցին և առաքեալները, ստանում էին յօժարակամ նուէրներ և ուտում ու հանգստանում ամեն մի տան, ուր սիրով ընդունում էին և հիւրասիրում։ Պօղոս առաքեալը շնորհակալութիւն է յայտնում Փիլիպպեցիներին, նրանց ուղարկած նուէրների համար (փիլ. Դ.), Փիլիմոնին առաջուց գրով յայտնում է իջևանելու տեղի համար (փիլ. 22)։ Իսկ առաջին շրջանում մինչև իսկ քրիստոնեայ դարձածները վաճառում էին ամեն ինչ և յանձնում առաքեալներին ընտրուած անձանց՝ հոգալու բոլորի կարիքները և պէտքերը. (Գործ. բ.) Առաքեալները նոյնը պատուիրում էին իրանց յաջորդներին, հրահանգելով՝ սեղանի ծառայողը սեղանից ուտի, տաճարի ծառայողը՝ տաճարից (Ա.-կորնթ. թ. գլ.)։ Առաջին շրջանում քրիստոնեայ-հրէաները հետևելով հին-ուխտի կարգերին (Ղև. 27 գլ. 30, 32, թուոց, 18 գլ. 21, 26, 28, 31), տանում էին փող, հաց և գինի հաղորդութեան համար, խունկ բուրվառի, ձէթ կանթեղների համար, պաշտամունքից յետոյ, մնացած ուտելիքով կերակրում էին քահանաները, եկեղեցու սպասաւորները և ժողովուրդը, աւելին

տարւում էր քահանաներին և բաժանւում աղքատներին։ Այդ որոշում է Ա.-Առ. կանոնները Ա. գիրք, 84, 85, 101, 107 երես։ Թէոփիլէս Աղէքսանդրացին իւր 8 կանոնով որոշում է պատարագի մնացորդը յանձնել հոգևորականներին և չուէնևորներին (Ա. Գ. 253)։ Հոգևորականների այդ ձևով սննդուելու վերաբերմամբ խօսում են Յուստինոսը, Տերտուղղիանոսը, Առաք. կարգադրութիւնները (Ա. Գիրք, 62 երես)։ Պատարագը, ընծայաբերութիւնը, սիրոյ ճաշերը լինում էին ամեն օր, Պօղոս առաքեալը շատ գանգատներ լսելով կերուխումի ժամանակ եղած անկարգութիւնների վերաբերմամբ, որոշեց ընծայաբերութիւնները կատարել միմեայն կիւրակի օրերը (Ա.—կորնթ. ժզ.). իսկ միքանի տեղերում նուիրատուութիւնները ժողովում էին ամսէ ամիս (Կիպրիանոսի թուղթ)։ Այս ձևով կառավարւում էր եկեղեցին և հոգևորականութիւնը մինչև Դ. դարը. այդ դարում երբ Հռոմում քրիստոնէութիւնը քաղաքացիական կրօն դարձաւ, եկեղեցու և նրա պաշտօնեաների ապահովութեան խնդիրը բոլորովին այլ կերպարանք ստացաւ։ - Կոստանդիանոս մեծը իրաւունք տուաւ եկեղեցուն ստանալ նուէրներ դրամով, կալուածքով թագաւորներից, իշխաններից կտակի միջոցով. Թէոդորոս և ապա Յուստինիանոս որոշեցին՝ անժառանգ անձանց գոյքը և ինչքը յանձնել եկեղեցուն. ամեն մի քաղաքում որոշուեց տէրունական հողերից որոշ մասն յատկացնել եկեղեցուն, և նրա արդիւնքով ապահովել եկեղեցականների տնտեսական կեանքը (Սոզոմէն, Ա. Ե.)։ Կոստանդիանոս մեծը Նիկիայի ժողովին մասնակցող եպիսկոպոսների գնալ՝ գալու համար հրամայեց բոլոր կուսակալներին, տալ առատութեամբ ամբողջ ճանապարհի ընթացքում նրանց ծախսը, հոգալ պէտքերը արքունական հարկերի հաշուից (Եւսեբիոս, Թէոդորիտ)։ Յուստինիանոսը հրամայեց որ իւրաքանչիւր մարդ, որ իւր յիշատակին եկեղեցի է կառուցանում, պէտք է անպայման ապահովացնի նրա գոյութիւնը՝ հոգալով եկեղեցու սպասաւորող հոգևորականների պէտք եղած կարիքները։

Նոյնպէս և իրաւունք էր տրւում հոգևորականներին ազնիւ աշխատանքի միջոցով հայթհայթել իրանց ապրուստը առաքեալի օրինակին հետևելով (Գործ. Ի. 34)։ Հայաստանը բոլոր ազգերից առաջ շնորհիւ Լուսաւորչի և Տրդատի ընդունելով քրիստոնէութիւնը իբրև քաղաքացիական կրօն, հոգ տարաւ ապահովեցնելու և եկեղեցիների և հոգևորականութեան տնտեսական դրութիւնը։ 1) Թագաւորական հրամանով յանձնուեցին եկեղեցիներին և հոգևորականներին բոլոր մեհեանների կալուածքները, ոսկէ և արծաթի իրեղէնները. 2) Թագաւորական հրամանով ամեն մի եկեղեցի ստացաւ հող ի մշտական սեպհականութիւն. 3) Մասնաւոր եկեղեցիներ և վանքեր շինող իշխանները յատկացնում էին կալուածքներ 'ի մշտական սեպհականութիւն. 4) Լուսաւորչի և Տրդատի կարգադրութեամբ թէ եկեղեցիները և վանքերը, և թէ հոգևորականները ստանալու էին ամեն մի տնից յօժարակամ և պարտաւորական տուրք. 5) Եկեղեցիները իրաւունք ունէին փողով գնելու կալուածքներ. 6) Եկեղեցիները իրաւունք ունէին կտակով ստանալու շարժական և անշարժ գոյք, մանաւանդ անժառանգութեան դէպքերում. 7) Գոնէ մինչև Ե–Զ—դարը կաթուղիկոսները և առաջնորդները ունէին սեպհական ժառանգական գիւղեր և հողեր.

1; Եկեղեցիների առաջին ապահովողը եղաւ Տրդատ թագաւորը, որը հրամայեց մեհեանների ոսկին ու արծաթը և կալուածքները յանձնել եկեղեցիներին. այս մասին ունինք Ագաթանգեղոսից վկայութիւններ։ «Եւ զդաստակերտն (Անահտին պատկանող) հանդերձ գետնովքն և սահմանօք նուիրեցին եկեղեցւոյ ի սպասաւորութիւն». ճր. ։ Նոյնպէս և Անի ամրոցինը. «Եւ զաւանն ամրաւն հանդերձ 'ի ծառայութիւն եկեղեցւոյ նուիրէին». «Եւ զգանձս երկոցուն մեհենացն աւարեալ ժողովեալ, ի նուէր սուրբ սպասու եկեղեցեաց Ա՟յ թողին տեղօքն հանդերձ». ձթ. ;՝«Եւ զգիւղն ա՛մ դաստակերտօքն և գետնովքն հանդերձ սահմանօքն յանուն Ա՟յ նուիրէին». ձժ. ։ «Շինեցին կազմեցին զտեղիսն

(վկայարանսն) և զարդարեցին ոսկի և արծաթի կանթեղամբ լուցելովք, և լապտերաւք վառելովք, և աշտանակօք բոր-բոքելովք»։ «Նոյնպէս և զոսկին և զարծաթն և զկտաւսն փութով կուտէին առ դուրս հնձանին. . . . և այդ ամենայն (հրամայում է Լուսաւորիչ) 'ի սպաս փառաւորընկալ սեղա-նոյն 'ի ձեռն քահանայապետին կացելոյ»․ 433 երես։ Յու-նաց Կոստանդիանոս մեծի տուած ընծաները, բոլորը—ոսկի, արծաթ յանձնեցին եկեղեցիներին. «Եւ բերէին զպարգևս բերեալս անդստին, զոսկին և զարծաթն, և զպատուական կարասին, 'ի նուէրս սպասու Ս՜յ եկեղեցւոյն և 'ի տունս նուիրաց սրբոց վկայիցն դնէին, նաև զտուեալ զոսկի սպասս կայսերն 'ի նոյն հանգիստ սրբոցն դնէին»․ 506 երես․ Ա.Գ. ։
2; Տրդատ հրամայեց բոլոր աւանների և գիւղերի եկեղեցի-ներին հող յատկացնել, հոգևորականութեան ապահովութեան համար, կարգադրելով, որ աւանը տայ եկեղեցուն 7 ծխի հող, իսկ ագարակները (գիւղերը) 4. «Սոյնպէս և թագաւո-րն յամենայն իշխանութեան իւրում առ հասարակ՝ գրեաց չորս չորս հողս յամենայն յագարակ տեղիս, իսկ յաւանսն եւթն եւթն երդոյ հող, ի ծառայութիւն սպասաւորութեան եկեղեցւոյ նուէր պտղոյ Տեառն մատուցանէր»․ 443 երես․ Ա.Գ. ։ Այդ կարգադրութիւնը տևեց մինչև Պապ թագա-ւորը, որը քիչացրեց հողերի քանակութիւնը․ «Եւ հատ ես յարքունիս Պապ թագաւոր զհող եկեղեցոյն, զոր տուեալ էր թագաւորին Տրդատայ առ մեծաւն Գրիգորիւ քահանայապե-տին ի սպաս պաշտաման եկեղեցւոյ ընդ ամենայն երկրին Հայոց։ Զի յեւթն հողոյն զհինգն հատանէր յարքունիս, և զերկուսն միայն թողոյր երկուս հողս։ Եւ ըստ հողոյն թողոյր երկուս երկուս առ գեղ մի երէց և մի սարկաւագ, և զայն 'ի սպասաւո-րութիւն կացուցանէր լիտ 'ի ծառայութեան զեղբարս և զորդիս երիցանցն և սարկաւագաց»․ Բիւզ. 194 երես։ Եղի-շէն յիշում է որ Վասակը. «օրէցօր եկեղեցիների ռոճիկը շատացնում էր»․ Գ. 81 երես։
3; Մասնաւոր անձինք ապահովեցնում էին իրանց կառուցած եկեղեցիները թէ կենդանութեան ժամանակ, թէ մահուան

դէպքում կտակների միջոցով։ Դեռ ևս Ե. դարում, ինչպէս վկայում է Ղազար Փարպեցին, Վահան Մամիկոնեանը և եղբայրները ոչ միայն նուէրներ էին տալիս Էջմիածնի կաթուղիկէի վանքին, այլ և ռոճիկ, կանոնաւոր և ժամանակին։ Մխիթար Գօշին պահողը, վանքին օգնողը և ամեն պակասութիւն հոգացողն էր խնամակալ իշխանը։ Բագրատունեաց, Արծրունեաց թագաւորները, Սիւնեաց իշխաններով գիւղերով կտակներ էին անում և կալուածքներով նուէրներ տալիս։ Ստեփաննոս Օրբէլեանը (ԺԳ. դար) այդպիսի կտակների շատ փաստեր է բերում. «Կամաւն Ա՟յ ես Սուփան՝ Սիւնեաց իշխան, շինեցի զմաքեննոյաց եկեղեցիս և անխնայաբար զարդարեցի պատուական սպասուք և Աստուածային կտակարանօք, և ետու զսեփական տեղն մեր 'ի սա, որ ընդ անուան եկեղեցոյն Աստուածածին ասի, ամենայն սահմանօք, լերամբ և դաշտիւ, և ետու որս ձկանց զԾողաշէն սեղանոյն և եօթն հարիւր դրամ 'ի դեղկանայ գետոյ ղապալէն, երկու հարիւր դրամ 'ի կաթկայ, 350 յԱնմեռէն, որ լինի 1250 դրամ, ետու և 5 կուղպակ ի յԱնի և 5 այգի յԵրևան և հինգ հարիւր առու այգի 'ի գիւղաքաղաքն Գառնի, և 2 այգի յԵղիկկիս . . . . ետու և ջոլիրս եզանց և ջոկս զուարակաց և անդեայս և հօտս ոչխարաց». 131 երես։

Նոյն ձևով Փիլիպպէ Սիւնեաց իշխանը 844 թուին նուիրում է Տաթև գիւղը վանքին «ամենայն սահմանօք, լերամբ և դաշտիւ, այգօքն և ընկուզենօք, մարգագետնովք և ջաղացանով և որ ինչ համօրէն սահմանք են . . . » այն պայմանով որ ոչ ոք իրաւունք չունենայ—«հեռացուցանել, մի՛ վաճառել, մի՛ փոխել, մի՛ գրաւական դնել, այլ որ եկեղեցւոյ սպասաւորք լինին՝ իշխան լիցին ամենայն սահմանացն . . . Վայելեցէք ցգալուստն Քրիստոսի»։ Փառաւոր է 906-ի կրտակը Տաթևու վանքի նաւակատեաց տօնին հայոց թագաւորի, կաթուղիկոսի կնքով և վկայութեամբ. «Ահա այս իսկ են սահմանք զոր մեք ոտիւք մերովք կոխեալ և աչօք մերովք տեսեալ և ձեռօք մերովք նշանեալ՝ առանց զրկութեան և յափշտակելոյ գրեցաք և կնքեցաք մատանեաւ մերոյ

արքայիս և կաթուղիկոսիս և մեր իսկ». (168 երես)։

4; Եկեղեցիները և վանքերը հողերը ձեռք է բերում նաև դրամով, գնելով. դրա բազմաթիւ փաստերը կարելի է գտնել 'ի միջի այլոց և Ս. Օրբէլեանի պատմութեան մէջ, նոյնպէս և այդ հաստատութիւնների «զապալանների» մէջ, որոնք ձեռագրերով գտնւում են հին գործերի մէջ։

5; Վանքերի և եկեղեցիների արդիւնքների աղբիւրներից գլխաւորն է յօժարակամ նուէրնիր, տուրքեր, պտուղներ, տասանորդներ, խաչահամբոյրներ։ Բիւզանդ 218 երեսում յիշում է Մանուէլ սպարապետի տուածների մասին. «բազում մասունս յընչից իւրոց տայր յեկեղեցիս և 'ի վկայանոցս, և բազում գանձս տայր ցքահանայապետսն և ապա մեռանի»։ Այսպէս Ա.-ի համար յիշատակում է Յովհաննէս կաթուղիկոս-80 երեսում. «այլ և իձեռս հայրապետին (Գէորգ) հաւատայր զլիակատար գանձարանացն մթերս՝ և զերամակս ձիոց և զդասակս անդէոց և զհօտս ոչխարաց, ամենեւին բաշխել յեկեղեցիս ուղղափառաց 'ի նուիրումն պատարագին սրբութեամբ»։

Բացի նուէրներից կային և նշանակած տուրքեր, որոնք պարտաւոր էր ժողովուրդը վճարել։ Ներսէս մեծը 2000 աչափ վանքերից զատ շինեց բազմաթիւ օտարանոցներ, աղքատանոցներ, ուրկանոցներ, որոնց պահպանութեան համար որոշ գիւղերի վրայ տուրքեր նշանակեց. Սահակը թարգմանելով Լուսաւորչի կանոնները պտղի և տասանորդ տուրքերի վերաբերմամբ պարտաւորական դարձնելով հրամայեց գործադրել իբրև Լուսաւորչաւանդ կարգ։ Փաւստոսն ասում է Պապի համար, «Եւ զկարգս պտղոյն և զտասանորդացն՝ որ 'ի նախնեացն կարգեալ սովորութիւն էր տալ յեկեղեցին, վասն այնորիկ հանէր հրաման ընդ աշխարհ, զի մի՛ ոք տացէ»-92 երես։

Փարպեցու թղթից երևում է կամաւոր տուրքերի և նուէրների տալու ձևը և քանակը. «Բայց երեք եղբարքն էլ սիրում էին ս. կաթուղիկէի վանքը ընծաներ և ամեն հարկաւոր բաներ նուիրելով, որոնցից ամեն մէկի տուածը լայտ-

նի էր և գրով մնաց վանքում, և ճշմարիտ որ Տիրոջդ կամքի կատարողները դրանք եղան։ Որովհետև, . . . . . դրանք եղան քո խօսքի հրամանը կատարողները, առանձին առանձին, իրենց կամեցողութեամբ վանքի պտղաբերութիւնը հաստատելով»։ «Իսկ ինչ որ կորզել էին ինձ տարեկան տէր Ներսէհը և Հրահատը-կերակրի, հանդերձի և ձիու համար, յայտնի է, նոյնպէս և Տիրոջդ եղբօրորդիներից նշանակուածը, այն էլ դեռ հերիք էր լինում ինձ, և երբեմն իմ աւելորդներից վանքի պէտքերի համար էր գործ դրւում»։ Թէ իւրաքանչիւր գիւղ պարտաւոր էր հարկ և կամաւոր տուրք տալ եկեղեցիներին, վանքերին և հոգևորականութեան, այդ երևում է և յետագայ դարերի գրողների յիշատակութիւններից, որոնցից կարելի է յիշել Սիւնեաց աշխարհի պատմագիր Ստեփաննոս Օրբէլեանի (ԺԳ. դար.) 12 գաւառների 677 առաջ բերած գիւղերի ցուցակը և ամեն մի գիւղի տալիք հարկի քանակը Տաթևու վանքին. «Սիւնեաց երկոտասան գաւառաց հարկք եկեղեցւոյ ըստ հին սահմանին այս են. Ա. Ծղուկք գաւառ (այժմեայ Սիսիան). Նորիք 12. Տաթև 10. Ցուր 6. Ծացարտ 10. Խոտիտ 8. Տաշու 5. Հարժիք 10. Արիտ 6. . . . . » և այլն։ Այժմ նոյն գիւղերը՝ ինչպէս և բոլոր այլ թեմերի գիւղերը տալիս են նոյն տուրքերը, պտղեղէն, ցորեն, գարի, իւղ, ձու, աղ; Սուրբ Սահակին վերագրած կանոններում մանրամասն գրուած է թէ մատաղներից, տուրքերից ո՞ր բաժինը պիտի հասնի քահանաներին, ո՞ր բաժինն եկեղեցիներին (քահանայից), և ո՞ր բաժինն վանքերին (տես մանրամասն Ա. Գիրք 527 երես)։ Վանքերը սկզբից հէնց իրանց ապահովեցրին կալուածքներով, դրամով, և շարժական այլ կոյքերով, անասուններով։ Էջմիածինը ունէր 15 գիւղ, Ս. Կարապետի վանքը 12 գիւղ, որոնցից մէկը ունէր 1040 հեծեալ, 840 աղեղաւոր, 680 տիգաւոր, 280 պարսաւոր։ Տաթևու վանքը ունէր մօտ 30 գիւղ, ահագին անտառներ. Գիւտայ վանքը 5 գիւղ, 1000 արջառ, 12000 ոչխար, 700 ուղտ, 600 ձի, 400 էշ և 170 կատեպան այգիների համար։ Խոթայ վանքը ունէր 150,000 դես-

խադին անտառ և պրօտատեղի։ Նոյնպէս և միւս վանքերը։—

6) Կաթուղիկոսները և առաջնորդները նախկին վեց դարերում ունէին սեպհական գիւղեր, կալուածներ, որոնք յետոյ դարձան սեպհականութիւն կաթուղիկոսարանի՝ որ է Մայր Աթոռի,. և առաջնորդարանների։

Լուսաւորչից մինչև Սահակ կաթուղիկոսութիւն արաւ թևական տոհմը, որի կալուածքներն 15 գիւղ էին կազմում և մեծ մասամբ գտնւում էին Տարօն գաւառում, այդ գիւղերի արդիւնքով ապրում էին թէ կաթուղիկոսները, թէ նրանց ընտանիքները և թէ ամբողջ իրանց տոհմը։ Բիւզանդ ասում է Գ. գլխում, «իսկ սոցա (Գրիգոր և Արիստակէս) պատրաստեցան տեղիք բնակութեան և շիրիմք հանգստեան մեծին Գրիգորի՝ ի Դարանաղեաց գաւառին, 'ի գիւղն որ անուանեալ կոչի Թորդան և սրբոյն Արիստակեսայ որդւոյ նորա՝ յԵկեղեաց գաւառի, 'ի թիլն աւանի, ի կալուածս Գրիգորի հօրն իւրոյ»։ Յոնհաննէս կաթուղիկոսն 59 երեսում մինչև իսկ գրում է. «Այս գիւղ (Արամոն) սեպհական էր տան կաթուղիկոսարանի նախ քան զչարչարանս սրբոյն Գրիգորի յարքայէն Տրդատայ նմա իսկ հօգեցատուր պայմանաւ ընձեռեալ, որոյ և յետ կար վճռան պահի մինչև ցայսօր ժամանակի»։ Բիւզանդ Դ. 97 երեսում մինչև կաթուղիկոսարանին յատկացնում է ոչ թէ 15 գիւղ, այլ 15 գաւառ «Այրարատ, Դարանաղէ, Եկեղեաց, Տարօն, Բզնունիք, Ծոփք, և որ ընդ մէջ նոցա և որ շուրջ զնոքօք»։ Թաղեցին ի բուն գեղն հայրապետին Ներսէսի, որում անունն Ամօքն կոչի»—225 երես։ Լուսաւորիչ այդ գիւղերի կառավարիչ նշանակել էր Դանիէլ քորեպիսկոպոսին։ «Վերակացու և գլխաւոր եկեղեցեաց նահանգին Տարօնոյ, Գրիգորի ձեռական իշխանութեանն կողման մասին գործակալութեանն. . . »։

Ներսէս մեծի ժամանակ նոյն կալուածների կառավարիչն էր Խադ սարկաւագապետը։ Հայոց կաթուղիկոսարանի Դուին փոխուելուց յետոյ Տարօնի կալուածների մասին յիշատակու-

թիւն չենք գտնում, յիշւում են կալուածներ կաթուղիկոսարանին պատկանող Դուինի շրջակայքում՝ Արարատեան աշխարհում, որպիսի են Արտաշար, Կաւակերտ, Հոռոմոց Մարգ: Յովհաննէս կաթուղիկոսը պատմում է 63 երեսում. «Ոստիկան ոմն՝ Խուզիմա անուն, եկեալ 'ի Դվին քաղաք՝ զընդ իւրև կացեալն նուաճէր: Եւ տեսեալ զգեղեցկութիւն մեծամեծ դաստակերտացն տան կաթուղիկոսարանին՝ զԱրտաշատն և զԿաւակերտն և զՀոռոմոց Մարգ հանդերձ նոցունց ագարակօք և դաւաճանեալ 'ի չար ցանկութենէ. . . . . ի հայրապետէն Յովսէփայ խնդրէր տալ նմա զմեծ դաստակերտս իւր 'ի պատճառս գնոյ արծաթոյ»—ապա զօրով խլում է Արտաշատը: Այդ շրջանից յետոյ արդէն, երբ կուսակրօնութիւնը դարձաւ ընդ հանուր օրէնք, գիւղերն այլ ևս չէին մնում կաթուղիկոսական տոհմի սեպհականութիւն, այլ համարւում էին Մայր-Աթոռի, կաթուղիկոսական Աթոռի սեպհականութիւն: Առաջի շրջանում ինչպէս կալուածքները պատկանում էին կաթուղիկոսական տոհմին, նոյն ձևով թեմերի կալուածքները պատկանում էին առաջնորդական տոհմին: Սեպհականութիւնը ժառանգաբար մնում էր նոյն տոհմի մէջ եկեղեցու առաջնորդութեան հետ միասին, արդիւնքները գործադրւում էր թէ եկեղեցու պէտքերի և թէ առաջնորդի ու նրա տան պէտքերի վրայ:

Փաւստոս 228 երեսում յիշում է մի անկարգ Յովնան անունով եպիսկոպոսի մասին, որն խեղկատակութիւններով և ծամածռութիւններով թագաւորի սիրտը շահում էր և փոխարէնը ստանում գիւղեր և մուրհակներ. «իսկ թագաւորին զմուրհակս գեղայց կամ զագարակաց գրեալ և կնքեալ դնէին ի վերայ ողինն Յոհաննու փոխանակ ընդ մեղաց իւրեանց, և 'ի թագաւորացն հայոց ստացաւ իւր գիւղս և ագարակս և գանձս յուղղն լինելոյ և զմեղսն բառնալոյ ըստ բանիցն»: Թէորքան հողեր և կալուածներ ունէին եկեղեցիները, առաջնորդութիւնները, այդ երևում է Արշակի և Պապի հակաեկեղեցական կարգադրութիւններից, Մարդպետի բացարձակ բողոքից, Փարպեցու ժամանակ աբեղաների գործ դրած

միջոցներից, որ անպատճառ վանահայրութիւնը ձեռք ձգին։ Առաջնորդները և առաջնորդական եկեղեցիները ստանում էին թագաւորներից ոչ միայն գիւղեր, այլ և գաւառներ. Փաւստոս ասում է որ թագաւորը հրամայեց տալ Աղբիանոս եպիսկոպոսին. «Եւ ետ զաւանն և զբուն գահոյից գեղն նահապետին մանաւազենից եպիսկոպոսին Աղբիանոսի յեկեղեցի, զՄանաւազկերտ ամենայն սահմանօքն և կաւառակաւն հանդերձ, որ շուրջ զնոքօք էր, որ կայ 'ի կողմանս գետոյն Եփրատայ։ Եւ ետուն զբուն գեղն Որդունւոյ որոյ անունն էր Որդորու, ուստի եպիսկոպոս Բասանու»։

Խորենացին Սուրմակ քահանայի համար ասում է. «որ ապա զիւրոյ գաւառին զԲզնունեաց զեպիսկոպոսութիւնն 'ի Պարսից արքայէն եգիտ ունել ազգաւ»։ Առաջնորդ-եպիսկոպոսները Զ-դարից սկսած, երբ կուսակրօնութիւնը պարտաւորական դարձաւ, այլ ևս ժառանգաբար չէին յանձնում թէ առաջնորդական պաշտօնը և թէ կալուածները իրանց ժառանգներին, հապա ընտրուած յաջորդող եպիսկոպոսին։—

Ծխական եկեղեցիները և ծխական քահանաները ապահովուած էին Տրդատի հրամանով հողաբաժիններով, մեծ գիւղերը պիտի յատկացնէին եկեղեցիներին 7 տան հող, փոքր գիւղերը 3 ծխի հող։ Պապ թագաւորը քչացրեց այդ քանակը կէսից պակաս։ Լուսաւորչի աւանդական գրից երևում է, որ քահանան պիտի ստանայ «մատաղներից կաշին, աջերին ճրագուն, դմակը, սիրտը, լերդաբոյթը, երիկամունքները ճարպով, կողերի մի մասը, լեզուն և աջ ականջը, շրթունքը հոտոտելիքով, աջ ականջը և բոլոր խորհրդական մասերը։ Իսկ կալից և հնձանից և ուրիշ արմտիքներից տասանորդ . . . » Ս. Գիրք 531 երես։

Դուինի ը. ժողովի կանոններում գտնում ենք քահանայական արդիւնքների բաշխման համար կարգեր (Ս. Գ. 370--389 երես)։ Առաջին կանոնն թոյլ չի տալիս քահանաներին բաժանել ծուխը պտղի և մուտքի համար, հապա բոլոր արդիւնքը ժողովել եկեղեցի և գլխաւոր քահանայի նախաձեռնութեամբ բաժանել այս կարգով, $2^1/_2$ մասը տալ գլխաւոր

քահանային, քահանաներին 2 մասը, սարկաւագներին $1^1/_2$ մասը, դպիրներին և պարկեշտ այրի կանանց մի մասն։ Ժողովի կանոնները սահմանուեցին Զ. դարու կէսերին։ Դուինի 648 թուի ժողովի կանոնները (Ա. Գ. 390—406)։ Թոյլ չեն տալիս ծխաբաժանումն կատարել, հապա իրանց հայր քահանաների բաժնով բաւականանալ իբրև ժառանգութիւն. նոյն ժողովի 8-րդ կանոնն բաց է 'ի բաց խօսում է քահանայական պաշտօնի և կալուածների ժառանգաբար քահանայի տոհմին պատկանելու մասին, մինչև իսկ իրաւունք տալով քահանային ժառանգ չունենալու դէպքում որդեգրել մէկին և իւր «օջաղի» վրայ ժառանգ կարգելով՝ ծուխը, եկեղեցու հողը նրան յանձնել։ Այս տարօրինակ և հակաաւետարանական կարգը տիրում էր մինչև 19—դարը շատ տեղերում, Տփխսի առաջնորդ Ներսէս Աշտարակեցու դէմ բողոքող նոյն քաղաքի իշխանները պաշտպանելով իրանց քահանայացուին, գրում են «Ահա հինգ հարիւր տարի է որ մեր տան քահանայն Տէր Յակոբի օջախն է եղեալ և այժմ նրա ժառանգ Տէր-Գաբրիէլին ենք ճանաչում , . . ». տես «ամենայն Հայոց կաթ.»— Երիցեանի։ Վերոյիշեալ ժողովի կանոններից պարզ երևում է որ հայոց եկեղեցիները ունէին սեպհական հողեր, մնացած Տրդատի կարգադրութեամբ մինչև Է. Ը—դարերը, որպիսի հողերին ժառանգաբար տիրում էին քահանաները, որոնք ամեն ճիգն գործ էին դնում իրանց որդիներին քահանայ ձեռնադրելով թողնել իրանց տոհմի մէջ որդէ յորդի այդ հողերը։ Վերջերումս քահանաների արդիւնքը կազմում են, պսակադրամ, նշանադրամ, կնքադրամ, թաղմահարկ, գերեզման օրհնէքի հարկ, տնօրհնէքի հարկ, կալօրհնէքի հարկ (կալամուտ), այգեհնձանի օրհնէքի հարկ, գանձանակադրամ, կողպուտ, մատաղներից-կաշի և եղի, և այլն։ Ներսէս Ե. սահմանեց որ իւրաքանչիւր 80 տուն ունենայ մի քահանայ, որ կարողանայ այդ արդիւնքներով ապրել։ Գէորգ-Դ. սահմանեց բազմամարդ գիւղերի ամեն մի 100 տան մի քահանայ, իսկ փոքր գիւղերում մի մի քահանայ։ Էջմիածնի Սինօդը Թու-

սահայոց գիւղական եկեղեցիների համար որոշել էր, ամեն մի համախօսական կազմող ծխական ժողով պարտաւոր էր գրաւորապէս խոստանալ որոշ չափով հող յատկացնել ընծայացու անձին ցմահ՝ ձրիապէս, տալով պետական գանձարանին պատկանելիք հարկերը և կոռ ու բեկարը։ Նախկին կարգը Տրդատի ժամանակից, որով տրւում էր ագարակների եկեղեցիներին 7 ծխի հող, գիւղերին 3 ծխի հող գոյութիւն ունէր մինչև Թ. Ժ. դարերը, այդ թուերից յետոյ ժառանգական քահանայութիւնը սեփականացրեց եկեղեցապատկան հողերը և դարձրեց քահանայական տան սեփականութիւն, որով եկեղեցիները զրկուեցին սեպհական հողերից։ Ռուսաց տիրապետութեան օրով, երբ ազնուականների և վանքերի հողերի չափումն սկսուեց, քահանայական հին տները մէջ ընկան իբրև հողատէրեր և խնդրեցին հողաչափներին իրանց հողերը ազնուականների հողերի իրաւունքներով չափել իրանց վրայ. այդպէս էլ եղաւ և նախկին եկեղեցիներին պատկանող հողաբաժինները շատ տեղեր պետական օրէնքի ոյժով դարձան վերջնական սեպհականութիւն հին քահանայական տների։ Այժմ ընդհանուր սովորութիւն է դարձել գիւղերում, ընծայացուին յատկացնել ձրի մի գլխի հող, կամ մի ծխի հող ցմահ վայելելու, իսկ քահանայի որդւոց տրուած հողերից իբրև հասարակութեան անդամ պահանջել համահաւասար միւսներին հարկ։ Ծխական քահանաների թէ ընտրութեան և թէ ապահովման խնդիրը կանոնաւոր մշակման ենթարկուեց Մկրտիչ Ա—ի ժամանակ 1901 թուին առանձին յանձնաժողովի ձեռքով, որի կազմած կանոնագրութիւնը տպուեց «Արարատի» 1902-ի թուի համարներից մէկում 'ի փորձ, բայց վերջնական գրական հաստատութիւն չստացաւ։

Վանքերը և Մայր Աթոռի տնտեսական ապահովութիւնը հիմնուած է այժմ գլխաւորապէս սեպհական գիւղերի, հողերի, անտառների արդիւնքների վրայ։ Մայր Աթոռի նախկին նուիրակութիւնը վերացել է, այժմ ստանում է կանոնաւորապէս Ռուսահայոց թեմերից հոգեբաժին, պտա-

*կահարկ, պտղի (ցորեն, գարի, իւղ, ձու, աղ) և մասնաւոր նուէրներ։ Պարսկաստանի և Տաճկաստանի թեմերի արդիւնքը գնում է իրանց կենդրոնական վարչութեան պահպանութեան վրայ, իսկ Էջմիածնի անունով նուէրները և գանձանակադրամները ուղարկւում են Մայր Աթոռ, այս արդիւնքները կոչւում են ընդհանուր անուամբ Աթոռահասներ։*

*Տաճկաստանում դրամական բոլոր հաշիւները գտնւում է թաղական խորհրդի ձեռքում, Ռուսահայոց և Պարսկահայոց մէջ ընտրեալ երէցփոխի ձեռքում, որոնք առանց ծխական ժողովի ոչինչ չեն կարող անել։ Իւրաքանչիւր գաւառակ ունի իւր գործակալը, որ հսկում է բոլոր գաւառակի եկեղեցիների բարեկարգութեան վրայ, նախկին քորեպիսկոպոսների պաշտօնով. Նա տալիս է պսակի հրամանը ծխական քահանաների վկայականի վրայ յենուած, ժողովում է աթոռահաս արդիւնքները, պտղի, պսակադրամ, հոգեբաժին։ Գործակալները ենթարկւում են հոգևոր կառավարութիւններին և կամ կոնսիստորիաներին։ Տաճկահայաստանում թաղական խորհուրդը հաշուատու է գաւառական ժողովի առաջ։*

*Վանքերի հսկողութիւնը յանձնուած է վանահայրերին, որոնք կառավարում են բոլոր վանքական հողերը, դրամները և գործերը և հաշիւ տալիս բարձր իշխանութեան։ Վանահայրերի և մայրապետների ընտրութիւնը լինում էր վանական միաբանութեան համաձայնութեամբ և կաթուղիկոսի ու Պօլսոյ կենտրոնական վարչութեան հաստատութեամբ։ Ռուսահայոց մէջ Գէորգ-Դ-ից սկսած վանականութիւնը համարուեց մի դասակարգ, որ իրաւունք չունի սեպհականութիւն ունենալու և մահից յետոյ իւր ազգականներին թողնելու ստացուածքը, (տես Ա. գիրք. 631—632 երես). Տաճկահայոց մէջ այդպիսի որոշումն պետական օրէնքի միջոցաւ տեղի չունեցաւ։*

*Հներում մեծ մասամբ վանքերում նստում էին առաջնորդ եպիսկոպոսները, կամ փոխանորդ եպիսկոպոսներ, որոնք անսահման տէրէին իրանց վանքերի կալուածական և այլ*

արդիւնքների. միւս վանքերը, ուր առաջնորդներ չէին նստում, նրանք նոյնպէս անմիջապէս գտնւում էին իրանց առաջնորդների կարգադրութեան տակ, իսկ առաջնորդների աջ թև կազմում էին տեղական իշխանները, մինչև իսկ վճռական ձայնով։ (Տես Ս. գ. Սահակի կանոնները 529, 404)։ Թէ առաջնորդները վանքական արդիւնքներից ո՞ր մասն պիտի բաժին հանէին Մայր աթոռին, անորոշ է, թողնուած էր իւրաքանչիւրի կամքին (տես Ս. Գիրք. 460)։

## Բ). ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ՀԻՄՆԱՐԿՈՒԹԻՒՆՆԵՐԻ ԿԱՌԱՎԱՐՈՒԹԻՒՆԸ.

Եկեղեցիների և վանքերի սկզբնաւորութեան հետ զուգընթացաբար ընթացել է աղքատների, տնանկների, այրեաց և որբոց խնամատարութիւնը. առաքելոց ժամանակից հանգանակած նուէրներից բաժին էին հանում կարօտեալներին, այդ հոգատարութիւնը ա. դարում յանձնւում էր ընտրեալ, անձանց, որոնք սարկաւագ էին կոչւում։ Եկեղեցին կազմակերպութիւն ստանալուց յետոյ, կանոնաւորութիւն ստացաւ և այդ բարեգործական ճիւղի կառավարութիւնը։ Մեր մէջ այդ հիմնարկութիւնները բազմացան, կանոնաւորուեցին, նիւթականապէս ապահովուեցին Ներսէս մեծի ժամանակ։ Խորենացին Գ. Ի. գլխում այսպէս է գրում Ներսէսի համար « 'ի Բիւզանդեայ դարձեալ ի Կեսարեայ, և եկեալ ի Հայս, զամենայն կարգս ուղղութեանց հարցն իւրոց նորոգեաց, այլ ևս առաւել ևս, քանզի զբարեկարգութիւնն, զոր ետես 'ի յունաց աշխարհին, մանաւանդ 'ի թագաւորեալ քաղաքին 'ի սմա նկարգարէ»։ «Յայտ արարեալ զպատէհ պատեհ տեղիսն զատուցանել՝ շինել աղքատանոցս, և 'ի ժողովել զախտաժէտս և զօրկունս և զմարմնակարս և զամենայն ցաւոտս, և նոցուն կարգեցին օրկանոցս և դարմանոց և ռոճիկս, և պատանս աղքատաց . . . . և սոյն կամ եղև ամենայն սուրբ ժողովոյն, զի այնպիսիքն միայն նստեալ լիցին յիւրաքանչիւր կայեանս, և մի ելանել ի մուրոյն տառապանս . . . . զդարմանսն և զպիտոյսն վճարեսցին ամեն-

եքեան». Բիւզանդ. 46 երես: Բոլոր գիւղերում, ըստ Բիւզանդի, շինեց հիւանդանոցներ, օտարանոցներ, օտարատուններ. անկելանոցներում ժողովուեցին կոյրեր, կաղեր, մարմնահարներ, խուլեր, համրներ, կարօտեալներ. Բիւզ. 65, 194 երես: Ներսէս այդ հիմնարկութիւնները բաժանեց գիւղերի, քաղաքների վրայ, որոնց պարտաւորութիւններն էին, հասերով, տուրքերով, նուէրներով ապահովեցնել այդ հիմնարկութիւնների տնտեսական կացութիւնը. գիւղացիք տալիս էին, հաց, շոր, խմիչք, մատաղներից բաժին և այլն. իսկ հոգևոր իշխանութիւնը պատիժների մէջ մտցրեց—"տալ յօգուտ այդ հիմնարկութիւնների որոշ գումար իբրև պատիժ." տես Շահապիվանի ժողովի կանոնները Ա. Գիրք 323—341: Դրանց բոլորի հսկողութիւնը յանձնեց Ներսէս 4—5 հոգու, Խադդին, Շաղիտային, Եպիփանին, Եփրեմին և Գինդին (խոր. բ. ի): Ներսէս այս կարգերը բերաւ Պօլսից, Յունաց աշխարհից: Յունաց կայսրները Կոստանդիանոսից սկսած նուիրում էին այդպիսի հաստատութիւններին կալուածներ, դրամներ. բարձրաստիճան անձինք հետևում էին կայսրների օրինակին: Թէոդոսի կինը Եւդոկիան իւր հաշուով աղքատանոց շինեց, ուր 400 ծերունիներ էին պատսպարւում: Թէոդոս և իւր քոյր Պուլխերիան բազմաթիւ հիմնարկութիւններ հաստատեցին Պօլսում: Աչքի էր ընկնում Յուստինիանոսի կառուցած մեծ շինութիւնը անկար ծերունիների համար, առանձին եկեղեցիով: Բարսեղ՝ մեծ զարկ տուաւ այդ հիմնարկութիւնների բազմանալուն, իւր ամբողջ եկամուտը և ունեցածը տալիս էր այդ հաստատութիւնների պահպանման: Ոսկեբերանը ամենամեծ պարտականութիւնը հոգևորականների վերաբերմամբ՝ համարում էր այդպիսի հիմնարկութիւնների համար աշխատելը և դրանց խնամելը:

Ներսէսից յետոյ շարունակուեց այդ հաստատութիւնների գոյութիւնը մինչև Արշակունեաց անկումը, Շահապիվանի ժողովի կանոններից երևում է, որ պարժապարտներին ուղարկում էին ուրկանոցները մէկից մինչև տասն տարի աղալու այդ անկար մարդկանց համար ալիւր, ձաւար պատ-

բաստելով։ Վարդանանց պատերազմից յետոյ, Արաբացւոց արշաւանքների ժամանակ, երբ երկիրը ալէկոծ դրութեան մէջ էր, շատ դժուար է այդպիսի հաստատութիւնները պահպանել վանքերից դուրս. վանքերը շարունակեցին լինել մինչև այսօր օտարանոց, հիւրանոց, աղքատներին օգնող, ծերերին սննդող և խնամող։ Դրանց մնացորդներից է Պօլսոյ Ս. փրկչեան հիւանդանոցը միքանի մասերով որոնք են 1) հիւանդանոց, 2) ծերանոց, 3) անկելանոց, 4) որբանոց, 5) ուսանողների հարկ. 6) մոմարածն, տարեկան 1800-ի չափ հիւանդների խնամատարութեամբ։

## Գ. ԵԿԵՂԵՑՒՈՅ ՕՐԷՆՍԴՐՈՒԹԻՒՆԸ.

(О церковномъ Законодательствѣ Хр. Чт. 1865 г»)

Եկեղեցու օրէնսդրական իրաւունքի աղբիւրն է եկեղեցու հիմնադիրը՝ Քրիստոս, որի պատուէրը և առաքեալներին տուած իրաւունքը թէ՝ ով ձեզ կլսէ՛ ինձ կլսէ՝ (Մատթ. Ժ և իը։ 20), հիմք դրեցին եկեղեցու ապագայ օրէնսդրական իրաւունքին։ Առաքեալները Յիսուսի պատուէրներին հետևելով սկսեցին ամեն տեղ իրանց լսողներին, ժողովրդականներին պատուէրներ տալ, կանոններ սահմանել նրանց համար, պարտաւորեցնելով եկեղեցիներին ղեկավարուել այդ կարգերով իբրև հաստատուած օրէնքներով (Գործ. ԺԵ)։

Առաքեալները իրանց յանձնուած օրէնսդրական իրաւունքով սահմանեցին. 1) եկեղեցականների ընտրութեան, ձեռնադրութեան կարգը (ա-Տեմ.— Գ. Տիտ. Ա.)։ 2) Քահանայագործութեան կարգը. (ա-կորնթ. Ժա.)։ 3) Եկեղեցական կառավարութեան կարգը (Ա.-պետ. Գ. Ե.) 4) Ամուսնութեան մէջ մտնելու կարգը (Եփ. Ե. ա-կորն.-Է)։ 5) Խառն ամուսնութեան կանոնը (Ա.-կորն. Ն (12 17)։ 6) Ամուսնալուծութեան կարգը. (ա-կորն. Է. (10—11)։ 7) Եկեղեցականների և մարմնաւոր իշխանութեան յարաբերութեան կարգը (Հռովմ. Ժ. Գ.)։ 8) Եկեղեցական դատական իրաւունքի կարգը (ա-կորն. Զ.)։

Առաքեալները տալով այս կարգերը հաւատացեալներին, յորդորում էին ճշտութեամբ կատարել, իսկ որոնք չէին յօժարում հնազանդել դրանց, նրանք համարւում էին եկեղեցուց խզուած, մերժուած. (բ թեսաղ. Գ.)։

Առաքեալներից այդ իրաւունքը յանձնուեց իրանց յաջորդներին և հետևորդներին՝ այն ձևով, ինչ ձևով որ իրանք էին սահմանում, այսինքն ոչ անհատական կամքի արտայայտութեամբ, այլ ժողովական։ Աւելի պարզ ասած, ով էր օրէնսդրական մարմինը, անհատը, եկեղեցու հովիւը, թէ առաքեալների ժողովը և ապա եկեղեցական ժողովը։ Այդ հարցի լուծումը տեսնում ենք հէնց առաքեալների ժամանակ, որոնք ընդհանուր ժողով կազմեցին և ընդհանուր խորհրդակցութեամբ որոշեցին Հին ուխտի ծէսերը պարտադիր չհամարել հաւատացեալների համար, այլ միմիայն Նոր ուխտի պատուէրները. ժողովիս վճիռը իբրև պարտաւորական կարգադրութիւն առաքեալները ցրուելով գործադրում էին իրանց շրջանի ամեն կողմերում. (Գործք. ժե.)։ Նախնական եկեղեցին այդ կարգը ամենայն ճշտութեամբ գործադրում էր, իւրաքանչիւր մի սահմանադրութիւն օրէնք դառնալուց առաջ ենթարկւում էր եկեղեցական ժողովի քննադատման և համաձայնութեան։ 419 թուին Կարթագենի ժողովը Կելեստինա հռոմայ պապին ուղղած թղթում, ուր խօսում է պապերի օրէնսդրական միապետական ձգտումների դէմ, գրում է «ով կհաւատայ, որ Աստուած մէկին միայն կկամենայ ներշնչել արդար դատելու իրաւունքը և ժողովում գումարուած բազմաթիւ սրբազան անձինքներին կբացասի այդ խնդրում» (книга правилъ)։

1) Այսպիսով երևում է, որ առաքելադիր օրէնք է համարւում միմեայն ժողովին յատկացնել եկեղեցու օրէնսդրական իրաւունքը և ոչ որև անհատի, եկեղեցու պետին. (Տես Ա. Գիրք—100, 307, 318, 319, —465 երես)։

2) Այս օրէնքին չի կարելի հակասական համարել օտարի և ազգային սուրբ հարց կանոնները, որոնք առանց ժողովի են տրուել և ընդունուել բոլորի կողմից, որովհետև քրիստոն-

եալ հասարակութիւնը և եկեղեցիները այդ ձևով հրատարակուած կանոնները համարել են եկեղեցու ոգուն համապատասխան և աւանդութեան համեմատ, առանց որ և է շեղման ժողովական սահմանադրութիւններից, մանաւանդ և այս պէտք է նկատի ունենալ, որ սուրբ հարց եզական կանոնները միշտ մշակուել և գրուել են եթէ ոչ ժողովով, գոնէ եպիսկոպոսների և այլ խորհրդակիցների աջակցութեամբ և մասնակցութեամբ։ Մինչև այժմ լինում են միշտ կաթուղիկոսական կարգադրութիւններ, որոնց հնազանդում են բոլոր հաստատութիւնները, և այդ չի հակասում ժողովական—օրէնսդրական սկզբունքին. ինչու. ա. որովհետև կաթուղիկոսական կարգադրութիւններն չեն դուրս գալիս այն գծած սահմանից, որ դրել են մեր նախկին ժողովները, նոր կարգերը կամ միմեայն յիշեցնում են նախկինները, կամ ըստ ժամանակի և հանգամանքի՝ փոփոխութեան են ենթարկում վարչական, պատժական և ձևական կողմերը. բ. ոչ կաթուղիկոսական կարգադրութիւն չի յաւակնել շեղել առանց ժողովի՝ նախնեաց աւանդից։ Ներսէս Ե-ի մի օրով, երբ իւր յիսնամեայ բարեկամներ և ջերմեռանդ ազգասէր Լազարեանները դիմեցին նրան խնդրելով թոյլ տալ ամենայարգելի պատճառներից առիպուած ազգակցական չորրորդ աստիճանի ամուսնութիւն, կաթուղիկոսը սաստիկ նեղացաւ, յարաբերութիւնը խզեց նրանց հետ։ Երբ աղերսանք աղերսանքի ետևից թափեցին առ սոս կաթուղիկոսի, նա պատասխանեց, որ ինքն թէ և կաթուղիկոս է, բայց առանց ազգային ժողովի կարգադրութեան ոչինչ չի կարող անել. և որովհետև այդպիսի խնդրի համար ժողով անելը հընարաւոր չէ, ուստի և եթէ Պոլսոյ և Երուսաղէմի պատրիարքները ժողովներ կգումարեն, Էջմիածնի Սինօդը միաբանական ժողով կգումարէն և իրանց համաձայնութիւնը կտան, այն դէպքում թոյլ կարողէ տալ միայն մի պսակը (Լազարեանները 2 քոյր տալիս էին երկու քրոջ որդոց)։ Երբ Լազարեանները պատրիարքների համաձայնութիւնը գըրաւոր հասցրին Ներսէսին, վերջինս պատասխանեց, դրանց

*ձայնը նշանակութիւն չունի, պէտք է ժողովների գրաւոր համաձայնութիւնը բոլորի ստորագրութեամբ ինձ հասնի։ Եւ մինչև վերջն էլ այդ համաձայնութիւնը չտուաւ, թէ և Աստրախանի Մատթէոս եպիսկոպոսը ծածուկ պսակեց։ Ներսէս —Ե—ի արարմունքը ցոյց տուաւ թէ մեծ հայրապետը որքան մեծ և անփոփոխելի նշանակութիւն էր տալիս՝ ժողովի միմիայն օրէնսդրական իրաւունք ունենալուն և ոչ մի հովուապետի՝ կաթուղիկոսի կամ պատրիարքի չըվերագրելով այդ իրաւունքը, հաստատում էր այդ բարձր սկզբունքը։ Որով և պարզում է կաթուղիկոսական կարգադրութիւններ հրատարակելու հարցի չհակասելը այդ սկզբունքին, քանի որ Ներսէս Ե. ունէր բազմաթիւ կանոններ հրատարակած (Ա. Գիրք 603—627) և նա գիտէր որ հըրատարակութիւնները միմիայն հաստատութիւն են նախնեաց կարգերի։*

*3) Եկեղեցին ընդունում է և քաղաքական իշխանութեան օրէնսդրական իրաւունքը եկեղեցու վերաբերմամբ, երբ պետական սահմանումները չեն հակառակում եկեղեցու նուիրական սկզբունքներին։ Լուսաւորչի ժամանակից եկեղեցու կանոնները զուգընթաց քաղաքացիական օրէնքների հետ գործադրւում էին Հայաստանում համազօր ուժով, նոյն իսկ առաւելութիւն և արտօնութիւն էր տրւում առաջիններին։ Նոյն ժամանակուայ տիեզերական եկեղեցին ընդունում էր քաղաքական օրէնսդրական իրաւունքը այն չափով, ինչ չափով եկեղեցու կեանքը շփւում էր հասարակական—քաղաքացիականի հետ, ընդհանուր կարգապահութեան, բարեպաշտութեան, հրամանների գործադրման, հաւատքի պաշտպանութեան խնդիրներում, որոնք հարկաւ եկեղեցու կանոններին համապատասխան էին։ Լուսաւորչից յետոյ, Վարդանանց ժամանակ, ազգային ընդհանուր ժողովը Զահապիվանում՝ բացառիկ հանգամանքներից սախպուած պատիժների գործադրման իրաւունքը յանձնեցին հոգևորականներին, մինչև իսկ մահուան դատապարտութեան։ Հետագայ դարերում եկեղեցական ազգային ժողովը միշտ համարեա մինչև 1800*

թիւը եղել է բացառապէս օրէնսդիր մարմին, և եթէ մուծել է մահմետական տիրապետութեան օրով պետական օրէնքներից կարգադրութիւններ, այդ ստիպուած ժամանակի հոսանքից, անհրաժեշտ փոփոխութեան կարիքից, որոնք հարկաւ չեն եղել հակառակ եկեղեցու սկզբունքներին։

Տիեզերական՝ ժողովները հետագայ դարերում մինչև եկեղեցիների բաժանումը (ժ. դար) վարուել են ընդհանուր սկզբունքով։ Հայոց երկիրը և Ասիական միքանի ազգութիւնները ընդունել են միմեայն առաջին երեք տիեզերական ժողովների օրէնսդրական իրաւունքը, մերժելով Դ. Ե. Զ. Է. կոչուած տիեզերական ժողովների նոյնպիսի իրաւունքը։ Տիեզերական ժողովը ընդհանուր եկեղեցիների վերաբերմամբ կարող է համարուել հանրական օրէնսդիր մարմին այն դէպքում երբ իւրաքանչիւր անկախ եկեղեցու ներկայացուցիչ կմասնակցի տիեզերական ժողովում և իւր ստորագրութեամբ համաձայնութիւն կտայ ժողովի որոշումներին, 'ի հարկէ որքան որ ընդհանուր ժողովի որոշումը կհամապատասխանի իւր անկախ եկեղեցու սկզբունքներին և դարաւոր իրաւանց (տես նախնթաց 2 կէտը)։

Տիեզերական այդ ժողովներին պետութիւնը միշտ աջակցել է, աշխատել է ամեն կերպ եկեղեցու ինքնորոյնութեան, բարգաւաճման և բարեզարդութեան համար, կայսրները հաստատում էին այդ ժողովների որոշումները և հրամայում էին գործադրել։ Այդ ժողովներից յետոյ յունա-հռոմէական կայսրները շատ անգամ առանց ժողովի հրատարակում էին եկեղեցական կանոններ և պատուիրում կատարել իբրև օրէնք, եթէ նրանց հրատարակածները համապատասխան էին լինում եկեղեցու սահմանադրութիւններին՝ կատարւում էին առանց դժկամակութեան։ Հռոմայ եկեղեցին՝ բաժանումից յետոյ՝ բոլորովին բացառիկ դիրք ստեղծեց օրէնսդրական խնդրի վերաբերմամբ. պապերը ոչ միայն թոյլ չէին տալիս ընդունելու ժողովի օրէնսդրական իրաւունքը, այլ և մերժում էին որև է մի պետութեան մասնակցութիւնը այդ հարցում, համարելով իրանց Քրիստոսի փոխա-

նորդներ, նրանք դարձան եկեղեցու միակ օրէնսդիր հովուապետ, որպիսի վերաբերմունքը կաթոլիկ աշխարհը վերջերումս ընդունեց իբրև հաւատոյ դաւանանք։ Պապը կարող է ժողով հրաւիրել և հարցերը ժողովով որոշել, բայց առանց ժողովի, ինքն իւր իրաւունքն է համարում օրէնքներ սահմանել իբրև ծայրագոյն օրէնսդիր թէ հաւատոյ դաւանութեան և թէ վարչական կազմակերպութեան վերաբերեալ։ Բողոքական եկեղեցում ընդհանրապէս օրէնսդրական իրաւունքը պատկանում է թագաւորին։ Ռուսաց մէջ Պետրոս մեծի շնորհիւ եկեղեցին ենթարկուեց նոր վարչական կազմակերպութեան, կայսրը համարուեց գլուխ եկեղեցու և բարձր օրէնսդրական իրաւատէր։ «Բոլոր օրէնսդրական կարգադրութեան սկզբնական հիմունքը եղել է, ասում է Սոկոլօվը Մեծն Պետրոսի արած այդ կարգադրութեան վրայ խօսելով, դարձնել եկեղեցական իշխանութիւնը Ռուսաստանում՝ պետական կառավարութեան մի ծառայողական գործիք՝ իւր նպատակներին հասնելու համար, և հաւասարացնել եկեղեցական իշխանութիւնը պետութեան միւս վարչական հաստատութիւններին, ենթարկելով նրանց նոյն կերպարանքին և տալով նոյն տիպը» (Пр. Обоз. 1870 г.)։ Հայոց եկեղեցին Ռուսական տիրապետութեան ներքոյ ստացաւ այն կերպարանքը, ինչ որ ռուսականը Պետրոս մեծից սկսած։

Տաճկահայաստանում և Պարսկահայաստանում մնաց նախկին հիմունքների վրայ։ —Ցամենայն դէպս Հայոց եկեղեցու օրէնսդրական ընդհանուր իրաւունքը առաջուայ նման, չնայելով իւր այժմեայ զանազանատեսակ քաղաքական կերպարանքին, պատկանում է համազգային եկեղեցական ժողովին։

Եկեղեցական օրէնսդրութեամբ կազմւում են երկու տեսակ օրէնքներ, ա) դաւանաբանական և բ) վարչական՝ ներքին ու արտաքին։

Դաւանաբանականը՝ ինչպէս վերև նկատեցինք, իրանց հիմունքներով, սկզբնաւորութեամբ հաստատուած և ընդու-

նուած են տիեզերական և մեր ազգային ժողովներով, նորից քննութեան չենթարկուող և անփոփոխ են։

Վարչականը՝ եկեղեցու ներքին և արտաքին կառավարութեան են վերաբերում. ներքին ասելով հասկացւում է՝ ժամերգութեան, ծէսերի կատարման և ներքին կարգապահութեան կանոններ, իսկ արտաքին՝ հոգևորականների միմեանց հետ ունեցած յարաբերութեան, կառավարուելու ձևերի, դատելու, պատժելու, դատավարելու կանոններ։

Սահմանուած կարգերը պարտաւորական են թէ հոգևորականների և թէ աշխարհականների համար. սրանք ազատւում են այդ կարգերին ենթարկուելուց, երբ ա) հինը կորցնում է իւր ույժը նոր կանոնադրութեամբ. բ) երբ հին կանոնները ժամանակին համապատասխան չլինելով, բոլորովին անգործադրելի են դառնում յետագայ ժամանակներում։ (օր. հաւատուրացների, ապաշխարանքի կանոնները)։

## Գ. ԵԿԵՂԵՑՈՒ ԴԱՏԱԿԱՆ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆԸ ԵՒ ԴԱՏԱՎԱՐՈՒԹԻՒՆԸ.

### 1) Եկեղեցական դատի հիմունքները.

(основаніе цер. суда. Прав. Соб. 1858. Оформахъ и началахъ дух. Суда. Хр. Чт. 1870)

Եկեղեցին ունենալով օրէնսդրական իրաւունք, ունի և օրէնքները գործադրելու իրաւունք յանցաւորների և զանցառուների նկատմամբ։ Իւրաքանչիւր յանցանք պիտի նախօրէն քննուի, պարզուի, յանցաւորի վրայ ապացուցուի և ապա ենթարկուի դատապարտութեան։

Ինչպէս որ եկեղեցական կառավարութիւնը յանձնուած է եկեղեցական մարմնին որոշ հիմունքներով, այնպէս էլ դատելը և պատժելը կազմելով եկեղեցու կառավարութեան մասերից մէկը, ենթարկւում է եկեղեցու իրաւասութեան նոյն հիմունքներով։ Դատելու իրաւունքը եկեղեցին ստանում է Յիսուսից, որը առաքեալներին պատուիրեց թէ «Եթէ մեղիցէ քեզ եղբայր քո, երթ յանդիմանեա զնա, յորժամ դու և նա միայն իցէք, եթէ լուիցէ քեզ, շահեցար զեղ-

բայրն քո։ Ապա թէ ոչ լուիցէ քեզ, առ ընդ քեզ միւս ևս կամ երկուս, զի 'ի բերանոյ երկուց և երեց վկայից հաստատեսցի ամենայն բան։ Իսկ եթէ և նոցա ոչ լուիցէ, առաջիք յեկեղեցւոջ. ապա եթէ և եկեղեցւոյն ո՛չ լուիցէ, եղիցի քեզ իբրև զհեթանոսն և զմաքսաւորն։ Ամէն ասեմ ձեզ, զոր կապիցէք յերկրի, եղիցի կապեալ յերկինս, և զոր արձակեսցէք յերկրի՝ եղիցի արձակեալ յերկինս». Մատ. ժը գլ.։ Նոյն կրկնում է Յովհաննէս—Ի. գլ. «Առէք Հոգի Սուրբ, եթէ ումեք թողուցուք զմեղս, թողեալ լիցի նոցա, եթէ զուրուք ունիցիք, կալեալ լիցի»։ Նոյնը երևում է Պօղոս առաքեալի գրած թղթերից հաւատացեալներին, մասնաւորապէս Բ. կորնթ. Ժ. գլ. «Վասն այնորիկ զայս 'ի հեռուստ գրեմ, զի մի' յորժամ եկից, սաստկութեամբ վարեցայց ըստ իշխանութեանս»։ Առաքեալները Յիսուսի տուած կապելու և արձակելու իրաւունքը յանձնեցին իրանց յաջորդներին, իբրև եկեղեցու պաշտօնեաների։ Այսպիսի ձևով դատելու և արձակելու իրաւունքը ուղղակի ներքին է, հոգեկան և բարոյական, նա կապ չունի արտաքին իրաւաբանական դատական ձևերի և պարգևների հետ, որպիսի են քրէական և քաղաքացիական պատժական օրէնքները, այդ ձևով դատողը գործ ունի միմեայն մեղադրուածի կամ աւելի լաւ ասած մեղք գործողի հոգու հետ, խղճի հետ. որքան սըրտանց լինի զղջումը, որքան անկեղծ լինի մեղք խոստովանուիլը, այնքան էլ քիչ կլինի պատիժը և դիւրին արդարանալը։ Արձակել մէկին, նշանակում է ընդունել մեղանչողին կատարելապէս զղջացած և ազատած խղճի խայթից, նա դառնում է արդար և անարատ։ Այսպիսի հոգեկան անարատ վիճակ առաջ է գալիս այն դէպքում, երբ մեղանչողը իւր յօժար կամքով, ներքին խայթից ստիպուած տանջւում է և ցանկութիւն է յայտնում անպայման ազատուելու այդ հոգեմաշ դրութիւնից, խոստանալով այլ ևս չմեղանչել։ Այսպիսի ձևով ձեռք բերած հոգեկան մաքրութիւնը պիտի հաստատուած լինի անկեղծ անարատ հաւատքի վրայ, որի վրայ և Յիսուս կառուցեց իւր եկեղեցին։ Այստեղից առա-

ջանում է այն, որ եկեղեցու՝ այսպէս ասած՝ ներքին դատական իրաւունքի հիմք կազմում են հետեւեալ էական կէտերը. 1) անկեղծ հաւատք, 2) Յիսուսի պատուէրը «կապեցէք և արձակեցէք», եկեղեցուն տուած. 3) Առաքեալներին և յաջորդներին շնորհուած «Առէք Հոգի Սուրբ . . . Յով. Ի. գլ. . . . » իրաւունքը, որով արձակողը պիտի լինի քահանայագործելու իրաւունք ստացած, այսինքն օծուած։ Նոյն պատուէրը նոյն ոգով տալիս է Պօղոս առաքեալը Տիմոթէոսին. «Վասն որոյ յիշեցուցանեմ քեզ արծարծել զշնորհսն Աստուծոյ որ են 'ի քեզ 'ի ձեռնադրութենէ իմմէ» Տիմոթ. Ա.—ա-գլ. 6. ։ Կապելու և արձակելու դատը բարոյական լինելով, ներքին աշխարհի հետ կապուած քան արտաքին պայմանների, հիմնուած լինելով միմիայն քրիստոնէական հաւատքի վրայ, արձակողը հոգոյն սրբւոյ ստացած շնորհքով է արդարացնում մեղանչողին, այդ հիմքով այսպիսի դատը կոչւում է ներքին, քանի որ դատի հետեւանքը այն է՝ զղջումը՝ մնում է բոլորի համար գաղտնի, մեղանչողը զղջաց սրտով թէ ոչ, արդարացաւ թէ ոչ, այդ մնում է իրան խղճին և Աստուծուն։ Շատ պարզ է որ այսպիսի դատի ենթարկուել կարող է միմիայն քրիստոնեան, և այն քրիստոնեան որ հաւատում է, իսկ ո՛չ քրիստոնեան և անհաւատը «կապելու և արձակելու» սահմանից բոլորովին դուրս են։

Եկեղեցու արտաքին համարուած դատաստանը բոլորովին տարբեր է, նա արտաքին աշխարհի հետ գործ ունի հաւատացեալ հասարակութեան, քահանայագործող անձանց վարքի, բարքի, յարաբերութեան, եկեղեցու պատուէրների կատարման հարցերով է զբաղւում, նա արդէն հասարակական դատաստան է։ Արտաքին դատի հիմքը կազմում է Յիսուսի պատուէրը՝ եղբօր մեղանչելու դէպքում, որ եկեղեցու անդամը պիտի առանձին յանդիմանի մեղաւոր եղբօր, եթէ վերջինս կզղջայ, երկու վկայի ներկայութեամբ պիտի յանդիմանի մեղաւորին, եթէ նրանց էլ չլսի, պիտի յանդիմանուի բոլոր եկեղեցու (հաւատացեալ) առաջ, իսկ եթէ այս

վերջին միջոցն էլ չազդի յանցաւորի վրայ, վերջինս զրկւում է եկեղեցուց և դառնում է իբրև հեթանոս (Մատթ. ԺԸ. 15—18)։ Պօղոս առաքեալը իւր թղթերում նոյն ձևով պատուէրներ է տալիս Տիմոթէոսին և Տիտոսին (Ա—կորն. Ե, Զ, Է)։

Թէ ներքին և թէ արտաքին դատաստանի դէպքերում եկեղեցին դատելու իրաւունք տալիս է միմիայն այն անհատներին, որոնք քրիստոնեայ են և անդամ եկեղեցու։ 1) Հաւատի վերաբերեալ խնդիրներում դատելու իրաւունք չունին նրանք, որոնք եկեղեցուց հեռացրուած են և քրիստոնեայ չեն (Եփեսոս 1 կանոն) (Ա. Գիրք—175 երես) Պօլս. 6 կ. 1701 եր.)։ 2) Դատաստանը այն ժամանակ է օրինաւոր համարւում, երբ դատը և վճիռը կատարւում են եկեղեցական կանոնների հիման վրայ (Նիկիայի 5 կ. Եփես. 5. տես Ա. Գիրք. 150, 176)։ 3) Դատաստանը լինում է հոգևոր իշխանաւորների ձեռամբ, մանաւորապէս եպիսկոպոսի (Նիկ. 5. Ա-Ատ. 37-Ա. Գիրք-150, 100)։ 4) Դատերը կատարում է հոգևոր վարչութիւնը, ով կդիմի մարմնաւոր իշխանութեան՝ կպատժուի (Պօլ. 6 կ. Ա. Գիրք. 170)։ Վերոյիշեալ կէտերով ղեկավարուող դատարանը օրէնքների և կանոնների հիման վրայ քննում էր հասարակական կեանքում պատահած անկանոն երևոյթները, գտնում էր յանցաւորներին, որոշում էր երևած փաստերի հիման վրայ յանցանքների աստիճանները, յանցաւորների մեղաւորութեան չափը և նշանակում էր դրանց համապատասխան պատիժ-ապաշխարանք, յանցանքը և մեղքը սրբելու համար։ Դատաստանը արդար կատարելու համար անհրաժեշտ է, որ նախնական քննութիւնը լինի բազմակողմանի, անաչառ. նախնական քննութիւնից թէ և չէ կախուած դատաւորների վճիռը, բայց նա կազմում է հիմքը։ Բացի այդ դատաստանը լինում է դռնբաց, դատաւորների, մեղադրողի և մեղադրեալի ներկայութեամբ և հարց ու փորձով, որպէս զի վճիռը կայացնելիս, փաստերի դասաւորութիւնը և յանցանքի պարզորոշութիւնը կանոնաւոր լինի արտայայտած և

մեկնաբանած։ Որովհետև դատաստանը ունի մեծ բարոյական նշանակութիւն թէ յանցագործի նկատմամբ թէ շրջապատողների իբրև խրատ միւս հաւատացեալների առմամբ, ուստի և նա պիտի կանգնած լինի բարոյական բարձրութեան վրայ, նա չպիտի ենթարկուի քմահաճոյքի, կամայականութեան, զանազան անձանց կրքերի, այլ լինի անկախ, հեռու անձնական յարաբերութիւններից, չենթարկուի եպիսկոպոսի կամ այլ նախագահի ճնշման. նոյն ձևով պիտի վարուեն և անդամները վճիռը կայացնելիս և յանձնեն ում որ հարկն է 'ի կատար ածելու առանց յետաձգման։

## 2) ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ԴԱՏԻ ԱՌԱՐԿԱՆ՝ ՈՐՆ Է ՅԱՆՑԱՆՔԸ ԵՒ ՄԵՂՔԸ.

Յանցանք առհասարակ համարւում է օրէնքի խանգարումն գիտակցութեամբ 'ի վնաս ուրիշների. եկեղեցական յանցաւոր համարւում է եկեղեցու կանոնները խանգարողը, նրա սահմանած կարգեր չկատարողը. եկեղեցու որոշումների դէմ բարոյապէս մեղանչելը համարւում է մեղք, մեղանչողը՝ մեղաւոր։ Նախկին դարերից սկսած մեղք և յանցանք համարւում էին.

1) հաւատուրացութիւնը (Ս. Գիրք—248, 107 երես).

2) հեթանոսի և հրէայի ծէսեր և կարգեր կատարելը (Ս. Գ. 109, 221)։

3) աղանդաւոր և հերձուածող դառնալը (Ս. Գիրք. 237)։

4) անտարբերութիւն դէպի հաւատը } Ս. Գիրք 203 եր.
5) մոլեռանդութիւն հաւատի մէջ }

6) կախարդութիւնը իւր բոլոր տեսակներով (Ս. Գ 194, 222, 246)։

7) եկեղեցու օրհնած անօթների գողանալը } (Ս. Գ. 109).
8) և գործածութիւնը }

## ՄԵՂՔԵՐ ՔԱՀԱՆԱՅԱԳՈՐԾՈՒԹԵԱՆ ԴԷՄ.

1) Մարմնաւոր իշխանութեան միջոցով հոգևորական

լինել և պաշտօն ստանալ—Ա. Գիրք, 98, 468, 576.

2) Աղանդաւորների և հերձուածողներից ձեռնադրութիւն ստանալը—Ա. Գ. 168

3) Սիմօնականութեամբ ստացած ձեռնադրութիւնը—97. Ա. Գ.

4) Ձեռնադրուածի անպատրաստութիւնը—Ա. Գ. 111.

5) Ձեռնադրուածի ամուսնական անսրբութիւնը, երբ երկկին է, անառակի վրայ է պսակուած և այլն — Ա. Գ. 93.

6) Կամաւոր ներքինիացածի ձեռնադրութիւնը—Ա. Գ. 95, 146.

7) Հոգևորականի անկանոն տեղափոխութիւնը և ոչ անմիջական իւր իշխանաւորից ձեռնադրութիւնը—Ա. Գ. 92, 156

## ՊԱՇՏՕՆԻ ԿԱՏԱՐՄԱՆ ԴԷՄ

1) Եկեղեցական պաշտամունքի կանոնաւոր չկատարումը. Ա. Գ. 409—424.

2) Եկեղեցական կարգերի ինքնակամ փոփոխումը—Ա. Գ. 105.

3) Առանց եպիսկոպոսի ինքնագլուխ ծուխ հաստատելը — Ա. Գ. 98

4) Կրկնամկրտութեան կատարումը —Ա. Գ. 103

5) Կրկնաձեռնադրութեան կատարումը—Ա. Գ. 109

## ԿԱՌԱՎԱՐԻՉՆԵՐԻ ՅԱՆՑԱՆՔԸ

1) Ինքնակամ թողնել թեմը և անցնել ուրիշ թեմ.— Ա. Գ. 92, 466։

2) Ուրիշ թեմի կղերականին ինքնակամ իւր մօտ պահելը եպիսկոպոսի կողմից—Ա. Գ. 93.

3) Թեմ ընտրելը եպիսկոպոսից չէ կախուած, այլ բարձր կանգնած եպիսկոպոսական ժողովից—Ա. Գ. 92.

## ՍՏՈՐԱԴՐԵԱԼՆԵՐԻ ՅԱՆՑԱՆՔԸ

1) Ինքնագլուխ առանձին անկախ ծուխ կազմելը Ա. Գ. 98

2) Ուրիշ եպիսկոպոսի թեմում ձեռնադրուելը — Ա. Գ. 99։

3) Բանադրուածի ուրիշի մօտ գնալը՝ բանադրանքից ազատուելու համար — Ա. Գ. 98.

ԵԿԵՂԵՑՈՒ ՍԱՀՄԱՆԱԾ ԾԻՍԵՐԻ ՉԿԱՏԱՐՈՒՄԸ

1) Անտարբերութիւն դէպի ժամերգութիւն և հաղորդութիւն — Ա. Գ. 90.

2) Պասեր չպահելը, տօնը չյարգելը — Ա. Գ. 109.

ԲԱՐՈՅԱԿԱՆՈՒԹԵԱՆ ԴԷՄ ՅԱՆՑԱՆՔՆԵՐ

1) Պոռնկութիւն անելը — Ա. Գ. 96, 243.

2) Վաշխառութիւն անել. Ա. Գ. 75, 102, 157, 17.

3) Կամաւոր ներքինանալը — Ա. Գ. 95, 96.

4) Սպանութիւն կատարել — Ա. Գ. 245.

5) Ծեծել և վիրաւորել — Ա. Գ. 97.

6) Գողութիւն և նման ամեն տեսակ յանցանքներ գործել — Ա. Գ. 96.

7) Երդմնազանց լինելը — Ա. Գ. 96.

8) Արբեցողութիւն անել, թուղթ խաղալ, գինետուն մտնել — Ա. Գ. 102, 106։

9) Զարամտութեամբ ուրիշին ծաղրել և վիրաւորել — Ա. Գ. 106.

## 3) ՊԱՏԻԺՆԵՐ.

1) Ապաշխարանք; ապաշխարանք նշանակւում էր եպիսկոպոսի կողմից այն յանցաւորների և մեղաւորների վերաբերմամբ, որոնք զանազան գործած յանցանքների պատճառով զրկւում էին եկեղեցում հաւատացեալների հետ աղօթելու իրաւունքից։ Ապաշխարանքի առաջի աստիճանին ենթարկւում էին հին եկեղեցում — ա) լացողները. որոնք պիտի կանգնէին միայն եկեղեցու դռանը, լսէին դրսից ժամերգութիւնը, աղօթէին արտասուալից աչքերով և խնդրէին յաճախող աղօթող հաւատացեալներին իրանց աղօթքում յիշել ապաշխարողի անունը։ բ) Դրսի ունկնդիրներ, որոնք եկեղե-

ցու գաւթում կանգնած իրաւունք ունէին լսել ժամերգու-թիւնը և աղօթել առանց եկեղեցու ներսը մտնելու և դուրս գնալ թերահաւատների հետ առանց լսելու պատարագի խորհուրդը։ գ) Ներսի ունկնդիրները կանգնում էին եկեղեցում ամբիոնի ետևում, որոնք ծնկաչոք կամ երեսանկեալ աղօթելով ապաշխարում էին իրանց մեղքը. դուրս գալուց առաջ չոքում էին, ստանում եպիսկոպոսի իրանց կարդացած գլխին աղօթքի շնորհը և դուրս գալիս թերահաւատների ետևից եկեղեցուց չարժանանալով պատարագի խորհրդին։ գ) Հաւատացեալների հետ միասին կանգնողները իրաւունք ունէին եկեղեցում մնալ, պատարագին ներկայ լինել և վերջում դուրս գալ, բայց հաղորդուելու և ընծայաբերելու (գինի և հաց) իրաւունք չունէին մինչև ապաշխարանքի ժամանակամիջոցի լրանալը։ Ապաշխարանքի այս ձևը գործ էր ածւում Ա-դարից սկսած մինչև Զ դարը 2) Ապաշխարանք; այս ապաշխարանքը իւր ձևով տարբեր է նախկինից, ա) ապաշխարանք նշանակում էր եպիսկոպոսը ժամանակաւոր՝ մէկ տարուց մինչև քսան տարի, որի ժամանակամիջոցին ապաշխարողը կարող էր միշտ եկեղեցի գնալ, բայց հաղորդուելու իրաւունք չունէր. նա պիտի պաս պահէր, աղօթէր, աղքատներին ողորմութիւն տար։ բ) Ապաշխարանք՝ որ տեւում էր ցմահ, և մահուան ժամանակ կարող էր հաղորդուել։ գ) Ապաշխարանք ցմահ՝ եթէ մեռնելիս կզղջար, կարող էր հաղորդուել, եթէ ոչ՝ զրկւում էր հաղորդութիւնից։ (Ա. Գ. 237—249, 251, 505—509։ 3) Տուգանք. ապաշխարանքի տեղ շատ անգամ նշանակում էին տուգանք, որ յանցաւորը որոշ քանակութեամբ դրամ յատկացնէր կամ վնասուած անձին, կամ եկեղեցուն, կամ աղքատներին, կամ բարեգործական հաստատութիւններին. (Ա. Գիրք—322—341)։

4) Մարմնական պատիժ; մասնաւորապէս հայոց մէջ՝ . . . Զահապիվանի ժողովում որոշուեց մարմնական պատիժը, այն է ծեծով, ուրկանոց ուղարկելով աղալու համար, աղուեսադրոշմ դնելով ճակատին և նոյն իսկ «ջիլերը կտրե-

լով»․ Տես Ա․ Գիրք—338—340։

5) Եկեղեցական կարգից զրկուելը և աշխարհական աստիճանի վեր ածուելը․ Ա․ Գ․ 243․

6) Քահանայագործութիւնից զրկուել որոշ ժամանակով, բայց իրաւունք ունենալ հոգևորականների հետ հաղորդուել։ Ա․ Գ․ 185․ 196․

7) Բանադրանք, որով հեռացնում է քրիստոնեան եկեղեցուց, և զրկում է ամեն տեսակ օրենակատարութիւններից․ (օր․ քահանան չի գնում նրա տունը, չի հաղորդում նրանց, անթաղ են մնում յանցաւորները եթէ չեն զղջում)։

8) Երկրորդ տեսակ բանադրանք, որ այլ բառով կոչւում է նզովք․ նզովքի ենթարկուածը զրկւում է ամեն մի յարաբերութիւնից, եկեղեցուց հեռացնում է մինչև որ նզովքը վերցնում է նզովողը․ Ա․ Գիրք 150, 70։

9) Զրկուել պսակուելու իրաւունքից շնութեան և այլ յանցանքների համար․

## 4) ՆԱԽԿԻՆ ԴԱՐԵՐԻ ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ԴԱՏԱՍՏԱՆԸ․

(Церк. Судъ въ первые три вѣка Хрис. Пр. Соб. 1870)

Նախորդ յօդուածում տեսնուեց որ դատաստանի հիմքը կազմում են աւետարանի և առաքեալների պատուէրները․ առաքեալների յաջորդները նոյն ոգով առաջ տանելով եկեղեցու կառավարութիւնը, աւելի ևս կանոնաւորեցին, կարգաւորեցին եղած դատական կարգերը և պարզ ձևերի մէջ դրին։ Յիսուսի պատուէրը եղբօրը դատելու և Պօղոսի խօսքը Տիմոթէոսին երկու երեք վկայով քննելու յանցանքը, եղան մշտական հիմք դատավարութեան համար։ Բացի այդ Պօղոս առաքեալը խօսելով կորնթացւոց մէջ եղած պակասութիւնների վրայ, նրանց հեթանոս դատաւորներին դիմելու սովորութիւնը պախարակելով, յիշեցնում է որ ամօթ է ձեր վէճերը օտարին յանձնել, քանի որ ձեր մէջ անշուշտ կլինին վստահելի անձինք, որոնց կարելի է դատաւոր ընտրել վէճերը վերջացնելու և դատերը կտրելու համար, ինչու

չէք ընտրում, հարցնում է առաքեալը. «Առ ամօթոյ ձերոյ ասեմ. այնչափ ոչ գոյ ոք իմաստուն 'ի ձեզ, որ կարիցէ իրաւունս ընտրել 'ի մէջ եղբօր իւրոյ» Ա. կորն. Զ. գլ.: Առաքեալի խօսքը բոլոր տեսակ հասարակական յանցանքներին է վերաբերում, որի մէջ մտնում է և կրօնական և քաղաքացիական խնդիրներ. նա պատուիրում է միջնորդ դատաւորներ ընտրել և հարցերը վերջացնել: Այսպիսով Ս. Գիրքը տալիս է մեզ երկու ձևի դատարան, մէկը՝ եկեղեցուն է յանձնում դատելու անկախ կերպով իւր բոլոր անդամներին, պատժելու և ճանապարհի բերելու մոլորեալներին, միւսը՝ ընտրուած միջնորդ անձին քննելու հասարակական գոյն ունեցող խնդիրները և վերջ դնելու նրանց: Առաքեալներից յետոյ կռապաշտ պետութեան հովանաւորութեան ներքոյ քրիստոնէական դատի նշանակութիւնը իւր հետևողների համար աւելի ուժեղացաւ, լայնացաւ և հաստատութիւն գտաւ, մանաւանդ Դիոկղետիանոսի ժամանակ, երբ նա արգելեց դատաւորներին ընդունել քրիստոնեաներից բողոքներ ու գանգատներ. եկեղեցին աւելի ուժեղացաւ և եպիսկոպոսի դատը և պաշտպանութիւնը իւրայինների համար աւելի ընդհանրացաւ և ամուր հիմք ընդունեց: Առաքելական 37 կանոնը սահմանեց որ տարէնը 2 անգամ եպիսկոպոսական ժողով լինի քննելու և վերջ դնելու այն գժտութիւններին, որոնք կարող էին առաջ գալ այն շրջանի եկեղեցական կեանքում: Եպիսկոպոսական այս ժողովի խընդիրներին էր պատկանում և թեմի մեղադրուած եպիսկոպոսի դատը և քննելը ու պատժելը. այս մասին Ս. Առաքելական 74 կանոնը (Ա. Գ. 110 երես) այսպէս է ասում, «Եթէ եպիսկոպոսը արժանահաւատ մարդիկներից մեղադրուի. պիտի կանչուի եպիսկոպոսներից քննութեան, եթէ կգայ և կխոստովանի յանցանքը, կյանդիմանուի և պատիժ կնշանակուի նրան: Եթէ առաջի կանչելուն չգնայ, երկրորդ անգամ երկու եպիսկոպոսի ձեռքով կկանչուի, եթէ այս անգամ չըգնայ, երրորդ անգամ կկանչուի էլի երկու եպիսկոպոսի ձեռքով, երրորդ հրաւէրով չգնալուց յետոյ, եպիսկոպոսական

ժողովը իւր բարեհայեցողութեամբ վճիռ կկարդայ նրան, որպէս զի չկարծի թէ դատից փախչելով իրան օգուտ կարող է բերել»։ Յաջորդ կանոնը իրաւունք չէ տալիս ժողովին ունենալ եպիսկոպոսի դէմ վկայ հերետիկոս անձի, այլ պահանջում է որ վկան լինի ուղղափառ և երկու կամ երեք հոգի։ Եպիսկոպոսի թեմում գտնուած հոգևոր անձինք ենթարկւում էին իրանց առաջնորդի իրաւասութեան և դատին։ Այդպիսի մի դէպք պատմում է Եւսեբիոսը. 230—ին Եգիպտոսի յայտնի գիտնական Որոգինէս, որ Աղէքսանդրիայում ուսուցչութիւն էր անում և մարդկանց զրպարտութիւններից ազատուելու համար ինքն իրան ներքինիացրել էր, գնալով Պաղեստինի Կեսարիա, քահանայ ձեռնադրուեց առանց իւր եպիսկոպոս Դիմիտրիոսի գիտութեան։ Դիմիտրիոսը մի քանի քահանաներով ժողով արաւ և զրկեց Որոգինէսին և ուսուցչութիւնից և քահանայութիւնից իբրև կամաւոր ներքինու։ Որոգինէսը բողոքեց վճռի դէմ. հետևանքը եղաւ նոր եպիսկոպոսական ժողով, որը հեռացրեց նրան իսպառ քահանայութիւնից. Որոգինէսը հեռացաւ Կեսարիա և ցմահ մնաց այնտեղ։ Քահանայական ժողովի մի դատ էլ տեղի է ունեցել 241-ին Զմիւռնիայում. Նօէտ անունով մէկը սկսել էր քարոզել որ Քրիստոս և Աստուած միևնոյն անձն են. քահանաները ժողով են կազմում, կանչում նրան դատի, հաստատում նրա վրայ և համարելով հանդգնակից դուրս, մեղադրում են և բանադրում։ Դատական այս ձևը գործադրւում և պաշտպանւում էր Եգիպտոսում, մասնաւորապէս Կիպրիանոսի ժամանակ (248—258)։ Սրա կարծիքով եպիսկոպոսն է դատաւոր՝ փոխանորդ Քրիստոսի, միայն առանց կղերի և ժողովրդի ոչ մի բան չպիտի կատարի։ Եպիսկոպոսը իւր ժողովով դատաւոր է իւր թեմում, իսկ ընդհանուր ժողովը դատաւոր է բոլոր աշխարհում. որ իւրաքանչիւր տեղական խնդիր պիտի քննուի գործողութեան վայրում, ուր վկաները և մեղադրողները ապրում են, որ դիւրին լինի խնդիրը բազմակողմանի կերպով պարզել։ Կրօնապաշտական շրջանում եկեղեցին միշտ դատը կտրում

էր իւր ձեռքով, առանց դիմելու մարմնաւոր իշխանութեան աջակցութեան. բայց երբ լինում էին պնդագլուխ հոգևորականներ, որոնք դժուարութեամբ էին հնազանդում ժողովի վճռին, այն ժամանակ ժողովը ստիպուած դիմում էր կռապաշտ իշխանաւորին: Այդպիսի դէպք պատմում է Եւսեբիոս Պօղոս Սամօսատացու՝ Ասորոց Անտիոք քաղաքի եպիսկոպոսի մասին, որը դատաստանը դարձրել էր կեղեքելու և շահախնդրական գործով պարապելու միջոց, և միևնոյն ժամանակ քարոզում էր մոլար մտքեր, թէ Քրիստոս մարդ էր և ոչ Աստուած: Եպիսկոպոսական ժողովը նրան մեղադրեց, բայց հովանաւորող թագուհու միջոցով ազատուեց: 270-ի կազմած նոր ժողովը մեղադրեց իսպառ և զրկեց եպիսկոպոսութիւնից. բայց նա հակառակեց և շարունակեց առաջնորդական պաշտօնը: Ժողովը ստիպուեց դիմել կռապաշտ Աւրելիանոս կայսեր նրան հեռացնելու, սա էլ գործը յանձնեց Հռոմի և Իտալիայի եպիսկոպոսների վճռին:

Հռոմում քրիստոնէութիւնը քաղաքացիական կրօն դառնալուց յետոյ, նոյն դատական վիճակը աւելի լայն ծաւա ստացաւ, քրիստոնեայ կայսրները սկսեցին մինչև իսկ առաւելութիւն տալ հոգևոր դատաստանին և սրա վճիռը համարեցին հաւասարազօր քաղաքացիական դատարանի վճռին: Այդ մասին վկայում է «Առաք. կարգադրութիւնների» Բ. Գիրք (Ա. Գ. 58) և Որոգինէսը, վերջինս նմանացնում է քրիստոնեաների դատը հրէական ատեանների դատին: «Առաք. կարգ.»-ի մէջ որոշ հրահանգներ է տալիս քննական գործերի համար, որ մանր գործերը քննում էին քահանաներ և սարկաւագներ, մեծ գործերը եպիսկոպոսը. քննութեան և դատի օրը շաբաթուայ երկրորդ օրն էր լինում, որ մինչև կիրակի օրը ժամանակ ունենային երկու կողմն հաշտուելու և ս. հաղորդութեան արժանանալու. դատը վիճաբանական էր. դատաւորը լսում էր երկու կողմին, նաև ժողովրդի կարծիքը քննելի խնդրի և կողմերի մասին, երկու կամ երեք վկայի ասածները, որոնք հանդիստ,

առանց բարկանալու, երկիւղածութեամբ պիտի ճշմարիտ վկայութիւն տային, ապա քահանաներ և սարկաւագներ միջնորդներ էին ընկնում հաշտեցնելու համար, չհաշտուելու դէպքում եպիսկոպոսը ընդհանուր խորհրդով վճիռ էր կայացնում. սուտ վկայութիւնը և բամբասանքը խիստ հալածւում էր։ Դատաւորները պատժի էին ենթարկում աշխարհականին և հոգևորականին ապաշխարանք նշանակելով, ամենախիստ պատիժն էր կարգալոյծ անել հոգևորականին և նզովել աշխարհականին։

Կոստանդիանոս կայսրը աւելի մեծ նշանակութիւն էր տալիս հոգևոր դատաստանին, հրամայում էր 'ի կատար ածել այդ վճիռները իսկոյն և եթ քաղաքացիականի ուժով, մինչև իսկ հրամայելով իբրև միջնորդ դատարանի վճիռ՝ թոյլ չէր տալիս բողոքելու նրա դէմ. մինչև անգամ կարգադրեց, որ ով աշխարհական դատարանից դժգոհ է, կամ չի ուզում դիմել նրան, կարող է դիմել եպիսկոպոսական դատարանին։ Երանելի Օգոստինոսը վկայում է, որ ամբողջ օրը ծանրաբեռնուած լինելով դատի խնդիրների քննութեամբ, ժամանակ չի գտնում հոգևոր պիտոյքների վրայ մտածելու. երբ Միլան եկաւ, գտաւ Ամբրոսիոսին նոյն վիճակում, ամբողջ օրերը զբաղուած դատեր կտրելով։ Բոլոր եկեղեցիներում դատական ձևը հանրական էր, հասարակական և ոչ անհատական։ Մինչև Նիկիայի ժողովը համարւում էր 60 տեղական ժողովներ եղած զանազան խնդիրներ քննելու համար ըստ Ա-Առաք. կանոնի։* Դ. դարուց սկսած բացւում են արդէն տիեզերական ժողովները իբրև բարձրագոյն և վերջին դատական ատեան, որոնք քննում և վճռում էին ընդհանուր քրիստոնէական եկեղեցու մէջ ծագած խնդիրները վերջնական կերպով, առանց վճռաջինջ բողոքի։ Այսպիսով առաջ եկան արդէն դատական հետևեալ ձևի ատեաններ, ա) քահանաների և սարկաւագների ժողով՝ մանր տեղական խնդիրներ քննելու, բ) եպիսկոպոսական տեռ.* «Каноническое устройство Церк. суда **по** началамъ Всел. собор. Законодательства» Пр. Соб. 1870:

ժողով քահանաների հետ թեմական գործերը քննելու. գ) Միտրոպոլտական ժողով եպիսկոպոսների հետ աշխարհի գործերը քննելու. դ) Տիեզերական ժողով միտրոպոլիտների հետ քրիստոնեայ աշխարհի գործերը քննելու։ Այս ատեաններին բողոքելու իրաւունք ունէին ամեն մի ճշմարիտ քրիստոնեայ և հոգևոր անձինք, եթէ որ վստահելի էին, յարգելի էին, որև է յանցանքով բռնուած չէին. չէին կարող հաւատոյ խնդիրներում բողոքել և վկայութիւն տալ հերետիկոսներ, հերձուածողներ, հրէական ծէսեր կատարողներ, բանադրուածներ, անարգուածներ, պատժապարտներ, ոչ քրիստոնեաներ. Ա. Գիրք - 110, 169երես։ Ա. Տիեզերական։ Նիկիայի ժողովը լինելով Կոստանդիանոս կայսրի ներկայութեամբ և աջակցութեամբ գումարուած, խիստ մեծ ազդեցութիւն ունեցաւ բոլոր քրիստոնեայ աշխարհի վրայ, նրա սահմանած կարգերը իբրև վերջնական հրամայուեցին կայսրի կողմից կատարել առանց որև է առարկութեան. այսպիսով վերջին եկեղեցական դատական բարձր ատեանը ստացաւ քաղաքական իշխանութեան կողմից օրինական անվիճելի սանկցիա։ Կոստանդիանոսի յաջորդները նոյն ընթացքով չգնացին, նրանք լինելով արիոսական, սկսեցին հալածել ուղղափառ հոգևորականներին, եպիսկոպոսներին մատնեցին աշխարհական դատաստանին և աշխատեցին վայր ձգել հոգևոր դատարանի նշանակութիւնը։ Եկեղեցին էլ իւր կողմից աւելի խստացրեց իւր կանոնները այդ կէտի վերաբերմամբ, հրամայելով խիստ պատժի ենթարկել այն հոգևորականներին, որոնք աշխարհական դատարանին կդիմեն (Ա. Գ. 213)։ Թէոդորոսի կոդէքսից երևում է (2 Consf. 12, 41, 47) որ եկեղեցական դատարանը վճռում էր բոլոր տեսակ գործերը թէ եկեղեցական և թէ քաղաքացիական։ 376—ին կայսերական հրամանով քրէական գործերը բաժանուեցին եկեղեցականից և յանձնուեցին աշխարհական դատարանին, իսկ 399—ին քաղաքացիական գործերը (Consf. 23). (տես церковный судъ внѣшный или обществен-

ный. Хр. Чт. 1865) Քրէական յանցաւորները բացի աշխարհական դատարանին ենթարկուելուց, ընկնում էին և եկեղեցական դատի տակ, որը զրկում էր հոգևորականին կարգից և յանձնում քաղաքացիական իշխանութեան։ Բայց էլի եղան նոյն միջոցին դէպքեր, երբ բաւականացան միայն եկեղեցական դատով. օր. Աթանասին մեղադրում էին արիոսականները սպանութեան մէջ, Ոսկեբերանին և Գրիգոր Անտիոքացուն պետական դաւաճանութեան մէջ, բայց երեքն էլ ենթարկուեցին միմեայն եկեղեցական դատի. առաջին երկուսը աքսորուեցին ժողովից յետոյ, թէ անկանոն ժողովի և վերադարձան էլի եկեղեցական ժողովի վճռի հիման վրայ (Սոկր. ա. գ.)։

452—ին Վաղենտիանոս կայսրը արձակեց այսպիսի հրաման, թէ «կղերի մէջ առաջացած գործերը թոյլ է դըրւում քննելու տեղական եպիսկոպոսին, եթէ բողոքողները գտնում են այդ տեղի, և յանձնում են եպիսկոպոսին փոխադարձ համաձայնութեամբ և հնազանդելու խոստում են տալիս նրա վճռին։ Եպիսկոպոսները նոյնպէս կարող են դատել աշխարհականներ, եթէ սրանք կդիմեն եպիսկոպոսին. ուրիշ դէպքերում եպիսկոպոսները իրաւունք չունին դատելու, որովհետև նրանց վերաբերում է միայն հաւատի գործերը»։ (Хр. Чт. внѣшный Судъ 1865) Վաղենտիանոսի օրէնքներով քահանաները իրաւունք ունէին վիրաւորանքի դէպքերում աշխարհականի կողմից իրանց փաստաբանին ուղարկել դատարան՝ առանց իրանց ներկայութեան գործը քննելու, իսկ քրէական գործերում, բոլորը, նոյն իսկ եպիսկոպոսը պիտի անձամբ ներկայանային դատարանին։ Իսկ դրանից քիչ առաջ Թէոդորոս Բ-ի օրէնքով քրէական յանցագործ հոգևորականները ենթարկւում էին եկեղեցական դատի և կարգալոյծ լինելուց յետոյ յանձնւում աշխարհական դատարանին։ Զ. դարում Յուստինիանոսը աւելի ևս լրացրեց և կարգաւորեց այդ խնդիրը. 1) եկեղեցական կալուածական գործերը յանձնւում էին եպիսկոպոսին, որի վճռի դէմ կարող էին բողոքել մետրոպոլիտին և սրա

*վճռի դէմ պատրիարքին, որը վախճանական վճիռ էր կայացնում (Նովել. 123). 2) աշխարհականը կարող է հոգեւորականի վրայ գանգատուել եպիսկոպոսին, եթէ մեղադրուողը գործը տասն օրուայ ընթացքում չի յանձնիլ աշխարհական դատարանին, վերջինս պարտաւոր է կատար ածել հոգեւոր դատարանի վճիռը։ Իսկ բողոքի դէպքում այդ վճռի դէմ, գործը անցնում է աշխարհական դատարանին, իսկ եթէ եպիսկոպոսը գործը քննում է կայսրի լիազօրութեան համաձայն, բողոքը տրւում է կայսրին (Նովել.* 83)։

3) *Քրէական գործերում մասնակցում է և հոգեւոր և աշխարհական դատարանը. եթէ հոգեւորը մեղաւոր է ճանաչում յանցաւորին, կարգալոյծ է անում և յանձնում աշխարհական դատարանին. իսկ եթէ առաջ աշխարհական դատարանն է քննում, մեղաւոր ճանաչած դէպքում յանձնում է եպիսկոպոսին, որը եթէ համաձայն չէ վճռի հետ, գործը ուղարկում կայսրին (Նով.* 86, 123)։

4) *Եպիսկոպոսների մէջ առաջացած բոլոր եկեղեցական և քաղաքացիական գործերը յանձնւում են եպիսկոպոսական ժողովի իրաւասութեան մետրոպոլիտի նախագահութեամբ, բողոքը տրւում է պատրիարքին (Նով.* 123)։

5) *Եպիսկոպոսը անձամբ աշխարհական դատարան չի կանչւում կամ վկայութեան կամ ցուցմունքի համար, եթէ աշխարհական դատաւորը կհամարձակի կանչել, կզրկուի պաշտօնից և տուգանք կվճարի այն եկեղեցուն, որի եպիսկոպոսին կանչում էր դատելու. իսկ ով կօգնի եպիսկոպոսի վրայ դատավճիռ կայացնելուն, կաքսորուի (Նով.* 84, 123)։ *Այս կանոնները իրագործութիւն գտան թէ արեւմուտքում թէ արեւելքում մինչև կայսրութեան անկումը և վերածնութեան դարը։*

5) ՆԱԽԿԻՆ ԴԱՐԵՐԻ ԴԱՏԱՎԱՐՈՒԹԻՒՆԸ

(Практика церк. суда на всел. и помѣст. собор. Пр. Обоз. 1871)

Կանոնների մէջ չկան կարգադրութիւններ դատավարութեան ձևի, եղանակի վերաբերմամբ, այդ թողած է տեղական պայմանների՝ և հանգամանքների հետ ծանօթ անձանց կարգապահութեան։
Կեանքը 'ի նկատի ունենալով սովորութիւնը և տիրող պետական դատական ձևը, մտցրեց և հոգևոր դատավարութեան մէջ ընդունուած կարգերը համաձայն եկեղեցական կանոնների։ Տիեզերական և տեղական ժողովներ եղել են համէական կայսրութեան շրջանում և տիրող օրէնքների հովանաւորութեան ներքոյ, ուստի և դատավարական ձևերն էլ ակամայից պիտի ենթարկուէին համէական աշխարհական դատարանական ընդունուած և սովորական կարգ կանոնին։
Հռոմում քաղաքացիական օրէնքներով դատավարութիւնը լինում էր դռնբաց, հասարակութեան առաջ. կամաց կամաց սկսուեց դատը վարուել փակ հիմնարկութիւններում, իսկ քաղաքի պատուաւոր անձինք իրաւունք ունէին ունկընդիրների դահլիճում առաջի տեղերում նստել և լսել դատը։ Սկզբում դատը լինում էր բերանացի, թէ մեղադրողը թէ մեղադրեալը գանգատւում և պաշտպանւում էին բերանացի և գործը վերջանում էր հեշտութեամբ։ Երբ մտաւ իրաւաբան—փաստաբանների արձանագրական ձևը, այն ժամանակ բերանացի դատավարութիւնը տեղի տուաւ գրաւորի։ Արձանագրում էին գանգատաւորի, պատասխանատուի, վկաների, պաշտպանների վկայութիւնները և ասածները արագ կերպով և կազմում առանձին գործեր, որպէսզի հարցը և վճիռը բարձրադաս ատեան գնալու դէպքում, հնար լինէր արձանագրութիւնների հիման վրայ հարցը վճռելու։ 5 օրից յետոյ, երբ արձանագրութիւն կազմած, խնդիրը բազմակողմանի կերպով քննուած վերջացած էր լինում, դատաւորը վճիռը կարդում էր ամբիոնից։ Յուստինիանոսի ժամանակ աւելի կանոնաւորուեց, գանգատաւորը գանգատւում էր բերանացի կամ գրաւոր, բերանացին գըրւում էր և ստորագրւում բողոքողի կողմից, անգրագիտութեան դէպքում երրորդ անձի ձեռքով գանգատաւորի խնդիր-

քով, կցելով հետեւեալը, որ գանգատաւորը պարտաւոր է ապացուցանել միւս կողմի մեղաւորութիւնը և դատը մինչև վերջը շարունակել, հակառակ դէպքում կենթարկուի պատասխանատուի վրայ բարդած յանցանքի պատժին։ Նշանակուած օրը եթէ չգար գանգատաւորը և երրորդ կոչին նոյնպէս չներկայանար ատեանին, անունը ջնջւում էր և գործը վերջանում. դատաւորը եթէ հարկաւոր էր համարում, իրաւունք ունէր առանց մեղադրողի գործը շարունակել քննական ձևով. եթէ պատասխանատու կողմը առանց յարգելի պատճառով չէր գալիս, գործը մնում էր, միայն պատըժւում էր անհնազանդ գտնուելուն համար։ Երկու կողմի ներկայ լինելուց յետոյ, գանգատաւորը անում էր իր գանգատը միւս կողմի վրայ և նրա յանցանքը աշխատում ապացուցանել. պատասխանատուն «մեղադրուած է» յայտարարուելուց յետոյ դատաւորի կողմից, զրկւում էր քաղաքացիական իրաւական գործողութիւններ կատարելու իրաւունքից և անընդունակ համարւում որոշ պաշտօններ վարելու մէջ։

Երկու կողմը իրաւունք ունէին վիճաբանական ձևով իրանց արդարացնել, փաստաբանների միջոցով դատ վարել, վկաների հարց ու փորձին լինել ներկայ և պարզել խնդիրը. եպիսկոպոսների վկայութիւնը գրաւոր էր ուղարկւում դատարան. վկաների ծախքը վճարում էին կողմերը։ Արձանագրութիւնները կազմելուց, ամփոփելուց յետոյ, խորհրդակցութեամբ վճիռ էր կայացնւում, որի դէմ բողոքելու համար տրւում էր տասն օր ժամանակ և պատժի կատարումն ուշանում էր մինչև բողոքի վախճանը։ Ահա այս դատավարական ձևը մտաւ Տիեզերական ժողովների նիստերի մէջ, մեղադրական և պաշտպանողական եղանակը նոյնութեամբ և նմանողութեամբ գործադրուեց եկեղեցական դատերի ընթացքում կայսրութեան սահմաններում։ Եկեղեցական մեծ դատավարութեան օրինակը տեսնում ենք 448—ին Եւտիքէսի դէմ յարուցուած Եւսեբէոս եպիսկոպոսի մեղադրութեամբ Պօլսում, տեղի պատրիարք Փլաւիանի նախագահ-

ուԹեամբ և բազմաԹիւ ժողովականների խորհրդակցուԹեամբ։ Եւսեբէոսը ներկայացրեց գրաւոր մեղադրանք ժողովին, խնդրելով կարդալ և արձանագրուԹեան մէջ մտցնել։ Ժողովը մեղադրական կէտերը հաղորդեց Եւտիքէսին կարդացող քահանայի և փաստաբանի միջոցաւ և հրաւիրեց ժողով իրան արդարացնելու։ Միքանի օրից յետոյ կազմուած ր. նիստում մեղադրողը ժողովի ուշադրուԹիւնը դարձրեց Նեստորի դատի ժամանակ վարած եղանակի վրայ և պահանջեց կարդալ Կիւրեղի երկու Թղթերը դաւանուԹեան մասին, որոնք կարդացուեցին և իբրև դաւանաբանական հիմք Քրիստոսի մի բնուԹեան մասին ընդունուեցին և պահանջուեց քննել Եւտիքէսի քարոզածները Կիւրեղի այդ Թղթերի հիման վրայ։ Գ—նիստում պատգամաւորները յայտնեցին, որ մեղադրական գիրը Եւտիքէսի երեսին կարդալուց յետոյ, ստացան պատասխան, որ ինքը վանքից դուրս գալ չէ կարող տուած ուխտին համաձայն, և երկրորդ որ Եւսեբէոսը նրան Թշնամի է, մեղադրանքը Թշնամանանք է իւր դէմ։ Երկրորդ անգամ 2 քահանայի միջոցով կանչուելուն Եւտիքէսը էլի բացասական պատասխան տուեց։ Երրորդ անգամ ուղարկուած երկու քահանան և մէկ սարկաւագը զգուշացրին Եւտիքէսին, որ չգալու պատճառով իբրև անհնազանդ հոգևորական ենԹարկւում է խիստ պատժի և նրան մի օր ժամանակ տուին ներկայանալու։ Յաջորդ անգամ գնացողները լուր բերին, որ Եւտիքէսը հիւանդ է և խոստանում է ստորագրել Նիկիայի և Եփեսոսի ժողովների վճիռները և Կիւրեղի սահմանները։ Եւսեբէոսը պատասխանեց, որ ինքը մեղադրում է նրան ոչ ապագայի, այլ անցեալ քարոզուԹիւնների համար, որոնց մէջ և մեղադրում է և պատրաստ է ապացուցանել, քանի որ ինքը եԹէ չկարողացաւ ապացուցանել, օրէնքով պիտի զրկուի եպիսկոպոսուԹիւնից և գուցէ ենԹարկուի աքսորանքի։ Փլաւիանը հիւանդուԹիւնը յարգելի պատճառ համարելով, նիստը ուշացրեց ևս մի շաբաԹ։ Նշանակուած ժամին ժողովը սկսեց իւր նիստը Փլաւիանի նախագահուԹեամբ. Եւտիքէսը եկաւ զինուորներով, վարդապետներով և

կայսերական կոմիսարի հետ։ Կոմիսարը ժողովի թոյլտուութեամբ կարդաց կայսեր հրամանը, որի մէջ ասուած էր, թէ Փլորէնցը հաւատի մէջ ամուր և հաստատ մարդ է, և որովհետև խնդիրը վերաբերում է ոչ միայն Եւտիքէսին, այլ և հաւատին, ուստի և պատուիրում էր Փլորէնցին թոյլ տալ ժողովին ներկայ լինել։ Ժողովը համաձայնեց և Փլորէնցը ներկայ եղաւ։ Ժողովը քննեց, մեղադրեց Եւտիքէսին, զրկեց քահանայութիւնից և վարդապետութիւնից և յայտնեց բոլոր եկեղեցիներին։ Եւտիքէսը բողոքեց վճռի դէմ։ Երկրորդ ընդհանուր մեծ ժողովը 128 եպիսկոպոսի մասնակցութեամբ և Դիոսկորոս Աղէքսանդրիայի եպիսկոպոսի նախագահութեամբ գումարուեց 449 թուին, 2 կայսերական կոմիսարների հսկողութեամբ, խռովարարներին արտաքսելու և կարանաւորելու արտօնութեամբ, և պայմանով որ հին դատաւորներից ոչ ոք չմասնակցի վճռահատութեան։ Փլաւիանը պահանջեց որ Եւսեբէոսը իբրև մեղադրող կանչուի ժողով. կայսերական կոմիսարները յայտնեցին որ այս ժողովի կարգաւորութիւնը որոշել է կայսրը, որ այստեղ պիտի դատուեն նախկին դատաւորները իրանց կայացրած վճռի համար. Դիոսկորոսը համաձայնեց և Եւսեբէոսը չկանչուեց։ Վերջը Դիոսկորոսին մեղադրեցին այս սխալի համար, որ նա կայսեր հրամանը կատարելով, մոռացութեան տուաւ կանոնական պատուէրները, որ նա անշուշտ պիտի հրաժարուէր նախագահութիւնից և թոյլ չտար որ կայսեր պաշտամաւորները խառնուէին եկեղեցական դատավարական գործին։ Ժողովը քննեց խնդիրը, արդարացրեց Եւտիքէսին և ընդհակառակը մեղադրեց փոխադարձաբար Փլաւեանին և Եւսեբէոսին, որոնք երկու բնութիւն էին ուզում խոստովանել տալ Եւտիքէսին հակառակ Նիկիոյ և Եփեսոսի ժողովի որոշման հանգանակի փոփոխութեան վերաբերութեամբ. (տես Ա. Գիրք 361—365)։ Փլաւիանը բողոք ներկայացրեց Պապի լեգատների ձեռքով նոր ժողով գումարելու համար, որը և գումարուեց 451 թուին Քաղկեդոնում։ Պապի լեգատները ժողովում ներկայացան իբրև «բոլոր եկեղեցիների

գլուխ» պապի պատգամաւորներին, Դիոսկորոսին հեռացրին ժողովից, որ նա առանց պապի ժողով է արել. մեղադրեցին Դիոսկորոսին որ նա Փլաւիանի արած ժողովի վճիռը իւր վարդապետ Եւտիքէսի դատապարտութեան վերաբերեալ փոխել է, որ հռոմի Պապին բանադրել է, և երեք անգամ ժողով կանչուելուն չի եկել, արհամարհել է, այդ հիմամբ զրկեցին նրան եպիսկոպոսութիւնից։ Նոյն ժողովում եղան և այլ դատեր։ Այս ձևով էլ համարեա լինում էին և եղան ապագայ բոլոր եկեղեցական դատերը, որոնք ամեն բանով ընդօրինակութիւն էին աշխարհական դատարանների։

## 6) ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ԴԱՏԸ ԵՒ ԴԱՏԱՎԱՐՈՒԹԻՒՆԸ ՀԱՅՈՑ ՄԷՋ.

Մեր եկեղեցական աղբիւրների մէջ բացի Ս. Առաքելական 74 կանոնից (Ս. Գ. 110 երես) և երեք տիեզերական ժողովների կանոններից, կան և զուտ ազգային կանոններ, որոնք թէ և պարզապէս չեն խօսում դատավարական ձևերի և բարձրագոյն ու ստորադաս ատեանների մասին, բայց որոշակի դնում են յանցանքների համեմատութեամբ զանազան աստիճանի պատիժներ, նայելով յանցանքի փոքրութեան և մեծութեան. այսպիսի կանոններ տեսնումենք Շահապիվանի ժողովում 447թուին. (տես Ս.Գիրք 322—341)։ Ս. և Բ. կանոններով՝ եթէ եպիսկոպոսը, քահանան, սարկաւագը և դպիրը կանանցով և օրիորդներով, մինչև իսկ աղախնով, անառակութեան մէջ կբռնուին, վկաներով մեղադրանքը կապացուցուի, կարգալոյծ լինին կարգաւորները, կանայք հեռացնուին քահանայական տնից, նոյնպէս օրիորդը և աղախինը ապաշխարանքի ենթարկուելով, և տուգանք վճարեն կարոտեալներին։ Այստեղ եպիսկոպոսին է յանձնում պատժուած քահանայի և դպիրների հսկողութիւնը, իրաւունք տալով զղջման դէպքում ներումն շնորհել. իսկ եպիսկոպոսի դէմ ո՞ւմ պէտքէ դիմել գանգատով, ոչինչ չէ ասում, պարզ է աշխարհի եպիսկոպոսապետին որէ կաթուղիկոս։ Խնդիրն նրբանում է որ դրանց մեղադրելու համար հարկաւոր են գանգատաւորներ, վկաներ, գործը քննողներ, մի՞թէ այդ բոլորը

եպիսկոպոսն էր քննում. Հարկաւ նա կունենար օգնականներ՝ քահանաներից, որոնք իբրև քննիչ և դատաւորներ գործը կըպարզաբանէին և վճիռ կկայացնէին. իւրաքանչիւր հոգևորականին ապաշխարանքի ենթարկելուց յետոյ, պիտի լինէին անձինք որ հսկէին պատժի կատարման վրայ. այստեղից հետևցնելու է որ թեմական եպիսկոպոսը իւր քահանաներով վճռահատում էր եկեղեցականների գործերը և պատիժ նըշանակում և ինքը՝ եպիսկոպոսն էլ՝ պատժւում և տուգանւում կաթուղիկոսի վճռով: Գ. Դ. Ե. Զ. Է. Ը. Թ. Ժ. կանոններով քննւում են, դատւում, վկայութեամբ մեղադրւում շինական և ազատ (քաղաքացի և ազնուական) ամուսնական խնդիրներում, յանցաւորները ենթարկւում են եթէ ազատ են՝ խրատի և տուգանքի, եթէ շինական են, ծեծի, տուգանքի, «խանձուին, մրուին», և ուրկանոց տարուին արկանք աղալու և ապաշխարանքի. նոյն պատիժներին ենթարկւումէ և կինը: Բացի այդ մարդու և կնոջ բաժանման միջոցին (4և5 կանոնները) որոշումէ, թոյլ տալ կնոջ բոլոր իրերը որ հետը բերել է, հանդերձ, արծաթ, աղախին, անասուն —յետ վերցնել մարդու տանից և հետը տանել. կամ մարդու ունեցածը ամբողջովին կէս անել, որդիներ, տուն, հող, ջուր և կէս բաժինը հետը տանել: Պատուիրում է տուգանքները բաժանել կարօտեալներին կամ յանձնել գանձարանին կամ տալ եկեղեցուն: Կախարդներին դիմելու դէպքում եթէ 2 կամ 3 վկայով կապացուցուի, նոյն պատիժներին ենթարկուին, ապաշխարին և զղջման դէպքում հաղորդուելու իրաւունք ստանան:

Ահա այսպիսի բարդ դատական գործողութիւններ կատարւում են թէ գիւղում թէ քաղաքում, բոլորն էլ ամուսնալուծական, կախարդական և չհասական, որոնք աւելի եկեղեցական գոյնի խնդիրներ են քան զուտ աշխարհական. բայց պատիժների մեծ մասը աւելի աշխարհական դատարանի վայել քան եկեղեցական, 8-րդ կանոնի մէջ մինչև անգամ հրամայում է «քարկոծ» անել: Հարցէ ծագում ո՞վ էր գիւղերի դատաւորը և ո՞վ քաղաքինը, եթէ երկուսի դատաւորը

հոգևորականներն էին՝ քահանայք մեծ մասամբ, ո՞վ պիտի կատարէր պատիժները, ո՞վ պիտի ժողովէր տուգանքները, ո՞վ պիտի 100 հարուած տար յանցաւորին, ո՞վ պիտի ուրկանոց տանէր աղալու, ո՞վ պիտի մարդու ու կնոջ հողն ու ջուրը բաժանէր, ո՞վ պիտի «քարկոծ» անէր. մի՞թէ քահանայ դատաւորը. իսկ եթէ քահանայ դատաւորին չլսէին, ո՛չ տուգանավճարը հատուցանէին, ո՛չ թոյլ տային իրենց ծեծելու, քարկոծ անելու, ոչ էլ իրաւունք տալու հող ու ջուրը բաժանելու. եթէ յանցաւորները փախչէին. ուրեմն ի՞նչ, պիտի ենթադրել որ քահանայի վճիռը՝ պիտի կատարէին մարմնաւոր իշխանութեան մարդիկ. թէ՞ գուցէ բոլոր վճիռները և գործերը կտրում և վարում էր թեմի եպիսկոպոսը. բայց նա բացի իրանից և ստորադրեալ քահանաներից ուրիշ ոյժ չունէր, մանաւանդ եկեղեցական կանոնները խստիւ արգելում էին ո՛չ միայն չծեծել քրիստոնեայ եղբօր, այլ և չվիրաւորել, հակառակ ընթացող հոգևորականը խստիւ պատըժւում էր։ Թէ գուցէ մարմնաւոր դատարաններն էին այս գործերը վճռում և պատիժները կատար ածում. բայց խնդիրների մեծ մասը աւելի եկեղեցական են քան աշխարհական, եպիսկոպոսի իրաւունքից կախուած քան մարմնաւոր իշխանի։—Այս մութ խնդիրը լուծելու համար, պիտի `ի նկատի ունենալ մի հանգամանք, այն, որ այսպիսի պատիժներով կանոններ մենք չունենք մեր ոչ մի հետագայ ժողովի կանոններում, որ նշանակում է թէ բացառիկ հանգամանքների արդիւնք են այս խիստ հակաեկեղեցական պատիժները։ Եւ ճշմարիտ. ժողովը եղել է 444-ին, այսինքն Վարդանանց պատերազմի միջոցներում, երբ թագաւորութիւն էին անում գողեր, ուրացողներ, մոգեր, կրակապաշտներ, ոտնակ էր տուած եկեղեցի, սրբութիւն, ամուսնութիւն, ընտանեկան սրբութիւն։ Իշխանները և եպիսկոպոսները, հոգևորականները և աշխարհականները միացել էին մեծ զայրոյթով միասին և աշխատում էին վերջ տալ այդ կորստաբեր հոսանքին և կործանիչ դրութեան։ Ահա այս հանգամանքը առիթ է տալիս ենթադրելու որ վերոյիշեալ

կանոնների գործադրման և պատիժների կատարածելու մէջ
մասնակցում էին անշուշտ գիւղում՝ գիւղական «իշխանները»
գիւղապետի հետ միասին քահանայական դատարանին, քա-
ղաքում՝ քաղաքի մեծամեծները՝ նախարարները եպիսկոպո-
սի հետ միասին։ Այս ենթադրութեան օգնութեան է հաս-
նում նոյն Ջահապիվանի յաջորդող 16-րդ կանոնը (Ա. գիրք
336) որ ասում է «եթէ եպիսկոպոսը, երէցը, ազատ դա-
տաւորը, և շինականը կամենում են առաջնորդներ կարգել,
եկեղեցու հովիւներ սատրաստել, ժողովրդապետներ և օ-
րէնսդիրներ նշանակել, պէտի կաշառք չառնեն, ճշմարտու-
թեամբ ընտրութիւն պիտի անեն և օրէնքի ու սրբութեան
նախանձախնդիր մարդկանց պէտի ջոկեն»։ Նոյն ժողովի 19
և 20 կանոնները վերաբերում են մծղնէութեան (պղծա-
գործ աղանդաւոր. Ա. Գիրք 341) մէջ բռնուած հոգևորա-
կաններին և աշխարհականներին. առաջիններին ենթարկում
է կանոնը կարգալուծութեան, ճակատներին դնում աղուե-
ադրոշմ և ուղարկում անապատ ճգնելու, «ջիլերը» կտրել է
հրամայում երկրորդ անգամ նոյն յանցանքը կատարելուն
համար և ուրկանոց ուղարկում։ Պահանջում է որ քահա-
նան իսկոյն իմաց տայ եպիսկոպոսին իւր ծխի մէջ գտնուած
աշխարհական մծղնեայի մասին, սպառնալով չիմացնելու
դէպքում կարգալոյծ անել և մծղնէից պատժին ենթարկել։
«Իսկ եթէ կհաստատուի, որ երէցը յայտնել է եպիսկոպոսին
և վկայութեամբ ցոյց տուել մծղնեայ եղողներին, և եպիս-
կոպոսը կաշառ առնելով, կամ աչառութիւն անելով, այդ
բանը ծածկել է, աթոռից ընկնի . . . ։ Իսկ եթէ եպիսկո-
պոսը ուշադրութիւն դարձնելով բողոքին, կամեցաւ յանցա-
ւորին պատժել, բայց չարագործը յայտնելով մարմնաւոր իշ-
խանութեան, գաւառի իշխանին, նախարարին կամ գիւղի
գլխաւորին նրանց օգնութեան դիմելով կամեցաւ պատաս-
խանատուութիւնից ազատուել, իսկ սրանք պաշտպան կանգ-
նելով եթէ կ կամենան շնացողներին ծածկել կաշառառու-
թեամբ կամ ակնառութեամբ, թող նզովեալ լինին, եկեղեցի
չմտնեն, մինչև որ պղծագործին չտան եպիսկոպոսի ձեռքը»։

Իսկ եթէ նախարարի տունը մծղնեայ լինի, «Նախարարը չհեռանայ այդ յանցանքը գործելուց, կամ եպիսկոպոսին չտայ ընտանիքը պատժելու, ինքնապաստան լինի, թող տնով, որդիներով նզովեալ լինի, հրապարակ դուրս չգայ, ոչ ոք նրա հետ յարաբերութիւն չունենայ, մինչև որ ուղղութեան չգայ»։ «Իսկ եթէ ինքը պղծութիւնից հեռու կլինի, թող ընտանիքը և ժառանգներին տայ գլխաւոր եպիսկոպոսին կշտամբելու»։ Եթէ թագաւորական ցեղի մարդիկ լինին մծղնեայ, նրանց «հրապարակ բերեն գլխաւոր եպիսկոպոսի, մեծամեծ իշխանների և աւագ դատաւորների առաջ» և կշտամբեն։ Վերոյիշեալ կանոններից երևում է որ ա) բոլոր եկեղեցականները եպիսկոպոսից մինչև դպիր թէ զուտ հոգևոր թէ քրէական գոյն ունեցող յանցանքների համար ենթարկւում են եկեղեցական դատի, քննութեան և պատժի, տուգանքի, մինչև իսկ մարմնական պատուհասի։ բ) Որ իւրաքանչիւր թեմի մէջ գտնուած հոգևորականները նոյն պատժի սահմաններում ենթարկւում են թեմի եպիսկոպոսի իրաւասութեան մինչև իսկ աղուեսադրոշմ կրելու ճակատին և «ջիլերի» կտրուելուն ենթարկուելու և անապատ քշուելու ճգնութեան համար։ գ) Որ բոլոր թեմերի եպիսկոպոսները ենթարկւում են գլխաւոր—եպիսկոպոսի այն է կաթուղիկոսի իրաւասութեան՝ նրա դատին և պատժին, կարգալոյծ լինելուն։ դ) Աշխարհականները ենթարկւում են թեմի շրջանում իրանց եպիսկոպոսի դատին ամուսնալուծական խնդիրներում, թէ մարդ թէ կին, տուգանքի և ծեծի ու ապաշխարանքի, առևանկութեան դէպքում, կախարդութեան, հարցուկների մօտ երթևեկելու, հաւատուրացութեան, մեռելների վրայ լաց ու կոծ անելու, չհասական պսակների, մծղնէական աղանդաւորների հետ միանալու բոլոր դէպքերում։ ե) Թեմական եպիսկոպոսը այդ դատերը վարելիս օգտւում է քահանաների, գիւղապետների, դատաւորների աջակցութիւնից և օժանդակութիւնից, նաև պատիժների գործադրման մէջ։ զ) Կաթուղիկոսն «մեծամեծ իշխանների և աւագ դատաւորների» հետ միասին դատում

են, կշտամբում նախարարներին և թագաւորազն անձանց մծղնէութեան մէջ գտնուելուն համար։ է) Մարմնաւոր իշխանութեան կողմից եղել են նշանակուած դատաւորներ, ժողովրդապետներ, օրէնսդիրներ և աւագ դատաւորներ» քննելու աշխարհականների քրէական և քաղաքացիական գանգատները, որոնք և օգնում էին հոգևոր իշխանութեան կողմից նշանակուած պատիժները գործադրելու։ ը) Հոգևոր դատարանները անզօր են գտնւում իրանց պատիժները գործադրելու մէջ աշխարհական անձանց վերաբերմամբ, երբ վերջիններին պաշտպան են հանդիսանում գիւղի իշխանն, գաւառի տէրը և նախարարը, սրանց ենթարկւում են «գնովքի» և «բանադրանքի»։ թ) Մեծամեծներին եկեղեցական պատժի ենթարկելու և նրանց չհնազանդուելու դէպքում, դատաւորները չեն դիմում թագաւորի աջակցութեան և հրամանին (այս կանոնների կազմութեան ժամանակ հայոց թագաւորութիւնը վերջացել էր)։ ժ) 16-րդ կանոնից երևում է, թէ և մութ և աղօտ կերպով, որ գիւղերում, գաւառներում, թեմերում, առաջնորդների, քահանաների, «ժողովրդապետների» և «օրէնսդիրների» նշանակելը լինում էր հոգևորականների և աշխարհականների ընտրութեամբ. կանոնս պատւիրում է որ եպիսկոպոսը և քահանան, ազնուականները և շինականները (հարկատուները) վերոյիշեալ պաշտօնական անձանց ընտրութիւնը կատարելիս, աչքի առաջ ունենան ընտրուածի սրբասրտութիւնը, մաքրութիւնը, արդար լինելը, օրէնքների իմանալը և չընտրեն անպատրաստ մարդկանց կաշառից կուրացած։ Ժողովրդապետ՝ պիտի հասկանալ գիւղապետ և գիւղի «աղսախկալներ», ծերունիներ, որոնք խորհրդով կառավարում էին գիւղական գործեր, օրէնսդիր ասելով պիտի հասկանալ դատաւորներ, որոնք ոչ միայն դատէին և վճռէին գործերը, այլ և հարկը պահանջած ժամանակ օրէնքի հիման վրայ կարգադրութիւններ և կանոններ սահմանէին։ Այս մութ խօսքերի հիման վրայ դատողութիւններ տալ, թէ այս խնդրում հոգևորականները ինչ չափով էին մասնակցում դատական գործերում և աշ-

խարհականները ինչ, աւելորդ է և երկարաբանութիւն, քանի որ աղօտութիւնից պարզութիւն չի բղխիլ։ Սսի 1243-ի ժողովի կանոններում կարդում ենք. 11 կանոն «երկու անգամ եպիսկոպոսը տարուայ մէջ շրջի իւր թեմը և աչքի անցնի իւր հօտը, և գիտուն ու սրբակրօն քորեպիսկոպոս նշանակի, որ եկեղեցական դատերը վարել կարողանայ կանոնների համաձայն երկիւղածութեամբ և առանց ագահութեան»։ 14 կանոնն ասում է. «եպիսկոպոսներն ու քորեպիսկոպոսները աւելի ջանք անեն պոռնիկներին և շնացողներին, հմաներին և բոլոր յանցաւորներին Գեհենի երկիւղով (դժոխքի) ուղղութիւն բերելու։ Որոնց վրայ այս երկիւղը չի ազդիլ, մարմնաւոր և հոգևոր պատիժներով խրատել նրանց և տուգանքի ենթարկել, մանաւանդ այնպիսիներին, որոնք մարդու և կնոջ մէջ են ընկնում և նրանց գժբախտացնում, կամ մարդիկ, որոնք «բոզ» կնիկ են բերում, կամ օրինաւոր կնոջ թողնում են և «բոզերի» մօտ գնում, կամ առանց պոռնկութեան պատճառի ատելութեան համար թողնում են իրանց կանանց, այնպիսիներին անողորմ տուգանքներով պիտի խրատեն, եթէ պատուաւոր մարդ է, ընդդիմանում է եկեղեցական օրինաց, թագաւորը այդպիսի մարդուն թող խրատի ատենի մէջ, իշխաններն էլ մեղադրեն, եթէ էլի չանեն նզովեալ լինին . . .»։ 15-րդ կանոնում յիշում է, որ Հեթում Կիլիկիոյ թագաւորի և հօր ժամանակ, իշխանների առաջ բանադրուեցին նրանք, որոնք պասերը չեն պահիլ, եկեղեցու կարգերը չեն կատարիլ, աւագներ նշանակուեցին հսկելու համար որ չհայհոյեն «հաւատը, ստեղծողին, կնունքը, հրեշտակին, քահանային . . .» և յիշոց տուողին բռնեն լեզուն կտրեն կամ ծակեն, լար քաշեն միջովը, նախատանքներով մի օր շրջեցնեն, գոյքի համեմատ տուգանք առնեն և աղքատներին բաժանեն»։ Մինչև անգամ քահանային նոյն յանցանքների համար նոյն մարմնական պատիժն է ենթարկում։ Վերոյիշեալ կանոններից հետևեցնում է, որ ա) եպիսկոպոսը նշանակում է հոգևոր դատաւոր գաւառակների վերայ քորեպիսկոպոսներին,

*որոնք այժմեայ կարգով գործակալ քահանաների տեղն են բռնում. պահանջում է որ քորեպիսկոպոսը (սրանց մասին տես Ս. Գիրք 153, 187, 200, 212, 426, 427, 435, 455, 457, 518 երեսներում) լինի գիտուն այսինքն օրէնսգէտ և սրբակրօն: բ) որ քորեպիսկոպոսի դատին ենթարկւում են հոգևորական և աշխարհական անձինք գլխաւորապէս եկեղեցական յանցանքների համար. գ) հոգևոր դատաւորին իրաւունք է դրւում տուգանել, մինչև իսկ ծեծել, եթէ ազնուական մարդ լինի, որին հնար չլինի ոչ տուգանելու և ոչ ծեծելու, այն դէպքում դատաւորը պիտի դիմի Կիլիկիոյ հայոց թագաւորին և պատիժ խնդրի. եթէ այս ձևն էլ արգիւնք չունենայ, դատաւորը պիտի յանցաւորի գլխին «նզովք» կարդայ: դ) 15-րդ կանոնն իրաւունք է տալիս դատաւոր ընտրել աշխարհական աւագներից մէկին, իրաւունք տալով հաւատի, և նման հայհոյութիւններ տուողներին խիստ մարմնական պատիժների ենթարկելու, լեզուն կտրելուն, նախատինքներով փողոցները շրջեցնելու մի ամբողջ օր և տուգանելու: Պէտք է ի նկատի ունենալ որ եթէ այսպիսի դատաւորներ հնար կլինէր նշանակել ամենալայն իրաւունքներով յուսալով թագաւորի օգնութեան վրայ, այդ միմեայն Կիլիկիայում, ուր կանոնները սահմանուեցին և ոչ Կիլիկիայից դուրս Հայաստանի զանազան կողմերում, ուր պարսկական հրոսակների բռնի ոյժն ու վայրենի կամքն էր օրէնք և կանոն: Տնօրհալու կանոններում կարդում ենք (Ս. Գ. 579 երեսում), «քահանան և ժողովուրդը եկեղեցական գործերի համար մարմնաւոր իշխանի մօտ չգնան դանգատուելու և դատաստան խնդրելու, այլապէս առաքելական կանոնական հրամանի համեմատ կարգալոյծ լինի»: Տնօրհալու 34 կանոնը խպառ արգելում է քահանային «աշխարհի կառավարութեան մէջ խառնուելու, և քաղաքի կամ գիւղի հոգաբարձու, կամ գաւառապետ, կամ հարկերի և սակերի գրող, կամ որ և է աշխարհային գործակալութիւն անող լինի»: Տնօրհալու կանոններով եկեղեցական խնդիրների դատերը վերաբերւում են միմեայն հոգևորական դատարա-*

նին, և ընդհակառակն հոգևոր դատաւորն իրաւունք չունի քրէական և քաղաքացիական խնդիրների քննութեան մէջ մտնելու: — Բացի սրանից, մենք չունենք ժողովների կանոններ, որոնք խօսէին դատակազմութեան և դատավարութեան վրայ: Ունինք մի քանի մատենագրական տեղեկութիւններ կաթուղիկոսների և եպիսկոպոսների վրայ եղած դատավարութեան մասին: Բիւզանդ պատմում է որ Յուսիկ կաթուղիկոսն Տիրանի վարած վատ վարքի համար, նախատում էր և արգելում եկեղեցի մտնելու: «Իբրեւ Տիրան թագաւորը մտնելու եկեղեցի ուրիշ աւագանիներով: Իսկ նա հակառակ խօսելով ասում էր, չես արժանի, ինչու ես գալիս, ներս մի մտնիր: Այդ պատճառով ներս քաշեցին նրան (կաթուղիկոսին) եկեղեցի խիստ ծեծեցին . . . մինչև կիսամեռ ընկաւ գետին» 28 երես: Իսկ Վրդանէս կաթուղիկոսն յանդիմանում էր Թագուհուն պոռնկութեան համար. «յանդիմանէր զնա (Թագուհուն) սուրբն վասն գաղտնի շնութեան կծծութեան բարոյից պոռնկութեան» Բիւզ. 7: Նոյն ձևով վարւում էր Ներսէս մեծ պապի և Արշակի հետ հակաեկեղեցական արարքների համար: «Իսկ սուրբ Ներսէսը՝ հայոց եպիսկոպոսապետը մշտապէս ընդդիմանալով Պապ թագաւորին, կշտամբում էր և յանդիմանում էր մեծ վկայութեամբ, և նա բազմաթիւ չարութիւնների պատճառով չէր համարձակում եկեղեցու շէմքը կոխել և ներս մտնել . . . Գնում էր նրա առաջ Ս. Գրքից վկայաբանութիւններ, յաւիտենական դատաստանի պատիժներով ահ ձգելով նրա վրայ, հրաւիրում էր զգաստանալ և լաւանալ». 180 երես: Թագաւորը կամենում էր կաթուղիկոսին սպանել, բայց քաշւում էր: Ներսէս մեծ ունէր 12 եպիսկոպոս «աթոռակից, գործակից և խորհրդակից», որոնք «կառավարում էին աղքատանոցները» և բարեգործական այլ հաստատութիւնները, ուրկանոցներ, օտարանոցներ, հիւանդանոցներ: Պարսից թագաւորը տալիս է Զմուէլ ոչ ազգընտիր կաթուղիկոսին իրաւունք «մարզպանին ընկեր լինել, հսկել հարկերի, բաշխերի վրայ, դատաստաններին գլուխ քաշել, և ուրիշ աշխարհա-

*կան կարգերի վրայ նայել» Խոր. Գ. կե։ Ուրիշ եպիսկոպոսներ էլ աշխարհի իշխանի հետ միացած դիմում էին Պարսից թագաւորին այլ եպիսկոպոսների թեմեր և կալուածքներ խլելու։*

*Վահան Մամիկոնեանը Ղազար Փարպեցուն նշանակում է Էջմիածնի վանահայր, իբրև իր շինած և նորոգած վանքի. վանականները Ղազարի հետ ընկնում են, մեղադրում են նրան «որ աղանդաւորէ», ասում է «պոռնկութիւնը մեղք չէ», «պիղծ և չարագործ մարդ է»։ Զնայելով Վահանի մեծ պաշտպանութեան վրայ, վերջը հալածւում է և վանքից հեռացնւում։ Ղազար դիմում է կաթուղիկոսին խնդրելով դատ անել և քննելով խնդիրը կամ արդարացնել կամ մեղադրել. բայց նա վախենում է հակառակորդների շատութիւնից և ուժից և պատասխանում է «չեմ համարձակւում երկիւղից նաև տեսնել քեզ, բայց դու դեռ ասում ես, թէ գամ բժշկեմ և կամ թաղէ»։ Ղազար ասում է կաթուղիկոսի հասցէին, «Ո՞ւր է արդար ուսուցչի հսկողութիւնը, ո՛ւր է արդար հայրապետի Քրիստոսին նմանելը։ . . . . . Իսկ դա վէրքերից թուլացած մարդու երեսին և ջուր անգամ ցանել չհամարձակեցաւ մարդկանցից վախենալով . . . . Իսկ դա նրա հակառակն է աղաղակում (Քրիստոսի), ո՛ւր ես գալիս, չեմ ուզում, համարձակութիւն չունիմ քեզ տեսնել»։ «Արդեօ՞ք, մէկ կամ երկու անգամ տարա՛ւ ինձ իւր սենեակը, և խօսեցա՛ւ ինձ հետ, ինչպէս Փրկիչը հրամայում է, ես ու ինքը առանձին, կամ մէկ և կամ երկու ընկերով, որ չհաւնելով, և իբրև մեղաւոր և մաքսաւոր համարելով ինձ հալածէր . . , »։ Մի անգամ մի պարեգօտաւորների առաջ ասել է «իրաւացի չեղաւ Ղազարի մեր աշխարհից հեռանալը, պատճառ նա եկեղեցու զարդ էր» (տես Ղազարի թուղթը)։*

*«Թող թէ մեծ մեծ պաշտօնների հասցնել, ինչպէս եպիսկոպոսութեան, կամ նոցա մէջ առաջին պաշտօնի և կամ եկեղեցու դատաւորութեան, այլ քորեպիսկոպոս էլ չարաւ ինձ, որ պարսիկները և անարժան մարդիկ այսօր էլ անում են» (նոյն տեղը)։*

Ս. Սահակ կաթուղիկոսին լուր հասաւ որ զանազան աղանդաւորներ եկել են Հայաստան և մարդկանց մտքեր են մոլորեցնում, նա հրամայեց Ս. Մեսրոպին քննել հեզութեամբ ու խրատով ճանապարհ բերել, եթէ ոչ տանջանքներով և չարչարանքներով հալածել. «հրամայում է քննել ժանտագործ բորբորիտոններին (Կորիւն 18 երես, ևս բորբորիտոսներին) և եթէ հեզութեամբ և սաստով ուղղութեան չգան, չարչարանքներով հալածել. զի թշնամանանք ի թշնամանաց վրէժ առնուցու, և խայտառակեսցի իրաւացի մահուամբ անիրաւ մահ հոգւոց»: Մեսրոպ ճշտութեամբ կատարում է պատուէրը. «ապա նրանից յետոյ սկսում էր «գժպատեհ և կամակոր բարբարիանոս աղանդն» քննել. և երբ որ հնար չէր գտնում ուղղութիւն բերելու, առնելով գործի էր դնում թշուառացնող գաւազանը, ծանրագոյն պատուհասներով մատնում էր տանջանքների, բանտի, գիլարանի . . . . մինչև որ փախան կորան աշխարհից (Կորիւն 18 և Խոր. Գ. ծէ): Սեբէոս պատմում է Քրիստափոր կաթուղիկոսին (628-630 թ.) դատի ենթարկելու և դատելու դէպքը: «Նա դէմքով հպարտ և անբարտաւան մարդ էր, լեզուն սուր սուսերի նման: Սա շատ խռովութիւնների տեղիք տուաւ և կռիւ ձգեց իւր չարախօսութեամբ Ասպետի և իւր եղբօր մէջ: Երրորդ տարին բամբասանքներ բարդեցին նրայ վրայ (կաթուղիկոսի): Եւ ժողովուելով բոլոր եպիսկոպոսներն և իշխանները քննութիւն արին: Նրա ընտանիքից երկու մարդ եկան և նրա տեղ վկայութիւն տուին բոլոր բազմութեան առաջ: Եւ առին նրանից հայրապետական պատուի փակեղն և կարգից ձգեցին և անարգանքով հալածեցին նրան: Եւ իսկոյն Եզրին կաթուղիկոս նստացրին»: (Սեբէոս 98 երես):

Երբ Եզր կաթուղիկոսը (630—641 թ.) դաւանութիւնը փոխեց, Յովհան Մայրավանեցին համարձակութիւն ունեցաւ նախատելու բոլորի դիմաց կաթուղիկոսին, ասելով «քանդեցիր պապերի հաւատքի սահմանը, խրամատեցիր առաքելական ցանկը, կործանուելով Լևոնի մարդատաւան տօ-

մարով»: Դաւանափոխ կաթուղիկոսը խիստ բարկանում է և հրամայում է. «մուրցացի (բռունցքներով) տանջել նրա պարանոցը և կզակը»:

Յովհաննէս Ովայեցի կաթուղիկոսի (834—855 թ.) դէմ բողոքողներ են դուրս գալիս հէնց կաթուղիկոսարանի տնից աշխարհի իշխան Բագրատ Բագրատունուն, որը լսելով և հաւատալով մեղադրանքներին հրովարտակներ է գրում բոլոր աշխարհին մերժել կաթուղիկոսին և նորը ընտրել: Այս իմանալով Սմբատ սպարապետը և Սիւնեաց Գրիգոր իշխանըն, վրդովւում են Բագրատունու արածի վրայ, «համագունդ միասին ժողովուելով, եպիսկոպոսական ժողով գումարելով և ստուգապէս իմանալով որ նանիր իժաթոյն չար հայհոյիչների շրթունքների ստութեան արդիւնք են, էլի հաստատում են . . .» իւր աթոռին, իսկ երեք վկաները, որոնք դուրս էին եկել կաթուղիկոսի դէմ իբրև մեղադրողներ, մեռնում են: Պատմաբան Յովհաննէս կաթուղիկոսը 82 երեսում տալիս է դատավարական ձևի մի փառաւոր պատկեր Գէորգ կաթուղիկոսին (877—898 թ.) գատի ենթարկելու պատրաստութիւններից առաջ: Աբաս, իւր եղբօրորդու Սմբատին թագաւոր օծուելու պատճառ համարելով Գէորգ կաթուղիկոսին, կամեցաւ վրէժ հանել. այդ մտքով զանազան սուտ վկաներ գտնել տուաւ, պատրաստութիւններ սկսեց տեսնել ժողով գումարել տալու և կաթուղիկոսին մեղաւոր ճանաչել տալուց յետոյ գահընկէց անել. նա ՚ի միջի այլոց գրեց նաև Սևանում այդող ժամանակի յայտնի գրագէտ Մաշտոցին որ գայ ժողով և ամբաստանի կաթուղիկոսի դէմ, խոստանալով կաթուղիկոսութիւնը յանձնել նրան: Մաշտոցը գրում է պատասխան Աբասին ցոյց տալով որ հեշտ բան չէ կաթուղիկոսին զրպարտելը, «ժողով թէ հրամայում էք լինի, թող լինի, բայց չլինի չար պաշտօղողների քինահան հրոսողների ժողով, որոնք ինչպէս որ այն ժամանակ ժողովուեցին Աննայի հետ . . .». պէտք է Նիկիայի հարց նման պասերով և աղօթքներով անցնեն և սուրբ աւետարանն միջնորդ դնելով, ճշմարիտը խօսեն և ոչ

ըստ քմահաճոյից։ Յիշեցէք Ս. Ստեփաննոսի և Յակոբ Տեառնեղբօր դէմ դուրս եկած վկաներին և մի՛ խաբուէք, զորովհետև մարդիկ ապագայի զգուշութիւնից լաւ գիտեն անօրէն վկաների չարութիւնները գրի անցնել։ «Աւելացնում եմ, որ գարշելի անձնամատը վկայ չէ, և չի էլ կարող կանգնել ուղիղ ատեանի առաջ, այլ բաց է 'ի բաց կհալածուի։ Որովհետև պիղծ դէմքը պոռնիկ կնոջ դէմք շինելով և այր մարդկանց շարքից ելնելով և խոստովանուելով քահանայի մօտ, վկայ լինել չէ կարող սինհոդոսական կարգի համաձայն, մինչև որ սուրբ կանոնների հրամայած ապաշխարանքը չվերջացնի և իւր զղջման մասին եկեղեցու առաջնորդներից վկայութիւն չբերի»։ Նոյնպէս էլ եպիսկոպոսներն պիտի ընտրուած և արդար լինին, օմանք հեռու տեղերից պիտի գան, որոնց վրայ ատելութեան կարծիք չլինի. Նոյնպէս և սուրբ և աւագ հայրերը թող քննեն և հաւաստիանան . . . ապա ս. սեղանն և աթոռը սևով պատեն, որ սուգի նշան է, որ Քրիստոսի փոխանորդ՝ փեսան ընկնում է . . . »։ Ահա արդարապէս քննելու ձևը, իսկ եթէ դուք կամենում էք մի ուրիշին կաթուղիկոս ընտրել, այդ կարող էք անել ո՛չ օրինաւոր կարգով, «այլ բռնի ուժով և կամ կամակոր մտքով Աստուծոյ հետ կռուելով»։ Բայց դուք իմ խօսքը լսեցէք, և արէք այն ինչ որ արդար է և հաճելի Աստուծոյ։ Մաշտոցի այս թուղթը խիստ ազդեց Աբաս իշխանի վրայ, որը գնաց կաթուղիկոսի մօտ ներողութիւն խնդրեց։ Ապա եղել են մի քանի ևս դատական ժողովներ մի քանի կաթուղիկոսների գործերը քննելու, դժբաղդաբար դատավարութեան մասին ոչինչ չկայ այդ նիւտերի պատմութեան մէջ, ընդհանուր խօսքերով նկարագրում են պատմագիրները և անցնում, թէ մեղադրեցին այս ինչ անձին, վկաներով հաստատեցին և պատժեցին։ Այդպէս եղև 968-ին կաթուղիկոսացած Վահան Սիւնեցու օրով, որին մեղադրում էին քաղկեդոնականութեան մէջ. Աշոտի հրամանով Անիում ժողով արին, քննեցին խնդիրը, մեղադրութիւնը հաստատեցին և գահընկեց արին (Ա. Գ. 438—439 երես)։

1036-ին եղև մեծ փառաւոր դատական ժողով 4000 հոգուց բաղկացած, հոգևորական և աշխարհականներից, ուր քննեցին Դէոսկորոս կաթուղիկոսի ապօրինի գործերը, վերկայութեամբ հաստատեցին մեղադրութիւնները, գահընկեց արին և բանադրեցին նրանից ձեռնադրուածներին։ (տես Ա. Գիրք 441—443)։ Ստ. Օրբելեանը 319 երեսում յիշում է և Կոստանդին պրօնագործ կաթուղիկոսին (1286—1289 թ.) դատի ենթարկելու խնդիրը. որից երևում է որ Հեթում թագաւորը քէն ունենալով կաթուղիկոսի դէմ, հոգևոր և աշխարհական անձանց իւր կողմն է քաշում, վկաներ պատրաստել տալիս և ժողով գումարում, ուր 30 մեղադրական կէտերով վկաների ցուցմունքներով հաստատում են նրա յանցանքները և ստիպում գահընկէց լինելու։ Մեղադրական կէտերի մէջ կան այսպիսի մեղքեր, որ պատարագ անելուց առաջ շարբաթ է խմում, երկրորդ՝ որ Հռոմկլայի լկտանոցներից հարկ է առնում։ Այս մեղադրական կէտերի դէմ խիստ յարձակւում է Ստեփաննոս Օրբելեանը, համարելով առաջինը հիւանդութեան պատճառով արած, երկրորդն էլ բոլորովին օրինաւոր ըստ եկեղեցական կանոնաց, որ անառակներից հարկ էր առնւում իբրև տուգանք և յանձնւում աղքատանոցներին։ 1002-ին Սարգիս կաթուղիկոսը ժողով արաւ, դատի ենթարկեց Թոնդրակեցի աղանդաւորներին, մեղադրութիւնը հաստատեց և նրանց գլխաւոր Յովհաննէս եպիսկոպոսին կորգալոյծ արաւ, աղուէսագրոշմ դրեց ճակատին, բանտարկեց և նզովեց։

Ստեփաննոս Օրբելեանը 260 երեսում յիշում է և մի դատ, որ տեղի է ունեցել 1216-ին Սիւնեաց եպիսկոպոսների և Լիպարիտ ու Եղիկում իշխանների մէջ «Սուրբ խաչի» ում պատկանելու մասին, որը բերդը գրաւելուս առացել էր Իւանէ աթաբէկը։ Երկու կողմը դիմում են Իւանէ աթաբէկին որ նստում էր Դուինն և կառավարիչ էր երկրին Վրաց թագաւորից նշանակուած։ Աթաբէկը «հրամայում է իւր մեծամեծներին (Վրաց աշխաններին), Տփխիսու Անու և Դուինի ղատիներին և Սուրմարիի երևելի շեխին, որոց հետ

Անու մեծ եպիսկոպոսին և Բջնոյ ու Հաղբատի եպիսկոպոսներին», որոնք քննեցին և վճռեցին, ս. խաչը պատկանում է նրան, ով որ գերութիւնից թափել է, որովհետև կուռի իրաւունքով ձեռք բերած սեպհականութիւն է, գերի ընկածը մեռածի հաշիւ է։ Դատաստանի վճիռը Իվանէ հաճութեամբ լսեց և ս. խաչը իշխանների եկեղեցու սեպհականութիւն համարեց։ Ահա այս են մատենագիրների հաղորդած տեղեկութիւնները հայոց եկեղեցու մէջ պատահած դատավարութեանց վերաբերմամբ։ Հայոց եկեղեցու դատավարական կեանքը կարելի է բաժանել 3 մասի, ա) լուսաւորչի տոհմի կաթուղիկոսութեան ժամանակ, լուսաւորչից մինչև Սահակ. բ) մարզպանութեան ժամանակից մինչև հայոց թագաւորութեան ջնջումը. գ) մահմետական տիրապետութեան միջոց։

ա) Լուսաւորչի տոհմը լինելով բարձր իշխանական ծագումից, հայոց թագաւորական ցեղի հետ բարեկամ, ունենալով հայոց թագաւորների հետ խնամութիւն, և գուցէ անմիջական յաջորդութիւն լինելով հայոց կուսպաշտական քրմապետութեան՝ որ համապատիւ թագաւորի իրաւունք էր վայելում, այդ հիմունքներով այդ տոհմի կաթուղիկոսութիւնը շատ բարձր էր կանգնած յաջորդ դարերի կաթուղիկոսութիւնից։ Նրանք էին ընդհանուր լիազօր կառավարիչներ եկեղեցու, վանքերի, բարեգործական հիմնարկութիւնների, ժողովում էին հարկեր և տուրքեր բոլոր ժողովրդից այդ հիմնարկութիւնների պահպանութեան համար. Նախատում, կշտամբում և անխնայ հալածում էին ամեն տեսակ եկեղեցական կանոնների հակառակ գնացող անձանց, լինէին նրանք շինական, թէ ազնուական, նախարար թէ թագաւոր, առանց վախենալու ոչ մահից ոչ բանտից։ Բանադրում և նզովում էին թագաւորին, արգելում էին եկեղեցի մտնել, եկեղեցում աղօթք անել. թագաւորը երկիւղից չէր համարձակւում դատել, բանտարկել կամ սպանել, դիմում էր գաղտագողի թոյնի օգնութեան։ Դրանք իրանց բարձր տոհմական դիրքով էլ ու դուրս էին արքունիք և իւրաքանչիւր

բայց յանդիմանական-խրատական զրուցով յիշեցնում նրանց քրիստոնէական պարտիքը։ Գոռոզ Արշակ, որ ոչ մի սրբութիւն ճանաչելու դրամադրութիւն չէր ցոյց տալիս, Ներսէս մեծի յանդիմանութիւններից յաղթահարուած, խնդրում էր ներել մեղքերը. «իսկ թագաւորը նեղն ընկած մեծ աղաչանքով և շատ աղօթքներով աղաչում էր հաշտուել իրան հետ և ուխտ դրաւ, որ այլևս երբէք նրա խօսքից դուրս չի գալ»—Բիւզ. 96 երես։ «Հրաման տանք, ասում է Ներսէս Արշակ թագաւորին, բոլոր աշխարհին քեզ հետ միասին քո գործած մեղքերի համար աղօթքի և խնդրուածքի կանգնել, մենք էլ քեզ հետ մտնենք ապաշխարանքի տակ»։ Թագաւորը թունաւորում է կաթուղիկոսին, վերջինս նախատական արհամարհական ձևով նկատում է. «իսկ քեզ, ով թագաւոր, արժան էր իբրև թագաւոր մարդ յայտնի հրաման տալ ինձ սպանելու, ով էր, որ կարողանար արգելել քեզ, կամ ով էր, որ կարողանար պահել քո ձեռքը . . . »։ Այսպիսի ձևով վարուեցին Լուսաւորիչ, Արիստակէս, Վրթանէս, Յուսիկ, Ներսէս, Սահակ։ Այդ շրջանում եղել են արտաքոյ օրինաց միջանկեալ տարահաստատ կաթուղիկոսներ, որքան անզօր, որքան մեղկ և աննշան այդ հսկաների վերաբերմամբ. մէկի վերաբերմամբ Փաւստոս ժողովրդի բերանով ասում է. «Ներսէսի փոխանակ կաթուղիկոս դրին ոմն Չունակ, որ ստրուկ էր 'ի ստրկաց արքունի»։ (Բիւզ. 105 երես). Այս շրջանում կաթուղիկոսները իրանց աթոռակից՝ խորհրդակից» եպիսկոպոսներով կազմում էին ամեն ինչ, և դատաւոր, և օրէնսդիր, և կառավարիչ, և խնամակալ, նրանք միշտ շրջում էին ամեն տեղ և իբրև աւետարանի պատուական աշակերտներ ամեն տեսակ վէճ, դատ կտրում իրանց ձեռքով. Սահակ 60 աշակերտներով ամբողջ տարին շրջում էր և խրատում, քարոզում ու սովորեցնում։ Բարեգործական հիմնարկութիւնները գտնւում էին որոշ մարդկանց խնամակալութեան հոգաբարութեան և կառավարութեան ձեռքի տակ, որոնք դրանց և պահողն էին և դատողը և կերակրողը։ Այս շրջանում 3 դատական ատեան-

ներ կային. կաթուղիկոսական՝ իւր խորհրդակից եպիսկոպոսներով և շրջիկ հոգևորականներով. եպիսկոպոսական սահմանուած իւրաքանչիւր թեմի գործերի համար և քորեպիսկոպոսական՝ գաւառակների եկեղեցական կառավարութեան և դատաստանի համար: Վարչական և դատաստանական բոլոր գործերը գտնւում էին այս երեք աստիճանի ատեաններում: Սրանց դատաստանական գործավարութիւնը սահմանափակւում էր պսակների, ամուսնութիւնների, չհասների, ամուսնալուծութիւնների, մեռելների վրայ լաց ու կոծ չանելու խնդիրներում, քրէական և քաղաքացիական գործերը վերաբերում էին քաղաքական իշխանութեան և նրա դատաւորներին, այս մասին քիչ յետոյ: Սահակի սահմանադրութիւններից երևում է որ ամեն տարի 2 անգամ ժողով էր լինում, որ եպիսկոպոսները իբրև հայր և քրիստոսի աշակերտներ պիտի իրանց հօտը լաւ խնամէին, հայրաբար կառավարէին, որ գաւառակների համար նշանակուած քորեպիսկոպոսները լինէին գիտուն և ժիր: Գիւղերի և գաւառակների դատաւորն և կառավարիչն էր քորեպիսկոպոսը (այժմեայ գործակալը). Նրանց տալիս է ահագին իրաւունքներ, նրանք են վարչական և դատաստանական գործերի ղեկավարը. ո՛չ առանձին, ո՛չ բռնական ազդեցութեամբ ղեկավարող, այլ խորհրդակցութեամբ, քննութեամբ, ատեանի մէջ: «Քորեպիսկոպոսները պիտի հսկեն բոլոր եկեղեցիների վրայ, օրինազանց եկեղեցականներին կշտամբեն խրատով, ծեծով և տուգանքներով պատուհասեն ատեանի մէջ, որ միւսները վախենան և խրատուեն». 5-րդ կանոնով իրաւունք է տալիս քորեպիսկոպոսներին զրկելու քահանայագործութիւնից առժամանակ ծոյլ, ժամերգութիւն չիմացող, պատարագը ոչ լրիւ սպասահարկութեամբ կատարող քահանաներին (Ա. Գիրք 518): Այս կանոնների մէջ յիշատակուած թէ եպիսկոպոսական թէ քորեպիսկոպոսական դատի ենթարկւող յանցանքները բոլորը եկեղեցական են: Սրանց համար ասուած վերոյիշեալ խօսքը թէ «Ատեանում» պիտի պատժեն, դատեն քահանաներին, կարելի է հասկանալ երկու կերպ, կամ ժողովրդի, խուռն

*բազմութեան ներկայութեամբ, կամ ուղիղ մտքով, երկու երեք հոգի դատաւորների աջակցութեամբ։*

*բ) Եկեղեցական դատարանի երկրորդ շրջանն ընկնում է Արշակունեաց անկումից մինչև Ռուբինեանց անկումը, երբ կաթողիկոսների սատար էին հայ մարզպաններ, Բագրատունեաց, Արծրունեաց և Ռուբինեան թագաւորները։ Այս շրջանի կաթողիկոսները այն չեն, ինչ որ առաջի շրջանի, այստեղ փախկոտ են, խեղճ, նախարարների և թագաւորների քմահաճոյքին ծառայող, այն վեհութիւնը ինչ որ լուսաւորչի տոհմումն էր, չունէին. և պարզ է թէ ինչու. առաջինները նստում վեր էին կենում թագաւորների հետ և էին խրոխտ և յանդիմանող, սրանք ծագմամբ ամենախեղճ կացութիւնից բարձրացած բարձր աստիճանի այս ու այն նախարարի՝ թագաւորի միջոցով, էին համեստ, հաշտեցնող բնաւորութեամբ. առաջինները որքան բարձր շըրջանից էին, նոյնքան համեստ և ժողովրդին մօտիկ, նրա կարիքներին դարման տանող. երկրորդները՝ հազիւ հազ իրանց գլուխները պահող։ Ահա այս դրութիւնից էլ կախուած էր և դատական իշխանութեան ամրութիւնը, ոյժը և զօրութիւնը։ Կաթողիկոսը «պարեգօտաւորների» (աբեղաների) և իշխանների ահից վախենում էր ոչ միայն Ղազար Փարպեցու դատը կտրել, այլ մինչև իսկ նրա երեսը տեսնել, թէ և Վահան Մամիկոնեանն էր Ղազարի պաշտպան իւր եղբայրներով և իրա կաթողիկոսի կարծիքով Ղազարն «եկեղեցու զարդ էր» (տես Ղազարի թուղթը)։ Ռուբինեանց և Բագրատունեաց ժամանակ այս ու այն իշխանի քմահաճոյքից էր կախուած մեղադրանքներ բարդել, սուտ վկաներ ժողովել կաթողիկոսի դէմ նրան գահընկէց անելու համար. Կոստանդին կաթողիկոսին հեռացնում է թագաւորի կազմած ժողովը սուտ մեղադրանքներով, դրա արդար դատը պաշտպանում է Սիւնեաց եպիսկոպոսը հեռու արևելքից։ Այսպիսի դրութեան ժամանակ սպասել բարեկարգ դատարանների և նրանց արդար վճռի եկեղեցական գործերի վերաբերմամբ, շատ մեծ բարետեսութիւն է։ Այս շրջանում*

էլ երեք աստիճանով եկեղեցական դատավարութիւնը տիրապետող էր. ա) ամբողջ աշխարհի համար բարձրագոյն և վերջին դատարան. բ) թեմական — թեմի համար և գ) քորեպիսկոպոսական—գաւառի և համայնքների համար։ Բարձրագոյն ատեանը կազմում էր համազգային եկեղեցական ժողովը կաթուղիկոսի կամ նրա բացակայութեան միջոցին աւագագոյն եպիսկոպոսի նախագահութեամբ, մասնակցութեամբ աշխարհականների և հոգևորականների, եպիսկոպոսների և նախարարների, ներկայութեամբ նոյն իսկ թագաւորի, բաղկացած փոքրաթիւ անդամներից մինչև իսկ 4000 (տես Ս. Գ. 442 երես) հոգուց։ Այս ժողովն է միակ օրէնսդիրը, միակ և վերջին դատաւորի իրաւունք ունեցողը, որի վճիռը վերջնական է, առանց բողոքի և վճռաջինջ իրաւունքի։ Այս ժողովի վճիռն է պարտաւորական և անդառնալի։ Այս ժողովի վճիռով նզովւում են դպրից սկսած մինչև կաթուղիկոսներ, շինականից սկսած մինչև թագաւորներ։ Այս ժողովն է միմիայն կաթուղիկոս ընտրող և գահընկէց անող (տես Ս. Գիրք 437, 438, 439, 441, 444 երեսներ)։ Դատավարութիւնը և դատակազմութիւնը այս ժողովներում յար և նման է տիեզերական ժողովներին, ղեկավարւում էին ժողովականները նոյն սկզբունքներով։ Ժողովն ունէր նախագահ, անդամներ, մեղադրող կողմ, մեղադրեալ, վկաներ։ Մեղադրական կէտեր կազմում էին եպիսկոպոսներ կամ իշխաններ, միմեանց հետ առաջուց հաղորդակցութեան մէջ մտնելով, վկաներ պատրաստելով. երբ մեղադրական գիրը համարւում էր պատրաստ, դիմւում էր աւագ իշխանին և թագաւորին, եթէ մեղադրուողը կաթուղիկոսը չէր, գանգատաւորները դիմում էին կաթուղիկոսին, սրանք, այսինքն կաթուղիկոսը, կամ թագաւորը, երկուսի չեղած ժամանակ մեծ իշխանն կամ աւագագոյն եպիսկոպոսը ժողովի օր էր նշանակում, հրաւիրագրեր ուղարկում և ծանուցումն անում թէ մեղադրեալին և թէ վկաներին ու մեղադրողներին։ Դատը սկսւում էր սովորական մեղադրական գիրը կարդալուց յետոյ, վկաների ցուցմունքը լսելուց և մեղա-

դրեալի արդարացուցիչ խօսքերը լսելուց յետոյ։ Վճիռը կայացնում էր, կարդացւում, գործադրւում և հրատարակւում 'ի լուր ամենեցուն։ Սեանի Մաշտոց վարդապետը Աբաս իշխանին գրած թղթում յիշեցնում էր, որ վկաները կանոնական օրէնքի հիման վրայ պիտի լինեն երկու երեքից ոչ պակաս, յարգելի մարդիկ, պատժի տակ եթէ ընկած են, պիտի ապաշխարանք քաշած բոլորովին արդարացած լինին, որ դատաւորները՛ հեռու տեղերի եպիսկոպոսներ պիտի լինին, որ ատելութեան հիմք չունենան մեղադրեալի հետ և խնդիրը վճռեն արդարութեամբ և անաչառութեամբ։ Թէ և ոչինչ չկայ արձանագրութիւններ կազմելու վերաբերութեամբ այդ ժողովներում, բայց ենթադրելի է որ անշուշտ կազմելիս լինէին արձանագրութիւններ, այլապէս մեղադրական գրի 30 կէտերի առանձին առանձին քննութիւնները, վկաների ցուցմունքները և կողմերի ասածները ինչպէս պիտի մտքներում պահէին, որ վերջում գործը անաչառ վճռահատութեան ենթարկէին։

Բ—րդ աստիճանի դատարանն՝ եպիսկոպոսականն էր, թեմի գործերի համար, ատենական էր, թէ անձնական, անորոշ է, չկայ բայց որոշ ցուցմունք, բայց 'ի նկատի առնելով այն, որ մի անհատ դժուարութեամբ կարող էր գործերը վարել ամբողջ թեմում առանց օգնականի, դատաւորի, առանց արձանագրութեան, քանի որ կողմերը կարող էին դիմել կաթուղիկոսին, պիտի անշուշտ ենթադրել որ ատենական էր, և ո՛չ անձնական՝ անհատական։ Փարպեցին գանգատւում է կաթուղիկոսից, թէ «եկեղեցու դատաւորութեան» էլ արժանի չարաւ իրան։

Գ—րդ աստիճանի դատարանն էր քորեպիսկոպոսական, որ դատում էր գաւառակի շրջանում, գիւղերում։ Այս շրջանում սրանց դրւում է նոյն պատժողական իրաւունքները՝ ինչ որ առաջինում կար, Սահակի կանոններով, տուգանել, ծեծել, պատժել խօսքով՝ նախատելով, ապաշխարանքի ենթարկելով։ ԺԳ—րդ դարի Սսի ժողովը հրամայում է (Ա. գիրք 455 երես) որ եպիսկոպոսը «սուրբ գիտուն քորեպիս-

կոպոս նշանակի, որ եկեղեցու դատարանն կարողանայ երկիւղածութեամբ և ո՛չ ագահութեամբ անել»: Սրանք եկեղեցական տուրքի և մէկի յանցանքի պատճառով շատ անգամ փակում էին եկեղեցու դռները, այս ինքնակամ գործողութիւնները արգելում է ութերորդ դարու Պարտաւի ժողովը. Ա: Գ. 435): Սրանց իրաւասութեան ենթարկւում էին նոյնպէս միմիայն եկեղեցական յանցանքները և մեղքերը:

Գ) Դատարանական երրորդ շրջանը կազմում է Ռուբինեանց անկումից յետոյ մինչև Ռուսական տիրապետութեան և Տաճկահայոց մէջ մինչև 1860 թիւը Սահմանադրութիւնը: Այս շրջանը մահմետական շրջան է, այս բաւական է ըմբռնել տալու համար հայոց եկեղեցական՝ թէ վարչական թէ դատարանական դրութիւնը: Մի տեղ, որտեղ արդարութիւն, ճշմարտութիւն կախուած լինի կաշառքից, դատ և իրաւունք կեդրոնացած լինի սրի, ոյժի, կոպիտ քմահաճոյքի մէջ, մի տեղ, որտեղ անկիրթ՝ վայրենի բնազդումներով Երևանի սարդար լինի կառավարիչ և Թաւրիզի խան, որոնք ամբողջապէս նուիրուած լինին մարմնական զուարճութիւնների և ունայն ցանկութիւնների, մի՞թէ այնտեղ եկեղեցին կարող է արդար դատաստան ունենալ: Առաքել Դաւրիժեցի պատմագրի (1601—1669 թ.) ո՛ր երեսը բացանելու լինիս, ամեն տեղ կտեսնես բռնութիւններ եկեղեցու վրայ, բռնաշրօսիկ վարմունք կաթուղիկոսների վերաբերմամբ, եկեղեցին ամբողջ կազմով խաղալիք դարձած:

Էջմիածինը իւր 4 կաթուղիկոսներով, որոնք միաժամանակ գահ են բազմել սարդարի և շահի գրպանը լցնելու և նրան քմահաճոյքներին ծառայեցնելու, դարձրել էին եկեղեցական կառավարութիւնը և դատաստանը վաճառանոց: Միաժամանակ չորս կաթուղիկոս, Մելիքսէթ, Դաւիթ, Սրապիոն և Սահակ դարձել էին շահի ծառաների ուղեկցութեամբ շրջիկ հարկահաններ. ահա ի՛նչ է ասում Դաւրիժեցին. Նրանք «կաշառքով թէ եպիսկոպոսներին թէ քահանաներին անարժանութեամբ ձեռնադրութիւն էին տալիս, կաշառքով մէկ վանքի սեպհական վիճակը կտրում ուրիշ վան-

քի էին տալիս, որձակ հրամաններ էին տալիս չհասի, «մեղօքի», կնաթողութեան, երկկնութեան։ Այսպիսի և սրանց նման բազմաթիւ անկարգութիւններ էին գործում կաթուղիկոսներն և իւր եպիսկոպոսներն . . . » 223 երես։ Այսպէս էին եկեղեցու կառավարիչը, իսկ ստորադրեալները. «Նոյնպէս էին, ասում է Դաւրիժեցին 289 երեսում, և գիւղական երէցները, անունով միայն քահանաներ, ոմանք վերցնելով իրանց վրայ մելիքութեան իշխանութիւնը (տանուտէրութիւն), և ոմանք տանուտէրութեան, և ոմանք պոռնիկներ և երկկանայք, ոմանք այլազգի իշխաններին յարած, նրանց չար գործերի արբանեակներ և քրիստոնեաների մատնիչներ , . . . թողնելով ժամ պատարագ» փակել էին եկեղեցիները և իրանց ցանկալի արուեստներով պարապում։ Շահը, սարդարը խաները 4 կաթուղիկոսին դարձրել էին փողի քսակ, միմեանց «աճրդու» հակառակ, բանտարկում, չարչարում, տանջում էին նրանց, Դաւիթը տանջանքից փախաւ Սպահան, Սրապիոնը զարհուրելի չարչարանքից փախաւ իւր հայրենիք Տիգրանակերտ, Սահակը նոյնպէս դէպի Վան, իսկ Մելիքսէթի չարչարանքները թող պատմի Դաւրիժեցին. 208 երես. «Նորանից յետոյ բերին Մելիքսէթին Երևանի բերդի մէջ և տարածեցին գետնի վրայ, չորս կողմից քարշելով պարկեցին նրան, կապելով ցցերից, ձգեցին որոգայթի մէջ, և առնելով բևեռաքարշը (ունելիք) և նրանով կորեցին թևերից միս, և կտրած միսը դրեցին բերանում, և երկու կողմում կանգնած փայտաւորները խփում էին նրան և ասում էին, ծամի՛ր և կուլ տո՛ւր և Մելիքսէթն թէպէտ և չէր կամենում, բայց վտանգից անճար մնալով, ծամեց և կուլ տուաւ իւր միսը. և յետոյ մունետիկը աղաղակեց թէ թագաւորի հրամանը խալիֆայի վրայ կատարուեց, իւր միսը ծամեց և կուլ տուաւ» այն էլ Աստուածածնի պահոց օրերը. և այս բանի պատճառն էր իւր աթոռակից Դաւիթ կաթուղիկոսը, որը շահին ասել էր թէ Մելիքսէթը կաշառ է առել և թոյլ տուել որ կաթոլիկները Ս. Հռիփսիմեանց գողացած մասունքները տանին, փոխանակ յետ խլելու։ Այս կա-

տարուել է տասն և եօթերորդ (ԺԷ) դարում։ Մի՞թէ արժէ կրկնել Դաւիթ—Դանիէլեանի կաթուղիկոսական կռիւը, որ շարունակուեց երկար տարիներ և պառակտեց ու թուլացրեց եկեղեցական կարգերի ոյժն ու զօրութիւնը, այն էլ 19-րդ դարի սկզբում, հետաքրքրուողները թող կարդան «Ամենայն հայոց կաթ.» Գիրքը Ա. Երիցեանի։ Մի՞թէ այսպիսի պայմաններում, այսպիսի հրէշաւոր ժամանակ, կարելի էր որոշել, կամ քննութեան տակ ձգել հայոց եկեղեցու դատաւորութիւնը և դատակազմութիւնը ինչպէս էր, ո՞վ էր դատողը և մեղադրողը, ո՞վ վկան, ո՞վ պատիժ կրողը՝ եկեղեցական դատաւորը և պատժողը, և քննողը, էր կաշառքը, քմահաճոյքը, սուտ ստրկութիւնը, խանի և սարդարի բնազդմունքները։ Շատ պարզ է, որ այսպիսի տասն պատահարներ չկարողացան և չեն էլ կարող ջնջել մեր եկեղեցու դարաւոր կանոնական սահմանադրութիւնները դատի, դատաւորութեան և դատակազմութեան վերաբերմամբ, որոնք առժամանակ միայն մոխրի տակ պահուած մնացին, որովհետև բռնի ոյժով արածը օրէնք չէ, եկեղեցին իւր ներքին ուժով այդ բռնութեան դէմ մաքառեց և շարունակեց նախկին սկզբունքներով կեանք վարել։

Մեր եկեղեցու երեք դատարանական շրջանում հետևեալ սկզբունքները մնացին անխախտ. ա) երեք աստիճանով կազմուած դատարանական ձևերը սկզբից մնաց մինչև վերջը առանց փոփոխութեան, այն՝ է 1) կաթուղիկոսական՝ ազգային ժողովի մասնակցութեամբ, վերջնական և անբողոքելի դատական, օրէնսդրական վճռահատութեամբ, կամ՝ 'ի բացակայութեան կաթուղիկոսի առագագոյն եպիսկոպոսի նախագահութեամբ. 2) եպիսկոպոսական՝ կամ առաջնորդական, սահմանափակուած թեմի գործերով և 3) քորեպիսկոպոսական կամ գործակալական, գաւառակի կամ համայնքի գործերով սահմանագծուած։ բ) Սկզբից մինչև երրորդ շրջանի վերջը երեք եկեղեցական դատաւորութեան հիմունք եղել է կանոնական իրաւունքը, կանոնների ցոյց տուած սահմանագծերը։ գ) Եկեղեցական դատաստանի նիւթը եղել

է եկեղեցական—կրօնական խնդիրներ, այն է՝ պսակի, չհասի, ամուսնալուծութեան, առևանկութեան, կախարդութեան իւր տեսակներով, աղանդների, ժամերգութեան, ծիսակատարութիւնների, բարեգործական հիմնարկութիւնների և կալուածների կառավարութեան և պահպանման, եկեղեցական հասոյթների և տուրքերի կարգադրման և ժողովման խնդիրներ։ Դ) Եկեղեցական դատաստանին ենթարկուել են վերոյիշեալ յանցանքներում մեղադրուած բոլոր հոգևորականները՝ դպրից սկսած մինչև կաթուղիկոս անխտիր։ ե) Նոյն յանցանքներում մեղադրուած բոլոր աշխարհականները նոյնպէս ենթարկուել են նոյն եկեղեցական դատին շինականից սկսած մինչև թագաւորը։ զ) Քրէական և քաղաքացիական գործերը ենթարկուել են մարմնաւոր դատարանին և չունենք փաստ ապացուցանելու թէ ենթարկուած լինին եկեղեցական դատաստանի։ է) Հոգևորականները քրէական և քաղաքացիական գործերի համար ենթարկուել են երկու դատարանին էլ՝ թէ եկեղեցական թէ մարմնաւոր, կամ խառն դատարանի, որպիսին էր Սիւնեաց եպիսկոպոսների դատը երկու իշխանների դէմ «Ս. Խաչի» տիրապետութեան համար. փոքր քրէական յանցանքների համար միմիայն եկեղեցական դատարանին։ ը) Բարձրագոյն եկեղեցական դատարանին ենթարկւում էին՝ կաթուղիկոսը և թագաւորը, եպիսկոպոսները և իշխանները (նախարարները). եպիսկոպոսական դատին՝ անպաշտօն եպիսկոպոսները, վարդապետներ և այլ հոգևորականներ, գաւառի աննշան իշխաններ և ազատ ու շինական։ Քորեպիսկոպոսական դատին համայնքում ապրող ազատ ու շինական և քահանաներից սկսած մինչև դպիրները։ թ) Երեք ատեանի դատավարութիւնը լինում էր դռնբաց, ժողովական և խորհրդակցական և ոչ անհատական, բարձրագոյն ատենին բողոքելու իրաւունքով։ ժ) Երեք ատեանի դատարաններում գործադրուող պատիժներն էին՝ ապաշխարանքներ զանազան տեսակ, ծոմապահութեամբ, ծնրադրութեամբ, չոքելով, գրքեր կարդալով, եկեղեցու դրան կանգնելով, հաղորդու-

*թիւնից զրկուելով, եկեղեցի մտնելուց զրկուելով, աղօթքի կանգնելով, տուգանքներ յօգուտ աղքատանոցի, եկեղեցու, բարեգործական հաստատութիւնների և յօգուտ գանձարանի, պատիժներ -մուրցացի և ճիպոտի հարուածներով, ուրկանոց ուղարկել-աղալու համար (ցորեն և ծաւար արկանքներով), աղուէսադրոշմ ճակատին (խարած շամփուրներով), պատիժներ ոչ մարմնական-բանտարկել, խայտառակելով էշի վրայ նստացրած շրջեցնել; իրաւունքի զրկումն-հոգևորականներին՝ զրկուել պատուից, պաշտօնից, կարգից; երկու դասակարգի վերաբերմամբ՝ զրկուել քրիստոնէական բոլոր օրինակատարութիւնների շնորհքից՝ բանադրութեամբ և նզովքով։ ժա) Եկեղեցական դատարանն ինքն է գործադրում պատիժները բոլոր եկեղեցական անձանց վերաբերմամբ, նոյնպէս և ինքն է գործադրում վերոյիշեալ պատիժները աշխարհականներից շինականների վերաբերմամբ, իսկ ազնուականները ծեծից օրէնքով ազատ էին, եթէ ինքնայօժար տուգանք կտային, այն է պատժին կենթարկուէին, եթէ ոչ, եկեղեցին անզօր էր գտնուում պատիժը գործադրել. «եթէ պատուաւոր մարդ է և եկեղեցական օրէնքին հակառակ է կանգնում» (Ա. Գ. 457) ասում է Ասի կանոնն, պէտք է նզովքի ենթարկել. ուրեմն աշխարհականներից ուժեղների կամքին էր թողնուած եկեղեցական դատարանին ենթարկուելը, եկեղեցին անզօր գտնուելով սրանց դէմ՝ բանադրում և նզովում էր միմիայն։ Թէ ինչո՞ւ եկեղեցին դիմում էր հակաեկեղեցական միջոցների յանցաւորների դէմ, այդ պէտք է բացատրել հանգամանքների, մարդկանց վարք ու բարքի կոպտութեան, տիրող կարգերի անկանոնութեան միջոցով. մարմնական պատիժը, ծեծը բոլորովին հակառակ է աւետարանի բարձր սկզբունքին, եկեղեցու քարոզչութեամբ լոյս սփռելու ձգտումներին, որոնք պահանջում են ազդել խօսքով, յորդորներով, սրտի ներշնչմամբ և ո՛չ գաւազանով։ Այս դրութեան պատասխանում է Տահապիվանի ժողովի 13-րդ կանոնն (Ա. Գ. 335 երես), որ խօսելով յանցաւորներին խիստ տուգանքների և մարմնական պատիժների ենթարկե-*

լու մասին, ասում է, «իսկ եթէ հակառակեն (պատժի ենթարկուողները) և ասեն, ինչու Նիկիական կանոններում այդպէս ծանր պատիժ չէ նշանակուած, նրանք սխալւում են այդպէս մտածելով, որովհետև այնտեղ 'ի նկատի չունէին թէ այսքան չարիք և ոճիրներ մեր աշխարհում պիտի գործուէին»։ Ահա ժողովի պատճառաբանութիւնը, որի անդամները իմացել են իրանց եկեղեցական ոգու ոչ համապատասխան պատիժներ նշանակելը, բայց միևնոյն ժամանակ գտել են որ ուրիշ միջոցներ չեն կարողանում որոնել այդ անկարգութիւնների առաջն առնելու համար։ Այդ խստութիւնները միևնոյն չափով գործադրւում էին թէ հոգևորականների և թէ աշխարհականների վերաբերմամբ։ Մինչև իսկ Սսի ժողովը հայոց թագաւորի կարգադրութեամբ սահմանում է, մարդիկ նշանակել ամեն տեղ, քաղաքներում, գիւղերում, հրապարակներում, փողոցներում հսկելու և բռնելու այն մարդկանց, որոնք հայհոյելիս կլինին Աստուծուն, եկեղեցուն, հաւատքը, կնունքը և այլն և այլն, և ծակելու նրանց լեզուները, լար անցկացնելու մէջովը, մի օր այդպէս շրջեցնեն և տուգանք առնեն աղքատներին բաժանեն (Ա. Գ. 458 երես)։ Այսպիսի պատիժ հետևանք է միմիայն կացութեան, վարք ու բարքի՝ փչացման և բրդացման։

Այն հարցը թէ հոգևորական թէ աշխարհական ո՞րպիսի յանցանքների համար ո՞ր ով աստիճան պատիժների էին դատապարտւում, շատ դժուար է որոշել, պարզ և դրական կերպով լուծուած այդ խնդիրը մենք չենք գտնում մեր կանոններում, չկան որոշ սահմանագծուած օրէնսգրքի յօդուածների նման վճռական կանոններ, այդ թողուած է գործադրողների քմահաճոյքին և հանգամանքներին ծանրութեան ու թեթևութեան։ 1836-ից յետոյ երբ Ռուսաց կայսրը հրամայեց հայոց եկեղեցական կանոնների հիման վրայ ներքին եկեղեցական կեանքի վերաբերեալ սահմանադրութիւն կազմել, սինօդը երեք անգամ նշանակեց այդ հրամանը 'ի կատար ածելու որ անշուշտ 'ի նպաստ էր հայոց ե-

կեղեցու կանոնաւոր կառավարութեան, դժբախտաբար կազմողները ոյժից վեր տեսնելով այդ գործը յետ քաշուեցին և մինչև այսօր էլ մնում է նախկին տարտամ դրութեան մէջ։ Հայոց եկեղեցու 1836-ից յետոյ եղած դատաստանական խնդիրների մասին Ռուսահայոց համար, և 1860-ից յետոյ Տաճկահայոց վերաբերմամբ կխօսենք Գ. գրքում աւելի մանրամասն։

Այն հարցը քրէական յանցանքները քննուել և վճռուել են հայոց մէջ եկեղեցական դատարաններում, կամ աւելի կարճ, թէ քրէական դատերը ենթարկուել են հոգևոր դատարաններին և ոչ աշխարհական, այս մասին երկու խօսք կասենք և դատական մասին վերջ կտանք։

Թէ եկեղեցական դատաստանին էին ենթակայ աշխարհականների գործած քրէական յանցանքները, այդ պնդում են հանգուցեալ Վահան վարդապետ Բաստամեան իւր Մխիթար Գօշի դատաստանագրքի յառաջաբանի մէջ և Գարագաշեան իւր «քննական պատմութեան» Բ. գրքում։ Առաջինը բերելով մի քանի կտորներ մեր եկեղեցական ժողովի կանոններից, ապա ի նկատի առնելով օտար եկեղեցիներում նոյն ժամանակներում՝ կարգերը, գալիս է այսպիսի եզրակացութեան «այսպէս ուրեմն՝ բոլոր վերոյբերեալ քաղուածքները հաստատում են, գոնեա իմ մէջ, գրեթէ անկասկածելի կերպով, այն համոզմունքը որ՝ արդարև դատաքննութիւնը և դատաստանը, գէթ քրէական յանցանքների, գտանւում է հոգևոր իշխանութեան ձեռքին երկար ժամանակ՝ սկսած Ս. Գրիգոր լուսաւորչից մինչև Ռուբինեանց թագաւորութիւնը Կիլիկիայում։ . . . . . . . . . . Իսկ ինչ վերաբերւում է քաղաքացիական գործերի դատաքննութեան դատաստանին, զոր օրինակ՝ կալուածքները գնելուն և վաճառելուն . . . . . . . . . . գոցա համար երևի թէ կամ առանձին աշխարհական դատարաններ կային, որք սկիզբն առացան կամ բարեկարգուեցան Վաղարշակ թագաւորի օրով . . . . . և կամ գաւառապետները, քաղաքապետները, գիւղական տանուտէրները և մանաւանդ նախարարները վա-

րում էին դատաւորական իրաւասութիւնը . . . » 76—77 երես։ Իսկ Գարագաշեան Բ. գրքի 18 երեսում ասում է, «Գիրքը և ժողովոց կանոնք եղան ոչ միայն հիմն երկրին օրէնսդրութեան, այլ և նոյն իսկ օրէնսդրութիւնն։ Այս է պատճառ որ չունինք 'ի նախնեաց մնացած դատաստանագիրք։ . . . Առ քրիստոնէութեամբ, երկրին օրէնքն էր, ինչպէս երբեմն յԵւրոպա՝ կանոնական իրաւունք (qroif canon) և կանոնագիրքն էր դատաստանագիրք։ Տատ հաւանական է, թէ տունք երիցանց էին դատարանք, և գերագոյն ատեան եպիսկոպոսարանի . . . . . Պօլսոյ հայ պատրիարքաց դատարանական իշխանութիւնը, ոչ քաղաքայինն միայն, այլ և պատժականն, որ տրուած նոցա իբրև առանձնաշնորհութիւն Օսմանեան կայսերաց կողմանէ՝ համարելի է ոչ այնչափ նոր արտօնութիւն, որչափ ի վաղուց վայելեալ իրաւանց ճանաչումն։ . . . . . Դատուել եկեղեցական օրինօք և քրիստոնեայ դատաւորէ՝ էր առ նախնիս մեր իբրև հաւատոյ մասն, մինչև սմին հակառակ որևիցէ կարգադրութեան համարուել «ապաւաղումն փառաց եկեղեցւոյ»։ Երկրորդիս կարծիքով քաղաքացիական և քրէական (պատժական) դատերը եկեղեցու ձեռքին էր։

Վահան վարդապետ Բաստամեանի բերած փաստերից գըլխաւորն է՝ իւր առարկութիւնը ապացուցանելու, Շահապիվանի ժողովի 20-րդ կանոնի գրաբառը (տես Ա. Գ. 355 և 339—340 և Մխիթար գօշ·ի յառաջաբան 71 երես), որի մէջ ասւում է թէ, եթէ ժողովրդի մէջ մէկը «չարագործ» դուրս գայ, և քահանան իմանայ և նրանից տեղեկութիւն չտայ եպիսկոպոսին, ենթարկուի խիստ մարմնական պատժի, որպիսին դրւում է մծղնեայ աղանդաւորին։ Նա «չարագործ» բառը ընդունում է «իւր պարզ և սովորական իմաստով», որ վերաբերում է «առհասարակ չար գործերին, որոնց մէջ կարող են մտնել և զուտ քրէական յանցանքները», այդպէս ընդունելուց յետոյ, երբ տեսնում է որ «20 կանոնն» այդ գործը յանձնում է եպիսկոպոսական և կաթուղիկոսական դատին, վճռում է, թէ ուրեմն քրէական գործերը

ենթարկւում էին եկեղեցական դատարանին, ահա Բաստամեանի գլխաւոր պատճառաբանութիւնը։ Դժբախտաբար այդ 20-րդ կանոնը այնքան պարզ է և այնքան որոշ թէ «չարագործ» ասելով ինչ պիտի հասկանալ, որ Բաստամեանի թէ նախադրեալը և թէ եզրակացութիւնը բոլորովին սխալ են և կանոնի մտքից հեռու։ Որովհետև Շահապիվանի 19 և 20 կանոնները բացառապէս խօսում են մծղնէութեան մասին, որ է անբարոյական՝ «պղծագործ» և «չարագործ» աղանդ, որի պատիժն նոյնպէս «չարագործական» է, կրտրումն «ջիլերի» այն է սեռական գործարանի մասերից, աղուէսադրոշմ ճակատին. պատմագրները այս աղանդը անուանում են պղծագործ աղանդ, չարագործ աղանդ, որ նշանակում է թէ Բաստամեանի եզրակացութիւնը «չարագործ» բառի իմաստի վերաբերմամբ բոլորովին սխալ է. որ այդ գործողութիւնը վերաբերում է աղանդաւորական խնդրին և է՛ եկեղեցական հարց և ենթակայ եկեղեցական դատին։ Մինչև անգամ Բաստամեանի բերած 20 կանոնի վկայութիւնից երևում է, որ եկեղեցական խնդիրներում եթէ յանցաւոր էին գտնւում նախարարները և թագաւորաշն անձինք, այն ժամանակ նրանք ենթարկւում էին ո՛չ լո՛կ եկեղեցական դատարանին, ա՛յլ խառն հոգևոր և աշխարհական դատարանին. կանոնն ասում է, դրանց «վերցնեն պղծագործ ընտանիքի հետ միասին և հրապարակ բերեն, գլխաւոր եպիսկոպոսի, մեծամեծ իշխանների եւ ազատ դատաւորների առաջ Աստուծոյ օրէնքի վրէժխնդիրը լինին։ Որպէս զի ուրիշները տեսնելով սրբութեամբ և երկիւղով պաշտեն Արարչին, կատարեալ լինին աստուածպաշտութեան կարգի, սրբերի և օրէնքների յարգելուն մէջ և ճշմարիտ ծառաներ լինին Աստուծոյ՝ խօսքով և գործով»։ Վերոյիշեալից շատ պարզ երևում է որ «չարագործ» բառն վերաբերում է մծղնէութեան, որ եկեղեցական յանցանքը յանձնել են ոչ թէ լո՛կ հոգևոր դատարանին, այլ խառն. որ վերոյիշեալ 20 կանոնի հիմամբ կարելի է Բաստամեանի արած եզրակացութիւնից հանել հակառակ եզրակացութիւն, թէ քրէական

յանցանքները ենթարկւում էին աշխարհական դատարանին։ 20-րդ կանոնն նորից չեմ արտագրում ամբողջութեամբ այդ պարզ ցուցնելու համար, հետաքրքրուողները թող կարդան իսկականը վերևում ցոյց տուած գրքերում։ Բայց այդ փաստից Յաստամեանը բերում է մի քանի կցկտուր քաղուածներ Ներսէս ամն կաթուղիկոսի յարկացրուած կանոններից զանազան քրէական գոյն ունեցող յանցանքների պատիժների վերաբերմամբ, ցոյց տալու թէ քրէական յանցանքները ենթարկւում էին ոչ աշխարհական դատարանին, որովհետև, ասում է նա, այս յանցանքների պատիժները - ապաշխարանքներ են եկեղեցուց նշանակուած։ Այդ ամն Ներսէսի 42 կանոնն բոլորովին անվաւեր են և անհիմն, կցկտուր և միմեանց հակառակ, (տես Ա. Գիրք 368 երես) նրանց վրայ վստահանալ և նրանց հիմամբ եզրակացութիւն անել, չի կարելի, և երկրորդ՝ մի՞թէ ապաշխարանք նշանակելը եկեղեցու կողմից դիցուք սպանութեան համար, ապացոյց կարող է լինել թէ սպանութեան խնդիրը ենթարկուել է հոգևոր դատարանին, չէ որ այսօր էլ հէնց պետական քրէական օրէնքը շատ յանցաւորներին պատիժ նշանակելուց յետոյ - ենթարկում է նրանց եկեղեցական ապաշխարանքի։

Յաստամեանի առարկութիւնը՝ թէ «նոյն իսկ ժողովրդի համար աւելի օգտակար էր և ձեռնտու որ՝ քրէական գործերի դատաստանը լինէր ոչ թէ մարմնաւոր, այլ հոգևոր իշխանութեան ձեռքին, որովհետև այդ իշխանութիւնը միշտ աւելի ներողամտաբար էր վերաբերւում և գործ էր ածում միշտ աւելի թեթև, միայն ուղղեցուցիչ պատիժներ — զանազան տեսակ ապաշխարանքներ» (69 երես)։ Այս դատողութիւնը աւելի քան միամիտ է, սպանողի համար ճշմարիտ է, շատ նպաստաւոր է հոգևոր դատարանին դիմելը, որովհետև միմիայն ապաշխարանք կրելով յանցանքից կազատուի, բայց սպանուողի կողմի համար ի՞նչ օգուտ յանցաւորի խաղաղ ապաշխարանքը, ո՞ր մարդը կհամաձայնի իւր եղբօր սպանողին ազատ համարել պատժից, գոհ մնալով նրան եկեղեցական ապաշխարանք քաշելուց, հապա եթէ յանցաւորը պընդա-

գլուխ է և եկեղեցական աշխարհանք կրելու ոչ հակամէտ, ինչ պիտի անի եկեղեցական դատարանը, ոչինչ, նա պիտի այն ժամանակ նզովքի ենթարկի այդպիսի անձին։ Է՞ այսպիսով աշխարհ կարելի է կառավարել, ՚ի հարկէ ոչ։

Մենք մեր կանոններում ոչ մի տեղ չենք գտնում փաստ, որով կարելի լինէր ապացուցանել թէ աշխարհականները քրէական գործերի համար ենթարկւում էին հոգևոր դատարանին, բայց ունինք տեղեկութիւններ հակառակը ապացուցանելու, այսինքն որ աշխարհականները թէ քրէական թէ քաղաքացիական յանցանքների և դատերի համար ենթակայ են եղել աշխարհական դատարանին, որ հոգևորականները քաղաքացիական և մեծ քրէական յանցանքների համար ենթարկուել են աշխարհական դատարանին կամ խառն դատարանին։ Սկզբից մինչև վերջ՝ հոգևորականութիւնը լինելով ժողովրդի ընտրութեամբ այդ դասակարգի մէջ մտած, և նրա նիւթական ապահովութիւնը սահմանափակուած լինելով ժողովրդի կամաւոր տուրքերով և հասոյթներով, նա, հոգևոր դասը եղել է միշտ կեանքի մէջ երկրորդ կարգում, խաղալիք և ստորադրուած իշխանների, հարուստների, բռնաւորների ձեռքին։ Հոգևորականութեան ամենաուժեղ ժամանակ, լուսաւորչից մինչև Սահակ, զօրեղ հոգևորականները, եպիսկոպոս և կաթուղիկոս մեռել են թագաւորի և նրա մարդկանց ձեռքից, կամ փախել են անապատ։ Ներսէս մեծի նման մարդը, որի արքունիք մտնելիս, Արշակ թագաւորը մտնում էր անկիւնում կուչ գալիս, անզօր գտնուեց մի քահանայի դէմ, որը հաղորդութեան մէջ թոյն խառնելով մարդ սպանեց թագուհու պատուէրով։ Նոյն Արշակ երբ Արշակաւանը շինեց և հրամայեց որ բոլոր յանցաւորներով լցուի նոր քաղաքը՝ իրաւունք տալով նրանց պատիժներից ազատուել, երկիրը դարձրեց աւազականոց, անառականոց, հոգևոր իշխանութիւնը, որ իւր ամենաուժեղ ժամանակն էր, ոչինչ չկարողացաւ անել իւր խրատներով և քարոզներով, իսկ Արշակ միայն արհամարհում էր Ներսէսի և տեղակալ Խադի հանդիմանութիւնները. ահա Փաւստոս 91 երեսում ինչպէս է նկարա-

գրում այդ վիճակը. «Շատ վնասներ էին տալիս (յանցաւորները) և այնտեղ էին փախչում (Արշակաւան), շատ տղամարդիկ իրանց կանանցն էին թողնում և այնտեղ ընկնում, շատ տղամարդիկ էլ իրանց կանանց արձակելով, ուրիշ կանայք առնելով այնտեղ էին վազում, շատ ծառաներ իրանց տիրոջ գանձը գողանալով այնտեղ էին դիմում, . . . դատ չկար. և արքունիքից ոչ մէկին իրաւունք չէր տրւում, . . . բոլորի ասելով՝ թէ իրաւունքը մեռաւ . . . »: Ներսէս յանդիմանում է Արշակին և խորհուրդ է տալիս ցրուել Արշակաւան և երկրի մէջ կարգ ձգել, ասելով որ քո մեղքերիդ համար բոլոր աշխարհով ապաշխարանքի կմտնենք: Արշակ ծիծաղում է, իսկ Ներսէս անճարացած դուրս գալիս: Եզնիկից ունինք դատի մասին մի քանի խօսք Ա. Գլ. ԺԵ. «Ինչու օրէնքը թագաւորները են դնում, և սաստերը իշխանները, և պատիժները դատաւորները, չէ՞ որ միմիայն չարիքների առաջն առնելու համար: Եթէ չարիքն 'ի բնէ է, այն ժամանակ ոչ օրէնսդիրը պիտի օրէնք դնի, և ոչ իշխանը պատիժներ նշանակի . . . Տեսնում ենք որ թագաւորը իւր օրէնքի վրէժն է պահանջում, և վրէժի պահանջմամբ չարիքն է կարճում, և դատաւորն էլ գողին եւ աւազակին է պրկում եւ քերում (պրկէ եւ քերէ) վնասակար գործերն մէջ տեղից վերցնելու համար. և հայրը՝ դժնեայ որդուն մահուան դատապարտելով՝ դատաւորներին է մատնում, և ուրիշներն էլ իրանց անձնական վրէժները պահանջում են կամ անձամբ կամ իշխանների ձեռքով»: Եզնիկ Կողբացու վկայութիւնը շատ լուրջ է և տրամաբանօրէն, որից պարզ երևում է, որ գողերը և աւազակները յանձնւում են դատաւորների դատին և պատժին, որ այդ դատերը բոլորը իշխանական են, այսինքն է աշխարհական և ոչ եկեղեցական. մինչև իսկ Ե. դարում երբ հայրական իրաւասութիւնը պիտի անչափ լինէր որդու վրայ, բայց և այնպէս հայրը դատը ինքը չէ կտրում որդու վերաբերմամբ, այլ յանձնում է աշխարհական դատարանին: Է-րդ դարում հայ իշխանները փոխանակ եկեղեցին պահպա-

նելու օտարների ոտնձգութիւններից, շատերը քահանաներին և եկեղեցիները հարկի տակ էին ձգում. Դուինի ժողովի 9-րդ կանոնը նզովքի է ենթարկում այդպիսի հայ իշխաններին. (Ս. Գ. 403 երես)։ Նոյն ժողովի 10-րդ կանոնից իմանում ենք, որ «ազնուականներից ոմանք վանքերի վրայ իշխանութիւն են բանեցնում, ում կամենում են վանական են նշանակում և արձակում։ Ոմանք էլ ընտանիքով նստում են վանքերում, արհամարելով Աստուծոյ եկեղեցին»։ (Ս. Գ. 405)։ Ը-րդ դարու կանոններում կարդում ենք «գիւղի աւագը (գիւղապետը) եթէ արքունի հարկերի համար բռնաւորին կդրտի եկեղեցու դռները փակել և ժամերգութիւնը խափանել, մինչև մահ նզովեալ լինի»։ Միթէ այսպիսի պայմաններում կարելի է մտքովն անգամ անցկացնել թէ քրէական յանցաւոր աշխարհականները ենթարկւում էին հոգևոր դատարանին։ Թէ ինչ դրութեան մէջ էր հայոց եկեղեցին 12, 13, 17-րդ դարերում, այդ երևում է Շնորհալու կանոններից և նախորդ երեսներում Մելիքսէթ կաթուղիկոսի դէպքերի պատմելուց. վերջապէս թէ ինչ դրութեան մէջ էր այս դարուս սկզբին, թող հետաքրքրուողները կարդան Երիցեանի «ամենայն հայոց կաթուղիկոսութիւնը» ուր Ներսէսի կռիւները բռի և քմահաճ իշխանների հետ հասնում էր ծայրայեղ աստիճանի։ Երիցեանը 343 երեսում առաջ է բերում ռուս Զուբարևի պաշտօնական թուղթը Պետերբուրգ գրած մելիքների շահատակութիւններից. որ Նայիբ Մելիք Խուդադը ամեն մի պսակի համար պահանջում է 20 ոսկի, կամ կնոջ անվայել առաջարկութիւններ է անում, պսակի ժամանակ ներս է մըտնում եկեղեցի, հայհոյում քահանային և շտապեցնում, ասելով որ հարսին պիտի տանի իւր սենեակը։ Միթէ այդ նոյն չէ, ինչ որ Դուինի ժողովի կանոնում կարդում ենք, ժողովական նզովք այն իշխանների վրայ թափած, որոնք անառակ կանանցով և գուսաններով կերթան վանք շաբաթներով լրբութիւններ կկատարեն։ Բաստամեանը պընդում է որ մինչև Ռուբինեան թագաւորութեան անկումն

քրէական դատերը եկեղեցու ձեռքին էր, մինթէ այսպիսի պատմական դէպքեր ունենալուց յետոյ կարելի՞ է այդ պընդել, ի՛հարկէ ո՛չ։ Առաջնորդները, քահանաները մի մի գերի են եղել բռի, կոպիտ ոչ միայն իշխանների, այլ հասարակ պնդագլուխ անձանց ձեռքին, բաւական է որ քահանան, եպիսկոպոսը իշխանի «խաթրը» կոտրեցին, չհասը չպսակեցին, կամ երկրորդ կին բերելու իրաւունք չտուին, պրծաւ, մինթէ նրանք այլեւս կկարողանան եպիսկոպոսութիւն կամ քահանայութիւն անել։ Գարագաշեան ճիշտ է ասում, թէ «Ամուսնութեան և եկեղեցական կարգաց պահպանութեան խնդիրնեը ոչ միայն դատել, այլ և անոնց եղծումը զսպել խիստ միջոցներով՝ էր թոյլ տուած, մանաւանդ թէ ճանչցուած կառավարութենէ։ Անրով Պատրիարքարան տարուել, նաև զանըմպել կամ բանտարկել ստահակելոց և հեստելոց ընդդէմ պատուիրանաց եկեղեցւոյ, ինչպէս պահոց, չէր անսովոր իբր կէս դար կամ աւելի առաջ»։

Բեռ այդ ձևը աւելի մեղմն է համարելի քան այն եղանակը, որ բանացնում էին Ղարաբաղի միտրոպոլիտները յանցաւոր քահանայից դէմ. բանտարկել, մօրուսը փետտել, ծեծել, քաղցած թողնել ընդհանուր օրէնք էր նոցա համար. կինը եթէ կգար մարդուց գանգատուէր, կամ ընդհակառակն, առաջնորդը կամ գործակալը կծեծէին երկու կողմըն այնքան, որ կստիպէին հաշտուել։ Ներսէս Ե-ի ժամանակ Դուրէժի Նիկողայոս առաջնորդը մի քանի անառակ կանանց նստացնում է մրած երեսով էշերի վրայ երեսները դէպի պոչը և շրջեցնել տալիս Դուրէժի փողոցներում։ Այս բոլորը ճիշտ են, մինչև իսկ մինչև այսօր պատահում են, բայց դրանք օրէնք չեն, դրանք դատաստան չեն, հապա քմահաճոյք և կոպիտ բռնութիւն. մի ծայրայեղութիւնից միւս ծայրայեղութիւն ընկնել։ Առաջնորդը վախից ամեն տեսակ զեղծումներ կանէր, խանի, իշխանի գրպանը լցնելու համար, իսկ երբ առաջին կտեսնէր անզօր գիւղացի, կամ խղճուկ քահանայ, մօրուսը կփետտէր. սա օրէնք չէ, 'ի հարկէ. սա կամայականութեան ծայրայեղ աստիճանն է,

և գոյութիւն ունի այնտեղ, որտեղ օրէնքի վրայ գաղափար չկայ և օրէնքի հետք չի մնացել։ Մատթէոս կաթուղիկոսի օրով Աստրախանի քահանաները յայտարարութիւն են տալիս կաթուղիկոսին, թէ պոռնիկների տուրը չյաճախելը ըստ կոնդակի մեծ յուզումներ է առաջացնում, պոռնիկ համարուած կանայք բռնում են քահանայի օձիքից և պահանջում նրանից թէ ինչ իրաւունքով իրան պոռնիկ են համարում և կոնդակի հիման վրայ տուրը չեն օրհնում, և դատի են ենթարկում իրանց անուանարկող քահանային։ Այս կարգադրութիւնը հին էր, կանոնական սահմանով պոռնիկներից հարկ էր առնում իբրև տուգանք և վճարում էր աղքատանոցներին, (տես Ա. Գ. 393 երես)։ Այստեղից պարզ երևում է, թէ կամայական կարգադրութիւնները առաջնորդող անձանց կողմից եղել են միակ միջոցը, որի ուժով ըստ քմահաճոյից. Նայելով հանգամանքներին կառավարել են թէ եկեղեցին թէ ժողովուրդը՝ միմիայն եկեղեցական գոյն ունեցող խնդիրների նկատմամբ. որպիսի գրութիւնը ոչ միայն չէր կարող ոյժ տալ եկեղեցուն; որ սա իւր դատաստանին ենթարկի ո՛չ եկեղեցական գործերը և խնդիրները, այլ ընդհակառակն բոլորովին քայքայման էր հասցնում եկեղեցական վարչական կազմութիւնը և սրան ենթարկում աշխարհական դատարանին և աշխարհական կառավարութեան նոյն իսկ եկեղեցական խնդիրների վերաբերմամբ։

Գալով այն հարցին, թէ ինչպէս է այժմ մեր և Տաճկահայոց մէջ դատավարութիւնը և դատակազմութիւնը, այդ կտեսնենք Գ. գրքում։—

Հայոց եկեղեցու դատավարութիւնը սկզբից մինչև վերջ եղել է անդրադարձութիւն մարմնաւոր իշխանութեան դատավարութեան, Արշակունեաց, Բագրատունեաց և Ռուբինեանց շրջաններում թէ եկեղեցական թէ աշխարհական կեանքում տիրապետող ոյժը դատավարութեան մէջ եղել է, բռնութիւնը, կաշառք. մահմետական տիրապետութեան օրով շարունակուել է նոյն դատական ձևը, աւելի ամրացել է շարիաթի պահանջներով և խաների անզուսպ կրքերի բռ-

*պէական հրոյթներով, որոնցով Հայոց եկեղեցին ոչ միայն դատական՝ այլ և վարչական կողմից դարձել էր խաղալիք և խանական գրպանը լցնելու միջոց։ Մինչև ռուսական տիրապետութիւնը հոգևորականների թէ անձնական վիրաւորանքների և թէ եկեղեցական այլ խնդիրների դատավարութիւնը կեդրոնացած էր տանուտէրների ձեռքում, որոնք ծեծով, բանտարկութեամբ և կաշառքով վճռում էին ամեն տեսակ վէճեր և պսակները լուծում կամ իշխանների մասնակցութեամբ կամ նրանց ուղղակի ցուցմամբ. դեռ ևս Շնորհալին հեռու Կիլիկիայից խիստ խօսքերով յանդիմանում և արգելում էր տանուտէրներին վարուել եկեղեցու օրէնքների հակառակ։*

*Եկեղեցին միշտ վարուել է այդ խնդիրներում այնպէս, ինչպէս որ վարուել է մարմնաւոր իշխանութիւնը և հէնց ինքը ժողովուրդը, որոնց գործնական կեանքը ամփոփւում էր «եօլա» գնալու, մի կերպ կառավարուելու մէջ։ Այսպէս լինելուց յետոյ շատ դժուար կլինի արձանագրողի համար հետևողական կերպով որոշել թէ հայոց եկեղեցու դատաստանը և դատավարութիւնը գործնականութեան մէջ, եկեղեցու կեանքի ընթացքում ինչպէս էր կատարւում, ինչ եղանակով էր գործադրւում կանոնական սահմանադրութիւնը, ինչ հիմունքներով քննւում և վճռւում խնդիրները. մեզ մնում է սփոփուել նրանով, որ այժմեայ մեր եկեղեցական գործնականութիւնը ունի բոլոր հիմունքները վարելու եկեղեցական դատը և դատական եղանակը այն լայն՝ արդար՝ անկաշառ սկզբունքով, որը թելադրում է աւետարանը և մեր ժողովրդական եկեղեցու ոգին։*

## Ե. ՊՍԱԿԻ ՄԱՍԻՆ

(Վ. վ. Բաստամեան—«Փորձ» 1880 և 1881, Обзоръ постановленій о бракѣ въ пр. цер. Пр. Соб. 1858, 1859 «50 глава Корш. книги какъ практическій и историческій источникъ рус. бр. пр. А. Павлова.

*Պսակը եկեղեցու խորհրդներից մէկն է, որ կատարւում է քահանայի օրհնութեամբ և եկեղեցու սրբագործմամբ, որի միջոցով երկու ամուսիններ օրինաւոր կերպով կապուելով միմեանց հետ, մտնում են որոշ իրաւունքների և սահմանների մէջ։ Այդ երկու անձինք միանում են միմեանց հետ իբրև մի մարմին և գաղափարական կերպով պատկերացնում են Քրիստոսի միանալը իւր եկեղեցու հետ։ Պօղոս առաքեալը Եփեսացոց թղթում գրում է, «Զի ոչ ոք երբէք ատեաց զանձն իւր, այլ սնուցանէ և դարմանէ զնա, որպէս և Քրիստոս զեկեղեցի. Զի անդամք եմք մարմնոյ նորա, և 'ի մարմնոյ նորա և յոսկերաց նորա։ Վասն այսորիկ թողցէ այր զհայր իւր և զմայր իւր, և երթիցէ զհետ կնոջ իւրոյ, և եղիցին երկոքին 'ի մարմին մի։ Խորհուրդս այս մեծ է, բայց ես ասեմ ի Քրիստոս և յեկեղեցի։ Այլ և դուք նոյնպէս մի ըստ միոջէ, զի իւրաքանչիւր ոք զիւր կին այնպէս սիրեսցէ իբրև զիւր անձն, և կին երկնչիցէ յառնէ իւրմէ» (Գլ. Ե.)։*

*Այդ խորհրդի նշանակութիւնը և ազդեցութիւնը այնքան մեծ է համարում Պօղոս առաքեալը, որ իրաւունք է տալիս քրիստոնեայ ամուսնուն պսակուել, կամ իբրև ամուսիններ ապրել հեթանոս անձի հետ, ենթադրելով որ այդ խորհուրդը իւր շնորհքով հեթանոս ամուսնուն քրիստոնեայ կդարձնի, կամ թէ չդարձնի էլ, նրա զօրութեամբ անհաւատը սրբացած կլինի (Ա. Կորն. Է. 14)։ Առաքեալների աշակերտ ս. Իգնատիոսը (Աստուածակիր) + 115 թ.) քրիստոնեաներին տալիս է այսպիսի խրատ. «պսակուողներին հարկաւոր է ամուսնանալ եպիսկոպոսի գիտութեամբ, որպէս զի պսակը լինի Տիրոջով և ո՛չ ըստ ցանկութեամբ»։ Առաքեալ-*

ների յաջորդների ցանկութիւնն էր պսակների նշանակութիւնը, սրբացութիւնը ուժեղացնել անառակութեան և ամուսնալուծութեան դէմ կռուելու համար. հաւատացեալներից շատերը ըստ հին սովորութեան շարունակում էին ամուսնանալ առանց եկեղեցու գիտութեան և օրհնութեան։ Գ. դարու Հայրերից մէկը Տերտուղիանոս մի քահանայի ասում է, «Մեր մէջ ծածուկ պսակները վտանգի են ենթարկւում դատուելու շնութեան և անառակութեան հետ հաւասար»։ Սրա վկայութեամբ պսակը կատարւում էր այսպէս, ընդհանուր ժամերգութեան ժամանակ, երբ պատարագ անում վերջացնում էին, հաղորդւում էին բոլորը, 'ի միջի նոյն և պսակուողները և բոլորի ներկայութեամբ հանդիսաւոր կերպով ընդունում էին քահանայի օրհնութիւնը և համարւում էին ամուսնութեան մէջ մտած։ Բայց ընդհանուր սովորութիւն էր դարձած կանչել քահանային տուն և պսակը օրհնել տալ ձեռքը ձեռքի հետ միացնելով 'ի նշան ամուսնական կապի։ 'Ի հարկէ քահանան պիտի ուշ դարձնէր որ չհասական արգելք չլինէր, որը այն ժամանակ կայանում էր դեռ ևս մովսիսական ամուսնական կանոնների պահպանման մէջ և երբ այդպիսի արգելք տեսնէր, պիտի չօրհնէր։ Մովսէսի օրէնքներով չհասութիւնը սահմանափակւում է երեք աստիճանի մէջ, չորրորդ աստիճանը կարող է պսակուել։ Պօլսոյ 381 թուի մասնաւոր ժողովում Աղէքսանդրիայի արքեպիսկոպոս Տեմոթէոսին հարցնում են. «Եթէ կղերից մէկը կանչուի մէկի տուն պսակը օրհնելու համար և այնտեղից լսի որ անկանոն է, կամ չհաս է, պիտի՞ նա պսակը կատարի թէ ոչ»։ Նա պատասխանեց, 'ի հարկէ չպիտի օրհնի պսակը, պիտի թողնի դուրս գայ։ Նոյնը հաստատում է և Ոսկեբերանը, որը խօսելով աղմուկով գինեբրութեամբ արած պսակների վրայ, խրատում է որ պսակը և հարսանիքը հանդարտութեամբ կատարեն, «որ առաջուց քահանաներին կանչեն և նրանց աղօթքով և օրհնութեամբ հաստատեն ամուսնական համաձայնութիւնը»։ Եկեղեցական Հայրերի ջանքերը պսակը անշուշտ միայն եկեղե-

ցական օրհնութեամբ կատարելու գլուխ եկաւ իններորդ դարում, կայսերական հրամանի ուժով, մինչև Ց-րդ դար եկեղեցական պսակի հետ ընդունւում էր և քաղաքացիական պսակը։ 893-ին Լևոն իմաստասէր կայսրի 89 նովելլայով հրամայուեց ընդունելի համարել այն ամուսնութիւնները, որոնք եղել են եկեղեցական օրհնութեամբ և պսակով։ Իսկ ստրուկները իրաւունք չունէին պսակուել, այդ կանոնն վերացաւ միայն 1095 թուին Ալէքսէյ Կոմնենոս կայսեր ժամանակ, որը հրամայեց եկեղեցական պսակով թոյլ տալ նրանց ամուսնանալ։ Մինչև այս թւականները կային պսակներ, որոնք եկեղեցական չէին, բայց ընդունւում էին իբրև օրինական—քաղաքացիական պսակի մաքով, ինչպէս էր օրինակ և հեթանոսների պսակը, եթէ մարդ ու կին միասին քրիստոնեայ էին դառնում, նրանց նորից չէին պսակում, կամ եթէ ամբողջ ընտանիքը քրիստոնեայ էր դառնում, նրանց ընտանեկան կապը համարւում էր օրինական և նորից չէր ենթարկւում օրհնութեան ըստ Պօղոս առաքեալի պատուէրի։ Այս մաքով էլ մի քանի գրողներ մինչև իններորդ դար, կեղծ—Դիոնէսիոս Արիսպագացին, Յովհան Դամասկացին, Թէոդորոս Ստուդիտը պսակը միւս խորհուրդների հետ չէին դնում։ Պսակի օրհնութեամբ չէին ամուսնանում նոյնպէս երկակները (երկրորդ անգամ պսակուողները), որոնց օրհնութիւնը լինում էր ուսենիով կամ խաչն ու պսակը ուսերի վրայ դնելովը։

Հայոց մէջ Դ—դարուց արդէն վկայութիւն ունինք որ եկեղեցական պսակը ընդհանրացած և օրէնքի ույժ ստացած էր. Փաւստոս խօսելով Ներսէս մեծի արած կարգադրութիւնների և 'ի միջի այլոց պսակների վրայ, ասում է «ոչ ոք չէր համարձակւում նրա (ահից) հանել կամ թողնել իւր կինը բոլոր հայոց աշխարհում, որին (կնոջ) միանգամ քօղով կամ հարսանիքի պսակի օրհնութեամբ առել էր, և ոչ էլ համարձակուել պսակուել ուրիշի հետ»․ բայց երբ Արշակ թագաւորը Արշակաւանի պատճառով այդ կարգերը վերացրեց, այն ժամանակ մարդիկ, «թողնում էին, իրանց կա-

նանց. մարդ կար, որ տասն կնիկ էր առնում, բոլորը փչանալով ապականուեցին». 180 երես։ Ե. դարում Տաճապիվանի ժողովի կանոններին նայելով, արդէն խիստ կարգ կանոն էր սահմանուած ոչ միայն պսակի մասին, այլ և պսակից առաջ յարաբերութիւն չունենալու վերաբերմամբ, տուգանագրամով, ծեծով պատժւում էր պսակից առաջ յարաբերութիւն ունեցողը և ենթարկւում էր ոչ կոյսերի պսակին, այլ երկակների (երկրորդ անգամ պսակուողների)։ Ս. Գ. 331 երես)։ Իսկ չհաս պսակ անող եպիսկոպոսը նոյն կանոններով մինչև անգամ ենթարկւում էր կարգալուծութեան և տուգանագրամոց (Ս. Գ. 334)։

## Բ.) ԵՐԿԱԿՆԵՐԻ ՊՍԱԿ (ԵՐԿՐՈՐԴ ԱՆԳԱՄ ՊՍԱԿ)

Երկրորդ պսակի համար Պօղոս առաքեալը ասում է, «որովհետև ես կամենում եմ որ իւրաքանչիւր մարդ ինձ նման լինէր (ամուրի) . . . . . ամուրիներին և այրիներին ասում եմ, լաւ կլինի, որ նրանք ինձ նման կենան. եթէ համբերութիւն չունենան, թող պսակուեն, որովհետև աւելի լաւ է ամուսնանալ քան թէ ջեռնուլ» Ա. Կորն. է. գլ.։ Նոյն առաքեալը Հռոմայեցոց թղթում գրում է. «Քանի որ կնոջ մարդը կենդանի է, նա օրէնքով կապուած է, իսկ եթէ մարդը մեռնի, նա ազատ է . . . . . » Է. գլ.։ Առաքեալը թոյլ է տալիս երկրորդ պսակը, բայց ողջախոհութեան կանոններին համապատասխան է համարում երկրորդ անգամ չպսակուելը քան ամուսնանալը։ Այդ հիմամբ էլ պահանջում է որ եպիսկոպոս թէ քահանայ մի անգամ պսակուած լինին (Ա. Տիմ. Գ.,—Տիտ. Ա.), արգելելով երկակներին մտնել հոգևորականութեան մէջ։ Այդ հիմամբ Ս. Առ. 17 կանոնը որոշեց գրականապէս. «Ով մկրտութիւնից յետոյ երկու անգամ պսակով կապուած լինի, կամ հարճ ունենայ, նա չի կարող եպիսկոպոս, երէց, սարկաւագ և քահանայական կարգի անդամ լինել», Ս. Գ. 93.։ Արտաքին տեղական ժողովները քահանաներին արգելեցին ներկայ լինել երկապսակների հարսանիքին, (Ս. Գ. 198), իսկ միւս

կանոնն նրանց ենթարկում է ապաշխարանքի (Ա. Գ. 217)։ Մինչև 9-րդ դարը երկպսակների ամուսնութիւնը լինում էր կամ եկեղեցու օրհնութեամբ կամ առանց օրհնութեամբ, քաղաքացիական կարգով, 9-րդ դարու կայսերական հրամանից յետոյ եղաւ վերջնականապէս եկեղեցու օրհնութեամբ։ Երկրորդ պսակը իսկապէս համարւում էր օրհնանք, այն էլ ուռի ծառի ոստի օրհնութեամբ իսկական պսակից զանազանելու համար։ Յունա—հռոմէական օրէնքները թոյլատրում էին երկրորդ պսակը առաջինից գոնէ մի տարի յետոյ և կալուածական մի քանի սահմանափակումներով։ Մեր շահապիվանի 7-րդ կանոնը ասում է, եթէ պսակից առաջ՝ աղջիկը ու տղան յարաբերութիւն կունենան, «այն ժամանակ նրանց պսակը օրհնեն իբրև երկակի՝ ուռը խաչակնքեն և գլխին դնեն, իսկ եթէ կոյս են մնացել, օրինաւոր պսակ անեն». Ա. Գ. 331 երես։ Նոյնպէս և նոյն ժողովի 3-րդ կանոնը հրամայում է որ մեղանչած կոյսի պսակը պիտի լինի երկակի պսակ և ոչ օրինաւոր, «միայն խաչակնքելով». Ա. Գ. 326։ «իսկ եթէ մէկը կուսան է, միւսը պոռնկութիւն արած, կուսանի պսակը օրհնուի օրինաւոր կերպով, իսկ միւսինը իբրև երկակի, այսինքն խաչակնքել ուռը և դնել գլխին իբրև նշան թշնամու յաղթութեան»։ Դուինի ժողովի կանոններում աւելի մեղմացած են այդ կանոնները. «Չպէտք է կոյսերին այրիների հետ և ոչ այրիներին կոյսերի հետ ամուսնացնել, որովհետև համեմատ չեն» Ա. Գ. 384։ Յետին դարերում երկրորդ պսակը սկսուեց օրհնուել առաջին պսակի նման և ապաշխարանքի ենթարկելը վերացաւ։ Տես Ա. Գ. 115 երես, 16-րդ կանոն.

### Բ) ԵՐՐՈՐԴ ՊՍԱԿ (ԵՌԱՄՈՒՍՆՈՒԹԻՒՆ).

Բարսեղ Կեսարացին ասում է. «Եռամուսնութեան համար օրէնք չկայ, եռամուսնութիւնը օրէնքով չի թոյլատրւում։ Այդպիսի գործողութեան վրայ նայում ենք ինչպէս անմաքրութեան վրայ եկեղեցու մէջ, բայց հասարակական դատապարտութեան չենք ենթարկում» Ա. Գ. 244։ 4-րդ

կանոնով նոյն անձը եւապսակներին ենթարկում է 5 տարուայ ապաշխարանքի, համարելով երրորդ և չորրորդ պսակները բազմակնութիւն կամ անառակութիւն. «Եւ այսպիսի ամուսնական կապը համարում են ոչ պսակ, այլ բազմակնութիւն կամ անառակութիւն: . . . . .

Մենք հետեւելով ոչ կանոնին, այլ մեր նախորդների օրինակին, եւապսակներին 5 տարուայ ապաշխարանքի ենք ենթարկում» Ա. Գ. 238 երես: Ութերորդ դարու մեր ժողովի 13-րդ կանոնը ասում է շատ խիստ կերպով. «Եռակների ամուսնութիւնը խառնակութիւն և պղծագործ շնութիւն, անքաւելի յանցանք է, դրանք եթէ կամենում են մեղքերը քաւել, նախ՝ թող բաժանուեն միմեանցից և ապաշխարեն, իսկ նրանց միացնող քահանան թող կարգալոյծ լինի և նզովուի «Ա. Գ. 431: Կանոններս իւրեանց խստութեամբ չգործադրուեցին, կեանքը ստիպեց նրանց կազմողներին հաշտուել իրականութեան հետ:

## Գ) ՉՈՐՐՈՐԴ ՊՍԱԿ (ՔԱՌԱՄՈՒՍՆՈՒԹԻՒՆ)

Բարսեղ Կեսարացին ասում է. «Հայրերը լռել են, բազմամուսնութեան մասին ոչինչ չեն ասել իբրև անասնական և մարդկային ցեղին չվերաբերող գործ. այս յանցանքը անառակութիւնից ծանր եմ համարում, դրա համար այդպիսի մարդուն պիտի ապաշխարել տալ այսպէս մի տարի լացողների, 3 տարի ներսի ունկնդիրների հետ և ապա ընդունել եկեղեցի հաւատացեալների հետ»: Ա. Գ. 248:

Նէոկեսարիայի կանոնը ասում է. «բազմամուսնութեան մէջ ընկնող մարդկանց ապաշխարութեան ժամանակը յայտնի է. բայց և այնպէս նրանց հաւատը և զղջումը կարճացնում են ժամանակը» Ա. Գ. 197: Այս կանոնները իրանց խստութեան հետ միասին չեն լուծում պսակը, հապա միայն ապաշխարանք են նշանակում: Յուստինիանոսը վճռապէս չէ պահանջում այդպիսի պսակների լուծումն. բայց Վասիլ Մակեդոնացին խստութեամբ արգելեց, լուծել տուեց պսակները և որդիներին չընդունեց իբրև օրինաւոր ժա-

ռանգ, նաև պատժի ենթարկեց իբրև անառակութեան մէջ բռնուածներ։ Ժ—դարուց յունաց մէջ արգելուեց չորրորդ պսակը։ Ներսէս Ե. Հրաման տուեց Կոստրիաներին թոյլ տալ չորրորդ և հինգերորդ պսակները նախօրէն իմանալով պսակուողի ծայրայեղ դրութիւնը և անճար վիճակը, տես Ա. Գ. 613 երես։

## ՊՍԱԿԻ ԿԱՏԱՐՈՒՄՆ

Պսակը երկու գործողութիւնից է բաղկացած, նշանադրութիւնից և պսակուելուց.

### Գ) ՆՇԱՆԱԳՐՈՒԹԻՒՆ.

Նշանադրութիւն ասելով հասկացւում է պսակուելուց առաջ երկու կողմի համաձայնութեամբ կայացրած վճիռը, որով յայտարարւում է մի որև է աղջիկ նշանած մի տղայի։ Այս սովորութիւնը շատ հին է, նախաքրիստոնէական նոյնիսկ։ Ժողովրդական սովորութեամբ դեռ օրօրոցում եղած միջոցին, ծնողները խօսք էին տալիս խնամի դառնալու, մինչև իսկ «օրօրոց էին խազում» 'ի նշան այդ խօսքի. փոքրները մեծանալուց յետոյ հարսանիքից առաջ նշանը օրհնում էին և երկրորդ անգամ, եկեղեցու միջամտութեամբ հարսնացուի և փեսացուի ապագայի ամուսնական շաղկապը ամրապնդում։ Կամ պսակից փոքր ժամանակ առաջ, երբ տղայ ու աղջիկ հարսնախօսների միջոցով կամ ուղղակի խնամիների համաձայնութեամբ նշանդրէքի օր էին նշանակում, բերում էին մատանի կամ օղակ տղայի տունը, քահանան կարդում էր սահմանած օրհնութիւնը և նշանադրութիւնը համարւում էր կայացած։ Օրհնութեամբ եղած նշանադրութիւնից յետոյ լինում են դէպքեր նշանը յետ տալու, երբ որև է թիւրիմացութիւն է տեղի ունենում երկու կողմի մէջ, այդ դէպքում դժուարութիւններ են առաջանում թէ ծախքերի վերաբերմամբ թէ քահանայի կողմից նշանի օրհնութիւնը դժուարութեամբ քանդելու նկատմամբ։ Անկիւրեայի ժողովի 11-րդ կանոնը սահմանում է, որ եթէ

նշանուած աղջիկը առևանգւում է, և մինչև իսկ լլկւում, ձէլի պիտի գնայ նախկին նշանածին. Ա. Գ. ;87). կանոնս շատ խիստ է, դժուար գործադրուող: Բարսեղի 22 կանոնը (Ա. Գ. 241) աւելի ազատ է սահման որոշում, իրաւունքը յանձնելով փախցրուած աղջկան և ծնողներին Լևոն իմաստասէրի օրէնքով (74 նովել.) եկեղեցական նշանադրութիւնը կարելի էր կատարել ոչ վաղ քան թէ եկեղեցական չափահասութեան հասնելը այն է՝ տղայի համար 13 և 15 տարի, աղջկայ համար 9 տարի: Նոյնը հաստատեց Ալէքսի Կոմնենոս կայսրը 1054 թ. բացատրելով որ եկեղեցական նշանադրութիւնը որ աղօթքով և օրհնութեամբ է եղած, պէտք է ընդունուի հաւասարազօր պսակին և անքակտելի: Իսկ փոքրահասակ ժամանակ եղած նշանադրութիւնը ընդունել իբրև քաղաքացիական խոստում պսակուելու, որի խախտումը կախուած չէ եկեղեցական որև է արարողութեան հետ, կցելով որ եկեղեցական օրհնութեամբ նշանադրութիւնը քակտել կարելի է այն կարգով, ինչ կարգով որ պսակն է լուծւում: Յունաց եկեղեցին հետևելով կայսերական կարգադրութեան, համարեա նոյնութեամբ ընդունեց նշանադրութեան համազօրութիւնը պսակի հետ, մինչև իսկ նշանուած անձի յետ դառնալը և ուրիշի հետ ամուսնանալը համարել երկրորդ պսակ: Պետրոս մեծը յունական օրէնքները նշանադրութեան վերաբերմամբ փոփոխեց, նշանակելով 6 շաբաթ ժամանակ պսակից առաջ և ազատութիւն տալով նրանց պսակուելու կամ ոչ:

Մեր կանոններում որոշ հրահանգներ չկան այդ մասին, Ս. Սահակ պատուիրում է նշան դնել նշանուածների հաւանութեամբ և համաձայնութեամբ. Գէորգ—Գ. աւելի խստացրեց այդ կանոնները. պատուիրելով նշանադրութիւնը քանդելու համար դիմել առաջնորդին կամ յաջորդին և նուէր ստանալուց յետոյ յօգուտ բարեգործական հաստատութեան իրաւունք տալ քանդելու (Ա. Գ. 637): Բայց ընդհանրապէս տիրապետող սովորութիւն է, եթէ երկու կողմից հաշտուել են ծախքի համար և գանգատներ չեն ներ-

կայացնում, նշանադրութիւնը խախտուած է համարւում առանց հոգևոր իշխանութեան մասնակցութեան։

## Ե) ՊՍԱԿԱԴՐՈՒԹԻՒՆ (Церк. пр. Суворова)

Պսակադրութիւնը կատարում է քահանան եկեղեցու մէջ այն ժամանակ, երբ չի գտնում որևէ մի արգելք այդ խորհուրդը կատարելու եկեղեցու կանոնների համաձայն։ Պսակը իրաւունք ունի կատարելու քահանան. ա. եթէ հարսն ու փեսան փոխադարձաբար հաւանում են միմեանց և սիրում, և երկուսն էլ բոլորի՝ քահանայի ներկայութեամբ այդ բանը հաստատում են. բ. եթէ երկուսի ծնողները նոյնպէս ընդունում են և նրանց կամքի հակառակ չէ. գ. եթէ երկուսի տարիքն էլ հասած է և երկուսն էլ չափահաս են եկեղեցական կանոնների հիման վրայ. դ. եթէ պսակի կատարման մէջ որևէ կողմից բռնութիւն, խաբէութիւն չկայ։ ե. Եթէ երկուսից մէկն կապուած չէ երրորդի հետ պսակով, ուրիշ խօսքով՝ պսակուողներից մէկի ամուսինը կենդանի չէ և պսակը լուծուած չէ. զ. եթէ պսակուողները կուսակրօն և փեսան քահանայ և սարկաւագ չէ։ է. Եթէ պսակը կատարւում է թոյլատրուած օրերում. ը. դաւանական կամ կրօնական արգելք եթէ չկայ։ թ. Եթէ չկայ ազգակցական, խնամէական և կնքահայրական չհասութիւն ա. բ. պսակուող անձանց և ծնողների փոխադարձ համաձայնութիւնը անհրաժեշտ պայմանն է պսակադրութեան. Բասսեղի 38 կանոնով (Ա. Գ. 243) առանց հօր կամքի մարդի գնացած աղջիկը պոռնկութիւն արած է համարւում. եթէ հօր հետ հաշտուի, երեք տարի պիտի ապաշխարի, որ հաղորդուելու իրաւունք ստանայ։ Շահապիվանի 7-րդ կանոնը ասում է եթէ քահանան առանց ծնողների կամքի գաղտնի պսակ տրաւ, զրկուի քահանայութիւնից և տուգանուի (Ա. Գ. 331)։ Ծնողների և պսակուողների փոխադարձ համաձայնութեան մասին սաստում են Ս. Սահակի և Շնորհալու կանոնները, «ոչ ոք չհամարձակի տղայի և աղջկայ կամքի հակառակ պսակ անել, այդպիսի

պսակը անհաստատ է և լուծանելի. և պսակադիրը՝ եթէ բանութիւնից մինչև անգամ ստիպուած արած լինի պսակը, էլի կպատժուի։ (Ա. Գ. 579)։ Բարսեղը աւելի խիստ որոշում է տալիս ակամայ պսակի վերաբերմամբ. «ակամայ պսակը անառակութիւն է» (244 Ա. Գ)։ Յունա—հռոմէական կանոններով 1) հայրը կարողէր ստիպել որդուն պսակուել, եթէ վերջինս անառակ կեանք էր վարում. 2) աղջիկը կարող է հակառակել հօր կամքին, եթէ նրան անբարոյական տղայի էին կամենում տալ. 3) եթէ ծնողները առանց յարգելի պատճառի չէին կամենում ամուսնացնել իրանց որդոց, սրանք կարող էին դիմել քաղաքացիական իշխանութեան միջնորդութեան։ Ստրուկները առանց տիրոջ ցուցման իրաւունք չունէին նշանած ընտրել։ Զինուորականները առանց իրանց մեծի իրաւունքի չէին կարող պսակուել։ գ. Պսակուողները պիտի լինին չափահաս. Նախորդ դարերի եկեղեցական կանոններում ասում է ընդհանուր բառ, որ հարսն ու փեսան լինեն չափահաս, բայց ո՞ր տարիքն է համարւում չափահաս, անորոշ էր, մինչև Յուստինիանոս կայսեր հրամանը, որով որոշուեց չափահաս համարել 14 տարեկան տղային և 12 տարեկան աղջկան. Լևոն Իսաւրացին որոշեց 15 տարի տղայի և 13 տարի աղջկայ համար։ Նոյն կանոնները մտան և Ռուսաց եկեղեցու մէջ. նոյն կանոններով օգտուեցին և հայոց հայրապետները։ Ներսէս Շնորհալին սահմանեց տղայի համար 15 և աղջկայ համար 12. «Անմեղ տղաներին ժառանգութեան և կամ այլ պատճառով չպիտի պսակել, այլ հասակն առածներին, եթէ տղան 15-ը լրացած և աղջիկը 12-ը լրացրած կամ էլ աւելի հասակում, որպէս զի գիտակցաբար լինի նրանց ամուսնութիւնը և ոչ անգիտութեամբ» Ա. Գ. 578 երես։ Աւելի հին կանոն ունենք, այն է Ս. Սահակինը, որ ասում է. «Դուք էլ քահանաներ, անչափահասներին մի՛ պսակէք մինչև չհասնեն, միմեանց չհաւանեն, քննեցէք տեսէք նշանածները միմեանց ընդունում ե՞ն, եթէ ծնողների բռնադատութեամբ է, մի՛ պսակէք» (Ա. Գ. 579 երես)։ Զ. դարի Դուինի ժողովի կանոնն ասում է, «տղայոց պսակը չհամարձակուեն օրհնել և

ոչ էլ չափահասներինը առանց միմեանց տեսնելու . . . . . այսպիսի պսակը կորուստ է ժողովրդի համար» Ս. Գ. 383։ Ներսէս Ե. սահմանեց տղայոց համար 16 տարեկանը, աղջկանց համար 13-ը լրացած։ Սսի 13-րդ դարու ժողովի 7-րդ կանոնը Շնորհալու սահմանածը աւելի մեղմացրեց «փեսան ոչ պակաս քան տասնեւչորս տարեկանը և հարսն քան տասներկուսը» (Ս. Գ. 453)։ Ռուսաց պետական օրէնքը կովկասցիների համար որոշեց տղայի համար 15 և աղջկայ համար 13-ը լրացած։

դ. Պսակը պիտի կատարուի առանց բռնութեան և խաբէութեան։ Բռնի պսակը կարող է լինել ծնողների, բարեկամների և խնամակալների կողմից զանազան պատճառներով, կարող է լինել փեսայի կողմից, կարող է լինել առեւանգութեամբ, երբ աղջկայ կամքի հակառակ կամ նրա կամքով է լինում։ Խաբէութեամբ պսակ լինում է, երբ փեսան աղջիկը չեն լինում այն անձինք, որոնք պիտի լինէին. օրինակ, տղային ցոյց են տալիս աղջիկը, և պսակի ժամանակ տանում են եկեղեցի նրա տեղ քոյրը, կամ փեսայի փոխարէն պսակելուս տանում են ուրիշ մարդ. խաբէութեամբ պսակ կլինի, եթէ աղջիկը կուսութիւնը խախտած լինի նախ քան պսակը ոչ իւր նշանածի յարաբերութեամբ։ «Ակամայ պսակը պոռնկութիւն է» ասում է Բարսեղ և օրինաւոր է համարւում փոխադարձ համաձայնելուց յետոյ։ Առեւանգութեան համար պատժի են ենթարկում թէ պսակողները և թէ օգնողները. իսկ «եթէ առեւանգութիւնը կատարուել է առանց բռնութեան, առանց գողութեան. և առանց մեղանչման, պատիժ չի նշանակւում». Ս. Գ. 243։ Շահապիվանի ժողովի 7-րդ կանոնը բռնութեամբ և անիրաւութեամբ արած առեւանգութեան համար ենթարկում է տուգանքի յօգուտ բարեգործական հաստատութիւնների, թէ օգնողներին, և թէ պսակողներին կամ փեսային. զաղտնի պսակող քահանային էլ զրկում է քահանայութիւնից. (Ս. Գ. 331)։ Վերոյիշեալ բոլոր դէպքերում եթէ հարս ու փեսայի կողմից ոչ մի թիւրիմացութիւն տեղի չի ունենալ

այդպիսի ձևով պսակուելուց յետոյ և ոչ մի գանգատ չի հետևիլ, այն ժամանակ ոչ մի արգելք չի լինիլ պսակը համարել օրինաւոր, (Տես Լուսաւորչի 9 կան. Ա. Գ. 507 երես)։

ե. Պէտք է պսակուող անձինքներից ոչ մէկը կապուած չլինի ուրիշի հետ չլուծուած պսակով։ Այս կանոնը բղխում է Յիսուսի, առաքեալների արձակած պատուէրից, եկեղեցական կանոնների սահմանումներից. որով որոշւում է՝ պսակը լուծել սրանկութեան և այլ թոյլատրելի պատճառներով, եթէ պսակը չի լուծուած, այն դէպքում ամուսինները համարւում են կապուած եկեղեցական լծով միմեանց հետ, որոնց նոր ամուսնութիւնը խախտւում է օրէնքով և ենթարկւում հալածանքի, իսկ քահանան կարգալոյծ է անւում եթէ գիտութեամբ է պսակել։ Քահանան պիտի պահանջի օտար, անծանօթ մարդու ծխական քահանայից յայտարարութիւն, և հաստատ իմանալուց յետոյ յօժարանալ պսակել։ Հին կանոններով պսակը լուծւում էր միմեայն կնոջ անառակութեան պատճառով, այսպիսի դէպքում պսակը լուծուելուց յետոյ կինը իրաւունք չունէր մարդու գնալու իբրև մեղաւոր կողմն. ուրիշ դէպքերում մեղաւոր կողմն իրաւունք չունի պսակուելու նորից, նախկինի լուծուելուց յետոյ։

զ. Պսակուողները չպիտի ունենան արգելառիթ հոգևոր աստիճան, թէ կուսակրօն թէ աշխարհիկ։ Առաք. 26 կանոնը (Ա. Գ. 96 երես) ասում է. «կուսակրօն հոգևորականութեան մէջ մտածներից ամուսնանալ կարող են միմեայն գրակարդացները և սաղմոսերգուները»։ Անկիւրիայի 19-րդ կանոնը (Ա. Գ. 189) ասում է «Չպսակուելու ուխտ անողը և ուխտ խախտողը կենթարկուի երկապսակների ապաշխարանքին». Նոյն ժողովի 10-րդ կանոնը ասում է, «սարկաւագները ձեռնադրութեան ժամանակ եթէ կյայտնեն, որ պսակուելու ցանկութիւն ունին, կարող են ձեռնադրութիւնից յետոյ պսակուել և ծառայութեան մէջ մնալ, եթէ եպիսկոպոսը կթոյլատրի։ Իսկ եթէ ձեռնադրելիս կլռեն, կխոստանան ամուրի մնալ, բայց յետոյ կամուսնանան, այդպիսի-

*ները պիտի դադարեն սարկաւագութիւն անելուց». կանոնս բոլորովին մերժ է վարւում և աւելի թեթևացնում ձեռնադրութիւնից յետոյ պսակուելու խնդիրը: Բարսեղ մեծը խիստ է ընդհանրապէս և մասնաւորապէս այս դէպքում. «Աստուծուն նուիրուած կոյսերի անառակութիւնը պսակով չպիտի միաւորել, այլ բոլորովին պէտք է լուծել նրանց ապօրինի կապը, եկեղեցու հաստատութեան համար այդ է օգտաւէտ համարւում»: «Մեղանչող սարկաւագը կարգալոյծ է լինում և աշխարհական դառնում, բայց եկեղեցուց չի մերժւում»* - (Ա. Գ. 238 *երես*): *«Ուխտական մարդիկ ասելով հասկանում ենք վանականները, որոնք կուսակրօն կեանք վարել են ցանկանում: Նրանցից պարզ և որոշ խոստում պիտի առնել միշտ կուսակրօն մնալու, ով կմեղանչի՝ անառակների պատժին կենթարկուի»: Բարսեղը* 60 *կանոնով նոյն մտքով է արտայայտում իւր հայեացքները. «Կոյս լինելու խոստում անողը եթէ երդմնազանց լինի, շնացողի ապաշխարանքին ենթարկուի, նոյն պատժին ենթարկուին կուսակրօնութեան խոստում տուողները»* (Ա. Գ. 246): *Մեր կանոններում նոյն միտքն է արտայայտում. «կրօնաւորը եթէ կամաւոր ուխտած է և ո՛չ հարկից ստիպուած, և եթէ կամենայ ամուսնանալ, նա իւր քահանայական կարգը ուրացող կհամարուի»* (Ա. Գ. 482): *Լուսաւորչի կանոնը ասում է. «Քահանան եթէ կին առնի,* 9 *տարի ապաշխարի և ապա հաղորդուի»* Ա. Գ. 505 *երես: «Կոյսը, միայնակեացը (մոնոզոն) եթէ նուիրում են իրանց Աստուծուն, չհամարձակեն ամուսնանալ, ամուսնացողները հաղորդութիւնից մերժուեն, նրանց ընդունելութիւնը կախուած լինի եպիսկոպոսի մարդասիրութիւնից»* — (Ա. Գ. 509): *Մեր կանոնների դրամադրութիւնից երևում է որ հոգևոր աստիճանի մէջ եղածները կիսասարկաւագութիւնից սկսած դէպի բարձր իրաւունք չունին պսակուելու. բ. այդ աստիճանում եղած ժամանակ եթէ կամուսնանան, կզրկուին իրանց կարգից և աստիճանից և կենթարկուին եկեղեցական ապաշխարանաց. գ. եթէ նրանք եկեղեցական ատենական վճռով զրկուած*

են կարգից, իբրև աշխարհական կարող են ամուսնանալ։

է. Պսակը պիտի կատարի քահանան ժողովադրուած օրերում։ Մեր կանոններով պսակը պիտի կատարել առաւօտները մինչև ճաշ, որ պատարագից յետոյ հնար ունենան հարսն ու փեսան հաղորդուելու կամ պատարագի ժամանակ հաղորդութեան միջոցին սրբութիւն առնելու։ Ներսէս Շնորհալին սահմանել է. «Քահանան պսակ պիտի անի առաւօտից մինչև ճաշը։ Խմած մարդուն եկեղեցի թողնել չի կարելի, նոյնպէս և անառակ կանանց, որ պսակի օրհնութիւնը չաղտեղեն։ Գուսանները նոյն միջոցին չերգեն։ Բուն բարեկենդանից մինչև զատիկ, զատկից էլ մինչև Պենտեկոստէն և բոլոր կիւրակի օրերը պսակ անել չի կարելի»։ Ս. Գ. 579 երես։ Առաքելական 52 կանոնը նոյնպէս և 53-ը սահմանել էին. «Քառասնորդական պասին պսակ անել կամ ծնունդը տօնել չի կարելի»։ «Քրիստոնեան պսակ գնալու ժամանակ չպիտի ձիարշաւ դուրս գայ, պարի, այլ գիշերը պիտի հանգիստ անց կացնի». (Ս. Գ. 225 երես)։ Դուինի ժողովի 5-րդ կանոնն նոյնպէս սահմանում է. «Չէ արժան քառասնորդական պասին, զատկին, մինչև պենդեկոստէն հարսանիք անել . . . որովհետև ամեն օր կիւրակի է, և միշտ կատարւում է աստուածային խորհուրդը.» (Ս. Գ. 410)։ Նոյն ժողովի 3-րդ կանոնը պսակը անվաւեր է համարում և պսակադիր քահանային պատժում է, եթէ ճրագալոյցի օրը պսակ է կատարւում (Ս. Գ. 409)։ Նոյն ժողովը պահանջում է, պսակ անել առանց խմելու, արբենալու, այլ միշտ աղօթքով և խորհրդաւորութեամբ։ Ներսէս Ե.—ի կանոնը. «պսակ չանել՝ 1) բուն բարեկենդանից մինչև հոգեգալստեան առաջի յարութեան կիրակին. 2) կիւրակի օրերը. 3) տէրունական տօների պահոց օրերը, ութօրէի՝ զկնի ծննդեան և նաւակատեաց. իսկ մնացած օրերը անխտիր կատարել պսակի խորհուրդը» (Ս. Գ. 614)։ Քահանան պսակ չպիտի անի՝ ուրեմն. ա) բոլոր կիրակի օրերը. 2) Ուրբաթ և չորեքշաբթի և բոլոր պաս օրերը. 3) 5 նաւակատիքների պաս շաբաթներից յետոյ՝ եկող ութ օրերը.

4) Մեծ պաս և ծննդեան պաս իւր ուխծօրէիցով. 5) զատկից մինչև հոգեգալստեան յաջորդող առաջի կիրակին։ Թէ օրուայ որ ժամին է լինում այժմ. այդ կարգը հնի հակառակ կատարւում է այժմեայ սովորութեամբ, ոչ մինչև ճաշ, այլ երեկոյեան, պասկը կատարւում է մինչև երեկոյեան ժամի տասը։

ը. Պսակը կատարւում է, եթէ դաւանական և կրօնական արգելք չկայ։ Այս մասին ունինք Պօղոս առաքեալի պատուէրը, որով անխտիր՝ թոյլ է տալիս քրիստոնեային ամուսնանալ հրէայի՝ հեթանոսի հետ, առանց վերջիններիցս կրօնափոխութիւն պահանջելու, այն յուսով որ քրիստոնեայ ամուսինը իւր անարատութեամբ և մաքրակրօն լինելովը բարոյապէս կճնշի ոչ քրիստոնեայ ամուսնուն քրիստոնեայ դառնալու։ «Բայց ուրիշներին ես եմ պատուիրում և ոչ Տէրը. եթէ եղբայրներից մէկը անհաւատ կին ունենայ և նրան հաճելի է բնակուել նրա հետ, թող չթողնի նրան, և կինը եթէ անհաւատ մարդ ունենայ և նրան կամք լինի ապրել նրա հետ, թող ապրի։ Որովհետև սուրբ է անհաւատ մարդը՝ կնոջով, և սուրբ է անհաւատ կինը՝ մարդով. ապա թէ ոչ ձեր որդիքը պիղծ են, իսկ այժմ սուրբ»։ (Ա. Կորն. Է. Գլ.)։ Եկեղեցին յետոյ նոյն շաւղով գնալը դըժուար համարեց, կանոնը աւելի խստացրեց և խափանեց հրէի և հեթանոսի հետ ամուսնանալ։ Լաւոդ. 31 կանոնը որոշեց «հերետիկոսների հետ խնամութիւն անել այն դէպքում, երբ խոստանան քրիստոնեայ հաւատացեալ լինել» (Ա. Գ. 222)։ Մովսէս Կաղանկատուացին պատմում է Վրաց բաժանման մասին հայադաւանութիւնից և Աբրահամ կաթուղիկոսի բոլոր գործ դրած ջանքերի ապարդիւն անցնելու վերաբերմամբ, կցելով կաթուղիկոսի կոնդակը՝ արձակած Հայոց աշխարհին՝ արձանագրելով եղած վերջացած դէպքը և երևի թէ, երկնչելով դաւանափոխ վրացիների անելիք վատ ազդեցութիւնից հայոց վրայ, նզովում է նրանց, որոնք վրացիների հետ խնամութիւն, նոյն իսկ յարաբերութիւն կունենան։ «Ամենևին յարաբերութիւն չու-

նենալ նրանց հետ, ոչ աղօթքով, ոչ կերակրով, ո՛չ խմելիքով, ո՛չ բարեկամութեամբ, ոչ գայեկութեամբ, ոչ ուխտ գնալ Մցխեթայ խաչը, ոչ Մանգլիսայ խաչը, չընդունել նրանց մեր եկեղեցին և ամուսնութեամբ բոլորովին հեռանալ, միայն առևտուր նրանց հետ ինչպէս հրէաների հետ» (Մով. կաղանդ. 214 երես)։ Նոյնպիսի վերաբերմունք կար յոյների և ռուսների կողմից դէպի հայերը։ Մինչև ԺԷ-դարը Ռուսաց եպիսկոպոսները և միտրոպոլիտները այսպիսի երդումն էին ուտում. «Զթողնել իւր վիճակում որ ոչ մի ուղղափառ՝ Հայերի հետ հարսանիք չանի, նոյնը և Լատինների հետ. եթէ որև է քահանայ այդ անի, պիտի անմիջապէս իմ միտրոպոլիտիս յայտնեմ» (1424 Акт. Эксп. 1)։ Հայոց եկեղեցու կարգերը այս բանի վերաբերմամբ հետևեալ գործնականութիւնը ստացան. 1) Հայ քահանան կարող է պսակել հրէայի, հերետիկոսի, մահմետականի հայադաւանի հետ, եթե նրանք կմտնեն մկրտութեամբ հայոց եկեղեցու ծոցը. 2) հայադաւանին կարող է պսակել հայ քահանան քրիստոնեայ այլադաւանի հետ, երբ պսակը երկուստէք համաձայնութեամբ լինելու է հայոց եկեղեցում. 3) այս կանոնը բացառութիւն ունի Ռուսաստանում, յունադաւանների և հայերի վերաբերմամբ. ա) Ռուսաց օրէնքը պահանջում է որ հայադաւանի և յունադաւանի պսակը լինի ռուսաց եկեղեցում. բ) հայադաւանը ստորագրութիւն տայ, որ ծնուած որդիքը պիտի համարուեն ռուսադաւան։ Հայ քահանան թոյլադրուած պսակը անելիս վերոյիշեալ անձանց հետ, պիտի ղեկավարուի հայոց եկեղեցու օրէնքով պսակի արգելքների նկատմամբ, այն է՝ օտարները երկրորդ պսակով չկապուին, եթէ առաջի պսակը լուծուած չէ, կամ եթէ զրկուած են պսակուելու իրաւունքից, կամ նրանք հոգևորական են և չեն կարող պսակուել և այլն և այլն։

Թ. Պսակը կարող է տեղի ունենալ այն ժամանակ, երբ չկան ազգակցական, խնամական և կնքահայրական չհասական արգելքներ։

ա. Ազգակցական չհասութիւն. ազգ կամ ցեղ համարւում է մի որև է նախահօրից առաջացած արական և իգական արիւնակցական կապով միացած որդիքը, որոնք կոչւում են ազգականներ, արիւնակիցներ։ Նախկին բոլոր հին ազգերի մէջ ազգակցութիւնը պսակման խնդրում միշտ որոշ չհասական աստիճաններ ունէր, ազգակից լինելը աւելի պատուաւոր էր քան խնամի դառնալը։ Մովսէսից սկսած հրէաները որոշ օրէնքներ ունէին ազգակցական պսակների մասին. յունա—հռոմէական շրջանում որոշուեց կանոնաւոր կերպով ազգակցական պսակների հեռաւորութեան և մերձաւորութեան չափը, դրուեցին գծեր և աստիճաններ, որոնցով ամենադիւրին կերպով կարելի եղաւ չհասական աստիճաններ որոշել։

Աստիճան կամ պորտ անուանւում էր մէկի կապը միւս անձի հետ ծննդեամբ. աստիճանների կապը անընդհատ շարունակուող—գիծ (լինիա, օրդօ)։

Գիծը սկսւում է այն անձից, որից ծնւում է որդին, որանից էլ յաջորդող անձը և շարունակաբար գնում է ցած դէպի թոռներ ծոռներ, այս գիծը կոչւում է ստորագիծ, դէպի ցած գնացող գիծ։ Երբ հաշւում ենք ծոռնից սկսած դէպի վերև, հայրը, պապը, պապի պապը, այս գիծը կոչւում է վերագիծ, դէպի վերև գնացող գիծ։ Երբ հաշւում ենք ոչ ուղիղ գծով, այլ դէպի կողքերը գնացող ուղղութեամբ, դէպի եղբայրներ, քոյրեր, հօրեղբայրներ, հօրաքոյրեր, այն դէպքում ստանում կողագիծ, այսինքն կողքերը գնացող գիծ։ Առաջինի օրինակ. պապս, որդին, թոռը, ծոռը, թոռան թոռը, ծոռան ծոռը։ Երկրորդի օրը—ծոռը, ծոռան հայրը, ծոռան պապը, ծոռան պապի հայրը։ Երրորդի օրինակ հօրեղբօրս որդիքը, հօրաքրոջս աղջիկները, մօրաքրոջս թոռները։ Աստիճանները և մերձաւորութիւնը հաշւում են շատ դիւրին կերպով. ամեն մի ծնունդը համարւում է մի աստիճան կամ մի պորտ հօրից սկսած. օրինակ՝ որդին հօր վերաբերմամբ մի աստիճան է, թոռը պապի վերաբերմամբ երկրորդ աստիճան է, որովհետև երկրորդ

ծնունդն է։ Երկու եղբայր միմեանց նկատմամբ երկու աստիճան են, որովհետև երկու ծնունդ են, երկու պորտ են։

ա. Մարդ և կին չեն կազմում առանձին աստիճան, նրանք համարւում են մի մարմին, ուստի մարդ ու կին պիհաշուել միացած։

բ. Որդիքը՝ տղայ և աղջիկ դէպի ծնողները մի աստիճան են։

գ. Որդիքը՝ տղայ և աղջիկ դէպի միմեանց երկու աստիճան են։

դ. Մի հօր և խորթ մօր, կամ մի մօր և խորթ հօր որդիքը բոլորը համարւում են մի մօր, մի հօր, հարազատ աստիճանով պիտի հաշուել։

ե. Կանայք և մարդիք իբրև ծնունդներ հօր վերաբերմամբ միևնոյն կանոնին են ենթարկւում։ Օրինակ՝




1) Ա. Նախահայրն է, 2) Բ. և Ե. որդիք. 3) Գ. և Զ. թոռներ. 4) Դ. և Է. ծոռներ։ Ձախ կողմից՝ Բ-կազմում է դէպի հայրը՝ Ա.—մէկ աստիճան; Գ կազմում է դէպի Ա.-երկրորդ աստիճան; Դ կազմում է դէպի Ա. երրորդ աստիճան։ Աջ կողմից՝ Ե--կազմում է դէպի Ա.--մէկ աստիճան; Զ կազմում է դէպի Ա. երկրորդ աստիճան; Է--կազմում է դէպի Ա.--երրորդ աստիճան։ Ուրեմն երեք աստիճան ձախ կողմումն է, երեք աստիճան աջ, որ կանի բոլորը 6 աստիճան։ Որովհետև Բ. և Ե. երկու եղբայր են, կամ երկու քոյր, երկու ծնունդ են, դէպի միմեանց երկու աստիճան են; Գ. և Զ. թոռներ են, երկու ծնունդ իրանք են, երկու ծնունդ էլ իրանց հայրերը, կլինի 4 աստիճան;

Դ. և Ե. ծոռներ են, երկու իրանք են, 4 էլ նախորդները, բոլորը 6 աստիճան։

Վերոյիշեալ ճիւղագրութիւնը ազգակցական է, որի մէջ նախահայրը Ա. կազմում է վեց աստիճանով մեծ ընտանիք, որդիք, թոռներ, ծոռներ; տղայ թոռներով, աղջկայ թոռներով նա կազմում է հարազատ ազգ, արիւնակից մեծ ընտանիք, որ խառն չէ ուրիշ ընտանիքի հետ։

բ. Խնամական չհասութիւն. պսակի միջոցով յարաբերութեան մէջ են մտնում երկու օտար ընտանիք, որոնք միմեանց վերաբերմամբ կոչւում են խնամի. ստանում ենք երկու ցեղի բարեկամութիւն, երկցեղ խնամութիւն։ Խնամութիւնը կազմում է, 1) ամուսինը և կնոջ բարեկամները, 2) երկու ամուսինների երկու կողմերը. 3) մէկ ամուսնու և միւսի առաջին ամուսնութեան ստորագիծ ծնունդները (խորթ որդիք)։ 4) Փեսան դէպի հարսի բարեկամները այն աստիճանի մէջ է, ինչ աստիճանի մէջ որ գտնւում է հարսը դէպի իւր արիւնակիցները։ 5) Հարսը դէպի փեսայի արիւնակիցները գտնւում է այն աստիճանի մէջ, ինչ աստիճանում որ գտնւում է փեսան դէպի իւր ազգակիցները։ Այս երկու դէպքումն էլ հարսն ու փեսան մի մարմին՝ մի աստիճան են կազմում։ 6) Հարսն և փեսան ջոկ ջոկ աստիճաններ են կազմում եթէ երկու կողմի բարեկամների աստիճանները հաշւում ենք։ Աստիճանները հաշւում են միշտ ուղղահայեաց և թեք գծերով, մարդ ու կնոջ պսակը միացնում է հորիզոնական գծով (մ. —— կ.)։ Օրինակ՝




Ա. Բ. Գ. կազմում են մի ընտանիք, հայր և երկու որդիք. Դ. Ե. Զ. կազմում են մի ուրիշ ընտանիք մի հայրով և երկու որդով։ Երկու ընտանիքը ուզում են խնամի

դառնալ. Գ. առնում է Ե.—ին. Գ— տղայ է. Ե—աղջիկ. կստանանք այս.




Գ. և Ե. մարդ ու կին են, միացած հորիզոնական գծով: Ի՞նչպէս հաշուենք աստիճանները: Բ և Գ. եղբայր և քոյր են, ուրեմն երկու ծնունդ՝ երկու աստիճան են: Ե. և Զ. եղբայր և քոյր են, ուրեմն երկու ծնունդ՝ երկու աստիճան են: Երկու կողմն միասին կլինին 4 աստիճան: Իսկ եթէ այսպէս լինի




կունենանք երկու աստիճան, որովհետև և հարսը (Ե) փեսայի հետ մի է, փեսայի ազգականների հետ նոյն աստիճանում է, ինչ որ փեսան: Կամ թէ եթէ այսպէս լինի




, էլի կունենանք երկու աստիճան, որովհետև փեսան (Գ) հարսի հետ մի է, ուստի և հարսի ազգականների հետ այն աստիճանումն է. ինչ որ ինքն հարսը:

Իսկ եթէ հարսն ու փեսայի ազգականները հաշւում են, այն դէպքում հարսն և փեսան դառնում են ջոկ ջոկ աստիճաններ իրանց ազգի հետ (վերևի քաշածի պէս): Խնամական բարեկամները կոչւում են. աներ, զոնքանչ, փեսայ, հարսը, տալ, քենի, սկեսուր, սկեսրայր, պատրսն, տէգր, տէգրակին, աներձագ, խորթ հայր և մայր, խորթ տղայ և աղջիկ:

*Խորթութիւնը* մնում է թէ ազգակցութեան և թէ խնամութեան մէջ, նա կանգնած է երկուսի մէջ տեղը: Նրա աստիճանները պիտի հաշուել ընդհանուր կանոնով:

Օրինակ՝ Ա.— մարդն է; Բ—կինը. որդին է՝ Գ։ Ա.—մեռնում է; Բ—գնում է մարդու Դ—ին և տանում է հետը որդուն—Գ—ին։ Գ—կոչւում է եկվոր, բերովի տղայ, խորթ տղայ նոր հօր (Դ—ի) վերաբերմամբ։




Խորթ որդին (Գ.) նոր հօր վերաբերմամբ (Դ.) կազմում է մէկ աստիճան։ Գ. պսակուեց Ե—ի հետ. Ե—ի եղբայրը Զ—կլինի Գ—ի վերաբերութեամբ երրորդ աստիճանում. այստեղ




կայ երեք ցեղ, Դ—ի, Գ—ի, և Ե—ի ցեղը, որ կոչւում է եռացեղ խնամութիւն։

Պսակների աստիճանների մերձաւորութեան և հեռաւորութեան կարգը եկեղեցին վերցրեց Մովսիսական օրէնքից։ Մովսէս Ղևտացոց ԺԸ. գլխում սահմանեց, որ ոչ ոք իրաւունք չունենայ մօտենալ հօր, մօր, հօրը կնոջ (մօր), քրոջ թէ հարազատ թէ խորթ, որդու աղջկան, աղջկայ որդուն, հօրը կնոջ աղջկան, հօրաքրոջ, մօրաքրոջ, հօրեղբօր և սրա կնոջ, հարսին (որդու կնոջ), նորա տղայի աղջկան (ծոռան), եղբօր կնոջ, եղբօր աղջկան և թոռան, երկու քրոջ; ազգակցական մինչև չորրորդ աստիճանը և խնամական երկրորդ աստիճանը արգելեց Մովսէս։ Ա.—Առաք. 33 կանոնը (Ա. Գ. 80 երես) մատնացոյց արաւ Մովսէսի օրէնքը և հրամայեց կատարել։ Այնուհետև Նէօկեսարիայի 2 և Բարսեղի 23, 78 և 87 կանոնները Մովսէսի սահմանումները հաստատեցին։ Մեր մէջ առաջի վճիռը կայացրեց Ներսէս մեծ Աշտիշատի ժողովում, արգելելով մերձաւոր ազգակցութեամբ եղած պսակները, առանց որոշելու աստիճանները. Շահապիվանի 447-ի ժողովը երկրորդ անգամ սահմանեց ժողովական կանոնով հետևեալը. «ոչ ոք չհա-

մարձակի ամուսնանալ քեռորդու, եղբօրորդու կամ հօրաքրոջ, կամ ազգականի հետ մինչև չորրորդ ծնունդը»։ Այսպիսի պսակը անվաւեր է հրատարակում և պսակադիր թէ եպիսկոպոս թէ քահանայ կարգալոյծ լինում։ Է և Ը. դարերում չորրորդ աստիճանը խիստ արգելուեց. Մովսէս կաղանկատուացին 252 երեսում խօսելով Աղուանից իշխանի պսակը իւր թոռակցի հետ ասում է «Տէր-Միքայէլը մերժում էր նրան, թէ մի յանդգնիր անել, որովհետև թոռներ էք»։ Դուինի 771-ի ժողովը նոյն վճիռը կայացրեց, որ չորրորդ զարմը պսակել չի կարելի (Ա. Գ. 432)։ Նոյն ժամանակներում ընդհանուր եկեղեցու մէջ համարեա թէ նոյն կանոններն էին պահպանւում. Ամբրոսիոս Մեդիոլանցին խօսելով այդ բանի վրայ՝ թէ կարելի է արդեօք հօրը՝ պսակել որդուն, իւր խորթ թոռան հետ, աւելացնում է, որ առաջին դարերում պսակը արգելւում էր ոչ միայն ուղղագիծ ազգականների մէջ մինչև չորրորդ աստիճան, այլ և կողագծերով մինչև չորրորդ աստիճան։ Բարսեղը խօսելով նոյն արգելքների մասին, ասում է այս կարգերը մտել են աւանդաբար, գործադրուել են կեանքի մէջ և օրէնքի ույժ ստացել։ Օգոստինոս ասում է. «եղբօրորդիների մէջ մեր ժամանակ արդէն պսակը շատ հազիւ էր թոյլատրւում, ըստ սովորութեան և եղբայրական կապի մօտիկութեան պատճառով, թէ և դրա համար օրէնք չկայ, որովհետև Մովսէսի օրէնքը այդ չի արգելում, և քաղաքական օրէնքները դեռ չեն արգելել»։ (Обз пост. . . . Пр. Соб. 1858, 1859)։ Յունա—հռոմէական օրէնքներով ուղղագիծ ազգակցութեան մէջ պսակը անսահման կերպով արգելւում էր, օրինակ, հայրը՝ աղջկայ, թոռան, ծոռան, ծոռան ծոռան և այլն և այլն հետ. եկեղեցին էլ ընդունեց նոյնը։ Կողագիծ ազգականների համար քաղաքական օրէնքը արգելում էր մինչև 3 աստիճանը. իսկ եղբօրորդիների մէջ մինչև Թէոդոս պսակը արգելուած չէր, որը ոչ միայն արգելեց, այլ և մեծ պատիժ նշանակեց։ Թէոդոսի որդիքը և Յուստինիանոսը թոյլ տուեցին նոյնպէս պսակը։ Արևմտեան եկեղեցու

ժողովները արգելեցին պսակները Զ. դարում մինչև 5 աստիճան։ Է. դարում Տրուլլի ժողովը 54 կանոնով արգելեց խնամական 4 աստիճանի պսակը երկու եղբօր և երկու քրոջ մէջ, իսկ արիւնակցականը թողեց հին կարգով, եղբօր որդիների մասին ոչինչ չորոշելով։ Հռոմի եկեղեցին Է. դարում պսակ թոյլ էր տալիս 5 աստիճանում, բայց 3 և 4 աստիճանում եղածները չէր լուծում։ Թ. դարում Վասիլ Մակեդոնացու պրոխիրոնում և Լևոնի ու Կոստանդինի էկլօգում և Բազիլիկում մտցրուեց իբրև դրական օրէնք որ ոչ միայն եղբօրորդիքը չեն կարող պսակուել, այլ և նրանց որդիքը, միայն նրանց թոռները կարող են պսակուել (պրոխ. 7. 39. էկլոգա—12. Բազիլ. 28—տես Пр. соб. 1858—59)։ Անպայման արգելուեց վեց աստիճանի պսակը և թոյլադրուեց ութ աստիճանինը, իսկ 7 աստիճանի վերաբերմամբ որոշ ոչինչ չասուեց։ Այս մասին Թ. դարում Պօլսում վէճ ծագեց 7-րդի վերաբերմամբ, որի համար Ալէքսի կայսեր հրամանով Պօլսում ժողով եղաւ և որոշուեց, որ երբ պսակը 7—րդումն է, կամ մի կողմից 7, միւս կողմից 6 աստիճան է, դեռ ևս կատարեալ չէ, պսակել չի կարելի, երբ պսակը կատարուած է, չքանդել, այլ ապաշխարանքի ենթարկել (Кормч. 50 гл.)։ ԺԲ. դարում Ղուկաս պատրիարքի օրով 1168 թուին արգելուեց պսակը 7-րդ աստիճանում, պսակը լուծել և պսակադիր քահանային կարգալոյծ անելու սպառնալիքով. ժողովի վճիռը հաստատեցին Նիկիփոր և Մանուէլ կայսրները։

Խորթական չհասական աստիճանները չորս էին մինչև 9-րդ դարու վերջերը; Ժ-դարում սահմանուեց յունական եկեղեցում վեցերորդ աստիճան (Кормч. 50 гл.) որը հաստատուեց Միքայէլ պատրիարքի կազմած ժողովում 1057-թուին, 7-րդ աստիճանը թոյլադրելի համարելով, այս կարգադրութիւնը հաստատուեց քաղաքական օրէնքով։ Հայոց մէջ խորթութիւնը աւելի կապ ունի ազգակցականի քան խնամականի հետ. խորթութիւնը նայելով որակին, մի, երկու աստիճանով պիտի աւելի համարել քան իսկապէս է.

օրինակ. եթէ խորթական աստիճանները պարզ հաշուած 6-է, պէտք է համարել 7 և ոչ 6. խորթ ծոռները 6 աստիճանի են, խորթութիւնը մի աստիճան աւելացնում է և դարձնում 7. այնպէս որ խորթ ծոռները կարող են պսակուել։ Խորթութեան մէջ նշանակութիւն ունի միայն հայրականը, այսինքն երբ երկու հօրից են և մի մօրից որդիքը. իսկ եթէ երկու մօրից են և մի հօրից, այդպիսի խորթութիւնը հարազատների աստիճանով պիտի հաշուել։

Խնամական աստիճանները նոյն կարգով ընթացան յունական եկեղեցում, մինչև 8-րդ դարը 4-րդ աստիճանն էր, 997— 1001 թ. Պոլսոյ պատրիարք Սիսինի օրով արգելուեց մինչև վեցերորդը, որոշուեց 6-րդը թոյլադրել, 7-րդ ոչ; ժա. դարում թէ յունական եկեղեցին և թէ քաղաքական իշխանութիւնը փոփոխակի կերպով 6 և 7 աստիճանի պսակները թոյլադրում, երբեմն արգելում էին, բայց սովորաբար 6-րդ թոյլադրւում էր։ Մեր եկեղեցին հետևում էր ընդհանուր եկեղեցու քայլերին. մեր մէջ 7 և 8-րդ դարերում ինչպէս ասացինք չորրորդ աստիճանը արգելւում էր։ Շնորհալին (1166—1173 թ.) որոշեց որ երկու կողմից չորս չորս աստիճանը լրանայ և ապա 9 և 10 աստիճաններում պսակ լինի, որովհետև ասում է, մարմնի բնութիւնը չորս տարերքից է բաղկացած, երկու եղբայրները կէս են անում հօր արիւնը, թոռները հայրերի արեան կէսը են ընդունում, ծոռները նրանց կէսը, իսկ վերջին ծնունդները արեան չորրորդ մասն են ստանում։ Վերջնական ժողովական կարգադրութիւն այդ մասին մեր մէջ եղաւ 1243-46-ի Սսի ժողովում, որի 7-րդ կանոնն ասում է «պսակը ընտրութեամբ անեն, վեց ծննդով հեռացած ազգակցական արիւնից». այսինքն ազգակցական պսակ կարելի է միմիայն 7-րդ աստիճանում. այս կանոնն դարձաւ վերջնական և մինչև այսօր տիրող կարգն է, ժողովրդական «օխտը պորտը» այդ կարգադրութեան հետևանքն է։ Խրիմեան Հայրիկ 1899-ին հայրապետական կոնդակով վաւերացրեց նոյն կարգը։ (տես Ս. Գ. 453 և 669 երես)։ Վերջին կարգադրութիւնը

նրա համար էր, որ կային մարդիկ, որոնք առաջնորդւում էին Շնորհալու կանոնով, ոմանք Յակովբ Խրիմեցու կազմած ճիւղագրութեամբ, ոմանք էլ Սսի վճռով։ Խնամութեան մասին մեր եկեղեցական կանոններում որոշ կերպով ասուած կանոն չունենք. Շահապիվանի ժողովի կանոնները արգելում են երկրորդ աստիճանը. Ը-դարու Դուինի ժողովի կանոնները ընդհանրապէս արգելում են 4-րդ աստիճանը, թոյլ տալով միայն 5-րդը, թէ ազգակցական թէ խնամական։ 18-րդ դարում ունենք պատմական փաստ, որով պարզ ասւում է թէ խնամութեան 5-րդ աստիճանն է թոյլ գրւում։ 1734-ին Աբրահամ կաթողիկոսի «Հայր Յօհաննու վանից թեմին»—անուամբ գրած կոնդակում ասում է «Այլ և կանոնադրեմք և դուք հնազանդ լերուք, ազգականութեան Ժ. ճիւղ, խնամութեան Ե. ճիւղ, և կնքաւորութեան Ը. ճիւղ կոյս ընդ կոյսի և այր ընդ այրւոյ» (Տեղագիր գեղարքունի գաւառի», 441 երես)։

Այս կոնդակը պարզ սահմանում է խնամութեան 5-րդ աստիճանում թոյլադրել պսակը։ Վերջին կարգադրութիւնն էր Խրիմեան հայրիկինը 1895-ին, որով թոյլատրուեց խնամական 5-րդ աստիճանը (Ա. Գ. 669 երես)։

գ. Կնքահայրական չհասութիւն. կնքաւորական չհասութիւնը կոչւում է նաև հոգևոր ազգակցութիւն. սա սկիզբն առել է առաքեալների ժամանակից, երբ հեթանոսներն քրիստոնեայ էին դառնում և մկրտւում, պիտի անշուշտ պատրաստուէին քրիստոնէական հաւատոյ գիտելիքների մէջ, քննութեան ենթարկուէին և ապա որոշ ժամանակից յետոյ իրաւունք ստանային մկրտուել և հաւատացեալ կոչուել։ Երբ քրիստոնեայ ընտանիքներ բազմացան, նրանք պարտաւորւում էին իրանց որդիներին կրթել քրիստոնէական ոգով և ապա գիտակցաբար մկրտել տալ. բայց որովհետև շատ երեխայք կարող էին մեռնել առանց մկրտութեան, ուստի և սովորութիւն մտաւ նորածիններին ութ օրից յետոյ մկրտել ծնողների երաշխաւորութեամբ, այն պայմանով որ նրանք անպայման մկրտելուց և մեծանալուց

յետոյ կրթեն նրանց հաւատոյ գիտելիքի մէջ։ Եւ որովհետեւ շատ անգամ ծնողները անզօր էին գտնւում այդպիսի կարեւոր պաշտօն կատարելու վերաբերմամբ, եկեղեցին սահմանեց, որ երաշխաւոր լինին եկեղեցում ծառայող սարկաւագը և աղջիկների համար սարկաւագուհիները։ Մկրտութեան ժամին երաշխաւորող սարկաւագը, որ խոստանում էր իւր գիրկը դրած մանկան պատրաստել քրիստոնէական հաւատի և աստուածպաշտական կարգերի մէջ, կոչուեց մկրտութեան հայր, կնքահայր. իւր գիրկը վերցրած մանուկը սան, և ապա սանամայր, սանահայր։ Կնքահօր և սանիկի մէջ առաջացաւ ուղղակի հայրական յարաբերութիւն միւռոնի միջոցաւ, ուստի և կնքահայրութիւնը կոչուեց հոգեւոր ազգակցութիւն։ Զ. դարում Յուստինիանոսի օրէնքները սահմանեցին որ պսակը արգելւում է սանիկի և կնքահօր մէջ. ապա եկեղեցին արգելեց կնքահօր և սանամօր պսակը. ապա քաղաքական օրէնքները արգելեցին կնքահօր որդու և սանիկի, ու սրա ծնողների և սանիկի որդու պսակը (Кормч. 50 кн)։ 1107-ին Նիկոլայ պատրիարքի ժամանակ արգելուեց կնքահայրական պսակը մինչև 7 աստիճան, որը ընդունելութիւն չգտաւ յունաց ժողովրդի մէջ։ Կնքաւորական աստիճանները այսպէս պիտի հաշուել. 1) կնքահայրը՝ իբրև հոգևոր հայր, դէպի սանիկը առաջին աստիճանումն է գտնւում. 2) կնքահայրը դէպի սանիկի ծնողները իբրև եղբայր երկրորդ աստիճանումն է. 3) կնքահայրը սանիկի եղբայրների նկատմամբ երրորդ աստիճանումն է իբրև հօր եղբայր։ 4) Կնքահօր որդիքը սանիկի հետ երկրորդ աստիճանումն են իբրև եղբայրներ. իսկ սանիկի եղբայրների հետ 4-րդ աստիճանումն են իբրև հօրեղբօր որդիք։ Հայոց եկեղեցական կանոններում ոչինչ չկայ այս խնդրի վերաբերմամբ գրուած։ Ութերորդ դարու, Սսի կանոնները ընդհանուր առմամբ խօսելով 7 աստիճանի հասութեան վրայ, ենթադրել տալին որ կնքաւորական աստիճաններն էլ 7 պիտի լինին։ Վերոյիշեալ Աբրահամ կաթուղիկոսի կոնդակով թոյլադրելի է ութերորդ կնքաւորական աստիճանը։

Ներսէս Ե. 1851-ին Սինոդին արձակած հրամանով վերացրեց այդ անորոշ դրութիւնը և սահմանեց, որ կնքաւորական աստիճանն է երեք, որը պիտի հաշուել միմեայն կնքահօր և սանիկի մէջ ուղիղ գծով. որ սանիկի և կնքահօր կողագիծ աստիճանները, եղբայրներ, քոյրեր, հօրեղբայրներ, հօրաքոյրեր չեն մտնում այդ սահմանափակման մէջ (տես Ա. Գ. 613 երես)։ Օրինակ. Ա. կնքահայրն է, Բ—սանիկ, Գ—Սանիկի հայր կամ մայր, Դ—սանիկի որդի, Ե—կնքահօր որդի։




Կնքահայրը (Ա.) դէպի սանիկը (Բ) հոգևոր հայր է և եղբայր Գ-ին, որ սանիկի հայրն է; Բ. և Ե. եղբարք են իբրև կնքահօր որդի և մարմնաւոր հօր որդի; Բ—դէպի Գ և Ա.—առաջին աստիճանն է; Դ—դէպի Ա. երկրորդ աստիճանն է; Գ—դէպի Ա.—երրորդ աստիճանն է իբրև եղբարք; Ե—դէպի Բ—երկրորդ աստիճանն է; Զ—դէպի Դ—չորրորդ աստիճանն է որոնց պսակը թոյլատրելի է Ներսէս Ե-ի կոնդակի զօրութեամբ։

*Որդեգրութիւն.* Քաղաքացիական օրէնքներով կնքաւորութեան փոխարինում է որդեգրութիւնը, որը կատարւում է այսպէս. որդի չունեցող հայրը օտարի տղային, վերջինիս ծնողների համաձայնութեամբ բերում է իւր տունը, պատշաճաւոր թղթեր և փաստագրեր են կազմում, և ընդհանուրի վկայութեամբ վերցնում է իրան որդի, որ կոչւում է որդեգիր. այս գործողութիւնը կատարւում է առանց եկեղեցու օրհնութեան, թէ և ըստ կամաց կարող է լինել և օրհնութեամբ։ Որդեգիրը՝ պարզ է չի կարող իբրև որդի պսակուել որդեգրողի աղջկայ հետ։ Լևոն իմաստասէրը որդեգրութիւնը կատարեց եկեղեցու օրհնութեամբ և չհասութիւնը հասցրեց 7 աստիճանի, մինչև իսկ այն դէպքում

իբր մէկը իւր փեսային որդեգրում էր, պէտք վերջինս կնոջից բաժանուէր։ Բայց գործնականութեան մէջ մնաց Յուստինիանոսի սահմանածը, որ որդեգրի և որդեգրողի մէջ ուղղագիծ պսակ լինել չի կարող մինչև երրորդ աստիճանը ինչպէս և կնքաւորութեան մէջ։ Որդեգրութեան մասին մենք կանոններ չունենք, քիչ յետոյ կբերեմ Յակոբ Խրիմեցու ճիւղագրութիւնը և այդ մասին արած դատողութիւնը. յամենայն դէպս որդեգրութեան և կնքաւորութեան վերոյիշեալ 3 աստիճանի սահմանումն պէտք համարել հաւասարազօր, եթէ որդեգրութիւնը եղել է օրինաւոր և վերջնական կարգով։

*Եղբայրանալ.* Թէ հներում և թէ այժմ պատահում է եղբայրանալու սովորութիւնը, երբ մէկը մի օտար տղայի կամ աղջկայ հետ եղբայրանում է քահանայի օրհնութեամբ. եթէ այսպիսի լուրջ դէպք պատահում է, թէև ոչ մի սահմանադրութիւն չկայ այս մասին ոչ մեր և ոչ օտար եկեղեցական կանոններում, բայց և այնպէս ոչինչ չի արգելում այսպիսի դէպքերում վարուել վերոյիշեալ կնքաւորական և որդեգրական կանոններով, այսինքն եղբայրացածների վերաբերմամբ ընդունել ուղղագիծ 3 աստիճանի չհասութիւն։

Զհասական աստիճանների վերաբերմամբ բացի կանոնական սահմանադրութիւններից կան և երկու մասնաւոր գրութիւններ, մէկը Մխիթար Գօշինը է, միւսը Յակոբ վարդապետ Խրիմեցու ճիւղագրութիւնը, բացի այս Էջմիածնի գրադարանի կանոնագրքերի յետևներում պատահում են ճիւղագրութիւններ, որոնք ինքնուրոյն աշխատութիւններ չեն, բոլորը ընդ օրինակութիւն են Յակոբ Խրիմեցու։

Գօշը իւր դատաստանագիրքը սկսեց 1184-ից և շարունակեց մինչև մահը 1213 թուականը, ուստի և նրան յայտնի լինել չէր կարող Սսի ժողովի կանոնները, իսկ Շնորհալու ընդհանրականը (1166—1173) երևի թէ չէր ընկել Գօշի ձեռքը, կամ եթէ ընկել է, վերջապէս նա չի օգտուել Շնորհալու կանոններով ճիւղագրութեան վերաբերմամբ, այլ միմեայն Մովսիսական օրէնքներով, և որի վերջին չհասա-

կան աստիճանն է 5-րդը, ուստի և Գօշի հաղորդածը այդ կողմից նշանակութիւն չունի։ Յակոբ վարդապետ Խրիմեցին Գէորգ վարդապետ Երզնկացու, որ աստուածաբանական գիտութիւններով պարապող էր, աշակերտն էր, ապրում էր 1400 թուականներին, «որ արար գլու ծմունս կազմութեան մարդոյ, և զազգագրութիւն 'ի խնդրոյ Թովմայի մեծոբացւոյ և զմեկնութիւն տումարի» (Չամչեան Գ. հատ. 453 երես), որը և կազմել է չհասական ճիւղագրութիւնը, գծերով, նշաններով, օգտուելով Շնորհալու կանոններից. սրա կազմած ճիւղագրութիւնը դարձել է ընդհանուր հրահանգ, որովհետև մանրամասն խօսում է ազգակցական, խնամական, կնքաւորական, խորթական և որդեգրական չհասական աստիճանների մասին։

## ՅԱԿՈԲ ԽՐԻՄԵՑՈՒ ՊՍԱԿԻ ԿԱՆՈՆՆԵՐԸ

«Իմանալի է, որ այս կանոնը նրանց համար է, որոնք սրբութեամբ սնւում են և լինում են տասն և հինգ տարեկան։ 15 տարեկան կորիճ տղան փեսացու է, և 14 տարեկան աղջիկը հարսնացու է։ Եւ եթէ կնեղուին, 14 և 12 տարի դարձնեն, և ապա այս անցաւոր աշխարհի ամուսնութիւնը գլուխ բերեն։ Եւ պէտք է քահանան քննի առաջ և իմանայ որ կարևոր, կամ կնքաւոր և կամ խնամի չլինին։ Որովհետև կարևորը—ազգականն է, որ չորս պորտն անցնում է և 5-րդում խնամանում են, և կնքաւորն երեք պորտն անցնում է և 4-ում խնամանում են, և այս է որ գրում եմ, դու էլ մտքումդ պահիր։

Մի հօրից երկու եղբայրներ իրանց հօր. արիւնը կիսում են, նրանց որդիքը երեք մասն արեան, նրանց որդիքը երկու բաժինն արեան և սրանց որդիքը օտարացան, չորս տարբերքը բաժանուեցին։ Պէտք է խնամանան, որովհետև չորս տարբերքը միմեանցից հեռացան, և արիւնը վերջացաւ»։ Բացադրութիւնը նոյն է ինչ որ Շնորհալունն, 4 մի կողմից, 4 միւս կողմից, ութերորդին թոյլ չի տալիս պսակուելու, այլ 9 և 10 աստիճանները։ Շարունակութեան և ճիւղագրու-

թեան մէջ պարզում է այսպէս. «Իսկ որդիքը ունին բոլոր արիւնը, թոռները երրորդ մասն արեան, թոռների որդիքը երկրորդ մասն արեան, թոռների թոռները մի մասն միայն, այստեղ արիւնը վերջանում է, սրանց որդիքը՝ որ են ձագ թոռնեայք առնում են միմեանց»—այսինքն 9 աստիճանը տասներորդի հետ. նոյնը՝ ինչպէս վերև ասացինք Աբրահամ կաթուղիկոսը 1734-ին հրահանգեց, (10 աստիճան ազգակցութեան)։ «Կնքաւորութիւնը երեք ազգն նրա համար պիտի անցնի, որովհետև հոգին երեք մասից է բաղկացած, և մարմնի նման չորս տարերքից չի կազմուած։ Նոյնպէս և կնքաւորութիւնը երեք պորտն անցնում է, հոգևոր ազգակցութիւն է»։ Սրա կանոնով կնքաւորական աստիճաններն են 6, վեցերորդը արգելում է, թոյլ է տալիս 7-ը 8-ի հետ, ինչպէս և Աբրահամ Կրետացին (Ը. աստիճան կնքաւորութեան)։

«Խնամութիւնն ոչ մարմնաւոր ազգակցութիւն է և ոչ հոգևոր, դրա համար երկու պորտն անցնել —բաւական է, . . . . . և երրորդ պորտն կարելի է փեսայանալ»։ Պորտ ասելով Խրիմեցին հասկանում է 2 աստիճանը միասին, այսինքն երկու եղբայրը մի պորտ են, երկու թոռները մի պորտ, ուրիշ խօսքով երկու կողմի համապատասխան աստիճանները մի է համարւում։ Խնամական երկու պորտը՝ որ է 4 աստիճանն թոյլ չի տալիս, 5-ին իրաւունք է տալիս պսակուելու. Նոյնը և Աբրահամ կաթուղիկոս (Ե. աստ. խնամութեան)։

Խորթութեանց համար հետևեալն է ասում.

«Այս էլ պէտք է իմանալ, որ կան կիսաեղբայրներ և կիսաքոյրեր, որոնք խորդ են կոչւում որ երկու կերպ է լինում։ Կայ որ երկու մօրից և մի հօրից է, սրանք հարազատ են. և . . . . . . . . . . . սրանց ձագ թոռնեայքը առնում են միմեանց». այսինք 9-ը 10-ի հետ կարող են պսակուել։

«Իսկ եթէ երկու հօրից է և մի մօրից, սրանք արեան կէսը ունին, որովհետև կինը կէս է, սրա որդիքը լրու-

*թեամբ հօր արիւնը չեն կարող ունենալ, սրանց թոռները խնամանում են և իրանց թոռնեայքն միմեանց առնում»*
*որ ասել է 8-ը 7-ի հետ. այստեղ երկու աստիճան է պակասեցնում։*

*Որդեգրի կամ հոգեզաւակի համար սահմանում է «թոռները խնամանում են և թոռնեայքը առնում միմեանց, որովհետև որդեգիրը խօսքով և կամքով է լինում». որ ասել է 6 աստիճանն արգելում է և թոյլ է տալիս 7-րդ աստիճանը 8-ի հետ։ Այս որդեգրական ճիւղը ուղղագիծ է, նա օտար է համարում որդեգրի և որդեգրողի կողագիծ բարեկամներին, եղբարց, քոյրերին, որովհետև «հոգեզաւակն է միայն նրա օրինաւոր որդին, քոյրերը և եղբայրները օտարեն . . . »։*

*Եղբայրանալ. «Այս պիտի իմանալ, որ չլինի թէ հարսն ու փեսան մի օր կաթ կերած լինին, և եթէ կերել են, քոյր և եղբայր են» չեն կարող պսակուիլ։*

*Այս է ընդհանուր բովանդակութիւնը Յակոբի ճիւղագրութեան, որը հետևելով Շնորհալու կանոնադրութեան, որը միայն վերաբերում է ազգակցութեան, նա դարձել է հիմք խնամականի, կնքաւորականի, խորթականի, որդեգրականի։ Նա շօշափում է կնքաւորական և մի հարց, եթէ կնքահայրը գրկել է երկու օտար անից երկու սանիկ, երկու օտար սանիկները կարո՞ղ են պսակուել միմեանց հետ. և վճռում է ո՛չ, որովհետև մի հոգևոր հօր զաւակ են թէ և ջոկ ջոկ տներից. սրանց համար նշանակում է 6 աստիճանի չ՝հասութիւն, թոյլ տալով 7-ը 8-ի հետ ամուսնանալ։*

## Ա) ԱԶԳԱԿՑԱԿԱՆ ԱՍՏԻՃԱՆՆԵՐ

1 *աստիճան. ես և մայրս, ես և հայրս։*
2 *աստիճան. ես և պապս, ես և տատս; ես և եղբայրս։*
3 *աստիճան. ես և պապիս հայրը, ես և տատիս հայրը (մայրը)։*
4 *աստիճան. ես և պապիս պապը. ես և տատիս տատը։ Ես և հօրս եղբօր տղան, ես և մօրս քրոջ աղջիկը;*

5 աստիճան. ես և Հորս եղբորը թոռը. իմ որդիս և մորս քրոջը տղան. իմ թոռս և եղբորս որդին։

6 աստիճան. իմ թոռս և եղբորս թոռը. իմ որդիս և եղբորս թոռանը տղան. իմ պապը և պապիս եղբորը թոռը։

7 աստիճան. ծոռս և եղբորս թոռը. տատիս ծոռը և իմ թոռը։

8 աստիճան. Հորս եղբորը թոռան ծոռը. երկու եղբարց ծոռներ։




## Բ) ԽՈՐԹԱԿԱՆ ԱՍՏԻՃԱՆՆԵՐ

1. ես և խորթ աղջիկս. ես և խորթ մայրս.
2. ես և խորթ թոռս. ես և խորթ պապս. ես և խորթ քոյրս։
3. ես և թոռանս խորթ որդին. ես և խորթ մորս տատը։
4. ես և խորթ Հորս եղբորը որդին, ես և պապիս խորթ աղջկայ որդին։
5. ես և խորթ տատիս քրոջ աղջիկը։



## Գ) ԽՆԱՄԱԿԱՆ ԱՍՏԻՃԱՆՆԵՐ

1. *Ես և զոքանչս. հարսը և պատրոնը։*
2. *Ես և աներս տղան. հարսը և տէգրը։*
3. *Ես և աներս թոռը. ես և եղբօրս կնոջ մայրը։*
4. *Ես և եղբօրս կնոջը քոյրը. ես և փեսայիս քոյրը։*
5. *Ես և եղբօրս կնոջ քրոջ որդին. ես և փեսայիս քրոջ աղջիկը։*




*Այն հարցը թէ պսակի խնդիրներում ումն է պատկանում բացառիկ իրաւունք «ոչ օրինակ այլոց» թոյլ տալու կարիքից և հանգամանքներից ստիպուած շեղումներ ընդհանուր կանոններից, այդ հարցը եկեղեցական կեանքում գործնականապէս զարթնել է և վճռուել 'ի դէմս ամենայն Հայոց կաթուղիկոսի։*

*Կեանքը իւր բազմատեսակ պահանջներով և ընթացքով միշտ տալիս է այնպիսի բացառիկ օրինակներ ընդհանուր կանոնից շեղուելու, որոնք զանցառութեան տալ չի կարելի, պէտք է որև գիջմամբ լուծել խնդիրը, ահա առաջ է գալիս եկեղեցու մէջ բացառական իրաւունք ունենալու խնդիրը (դիսպէնզացիայի իրաւունք*—диспензація)։

*Որովհետև մեր ընդհանուր կանոնները սահմանուում են ազգային ժողովով, պարզ է որ այդ ժողովի սահմանումներից թեթև շեղումներ անելու իրաւունքն կարող է վայելել միմեայն այն անձն, որն որ նոյն ընդհանուր ժողովի մասնակցութեամբ ընտրուած է եկեղեցու պետ, կաթուղիկոս ամենայն Հայոց. այդ հիմամբ դիսպէնզիայի իրաւունք չունին, ոչ առաջնորդները, ո՛չ Սինոդը, ո՛չ Պօլսոյ կրօնական ժողովը և ո՛չ պատրիարքները։ «Ոչ օրինակ այլոց» ի միջոցով*

կարգադրութիւններ անում է կաթուղիկոսը խնամական, ազգակցական և այլ չհասութեանց վերաբերեալ խնդիրներում։

**ԾՈՆՕԹՈՒԹԻՒՆ**. Նորերումս Էջմիածնի Սինոդը կարգադրեց որ առաջնորդները «բժշկական վկայական պահանջեն ամուսնացող երիդասարդներից». «բժշկական վկայական պահանջել երկրորդ անգամ ամուսնացող այրի կանանցից և արգելել նաև թուքախտով վարակուածների պսակը»։ (Տես Արարատ 1904 թ. դեկտեմբեր)։ Սինոդը այս կարգադրութիւնը կարող էր հրատարակել միմեայն ամենայն հայոց կաթուղիկոսի կնիքով և այն էլ Պօլսի կրօնական ժողովի համաձայնութիւնը նախօրօք առնելուց յետոյ։

## Զ) ՊՍԱԿԱԼՈՒԾՈՒԹԻՒՆ

Յիսուս լեռան վրայ ժողովրդին քարոզելու ժամանակ ի միջի այլոց խօսեց և ամուսնալուծութեան մասին. «Առաջուց ասուեց թէ, ով որ իւր կնոջ արձակի, թող նրան արձակման թուղթ տայ։ Բայց ես ձեզ ասում եմ, ով որ իւր կնոջ կարձակի առանց պոռնկութեան պատճառի, նա նրան շնութիւն է անել տալիս, և ով որ արձակուած կին է առնում, շնութիւն է անում» (Մատթ. Ե. գլ)։

Պօղոս առաքեալը Կորնթացոց գրած թղթում համոզում է խիստ սրբութեամբ կեանք վարել, ցանկանում է որ կարող է թող իւր նման անամուսին կեանք վարի, իսկ ով չի կարողանալ համբերել, թող պսակուի. կինը կապուած է մարդուն հետ այնքան ժամանակ, որքան մարդը կենդանի է, իսկ մարդու մահից յետոյ նա ազատ է, կարող է երկրորդ անգամ ամուսնանալ. բայց երանելի կլինի, ասում է առաքեալը, եթէ իմ խրատիս համաձայն վարուի և մարդու չգնայ. (Ա. Կորն. Է. գլ.)։ Բարսեղ մեծը հետևելով Տիրոջ պատուէրին, ընդունում է կնոջ արձակել պոռնկութեան համար, «այդ խօսքը սկսի վերաբերէր թէ մարդուն թէ կնոջ, բայց սովորութեան մէջ այդպէս չէ, երբ մարդը անառակ է, կնոջ պատուիրւում է մարդու մօտ մնալ. բայց եթէ կինը անառակ է, մարդուն թոյլադրւում է արձակել» (Ա. Գ.

239)։ Իսկ 31 կանոնի մէջ՝ ստիպուած հարկից, թոյլ չէ տալիս թէև գինուորների և բացակայութեան մէջ գտնուող անձանց կանանց մարդու գնալ առանց իրանց մարդկանց մահուան լուրը ճշտելու, բայց թեթև զիջողութիւն է անում (36 կանոն) (Ս. Գ. 243), ենթադրելով որ պատերազմում կարող են մահուան դէպքեր լինել։ Լուսաւորիչ 23 կանոնով պոռնկութեան համար թոյլ է տալիս արձակել կնոջ, միայն մի տարի ապաշխարանքի ենթարկելով (Ս. Գ. 509)։ Շահապիվանի ժողովի 3-րդ կանոնը խիստ ծեծի, կշտամբանքի, տուգանքի, ապաշխարանքի է ենթարկում շնութիւն անող թէ կնոջ թէ մարդուն։ 4-րդ կանոնը ասում է, եթէ մարդը շնաբարոյ է, և առանց պոռնկութեան պատճառի կամ մարմնական արատի արձակում է կնոջ, սա բոլոր մարդու շարժական և անշարժ կայքի կէսը իրաւունք ունի հետը տանելու և եթէ կամեցաւ երկրորդ անգամ մարդու գնալ, պէտք է տարած կարողութիւնը գանձարանին տալ, իսկ մարդը ենթարկւում է 7 տարուայ ապաշխարանքի, տուգանքի և ծեծի, և եթէ տարին չլրացած մի ուրիշ կին գայ այս մարդուն և իմացուի որ այս կնոջ պատճառով է մարդը իւր առաջին կնոջ արձակել, երկրորդ կնոջ տանեն ուրկանոց աղալու մի տարի ժամանակով։ Յաջորդող 5-րդ կանոնը նոյն ձևով, նոյն պատիժներով, նոյն տուգանքներով կշտամբում է այն մարդուն, որը առանց պոռնկութեան և մարմնական արատի կարձակի կնոջ ամլութեան համար։ Վերոյիշեալ երկու կանոնն օրինաւոր են համարում ամուսնալուծութիւնն երկու պատճառի համար այն է պոռնկութեան և մարմնական արատի։ Ուրիշ պատճառներով արձակելը համարում են ապօրինի և փոխանակ արգելելու այդպիսի գործողութիւնը, բաւականանում են միայն տուգանքի, պատժի, ծեծի ենթարկելով, և երկրորդ՝ չեն կարողանում արգելել որ ապօրինի վարուող մարդը իրաւունք չունենայ ուրիշ կին առնելու, հապա մինչև մի տարի այդ մարդը էլի պսակւում է, և երկրորդ կինը ենթարկւում է մի տարի ապաշխարանքի այն դէպքում, երբ հաստատւում

է որ մարդուն գլխահանողը այս վերջին կինն էր։ Այստեղից երեւում է. ա) որ բացի եկեղեցական պսակից, կար և առաջուայ կարգով քաղաքացիական պսակ, ինչպէս և ընդհանուր եկեղեցումն էր երեւում. քաղաքացիական պսակ կատարելիս, հարսնախօսութիւնից յետոյ, մի քանի բարեկամներով գնում էին հարսի տունը, հացկերոյթ սարքում, և խնճոյքի ժամանակ հանդիսաւոր յայտարարւում էր որ այս ինչ մարդը առնում է այս ինչ աղջկան. և պսակը համարւում էր եղած։ բ) Որ ամուսնալուծութիւնը չէր ենթարկւում եկեղեցու խիստ հսկողութեան, եկեղեցին մեղմութեամբ էր վերաբերւում այդպիսի յանցանքներին. մեղմութեամբ ասելով չպիտի հասկանալ տուգանքի, ապաշխարանքի չենթարկելը, ո՛չ, քանի որ խիստ ծեծը սովորական պատիժն էր այդ յանցանքում բռնուածների համար. հապա զրկելով երկրորդ անգամ ամուսնանալուց, խիստ սաստելով քահանաներին որ այդպիսիների տունը չգնան, եկեղեցի չթողնեն նոցա։ Այն ինչ երեւում է որ առանց պատճառի կնոջ արձակողը խիստ պատժւում է, թէեւ ապաշխարանքի տակ է համարւում արձակողը։ գ) Առանց օրինաւոր պատճառի արձակուած կինը իրաւունք է ստանում մարդու գնալու, միայն մարդու հետ կէս արած իւր բաժինը գանձարանին յանձնելով, այս երեւի այն մտքով է, որ բաժանման ժամանակ կինը կարող է անօգնական մնալ և այդ հիմքով թոյլ է տալիս մարդու հետ ամեն ինչ կէս անել, իսկ յետոյ մարդու գնալը համարում էին կնոջ համար արդէն նիւթականապէս ապահով դրութիւն և գրաւում էին յարքունիս նրա բերած բաժինը, երեւի թէ պատիժ համարելով այդ գրաւումը կնոջ նկատմամբ նրա համար՝ որ չէր կարողացել գրաւչութեամբ ամուսնու սիրտը շահած պահել և արձակման առաջն առնել։ դ) Բաժանման դէպքում շարժական և անշարժ կայքի հետ մարդ ու կին կէս են անում և որդիքը. թէ ինչպէ՞ս. անորոշ է. արդեօք հայրը վերցնում էր տղաներին, կինը աղջիկներին, թէ՞ հաւասար թու-

ով հէնց կէսում էին առանց այդ 'ի նկատի ունենալու. մանրամասնութիւնների համար ոչինչ չկայ։

Մարդիկ չնչին բաների համար արձակելով իրանց կանանց և ուրիշների հետ պսակուելով առանց որևէ խիստ՝ շօշափելի պատժի ենթարկուելու, պիտի դարձնէին երկիրը կնահաններով, մարդաթողներով լիքը մի վայր, քանի որ մի քանի տարի ապաշխարանքը, ծեծը, տուգանքը (100 դրամ =մօտաւորապէս 20 րուբլի) մի մեծ նեղութիւն չէր համարուիլ կին արձակողների համար, որոնք անպիտան կանանցից ազատուել—և իրանց հաւանած անձանց հետ կուզենային ապրել։ Այստեղ հարկաւ նշանակութիւն պիտի ունենար քաղաքացիական օրէնքը, որ պսակը համարելով մի որոշ հիմք ունեցող կապ, լինի քաղաքացիական թէ եկեղեցական, պիտի տար նրանից ծնուած մանկանց որոշ իրաւունքներ, որոշ արտօնութիւններ, որոնք խճճւում էին ըստ քմահաճոյքից ամուսնալուծական դէպքերում, և ժառանգական հարցերը իւր բոլոր ճիւղերով յանձնւում կամայականութեան։ Թէ եկեղեցին ինչու այս խնդիրներում չէր որոշում վաւերական պսակը անվաւերից, կամ պատասխանատուութեան ենթարկում պսակադիր եպիսկոպոսին կամ քահանային, հասկանալի չէ, քանի որ այդ ամուսնալուծութիւնները նա համարում էր ապօրինի, և քանի որ նոյն ժողովի հետագայ 7-րդ կանոնը գաղտնի պսակը համարում է անվաւեր, որ նշանակում է թէ վաւերական պսակ և անվաւեր պսակ՝ արդէն եկեղեցական կանոնական շրջանում գոյութիւն ունէր, և բացի այդ գաղտնի պսակ անող քահանային զրկում էր քահանայագործութիւնից և 100 դրամի տուգանքի ենթարկում։ Այս հարցերը շատ էլ կարևոր եթէ լինեն էլ, պիտի մնան առանց պատասխանի, որովհետև կանոնները շատ հետևողական չեն, հակասող կէտեր շատ ունեն և մութ են։ Նոյն ժողովի 13-րդ կանոնը խօսում է մերձաւոր ազգականների պսակի մասին, զրկում է քահանայութիւնից պսակադիր քահանային, և աթոռից եպիսկոպոսին, եթէ սրանք օրհնել են պսակը և նրանց հար-

սանիքը գնացել, իսկ պսակուողների բաժանման խնդիրը թողնում է ամուսինների կամքին, կամաւոր բաժանման դէպքում մեղմ պատիժներ նշանակելով, չբաժանուելու դէպքում խիստ. մեղմ պատիժն այն է, որ պսակուողները իրանց ունեցածի կէսը տան կարօտեալներին և ցմահ ապաշխարեն և մեռնելիս հաղորդուին։ Այս կանոնից էլ ընդհակառակն երևում է, որ եկեղեցական պսակը տիրապետող օրէնք էր և կանոն, այլապէս մերձաւոր ազգականները կդիմէին քաղաքացիական պսակին և ոչ եկեղեցականին. այս՝ վերոյիշեալ մեր ենթադրութեան հակասում է; որից պիտի եզրակացնել, որ կամ նախորդ կանոնները առաջուց կազմած և ապա կցած են այս կանոններիս հետ, կամ ուղղակի ժողովականները կազմել են և մտցրել կանոնների շարքը առանց հետևողաբար մշակելու և քննելու խնդիրը։

Յամենայն դէպս Շահապիվանի ժողովը կողմնակի կերպով թոյլադրում է ամուսնալուծութիւն 1) պոռնկութեան դէպքում, 2) մարմնական արատի համար։ Իսկ եղած պսակը լուծուած է համարւում և անվաւեր, 1) գաղտնի եղած դէպքում, և 2) ազգակցական չհաս աստիճանում։ Ամուսնալուծութիւն չի կարող տեղի ունենալ 1) Ամլութեան պատճառով, 2) Մարդու և կնոջ փոխադարձ համաձայնութեամբ։ Շահապիվանի ժողովը ուրեմն ամուսնալուծութեան նոր կէտ մտցրեց, որ աւետարանում չկայ, այն է՝ մարմնական արատի համար։ Թէ ինչ է հասկանում ժողովը «մարմնական արատ» ասելով, չի որոշում, դժուար է ենթադրութիւններով բացատրել. բայց ունենք «Սրբոց հարց հետեւողաց» անվաւեր կանոնների մէջ մի յօդուած, որը խօսում է այն նիւթի մասին, թէ երբ կարելի է կնոջ արձակել և երբ չի կարելի արձակել։ (Տես Ա. Գ. 182 երես)։ «Կնոջ արձակել չի կարելի ամլութեան, ծախողութեան, վատութեան պատճառով, այլ միայն բորոտութեան, պիսակութեան, դիւահարութեան, գիջութեան կամ մշտական պոռնկութեան համար»։ Այս կանոնս մասամբ բացատրում է «մարմնական արատ»-ի տեսակները, բորոտութիւնը և պի-

սակութիւնը վարակիչ՝ համարեա եթէ ոչ անբուժելի, դըժուար բժշկելի հիւանդութիւններ են, այն դարերում բոլորովին անբուժելի, որոնց համար և Ներսէս մեծի օրուանից շինուած էին «ուրկանոց»ներ անապատ տեղերում. Հրէաների մէջ այդպիսի հիւանդները իրաւունք չունէին բնակուած վայրերում ապրել: Ուստի և կարող ենք «մարմնական արատ» բացատրել այսպէս, այն անբուժելի վարակիչ հիւանդութիւնները և մարմնի վրայի այն արատները, որոնք անկարելի են դարձնում ամուսնական յարաբերութիւնները, պիտի մտնեն այդ հասկացողութեան մէջ, ինչպէս օրինակ՝ անբուժելի բորոտութիւն, պիսակութիւն, սիֆիլիս, դիւահարութիւն կամ խելագարութիւն և արատներից «մարդ-կին» յատկութիւն ունենալը, որ ժողովրդական լեզուով կոչւում է «Ղըզօղլան»: 7-րդ դարու Դուինի ժողովը սահմանում է նոր դէպի ամուսնալուծութեան, այն է 6—7 տարուայ բացակայութիւնը: Ժողովի 7-րդ կանոնն ասում է. «Շատերը մեր աշխարհից գերի տարուեցան, թշնամիներից հեռու տեղեր, նրանց, ամուսինները առանց վարդապետի հրամանի ամուսնացան: Դրանց համար սահմանում ենք, ով մինչև 6—7 տարի, երբ զուգակիցը գերութեան մէջ է, կհամարձակի ամուսնանալ, նա պոռնկութիւն արած կհամարուի, ծեծ և պատուհաս կկրի. Նրա ինչքից և ստացուածքներից կխլուի վարդապետների ձեռքով և աղքատներին կբաշխուի. Նրանց պէտք է միմեանցից բաժանել և 7 տարի ապաշխարանքի ենթարկել, իսկ եթէ 7-րդ տարին գերութիւնից յետ դարձան, իւրաքանչիւրը իւր ամուսնուն գնայ . . . .»: Կանոնս 7 տարի ժամանակ է տալիս ամուսիններին սպասել, կարծելով որ ով որ ողջ լինի յետ կդառնայ, եթէ ոչ կամ մեռած լինի կամ կրօնափոխ եղած, այս դէպքում ոչինչ չի ասում որոշ, բայց պիտի ենթադրել, ուր կանոնս 7-տարուց յետոյ սպասող ամուսնուն իրաւունք պիտի տայ պսակուելու, այլապէս ինչու էր 7 տարուայ ժամանակամիջոց նշանակում սպասելու համար, հապա պարզ արգելական հրաման կդնէր (Տես Ա. Գ. 398):

Ներսէս Ե. հրամայեց ամլութեան համար անկարելի համարել պսակալուծութիւն (Ա. Գ. 613)։ Գէորգ-Դ. պսակը «անլուծանելի» հրատարակեց (Ա. Գ. 638)։ Խրիմեան Հայրիկ ձիգ տարիների փորձը 'ի նկատի առնելով պսակալուծութիւն թոյլադրում էր շատ դէպքերում և ամենաշատ այդպիսի դէպքեր եղել են նրա կաթողիկոսութեան օրով։ Պոլսոյ պատրիարքը և կրօնական ժողովը գտնում են, որ «չիք բաւական փաստ և օրինական պատճառք, որք ըստ արդարութեան իրաւունս տայցեն լուծել պսակն վերոյիշեալ ամուսնացելոցն»։ Վեհափառը գտնում է արդարացուցիչ այսպիսի կէտեր, 1) որ նշանախօսութեան ժամանակ պէտք է քննուէր և տեսնուէր երկուսի անհամեմատութիւնը, մէկը շատ առողջ է, միւսը հիւծուած բոլորովին. 2) որ տասներկու տարի է անբախտ օրիորդը փեսայից հեռացած, նստած է հօր տանը, նրանք միմեանց վերաբերմամբ մեռած են, առանց եկեղեցու էլ նրանց պսակը լուծուած է. ուստի «Աւետարանի ազատ ոգին և իմ խղճիս գիտակցութիւն թոյլատրէ զիս չթողուլ մանկամարդ տառապեալ կին մի մինչև մահ դատապարտեալ յամլութիւն . . .». ապա շարունակում է, լուծում եմ այդ պսակը, կնոջ թոյլ տալով ամուսնանալ, իսկ այրը եթէ «վստահ է յանձն իւր կարող է կրկին ամուսնանալ»։ (Կոնդակ յանուն պատրիարքի թ. 167 'ի 5 փետր. 1899)։ Նոյն թուականին Պետերբուրգի կառավարիչ սենատից ստացուեց գրութիւն, որով հրահանգւում էր պսակալուծութեան խնդիրները յանձնել Սինօդի տնօրինութեան և ոչ Վեհափառի անհատական վճռին։ Վեհափառը 1899-ին հոկ. 18 թ. 1185 Կոնդակով Սինօդի անունով խօսելով այդ մասին գրում է. «Նկատեալ 'ի նոսին զխախտումն դարևոր իրաւանց հայրապետաց Հայաստանեայց եկեղեցւոյ. Մեք ոչ կարեմք համաձայնել ընդ որոշումն կառավարիչ Սենատին» և կբողոքենք Կայսեր։ Նոյն ամսի 20-ին թ. 1197 կոնդակով յանուն Սինօդին գրում է. «Մեք 'ի բացադրութեան Սենատին և 'ի վճռոյ Ատենից տեսանիմք

զսաՀմանափակումն դարևոր իրաւանց Հայրապետաց Հայաստանեայց եկեղեցւոյ»։

Պետերբուրգի կառավարիչ Սենատը ստանալով Կայսեր մակագրութեամբ Վեհափառի բողոքը և 'ի նկատի ունենալով Էջմիածնի Սինոդի վճիռը պսակալուծութեան վերոյիշեալ խնդրի վերաբերմամբ, 1904-ին Հաստատում է իւր նախկին որոշումը ամուսնալուծութեան դէպքերը ենթարկելու Էջմիածնի Սինոդի կարգադրութեան և ոչ կաթուղիկոսի անՀատական վճռին։ Էջմիածնի Սինոդը Հետևելով իւր նախկին որոշման, Սենատի վերջի բացադրութիւնը և որոշումները վճռում է ընդունել 'ի Հրահանգութիւն։ (Տես «Արարատ» Յուլիս—Օգոստոս, 59 երես, 1904 թուի)։

Պսակալուծութեան դէպքերը Տաճկահայոց և ՊարսկաՀայոց վերաբերմամբ մնացին նախկին դրութեամբ, այսինքն է կախուած Վեհափառի վերջնական կարգադրութիւնից։ Պատրիարքը և Պոլսոյ կրօնական ժողովը քննում են գործը, վճիռ կայացնում և գործը ուղարկում 'ի Հաստատութիւն և 'ի տնօրէնութիւն կաթուղիկոսի։ 1899-ի մայիսի 14-ի Կոնդակը թ. 602 յանուն Պոլսոյ պատրիարքի, խօսելով պատրիարքի կողմից առաջարկուած երեք պսակի լուծման խնդիրների մասին, գրում է, քննել երեքի գործերը և «զարդիւնս ըստ վճռոց Ձերոց և կրօնական ժողովոյդ մատուսջիք 'ի վախճանական տնօրէնութիւն Մեր»։ ՊարսկաՀայոց երկու թեմական առաջնորդները պսակալուծական քննական գործերը ուղարկում են 'ի վերջնական տնօրէնութիւն Վեհափառ կաթուղիկոսի։

Յամենայն դէպս պսակի դէպքերում եղած վճիռների վերջնական տնօրէնութիւնը վերագրելով ընդՀանուր ազգային ժողովի իրաւասութեան, կանենք Հետևեալ վերջաւորող եզրակացութիւնը. որ Հայոց եկեղեցին թոյլ է տալիս ամուսնալուծութիւն 1) պոռնկութեան Համար. 2) մարմնական արատ ունենալու դէպքում՝ վերոյիշեալ բացադրութեամբ և 3) 7 տարի անյայտ բացակայութեան դէպքում։

Թէ այժմ ի՞նչ դրութեան մէջ է այդ հարցը, կամ տիրապետող պետութեան օրէնքները որքա՛ն են միջամտում այդ հարցում, ինչպէ՞ս են կատարւում ամուսնալուծական գործերի քննութիւնը, դատավարութիւնը, ա՛յդ մանրամասն կտեսնենք Գ. գրքում. առայժմ այսքան։

Յունա—հռոմէական եկեղեցին քրիստոնէական նախկի՛ն դարերից առաջնորդուել է Աւետարանի, Բարսեղ մեծի կանոններով. փոփոխութիւններ այդ խնդրում մտել են յունա—հռոմէական կայսրութեան ընթացքում քաղաքացիական իշխանութեան կողմից Կոստանդիանոս մեծից սկսած։ Սա պսակը լուծելու համար՝ իրաւունք էր տալիս մարդուն հեռացնել կնոջ պոռնկութեան, վնասակար նիւթեր պատրաստելու և անպատուաբեր միջնորդութեան համար. իսկ կնոջ ազատուել մարդուց՝ մարդասպանութեան, վնասակար (կեանքի դէմ) նիւթեր պատրաստելու և գերեզմանատեղերի ու գերեզմանաքարերի անձեռնմխելիութիւնը խանգարելու համար (Цер. Пр. Суворова 333 երես)։ Ամուսնալուծութեան խնդիրը աւելի լուրջ կարգերի ենթարկուեց Յուստինիանոսի ժամանակ. Նա ամուսնալուծութիւն թոյլ տուեց 1) կնոջ պետական յանցանքը ճանաչուելու դէպքում, երբ նա կայսեր կեանքի դէմ եղած դաւադրութիւնը չէր յայտնիլ իւր մարդուն. 2) պոռնկութեան համար. 3) մարդու կեանքի դէմ արած փորձի համար, 4) կնոջ ազատ յարաբերութիւնը ուրիշների հետ, որից կարելի է եզրակացնել կնոջ անառակ լինելը, օրինակ. օտար մարդկանց հետ բաղնիս գնալ, հակառակ մարդու կամքին թատրոն, ցիրկ գնալ և այլն։ 5) Արգանդի պտղի ոչնչացման համար։ Կնոջն էլ իրաւունք էր տրւում պաշտպանելու իրան և մեղադրելու մարդուն համանման դէպքերի համար։ Հետագայ կայսերական օրէնսդրութիւնները լրացրին այդ կէտերը նոր պատճառներով. 1) ամուսնական կեանքի անընդունակութեան համար. 2) Անյայտ բացակայութեան և գերութեան մէջ գտնուելուն համար՝ յընթացս 5 տարուայ, ըստ Կոստանդիանոսի կարգադրութեան 4 տարուայ, ըստ

Յուստինիանոսի օրէնքի 10 տարուայ, ըստ Լեւոնի անորոշ ժամանակով մինչև գերութեան վերջ (Суворовъ—335 երես) 3) Ամուսիններից մէկը խելագարութեան պատճառով, 4) Վանականութեան մէջ մտնելու համար. 5) մարդուն եպիսկոպոս ընտրուելու դէպքում, պայմանով որ կինը հեռու վանքերից մէկը քաշուի։ Մինչև 10-րդ դարը պսակը լինելով թէ քաղաքացիական և թէ եկեղեցական կապ, ենթարկւում էր պետական օրէնքներին իւր հետևանքներով, 10-րդ դարից յետոյ երբ պսակը դարձաւ կայսերական հրամանով եկեղեցական խորհուրդ, առանց որի օրինաւոր համարուել չէր կարող, յունական եկեղեցին սկսեց յարմարուել կայսերական օրէնքների ցոյց տուած կէտերին ամուսնալուծական դէպքերում։ Օտար եկեղեցիների այժմեայ ամուսնալուծական կանոնների մասին կխօսենք Գ. գրքում։

# ՑԱՆԿ

## Ա. ԵԿԵՂԵՑՈՒ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹԻՒՆԸ



## Բ. ԵԿԵՂԵՑՈՒ ԸՆԴՀԱՆՈՒՐ ԿԱՌԱՎԱՐՈՒԹԻՒՆԸ

## Ա. ԵԿԵՂԵՑՈՒ ՎԱՐՉԱԿԱՆ ԿԱՌԱՎԱՐՈՒԹԻՒՆԸ

## Բ. ԵԿԵՂԵՑՒՈՅ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԿԱՌԱՎԱՐՈՒԹԻՒՆԸ



## Գ. ԵԿԵՂԵՑՒՈՅ ՕՐԷՆՍԴՐՈՒԹԻՒՆԸ

## Դ. ԵԿԵՂԵՑՒՈՅ ԴԱՏԱՎԱՐՈՒԹԻՒՆԸ



## Ե. ՊՍԱԿԻ ՄԱՍԻՆ

